ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ
ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

# ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

ԲԱԶՄԱՀԱՏՈՐՅԱԿԻ ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

*Աղայան Ծ. Պ., Առաքելյան Բ. Ն., Գալոյան Գ. Ա., Երեմյան Ս. Տ., Խաչիկյան Լ. Ս., Հակոբյան Ա. Մ., Հովհաննիսյան Ա. Գ., Ներսիսյան Մ. Գ.*



ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ · 1972

# ՀԱՏՈՐ IV

# ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ՖԵՈԴԱԼԻԶՄԻ ՎԱՅՐԷՋՔԻ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ XIV-XVIII ԴԴ.

ՀԱՏՈՐԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

*Արևշատյան Ս. Ս., Բարխուդարյան Վ. Բ. (պատ. խմբագրի տեղակալ),*
*Ոսկանյան Վ. Կ., Զուլալյան Մ. Կ., Փափազյան Հ. Դ.*
*Խաչիկյան Լ. Ս. (պատասխանատու խմբագիր),*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## ԲԱԺԻՆ Բ

## ՀԱՅԿԱԿԱՆ ԳԱՂԹԱՎԱՅՐԵՐԸ XIV—XVIII ԴԱՐԵՐՈՒՄ



## ԲԱԺԻՆ Գ

## ՀԱՅԿԱԿԱՆ ՄՇԱԿՈՒՅԹԸ XIV—XVIII ԴԱՐԵՐՈՒՄ





# ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՏՈՐ IV

Տպագրվում է Հայկական ՍՍՀ ԳԱ պատմության ինստիտուտի
Գիտական խորհրդի որոշմամբ

*Հրատ. խմբագիր՝ Ժ. Մ. ԱԴՈՆՑ*
*Նկարչ. ձևավորումը՝ Լ. Ա. ՍԱԴՈՅԱՆԻ,*
*Կ. Կ. ՂԱՑԱԴԱՐՅԱՆԻ*
*Տեխ. խմբագիր՝ Մ. Ա. ԿԱՓԼԱՆՅԱՆ*
*Սրբագրիչ Լ. Կ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

*ՎՖ 05005 Հրատ. 3797 Պատվեր 718 Տպաքանակ 12000*

*Հանձնված է արտադրության 20/XI 1971 թ., ստորագրված է տպագրության 18/X 1972 թ., տպագր. 42,75 մամուլ+2 ներդիր, հրատ. 53,0 մամուլ, պայման 61,25 մամուլ, թուղթ № 1, 70×108[1]/[16], Գինը 4 ռուբ.*

*Հայկական ՍՍՀ ԳԱ հրատարակչության էջմիածնի տպարան*

## Ա Ռ Ա Ջ Ա Բ Ա Ն

Ընթերցողին առաջարկվող «Հայ ժողովրդի պատմության» սույն հատորն ընդգրկում է ֆեոդալիզմի վայրէջքի որոշակի հատկանիշներով բնորոշվող և մեր ժողովրդի պատմական առաջընթացի ու ազգային ճակատագրի համար բախտորոշ նշանակություն ունեցող XIV—XVIII դդ. ժամանակահատվածը*։

Հայտնի է, որ Հայաստանում զարգացած ֆեոդալիզմի ժամանակաշրջանին չհաջորդեց պատմական օրինաչափ զարգացման այն փուլը, որն այնքան բնութագրական էր արևմտաեվրոպական երկրների համար։ Այնժամ, երբ Արևմուտքում զարգանում էին քաղաքները, արհեստագործությունն ու առևտուրը, ձևավորվում էին բուրժուական հարաբերությունները ու սկիզբ էր առնում վերածնունդը, Հայաստանն, ընդհակառակը, ենթակա լինելով օտար նվաճողների արշավանքներին և հանդիսանալով տասնամյակներ շարունակվող ավերիչ պատերազմների թատերաբեմ, սուր ճգնաժամ էր ապրում։

Հետամնաց ցեղերի տևական տիրապետությունը, քմահաճ ու դաժան հարկահանությունը, բռնության ու թալանի օրինականացումը պատճառ դարձան քաղաքների անկման, գյուղացիական տնտեսության քայքայման, նյութական ու հոգևոր մշակույթի հուշարձանների ոչնչացման, համընդհանուր հետադիմության և յուրօրինակ վերադարձի դեպի ֆեոդալիզմի բարբարոսական աստիճանը։

XIV—XV դարերում գրեթե անհետ վերանում են Զաքարյանների ժամանակ Արևելյան Հայաստանում ստեղծված ֆեոդալական տիրույթներն ու իշխանությունները։ Հողատիրության և ազգային իշխանության որոշ իրավունքներ պահպանում է միայն եկեղեցին, որի դիրքերի հետագա ամրապնդումը, կաթողիկոսական աթոռի Սսից Արարատյան երկրի կենտրոն՝ Էջմիածին փոխադրումը և առանձին կաթողիկոսների ծավալած եռանդուն գործունեությունը վճռական նշանակություն ունեցան ժողովրդական լայն զանգվածների համախմբման, հայրենիքի ու գաղթաշխարհի հայության կապերի ամրապնդման և հասարակական, քաղաքական ու մշակութային կյանքի զարգացման համար։ Եկեղեցին հետագայում դարձավ ազգի ներկայացուցիչն ու միջնորդը օտար տիրապետողների առջև և հայության համընդհանուր ճանաչում գտած ազգային հաստատությունը։

Ֆեոդալական դասի մեռնող շառավիղներն իրենց փրկությունը որոնում

* Այս հատորի ժամանակագրական ճշգրիտ սահմանն սկսվում է XIV դարի 30-ական թվականներով, որ բնորոշվում է մոնղոլական իլխանության հոգեվարքով և ավարտվում 1801 թվականով, երբ հյուսիս-արևելյան Հայաստանի մի շարք շրջաններ մտան Ռուսական կայսրության հովանու տակ։ Սակայն, տեղ շահելու մտահոգությամբ, հատորիս ժամանակագրական սահմաններն ամենուրեք նշված են համառոտակի՝ XIV—XVIII դդ.։

էին եկեղեցականների շարքերն անցնելու, տարագրության կամ դավանափոխության մեջ։ Աշխատավորական զանգվածները՝ կորացած բիրտ տիրողների ծանր լծի տակ, մաքառում էին իրենց գոյության համար, պահպանելով ազգային կերպարանքը՝ լեզուն, ավանդույթները, մշակույթն ու դավանանքը։ Աշխարհական ու հոգևորական մտավորականության առաջադեմ ու հայրենասեր տարրերը ջանում էին հոգալ ժողովրդի մասին, դիմագրավելով այլազգի տիրակալների բռնություններին ու նշավակելով օտար նվաճողների դաժան խժդժությունները, նախընտրություն տալով Թամուրյաններին հաջորդած Կարա-կոյունլու թուրքմենների տիրապետությանը։

Եթե Կարա-կոյունլուների վրա հենվող հայ վերնախավերի մեջ տիրում էր Թամուրյաններից ազատագրվելու միտումը, ապա Աղ-կոյունլու Ուզուն Հասանի տիրապետության ժամանակ նրանք նպատակ էին հետապնդում դիմադրել Օսմանյան Թուրքիային, ձգտելով դաշնակցել վերջինիս հակառակորդ ուժերի, մասնավորապես արևմտաեվրոպական երկրների հետ։ Նման փորձեր եղան մանավանդ XVI դարի կեսերին և XVII դարում, երբ անընդմեջ շարունակվում էին թուրք-պարսկական պատերազմները և ավանդական էին դարձել Արևմտյան Եվրոպային ու Վատիկանին դիմելու ապարդյուն ջանքերը։

Գործնական հետևանքներ չունենալով հանդերձ, ազատագրական այս ձեռնարկումները մեծ չափով նպաստում էին ազգային ինքնագիտակցության սկզբնավորմանը, որը գնալով ավելի խոր արմատներ էր նետում մայր հայրենիքի և գաղութահայության ժողովրդական զանգվածներում։

1639 թ. թուրք-իրանական հաշտությանը հաջորդած 80-ամյա խաղաղության շրջանում նկատվող տնտեսական աշխուժացումը և ներքին ու տարանցիկ առևտրի զարգացումը, առևտրական կապերի ընդլայնումը Իրանի և Ռուսաստանի միջև և հայ վաճառականության գերի ու տեսակարար կշռի հետևվողական մեծացումը, գաղութահայության տնտեսական, քաղաքական և մշակութային սերտ կապերը մայր երկրի հետ, ինչպես նաև այդ ընթացքում ծավալված ազատագրական շարժումները Հայաստանում և Վրաստանում ու հատկապես նրանց զուգորդումը Ռուսաստանի, Լեհաստանի և Սրբազան կայսրության հակաթուրքական պայքարի հետ, եկան նոր թափ հաղորդելու ազգային կյանքի վերելքին և նպաստեցին ազգային գաղափարախոսության ձևավորմանը։

XVII դարում դպրոցական-կրթական կյանքում սկսված զարթոնքը գնալով ավելի լայն ծավալ էր ստանում, ընդգրկելով ինչպես մայր երկրի արևելյան ու արևմտյան հատվածները, այնպես նաև հեռու և մոտիկ երկրներում ապաստան գտած հայկական հոծ զանգվածները։ Հայրենի դպրության կենտրոններում, մեծ ու փոքր վանքերում գրվող և ընդօրինակվող հարյուրավոր ձեռագիր մատյանների կողքին հրապարակ իջավ և մեծ թափով սկսեց զարգանալ հայկական տպագրությունը, վճռական դեր ստանձնելով հայ հասարակական մտքի զարգացման մեջ և մշակութային կյանքի տարբեր բնագավառներում։ Մի կողմից երկրի տնտեսական-քաղաքական պահանջներին ընդառաջող, մյուս կողմից Եվրոպայում հաղթանակած ռեֆորմացիայի ազդեցությանը ենթակա հայ մտավորականությունը զգալի չափով կանգնում է աշխարհականացման և ազգային ինքնաճանաչման ուղու վրա։ Ժամանակի առաջավոր մտածողներն ու գործիչները ջանում էին գաղթավայրերում ու

հայրենիքում պահպանել հայոց լեզուն, մշակույթը, լուսավորչական դավանանքը, պայքարելով ուծացման դեմ։ Օսմանյան նվաճումների դեմ պայքարին հետամուտ արքունիքներում նրանք արծարծում էին Հայաստանն ու ողջ Անդրկովկասը թուրք-պարսկական տիրապետությունից ազատելու կամ քրիստոնյաների իրավունքները պաշտպանելու և նրանց վիճակը գեթ մասամբ բարելավելու խնդիրը։

Փրկության ուղիներ որոնելու դարավոր փորձերը ցույց տվին, սակայն, որ հայ ժողովրդի ազգային-ազատագրումը հնարավոր է միայն Ռուսական մեծ ու հզոր հարևանի և նրա դաշնակիցների օգնությամբ, որքանով որ նրանց առևտրա-տնտեսական ու ռազմա-քաղաքական նպատակները համընկնում էին հայ և Անդրկովկասի մյուս ժողովուրդների շահերի հետ։

Արևելահայ հոգևոր և աշխարհիկ պետերի դիմումներն ու Իսրայել Օրու բանակցությունները մոսկովյան արքունիքի հետ հիմք դարձան Անդրկովկասի ազատագրության ռուսական ծրագրի, որը նախատեսում էր ռուսական զորքերի արշավանք և հայ ու վրաց ապստամբական ուժերի օգնությամբ օտար լծի թոթափում և ապա՝ Հայաստանի ազատագրումից հետո՝ հայկական պետականության վերականգնում Ռուսաստանի հովանավորության ներքո։ Այս ծրագիրը իր ուժի մեջ մնաց ավելի քան հարյուր տարի և իրականացվեց միայն XVIII դարի վերջում և XIX դարի առաջին երեսնամյակում։ Այդ պատմական ակտին նախորդել էր 1720-ական թվականներին սկսված Պետրոս Մեծի Կասպյան արշավանքը, երբ Անդրկովկասին մոտեցող ռուսական զորաբանակին ընդառաջ գնացին տասնյակ հազարավոր հայ ապստամբներ ու վրացական զորքեր, արտահայտելով ազատագրական պայքարի իրենց պատրաստակամությունն ու ռուսական կողմնորոշումը։ Զինվորված հայության մղած հերոսական մարտերը իրանական և ապա թուրքական գերազանց ուժերի դեմ, Դավիթ Բեկի գլխավորած հաղթական կռիվները Սյունիքում, Ղարաբաղի սղնախների, Երևանի, Գանձակի և այլ վայրերի քաջարի ինքնապաշտպանությունը վկայում էին ազատատենչ ժողովրդական զանգվածների բարձր մարտական ոգու և ռազմունակության մասին։

Պետրոս Մեծի մահից հետո ռուսական զորքերի անսպասելի նահանջն ու Նադիրի մուտքն Անդրկովկաս թելադրում էր հայ ղեկավար շրջաններին հանդես բերելու ստեղծված իրադրությանը համապատասխան դիրքորոշում, քաղաքական այս բարդ ու պատասխանատու շրջանում հայ հասարակական-քաղաքական կյանքի ղեկի մոտ գտնվող գործիչները կարողացան ճիշտ կողմնորոշվել և համագործակցելով Նադիրի հետ, հարկադրել նրան ճանաչելու ազատագրական կռվի ելած հայության իրավունքները։ Պատմական բախտորոշ այս ժամանակաշրջանում հայ իշխող վերնախավի մելիքների զինվորական-կազմակերպչական համարձակ գործողությունների և կաթողիկոս Աբրահամ Կրետացու խելամիտ ջանքերի շնորհիվ ձեռք բերված հաջողությունները, նոր շունչ տվին ռուսական բանակի հարկադիր նահանջից հուսախաբ Արևելյան Հայաստանի զինավառ հայությանը և սրտապնդեցին հավատքը ազատագրական պայքարի վերջնական հաղթանակի նկատմամբ։

Այդ առավել շեշտված կերպով երևան եկավ XVIII դարի երկրորդ կեսում, Նադիրի մահից հետո Արևելյան Հայաստանում ծայր առած անիշխանության և տեղական խաների վարած հայահալած քաղաքականությամբ

բնորոշվող ծանր ու օրհասական տարիներին, երբ նորից վեր բարձրացավ ազատագրական շարժումների ալիքը։ Հայրենիքին օգնելու սրբազան գործին իրենց մասնակցությունը բերին Ռուսաստանի և այլ երկրների հայ գաղթավայրերը, հանդես եկան նոր առաջադեմ ու հեռատես գործիչներ։ Վերսկսվեցին բանակցությունները Կովկասի մերձավոր հարևան Ռուսաստանի հետ, որն ավելի ուժեղացել ու դարձել էր աշխարհի ամենահզոր երկրներից մեկը։ Ղրիմից տասնյակ հազարավոր հայեր վերաբնակեցնելով Նոր Նախիջևանում, նրանց համար ստեղծելով արտոնյալ պայմաններ, ռուս արքունիքը բարենպաստ կարծիք էր ստեղծում իր քաղաքականության մասին, նախապատրաստելով Անդրկովկասի նվաճումը։ Հայաստանի ազատագրման և հայ պետականության վերականգնման ծրագրերում շեշտվում էր Վրաստանի հետ համագործակցության և Ռուսաստանի օգնության ու անվերապահ հովանավորության անհրաժեշտությունը, թեև, արտահայտելով իշխող խավերի շահերն ու դիրքավորումները, առաջադրվում էին պետական կառուցվածքի տարբեր ձևեր՝ միապետություն կամ սահմանադրական հանրապետություն։

Հայերը սպասում էին իրենց նվիրական նպատակի կենսագործմանը, որը, սակայն, ուշանում էր՝ եվրոպական պետությունների հակառուսական քաղաքականության, Իրանի ամրապնդման և Աղա Մուհամադ խանի 1795 թվականի ավերիչ արշավանքների հետևանքով։ Միայն 1801 թվականին սկսվեցին Անդրկովկասի վերջնական նվաճման վճռական քայլերը և Վրաստանը միացվեց Ռուսաստանին։ Այդ կարևոր պատմական գործողությամբ սկիզբը դրվեց նաև Արևելյան Հայաստանի ազատագրմանը, որի հյուսիս-արևելյան որոշ շրջանները այդ ժամանակ Արևելյան Վրաստանի մասն էին կազմում։

Այսպիսով, թեպետ հայ ժողովրդի պատմության XIV—XVIII դարերի ժամանակաշրջանն սկսվում է օտար նվաճողների արշավանքների, այլազգի ու այլադեն տիրակալների իշխանության, կողոպուտների ու գերեվարության, բռնագաղթերի ու հարկադիր արտագնացության մռայլ տարեգրությամբ, սակայն դեպքերի պատմական ընթացքը տարավ դեպի տնտեսական, քաղաքական և մշակութային կյանքի հետագա աշխուժացում, իսկ հայկական գաղթավայրերում ազգային կյանքի պահպանումն ու զարգացումը մեծապես նպաստեցին հայ ժողովրդի միավորմանը, ազգային գաղափարախոսության ձևավորմանը և ազատագրական շարժման ու հայ մշակույթի նոր և ուժեղ վերելքին։

Հայ ժողովրդի պատմության բախտորոշ այս ժամանակաշրջանի ամբողջական ու կատարյալ պատկերը գծելու համար սովետական պատմագրությունը դեռևս մեծ անելիքներ ունի՝ ինչպես սկզբնաղբյուրների հավաքման և մշակման, այնպես էլ առանձին խնդիրների մանրազնին հետազոտության առումով։ Մեր ժողովրդի քաղաքական ու տնտեսական կյանքի առանձին շրջաններ դեռևս մասնագիտական ուսումնասիրության չեն ենթարկվել, հայ գաղթաշխարհի ուսումնասիրության գործը նոր է միայն դրվում գիտական հիմքերի վրա, հայ մշակույթի մի շարք բնագավառներ դեռևս սպասում են իրենց հմուտ ուսումնասիրողին։ Հարկավ այդ վիճակն իր անդրադարձը պետք է ունենար ներկա հատորի վրա, վնասելով նրա համամասնյա ամբողջականությանը։ Հատորիս խմբագրությունը քաջ գիտակցելով այդ, համոզված է միաժամանակ, որ ընթերցողի դատին է հանձնում միասնական ջանքերով

ստեղծված մի աշխատություն, որի մեջ խտացված են հայ ժողովրդի պատմության XIV—XVIII դարերի ուսումնասիրության գծով վերջին տասնամյակների ընթացքում ձեռք բերված նշանակալից արդյունքները։

* *
*

Հատորը պատրաստել է հեղինակային կոլեկտիվը հետևյալ կազմով. Ռ. Ա. Աբրահամյան, Լ. Ռ. Ազարյան, Փ. Փ. Անթաբյան, Ս. Ս. Արևշատյան, Վ. Ա. Բայբուրթյան, Վ. Բ. Բարխուդարյան, Վ. Ռ. Գրիգորյան, Ս. Հ. Դարբինյան, Վ. Ա. Դիլոյան, Մ. Կ. Զուլալյան, Ն. Կ. Թահմիզյան, Հ. Խ. Թոփուզյան, Ռ. Ա. Իշխանյան, Վ. Ա. Խաչատրյան, Լ. Ս. Խաչիկյան, Մ. Մ. Հասրաթյան, Ա. Գ. Հովհաննիսյան, Մ. Լ. Հովհաննիսյան, Ս. Վ. Հովնանյան, Հ. Մ. Ղազարյան, Վ. Ա. Միքայելյան, Ա. Շ. Մնացականյան, Վ. Կ. Ոսկանյան, Հ. Դ. Փափազյան, Ս. Է. Քոլանջյան։

Կարևոր իրադարձությունների ժամանակագրությունն ու մատենագրությունը կազմել է Լ. Փ. Շահինյանը, իսկ ցանկերը՝ Գ. Ե. Կիրակոսյանը։

## ԲԱԺԻՆ Ա



# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ ԵՎ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ XIV-XVIII ԴԱՐԵՐՈՒՄ

ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ ԵՎ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ XIV-XV ԴԱՐԵՐՈՒՄ

## 1. ՀԱՅԱՍՏԱՆԸ ՋՈԲԱՆՅԱՆՆԵՐԻ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

XIV դարի 30-ական թվականներին մոնղոլական իլխանությունը հոգեվարքի ցնցումներ էր ապրում։ Աբու-Սայիդ իլխանի մահից հետո (1335 թ. նոյեմբեր), փլուզվող կայսրության ողջ տարածքի վրա, ծայր էին առել գահակալական պատերազմներ, Հայաստանը դարձել էր արյունահեղ բախումների թատերաբեմ։ Հանգուցյալ խանի կտակով գահը գրավեց Չինգիզ խանից սերված Արփա խանը, որին հայ հիշատակագիրներից ոմանք «արքայուն» կամ «քայուն» վերադիր կոչումն են տալիս (մոնղոլներն այդպես էին անվանում քրիստոնյաներին)[1] և վկայում, որ նա բարյացակամ էր քրիստոնյաների նկատմամբ։

Հազիվ կես տարի էր անցել Արփայի գահակալությունից, երբ իշխանությունը գրավելու փորձ կատարեց Աբու-Սայիդի քեռի Ալի-Փադիշահը, որն Օյրաթ մոնղոլական ցեղի առաջնորդն էր։ Լավ սպառազինված բանակով նա դուրս եկավ Բաղդադից, բախվեց Արփա խանի զորքերին, պարտության մատնեց ու սպանեց նրան։ Շատերի աչքում թագավոր երևացող այս նոր բռնապետն աչքի ընկավ քրիստոնյաների նկատմամբ ծավալած հալածանքներով. «Յարոյց բազում հալածանս ի վերայ քրիստոնէից, և եկեղեցիսն քակեաց, և զխաչերն խորտակեաց»,— գրում է նրա մասին Թովմա Արճիշեցի գրիչը[2], «Եւ արար հրաման քակել զեկեղեցիս և քակեցին ի բազում տեղիս՝ ի Մօսլայ մինչ ի Խլաթ և ի Սալամաստ»,—լրացնում է նրան անանուն մի ժամանակագիր[3]։

Կարճատև է լինում նաև Ալի-Փադիշահի իշխանությունը. Նրա հաղթանակից ընդամենը 5 ամիս հետո պայքարի հրապարակ են իջնում նոր ուժեր՝ Ջելաիրյան ցեղախմբի առաջնորդ Հասան-Բուզուրգը (բուզուրգ նշանակում է

---

1 Н. Я. Марр, Аркаун (монгольское название христиан), СПб., 1905.

2 «ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», կազմեց Լ. Ս. Խաչիկյան, Երևան, 1950, էջ 281 (այսուհետև հիշատակարանների սույն ժողովածուն վկայակոչելու ենք «ԺԴ դարի հիշատակարաններ», իսկ հաջորդ հատորը՝ «ԺԵ դարի հիշատակարաններ», համառոտությամբ նշելով նաև վերջինիս Ա, Բ, Գ հատորները։

3 Սամուէլ Անեցի, Հաւաքմունք ի գրոց պատմագրաց, Վաղարշապատ, 1893, էջ 158—159 [այսուհետև՝ Սամուել (շարունակող)]։

մեծ) և Խաչե Թուղայ (նաև՝ Հաջի Թալա) ավազանին։ Հեր քաղաքի մոտակայքում տեղի ունեցած ճակատամարտում սպանվում է Ալի-Փադիշահը և Հասան-Բուզուրգը խուն է հուշակում Հուլավուի սերնդից Մուհամմեդ անունով մի մանուկի[4]։

1335—1336 թթ. տեղի ունեցած գահակալական այս կռիվների հետևանքով, ինչպես տեսանք, մեկը մյուսին հաջորդեցին մի շարք տիրակալներ, որոնք կամազուրկ դրածոներ էին իշխանության ձգտող քոչվոր ցեղապետերի ձեռքին։

Ջելաիրյան Հասան-Բուզուրգի ու նրա կամակատար Մուհամմեդ խանի հաղթանակից հազիվ մեկ տարի էր անցել, երբ կրկին քաղաքական պայքարի հրապարակ իջան Չոբանյանները։ Մոնղոլական այս գերդաստանը իլխանության կյանքում կարևոր դեր ստանձնեց Ղազան խանի ժամանակ, երբ 1295 թվականին ամիր Չոբանը դարձավ նրա կուսակիցներից մեկը, իսկ քիչ հետո՝ Օլջայթու խանի ժամանակ, գրավեց գլխավոր զորահրամանատարի պաշտոնը։ Մանուկ հասակում խան հռչակված Աբու-Սայիդի իշխանության առաջին տարիներին պետության ղեկը փաստորեն գտնվում էր ինքնիշխան ամիր Չոբանի ձեռքին, որը ամենաբարձր պաշտոններն ու ամենաբարեբեր վիլայեթների կառավարչությունը հանձնած լինելով իր որդիներին ու մերձավոր ազգականներին, հասույթների մեծագույն մասը յուրացնում էր ինքը՝ դատարկ թողնելով պետական գանձարանը։ Դրությունը փոխվեց, երբ Չոբանյաններից դժգոհ քոչվոր ավագանու սադրանքով Աբու-Սայիդը թշնամական դիրք գրավեց իր զորահրամանատարի նկատմամբ։ 1326 թվականին պատերազմական գործողություններ ծավալվեցին Չոբանյանների դեմ. նրանք պարտություն կրեցին։ Ամիր Չոբանն ու նրա հեղինակավոր կուսակիցներից շատերը սպանվեցին այդ պայքարի ընթացքում, մի մասն էլ ազատվեց՝ ժամանակավորապես հեռանալով երկրից[5]։

1338 թվականին Չոբանի հանգուցյալ Թամուրտաշ որդու անվամբ հրապարակ իջավ մի գործիչ (արևելագիտության մեջ հայտնի է Կեղծ-Թամուրտաշ անունով), դաշնակցեց իսկական Թամուրտաշի որդի Հասան-Քուչուկի (քուչուկ նշանակում է փոքր) հետ և արշավեց Հասան-Բուզուրգի ու Մուհամմեդ խանի դեմ։ Խանը սպանվեց, Ջելաիրյան Հասանը փախուստ տալով, հաստատվեց արաբական Իրաքում։ «Եկն սուտ Թամուրտաշն և որդին՝ շեխ Հասան, և սպանին զՄահմատ ղանն, և այլ ոչ եղև կատարեալ ղանութիւն»,— վերոհիշյալ անցուդարձերի մասին գրում է անանուն մի ժամանակագիր[6]։

Շուտով, սակայն, սրվում են Հասան-Քուչուկի և Կեղծ-Թամուրտաշի հարաբերությունները, որի հետևանքով հիմնականում ամբակակոխ են լինում Հայաստանի շրջանները։ Մի հայ հիշատակագիր այսպես է բնորոշել այդ ժամանակաշրջանը. «...ի թուականիս Հայոց ՉՁԷ (1338), ի ժամանակս որ ոչ ղան կայր և ոչ սուլտան, և աշխարհս էր իբրև զնաւ յհրերման, և քրիստոնեայք էին հալածական և փախստական.

---

[4] Տե՛ս «Ցուցակ հայերեն ձեռագրաց Զմմառի վանքի մատենադարանին», կազմեց Մեսրոպ վրդ. Քեշիշյան, միաբան Զմմառի, Վիեննա, 1964, էջ 579։

[5] Տե՛ս А. Али-Заде, Социально-экономическая и политическая история Азербайджана XIII-XIX вв., Баку, 1956, էջ 287-288 (այսուհետև՝ Али-Заде):

[6] «Մանր ժամանակագրություններ XIII—XVIII դդ.», կազմեց Վ. Ա. Հակոբյան, հատ. I, Երևան, 1951, էջ 110 (այսուհետև՝ «Մանր ժամանակագրություններ»)։

*Ջի եւ ոմն անուն Դամուրտաշ,*
*Եւ արար զազգս մեր ի մաշ,*
*Եւ Քրիստոս եա նմա մահու ճաշ,*
*Եւ եղև յաշս մեր հրաշ.*
*Քրիստոսի անմահին վաշ,*
*Որ արար զնա լաշ»[7]։*

*Հասան-Քուչուկը պարտության մատնելով Թամուրտաշին, Չոբանյան դինաստիայի տիրապետության տակ է առնում մոնղոլական իշխանության մեծագույն մասը՝ Հյուսիսային Իրանը, Պարսկական Իրաքը, Ատրպատականը և գրեթե ամբողջ Հայաստանը։ Լինելով անսահմանափակ իշխանության տեր մի բռնակալ, Հասան-Քուչուկը, այնուամենայնիվ, գերադասում է կառավարել Հուլավու խանից սերված որևէ գահակալի անունից։*

*Չոբանյաններն ու Ջելաիրյանները պատերազմեցին նաև հաջորդ տարիներին։ Հայ ժողովրդի մի մեծ հատվածի համար ծանր հետևանքներ ունեցավ հատկապես Հասան-Քուչուկի արշավանքը դեպի Դիարբեքիր, ուր հաստատվել էր Ջելաիրյանների կուսակից Խաջե Թուղայը։ Հետապնդելով փախուստի դիմած հակառակորդին, Չոբանյանների բանակը մտավ Մշո դաշտ, ավերեց, կողոպտեց ու գերեց ճանապարհին ընկած քաղաքներն ու գյուղերը։ Այս դեպքերի մասին ուշագրավ գրանցում է կատարել Սարգիս գրիչը 1340 թվականին շարադրած մի հիշատակարանում. «Եւ ով կարէ պատմել զանօրէնութիւնս նոցա, զոր արարին և գործեցին, քանզի բազում գաւառս գերեցին և աւերելով կործանեցին, և զինչս արդիւնաց զամենայնն յափշտակեցին, և զամենեսեան քրիստոնեայք կողոպուտ արարին՝ մերկ և բոկ և ոչ թողին ոչ մի ինչ կի վերայ անձանց քրիստոնէից. այլ զանասունս տաւարաց չոկս առեալ տարան՝ զոչխարաց և զեզանց, կովուց և զցլուց և զերիվարաց. ըհանդերձս ի յանձնէ մերկացուցին... Որ երեկ տանն տանուտէր (էր) և ամենայն իրօք լի, այսօր բեկեալ սրտիւ և տըրտմեալ... ի վերայ մոխրոյ նստեալ»։ Գրիչն այնուհետև հայտնում է, որ այդ անօրենները դատարկեցին Հացի բոլոր ամբարներն ու սրով նահատակեցին 100 մարդ[8]։*

*Հասան-Քուչուկը արշավեց նաև Ջելաիրյանների Արևմտյան Հայաստանում գտնվող տիրույթների վրա։ Գրավեց Էրզրում քաղաքը և մեկ ամսից ավելի մնալով այնտեղ՝ մեծ գումարներ կորզեց բնակիչներից։ Իսկ 1343 թվականին նա արշավեց Սեբաստիա և այլ վայրեր[9]։*

*Հարկ է նշել, այնուամենայնիվ, որ Հասան-Քուչուկին հաջողվեց փոքրինչ մեղմել հպատակ ժողովուրդների ծանր վիճակը և գահակալական բազմամյա պատերազմներից հետո պայմաններ ստեղծել քայքայված տնտեսության վերականգնման համար։ Դրանով պետք է բացատրել այն հանգամանքը, որ մի շարք հայ հիշատակագիրներ դրվատանքով են խոսել նրա մասին[10]։*

*Հասան-Քուչուկը 1344 թ. դեկտեմբերի 15-ին խեղդամահ արվեց իր կնոջ կողմից։ Վճռական մարտերից հետո իշխանությունը գրավեց Հասանի*

---

[7] «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 306։

[8] Նույն տեղում, էջ 324։

[9] Տե՛ս Али-Заде, նշված աշխատությունը, էջ 331, «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 334։

[10] «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 331, ձեռագիր № [illegible], էջ 713։





եղբայր Մելիք-Աշրաֆը։ Սա դաժանալ հուշակեց Նուշիրվան-ե Ադիլ կոչված մի խամաճիկ խանի (հայերի կողմից կոչված՝ էդիլ Շրվան), միանձնյա թագավորեց 13 տարի և անլուր բռնությունների ու աճարեկումների․ դաժան քաղաքականությամբ գերազանցեց իր բոլոր նախորդներին։

Բոլոր սկզբնաղբյուրներն անխտիր Աշրաֆին ներկայացնում են որպես նենգ ու արյունարբու կեղեքիչ, որ զրկում ու հարստահարում էր ոչ միայն աշխատավոր ժողովրդին, այլև առանց դատ ու դատաստանի բանտերն էր նետում տիրող դասակարգի շատ ներկայացուցիչների՝ պետական պաշտոնյաների, ֆեոդալական վերնախավին պատկանող անձանց ունեցվածքը հափշտակելու համար։ Անշուշտ ավելի ծանր էր հայ հպատակների վիճակը, որոնք կեղեքվում էին նաև իրենց հավատքի համար։

Աշրաֆը ծանր հարված հասցրեց հայ ֆեոդալական երբեմնի հզոր գերդաստանների տկար և ուժասպառ պայազատներին։ Տուժեցին հատկապես Զաքարյանները, որոնք շարունակում էին իշխել Անիի և Բջնիի շրջակայքում։ 1350-ական թվականներին Աթաբեկ Շահնշահ Գ իշխանը զրկվեց իր բոլոր տիրույթներից։ Անիի գրավման ու ավերման մասին ուշագրավ տեղեկություններ է հաղորդում Ներսես գրիչը. «Զօրքն տաճկաց բազմացեալ ամբոխիւք հասին գաւառն քաղաքին Անւոյ։—Եւ զաղետս և զոր ինչ արարին ի վանս և ի գեաւղս և ի գաւառս ո՞ր բերան պատմէ, կամ ո՞ր լեզու խօսի... Սատակեցին առաջի ծնողաց զաղայսն և առաջի տղայոց զծնողսն։ Եւ զօրս ըմբռնեալ՝ տանէին գերիս՝ բանդից և տանջանաց մատնեալ, որոց գլուխ աթապակ և մեծ սպասալար Շահնշահ, որ հազիւ կարաց զերծանիլ ի ձեռաց թըշնամեացն»[11]։

Բջնի ամրոցի գրավման պատմությունը «ի ժամանակս բռնակալութեան Մելիք-Աշրափին» փորագրված է Աթաբեկ Շահնշահի անունից կազմված արժեքավոր մի արձանագրության մեջ. ըստ այդմ Աշրաֆի հրամանով Բջնի քաղաքը բռնագրավված ու հանձնված է եղել Հաճիբեկ անունով մեկին, որ «զքաղաքս ի հիմանց քակեց, ու շատ յանուանի մարդ ի սուր քաշեց. ու զեկեղեցիքս տապալեց, ու զերկիրս ի չորս դիաց անբնակ արար ու դքրիստոնէք անխնայ կոտորեաց»[12]։ Աշրաֆի սպանությունից հետո Շահնշահին հաջողվում է վերանվաճել Բջնին ու շինարարական որոշ աշխատանքներ կատարել այնտեղ, իսկ Անի քաղաքն իր շրջակայքով այլևս չի ազատագրվում և մնում է օտար զավթիչների ձեռքին։

Դժնդակ այս պայմաններից փրկվելու ոչ մի հեռանկար չունենալով, երկրից արտագաղթում էին ֆեոդալական վերնախավին պատկանող անձինք, քայքայվող քաղաքների բնակչությունը՝ առևտրականներ և արհեստավորներ։ «Շեյխ Ովեյսի պատմություն» գրվածքի անհայտ հեղինակի տվյալներով Ոսկե Հորդայի խան Ջանիբեկի իշխանության տարիներին (1342—1357) «Երկիրը (իմա՝ Ոսկե Հորդան) ծաղկում ապրեց, որովհետև Մելիք-Աշրաֆի ճնշումների հետևանքով եկան այնտեղ հաստատվեցին Թավրիզի, Սերահի, Արդեբիլի, Բայլականի, Պարտավի և Նախիջևանի խոջաներից շատերը»[13]։

---

[11] Ղ. Ալիշան, Այրարատ, Վենետիկ, 1890, էջ 112 (Մատենադարան, ձեռագիր № 6764, էջ 264ա)։

[12] Ղ. Ալիշան, Այրարատ, էջ 273—274, «Վիմական տարեգիր», էջ 169—170։

[13] *В. Г. Тизенгаузен*, Сборник материалов, относящихся к истории Золотой Орды, М.-Л., 1941, էջ 101։

Պետք չէ տարակուսել, որ արտագաղթողների մեծագույն մասը հայ վաճառականներ ու արհեստավորներ էին եղել, որոնք դուրս գալով ինչպես վերոհիշյալ քաղաքներից, այնպես էլ Անիից, Բաբերդից, Բերկրիից, Արճեշից և այլ վայրերից՝ հաստատվեցին Ոսկե Հորդայում (մասնավորապես Ղրիմի թերակղզում), ինչպես նաև հարևան ու հեռավոր այլ երկրներում։ Պատահական¯չէ, որ Մելիք-Աշրաֆի տիրապետության տարիներին ընդօրինակված մի շարք ձեռագրերի հիշատակարաններում կան ուշագրավ տեղեկություններ բռնությունների, ահաբեկումների և պատերազմական գործողությունների հետևանքով հայրենի երկրից փախուստ տված և օտար ափերում խարիսխ նետած հայերի մասին[14]։ Քաղաքների տնտեսական կյանքի հետադիմության, արհեստագործության ու առևտրի անկման և քաղաքային բնակչության արտագաղթի հետևանքով տեղի էր ունենում արհեստագործության երբեմնի զարգացած կենտրոնների գյուղականացման պրոցես։ Համդուլլահ Ղազվինին հիշատակում է բազմաթիվ բնակավայրեր, որոնք առաջ քաղաքներ էին, բայց իր ժամանակ գյուղերի շարքն էին անցել[15]։

Անտարակույս, մեծ չափերի էր հասնում նաև գյուղական վայրերի բնակչության արտագաղթը։ Պաշտոնական փաստաթղթերի օրինակելի ձևեր պարունակող «Դաստուր ալ-Քաթիբ» ժողովածուի մեջ, որ կազմել է Մոհամմեդ իբն Հինդուշահ Նախիջևանցին, տեղադրված է նաև մեծարժեք մի բողոքագիր, ներկայացված Սուլթան Ուվեյսին՝ մի խումբ գյուղացիների կողմից։ Բողոքագրում ասված է, որ մեծ ամիրների ու բարձրաստիճան այլ անձանց կողմից աղքատության հասցված թշվառ մարդիկ թողնում են հարյուրամյա իրենց տնտեսությունները, լքում ժառանգած կամ ձեռք բերած փոքր մուլքերը և հեռանում են այլ վայրեր[16]։ Արտագաղթի այս պրոցեսն, իհարկե, նոր չէր սկիզբ առել, սակայն Ջոբանյանների իշխանության տարիներին շատ ավելի լայն ծավալ ստանալով, պատճառ դարձավ մի շարք նահանգների ու շրջանների տնտեսական քայքայման ու հետադիմության։

Պարսկական աղբյուրների համաձայն, Մելիք-Աշրաֆի դաժան լուծը թոթափելու համար, Թավրիզի բնակիչները մի պատգամավորություն են ուղարկում Ոսկե Հորդայի տիրակալ Ջանիբեկ խանի մոտ։ Մռայլ գույներով նկարագրելով իրենց անելանելի կացությունը, նրանք աղերսում են արշավանք կազմակերպել Աշրաֆի դեմ և իրենց ազատել տառապանքներից։ Պատեհ առիթից օգտվելով, 1357 թվականի սկզբներին, ռազմական մեծ պատրաստությամբ, Ջանիբեկը ներխուժում է Ատրպատական։

Մելիք-Աշրաֆի զորքերը լքում են իրեն և նա միայն երկու ծառաների ուղեկցությամբ մազապուրծ փախչում է Մարանդ, ապա՝ Խոյ, սակայն բռնվում և հանձնվում է Ջանիբեկին։ Երբ Աշրաֆին տանում էին Թավրիզի փողոցներով, տանիքներ բարձրացած բնակչությունը մոխիր և ավազ էր նետում նրա վրա, պատկերելով նրա կառավարչության ներքո անապատ դարձած երկիրը։ Եվ այսպես, անփառունակ, գահազրկվում ու սպանվում է

---

[14] Տե՛ս «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 346, 389, 390։

[15] Տե՛ս *И. П. Петрушевский*, Земледелие и аграрные отношения в Иране XIII—XIV веков, М.-Л., 1960, էջ 95։

[16] Տե՛ս նույն տեղում, էջ 278։

Մելիք-Աշրաֆը, որի անունը վերածվեց հասարակ անվան, խորհրդանշելով արյունռուշտ ու դաժան բռնակալի[17]։

1357 թվականը, այսպիսով, նշանավորվում է Չոբանյան դինաստիայի անկումով։

* *
*

Ոսկե Հորդայի խան Ջանիբեկը երկար չմնաց Թավրիզում։ Նվաճված երկրամասերի կառավարիչ կարգելով իր Բերդիբեկ որդուն, նա նույն՝ 1357 թ. ճանապարհվեց դեպի Դաշտ-ի Ղփչաղ։ Բերդիբեկը նույնպես, լուր ստանալով հոր հիվանդության, կամ ըստ այլ տվյալների, իր իսկ մեղսակցությամբ դավադրաբար սպանվելու մասին, շատ չանցած վերադարձավ Դաշտ-ի Ղփչաղ։ Իշխանությունը Թավրիզում անցավ մեծ հեղինակություն վայելող ամիր Ախիջուքի ձեռքը, որի շուրջ համախմբվեցին Աշրաֆի ժամանակ բարձր պաշտոններ գրաված մի շարք ամիրներ՝ շարունակելով հպատակ ժողովուրդների խոշտանգման նախկին քաղաքականությունը։

1358 թ. գարնանը Ախիջուքի դեմ արշավանք է կազմակերպում Ջելաիրյան Հասան-Բուզուրգի որդի Սուլթան Ուվեյսը, որը 1356-ին հաջորդել էր հանգուցյալ հորը։ Մեկ տարի տևող պատերազմական գործողություններից հետո, որոնք տեղի էին ունենում Թավրիզում, Նախիջևանում, Ղարաբաղում և երկրի այլ շրջաններում, Ուվեյսը կատարյալ հաղթանակ է տանում, միավորում է Ջելաիրյանների ու Չոբանյանների տիրույթները և իր աթոռանիստը Բաղդադից տեղափոխում է Թավրիզ։

Տարբերվելով Չոբանյան տիրակալներից, որոնք գերադասում էին անվանապես պահպանել մոնղոլական իլխանությունը՝ գահը հանձնելով Չինգիզ խանից սերված անուժ ու կամազուրկ որևէ իլխանի, Ջելաիրյանները վերացրին խամաճիկ խաներ կարգելու ավանդույթը, այսինքն, վերջ տվեցին իլխանությանը նաև իրավապես, և իրենց հայտարարեցին «սուլթան»՝ ինքնիշխան տիրակալ։

Սուլթան Ուվեյսի իշխանության տարիներին Ջելաիրյանների լայնածավալ պետության տնտեսական կյանքում նկատվում է աշխուժություն. ինչ-որ չափով սանձվում են քոչվոր ցեղապետերի ու հարկահան պաշտոնյաների անլուր չարաշահումները և որոշ պայմաններ է ստեղծվում խաղաղ աշխատանքի համար։ Հարկ է նշել, սակայն, որ քրիստոնյա հպատակների նկատմամբ հալածանքները չեն դադարում իսպառ։ Այդ տարիներին Հայաստանի տարբեր շրջաններում շարադրված հիշատակարանների մեջ այդ մասին գտնում ենք մի շարք վկայություններ։ Մեկը հայտնում է, որ «ժամանակս դառն ու փախուստ էր», «հալածում էր քրիստոնէից», մեկ ուրիշն ավելացնում, որ «յանօրինաց բռնութենէ խիստ ի նեղութիւն կայեաք» և այլն[18]։

1364 թ. գահը գրավելու անհաջող փորձ է կատարում Մելիք-Աշրաֆի Թամուրտաշ որդին, որ Ջանիբեկի արշավանքից հետո տարվել էր Ոսկե Հորդա։ Օգտվելով այդ երկրի ներքին խռովահույզ վիճակից, Միջին Ասիայի

---

[17] Տե՛ս «ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 335, 465 և այլն։

[18] «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 450, 458, 489։

վրայով նա անցնում է Շիրազ, ապա հայտնվում Արծկեի շրջանում ու պատրաստվում ապստամբություն բարձրացնել Ջելաիրյանների դեմ։ Սակայն ձերբակալվում է, հանձնվում Սուլթան Ովեյսին ու սպանվում[19]։

Սուլթան Ովեյսը վախճանվեց 1374 թ. հոկտեմբերի 10-ին։ Նրան հաջորդեց Հուսեյն որդին՝ գինեմոլ ու շվայտ մի անձնավորություն, որը պետության երկրամասերը բաժանեց իր եղբայրների միջև ու թուլացրեց երկրի ռազմունակությունը։

1375—1376 թթ. մի քանի ամսով Թավրիզը գրավում է Սպահանի, Ֆարսի ու Քիրմանի տիրակալ Շահ-Շուջան՝ Մուզաֆֆարյան դինաստիայից։ Երկրի տարբեր շրջաններում գլուխ են բարձրացնում քոչվոր ցեղապետերը, որոնք հրաժարվելով Ջելաիրյաններին ենթարկվելուց, դուրս են գալիս մեկը մյուսի դեմ, ասպատակում հարևան շրջանները։ Ոստանի հայ բնակչությունն, օրինակ, 1377 թ. մեծ զրկանքներ է կրում քրդերի խժդժություններից. «Բազումք ի քրիստոնէից սրախողող են ի քրդէն»,—գրում է այդ մասին հիշատակագիրը։

Կենտրոնական իշխանության դեմ դուրս են գալիս նաև թուրքմենական Կարա-կոյունլու կոչվող ցեղախմբի առաջնորդներ Բայրամ-Խոջան և Կարա-Մուհամմեդը։ Այս ցեղախումբը Հայաստան էր գաղթել իլխան Արղունի ժամանակ (1284—1291) և քոչվորական կենցաղով բնակություն հաստատել Արածանիի վերին հոսանքներում՝ մասնավորապես Բագրևանդում ու Քաջբերունիքում (թերևս նաև Նախիջևանի շրջանում)։ XIV դարի 40-ական թվականներից սկսած նրանք զգալի ռազմական ուժ ունեին և կազմակերպում էին ինքնուրույն կողոպտիչ արշավանքներ։ 1343 թ., օրինակ, Կարա-Հասան ցեղապետի գլխավորությամբ, նրանք ասպատակել էին Խլաթի շրջանը[20]։ 1377—1378 թթ. Սուլթան Հուսեյնը պատժիչ արշավանք է կազմակերպում կարա-կոյունլուների դեմ. սրանք պարտություն կրելով, պարտավորվում են վճարել տարեկան հարկ՝ 20.000 գլուխ ոչխար[21]։

1382 թ. Սուլթան Հուսեյնի դեմ պայքար է սկսում իր եղբայր Արդաբիլի կառավարիչ Ահմեդը։ Հուսեյնը պարտություն է կրում ու սպանվում։ Գահակալական պայքարի հորձանքի մեջ են մտնում նոր ուժեր. Հուսեյնի զորահրամանատար ամիր Ադիլը օրինական սուլթան է հռչակում Ովեյսի որդիներից Բայազիտին։ Հրապարակ է իջնում նաև Բաղդադում հաստատված սրա եղբայր Շեյխ-Ալին։ Գահի շուրջ ծավալված այս կռիվները պայմանավորված էին պետության բնույթով։ Ջելաիրյանների պետությունը, արևելյան մյուս բռնապետությունների նման բաղկացած էր տնտեսապես միմյանց հետ չշաղկապված ու էթնիկապես տարացեղ երկրամասերից, ենթակա էր ներքին բուռն փոթորիկների, մանավանդ անվանի որևէ գահակալի մահվանից կամ ռազմական պարտությունից հետո։

Սուլթան Հուսեյնի սպանության և դրան հաջորդող քաղաքական անցուդարձերի մասին հակիրճ, բայց ստույգ ու վստահելի տվյալներ են գրանցել նաև հայ ժամանակագիրները. «Սուլտան Ահմատն,—գրում է նրանցից մեկը,—զերկու եղբարսն սպանեաց և ինքն նստաւ. սպան զմեծամեծս հօր

---

19 Սամուել (շարունակող), էջ 169։ *В. Г. Тизенгаузен*, Сборник..., էջ 97։

20 «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 334։

21 *Али-Заде*, նշված աշխատությունը, էջ 338—339։

խրոյ, և կոտոյս զամենեսեան։ Եւ եղբայրն շարժեցաւ ընդ նմա ի պատերազմ... և կոտորեցին երկոքին զօրքն ի դաշտին Արտաղու, և ցրուեցան զօրքն»[22]։

Ահմեդին, ի վերջո, հաջողվում է պարտության մատնել իր դեմ ծառացած եղբայրներին՝ դաշնակցելով Կարա-Մուհամմեդի հետ ու հենվելով Կարա-կոյունլու թուրքմենական ցեղախմբի զինական ուժերի վրա։ Միջդինաստիական այդ պայքարից Ջելաիրյանները դուրս են գալիս խիստ թուլացած։ Երկրի տարբեր մասերում գլուխ են բարձրացնում ցեղախմբերի ավագները, ծառանում կենտրոնական իշխանության դեմ, հրաժարվում հարկատվությունից։

Հայաստանի կենտրոնական շրջաններում իր միահեծան տիրապետությունն է հաստատում Կարա-Մուհամմեդը, որին մի շարք հայ հիշատակագիրներ կոչում են իրենց երկրի «ձեռնկալ» կամ «երկրակալ»։ «Չար և դառն և պիղծ աւերարար երկրի» կոչվող այս բռնակալը 1385—1386 թթ. ողբերգական կացության մեջ է դնում իր իշխանության տակ գտնվող հայ հպատակներին՝ կրոնական անլուր հալածանքներով։ Նրա հրամանով Վանա լճի հյուսիսային շրջաններում ամբողջովին կամ մասամբ քարուքանդ են արվում 70-ից ավելի եկեղեցիներ, գերվում ու ոչնչացվում են մեծաքանակ ձեռագրեր։ Կարա-Մուհամմեդին համեմատելով Նաբուգոդոնոսոր Բ-ի հետ, որ հնում գրավեց ու կործանեց Երուսաղեմը, Խաչատուր անունով մի գրիչ ոտանավոր է հյուսում նրա չարագործությունների մասին.

Ի յութհարիւր թուականին,
Յերեսուն և հինգ սկսեալ ամին (1386),
Ի Հայկազեան ազգի սեռին,
Ի նեղութեանց ժամանակին,
Զոր այլազգիքն նեղէին,
Զքրիստոնեայք նախատէին,
Զեկեղեցիսըն քակէին։ ։
Զոր մեղաւորս ի թիւ արկի
Եօթանասուն եկեղեցի,
Որ ի գաւառս էր Արծրունի.
Զդրունս նոցա խորտակեցին,
Եւ զսեղանսն տապալեցին,
Եւ զհիմունս շարժեցին,
Զկտակարանսն գերեցին[23]...

Ֆեոդալական մասնատվածության և քոչվոր ցեղապետերի ինքնիշխանության հետևանքով սաստկանում է ժողովրդական զանգվածների ունեզրկումը և խորանում տնտեսության քայքայումը։ Պետական գանձարկղ մուծվող հարկային գումարները տարեցտարի նվազում են և կենտրոնական իշխանության ռազմունակությունը թուլանում է այն աստիճան, որ երկիրն անզոր է դառնում արտաքին թշնամուն դիմագրավելու։

Օգտվելով խառնակ այս վիճակից 1384 թ. վերջերին Դարբանդի ու Շիրվանի վրայով Ատրպատական է ներխուժում Ոսկե Հորդայի խան Թողթամիշը՝ 50 հազարանոց բանակով։ Ապաշնորհ Սուլթան Ահմեդը առանց դիմադրու-

---

[22] «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 569, 597։

[23] Նույն տեղում, էջ 562։

*թյան փորձ կատարելու փախչում է Բաղդադ։ Թողթամիշի զորքերը պաշարում են Թավրիզը։ Քաղաքացիները մեկ շաբաթ հերոսաբար դիմադրում են, սակայն, ի վերջո, ընկճվում են ու 1385 թ. հունվարի 5-ին բացում դարպասները թշնամու առաջ։ Մայրաքաղաքն ավերվում ու կողոպտվում է. նույն բախտին են արժանանում նաև Մարաղան ու շրջակա գավառները։ Այնուհետև ընչաքաղց այդ հրոսակախմբերը բաժանվում են երկու խմբի. մեկն անցնում է Մարանդի, Նախիջևանի և Սյունիքի շրջաններով. «Երկիրն Սիւնեաց՝ երկոտասան գաւառս աւերեցին, ղբաղումս սպանին և գերեցին»,—հայտնում է սրանց մասին Թովմա Մեծոփեցին[24]։ Սյունիքից անցնելիս Թողթամիշի զորքերը գրավում են Որոտան ամրոցը և հայրենազուրկ անում Սմբատ Օրբելյան իշխանին՝ Իվանեի որդուն։ Մեծ ավերածություններ են գործում նաև Վայոց ձորում, ուր իշխում էր Իվանեի մյուս որդին՝ Գորգունը։ Սա զրկվելով կալվածքներից վշտամահ է լինում։ Տուժում է նաև Հովհան Որոտնեցին՝ Սյունյաց հին իշխանական տան պայազատներից մեկը, որին փորձում են ձերբակալել՝ «վասն հայրենեացն ժառանգութեան»։ Որոտնեցին այդ ժամանակ ղեկավարում էր Արևելյան Հայաստանի ամենախոշոր բարձրագույն ուսումնական հաստատությունը՝ Սյունյաց համալսարանը։ Խույս տալով թշնամիներից, մեծ գիտնականն իր 60 աշակերտների հետ միասին շրջում էր վայրից վայր՝ շարունակելով իր իմաստասիրական խորիմաստ դասախոսությունները։ «Եւ սա,— գրում է նրան ուղեկցող աշակերտներից մեկը,— կամօքն աստուծոյ զերծաւ ի նոցանէ, Բ (2) ամ բոլոր յայլ և յայլ տեղիս շրջէր աշակերտօք հանդերձ՝ կարդալով և ուսուցանելով»[25]։*

*Թողթամիշի երկու մասի բաժանված զորքերը միավորվում են Ղարաբաղում, ապա Շիրվանի վրայով վերադառնում Դաշտ-ի Ղփչաղ, իրենց հետ տանելով 200.000 գերի, որոնց մեջ կային և տասնյակ հազարավոր հայեր՝ Պարսկահայքից, Սյունիքից ու Արցախից[26]։*

*Թողթամիշը հազիվ էր հեռացել Անդրկովկասից, աշխատավոր ժողովուրդը դեռ չէր բուժել պատերազմական ծանր վերքերը, երբ Հայաստանն ու հարևան երկրները թատերաբեմ դարձան նոր արհավիրքների՝ սկսվեցին Լանկ-Թամուրի գլխավորությամբ կազմակերպված արշավանքները։*

## 2. ՀԱՅԱՍՏԱՆԸ ԼԱՆԿ-ԹԱՄՈՒՐԻ ԱՐՇԱՎԱՆՔՆԵՐԻ ՇՐՋԱՆՈՒՄ

*Ջաղաթայան երբեմնի հզոր պետությունը[27], որ միավորել էր միջինասիական երկրամասերը, XIV դարի կեսերին պառակտվել էր երկու հակամարտ մասերի՝ Մոգոլիստանի, ուր իշխում էր դեռևս քոչվորական կյանքով ապրող*

---

[24] **Թովմա Մեծոփեցի**, *Պատմութիւն Լանկ-Թամուրայ և յաջորդաց իւրոց, Փարիզ, 1860, էջ 12, 98։ Այսուհետև՝* **Թ. Մեծոփեցի**։

[25] *Ակադեմիկոս Հ. Մանանդյանն այս դեպքերի ժամանակագրությունը հատուկ քննության նյութ չդարձնելով, սխալմամբ Լանկ-Թամուրին է վերագրում Սյունիքի ավերածությունը, Որոտանի գրավումը և հարակից անցուդարձերը, կարծելով, որ դրանք կատարվել են 1386 թվականի ընթացքում (տե՛ս «Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության», հատ. Գ, 1952, էջ 344—346)։*

[26] *Տե՛ս* **Սամուել** *(շարունակող), էջ 171։*

[27] *Կոչվում էր Չինգիզ խանի Ջաղաթա որդու անունով, որին ժառանգություն էր տրվել Միջին Ասիան։*

մոնղոլական ցեղերի ավագանին և Մավերաննահրի, ուր տեղի էր ունեցել մերձեցում արգեն կիսով չափ նստակյաց դարձած մոնղոլա-թուրքական ցեղերի ավագանու և տեղաբնիկ պարսկական ֆեոդալների միջև։ Մավերաննահրն իր հերթին բաժանված էր ֆեոդալական մի շարք տիրույթների, որոնց իշխանները շարունակ պայքարում էին՝ հարևանի հաշվին իրենց կալվածքներն ընդարձակելու, կողոպուտի ու գերեվարության համար։

Մոնղոլական Բարլաս ցեղից սերված Թարաղայի որդի Թամուրը (1335—1405), Լանկ (կաղ) մականունով, երկարատև քաղաքական պայքարից հետո՝ 1370 թ. հռչակվեց Մավերաննահրի տիրակալ՝ Սամարղանդը դարձնելով իր աթոռանիստ քաղաքը։

Մավերաննահրի ֆեոդալական դասակարգի, մասնավորապես մոնղոլա-թուրքական ռազմա-քոչվորական վերնախավերի շահերից ելնելով, Լանկ-Թամուրը, զուգակցելով խիզախ զորահրամանատարի ու խորամանկ քաղաքագետի իր ձիրքերը, մինչև իր կյանքի վերջը կազմակերպեց աշխարհավեր նվաճողական արշավանքներ՝ դեպի Ոսկե Հորդա ու Ռուսաստան, Հնդկաստան ու Իրան, Անդրկովկաս ու Փոքր Ասիա։ Ամենուրեք, ուր ոտք կոխեցին Լանկ-Թամուրի զորաբանակները, տարածեցին մահ ու կոտորած, գերեվարեցին տասնյակ հազարավոր անպաշտպան մարդկանց (հատկապես արհեստավորների), ոչնչացրին նյութական ու հոգևոր մեծ արժեքներ։

Պետականությունից զրկված հայ ժողովրդի պատմության մի մեծ ժամանակահատվածի կարևոր իրադարձությունները նույնանում կամ սերտորեն առնչվում են Լանկ-Թամուրի ու նրա անմիջական հաջորդների դեպի Անդրկովկաս և Փոքր Ասիա ձեռնարկած արշավանքների ու զորաշարժերի հետ, ուստի և անհրաժեշտություն է զգացվում ծանոթանալ ողջ Մերձավոր Արևելքի համար համընդհանուր նշանակություն ունեցող քաղաքական այս անցուդարձերին՝ ընդհանրապես, պատմական Հայաստանի թատերաբեմում տեղի ունեցած դեպքերին՝ մասնավորապես։

**Լանկ-Թամուրի առաջին արշավանքը:** Լանկ-Թամուրն առաջին անգամ բախվեց Ջելաիրյան պետության ուժերին 1385 թ., երբ Հարավային Իրանից ներխուժեց Ատրպատական ու գրավեց Սուլթանիե քաղաքը։ Կազմակերպված արշավանքը, սակայն, սկսվում է մեկ տարի ուշացումով։ 1386 թ. գարնանը նա գրավում է Թավրիզը, այնուհետև անցնելով Արաքսը, մտնում Սյունիք, գրավում Նախիջևանը և պաշարում Երնջակ (արևելյան աղբյուրներում՝ Ալանջիկ կամ Ալինջա) անառիկ բերդը, ուր, ըստ որոշ տվյալների, պահվում էին Ջելաիրյանների գանձերը։ Բերդի պաշտպանությունը ղեկավարում էր Սուլթան Ահմեդի որդի Թահիրը։ Թամուրյաններին չհաջողվեց գրավել այդ ամրությունը, որը հերոսաբար դիմադրեց մինչև 1401 թ.[28]։ Ուստի, Լանկ-Թամուրը, բերդի պաշարումը շարունակելու համար անհրաժեշտ զորամաս թողնելով, իր բանակը մասերի բաժանեց և ուղղեց Հայաստանի տարբեր շրջաններ։ Սամուել Անեցու ժամանակագրության շարունակողը հայտնում է, որ նրա զորախմբերը տարբեր ուղղություններով արշավելով և կոտրելով կազմակերպված դիմադրությունը, մեկ օրվա ընթացքում հասնում են մինչև Կարբի, Բջնի, Գառնի, Սուրմարի և Կողբ։

Կողբ գյուղի բնակիչները «յոյժ զօրեղ զօրական» տանուտեր Մարտիրոսի

---

[28] Տե՛ս «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 628։

գլխավորությամբ պատսպարվում են։ Բարդող (Թակալթու) լեռան վրա և գյուղի «յոյժ արի 'և քաջ» երիտասարդների ուժերով՝ դիմագրում թշնամուն՝ «մեծաւ պատերազմաւ և սրտապինդ զօրութեամբ»։ Լանկ-Թամուրի ձեռնարկած բազմաթիվ գրոհները ապարդյուն են անցնում։ «Եւ թէպէտ բազում անգամ պատերազմեալ՝ ոչ կարացին առնել զլեառն զայն»,— ասում է պատմիչը[29]։

- Երկարատև է եղել նաև Պռոշյանների իշխանանիստ Շահապոնք բերդի դիմադրությունը, որի մասին տեղեկություն է հաղորդում այդ ժամանակ պատահմամբ այնտեղ գտնվող Գրիգոր Տաթևացին իր «Գիրք հարցմանց»-ի հիշատակարանում։

Համառ դիմադրություն է ցույց տվել նաև Սուրմարի բերդաքաղաքը, որի պարիսպները թշնամին հիմնահատակ տապալում է և գերում քաղաքի ու շրջակա գյուղերի բնակչությանը։

Թովմա Մեծոփեցին հայտնում է, որ Բջնի բերդը նույնպես գրավվում է պաշարվելուց հետո։ Իսկ Գրիգոր Խլաթեցին, այս դեպքերի թվականը մեկ տարի առաջ բերելով, հայտնում է,

Զամուր տեղիսն յաւար առին
Եւ շատ ոճիրըս գործեցին,
Յորոց և մի էր և Բըջնին,
Որ էր աթոռ երկուց պետին,
Զոր առին ու քանդեցին.
Զեպիսկոպոսն սպանեցին։

Սպանվողը Այրարատյան թեմի առաջնորդ Վանական եպիսկոպոսն էր, որը, որպես հոգևոր պետ և աշխարհիկ ֆեոդալ, կազմակերպել էր դիմադրությունը։

Այնուհետև Լանկ-Թամուրի զորքերը ներխուժում են Փոքր Սյունիք, գրավում Դոփյան ֆեոդալներից սերած Հասան Ծարեցի իշխանի ամրոցները։ Հասանը իր երեք որդիների՝ Սարգսի, Աղբուղայի և Շիրվանշահի հետ սրախողխող է լինում։ Նրանք գրավում են նաև Այրարատի Արշարունյաց գավառում Կապուտից ամրոցը, սրի են քաշում 400 հոգու, և Երևան գյուղաքաղաքը, ուր կոտորում են 500 տղամարդ։

Հայտնի է, որ Լանկ-Թամուրը մահվան էր դատապարտում այն վայրերի բնակչությանը և, մասնավորապես, կռվի ընդունակ տղամարդկանց, որոնք կամովին չէին հայտնում իրենց հնազանդությունը արշավող իր զորաբանակներին։ Ուստի կարելի է շտարակուսել, որ բոլոր այդ վայրերում Լանկ-Թամուրը հանդիպել է ուժեղ դիմադրության[30]։

Այս նվաճումներից հետո Թամուրի զորքերը մտնում են Վրաստան և 1386 թ. նոյեմբերի 21-ին գրավում ու կողոպտում Տփղիսը։

Ժամանակակից աղբյուրները սրտաճմլիկ նկարագրություններ են պահպանել Հայաստանում և հարևան երկրներում Լանկ-Թամուրի գործած ավերա-

---

[29] Թ. Մեծոփեցի, էջ 18։

[30] Այս առումով հետաքրքրական է Վասպուրականի դպրոցի անվանի մանրանկարիչ Ծերուն ծաղկողի մի դիտողությունը, որ արել է իր նկարազարդած ձեռագրերից մեկի հիշատակարանում. «Եւ ով որ հնազանդէր նմա (Լանկ-Թամուրին) բազում պարգևս պարգևէր նմա, և ով որ ոչ հնազանդէր՝ զնա. առ ոտն հարկանէր և զաշխարհ նորա աւար հարկանէր» (Էջմիածին, VP, № 1010, էջ 251ա)։

ծությունների, բնակչության սրածության, գերեվարության, նյութական ու հոգևոր արժեքների կողոպուտի ու ոչնչացման մասին։

Ուշագրավ է, որ նրանք խտրություն չէին դնում ազգության ու դավանանքի միջև։

Այս ոչ միայն քրիստոնէին,
Այլ և տաճիկ ազգաց բնաւին,
Չի հասարակ էր նեղութիւն
Պարսից ազգին, հայ և թուրքին[31]։

Տփղիսի գրավումից հետո Թամուրն իր զորքերով գնաց ձմեռելու Մուղանում, իսկ 1387 թ. գարնանը վերսկսեց իր արշավանքները, այս անգամ Հայաստանի հարավում և արևմուտքում։

Կարա-կոյունլու թուրքմենական ցեղերի առաջնորդ Կարա-Մահմադն իր որդի Կարա-Յուսուֆի հետ իշխում էր Վաղարշակերտի (Ալաշկերտ) ու Քաջբերունիքի շրջաններում։ Լանկ-Թամուրի զորքերը՝ գաղտնաբար անցնելով Արաքսը, մտան Քաջբերունիք։ Կարա-Մահմադը խույս տվեց ճակատամարտից ու նահանջելով դեպի արևմուտք՝ հասավ մինչև Ճապաղջուր, ապա ետ դարձավ, պատերազմեց ու պարտության մատնեց իրեն կրնկակոխ հետապնդող չաղաթայական զորախմբին. «Ջգըլխաւորն զօրաց նորա Լօղմալան անուն սպանին և այլ բազում զօրս ընդ նմա»,— հայտնում է Թովմա Մեծոփեցին[32]։

Ջաղաթայական մի այլ զորախումբ գլխովին ջախջախվեց Մուշի Առաքելոց վանքի մոտ տեղի ունեցած ճակատամարտում։ Նրանց հետ բախվեց Փիր-Հասան ցեղապետի հրամանի ներքո գտնվող թուրքմենական զորագունդը։ Տուրուբերանի տարբեր շրջանների հայ բնակչությունը, որ թամուրյաններից խուսափելով բարձրացել էր Սասունի անմատչելի լեռները, Փիր-Հասանի այս հաղթանակով ազատվեց սրածումից ու գերեվարությունից։

Լանկ-Թամուրի բանակի այլ միավորումներ հասան մինչև Կարին, բայց ավելի առաջ գնալ նրանց չհաջողվեց[33]։

Հետդարձի ճանապարհին, 1387 թ. սեպտեմբեր ամսին, Լանկ-Թամուրը պաշարեց քուրդ ամիր Եզդինի իշխանության տակ գտնվող Վանի բերդը։ 26 օր շարունակ բերդի պաշտպանները խիզախ դիմադրություն կազմակերպեցին, սակայն, ի վերջո՝ սեպտեմբեր ամսին Թամուրին հաջողվեց գրավել բերդը և, առանց ազգի ու տարիքի խտրության, դաժան հաշվեհարդար տեսնել բնակչության նկատմամբ։ Թամուրի հրամանով կանանց ու մանկահասակներին գերեվարեցին, իսկ մնացած բնակչությանը, խումբ-խումբ կապելով իրար, ցած գլորեցին բերդի պարիսպներից։ Գահավիժվածների թիվն այնքան շատ էր, որ վերջին նետվածները այլևս չէին մեռնում, ընկնելով կիտված դիակների վրա։

Գրիգոր Խլաթեցին իր մի ոտանավոր հիշատակարանի մեջ այս դեպքերի մասին գրում է.

Ապա դարձեալ՝ ի Վան եկեալ,
Ջամուր գըղեակըն պաշարեալ,

---

31 Գր. Ծերենց Խլաթեցի, Յիշատակարան աղէտից (տե՛ս «ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 277)։

32 Թ. Մեծոփեցի, էջ 21։

33 Տե՛ս «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 570։



Վանի բերդը

*Վեց ու քսան աւր հըսարեալ,*
*Եւ ապա ի ձեռս նոցա մատնեալ,*
*Բազմաց օրհասըն ժամանեալ*
*Դուըրն մահւամբ քարավիժեալ,*
*Ոչ մին հազար 'ւ երկու եղեալ,*
*Այլ քան զերեքն առաւելեալ,*
*Մինչ մըսադէզըն բարձրացեալ*
*Եւ որք անկեալ՝ այլ ոչ մեռեալ։*
*Իսկ և գերեացն ըզթիւ անցեալ*
*Եւ համարոյ գերազանցեալ...*[34]

*Սամուել Անեցու շարունակողը բերդից գահավիժվածների թիվը 7000 է հաշվում։*

*Վանի աղետը Լանկ-Թամուրի դեպի Հայաստան կատարած առաջին արշավանքի վերջին ողբերգական արարն էր։ Նույն՝ 1387 թ. աշնանը, երկու տարի Հայաստանն ասպատակելուց և հայ ժողովրդին անասելի աղետներ պատճառելուց հետո, անբավ հարստություններով ու անթիվ գերիներով Լանկ-Թամուրը վերադարձավ Սամարղանդ։*

*Պատերազմական գործողությունների ու զորաշարժերի պատճառով շատ վայրեր անմշակ էին մնացել, որի հետևանքով 1388 թ. Հայաստանում եղավ անբերրիություն և սաստիկ սով։ «Շատք ի սովու մեռան և այլք՝ շուն և կատու*

[34] *«ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 286—287, հմմտ. նաև նույն տեղում, էջ 277—278, «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 573, 590 և այլն։ Թ. Մեծոփեցի, էջ 30։*

կերան».—հայտնում է ժամանակակից մի հիշատակագիր։ Իսկ Թովմա Մեծոփեցին խոսում է նաև հարազատներին սպանելու և ուտելու դեպքերի մասին[35]։

**Լանկ-Թամուրի երկրորդ արշավանքը։** 1388—1393 թթ. Լանկ-Թամուրը Հարավային Ռուսաստանի տափաստաններում պատերազմում էր Ոսկե Հորդայի խան Թողթամիշի դեմ, իսկ այնուհետև Մուզաֆֆարյան Շահ-Մանսուրի դեմ՝ Պարսկական Իրաքում ու Պարսկաստանում։ Այդ տարիներին հայ ժողովուրդը փոքր-ինչ շունչ քաշեց և մասամբ, նույնիսկ, բուժեց նախորդ շրջանում ստացած իր ծանր վերքերը։

Բայց շուտով (1394) Հայաստանում լուր տարածվեց, որ Լանկ-Թամուրը նոր արշավանք է ձեռնարկել։ «Վայ աւուրս և ժամուս, թէ որպէս չար համբաւ առաք,—գրել է այդ մասին մի հիշատակագիր,— ձեռս թուլացաւ, միտս կուրացաւ, և ամենայն անդամօքս դողամ, զի անօրէն Լանկ-Թամուրն գայ, ասեն, սպանողն և արիւնարբու գաղանն»[36]։

Այս երկրորդ մեծ արշավանքի ուղղությունն այլ էր. չաղաթայական զորքերը նախ մտան Իրաք, գրավեցին Բաղդադը (այստեղ տասնյակ հազարավոր մարդկանց գլուխներից 6 խոշոր բուրգեր կիտեցին), այնուհետև գրավելով և ավերածություններ գործելով Մոսուլ, Եդեսիա (Ուռհա), Մերդին ու Ամիդ քաղաքներում, Հյուսիսային Միջագետքից անցան Արևմտյան Հայաստան։ Առանց մարտերի գրավեցին Երզնկան, արշավեցին դեպի Բասեն, ընկավ նաև Ավնիկ նշանավոր ամրոցը. դիմադրության կազմակերպիչ իշխան Միրին և 100 զորականների բերդից ցած նետեցին։ Կարս, Սուրմալու, Կողբ, Բագարան քաղաքները ավերվեցին։ Թամուրն ասպատակեց նաև Կարա-կոյունլու թուրքմենական ցեղի տիրապետած շրջանները՝ Արճեշ կենտրոնով։ Կարա-Յուսուֆը խույս տվեց ու միացավ Ջելաիրյան Ահմատին, նրա հետ բաժանելով տարագրության դառնությունները։

Այրարատի գավառներն այս անգամ ևս ասպատակվեցին, բայց Թամուրն ստիպված էր շտապ հեռանալ դեպի Աղվանք՝ հակահարված տալու Թողթամիշին, որը կրկին ներխուժել էր Շիրվան[37]։

Թամուրի և Թողթամիշի միջև այստեղ բախում տեղի չունեցավ։ Վերջինս նահանջեց, իսկ չաղաթայները ձմռան մի մասն անցկացնելով Մուղանում, 1395 թ. փետրվարի 28-ին մեծ ուժերով, Դերբենդի վրայով, սկսեցին շարժվել դեպի Ոսկե Հորդա[38]։ Ապրիլ ամսին Թերեք գետի մոտ տեղի ունեցած ճակատամարտում Թողթամիշի զորքերը ծանր պարտություն կրեցին։ Թամուրը գրավեց Ոսկե Հորդայի նշանավոր քաղաքներ Աստրախանն ու Սարայը, որոնք թալանվեցին ու կործանվեցին։

Այս դեպքերին ժամանակակից Գրիգոր Խլաթեցի հիշատակագիրը հայտնում է, որ Թամուրը Ոսկե Հորդայում հաղթանակներ է տարել և «շատ աւեր ու գերութիւն» արել, բայց ինքը ևս կորուստներ է ունեցել և տկարացել. «Բայց և ինքն տկարացաւ զօրօքն ի սովոյ, և անթիւ պակասեցան ի զօրաց գոռոզին այնմիկ»։

Թամուրը 1396 թ. գարնանը «ընդ դուռն Ալանաց» վերադառնալով Անգըր-

[35] Տե՛ս Թ. Մեծոփեցի, էջ 32։

[36] Մատենադարան, ձեռագիր № 3717, էջ 12բ։

[37] Տե՛ս Թ. Մեծոփեցի, էջ 40—46, Սամուել (շարունակող), էջ 171, «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 618, 621, 627—28։

[38] Տե՛ս Али-Заде, նշված աշխատությունը, էջ 388։

կովկաս, իր որդի Միրանշահին կարգեց կուսակալ՝ Իրանի, Իրաքի, Հայաստանի ու Անդրկովկասյան մյուս բռնագրավված երկրամասերի, կամ, ինչպես ասվում է արևելյան աղբյուրներում՝ «Հուլավուի թախթի» վրա։

Միրանշահը Երնջակի բերդի տարիներ տևող պաշարումը հաղթական վախճանի հասցնելու առաջադրանք է ստանում։ Այս նպատակով Խորասանից թարմ զորախմբեր են ժամանում, բայց բերդը գրավելու նոր փորձերը ևս ապարդյուն են անցնում։ Միրանշահի կուսակալության տարիներին երկրի տարբեր. մասերում շարունակվում են ֆեոդալական երկպառակությունները և Թամուրյանների լուծը թոթափելու փորձերը։

Բաղդադն այդ ժամանակ վերագրավվել էր Ջելաիրյան սուլթան Ահմեդի կողմից, իսկ սրա դաշնակից Կարա-կոյունլու Յուսուֆը իր ցեղակիցներով հարձակողական գործողություններ էր ծավալել Միջագետքում[39]։ Միրանշահն անզոր էր իր ուժերով զսպելու այս շարժումները։ Խնդիրը, սակայն, փոխվում էր, երբ խոսք էր լինում տեղական ֆեոդալների դժգոհությունների մասին. այստեղ նա վճռական էր ու դաժան[40]։ 1396 թ. հարձակվեց Բաղեշի վրա, բռնեց ու սպանեց քուրդ ամիր Իբրահիմին, որը չարամիտ դիրք էր բռնել հայերի նկատմամբ և «բազում աւերս արար ամենայն քաղքին և գաւառին»[41]։

Հաջորդ թվականին, Պետրոս հիշատակագրի տվյալներով, Թամուրյանները բռնել ու Աղթամարի կղզում բանտարկել էին Հաքքարիի (Ջուլամերիկի) քուրդ ցեղապետին ու կողոպտել Վասպուրականի հարավային շրջանները։ «Զոմանց զտուն այրեցին, զոմանց զվաստակ կերան և զպահուստն զամէն գտան»,— գրում է նա։ Հենց նույն ժամանակ գրավում են նաև «անառիկ ամրոց Անին», որ չնայած վաղուց ի վեր կորցրել է իր նշանակությունը որպես արհեստագործության ու առևտրի կենտրոն, բայց դեռևս համարվում էր Հայաստանի ամուր բերդերից մեկը[42]։

Անդրկովկասի ժողովուրդների դժգոհությունը Թամուրյանների տիրապետության դեմ 1399 թ. արտահայտվեց զինված ելույթով։ Վրաց Գեորգի VII թագավորի և Շաքիի տիրակալ Սիդի Ալիի միացյալ ուժերը հարձակվեցին Երնջակը պաշարած չաղաթայական զորքերի վրա, նրանց պարտության մատնեցին, 13-ամյա պաշարումից ազատեցին Ջելաիրյան արքայազն Թահիրին և առավել ամրացրեցին բերդի պաշտպանությունը։ Այս դեպքի մասին արժանահավատ գրանցումներ ենք գտնում հայկական մի շարք հիշատակագիրների, ինչպես նաև պարսկական պատմագիրների մոտ[43]։ Պետք չէ տարակուսել, որ հայերը նույնպես մասնակցել են Թամուրյանների դեմ մղած այս մարտերին. ավելին, կան տվյալներ այն մասին, որ հայերը հերոսաբար կռվել են նաև որպես պաշարված բերդերի խիզախ պաշտպաններ. գուցե հենց Երնջակի բերդում է գրանցված այս հիշատակագրությունը. «Այսօր ի դուրս ելան մեր հա-

---

[39] Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատ. III, Երևան, 1952, էջ 362—363։

[40] Տե՛ս Али-Заде, նշված աշխատությունը, էջ 390։

[41] Թ. Մեծոփեցի, էջ 69։

[42] Տե՛ս «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 621։

[43] Տե՛ս Թ. Մեծոփեցի, էջ 17, «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 628, «ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 278—279, 287 ևն, Լ. Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, Բ, Երևան, 1936, էջ 107—108։ V. Minorsky, Transcaucasica, Paris, 1930 էջ 94—96, Али-Заде, նշված աշխատությունը, էջ 390—391։

յերս և բերդի Թուրքերն և Ժ (10) չաղաթա սպանին, և Է (7) մարդ բռնեցին. և բազում աւար առին»[44]։

Լանկ-Թամուրի երրորդ արշավանքը։ Նկատի ունենալով իր՛ տերության արևմտյան երկրամասերում ստեղծված ոչ կայուն ու խառնակ վիճակը, Լանկ-Թամուրը, Երնջակի գրավման լուրն առնելով, 1399 թ. սեպտեմբերին ուժեղ սպառազինված բանակով դուրս եկավ Սամարղանդից ու սկսեց իր երրորդ արշավանքը դեպի Անդրկովկաս, Միջագետք, Ասորիք ու Փոքր Ասիա։ Մտնելով Իրանի հյուսիսային նահանգները, նա անցավ Արաքսը, մտավ Մուղան և 7 ամիս շարունակ, մինչև 1400 թվականի ամառը ավերեց, գերեց ու կողոպտեց Վրաստանի և Հյուսիս-արևելյան Հայաստանի շրջանները։ Գրիգոր Խլաթեցին մեզ արդեն ծանոթ հիշատակարանում այս արշավանքի մասին գրում է. «Որբոմբռեալ գազանութեամբ կատաղին այն Լանկ-Թամուրն, և դարձեալ եւ երրորդ անգամ անթիւ զօրօք բազմութեամբ, առաւել քան զառաջինն և զերկրորդն։ Եւ եկն եկաց ի վերայ աշխարհին Վրաց յաշնանային յեղանակէն մինչև յամառայինն, ամիսս Է (7), աւելի և ոչ պակաս։ Եւ առեալ բազում ամրոցս, և սպան զբազումս ի նոցանէ, մինչև գրեթէ զամենայն արս կոտորեաց, զորոց զկանայս և զտղայս գերի խաղացոյց անթիւս և անհամարս»[45]։

Գեորգի VII թագավորը և նրա եղբայրները, ինչպես Թ. Մեծոփեցին է վկայում, «զամենայն ազգն Վրաց և Հայոց յամրոցս արկեալ պահէին»։ Բայց գտնվում են դավաճաններ վրաց ազնվականներից, որոնք մատնում են թշնամուն բերդերի գաղտնի կածանները։ Թամուրյան զորքերը այստեղ ևս մեծ ավերածություններ են գործում և «աւելի քան զվաթսուն հազար» գերի տանում[46]։ Արևելյան Վրաստանի և Հյուսիսային Հայաստանի շատ բնակավայրեր վերածվեցին ավերակների, շատ շրջաններ՝ անբնակ դարձան։

Սրանից հետո Լանկ-Թամուրն իր բանակն ուղղեց դեպի Փոքր Ասիա և ծանր հարված հասցրեց օսմանյան թուրքերին։

Օղուզ կոչվող վաչկատուն ցեղերը, որ թուրքերի նախնիներն են համարվում, Միջին Ասիայից սկսել էին ներթափանցել Անատոլիա տակավին սելջուկների նվաճողական արշավանքների շրջանում։ Սակայն հիմնական զանգվածով նրանք Խորասանից արևմուտք շարժվեցին՝ տեղի տալով մոնղոլական ցեղերի հաղթական գրոհներին, և տասնամյակների դեգերումներից հետո Փոքր Ասիա մտան XIII դարի կեսերին։ Օղուզների ցեղապետ Էրթողրուլը, ծառայության մտնելով Իկոնիայի սուլթանի մոտ, իր հորդայի համար բնակության երկրամաս է ստանում Անկարայից արևելք և Բուրսայից արևմուտք ընկած տարածություններում։ Էրթողրուլին հաջորդում է իր Օսման որդին, որը բեկի կոչում է ստանում և ճանաչվում որպես Բյուզանդական կայսրության սահմանամերձ շրջանների կառավարիչ։ Օգտվելով մոնղոլների կողմից սուլթան կարգված թուլամորթ Գիյաս-ադ-դին Մասուդ II-ի դեմ բարձրացված ապստամբությունից, 1299 թ. Օսմանն սկսում է կառավարել ինքնուրույն։ Այս թվականը հենց համարվում է Օսմանյան պետության անկախ գոյության սկիզբը։ XIV դարի սկզբներին սելջուկյան սուլթանության փլատակների վրա

---

[44] «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 610։

[45] Նույն տեղում, էջ 628։

[46] Թ. Մեծոփեցի, էջ 66։ Սարգիս գրիչը Տաթևում շարադրած իր հիշատակարանում հայտնում է, որ «զամենեսեան ի սուր և ի գերութիւն վարեաց, թուով ճՌ (100.000)-ու գրեցաւ զկորուստն» («ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 5)։

*սահղծված 10 կիսանկախ իշխանություններից օղուզ-թուրքերի իշխանությունը ուժեղագույններից էր։ Իրենց նշանավոր ցեղապետի անունով օսմանցի (օսմանլի) կոչվող այս թուրքերը XIV դարում հաղթական պատերազմներ մղեցին թուրքական մյուս իշխանությունների դեմ և օր-օրի ընդարձակելով իրենց տիրույթները՝ դարավերջին միահեծան տերը դարձան ողջ Փոքր Ասիայի։*

*1358 թ. սուլթան Ուրխանն անցնում է Հելեսպոնտն ու գրավում Գալիպոլին. այնուհետև սկսվում են օսմանցիների նվաճումները եվրոպական մայր ցամաքում։ 1393 թ. Յըլդըրում (կայծակնահար) սուլթան Բայազիտը գրավում է Բուլղարիան, իսկ երեք տարի հետո՝ 1396 թ. Նիկոպոլի մոտ ջախջախիչ պարտության մատնում թուրքերի դեմ խաչակրաց արշավանքի ելած համաեվրոպական ուժերին, որոնք նախահարձակ էին եղել Հունգարիայի թագավորի գլխավորությամբ։*

*Օսմանյան կայսրության ռազմա-քաղաքական հաղթանակների այս շըրջանում էր, որ Լանկ-Թամուրը հարձակվեց Թուրքիայի արևմտյան նահանգների վրա*[47]*։ Կարճ ժամանակում նա օսմանցիներից գրավեց Սեբաստիա և Մելիտինե քաղաքները՝ Փոքր Հայքում, որոնց բնակչության զգալի մասը հայեր էին։ Սեբաստիայի բերդի պաշտպանները համաձայնվեցին զենքը վար դնել՝ պայմանով, որ իրենց արյունը չթափվի։ Նենգ ու անգութ Թամուրը կարգադրեց մի փոս փորել ու կենդանի թաղել նրա մեջ 3—4 հազարի չափ մարտիկների։ Այսպիսով, «կատարեց» իր ուխտը և չհեղեց նրանց արյունը*[48]*։*

*«Ի սոյն ամի,— գրում է այդ մասին մի հայ հիշատակագիր,— Թամուր բէկն էառ զՍեաստ քաղաք և քանդեաց և աւերեաց, և սրախողող արար զամենեսեան, և զբազումս գերեաց՝ ի կանանց և ի տղայոց. և ԳՌ (3000) մարդ երկիր բացեալ և կենդանոյն թաղեալ՝ զայնոսիկ, որ նետ արձակեցին ի նա»*[49]*։*

*Այնուհետև նա մտավ Եգիպտոսի մամլուկների տիրապետության սահմանները, ավերեց Հալեպն ու Դամասկոսը, իսկ քիչ անց, 1401 թ. կեսերին, Մերդինն ու Բաղդադը՝ Միջագետքում։ Այս վայրերում ևս թամուրյանները անասելի անգթություններ գործեցին. հարյուր հազարավոր անմեղ մարդկանց գլուխներից բուրգեր կազմեցին, մանկահասակներին սմբակակոխ ոչնչացըրեցին։*

***1401—1402 թթ.** ձմեռն անցկացնելով Դամասկոսում, գարնանը Թամուրը ձեռնարկեց նոր արշավանք օսմանյան թուրքերի դեմ, որոնք վերագրավել էին Սեբաստիան ու Երզնկան։ Անկարայի մոտ 1402 թ. հուլիս ամսին տեղի ունեցավ վճռական ճակատամարտ Լանկ-Թամուրի և սուլթան Բայազիտ I-ի միջև։ Վերջինս պարտություն կրեց ու գերվեց Թամուրի կողմից։ Այս դեպքերից հետո թվում էր, թե իսպառ վերացավ Օսմանյան կայսրությունը. Նրա փոքրասիական երկրամասերի վրա գլուխ բարձրացրին սելջուկյան ընկճված ավատատերիշխանները, որոնք թամուրյանների թողտվությամբ վերականգնեցին կիսանկախ իրենց իշխանությունները։*

*1403 թ. Լանկ-Թամուրը կրկին արշավեց Վրաստան ու Աբխազիա։ Իբրահիմ Շիրվանշահի միջնորդությամբ, որը նրա դաշնակիցն էր, հաշտվեց վրաց*

---

47 *Տե՛ս А. Крымский*, История Турции и ее литературы, М., 1916.

48 *Տե՛ս* Առապչաճ, *էջ 109—110։* Թ. Մեծոփեցի, *էջ 65։ «ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 288։*

49 *«ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 3—4։*

Գեորգի VII թագավորի հետ. վերջինս ընդունեց Թամուրյանների իշխանությունն ու մուծեց մեծ փրկավճար։

Այսպիսով, 1399—1403 թթ. պատերազմական գործողությունների ավարտից հետո Լանկ-Թամուրը դարձավ ողջ Անդրկովկասի, Փոքր Ասիայի, Միջագետքի ու Սիրիայի տիրակալ։ Նրա գերագույն իշխանությունը ճանաչեց նաև Եգիպտոսի սուլթանը։

1403—1404 թթ. Թամուրն իր բանակով ձմեռեց Ղարաբաղի դաշտային մասում, իսկ գարնանը մեծ ավարով ու գերիներով վերադարձավ Սամարղանդ։ Մեռավ 1405 թ. փետրվարին, 70-ամյա հասակում, դեպի Չինաստան ձեռնարկած մեծ արշավանքի ճանապարհին։

Նրա մահվան լուրը ցնծությամբ ընդունվեց նվաճված ժողովուրդների կողմից. «Յայսմ ամի,—գրում է այդ մասին մի հիշատակագիր,—մեռաւ Թամուր ղան, որ Ի. մի (21) ամ իբրև գբաժակ բարկութեան առեալ էր գնա ասաուած ի ձեռն, և ում կամէր արբուցանէր, զի յարևելից մինչև ի մուտս արևու զամենեսին հասարակ գերեց՝ զհաւատացեալսն և զանհաւատս, զամենեսեան սրախողխող արար»[50]։

## 3. ՀԱՅԱՍՏԱՆԸ ԿԱՐԱ-ԿՈՅՈՒՆԼՈՒ ԹՈՒՐՔՄԵՆՆԵՐԻ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՏԱԿ

Թամուրի մահվանից հետո նրա հսկայածավալ պետությունը, որ ստեղծվել ու գոյատևում էր բռնությամբ ու ահաբեկումով, սկսեց արագությամբ քայքայվել։ Գահաժառանգների միջև ծայր առան արյունալի կռիվներ։ Միրանշահը, որը հոր կողմից զրկվել էր Թամուրյան պետության արևմտյան երկրների («Հուլավուի թախթի») վրա իշխելու իրավունքից և տիրում էր միայն Հայաստանի ու Վրաստանի վրա, սկսում է պատերազմ իր որդու՝ Միրզա-Օմարի դեմ։ Թամուրի մյուս որդին՝ Շահռուխը, որը պայքար էր մղում պետության արևելյան շրջաններում Միրանշահի մյուս որդի Խալիլի դեմ, միաժամանակ օգնում էր Միրանշահին՝ Միրզա-Օմարի դեմ նրա մարտերում։

1405 թ. ամռանը Միրզա-Օմարի կողմից բանտ նետված Աբուբաքր եղբայրը փախչում, միանում է հորը՝ Միրանշահին, և նրանք երկուսով արշավում են դեպի Ատրպատական՝ Միրզա-Օմարի դեմ։ Զորքը լքում է Միրզա-Օմարին, և Աբուբաքրը Սուլթանիեյում իր հորը հայտարարում է փադիշահ։ Օգտվելով միջդինաստիական այս պայքարից, կարճ ժամանակով (1406 թ. մայիս-հունիս) Շիրվանշահ Իբրահիմը, որն իր շուրջն էր համախմբել Թամուրյան տիրապետությունից դժգոհ և այդ ծանր լուծը թոթափելու համար ատիթ որոնող տեղական մի շարք տիրակալների (Վրաց թագավորը, Շաքիի, Գանձակի ու Արդաբիլի տերերը և այլք) գրավում է Թավրիզը։ Շուտով, սակայն, գահակալական պայքարի ասպարեզ է մտնում Կարա-Յուսուֆը[51]։ Սա Ջելաիրյան սուլթան Ահմադի հետ միասին Լանկ-Թամուրի վերջին արշավանքի ժամանակ պարտություն կրելով Միջագետքում՝ ապաստանել էր Եգիպտոսում,

---

[50] «ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 53։

[51] Այս դեպքերի մասին տե՛ս *И. П. Петрушевский*, Государства Азербайджана в XV в. Сборник статей по истории Азербайджана, вып. I, Баку, 1949, էջ 153—156։

որպես քաղաքական վտարանդի։ Թամուրի մահվանից անմիջապես հետո նա սկսում է ուժեր հավաքել՝ թամուրյանների դեմ դուրս գալու նպատակով։

Կարա-Յուսուֆին հպատակություն են հայտնում և զինական օգնություն ցույց տալիս Բաղեշի քուրդ ամիր Շամս-ադ-դինը, Ոստանի ամիր Եզգինը և ուրիշներ։ 1406 թ. աշնանը նա պարտության է մատնում Աբուբաքրին և գրավում Թավրիզը։ 1407 թ. արշավում է Վրաստան (ճակատամարտում սպանվում է Գեորգի VII թագավորը), գերեվարում է 15 հազար մարդ։ Յուսուֆի և թամուրյանների վերջին բախումը տեղի ունեցավ 1408 թ. ապրիլի 21-ին Թավրիզի մոտակայքում։ Միրանշահը, որ իր եղբայր Շահռուխից 20 հազարանոց օգնական ուժ էր ստացել, փորձում է վերահաստատել իր իշխանությունը, սակայն կատարյալ պարտություն է կրում և սպանվում։ Կարա-Յուսուֆը տիրում է Հայաստանի մեծ մասին ու Ատրպատականին՝ մինչև Արդաբիլ ու Սուլթանիե։ Այնուհետև նա նվաճողական կռիվներ է սկսում Միջագետքում և Փոքր Ասիայում։ 1409 թ. գրավում է Մերդինը, 1410 թ. Մշո դաշտում ջարդում է Աղ-կոյունլու Կարա-Յուլուք Օսմանին և պաշարում Դիարբեքիրը (Ամիդ) և Արղնին։

Օգտվելով Կարա-Յուսուֆի բացակայությունից, ջելաիրյան սուլթան Ահմադը փորձում է դուրս գալ իր «դաշնակցի» տհաճ ընկերակցությունից։ Այդ նպատակով նա դաշնակցում է Շիրվանշահ Իբրահիմի հետ։ Լուր ստանալով այդ մասին, Կարա-Յուսուֆը շտապով հաշտություն է կնքում աղ-կոյունլուների հետ, արագ արշավով վերադառնում է Ատրպատական և 1410 թվականի օգոստոսի 30-ին տեղի ունեցած ճակատամարտում պարտության է մատնում ապստամբներին ու խեղդամահ անում սուլթան Ահմադին[52]։ Հաջորդ թվականին նա ջելաիրյաններից գրավում է նաև Բաղդադը և, այսպիսով, Ատրպատականի, Հայաստանի և Իրաքի վրա հաստատում է կարա-կոյունլուների տիրապետությունը (1410—1468)։

Աշխարհակալ մի պետության տիրակալ դառնալուց հետո էլ Կարա-Յուսուֆը չդավաճանեց քոչվորական կենցաղին ու հոգեբանությանը։ Նա գահն անվանապես հանձնեց իր Փիր-Բուդաղ որդուն, իսկ ինքը Թավրիզից փոխադրվեց Հայաստանի կենտրոնական շրջաններից մեկը՝ Վաղարշակերտ (Ալաշկերտ), իրեն հարազատ մի միջավայր, ուր ապրում էին նստակյաց հայեր՝ երկրի բուն բնակիչները, և քոչվոր թուրքմեններ՝ Կարա-կոյունլու ցեղախմբի ամենառազմունակ Բահարլու ցեղը, որի առաջնորդն էր ինքը՝ Կարա-Յուսուֆը։

Կարա-Յուսուֆն իշխեց համեմատաբար խաղաղ պայմաններում։ Նրա մղած պատերազմներն ու պատժարշավները մեծ մասամբ տեղական բնույթ ունեին։ 1411 թվականին նա պարտության մատնեց ապստամբության դրոշ պարզած Շիրվանշահ Իբրահիմին և Վրաց Կոստանդին թագավորի միացյալ զորքերին։ (Հիմքեր կան ենթադրելու, որ այս ապստամբությանը մասնակցել են նաև հայ ֆեոդալներ)[53]։

1416 թվականին, Ախալցխայի մահմեդականների սադրանքով, Կարա-Յուսուֆն արշավեց Վրաստան ու գրավեց Ախալցխա քաղաքը. «Եւ զամենեսեան,—ասում է ժամանակակից մի գրիչ,—առհասարակ զարսն ի սուրն սուսերի մաշեալ, և զկանայս և զմանկունս գերի վարեալ»[54]։ Գրիգոր Խլաթեցին

[52] Տե՛ս Թ. Մեծոփեցի, էջ 72—73։

[53] Տե՛ս «ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, Առաջաբան, էջ 13—14։

[54] Նույն տեղում, էջ 181—187։

հայտնում է, որ գերվածների թիվը 10 հազարից ավելի է եղել[55], իսկ Թ. Մեծոփեցին՝ «աւելի քան կլեց հազար» է հաշվում[56]։

1418 թ. Կարա-Յուսուֆն արշավեց Հյուսիսային Միջագետք, այդ մասով Սիրիա, բայց՝ լսելով Փիր-Բուդաղ որդու մահվան լուրը, ետ դարձավ։ Այդ մասին Թ. Մեծոփեցին, օգտագործելով ժողովրդական թևավոր մի դարձվածք, ասում է. «Դարձեալ գնաց յետ այսորիկ ի Տիարպէկն և էջ ի վերայ կողմանն Շամայ իբրև աղուէս, և ջղջկան տկար յետս դարձաւ»[57]։

Թամուրյանների տիրապետության և ամենամյա կործանիչ պատերազմների սարսափները ճաշակած հայ ժողովրդի համար Կարա-Յուսուֆի իշխանության տարիները խաղաղ էին թվում։ «Եւ եղև,— գրում է Թ. Մեծոփեցին,— ի նոյն ժամանակս խաղաղութիւն... և շինութիւն ամենայն աշխարհիս, մինչ զի յԱրճիշու մինչ ի գաւառն Արարատեան մարդիկ ի յաւեր ոչ բնակէին, այլ ի շէնս բնակէին. և թէպէտ հարկապահանջութիւնն բազում էր. սակայն խաղաղութիւնն առանց խռովութեան էր»[58]։ Իսկ Գրիգոր Խլաթեցին ավելացնում է, որ Կարա-Յուսուֆը.

Արար բազում խաղաղութիւն
Եւ աջողումն մարդկային.
Էր էմնութիւն և էժնութիւն,
Ամենևին անգողութիւն[59]։

Խաղաղության այս մի քանի տարիներին ժողովուրդը հնարավորություն ստացավ վերականգնելու քայքայված տնտեսությունը և, նույնիսկ, որոշ վայրերում շինարարական ու վերանորոգչական աշխատանքներ կատարվեցին։ Այսպես, օրինակ, վերաշինվեց Կարս քաղաքը («Եղև շինութիւն և նորոգութիւն հռչակաւոր քաղաքիս Կարուց»)[60] և այլն։

Երկար չտևեց, սակայն, համեմատաբար բարվոք այս շրջանը։ 1419 թվականին Խորասանի և Իրանի հարավային ու արևելյան մասերի տիրակալ Շահռուխի հետ գաղտնի պայմանավորվածությամբ, կարա-կոյունլուների պետության արևմտյան սահմանների վրա հարձակում գործեց Աղ-կոյունլու Օսմանը։ Քիչ անց զինական մեծ ուժերով արևելքից արշավեց նաև Շահռուխը։ Կարա-Յուսուֆը դուրս եկավ նրա դեմ, բայց մահացավ ռազմերթի ճանապարհին, 1420 թվականի նոյեմբերին։

Կարա-Յուսուֆի մահը խուճապ է առաջացնում նրա բանակում. նահանջի ճանապարհին անգլուխ այդ զորքը մեծ խժդժություններ է գործում։ Ժամանակակից մի գրիչ հաղորդում է, որ «Յամի ութհարիւր և եւթանասուն թուականի Հայոց (1421), և յետ մահուան Ղարա-Յուսուֆին, եղև խռովութիւն և յոյժ սասանումն ընդ ամենայն երկիրս Հայաստանեայց, զի հեծելազօրքն ամենայն չփոթեալ՝ զմիմեանս հարկանէին և կողոպտէին»[61]։

---

[55] Տե՛ս նույն տեղում, էջ 280—281։

[56] Թովմա Մեծոփեցու Յիշատակարանը, հրատ. Կ. Կոստանյանց, Թիֆլիզ, 1892, էջ 62։

[57] Թ. Մեծոփեցի, էջ 78։

[58] Նույն տեղում, էջ 73։

[59] «ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 289։

[60] Նույն տեղում, էջ 134։

[61] Նույն տեղում, էջ 254, հմմտ. նաև էջ 281։

Նահորմին իր հոկայական բանակով, առանց դիմադրության հանդիպելու, հասնում է մինչև Խլաթ։

Կարա-Յուսուֆի Իսքանդար որդին, որ կռվում էր պետության արևմտյան սահմաններում Աղ-կոյունլու Օսմանի դեմ, պարտության է մատնում նրան և 150 հազարանոց բանակով դալիս է Թամուրյաններին ընդառաջ։ Վճռական ճակատամարտը տեղի է ունենում Վաղարշակերտի դաշտում, Բագվանի մոտ, 1421 թ. օգոստոսի 1-ին։ Կարա-կոյունլուները խայտառակ պարտություն են կրում. Իսքանդարն ու իր եղբայր Սպանդիարը (կոչվում է նաև Իսպենդ ու Ասպահան) փախչում են Մերդինի ու Մոսուլի կողմերը, իսկ Շահռուխը մեծ ավարով վերադառնում է Խորասան[62]։

Թամուրյաններն իրենց հետ տանում էին մեծ թվով գերիներ. «Կին և տղայքն ի թիւ չանկան, զոր գերեցան և կոխեցան»,—հայտնում է Գր. Խլաթեցին[63], բայց շատ ավելի զոհեր է տալիս հայ ժողովուրդն այդ տարիներին բնական արհավիրքներից՝ մորեխի հետևանքով առաջացած սովից և մահտարաժամից։

1419 թ. «ըստ անչափութեան աւազոյ ծովու» մորեխ է հայտնվում, որ թանձրախիտ ծածկում է «զդաշտ և զլերինս, զսար և զձոր միահաղոյն, ի Սալմաստայ մինչ յԱրզըռումն»[64]։ Բայց այդ տեղի է ունենում հնձի ժամանակ, ուստի հնարավոր է լինում բերքի մի մասը փրկել։ Իսկ մյուս՝ 1420 թ. և հետագա տարիներին մորեխն ավելի մեծ ավերածություն է գործում, որի հետևանքով սովի են մատնվում Հայաստանի բազմաթիվ շրջաններ։

Շահռուխի վերադարձից հետո Հայաստանում կրկին հայտնվում է Կարա-Յուսուֆի որդի Սպանդիարը. նա ասպատակում է Արճեշի և Արծկեի շրջանները, քանդում Բասենի և Ավնիկի ամրությունները և, հատկապես, մեծ վնասներ է պատճառում Կարին քաղաքին. «զԿարնոյ քաղաքըն՝ զԱրզըրում քան զամենայն խիստ աւերեց»,—գրում է Գր. Խլաթեցին, գրավում է Թավրիզը, սակայն կարճ ատև։ Շուտով հայտնվում է Իսքանդարը և փախուստի մատնում իշխանատենչ եղբորը։

Եվ այսպիսով, Իսքանդարին հաջողվում է վերահաստատել կարա-կոյունլուների պետությունը՝ իր նախկին սահմաններով։ Ժամանակակից մի հիշատակագիր հայտնում է, որ նա տիրել է «Պարսից և Բաբելացւոց, Հայոց և Միջագետաց Ասորւոց, յԱրարատեան տանէն Հայոց՝ մինչ յԵղնկայն, ի Մերդին, ի Բաղդադ, ի Սուլթանիայ, և ի Գանձակ շահաստանն Թաւրէզ և մինչ ի գետն Քուռ»։

XV դարի 20-ական թվականներին տեղի ունեցած շարունակական պատերազմների, գաղթերի ու տեղահանությունների, ինչպես նաև բնական արհավիրքների հետևանքով Հայաստանի շատ շրջաններ անմարդաբնակ էին դարձել։ Ազգաբնակչության կազմի մեջ տեղի էին ունեցել զգալի փոփոխություններ. քրդական ու թուրքական մի շարք քոչվոր ցեղեր կայուն բնակություն էին հաստատել Հայաստանի բարեբեր շրջաններում։ Այդուհանդերձ Իսքանդար Կարա-կոյունլուն զգալի չափով հայ էթնիկական տարրի վրա էր հենվում՝ կենտրոնաձիգ ուժեղ պետություն ստեղծելու իր ծրագիրն իրականացնելիս։ Նա իրեն շահ-ի Արման (թագավոր Հայոց) էր կոչում, պետական բարձր

[62] Տե՛ս Թ. Մեծոփեցի, էջ 81, հմմտ. «ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 250, 282 և այլն։

[63] «ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 282։

[64] Նույն տեղում, էջ 225, 226, 375։

պաշտոնների էր առաջ քաշում հայ ֆեոդալական տների որոշ ներկայացուցիչների, իր զորքերի մեջ հավաքագրում էր նաև հայ ռազմիկների և այլն[65]։

1422—1427 թթ. Իսքանդարը համառ պայքար ծավալեց Հարավային Հայաստանի մի շարք շրջաններում՝ Բաղեշում, Ռշտունիքում, Խիզանում և այլուր հաստատված քրդական կիսանկախ ամիրությունների դեմ, որոնք տեղական շահերից ելնելով, բախվում էին կենտրոնական իշխանությանը, վտանգի պահին լքում էին իրենց սյուզերենին և հաճախ հանդես գալիս թշնամիների բանակում։ Իսքանդարը գիտակցում էր, որ կարա-կոյունլուների ընդարձակ պետության ամրապնդման և արևմտյան սահմանների ապահովման համար անհրաժեշտ է սանձել կիսանկախ ամիրների կենտրոնախույս ձգտումները, թույլ չտալ, որ նրանք փոխադարձաբար ասպատակեն միմյանց տիրույթները[66]։ Եվ նա ծրագրված պայքար սկսեց Բաղեշի ու Ռշտունիքի քրդական ամիրությունների դեմ։ 1422 թ. օգոստոսին պաշարեց Բաղեշի ամիրության կարևոր կենտրոններից Խլաթը և սպանեց իր փեսա Շամս-ադ-դին ամիրին։ Խլաթի բերդը գրավել նրան չհաջողվեց, բայց այրեց քաղաքը[67]։ Այնուհետև պաշարում է Աղվանք բերդը, հայերը դիմադրում են, բայց պարտվում և 200-ից ավելի զոհ են տալիս[68]։ Այս վայրերից կարա-կոյունլուները 500 գերի են վերցնում։

1423 թ. Իսքանդարը թունավորում է ամիր Եզդինի որդի Մելիք-Մահմադին, որը իր հոր մահվանից հետո (հավանաբար մհ. 1419 թ.) Վանի ու Ոստանի ամիրն էր դարձել։ Շամբո կոչվող քրդական ցեղապետերի այս ընտանիքը տիրում էր Վասպուրականի հարավային գավառների վրա։ 1424 թ. Իսքանդարը ձերբակալում է Մելիք-Մահմադի եղբայր սուլթան Ահմադին ու պահանջում առանց դիմադրության հանձնել իրեն ամիրության բոլոր բերդերը։ Մերժում ստանալով, Իսքանդարը սպանում է նրան ու մեծ զորքով արշավում Ռշտունիք։ Հիսուն օր ապարդյուն պաշարում է Վանի բերդը։ 1425 թ. գարնանը Իսքանդարի զորքերը նորից են հայտնվում Ռշտունիքում, մեծ ավերածություններ գործում ու շարունակում Վանի պաշարումը։ Սուլթան Ահմադի որդի Մելիք-Ասադը ստիպված հանձնում է բերդը և անցնում Ջուլամերիկ[69]։ Պարտություն է կրում ու սպանվում նաև քրդական նույն ֆեոդալական տան անդամներից ամիր Բահա-ադ-դինը, որը իշխում էր Ուրմիայում[70]։ Այսպիսով, երկու տարի տևող մարտերից հետո, կարա-կոյունլուներին հաջողվում է տիրել Շամբոյան տան բոլոր տիրույթներին։

Ի պաշտպանություն Իսքանդարի կողմից ոչնչացվող քրդական ամիրայու-

---

[65] Հ. Փափազյան, Մի էջ Արևելյան Հայաստանի քաղաքական կյանքի պատմությունից («Տեղեկագիր», 1955, № 8, էջ 84—88)։

[66] Ռշտունիքի ու Բաղեշի ամիրությունները, օրինակ, հաճախ դուրս էին գալիս մեկը մյուսի դեմ ու փոխադարձաբար ավերում գյուղեր ու շրջաններ։ Այսպես, 1408 թ. Բաղեշի Շամս-ադ-դին ամիրը և Կարա-Յուսուֆը «շատ աւեր արարին Վանայ և Ոստանայ»։ Հաջորդ տարին Շամս-ադ-դինի հեծելազորը արշավեց Շատվան (Ռշտունիքում) և այրեց այն։ Ռշտունիքի ամիր Եզդինը պատասխան արշավանք կազմակերպեց. «Եւ բարկացեալ Ամիր-Եզդին գնաց և այրեաց Կ (60) գեղ ի Բաղիշոյ» (Մժ, I, էջ 119)։ Այս նույն անցուդարձերը Սամուելի շարունակողը (էջ 173) դնում է 1419 թ. տակ։

[67] Տե՛ս «ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 283, Թ. Մեծոփեցի, էջ 84։

[68] Տե՛ս «ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 284, Թ. Մեծոփեցի, էջ 83։

[69] Տե՛ս Թ. Մեծոփեցի, էջ 84։

[70] Տե՛ս Ս. Մուրադյան և Ն. Մարտիրոսյան, Ցուցակ ձեռագրաց Մշոյ ս. Առաքելոց-Թարգմանչաց վանքի և շրջակայից, Երուսաղեմ, 1967, էջ 111։

թյունների, Վանա լճի հյուսիսային շրջաններում հանդես է գալիս Աղ-կոյունլու Կարա-Յուլուք Օսմանը, որին մի հայ հիշատակագիր կոչում է՝ «թագաւոր ամենայն Միջագետաց, պարոնաց պարոն շահ Օթման Պահատուր»։ Երեք տարի պաշարումից հետո, 1425 թվականին նա գրավում է Երզնկան, ասպատակում Արճեշի և Արծկեի շրջանները՝ գերեվարում բնակչությանը[71]։ Կարա-կոյունլուները 1426—28 թթ. հակահարված են տալիս աղ-կոյունլուների ու Բաղեշի քուրդ ամիրների միացյալ ուժերին, և ապարդյուն պաշարում են Բաղեշի բերդը։ Միաժամանակ պատերազմական գործողություններ են սկսում պետության տարբեր մասերում իրենց գոյությունը պահպանած կիսանկախ իշխանությունների դեմ։ 1426 թվականին վերջ է տրվում Արտազի (Մակվի) հայկական իշխանությանը, որը գտնվում էր կաթոլիկ հայ ֆեոդալ Սոյուրղաթմիշի ձեռքին[72]։ Այնուհետև Իսքանդարը հարձակվում է Շիրվանի վրա, ստիպում Շիրվանշահ Խալիլուլլահ I-ին (1417—1462) ենթարկվել կարա-կոյունլուներին, ապա ներխուժում է Թամուրյանների տիրապետության սահմաններն ու գրավում Սուլթանիե, Զենջան ու Ղազվին քաղաքները։

Բախումը Թամուրյանների ու կարա-կոյունլուների միջև դառնում է անխուսափելի։ 1428 թ. հոկտեմբերին Իսքանդարի դեմ պատերազմական գործողություններ է սկսում Շահռուխի զորահրամանատարը, իսկ 1429 թ. մայիսին գլխավոր ուժերով հանդես է գալիս ինքը՝ Շահռուխը։

Սալմաստի մոտ տեղի ունեցած ճակատամարտում Իսքանդարը պարտություն է կրում։ Թամուրյաններն ասպատակում են Հայաստանի տարբեր շրջանները. հատկապես տուժում է Վասպուրականի և Քաջբերունիքի բնակչությունը։ Անդրադառնալով այդ դեպքերին Դավիթ գրիչը հայտնում է, որ Շահռուխը «աւերեալ քանդեաց բաղում տեղիս, և ղբաղումս գերեաց, նաև յերկրին Վասպուրականի և Քաջբերունոյ՝ կին և տղայ ոչ մնաց, այլ զամենայն առեալ տարաւ ի Սամըրղընդ»[73]։

1430 թ. գարնանը կարա-կոյունլուների պետության գահը հանձնելով Իսքանդարի եղբայր Աբու-Սայիդին, Շահռուխը վերադարձավ Սամարղանդ։

Այս զորաշարժերի ու ասպատակությունների ընթացքում ժողովուրդն ստիպված էր ծվարել անմատչելի լեռնածերպերում, փախչել իր բնակավայրերից, երկիրը թողնելով անմշակ։ Դրա հետևանքով 1431 թ. Հայաստանում և Ադրբեջանում սով է սկսվում, որն իր հերթին մարդկային մեծ զոհեր է կլանում։

1431 թ. Իսքանդարն սպանում է իր Աբու-Սայիդ եղբորը և վերագրավում գահը։ 1434 թ. արշավում է Շիրվան, որի ընթացքում նրա զորքերն անխնայաբար ոչնչացնում են Շիրվանի զարգացած շերամապահության հիմքը՝ թթենիների այգիները։ Այնուհետև արշավում են «յայնկոյս դրանն Դարբանդու» (Դաղըստան). մեկ տարի մնում են այնտեղ ու «սրախողող առնելով զլեռնականս և զդաշտականս» ետ վերադառնում[74]։

Շիրվանշահ Խալիլուլլահի խնդրանքով 1435 թ. Շահռուխը երրորդ անգամ

---

[71] Տե՛ս «ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 326։

[72] Տե՛ս նույն տեղում, էջ 353, 376։ Արտազի հայկական իշխանության մասին ուշագրավ տեղեկություններ է հաղորդել Կլավիխոն, որը 1404 թ., որպես Իսպանիայի թագավորի դեսպան, անցնում էր Հայաստանով դեպի Սամարղանդ (տե՛ս Հ. Հակոբյան, Ուղեգրություններ, հատ. Ա, Երևան, 1932, էջ 114—116)։

[73] «ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 419։

[74] Թ. Մեծոփեցի, էջ 100։

պատերազմական գործողություններ է ծավալում Իսքանդարի դեմ։ Թամուրյանները պաշարում են Երնջակի բերդը. Իսքանդարը փախչում է պետության արևմտյան շրջանները։ Ծանր վիճակ է ստեղծվում հայ ժողովրդի համար։ Շուրջ մեկ տարի նրանք ավերում ու հրո ճարակ են դարձնում անպաշտպան գյուղերն ու շեները, կողոպտում, գերում ու հավատափոխ են անում բնակչությանը։ Շատ-շատերը թողնում են իրենց հայրենի օջախը և գաղթում այլ երկրներ։ Բազմաթիվ հիշատակագիրներ նկարագրել են սրտաճմլիկ այս դեպքերը. Աստվածատուր գրիչը, Կոտայքի Արծնի գյուղից, հայտնում է, որ Շահռուխը իր «անգութ, և անագորոյն, և յանողորմ, զորքերով անասելի ավեր ած ի վերայ աշխարհիս Հայոց։ Զի զոր սրով կոտորեաց, և զոր անողորմ գերի վարեաց և կորոյս, և զոր սովամահ եղան, և զոր մահն տարաւ, և զորս դայլք և գաղանք կերան և պատառեցին, և մնացեալքն այսր և անդր փախեան բնաջինջ և մտին յաշխարհն Վրաց»[75]։

Զգալի դատարկվում է Սյունյաց երկիրը։ Բեշքեն Օրբելյանը 6000 տուն[76] հայ բնակչության գլուխն անցած, դիմադրելով Շահռուխին, անցնում է Լոռի, ուր կալվածքներ է ստանում Վրաց Ալեքսանդր թագավորից[77]։

Շահռուխն այս անգամ ևս վերջ չի տալիս կարա-կոյունլուների իշխանությանը։ Իսքանդարի Ջհանշահ եղբայրը հնազանդվում է Շահռուխին և ստանում գահը. 1436 թ. գարնանը թամուրյանները վերադառնում են Խորասան։

Իսքանդարը իր պետության արևմտյան շրջաններում պատրաստություններ էր տեսնում իշխանությունը վերստին գրավելու։ Նա փոքրաթիվ ուժերով հաջող մարտեր է մղում ակ-կոյունլուների դեմ։ 1435 թ. մի ճակատամարտում սպանում է Կարա-Յուլուք Օսմանին ու բարձրաստիճան շատ գործիչների, այնուհետև արշավում Սեբաստիայի, Թոխաթի, Խարբերդի ու Դերջանի շրջանները և կազմակերպում հայ բնակչության բռնագաղթ՝ Այրարատյան և Սյունյաց նահանգների նոսրացած բնակավայրերում նրանց վերաբնակեցնելու նպատակով։ Ճանապարհին ցրտից ու սովից մեռնում է 700-ից ավելի մարդ[78]։

1437 թ. Իսքանդարը բախվեց Ջհանշահի հետ և սկզբից որոշ հաջողություն ունեցավ[79], բայց դրությունը շուտով փոխվեց։ Իսքանդարի հրամանատարության ներքո գործող զորախմբերը, հոգնած ու ձանձրացած հարատև պատերազմներից, լքեցին նրան ու անցան Ջհանշահի կողմը։ Իսքանդարը պատսպարվեց Երնջակի բերդում՝ պայքարը շարունակելու վճռականությամբ, բայց սպանվեց իր Շահ-Կուբադ որդու կողմից[80]։

Եվ սակավ ժամանակով, ինչպես հաղորդում է Թովմա Մեծոփեցին, խաղաղություն տիրեց, որովհետև Իսքանդարի կենդանության օրոք, Խորասանից սկսած մինչև Եգիպտոս, երկիրը վրդովման և ալեկոծման մեջ էր, և միայն նրա մահվանից հետո հպատակ ժողովուրդները շունչ քաշեցին։

---

[75] «ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 485։

[76] Թ. Մեծոփեցու պատմության հրատարակության մեջ ասված է. «աւելի քան զ60.000 քրիստոնեայ տունս» որ գրչագրական աղավաղում է անշուշտ։ Մաշտոցի անվան Մատենադարանի բոլոր ձեռագրերը տալիս են «աւելի քան զՋՌ» (6000), ընթերցվածքը, որը գտնում ենք նաև Ղ. Ալիշանի մոտ (տե՛ս «Սիսական», Վենետիկ, 1893, էջ 96)։

[77] Տե՛ս Թ. Մեծոփեցի, էջ 117—118, «ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 466—470։

[78] Տե՛ս Թ. Մեծոփեցի, էջ 105, «ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 486։

[79] Ժամանակակից մի հիշատակագիր ասում է նույնիսկ, որ «Սքանդարն դարձաւ և փախեաւ»... actually see below

Ջհանշահն իշխեց մինչև 1467 թ.։ Նրա օրոք, 1441 թ. հայ եկեղեցու կյանքում տեղի ունեցավ կարևոր մի իրադարձություն։ Կաթողիկոսական աթոռը, դարավոր դեգերումներից հետո, վերահաստատվեց Հայաստանի կենտրոնում՝ Վաղարշապատ (Էջմիածին) քաղաքում։

Աթոռի Էջմիածին տեղափոխվելու գաղափարն արծարծվել էր XIII դարի վերջերից, երբ Հռոմկլան՝ հայ կաթողիկոսների երկդարյա նստավայրը, գրավեց ու ավերեց Եգիպտոսի սուլթան Մելիք-Աշրաֆը (1292)։ Այդ գաղափարի արտահայտություն պետք է համարել Ստ. Օրբելյանի «Ողբ ի սուրբ կաթուղիկէն» պոեմը, որի մեջ հեղինակը բաղձանք է հայտնում Էջմիածնում վերականգնված տեսնել՝ «զաթոռ թագաւորին և զգաւազան պատրիարգին»։ Կաթողիկոսական աթոռը մայր հայրենիք տեղափոխելու նպատակով որոշակի քայլեր են կատարվում Հովհան Որոտնեցու (մհ. 1386 թ.) կողմից, որը, ինչպես հաղորդում է Գրիգոր Տաթևացին, ծրագրել էր Գանձասարը դարձնել հայ կաթողիկոսության կենտրոն, հաշվի առնելով, անշուշտ, այն հանգամանքը, որ այդ վանքը, հնավանդ կաթողիկոսական իր աթոռով, համեմատաբար ապահով պայմանների մեջ էր Հասան-Ջալալյան ֆեոդալական գերդաստանի իշխանության ներքո[81]։

Աթոռի տեղափոխման հարցի լուծումն առավել հրամայական դարձավ 1426 թ. հետո, երբ Կիլիկյան Հայաստանի վերջին հայ իշխանավորը՝ Կոստանդին անունով, անկարող լինելով դիմադրավել Եգիպտոսի Մուզաֆար սուլթանի հարձակմանը, բազմահազար արտագաղթողների գլուխ անցած թողեց Սիսը և ապաստան գտավ Կիպրոսում։ Անվանի պատմաբան Մ. Օրմանյանը իրավամբ նկատում է, որ «այլևս պատճառ մըն ալ չկար, որ հայրապետական աթոռը յուր պանդխտությունը շարունակեր, որուն միակ արդարացումը ազգային քաղաքական իշխանության Վաղարշապատե դուրս եղած ըլլալն էր»[82]։

1431 թ. Էջմիածնի վանքը տնտեսապես ամրապնդելու և կաթողիկոսական աթոռանիստ դարձնելու նպատակով, Սյունյաց իշխան Բեշքեն Օրբելյանի որդի Ռուստամը, որն Իսքանդար Կարա-կոյունլուի ամենամերձավոր խորհրդականներից էր ու, թերևս, նշանակվել էր Այրարատյան երկրի կողմնապետ, վաճառքի անվան տակ Էջմիածնի վանքին է նվիրում յոթ խոշոր գյուղեր (Վաղարշապատ, Օշական, Բաթրինջ, Նորադավիթ, Աղավնատուն, Թեղենիս-Քիրաշլի և Մուղնի)[83]։

Կաթողիկոսական աթոռը Էջմիածին փոխադրելու գործը նախաձեռնողները, անշուշտ, փայփայում էին քաղաքական որոշ հեռապատկերներ։ Այրարատի կենտրոնում վերահաստատված հայրապետական աթոռը համահայկական կենտրոնի դեր ստանձնելով, ինչ-որ չափով շաղկապելու էր հայ ժողովրդի տարբեր բռնապետական իշխանությունների տակ հեծող հատվածները և հող էր նախապատրաստելու երկրի անկախության վերականգնման համար։ Այսպիսի հույսեր կարող էր փայփայել Ռուստամ Օրբելյանը, որը պաշտոնական

---

81 Տե՛ս Գր. Տաթևացի, Բանք գեղեցիկ և յոյժ պիտանի վասն աթոռոյն Աղթամարայ, Մատենադարան, ձեռագիր № 4669, էջ 199բ—200բ։

82 Մ. Օրմանյան, Ազգապատում, մասն Բ, Կ. Պոլիս, 1914, էջ 2092.

83 Տե՛ս Հ. Փափազյան, Մի էջ Արևելյան Հայաստանի քաղաքական կյանքի պատմությունից («Տեղեկագիր», 1955, № 8, էջ 83—100)։

փաստաթղթերում մեծարվում էր «Վեհանձնյա ամիր և իշխան, մեծափառ, աղնվաշուք, բարձրաստիճան, բարձրագույն վստահելի ծառա և ամենաաղնիվ վեզիր, նորին կայսերական մեծության Սուլթանի մոտերիմ...» բարձրագոչ տիտղոսներով[84]։

Մեծ էր լինելու հայ եկեղեցու միասնական կենտրոնի դերը նաև հարևվան և հեռավոր երկրներում ստեղծված հայկական գաղթավայրերի միջև մշակութային ու գաղափարական կապեր հաստատելու, ուսումնական կենտրոններ հիմնելու և հայրենի միջավայրից կտրված ու ցրված հայ զանգվածներին ազգային ավանդույթներով շաղկապելու գործում։

Էջմիածինը հայ եկեղեցու կենտրոն դարձնելու գաղափարին համակիր էին հայ ժողովրդի լայն շրջանները, որովհետև Սսի կաթողիկոսներն ու նրանց կողմից կարգված եկեղեցականները կեղեքում էին ժողովրդին։ Նրանք հոգևորական էին ձեռնադրում միայն նրանց, ովքեր «տեարք էին ընչից» որովհետև «արծաթով տային զշնորհս հոգւոյն սրբոյ»։ Միևնույն թեմի վրա երբեմն նշանակվում էին 3, նույնիսկ 4 եպիսկոպոսներ, որոնք «ի վերայ միմեանց յարուցեալ, զանօրէնս և զանհաւատս և զսուտ քրիստոնեայս բարեկամս արարեալ գայթակղութեամբ զաշխարհս մեր կործանեցին»։ Եպիսկոպոսներից շատերը շվայտ ու անբարոյական կենցաղ ունեին, «անառակութեամբ և արբեցութեամբ և պիղծ վարուք շրջէին» և դրամով գնած լինելով իրենց պաշտոնը միջոցի առջև կանգ չէին առնում հնարավորին չափ կարճ ժամանակում հարստություն դիզելու համար[85]։

1441 թ. Թովմա Մեծոփեցու և Հովհաննես Կոլոտիկ Հերմոնեցու նախաձեռնությամբ Էջմիածնում գումարվում է մեծ ժողով, որին մասնակցում են 12 եպիսկոպոսներ, 18 վարդապետներ և 300-ից ավելի քահանաներ, կալվածատերեր, ձեռնավորներ, տանուտերեր և «բազմութիւն ժողովրդեան»։ Այրարատյան նահանգի կառավարիչ Յաղուբ-բեկը, որ, անշուշտ, կատարում էր Ջհանշահի հրահանգը, նպաստավոր պայմաններ է ստեղծում ժողովականների համար. նրանց «փողով և թմբկով և ղուռնով» Երևանից ճանապարհ են դնում Էջմիածին[86]։

Ժողովականները բաժանված էին երկու ուժեղ խմբակցության՝ Վասպուրականցիների և Սյունեցիների, որոնցից յուրաքանչյուրը ձգտում էր կաթողիկոսական գահին բազմեցնել իր թեկնածուին։ Երկար վեճերից հետո ընտրվում է չեզոք մի անձնավորություն՝ Կիրակոս Վիրապեցին։ Սակայն երկու տարի չանցած՝ 1443 թ., նա արտաքսվում է, և Սյունյաց խմբակցության կողմից կաթողիկոս է հռչակվում Գրիգոր Մակվեցի Ջալալբեկյանը, այն հոգևորականը, որի անունով հենց 1431 թվականին ձևակերպված էր Էջմիածնի վանքի 7 գյուղերի կալվածագիրը։

Այսպիսով, 1441 թվականին, շուրջ հազարամյա դեգերումներից հետո, Էջմիածինը կրկին դառնում է հայ եկեղեցու գերագույն պետերի աթոռանիստ կենտրոն։ Ինքնուրույն պետականությունից զրկված հայ ժողովրդի համար այդ քայլը զուրկ չէր քաղաքական նշանակությունից և, ինչպես առիթ կունենանք տեսնելու, համազգային կազմակերպություն դարձած Էջմիածնի կաթողիկոսությունը, մանավանդ XVII դարի կեսերից, խոշոր դեր կատարեց ազատագրա-

---

[84] Նույն տեղում, էջ 86։

[85] Տե՛ս Թ. Մեծոփեցի. Յիշատակարան, էջ 51—61։

[86] Նույն տեղում, էջ 68։

կան գաղափարների արծարծման, ժողովրդի կենսունակ ուժերի համախմբման ասպարեզում։

* *
*

Ջհանշահի գահակալության տարիները ժամանակակիցները համարում են նաև ծանր հարկապահանջության ու կեղեքման տարիներ, նշելով միաժամանակ, որ նա խաղաղարար կամ խաղաղասեր թագավոր էր։ Այդ մասամբ ճիշտ է. Կենտրոնական Հայաստանի շրջանները, շուրջ քառորդ դար, զերծ մնացին խոշոր զորաշարժերից ու պատերազմական գործողություններից։ Բայց Ջհանշահի ժամանակ էլ պատերազմներն անպակաս էին, մանավանդ վրաց տիրապետության տակ գտնվող Հյուսիսային Հայաստանի շրջաններում, ինչպես և աղ-կոյունլուների և կարա-կոյունլուների պետության սահմանամերձ գավառներում։

1440 թ. Ջհանշահը 20 հազարանոց բանակով արշավեց Վրաստան ու գրավեց Տփղիսը։ Ժամանակակից մի վարքագիր այդ մասին գրում է. «Եւ նոցա երթեալ ի քաղաքն Տփխիս՝ քանդեցին, աւերեցին և զքաղաքն հրոյ ճարակ տուին, զամենայն եկեղեցիս ի հիմանց տապալեցին»[87]։ Վրաստանի հարավային շրջաններում Ջհանշահը կոտորել տվեց մոտ 8 հազար և գերեվարեց ավելի քան 9 հազար մարդ՝ հայ ու վրացի[88]։

Այնուհետև Ջհանշահը պաշարում է Սամշվիլդե հայաբնակ պարսպապատ քաղաքը և շուրջ երկու ամիս կռվելուց հետո խաբեությամբ գրավում այն։ Կարա-կոյունլուները դաժան հաշվեհարդար են տեսնում բնակչության հետ։ Երեք հազար մարդ սպանվում է ու գլխատվում, 1664 զանգերից 3 բուրգ է կիտվում, գերվածների թիվը 9 հազար է հաշվվում[89]։

1442 թ. Ջհանշահը Շամբոյան քրդական ցեղի ամիրներից գրավում է Մոկաց աշխարհում գտնվող Ջռել անառիկ բերդն ու Ջուլամերիկը, իսկ 1446 թ. արշավում է Իրաք և գրավում Բաղդադը։

1450 թ. Ռուստամ Թարխան-օղլու հրամանատարությամբ գործող 60 հազարանոց բանակը արշավանք է սկսում աղ-կոյունլուների դեմ։ Կարա-կոյունլուները գրավում են Երզնկան, Կամախի շրջանից գերում 10 հազար բնակչություն, ավերում Դերջանը, Բաբերդը, Կեղին, Սատաղը և այլ շրջաններ։ Այնուհետև փորձում են գրավել նաև աղ-կոյունլուների կենտրոնական քաղաքները՝ Ամիդը, Արզնին ու Մերդինը[90]։ Փոփոխակի հաջողություններով թշնամի կողմերի միջև մարտեր են տեղի ունենում մինչև 1453 թ. գարնան ամիսները, երբ Աղ-կոյունլու Ջհանգիրի և Ռուստամ Թարխան-օղլու միջև կնքվում է հաշտություն, որով կարա-կոյունլուները ավելի են սրում Աղ-կոյունլու երկու եղբայրների՝ Ջհանգիրի և Ուզուն-Հասանի միջև սկսված գահա-

---

87 «ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 507։

88 Գերվածների ու սպանվածների թվի մասին մեր աղբյուրներում տարբեր տվյալներ են գրանցված։ Վերոհիշյալ տվյալները ստացել ենք մի շարք հիշատակագիրների (տե՛ս «ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 504, 514, 532, 546, 644 և այլն) և Թ. Մեծոփեցու (էջ 120) հաղորդած թվական տվյալների քննության ու համադրության ճանապարհով։

89 Տե՛ս Թ. Մեծոփեցի, էջ 120, Կիրակոս Բանասէր. ձեռագիր № 1382, էջ 306բ, «Մանր ժամանակագրություններ», Բ, Երևան, 1956, էջ 514, «ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 508, 514—515, 532։ Սկզբնաղբյուրները չեն միաբանում զոհերի ու գերիների մասին թվական տվյալներ հաղորդելիս։

90 Տե՛ս «ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 646, Բ, էջ 3, 31։

կալական պայքարն ու երկպառակությունը՝ վորավիդ դառնալով Ջհանգիրին. այս կռիվները, սակայն, նոր շրջաններ զավթելու առումով, օգտակար չեն լինում կարա-կոյունլուների համար[91]։

Ջհանշահը Թամուրյան Շահռուխի վասալն էր։ Ճաշակած լինելով Թամուրյանների ռազմական ուժի զորությունը Շահռուխի և Իսքանդարի միջև տեղի ունեցած տևական բախումների տարիներին, նա անհնազանդության նշաններ ցույց չէր տալիս, քանի դեռ կենդանի էր Շահռուխը։ Դրությունը փոխվեց վերջինիս մահվանից (1447 թ.) հետո։ Ուլուբեկի կարճատև թագավորության ժամանակ Թամուրյան գահը դարձավ կռվախնձոր, տեղի ունեցան գահակալական բախումներ, որից օգտվեց քոչվորական ցեղերի ավագանին։ Երբեմնի հզոր Թամուրյան պետության ռազմական ուժերը ջլատվեցին։ Օգտվելով ստեղծված քաղաքական խառը վիճակից, Ջհանշահը նվաճողական պատերազմ սկսեց նաև Արևելքում։ 1453 թ. սկզբներին 200 հազար հեծելազորով ներխուժեց Թամուրյանների տիրույթները և, լուրջ դիմադրության չհանդիպելով, գրավեց Պարսկական Իրաքն ու Ֆարսիստանը[92]։ 1455 թ. արշավեց Բաղդադ, որտեղ իշխում էր իր եղբորորդիներից մեկը. այստեղ կոտորեցին 60 հազար մարդ և 30 հազար չորեքեռն ավար հափշտակեցին[93]։

Բաղդադից ետ դառնալու ճանապարհին Ջհանշահն անցնում է Բաղեշի, Մուշի ու Խլաթի շրջաններով և ավերածություն գործում այդ վայրերում, գերում 1500 հայ[94]։

Ջախելով ապստամբական տրամադրությունները Բաղդադում և Բաղեշի քրդական ամիրության սահմաններում, Ջհանշահը 1457 թ. սկսում է արևելյան երկրորդ խոշոր արշավանքը։ Այս անգամ նա խորանում է դեպի արևելք և գրավում Թամուրյան տիրույթներից Համադանը, Ռեյը, Ղազվինը, Գիլանը, Խորասանը։ 1458 թ. պարտության մատնելով Թամուրյան գահի հավակնորդ Միրզա-Իբրահիմին, Ջհանշահը մտնում է Հերաթ։

Նվաճած անծայրածիր երկրները տևական ժամանակով իրենց ձեռքում պահելու համար կարա-կոյունլուները չունեին անհրաժեշտ ուժեր։ Շուտով Թամուրյան պետության մեջ դադարում են գահակալական կռիվները, սուլթան Աբու-Սայիդը գրավում է իշխանությունը և պահանջում Ջհանշահից՝ հրաժարվել նվաճած երկրամասերից։ Ջհանշահը, որ այդ օրերին լուր էր ստացել իր Հասան-Ալի որդու գլխավորությամբ ծագած ապստամբության մասին, հրաժարվում է արևելյան նվաճումներից։

Ջհանշահի բացակայության ժամանակամիջոցին Հայաստանում խառնակ դրություն էր ստեղծվել։ Աղ-կոյունլու Ուզուն-Հասանը պարտության էր մատնել կարա-կոյունլուների իր դեմ մարտնչող զորախմբին. պատերազմում սպանվել էին Ռուստամ Թարխան-օղլի նշանավոր զորավարը և շատ այլ հրամանատարներ։ Հասան-Ալին հոր դեմ ապստամբություն բարձրացրեց հենց

---

[91] Տե՛ս «ԺԵ դարի հիշատակարաններ», Բ, Երևան, 1958, էջ 31։

[92] Տե՛ս նույն տեղում, էջ 35, 131, 172։

[93] Տե՛ս V. Minorsky, Jihan-shah Qara-Qoyunlu and his Poetry, 1954, XVI, էջ 294։ «ԺԵ դարի հիշատակարաններ», Բ, էջ 81։

[94] Տե՛ս նույն տեղում, էջ 81։ Ջհանշահը Բաղեշի ամիրության դեմ կռվի էր դուրս եկել նաև չորս տարի առաջ. մի ժամանակագիր ասում է. «Եւ Ջ (1451) թւին (Ջհանշահը) զԽլաթայ երկիրն և զԲաղիշուն աւար գերի և գետին. վայ հազար բերան, որ ղայս խղճերըս տեսաք աչօք մերօք ի ժամանակիս մերում» («Մանր ժամանակագրություններ», II, էջ 515)։

*այս խառնակ օրերին։ Նրան միայն Ջհանշահի կողմից բանտարկված մի շարք անհնազանդ ցեղապետեր ու զորահրամանատարներ։ Դրանցից Ղլիջ-Ասլանը, որ Վանի կառավարիչն էր եղել, Վանը վերադրավելու անհաջող փորձեր կատարեց և «արար շատ աւեր և թալան»[95]։ Գլուխ էին բարձրացրել նաև Բաղեշի քրդերը. Ռոժակի (Ռուզակի) ցեղի ավագներից մեկը՝ Սեիդ-Ալին, իր հրոսակներով փորձում է լաստանավերով ներխուժել Ախթամար «զամենեսեան ի սուր սուսերի մաշելու» և «զսրբութիւնս դերի վարելու» մտադրությամբ։ Ախթամարի Զաքարիա III քաջարի կաթողիկոսը իր զինական ուժերով դուրս է գալիս նրա դեմ, գրավում լաստանավերը և փրկում Ախթամարը կողոպուտից։*



Ախթամար կղզին և վանքը

*Առնելով Ջհանշահի գալստյան լուրը և տեղեկություն ստացած լինելով նրա անձի դեմ պատրաստվող մահափորձի մասին, Զաքարիա կաթողիկոսը ընդառաջ է գնում փադիշահին, Խոյ քաղաքում հանդիպում նրան և լուր տալիս անցած-դարձածի ու «աշխարհի ավերման» վերաբերյալ։ Ջհանշահն արշավում է իր որդու վրա և 1495 թ. ճնշում է Հասան-Ալու գլխավորած ապստամբությունը[96]։*

*Զաքարիա կաթողիկոսն ու նրա ընտանիքը ներկայանում էին որպես Գագիկ Արծրունի թագավորի սերունդ։ Զաքարիան ձգտում էր իր կաթողիկոսությունը տարածել բովանդակ Հայաստանի վրա։ Այդ բանը նրան հաջողվում է Ջհանշահի օժանդակությամբ։ Էջմիածնի կաթողիկոսությունը և Լուսավորչի աջը փադիշահի հաճությամբ հանձնվում է «թագավորազն» Զաքարիային։*

---

[95] *«ԺԵ դարի հիշատակարաններ», Բ, էջ 117, «Մանր ժամանակագրություններ», I, էջ 143։*

[96] *Տե՛ս «ԺԵ դարի հիշատակարաններ», Բ, էջ 173։*

Դառնալով Ամենայն Հայոց կաթողիկոս, Զաքարիան սկսում է միջամտել նաև երկրի քաղաքական գործերին։ Հասան-Ալու ապստամբությունը ճնշելուց հետո, հավանաբար 1461 թ., Ջհանշահը 12 հազարանոց հեծելազոր է ուղարկում Բաղեշի անհնազանդ ամիր Շարաֆ-բեկի դեմ[97]։ Կարա-կոյունլուները պաշարում են Խլաթի բերդը և, ինչպես հաղորդում է Թումաշահ հիշատակագիրը, «բաղում աւար ի մի ժողովեալ նստան ի վերայ բերդին (Խլաթայ), և նեղէին առնել զնա. և զնոյն հանդերձեալ էին առնել ի Բաղէշ և ի Մուշ, ի Խութ և ի Սասունք և յամենայն գաւառսն նոցա»։

Ինչպես միշտ, այնպես էլ այս անգամ պատերազմական գործողություններից հիմնականում տուժում են Բաղեշի ամիրության անպաշտպան գյուղերը։ Զաքարիա կաթողիկոսը հաշտարարի դեր է կատարում թուրքմեն գահակալի և քուրդ ամիրի միջև։ Ստանալով Ջհանշահի հավանությունն ու հանձնարարականը, ճեպում է Բաղեշ ու համոզում Շարաֆ-բեկին վճարել «կայսերական հարկը» և հնազանդություն հայտնել Ջհանշահին։ Համաձայնությունը կայացվում է՝ հարկը Զաքարիայի ձեռքով մուծվում է գանձարան, Խլաթի պաշարումը վերացվում է և «ժողովուրդն՝ զհայ և զտաճիկ» ազատվում «ի դառն դերութենէ»[98]։

1461 թ. Ջհանշահն արշավում է Շիրազ՝ իր Փիր-Բուդաղ որդու ապստամբությունը ճնշելու։ Անհնազանդ որդին պարտություն է կրում։ Օգտվելով Ջհանշահի բացակայությունից, կրկին քաղաքական ասպարեզ է իջնում Հասան-Ալին, որ թափառում էր «զվերին կողմամբ գաւառին Արարատեան»։ Հավանաբար Գրիգոր Մակվեցի կաթողիկոսի կուսակից խմբակցության սադրանքով Հասան-Ալին մտադրվում է «ըմբռնել զմեծ պատրիարքն զաէր Զաքարիայն և պահանջել ի նմանէ գանձս և ինչս»։ Լուր ստանալով այդ մասին, Զաքարիան, վերցնելով իր հետ Գրիգոր Լուսավորչի աջը և հայ եկեղեցու ավանդական այլ սրբություններ, գաղտագողի ճանապարհ է ընկնում Աղթամար[99]։

1463 թ. Զաքարիա կաթողիկոսը թունավորվում է, հավանաբար, յուրայինների կողմից[100]։ Նրան հաջորդում է եղբորորդին՝ Ստեփանոս IV կաթողիկոսը (1464—1489)։ Սրան, նույնպես կարճ ժամանակով, հաջողվում է իր ձեռքը ձգել էջմիածնի կաթողիկոսությունը։ Ջհանշահի աջակցությամբ Ստեփանոսը խորհում է նաև Արծրունյաց թագավորության վերականգնման մասին։ Գահակալի ընտրությունը, անշուշտ, պետք է կատարվեր «թագավորազն» կաթողիկոսի մերձավոր ազգականներից։ Եվ ահա, 1465 թ. ամիր Գուրջիբեկի որդի Սմբատը (բարեմասնություններից զուրկ մի անձնավորություն) իր կաթողիկոս եղբոր կողմից օծվում է թագավոր։ Հայոց այս վերջին թագավորի տիրապետությունը տարածվում էր Աղթամար կղզու (որ ավելի մեծ էր, քան մեր օրերում) և կղզու դիմաց՝ ծովափին ընկած մի քանի գյուղերի վրա։ Կղզու վրա կար 600 տուն զուտ հայ բնակչություն ունեցող մի փոքրիկ քաղաք, որի ուշագրավ նկարագրությունը գտնում ենք XVI դարի սկզբներին Աղթամար այցելած վենետիկցի մի վաճառականի ուղեգրության մեջ։ «Կղզու վրա,—գրում է նա, —կա մի փոքրիկ քաղաք երկու մղոն շրջագծով, քաղաքն ունի այնքան տա-

[97] Մ. Չամչյանից սկսած հայ պատմագրության մեջ տարածվել է այն սխալ տեսակետը, որ Ջհանշահի հակառակորդն այս պատերազմում իբր եղել է Աղ-կոյունլու Ջհանգիրը։

[98] «ԺԵ դարի հիշատակարաններ», Բ, էջ 174—175։

[99] Տե՛ս նույն տեղում, էջ 175—176։

[100] Տե՛ս «Մանր ժամանակագրություններ», I, էջ 143։

բաժություն, որքան կզգին։ Այս քաղաքը կոչվում է Արմենիկ, շատ բազմամարդ է և միայն հայ քրիստոնյաներն են բնակվում այնտեղ, առանց որևէ մահմեդականի. ունի շատ եկեղեցիներ, բոլորը հայ քրիստոնյաների պաշտամունքի համար...։ Քաղաքի կամ կղզու դիմաց գտնվում է մի ծովածոց, հիանալի մի դաշտով, որն ունի բազմաթիվ գյուղեր՝ բնակված հայ քրիստոնյաներով, կան շատ մշակված հողեր ու գեղեցիկ պարտեզներ՝ ծառերով, որոնք արտագրում են ամեն տեսակ պտուղ»[101]։

1463—1465 թթ. Ջհանշահը Իրաքում պատերազմում էր Փիր-Բուդաղ որդու դեմ, որը Շիրազից հետո կառավարիչ էր կարգվել Բաղդադում և նորից ապստամբել։ Այս ապստամբությունը ճնշելուց և որդուն սպանելուց հետո Ջհանշահը վճռական մարտի է նախապատրաստվում աղ-կոյունլուների դեմ։

Աղ-կոյունլու թուրքմենական ցեղերը, կարա-կոյունլուների հետ միասին, Միջին Ասիայից ներգաղթել էին Հայաստան XIII դարի վերջերին, բնակություն հաստատել Ամիդի շրջակայքում և, ապրելով քոչվորական կենցաղով, շրջագայում էին մեծ շառավիղով ու հաճախ հայտնվում Մալաթիայի ու Սեբաստիայի շրջաններում։ Աղ-կոյունլուների առաջնորդ Կարա-Յուլուք Օսմանը՝ Բայանդուրյան դինաստիայից, 1398 թ. գրավեց մի մեծ երկրամաս՝ պատմական Փոքր Հայքը, ներառյալ Երզնկա քաղաքն իր շրջակայքով, սակայն շուտով այդ նահանգներն անցան օսմանյան թուրքերի ձեռքը։ Օսմանը (կամ Օթմանը) դաշնակցեց Լանկ-Թամուրի հետ՝ ընդդեմ սուլթան Բայազիտի, և Թամուրից ստացավ նախկինում նվաճած շրջանների կառավարչությունը։ Մկրտիչ Նաղաշի Վարքի մեջ ասված է, որ պարոնաց պարոն շահ Օթման-բեկը տիրում էր «ի Խառանայ մինչև ի ծովն Պոնտոսի, որ է Տրապիզոն»։ Մի այլ հիշատակագիր նրան կոչում է «թագաւոր ամենայն Միջագետաց»։ Թամուրյանների և աղ-կոյունլու թուրքմենների գործակցությունը խարսխված էր ամուր հիմքերի վրա, քանի որ նրանց դեմ կանգնած էր ընդհանուր թշնամին՝ կարա-կոյունլուների պետությունը։

Կարա-կոյունլուների և աղ-կոյունլուների հակամարտություններն սկիզբ առան XV դարի սկզբներից։ Թուրքմենական ազգակից այդ ցեղախմբերը բազմիցս (1410, 1419—21, 1425, 1427, 1435, 1450—1453 թթ.) բախվեցին միմյանց՝ իրարից երկրամասեր գրավելու և բովանդակ Հայաստանի վրա իրենց տիրապետությունը տարածելու համար։

1454 թ., երբ Ջհանշահը նվաճումներ էր կատարում Արևելքում, Վանա լճի հյուսիսային շրջանների վրա արշավեց Աղ-կոյունլու Ուզուն-Հասանը[102]։ Այդ շրջանների բնակչության համար ստեղծվեց ծանր կացություն, շատերը սպանվեցին, գերվեցին ու կողոպտվեցին[103]։ Հաջորդ տարիներին նույնպես բուռն թափով շարունակվեց աղ-կոյունլուների և կարա-կոյունլուների հայ ժողովրդի համար աղետաբեր մրցակցությունը։ Ըստ որում Ջհանշահը, զինական օգնություն ցույց տալով ու սիրաշահելով Ուզուն-Հասանի Ջհանգիր եղբորը, բորբոքում էր Բայանդուրի դինաստիայի պայազատների գահակալական վեճը, իսկ Ուզուն-Հասանը, իր հերթին, Ջհանշահի դեմ պայքարի էր

[101] Հ. Հակոբյան, Ուղեգրություններ, Ա, էջ 300—301։

[102] 1435 թ. Իսքանդարի կողմից Կարա-Յուլուք Օսմանի սպանությունից հետո, աղ-կոյունլուների գահն անցավ Ալի-բեկի (հայկական աղբյուրներում՝ Սուլթան-Համզա) ձեռքը (1435—53), իսկ 1453 թ. գահակալեց սրա որդին՝ Ուզուն-Հասանը։

[103] Տե՛ս «ԺԵ դարի հիշատակարաններ», Բ, էջ 39, 41։

*կրդում Բաղեշի քուրդ ամիրներին ու զահատենչ անհնազանդ ամիրզադաներին։*

*Եվ ահա, նվաճումներ կատարելով Թամուրյան տիրույթներում ու վերջ տալով ներքին գժտություններին, 1467 թ. մայիսին Ջհանշահը վճռական արշավի է դուրս գալիս աղ-կոյունլուների դեմ։ Նրա զորքերը ճանապարհին ավերում ու կողոպտում են Բաղեշի ամիրության հայկական շրջանները։ «Արդ. ի չուել ճանապարհի սորա,—գրում է ժամանակակից մի հիշատակագիր,— բազում գաւառք աւերեցան և բնակիչք գաւառացն փախչէին ի յայրս և ի ծերպս վիմաց, սովալլուկ մեռանէին։ Եւ եկեալ եհաս ի գաւառն Տարաւնոյ՝ ի դաշտն Մշոյ, և անդ բազում աւերս արարին զօրքն նորա»[104]։*

*Նոյեմբերի սկզբներին կարա-կոյունլուների մեծ բանակը հասնում է Ճապաղջուր, բայց Ուզուն-Հասանը բռնում է նրանց առաջխաղացման ճանապարհը՝ պաշտպանություն կազմակերպելով բարձր լեռների վրա։ Քոչվոր ավազանու խորհուրդը որոշում է շարժվել դեպի Աղճաղալա՝ ձմեռելու, գարնանը Երզնկայի վրայով պատերազմական գործողությունները վերսկսելու մտադրությամբ։ Բանակը ճանապարհելով, Ջհանշահը երկու հազարանոց զորախմբով երեք օր մնում է Սանճախ կոչվող վայրում՝ որս անելու և զվարճանալու համար։ Սակայն Ուզուն-Հասանը, որ ուշադրությամբ հետևում էր թշնամու բանակի շարժումներին, 10 հազարանոց զորախմբով անսպասելիորեն հարձակվում է Ջհանշահի կերուխումից հանգստացող թիկնապահ զորքի վրա և գլխովին ջարդում բոլորին։ Եվ այսպես, 1467 թ. նոյեմբերի 10-ին տեղի ունեցած ընդհանուր սպանդի ժամանակ, իր մերձավորների հետ միասին, սպանվում է նաև 70-ամյա Ջհանշահը[105]։*

*Կարա-կոյունլուների հիմնական զինական ուժերը հեռու էին գտնվում կռվատեղի ճակատամարտի վայրից և չէին կորցրել իրենց մարտունակությունը, սակայն Ջհանշահի սպանությունից անմիջապես հետո ռանի ուժի ու ահաբեկման զսպանակների վրա խարսխված նրա աշխարհակալ պետությունը գահավեժ անկման դիմեց։*

*Հայ ժողովրդի լայն խավերը, ճաշակած լինելով կարա-կոյունլուների հարկահանության դառնությունները, շահագրգռված չէին բնավ այդ դինաստիայի դիրքերի ամրապնդմամբ։ Ընդհակառակը, շատ-շատերը իրենց տնտեսական վիճակի բարվոքումն ու կրոնական ճնշումներից ազատագրումը կապում էին Ուզուն-Հասանի հաղթանակի հետ, սին հույսեր տածելով, որ նա «պարիսպ ամուր է քրիստոնէից» և ազատելու է իրենց գերությունից։*

*Ջհանշահի սպանությունից հետո Մակու բերդում բանտարկված Հասան-Ալին ազատ է արձակվում, պարտություն է մատնում գահը գրավել ցանկացող Հուսեյն-Ալուն՝ Իսքանդարի որդուն, և եռանդուն պատրաստություններ է տեսնում աղ-կոյունլուներին դիմադրելու։ Դատարկելով արքունի գանձարանը և առատ պարգևներ շռայլելով, նա իր շուրջն է համախմբում մի մեծ բանակ[106]։*

---

[104] *Նույն տեղում, էջ 271։*

[105] *Այս դեպքերը գրավել են բազմաթիվ հայ հիշատակագիրների ու ժամանակագիրների ուշադրությունը. տե՛ս, օրինակ, «ԺԵ դարի հիշատակարաններ», Բ, էջ 271, 333 և այլն, «Մանր ժամանակագրություններ», I, էջ 168, II, էջ 152—153 և այլն։*

[106] *Անանուն մի ժամանակագիր Հասան-Ալու հավաքագրած զորքի թիվը 100 հազար է հաշվում («Եւ գայ որդի Ջիհանշին Ալի-պակն ընդդէմ նորա ՃՌ մարդով»), իսկ Մովսես Արծկեցին՝ 200 հազար («Հասան Ալին... կոտորեաց զհազինայն, այնչափ երետ պարգեւ մարդկան, վասն*

*Միաժամանակ, հայ ժողովրդի տիրող շերտերի համակրությունը շահելու նպատակով, սուրբ Վարդան անունով մի եկեղեցի է կառուցում Մակվում[107]։ Բայց հայրենասեր արված այս քայլերը ապարդյուն են անցնում։ 1468 թ. հուլիսի 2-ին, Մարանդի մոտ տեղի ունեցած ճակատամարտում, Ուզուն-Հասանը 30 հազարանոց զորքով, առանց մեծ ջանքի, պարտության է մատնում Կարա-կոյունլու վերջին փադիշահին, որովհետև զորքն ապստամբում է ու անցնում աղ-կոյունլուների կողմը[108]։*

*Հասան-Ալին յուրայինների հետ միասին մազապուրծ ճողոպրում է և ապաստան գտնում Թամուրյան սուլթան Աբու-Սայիդի (1452—1469) մոտ, որը արշավանքի է դուրս գալիս Ուզուն-Հասանի դեմ մեծ հապաղումով։ 1469 թ. ձմռանը Թամուրյանների քաղցից ուժասպառ զորքը բնաջնջվում է աղ-կոյունլուների, Շիրվանշահ Ֆառուխ-Յասարի (1462—1500) և Սեֆյան Շեյխ-Հայդարի (1456—1488) միացյալ զորքերի կողմից։*

*Այսպիսով, մեկ տարի ու մի քանի ամիս տևած հաղթական պատերազմներից հետո Ուզուն-Հասանը Աղ-կոյունլու թուրքմենների տիրապետությունն է հաստատում աշխարհածավալ մի պետության վրա, որի բաղկացուցիչ մասն էր կազմում նաև Հայաստանը։*

## 4. ՀԱՅԱՍՏԱՆԸ ԱՂ-ԿՈՅՈՒՆԼՈՒ ԹՈՒՐՔՄԵՆՆԵՐԻ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՏԱԿ

*Ուզուն-Հասանը, տարբերվելով քոչվոր ցեղերի մյուս պետերից, որոնք հիմնականում կողոպտում էին նվաճված ժողովուրդներին, քաջ գիտակցում էր իր տիրապետության տակ ընկած երկրների քայքայված տնտեսության վերականգնման և պետական գանձարանը լցնելու կարևորությունը։ Նա միաժամանակ ձգտում էր գրավել նորաստեղծ կայսրության մեջ բնակվող նստակյաց ժողովուրդների համակրանքը։ Հարկերի գանձման գործը կարգավորելու և հարկահանության ժամանակ ֆեոդալների ու պետական պաշտոնյաների անսանձ չարաշահումների առաջն առնելու նպատակով, Ուզուն-Հասանը անցկացրեց իր պետության բոլոր շրջանների տնտեսական օբյեկտների մանրակրկիտ հաշվառում-աշխարհագիր և հրատարակեց հարկերի չափը սահմանող ու հարկահանման սկզբունքները նշող օրենքների «Կանուննամե» կոչվող ժողովածուն, որը երկար ժամանակ (մինչև XVI դարի վերջը) կիրառվում էր Իրանում և Օսմանյան կայսրության արևելյան երկրամասերում։*

*Այս միջոցառումները, սակայն, տևական արդյունք չտվեցին և հպատակ ժողովուրդների տնտեսական դրության մեջ էական բարելավում տեղի չունեցավ։ Ջփոխվեց նաև հայ ժողովրդի իրավական գոյավիճակը։ Ուզուն-Հասանի*

---

*այն բազումք ժողովեցան, քան զերկերիւրըն հազարեան», տե՛ս «ԺԵ դարի հիշատակարաններ», Բ, էջ 23)։*

[107] *1461 թ. Հասան-Ալին, որ հոր դեմ ապստամբել էր ու կարճ ժամանակով գրավել իշխանությունը, նորոգել էր տվել Արճեշի եկեղեցու գմբեթը, եկեղեցի կառուցել Մակվում և շինարարական այլ աշխատանքներ կատարել։ Այս փաստերը խոսում են հօգուտ այն ենթադրության, որ նա կարա-կոյունլուների պետական կարգն ամրապնդելու և քոչվոր ցեղապետերին զսպելու նպատակով սիրաշահում էր երկրի նստակյաց բնակչությանը։*

[108] *«ԺԵ դարի հիշատակարաններ», Բ, էջ 283, 333—334, «Մանր ժամանակագրություններ», II, էջ 153։*

ժամանակ ևս շարունակվեց կրոնական ճնշումների ավանդական քաղաքականությունը։ Այս մասին բազմաթիվ գրառումներ են արել ժամանակակից հիշատակագիրները։ Այսպես. մի գրիչ հայտնում է, որ «Եկին Ուզուն-Հասանն և էսպան զՋհանշէն՝ որդի Ղարա-Ուսուֆին և զորդիքն իւր, և նստաւ ի թախտն նորա. և եղև թասպութին (կրոնական անհանդուրժողականություն) յոյժ և հալածումն քրիստոնէից. և խափանեցին զհնչումն զանգակին, և քրիստոնեայք նշանաւ շրջէին»[109]։ Իսկ Ստեփանոս Ձմշկածագեցի հիշատակագիրը ողբ-ոտանավոր է հյուսում հայ ժողովրդի ծանր վիճակի մասին.

Հարկապահանչն յամէն տեղի
Քաշէ ծեծէ զազգըս Արամի.
Խընդրէ արծաթ 'ւ ընտիր ոսկի
Ցայնմ, որ չունի փող պըղնձի։
Կապուտ նշան եդ քրիստոնեաց,
Զի բաժանին յանօրինաց,
Զմեռեալն ի ցած տանել ասաց,
Զուանով չափել զվիզս մանկանց...։
Այլ և զհարումն զանգակի՝
Զգուշակ փողոյն Գաբրիէլի
Ետ խափանել յամէն տեղի՝
Գեղ 'ւ անապատ 'ւ ի քաղաքի[110]։

Ուզուն-Հասանը, կենտրոնաձիգ ուժեղ պետություն ստեղծելու իր ծրագրերն իրագործելիս, բախվում է աղ-կոյունլուների երբեմնի դաշնակից Հարավային Հայաստանի քուրդ ամիրությունների զինական ուժերին։

1470 թ., Սուլեյման-բեկ Բիժան-օղլու գլխավորած բանակը երկու ամիս ապարդյուն պաշարելով Բաղեշի բերդը, ստիպված է լինում վերադառնալ Վան՝ ձմեռելու. «Քանզի քըրդերըն զօրացան, կորուսանել զնա կամեցան»,— ասում է Մովսես Արծկեցին[111]։ 1471 թ. արշավանքը վերսկսվում է ավելի խոշոր ուժերով։ Սուֆի-Խալիլ նշանավոր զորավարը Մուշում պարտություն է մատնում քուրդ Քարիմ աղային, Սուլեյման Բիժան-օղլին մեկ տարի հինգ ամիս պաշարելուց հետո՝ 1473 թ. գրավում է Բաղեշի բերդն ու կոտորում քրդերին, իսկ Բայանդուր-բեկը գրավում ու հնազանդեցնում է Խլաթի գավառը։ Աղ-կոյունլուները հնազանդեցնում են նաև Բոխտան երկրի (Բոհտան-սու գետի հովիտը) քրդերին, ապա, հետապնդելով նրանց, գրավում են նաև Ջեզիրեն։

Այս հաղթանակներից հետո միայն Ուզուն-Հասանն իր զինական ողջ ուժն ուղղում է դեպի արևմուտք՝ աղ-կոյունլուների ամենաուժեղ ու վտանգավոր ախոյան՝ օսմանյան թուրքերի դեմ։

1402 թ. Լանկ-Թամուրից կրած ծանր պարտությունից հետո օսմանյան թուրքերի կողմից նվաճված փոքրասիական երկրամասերի վրա վերահաստատվեցին սելջուկյան մանր իշխանությունները, որոնք, սակայն, իրենց գոյությունը պահպանեցին միայն 2—3 տասնամյակ։ Օսմանյան դինաստիան ուշքի եկավ Բայազիտ I-ի անմիջական հաջորդ Մուհամեդ I Չելեբի սուլթանի գահակալության տարիներին։ 1413 թ. արդեն նա միանձնյա իշխում էր Բալ-

---

[109] «ԺԵ դարի հիշատակարաններ», Բ, էջ 299։
[110] Նույն տեղում, էջ 394։
[111] Նույն տեղում, էջ 26։

կաններում և Փոքր Ասիայի արևմտյան նահանգներում։ Սրա հաջորդ Մուրադ II-ը կարողացավ ծնկի բերել Թամուրի կամքով ինքնուրույնություն ստացած անկյունային մանր իշխանություններին (բացառյալ Ղարամանիայի, որը շարունակեց պայքարը և դիմացավ մինչև 1470-ական թվականները)։

Թուրքերի հետագա առաջխաղացման համար վճռական նշանակություն ունեցավ 1444 թ. Վառնայի մոտ տեղի ունեցած ճակատամարտը. այստեղ եվրոպական միացյալ ուժերը կատարյալ պարտություն կրեցին։

Ֆաթիհ (Նվաճող) մականունով հայտնի Մուհամեդ II սուլթանը Օսմանյան կայսրությանը առաջնորդեց նոր նվաճումների։

1453 թ. ընկավ Կոստանդնուպոլիսը, Բյուզանդական երբեմնի հզոր կայսրության ուժասպառ հիշատակը։ 1460—61 թթ. գրավվեցին Մորեայի (Պելոպոնես) հունական երկու դեսպոտիաները և Տրապիզոնի իշխանությունը, որ հայտնի է պատմության մեջ Տրապիզոնի կայսրություն մեծադղորդ կոչումով։ Նույն այս տարիներին օսմանցիների ձեռքն անցան նաև Աթենական հերցոգությունը, Սերբիան, Բոսնիան և Վալախիան[112]։

Այսպիսով, ընդամենը մի երկու տասնամյակների ընթացքում թուրքերի ձեռքն անցան Սև ու Միջերկրական ծովերի բոլոր այն նավահանգիստները, որոնք, որպես ապրանքափոխանակության միջազգային նշանակություն ունեցող կետեր, կենսական նշանակություն ունեին ինչպես աղ-կոյունլուների, այնպես էլ եվրոպական մի շարք պետությունների՝ հատկապես Վենետիկի համար։

Բնական է, որ այս դրության հետ չէին կարող հաշտվել տուժած կողմերը։ Վենետիկը փորձեց օսմանցիների դեմ ստեղծել եվրոպական ու արևելյան երկրների մի զինակցություն. այդ նույն նպատակով ջանքեր գործադրվեցին նաև Ուզուն-Հասանի կողմից։ Վերջինս 1469 թ. Իտալիա էր ուղարկել լայն լիազորություններով օժտված մի դեսպանություն, որի կազմում կարևոր դեր էր կատարում մեծահարուստ հայ գոհարավաճառ խոջա Միրաքը։ Ուզուն-Հասանի դեսպանները հասան Վենետիկ և, ինչպես հաղորդում է իր ուղեգրության մեջ Կատերինո Զենոն, «մեծ ընծաներ (բերելով) իրենց տիրոջից, առաջարկում էին զինակցություն և պատվավոր դաշնակցություն կնքել Թուրքիայի և (Եգիպտոսի) սուլթանի դեմ, պայմանով, որ վենետիկցիները չթերանան իրենց նավատորմով հարձակվելու երկու իշխանությունների վրա»[113]։

Այս դեսպաններից երեքը (դրանց թվում նաև խոջա Միրաքը) Վենետիկից անցան Հռոմի պապի, ապա Նեապոլի թագավորի մոտ, առաջարկելով նույնպիսի դաշինք։ Բանակցություններն ի վերջո ավարտվեցին հակաօսմանյան լիգայի ստեղծումով, որի կազմի մեջ էին մտնում Եվրոպայում՝ Վենետիկի հասարակապետությունը, Պապը, Նեապոլի թագավորությունը և Հունգարիան, իսկ Ասիայում՝ աղ-կոյունլուների պետությունը, Ղարամանիան և Կիպրոսը։

Ուզուն-Հասանին օգնության խոստումներ շատ արվեցին, սակայն եվրոպական դաշնակիցները չկարողացան հարձակվել թուրքերի վրա արևմուտքից, բոլոր ճանապարհները թուրքերի կողմից գրավված լինելու պատճառով նրանք անկարող եղան բավարար քանակությամբ հրետանի ու վառոդ ուղարկել։ Բացի այդ, պատերազմն սկսվելու ժամանակ ողջ Ղարամանիան արդեն գտնվում

112 Տե՛ս А. Крымский, նշված աշխատությունը, էջ 36։ Հ. Սիրունի, Պոլիս և իր դերը, հատ. I, Պեյրութ, 1965, էջ 140 և հտն.։

113 Հ. Հակոբյան, Ուղեգրություններ, հատ. Ա, էջ 156։

էր օսմանցիների ձեռքում։ Այսպիսով, հակաօսմանյան լիգան ձևական բնույթ էր կրում և թուրքերի դեմ պատերազմող միակ կարող ուժն աղ-կոյունլուները էին։

Ուզուն-Հասանի մեծ արշավանքը թուրքերի դեմ սկսվեց 1472 թ.։ Սուլթան-Խալիլ որդուն նշանակելով Շիրազի կառավարիչ և նրա վրա պարտականություն դնելով «պահել զկողմանս արևելեան», Ուզուն-Հասանը գալիս է Տարոն, հիմնահատակ ավերում քրդերի ձեռքին գտնվող ինչ-որ բերդ և վեզիր Օմար-բեկի ու զորավար Յուսուֆի հրամանատարությամբ 100 հազարանոց մի հեծելազոր է ուղարկում Օսմանյան կայսրության սահմանները։ Աղ-կոյունլուներն սկզբից ունենում են հաջողություններ։ Մեծ ավերածություններ գործելով իրենց ճանապարհին, նրանք Դերջանի ու Երզնկայի վրայով հասնում են Թոխաթ։ Քաղաքը գրավում են, բնակչությանը կողոպտում։ Այնուհետև անցնում են Ղարամանիա. Մուհամեդ II-ի որդի Մուստաֆան, որ նշանակվել էր Ղարամանիայի կուսակալ, նահանջում է դեպի Քոթահիա։ Սակայն քիչ անց, 1472 թ. օգոստոսին Կոնիայի մոտ տեղի ունեցած ճակատամարտում, աղ-կոյունլուները պարտություն են կրում, զորահրամանատար Յուսուֆը գերի է ընկնում, Ուզուն-Հասանի որդիներից երեքը սպանվում են։

Նույն ժամանակ աղ-կոյունլուները կռվում էին նաև Եգիպտոսի մամլուքյան սուլթանության դեմ, մի հանգամանք, որ անշուշտ ջլատում էր նրանց ուժերը։ Այս ճակատում ևս նրանք չունեցան հաջողություն. երեք ամիս Հալեպը ապարդյուն պաշարվեց, բայց վրա հասավ եգիպտական հեծելազորը. թշնամի կողմերը հաշտություն կնքեցին, աղ-կոյունլուները ետ դարձան[114]։

Պատերազմը բորբոքվեց 1472 թ. գարնանը, երբ Մուհամեդ II սուլթանը 100 հազարանոց բանակով արշավի դուրս եկավ։ Խաս-Մուրադ փաշայի հրամանատարությամբ գործող օսմանյան առաջապահ գունդը Մալաթիայի մոտ հանդիպում է Ուզուն-Հասանի զորքերին, որոնք ծուղակ էին պատրաստել նրանց համար։ Օսմանցիներն այստեղ պարտություն են կրում ու խուճապահար փախուստ տալիս, սակայն հուսալքումը երկար չի տևում. նրանք վերադասավորում են իրենց ուժերը և պատրաստվում հակագրոհի։

Երկրորդ անգամ թշնամի բանակները բախվեցին Դերջանի դաշտում, 1473 թ. օգոստոսի 12-ին։ Այս անգամ աղ-կոյունլուները կրեցին ծանր պարտություն։ Պատերազմի դաշտում թողնելով ամեն ինչ, Ուզուն-Հասանը փախուստով միայն կարողացավ փրկել իր կյանքը։ Օսմանցիների ձեռքն անցավ պատերազմական մեծ ավար, հազարավոր թուրքմեններ գերվեցին։

Աղ-կոյունլուների պարտությունը բացատրվում է հրազենի պակասով և նրանց բանակի կազմակերպչական հնամենի ձևով։ Այդ բանակն, ըստ էության, քոչվոր ցեղերի աշխարհազոր էր, իսկ օսմանյան բանակը կազմված էր, հիմնականում, ենիչերիների վարժեցված զորագնդերից։

Աղ-կոյունլուների պարտությունից հետո երկրի ներսում գլուխ են բարձրացնում կենտրոնախույս ուժերը։ Ուզուն-Հասանի որդիներից Ուղուրլու-Մուհամեդը 1474 թ. ապստամբություն է բարձրացնում հոր դեմ. պարտությունից հետո ապաստան է գտնում Եգիպտոսում, ապա՝ Օսմանյան կայսրության սահմաններում[115]։

---

114 Տե՛ս «Մանր ժամանակագրություններ», I, էջ 168—169, II, էջ 153, «ԺԵ դարի հիշատակարաններ», Բ, էջ 336։

115 Տե՛ս «Մանր ժամանակագրություններ», I, էջ 169, II, էջ 153։

Իր կենդանության վերջին տարիներին, խուսափելով ուժեղ ու հզոր հակառակորդներից, Ուզուն-Հասանը թալանչիական պատերազմներ սկսեց թույլ հարևանների դեմ։ Առպատակության ասպարեզ է դառնում Վրաստանը, որն այդ ժամանակ մասնատված էր չորս կիսանկախ իշխանությունների՝ Քարթլի (Արևելյան Վրաստան), Իմերեթ (Արևմտյան Վրաստան), Կախեթ և Սամցխե կամ Մեսխեթ։

Առաջին խոշոր արշավանքը դեպի Վրաստան սկսվեց 1476 թ. սեպտեմբերին։ Օգտվելով վրաց թագավոր Բագրատ VI-ի (1466—1478) բացակայությունից (նա կռվի էր դուրս եկել լեզգիների դեմ), Ուզուն-Հասանը ներխուժեց Վրաստան և, լուրջ դիմադրության չհանդիպելով, ավերեց Տփղիսն ու ասպատակիչ զորամասեր ուղարկեց երկրի տարբեր շրջանները։ Գորու վրա հարձակվող զորամասին հաջողվեց գրավել բերդը, կոտորել բերդի 300 պաշտպաններին։ Մյուս զորախմբերը հասան Աբխազիա և մինչև «ի կատար լերինն Կովկասու»։ Կողոպտելով ու ավերածություններ գործելով, Ուզուն-Հասանը վերադարձավ Վրաստանից՝ 30 հազարից ավելի գերիներով ու մեծ ավարով[116]։

Հաջորդ՝ 1477 թ. Ուզուն-Հասանը նորից արշավեց Վրաստան ու նոր ավերածություններ գործեց, բայց «սրահեղ եղև» ու մահացավ 1478 թ. հունվարի 5-ին[117]։

Աղ-կոյունլուների աշխարհածավալ դինաստիայի հիմնադիր Ուզուն-Հասանի մահվանից հետո նրա հինգ որդիների միջև ծայր առան գահակալական կռիվներ։ Քոչվոր ցեղերի ազդեցիկ ու զորավոր պետերը որպես գահի թեկնածու առաջ քաշելով հանգուցյալ փադիշահի որդիներից որևէ մեկին, ձգտում էին դառնալ ողջ երկրի փաստական տերը։

Իշխանությունը նախ գրավեց Ուզուն-Հասանի անդրանիկ որդի Սուլթան-Խալիլը, բայց վեց ամիս հետո Յաղուբը՝ մեծ զորքով հարձակվեց եղբոր վրա, սպանեց նրան և ինքը թագավորեց ողջ երկրում[118]։

Յաղուբ փադիշահն իշխեց 12 տարի՝ 1478—1490 թթ.։ Նա ռազմական գործին անընդունակ, թույլ բնավորության տեր մի անձնավորություն էր։ Պետության ղեկը փաստորեն գտնվում էր Ուզուն-Հասանի անվանի զորավարների՝ Սուլեյման-բեկ Բիժան-օղլու, Բայանդուր-բեկի և Սուֆի-Խալիլի ձեռքում։ Փորձառու այս հրամանատարների ղեկավարությամբ Յաղուբը պատերազմներ մղեց արևելքում՝ Թամուրյանների, հարավում՝ Եգիպտոսի և Սիրիայի սուլթանության, արևմուտքում՝ օսմանյան թուրքերի դեմ և ժամանակավորապես վերականգնեց աղ-կոյունլուների պետության քաղաքական վարկն ու հողային ամբողջականությունը։

Յաղուբի թագավորության վերջին տարիներին սրվեցին աղ-կոյունլուների և Սեֆյան շեյխերի փոխհարաբերությունները։

Սեֆյան շեյխերի ֆեոդալական գերդաստանը, որ XIV դարի վերջերից տիրում էր Արդաբիլի շրջանին, պատմական ասպարեզ իջավ որպես շիա աղանդին պատկանող դերվիշական միաբանության հոգևոր առաջնորդների ընտանիք։ Սեֆյանների հիմնական հենարանը ադրբեջանական 7 քոչվոր

[116] Տե՛ս «ԺԵ դարի հիշատակարաններ», Բ, էջ 392, 394—395, 415, 418, «Մանր ժամանակագրություններ», I, էջ 143։

[117] Տե՛ս «ԺԵ դարի հիշատակարաններ», Բ, էջ 426, «Մանր ժամանակագրություններ», I, էջ 143, 169։

[118] «ԺԵ դարի հիշատակարաններ», Բ, էջ 436։

ցեղերն էին (շամլու, ռումլու, ուսթաջլու, թեքելյու, աֆշար, ղաջար, զուլքադար), որոնք հետագայում ստացան կըզըլբաշ (կարմրագտակ) անունը։ Դրանք, դառնալով Սեֆյան շեյխերի հպատակներ, համարվում էին նրանց մյուրիդները (հնազանդ կամակատար) և ամեն տարի, իրենց շեյխի առաջին իսկ կոչով, խմբվում նրա դրոշի ներքո, «անհավատների» դեմ սրբազան պատերազմ վարելու համար։ Նրանց ասպատակությունների սովորական վայրերն էին Դաղստանն ու Վրաստանը։

Հայ անանուն մի հիշատակագիր ուշագրավ տվյալներ է հաղորդում կըզըլբաշ ցեղերի ամենամյա հավաքույթների և շեյխերի հրամանով ձեռնարկած արշավանքների բնույթի մասին։ Նա գրում է. «Զի էր սահմանք և սովորութիւն նոցա, որ յամենայն ամի փութային ի կոչն նորա (իմա՝ սեֆյան շեյխի) յամենայն աշխարհէ կարմրագտակ սօֆիքն, և զինուորէին նմա իւրեանց թոշակօքն, և փոխանակ առնելոյ ի նմանէ՝ ինքեանք տային նմա բաղում ոսկի և արծաթ, և յամենայն պատերազմունս, ընդ որ երթայր, յօժարութեամբ կռուէին և մեռանէին առաջի նորա»[119]։

Դաղստան կամ Վրաստան արշավելիս նրանք անցնում էին Շիրվանի վրայով՝ ոտնատակ տալով Շիրվանշահերի երկիրը։ Մի հանգամանք էր այս, որ չէր կարող չսրել ֆեոդալական այդ երկու իշխանությունների՝ Սեֆյանների ու Շիրվանշահերի փոխհարաբերությունները։ Եվ ահա 1488 թ., երբ Սեֆյան Շեյխ-Հայդարը, 40 հազար կըզըլբաշների գլուխ անցած կրկին արշավանքի էր դուրս եկել դեպի Դաղստան, Շիրվանշահ Ֆառուխ-Յասարը արգելեց նրան անցնել իր երկրով։ Կըզըլբաշներն արհամարհեցին նրա արգելքը և ուժով մտան Շիրվան, Դաղստանում կատարելիք «ղաղայի» (սրբազան պատերազմ) զոհ դարձնելով Շիրվանի ադրբեջանցի ու հայ բնակչությանը։ Հրեշավոր ոճիրներ գործեցին նրանք. կոտորեցին հազարավոր անմեղ մարդկանց՝ առանց տարիքի ու սեռի խտրության, մորթեցին բանող անասուններին, հրդեհեցին Շիրվան քաղաքը։

Շիրվանշահ Ֆառուխ-Յասարը, անզոր լինելով սեփական ուժերով հակահարված տալու կըզըլբաշներին, օգնություն խնդրեց Յաղուբից։ Վերջինս կըզըլբաշների դեմ ուղարկեց ուժեղ մի բանակ՝ Սուլեյման-բեկ Բիժան-օղլու հրամանատարությամբ։ Մեծ զոհերի գնով միայն աղ-կոյունլուներին հաջողվեց պարտության մատնել կըզըլբաշներին։ Արդաբիլն ու Սեֆյանների մյուս կալվածքները գրավվեցին, սպանված Շեյխ-Հայդարի անչափահաս որդիները (Իրանի Սեֆյան հարստության ապագա հիմնադիր Իսմայիլն իր եղբայրներով)՝ ի պահ տրվեցին Աղթամարի հայ վանականներին[120]։

Յաղուբ փադիշահի իշխանության տարիներին սուր բնույթ ստացան նաև կրոնական հալածանքները։ Ի տարբերություն մահմեդականների, քրիստոնյա հպատակներին արգելվեց հեծնել թամբով ձի, իրենց հանգուցյալներին բարձր բռնած տանել թաղելու, սպիտակ գոտի կապել, զանգակների հարումով եկեղեցի հրավիրել հավատացյալներին և այլն[121]։

---

119 Բ. Սարգիսյան, Մայր ցուցակ հայերեն ձեռագրաց Մխիթարյան մատենադարանին, հատ. Բ, Վենետիկ, 1924, էջ 1159։

120 Տե՛ս Հ. Հակոբյան, Ուղեգրություններ, Ա, էջ 271։

121 Այս մասին խոսում են ժամանակակից շատ հիշատակագիրներ։ Օրինակ, Բարսեղ անունով մի գրիչ հայտնում է. «Շատ փորձութիւն և նեղութիւն և վիշտ հասոյց քրիստոնեայ ազգին և եկեղեցականացն կարգաւորաց. և հայեզեն միսն խափանեց, և զմեռեալն ի ցած ասաց տանել, և

Հայաստանի տարբեր մասերում իրենց գոյությունը քարշ տվող հայ ֆեոդալական երբեմնի հզոր ընտանիքների սակավաթիվ ժառանգորդներին բռնի մահմեդականություն ընդունելու պահանջ առաջադրվեց։ Պռոշյան իշխաններից սերված Հովհաննես եպիսկոպոսը Այրիվանքում շարադրած իր մի հիշատակարանում այդ մասին գրում է. «Յայսմ ամի (իմա՝ 1488 թ.) խ (40) ազատորդի կալան, թէ տաճկացէք, այլ ողորմածն աստուած ձեռնտու և օգնական եղև նոցա... որ է (7) ամիս կալուկական կացին և բաղում տուգանք տվին և ի հաւատոյն Քրիստոսի ոչ դարձան»[122]։

Հավատափոխության հարկադրանքի ներքո հայ ֆեոդալների կալվածների բռնագրավումներն իրագործվում էին պետական իշխանությունների կողմից լայն լիազորություններ վայելող «բեյթ-ուլ-մալի» վերակացուների կամ «բեյթուլմալչիների» միջոցով։ Հաճախակի կրկնվող ունեզրկումների ընթացքում, այսպես կոչված «մուսուլմանական համայնքի» սեփականություն էին հայտարարվում հավատափոխությունից հրաժարվող հայ ավատատերերի «հայրենիք» կալվածները, որոնք շատ շուտով խարդախ միջոցներով դառնում էին Հայաստանում մշտական բնակություն հաստատած մահմեդական բարձրաստիճան պաշտոնյաների և քոչվոր վերնախավի «գանձագին» սեփականությունը[123]։

Յաղուբի մահվանից հետո, մի շարք քոչվոր ցեղապետեր և պետական բարձրաստիճան պաշտոնյաներ, երկրի տարբեր մասերում միաժամանակ փաղիշահ են հռչակում իրենց ձեռքին խաղալիք դարձած Բայանդուրի դինաստիայի 4 տարբեր ամիրզադաների։ Արյունահեղ պայքարից հետո հաղթանակում է աթաբեկ Սուֆի-Խալիլի դրածո Բայսոնղուրը, որը թագավորում է մինչև 1492 թ. հունիսի 1-ը։ Սրա գահակալության մեկ և կես տարին Հայաստանը պայքարի թատերաբեմ է դառնում երկու ուժեղ հակառակորդների՝ Սուֆի-Խալիլի և մեծ վեզիր Սուլեյման-բեկ Բիժան-օղլու միջև։ Սուֆի-Խալիլը ավերածություններ է գործում Սուլեյման-բեկին պատկանող Վասպուրականի շրջաններում։ Նա, ինչպես հաղորդում է Մովսես Արծկեցի հիշատակագիրը. «ղնացեալ աւերեաց զԱմուկ, զՎան և զՈստան երկրովն և արար առ և թալան և շատ աւերքս»[124]։ Խալիլը մտադրվում է ներխուժել ու գրավել Աղթամար կղզին ու թալանել եկեղեցական սպասները, գրքերն ու այլ սրբությունները։ 1491 թ. օգոստոսին Վանի դաշտում տեղի ունեցած ճակատամարտում Սուֆի-Խալիլը սպանվում է։ Սուլեյման-բեկը պետության ղեկն առնում է իր ձեռքը, բայց շատ կարճատև ժամանակով։ Պայքարի ասպարեզ է դուրս գալիս Բայանդուրի դինաստիայի կրտսեր ճյուղի ներկայացուցիչ Իբրահիմ Այբա-Սուլթանը, որը 1492 թ. հունիսի 1-ին պարտության է մատնում Սուլեյման-բեկին ու Բայսոնղուրին և գահը հանձնում Ուզուն-Հասանի թոռներից՝ Ռուստամին։ Սա թագավորում է մինչև 1497 թ.։

Իր դիրքը կայունացնելու նպատակով Ռուստամն սկսում է պետական հո-

---

զժամ զարնուլն խափանեց, և եկեղեցիք քակեց ի հ[ի]մանէ, և քրիստոնէից աւրէնքն ճանդարեց, և շատ դառնութիւն արար ի վերայ քրիստոնէից» (Ա. Սյուրմեյան, Ցուցակ հայերեն ձեռագրաց Հալեպի..., Երուսաղեմ, 1935, էջ 68)։

122 «ԺԵ դարի հիշատակարաններ», Գ, Երևան, 1967, էջ 110։

123 Տե՛ս Հ. Դ. Փափազյան, «Բեյթ-ուլ-մալի» ինստիտուտը և հայ ֆեոդալների հողերի բռնագրավումները XV դարում («Պատմա-բանասիրական հանդես», 1958, № 2, էջ 194—203)։

124 Տե՛ս «ԺԵ դարի հիշատակարաններ», Գ, էջ 173—174։

ղներից շռայլ բաշխումներ կատարել քոչվոր ցեղապետերին։ Հասան-բեկ Ռումլուն հայտնում է, որ մեկ հարյուրամյակի ընթացքում Կարա-կոյունլու և Ակ-կոյունլու գահակալներից և ոչ մեկը այնքան սոյուրղալներ չի բաժանել, որքան իր հնգամյա թագավորության տարիներին Ռուստամ փադիշահը[125]։

Նախորդ տարիների գահակալական պայքարի դառնությունները ճաշակած ժողովուրդը Ռուստամ փադիշահի թագավորության տարիներին փոքր-ինչ շունչ է քաշում։ Սակայն, ընդհանուր առմամբ, աղ-կոյունլուների պետության հպատակ ժողովուրդների դրությունն այն աստիճան ծանր էր, պետական պաշտոնյաների չարաշահումները և քոչվոր ավագանու կենտրոնախույս ձգտումներն այնպիսի անսանձ ձևերով էին արտահայտվում, որ պետության մոտալուտ փլուզումը կանխելու համար անհրաժեշտ էին արմատական միջոցառումներ։ Պետությունը կայունացնելու խիզախ փորձ կատարեց Ուզուն-Հասանի թոռ Ահմադը։ Սա ծնվել ու մեծացել էր Օսմանյան կայսրության սահմաններում, ուր Ուզուն-Հասանի դեմ բարձրացրած անհաջող ապստամբությունից հետո ապաստան էր գտել իր հայրը՝ Ուղուրլու-Մուհամեդը։ 1497 թ. գարնանը Ահմադը գալիս է Երզնկա, որտեղ ուներ կողմնակիցներ։ Քոչվոր ցեղապետերի մի մասը միանում է նրան և նա արշավում է Ռուստամ փադիշահի դեմ։ Բախումը տեղի է ունենում Ջուղայի դաշտում, Ռուստամը սպանվում է, Ահմադը գրավում է գահը և իշխում 8 ամիս։ Կարճատև այդ ժամանակամիջոցում՝նա համառ ջանքեր գործադրեց քոչվոր ավագանու ուժերը ջլատելու և կենտրոնական իշխանության վարկն ու հեղինակությունը բարձրացնելու համար։ Մահապատժի ենթարկեց ու բանտերը նետեց բազմաթիվ անվանի ցեղապետերի, ետ խլեց Ռուստամի կողմից շռայլորեն բաշխված սոյուրղալները և, իր համար ամուր սոցիալական հենարան ստեղծելու նպատակով, անցկացրեց հարկային նոր ռեֆորմ, որով չեղյալ հայտարարվեցին շուրջ երկու տասնյակ նորահնար հարկեր ու տուրքեր[126]։ Այս միջոցառումներով Ահմադը իր դեմ հանեց ոչ միայն թուրքմենական ցեղերի հզոր առաջնորդներին, այլև տիրող դասակարգի բոլոր ներկայացուցիչներին՝ անկախ նրանց ազգային պատկանելությունից։ Դրանով պետք է բացատրել այն հանգամանքը, որ հայ աշխարհիկ և եկեղեցական կալվածատիրության կարկառուն ներկայացուցիչներից մեկը՝ Աղվանից կաթողիկոս պարոնտեր Առաքելը, իր մի հիշատակարանում Ահմադին անվանում է «արքանեակ սատանայի և կամարար բելիարեան դասուն»։

Ահմադի գահակալության վախճանի մասին տեղեկություններ է գրանցել հայ կաթոլիկ մի ժամանակագիր. նա հայտնում է, որ «Ահմատն գնաց ի Խարվէզ, սկսաւ մեծ պարնէքն բռնիլ. Իպայ-սօլթանն փախեաւ, դիմ(ե)աց Էրաղատունն (իմա՝ Իրաք), Ահմատն հետևն գնաց, Իպէն յետ դարձաւ՝ Ահմատն սպանեց ձմեռն»[127]։

Ահմադի սպանությունից հետո իշխանության ղեկը դարձյալ անցավ ամիրների ամիր Այբա-Սուլթանի ձեռքը, որը թագավոր հռչակեց Ռուստամի որդի Ալվանդին («ղՌուստամի որդին՝ զԱլւանդ իմիրղէն եբեր ի Թարվէզ, թագաւոր եդիր»)[128]։ Ուշագրավ տվյալներ են գրանցել հայ ժամանակագիրները 10 հա-

125 Տե՛ս И. П. Петрушевский, նշված աշխատությունը, էջ 177։

126 Նույն տեղում, էջ 144—152։

127 «Մանր ժամանակագրություններ», I, էջ 195։

128 Նույն տեղում։

ղար հեծյալ մարտիկներից բաղկացած այն հեծելազորի մասին, որի մեջ էր գտնվում նորընծա փադիշահ Ալվանդը։ 1498 թ. ձմռան ամիսներին սրանք նախ հայտնվում են Վանում ու Ոստանում և «կացին անդ ԺԵ (15) օր ուտելով և առնելով, ծեծելով և խլելով զրկեցին զտառապեալ ազգս Հայոց», ապա անցյան Քաջբերունիք և ձմեռեցին Արճեշ քաղաքում ու շրջակա գյուղերում։ Խիստ ծանր վիճակ ստեղծվեց Քաջբերունյաց գավառի հայերի համար։ Զինավառ այդ բարբարոսները, ձմռան սաստկասառույց ցրտին, բնակարաններից դուրս դցեցին մարդկանց ու անասուններին և իրենք գրավեցին իրենց գրաստներով, բռնագրավեցին մարդկանց ու անասունների համար ամբարված ողջ ռնդամթերքն ու սկսեցին «չարչարել զքրիստոնեայսն վասն խոտի և յարդի, գարոյ և գինոյ և վասն կերակրոյ և ըմպելոյ»։ Այս բոլորից հետո հայերի վրա գրեցին մինչ այդ չլսված ու չտեսնված հարկ՝ «ի գլուխն ԲՌ (2000) դահեկան»։ Այս տեղեկությունները հաղորդող Բարսեղ գրիչը խոսում է նաև հարկահանության ժամանակ կիրառվող խոշտանգումների մասին։ «Եւ բաղում տանջանօք,—գրում է նա,—չարչարէին զքրիստոնեայս, կախէին և ծեծէին և ի բանդ արկեալ՝ պահէին յերկաթս մինչև չտային զհարկս»։ Ժողովրդին մինչև վերջ թալանելուց հետո միայն նորընծա Ալվանդ փադիշահի զորախումբը հեռացավ Քաջբերունիքից դեպի Թավրիզ[129]։

Շուտով հրապարակ են իջնում գահի նոր հավակնորդներ՝ Մուհամեդը և Մուրադը։ 1499 թ. Մուհամեդը սպանվում է, իսկ հաջորդ տարում Մուրադի և Ալվանդի միջև հաշտություն է կայանում։ Աղ-կոյունլուների պետությունը բաժանվում է երկու մասի. Հայաստանն ու Ադրբեջանը բաժին են ընկնում Ալվանդին։

Իշխանության այս բաժանումից հետո էլ պետության մեջ կարգ ու կանոն չի վերահաստատվում։ Երկրի տարբեր մասերում տեղի են ունենում Բայանդուրի դինաստիայի ամիրզադաների ու քոչվոր ցեղապետերի միջև բախումներ ու կռիվներ, որոնք խիստ բացասաբար են անդրադառնում երկրի տնտեսական վիճակի վրա ու մեծ տառապանքներ բերում աշխատավոր ժողովրդին։

Խառնակ ու անկայուն այս վիճակի ուշագրավ ու ճշմարտացի նկարագրությունը գտնում ենք Հակոբ անվամբ մի գրչի 1500 թ. շարադրած հիշատակարանում. «Թավրիզոյ փատշահութիւնն խաբաներ էր և աղ-օղլուցոց (իմա՝ աղկոյունլուների) ազգն յիրար անկած էին, և պարոնութիւն սոցա ոչ հաստատէին, և աշխարհս կայր յերերմանի, վասն զի միմեանց ոչ հնազանդէին և յերեք-չորս դիմաց բաժանեալ էին փատշահութիւնն, և զմիմեանս կոտորէին. և շատ հայ և թուրք թալանեցան, և գեօղք և քաղաքք աւերեցան, և ազգք քրդաց կոտորեցան և սպանեցան»[130]։

Գահակալական պայքարի ու խժդժությունների այս թեժ օրերին Սեֆյան Շեյխ-Իսմայիլը, որն այդ ժամանակ ընդամենը 13 տարեկան պատանի էր, կըզըլբաշ ցեղապետերի թելադրանքով ու խնամակալությամբ սկսում է իր շուրջը համախմբել Ադրբեջանում, Հայաստանում և Փոքր Ասիայում սփռված կըզըլբաշ աղանդին պատկանող ցեղերի զինական ուժերը։ 1499 թ. վերջերին Կաղզվանում նրա դրոշի տակ էին հավաքվել արդեն 7 հազար հավատարիմ ու անձնազոհ մարտիկներ։ 1500 թ. սկզբներից նրանք սկսեցին ասպատակել Սամցխեի

129 Տե՛ս «ԺԵ դարի հիշատակարաններ», Բ, Առաջաբան, էջ XLV—XLVI, նաև «ԺԵ դարի հիշատակարաններ», Գ, էջ 256։

130 «ԺԵ դարի հիշատակարաններ», Գ, էջ 294։

աթարեկության ու Շիրակի շրջանները, իսկ նույն թվականի աշնանը մտան Շիրվան և գրավեցին Շամախին։ Ջաբանի կոչվող վայրում Շեյխ-Իսմայիլի և Շիրվանշահ Ֆառուխ-Յասարի միջև տեղի ունեցած արյունահեղ ճակատամարտում հաղթանակ տարան կըզըլբաշները։ 1501 թ. Շեյխ-Իսմայիլը Շարուրում ջարդեց Աղ-կոյունլու Ալվանդի զորքերին և հանդիսավոր մտավ Թավրիզ։ Ալվանդը 1502 թ. իշխանությունը վերագրավելու փորձ կատարեց, բայց վերջնական պարտություն կրեց։ Կըզըլբաշները պարտության մատնեցին նաև Աղ-կոյունլու մյուս փադիշահ Մուրադին։ Եվ, այսպիսով, վերացավ աղ-կոյունլուների ընդարձակածավալ պետությունը, որի կազմի մեջ, սկսած 1468 թ. մտել էր նաև ողջ Հայաստանը։

## 5. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԱՐՉԱԿԱՐԳԸ ԵՎ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ XIV—XV ԴԱՐԵՐՈՒՄ

Կարա-կոյունլու և Աղ-կոյունլու թուրքմենական դինաստիաներով կառավարվող պետությունների քաղաքական կյանքի էպիկենտրոնը Ատրպատականն էր՝ հռչակավոր իր Թավրիզ մայրաքաղաքով։ Սակայն Հայաստանը նույնպես կենտրոնական դիրք էր գրավում այդ պետությունների և՛ քաղաքական, և՛ տնտեսական ոլորտներում։ Կարա-կոյունլուների պետության հիմնադիր Կարա-Յուսուֆի տևական բնակավայրը Վաղարշակերտն էր։ Վանը, սկսած 1425 թ., արքունի տան երկրորդ խոշոր դեմքի կամ ամենախոշոր պետական կործչի նստավայրն էր, իսկ Սյունյաց հին ու անառիկ բերդերից «տուն դանձու և հարկաց աշխարհի» կոչվող Երնջակը[131], թուրքմենական տիրակալների պատըսպարանն էր վտանգի պահին. այստեղ էր գտնվում նրանց գանձատունը, կենտրոնական բանտը և այլն։ Նշանակալից դեր էր կատարում նաև Նախիջևանը՝ որպես հեծելազորի ձմեռային կայան։

Հայաստանի նահանգները (վիլայեթները) և շրջանները (թուման կամ նահիա), որոնք իրենց մեծագույն մասով պետական (դիվանի) հողերի մեջ էին դասվում, փադիշահերի կողմից որպես սոյուրղալ տրվում էին քոչվոր ազդեցիկ ցեղերի պետերին, բարձրաստիճան զինվորականներին և կառավարող դինաստիայի ամիրզադաներին։ Սոյուրղալ ստացած այդ ամիրները կամ կողմնապետերը (այսպես են կոչվում նրանք հայկական աղբյուրներում) ձգտում էին իրենց տիրույթները դարձնել ժառանգական, բայց այդ նրանց չէր հաջողվում։ Պետության առաջ հանցապարտ լինելու դեպքում նրանք զրկվում էին իշխանությունից. հաճախ պաշտոնազուրկ էին արվում նաև փադիշահի ու կառավարող դինաստիայի փոփոխության հետևանքով։

Այսպես, օրինակ, Վան քաղաքն իր շրջակայքով 1425 թ. Իսքանդար Կարա-կոյունլուն խլեց Շամբոյան կոչվող քուրդ ամիրների ընտանիքից ու հանձնեց իր Յար-Ալի որդուն։ Սա, որ «առնէր զանիրաւութիւն հարկապահանջութեամբ ազգիս մեր (իմա՝ հայոց) և տաճկաց»[132] 1434 թ., վախենալով իր հոր դատաստանից փախչում է Շիրվան. այդ բարեբեր շրջանի կողմնապետությունը հանձնվում է Ջհանշահին, իսկ նրա գահակալությունից հետո՝ Ղլիճ-Ասլան

[131] Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, Թիֆլիս, 1910, էջ 13։ Այսուհետև՝ Ստ. Օրբելյան։
[133] Թ. Մեծոփեցի, էջ 99։

անունով մի ցեղապետի. սա հետագայում բանտարկվում է և նրա փոխարեն կողմնապետ է կարգվում Ջհանշահի կաթնեղբայր Մահմուդ-բեկը։ Աղ-կոյունլուների հաղթանակից հետո այս շրջանը հանձնվում է Ուզուն-Հասանի զորահրամանատար Սուլեյման-բեկ Բիժան-օղլուն, «որ էր աթաբակ և հայրագլուխ Սալուռ փաթշահին»։

Կան որոշ տվյալներ, որոնք հնարավորություն են տալիս հետևելու նաև Այրարատյան նահանգի վրա իշխող ամիրների հաջորդականությանը՝ XIV դարի վերջերից մինչև աղ-կոյունլուների հաղթանակը։ Հավանաբար Հայաստանի կենտրոնական այդ շրջանները հանձնված են եղել Սաադլու կոչվող քոչվորական ցեղի պետ Ամիր-Սաադին, որը վախճանված պետք է լինի 1411 թ. փորրինչ առաջ (թաղված է Երևանի մոտ՝ Արգավանդ գյուղում)։ Նրան հաջորդում է Փիր-Հուսեյն որդին, իսկ 1425 թ. հիշատակվում են նրա թոռները՝ Փիր-Ղաիբն ու Ավդուլը։ Հիշյալ ընտանիքի տիրապետությանը վերջ է տրվում, հավանաբար, հենց այս տարիներին և Իսքանդարն այդ նահանգը հանձնում է Սյունյաց իշխան Բեշքեն Օրբելյանի մեծամեծ պաշտոնների արժանացած Ռուստամ որդուն։ 1441 թ. կուսակալ է հիշվում ոմն Յաղուբ-բեկ, իսկ 1462 թ.՝ Ջհանշահի Հասան-Ալի որդին[133]։

Այսպիսով, Կարա-կոյունլու և Աղ-կոյունլու ցեղերի առաջնորդներին ու զորահրամանատարներին չի հաջողվում Հայաստանի շրջաններում ստույգ իրենց ուլքաները դարձնել ժառանգական տիրույթ։ Ամեն մի նոր դահակալ Հայաստանի բարեբեր շրջաններից ետ է կանչում իր նախորդի նշանակած կառավարիչներին (կամ նրանցից շատերին) ու նույն այդ շրջաններր հանձնում իր դահին հավատարիմ բարձրաստիճան անձանց։

Իրենց ղավթած երկրամասերում շատ ավելի կայուն էին Հարավային Հայաստանի քուրդ տիրակալները։ Նրանց տիրապետության տակ էին գտնըվում Վանա լճի շրճակա երկրամասերը (բացի Վանից), Տուրուբերանը և պատմական Հայաստանի այլ շրջաններ։ Քրդական ամենախոշոր տիրույթը Հարավային Հայաստանում Բաղեշի ամիրությունն էր, որը տարածվում էր Բաղեշի, Խլաթի, Մուշի, Խնուսի, Խոյի և Սասունի վրա։ Այդ ընդարձակ երկրամասի տիրակալ Ամիր-Շարաֆը (Ռոժակ ցեղից) 1387 թ. հնազանդվել էր Լանկ-Թամուրին և ստացել նրանից «խաղաղութեան նամակ»։ Նրան հաջորդեց Իբրահիմ եղբայրը, որը անհնազանդության պատճառով 1396 թ. սպանվեց Միրանշահի կողմից։ Բաղեշի ամիրությունը տրվեց Ամիր-Շարաֆի որդի Շամս-ադ-դինին։ Սա գործակցեց կարա-կոյունլուներին։ Երբ Կարա-Յուսուֆը իր «տառապեալ ու անզէն» զորամասերով, Լանկ-Թամուրի մահից հետո կրկին երևաց Հայաստանում, Շամս-ադ-դինը ընդառաջ գնաց նրան՝ «յոյժ մեծարեաց զնա հացով և ջորեօք, ձիով, զինուք և ամենայն զինուորական և պատերազմական պատրաստութեամբ»[134]։

1405 թ. Շամս-ադ-դինը ներխուժել էր Վանի և Ոստանի ամիրության սահմանները, պաշարել Արծկեի բերդը և ավեր գործել նրա շրջակա գյուղերում։ 1406 թ. կրկնվեց այդ արշավանքը Կարա-Յուսուֆի հետ միասին։ Կարա-Յուսուֆը իրեն փեսայացած Շամս-ադ-դինի հետ ներխուժում է Ամիր-Եզ-

---

[133] Տե՛ս «ԺԵ դարի հիշատակարաններ», Բ, Առաջաբան, էջ LIX։
[134] Թ. Մեծոփեցի, էջ 70։

դինի երկիրը. «արար շատ աւեր, և այրեաց զերկիրն Վաստանայ և Վանայ. և նստաւ աւուրս Լ (30) յԱմկոյ և ի Շատուանայ»[135]։

1424 թ., Շահրուխին գործակցելու մեղադրանքով, Իսքանդարը սպանում է Շամս-ադ-դինին, բայց Բաղեշի ամիրությունը մնում է քրդական նույն Ռուժակ ցեղին պատկանող ամիրների ձեռքին՝ մինչև XVI դարի վերջերը[136]։

Վասպուրականի կյանքում նշանակալից դեր են կատարում Ոստանի քուրդ ամիրները՝ Շամբոյան ցեղից, որոնք, ըստ Թ. Մեծոփեցու, սերում էին «յազգէն Սենեքերիմեանց», այսինքն՝ Արծրունյաց հայ թագավորական տնից (մայրական գծով)[137]։ Սրանց տիրապետությունը XIV դարի վերջերին և XV սկզբներին տարածվում էր մի մեծ երկրամասի վրա՝ Բերկրիից մինչև Ջուլամերիկ, Խիզանից մինչև Աղբակ։ Հայկական աղբյուրներում բազմիցս հիշատակվում է այս դինաստիայի կարկառուն ներկայացուցիչ Ամիր-Եզդինը, որը 1387 թ. Վանի բերդում քաջաբար դիմադրում է Լանկ-Թամուրին։ Բերդի գրավումից հետո, ըստ երևույթին, Ամիր-Եզդինը փրկվում է փախուստ տալով։ 1392 թ. նա խլում է Ոստան քաղաքն իր եղբորից[138]։ Երբ կարա-կոյունլուներն իշխանության գլուխ են անցնում, Ամիր-Եզդինը «հակառակ եղև Յուսուփին»[139]։ Սա հիշատակվում է մինչև 1419 թ., երբ արշավանք է կազմակերպում Բաղեշի ամիրության դեմ, որի սահմաններում այրում է 60 գյուղ[140]։ 1420 թ. արդեն որպես ամիր հիշատակվում է Ամիր-Եզդինի որդի Մելիք-Մուհամեդը, որին 1423 թ. թունավորում է Իսքանդարը։ Հաջորդում են սրա եղբայրները՝ Ահմադը՝ Վանում, Բահադ-էդ-դինը՝ Ոստանում և Ուրմիայում։ Այս երկուսն էլ սպանվում են Իսքանդարի կողմից։ Կարա-կոյունլուները 1424—1425 թթ. պաշարում են Վանը, ուր դիմադրություն էր կազմակերպել Ահմադի որդի Մելիք-Ասադը. դիմադրությունը կոտրվում է. Մելիք-Ասադն անցնում է Ջուլամերիկ[141]։ Գրավվում է նաև Ուրմիան[142]։ Այսպիսով, Իսքանդարին հաջողվում է ժամանակավորապես գրավել քրդական այս դինաստիայի հիմնական տիրույթները։ 1442 թ. Ջհանշահը մի նոր արշավանք է կազմակերպում ու գրավում դեռևս սրանց ձեռքում գտնվող Ջոել ու Ջուլամերիկ բերդերը։ Դարավերջին, աղ-կոյունլուների պետության քայքայման շրջանում, քրդական այս ընտանիքի ներկայացուցիչ Եզդինշերը, իսկ ապա Ջահիդ-բեկը կրկին գլուխ են բարձրացնում, գրավում նախկինում իրենց պատկանող մի շարք բերդեր։ 1498 թ. Ջահիդ-բեկը գրավում ու կողոպտում է նաև Աղթամար կղզին[143]։ Մի քանի տարի անց նա հպատակվում է Շահ-Իսմայիլին ու իշխում Ոստանում 60 տարի[144]։

---

135 Սամուել (շարունակող), էջ 172—173։

136 Տե՛ս «ԺԵ դարի հիշատակարաններ», Բ, Առաջաբան, էջ LIX։

137 Տե՛ս Թ. Մեծոփեցի, էջ 30։

138 Տե՛ս «ԺԵ դարի հիշատակարաններ», էջ 597։

139 Թ. Մեծոփեցի, էջ 71։

140 Տե՛ս Սամուել (շարունակող), էջ 173։

141 Տե՛ս «ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 326, 328, 375, Թ. Մեծոփեցի, էջ 84։

142 Տե՛ս Մ. Մուրադյան, Ն. Մարտիրոսյան, Ցուցակ ձեռագրաց Մշոյ ս. Առաքելոց վանքի և շրջակայից, էջ 111։

143 Տե՛ս «ԺԵ դարի հիշատակարաններ», Գ, էջ 277։

144 Տե՛ս „Schérèf-nameh ou histoire des Kurdes, par Schérèf, prince de Bidlis publiée par V. Veliaminof-Zernof", tome I, première partie, Պետերբուրգ, 1860, պարսկ. բնագիր, էջ 95։

Բացի այս երկու խոշոր ամիրություններից Հայաստանում կային իրենց երկրամասով փոքր ու նվազ քաղաքական կշիռ ունեցող մի շարք այլ քրդական տիրույթներ՝ Խիզանում, Հազոյում, Ջերմուկում, Սպարկերտում, Բալույում, Մժնկերտում և այլ վայրերում։

Հայաստանի քրդական ամիրություններն ու կողմնապետություններն իրենց ներքին կյանքում անկախ էին։ Ամիրներն օժտված էին ոչ միայն հարկային, այլև վարչական ու դատական ինքնավարության իրավունքներով։ Նրանցից յուրաքանչյուրն ուներ իր արքունիքը, որը կենտրոնական արքունիքի մանրանկար պատճենն էր։ Կենտրոնական կառավարչության պաշտոնյաները մուտք չունեին ինքնավար այս շրջաններում։ Ամիրներն ինքնուրույն կերպով դատում էին հանցագործներին, նույնիսկ մահվան վճիռ արձակում և կամ դատը հանձնում շար՛ի դատաստանին, որին մասնակցում էին տվյալ վայրի մահմեդական բարձրաստիճան հոգևորականները՝ ղադու գլխավորությամբ։

Ամիրությունների կյանքում մեծ դեր էին կատարում նրանց երկրամասերում տեղակայված քոչվորական ցեղերի պետերը և շրջանների կառավարիչները։ 1445 թ., օրինակ, Բաղեշի ամիրության «մեծամեծերը» առանց կենտրոնական իշխանության հաշվի առնելու պետական գործերից հեռացրին խելապակաս ամիր Շեյխ-Մահմուդին և ամիր հռչակեցին նրա եղբորորդի Շամսադ- դինին[145]։

Կարա-կոյունլուների և Ակ-կոյունլուների պետություններում փադիշահից հետո առաջին դեմքն էր համարվում ըստ հարկի նշանակվող գլխավոր զորահրամանատարը՝ ամիր-ալ-ումարան (ամիրների ամիրը), որ լինում էր թագավորող ընտանիքի անդամներից կամ ամենաազդեցիկ քոչվոր ցեղերի առաջնորդներից մեկը։ Երկրորդ տեղը գրավում էր մեծ սադրը՝ մահմեդական հոգևորականության պետը, այնուհետև մեծ վեզիրը, որ գլխավորում էր վարչական պաշտոնեությանը և վարում արտաքին հարաբերությունները, սահիբ-դիվանը՝ պետական հասույթների ու ֆինանսների գործակալության պետը, մուհրդարը՝ փադիշահի կնքապահը[146]։ Գրեթե նույն սկզբունքով էր կազմակերպված նաև կիսանկախ ամիրությունների կառավարչությունը։

Ֆինանսական ու հարկային տեղական ատյանների պաշտոնները, ըստ մեծի մասի, գրավում էին հայերը։ Նրանք հայկական աղբյուրներում կոչվում են «ձեռնավոր», «խոջա», «թամղաչի» և այլ անուններով։ Այդպիսի պաշտոնյաներից էր, օրինակ, Սեթի որդի խոջա Հովսեփը, որը 1479 թ. հիշատակվում է Մուշում որպես «ամենագովելի և մեծաշուքն և իշխան Տարունւոյ գաւառիս»[147] կամ ոմն տեր Կարապետ, որ հիշատակվում է երկու տարի հետո որպես պարոն Էման-բեկի «խաղինադար» (գանձապետ), կամ Ոստանի քուրդ ամիրների արքունիքում լալայի (դաստիարակ) պաշտոն ունեցող Միրանշահը, որ 1481 թ. փադիշահի մոտ գնալով, ձեռք էր բերել հարկային որոշ արտոնություններ՝ Աղթամարի և Վասպուրականի այլ վանքերի համար։ Ուշագրավ տվյալներ են պահպանվել նաև Վանի մեծահարուստ ու ազդեցիկ խոջաների և թամղաչիների մասին, որոնք գլխավոր դեր են կատարել հարկահանության, հարկերի կապալառության և, մանավանդ, առևտրի բնագավառներում։

Այս փաստերը վկայում են, որ Հարավային Հայաստանի քրդական ամի-

145 Տե՛ս «ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 585։
146 Տե՛ս И. П. Петрушевский, նշված աշխատությունը, էջ 198։
147 «ԺԵ դարի հիշատակարաններ», Բ, էջ 438։

րություններում և փադիշահերի կողմից նշանակված կողմնապետերի կառավարչության ներքո գտնվող հայկական շրջաններում, քուրդ և թուրքմեն ցեղապետերի հետ միասին, հայ աշխատավոր գյուղացիությանը շահագործում էին նաև հայ մեծատոհմները։ Մեծ չէր նրանց դերը կառավարչության մեջ, բայց տնտեսության տարբեր մարզերում նրանք գործունեության լայն ասպարեզ ունեին, և աշխատավոր ժողովրդից քամվող հարկերը հոսում էին ոչ միայն դեպի երկրի նոր տերերի գանձատները, այլ զգալի չափով նաև դեպի հայ խոջաների ու թամղաչիների դրամաքսակները։

Հայ իշխող դասակարգը XIV—XV դարերում զիջեց քաղաքական ու տնտեսական իր դիրքերը Հայաստանի տերը դարձած քոչվոր ցեղերի հարատև ճնշման ներքո։ Հայ ֆեոդալական տների հողազրկման, մասնատման ու անէացման պրոցեսը, որ ծայր էր առել Հայաստանում մոնղոլական իշխանության քայքայման շրջանում, մոտեցավ իր ավարտին հենց թուրքմենական ցեղապետերի տիրապետության այս տասնամյակներին։

Սյունյաց տիրակալ Օրբելյանների բնորոշ օրինակով հետևենք այդ պրոցեսին։

1385 թ., ինչպես գիտենք արդեն, Ոսկե Հորդայի խան Թողթամիշի զորքերն ասպատակեցին Սյունիքը. գրավեցին Որոտան բերդը և Եղեգիս քաղաքը Իվանե Օրբելյանի որդիներ՝ Սմբատից և Գորգունից։ Գորգունը, որ իշխում էր Վայոց ձորում (Եղեգիս կենտրոնով) վշտամահ եղավ։

Լանկ-Թամուրի արշավանքների տարիներին Օրբելյաններին հաջողվեց վերստանալ իրենց կալվածքների մի մասը։ 1403 կամ հաջորդ թվականին Թամուրյան Միրզա-Օմարը բռնությամբ հավատափոխ արեց Սմբատ և Բուրթել Օրբելյաններին ու սրանց եղբորորդի Տարսայիճին, որոնք հավատափոխ արված ուրիշ հայ իշխանների հետ միասին, իրենց ընտանիքներով տարվեցին Սամարղանդ[148]։ Շատ չանցած (հավանաբար Միրանշահի ժամանակ) սրանք վերադարձան Սյունիք և կրկին տիրեցին իրենց կալվածքներին՝ պահելով իրենց պապերի հավատքը։

1407 թ. Բուրթելն ու իր պատանի զավակները զոհ են գնում մահտարաժամին։ Լանկ-Թամուրի մահվանից հետո սկսված գահակալական խառը պայքարի տարիներին, Սմբատը «խաբեալ ի խրատատուաց իւրոց» գործակցում է Ջելաիրյան Ահմեդ խանին, իր զորագնդով մասնակցում նրա մղած մարտերին[149]։ Ի տրիտուր իր ծառայությունների նա պարգև է ստանում Անգեղակոթ գյուղը։ Բայց շուտով Ահմեդ խանը պարտություն է կրում Կարա-Յուսուֆից ու խեղդամահ արվում (1410)։ Սմբատը ոչ միայն զրկվում է նոր ստացած իր պարգևից, այլև Կարա-Յուսուֆը բռնագրավում է նրանից Որոտան բերդը։ Հայրենազուրկ եղած Սմբատն իր Բեշքեն, Իվանե (Ստեփանոս) և Շահ որդիների հետ պատսպարվում է Վրաստանում[150]։ 1412 թ. Գորիից ոչ հեռու գտնվող Ուփլիսցիխե գյուղաքաղաքում շարադրված մի հիշատակարանում Սմբատն ու իր Բեշքեն որդին հիշվում են որպես այդ շրջանի իշխաններ. «Իշխանութեան տեղւոյս պարոն Սմբատի և որդւոյ նորին պարոն Բէշքէնի, որ յաստմանէ չարին վտարեցան ի հայրենեաց իւրեանց»[151]։ Սմբատը վախճանվում է, հավանաբար,

148 Թ. Մեծոփեցի, էջ 67—68։

149 Տե՛ս Թ. Մեծոփեցի, էջ 72—73, «ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 82։

150 Տե՛ս «ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 194։

151 Նույն տեղում, էջ 133։

*ստրկության մեջ 1417 թ. քիչ առաջ։ Իսկ նրա որդիներ Բեշքենն ու Իվանեն վերադառնում են Սյունիք. «Եկին ի հայրենիս իւրեանց, և ոչ են տեարք իշխանութեանն իւրեանց, այլ ընդ ձեռամբ անօրինաց»,—ասում է ժամանակակից մի գրիչ*[152]*։*

*Սմբատի եղբոր՝ Գորգունի որդի Տարսայիճը նույնպես, վերադառնալով սամարղանդյան գերությունից, ի վերջո կարողանում է իշխել իր հոր կալվածքում՝ Եղեգիսում։ Բայց 1419 թ., ժամանակակից մի գրչի վկայությամբ, նա «յոյժ ի նեղութիւն, ի տառապանք և յաղքատութիւն անկաւ, զի նա որ բոլոր դաւառիս իշխէր, այժմ ոչ միոյ ագարակի կամ գեղջ ոչ կարէ իշխել, զի խլեալ և յափշտակեալ էին ի նմանէ զամենայն գիւղ և զքաղաք, զվանք և զանապատ... Եւ նա փախեալ և թագուցեալ էր ի ծերպս վիմաց և ի մայրիս»*[153]*։*

*1421 թ. հետո, երբ Իսքանդարը դառնում է կարա-կոյունլուների պետության գահակալ, Բեշքեն Օրբելյանի որդի Ռուստամն առաջ է քաշվում պետական բարձրաստիճան պաշտոնների։ Սրա ջանքերով Օրբելյանները կրկին տեր են դառնում իրենց երկրին։ Երկար չի տևում, սակայն, այս վիճակը։ Շահռուխը իր երրորդ արշավանքի ընթացքում հարձակվում է նաև Իսքանդարի կողմից հովանավորվող Օրբելյանների տիրույթի վրա։ Եվ Բեշքենը Սյունիքի ու շրջակա գավառների 6 հազար հայ գերդաստանների գլուխ անցած, պայքարելով Թամուրյանների դեմ, արտագաղթում է երկրից ու ապաստան գտնում Վրաստանում*[154]*։*

*Վրաց Ալեքսանդր թագավորը, որ Բեշքենի փեսան էր, Լոռին հանձնում է իր աներոջը։ Հայաստանի այլ շրջաններից Լոռի են հասնում նոր փախստականներ և սիրով ընդունվում Բեշքենի կողմից։ Սակայն, շուտով, երկյուղ կրելով Բեշքենի հզորացումից, Վրաց թագավորը թունավորել է տալիս նրան։*

*Ջանդվածային այս արտագաղթից հետո XV դարի հետագա տասնամյակներում էլ Սյունիքի տարբեր մասերում հանդիպում ենք Օրբելյան պայազատների։ Այսպես, 1450 թ. կրկին Սյունիքումն է Ռուստամ Օրբելյանը։ Սա Տաթևի վանքի վանահայր Շմավոն Անգեղակոթցուն վաճառում է Սվարանց, Տաշուն, Աղանց և Տանձատափ գյուղերը*[155]*։ 1471 թ. Վայոց ձորում հիշատակվում է Սմբատ իշխանը՝ Տարսայիճի որդի, իսկ 1475—1490 թթ. սրա որդի Եղիշե պարոն-տերը, որպես Վայոց ձորի եպիսկոպոս*[156]*։*

*Հայաստանում տեղաբաշխված քոչվոր ավազանու հարատև ճնշման տակ իրենց քաղաքական ու տնտեսական դիրքերը օրավուր կորցնում էին նաև հայ ֆեոդալական մյուս գերդաստանները՝ Խաչենի Հասան-Ջալալյանները, Ծարի Դոփյանները*[157]*, Վայոց ձորի ու Կոտայքի Պռոշյանները*[158] *և ուրիշներ։*

*Խաչենի Ջալա իշխանի մահվանից հետո՝ XV դարի սկզբներին, Հասան-*

---

[152] *Նույն տեղում։*

[153] *«ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 656։*

[154] *Տե՛ս* Թ. Մեծոփեցի, *էջ 117։*

[155] *Տե՛ս* Հ. Փափազյան, *նշված աշխատությունը, էջ 86։*

[156] *Սյունյաց իշխանների մասին ավելի մանրամասն տեղեկություններ կարելի է գտնել Լ. Խաչիկյանի «Սյունյաց Օրբելյանների Բուրթելյան ճյուղը» հոդվածում, տե՛ս «Բանբեր Մատենադարանի», № 9, էջ 173—178։*

[157] *Տե՛ս* Կարապետ Տեր-Մկրտչյան, *Նյութեր հայ մելիքության մասին, Ա և Բ պրակներ, Էջմիածին, 1913—1914։*

[158] *Տե՛ս* Գարեգին Հովսեփյան, *Խաղբակյանք կամ Պռոշյանք հայոց պատմության մեջ, Վաղարշապատ, 1928։*

Ջալալյան իշխանները զրկվել էին երբեմնի տիրույթներից և քարշ էին տալիս իրենց գոյությունը որպես սակավաթիվ գյուղատերեր՝ «ի ներքս ձեռին անօրինաց»[159]։

Դոփյան ֆեոդալական ընտանիքը ծանր հարված կրեց 1386 թ.։ Լանկ-Թամուրի հրոսակների դեմ կռվի մեջ սպանվեց Փոքր Սյունիքի (Ծարի) իշխան Հասան Դոփյանը՝ իր երեք որդիների հետ միասին։ 1430-ական թվականներին Հասանի թոռնորդի Այտինի իշխանության տարիներին Դոփյան իշխանների կալվածքները բռնագրավվում են պետության կողմից։ Դատական ատյաններում երեք տարի քարշ գալով և նյութական մեծ միջոցներ մսխելով, ի վերջո, Այտին իշխանին հաջողվում է վերստանալ «ի ձեռաց այլազգեացն» Դոփյան իշխանների կալվածքների մի մասը։

XV դարի երկրորդ հիսնամյակում Դոփյանները բաժանվում են երեք ընտանիքների՝ Ուլուբեկենց, Այտենցոց և Ջհանշեցոց, որով և ավելի է մասնատվում երբեմնի հզոր Ծարի իշխանների տնտեսական կարողությունը։

Վասպուրականի Արտազ գավառում, մինչև 1426 թ. իշխում էր կաթոլիկ դավանանքի հայ ֆեոդալների մի ընտանիք, որի պատմությանը հնարավոր է լինում հետևել սկսած XIII դարի կեսերից։ Մակու ամրոցն էր այս իշխանների նստավայրը՝ անառիկ իր միջնաբերդով, որ չկարողացավ գրավել նույնիսկ Լանկ-Թամուրը։ Թամուրի առաջարկով Նուր-ադ-դին իշխանը համաձայնվել էր ընդունել նրա գերիշխանությունը, ըստ պահանջի 20 հեծյալից բաղկացած մի ջոկատ տրամադրելու պարտավորությամբ։ Սրա որդի Սոյուրղաթմիշը, առերես մահմեդականություն ընդունելով, դարձել էր Թամուրի թոռ Օմար-Միրզայի մերձավոր զինակիցներից մեկը. մյուս որդին 1403 թ. Մակվում հյուրընկալած իսպանացի դեսպան Ռուի Գոնզալես դե Կլավիխոյի վկայությամբ՝ «զենքի մարդ չլինելով, ավելի հայ լեզվի քերականության ուսանող և վարդապետ» էր[160]։ Մակվի հայ իշխանությանը վերջ տվեց Իսքանդար Կարա-կոյունլուն 1426 թ.։ Նշանավոր գրիչ Թովմա Մինասենցը իր մի հիշատակարանում այդ առթիվ գրել է. «Անմխիթար կըսկիծ եհաս բոլոր ազգացս քրիստոնէից, զի բոլոր աշխարհացս այն մին բերթն միայն էր մնացեալ ի ձեռն քրիստոնէից, և այն ևս առաւ ի մէնջ»[161]։

Մինչև XV դարի 80-ական թվականները հայկական ֆեոդալական մի իշխանություն էլ գոյություն ուներ Համշենի գավառում։ Նույն Կլավիխոն, Սամարղանդից Իսպանիա իր դարձի ճանապարհին, 1406 թ. անցել է Համշենով և ուշադրավ տեղեկություններ գրանցել այդ իշխանության, նրա դժվարանցանելի կածանների ու ժողովրդի բարքերի մասին. «Այս երկրամասը շատ լեռնոտ է, ունի մի քանի լեռնանցքներ, որոնցով անկարող են անցնել կենդանիները։ Որոշ տեղերում ժայռից ժայռ անցնելու համար՝ փայտե կամուրջ են կապել։ Բեռնակիր կենդանիներն այս երկրամասում, ըստ մեծի մասին, անկարող են շարժվել, և մարդիկ ստիպված են ամեն ինչ կրել իրենց ուսերին։ Հացահատիկն այստեղ քիչ է աճում» և այլն։ Այնուհետև Կլավիխոն հայտնում է, որ բնակիչները, չնայած հայ են ու քրիստոնյա, ավազակաբար են վարվում ճամփորդների նկատմամբ։ Այսպես գրելու առիթն, անշուշտ, եղել է այն,

---

[159] «ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 194։

[160] Հ. Հակոբյան, Ուղեգրություններ, Ա, էջ 114—116։

[161] «ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 376։

*որ համշենցիները սափիլ են Կլավիխոյին և նրա ուղեկիցներին վճարել իրենց հետ տարված ապրանքների համար բարձր մաքս*[162]։

*Կլավիխոյի ճանապարհորդությունից քիչ առաջ Սպերի ամիրը Համշենի իշխանությունը գրավել էր պարոնաց-պարոն Առաքելից ու նրա փոխարեն մի մահմեդական կառավարիչ նշանակել՝ քրիստոնյա մի օգնականի ընկերակցությամբ։ Սակայն այս վիճակը երկար չի շարունակվել։ 1422 թ. պահպանվել է մի հիշատակարան, ուր Համշենի տեր է կոչվում նույն Առաքելը։ Հավանաբար սրա որդին է պարոնաց-պարոն Դավիթը, որ հիշատակվում է 1425—1440 թթ. վերջում՝ իր դեռաբույս ղավակ պարոն Վարդի հետ միասին։ 1460 թ. հիշատակվում է Համշենի իշխան, մանկահասակ Վեքեն (Վիգեն անվան աղավաղված ձևն է), որ գերվում է Բաբերդի մահմեդական իշխանի կողմից։ Եվ վերջապես 1489 թ. մի հիշատակարանի մեջ արժեքավոր տվյալներ ենք գտնում հայկական այս իշխանության վերջին տիրակալ Դավթի մասին։*

*Այդ թվականին կամ դրանից մեկ-երկու տարի առաջ, թուրքերը, որ 15 տարի առաջ վերջ էին տվել Տրապիզոնի կայսրությանը, գրավեցին նաև Համշենը՝ փակելով աղ-կոյունլուների վերջին ճանապարհը դեպի Սև ծով։ Հայրենազուրկ եղած Դավիթ իշխանը, փախչելով իր երկրից, պատսպարվել էր հարևան Սպերի շրջանում, որ դեռևս գտնվում էր Աղ-կոյունլու փադիշահերի տիրապետության ներքո*[163]։

*XV դարի 60—90-ական թվականներին Երզնկայի շրջակայքում գտնվող վանքերում բարձրագույն դպրոց էր հիմնադրել Հովհաննես րաբունապետ Համշենցին, որ ժամանակակիցների վկայությամբ սերված էր «ի թագաւորական ազգէ»։ Հավանական է ենթադրել, որ Հովհաննես րաբունապետը Համշենի հայ իշխանների գերդաստանից էր*[164]։

*XV դարի ընթացքում Հայաստանի տարբեր մասերում հիշատակվում են նաև բազմաթիվ այլ հայ կալվածատերեր ու գյուղատերեր։ Այսպես, օրինակ, դարասկզբին հիշատակվում է Արագածոտնի Աղց գյուղի տեր պարոն Աղիդանը, որ բանի հավատափոխ արվելով, հայ այլ իշխանների հետ տարվել էր Սամարղանդ, հետո վերադարձել իր հայրենիքը։ 1424 թ. Սանահնում հիշվում է պարոն Սողղաթմիշի թոռ և Փաշի որդի իշխանաց իշխան պարոն Ջալալին, սրա եղբայրն էր Անիի եպիսկոպոս Հովհաննես Ոսկեփորիկը, որին հանդիպում ենք նույն տարիներին Թմոք (Թմբկաբերդ) դղյակում։ 1432 թ. հիշվում է որպես Ոջնի քաղաքի «նախարար, վերակացու և առաջնորդ» ոմն Ծատուր, իսկ 1460 թ. պարոն Սարգիսը։ 1442 թ. շարադրված մի հիշատակարան տեղեկություններ է պարունակում Արագածոտն գավառի Սերկևլի գյուղի հայ տերերի պարոններ Ալիբեկի, Շալվեի, Վաչուտի, Քրդի և Սարգսի մասին, որոնք, անուններից դատելով, Վաչուտյան իշխանների ուժասպառ շառավիղներից են։ Սրանցից Շալվեն, որ որդին է պարոն Սարգսի և թոռը պարոն Բուղլախի, գրվատվում է այսպիսի խոսքերով. «Այր հսկայազօր ի մրցմունս պատերազմաց, դիւցազնական ի յազատաց և պայազատ ի յիշխանաց»։ 1444 թ. որպես*

---

162 *Տե՛ս Рюи Гонзалее до Клавихо,* Дневник путешествия ко двору Тамура в Самарканд, в 1403— 1406 гг., пер. И. И. Срезневского, СПб., *1881, էջ 382—384։ Համեմատ նաև Հ. Հակոբյան, Ուղեգրություններ, Ա, էջ 142—143։*

163 *Տե՛ս «ԺԵ դարի հիշատակարաններ», Գ, էջ 470։*

164 *Տե՛ս Լ. Խաչիկյան, Էջեր համշինահայ պատմությունից («Բանբեր Երևանի համալսարանի», 1969, № 2, էջ 115—144)։*

Եղվարդ գյուղի տեր հիշատակվում է «մեծազգի և փառաւոր... ազատածին» Աղիզպեկը՝ իր Ավագ և Զաքարիա որդիների հետ միասին (այս Զաքարիան տարիներ առաջ գնել էր Մուղնի գյուղը), իսկ 1465 թ. պարոն Վիչելը («ի մնւթակացութեան երկրիս պարոն Վիչելի»)։ 1467 թ. Բյուրականում հիշվում է պարոն Բարաջանը, իր կնոջ՝ իշխանուհի Թամարի հետ միասին։ 1461 թ. Սրկղունքում շարադրված մի հիշատակարանի մեջ Վայոց ձորի իշխաններ են կոչվում պարոն Ջուման և պարոն Ինանիկը։ 1475 թ. այս Ջուման հիշատակված է որպես «ասպարապետ Հայոց», «իշխանաց իշխան»։ Ասվում է, որ նա սերված է Պռոշյաններից։ Հիշատակարանի մեջ թվարկվում են նաև նրա որդիները՝ պարոն Ղալաբեկ, Ուսուլբեկ, Թումանբեկ և եղբորորդիները՝ պարոն Ճայկազ, Ամիր-Վասակ, Խոտլբոտ, Ամիր-Հասան։ Նրա եղբայրներից Հովհաննեսն ու Ստեփանոսը գրավել են Վայոց ձորի արքեպիսկոպոսական աթոռը՝ նստավայր ունենալով Այրիվանքը։

1488 թ., Յաղուբ փադիշահի ծավալած կրոնական հալածանքների շրջանում, հայ ֆեոդալական ընտանիքների վերջին այս ներկայացուցիչներից 40 հոգի բանտարկվում են և ստիպված մահմեդականություն ընդունում, սակայն յոթ ամիս հետո, մեծագին տուգանքներ վճարելով, այդ հայ «ազատորդիներին» հաջողվում է փրկվել[165]։

Հայ հասարակության իշխող այս վերնախավի ամբողջական ցանկը կազմելու համար լրացուցիչ որոնումների անհրաժեշտություն է զգացվում։ Անշուշտ նրանց մնացած շառավիղներից են Հայաստանի տարբեր շրջաններում այլևայլ առիթներով հիշատակվող տոհմային մելիքներից, մեծատուն տանուտերերից, ձեռնավորներից ու պարոններից շատերը։ Այս կապակցությամբ, սակայն, հատուկ հետաքրքրություն է ներկայացնում պարոն-տեր կոչվող հոգևոր ֆեոդալների դասը, որի սոցիալական դիմապատկերն ուրվագծելու կարիք է զգացվում։

Տիրույթների ու կալվածքների գեթ մի մասը բռնագրավումից զերծ պահելու նպատակով հայ ֆեոդալական տները XIV—XV դարերում պատվարում էին իրենց վանական կալվածատիրության ցուցանակներով։ Հասկանալու համար հայ ֆեոդալական դասի ուշագրավ այս կերպարանափոխության սոցիալ-տնտեսական դրդապատճառները, անհրաժեշտ է բացահայտել հայ եկեղեցու նկատմամբ մահմեդական իշխողների վարած քաղաքականությունը։

Իր դարավոր գոյության ընթացքում հայ եկեղեցին, արտահայտելով իշխող դասակարգի շահերը և ձգտելով հեռու պահել ժողովրդական զանգվածներին սոցիալական պայքարից, զգալի ծառայություններ էր մատուցել երկրի տերերին և ի տրիտուր իր ծառայությունների այս կամ այն չափով հովանավորվել ու արտոնություններ ստացել նրանցից։ Հայ ֆեոդալական տների վերացմանն ու նրանց տիրույթների բռնագրավմանը զուգընթաց, եկեղեցին, անտիճանաբար, իր վրա էր վերցրել նաև հայ ժողովրդի ներքին գործերի տնօրինման պարտականությունը, մի հանգամանք, որ հաշվի էին առնում նաև օտար տիրակալները։

Ուշագրավ է, որ այս կամ այն դինաստիայի, ինչպես և առանձին տիրակալի համար ստեղծված քաղաքական ծանր կացության ժամանակ, պետության մահմեդական վարիչները սիրաշահում էին հայ հոգևորականության ազ-

---

[165] Տե՛ս «ԺԵ դարի հիշատակարաններ», Բ, Առաջաբան, էջ XXXVIII։



Ակ-Կոյունլու Ուզուն-Հասանի 1475թ. հրովարտակը հայ հոգևորականների հարկային արտոնությունների մասին

ղեցիկ շրջաններին՝ եկեղեցու արտոնությունները ընդարձակելու, նվերներ բաշխելու, երբեմն նույնիսկ եկեղեցիներ կառուցելու կամ նորոգելու ճանապարհով։ Հայ եկեղեցու պաշտոնյաներն ու նրանց կալվածքները ազատված են եղել մի շարք ծանր հարկերից ու տուրքերից. Հին ժամանակներից ի վեր մինչև

*օրս,—գրված է Ուզուն-Հասանի մի հրովարտակում,—երբեք այնպիսի օրենք չի եղել, որ Ուչքիլիսայի (էջմիածնի) կրոնավորներից ու սնազլուխներից խարաջ և չիղյա պահանջեն»[166]։ Ջհանշահի կին Բեգում-Խաթունի 1462 թ. հրովարտակով արգելվում է Գանձասարի կաթողիկոսի իշխանության տակ եղող հոգևորականներից «չիղյայի և բեյթ-ուլ-մալի պատրվակով» որևէ բան պահանջելը, նրանց հպատակ վայրերում իջևանելը և այլն։ Ուշադրավ է նաև Ջհանշահ փադիշահի անթվական մի հրովարտակը, ըստ որի, նախկին դահակալների հրամանագրերի օրինակով, Տաթևի ու Վաղադնի վանքերի կալվածքներն ազատ են հայտարարված պետական ամեն տեսակ հարկերից՝ մալից (հողային ռենտայի պետությանը տրվող մաս), իխրաջաթից (արտակարգ ծախսեր) և դիվանական ավարիզից (պետության նկատմամբ հարկային պարտավորություններ)[167]։*

*Հայ եկեղեցական կալվածատիրության համար ստեղծված համեմատաբար նպաստավոր այս պայմաններն ի նկատի ունեին հայ ֆեոդալական տների սակավաթիվ ներկայացուցիչները, երբ XIV—XV դարերում ենթակա վանական հաստատությունների իրավասության տակ էին դնում իրենց ընտանիքին պատկանող կալվածքները՝ վանական այդ հաստատությունների գլուխ կարգելով մերձավոր ազգականներին։ Եվ այսպես, կյանքի է կոչվում սոցիալական մի նոր տերմին՝ «պարոն-տեր», որը տրվում էր բոլոր այն հայ կալվածատեր-ֆեոդալներին, որոնք շարունակում էին տիրել իրենց հայրենական կալվածքների մի մասին՝ լինելով միաժամանակ և՛ «պարոն» (այսինքն աշխարհիկ իշխան), և՛ «տեր» (այսինքն՝ հոգևոր առաջնորդ)։*

*Պարոն-տեր էին Աղթամարի ու Գանձասարի կաթողիկոսները, Սյունյաց մետրոպոլիտները, Վայոց ձորի առաջնորդները, Հաղբատ, Սանահին, Կեչառիս և տասնյակ ու տասնյակ այլ վանքերի հայրապետեր ու թեմերի առաջնորդներ։*

*Դրանցից էր նաև Գառնիի շրջակայքում գյուղեր ունեցող և իրեն Գրիգոր Պահլավունուց սերված ազնվական համարող Հավուց-Թառ վանքի վանահայր Զաքարիա եպիսկոպոսը։ Այս մեծանուն պարոն-տերը 1487 թ. կրկին տեր է դառնում իրենց ընտանիքի ժառանգական կալվածքներին, որոնց մեջ էին մտնում Մանկուս, Ավանիկ, Կուտիս, Հայոց-Թառ, Կուտուց վանք, Ավանասար, Թառնիս, Սուրբ Սարգիս գյուղերը և Կոխտ գյուղի կեսը։ Այս ինը գյուղերի կալվածագրում Զաքարիան հանդես է եկել ոչ որպես Ամենափրկիչ վանքի վանահայր և չի նշել, որ այդ գյուղերը նվիրաբերվում են (վակֆ են արվում) վանքին, որովհետև ֆեոդալական այս ընտանիքի անդամները, Սիմեոն Երևանցու վկայությամբ, «ի րնէ անտի ազատազունք էին և անուանիք, շատազգ և հարուստք, յորոց թէպէտ ոմանք վանականք լինէին, ոմանք աշխարհականք, սակայն մի էին տամբք և ընչիւք, և իւրեանց էր համարեալ գեօղն և վանքն առանց խտրութեան»[168]։ Երևանցին իր այս տողերով տվել է հայ աշխարհիկ ու վանական կալվածատիրության միաձուլման ու սերտաճման երևույթի ճշմարտացի նկարագիրը։*

*Հայկական վանական հաստատությունները XV դարում ընդարձակում էին*

---

[166] *«Մատենադարանի պարսկերեն վավերագրերը». Հրովարտակներ, պրակ առաջին (ԺԵ—ԺԶ դդ.), կազմեց Հ. Փափազյան, Երևան, 1958, էջ 49։*

[167] *Տե՛ս նույն տեղում, էջ 44։*

[168] Սիմէոն կաթողիկոս, *Ջամբռ, Վաղարշապատ, 1873, էջ 277, այսուհետև՝ Ջամբռ։*

իրենց կալվածքները նվերներ ստանալով, երբեմն նաև գնումներ կատարելով։ Նրանք վարում էին իրենց տնտեսությունը ըստ մեծի մասին՝ «վանից գործավոր» կոչվող վարձկան մշակների ուժերով, իսկ որոշ վայրերում՝ շահագործելով վանքապատկան գյուղերի բնակիչների կոռային աշխատանքը։ Տվյալներ են պահպանվել մի շարք վանքերի տնտեսական գործունեության մասին։ Երկրագործությունից բացի, վանական տնտեսությունները զբաղվում էին նաև անասնապահությամբ, սակավաթիվ դեպքերում նաև ձկնորսությամբ, առևտրով ու վաշխառությամբ։

Հայ հպատակների միջև ծագած վեճերը, եթե դրանք վերաբերում էին ընտանեկան հարաբերություններին ու հայ համայնքի ներքին խնդիրներին, լուծվում էին հայ հոգևորականության միջոցով։ Պահպանելով դատական այդ ֆունկցիան, հոգևոր ֆեոդալները նոր ուղիներ էին որոնում տնտեսական իրենց դիրքերն ամրապնդելու և շահույթի աղբյուրներն ընդարձակելու համար։

Հայ պարոն-տերերը աշխարհական գործերից կտրված աստուծո պաշտոնյաներ չէին բնավ։ Նրանք ունեին զինված ջոկատներ, որոնցով անհրաժեշտության դեպքում պաշտպանում էին իրենց գույքն ու պատիվը օտարերկրյա ընչաքաղց զավթիչներից։ Աղթամարի կաթողիկոսները զինական իրենց ուժերով զսպում էին Ոստանի քրդերի ախորժակը, որոնք փափագում էին գրավել և թալանել Աղթամարը։ Ամիդի առաջնորդ Մկրտիչ Նաղաշի զորեղ ծառաները երբեմն հարձակվում էին նաև թշնամի բանակների փոքր զորախմբերի վրա ու ազատում քրիստոնյա գերիներին, իսկ Տաթևի մետրոպոլիտը, որ ուներ «բազում ճորտս այլազգիս» նրանց միջոցով իր կամքն էր թելադրում հպատակներին[169]։

Հայ աշխարհիկ ու հոգևոր ֆեոդալների տիրույթներն ու կալվածքները, օտար տիրապետողների կողմից բռնագրավված հայկական երկրամասերի բազմությամբ, ընդարձակ չէին։ Բնականաբար փոքր էր նաև հայ իշխանների և պարոն-տերերի քաղաքական ու տնտեսական կշիռը հայրենի երկրում, սակայն մեծ էր նրանց դերը ժողովրդի ինքնուրույն գոյության ու դարերի ընթացքում ստեղծված մշակութային արժեքների պահպանության գործում։

Թուրքմեն տիրապետողների լծի տակ ծանր էր, ընդհանրապես, հայ աշխատավոր գյուղացիության վիճակը։ Համեմատաբար տանելի պայմաններ էին ստեղծված թագավորող դինաստիայի կալվածքներում՝ խաս կոչվող հողերում։ Ագուլիսցի Մատթեոս անունով գրիչը ողորմածություն է համարում, որ Իսքանդար Կարա-կոյունլուն իրենց գյուղը խաս է դարձրել[170]։ Շատ ավելի ծանր էր դրությունը քոչվոր ցեղերի ավագանուն որպես սոյուրղալ տրված տիրույթներում, մանավանդ քուրդ ամիրների տիրապետության տակ գտնվող շրջաններում։ Նույնիսկ Օսմանյան կայսրության պետական պաշտոնյաները՝ XVI—XVII դարերում հարկային նոր կանոններ հաստատելիս, խոստովանում էին, որ Բաղեշի շրջանի գյուղացիներից «քրդերի սովորության համաձայն» գանձվող հարկերը խիստ ծանր են եղել[171]։

Անկախ ենթակայությունից, հայկական բոլոր շրջաններում կենտրոնակ էր

---

169 «ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 626, Հ. Մանանդյան, Հ. Աճառյան. Հայոց նոր վկաներ, Վաղարշապատ, 1903, էջ 313։

170 Տե՛ս «ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 337։

171 Տե՛ս «Օսմանյան օրենքները Արևմտյան Հայաստանում», թարգմանությունը, առաջաբանը և ծանոթագրությունները Ա. Խ. Սաֆրաստյանի և Մ. Կ. Զուլալյանի, Երևան, 1964, էջ 45։

դեռևս գյուղական համայնքը՝ իր ավանդական կազմակերպություններով։ Համայնքի մեջ ընդգրկված հարուստ ու աղքատ ընտանիքների միջև տնտեսական ու սոցիալական հողի վրա խոր հակասություններ չկին սահեծվել ու խուլ և անդադրում պայքար էր տեղի ունենում։ Սակայն, օտար նվաճողների բռնությունների դիմագրավելու հրամայական պահանջով, գյուղական համայնքը շարունակում էր իր գոյությունը՝ ղեկավարվելով իր անդամների պարտավորությունների ու իրավունքների դարերի սովորույթով սրբագործված նորմերով։ Համայնքը, միաժամանակ, օգտագործվում էր երկրի նվաճողների կողմից՝ համապարտ երաշխավորության սկզբունքի կիրառմամբ՝ հարկահանության գործը կարգավորելու նպատակով։

Գյուղական համայնքը հանդես էր գալիս որպես իր անդամների կողմից մշակվող հողային ֆոնդի միասնական տնօրինող։ Բայց այդ հողն արդեն ստորաբաժանված էր երկու ենթատեսակների. հիմնական հողային տարածությունը՝ որոշ պարբերականությամբ, բաժանվում էր գյուղական համայնքի մեջ ընդգրկված գերդաստանների վրա՝ ըստ շնչաքանակի (հաշվի էր առնվում, հավանաբար, նաև գերդաստանների տնտեսական կշիռը)։ Կային, սակայն, առանձին ընտանիքների պատկանող, ինչպես և գյուղատերերի կողմից սեփականացված հողեր ու այգիներ, որոնք դուրս էին արդեն հողաբաժանման ենթակա հողատարածություններից ու համարվում էին այդ ընտանիքների «մուլքը»։ Գյուղատերերը համայնքից բռնագրաված հողակտորները վարձակալական հիմունքներով հանձնում էին նույն գյուղական համայնքի անդամներին կամ այլ անձանց՝ բերքի կեսը, քառորդը կամ մեկ այլ մասը (նայած հողը մշակողի տնտեսական ու իրավական վիճակին) հողատիրոջը տրվելու պայմանով։

Գյուղական համայնքի հողային ֆոնդից ստանալով մեկ կամ մի քանի ամբողջական բաժին (համփա) վարելահող, ունենալով անհրաժեշտ քանակությամբ քաշող անասուն ու գյուղատնտեսական գործիքներ, ինչպես նաև ապահովված լինելով աշխատավոր ձեռքերով, գյուղական հարուստ ընտանիքների տանուտերերը մեծ ազդեցություն ու կշիռ էին ձեռք բերում։ Նրանցից էին ընտրվում գյուղական համայնքի պաշտոնյաները՝ ձեռնավորները, ինչպես նաև տանուտերերը՝ քյադխուդաներն ու ռեսերը։ Ձեռնավորները նշանակվում էին կողմնապետերի, ամիրների կամ խոշոր ֆեոդալների կողմից (նայած գյուղի ենթակայության), սրանք պետության կամ սոյուրղալի տիրոջ ներկայացուցիչներն էին գյուղերում։ Իսկ ռեսերը կամ քյադխուդաները, որ ընտրվում էին գյուղականներից, համայնքի կողմից լիազորված անձինք էին ու ներկայացնում էին համայնքը պետության և ֆեոդալի առջև։ Մեծ էր ռեսի գործունեության բնագավառը։ Նրանց գլխավորությամբ էր կատարվում հողաբաժանումը, ջրանցքների ու առուների մաքրումը, գյուղի վրա բարդված հարկերի բաշխումը՝ համայնքի անդամ գերդաստանների վրա, հարկահանության վրա հսկողությունը, պետական պաշտոնյաների ու հարկահավաքների ընդունումը, նրանց հյուրընկալության կազմակերպումը և այլն։ Օգտվելով իրենց դիրքից, գյուղական այս զորքանները, տարբեր ճանապարհներով շահվում էին չքավոր համագյուղացիների հաշվին։ Մատթեոս Ջուղայեցի մատենագիրը «ծածուկ գողերի» շարքն է դասում այդպիսիներին, որոնք «յաղքատս զրկեն

և այնպէս երևցուցանեն, թէ մեք աւելի տամք (այսինքն՝ մենք ավելի շատ ենք հարկ վճարում); և յաղքատացն առեալ տան և զինչս իւրեանց պահենս»[172]։

Իրենց գերդաստանին բաժին ընկած վարելահողը սեփական միջոցներով մշակել անկարող գյուղական աղքատ գերդաստաններից մի քանիսը միանալով կազմում էին հարաքաշություններ կամ հաղկիցների ընկերություններ։ Նրանք, փոխադարձ համաձայնությամբ, երկրագործական հիմնական աշխատանքների՝ վարի, հնձի, կալի ժամանակ միացնում էին իրենց անասուններն ու գյուղատնտեսական գործիքները և հերթով վարում ու հնձում ժամանակավոր այդ խմբերի մեջ ընդգրկված ընտանիքների արտերը։ Այդպես էին վարվում նաև քիչ կաթնատու անասուններ ունեցող ընտանիքները՝ կազմելով խապկիցների խմբեր։ Փոխադարձ համաձայնության գալով, նրանք պայմանավորվում էին օրվա կաթը որոշ չափ-ամանով (խապով կամ ղաբով)՝ հերթով տալ այդ խմբի մեջ մտած ընտանիքներից մեկին, որպեսզի նրանք հնարավորություն ունենան այդ կաթից յուղ և պանիր պատրաստել։

Գյուղերում կային նաև այնպիսի ընտանիքներ, որոնք ինքնուրույն տնտեսություն վարելու բնավ հնարավորություն չունեին։ Այդպիսի ընտանիքներից էին դուրս գալիս գյուղատերերի հողակտորների վրա տիրոջ անասուններով աշխատող վարձկանները կամ հարուստ համագյուղացիների կողմից երկրագործական եռուն աշխատանքների ժամանակ վարձվող մշակները[173]։

Թուրքմենների տիրապետության ժամանակաշրջանում անկում ապրեցին Հայաստանի ծաղկուն քաղաքները, որոնք անբուժելի հարված էին ստացել դեռևս մոնղոլների ավերիչ պատերազմների ու երկարատև, ժողովրդի կենսական հյութերը քամող տիրապետության ընթացքում։ Մոնղոլական ու միջինասիական խաշնարած ցեղերը բնակություն հաստատելով Անդրկովկասում ու Փոքր Ասիայում, իրենց համար ամառային ու ձմեռային արոտավայրեր դարձրեցին նախկինում տեխնիկական կուլտուրաների մշակման հարուստ ավանդներ ու զարգացած գյուղատնտեսություն ունեցող մի շարք երկրամասեր։ Դաշտային Ղարաբաղի և Նախիջևանի բնիկ ազգաբնակչությունը, օրինակ, բռնությամբ տեղահանվեց իր հայրենի օջախից Միրանշահի իշխանության տարիներին։ Այդ բարեբեր երկրամասերում բնակեցվեցին տասնյակ հազարավոր թյուրքալեզու քոչվորներ, որոնք Թամուրյանների ռազմական հենարանն էին[174]։ Իշխողների տնտեսական այդ քաղաքականության հետևանքով նախորդ դարերում միջազգային առևտրի կարևոր հանգրվաններ ու արհեստագործության ծաղկուն կենտրոններ հանդիսացող քաղաքներից շատերը, զրկվելով տնտեսական հիմքից, արագորեն գահավիժեցին դեպի անկում։ Քաղաքների մի մասն էլ քայքայվեց ու կազմալուծվեց քարավանային ճանապարհների փոփոխության, անընդհատ պատերազմների ու ֆեոդալական խժդժությունների հետևանքով։

XIV դարի կեսերից Հայաստանի տնտեսական կյանքում նշանակալից որևէ դեր այլևս չէին կատարում Անիի ու Կարսի նման քաղաքները, որոնք նախորդ դարերում հայտնի էին իրենց բարձր զարգացման հասած արհեստագործությամբ ու միջազգային կապերով։

---

172 Մատենադարան, ձեռագիր № 2229, էջ 133ա։

173 XIV—XV դարերի գյուղական համայնքի մասին տե՛ս Լ. Խաչիկյանի հոդվածը, տպագրված «Պատմա-բանասիրական հանդես» 1958 թ. № 1-ում (էջ 110—133)։

174 „История Азербайджана", изд. АН Азербайджанской ССР, Баку, 1958, էջ 200-201։

XIV դարի առաջին հիսնամյակում Արևելքի ու Արևմուտքի միջև կատարվող միջազգային առևտրի բանուկ ուղին անցնում էր Ադրբեջանով ու Կասպից ծովի վրայով։ Արևելյան մետաքսի ու համեմունքի մեծ մասը տարվում էր Աստրախան, ապա Ազով ու Ղրիմի ծովափնյա քաղաքները, իսկ այստեղից՝ Իտալիա և եվրոպական այլ երկրներ։ Տարանցիկ առևտրի այս կարևոր ուղեծրի բոլոր նշանավոր հանգրվաններում ստեղծվել էին հայաշատ բնակավայրեր։

Ոսկե Հորդայի և Իլխանության միջև հաճախակի տեղի ունեցող պատերազմների հետևանքով առևտրական վերոհիշյալ մայրուղին դարձավ անապահով ու վտանգավոր, մանավանդ 1395 թ. հետո, երբ Լանկ-Թամուրը գրավեց ու կործանեց Աստրախանը։ XV դարում ավելի մեծ դեր սկսեցին կատարել Կիլիկյան ծովեզերքի նավահանգիստները, որոնք Տրապիզոնի հետ միասին դարձան միջազգային առևտրի կարևորագույն հանգրվաններ։ Դարի կեսերից, սակայն, առևտրի կանոնավոր ընթացքը խափանվեց օսմանյան թուրքերի նվաճումների հետևանքով։ 1453 թ. նրանց ձեռքն անցավ «Արևելքի ու Արևմուտքի ոսկե կամուրջը»՝ Կոստանդնուպոլիսը, իսկ հաջորդ երկու տասնամյակների ընթացքում՝ Տրապիզոնը, Կիլիկյան ծովեզերքը, Ղրիմի թերակղզին և այլն։ Եվրոպական ու ասիական երկրների միջև, այսպիսով, խրվեց մի սեպ, որը խիստ բացասաբար անդրադարձավ միջազգային առևտրի ու ապրանքափոխանակության վրա։

Ահա այս պայմաններում էր, որ բարձրացավ մի կողմից Թավրիզի, մյուս կողմից Հալեպի ու սիրիական նավահանգիստների նշանակությունը՝ որպես միջազգային առևտրի ու ապրանքափոխանակության կենտրոններ։

Թավրիզից դեպի Հալեպ տանող քարավանային ուղիներն անցնում էին Հայաստանի վրայով։ Ամենակարճ ու բանուկ ուղին Թավրիզից անցնում էր Մարանդ, Խոյ, ապա՝ Բերկրի, Արճեշ, Արծկե, Խլաթ, Բաղեշ։ Բաղեշից ճանապարհը երկփեղկվում էր. դեպի Եդեսիա ու Հալեպ գնալու համար անցնում էին կամ Նփրկերտի ու Ամիդի, կամ էլ Հըսնքեյֆի ու Մերդինի վրայով։ Իր նշանակությունը պահել էր նաև Թավրիզից դեպի Կարին ու Երզնկա տանող հին մայրուղին։ Երզնկայից Հալեպ (Սեբաստիայի վրայով) ուղևորվում էին քարավանները։

Այս առևտրի մեջ հայ վաճառականներին վերապահված էր առաջնակարգ դեր։ Նրանք առևտրական կայուն գաղութներ էին ստեղծել Թավրիզում, Հալեպում ու Տրապիզոնում, իսկ վերոհիշյալ ճանապարհների կարևոր հանգրվանները Հայաստանի հին կենտրոններն էին՝ բնակեցված գերազանցապես հայ արհեստավորներով ու առևտրականներով։ Առևտրի հիմնական ապրանքը հում մետաքսն էր, որի վաճառահանման գործում նշանակալից դեր էին կատարում հին ջուղայեցի հայ վաճառականները։

Մեծ համբավ ունեին հայ արհեստավորները, որոնք 1394—1427 թթ. Եվրոպայում, Ասիայում և Աֆրիկայում ճանապարհորդած Ի. Շիլդբերգերի վկայությամբ, «գեղեցիկ կտավներ էին գործում թավշից, ծիրանիից և մետաքսից, նմանապես ավելի շքեղ և թանկագին ոսկեզօծ կտավներ... քան հեթանոսները (այսինքն՝ մահմեդականները)»։

XIV—XV դարերի հայկական աղբյուրների խիստ թերի տվյալներով հայկական քաղաքներում կային շուրջ երեք տասնյակ տարբեր մասնաճյուղերի արհեստավորներ՝ աղեգործ, ազեղղուդ, արծաթագործ, բրուտ, գդակկար, դաբաղ, դանակագործ, դարբին, դերձակ, խազազ (մետաքս մշակող), կեր-

պասագործ, կոշկակար, կտավագործ, հյուսն, ճարտարապետ, ձոն, մաղման, պայտառ, նաղաշ, նետարար, ոսկերիչ, ոստայնանկ, պատկերահան, պարանագործ, ջուլհակ, քարգործ, քսակկար և այլն։



Գղնձե մատուցարան (1477թ.)

Որ հայկական քաղաքների մի մասը, հանդիսանալով շրջակա բնակավայրերի տնտեսական ու վարչական կենտրոնը, դեռևս պահպանում էր իր նշանակությունը, ապացուցվում է նաև դրամագիտական նյութերով։ XIV—XV դդ. հատած դրամների մեջ զգալի են նաև Բաբերդում, Անիում, Երևանում, Գառնիում, Նախիջևանում, Սալմաստում, Վանում, Ոստանում և Հայաստանի այլ քաղաքատիպ վայրերում կոփված դրամները։

Հայ արհեստավորների արտադրանքի մեծագույն մասը, անշուշտ, սպառվում էր երկրի ներքին շուկաներում՝ քաղաքամերձ շրջաններում և քոչվոր ցեղերի ամառանոցներում ու ձմեռանոցներում։ Չնայած տնտեսության նատուրալ բնույթին, այս կամ այն չափով ապրանքափոխանակություն էր կատարվում նաև հայ երկրագործների ու Հայաստանում հաստատված քոչվոր ցեղերի միջև։ Գրիգոր Տաթևացին իր մեկնություններից մեկում գրում է. «Աշխարաբոյծք սովոր են վաճառել զմիս և զճրագու և առնուլ զհաց ու վասն աղքա-

տութեան, այլ զի ոչ պարապին գործել զհաց՝ ի դարմանս խաշանց գոլով»[175]։ Միս ու ճարպ վաճառելով, խաշնարածները դնում էին ոչ միայն հաց ու գյուղատնտեսական այլ մթերքներ, այլ նաև հայկական քաղաքներում արտադրվող տարբեր տեսակի ապրանքներ։

Վտանգավոր ու արկածալից էր եղել վաճառականի կյանքը մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում։ Քուրդ ու թուրքմեն քոչվոր ցեղապետերը իրենց զորախմբերով առիթ բաց չէին թողնում կողոպտելու ճանապարհներով անցնող-դարձող քարավաններին։ Ջ. Բարբարոն, որ 1474 թ. ապրիլի 3-ին Խիզանից անցնում էր Թավրիզ՝ Ուզուն-Հասանի Եվրոպայից վերադարձող մի դեսպանի ընկերակցությամբ, հարձակման ենթարկվեց ու թալանվեց քրդերի կողմից. նրա ուղեկիցներից չորսը սպանվեցին։ «Նրանք (քրդերը),—գրում է Բարբարոն,—ունեն շատ քաղաքներ (իմա՝ բերդ-ամրոցներ) շինված բարձր վայրերում ու ծերպերում, հսկելու համար բոլոր ճանապարհներին, որպեսզի կարողանան կողոպտել անցորդներին»[176]։ Այսպիսի պայմաններում, բնականաբար, առևտրական քարավանները պետք է շրջեին զինված ջոկատների ուղեկցությամբ։

Մեծատուն քաղաքացիների կյանքն ու գույքը անապահով էր ոչ միայն քարավանային ճանապարհների վրա, այլև իրենց հայրենական հարկի տակ։ Երկրի բռնավոր ու ագահ տերերը միջոցի առաջ կանգ չէին առնում զորթելու համար իրենց քիչ թե շատ հարուստ հպատակների գույքը։ «Ամեն պարոն զիւր տեղաց անուանի մարդն տօգանէր և թալանէր»,—գրել է այդ մասին մի հիշատակագիր։

Այսպիսով, չնայած հայ խոջաներից և այլ զբաղմունքի տեր քաղաքացիներից ոմանք տարբեր ճանապարհներով մեծ հարստություն էին դիզում ու տեր դառնում շարժական ու անշարժ կալվածքների, բայց նրանց գույքը բնավ ապահով չէր տիրողների կողմից բռնագրավվելու վտանգից։

Թուրքմենների իշխանության ժամանակաշրջանում խիստ ծանր էր հարկային լուծը։ Հպատակներից գանձվում էին հիմնականում այն հարկերն ու տուրքերը, որոնք գոյություն ունեին մոնղոլական տիրապետության շրջանից սկսած։ Հողային ռենտան ըստ հողի պատկանելության մուծվում էր կամ ամբողջապես պետական գանձարան (դիվանի հողերից), կամ ամբողջապես հողատիրոջը (սոյուրղալական հողերից), կամ էլ որոշակի համամասնությամբ բաժանվում էր պետական գանձարանի ու կալվածատիրոջ միջև (սեփականատիրական մուլք կոչվող հողերից)[177]։

Հարկերը շատ ծանր էին Հայաստանում մինչև կարա-կոյունլուների տիրապետության հաստատումը։ Կարա-Յուսուֆի, մասամբ նաև Իսքանդարի գահակալության տարիներին հարկային լուծը նույնպես ծանր էր, բայց հանդուրժելի։ Դրությունը փոխվեց Ջհանշահի ժամանակ, մանավանդ XV դարի 50-ական թվականներին, երբ նա ձեռնարկեց թամուրյանների դեմ իր արշավանքները։ Այդ տարիների մի հիշատակագիր հայտնում է, որ «յոյժ ճշդիւ հարկապահանջութեամբ տառապի ազգս հայոց ի ձեռն չար բռնակալացն

---

175 Մատենադարան, ձեռագիր, № 1264, էջ 44։

176 Հ. Հակոբյան, Ուղեգրություններ, Ա, էջ 183։

177 Տե՛ս И. П. Петрушевский, նշված աշխատությունը, էջ 190։

թուրքաց», իսկ մեկ ուրիշը ավելացնում է. «նեղիմք յանօրինաց բռնութենէ, եւ առաւել ի կրկնակի հարկապահանջութենէ»[178]։

«Կրկնակի հարկապահանջության» այս քաղաքականությունը միաժամանակ դադարեց աղ-կոյունլուների դինաստիայի հաղթանակից հետո։ Ուզուն-Հասանը, իշխանության գլուխ անցնելով, հարկահանության գործը կարգավորելու և պետական պաշտոնյաների ու կալվածատերերի անլուր չարաշահումների առաջն առնելու նպատակով հրատարակեց օրինական հարկերի տեսակների, նրանց չափերի ու հարկահավաքման ձևերի մասին «Կանուն-նամե» կոչվող օրենքների այն գիրքը, որ երկար ժամանակ գործածության մեջ էր Իրանում և Օսմանյան կայսրության արևելյան վիլայեթներում։ Այս միջոցառումներով Ուզուն-Հասանի թագավորության առաջին տարիներին փոքր-ինչ բարվոքվեց հպատակ ժողովուրդների տնտեսական վիճակը։ Սակայն Ուզուն-Հասանի թագավորության վերջին շրջանում, մանավանդ նրա անմիջական հաջորդ Յաղուբի ժամանակ, չարաշահումները մտան իրենց ավանդական հունի մեջ, ոչինչ չթողնելով վերոհիշյալ բարենորոգումներից։

Հպատակ ժողովուրդների վիճակն ավելի ծանրացավ դարավերջին, երբ աղ-կոյունլուների պետությունն սկսեց հոգեվարք ապրել։ 1498 թ. փլուզվող պետության փաստական տեր ամիրների ամիր Այբա-Սուլթանը, ժամանակակից մի գրչի տվյալներով՝ երեք տարվա մալը (եկամտահարկը) բռնությամբ հավաքեց երեք ամսվա ընթացքում[179]։

Բնակչությունից գանձվող հարկերը հաճախ ի դիմաց պետական կամ զինվորական ծառայության տրվում էին առանձին պաշտոնյաների՝ զինվորականությանը կամ բարձրաստիճան հոգևորականներին։ Պատահում էր նաև, որ տվյալ հարկատու օբյեկտից գանձվող հարկերը կամ դրանց մի մասը կապալով էր տրվում առանձին վարձակալների։ Այս դեպքում իրենց ձեռքին «բարաթ» կամ «հավալե» ունեցող պաշտոնյաները կամ կապալառուները, զինված ջոկատներով, ներխուժում էին իրենց տրված շրջանները և բռնությամբ գանձում շատ ավելին, քան սահմանված էր օրենքով։

XV դարի հայերեն ձեռագրերի հիշատակարանները, նույն շրջանի գահակալների պարսկերեն հրովարտակները՝ տրված հայկական վանական հաստատություններին[180], ինչպես նաև պարսկական սկզբնաղբյուրներում առկա նյութերը[181] հնարավորություն են ընձեռում անդրադառնալու հայ հպատակներից գանձվող հիմնական հարկերին, երբեմն նույնիսկ որոշելու նրանց չափերն ու հարկահանության ձևերը։ Ստորև թվարկում ենք հիմնական հարկերը՝ անհրաժեշտ ծանոթություններ տալով նրանց մասին։

1. **Պետական ռենտա—հարկ** (կոչվում է մալ, մալոջհաթ, բահրա, բահրաշե ու խարաջ). գանձվում էր եկամտաբեր բոլոր ձեռնարկություններից՝ արդյունքի մեկ հինգերորդի չափով, եթե այն գտնվում էր պետական հողի վրա, և մեկ տասներորդի չափով՝ սեփականատիրական կալվածքներում։

Հարկահանների չարաշահումներից զերծ մնալու մտահոգությամբ գյուղական համայնքները պայքարում էին մալի որոշակի չափ սահմանելու հա-

[178] «ԺԵ դարի հիշատակարաններ», Բ, էջ 42, 231։

[179] Տե՛ս նույն տեղում, Առաջաբան, էջ CXIX։

[180] Տե՛ս Հ. Փափազյան, Մատենադարանի պարսկերեն հրովարտակները, պրակ Ա, էջ 103—123։

[181] Տե՛ս И. П. Петрушевский, նշված աշխատությունը, էջ 190—192։

մար, և այդ հարկը գանձվում էր ողջ գյուղական համայնքից, հիմնականում, հարկային մատյաններում գրանցված որոշակի չափերով։

2. Կալվածատիրական ռենտա (կոչվում է մուլք, մալիքանե, բահրաչե-յե մալիքանե և այլն). գանձվում էր բերքի կամ արդյունքի մեկ տասներորդի չափով։ Սեփական տնտեսություն ունեցող կալվածատերերն ու վանքերը հարկատուներից պահանջում էին իրենց ռայաթներին նաև տարեկան որոշ օրեր ձրի աշխատանք կատարել իրենց տնտեսություններում։ Տաթևի վանքին պատկանող գյուղերի ռայաթներն, օրինակ, «բոլոր գեղովն» պարտավոր էին ամեն տարի, առանց վարձատրության «մէկ օր վարեն, բ(2) օր (կամ 3 օր) հունձ անեն, և մէկ օր ալ ջաղ անեն, ինչ բան որ լինի, և մէկ օր եղնարածքն վանքիս համար խոտ հարեն»[182]։

3. Գլխահարկ (կոչվում է ջիզյա, երբեմն նաև՝ խարաջ). գանձվում էր հիմնականում ոչ մահմեդական չափահաս արական հպատակներից՝ քրիստոնյաներից ու հրեաներից։ Գլխահարկման որոշակի տարիք չէր սահմանված։ Պարզելու համար, թե տվյալ պատանին ենթակա է հարկման, թե ոչ՝ վարվում էին այսպես. թելով չափում էին պատանու վիզը և կրկնակի երկարությամբ թելի ծայրերը ատամներով բռնել տալով՝ փորձում էին այդ թելի օղակն անցկացնել նրա գլխով։ Եթե թելը չէր անցնում՝ պատանին համարվում էր չափահաս ու հարկատու։

Գլխահարկը, որ հայ հպատակներից գանձվող ամենածանր հարկերից մեկն էր, XV դարի ընթացքում շարունակ բարձրացվում էր։ Եթե 30-ական թվականներին գանձվում էր մարդագլուխ 30—40 թամուրյան թանկա (այսինքն՝ 186—248 գր. արծաթ), ապա 90-ական թվականներին՝ արդեն շուրջ 100 թանկա (դարավերջի արժեղնով՝ 415—440 գր. արծաթ)։ 30-ական թվականներին պահանջվող գլխահարկի գումարով կարելի էր գնել 11—15 փութ ցորեն, իսկ դարավերջին՝ շուրջ 28 փութ ցորեն։ Թվական այս տվյալները, անշուշտ, պաշտոնական աղբյուրներից չեն բխում և մոտավոր չափով են միայն բացահայտում եղելությունը, սակայն նրանք, այնուամենայնիվ, հնարավորություն են տալիս եզրակացնելու, որ XV դարի վերջերին կրկնակի անգամ բարձրացվել էր գլխահարկը։

Բացի ջիզյայից գանձվում էին նաև «թաֆավութ-ե ջիզյա» (ջիզյայի տարբերություն) հարկը։ Այսպես էին կոչվում գլխահարկի վրա ժամանակի ընթացքում բարդված գումարները, որոնք հարկային մատյաններում գրանցվում էին ջիզյայից զատ ու դիտվում որպես առանձին պարտավորություն։

4. Մավաշի (անասուն) և մարաի (արոտավայր) էին կոչվում խոշոր ու մանր եղջերավոր անասունների արոտավայրերից օգտվելու իրավունքի դիմաց գանձվող հարկերը։

5. Թամղա. այսպես էր կոչվում արհեստանոցներից, հումույթի մշակման այլ ձեռնարկություններից (ձիթհան, դինգ), նաև ձկնորսարաններից գանձվող հարկը։ Թամղան գանձում էին հատուկ պաշտոնյաներ՝ թամղաչիները, որոնք կապալով վերցնելով այդ հարկի գանձման պարտավորությունը, չարաշահում էին իրենց պաշտոնն ու մեծապես շահվում դրանից։ Հայաստանում այդ պաշտոնը գերազանցապես գրավում էին հայ խոջաները։

6. Բաժ էր կոչվում վաճառականներից գանձվող հարկը։ Վենետիկցի

182 Մատենադարան, ձեռագիր № 6271, էջ 678։

անանուն մի վաճառական իր «Ուղեգրության» մեջ հայտնում է, որ Պարսկաստանում միշտ գոյություն է ունեցել այսպիսի կարգ. յուրաքանչյուր վաճառական, որ շուկայում մի խանութ ունի, վճարում է օրական երկուսից վեց սպիտակ և նույնիսկ՝ մի դուկատ, նայած իր գործի ծավալին. նույնպիսի հարկ է դրվում արհեստավորների վրա՝ նրանց վիճակին համապատասխան։

– Նույն հեղինակի տվյալներով շուկայում վաճառվող ապրանքի գնի 5 տոկոսը գանձվում էր որպես բաժ մահմեդական վաճառողից, իսկ քրիստոնյա առևտրականից գանձվում էր կրկնակի (10 տոկոս) բաժ։ XVI—XVII դարերի օսմանյան կանուն-նամեներից մի քանիսը տվյալներ են պահպանել Երզնկա, Բաբերդ, Կամախ քաղաքներով վաճառելու տարվող ապրանքներից գանձվող «մեծ բաջի և սև թամղայի» չափերի մասին՝ ըստ Ուզուն-Հասանի կանոնի։ Ըստ այդմ, օրինակ, Երզնկայում մետաքսի բեռի յուրաքանչյուր բաթմանից 81 սև ակչե բաժ են գանձել, արվել են սև թամղայի իրավունք, դրադրության իրավունք և ստացականի հարկ կոչվող գանձումներ։ Վերոհիշյալ կանուն-նամեներում մեկ առ մեկ թվարկված ու սահմանված են տասնյակ տարանցիկ ապրանքներից գանձվող բաժի չափերը (պողպատ, երկաթ, պղինձ, պաղլեղ, բուրդ, բամբակ, վուշ, կերպասեղեն, կաշի, մորթի, գորգ, մուշկ, լեղակ, օճառ, բրինձ, գինի, մոմ, մեղր, չիր և այլն, և այլն)։

Առևտրականներից ու արհեստավորներից պետական պաշտոնյաները շահվում էին նաև «թարհ»-ի միջոցով։ Նրանք ստիպում էին, խիստ բարձր գներով, գնել հարկերի դիմաց հպատակներից գանձված բնամթերքի մի մասը, և, ընդհակառակը, խիստ ցածր գներով վաճառել արհեստավորական արտադրանքն ու օտար երկրներից ներմուծված թանկարժեք ապրանքները։

7. Ջերիմ—բառացի՝ աշխարհազոր։ Ըստ երևույթին գանձվում էր ոչ մահմեդական ունիականատեր հպատակներից զինվորական ծառայությունից ազատված լինելու համար։

8. Իխրաջաթ—բառացի նշանակում է արտակարգ ծախսեր։ Այս տերմինի տակ հարկային մատյաններում գրանցում էին բոլոր այն տուրքերը, որ գանձում էին վճարելու համար զինվորական, վարչական ու պետական պաշտոնյաներին կամ այն պարտավորությունները, որ ունեին հպատակները նույն անձանց նկատմամբ (դրանցից էին կոնալղա, ուլաղ, ալաֆե և ուլուֆե կոչվող տուրքերը)։

9. Շիգար ու բիգար—այսպես էր կոչվում բերդերի, ճանապարհների ու ջրանցքների շինարարության, ինչպես և պատերազմների ժամանակ հպատակների անվճար աշխատանք կատարելու պարտավորությունը։

10. Նվեր անվան տակ, այլևայլ առիթներով, հպատակներից գանձում էին նաև պարտադիր տուրքեր (փիշքաշ, նովրուզի, ՚իդի, սավարի, սալամի)։

11. Ռասմ կամ ռուսումաթ (կարգ, սովորույթ) էին կոչվում այն տուրքերը, որ գանձվում էին որպես հավելյալ ռոճիկ պետական բարձրաստիճան ու կրտսեր պաշտոնյաների օգտին. դրանցից էին սադրի, վեզիրի, դարուղայի (ոստիկանապետի), ֆինանսական ու հարկային պաշտոնյաների օգտին գանձվող ռասմերը։

12. Շիլթաղաթ (արաբերեն՝ կլպարարություն) կամ բիդ՚աթ (նորահնար) էին կոչվում այն բոլոր ապօրինի նորաստեղծ տուրքերն ու բռնագանձումները, որոնք պետական պաշտոնյաները կեղծ ու պատիր զանազան հնարներ դիմելով, շորթում էին հպատակներից։

Սրանք են հիմնական հարկերն ու տուրքերը, որ գանձվել են Հայաստանում Կարա-կոյունլու և Աղ-կոյունլու քոչվորական ցեղերի տիրապետության հարյուրամյակում։ Հարկ է, սակայն, կրկին մատնանշել, որ հայ հպատակների վիճակն առավել ծանր է եղել քուրդ ամիրների տիրույթներում։ Բիթլիսի (Բաղեշի) վիլայեթում, օրինակ, մինչև XVI դարի վերջերը հարկերը գանձվել են «քրդերի սովորության համաձայն»։ Նույնիսկ օսմանյան պետական պաշտոնյաները ստիպված խոսել են հարկային այդ սիստեմի ապօրինի ու թալանչիական բնույթի մասին և փորձել են ինչ-որ չափով մեղմացնել քրիստոնյա հպատակների դրությունը՝ նրանց վրա տարածելով Դիարբեքիրի վիլայեթի հարկային օրենքը[183]։

Հայ աշխատավոր ժողովուրդը, բացի պետական ու կալվածատիրական հարկերից, վճարում էր նաև եկեղեցական տուրքեր՝ պտղի, սրբադրամ, տյառնական մատաղ, կողոպուտք, խոստովանադրամ, հաղորդադրամ, զանազան տուգանքներ (չհաս ամուսնության և այլ առիթներով) և այլն։ Եկեղեցականները հասույթի աղբյուր էին դարձրել նաև բանադրանքը. «Այժմու քահանայապետքս,—գրել է այդ մասին Գր. Տաթևացին,—պատճառանօք առնեն ընդ բանադրանօք և յետոյ մերկացուցանեն զժողովուրդն իւրեանց»։

Իրենց հասանելիք տուրքերը հոգևոր հոտից հավաքելու համար, նույն հեղինակի պատկերավոր արտահայտությամբ հոգևոր հայրերը «միանգամ ի տարւոջն շրջեն ի վիճակն և լնուն զքսակն արծաթով, և պատառեն իբրև զգայլ, և դարձեալ փախչին ի յորջս իւրեանց, և ոչ ինչ հոգան վասն ոչխարացն»[184]։

Հայ աշխատավոր ժողովուրդը, ինչպես նաև Առաջավոր Ասիայի մյուս նստակյաց ժողովուրդները անդադար պայքար էին մղում հայրենի երկիրը գրաված քոչվոր ցեղապետերի ու նրանց կողմից կիրառվող վարչական ու հարկային գիշատիչ քաղաքականության դեմ։

Մոնղոլական ու թուրքական քոչվոր ցեղերը, գրավելով Հայկական լեռնաշխարհը, անբուժելի հարված հասցրին զարգացման բարձր մակարդակի վրա գտնվող գյուղատնտեսությանը և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերին։ Ժողովուրդը կողոպտվում էր ոչ միայն պետական պաշտոնյաների ու քոչվոր ավագանու չարաշահություններից, այլև, ընդհանրապես, խաշնարած ցեղերի տեղաշարժերից, որոնք ամռան ամիսներին մեկնում էին երկրի բարձրադիր ու խոտառատ մարգագետինները, իսկ ձմռան ամիսներին իջնում հարթավայրերը։ Ամեն տարի պարբերաբար կրկնվող այդ տեղափոխությունների ընթացքում ոտնատակ էին արվում հայ երկրագործների քրտինքով մշակված ցանքատարածությունները, քոչվորների ճանապարհին ընկած գյուղերն ու գյուղաքաղաքները հաճախ կողոպտվում էին այդ ցեղերի սպառազեն ջոկատների կողմից։

Հայ քաղաքացիներն ու գյուղացիները, այսպիսով, ստիպված էին հարատև մարտնչել քոչվոր տիրապետողների դեմ՝ իրենց գույքն ու պատիվը պաշտպանելու համար։

1462 թ. պահպանվել է ուշագրավ մի վկայություն թուրք հեծյալ ավազակների ու հայ մարտիկների մի բախման մասին։ Մեկ հազարանոց թուրքա-

---

183 Տե՛ս «Օսմանյան օրենքները Արևմտյան Հայաստանում», էջ 45—47։

184 Գր. Տաթևացի, Քարոզգիրք, Ամարան հատոր, էջ 298։

կան մի զորախումբ, Տփղիսի մոտ կայան առնելով, բռնագրավում է Ավճալայի նախիրը։ Հայ քաղաքացիներից 200 «լաւ տղամարդիկ» տեղյակ չլինելով թըշնամու քանակի մասին, դուրս են գալիս նրանց դեմ՝ իրենց գույքը ետ բերելու համար։ Սակայն նրանք շրջապատվում են դարանակալ թշնամիների կողմից ու դաղանաբար հոշոտվում. «Եւ մեծ հեծելն ի դուս էին եկել, և երկու դիմաց բոլորել, և զամէն կոտորել և ի սուր քաշել, և զամենոց գլուխն տարել»,—գրում է այդ մասին ժամանակակից հիշատակագիրը[185]։

Այսպիսի պայմաններում, բնականաբար, ամեն մի դիմադրություն, որ ցույց էր տրվում Հայաստանի տերը դարձած քոչվոր ցեղապետերին ու նրանց գլխավորած զորախմբերին, սոցիալական պայքարի յուրատեսակ մի ձև էր, պայմանավորված այն իրողությամբ, որ օտար քոչվորները երկրի տիրապետող դասն էին կազմում, իսկ նստակյաց բնիկ ժողովուրդը՝ ստորադաս և իրավազուրկ ռայայի վիճակում էր։

Պայքարի մի ձև էր նաև իրենց դիրքը չարաշահող պաշտոնյաների մասին պետական վերադաս մարմիններին գանգատներ ու բողոքագրեր ուղարկելը։ Դրանք, ըստ մեծի մասին, որևէ արդյունք չէին բերում, սակայն ժողովրդական որոշ խավեր շարունակում էին հավատալ, թե փադիշահի բարյացակամ կարգադրությամբ կարող են, թերևս, ազատվել այս կամ այն անօրեն ու դաժան տիրակալից։ Այսպես էին մտածում, օրինակ, Վանի բնակիչները, որոնց վրա իշխան կարգված արքայորդի Յար-Ալին՝ «առնէր զանիրաւութիւն հարկապահանջութեամբ ազգիս մեր և տաճկաց»։ Վանեցիները գանգատվում են Իսքանդարին ու հայտնում, որ այլևս «ոչ կարեմք տանել վշտաց և դառնութեան նորա, զի կարի յոյժ աղքատացոյց զաշխարհս մեր»[186]։

Պասիվ պայքարի ձևերից էր նաև արտագաղթը երկրից, որ մեծ չափերի էր հասել XIV—XV դարերում։ Գաղթում էին ինչպես անվերջանալի պատերազմների ու գահակալական կռիվների սարսափներից, այնպես էլ իրավական ու տնտեսական ծանր ու անտանելի վիճակից։

Գիտենք արդեն, որ Սյունյաց Բեշքեն իշխանը, Սյունիքից ու հարևան շըրջաններից 6000 տուն հայ բնակչության գլուխն անցնելով, 1435 թ. գաղթեց այդ ժամանակ Վրաց տիրապետության տակ գտնվող Հյուսիսային Հայաստանի շրջանները (Լոռի)։ Զանգվածային գաղթերի մասին ուշագրավ շատ տեղեկություններ կան մեր աղբյուրներում։ Դրանցից է, օրինակ, XV դարի վերջին Ապարանի սուրբ Նշան վանքում շարադրված կոնդակը, ուր ասված է. «անօրէնքն կու նեղացուցեն զքրիստոնայքս սուտ պատճառաւ, (և նոքա) կու թողուն վտումն, զարտն ու զայգին և զայլ ապրանքն ու փախին»[187]։

Փախչում էին և հարևան երկրներ (Վրաստան ու Շիրվան) և հեռավոր աշխարհներ (Սիրիա, Ղրիմ, Լեհաստան և այլն)։ Զգալի թիվ էին կազմում հայերը, մասնավորապես, հարևան երկրների մի շարք քաղաքներում. Բարբարոյի վկայությամբ, օրինակ, հնուց անտի հայաբնակ Շամախի քաղաքի «բնակիչների մեծ մասը հայ են»։ Իտալացի դիվանագետի տվյալը հաստատում է անգլիացի Ջենկինսընը, որը մեկ դար հետո (XVI դարի սկզբներին) այցելելով

185 «ԺԵ դարի հիշատակարաններ», Բ, էջ 169։
186 Թ. Մեծոփեցի, էջ 99։
187 Մատենադարան, ձեռագիր № 7757, էջ 1ա։

Շամախի, նույնպես արձանագրում է, թե քաղաքը «բնակեցված է գլխավորապես հայերով»[188]։

Աշխատավոր ժողովրդի իրավական ու տնտեսական ծանր վիճակն ու մղձավանջային առօրյան պարարտ հող էին եկեղեցու նկատմամբ անտարբերության, աղանդավորական գաղափարների և հակաեկեղեցական տրամադրությունների տարածման համար։ Դրան մեծապես նպաստում էր հայ եկեղեցու պաշտոնեությունը՝ այլասերված իր բարքերով, բարձրաստիճան հոգևորականության մի մասի համագործակցությունը օտարազգի բռնակալների հետ։

Հայ եկեղեցու գաղափարախոսներից մեկը XIV դարի կեսերին ողբում է եկեղեցու անմխիթար վիճակը, ժողովրդի խորթացումը եկեղեցուց, երիտասարդների անտարբերությունը եկեղեցական արարողությունների նկատմամբ և այլն։ «Իսկ ժողովրդականք,—գրում է նա,—ամայիք և թափառականք, կորդացեալ մտօք, մոլորեալ ի գիտութենէ. զխոստովանութիւն ոչ գիտեն... յեկեղեցի ոչ դիմեն... զաղօթս և զարտասուս ոչ ճանաչեն... ի պատարագ ոչ փափագին»։ «Լուա յումեմնէ,—շարունակում է նա,—զի պատմէր զմարդոյ՝ վկայեալ ի հարազատ եղբօրէ իւրմէ, զի հնգետասանամեայ գոլով և դեռ պատարագն չէր տեսեալ յեկեղեցւոջ, և զայլ յումեմնէ, թէ ժ (10) ամ աւելի եւս էր, որ մարմնոյ և արեան տեառն չէր հաղորդել»։

Հայ եկեղեցու պաշտոնյաները քարոզում էին իրենց հոգևոր զավակներին՝ հնազանդ լինել օտար ու բնիկ տերերին, տոկալ ու համբերել բռնություններին, ի տրիտուր այսրաշխարհային զրկանքների՝ հանդերձյալ կյանքում երանության հասնելու համար։

Եկեղեցական այս քարոզները, սակայն, արձագանք չէին գտնում հուսախաբ ժողովրդի լայն զանգվածներում։ Հովհան Որոտնեցու (1313—1386) հեղինակավոր վկայությամբ, Հայաստանում կային աղանդավորներ, որոնք սուտ էին հայտարարում Աստվածաշունչ գիրքը, արդար և սուրբ մարդկանց ճգնությունը՝ ապարդյուն էին համարում, ու չէին հավատում, թե վերջին դատաստան է լինելու և դժոխքի տանջանքներ են պատրաստված մարդկանց համար. ուստի սրանք քարոզում էին «ուտել, խմել, քանի որ վաղը մեռնելու ենք»[189]։ Այսպես մտածող մարդիկ, բնականաբար, ձգտելու էին այս աշխարհում ստեղծելու իրենց համար կյանքի տանելի պայմաններ։

Իրենց աղանդավորական գաղափարների տարածման ու հիմնավորման նպատակով, բանավոր խոսքից բացի, այս ուսմունքի գաղափարախոսները, ըստ երևույթին, գրել են նաև տեսական աշխատություններ. հավանաբար հենց սրանց է նկատի ունեցել Հովհան Որոտնեցու աշակերտներից Մատթեոս Ջուղայեցին՝ գրելով, որ հերձվածողները «առանձին նստին հաշմունս դրելով, առանց վկայութեան ուրուք, և զանմեղսն կորուսանելով»[190]։

---

[188] Հ. Հակոբյան, Ուղեգրություններ, Ա, էջ 199, 372։

[189] Ստորև տալիս ենք ուշագրավ այս վկայության գրաբար բնագիրը. «Սուտ առնեն զամենայն աստուածաշունչ գիրս, ունայն ցուցանեն զամենայն շան և զվաստակս ճգնութեան արդարոց. բազումք ի մարդկանէ սանձարձակ ի մեղս յաճախեն ասելով՝ ոչ գոյ յարութիւն դատաստանի և ոչ սպառնալիք դժոխոց, կերցուք, արբցուք, զի վաղիւն մեռանիմք։ Չի որք ուրանան զյարութիւնն, որ է կատարած, ուրանան և նոքա զսկիզբն և զստեղծումն աշխարհի, ինքնեղ ուրեմն կարծեն զլինելութիւն արարածոցս, մանաւանդ թէ դաժան մտօք զեպիկուրեանցն իմանալ՝ թէ ոչ գոյ աստուած» (Մատենադարան, ձեռ. № 5598, էջ 100ա—100բ, Յովհ. Որոտնեցի, Ի յառաջաբանս առաքելոյն Պօղոսի՝ համառօտ և պայծառ տեսութիւն)։

[190] Մատենադարան, ձեռագիր № 1402, էջ 210ա։

Եկեղեցու և նրա վարդապետության դեմ ժողովրդական լայն խավերի ընդդիմադրական տրամադրությունները որոշակի արտահայտություն են ստանում Վասպուրականում XIV դարի վերջերին և XV դարի սկզբներին։ Պահպանվել է «Յաղագս չար հերձուածոյ, որ երևեցաւ յերկիրն Ուշտունեաց» խորագրով մի գրություն[191], որ Աղթամարի Դավիթ III կաթողիկոսի (1393—1433) խնդրանքով հեղինակել է Գրիգոր Տաթևացին։ Ուշտունիքում տարածված «չար հերձուածի» տարածողներն ու հետևորդները,—Տաթևացու որակումով,—«դիւաբերան», «տգէտ» և «անուսումն» մարդիկ են, որոնք «ոչ գիտեն զսուրբ գիրս և ոչ զիմաստս փիլիսոփայից», բայց «հակառակասէր» լինելով՝ հակադրվում են եկեղեցու վարդապետությանը—«ընդդիմաբանում են»։ Տաթևացին մանրամասնություններ չի հաղորդում սրանց դավանած ու քարոզած գաղափարների մասին, պարզվում է սակայն, որ նրանք ուրանում էին «զորդին և զհոգին սուրբ», այսինքն ընդունում են միայն հայր-աստծո գոյությունը, և ապա՝ մերժում աստվածամոր պաշտամունքը։

Հայ եկեղեցու նշանավոր գաղափարախոս Գր. Տաթևացին աստվածաբանական դատողություններ կատարելով ու հենվելով եկեղեցու հայրերի հեղինակության վրա, փորձում է բացահայտել այդ գաղափարների վտանգավորությունը և նրանց դեմ պայքար ծավալելու անհրաժեշտությունը։

Նույն այս ժամանակաշրջանում տարածված աղանդավորական գաղափարների մասին ուշագրավ տեղեկություններ է գրանցել նաև ունիթոր վարդապետ Մխիթար Ապարանեցին։ Իր «Գիրք ուղղափառաց ըստ կաթօլիկէ սուրբ եկեղեցոյն ընդդէմ հերձուածողաց» աշխատության մեջ[192] նա խոսում է մի կնոջ մասին, որ մերժված է եղել և՛ Մակվի հայ կաթոլիկների և՛ Աղթամարի հոգևորականների կողմից։ Իր շուրջ համախմբելով մի շարք այլ կանանց (որոնց պատմիչը «սատանայի մարգարեներ» է կոչում), նա սկսում է քարոզել «բանս դիւականս»։ Շատ վայրերից մեծ ընծաներով նրա մոտ են գալիս «բաղմութիւն ժողովրդոց»։ Նույնիսկ կաթոլիկություն ընդունած հայերից շատերը «թողեալ զաւետարանն սուրբ և մերս (իմա՝ Մխ. Ապարանեցու) քարոզութիւն գնացին առ նոսա վասն նոցա սուտ և սատանայական սքանչելեացն»։ Ինչ էին քարոզում նրանք և ինչումն էր նրանց քարշողական զորության գաղտնիքը, այս մասին տեղեկություն չի պահպանվել, բայց ասվում է, որ «ամենեքեան առաւել պատուէին, զնոսա քան զառաքեալսն և զմարգարէսն»։ Մի քանի ամիս այս կանայք գտնվում էին ուշադրության կենտրոնում, ապա, հավանաբար բռնությամբ, լռեցվում ու վնասազերծ են արվում։ Սակայն, անգամ տարիներ հետո, նույն Մխ. Ապարանեցու վկայությամբ, նույնիսկ Հայաստանի հեռավոր վայրերում, սքանչելի պատմություններ էին հյուսվում անանուն այս աղանդավորուհու և նրա ընկերուհիների հրաշագործությունների մասին[193]։

---

191 Պահպանվել է Երուսաղեմի մատենադարանի № 1397 ձեռագրի մեջ (էջ 3—32)։ Ամբողջական խորագիրն է. «Յաղագս չար հերձուածոյն, որ երևեցաւ յերկիրն Ըռըշտունեաց, Գրիգորի շնորհալից վարդապետի արարեալ բան կարճառօտ, ի խնդրոյ գերապատիւ և երկիւղազարդ հայրապետին Հայոց տեառն Դաւթի»։

192 Այս գրքում նկարագրված դեպքերը տեղի են ունեցել 1410 թվականից առաջ։

193 Lingue Haicanae Scriptores... *Marcus Antonius v. d. Oudenrijn*, Bernae, 1960, էջ 221։

Հայ եկեղեցու դեմ ընդդիմադիր դիրք էին բռնում ոչ միայն տարացեղ աղանդավորները, որոնք հոգևոր սնունդ էին ստանում աշխատավոր ժողովրդի հիշողության մեջ անթեղված թոնդրակյան գաղափարներից, այլև Հռոմից ու քրիստոնյա Եվրոպայից հոգու և մարմնի փրկություն ակնկալող մի խումբ հոգևոր ու աշխարհիկ գործիչներ։ Սրանցից էր Հակոբ վարդապետը՝ Կողբ գյուղաքաղաքից, որ 10 այլ հայ վարդապետների գլուխ անցած միացավ կաթոլիկ եկեղեցուն։ Սրանց խրատելու փորձերն անօգուտ անցան։ Ի վերջո «կալան ընոսա իշխանքն Հայոց և ի պղինձ եռեալ հալեցին զնոսա, և այնպէս բարձին ի միջոյ»[194]։

---

194 Հ. Ս. Անասյան, *Հայկական մատենագիտություն*, հատոր Ա, Երևան, 1959, էջ LVIII։

## ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ ՍԵՖՅԱՆ ԻՐԱՆԻ ԵՎ ՕՍՄԱՆՅԱՆ ԹՈՒՐՔԻԱՅԻ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՏԱԿ

## 1. ՀԱՅԱՍՏԱՆԸ XVI ԴԱՐՈՒՄ ԾԱՎԱԼՎԱԾ ԹՈՒՐՔ-ԻՐԱՆԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԻ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

XVI դարի սկզբներից մինչև XVII դարի երեսնական թվականների վերջերը, կարճատև ընդմիջումներով, Հայաստանը ռազմական թատերաբեմ էր դարձել իր նվաճումների գագաթը մագլցած Օսմանյան Թուրքիայի և Առաջավոր Ասիայում քաղաքական առաջնության ձգտող Սեֆյան Իրանի միջև։

XV դարի վերջերին կըզըլբաշները Սեֆյանների գլխավորությամբ գրավեցին Գիլանի և Շիրվանի մետաքսառատ շրջանները։ Հաջորդ դարի սկզբներին շահ Իսմայիլը (1502—1524) պարտության մատնեց աղ-կոյունլուներին, և գրավելով սրանց մայրաքաղաք Թավրիզը, հիմք դրեց կըզըլբաշների Սեֆյան պետությանը։ Այնուհետև նվաճեց Խուզիստանը, Գիլանը և Մազանդարանը։ Այս շըրջանում է ահա, որ պատմական Հայաստանի մեծ մասում՝ Այրարատում, Վասպուրականում, Սյունիքում, Արցախում, Լոռիում, ֆեոդալական տիրույթներ և իշխանություն էին ստանում կըզըլբաշներին հավատարիմ Ռումլու, Ուսթաջլու, Շամլու, Թաքալու, Ղաջար, Քանգարլու, Բայաթ, Զուլկադար, Սա՚դլու և այլ թրքախոս վաչկատուն ցեղերի առաջնորդները։ Իհարկե, խաղաղ ճանապարհով չէր իրագործվում նոր հողային և քաղաքական տիրույթների այս փոխանցումը։ Ինչպես հողերի, այնպես և դրանց մերձակա լեռնային մարգագետինների ու արոտավայրերի տիրափոխությունը տեղի էր ունենում նոր տերերի ու հին բնակիչների միջև արյունահեղ կռիվների միջոցով։ Հաղթական շահը պետական կրոն հայտարարեց շիիզմը և իսլամի մյուս տարատեսակի՝ սուննիզմի հետևորդներից խլեց նրանց վակֆային կալվածքները։ Սուննիզմը հովանավորող Թուրքիան այս ընկալեց իբրև իր դեմ ուղղված մարտահրավեր։

Շիիզմը սոցիալական խոր արմատներ ուներ և մեծ ժողովրդականություն էր վայելում ոչ միայն Իրանի, այլև Թուրքիայի գյուղական և արհեստավորական զանգվածների մեջ։ Հայ սկզբնաղբյուրներն ու ժողովրդական ավանդույթները հիմք են տալիս ասելու, որ քրիստոնյա հայերի համակրանքը ևս Թուրքիայի վրա արշավող շահ Իսմայիլի կողմն էր։ Սակայն կըզըլբաշների և թուրքերի զինաբախումներից հայ ժողովուրդը տուժեց մեծապես։ Այս ընթաց-

քում էր, որ քուրդ աշիրապետերը գրավեցին Վանը և ավարի մատնեցին նրա հայաբնակ գավառները։

1501 թ. կամախեցի գրիչ Վրթանեսը արձանագրում է. «Վասն աւերման չարին Սաւփոյ, որ անբաւ արար զաշխարհն մեր յազգէ մարդոյ, զգաւառն ասացեալ Եկեղեաց և այժմ Եզնկայ կոչելոյ»[1]։ 1504 թ. Մուշում գրված մի այլ հիշատակարանում կարդում ենք. «Ի դառն և ի չար ժամանակի... վասն մեղաց մերոց մատնեալ է զմեզ Աստուած ի ձեռն օտար և այլադէմ արիւնարբու ազգին, որ Կարմիր գլուխ Սոֆի ասեն, որ յինչ տեղ որ գնացին և զամենեսեան անողորմ ի սուր քարշեցին, գերեցուցին և թալանեցին և զորս փախստական արարին։ Եւ յայսմ ամի զերկիրն Աղբակայ զաղայ (արշավանք) արարին. զայրս և կանայս սրով կոտորեցին և զանմեղ տղայս, զաղջկամարդսն գերեցուցին, և ի սոյն աւուրքս զՎան և զՈստան աւերեցին»[2]։

Քուրդ պատմիչ Շարաֆ խան Բիթլիսցու վկայությամբ, քրդական որոշ ցեղերի դիմադրությունը շահ Իսմայիլի զորքերին, մեծ չափով երկարաձգեց ռազմական գործողությունների ընթացքը և պատճառ դարձավ երկրի բազմապատիկ ավերման[3]։ Թավրիզի գրավումը ևս էժան չնստեց քաղաքի ու շրջակա գավառների հայերին. շատերը լքել էին իրենց բնակավայրերը և գաղթել Վրաստան[4]։

Մինչև 1507 թ. շահ Իսմայիլը նվաճում է Հայաստանի մի զգալի մասը և Արևմտյան Քրդստանը։ Հաջորդ տարում նա գրավում է Բաղդադը՝ տիրանալով արաբական Իրաքին։ Միաժամանակ նա իր զենքը ուղղում է Արևելյան Իրանում իշխող ուզբեկների և թամուրյանների դեմ՝ վերամիավորելով ողջ Իրանը։

1512 թ. սուլթան Սելիմ Ահեղը մեծ զորք գումարեց և հարձակման անցավ «շիա աղանդավորներին» գլխավորող Իրանի դեմ։ 1514 թ. թուրքերը Չալդրանի ճակատամարտում պարտության են մատնում շահ Իսմայիլին և գրավում Թավրիզը։ Այնուամենայնիվ, պարտված շահը կարողանում է վերականգնել իր ուժերը և նահանջի հարկադրել սուլթանին։

Հաջորդ տարիներին պատերազմը շարունակվում էր փոփոխակի հաջողություններով։ Իրանի սահմանները մերթ ընդարձակվում էին դեպի հյուսիս կամ արևմուտք, մերթ կծկվում՝ տեղի տալով թուրքերի առաջխաղացմանը։ Հայաստանն ու Անդրկովկասը ենթարկվում էին թուրք-իրանական հարվածներին ոչ միայն որպես պատերազմի թատերավայր, այլև որպես նրանց նվաճումների նշանախեց։ Բախվող կողմերը ձգտում էին իրենց հսկողության տակ առնել Հնդկաստանից ու Միջին Ասիայից դեպի փոքրասիական նավահանգիստները տանող միջազգային առևտրի մայրուղիներն ու Մերձավոր Արևելքի իշխող դիրքերը՝ Թավրիզը, Երևանը, Էրզրումը և Թոխաթը՝ մի կողմից, Կասպից, Սև և Միջերկրական ծովերը հանգուցավորող առևտրի ու հաղորդակցության ճանապարհներն ու քաղաքային հանգրվանները՝ Թիֆլիսը, Գանձակը, Շամախին և Դերբենդը՝ մյուս կողմից։

Անգլիացի ուղեգիր Ջենկինսընը այս պատերազմները բնորոշում է որպես

---

[1] Մատենադարան, ձեռագիր № 3864, էջ 322ա։

[2] Ն. Ակինյան, Բաղեշի դպրոցը 1500—1704 թթ., Վիեննա, 1952, էջ 31։

[3] Schérèf-nameh ou histoire des Kourdes, par Schérèf, prince de Bidlis, publiée par V. Veliaminof-Zernof, t. I, պարսկ. բնագիր, էջ 269—270։

[4] Մատենադարան, ձեռագիր № 3864, էջ 322ա։

պայքար Միջձավոր Արևելքի առևտրական ճանապարհների և առևտրի գլխավոր ատրիկայի՝ Հում մետաքսի համար։ Պետք է նշել, սակայն, որ Թուրքիային մտահոգողը Հայկական բարձրավանդակի ստրատեգիական կարևորությունը կամ մետաքսի արտադրության գլխավոր կենտրոններին տիրելը չէր միայն, այլև աշխատունակ բնակիչներին գերեվարելը, Ստամբուլի և Եգիպտոսի շուկաներում նրանց վաճառելն ու գանձած ոսկիներով սուլթանական բանակի և արքունիքի ծախսերը ծածկելու ձգտումը։

Այս պատերազմների ժամանակ օգտագործվում էին ոչ միայն սուր կամ նետ, այլև հրազեն՝ հրանոթ ու հրացան, որոնց հասցրած նյութական ու մարդկային վնասները առավել զգալի էին ու կործանարար։ Իրանի արևելյան և Թուրքիայի արևմտյան սահմանաշրջաններում ընկած քաղաքներն ու բերդերը՝ Թավրիզը, Արճեշն ու Կարսը, ձեռքից ձեռք էին անցնում, մեծամեծ զոհեր խլելով ոչ միայն բախվող կողմերից, այլև խաղաղ տեղաբնակչությունից, որոնց թվում տուժում էր հատկապես հայ ժողովուրդը։

Դրությունը բարդանում էր նրանով, որ արտաքին պատերազմներին ուղեկցում էին տեղական ցեղերի ու ֆեոդալների ապստամբությունները։ Ապստամբ ֆեոդալների ցեղային ու դասային շահախնդրությունները երբեմն ավելի զորեղ էին, քան նրանց ֆեոդալական ու կրոնա-դավանական կապերը։ Զենք բարձրացնելով կենտրոնական իշխանության դեմ, նրանք կանգ չէին առնում նույնիսկ արտաքին թշնամուն ձեռք մեկնելու առաջ։ Այսպես, 1529 թ. ապստամբելով շահ Թահմազ I-ի (1524—1576) դեմ, Լոռստանի ցեղապետերը գրավեցին Բաղդադն ու Արաբական Իրաքը և հայտարարեցին, որ իրենք ենթարկվում են սուլթանի գերիշխանությանը։ Հարկ եղավ, որ 1530 թ. շահը վերագրավեր շահ Իսմայիլի նվաճած Բաղդադը։ Հաջորդ տարում շահի դեմ զենք բարձրացրեց Թավրիզի բեկլարբեկի Ուլաման, որը, նահանջելով շահական զորքերի առաջ, ապավինեց Թուրքիային և ամրացավ Վանի բերդում։ Դրանից քիչ անց թուրքերի հետ միացած Ուլաման ետ առավ Թավրիզը[5]։ Հարկ եղավ, որ հակահարձակման անցած կըզըլբաշները 1575 թ. պաշարեն Վանը՝ սովի մատնելով բնակչությանը։ Ժամանակակից հիշատակագիրը միայն Վանում սովից կամ թշնամու հարվածներից մեռածների թիվը 16 հազար է հաշվում[6]։ Նվազ զոհեր չունեցան նաև շրջակա գավառները։ Հովհաննես Արճիշեցի ժամանակագիրը հայերին պատահած արհավիրքները համեմատում է Լանկ-Թամուրի և նրա հաջորդների հասցրած պատուհասների հետ. «Աւաղ զիմ հոգիս,—գրում է նա,—թէ քանի չարիք գործեցաւ ի յայս հեծեալ շարժութեանցս և ի վրդովմանցս, քանի քաղաք և գաւառ աւերեցանո»[7]։

1533—1535 թթ. Թուրքիայի և Սեֆյան Իրանի միջև մղվող պատերազմական գործողությունները վերջացան առանց լուրջ արդյունքի։ Թուրքիային ոչ միայն չհաջողվեց վճռական հարված հասցնել Իրանին, այլև, բացառությամբ Բարձր Հայքի (Դերջան, Էրզրում և Կարս), ամբողջ Արևմտյան և Հարավային Հայաստանը շարունակում էր մնալ կըզըլբաշների ձեռքում։ Ամենափոքր շարժառիթը կարող էր խանգարել ժամանակավոր զինադադարը և այդ առիթը շուտով ներկայացավ։

---

[5] Տե՛ս «Մանր ժամանակագրություններ», II, էջ 229, հտն.։

[6] Բ. Սարգիսյան, Մայր ցուցակ հայերեն ձեռագրաց, հատ. II, էջ 1173 և հտն.։

[7] Մ. Չամչյան, Պատմութիւն Հայոց, III, Վենետիկ, 1786, էջ 514 և «Մանր ժամանակագրություններ», II, էջ 231։

1538 թ. ապստամբական վիճակում էին Իրանի անդրկովկասյան տիրույթները։ Թեև շահի հրամանով Ալխազ Միրզան 1545—1546 թթ. նվաճեց Շիրվանը, սակայն միացավ Իրանին դիմադրող ֆեոդալների հետ և ապստամբություն բարձրացրեց իր եղբոր՝ շահ Թահմասպի դեմ։ Շիրվանի օրինակին հետևեց Վրաստանը։ Ճնշելով Ալխազ Միրզայի ապստամբությունը, 1546—1547 թթ. շահը Շորագյալի և Փամբակի վրայով մտավ Վրաստան։ Ալխազ Միրզան անցավ Թուրքիա և օգնեց թուրքերին վերագրավելու Վանն ու Վասպուրականը։ 1549—1552 թթ. շահի զորքերը հակահարձակման են անցնում և սովի, ավերածության ու ջարդի մատնում Բասենի, Բարձր Հայքի, Վասպուրականի ու Տուրուբերանի շրջանները։ Նորից են ամայանում այդ վայրերը, քանի որ տեղի բնակչությունը հեռանում է Քրդստանի ու Վրաստանի կողմերը կամ քշվում Պարսկաստան։ Ժամանակակիցները նկարագրում են Խորասանից մինչև Էրզրում ընկած տարածության ամայությունը. կըզըլբաշները սուր և տապար առած հատում էին Խլաթի և Արծկեի այգեստանները, ոչնչացնում անտառները և հրի ճարակ դարձնում արտորայքը[8]։

Շահ Թահմասպը իր հիշատակարանում նկարագրում է Բասենի, Խնուսի, Էրզրումի, Բաբերդի, Երզնկայի, Դերջանի, Մուշի, Խլաթի, Արծկեի, Արճեշի, Վանի ավերումը, պատմում հայ երեխաների գերեվարության և բնակչության կողմից իրենց նախկին բնակավայրերը լքելու ու զանգվածային գաղթի մասին[9]։ Պարզաբանելով շահ Թահմասպի վարքագիծը, վենետիկցի դեսպան դ՚Ալեսանդրին նշում էր, որ նա ավերակույտերի էր վերածում թուրքական սահմանագծի այս ու այն կողմերը և վեց օրվա հեռավորության վրա գտնված բերդերն ու բնակավայրերը, նպատակ ունենալով թշնամուն զրկել գրաված մարզերը ետ գրավելու հնարից ու շահագրգռությունից[10]։ Խոսելով Իրանին վաղուց ծանոթ նման ռազմավարական միջոցառման մասին, շահ Թահմասպը իր հիշատակարանում գրում է.

«Երբ ես լուր ստացա, որ խոնդկարը (սուլթան Սուլեյմանը), հասել է Սվազ և պետք է երեք շաբաթ այնտեղ սպասի, մինչև որ ուղտերը յուղեն, ես ինձ մոտ հրավիրեցի շրջակա վայրերի ավագներին, երևելիներին և քյադխուդաներին և հայտնեցի նրանց, որ կարգադրված է իմ զինվորներին՝ նահանջելով թուրքական բանակի առջևից, այրել և ոչնչացնել մոտակա վայրերի բոլոր հացահատիկն ու բերքը։ Այդ վայրերի հացահատիկը ոչնչացրինք և այրեցինք, իսկ ջրի ակունքները փակեցինք, ինչպես ամեն մի խելացի մարդու համար պարզ է, պատերազմի գործը թղթախաղի նման է, ինչ միջոցով էլ որ լինի, պետք է գործն առաջ տանել և հակառակորդին ծնկի բերել. «Պատերազմը խարդախություն է»,—ասել է Ալին,—պատերազմի ժամանակ լինի փախչելով թե խաբելով, այնպես պետք է անել, որ թշնամուն ոչ մի միջոց չտրվի»[11]։

Սակայն այս դաժան միջոցառումները արգելք չեղան, որ 1554 թ. թուրքերը 200 հազարանոց բանակով հակահարձակման անցնեն։ Նրանք վերագրավեցին Երևանը, Նախիջևանն ու Սյունիքը։ Թուրք պատմագիր Փեչևին նկարագրում է այն ավերածությունները, որ կատարեց օսմանյան բանակը՝ քանդելով ու ավերելով ճանապարհին հանդիպած բարեշեն գյուղերն ու քաղաքները և

8 Տե՛ս Մ. Չամչյանց, Պատմութիւն հայոց, III, էջ 314։

9 «Մատենադարանի պարսկ. հրովարտակները», հատ. II, Երևան, 1959, էջ 8—9։

10 Հ. Հակոբյան, Ուղեգրություններ, Ա, էջ 352։

11 «Մատենադարանի պարսկ. հրովարտակները», հատ. II, էջ 8։

հողին հավասարեցնելով նրանց շինությունները։ «Հաղթական բանակի սարսափից,—գրում է նա,—քաղաքներն ու գյուղերը, տներն ու բնակավայրերն այն աստիճան ամայացել, ավերվել և բուերի ու ագռավների բնակավայր էին դարձել, որ տեսնողին սարսափ էին պատճառում»։ Փեչևին ոչ միայն տալիս է կատարված ավարառությունների նկարագրությունը, այլև շնաբարո սրտաբացությամբ նշում. «սիրեկան տղաների», «քնքուշ ու մատաղ աղջիկների» և «մանկամարդ հարսների» գերեվարումը օսմանյան բանակի կողմից։ «Չկար մի վրան, որի մեջ գտնվող սիրեկան և սիրուհիների թիվը երեքից պակաս լիներ, հնգից, տասից ավելի ունեցող վրաններն անթիվ էին։ Մուշի դաշտում, Ախլաթում և շրջակայքում [կզլբաշների] ցանած չարագործության սերմերը հասունացան, հնձվեցին և խառնելով Թույնի հետ, արյան փոխարեն, արյուն խմեցին»[12]։

1555 թ. պատերազմող կողմերը Ամասիայում հաշտություն կնքեցին։ Չնայած նախընթաց քառասնամյակում պատերազմը ավերիչ ընթացք էր ունեցել թե Իրանի և թե Թուրքիայի համար, այնուհանդերձ հիմնականում անխախտ մնաց նրանց ուժերի հարաբերակցությունը։ Հաշտության պայմանագիրը գրեթե վերականգնում էր կռվող կողմերի հին սահմանները։ Թուրքերը ստացան միայն Արևմտյան Հայաստանի մեջ մտնող Վասպուրականն ու Ալաշկերտի հովիտը և Արևմտյան Վրաստանը։ Իրանը վերստացավ Անդրկովկասյան մյուս մարզերը՝ Ադրբեջանը, Արևելյան Վրաստանը և Արևելյան Հայաստանը։ Թուրք-իրանական սահմանագիծը էական փոփոխություններ չկրեց նաև հաջորդ պատերազմներից հետո։

Հայ և անդրկովկասյան մյուս ժողովուրդների քաղաքական ինքնորոշման ձգտումները ճնշելու նպատակով, Ամասիայի պայմանագրից հետո Անդրկովկասի քաղաքացիական վարչությունը տրոհվեց երեք ռազմական կուսակալությունների և ստեղծվեցին Շիրվանի, Ղարաբաղի և Չուխուր-Սա՛դի (Երևան և Նախիջևան) բեկլարբեկությունները։ Չնայած այս նախազգուշությանը, Սեֆյաններին չհաջողվեց մեկընդմիշտ վերջ դնել հպատակ ժողովուրդների ազատագրական ձգտումներին։ Շահ Թահմազի իշխանության վերջին շրջանում Իրանում նորից ծայր առան ֆեոդալական գժտությունները, որոնք նրա մահից հետո հանգեցրին Իրանի գահաժառանգության շուրջը բորբոքված արյունահեղ կռիվների։ Թագի հավակնորդներից ոմանց ոչնչացնելուց և երկրի մարզերը իրար մեջ վերաբաժանելուց հետո, կզլբաշ երևելիները 1578 թ. գահ բարձրացրին Սեֆյան սուլթան Մուհամեդ Խուդաբանդային։ Խուդաբանդայի թեկնածությանը նախապատվություն տրվեց ոչ թե ունեցած առավելությունների, այլ հենց նրա ապիկարության նկատառումով։ Սակայն դրանով դադար չառավ իշխանության համար մղվող պայքարը։ Կզլբաշ ցեղերն ու պետերը նորից տրոհվեցին հակամարտ խմբավորումների՝ քաղաքացիական պատերազմի ասպարեզ դարձնելով Խորասանի, Համադանի, Ադրբեջանի և Ղարաբաղի երկրամասերը[13]։

---

[12] «Թուրքական աղբյուրները Հայաստանի, հայերի և Անդրկովկասի մյուս ժողովուրդների մասին», կազմեց Ա. Սաֆրաստյան, հատ. Ա, Երևան, 1964, էջ 33 և հտն.։ Այսուհետև՝ «Թուրքական աղբյուրները...» համառոտությամբ։

[13] Տե՛ս *И. П. Петрушевский*, Очерки по истории феодальных отношений в Азербайджане и Армении XVI—начале XIX веков, 1949, էջ 107։ Այսուհետև՝ *И. П. Петрушевский*, Очерки. . համառոտությամբ։

Իրանում ստեղծված խառնակ վիճակից օգտվեց Թուրքիան։ Թուրքերի ծավալման դեմ որքան ուժեղանում էր քրիստոնյա երկրների (Ավստրիայի և Հունգարիայի) դիմադրությունը Կենտրոնական Եվրոպայում, նրանք այնքան սկսում էին ակտիվանալ ասիական սահմանագծերում։ Անդրկովկասի զավթումը թուրքերի համար այժմեական էր դառնում մանավանդ այն պատճառով, որ տիրանալով Կազանին ու Աստրախանին, ռուսները մտնում էին Հյուսիսային Կովկաս և ամրություններ կառուցում Թերեքի գետաբերանում[14]։ 1578 թ. թուրքերը գրավեցին Շիրվանը և մտան Դերբենդ։ Երկու տարի անց նրանք խուժեցին Ղարաբաղ, գրավեցին Երևանն ու Հասան Գեղարքունիք։

Գրավելով Երևանը, Ֆարհադ փաշան գերիների և բնակչության բռնի աշխատանքով ձեռնամուխ եղավ բերդի կառուցմանը, որի համար օգտագործվում էին անգամ Երևանի եկեղեցիների քարերը։ Առաքել կաթողիկոսի դիմումների շնորհիվ թուրքերը խնայեցին միայն Երկուերեսի կոչվող մեծ եկեղեցին, այն դարձնելով զորքերի ու երիվարների կացարան[15]։ 1585 թ. նրանք պաշարեցին ու ավերեցին Թավրիզը և մինչև 1588 թ. իրենց զենքի տակ պահեցին ամբողջ Ատրպատականը։ Թուրքերի ակնհայտ նպատակն էր՝ դիմագրավել Կովկասյան լեռնաշղթային մերձեցող Մոսկովյան պետությանը, խզել ռուս-իրանական առևտրական կապերը, արգելակել կովկասյան ժողովուրդների և հյուսիսային մեծ պետության միջև հաստատվող տնտեսական ու քաղաքական հարաբերությունների ամրացմանը, նախադրյալներ ստեղծել՝ Անդրկովկասյան ժողովուրդներին անխնայորեն կողոպտելու և ստրկացնելու համար։ Այդ խընդիրները լուծելիս, օսմանյան զավթիչներին օգնության էին գալիս Ղրիմի սուլթանը և Հյուսիսային Կովկասի նրա վասալները։ Եթե Կովկասյան լեռնաշղթայի հարավում օսմանցիների ծանր թաթը իջնում էր Երևանի և Թիֆլիսի, Գանձակի և Շամախու, Դերբենդի և Թավրիզի վրա, ապա Ազովի ափերին ու Հյուսիսային Կովկասի տափաստաններում ամուր ոտք դնելու և Աստրախանը գրավելու համար նրանք հույսեր էին կապում Ղրիմի սուլթանի և նրա կովկասյան զինակիցների հետ։ Վերջիններիս ասպատակությունների սահմանները երբեմն հասնում էին Անդրկովկաս, կողոպուտի և ավերվածության մատնելով Գանձակը, Նախիջևանն ու Ջուղան։

Մեզ նախածանոթ պատմագիր Փեչևին անզուսպ հաճույքով է արձանագրում, որ Երևանը գրավելուց հետո, թուրքերը ավերեցին այդ քաղաքի հոյակապ պալատները, գետնին հավասարեցրին նրա գեղազարդ կամարները, գերության քշեցին 20 հազարից ավելի կանանց ու երեխաների[16]։ Հայ աղբյուրները 70 հազար են հիշատակում Շիրվանում գերվածների թիվը։ Նրանք հաղորդում են նաև, որ Ղրիմի սուլթան Մահմուդ Գիրեյը 100 հազար տղա և աղջիկ քշեց գերության՝ Կաֆայում վաճառքի հանելու համար։ Երևանում հայ և մահմեդական գերիների թվաքանակը 60 հազար են նշում հայ աղբյուրները, իսկ Նախիջևանի շրջանում գերվածները՝ 40 հազար։

Պատերազմը տևական կողոպուտի ասպարեզ դարձրեց Անդրկովկասյան մարզերը։ Անգլիացի ուղեգիր Քարթրայտի տվյալներով թուրքերը Շիրվանից

---

14 «Թուրքական աղբյուրները...», Ա, էջ 78։

15 Վ. Հակոբյան, Մանր ժամանակագրություններ, II, էջ 244։

16 Տե՛ս նույն տեղում, էջ 46 և հտն.։

*Հալեպ էին հասցնում տարեկան 500—1000 ուղտաբեռ հում մետաքս*[17]*։ Գնալով աճում էր մետաքսի թալանը։ Թուրքերը պարզապես ունեզրկում էին Շիրվանի, Արեշի, Վրաստանի, Գանձակի և Ղարաբաղի մետաքս արտադրողներին։ Զուր չէր Առ. Դավրիժեցին գրում, թե «ծանր հարկապահանջութեամբ և կեղեքմամբ դրկէին և կողոպտէին և հաւատոց կուռեճութիւն (խստություն) առնէին, և այլ բազում տառապանօք չարչարէին, ոչ միայն զազգս հայոց, այլև զազգն վրաց և մահմեդականաց»*[18]*, ժամանակակից Հովհաննես Ծարեցին նկարագրում է համատարած մահտարաժամը, որ առաջացավ երկրում պատերազմի ժամանակ կամ հետագայում տեղի ունեցած նախճիրներից, ավերումներից ու ավարառումներից հետո*[19]*։*

*Հիրավի, Լանկ-Թամուրի օրերից ի վեր այսքան տնավերություն ու ցնցումներ, քաղց ու կարիք, մորակ ու հալածանք, ողբ ու կական չէին տեսել Հայաստանի և Անդրկովկասի ժողովուրդները։ Պարբերաբար կրկնվող արշավանքները, կոտորածն ու գերեվարությունը և սրանց հաջորդող սովն ու մահտարաժամը ամայացնում էին Հայաստանի քաղաքներն ու գյուղերը, ոչնչացնում արտադրողական ուժերը։ Թուրք զինված հրոսակախմբերը մորեխի պես ընկնում էին հայկական կանաչ դաշտերի վրա, լափում ու չորացնում նրանց կենսաբեր ծիլերը։ Եվ հատկանշական է, երբ անանուն Սեբաստացու այս միջոցին գրած ժամանակագրությունը բացվում է սիմվոլիկ մի նկարով։ Պատկերված է գալարվող մի օձ, որի մարմնի զանազան մասերից խոյանում են բազմաճիրան վիշապի գլուխներ, որոնցից ամեն մեկը պսակված է սուլթաններից մեկի անունով՝ սկսած կայսրության հիմնադիր Օսմանից, վերջացրած Անդրկովկասի զավթումը կազմակերպող սուլթան Մուրադ III-ով։*

*XVI դարի հայ աղբյուրները վկայում են «դևշիրմեի» պարբերաբար կրկնվող «տղայաժողովների» և «աղջկաժողովների» մասին։ Մոտավոր հաշվումներով, երեք դար հարատևած ահավոր այդ մարդահարկի միջոցով ավելի քան կես միլիոն քրիստոնյա մանուկներ հավաքագրեցին՝ ենիչերիներ դարձնելու համար*[20]*։*

*«Օտարազգիների» և «օտարադավանների» նկատմամբ կիրառվող ստորացուցիչ որոշումներից էր նաև այն, որ հայ և հրեա տղամարդկանց պարտադրվում էր սպիտակ փաթեթի փոխարեն կրել սև գդակ*[21]*։ Մի քանի տարի անց կաշառքի ուժով վերացվեց սպիտակ փաթեթի արգելքը, սակայն այդ հրահանգը հանդիպում էր մահմեդական վիրնախավի դիմադրությանը կամ նույնիսկ խափանվում՝ հանդիպելով «քրիստոնյաների անմիաբանությանը»*[22]*։*

*1596 թ. Վասպուրականի գյուղերից մեկում ընդօրինակված ձեռագրի հիշատակագրողը տրտնջում է բազմատեսակ տուրքերից. «Ով մանկունք սուրբ եկեղեցւոյ, իմացէք թէ ինչպես շրջեցաւ աշխարհս, վերին ի ներքին և ներքին ի վերին էնց զուլում ձգեց մահմեդական թագաւորն ի յաշխարհս, ԺԲ (12)*

---

[17] *Cartwright John*, Voyage from Aleppo in Hispahan and back again, „Hakluytus Posthumus or Purchase his Pilgrimes", Vol. VIII, Glasgow, 1905, *էջ 50։*

[18] Առ. Դավրիժեցի, *Պատմութիւն, էջմիածին, 1896, էջ 15։ Այսուհետև՝* Առ. Դավրիժեցի։

[19] *Նույն տեղում, էջ 609։*

[20] *Տե՛ս* Հ. Հակոբյան, *Ուղեգրություններ, հատ. VI, Երևան, 1934, էջ 294։*

[21] *Տե՛ս «Մանր ժամանակագրություններ», հատ. II, էջ 516։*

[22] Նորայր Պողարյան, *Մայր ցուցակ ձեռագրաց սրբոց Հակոբյանց, հատ. III, Երուսաղեմ, 1968, էջ 50։*

հազար տուն հայ և տաճիկ ի Գուճին (Վրաստան) մտաւ վասն ղուլումին, խարաճն քսան շահի տուին, բաթաղաղի դրամ, սալամյաղի, թթխմորի դրամ, ծխու ալեղ կախելու և այլ աղքի պատուհաս ձգեցին ի վերա աշխարհիս... և նա յորս թարկացաւ աստուած և ձգեց գխաշենց մահն և կոտորեաց ղեղեանք և խաշինք և յօր Ծ (50) և Խ (40) մարդ մեռանէր»[23]։

Ծանր պիտի եղած լինի, հատկապես, պատերազմի ժամանակ ծավալված պարհակը։ Արշավող զորքերին ուղեկցում էին նրանց սպասարկող ծառաներն ու բեռնակիրները[24]։ Պարհակներով էր գլուխ բերվում, մանավանդ, բերդաշինությունը։ Այսպես, հիշատակագրողները նշում են, որ 1566 թ. Հուսեյն փաշայի հրամանով բազմաթիվ հայ, քուրդ, թուրք, ասորի քաղաքացիներ և գյուղացիներ աշխատում էին Վանի և Արճեշի բերդերի շինարարության վրա, և մեկ ու կես տարում կառուցեցին այդ բերդերը։ Նման հարկադրանքով էր կատարվում նաև Երևանի և շրջակայքի, ինչպես նաև Թիֆլիսի, Գորու, Դմանիսի, Գանձակի, Շամախու, Թավրիզի բերդաշինությունները[25]։ Բերդերի կառուցումն անհրաժեշտ էր ոչ միայն կըզըլբաշների վերադարձը դժվարացնելու, այլև հպատակների դիմադրությունն ու ընդվզումները կանխելու նպատակով։ Թուրք հրամանատարությունը բազմաթիվ քրդական ցեղեր փոխադրեց Անդրկովկաս՝ Արարատյան դաշտի, Շարուրի, Սյունիքի ու Արցախի միջև սեպ կազմելու և տեղի հայ բնակչությանը քաղաքականապես հաշմելու մտադրությամբ։ Այս մի քաղաքականություն էր, որն հետագայում որդեգրեցին նաև Սեֆյանները։

## 2. ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՁԳՏՈՒՄՆԵՐԸ ԹՈՒՐՔ-ԻՐԱՆԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԻ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

Հայ և անդրկովկասյան մյուս ժողովուրդների համար կործանարար հետևանքներ ունեցան թուրք-իրանական պատերազմների արհավիրքները և XVI դարի վերջին քառորդում նրանց պարանոցին ընկած ծանր լուծը։ Տնտեսական և քաղաքական մասնատվածության պայմաններում նվաճողների անհագ կողոպուտներից, կեղեքումներից ու խոշտանգումներից ընդարմացած և ուժասպառ, նրանք իրական կռվան չունեին համաժողովրդական դիմադրության միջոցով փոխելու ստեղծված իրադրությունը։ Չկար քաղաքական արտաքին որևէ գործոն կամ սոցիալական ներքին որևէ ուժ, որը զորավիգ լիներ կամ ձգտում ու հնարավորություն ունենար օգնելու, միավորելու նրանց ջանքերը, նպատակ ու ընթացք տալու ազատագրական մղումներին։ Մերթ ընդ մերթ կըզըլբաշների կամ օսմանցիների դեմ զենք բարձրացնող տեղական իշխանավորները, դիմադրական ապարդյուն փորձերից հետո, իրենց գլխավորած ղանգվածների նկատմամբ ի վերջո բռնում էին տիրափոխության և դավանափոխության ուղին՝ գործիք դառնալով թշնամու քաղաքականությանը։ Իրենց ժողովրդի ազատագրական ջանքերը գլխավորելու փոխարեն, այդպիսիները, փաստորեն, բռնում էին փախուստի կամ համակերպության ճանապարհը։

Այս չէր խանգարում, սակայն, որ ղեկավարների կամ նրանց հետևորդների դիմադրական ընթացքի մեջ երբեմն հանդես գար իշխող իրադրության դեմ

[23] Մատենադարան, ձեռագիր № 4470, էջ 406ա։

[24] Տե՛ս Մ. Սմբատեանց, Նկարագիր ս. Կարապետի վանից Երնջակայ, Տփղիս, 1904, էջ 146։

[25] Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 6273, էջ 264ա, բ։

կուտակված համաժողովրդական անբավականությունը։ Այս տեսակետից նշանակալից է այն պայքարը, որ մղում էին շահ Թահմազի դեմ վրացիները Դիդգորի բարձունքների վրա, Ջավախքում կամ Սամցխեում։ Շարժումը գլխավորող Լուարսաբ թագավորը մահ գտավ 1558 թ. Խրամ գետի հովտում, երբ նրա որդի Սիմոնը փախուստի էր մատնում կըզըլբաշների զորքը։ Հոր թագի հետ արքայազն Սիմոնը ժառանգեց նրա մարտական ոգին, պաշտպան կանգնեց հայրենի Քարթլիին՝ դիմագրավելով և իրանցի, և թուրք զավթիչներին։ Համառ մարտեր մղեց նա՝ պաշարելով թուրքերի գրաված Գորու բերդը։ Սակայն, ի վերջո, թշնամու թվական գերազանցությունը ծնկի բերեց Սիմոնին։ Ստամբուլի բերդերից մեկում բանտարկված, նա նույնիսկ դավանափոխ եղավ և, իբրև շնորհ, բերդապահի պաշտոն ստացավ սուլթանից։ Այս չխանգարեց, սակայն, որ Սիմոնի մի շարք հաջորդները շարունակեին իրենց համառ դիմադրությունը, թեպետև մինչև XVIII դարի կեսերը նրանցից շատերը ևս վերջ ի վերջո հարկադրված հպատակ դարձան զավթիչներից մեկին կամ մյուսին։

Նվազ տագնապալից ու հակասական չէր նաև XVI—XVII դարերի պատերազմական արհավիրքներին ենթարկված թուրք-իրանական նվաճողների ծանր լուծը կրող հայ ժողովրդի դիմադրական պայքարի ուղին։

XVI դարում ծավալված և կարճատև ընդհատումներով մինչև 1639 թ. Կասր-է Շիրինի հաշտությունը քանիցս վերսկսված թուրք-իրանական պատերազմները դաժան հետևանքներ ունեցան հատկապես Հայաստանի և հայ ժողովրդի համար։ Հայաստանի համար այդ պատերազմներն անհամեմատ ավելի ծանր էին ու կործանիչ, քան սելջուկների, մոնղոլների ու թուրքմենների ջարդերը, ավարառությունները ու ավերումները։ Եթե նախընթաց դարերում հիմնականում ունեզրկվում և քայքայվում էին հայ ֆեոդալական իշխանությունները, այժմ արդեն ոտնատակ էին արվում Հայաստանի քաղաքներն ու գյուղերը, կոտորածների էր ենթարկվում կամ խոշտանգվում էր հայ ազգաբնակչությունը, գերեվարվում կամ կամավոր գաղթի ցուպ առնում հայ աշխատավորությունը։ Տեղաբնակների ոչնչացումն ու բռնի գաղթեցումը, նրանց գյուղերի ու քաղաքների, տների ու եկեղեցիների ավերումը, ցանքադաշտերի ու այգիների հրկիզումը հալածանքի արտահայտություն չէին միայն, այլև ահաբեկելու և ծնկի բերելու միջոցառումներ։ Պատերազմական արյունահեղություններին հաջորդում էին տևական և զանգվածային կեղեքումներն ու ճնշումները, ստեղծելով կամավոր կամ ակամա գաղթագնացություն։ Հայ բնակչությունը նվազ հալածանքներ չէր կրում պատերազմներին զուգընթաց ներքին ապստամբությունների, ջալալիների գործած խժդժությունների, ինչպես նաև ռազմական բախումներին հաջորդած մահասփյուռ սովի ու անխուսափելի համաճարակի հետևանքով։

XVI—XVII դարերում միայն Հայաստանի լեռնային գոտիներում է, որ տեղ-տեղ դեռ երևում էին հայկական մանր իշխանությունների հետքեր։

Արևելյան Հայաստանում հայկական ինքնուրույն իշխանության հետքեր մնացել էին Սյունիքի, Արցախի, Լոռու և Գեղարքունիքի որոշ վայրերում։ Վաղեմի անկախության նման հետքեր նկատվում էին նաև Արևմտյան Հայաստանում՝ Զեյթունում, Սասունում, Մոկսի, Շատախի որոշ գյուղահամայնքներում։ Սակայն ներքին որևէ կապ չկար այդ հայ համայնքների միջև, բոլոր պարագաներում դրանք չէին դառնում ազգային անկախության հանգրվաններ։

Համազգային միակ կազմակերպությունը, որ քիչ թե շատ կարող էր ազգային հավաքականության անունից հակադրվել իշխողների համահարթող ու համաձուլող քաղաքականությանը, հայ ազգային եկեղեցին էր։ Սակայն XVI—XVII դարերում քայքայման պրոցեսը թափանցել էր նաև ազգային-եկեղեցական կազմակերպության ներսը։ Թուրք-իրանական զինաբախումների ժամանակ Աղթամարի և Գանձասարի կաթողիկոսությունները զավթում էին Էջմիածնի համազգային կաթողիկոսության վիճակները՝ Վանն ու Արճեշը, Բերկրին ու Խլաթը, Մուշն ու Սալմաստը, Նախիջևանն ու Ղափանը, Գեղարքունիքն ու Լոռին։ Ճիշտ է, 1548 և 1557 թվականներին շահ Թահմազը փորձեց վերականգնել Էջմիածնի իրավունքները, սակայն շահի հրամանները ուժ ունեին միայն արևելահայերի համար, թեև այստեղ էլ խախտվում էին հաճախ։ Ամասիայի հաշտությունից հետո Էջմիածնի արևմտահայ որոշ թեմեր շարունակում էին ենթարկվել Աղթամարին։ Աղթամարի կաթողիկոսությունն այնքան առաջ անցավ, որ մի պահ գայթակղվեց անգամ ընդհանրական կաթողիկոսի տիտղոսով։ XVI դարի կեսերից մինչև XVII դարի 20-ական թվականների վերջերը Էջմիածնում ևս միաժամանակ նստում էին մի քանի աթոռակից կաթողիկոսներ[26]։



Էջմիածնի վանքը (ըստ Ժ. Շարդենի, XVII դ.)

Բազմագլուխ այդ կաթողիկոսության ներկայացուցիչներից ոմանք ոչ միայն դիմադրում էին իրենց ախոյանների հավակնություններին, այլև մտմտում ազգի եկեղեցական միության հետ մեկտեղ վերականգնել նաև նրա պետական անկախությունը։ Դրանով նրանք հետամուտ էին կենսագործել մի գաղափար, որը սնվել էր Ներսես Պարթևին կամ այլ հեղինակություններին վերագրված տեսիլներով ու գուշակություններով։ Այդ մի ավանդույթ էր, որ տարածվում ու քարոզվում էր Հայաստանում՝ խաչակրաց արշավանքների ժամանակներից ի վեր, երբ հայ վերնախավերի մեջ սկսվում էր արմատանալ այն հայացքը, թե հայերի ազատագրումը կարող է իրականանալ միայն Արևմուտքից

26 Տե՛ս Առ. Դավրիժեցի, էջ 436 և հտն.։

արշավող ֆրանկների (իմա՝ եվրոպացիների) աջակցությամբ։ Իրենց դավանափոխության նպատակների համար նման հայացքները մեծապես օգտագործում էին, մանավանդ, Հայաստանում գործող կաթոլիկ միսիոներները՝ պատվաստելով այն մտայնությունը, թե հայերի ազատագրումը չի կարող գլուխ գալ այլ կերպ, քան պապական եկեղեցու միջնորդությամբ և պապական եկեղեցուն հպատակվելու միջոցով։ Ֆրանկ պետությունները,—հավատացնում էին իրենց ազատաբաղձ ունկնդիրներին պապական միսիոներները,—միայն այդ պայմանով կստանձնեն իսլամի լծից հայերին ազատելու գործը։ Այս հայացքն առանձնապես ուժեղացավ XVI—XVII դարերում, երբ լատին քարոզիչները ջանում էին վերջ դնել հայ եկեղեցականների աթոռամարտություններին՝ հայ եկեղեցին պապական եկեղեցուն հպատակեցնելու միջոցով, և դրանով իսկ ձգտում էին գեթ մասամբ ծածկել բարոյական այն կորուստը, որ կրել էր Հռոմի եկեղեցին Արևմուտքում՝ ռեֆորմացիայի հետևանքով։

Հատկանշական է, որ հայ ժողովրդի քաղաքական ազատագրական հեռանկարները այժմեական դարձան 1547 թ., այն տարում, երբ շիրվանշահերի կամ վրաց Լուարսաբ թագավորի բարձրացրած ապստամբությունը ճնշելու համար իր զորքերով Անդրկովկաս արշավեց շահ Թահմազը։ Պատահական չէ, որ հենց նույն այդ տարում էջմիածնի Ստեփանոս Սալմաստեցի կաթողիկոսը մեկնեց Արևմուտք՝ հաջորդ աշնանը հայ «իշխանների» անունից աղերսագիր ներկայացնելու Վենետիկի դոժին և հայցելու նրա նախաձեռնությունը հայերին «այլազգնից» ազատագրման գործում։

Որտե՞ղ և ի՞նչ հանգամանքներում էր կազմվել այդ աղերսագիրը և ովքե՞ր էին այն «իշխանները», որոնց անունից ներկայացվում էր այն։

1550 թ. Արղնլանի վանքում գրված մի հիշատակարանում Ստեփանոս կաթողիկոսի մասին ասված է. «ի չար զլլպաշէ փախեաւ և եմուտ ի ֆռանկն»[27]։ Այս վկայությունը հիմք է տալիս կարծելու, որ էջմիածնի կաթողիկոսը փախուստի ուղին էր բռնել՝ Անդրկովկաս խուժող շահ Թահմազից խուսափելու պատճառով։ Հնարավոր է նաև, որ նրա գիմումը ինչ-որ առնչություն ունեցած լինի նույն շահի դեմ Վրաստանում և Շիրվանում արծարծված ապստամբությունների հետ։ Ինչ վերաբերում է կաթողիկոսի դիմումի մեջ ակնարկված «իշխաններին», անհրաժեշտ չէ, որ դրանք եղած լինեին հայազգի մելիքներ կամ իշխանավորներ։ Ենթադրելի է, որ խոսքը պարզապես Արևմուտքի հետ կապված, ազգի ու եկեղեցու գործերում կշիռ ունեցած հայ մեծատունների մասին է։ Պատահական չէ, որ հասնելով Լվով, կաթողիկոսը ուղևորվեց Վենետիկ, այն քաղաքը, ուր ամենից հաճախ էին եկումուտ ունենում Արևելքի շուկաներում իշխող դիրք գրավող և վենետիկցիների հետ առևտրական կապեր ունեցող հայ մեծահարուստ խոջաները։

XVI դարի կեսերին Արևելքի շուկաներին տիրելու հետամուտ անգլիացիները տրտնջում էին, թե հայերի և վենետիկցիների միջև հաստատված կապերն այնքան են ամրապնդված, որ դրանք ամբողջովին կտրել հնարավոր չէ[28]։ Երևի հենց այդ կապերի առկայությունն էլ հիմք էր տվել հայ «իշխաններին»

---

[27] Տե՛ս Աշ. Հովհաննիսյան, Դրվագներ հայ ազատագրական մտքի պատմության, II, Երևան, 1959, էջ 27։ Այսուհետև՝ Աշ. Հովհաննիսյան, Դրվագներ...։

[28] Տե՛ս Հ. Քյուրտյան, Հայ ազատագրական փորձ մը ԺԶ դարուն, «Անահիտ» 1937, № 5—6, էջ 59 և հտն. և նույնի՝ Նյութեր հայ վաճառականության պատմության համար, «Հայրենիք» ամսագիր, 1944, № 3—4։

*քաղաքական խոշոր կշիռ ունեցող այդ քաղաք-պետությունից ակնկալելու իրենց փրկությունը։ Վենետիկի դոժերին ուղղած իրենց թղթում հայ հեղինակները գրում էին, որ Վենետիկ են հղում կաթողիկոսին իրենց վիճակի մասին Հանրապետության տերերին զեկուցելու և միաժամանակ խնդրում էին նրանց՝ օժանդակելու հայոց կաթողիկոսին Հռոմ մեկնելու և պապին ներկայանալու համար[29]։*

*Նման առաքելություն ստանձնելու համար Սալմաստեցին ուներ որոշ տվյալներ։ Հայաստանի վիճակին ծանոթ լինելուց զատ, նա երկար ժամանակ ապրել էր Կ. Պոլսում և, ինչպես վկայում են, ուղևորություններ էր կատարել Լեհաստանում ու Ռուսաստանում, ուրեմն և որոշ պատկերացում պիտի ունենար նաև եվրոպական կյանքի մասին։ Ժամանակակիցները նրան դրվատում էին որպես աստվածաբանի, վկայում նրա մատենագրական գործերի և անգամ լատիներենին ծանոթ լինելու մասին։*

*1549 թ. Սալմաստեցին հասավ Հռոմ։ Եթե հավատանք կաթոլիկ աղբյուրներին, կաթողիկոսը Հռոմ էր ժամանել՝ Պետրոս և Պողոս առաքյալների դամբարաններն այցելելու, պապին հնազանդություն հայտնելու, նրանից կաթողիկոսության հաստատում ստանալու և իր ու իրեն ենթակա 27 եպիսկոպոսների (վիճակավորների) կողմից կաթոլիկ դավանանք ընդունելու համար։ Թող որ այդ հավաստիացումները չեն համապատասխանում ոչ հայ իշխանների դիմումի բովանդակության և ոչ էլ Ստեփանոս կաթողիկոսի մասին Պետրոս Արետինոսի թողած այն վկայության հետ, թե նա «մեծամեծ հոգսերով» էր մտատանջված և այդ ոչ առանց «ծանր պատճառների» կամ որ աննպաստ հանգամանքները խանգարում էին նրա ջանքերի իրագործմանը[30]։ Ըստ երևույթին հենց կաթողիկոսին մտատանջող այդ հոգսերն էին, որ 1549 թ. Ստեփանոսին առաջնորդել էին Հռոմ, որտեղից հաջորդ տարում, Հուլիոս III պապի հանձնարարականով նա մեկնեց Վիեննա՝ գերմանական Կարլոս V կայսրին ներկայանալու, և ապա ժամանեց Լվով՝ Լեհաստանի Սիգիզմունդ II թագավորի հետ տեսակցություն ունենալու համար։ Սակայն չի երևում, թե հայոց կաթողիկոսը, Արևմուտքում ունեցած բոլոր այդ հանդիպումների ժամանակ, իրեն հուզող հարցերի լուծման օգտին դրական որևէ արդյունքի է հասել։*

*Սակայն այդ չխանգարեց, որ Սալմաստեցուն հաջորդած Միքայել Սեբաստացի կաթողիկոսը կրկներ նրա փորձը։ Իր հայրենի քաղաքում գումարված գաղտնի եկեղեցաժողովի անունից 1562 թ. այդ կաթողիկոսը հատուկ պատվիրակություն ուղևորեց Վենետիկ։ Պատվիրակությունը գլխավորում էր Աբգար Թոխաթեցին՝ բանիմաց և գիտուն մի դպիր, որին ծանրակշիռ այդ բանակցությունները ղեկավարելու արտոնություն էր տվել նրա արքայական շառավիղից սերված լինելու հանգամանքը։*

*Աբգարը եւ նախ գնաց Վենետիկ, ուր դեգերեց մինչև 1564 թ. աշունը։ Մինչ այդ Հռոմում ստացվեց Միքայելի ծածկագիր թուղթը, ուր «Հայոց տերանց», այսինքն՝ նախորդ դիմումի հայ մեծատունների ու բարձրադիր եկեղեցականների անունից պատրաստակամություն էր հայտնվում ենթարկվելու պապի գերիշխանությանը՝ ի գին Հայաստանի ազատագրման։ «Հարկ է, որ լինի մի հոտ և մի հովիվ, և այդպես լինելուց հետո, ժամանակ է, որ կարողա-*

29 *Տե՛ս* Ալիշան, *Հայ-Վենետ, Վենետիկ, 1896, էջ 329 և հտն.։*

30 *Տե՛ս* Գ. վարդապետ Պետրովիչ, *Ստեփանոս Ե Սալմաստեցի, կաթողիկոս էջմիածնի, Վենետիկ, 1964, էջ 15։*

նանք ձեր բազուկներով ազատվել այս գերությունից»,—ասված է Աբգարի թղթում[31]։

Կաթողիկոսի դիմումը հետաքրքրություն շարժեց հայ պատվիրակության նկատմամբ։ Աբգարը հրավիրվեց Հռոմ, ուր նա հասկացնել տվեց, թե հայ կաթողիկոսը պատրաստ է ազգի անունից հնազանդվելու լատին եկեղեցուն, եթե պապը ստանձնի մահմեդականության լծից հայ ժողովրդին ազատելու գործը։ Առանց այս նախապայմանի, հայտարարում էր Աբգարը, հայերի դավանափոխումը անհնարին կլինի։ Ընդսմին նշվում էր նաև, որ խոսքը ոչ միայն իրանական, այլև թուրքական լծից ազատվելու մասին է։

Աբգարին հանձնարարվեց վերադառնալ Հայաստան և, սկսված բանակցությունները շարունակելու համար, Հռոմ առաջնորդել կաթողիկոսին։ Հռոմում պապը իբրև թե Աբգարին սիրաշոյել էր այն խոսքերով, թե Հայաստանից Հռոմ ժամանեցիր որպես արքայազն, իսկ հիմա՝ քեզ մեծարելով իբրև արքա, հղում եմ Հայաստան՝ ինձ մոտ առաջնորդելու նաև հայոց պատրիարքին[32]։

Աբգարի առաքելությունը ժառանգեց նրա որդին՝ Սուլթանշահը։ Մնալով Հռոմում, վերջինս պապի հովանավորությամբ վարում էր տեղական հայ գաղութի վերակացուի պաշտոնը և Հովհաննես Տերզնցի հայ քահանայի հետ շարունակում Վենետիկում իր հոր սկսած հայերեն «Սաղմոսի» տպագրությունը։ Աբգարի սկսած և նրանից հետո իրագործված այդ գրքի տպագրությունը կարևոր էր, մանավանդ, այն առումով, որ հայերի համար «Սաղմոսը» սոսկ աղոթագիրք չէր, այլև հայերենի դասագիրք։ Սակայն Սուլթանշահը ջանաց շարունակել նաև իր հոր ազգային-քաղաքական առաքելությունը։ Հռոմում կայանալիք համաքրիստոնեական խորհրդաժողովին մասնակցություն ունենալու համար, նա 1585 թ. հրավիրագրեր հղեց հայադավան եկեղեցու պետերին, ջանալով նրանց համոզել, թե այդ խորհրդաժողովը լինելու է նաև հայերի քաղաքական ազատագրման նախաձեռնողը։

Սուլթանշահի գործունեության արձանագրած թղթերի հավաստիացումից պարզվում է, որ հայ եկեղեցու պետերը չէին հրաժարվում Ստեփանոս Սալմաստեցու և Միքայել Սեբաստացու ուղեգծից։ Նրանք հոժար էին ճանաչելու լատին եկեղեցու առաջնությունը, ընդսմին, դարձյալ իրենց հոժարակամությունը լծորդելով թուրք-իրանականստրկությունից ազատագրվելու նախապայմանի հետ։

Անհավանական չէ, որ հենց նույն ակնկալությամբ 1575 թ. Էջմիածնի Թադեոս կաթողիկոսն անձամբ ժամանեց Լվով, Վենետիկ և Հռոմ, սակայն դարձյալ՝ ապարդյուն։

Եվրոպական կապիտալի նախասկզբնական կուտակման այս դարաշրջանում Արևմուտքում կազմակերպվող մանր ու խոշոր պետություններիներհակությունները, նրանց ընդերքում ծագող ներքին բախումները կամ նրանց միջև ծագող պատերազմները, նպաստավոր իրադրություն չէին ստեղծում խաչակրաց նոր արշավանքների համար։ Բայց ինչպես միշտ, նման արշավանքների գաղափարախոսությունն իսկ փաստապես սոսկ պատեհ հնարանք էր արևելյան եկեղեցիները Հռոմին ենթարկելու։ Արևմուտքի պետություններից ոմանք, և անգամ պապական Հռոմը, Արևելքի քրիստոնյաներին ազատագրե-

[31] *Raynaldus*, Annales Ecclesiastici, t. XIV, Anno, 1949, էջ 51։

[32] Տե՛ս Աշ. Հովհաննիսյան, Դրվագներ, II, էջ 43 և հտն.։

լուց առավել, երբեմն հակված կլին լինում զինակցելու խալիֆի հետ՝ Վենետիկի տնտեսական գերզորությունն ու նրա քաղաքական հավակնությունը ջախջախելու կամ Թուրքիայից առևտրական ճանապարհ կորզելու համար։ Անգամ Արևելքի հարցերով շահագրգռված Հաբսբուրգների պետությունը, հանրապետական Վենետիկը կամ Լեհաստանի թագավորը, որոնք թշնամաբար էին տրամադրված դեպի սուլթանը, շահագրգռված չէին իրենց հովանու տակ առնելու Սեֆյանների ճնշումներից ու կեղեքումներից տառապող քրիստոնյաներին։ Ընդհակառակը, նրանք ավելի քան շահագրգռված էին՝ դաշինք կնքել և համատեղ հանդես գալ ընդդեմ Թուրքիայի։ Եվ ոչ միայն նրանք։ XVI դարի վերջին տասնամյակներում, այսինքն՝ Անդրկովկասի օսմանյան ռազմակալման ժամանակաշրջանում, իրանցիների հետ հակաօսմանյան ընդհանուր ռազմաճակատ ստեղծելու հեռանկարից դրական ակնկալություններ ունեին անգամ վրաց իշխողները։

Թուրքական ավարառումների ժամանակ էր հենց, որ Քարթլիի Սիմոն թագավորը, Երևանի Մուհամմադի խան Թոխմախի և Գանձակի Իմամ-Կուլի խանի հետ միացած, դիմադրություն էր ցույց տալիս Անդրկովկասի թուրք զավթիչներին։ Իրենց ապահովության համար հայերը և տեղական մահմեդական բնակչությունը զանգվածաբար ապավինում էին Քարթլի կամ Կախեթ։ Հաճախակի ու սերտ շփումների մեջ լինելով արևմտյան շուկաների կամ նրանց արևելյան գործակալների՝ միսիոներների և դեսպանների հետ, հայ խոջաներից ոմանք, և նույնիսկ նրանց քարավաններն ուղեկցող որոշ եկեղեցականներ, երբեմն օժանդակում էին հակաօսմանյան ընդհանուր ճակատ ստեղծելու քաղաքականությանը՝ հույս դնելով վրաց թագավորի դիվանագիտական ձեռնարկումների վրա։

1578 թ. վրաց Սիմոն թագավորը Հռոմի պապին հղած մի նամակում՝ հաղորդելով թուրքերի դեմ իր վարած ապարդյուն պատերազմների մասին, խնդրում էր օժանդակել քրիստոնյա ժողովուրդների ազատագրմանը։ 1596 թ. Սպանիայի Ֆիլիպ II թագավորին գրած նամակում Սիմոնը հայտնում էր, որ ինքը Կախեթի Ալեքսանդր թագավորի և պարսից շահ Աբբասի հետ միացած հետամուտ է թուրքերի ձեռքից Երուսաղեմն ու քրիստոնեությունը ազատելու մտքին։ Հայտնում էր նաև, որ այս դաշինքը իրենք կնքել են գերմանական կայսեր առաջարկին ընդառաջելով։ Սակայն վստահ չլինելով, որ կայսրն ու պարսից շահը հաստատ կմնան դրած ուխտին և իրենց մենակ չեն ձգի թուրքերի դեմ, Սիմոնը խնդրում էր Ֆիլիպ թագավորին՝ ազդել նրանց վրա և թույլ չտալ խախտելու կնքված դաշինքը[33]։

Ուշագրավ հանգամանք է, որ Սիմոնի նամակը գրված էր ոչ թե վրացերեն, սպաներեն կամ լատիներեն, այլ հայերեն՝ գրաբարախառն աշխարհաբարով։ Կասկած չկա, որ նամակը գրվել էր հայերի գործակցությամբ ու դրչով։ Նամակատարը, որը հավանորեն հայ էր նույնպես, ոչ միայն տեղ պիտի հասցներ վրաց թագավորի նամակը, այլև բերեր պատասխանը։

Թուրքերի դեմ Սիմոնի մղած կռիվների թատերաբեմն իր մեջ ընդգրկում էր հայաբնակ Սոմխեթն ու Լոռին։ Կռիվների ժամանակ հայերը սոսկ թղթատարների կամ բանագնացների դեր չունեին, այլև իրենց զենքով սատարում էին Սիմոնին։ Թուրքական ռազմակալությունից տառապող հայերի, ինչպես

33 Տե՛ս Աշ. Հովհաննիսյան, Դրվագներ, II, էջ 73 և հտն.։

և անդրկովկասյան մյուս ժողովուրդների համակրանքն այդ պահին նվաճողների դեմ ապստամբած վրաց թագավորի կողմն էր։

## 3. ՇԱՀ ԱԲԲԱՍԻ ԱՐՇԱՎԱՆՔՆԵՐԸ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ XVII ԴԱՐԻ ԱՌԱՋԻՆ ՔԱՌՈՐԴՈՒՄ

Մուհամմադ Խուդաբանդե շահի իշխանության վերջին տարիներին Իրանի գահի շուրջը բորբոքված ներքին կռիվները վերջացան շահ Աբբաս I-ի (1587—1629) գահակալությամբ։ Նոր շահը ուզբեկների և Դաղստանի լեռնցիների ապստամբություններից նեղված, 1590 թ. հարկադրված եղավ հաշտություն խնդրել օսմանյան զավթիչներից։ Նույն տարում Ստամբուլում կնքված պայմանագրով շահը թուրքերին զիջեց Վրաստանը, Արևելյան Հայաստանը, Շիրվանն ու Ատրպատականը։ Պարտավորվելով տարեկան 200 բեռ մետաքս վճարել Թուրքիային, նա խոստացավ նաև չմիջամտել Ռուսաստանին ցույց տրվելիք դիմադրությանը, որով սուլթանը նպատակ ուներ կանխել ցարի ռազմական ձգտումները Կասպից ծովի հյուսիս-արևմտյան ափերին։

Նվաստացուցիչ այս հաշտությունը հարկավոր էր երիտասարդ շահին նախ՝ ֆեոդալական կենտրոնախույս ուժերի դեմ Իրանի պետական մեքենան ամրացնելու և ապա Իրանի զավթված երկրամասերից թուրքերին վտարելու համար։

Շահ Աբբասը, սակայն, պատերազմ սկսեց նախքան նախատեսված միջոցառումների լիակատար իրագործումը։ Այս բանին նպաստեց Թուրքիայի արևելյան նահանգներում բարձրացած ջալալիների հզոր շարժումը, որը քայքայում էր սուլթանական բանակները և թուլացնում նրա հարձակողական կարողությունը։ «Ի մերձակայից Կոստանդնուպօլսի՝ մինչև ցԵրևան քաղաք՝ ի Բաղդատայ մինչև ցԴամուրղափուն, զՍպիտակ ծովու մէջն և զՍեաւ ծովու մէջն, այս եղերքս զորս ծրագրեցի, զոսցա մէջ զայսքան աշխարհս յաւեր և յապականութիւն դարձուցին»,—գրում է ջալալիների մասին Առաքել Դավրիժեցի պատմագիրը[34]։ Շարժմանը մասնակցող քուրդ ցեղապետերից մի քանիսը նույնիսկ իրենց զինական ծառայությունն առաջարկեցին շահ Աբբասին՝ թուրքերի դեմ պատերազմ սկսելու համար։

1603 թ. վերագրավելով Թավրիզը, շահ Աբբասն անցավ Արաքսը և խանդավառ ընդունելություն գտավ մեծահարուստ Ջուղա գյուղաքաղաքի հայ խոջաների կողմից։ Ջուղայի խոջաները իրենց հարստությունը կուտակել էին Արևմուտքի վաճառաշահ երկրների հետ հնուց եկող կապերի շնորհիվ։

Խոջաների կողմից շահին ցույց տրված ընդունելությունը պատահական չէր։ Թուրքական տիրապետությունից առաջ Արաքսի հովտի Ջուղա, Ագուլիս, Մեղրի, Շոռոթ, Աստապատ և Լեհրամ ավաններն ու գյուղերն իբրև «խաս» (արտոնյալ) վայրեր ազատված էին այն տուրքերից, որ հարկադրաբար վճարում էին թուրքական իշխանություններին։ 1601 թ. Ագուլիսում գրված մի հիշատակարանում գանգատ կա այն մասին, որ թուրքերի օրոք հայ ծնողները պարտքերի հատուցման համար հարկադրված էին նույնիսկ վաճառել իրենց զավակներին։ Պատահական չէ, երբ շահի անունը հիշատակող մի հեղինակ ավելացնում էր. «Երանի թէ թագաւորեալ ի վերա մեր զնա տեսանէինք»[35]։

---

[34] Առ. Դավրիժեցի, էջ 87։

[35] Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 2845, էջ 267բ։



Ագուլիսի համայնապատկերը

Սակայն միայն հայ խոջաները չէ, որ սրտատրոփ սպասում էին շահին։ Դավրիժեցին թվարկում է մի շարք քուրդ, վրացի, հայ հոգևոր և աշխարհիկ մեծավորների անուններ, որոնք ակնդետ սպասում էին շահի ժամանումին։ Սրանց մեջ նշված են Գեղարքունիքի Մելիք-Շահնազարի և Քաշաթաղի Մելիք-Հայկազի անունները։ Շահ Աբբասի արշավանքից առաջ Ղարաբաղի Դիզակի մհալից չորս գյուղ և Ագուլիսի Դաշտ գյուղի մեծ մասը, թուրքերից նեղված, անցել էին Պարսկաստան ու ապաստան գտել շահի մայրաքաղաքում[36]։

[36] Տե՛ս Առ. Դավրիժեցի, էջ 16։

*Լուր ստանալով, որ Թավրիզի բերդն արդեն անձնատուր է եղել և շահը անձամբ խոշոր բանակով շարժվում է դեպի Նախիջևան, թուրքական զորքերը Երևանի Մուհամմադ-Շարիֆ փաշայի հրամանատարությամբ՝ չվստահելով Նախիջևանի ամրություններին, նահանջեցին ու ամրացան Երևանի բերդում։*

*Երևանի ամրությունների սիստեմում այդ ժամանակ կային երեք առանձին բերդեր։ Գլխավորը, որ կոչվում էր «Հին բերդ», 1583 թ. Ֆահրադ փաշայի կառուցածն էր։ Այս բերդն ուներ ամուր պարիսպներ և շրջապատված էր խորը փորված խանդակներով։ Մյուսը մի փոքրիկ բերդ էր, Հրազդանի աջ ափին, Հին բերդից դեպի հարավ-արևմուտք ընկած մի բլրի վրա, որը կոչվում էր «Գյողչի կալա» («Հսկող բերդ»)։ Երրորդը Նախիջևանից նահանջած զորքերն էին կառուցել, Հին բերդին շատ մոտ, դեպի հարավ ընկած հատվածում, որը չէին հասցրել պարսպապատել և շուրջը խանդակներ փորել։*

*Բերդի պաշարումը տևեց ավելի քան ութ ամիս։ Պաշարողական մարտերի ընթացքում ավելի շատ կոտորվում էին շրջակա գյուղերի բնակիչները, քան պատերազմող կողմերը։ Առաքել Դավրիժեցին նկարագրում է շրջակայքից հավաքված գյուղացիության վիճակը, որոնք բռնի բերված էին շահի բանակը պաշարողական մարտերում սև աշխատանք կատարելու։ «Եւ ի ժամ պատերազմին,—գրում է նա,—յորժամ երիշ առնէին և կամ զսիբայն ի վեր քշէին ղզրխտոնեայսն յառաջ խաղացուցեալ ընդդէմ հրոյ և սրոյ մատուցանէին, որովք կոտորեալք լինէին ազգն Հայոց յերկուց կողմանց՝ յառաջուստ յՕսմանցւոց՝ և յետուստ ի Պարսից»[37]։*

*Պաշարման ընթացքում շահը առանձին զորամասեր էր ուղարկում շրջակա գավառները նվաճելու և ավարառության նպատակով։ Այսպես, Ամիր-Գունա խան Ղաջարին նա ուղարկեց դեպի Գանձակ, որը հրի ու սրի մատնեց այդ կողմերի գյուղերն ու ավանները և մեծ ավարով վերադարձավ Երևան։ Նույնպիսի ասպատակությունների ենթարկվեցին նաև Բասենը, Խնուսը, Կարինը, Արճեշը և Արևմտյան Հայաստանի այլ շրջաններ[38]։*

*Համառ մարտերից հետո Երևանի բերդը գրավվեց 1604 թ. հունիսին, որից հետո Արարատյան երկրի կամ Չուխուր-Սա՛դի վիլայեթի բեկլարբեկությունը հանձնվեց Ամիր-Գունա խանին։ Այստեղ շահ Աբբասին ներկայացան նաև սահմանամերձ գավառների քրդական աշիրաթների ամիրները, որոնց շահը վերահաստատեց իրենց տիրույթներում։*

*Բերդի գրավումից հետո շահ Աբբասն իր բանակը տարավ Կրխբուլաղի ամառանոցը, ուր կարճատև դադարից հետո, իր զորքերի հետ բարձրացավ Գեղարքունյաց լեռները։ Այստեղից կըզըլբաշները երկրորդ անգամ ասպատակեցին Գանձակի վիլայեթը և մեծ ավարով ետ վերադարձան։ Այս դեպքերից անմիջապես հետո շահն անակնկալ իջավ Գեղարքունիքից և հանկարծակի գրոհով գրավեց նաև Շորագյալի անառիկ բերդը[39]։*

*Լսելով այն մասին, որ Ջղալ-Օղլի Սինան փաշան մեծ թվով թուրքական զորքերի գլուխն անցած արդեն եկել բանակ է դրել Մշո դաշտում և շարունակում է զորաժողով լինել՝ Երևան արշավելու համար, շահ Աբբասը կիրառելով կըզըլբաշների վաղեմի ռազմական տակտիկան, հրամայում է իր զորքերին*

[37] Առ. Դավրիժեցի, *էջ 26։*

[38] *Տե՛ս* Առ. Դավրիժեցի, *էջ 30, հմմտ.* Իսքանդար Մունշի, *Թարիխ-ե ալամարա-յե Աբբասի (պարսկ. բնագիր), հատ. Բ, Թեհրան, 1957, էջ 665—666։ Այսուհետև՝* Իսքանդար Մունշի։

[39] *Տե՛ս* Իսքանդար Մունշի, *հատ. Բ, էջ 663—664։*

Երևանի ու Նախիջևանի վրայով նահանջել դեպի Թավրիզ, միաժամանակ կարգադրելով հրկիզել և ավերել բոլոր գյուղերն ու քաղաքները, այրել ու սպառել հացահատիկն ու ցանքսերը, իսկ բնակչությանը քշել դեպի խորը թիկունք։ Պալատական պատմիչ Իսքանդար Մունշին հետևյալ կերպ է նկարագրում կըզըլբաշ զորքերի ձեռքով կատարված ավերածությունները։

«Այդ ժամանակ սաստիկ ստվեր, նորին սրբություն շահը, թշնամուն նեղը գնելու ու պարտության մատնելու նպատակով, հաղթական զինվորներին գունդ առ գունդ և ջոկ առ ջոկ ուղարկեց Ղարսի ու Չարիշատի երկրները, որպեսզի նրանք այրեն ու ոչնչացնեն այդ կողմերի հացահատիկն ու արոտավայրերը։ Որոշվեց, որ այն ճանապարհներում, որոնցով պետք է անցնեն զորքերը, մի քանի օրվա ճանապարհի տարածության վրա գտնվող շեն վայրերը ամայացվեն, իսկ դաշտերում եղած ցանքսերից, արոտավայրերից ու բնակավայրերից ոչ մի հետք չմնա։ Այդ կողմերի այն ռայաթներին, որոնք կողմնակից են թուրքերին և կդիմադրեն ու չեն ցանկանա քոչել այս կողմ, անխնա կերպով կողոպտել ու կոտորել։ Հաղթական զինվորները այս հրամանը ստանալուց հետո առաջացան մինչև Հասան-Ղալա, որը գտնվում էր Ղարսի և Էրզրումի արանքում և անխնա կերպով ասպատակեցին, կողոպտեցին և ավերեցին ու հրկիզեցին ցանքսերն ու արոտավայրերը և շուրջ 2—3 հազար ընտանիք հայեր ու քոչվոր ցեղեր, որոնք այդ վիլայեթում ամառանոցներ ու ձմեռանոցներ ունեին, քշեցին ու բերեցին այս կողմ, որտեղից էլ ուղարկեցին Արաղ (Կենտրոնական Իրան)։ Այս արշավանքում հաղթական զինվորները մեծ թվով ոչխար և տավար ձեռք բերեցին։ Նրանք իրենց հետ բերեցին նաև 20 հազար ոչ բնիկ ժողովուրդ, որ կըզըլբաշների մոտ մահմեդականություն ընդունեց»[40]։

Հայ ժողովրդի պատմության մեջ իր չափերով նախընթացը չունեցող այս ահռելի գաղթաշարժը, որը ժամանակակիցների կողմից անվանվեց «մեծ սուրգուն» (մեծ գաղթ), տնտեսական և քաղաքական ծանր հետևանքներ ունեցավ և կործանարար եղավ մեր ժողովրդի հետագա պատմական ճակատագրի համար։

Ալեկոծվում էր բովանդակ Կենտրոնական Հայաստանը։ Կըզըլբաշ զինվորների հատուկ ջոկատները փոթորկի նման անցնում էին մեծ ու փոքր բոլոր բնակավայրերով, իրենց ետև թողնելով միայն լիովին ամայացած ու հրկիզված ավերակներ։ Աշխատավոր ժողովրդի հսկայական զանգվածներ ոչխարի հոտերի նման բոլոր կողմերից քշվում էին դեպի Արարատյան դաշտը, այստեղից դեպի Կենտրոնական Իրանի տափաստաններն ուղարկվելու համար։ Տեղահանման ենթակա էին բոլորը, առանց սեռի, տարիքի ու դավանանքի խտրության։ Գաղթում էին թե հայ, թե վրացի, թե ադրբեջանցի և թե քուրդ, մասնավորապես հողագործ գյուղացիությունը։ Նպատակը պարզ էր, ամայացնել այն տարածությունը, որով պետք է անցներ օսմանյան բանակը։

Առաքել Դավրիժեցու վկայությամբ, Իրանի խորքերը քշվող շուրջ 300 հազար բազմության մեջ կային Հայաստանի տարբեր գավառներից տեղահանված բնակչության բեկորներ։ «Վասն զի ի քշելն զերկիրս,— գրում է նա,— ոչ թէ զմի կամ զերկու գաւառս վարեաց ի Պարսկաստան, այլ զբազումս։ Եւ սկսեալ ի սահմանացն Նախչուանու և անցեալ ընդ Եղեգաձոր, առ եզերբ Գեղամայ և Լօռւոյ և զՀամզաչիման գաւառն, զԱպարան, զՇարապխանէն, զՇի-

[40] Իսքանդար Մունշի, հատ. II, էջ 665—666։

բանկուսն, զՁարիշատ և մասն ինչ ի գեղօրէիցն Կարսայ և զձորն Կաղզուանու ընաւին և բովանդակ զերկիրն Ալաշկերտու և զգեղօրայսն Մակուայ և զերկիրն Այրարատու և զՍալմաստու և զԽոյայ և զՈրմի և որ ինչ սանդուխտք և զարիպականք մնացեալք էին ի քաղաքն և ի գեղօրայսն Թաւրիզու, զդաշտն Արարատու բովանդակ և զԵրևան քաղաք, զերկիրն Ղրխբուլաղայ, զԾաղկունուց ձոր, զԴառնու ձորն, զՈւրծայ ձորն, եւ յառաջ քան զայն զգաւառն Կարնոյ և զԲասենու և զԽնուսայ և Մանազկերտու և զԱրծկէոյ և զԱրճշոյ և զԲերկրու և զՎանայ աւարով և գերութեամբ բերեալ էին յԵրևան, և ընդ սոսա քշեցին և տարան»[41]։

Նահանջելով Ղարսի կողմերից, շահ Աբբասը նախ կանգ առավ Աղջա-Ղալայի բերդում, ապա արագ երթով եկավ Էջմիածին։ Երբ շահը Էջմիածնում էր, Ջղալ-օղլու բանակը արդեն հասել էր Ղարս։ Ուստի շահը հրամայեց անապաբանոք քշել Արարատյան դաշտում կուտակված գաղթականությանը, որը, ըստ Դավրիժեցու, մեկ օրվա ճանապարհի տարածության վրա շարժվում էր դեպի հարավ։

Տասնյակ հազարավոր զոհեր տալով, մեծ արագությամբ գաղթականների այդ հսկա զանգվածն անցավ Արաքս գետը և ուղևորվեց դեպի Իրանի խորքը։ Հայ կանանց և դեռահաս աղջիկների, մանկահասակ երեխաների և առհասարակ ամբողջ գաղթականության կրած անլուր տառապանքների, սովի, ցրտի, հարստահարության, գերեվարության և լլկման բազմաթիվ փաստերի մասին են խոսում ժամանակակից հիշատակարաններն ու ականատեսների վկայությունները։ Տեղահանվածների քարավանները երերուն քայլերով քշվում էին Մազանդարանի «գաղջ ու դաժան, շնչարգել ու մգլահոտ» ճահճուտներն ու առապարները, քչերն էին միայն, որ բնակվում էին Իրանի կենտրոնում՝ ի վերջո ապաստան գտնելով նրա մայրաքաղաքում՝ Սպահանում ու նրա շրջակա գավառներում։ Մեծ քանակ էին կազմում գերված հայերը։ Ականատես սպանացի հեղինակը՝ Գոուեան 100 հազար մարդ է հաշվում այդ պահին ստրկության վաճառահանվածների քանակը։ Նա չափազանց չէր համարում այդ թվաքանակը, քանի որ, ասում է, Հայաստանն ունի բազմամարդ և բազմաթիվ քաղաքներ ու գյուղեր։ Միայն հենց Երևանի հողում (իմա՝ համանուն մարզի սահմաններում) խոշոր քաղաքներից զատ կան նաև մոտ 1500 գյուղավայրեր, յուրաքանչյուրը 4—5 հարյուր բնակչությամբ[42]։

Սակայն, հեծյալների մտրակների տակ Հայաստանի ողջ բնակչությունը չէ, որ լքելով տուն ու տեղ, գլխիկոր քայլում էր դեպի Իրանի խորքերը։ Խուսափելով շահի կամակատարներից, ոմանք փախան Վրաստանի կողմերը՝ հովանավորություն գտնելով Քարթլիի Լուարսաբ թագավորից[43]։ Եղան նաև այնպիսիները, որոնք, ըմբոստանալով շահի հրամանին, ապավինեցին երկրի բնական ամրություններին։ Առաքել Դավրիժեցու վկայությամբ, ապավինելով Գեղարդի և Քորադարայի այրերին ու քարածերպերին, հայ տեղաբնակները «սրով և բրով, քարիւ և փայտիւ» դիմադրություն էին ցույց տալիս Ամիր-Գունա խանի զինված կատարածուների հրամաններին։ Իրենց կուրծքը պարսից

---

41 Առ. Դավրիժեցի, էջ 52—53։

42 Տե՛ս Эзов, Сношение Петра Великого с армянским народом, СПб., 1898, էջ 467 և հտն.։

43 Տե՛ս Հար. Արտաճամյան, Կալվածագրեր, Երևան, 1941, էջ 159։

սրերին վահան դարձրած՝ նրանք մաքառում էին հարազատ ժողովրդին ու մշակույթին հարատևություն պարգևելու համար։

Պալատական պատմիչ Իսքանդար Մունշին ևս հաստատում է, որ «Երևանի շրջանի ամբողջ բնակչությունը գաղթեցվեց Ղարադաղ, ազատվեցին միայն քչերը, որոնք ամրացել էին լեռների ծերպերում և անառիկ վայրերում»։

Ամիր-Գունա խանը, որին հանձնարարված էր կազմակերպել Երևանյան նահանգի բնակչության գաղթը, լավատեղյակ լինելով ձեռնարկված գործի ինչպես ռազմավարական, այնպես նաև տնտեսական-քաղաքական նպատակներին, այնքան էլ շահագրգռված չէր ամայացնելու այն երկիրը, որն իր իշխանության ներքո էր գտնվում, և որի հատկապես հայ բնակչությունը մեծ եկամուտներ էր խոստանում։ Եթե սկզբում, կըզըլբաշների շտապ նահանջի ժամանակ խստորեն կիրառվել էր տեղահանման հրամանը, հատկապես Արարատյան դաշտում, այսինքն՝ օսմանյան բանակի անցուղու երկարությամբ, ապա այնուհետև այդ բնակչության մի մասին հաջողվեց վերադառնալ և հաստատվել նախկին բնակավայրերում։ Ռազմական նկատառումներից առավել, շահի հոգսը գաղթականների ձեռքերով Գիլանի և Մազանդարանի ճահճուտները չորացնելու, Իրանի այդ երկրամասերը եկամտաբեր դարձնելու խնդիրն էր։ Արաքսի հովտի հայ ավանների բնակչությանը Կենտրոնական Իրան քշելով, շահ Աբբասը նպատակ էր հետապնդում նաև փոխել Իրանի արտաքին առևտրի ուղղությունը՝ երկրի հաղորդակցության ու արտաքին առևտրի մայրուղին Թուրքիայի ցամաքային ճանապարհից ուղղել դեպի Պարսից ծոց։ Սա մի քաղաքականություն էր, որով, ի հեճուկս Թուրքիայի, շահը ընդառաջում էր տնտեսական այն սերտ կապերին, որ հանգուցավորվում էր անգլիական և հոլանդական գաղութարարների հետ[44]։

Տեղահանված հայության բեկորները միատեսակ բախտի չարժանացան։ Իրանի ճահճուտները քշվածների մեծ մասը (մի քանի տասնյակ հազար ընտանիք), կլիմայական սպանիչ պայմաններին չդիմանալով, կարճ ժամանակամիջոցում ոչնչացան։ Այսպես, Ֆարահաբադ քշված 10 հազար տուն հայերից 10—15 տարվա ընթացքում հազիվ 400 տուն էր մնացել[45]։ Ովքեր կապված չէին արհեստի կամ առևտրի հետ, Սպահանի շրջակա գավառներում միաձուլվեցին ու անհետացան իրանական տեղաբնակների մեջ։ Դրանց մեջ շուրջ 10 հազար են հաշվում հայ այն տղաներն ու աղջիկները, որոնք իբրև գերիներ, ծառայության էին տրվել պարսից մեծամեծներին։

Համեմատաբար բարենպաստ վիճակ ստեղծվեց Երևանից, Ագուլիսից և մանավանդ Ջուղայից Սպահան փոխադրված մեծահարուստ խոջաների համար։ Արաքսի ձախ ափին ծվարած ջուղայեցիների հայրենի ավանը թերևս ունեցել է շուրջ 10—12 հազար բնակիչ[46]։ Մինչդեռ սրանց վերահաստատելով Զաենդերուդ գետի ափերին, շահը հնարավորություն տվեց ստեղծել իրենց հայաշեն Նոր Ջուղա արվարձանը, որը XVII դարի ուղեգիրների տվյալներով շուրջ 650 հազար բնակիչ ունեցող մայրաքաղաքին կից տնտեսապես բարգավաճ, ըստ ոմանց, մոտ 30 հազար բնակչություն ունեցող բնակավայր էր[47]։

---

[44] Տե՛ս *И. П. Петрушевский*, Азербайджан в XVI—XVII вв. („Сборник статей по истории Азербайджана", Баку, 1949, էջ 277)։

[45] Տե՛ս Առ. Դավրիժեցի, էջ 456։

[46] Տե՛ս Ալիշան, *Սիսական*, Վենետիկ, 1893, էջ 410 և 413։

[47] Տե՛ս Հ. Հակոբյան, *Ուղեգրություններ*, հատ. VI, էջ 80 և հտն.։



Տաթևի վանքը

Իրանի կենտրոնական շրջանները տնտեսապես շենացնելու և քաղաքական ազդեցությունը կենտրոնախույս երկրամասերի վրա ուժեղացնելու, նույն նպատակով երկրի բանուկ ճանապարհների ցանցը ընդարձակելու, շերամաբուծությունը, մետաքսագործությունը, արհեստագործությունը և դրանց հետ կապված առևտրական կապիտալի զարգացմանը զարկ տալու, պետական գանձարանի և արքունիքի հասույթներն ընդլայնելու և այլ բնագավառներում Իրանի վարած քաղաքականությունը համապատասխանում էր հայերի գաղթաբնակեցման ուղղությամբ շահ Աբբասի նպատակադրումներին։ «Մեծ սուրգունը» ոչ միայն նրա ռազմական վայրագ տակտիկայի արդյունքն էր, այլև կապված էր նրա պետական և ռազմական ռեֆորմների հետ։ Նպատակ ունենալով թրքախոս կըզըլբաշ ցեղապետերի վրա ուժեղացնել ֆեոդալական նորաստեղծ բյուրոկրատիայի ազդեցությունը, նա կազմակերպեց հատուկ հեծելազոր, թնդանոթաձիգների, հրացանավորների և հեծյալ ղուլերի (ստրուկների) մշտական զորամասեր։ Եթե առաջին երկուսը հավաքագրվում էին պարսիկներից, վերջինները, ենիչերիների օրինակով, կազմվում էին մանկուց ստրկագրված ու իսլամացված օտարազգիներից, գլխավորապես վրացիներից և հայերից։ Ղուլերի ուժին ապավինած՝ շահական բռնատիրությունը ձլու հպատակության էր դատապարտում նվաճված ազգություններին և միաժամանակ հակակշիռ ստեղծում ինքնապաստան կըզըլբաշ ցեղապետերի հանդեպ։ Ժառանգական ֆեոդալների փոխարեն նա պետական ապարատը համալրում էր իր պաշտոնյաներով, որոնք քոչվոր ֆեոդալներից-զատ հենվելու էին պարսիկ հոգևորական և առևտրական վերնախավերի վրա։

Սրանք նորամուծություններ էին, որոնք, չփոխելով իշխող ֆեոդալիզմի բնույթը, սոցիալական բռունցք էին ստեղծում կենտրոնի դեմ հեստող ժառան-

պական բեկլարբեկիների ու խաների դեմ։ Հարկ լինելու դեպքում Սեֆյանները սրանց փոխարինում էին իրենց հավատարիմներով։ Այս տեսակետից ուսանելի օրինակներ են տալիս մեզ Անդրկովկասի հայաբնակ մարզերի վրա իշխանություն բանեցնող բեկլարբեկիությունները։ XVI դարի 40-ական թվականներին Գանձակի բեկլարբեկության մեջ խաների տիտղոսով իշխում էր Զիադօղլու ղաջար ցեղին պատկանող կըզըլբաշ ամիրների սերունդը, որը հարատևեց մինչև XIX դարի սկզբները։ Միայն XVIII դարի կեսերին է, որ Ղարաբաղի սահմաններում հաստատվեց Փանահ խանի սերնդի իշխանությունը։ Այլ դրություն ստեղծվեց Երևանի բեկլարբեկության մեջ, որտեղ XVI դարում իշխում են կըզըլբաշների Ռումլու և Ուսթաջլու ցեղերի ամիրները։ Ընկրկելով շահ Աբբասի քաղաքականության առաջ XVII դարում սրանք տեղի տվին նշանակովի խաներին, որոնց իշխանությունը ժառանգական չդարձավ անգամ Ամիր-Գունա խանի սերունդների մեջ։ 1636 թ. հետո Երևանում միմյանց հաջորդեցին 13 խաներ, որոնցից միայն մեկը Ամիր-Գունայի սերնդից էր, մնացած բոլորը շահի հավատարիմ ղուլերից էին։

## 4. ՆՈՐ ԸՆԴՀԱՐՈՒՄՆԵՐ XVII ԴԱՐԻ 20—30-ԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐԻՆ

1605—1610 թթ., երբ կըզըլբաշների բանակը շարունակում էր հաղթական նվաճումներ կատարել Ադրբեջանում, Վրաստանում, Արարատյան երկրում և Հայաստանի այլ շրջաններում, որոնք ենթարկվել էին արշավող բանակների ավերածությանը, մոլեգնում էր սովը, իսկ ջալալի հրոսակախմբերը անարգել ասպատակում էին Արարատյան երկրի գավառները, բնակչության ձեռքից խլելով ապրուստի վերջին միջոցները։ Ջալալիների դեմ հայ ազգաբնակչության դիմադրությունը գլխավորում էր Գեղարքունյաց Մելիք-Շահնազարի որդի Մելիք-Ավրին, որը ծանր մարտերում մի քանի անգամ պարտության և փախուստի մատնեց լեռնային շրջաններում թաքնված հրոսակախմբերին[48]։

1607 թ. շահ Աբբասը գրավեց Դմանիսին, Գորու և Թիֆլիսի բերդերը և ձեռք բերած ռազմական ավարն ամբողջությամբ փոխադրեց Երևանի բերդը։ Թիֆլիսից անցավ Գեղարքունիք և Սոթքի Մաղրա գյուղում հյուրընկալվեց Մելիք-Շահնազարի կողմից։ Շահը հատուկ հրովարտակով Գեղարքունիքի մելիքությունը նորից շնորհեց նրան և նրա ժառանգներին։ Բացի դրանից նրանց նվիրեց նաև մի քանի գյուղեր և ավաններ[49]։ Անցնելով Երևանով, շահ Աբբասն այնտեղ թողեց հատուկ պարտավեն զորամասեր, որոնք հիմնովին վերանորոգեցին բերդը, ամրացրին պարիսպները և մի քանի ամիս հետո գնացին Նախիջևան՝ միանալու կըզըլբաշների երևանյան բանակին։

Այս շրջանում Ամիր-Գունա խանը եռանդուն գործունեություն էր ծավալում Արարատյան երկրին սահմանակից քրդական աշիրաթապետերին հրապուրելու և նրանց շահ Աբբասի իշխանությանը ենթարկելու ուղղությամբ։ Ի պատասխան ջալալի հրոսակախմբերի դեպի Գեղարքունյաց գավառը կատարած ասպատակությունների, Ամիր-Գունա խանը Ալաշկերտի վրայով իր զորքերով արշավեց մինչև Վանի և Արծկեի կողմերը և վերադարձավ Նախիջևան։ Նա իր հետ բերեց նաև այդ վայրերում բնակվող քրդական աշիրաթների ամիր-

[48] «Մանր ժամանակագրություններ», հատ. I, էջ 184—185։
[49] Տե՛ս Առ. Դավրիժեցի, էջ 96։

ների, որոնք ընդունեցին շահի գիրիշխանությունը և հաստատվեցին իրենց տեղերում։

1609 թ. Փոքր Ասիայի ջալալիների վերջին զորախմբերը, որոնք պարտություն էին կրել Կոստանդնուպոլսից ուղարկված զորքերից, Մուհամմադ փաշա Կալենդար-օղլու գլխավորությամբ նահանջեցին, եկան հասան Էրզրումի և Կարսի փաշայության սահմանները և դեսպաններ ուղարկեցին Ամիր-Գունա խանի մոտ՝ խնդրելով իրենց ապաստան տալ։ Ամիր-Գունա խանն ընդունեց նրանց և ժամանակավորապես բնակեցրեց Էջմիածնում։ Որոշ ժամանակ հետո շահի կարգադրությամբ ջալալի վտարանդիները տեղափոխվեցին Թավրիզ, ապա՝ Ղազվին։ Նրանցից շատերը Ատրպատականի տարբեր շրջաններում իկթաներ ստացան։ Մեկ տարի անց ջալալի հրոսակախմբերից շուրջ երկու հազար հոգի Կարա-Սայիդի և Աղաչդանփիրիի հրամանատարությամբ մասնակցում էին Ամիր-Գունա խանի գլխավորությամբ դեպի Արդահան կատարվող արշավանքներին[50]։

Ամիր-Գունա խանը մեծ եռանդով աշխատում էր վերաբնակեցնել հատկապես Երևանի շրջակայքում գտնվող ամայի գյուղերը։ Այդ նպատակով նա մի քանի անգամ արշավանք կազմակերպեց Կարսի, Էրզրումի, Վանի և Մուշի շրջանները և այնտեղից մեծ թվով հայ ռայաթների իրենց ընտանիքներով քշեց-բերեց և բնակեցրեց Արարատյան դաշտի ավերակ գյուղերում։

Չնայած շահի խիստ հրամանին՝ Երևանի շրջակայքում և հատկապես սահմանամերձ շրջաններում վարուցանք չկատարել՝ քանի դեռ թուրքերի հետ հաշտություն չէր կայացված, ձեռներեց խանը կարողանում էր համոզել շահին և թույլտվություն ստանալ որոշ վայրերում վարուցանք կատարելու։

Խոսելով Ամիր-Գունա խանի նախաձեռնությամբ սկսված շինարարական աշխատանքների մասին, Իսքանդար Մունշին գրում է.

«Որովհետև ամեն անգամ օսմանյան բանակը արշավելիս Երևանի կողմերով էր անցնում, դրա համար էլ կարգադրված էր, որ քանի դեռ պատերազմական վիճակը շարունակվում է, այդ կողմերի հողերը չմշակեն, որպեսզի հակառակորդի բանակը այդտեղից անցնելիս պաշար չկարողանա ձեռք բերել։ Բայց Ամիր-Գունա խանը խնդրեց շահին թույլատրել, որպեսզի զինվորները իրենց և ձիերի համար բերդի մերձակա վայրերում որոշ չափով վարուցանք կատարեն և եթե մինչև հունձը լուր ստացվի, որ հակառակորդի բանակը մուտք է գործել այդ կողմերը, անմիջապես կարելի է ամբողջ բերքը ոչնչացնել, իսկ եթե ոչինչ չպատահի, մեկ օրվա մեջ կարելի է հնձել ու փոխադրել բերդը և դրանով ապահովել զինվորների պաշարը։ Այսպիսով, զինվորները բերդի շրջակայքում և մոտակա այլ վայրերում բավական վարուցանք կատարեցին, իսկ Երևանի հասարակ ռայաթներից շատերը, որոնք այս ու այն անկյունում թաքնվել էին..., շինարարության հոտ առնելով մեկ-մեկ, երկու-երկու դուրս էին գալիս և առանձին վայրերում երկու-երեք տուն հավաքվելով սկսում էին հողը մշակել»[51]։

Շարունակելով նկարագրել Ամիր-Գունա խանի կողմից գլխավորվող հաղթական կռիվները, որոնք մղվում էին հատկապես Կարսի շրջանում, Իսքան-

---

[50] Տե՛ս Իսքանդար Մունշի, հատ. II, էջ 787—788։
[51] Նույն տեղում, էջ 740։

դար Մունշին տալիս է նաև Մաղասբերդի, Մժնկերտի, Կարսի, ինչպես նաև Մակվի ու Բայազետի բերդերի գրավման մանրամասն նկարագրությունը[52]։

Ասպատակության, ավարառության ու բնակչության զանգվածային տեղահանության նպատակով կազմակերպվող հաճախակի արշավանքների ընթացքում փոփոխվում էր Հայաստանի կենտրոնական նահանգների, հատկապես դաշտային շրջանների բնակչության ազգային կազմը։ Հողագործ ռայաթների մեծամասնությունը թեև նորից մնում էին հայերը, սակայն փոքր թիվ չէին կազմում ամայացած գյուղերում հաստատված քոչվորության բեկորները, որոնք արդեն նստակեցության անցնելով, սկսել էին զբաղվել հողագործությամբ։

Ամիր-Գունա խանի համար ավելի շահավետ էր, սակայն, ունենալ հայ ռայաթներ, որոնք բազմաթիվ այլ հարկերից բացի կանխիկ դրամով վճարում էին նաև հատուկ գլխահարկ՝ «ջիզյա»։ Հայ ռայաթներից գանձվող գլխահարկը չափազանց մեծ գումար էր կազմում, որ նախապես հաշված էր ու արձանագրված նահանգային հարկային մատյաններում։

Գաղթական գյուղացիներից շատերին բնակեցնելով հատկապես պետական գյուղերում, խանը, այդպիսով, ապահովում էր իր իշխանության սահմաններում գանձվող հարկերի այն ընդհանուր գումարը, որը նախատեսված էր պետական եկամուտներում։ Այդ իսկ պատճառով ձեռք բերելով շահի հատուկ թույլտվությունը, նա ամեն կերպ՝ թե սիրաշահելով և թե բռնի կերպով, հետևողականորեն վերաբնակիցնում էր մեծ գաղթի ժամանակ ամայացած գյուղերն ու ավանները։ Երկրի արագ վերաբնակեցման հարցում նշանակալից դեր էր խաղում այն, որ Արարատյան դաշտը, լինելով համեմատաբար ավելի արգավանդ մի երկիր, վերաբնակյալներին հնարավորություն էր տալիս արագ կերպով հիմք դնելու և զարգացնելու նոր տնտեսություն։

Հայ բնակչության նկատմամբ Ամիր-Գունա խանի ցուցաբերած հատուկ բարյացակամ վերաբերմունքի մասին է վկայում XVII դարի պատմիչ Զաքարիա սարկավագ Քանաքեռցին։ Վերջինս նրան անվանում է «այր քաջ և սրտապինդ և արի ի պատերազմունս, անահ և աներկիւղ, շէնարար և սիրող քրիստոնէից», որ «ի տիրելն իւրում Երևանայ, իսկոյն ձեռն էարկ շինութեան և մարդաշատութեանն։ Նախ սկսաւ շինել զբերդն և ապա ապարանս և զայգիս և զբուրաստանս և զպարտեզս և հանել ջուրս և առաւելուլ զջուրսն։ Այլև ի տեղիս տեղիս թեթևացոյց զհարկն և եբարձ զծանր լուծ ի պարանոցէ ռամկաց։ Բայց ղի բազմացոյց զսուխրայն, այսինքն կոռն...»[53]։

1612 թ. հաշտություն կնքվեց Սեֆյան Իրանի և օսմանյան Թուրքիայի միջև, որ տևեց ընդամենը չորս տարի։ 1616 թ. թուրքերը նոր հարձակում սկսեցին Երևանի վրա, որը, սակայն, նրանց չհաջողվեց գրավել։ Երկու ու կես ամիս տևող պաշարողական մարտերից հետո թուրքական բանակի հրամանատար Մուհամմադ փաշան համոզվեց, որ իր զորքերը կտրված են թիկունքից, ուստի հաշտության առաջարկով դիմեց շահին և խնդրեց, որ վերջինս կարգադրի թիկունքում գործող կըզըլբաշներին թույլ տալ թուրքական զորքերին նահանջելու դեպի էրզրում։

---

[52] Տե՛ս նույն տեղում, էջ 741—742։

[53] Զաքարիա Սարկավագ. Պատմութիւն, հատ. I, Վաղարշապատ, 1870, էջ 45։ Այսուհետև՝ Զաքարիա Սարկավագ։

Թուրքերը նահանջից անմիջապես հետո շահը Գեղարքունիքից իջավ Երևան՝ անձամբ ստուգելու բերդի ամրությունները, որը նրա հատուկ հանձնարարությամբ կառուցել էին 1607 թ.։ Այս ժամանակ է, որ բերդի պաշտպանություն և Արևմտյան Հայաստանում մղված հաղթական կռիվների համար Ամիր-Գունա խանին շնորհվեց «Սարու ասլան» (խարտյաշ առյուծ) տիտղոսը։

1618 թ. գարնանը թուրքերը ծովակալ Խալիլ փաշայի հրամանատարությամբ Ատրպատականի ուղղությամբ նոր արշավանք սկսեցին։ Օգտվելով շահ Աբբասի բացակայությունից (շահն այդ ժամանակ գտնվում էր Շիրվանում), թուրքական բանակը մեծ ավերածություններ գործեց, սակայն Սարաբի մոտ պարտություն կրելով, ետ նահանջեց։ Այս ընթացքում նրանք Մարանդից, Խոյից, Սալմաստից 30 հազար հայ և ադրբեջանցի գյուղացիներ քշեցին դեպի Վանի ու Դիարբեքիրի կողմերը։

Նույն թվականի աշնանը նորից հաշտություն կայացավ կողմերի միջև, որը մի քանի անգամ ընդհատվեց նոր ընդհարումներով։ Իսկ Երևանի ուղղությամբ լուրջ գործողություններ տեղի չունեցան։ Այս բանին նպաստում էր հատկապես Էրզրումում և նրա շրջակայքում Աբազա փաշայի գլխավորած (1623—1627) ապստամբությունը, որը օժանդակություն էր գտնում աշխատավորության տարբեր խավերի կողմից և գնալով ավելի ու ավելի մեծ ծավալ էր ստանում։ Աբազայի շարժումը ոչ միայն խանգարում էր թուրքական զորքերի առաջխաղացմանը դեպի Երևան, այլև զգալի թվով ենիչերական զորամասերի ստիպում էր երկարատև ու ապարդյուն կռիվներ մղել ապստամբ զորքերի դեմ։

1625 թ. Մեծ Մովրով Գեորգի Սահակաձեի գլխավորությամբ Վրաստանում խոշոր ապստամբություն բռնկվեց։ Ապստամբների դեմ մղվող արյունահեղ կռիվների ընթացքում Ամիր-Գունա խանը ծանր վերք ստացավ, վերադարձավ Երևան և վախճանվեց նույն թվականին։ Ամիր-Գունա խանի բեկլարբեկության քսան տարիների ընթացքում (1605—1625) երկրի գյուղատնտեսության վերականգնման և արտադրողական ուժերի զարգացման ուղղությամբ ձեռնարկված միջոցառումները, որոնք շարունակվեցին նաև նրա որդու՝ Թահմազկուլի խանի օրոք, մեծ չափով նպաստեցին հետագա տնտեսական վերելքին։

1629 թ. հունվարին շահ Աբբաս I-ի մահից անմիջապես հետո Սպահանում գահ բարձրացավ նրա թոռ Սաֆին։ Նորընծա շահը թագավորության առաջին տարիներին ստիպված էր ետ մղել թուրքական զորքերի կողմից ձեռնարկվող սպառնալից գրոհները։

Շահ Աբբասի նման ուժեղ հակառակորդի մահը քաջալերում էր սուլթան Մուրադին և հուսադրում նրան վերջնական հաղթանակի։ 1630 թ. գարնանը թուրքական խոշոր մի բանակ Խոսրով փաշայի հրամանատարությամբ արշավանք սկսեց դեպի Բաղդադ, որը, սակայն, հաջող վախճան չունեցավ։

Հաջորդ տարին Ամիր-Գունա խանի որդին՝ Թահմազկուլի խանը, որ հոր մահից հետո ստանձնել էր Արարատյան երկրի բեկլարբեկությունը, մեծ արշավանք կազմակերպեց դեպի Արևմտյան Հայաստանի գավառները և կարողացավ հասնել մինչև Արծկե և Խլաթ։ Արշավանքը հատկապես ուղղված էր այս շրջաններում բնակվող Մահմուդի և այլ քրդերի դեմ, որոնք անընդհատ ասպատակում էին Արարատյան երկրի սահմանամերձ շրջանները։

Թահմազկուլի խանի արշավանքների ընթացքում այնքան չտուժեցին քրդական աշիրաթները, որոնք փակվում էին Արճեշի, Արծկեի, Խլաթի և այլ բեր-

գերում, որքան հայ գյուղական բնակչությունը, որոնց այս անգամ կըզըլբաշները քշում, տանում էին Արարատյան նահանգի ամայացած գյուղերում բնակեցնելու։

1632 թ., երբ շահ Սաֆին մեծ թվով կըզըլբաշ զորքերի գլուխն անցած փորձում էր արյան մեջ խեղդել վրաց Թեյմուրազ թագավորի գլխավորած ապստամբությունը, թուրքական մի նոր արշավանք ավերածության մատնեց Շիրակի դաշտն ու Ապարանի, Կարբու և Կոտայքի գավառները։ Թուրքական հրոսակախմբերին հերոսական դիմադրություն ցույց տվեցին Եղվարդ գյուղի բնակիչները։ Ոտքի են ելնում նաև Քանաքեռ, Նորագավիթ, Վաղարշապատ, Օշական և այլ գյուղերի բնակիչները և հակահարված տալով, փախուստի մատնում կողոպտիչներին։

Ռազմական գործողությունները մեծ ծավալ ստացան 1635 թ. ամռանը, երբ սուլթան Մուրադը 400 հազարանոց բանակով եկավ ու պաշարեց Երևանի բերդը։ Պաշարումը տևեց ընդամենը յոթ օր։ Թահմազկուլի խանը համարյա առանց դիմադրության հանձնեց բերդը և կալվածքներ ստանալով Սկյուտարի մոտ, գնաց Թուրքիա։ Թուրքական զորքերը համարյա առանց դիմադրության գրավեցին նաև Մակվի ու Բայազետի բերդերը և մտան Թավրիզ։ Այս նվաճումը տևեց ընդամենը երեք օր։ Եվ երբ շահ Սաֆիի զորքերը մոտեցան Թավրիզին ու սկսեցին քաղաքը օղակել, թուրքերը խուսափելով պաշարումից, Խոյի և Սալմաստի վրայով հեռացան դեպի Վան։ Նույն թվականի դեկտեմբերին արդեն կըզըլբաշները պաշարել էին Երևանի բերդը, որտեղ թուրքերը մոտ երեք ու կես ամիս կատաղի դիմադրություն ցույց տվեցին և ի վերջո, մի քանի ուժեղ գրոհներից հետո, 1636 թ. մարտի 26-ին կըզըլբաշները թափանցեցին պարիսպներից ներս և գրավեցին բերդը։



Երևանի համայնապատկերը (ըստ Ժ. Շարդենի, XVII դ.)

Այս դեպքերից հետո Հայաստանում այլևս նման խոշոր ռազմական գործողություններ տեղի չունեցան։ 1638 թ. թուրք-պարսկական պատերազմների թատերաբեմը տեղափոխվեց Միջագետք, իսկ Արարատյան երկրի կենտրոնա-

կան գավառները հարձակման ենթարկվեցին Էրզրումի փաշայության զորքերի կողմից, որոնց միացել էին Ղրիմից բերված 500 թաթարներ։

1639 թ. Կոստանդնուպոլսում կնքված հաշտությամբ, Բաղդադը և Արաբական Իրաքը անցան թուրքերին, իսկ Անդրկովկասի սահմանները մնացին անփոփոխ[54]։ Սկսվեց տևական խաղաղության մի շրջան, որը նշանավորվեց տնտեսական և մշակութային կյանքի որոշակի վերելքով։

## 5. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԻՃԱԿԸ 1639 Թ. ԿՆՔՎԱԾ ԹՈՒՐՔ-ԻՐԱՆԱԿԱՆ ՀԱՇՏՈՒԹՅՈՒՆԻՑ ՀԵՏՈ

Օսմանյան Թուրքիայի և Սեֆյան Իրանի միջև ստեղծված կայուն խաղաղությունը մեծապես նպաստում էր երկու երկրների տնտեսական վերելքին և առևտրական հարաբերությունների զարգացմանը։

Ժամանակակից աղբյուրները նշում են դարամիջին Թուրքիայի ճանապարհներով իրանական հում մետաքսի արտահանման աճը։ Կ. Պոլսից մինչև Սպահան երթևեկություն էր «առանց երկյուղի և ահու» գրում է ժամանակակից պատմիչը[55]։

1636—1638 թթ. Իրանում դեղերած Օլեարիի վկայությամբ՝ Գիլանը արտադրում էր 8 հազար հակ հում մետաքս, Մազանդարանը՝ 2 հազար, Շիրվանը՝ 3 հազար, Ղարաբաղը՝ 3 հազար, Վրաստանն ու Հայաստանը՝ 5 հազար։ Արտադրած մետաքսից երկրում մնում էր մեկ հազար հակ, մնացած 20 հազարը՝ արտահանվում էր։ Երեսուն տարի անց ուղեգիր Շարդենը Իրանի արտահանած հում մետաքսի քանակը 22 հազար բեռ (44 հազար հակ) էր հաշվում, որոնցից 12 հազար բեռը՝ Գիլանից, 3 հազարը՝ Խորասանից, նույնքան Շիրվանից և 2 հազարը՝ Ղարաբաղից[56]։

Եթե նույնիսկ անվերապահորեն ստույգ չհամարենք այս տվյալները, դարձյալ հավանական կմնա այն վերելքը, որ 1639 թ. կնքված պայմանագրից հետո ունեցել էր Իրանի արտաքին առևտուրը։

Իրանի և Թուրքիայի առևտրական կապերի ամրապնդումը մեծապես նպաստավոր եղավ շահական և սուլթանական կառավարությունների կողմից հովանավորված հայ առևտրական կապիտալի զարգացման համար։ Առավել շոշափելի էր, մանավանդ, Իրանի և Թուրքիայի առևտրական կենտրոնների՝ Նոր Ջուղայի և Կ. Պոլսի հայ մեծատունների ու խոջաների նյութական բարեհաջողությունը։

Եվրոպական ուղեգիրների պատմելով Նոր Ջուղայի խոջաների մեջ կային այնպիսիները, որոնց կարողությունը 60—200 հազար թումանի էր հասնում։ Նոր Ջուղայի հայերը պետական գանձարան էին մուծում կես միլիոն թումանից ավելի հարկ։ Շահին ու խոշորագույն ֆեոդալներին պատկանող հում մետաքսի և մետաքսամանվածքների վաճառումից ստացվող եկամուտը գանձվում էր դարձյալ նրանց ձեռքով։ Խոջայական վերնախավի կշիռը մեծ էր ոչ միայն Նոր Ջուղա արվարձանի, այլև համազգային գործերում։ Վճռական էր խոջաների դերը մանավանդ էջմիածնի կաթողիկոսների ընտրության հարցում։ Ազատ ելումուտ ունենալով արքունիքում, օտար երկրների հետ կապված խո-

[54] Թուրք-իրանական սահմանագծի մանրամասն նկարագիրը տե՛ս գլ. VI։
[55] Տե՛ս Զաքարիա Սարկավագ, Բ, էջ 26։
[56] Տե՛ս Chardin J., Voyage en Perse, Paris, 1811, հատ. II, էջ 112։

*շոր խոջաներից ոմանք ազդեցություն ու կշիռ ունեին անգամ Իրանի արտաքին քաղաքական խնդիրները վճռելիս։ Հաճախ իրանական կառավարությունը օտար պետությունների հետ կապված դիվանագիտական հանձնարարությունները վստահում էր նրանց[57]։ Եթե հայ պատմիչները XVII դարի առաջին քառորդը ներկայացնում էին որպես Արևելյան Հայաստանի ավերման պատմություն, նույն դարի երկրորդ և երրորդ քսանհինգամյակները բնութագրում են որպես նրա նորոգման պատմություն։ Առանձնապես աշխուժացել էր Թուրքիա տանող առևտրական մայրուղու վրա ընկած Երևանի շինարարությունը, նրա բնակչության և Արաքսի հովտում գտնվող ավանների ու գյուղերի կյանքը։ Ուշագրավ է Կարբի ավանի օրինակը Արարատյան դաշտում։ Զաքարիա Սարկավագը հիշատակում է այդ ավանի մեծատուն Հակոբջանին, որը առևտրական գործերով կապված էր Թուրքիայի հետ։ Նրա որդի Տոլվաթ բեկը բազմացրել էր հորից ստացած անասունների, այգիների, ջրաղացների թվաքանակը։ Վերջինիս եղբայրներից մեկը մնաց Թուրքիայում, մյուսը՝ Գիլանում։ Սրանց ունեցվածքը աճեց հաջորդ սերնդի օրոք՝ 90-ական թվականներին։ Հակոբջանի թոռ պարոն Այվազը ավանի համար կառուցեց հոյակապ եկեղեցի, որի բակը Որդկան գյուղից ջուր հասցրեց «փողրակաւ և գնդաւ» և գարնանը հորդացող ջրերը հավաքելու համար փորեց արհեստական լիճ[58]։*

*Արարատյան դաշտի գյուղերը կապվում էին շուկայի հետ և վաճառքի հանում իրենց արտադրանքը։ Տեղական խոջաները դրամական միջոցներ էին ներդնում՝ անշարժ գույքեր և եկամտաբեր կալվածներ գնելու համար, տիրում էին այգիների, ջրաղացների, դինգերի, տների, անասնահոտերի և անգամ ամբողջ գյուղերի։ Այսպես, Նորք, Նորագեղ, Եղվարդ, Ամիրի գյուղ և Ծայլի գյուղերը ամբողջությամբ կամ մասամբ պատկանում էին երևանցի խոջա Սիթին ու նրա ժառանգներին, Ղարաղոյունլու գյուղը խոջա Սուքիասի սեփականությունն էր[59]։ Իրենց հերթին Երևանյան երկրի խոշոր ֆեոդալները և էջմիածնի վանական տնտեսությունը մխրճված էին առևտրական և փողային ծավալուն գործարքների մեջ։ XVII դարի կեսերին, ինչպես Կենտրոնական Իրանում, այնպես էլ Արևելահայաստանում սերտ համագործակցություն կար հայ աշխարհիկ և հոգևոր կալվածատերերի ու ապրանքատերերի միջև։*

*Թուրք-իրանական առևտրի հանգույցակետերի հետ լծորդված Երևանի և Նախիջևանի երկրներում սկսում է աշխուժանալ քաղաքի մանր արհեստագործությունը և ծավալվել գյուղական տնտեսության ապրանքայնացումը՝ զարկ տալով ֆեոդալական ռենտայի իրացմանը։ Արարատյան դաշտի բերքն ու ֆեոդալներին վճարվող բնատուրքը՝ բամբակը, յուղը, պանիրը, ճրագուն, կաշին և այլն, արտահանվում էին Թավրիզի կողմերը։ Պիտի կարծել, որ փոխադարձաբար Երևանում վաճառահանվում էին Թավրիզի արհեստագործության ապրանքներն ու չոր մրգերը կամ Մակվի շրջանում մթերված հացաբույսերը։*

*Տնտեսական կյանքի աշխուժացմանը համընթաց վերականգնվում էին թուրք-պարսկական պատերազմների ընթացքում ավերված տներն ու քարավանատները, ճանապարհներն ու ոռոգման սիստեմը։*

---

57 Ալիշան. *Սիսական, էջ 419 և հտն. և 443։*

58 *Տե՛ս* Զաքարիա Սարկավագ, *II, էջ 131 և հտն.։*

59 *«Ջամբռ», էջ 121, 127 և հտն.։ Նաև Ս. Պողոսյան, Եկեղեցական հողատիրությունը Երևանի խանությունում XVII—XVIII դդ. («Երևանի համալսարանի գիտ. աշխատություններ», հատ. 13, էջ 149 և հտն.)։*

XVII դարի 60-ական թվականներին Նոր Ջուղայում կային հայ վաճառականների կառուցած ապարանքներ և 24 եկեղեցիներ, որոնց թվում նաև Ամենափրկիչ հոյաշեն վանքը։

Ապրանքա-փողային հարաբերությունների զարգացումը զարկ էր տալիս պետական հարկերի և ֆեոդալական ռենտայի աճին, ծավալվում էր վաշխառությունը և տեղի էր ունենում գյուղի ու քաղաքի զանգվածների տնտեսական քայքայում։ XVII դարի վերջին քառորդում այս ամենը նկատելի են դարձնում Իրանի տնտեսական այն վայրէջքը, որն իր հերթին պատճառ էր դառնում երկրի քաղաքական կյանքում հետզհետե նկատելի դարձող անկմանը[60]։ Այս երևույթն ուներ նաև արտաքին պատճառներ։

1622 թ. անգլիական և հոլանդական ռազմանավերի օգնությամբ շահ Աբբասը պորտուգալացիներից խլել Հորմոզ կղզին՝ հիմք դնելով Բանդար-Աբբասի նավահանգստին։ Այդ իսկ ժամանակից անգլիացիները Հորմոզում անմաքս ելումուտ ունեին և նրա եկամտի մի մասի տերն էին։ 1640-ական թվականների կեսերին նման իրավունքների հասան նաև անգլիացիների հետ մրցող հոլանդացիները։ Անգլիական և հոլանդական առևտրականներին հատկացված այդ արտոնությունները խախտում էին այն մենաշնորհը, որ Իրանի արտաքին առևտրի մարզում մինչ այդ վայելում էին հայ առևտրականները։ Դարավերջին արծարծվող տնտեսական տագնապը նվազեցնում էր երկրի առևտրական պահանջարկը, իսկ բարձր դասակարգի ներկայացուցիչները նախապատվություն էին տալիս անգլիական մահուդին՝ «լոնդրա»-ին և հնդկական շալերին[61]։

1667 թ. Շարդենը Սպահանում հիշատակում է «լոնդրա» անունով վաճառատեղին, որտեղ հայ վաճառականները բացառապես անգլիական ապրանք էին վաճառում։ Նա վկայում է, որ Եվրոպայից Հնդկաստան ու Հնդկաստանից Եվրոպա հայ վաճառականները քարավաններով հսկայական քանակով ապրանքներ էին փոխադրում։ Իրանական թավիշը, զարբաֆն ու կերպասը մասամբ արտահանվում էր Ռուսաստան, Լեհաստան և միայն աննշան չափով ներմուծվում Արևմտյան Եվրոպա, ուր իրանական հումույթի մշակումը ավելի էժան էր նստում[62]։ Արտասահմանյան շուկայի պահանջարկի նվազման հետևանքով Իրանի մանածագործությունը գնում էր դեպի վայրէջք՝ թե ծավալով, թե որակով։ XVII դարի վերջերին այս երևույթը մեծ վնաս էր հասցնում իրանահայ առևտրականներին և միաժամանակ նվազեցնում իրանական պետության եկամուտները։ Նվազ բացասական դեր չկատարեց Հնդկաստան տանող օվկիանոսային նորաբաց ուղու գործարկումը, որը ծանր հարված էր հասցնում Իրանի քարավանային առևտրին, միջազգային ապրանքափոխանակության մեջ բարձրացնելով ծովակալ տերությունների նշանակությունը։

Սրա հետ միաժամանակ XVII դարի վերջին քառորդում Իրանում զգալի էին դառնում ապրանքա-փողային հարաբերությունների զարգացման մյուս բացասական հետևանքները։ Ֆեոդալական ճնշումները և կեղեքումները սաստկանում էին. ծանրացող հարկերից ու տուրքերից զատ գյուղացիությունը ավելի ու ավելի էր նեղվում խանական վարչության և հարկահան պաշտոնյաների ու բարաթատերերի կեղեքումներից։ Վաշխառուներն ու ապրանքատե-

60 Նույն. „История Ирана...", էջ 266։
61 Նույն. *Tavernier J. B.*, Les six vojages, Paris, 1679, էջ 656։
62 Տե՛ս *R. du Mans*, Etat de la Perse en 1660, Paris, 1890, էջ 186 և հտն.։

րերը յուրացնում էին անմիջական արտադրողների վաստակի զգալի բաժինը՝ հագեցնելով թե իրենց և թե իշխանավորների անկշտում ախորժակը։

Ճնավճար և աշխատանքային հարկերից պատ[63] այլադավաններից, այդ թվում նաև հայերից, գանձվում էր նաև դրամական գլխահարկ («ջիզյա»)։ XVII դարի կեսերին յուրաքանչյուր տղամարդուց մեկ մսխալ (4,69 գրամ) ոսկի էր առնվում։ Դարի 30-ական թվականներին Օլեարին գլխահարկի չափը հաշվում էր գերմանական 2 ռայխսթալեր (8 աբասի)։ 1666 թ. գլխահարկի գանձումը Ագուլիսում կապալով էր տրվում, մարդագլուխ 12,5 աբասի հաշվով[64]։ Իհարկե, գլխահարկի պետական չափը դրանից ցածր պիտի եղած լիներ։ Բայց ակներև է, որ Օլեարիից հետո շուրջ 30 տարիների ընթացքում գլխահարկի չափը բարձրացել էր՝ անդրադառնալով փողային հարաբերությունների զարգացման զուգընթաց դրամական հարկերի աճման և հպատակների կենսամակարդակի անկման իրողությունը։ Հավասարապես ծանրաբեռնելով և՛ հարուստին, և՛ աղքատին, գլխահարկը խորացնում էր հպատակների անհավասարությունը և չքավորներին կախման մեջ դնում փողատերերից։ Դարի 60—70-ական թվականներին կարիքավորները ստիպված էին լինում վաշխառուների մոտ գրավ դնել իրենց ունեցվածքը կամ վարձով մշակել նրանց ցանքադաշտերն ու այգիները[65]։

Երբեմն անվճարունակ հայերը հարկահաններից ազատվում էին միայն հավատափոխությամբ։ Այսպես, Մակվի Թադեոս Առաքյալի վանքի վանահայրը իր հիշատակարանում 1691 թ. նշում էր. «Եւ քան զկարն աւելի հարկապահանջութեամբ նեղեն զազգն մեր և յոչ կարելն հատուցանել, յուրացութիւն անկանին»[66]։ Հավատափոխության սպառնալիքը դաժան մի միջոց էր, որը ոչ այնքան նպատակ ուներ կրոնադարձության հարկադրել հայերին, որքան նրանց եկեղեցական իշխանությունը ծառայեցնել պետական հարկերի գանձման գործին։ Անվճարունակ հարկատուների ապառիկները ծածկվում էին նույնիսկ եկեղեցու եկամուտների հաշվին[67]։ Այդ նպատակին էր ծառայում եկեղեցու գանձած դրամական առատ հասույթների մի մասը։

1639 թ. հաստատված խաղաղությունը նվազ նպաստավոր եղավ Թուրքիայի ու մասնավորապես Արևմտյան Հայաստանի համար, որի տնտեսական կյանքի հիմքերը խախտվել էին ոչ միայն տևական արտաքին պատերազմների, այլև 1595—1628 թթ. ընթացքում պարբերաբար կրկնված ու ծավալված ջալալիների ապստամբությունների պատճառով։

Ջալալիների ապստամբությունները երկրի ավերածության, անիշխանության, սանձարձակ կեղեքման ու ճնշման արդյունք էին։ Երկրի արտադրողական ուժերի անկումը, ենիչերական կամայականությունների սաստկացումը կենտրոնական իշխանության դեմ ոտքի էին հանում ներքին նահանգների զինվորներին, ուժեղացնում նրանց դասալքումներն ու տրտունջները, հանգամանք, որ իրենց նպատակների համար ճարպկորեն օգտագործում էին կենտրոնական իշխանությունից դժգոհ բանակի միջին օղակի ծառայողներն ու տե-

---

[63] Հարկերի մասին մանրամասն տե՛ս գլ. VI։

[64] Տե՛ս Զաքարիա Ագուլեցի, Օրագրություն, Երևան, 1938, էջ 68։ Այսուհետև՝ Զաքարիա Ագուլեցի։

[65] Տե՛ս P. Bedik, Chehil Sutun, Viennae, 1678, էջ 378։

[66] Մատենադարան, ձեռագիր № 3912, էջ 344ա։

[67] Տե՛ս Զաքարիա Սարկավագ, II, էջ 81։

գական մանր ֆեոդալները։ Ենիչերական ուժերի վրա հանգչող սուլթանական բռնատիրության դեմ 1595—1608 թթ. ծավալվում է Կարա-Յազիջիի ու նրա եղբոր՝ Դելի Հասանի գլխավորած շարժումը, որից մեծապես տուժում է Արևմրտյան Հայաստանի ու փոքրասիական նահանգների հայ գյուղացիությունն ու քաղաքաբնակչությունը։

Ազարիա Սասնեցին իր «Ողբ ի վերայ հարուածոց արեւելեան գաւառացն և աշխարհին հայոց ի ձեռաց ճելալեանց» խորագրով չափածո գրվածքի մեջ Սեբաստիայի նահանգի ավերման ու ավարառման մասին հայտնում է.

Եւ Եազըճին գարունն ելեալ,
Եւ ի Սեւաստ դիմաւորեալ,
Եւ զքաղաքն կոխեալ, առեալ,
Բազում աւարս ժողովեալ.
Զբոլոր երկիր գերեցուցեալ
Զինչս և զապրանս, յափշտակեալ.
Վասն այն սաստիկ մեծ սով ելեալ,
Եւ հաց ուրեք չեղև գըտեալ...[68]։

Մի ձեռագրում Մելիքսեթ եպիսկոպոս Սեբաստացին գրում է, թե Կարա Յազըչին «...Բազում աւուրս նստեալ յեզր քաղաքին այրեաց և աւերեաց զգեղեցկաշէն քաղաքն և զաւանքն մինչ զի ամայի մնաց Սեբաստիա թեմովն ու վիճակովն բազում ժամանակս»[69]։

Դելի Հասանի ապստամբության ժամանակ մեծապես տուժում է վաճառաշահ քաղաք Թոխաթն ու իր շրջակայքը, հայ ժողովրդի համար ստեղծելով չափազանց ծանր վիճակ։ Այդ մասին մեզ են հասել Ստեփաննոս Թոխաթեցու, Հակոբ Բաթուկենցի և Ազարիա Սասնեցու ողբերը։ Թոխաթի ու նրա շրջակայքի հայ բնակչությունը ջալալիներից ահաբեկված զանգվածորեն արտագաղթում էր երկրից։

Եւ բնակիչք միանգամայն
Եղեն ամենըն ցիր և ցան.
Յօտար երկիր պանդխտեցան՝
Ի Ֆրանկստան և Պարսկաստան.

գրում է Հակոբ Բաթուկենցը[70]։

Դելի Հասանի մահից հետո, ջալալիների շարժումը շարունակվում է ու ավելի ընդարձակվում։ Կազմակերպվում են բազմաթիվ ապստամբական նոր խմբեր, որոնք թուրք պատմագիր Քաթիբ Չելեբիի բառերով ասած «...զենք ու դինամթերք ձեռք բերելով, հեծյալ ու հետևակ առանձին խմբերով ցրվեցին երկրի տարբեր մասերը ու շարունակեցին թալանն ու կողոպուտը, բռնությունները ու բռնաբարությունները»[71]։

1608—1610 թթ. ծավալված մի նոր շարժման գլուխ է անցնում Ջանփոլադ-օղլին, որը ոտքի ելնելով սուլթանական իշխանության դեմ, հայտնի չա-

---

[68] «Հանդէս ամսօրեայ», 1936, էջ 328։

[69] Մատենադարան, ձեռագիր № 1875, էջ 229բ։

[70] Տե՛ս Ղ. Ալիշան, Հայապատում, էջ 609։

[71] Մ. Կ. Զուլալյան, Ջալալիների շարժումը և հայ ժողովրդի վիճակը օսմանյան կայսրության մեջ, Երևան, 1966, էջ 165։

փոլ արտահայտում էր նաև ինքնագլխության ձգտող քուրդ ցեղապետերի, ինչպես նաև Սիրիայի ու Լիբանանի արաբ բնակչության տղատարագձ տրամադրությունները։ 1622—1628 թթ. Արևմտյան Հայաստանում և Փոքր Հայքում ծավալվում է էրզրումի Աբազա փաշայի գլխավորած ջալալիների ապստամբությունը։ Ուղղված լինելով ենիչերիների դեմ, Աբազայի շարժումը նպատակ ուներ վերականգնել սուլթանական միապետությունը։ Փաստորեն, այս շարժումը ևս սնվում էր ժողովրդական զանգվածների կողոպուտով, չլատում կայսերապետության միասնությունն ու հզորությունը և դրսևորում նրա ներսում սաստկացող ֆեոդալական անկարգությունը[72]։

Աբազա փաշայի ապստամբության ճնշումով չէին վերանում «ջալալի» կոչված շարժումները։ Սրան հետևեցին նորերը։ 1632 թ. կառավարության դեմ ապստամբեց ինքը՝ Աբազա փաշայի ապստամբությունը ճնշող սերդար Խոսրեվ փաշան, որը կառավարական զորքերից պարտություն կրեց ու գլխատվեց նույն տարում։ 1648 թ. կառավարության դեմ մեծ ապստամբություն բարձրացրեց Սեբաստիայի վալի (կառավարիչ) Վարվար Ալի փաշան, որը ջալալիների մի մեծ բանակի գլուխ անցած շարժվում է դեպի մայրաքաղաք և պարտություն կրում։ Երկրի տարբեր մասերում ապստամբություններ են բռնկվում նաև հետագա տարիներին։

Ներքին և արտաքին պատերազմների համար նյութական միջոցներ հայթայթելու անհրաժեշտությունը մի կողմից, ապրանքա-փողային հարաբերությունների զարգացումը՝ մյուս կողմից, պատճառ էին դառնում, որ Թուրքիայում բացահայտ կողոպուտի կերպարանք ստանար քրիստոնյաների գերեվարումը, սարկացումն ու կեղեքումը, նրանց դատապարտելով լիակատար թըշվառության։

Նշված շարժառիթներից զատ, թուրք նվաճողները հայ աշխատավորներին գերեվարում էին նաև արքունի ռազմական շինությունների համար։ Թուրք-պարսկական պատերազմների ժամանակ արյունարբու սուլթան Սելիմը և Անդըրկովկասն ու Ատրպատականը կողոպուտի ենթարկող սուլթան Մուրադ III-ը խնայում էին Թավրիզի և Նախիջևանի հազարավոր հայ արհեստավորների կյանքը սոսկ այն պայմանով, որ նրանք Կ. Պոլիս փոխադրվեն՝ մայրաքաղաքի կառույցներում աշխատելու համար։ Թուրքական և պարսկական աղբյուրներում հայ «հյուսների» կամ «քարգործների» անվան տակ հաճախ հայ ճարտարապետներ էին գերեվարվում Արևմուտք՝ սուլթանների շքեղանքին ու սնապարծանքին հագուրդ տալու նպատակով[73]։

Արևմտյան Հայաստանում չկար միակերպ քաղաքական վարչություն։ Մի շարք գավառներում թուրքերի գերիշխանության տակ հարատևում էին քուրդ ամիրների ու ցեղապետերի ժառանգական տիրույթները, մնացած գավառներում գործում էր սուլթանի կողմից նշանակված փաշաների ռազմական և վարչական ապարատը։ Վիլայեթների փաշայության պաշտոնը արքունիքը հանձնում էր առավելագույն վճարողին։ Փաշաները հարկ էին վճարում սուլթանին և դրա փոխարեն անվերջ կողոպտում էին վիլայեթի բնակիչներին։ Այս ճանապարհով նրանք հայթայթում էին ոչ միայն պաշտոնի համար վճարած

---

[72] Ջալալիների մասին տե՛ս Մ. Զուլալյանի նախորդ ծանոթագրության մեջ նշված աշխատությունը։

[73] Տե՛ս Ա. Ալպօյաճեան, Պատմութիւն հայ գաղթականութեան, հատ. Գ, մասն Ա, Կահիրե, 1961, էջ 256։

*զինը, այլև ամրապնդում իրենց դիրքն ու պաշտոնը։ Եթե քուրդ ամիրների ժառանգական տիրապետության հենարանը նրանց զինված աշիրաթներն էին՝ հանդիսանալով «տեարք ընտանեաց և տանց, և գեօղից և անդաստանաց»[74], ապա հպատակներին կեղեքումների ենթարկող փաշաների հաճախ կարճատև և հենց այդ պատճառով աներասան իշխանության նեցուկը հանդիսանում էր սուլթանի հրամանին ենթարկված «ենիչերիների» և «ղուլերի» զինված ուժը։ «Եւ ունի սա ընդ ձեռամբ իւրով,—գրում է Էրզրումի փաշայի մասին Հակոբ Կարնեցին,—իսպահիք և գիւղօրէից տէրք, ենկիչարիք և բերթորէից պահապանք, թագաւորական ղուլ և ծառայ, որ տամբք և տեղօք են գրեալ կայ զանունս նոցա ի դրունս արքունի, որ հանապազ օլաֆայն և հացն կուտեն, և, ունի ԼՌ (30 հազար) ոգի, թող զքրդաց պարոնայքն, որ առանց դրի և թոշակի են»[75]։*

*Ենիչերիների անհաստատ ռոճիկը տրվում էր հպատակներից գանձվող հարկերի հաշվին։ Դա մի կատարյալ պատուհաս ու չարիք էր վերջիններիս համար։ XVI—XVII դարերում զինված այդ բանակն էր, որ հաճախակի ըմբոստանում էր սուլթանների դեմ, ուժ տալով ջալալիների շարժմանը, որոնց, ինչպես տեսանք, երբեմն գլխավորում էին կենտրոնի դեմ ապստամբած զինվորական փաշաները։ Ահավոր չափեր ընդունեց, մանավանդ, Էրզրումում Աբաղա փաշայի գլխավորած ապստամբությունը։*

*Երբեմն սուլթանները փորձում էին ջալալիներին բավարարել քուրդ ամիրների հաշվին և սա պատճառ էր դառնում վիլայեթների կեղեքման ու ճնշման, ինչպես նաև ամիրական ու փաշայական սիստեմների արյունահեղ բախումների։ Նման բախումներից մեծապես տուժում էր վիլայեթների հպատակ ժողովուրդը, մասնավորապես Արևմտահայաստանի գյուղացիությունը։ Ժամանակակիցները հիշատակում են Ջեզիրեի քուրդ Շարիֆին, որն ասպատակում ու ավերում էր Արևմտյան Հայաստանը, սովի և ընչազրկության դատապարտելով հայ բնակչությանը[76]։ Մեծապես տուժեց գավառահայ ռայան, մանավանդ ջալալիների ապստամբության հետ կապված ավերածություններից ու կողոպուտներից։ Ժամանակակիցները սոսկում առաջացնող գույներով են նկարագրում աննախընթաց այն սովը, որ առաջ եկավ թե Արևմտյան և թե Արևելյան Հայաստանում՝ XVII դարի սկզբներին տեղի ունեցած թուրք-իրանական պատերազմի և ջալալիների կատարած ասպատակությունների հետևանքով։ Ջալալիների երկյուղից գյուղացիները ամիսներով լքում էին իրենց տունն ու աշխատանքը, փախչում դեպի ամրացած վայրերն ու լեռների փապարները, որի հետևանքով հացի և ամեն տեսակի ուտելիքի ծայրահեղ սղություն առաջացավ[77]։*

*Արտաքին և ներքին անընդմեջ պատերազմների հետևանքով, որոնք շարունակվեցին մինչև 1639 թ., ավերվել էին Երևանի և Ձորսի, Լոռու և Փամբակի, Շիրակի և Կարսի, Վանի և Մուշի, Խնուսի և Ալաշկերտի շրջանները։ Տևական պատերազմներն ու ավերումները «այնպէս անապատ արարեն այս սահրաթ (սահմանամերձ) երկրներս, որ Արզրումայ հետ մինչև Երևան միայն*

---

[74] *«Մանր ժամանակագրություններ», II, էջ 397։*

[75] *Նույն տեղում, էջ 560։*

[76] *Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 519, էջ 78բ—79ա։*

[77] *Տե՛ս* Առ. Դավրիժեցի, *էջ 87։*

բերդորայքն ի շէն մնացին»[78]։ Հայերի արտագաղթը այս ժամանակ ձգվում էր դեպի Կ. Պոլիս, Բալկաններ, Լեհաստան, Ղրիմ և Սև ծովի եզրերը[79]։ Այս իրադարձությունների ի նկատի ունի XVII դարի կեսերին ապրած Առաքել Դավրիժեցին, երբ անապատի հետ է համեմատում Հայաստան աշխարհը, որի գավակները «վտարանդեալք և տարամերժեալ յերկիր օտար և յազգ այլասեռ և այլալեզու... որ աւուր առ սակաւ սակաւ նուազին»[80]։

1611 թ., Կ. Պոլսում եղած ժամանակ, Սիմեոն Լեհացին գրում էր, թե այդ քաղաքում հազիվ 80 տուն տեղաբնակ հայեր կան, մինչդեռ եկվորների քանակը 40 հազար տնից անցնում է։ Ընդսմին փոքր չէր հայ գաղթականների թիվը նաև Թուրքիայի եվրոպական նահանգներում։ «Ի Պուղտանայ մինչև Ստամպոլ, պութուն Ուռումէլին մինչև մեծն Վանատիկ» չկար քաղաք կամ գյուղ, կամ ավան, ուր չլինեին հայ ժողովրդի տարագիր բեկորներ[81]։

Պոլսահայ բնիկները կամ գավառներից գաղթած ու մայրաքաղաքում ունեցած հայ ամիրաներն ու խոջաները ժողովրդի հաշվին հարստանալու և գոփելու բացառիկ նպաստավոր հնարավորություն ունեին։ Նրանցից ոմանք որպես տուրքերի կապալառուներ և թուրք ավագանուն սպասարկող սեղանավորներ, վայելում էին նույնիսկ սուլթանների վստահությունն ու հովանավորությունը։ Գավառներում ևս կային չորպաճի կոչվածներ, որոնք իրենց բռի մեջ էին պահում տեղի ազդեցիկ երևելիներին։ Հարկավ խիստ վստահելի ու տևական չէր սրանց բացառիկ վիճակը սուլթանների ու փաշաների կամայականությունների տակ. սրանց սրընթաց վերելքը նույնքան դյուրությամբ էր տեղի ունենում, որքան և անակնկալ անկումը։

Հասարակական այս վերնախավերի հակապատկերն էր ժողովրդական զանգվածների վիճակը։ Սիմեոն Լեհացին նկարագրում է Սաամբուլի «եսիր բազարում» հայ գերիների վաճառահանման սրտաճմլիկ պատկերը. «Որք ծերք են և պառաւք նստել են։ Իսկ զաղջկունս և զմանկունս, զողայս և զաղլոբներս կանայս տէլլալնին առեալ ի ձեռս [?]՝ շուրջ ածէին և ծախէին որպէս զձի և զշորի. և զայս ժողովեալ ի տեղի ինչ կամ ի մօյտանի՝ իբրև զոչխարս ի փարախի։ Իսկ գնօղքն եկեալ բանային զերեսս և զծոցս կուս աղջկանց և զամենայն մարմինս նոցա շօշափէին յոտաց մինչև ի գլուխ, զի մի փոս, խոց կամ այլ ինչ ապի վեր ունիցին։ Եւ նոքա լուռ և անմռունչ կային, և զորս հաճէին՝ գնէին, և որոշեալ ի հօրէ, ի մօրէ կամ ի քեռրաց և յեղբարաց բաժանեալ առեալ տանէին ի տուն»[82]։ Խոսուն նկարագրություններ ունի Լեհացին նաև արևմտահայ բնաշխարհի հայ բնակչության մասին։ Արևմտյան Հայաստանի խրճիթները նա նմանեցնում է լուսազուրկ ախոռների, իսկ փոքր մուտք ունեցող խորափոր ու խավարչտին տնակներում պատսպարված քաղաքաբնակչության մասին գրում է, թե դատապարտված էին աղքատ ու տառապալից կյանքի, ինթակա զրկանքի և խտրանքի, զրպարտությունների ու տուգանքների և մանավանդ հավելյալ հարկումների։ Գավառական քրիստոնյաները զրկված էին լավ շուխա հագնելու կամ մեծ տուն ու այգի ունենալու իրավունքից։ Նրանց արգելված էր անգամ ձի, ջորի կամ էշ հեծնելը։ Հակառակ պարագային պետք

[78] «Մանր ժամանակագրություններ», II, էջ 566 և հտն.։
[79] Տե՛ս Առ. Դավրիժեցի, էջ 88 և 147 և հտն.։
[80] Նույն տեղում, էջ 54։
[81] Սիմեոն Լեհացի, *Ուղեգրություն*, Վիեննա, 1936, էջ 8։
[82] Նույն տեղում, էջ 18—19։

*է «ուլուխ» կոչված դրամական տուգանք վճարեին։ «Ամեն տեղ եղ կու բանեցնեն, աղ ու բեռ բառնան, այլև հեծնան»,—գրում է Լեհացին[83]։*

*Երեսնական թվականների մասին Հակոբ Կարնեցի ժամանակագիրը գանգատվում էր, որ Թուրքիայում «ցեղ ու ցեղ և ազգի-ազգի սուտ պատճառաւ հարկապահանջութիւնն և կեղեքելն անասելի է և անպատմելի, և անողորմ տուգան առնուն ի քրիստոնէից»[84]։ Ավելի ուշ՝ 1667 թ. Սամուել դպիր Էրզրումցին տրտնջում էր «որ անրուժելի կողոպտին զմեզ որպէս աւազակ ի լեռնի»[85]։*

*Մեծ չարաշահումներ էին լինում, մանավանդ, ջիզյեի գանձման ժամանակ։ Տակավին Սիմեոն Լեհացին էր նշում, որ խարաջը (ջիզյեն) գանձվում էր անգամ ընտանիքի պանդխտած անդամների դիմաց։ Դարավերջին Վանում մարդագլուխ 1,5 ոսկի խարաջ էին առնում։*

*Խարաջի հիմնական չափից զատ սահմանված էր նաև հավելյալ տուրք։ 1698 թ. ռես Միրաքը կազմում էր արհեստավորների վճարելիք «աւելորդ գլխահարկի» հատուկ ցուցակ, «ամենայն ոք թէ ուսթաքար և թէ ռամիկ տացէ զխարաջն ըստ դիպման աւուր և ժամանակի»։ Այս հիման վրա Վանում մարդագլուխ «մէկ-մէկ ռուպ (քառորդ) խարաջի կոտոր (հավելյալ հարկ) ժողովեցին»[86]։*

*Արևմտյան ռազմաճակատի կարիքները հոգալու պատրվակով թուրք հեծյալները բռնագրավում ու վաճառում էին անգամ վանքերի ու եկեղեցիների խաչերն ու ավետարանները, ավարի ենթարկում հայ գյուղերն ու բնակավայրերը։ Հարկահանումը ստանում էր կողոպուտի բնույթ, պատճառ դառնալով նստակյաց բնակչության նորանոր արտագաղթերի։ Ռազմական ավարառումներից զատ, սաստկանում էին քուրդ ու թուրքմեն ցեղապետերի կամ ջալալի դարձած «զորբաների» ասպատակումներն ու կողոպուտները։ Հետևանքը եղավ այն, որ դարավերջին շուրջ հինգ տարի փախստական գյուղացիությունը դրկվեց հերկ ու ցանք անելու հնարավորությունից[87]։*

*Թուրքական նահանգներում իշխող բարբարոսության ու կամայականությունների այս ընդհանուր պատկերը ամբողջական էր դառնում Բաղեշի, Խոշաբի, Մոկսի, Ջուլամերիկի, Սպարկերտի, Խիզանի, Հզուի և քրդական կիսանկախ այլ ամիրությունններին հպատակվող հայ բնակչության ծանր կացությամբ։ Այս վայրերում խաֆիրության մատնված հայ գյուղացին քուրդ ամիրների ու բեյերի ճորտն էր, ենթարկված էր նույն կեղեքումներին ու կամայականություններին, որը հատկանշական էր օսմանյան ռայայի համար ընդհանրապես։*

*Օգտվելով արևմտահայ ժողովրդի ծանր վիճակից, իրենց պրոպագանդն ուժեղացնում էին կաթոլիկ միսիոներները, քարոզչական գործունեության հանգրվաններ դարձնելով միջազգային առևտրի ուղիների վրա ընկած հայաբնակ քաղաքները։ Հենարաններ ստեղծելով հայ հասարակության վերնախավում, նրանք հավատացնում էին, թե հայերի ազատությունը կարող է իրականանալ միայն «ֆրանկների» միջամտությամբ, որոնք, իբր թե, քրիստոնյաների ազատագրման համար է հենց, որ պատերազմում են թուրքերի դեմ։ Այս*

---

83 *Նույն տեղում, էջ 193—194։*

84 *«Մանր ժամանակագրություններ», հատ. II, էջ 563։*

85 Աշ. Հովհաննիսյան, *Դրվագներ, II, էջ 390։*

86 *«Մանր ժամանակագրություններ», հատ. II, էջ 417 հտն. և 420։*

87 *Տե՛ս «Հանդէս Ամսօրեայ», 1954, էջ 249 և հտն.։*

*բարոզչությունը նպաստում էր կաթոլիկության տարածմանը, որն, իր հերթին, Էրզրումում, Թոխաթում և Կ. Պոլսում սաստկացնում էր հայադավանների և նորադարձների բախումները[88]։ Հայ գյուղաշխարհը թափանցող «ֆրանկացած» ազգակիցները գայթակղության օրինակ էին դառնում գյուղացիների համար։ «Եւ որչափ բովանդակ գեղօրեք տեսեալ զֆրանկանալն քաղաքացւոյ իւրեանց, և գայթակղեալ ի նոցանէ ուրացան ամենքն զհաւատս Քրիստոսի» և այս այն հուսով, թէ «ֆրանկք գան և թագաւորութիւն հաստատեն մեզ»,—գրում է XVIII դարի սկզբներին արևմտահայ եկեղեցականներից մեկը՝ Գևորգ Մխլեիմյանը[89]։*

## 6. ՀԱՅ ԵԿԵՂԵՑՈՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ-ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԴԻՐՔԵՐԻ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ ՈՒ ՎԵՐԱՆՈՐՈԳՉԱԿԱՆ ՋԱՆՔԵՐԻ ՊԱՏՄԱԿԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

*Թուրք-իրանական տևական պատերազմների և Հայաստանում դրանց առաջացրած ավերումների ու քայքայման հետևանքները ակներև են նաև այն խոր տագնապից, որի մեջ XVII դարի առաջին քառորդում գտնվում էր հայ կյանքում իշխող գլխավոր գործոններից մեկը՝ ազգային եկեղեցին։ Նվազ նկատելի չէին այն դրական ջանքերը, որ ձեռնարկվում էին նույն դարի երկրորդ և երրորդ քառորդում՝ ազգային եկեղեցին տագնապալի վիճակից հանելու, հայ ժողովրդի ազգային-եկեղեցական միասնությունը վերականգնելու և նրա ազատագրական ջանքերը գլխավորելու ուղղությամբ։*

*Պատմական աղբյուրները մռայլ գույներով են ներկայացնում հայ եկեղեցու XVI դարի վերջերի և XVII դարի առաջին երկու-երեք տասնամյակների կացությունը։ Վանքերը, որոնք նախընթաց դարերում հանդիսացել էին հայ միջնադարյան գրականության և գիտության հանգրվանները, քայքայված և ամայացած վիճակում էին։ Եկեղեցական գիրն ու գրականությունն անգամ այդ ժամանակ չէին հետաքրքրում եկեղեցու սպասավորներին։ «Էր խափանեալ ընթերցումն սուրբ գրոց,—գրում է Առ. Դավրիժեցին,—որք էին արհամարհեալ յաչս նոցա, հողով և մոխրով լցեալ և անկեալ յանկեան ուրեք. վասն զի ոչ գիրս գիտէին և ոչ զօրութիւնս գրոց»[90]։ Գրչության կամ ընթերցման փոխարեն վանքերն ու վանականները տարված էին սեփական անդաստաններն ու գույքերը բազմացնելու, սեփական ոչխարների ու արջառների հոտերը աճեցնելու հոգսով։ Սևագլուխ սեփականատերերը վաճառքի էին հանում վանքի ու եկեղեցու գույքերը կամ փոխանցում իրենց ազգականներին ու հոմանիներին։ Ինչպես նշում է Դավրիժեցին, լքելով «հոգևոր» պարտավորությունները, նրանք անց էին կացնում իրենց օրերը հեշտասիրությամբ ու զվարճությամբ, գինարբությամբ, աշխարհիկ կատակներով ու խրախճանքով։ Աշխարհական իշխանների պես, նրանցից ոմանք հագնում էին մոռ ու մավի կամ կրում սուր ու հրազեն։ Լինում էին դեպքեր, որ սրանք տիրանում էին տանուտերերի ու մելիքների պաշտոններին[91]։*

---

88 *Տե՛ս Հ. Քյուրտյան, Ա. Տը-լա-Մոթռեի ուղեգրութեանն հայոց մասին։ Առանձնատիպ, էջ 8։*

89 Գեորգ վարդապետ Մխլեիմ-Օղլի, *Գիրք վիճաբանութեան ընդդէմ երկաբնակաց, Կ. Պոլիս, 1734, էջ 84։*

90 Առ. Դավրիժեցի, *էջ 290։*

91 *Տե՛ս* Առ. Դավրիժեցի, *էջ 288—290։ Հմմտ. նաև* Գր. Դարանաղցի, *Ժամանակագրութիւն, Երուսաղեմ, 1915, էջ 296 և հտն.։ Այսուհետև՝* Գր. Դարանաղցի։

Նման իրադրության մեջ XVI դարի վերջերին և XVII դարի սկզբներին էջմիածնի հայրապետական աթոռի վրա միաժամանակ բազմում էին մի քանի կաթողիկոսներ։ Տակավին կենդանի էր Առաքել կաթողիկոսը, երբ ձեռնադրվեց Դավիթը, որին հետզհետե աթոռակից դարձան Մելքիսեթը, Սրապիոնը, Սահակը և Ավետիսը։

Վանական կարգերի ու բարքերի չարափոխումը հավատացյալ զանգվածների ընդերքում աշխուժացնում էր դարերի խորքերում անթեղված աղանդավորության սերմերը։

1606—1620 թթ. Արցախի լեռնային շրջաններում տարածված էր Մեխլու անունով ուտիացի վանականի գլխավորած գյուղացիական շարժումը։ Մեխլուն սարկավագի աստիճան էր ստացել Գանձասարի վանքում, բայց շուտով կարգընկեց եղավ, քանի որ համայնքների սեփականություն էր հռչակում վանքապատկան գյուղերի հողերը։ Մերկացնելով ձրիակեր վանականների ընչամոլությունն ու զեխ կյանքը, նա քարոզում էր գույքերի հավասարություն, «քրձաղգյաց և խարազանազգեստ» վանականություն։ Մեխլուի քարոզները հանդիպեցին եկեղեցական ու աշխարհիկ կալվածատերերի թշնամանքին և, ընդհակառակը, համակրանք գտան վանական հողեր մշակող հողագործ ռայաթների մոտ։

Կղերի պահանջով Մեխլուն դուրս է քշվում Գանձակի բեկլարբեկության սահմաններից և անցնում Երևանի կողմերը՝ բազմաթիվ հետևորդներ ու ունկնդիրներ գտնելով Արևելյան Հայաստանի հայ և այլազգի գեղջուկների մեջ։ Ամբոխի ցասումը հրահրելով վանական կալվածատերերի դեմ, եկեղեցու բեմահարթակից ոտքերը կախ նստած, Մեխլուն վկայություններ էր բերում ինչ-որ «ժողովածուից», որի հիման վրա վտարանում էր վանականներին և հավաստիացնում, թե սևագլուխ սպանողներն «էն կյանքում» արժանանալու են արքայության։ Գնալով աճում էր Մեխլուի հետևորդների թիվը, և նրա քարոզները սպառնալից էին դառնում պորտաբույծ կղերի համար։ Մինչև իսկ Քանաքեռի տնարգել աղջիկներն էին ենթարկվում աղանդավոր աբեղայի խոսքի բժժանքին և իրենց երեսները քսում նրա հանդերձանքի փեշերին։ Ամիր-Գունա խանն ու էջմիածնի Ավետիս կաթողիկոսը արգելք են դնում նրա գործունեությանը, սակայն անօգուտ։ Խուսափելով հալածանքից, Մեխլուն իր քարոզչությունը շարունակում է Արևմտյան Հայաստանում, որտեղ նույնպես ենթարկվում է հայ կղերի և մահմեդական իշխանավորների հետապնդումներին[92]։

Մեխլուի քարոզների մեջ խաչաձևվում էին քրիստոնեական և մուսուլմանական աղանդների հայացքները։

Դժվար է որոշել, արդյո՞ք Քրիստոսի 12 առաքյալների, թե՞ շիաների 12 իմամների օրինակով է, որ հարյուրավոր հետևորդների միջից նա ընտրել էր 12 հոգուց բաղկացած հայ և ադրբեջանցի «թոփուզավորներ», որոնք, մահակներով կամ լախտերով զինված, որոնում և պատուհասում էին վանքերի հաշվին հղփացած եկեղեցականներին։ Որոշ կողմերով այս շարժման մեջ կարելի է տեսնել պավլիկյան և թոնդրակյան կամ Առաջավոր և Միջին Ասիայում տարածված աղանդների հեռավոր արձագանքները։ Մուսուլմանական որոշ աղանդապետերի պես Մեխլուն ևս հանդես էր գալիս քողարկված դեմքով. շուռ տված վեղարով ծածկում էր իր երեսը, իբր թե իրեն արժանի չհամարելով

92 Տե՛ս Զաքարիա Սարկավագ, II, էջ 47։

*նայելու երկինքին[93]։ Ժամանակակից Գրիգոր Դարանաղցին ճշտում է, թե մինչև մորուսի կեսը ծածկելով դեմքը՝ աչքերի առաջ Մեխլուն բացվածքներ էր թողել ընթերցանության համար։ Շքեղազգեստ վանականներից տարբերվելու համար նա կրում էր երկու մեխով ամրացրած այծի մազից հյուսված փալաս։ Դրա համար էլ նրան «մեխլու» անունն էին տվել[94]։ Ի դեպ, դիմաքողարկման այս ձևը առաջավոր-ասիական կրոնապայքարի մեջ կենդանի էր մինչև XIX դարի սկզբները։*

*Մեխլուի քարոզներն արձագանք են գտնում Նոր Ջուղայի քաղաքացիների մոտ, որոնց Դարանաղցին չի զլանում մեղադրել կենցաղային ու բարոյական արատների մեջ։ Ի դեպ, Նոր Ջուղայում է հենց, որ XVII դարի կեսերին հայտնի դարձավ դերձակ Թումիկի անվան հետ կապված նոր աղանդը։ Թումիկի հետևորդները ժխտում էին եկեղեցու բոլոր յոթ խորհուրդները, Քրիստոսի աստվածության, մեռելների հարության և վերջին դատաստանի առասպելները։ Սուր լեզու էին բանեցնում, մանավանդ, կղերի դեմ, մերժում էին եկեղեցական նվիրապետությունը՝ նշավակելով նրա ներկայացուցիչներին, որպես խաբեբաների[95]։ Նոր Ջուղայի ստորին հասարակախավերում նման հայացքների առաջացումը անսպասելի չէր։ Մտաբերենք, որ այդ քաղաքում հիշողության վառ հետքեր էր թողել Մելքիսեթ Գառնեցի խաչագող կաթողիկոսը։ Մեկը, որ պետությունից տարեկան 100 թուման կաշառքով («մուղադայով») էր գնել հայրապետական գավազանը և իր հերթին եկեղեցական եկամտաբեր պաշտոններ էր վաճառում ցանկացողներին[96]։*

*Թումիկի աղանդին վերջ դնելու համար Նոր Ջուղայի առաջնորդ Խաչատուր Կեսարացին 1642 թ. եկեղեցականների և աշխարհականների կրոնաժողով գումարեց Նոր Ջուղայում, նախապես գցելով եկեղեցիների դռները և ի վերջո բանադրելով «ժանտ և դժնաբարո» Թումիկին։ Թումիկը այդ բարձր հավաքույթի առաջ իսկ պաշտպանեց իր հայացքները, համոզված, թե իր կողմն է շատերի համակրանքը։*

*Թումիկի աղանդի հետ էին կապվում նաև նույն կրոնաժողովի կողմից դատապարտված ոմն Սև Պետրոսի հայացքները։ Նոր Ջուղայի կրոնաժողովը արձանագրում էր, թե Սև Պետրոսը և իր համախոհները հերձվածի մեջ էին ընկել իբրև «նոր մի Արիոս ու Նեստոր»։ Ըստ երևույթին Նոր Ջուղայի քաղքենի զանգվածների մեջ երևացել էին աղանդավորական տարբեր երանգի հայացքներ, որոնց դեմ պայքարելու համար հարկ եղավ եկեղեցական «մեծ սյունհոդոսի» հրավիրումը[97]։*

*Եթե Մեխլուն և իր հետևորդները կամենում էին վերջ տալ գյուղացիների կեղեքումներին՝ վանականներին ունեզրկելու ճանապարհով, նրա հակառակորդների շարքերից դուրս եկան եռանդուն քարոզիչներ, որոնք ձգտում էին վերջ տալ պորտաբույծ վանականությանը՝ մտավոր աշխատանքով զբաղվելու և անապատական կենցաղ կազմակերպելու միջոցով։ Սրանց թվին էին պատկանում Տաթևացի Մովսես և Մոկացի Պողոս վարդապետները, որոնք*

---

[93] *Տե՛ս* Զաքարիա Սարկավագ, *II, էջ 49։*

[94] *Տե՛ս* Գր. Դարանաղցի, *էջ 456։*

[95] *Տե՛ս* Խաչատուր աբեղա Ջուղայեցի, *Պատմություն Պարսից, Վաղարշապատ, 1905, էջ 115 և հտն.։ Այսուհետև՝* Խաչատուր Ջուղայեցի։

[96] *Տե՛ս* Առ. Դավրիժեցի, *էջ 436 և հտն.։*

[97] *Տե՛ս «Մանր ժամանակագրություններ», I, էջ 302 և հտն.։*

*վանական նոր սերունդ դաստիարակելու համար դպրոցներ բացեցին Շոռոթում, Աստապատում և Հովհաննավանքում։ Նման քարոզչությամբ էին զբաղվում նաև Սաղմոսավանքցի Սարգիս և Տրապիզոնցի Կիրակոս վարդապետները, որոնք 1610 թ. հիմնեցին այդ նպատակին ծառայող Տաթևի Հարանց Անապատը։ Մեծ Անապատի գործունեությունը, ինչպես ավելի հանգամանորեն ցույց է տրվելու սույն հատորի մշակույթի պատմությանը նվիրված բաժնում, լայն արձագանք գտավ։ Նմանատիպ անապատներ հիմնվեցին Լիմում և Կտուցում, Երևանում և Սևանում, Քաշաթաղի (Քշտաղի) Հոչանց գյուղում, Ջարեքադեւոի մոտերքում և այլ վայրերում*[98]*։*

*Անապատական շարժումը շփման որոշ կետեր ուներ Մեխլու աղանդապետի գլխավորած շարժման հետ։ Անապատականները ևս մերժում էին վանականների մասնավոր սեփականությունը, սակայն ի տարբերություն Մեխլուի, նրանք ոչ թե գյուղական համայնքների, այլ վանքերի «հասարակաց սեփականություն» էին հռչակում վանականների մասնավոր գույքը։ Դատապարտելով վանականների շվայտ կյանքը, նրանք քարոզում էին խստաբարո կուսակրոնություն, չորակեր էին, սնվում էին օրեկան մեկ անգամ, խստ հրաժարվում գինուց և մսից, շաբաթ և կիրակի օրերից զատ՝ պարտադիր էին համարում պահեցողությունը նաև շաբաթվա մնացած օրերին։ Նրանց մեջ կային նաև միայնակեցներ, որոնք թաղիքե կամ մազեղեն գլխանոց էին կրում և մերկ մարմնի վրա բրդե շապիկ ու կոպիտ վերնաշոր հագնում և քայլում ոտաբոբիկ։ Օրական մի քանի անգամ զբաղվում էին ժամասացությամբ, մյուս ժամերին՝ ընթերցանությամբ, դասատվությամբ և գրչության արվեստով*[99]*։*

*Եթե Մեխլուի շարժումը հանգում էր վանականության ժխտմանը, ապա անապատական շարժման գաղափարախոսները ձգտում էին բարենորոգման ենթարկել վանական կարգերը, վերականգնել հայ եկեղեցու հեղինակությունը և ընդլայնել նրա գործունեության ոլորտը։*

*Օգտագործելով շահ Աբբասի և Ամիր-Գունա խանի հովանավորությունը, Մովսես վարդապետը ջանք էր թափում վերականգնել Էջմիածնի իրավունքները, ապահովելով եկամտաբեր կալվածներով ու վարելահողերով, այգիներով և նույնիսկ ամբողջ գյուղերով։ Վանականներն ազատվում էին պետական տուրքերից։ Կալվածատիրոջը և պետությանը վճարվող հնգորդներից ու տասնորդներից զատ, գյուղացիներին պարտադրում էին մշակել վանական հողերն ու այգիները, իրենց տուրքերով ապահովել վանքը։ Էջմիածինը ազատվեց իր վրա բարդված «մուղաղա» կոչված տարեկան 100 թուման տուրքից, որի վճարումների հապաղման և գոյացած ապառքի վրա հսկայական տոկոսներ էին բարդվել*[100]*։ Այս միջոցառումներով վերականգնվում էր Էջմիածնի վանական տնտեսությունը, նյութական պատվանդան ստեղծվում նրա ազգային-եկեղեցական և մշակութային գործունեության համար։ Մովսես Տաթևացու և նրա հաջորդների օրոք ծավալուն աշխատանք տարվեց Արևելյան Հայաստանի կիսակործան վանքերի վերականգնման համար։ Մի շարք վանքերում հաջորդ տասնամյակներում կատարվում էին ճարտարապետական հավելումներ։*

*Վանական դպրոցական կյանքի վերանորոգման շնորհիվ Արևելյան Հայաստանի հին վանքերից մի քանիսը դարձան հոգևոր մշակույթի ու դպրու-*

98 *Տե՛ս* Առ. Դավրիժեցի, *էջ 252—260։*

99 *Տե՛ս նույն տեղում, էջ 285 և 297։*

100 *Տե՛ս նույն տեղում, էջ 214 և հտն.,* Սիմեոն Երևանցի, *Ջամբռ, էջ 21։*

թյան կենտրոններ։ Սրանց նպատակը ոչ թե նոր աշխարհիկ գիտության ու գրականության հիմնադրումն էր, այլ զարգացած ֆեոդալիզմի ժամանակաշրջանում ստեղծված, բայց տևական պատերազմների ընթացքում մոռացության տրված գիտելիքների վերականգնումը։ Արարատյան դաշտի և Սյունիքի մեծ վանքերում հավաքվում և ուսումնասիրվում են հայկական հին գրչագրերը, ընդօրինակվում և տարածվում են նորերը։ Կրոնական և դավանաբանական ձեռագրերից զատ բազմացվում են «արտաքին գիտություններին» նվիրված գրքեր, պատմագրական, իմաստասիրական ու գործնական մատյաններ և հարց-պատասխանի եղանակով շարադրված մեկնողական ձեռնարկներ։

Հին վանքերից բացի հիշողության արժանի է նաև Նոր Ջուղայի Ամենափրկիչ նորահիմն վանքի դպրատունն ու ձեռագրատունը։ Մ. Տաթևացուց հետո, հայազգի «կրկին լուսավորիչ» կոչված նրա աշակերտը՝ Խաչատուր Կեսարացին, այդ վանքի «համալսարանում» ուսուցանում էր «զհամայն արուեստըս ազատականս և գեբրնազանցականս»։ Նույն վանքում նա զբաղվում էր նաև ձեռագրերի հավաքման և բազմացման գործով։

XVII դարի կեսերին Նոր Ջուղայի «համալսարանի» դասատուներից մեկն էր Կոստանդ վարժապետը, որը նշանավոր է հայ խոջաների առևտրական նպատակներին ծառայող «Աշխարհաժողով» կոչված ձեռնարկով։ Ակներև է, որ այդ դպրոցի մեկենաս խոջաները ձգտում են ունեցել իրենց զավակներին ծանոթացնել ապրանքագիտության սկզբունքներին։

Տակավին Մովսես Տաթևացին էր ձգտում տպարան հիմնել, նպատակ ունենալով այդ միջոցով ավելի լայն ծավալ հաղորդել վանքերի լուսավորական գործունեությանը։ Այդ միտքն իրականացրեց Խաչատուր Կեսարացին, որը Հովհաննես վարդապետի գործակցությամբ 1640-ական թվականների սկզբներին Նոր Ջուղայում հիմնադրեց առաջին հայկական տպարանը, որտեղ մեսրոպյան տառերի մայրերը փորագրում, ձուլում ու շարում էին վանականները և տպագրում տեղում պատրաստած անարվեստ մամուլի մեջ[101]։ Հոկայական ջանքերի գնով 1641 թ. վանքի տպարանում լույս տեսավ «Հարանց վարքը», որի թուղթն ու անգույն ներկն իսկ պատրաստում էին ինքնուս գործավորները։ Թե ինչ խոչընդոտների էր հանդիպում Նոր Ջուղայի հայկական տպագրությունը, տեղեկանում ենք ֆրանսիացի ուղեգիր Թավերնիեից։ Ուղեգիրը պատմում է, թե վանքում ձեռագրերն ընդօրինակող գրիչները բուռն ընդդիմություն էին ցույց տալիս տպագրական մեքենային, որչափ դա ավելորդ էր դարձնում իրենց արվեստը։

Հակոբ Ջուղայեցին, բազմելով կաթողիկոսական գահին, նպատակահարմար տեսավ տպագրության հանգրվան դարձնել ավելի նպաստավոր պայմաններում գտնվող հայկական գաղութները։ 1656 թ. նա արտասահման հղեց կոնդակագիր և ծաղկող Մատթեոս Վանանդեցուն, իսկ ավելի ուշ, 1662 թ. Ոսկան վարդապետ Երևանցուն։ Գաղութահայ առևտրականների նյութական նպաստներով գոտեպնդված, սրանք անցան բողոքական Հոլանդիա և Ամստերդամ քաղաքում հիմք դրին էջմիածնի անունով գործող հայկական մի տպարանի, որտեղ տպագրված գրքերից մի քանիսն ընդառաջում էին աշխարհական ընթերցողների պահանջին։ Այս տեսակետից հատուկ ուշադրության արժանի են՝

---

[101] Տե՛ս Խաչատուր Ջուղայեցի, էջ 116 և 118 և հտն., 148։

«Աղուեսագիրքը» (1668), Ղ. Վանանդեցու «Գանձ չափոյ, կշռոյ և դրամից բո-լոր աշխարհի» (1699) հրատարակությունները։

Հաղորդակցության միջոցների զարգացումը և հեռավոր երկրների հետ հայ վաճառականների հաստատած կապերի ընդլայնումը նպաստում էին ոչ միայն Արևմուտքի և Արևելքի մեջ կատարվող ապրանքների, այլև գաղափար-ների փոխանակությանը։ Օտար ազգությունների հետ շփումները վերջին հաշ-վով նպաստում էին հայ հասարակական վերնախավերի կենցաղային և մշա-կութային պահանջների ընդլայնմանը։ Բայց, եթե կենցաղի և ապրելակերպի առումով վիհ էր գոյանում հայ հասարակական վերնախավերի ու ներքնա-խավերի միջև, տակավին նույն հարաբերակցությամբ չէր խորանում նաև հասարակական այդ շերտերի գաղափարական տարբերակումը։ Անցյալից եկող նախապաշարումներն ու սնոտիապաշտությունները շարունակում էին ամուր նստած մնալ ազգի ոչ միայն վարի, այլև վերին շերտերի գիտակցու-թյան մեջ։ Պատահական չէ, որ ոչ միայն XVI դարում՝ հայկական տպագրու-թյան սկզբնավորման պահին, այլև հետագա երեք դարերի ընթացքում՝ մինչև XIX դարի սկզբները, երազահաններն ու հմայիլները հայ առևտրական բուր-ժուազիայի միջավայրում առավել տարածված ու կարդացվող գրքերն էին։

Այս տեսակետից առանձնապես ուշագրավ է Հակոբ Ջուղայեցի կաթողի-կոսի կողմից հովանավորված Ամստերդամի հայ գրատպության ազգային-քաղաքական երանգը։ 1669 թ., հեղինակի կենդանության օրոք, լույս տեսավ Առաքել Դավրիժեցու հայրենասիրական շնչով շարադրված գիրքը, որը XVII դարի հայ պատմագրության նշանավոր գործերից մեկն է։ 1695 թ. սրան հա-ջորդում է հայ դասական պատմագրության գլուխգործոցը՝ Խորենացու «Հայոց պատմությունը», ինչպես նաև նրան վերագրված «Աշխարհացույցը», որը «Աղուեսագրքի» հետ մեկտեղ լույս էր տեսել տակավին 1662 թ.։ Այս հրատա-րակությունների կարևորությունն ակներև էր։ Առանձին հիշատակության արժանի է ի վերջո նաև 1695 թ. Ամստերդամում լույս տեսած «Համատարած Աշխարհացույցը», որը հանդիսանում էր Արևմուտքի գիտական մակարդակով մշակված քարտեզ[102]։ Նույն թվականից մեզ են հասել Կասպից ծովի և Պարս-կաստանի՝ Ամստերդամում տպագրված հայագիր քարտեզներ՝ կազմված իրա-նահայ վաճառականների պատվերով։ Հայ վաճառականների պահանջներին էին ծառայում, անշուշտ, նաև Ղուկաս Վանանդեցու հրատարակությունները։ Կ. Մարքսի բնորոշմամբ վառոդի և կողմնացույցի պես գրատպությունը ես բուր-ժուական զարգացման անհրաժեշտ նախադրյալներից մեկն էր։ Եվ իրոք, տպագրությունը մեզանում հանդիսացավ հայ բուրժուական գիտակցությունը կազմակերպող այն գործոնը, որը զարկ տվեց հայ աշխարհիկ մշակույթի և ազգային-ազատագրական մտքի հետագա զարթոնքին։

Հայ եկեղեցու առաջավոր գործիչների պատվերը կենսագործող տպա-գրիչների գործունեության նպատակը ոչ միայն գիտության և ուսման տարա-ծումն էր ազգի աշխարհական վերնախավի մեջ, այլև այդ վերնախավի մեջ ուժ ստացող քաղաքական ձգտումը՝ ազատագրվելու օտարակալության լծից։ Ազգի ազատագրման գործը այդ գործիչները պատկերացնում էին եկեղեցա-կանների և նրանց գործակցող գավառահայ աշխարհիկ մեծամեծների նախա-

---

[102] Տե՛ս Մ. Մ. Խաչատրյան, Հայ և ռուս քարտեզագրության կապերը XVIII դարում, «Պատմա-բանասիրական հանդես», 1966, № 2, էջ 155—164։

ձեռնությամբ ու ղեկավարությամբ՝ եկեղեցու առաջավոր գործիչների լուսավորական ջանքերի ու լատինական աշխարհից ակնկալվող օժանդակության միջոցով։ Այդ երևում է, մանավանդ, Ամստերդամի հայկական տպագրության կազմակերպիչներից մեկի՝ Թովմա եպիսկոպոս Վանանդեցու լատիներեն տված մի բացատրությունից։ Խոսելով իր անունից, Թ. Վանանդեցին ակամա պարզաբանում էր նաև իր համախոհների նպատակադրումները։ «Իմ պատանեկությունից սկսած,— գրում է նա,— ես միտք եմ ունեցել իմ թեմում (խոսքը Գողթան գավառի մասին է) մի լատինահայ դպրոց հիմնել։ Այս նպատակով Պարսկաստանից Եվրոպա բերել տվի իմ ազգական երեք պատանիների (խոսքը Ղուկաս, Միքայել և Մատթեոս Վանանդեցիների մասին է), որպեսզի նրանցից երկուսը ընտիր ուսումով ու բարքով կրթվեն, իսկ մյուսը տպագրական արվեստին հմտանա։ Տպարանն անհրաժեշտ էր իմ ծրագրած դպրոցին գրքեր հասցնելու համար... Այս երիտասարդները եկան և լիովին իրականացրին իմ սպասածը։ Այժմ մնում է կրթել մեր այն թշվառ քրիստոնյաներին, որոնք գտնվում են խավարի մեջ և ապրում են բռնակալության լծի տակ։ Այդ նպատակի համար պետք է որ իմ հայրենիքում այսպիսի մի դպրոց բացվի և տպարանն էլ այդտեղ փոխադրվի»[103]։ Վանանդեցու արծարծած այս հայացքի մեջ նշանակալից է այն հանգամանքը, որ նա իր լուսավորական գործունեության կենտրոնը տեղադրել էր կամենում ոչ թե հայ գաղթաշխարհում, այլ հայկական բնաշխարհի սրտում։

XVII դարի երկրորդ կեսում հայ եկեղեցու ղեկավարները եվրոպական դպրոցի և գիտության մեջ ոչ միայն կռվաններ էին փնտրում ազգային մշակույթի և լուսավորության գործն առաջ տանելու համար, այլև արևմտա-եվրոպական օգնության մեջ հայ ժողովրդի ազատագրության երաշխիքներ էին ակնկալում։ Նրանց դժբախտությունն այն էր, սակայն, որ հայերի ազատագրական բաղձանքները Եվրոպական Արևմուտքին հասցնելու իրենց ապարդյուն ջանքերի մեջ հարկադրված էին նախապես բախել պապական եկեղեցու դռները։

Հայ իրականության ազատագրական ձգտումները կողմնորոշվում էին դեպի Արևմուտքի քրիստոնյա տերությունները։ Դրան նպաստում էր Հայաստանում ծավալված կաթոլիկ միսիոներների պապական պրոպագանդան, որը թափանցել էր անգամ էջմիածնի կաթողիկոսարանը։ Միսիոներների թողած վկայագրերն իրենց չափազանցումներով հանդերձ հասկանալի են դարձնում XVII դարի 60—70-ական թվականներին ջուղայեցի Հակոբ կաթողիկոսի արևմտյան կողմնորոշման ունեցած ազդեցությունը[104]։ 1670-ական թվականներին հայ ազատագրական շարժումը լայն ծավալ է ընդունում արևելահայերի մոտ, մի կողմից քրիստոնյա բնակչության սաստկացած կեղեքումների և մյուս կողմից Երևանի Սաֆիկուլի խանի դեմ բարձրացած ըմբոստությունների պատճառով։

## 7. ՀԱՅ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ ԵՎ ՆՐԱ ԱՐԵՎՄՏԱ-ԵՎՐՈՊԱԿԱՆ ԿԱՊԵՐԸ XVII ԴԱՐԻ ԵՐԿՐՈՐԴ ԿԵՍՈՒՄ

1645—1669 թթ. Կրետե կղզում մղվող Կանդիայի պատերազմը Վենետիկյան հանրապետության և Օսմանյան կայսրության միջև, ամբողջ 25 տարի

[103] Սարուխան, Բելգիա և Հայաստան, «Հանդէս Ամսօրեայ», 1935, էջ 1։

[104] Տե՛ս Աշ. Հովհաննիսյան, Դրվագներ, II, էջ 186 և հետ.։

շարունակում էր մնալ քաղաքական աշխարհի ուշադրության կենտրոնում։ Այդ պատերազմը, որ փաստորեն մղվում էր Միջերկրականի արևելյան ափերում դիրքշխելու համար, նոր հույսեր էր ներշնչում թուրքահպատակ քրիստոնյաներին՝ թոթափելու օսմանյան լուծը։ Ոչ միայն պատերազմին մասնակցող Վենետիկի հանրապետությունը, այլև նրա գլխավոր դաշնակիցները՝ պապական Հռոմը և ֆրանսիական միապետությունը, ձգտում էին այդ պատերազմին հաղորդել համաքրիստոնեական խաչակրության տեսք, ներգրավելով նրա մեջ Արևելքի քրիստոնյա երկրներն ու ժողովուրդները, մասնավորապես թուրքահպատակ հույներին, հայերին, ասորիներին։ Կարևոր դեր էր ստանձնել այս գործում, մանավանդ, Հալեպում գործող ֆրանսիական դեսպանը՝ Ֆրանսուա Բարոնը։

Ալեքսանդրիայի, Անտիոքի, Երուսաղեմի հույն պատրիարքարաններից և Հալեպի ասորական համայնքի հոգևոր առաջնորդներից զատ այս գործում աչքի ընկնող հարցասիրությամբ հանդես եկան Սսի խաչատուր Գաղատացի կաթողիկոսը և Կ. Պոլսի նախկին պատրիարք Հովհաննես Թութունջին։ 1663 թ. խաչատուր կաթողիկոսը Լյուդովիկոս XIV թագավորին կոչ էր անում իր ձեռքն առնել բոլոր քրիստոնյաներին ազատագրելու գործը «և հատկապես մեր խեղճ ազգին, որպեսզի կարողանանք երջանկություն ունենալ ճշմարիտ հավատի հոգու անդորրության մեջ փակելու մեր աչքերը»[105]։ Սսի կաթողիկոսը հայադավան եկեղեցին կաթոլիկ եկեղեցու հետ միավորելու կուսակից էր. թուրքահպատակ քրիստոնյաների և դրանց թվում նաև հայերի ազատագրումը նա չէր զատում Հռոմի քարոզած «ճշմարիտ հավատի» խոստովանությունից։ Գործունեության արտակարգ եռանդ ցուցաբերեց, մանավանդ, Թութունջին, որը պատերազմի ավարտից հետո եղավ Ֆրանսիայում ու Լեհաստանում և նույնիսկ ուղերություն ստանձնեց դեպի Նեղոսի ակունքները, ակներևաբար հանձնարարություն ունենալով քրիստոնյա եթովպացիներին ևս թուրքերի դեմ ինչ-որ գործողությունների դրդելու[106]։

«Համաքրիստոնեական» իր տրամադրություններով Գաղատացու կողմնորոշումն ուներ նաև նույն այս ժամանակ ասպարեզ իջած արևմտահայ մեծահարուստ մի առևտրական, բաղիշեցի խոջա Մուրատը։ Նա Լյուդովիկոս XIV-ին հավաստիացնում էր, թե հայերը և հույները պատրաստ են միացյալ ուժերով ապստամբելու, Արևելյան կայսրությունը վերականգնելու և Ֆրանսիայի կողմից նախատեսված մեկին այս կայսրության դահակալ հռչակելու։ Դժբախտաբար հայտնի չեն Բաղիշեցու հավաստիացումների ռեալ հիմքերը, չգիտենք նաև նրա և գավառահայ ժողովրդի միջև եղած իրական կապերը և ակնհայտ չէ նույնիսկ նրա առնչությունը արևմտահայ բուրժուազիայի հետ։ Թեպետև խոջա Մուրատը խոսում է հայ իշխանավորների անունից և Լյուդովիկոս թագավորին հավաստիացնում, թե հայաբնակ շրջանների ժողովրդական զանգվածները պատրաստ են բախտակից ժողովուրդների հետ «միասնաբար ապստամբության դրոշ պարզել» թուրքական լծի դեմ, այնուամենայնիվ, հայերի ազատագրման բուն առհավատչյան նա որոնում էր միայն եվրոպական պետու-

---

105 Հ. Անասյան, XVII դարի ազատագրական շարժումներն Արևմտյան Հայաստանում, Երևան, 1961, էջ 98։

106 Տե՛ս նույն տեղում, էջ 188, 204, 213. Համա. նաև նույն աշխատության Աշոտ Հովհաննիսյանի գրախոսականը, «Պատմա-բանասիրական հանդես», 1963, № 1, էջ 238։

թյունների միջամտության մեջ։ Հայ-հունական ապստամբությունը նա ներկայացնում էր որպես եվրոպական միջամտությանը նպաստող խիստ կարևոր միջոցառում։ «Հայերը,— գրում է նա,— որոնք շատ ստվարաթիվ են Վանի, Բիթլիսի, Թոխաթի, Սեբաստիայի, Կարինի, Կարսի և մերձակա շրջանների մեջ, միանալով հույների և մյուս քրիստոնյա հպատակների հետ, կկարողանան չփոթություններ առաջ բերել Անատոլիայի ներսում և դիմադրել մինչև քրիստոնեական զորքերի հասնելը...»[107]։

Եվ սա պատահական չէր։ Թուրքիան նախադրյալներ չէր ստեղծում ոչ երկրի կապիտալիստական զարգացման, ոչ էլ բուրժուազիայի ազգային կամ միջազգային համախմբումների համար։ Ներքին ուժերից առավել, թուրք պետության դեմ պայքարողները կապեր էին որոնում եվրոպական պետությունների ներսում, հույսեր դնում նրանց միջամտության վրա և հաճախ գործիք դառնում նրանց դիվանագիտության։ Ակներևաբար խոջա Մուրատը և նրան հանձնարարություններ տվող հույն կղերը կամ մեզ անհայտ հայ այն «իշխանները», որոնց անունից խոսում էր նա, առանց հատուկ լիազորությունների շահարկում էին աշխատավորական զանգվածների ազատագրական տրամադրությունները՝ դրանք ի սպաս դնելով արևմտաեվրոպական պետությունների շահախնդրությանը։

Օսմանյան կայսրությունը «ֆեոդալիզմի բարբարոսական աստիճանի վրա գտնվող» (Մարքս) արևելյան մի բռնապետություն էր, որը, ստրկական, հնազանդության էր հարկադրում հպատակ ժողովուրդներին։ Մինչև XIX դարի կեսերը թուրքական ֆեոդալիզմը շարունակում էր կաշկանդել հպատակ ժողովուրդների ազգային-քաղաքական զարգացումը։ Սրա պատճառներից մեկը Թուրքիայի և նրա հպատակ ժողովուրդներին կիսագաղութային վիճակի դատապարտող ու նրանից արտոնություններ կամ տերիտորիաներ կորզելու համար պայքարող եվրոպական պետությունների ներհակություններն էին։ Խոջա Մուրատը առաջիններից մեկն էր, որը, հնարավորություն չունենալով հայ ժողովրդի ազատագրության համար պայքարել երկրի ներքին ուժերի վրա հենված, ապավինում էր նվաճողական նպատակներ հետապնդող եվրոպական պետությունների միջամտությանը։

Այդ ժամանակ դիվանագիտական բանակցություններ էին գնում նաև արևմտյան պետությունների և տրևելահայերի միջև։ Թուրք-վենետիկյան պատերազմի վերջին Կղեմես X պապի, Լյուդովիկոս թագավորի, Վենետիկի հանրապետության և Տոսկանայի մեծ դուքսի կողմից շահ Սուլեյմանի հետ հակաթուրքական դաշինք կնքելու նպատակով 1669 թ. Իրան էր հղված Նախիջևանի հայ ունիթորական համայնքի վիճակավոր Մատթեոս Հովհաննեսենցի գլխավորած պատվիրակությունը։ Ֆրանկների օգնությամբ Հայաստանի ազատագրումը գլուխ բերելու մասին հայերի մեջ եղած ակնկալությունների նկատմամբ հետաքրքրություն էին ցուցաբերում նաև Իրանում և Թուրքիայում գործող ֆրանսիական դիվանագետները, միսիոներներն ու առևտրական գործակալները։ Ալեքսանդր VII պապի (1655—1667) Հակոբ Ջուղայեցի կաթողիկոսին գրած մի նամակից տեղեկանում ենք, որ պապը նրան հավաստիացրել է, թե իրեն հնազանդվելու դեպքում Հռոմն ամեն ինչ կանի հայ ժողովրդի տառապանքներին վերջ դնելու համար։ Իսկ 1662 թ. կաթողիկոսի կողմից Վենե-

107 Հ. Անասյան, նշված աշխատությունը, էջ 160 և հտն.։

*տիկ և Հռոմ․հղած Առաքել Բոպիկ վարդապետը իր ծառայություններն է առաջարկում՝ շահին հակաթուրքական կոալիցիայի մեջ ներգրավելու[108]։ Մինչ այդ, հայ եկեղեցու ներսում խորացող պառակտումները Արևելյան Հայաստանում ստեղծել էին այնպիսի իրադրություն, որ հայ ժողովրդի վիճակը տնօրինելու ուղղությամբ Հռոմի և եվրոպական պետությունների միջամտությունը վերին աստիճանի այժմեական էր դարձել նաև Հակոբ կաթողիկոս Ջուղայեցու համար։*

*Էջմիածնականների պառակտման առիթ էր ծառայել եկեղեցական եկամուտների բաշխման շուրջը դարամիջին բորբոքված մեծ պայքարը։ Վիճարկելով մեռոն օրհնելու և մեռոն բաշխելու Էջմիածնի կաթողիկոսների մենաշնորհը, արևմտահայ եկեղեցականները կամենում էին ձեռք մեկնել մեռոնաբաշխման միջոցով Էջմիածնում կուտակվող եկամուտներին։ Սուր բախման մեջ էին մտել ոչ միայն Էջմիածնի, Սսի, Երուսաղեմի և Կ. Պոլսի հայ եկեղեցապետերը, այլև արևելահայ և արևմտահայ աշխարհական վերնախավերը, պայքարին մասնակից դարձնելով անգամ գավառահայ զանգվածներին։ 1664 թ. այս կապակցությամբ Երուսաղեմում նույնիսկ ստեղծվեց Էջմիածնին հակադրված արևմտահայ կաթողիկոսություն[109]։ Նորահնար այդ պաշտոնով ասպարեզ եկած Եղիազար Այնթապցուն պաշտպանում էին արևմտահայ ֆինանսական արիստոկրատիայի ամենաազդեցիկ ներկայացուցիչները՝ իզմիրցի մեծահարուստ սեղանավոր Ապրո Չիլեբին, Կ. Պոլսի մեծամեծներն ու բնիկ առևտրականները, խոշոր տնատերերն ու մեծ խանի (պանդոկ-վաճառատուն) իրավատերերը, սեբաստացի և տիվրիկցի մեծատուն խոջաները։ Եղիազարի կողմն էին նաև Կ. Պոլսի երբեմնի պատրիարք Հովհաննես Թութունջին, Սսի Խաչատուր կաթողիկոսը և առևտրական իր ձեռնարկություններով ու քաղաքական իր գործարքներով հայ և հույն բարձր հասարակաշերտերի և Վենետիկի ու Ֆրանսիայի դիվանագիտական ոլորտներում ելումուտ ունեցող բաղիշեցի խոջա Մուրատը։ Էջմիածնի կաթողիկոսության և Հակոբ Ջուղայեցու կողմն էին Կ. Պոլսի գավառացի «եկվորները», ջալալիների ժամանակ երկրի արևելյան գավառներից ծովեզրյա շրջանները գաղթած «դրսեցիները», որոնց շարքերում քիչ չէին նույնիսկ իրանահայ խավերին մոտ կանգնած ներկայացուցիչներ։ Հակոբ Ջուղայեցուն վարկավորում էին «արևելցի» կոչված իրանահայ խոջաները, ջահուկցի Միրզա և Խոսրով սեղանավորների գլխավորությամբ։ Եթե Եղիազարը ազդեցիկ հակառակորդներ ուներ Արևմտյան Հայաստանում, Հակոբը կատաղի թշնամիներ ուներ Արևելյան Հայաստանում. Եղիազարի դեմ էին Կ. Պոլսի նախկին պատրիարք Մարտիրոս Կաֆայեցին և հայ գրական գործիչ ու պատմագիր՝ Երեմիա Քյոմուրճյանը։ Հակոբին դիմադիր էր կանգնած Էջմիածնի վանական խմբակը, «Կարկուտ» կոչված Օնոփրիոս Ճարտասան վարդապետի ղեկավարությամբ։*

*Կ. Պոլսի «բնիկների» և «եկվորների», «ներսեցիների» և «դրսեցիների», «հոռոմցիների» և «արևելցիների» հակամարտը նոր չէր։ Մայրաքաղաքի բնիկ, «ներսեցի» կամ «հոռոմցի» կոչվածները տեղի մեծահարուստ չելեբիների ու խոջաների գլխավորությամբ ազգային գործերի մեջ չէին կամենում իրենց իրավահավասար ճանաչել գավառներից գաղթած «դրսեցի», «եկվոր» կամ*

---

108 Տե՛ս Աշ. Հովհաննիսյան, Դրվագներ, II, էջ 171 և հտն.։

109 Տե՛ս նույն տեղում, էջ 144 և հտն.։

«արևելցի» կոչված ժողովրդաշիրտիրին։ Առաքել Դավրիժեցին տակավին 50-ական թվականներին էր նշմարում մայրաքաղաքի հայ չելեբիների գլխավորած «բնիկ բնական տեղացի ժողովրդականաց և նրանց կողմից բարձրամիտ բարձրահոն պանծանօք» հարստահարված «չմարդի» և «գռեհիկ» համարված «եկամուտ ժողովրդոց» համառ պայքարը[110]։ Փիլիպպոս կաթողիկոսի ջանքերը՝ հաշտեցնելու հակամարտ կողմերին՝ ապարդյուն էին անցել։

Հակոբ—Եղիազարյան քսանամյա պայքարն ընդունեց լայն ծավալ և ունեցավ չարաղետ հետևանքներ։ Կ. Պոլսի մեծահարուստ «բնիկները» կաշառում էին թուրք արքունիքի պաշտոնյաներին և ֆերման ստանում իրենց կողմից առաջ քաշվող եկեղեցական խմբակցությունների օգտին։ Այդ միջոցով քանիցս «վերականգնվեցին» էջմիածնի իրավունքները և նույնքան անգամ «վերահաստատվեցին» նաև Եղիազարի հավակնությունները։

Հայ եկեղեցական պետերի վեճերը չարաշահության աղբյուր էին դառնում թուրք և պարսիկ պաշտոնատերերի համար և ի վերջո տագնապալից դրություն ստեղծում հայ եկեղեցու իսկ ծոցում։ էջմիածնի պարտքերը առաջացել էին ոչ թե նրանից, որ Հակոբ կաթողիկոսի ժամանակ կրճատվել էին վանքի եկամուտները, այլ որ վանքի եկամուտների մեծ աճի հետ, այդ թվում նաև ի հաշիվ աճող նվիրատվության, ուռճացել էին նաև նրա ծախսերը։ Բավական է հիշատակել, որ Հակոբ Ջուղայեցին իր կաթողիկոսության ժամանակ կանխիկ դրամով բազմաթիվ մուլքեր էր գնել, ընդարձակելով վանքի կալվածները[111]։ Պարտքերը ծածկելու համար կաթողիկոսը պարտատերերի մոտ գրավ է դնում վանքի կալվածները, որի հետևանքով մուլքերի մի մասը յուրացվում է պարտատերերի կողմից։ Կալվածային այս ոչ շահավետ գործարքների հետևանքով սրվում էր վանքի տնտեսական տագնապը։

Հակոբ կաթողիկոսի հույսերը՝ ժողովարարությամբ ծածկելու պարտքերը, ի դերև ելան. Երևանի խանի օգնությամբ պարտատերերը ի վերջո կալանքի տակ գցին կաթողիկոսին, իսկ էջմիածնի վանական բանսարկուները գահընկեց հայտարարեցին նրան։ Շահի արքունիքին ապավինելով, կաթողիկոսը վերականգնեց իր իրավունքները, բայց դրանով չէին վերանում ոչ նրա պարտքերը և ոչ էլ եկեղեցու պառակտվածությունը, որից ելնելու միակ ելքը Հակոբը, ի վերջո, Հայաստանի քաղաքական ազատագրման մեջ որոնեց։ Բայց սա հենց մի հեռանկար էր, որն ամեն անգամ պապական պրոպագանդայի դավերին էր շղթայում հայ եկեղեցու «ազատարաղձ» պետերին։

1678 թ. Վիեննայում լույս ընծայած իր «Cehil Sutun»_ գրքում Հռոմի ուրբանյան դպրոցում ուսած հայազգի Պետրոս Պետիկը, որը երկար տարիներ ապրել էր Նախիջևանի հայ կաթոլիկ համայնքում և ի վերջո դեգերել Սպահանում ու կապեր հաստատել իրանահայ վերնախավերի հետ, մռայլ երանգներով է ներկայացնում Հայաստանի վիճակը։ Այդ երկիրը, գրում է նա, ոչ միայն օտարների լծատանջության է ենթակա, այլև յուրայինների կեղեքումներին։ Դժբախտության աղբյուրը նրանց լուսավորչական «հերձվածն» է և նրանց մասնատվածությունը կաթողիկոսական հակամարտ իշխանությունների ներքո։ Մեծ գովեստով է խոսում Պետիկը Հակոբ կաթողիկոսի մասին, որին բնութագրելով նշում է, որ չնայած զառամ իր տարիքին, նա լի է հավատով, թե

[110] Տե՛ս Առ. Դավրիժեցի, էջ 334։

[111] Տե՛ս «Ջամբռ», էջ 112 և հտն., տե՛ս նաև «Մատենադարանի պարսկերեն վավերագրերը», II, «Կալվածագրեր», պրակ Ա, կազմեց Հ. Դ. Փափազյան, Երևան, 1968, էջ 38։

իրեն վիճակված է քրիստոնեական խաչի զորավիգությամբ հաղթահարել կիսալուսնի տիրապետությունը։ Այս հավատի աղբյուրը կաթողիկոսը համարում էր հայերի թվաքանակն ու քաջարիությունը։ Սակայն դրա հետ մեկտեղ Հակոբը ապավինում էր նաև «հռոմեական բազկի զորությանը»։

Պետիկի գրքում քաղվածքներ են բերված գերմանական Լեոպոլդ I կայսրին Հակոբի ուղղած դիմումից, ուր նա հավաստում էր, թե իրենց ազատագրման հույսը հայերը կապում են Հաբսբուրգյան տան և Հռոմի պապի հետ։ Այդ ակնկալությամբ Հակոբ կաթողիկոսը ևս «իր նախորդների պես» պարտավորվում էր միավորել հայ եկեղեցին հռոմեականի հետ։ Սակայն դրսից մեկնրված բազուկն այս անգամ ևս պիտի ստանձներ սոսկ ազատասերներին համախմբող ու ղեկավարող դեր։ Պետիկի ասելով «հայ իշխաններն ու պաշտոնատարները» հույս ունեին բարեփոխել Հայաստանի վիճակը՝ գաղտնի համաձայնություն կնքելով իրենց քրիստոնյա հարևանների՝ վրացիների հետ։ Հայ և վրաց իշխանները կարիք ունեին միայն մեկին, որի հովանավորությամբ և օգնությամբ կարող լինեին միանալ ու փշրել իրենց ստրկության շղթաները։ Նրանք ապրում են այն հավատով, թե հեռու չէ այն օրը, երբ «խաչի զորությունը նահանջի կհարկադրի մահիկին»[112]։

Հաբսբուրգների վրա դրված այս հույսերը համապատասխանում էին քաղաքական ուժի այն վերադասավորմանը, որ կատարվել էր Եվրոպայում Կանդիայի պատերազմում Վենետիկի կրած պարտությունից հետո։ Պարտված Վենետիկի և նրա դաշնակցի՝ Ֆրանսիայի փոխարեն հակաթուրքական պայքարի ղեկը 1670-ական թվականներին անցել էր Հաբսբուրգների գլխավորությամբ ստեղծված զինակցությանը, որին մասնակցում էին Ավստրիան, Լեհաստանը, Վենետիկը և փոքր ինչ հետո նաև Ռուսաստանը։

Նույն այս ժամանակ ուշագրավ իրադարձություններ էին տեղի ունենում Արևելյան Հայաստանում և Վրաստանում։ Երևանի խանի դեմ գլուխ էին բարձրացրել նրա մահմեդական «նոքարներն» ու հասարակ ժողովուրդը՝ «ղարափաշաները», սկսվել էր Քարթլիի Գիորգի XI թագավորի ձեռնարկած ապստամբությունը, իսկ Իմերեթիայում սրա եղբայրը՝ Արչիլ թագավորը ոտքի էր ելել Թուրքիայի տիրակալության դեմ։ Պետք է ենթադրել, որ Վրաստանում խմորվող այս շարժումն էր հենց, որ Հակոբ կաթողիկոսին առիթ էր տալիս մտմտալու քրիստոնյա Եվրոպայի ձեռնատվությամբ ու ղեկավարությամբ հայ-վրացական համատեղ ապստամբություն կազմակերպելու հեռանկարի շուրջը։ Նկատենք, որ Իրանի և Թուրքիայի դեմ գործող վրաց իշխանները ևս այս նույն պահին հովանավորում էին եվրոպական միսիոներներին և նրանց միջոցով օժանդակություն ակնկալում պապական Հռոմից ու կաթոլիկ պետություններից[113]։

Քաղաքական ստեղծված իրադրության պայմաններում հայ իրականության մեջ առաջացած ազատագրական ձգտումները հասկանալի է, որ կողմնորոշվում էին եվրոպական պետություններից հայ ժողովրդի ունեցած ակընկալությունների օգտին։ Մանավանդ հաշվի պիտի առնել, որ այս նույն պահին բուն Հայաստանում բուռն գործունեություն էին ծավալել կաթոլիկ պրոպագանդիստները, որոնք, ինչպես տեսանք Պետիկի գրքից, թափանցել էին նույն-

---

[112] P. Bedik, Նշված աշխատությունը, էջ 341 և հտն., 352 և հտն.։

[113] Տե՛ս Աչ. Հովհաննիսյան, Դրվագներ, IIա, էջ 212 և հտն.։

իսկ էջմիածնի կաթողիկոսարանը և հավանորեն կապեր հաստատել նաև վրաց իշխանավորների հետ։

Շուրջ քսան տարի հետո կատարված ազատագրական ձեռնարկումներին վերաբերող փաստաթղթերում կա վկայություն այն մասին, որ 1677 թ. Հակոբ Ջուղայեցու գլխավորությամբ էջմիածնում հրավիրվել է գաղտնի ժողով, որին մասնակցում էին հոգևորականության, քաղքենի մեծամեծների և Սյունյաց ու Արցախի հայ մելիքների ներկայացուցիչները։ Գաղտնի ժողովը որոշում է պատվիրակություն ուղարկել Հռոմ և հնազանդություն հայտնելով, զինված օգնություն ստանալ ազատագրական գործը գլուխ բերելու համար։

Նույն այդ նպատակով Գանձասարի կաթողիկոսի հետ գործակցության մեջ մտնելով, Հակոբ Ջուղայեցին 1677 թ. Երևանի խանի հետապնդումներից խուսափելով գնում է Վրաստան ու բանակցություններ վարում վրաց շարժման ղեկավարների և վրաց կաթողիկոսի հետ։

1678 թ. վերջերին հասնելով Կ. Պոլիս՝ պապական աթոռի հետ սկսվելիք բանակցությունները նախապատրաստելու համար, Հակոբ կաթողիկոսը Հռոմ է ուղարկում Առաքել Բոպիկ վարդապետին և միաժամանակ իրեն հուզող խնդիրների շուրջը թղթակցում Լեհաստանի Յան Սոբեսկի թագավորի հետ։ Վերջինս օգնություն էր խոստանում հայերի անկախությունը վերականգնելու բաղձանքին։ Սակայն կաթողիկոսի վերահաս մահը (1680) խոչընդոտ է հանդիսանում ինչպես հայ-արևմտաեվրոպական բանակցությունների սկզբնավորմանը, այնպես էլ հայ-լեհական բանակցությունների շարունակությանը։ Հետագայում, դիմելով էջմիածնի Նահապետ կաթողիկոսին (1691—1705), Սոբեսկին խնդրում էր ցույց տալ այն ուղին, որով կարող էր ընդհանուր ջանքերով հնարավոր դառնալ հայերի անկախ իշխանության վերականգնումը և առաջ քաշել այն թեկնածուի անունը, որ կարող էր հարմար լինել հայկական գահին։ Լեհական աղբյուրների տվյալները հիմք են տալիս գիտելու, որ եկեղեցիների վերամիավորումից զատ, ներկա դեպքում Սոբեսկին կամենում էր վարձահատույց լինել լեհահայ գաղութին, որի քաջարի մարտիկները մասնակցել էին նրա առաջնորդությամբ 1683 թ. Վիեննայի պատերի տակ թուրքական բանակին հասցրած ջախջախիչ հարվածին[114]։

Փոքր ինչ հետո, 1685 թ. լեհահայերին տված մի արտոնագրում նա երախտագիտությամբ նշում էր «հայ ազգին պատկանող մարդկանց կտրիճությունն ու քաջագործությունը, որը նրանք ցույց են տվել այնքան դաժեր տևող մեր համակեցության ընթացքում Կամենիցի, Յազլովիցի և Լվովի, ինչպես և մյուս սահմանային բերդերի պաշտպանության գործում»[115]։

## 8. ԻՍՐԱՅԵԼ ՕՐԻՆ ԵՎ ՆՐԱ ՋԱՆՔԵՐԸ ԱՐԵՎՄՏՅԱՆ ԵՎՐՈՊԱՅԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

Հակոբ Ջուղայեցու մահից շուրջ երկու տասնամյակ հետո Արևմտյան Եվրոպայում բուռն գործունեությամբ հանդես է գալիս իրեն իշխանական ծագում վերագրող մի հայ գործիչ՝ Իսրայել Օրի անունով, որին վիճակված էր շրջադարձային դեր խաղալ հայ ազատագրական պայքարում։

Մեզ հասած թղթերի մեջ Օրին ներկայանում է որպես Հակոբ կաթողիկոսի

114 *Sadok Baracz*, Rys dzielow ormianskich, Tarnopol, 1869, էջ 68։

115 «Կամենեց-Պոդոլսկ քաղաքի հայկական դատարանի արձանագրությունները», աշխ. Վ. Ռ. Գրիգորյանի, Երևան, 1963, էջ 36։

գլխավորությամբ Արևմուտք հղված պատվիրակության անդամներից մեկի՝ Սիսիանցի Մելիք Իսրայելի որդին, որն ուղեկցել էր իր հորը։ Ըստ այդ վավերագրերի, տակավին 18—19 տարեկան պատանի Օրին, կաթողիկոսի մահից հետո անցնում է Արևմուտք, շուրջ երեք տարի դեգերում է Վենետիկում, ապա զբաղվում ֆրանսիական բանակի մատակարարման գործով, որոշ ժամանակ իբրև կամավոր ծառայում ֆրանսիական գումարտակում և գերի ընկնում Նամյուրում, երբ այդ քաղաքը անձնատուր եղավ անգլիացիներին (1695)։ Գերությունից ազատված Օրին անցնում է Հռեննոսյան Պֆալց և Հովհան Վիլհելմ կուրֆյուրստի մոտ՝ Դյուսելդորֆ քաղաքում չորս տարի վարում է մատակարարման կոմիսարի պաշտոն։

Հռեննոսյան Պֆալցն այդ ժամանակ մասնակցում էր այն պատերազմին, որն Ավստրիայի գլխավորությամբ մղում էին Թուրքիայի դեմ Կենտրոնական Եվրոպայի պետությունները և Ռուսաստանը։ Կուրֆյուրստը և նրա դաշնակիցները շահագրգռված էին սիրաշահելու Մերձավոր Արևելքի քրիստոնյա այն ժողովուրդներին, որոնցից օժանդակություն կարող էին ստանալ այդ պատերազմում։ Օգտվելով հանգամանքից, կուրֆյուրստի հետ ունեցած իր հանդիպումների ժամանակ, Օրին նրան ներշնչում է այն միտքը, որ իրենց ազատագրության համար Իրանի և Թուրքիայի դեմ պայքարող Հայաստանն ու Վրաստանը բնական պատվար ու դաշնակից են Թուրքիայի դեմ պատերազմող եվրոպական պետություններին և ռազմական ոչ մեծ օժանդակությամբ դժվար չի լինի կորզել Հայաստանը՝ իր օրհասն ապրող Իրանի ճանկերից և կուրֆյուրստին բազմեցնել հայկական գահին։ Սրա հետ մեկտեղ մոլեռանդ կաթոլիկ կուրֆյուրստին և նրա արքունիքում վխտացող ճիզվիտ կրոնավորներին Օրին կարողացավ հավատացնել, թե իր ազատությունը երազող հայ ժողովուրդը պատրաստ է նետվելու կաթոլիկ եկեղեցու գիրկը։

Ստուգման և ճշտման կարիք ունեցող որոշ տվյալների համաձայն, 1699 թ. գարնանը Օրին պետք է ժամանած լինի հայրենիք՝ Սյունյաց աշխարհը, իր հետ բերելով Պֆալցի կուրֆյուրստի նամակները՝ ուղղված վրաց Գիորգի XI թագավորին, էջմիածնի և Գանձասարի կաթողիկոսներին, Վրաց իշխաններին և հայ մելիքներին։ Նրա առաքելության նպատակն էր՝ հայտնել վերջիններիս, որ Հովհան Վիլհելմը տրամադիր է իր ձեռքը վերցնել հայ ժողովրդի ազատագրման գործը։ Ընդսմին ուշագրավ է, որ վրաց թագավորին ուղղված նամակում վերջինս անվանված է Մեծ Հայաստանի «բոլոր հայ քրիստոնյաների առաջին տեր, իշխան ու առաջնորդ» («Omnium christianitatis Armenae potentatum Primo, Principi ac Duci.»), որին կուրֆյուրստը խնդրում է հավաստել Օրիի միջոցով իրեն հասած տեղեկությունները՝ Հայաստանի կացության ու հայերի տրամադրությունների մասին և հաղորդել լրացուցիչ տվյալներ, որպեսզի ինքը կարողանա իր հետ խնամիական և քաղաքական մերձավորությամբ կապված եվրոպական ամենազոր միապետերի ու իշխանների գործակցությամբ անել հնարավորը՝ նրանց (հայերի ու վրացիների) «բարի գործին» ընդառաջելու համար։

Վրաց թագավորին հասցեագրված նամակից ակներև է, որ Օրին Հայաստանը կուրֆյուրստին ներկայացրել էր որպես „Վրաստանի հետ սերտորեն կապված մի երկիր, իսկ հայերի ու վրացիների ազատագրական նպատակամղումը համարել՝ վրաց իշխան Գիորգիի ընդհանուր ղեկավարությամբ ծավալվող շարժում»

Այն հանգամանքը, որ կուրֆյուրստի նամակները հասցեագրվում էին վրաց շարժման ղեկավարին, էջմիածնի և Ղափանի[116] կաթողիկոսներին ու հայ մելիքներին, ցույց է տալիս, որ հայրենի աշխարհից վաղուց ի վեր կտրված Օրիի միտքը շարունակել էր գամված մնալ նրա դիտակցության մեջ հածող խնդիրներին ու պատկերացումներին։ Իրեն հայտնի վրաց և հայ գործիչների մեջ հետագայում կատարված փոփոխություններին կամ նրանց տեղըասպարեզ իջած նորերի տրամադրություններին Օրին անտեղյակ էր մնացել։ Մինչդեռ անցել էին ավելի քան քսան տարիներ, որոնց ընթացքում նկատելի փոփոխություններ էին կատարվել երկրում, զգալապես ազդելով նաև ժամանակի հայ կյանքի և հայ ազատագրական տրամադրությունների վրա։

Խաների ու նրանց պաշտոնյաների չարաշահումները լայն ծավալ էին ստացել երկրում։ Դրամով էին գնվում ու վաճառվում պետական պաշտոնները։ Զարաշահման աղբյուր էին դարձել անգամ ռոճիկներ ստանալու համար ծառայողներին տրվող «բարաթներն» ու «հավալեները»։ Ձեռք բերելով դրանք, վաշխառուները կրկնապատիկ և եռապատիկ չափերով էին գանձում այդ գումարները գյուղացիներից։ Վերջիններիս բողոքները շուռ էին գալիս իրենց իսկ դեմ՝ առիթ դառնալով նորանոր կեղեքումների[117]։ Քրիստոնյաներից գանձվող գլխահարկը կրկնապատկվել էր։ 1689 թ. Նորագավիթում գրված մի հիշատակարանում գրիչը գանգատվում է փողի և ամեն ինչի սղությունից։ Դարավերջին Զաքարիա Սարկավագը տրտնջում էր, թե «նեղիմք և տառապիմք ազգի ազգի կեղեքմամբ և պէս պէս աւարմամբ»[118]։ Գյուղի քյադխուդաները պետական հարկերը իրացնում էին՝ բացառապես բարդելով չունևորների պարանոցին. «զի չար սովորութիւն ունէին, որ զբեռս իւրեանց ի վերայ աղքատաց շրջէին»[119]։

Հայ գյուղը նեղվում էր ոչ միայն խանական, այլև եկեղեցական վարչության չարաշահումներից։ Օրիի թղթերից տեղեկանում ենք, որ Սյունյաց մելիքները 2000 քսակ արծաթ էին վճարել Հակոբ կաթողիկոսի և նույնչափ՝ Եղիազարի պարտքերի դիմաց։ Եկեղեցու բարձր վարչությունը դարձել էր խոջաների ու դովլաթավորների կռվախնձոր և կրոնավորների պաշտոնավաճառության մի բնագավառ, ուր ազգի եկեղեցական գործերն իսկ առաջ էին տանում փաշաների ու խաների շահադետ միջամտությամբ և նրանց ահարկու եղանակով։ Ժամանակակից պատմագիրը Նահապետ կաթողիկոսի մասին գրում էր, թե նա հրապարակով կախում ու գանակոծում էր եկեղեցականներին, տուգանում, խուզում մազ ու մորուք և շղթայակապ բանտ նետելով մահվան դուռը հասցնում[120]։ Փաշայական վարքագիծ գործադրող այս եկեղեցականը ակնհայտորեն ընդհանուր քիչ բան ուներ Ջուղայեցու մշակութային ազատագրական ուղեգծի հետ։ Ուստի, էջմիածին հասնելով, Օրին նույնիսկ չներ-

---

116 «Ղափան» կամ ըստ պարսկական աղբյուրների «Ղափանաթ» անունը XVII դարում ժամանակակից Ղափանի շրջանից ավելի ընդարձակ նշանակություն ուներ, դրա մեջ մտնում էր Զանգեզուրը և որոշ գավառներ Ղարաբաղի լեռնային շրջաններից։ Ըստ այդմ Ղափանի կաթողիկոս էին անվանում Գանձասարի կաթողիկոսին։

117 Տե՛ս Զաքարիա Ագուլեցի. *Օրագրություն*, Երևան, 1938, էջ 43, 126, 153։

118 Զաքարիա Սարկավագ, *II*, էջ 142 և հտն.։

119 Աբրահամ Կրետացի, *Պատմագրութիւն անցիցն իւրոց և Նատր-Շահին պարսից*, էջմիածին, 1870, էջ 26։ *Այսուհետև՝* Աբրահամ Կրետացի։

120 Տե՛ս Զաքարիա Սարկավագ, *II*, էջ 136։

*կոպտացավ նրան ու նրա ձեռքը չհանձնեց կուրֆյուրստի նամակը։ Պիտի կարծել, որ Օրին հանդիպում չունեցավ նաև Գանձասարի կաթողիկոսի հետ, որին նա չէր ճանաչում, և որի անունն իսկ ճիշտ չի նշված նրա թղթերում։*

*Պաշտոնավաճառության ախտը թափանցել էր նաև հայաբնակ վայրերի վարչական մեքենայի ներսը։ Վաղուց չքացել էր հայ գյուղապետերի ժառանգական իշխանությունը։ Այսպես, Նախիջևանի խանի կամ նրան ենթակա սուլթանների, հաքիմների ու աղաների միջամտությամբ Ղափանում ժառանգական մելիքները սկսում էին տեղ տալ օտարազգի պաշտոնյաներին կամ իրանական իշխանավորների նկատմամբ իրենց սորկահաճ կամ կրոնադրուժ ախոյաններին։ Լեռնահայաստանի հայ մելիքները ծանր հարվածներ էին ստացել իրանական ռազմական իշխանությունների և հատկապես Հաջի Ալիխան զորագլխի ղեկավարությամբ ձեռնարկված ռազմարշավներից։ Հայաստանի լեռնային շրջաններում և առանձնապես Սյունիքում դաժան բնույթ ստացած այդ արշավանքները իրագործվում էին 80—90-ական թվականներին Գիորգի XI և Արչիլ թագավորների ապստամբության հայկական արձագանքները խլացնելու կամ կանխելու նպատակով։ Այս կապակցությամբ շատ ուշագրավ է, որ 1692 թ. իր հիշատակարանում, հայերի նկատմամբ իրանական սարդարների կողմից ձեռնարկված ճնշումները նկարագրելուց հետո, Մովսես երեցը կանգ է առնում ազգամերժ ու կրոնադրուժ մի շարք սյունեցի դավաճանների վրա, որոնք կառավարական զորքերին միացած ոտքի տակ էին տալիս այս կողմերի հայահոծ վայրերը՝ ահաբեկելով, ավերելով, կողոպտելով ապստամբական շարժման հետ կապ ունեցողներին կամ կասկածելիներին*[121]*։ Հայ մելիքների անունից Պֆալցի կուրֆյուրստին հղած նամակում ասված է, որ այդ հետապնդումների ժամանակ մահապատժի է ենթարկվել նաև Օրիի հայրը*[122]*։*

*Հալածանքների քաղաքականությունը իրանական իշխանության դեմ էր տրամադրում Սյունյաց երկրի և Արցախի հայ մելիքներին։ Վաղեմի հայ ֆեոդալական իշխանության այս հետնորդներն էին ահա, որ XVII դարի վերջերից սկսած ոչ միայն հետզհետե ներգրավվում, այլև գլխավորում են լեռնահայ զանգվածների ազատագրական ճիգերը։*

*Օրիի զեկուցագրում ասված է, որ 1699 թ. ապրիլին Անգեղակոթ ավանում նա հանդիպում է ունեցել տեղի և շրջակա գավառների տասը մելիքների հետ։ Ժամանակակից աղբյուրները վկայում են, որ հայ ազատագրական շարժման մեջ այս ժամանակ դեռ հարատևում էին հեռու անցյալից եկող այն պատկերացումները, որոնք Հայաստանի ազատագրական հույսերը կապում էին Հռոմի պապի միջամտության և «ֆրանկ» թագավորից ստանալիք օգնության հետ։ Այսպես, շվեդացի արևելագետ Հ. Բրենները, որը նույն այդ ժամանակ ճամփորդում էր Հայաստանում, գրում է, որ ապավինելով հին այդ մտայնությանը, հայերը հավատում էին, թե «պիտի հառնի եվրոպական մի թագավոր՝ վերականգնելու նրանց հին թագավորությունը, ազատի հայերին իրենց տառապանքից և վերադարձնի նրանց իրենց վաղեմի բնակավայրը։ Եվրոպական այդ թագավորին,—ասում է Բրենները,—հայերը սպասում են հիմա այնպես, ինչպես հրեաները՝ Մեսիային»*[123]*։*

---

[121] *Տե՛ս Աշ. Հովհաննիսյան, Դրվագներ, II, էջ 308։*

[122] *Տե՛ս Эзов*, Сношение..., *վավ. 5։*

[123] *Brennerus Henricus*, Epitomae commentariorum Moysis Armeni, Stokholmiae, 1723, *էջ 96։*

Վերադառնալով Գերմանիա, կուրֆյուրստին ներկայացված զեկուցագրում Օրին գրում է, որ Անգեղակոթում հավաքված մելիքները դրական վերաբերմունք են ցուցաբերել հերթական Մեսիայի՝ Պֆալցի կուրֆյուրստի՝ իրենց օգնության գալու պատրաստակամությանը, և նրա հետ բանակցությունները շարունակելու համար լիազորել են իրեն՝ Օրիին և Մինաս վարդապետ Տիգրանյանին, հայ գրագետ մի եկեղեցականի, որը ոչ միայն պիտի դյուրացներ Օրիի հետագա գործունեությունը, այլև անձնապես կուրֆյուրստի առաջ հավաստեր նրա նկատմամբ հայ մեծամեծների ունեցած վստահությունը։ Մելիքների լիազորագիրը, որի լատինագիր թարգմանությունն է միայն հասել մեզ, հանձնարարում էր Օրիին որպես Պռոշյան հայ հին իշխանական տոհմի և քրիստոնեության համար նահատակված հայ մելիքների ծնունդ և որպես արժանավորագույն մեկը, որին նրանք իրենց ազատության համար սկսվելիք բանակցությունների գլուխ են նշանակում։ Բացի այդ, մելիքներն այդ երկուսի ձեռքը տվին իրենց կնիքները կրող չգրված թղթեր (քարթ բլանշներ)՝ ըստ հարկի իրենց անունից դիմումներ ներկայացնելու համար։

Դյուսելդորֆում կուրֆյուրստին հանձնած զեկուցագրում Օրին միաժամանակ շարադրում է Արևելյան Հայաստանի ազատագրման նպատակով կուրֆյուրստի նախաձեռնությամբ առաջիկա 1700 թ. մայիսին ձեռնարկվելիք ռազմարշավի իր ծրագիրը։ Ռազմարշավը գլուխ պիտի գար կուրֆյուրստի՝ Հայաստանի ապագա գահակալի, և նրա դաշնակիցների՝ գերմանական Լեոպոլդ կայսրի, Հռոմի պապի և կուրֆյուրստի աներոջ՝ Տոսկանայի մեծ դուքսի համագործակցությամբ։ Քանի որ եվրոպական զորքերը իրանական սահմանագլուխ էին հասցվելու Լեհաստանի և Ռուսաստանի վրայով՝ ապա անհրաժեշտ էր նաև այս պետությունների հոժարակամությունը։ Օրին ենթադրում էր նույնիսկ, թե ցարը պատրաստ կլինի նավեր տրամադրել Վոլգայի ու Կասպից ծովի վրայով իրանական սահմանագլուխ արշավող եվրոպական զորքեր փոխադրելու համար։

Իր ծրագրում Օրին հասկանալի պատճառով իջեցնում էր Իրանի դիմադրական կարողությունը և, ընդհակառակը, բարձրացնում այն օժանդակությունը, որ արշավողներին հատկացնելու էին հայերն ու վրացիները։ Ներկայացնելով կուրֆյուրստին Իրանի ռազմական վիճակը, Օրին նշում էր, որ Իրանը հազիվ 5000 մարդ միայն կարող է դուրս բերել եվրոպական ազատարարներին դիմադրելու համար, քանի որ կրելով վաչկատուն բնույթ, նրա զորքերը համախմբված չեն մի վայրում, այլ իրենց հոտերով ու ողջ տնտեսությամբ տեղադրված են լեռներում։ Զուրկ եվրոպական զորքերից, զենքերից ու կանոնավոր ռազմավարությունից, նրանք անկարող պիտի լինեն դիմադրություն ցույց տալ եվրոպական ազատարարներին։ Գրեթե 2—3 հարյուր հազարի էր հասցնում Օրին ռազմունակ հայերի թիվը, թեև փաստորեն միայն 5000 մարտիկներով էր նրանց մասնակցությունը խոստանում Երևանի առման համար մղվելիք մարտերին։ Ըստ երևույթին նրան հենց այդքան էլ խոստացել էին մելիքները, իրենց գլխավոր հույսը դնելով եվրոպական զորքերի, նրանց տեխնիկայի ու ռազմավարական արվեստի վրա։ Օրին չէր թաքցնում հնարավոր այն վտանգը, որ կարող էր առաջ բերել Թուրքիայի թշնամական միջամտությունը։ Սակայն միաժամանակ հավատացնում էր, թե այդ դեպքում գերմանական զորքերից զատ հայերին ու վրացիներին օգնության կհասնեն հակա-

Թուրքական կոալիցիային մասնակցող եվրոպական մյուս պետությունները՝ Լեհաստանն ու Ռուսաստանը։

Այնուամենայնիվ, Օրիի պֆալցյան ծրագիրը նրա հայացքները դրսևորող կարևոր վավերագրերից մեկն է։ Այստեղ արծարծվում էին ազգային-քաղաքական գաղափարներ, որոնք Աբգար Թոխաթեցու ժամանակ հայերի գիտակցության մեջ հազիվ միայն սաղմնավորվում էին։ Իր ծրագրում Օրին Իրանի կացության մասին հանդես է բերում գովելի իրատեսություն, Սեֆյան ռեժիմի նեխվածության և գրեթե նրա մոտակա անկման անխուսափելիությունը նախատեսելու չափ։ Ծրագրում արվում են դիտողություններ և արձանագրվում փաստեր, որոնք անդրադառնում են XVII դարի վերջերին Արևելյան Հայաստանում ստեղծված իրադրությանը։ Ակներևաբար ծրագրի հեղինակը հաշվի էր առել այն տեղեկանքները, որ ստացել էր համաերկրացիներից և իր առաքելություններով ընդառաջում էր նրանց հայացքներին ու տրամադրություններին։ Ընդառաջելով հայ ազատագրական մտայնության արևմտաեվրոպական կողմնորոշմանը, նա միաժամանակ փորձում էր կամրջել հայ կղերի, մելիքների և առևտրականների ներհակությունները, ակներևաբար ձգտելով դյուրացնել նրանց մտադրությունների իրագործումը։ Հայ ժողովրդի ազատագրման գործի համար նա նախատեսում էր նաև հայ գյուղացիներից հավաքագրելիք մարտիկների և Հայաստանի ապագա «թագավորության» կենտրոն Երևանը գրավելու համար այդ քաղաքի հայ արհեստավորության գործակցությունը։ Արևելյան Հայաստանի ազատագրման գործում նա խոսք է բացում անգամ արևմտահայերի գործակցության մասին։ Ծրագրում հանդիպող բազմաթիվ չափազանցումները, հեղինակի երևակայության ծնունդ լինելով, փաստապես ծառայում էին Պֆալցի կուրֆյուրստին ու նրա դաշնակիցներին շահագրգռելու և շլացնելու, նրանց ռազմական նախաձեռնումներն ու ներդրումներն ապահովելու նպատակին։

Փաստապես Օրիի պֆալցյան ծրագիրը կապված էր կուրֆյուրստի ու նրա դաշնակիցների միջամտության անիրական հեռանկարի հետ։ Ինքը՝ Օրին, առաջինն էր կամ առաջիններից մեկը, որ գիտակցեց այդ՝ տակավին 1700 թ., երբ գերմանական կայսր Լեոպոլդ I-ի արքունիքի հետ բանակցելու համար ժամանեց Վիեննա։ Այստեղ նա հավաստիացավ, որ 1699 թ. Կարլովիցում թուրքերի հետ սեպարատ հաշտություն կնքելուց և սպանական ժառանգության համար Արևմուտքում սկսվող պատերազմի մեջ մխրճվելու դեպքում Հաբսբուրգյան Ավստրիան և նրա արևմտաեվրոպական դաշնակիցները, փաստորեն ի վիճակի չպիտի լինեին զբաղվելու Հայաստանի ազատագրման խնդրով։ Օրիի համար պարզվեց, որ առկա պայմաններում եվրոպական պետություններից միայն Ռուսաստանը կարող է իրական շահագրգռություն ունենալ հայերի խնդրում և գործնականապես զբաղվել դրանով։

## ԳԼՈՒԽ ԵՐՐՈՐԴ

# ՀԱՅ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ ԻՐԱՆԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԹՈՒՐՔ ԶԱՎԹԻՉՆԵՐԻ ԴԵՄ XVIII ԴԱՐԻ ԱՌԱՋԻՆ ԿԵՍՈՒՄ

### 1. ՀԱՅ-ՌՈՒՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿԱՊԵՐԸ ԵՎ ՀԱՅ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ՌՈՒՍԱԿԱՆ ԿՈՂՄՆՈՐՈՇՄԱՆ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՈՒՄԸ XVII ԴԱՐԻ ԵՐԿՐՈՐԴ ԿԵՍՈՒՄ

*1699 թ. Կարլովիցի հաշտությունից հետո թուրք-արևմտաեվրոպական դիվանագիտության մեջ կատարված շրջադարձը հայ ժողովրդի ռուսական կողմնորոշման շարժառիթն էր միայն։ Այդ կողմնորոշման պատմական արմատները պետք է որոնել XV—XVII դարերի ընթացքում Մոսկովյան պետության ծավալման ու հզորացման, Անդրկովկասի բնակիչներին միրձենալու և XVII դարի վերջին քառորդում Թուրքիայի ու Իրանի հանդեպ նրա վարած ակտիվ քաղաքականության մեջ։ Ակնրախ իրողություններ էին դրանք, որոնք Ռուսաստանի նկատմամբ պիտի ուժ տային հայերի դրական ակնկալություններին։*

*Հայ-ռուսական կապերի ամրացման համար նշանակալից դեր կատարեցին, մանավանդ, Սպահանի հայ առևտրական ընկերության հետ 1667 և 1672 թթ. Ռուսաստանի կնքած առևտրական պայմանագրերը։*

*1660 թ. Մոսկվա ժամանեց այդ ընկերության ներկայացուցիչը՝ Իրանի վարչապետի գործակատար խոջա Զաքար Սահրատյանը։ Ժամանելով Մոսկվա, խոջա Զաքարը իր հետ բերել էր ցարի պատվերով Հնդկաստանում գնված մեծագին ապրանքներ, ինչպես նաև հայ վարպետների ձեռքով պատրաստված ադամանդակուռ այն գահը, որը Կրեմլի զինապալատի զարդերից մեկն է ներկայումս։ Խոջա Զաքարը խնդրում էր այդ ապրանքներն ընդունել որպես նվեր՝ ի նշան հայերի և ռուսների «Ի Քրիստոս եղբայրութեան» և ռուս միապետերի կողմից քրիստոնյա ժողովուրդներին ցուցաբերվող հովանավորության։*

*Փոքր-ինչ հետո, 1666 թ. իրանահայ վաճառականների մի մեծ խմբի հետ Մոսկվա ժամանեց Սպահանի հայ առևտրական ընկերության մի այլ ներկայացուցիչ՝ Գրիգոր Լուսիկենցը (ռուսերեն՝ Լուսիկով), որը միաժամանակ դյուրություններ ու արտոնություններ էր խնդրում Ռուսաստանում իրանական ապրանքներ վաճառահանելու կամ Ռուսաստանի վրայով դրանք Հոլանդիա, Շվեդիա, Գերմանիա ու Լեհաստան վաճառելու նպատակով փոխադրելու հա-*

մար։ Քանի որ Լուսիկենցը Մոսկվայում հանդես էր գալիս միաժամանակ որպես շահի դեսպանորդ, նա պարտավորություն է ստանձնում հրաժարվել Թուրքիայի ապրանքափոխադրման մայրուղուց՝ խոստանալով Վոլգայի վրայով կատարել իրանական ապրանքների և առաջին հերթին իրանական մետաքսի արտահանությունը։ Ինքնին հասկանալի է, որ Լուսիկենցի այդ առաջարկությունն արվում էր ի պատասխան ռուսների առաջադրած պահանջի Լուսիկենցի. հայտարարությունից հետո 1667 թ. ցարական արքունիքը պայմանագիր ստորագրեց Սպահանի հայ առևտրական ընկերության հետ, որով մի շարք նպաստավոր պայմաններ ստեղծվեցին ռուս-իրանական առևտրի համար։ Պայմանագիրն իրականացնելու նպատակով ռուսները նույնիսկ հատուկ նավատորմ կառուցեցին Վոլգայի վրա[1]։

Պայմանագրի իրագործումը անմիջապես լուրջ խոչընդոտների հանդիպեց։ Խոչընդոտներից մեկը ռուս-իրանական առևտրի վոլգյան ճանապարհը փակող Ստեփան Ռազինի ապստամբությունն էր, մյուսը՝ ռուս մեծավաճառ առևտրականների այն առարկությունը, թե կնքված պայմանագիրը վնաս է հասցնում ցարական գանձարանին և որ դրանով իրենք զրկվում են Արևելքի և Արևմուտքի միջև միջնորդի դեր կատարելու շահույթից։



Ալեքսեյ Միխայլովիչ ցարին հայ խոջաների մատուցած ականակուռ գահը

1673 թ., ռուս առևտրականներին ընդառաջելով, Մոսկվայի կառավարությունը որոշ սահմանափակումներ մտցրեց պայմանագրի մեջ, սակայն հիմնականում պայմանագիրը չկորցրեց իր նշանակությունը։ Բոժոխից, մետաքսից և ուղտի բրդից զատ, Իրանից Ռուսաստան էին ներմուծվում բարձրորակ կերպասներ ու թավիշներ, քիմխա, կամկա, զարբաֆ և այլ տեսակի մետաքսե գործվածքներ։ Բացի այդ, Իրանից ստացվում էին միտկալներ, զենքեր, թամքեր, թանկագին քարեր (մարգարիտ, զմրուխտ և այլն), ներկեր և չոր մրգեր։ Այդ ապրանքների մի մասն արտահանվում էր Լեհաստան, Գերմանիա, Շվեդիա և Անգլիա։ Իսկ Ռուսաստանից Իրան էին ներմուծվում թանկարժեք մորթեղեն, կաշի, չիթ, մահուդ, քաթան, տարբեր մետաղներ, ապակեղեն և ձկնեղեն։

Վոլգյան ճանապարհը իրանահայ խոջաներին բավականին ապահովում էր թուրքական ուղիների վտանգներից ու կեղեքումներից։ Այնուամենայնիվ

[1] Տե՛ս «Армяно-русские отношения в XVII в.», т. I. Ереван, 1953, էջ 19 և հաջ.։

պայմանագիրը չվերացրեց Թուրքիայի վրայով կատարվող ապրանքարտահանման գերակայությունը։ Ռուս վաճառականները գանգատվում էին, որ իրանահայերը չեն կատարում Թուրքիայի առևտրական ուղուց հրաժարվելու մասին պայմանագրով նախատեսված կետը, և որ ստացվող մաքսային եկամտի մեծ մասը շարունակվում է կուտակվել Թուրքիայի գանձարանում։ 1673 թ. ռուսական արքունիքին տված իր բացատրության մեջ Լուսիկենցը ցույց էր տալիս, թե ինչ հսկայական եկամուտ ունի թուրքական պետական գանձարանը իրանական մետաքսից[2]։ Լուսիկենցի այն խոստումը, թե Իրանը իր ամբողջ արտահանությունը պիտի ուղղի դեպի Կասպի-Վոլգյան ջրուղին, անկատար էր մնում[3], քանի որ խոստման կատարումը կախված չէր միայն իրանահայերի բարի կամքից, այլև Իրանի հետ առևտրական պայմանագրեր ունեցող պետությունների (նախ՝ Պորտուգալիայի և Իսպանիայի, հետագայում՝ Անգլիայի, Հոլանդիայի, իսկ ավելի ուշ նաև Ֆրանսիայի) շահախնդրություններից։ Ահա թե ինչու ռուսների հետ պայմանագիր կնքելուց հետո իսկ, իրանահայ առևտրականները շարունակում էին մեծ չափով կապված լինել թուրքական ճանապարհների հետ։ Բացի դրանից, XVII դարի վերջերից ամրացավ նրանց կապը օվկիանոսային առևտրի հետ։ 1688 թ. նրանք առևտրական պայմանագիր էին կնքել Հնդկաստանում գերիշխող անգլիացիների հետ, որոնք զորեղ մրցակից էին մի կողմից իրանա-ֆրանսիական, մյուս կողմից՝ ռուս-իրանական առևտրի։

Հայ առևտրական շահախնդրությունների այս մասնատումը ինքնին հասկանալի է դարձնում հայ ազատագրական շարժման նկատմամբ իրանահայ առևտրականների վերապահ դիրքավորումը[4]։ Սպահանի խոջաները տնտեսական հենակետեր չունեին հայկական բնաշխարհում։ Իբրև արքունի խոջաներ, նրանք ոչ միայն իրանական արքունիքի գործակալներ էին, այլև օտար երկրներում հաճախ դիվանագիտական հանձնարարություններ էին ստանձնում Իրանի արքունիքից։ Ինքը՝ Լուսիկենցը, նման հանձնարարություններ ուներ շահից և իրեն պարզ հաշիվ էր տալիս այն մասին, որ ժամանել է Մոսկվա՝ համաձայնություններ կնքելու ցարի հետ ի շահ ոչ միայն Ռուսաստանի, այլև Իրանի[5]։ 1667 թ. նա պատվեր ուներ Ռուսաստանից շահ Սուլեյմանին ներգրավելու քրիստոնյա պետությունների՝ Թուրքիայի դեմ կոալիցիայի մեջ։ Մեծ նշանակություն տալով հատկապես ռուսների և լեհերի դաշնակցությանը, նա համոզված էր, որ պատերազմի դեպքում թուրքերը կպարտվեն[6]։ Ի դեպ, Լուսիկենցը մենակ չէր գործում Իրանը հակաթուրքական կոալիցիային մասնակից դարձնելու հարցում։ Լեհաստանի դեսպան հայազգի Բոգդան Գուրդին, որը նույնպես եկամուտ ուներ իրանական արքունիքում, գործում էր նույն ոգով։ Նույնպիսի ջանքեր գործադրում էին նաև հայ ունիթորները, որոնց հետ էլ կապված էր, Լուսիկենցը, հետամուտ լինելով Իրանի ու կաթոլիկ պետությունների՝ Ավստրիայի, Ֆրանսիայի, Վենետիկի, Ֆլորենցիայի, սպանական թագավորի ու Վատիկանի միջև Թուրքիայի դեմ դաշինք ստեղծելուն։ Սպահանում գործող

---

[2] ЦГА, фонд 100, «Снош. России с Арменией» (СРА), 1666—74, № 81 և 142։

[3] Տե՛ս «Армяно-русские отношения в XVII в.», т. I, էջ 113 և հտն.։

[4] Տե՛ս Աշ. Հովհաննիսյան, Դրվագներ, II, էջ 455 և հտն.։

[5] Տե՛ս «Армяно-русские отношения в XVII в.», т. I, էջ 46 և հտն., 70 և հտն., 76 և հտն., 84 և հտն. և այլն։

[6] ЦГА, СРА, 1666—74, № 2, թ. 142։

Ավարիս Ջահկեցի և Անտոն Ապրակունիսեցի հայ դոմինիկյանները 1673 թ. Վենետիկի ծերակույտին հավաստիացումներ էին անում Իրանի, Ռուսաստանի և Լեհաստանի հակաթուրքական կոալիցիայի մեջ մտնելու մտադրության մասին և անգամ լսել էին, որ իբր թե կըզըլբաշները և կոզակները Թուրքիայի դեմ արդեն սկսել են ռազմական գործողություններ։

Ռուսաստանում Լուսիկենցի գաղտնի բանակցությունները կապված էին Իրանի քաղաքական շահախնդրություններին առնչված այս կարգի խնդիրների հետ։ Նա մեկն էր այդ ժամանակվա հայ այն գործիչներից, որոնք հակաթուրքական կոալիցիայի մեջ նշմարում էին ինչպես Իրանի ու Ռուսաստանի, այնպես նաև ողջ «Քրիստոնեական աշխարհի» շահախնդրությունը։ Այս նշանակում է, որ նրա գործունեությունը շարունակում էր կրել իր վրա XVII դարի Արևմուտքի հետ կապված հայ առևտրականների արևմտաեվրոպական կողմնորոշման կնիքը։ Մերձենալով Ռուսաստանին, Լուսիկենցը և իր գործակիցները միայն հող նախապատրաստեցին XVIII դարի իրանահայ առևտրի ապագա ռուսական վերակողմնորոշման համար։

Նույն եզրակացության են բերում մեզ նաև այն դիմումները, որոնք Լուսիկենցի ժամանակ բարձրադիր հայ եկեղեցականները հասցեագրում էին ռուս արքունիքին։ 1671 թ., երբ Լուսիկենցը ուղևորվում էր Մոսկվա՝ ռուս կառավարության հետ նոր պայմանագիր կնքելու, Գանձասարի Պետրոս կաթողիկոսը նրան հանձնարարեց ցարին ուղղած իր դիմումը։ Դիմումի մեջ կաթողիկոսը ցարից խնդրում էր պաշտպանել հայ առևտրականների երթևեկը։ Նույն այդ ժամանակ էջմիածնի Հակոբ կաթողիկոսը գրություն հղեց ռուս արքունիքին, ուր տրտնջում էր իրանական պաշտոնյաների հայերի վրա բարդած հարկերի ծանրությունից և հայերի նկատմամբ կիրառվող կրոնական հալածանքներից։ Հակոբը աղերսում էր, որ իր դեսպանների միջոցով ցարը աղգեցություն գործի իրանական արքունիքի վրա՝ հայերի վիճակը բարելավելու համար[7]։ Ակներև է, որ այս կարգի դիմումների մեջ խոսք չկար իրանահայերի քաղաքական ազատագրման մասին և տակավին չէր շոշափվում Հայաստանի ազատագրման խնդիրը, որի լուծումը, ինչպես ցույց տրվեց վերը, հայ վերնախավերը և մասնավորապես Հակոբ Ջուղայեցին շարունակում էին կապել ոչ թե հատկապես Ռուսաստանի, այլ եվրոպական պետությունների հավաքական միջամտության հետ։

Հայերի աչքում Ռուսաստանի նշանակությունը բարձրացավ, երբ 1676 թ. ռուսները ռազմական գործողությունների անցան և Չիգիրինի մոտ պարտության մատնեցին թուրքերին։ Ժամանակակից Զաքարիա Ագուլեցու վկայությամբ, մի դատարկ բերդ վերցնելով, թուրքերը 185 հազար մարդ կորցրին ռուսների հետ ունեցած ճակատամարտում և «դարձան եկին Ատրանայ, թէ թագաւոր, թէ զօրք։ Օսմանցիք այսպէս մնացին խայտառակ»[8]։ Քրիստոսի խաչելության պատկերին վերագրելով այս հաղթությունը, մի այլ հեղինակ հավաստում էր, թե ռուս թագավորը «արար փախստական զօսմանցիսն, և ամօթալից գոռողն սուլթան Մուհամմատ դարձաւ ի Կ. Պոլիս»[9]։

Ռուսաստանի նկատմամբ հայերի ակնկալությունները ավելի աճեցին 1686 թ. հետո, երբ Մոսկվան միացավ հակաթուրքական կոալիցիային, որի

[7] Տե՛ս «Армяно-русские отношения в XVII в.», т. I, էջ 98։

[8] Զաքարիա Ագուլեցի, էջ 106։

[9] Մատենադարան, ձեռագիր № 1542, էջ 557բ—558ա։

տարած հաղթանակները հայերը վերագրում էին քրիստոնյա պետությունների համագործակցությանը[10]։ Ինչ խոսք, երբ Կարլովիցում Ավստրիան և իր դաշնակիցները Թուրքերի հետ մասնակի հաշտություն կնքեցին, նախկին դաշնակիցներից Հայաստանի ազատագրման միակ ապավենը մնաց Թուրքերի դեմ երես առ երես կանգնած Ռուսաստանը։

Տակավին իննսունական թվականների վերջերին, ուղևորվելով Արևմուտք, Պետրոս ցարը հայտարարում էր, որ մշակութային նպատակներից զատ, իրեն դրդվում է «Տիրոջ խաչի թշնամիների, Թուրքաց սուլթանի, Ղրիմի խանի և բոլոր մուսուլմանական հորդաների թուլացումը»։ Հիրավի, այդ նպատակի համար նա անձնական բարեկամություն և դաշինք էր որոնում արևմտյան տիրապետողների հետ։

Լուրջ շահագրգռություն հանդես բերելով արևելյան քաղաքականության հարցերում, ցարին այդ ժամանակ դեռ չէին հետաքրքրում հայ ժողովրդի քաղաքական բաղձանքները։ Հայտնի է միայն, որ նա ևս լրջորեն մտահոգված էր ռուս-իրանական առևտրի խնդիրներով և այդ սահմաններում բացառիկ ուշադիր էր հայ առևտրականների նկատմամբ։ Ուշագրավ է այն, որ չնայած այդ ժամանակ արևելյան բոլոր մյուս ազգություններին ռուսներն արգելում էին իրենց երկրի վրայով առևտրական կապեր հաստատել Եվրոպայի հետ, այնուհանդերձ շարունակում էին բացառություն անել Սպահանի հայ առևտրական ընկերություններին, հարգելով նրանց հետ կնքած նախկին պայմանագիրը[11]։ Հասկանալի է, որ այս հանգամանքը ամրապնդում էր հայ-ռուսական առևտրական կապերը և ճանապարհ հարթում հայ ազատագրական շարժման ռուսական կողմնորոշման հետագա պարզացման առաջ։

Այս վիճակի մեջ էին հայ-ռուսական փոխհարաբերությունները, երբ 1701թ. գերմանական կայսրի և Պֆալցի կուրֆյուրստի հանձնարարությամբ Իսրայել Օրին և Մինաս վարդապետը ժամանեցին Մոսկվա, ուր նրանք պիտի համոզվեին, որ անհրաժեշտ է շեշտակի շրջադարձ մտցնել Հայաստանի ազատագրման մինչ այդ որդեգրված կողմնորոշման մեջ։

## 2. ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱԶԱՏԱԳՐՄԱՆ ՀԱՐՑԻ ՇՐՋԱԴԱՐՁԸ ԴԵՊԻ ՌՈՒՍԱՍՏԱՆ

1701 թ. Մոսկվայում, հայ-ռուսական բանակցությունների հենց սկզբում, Օրիի և Մինաս վարդապետի համար ակներև է դառնում Հայաստանի ազատագրման հարցի ռուսական կողմնորոշման անհրաժեշտությունը։ Կարլովիցի դաշնագրությամբ ստեղծված իրադրության պայմաններում նրանց գիտակցության մեջ հասունանում էր այն միտքը, որ Մոսկվայում քննարկվելու է ոչ թե Պֆալցի կուրֆյուրստի և նրա դաշնակիցների զորքերը Ռուսաստանի վրայով Իրանի սահմանագլուխը փոխադրելու խնդիրը, այլ հայ ժողովրդին «բաբելոնյան գերությունից» ազատելու համար Ռուսաստանի ստանձնելիք նախաձեռնության հարցը։ Այդ նկատառումով էլ ռուսական արքունիքին նրանք ներկայացրին Սյունիքի հայ մելիքների ստորագրություններն ու կնիքները կրող

---

[10] Տե՛ս նույն տեղում, էջ 479։

[11] Տե՛ս *В. Восканян,* Ново-торговый устав и договор с Армянской компанией, «Известия» АН Арм. ССР (общ. науки), 1947, № 6.

մի ուղերձ, ուր խնդիր էր ուղղված ցարին՝ իր ձեռքն առնելու Հայաստանի ազատագրման գործը[12]։ Օրին միաժամանակ մշակեց ու ռուսական արքունիքին ներկայացրեց մի շարք լրացուցիչ բացատրություններ, որոնց մեջ, ըստ էության, արծարծում էր Հայաստանի ազատագրման իր նոր, Մոսկովյան ծրագիրը[13]։

Հայաստանի ազատագրումը պիտի գլուխ բերվի ցարի ղեկավարությամբ և, հիմնականում, նրա իսկ միջոցներով։ Հարկ լինելու դեպքում, ասում է իր բացատրությունների մեջ Օրին, Եվրոպայի մյուս պետությունները մասնակցություն կունենան այդ ձեռնարկման մեջ՝ ցարի տրամադրության տակ դնելով իրենց օժանդակ ուժերն ու միջոցները, իսկ դրանք կօգտագործվեն միայն այն դեպքում, եթե թուրքերը, դիմադրելով ցարին, պատերազմ հայտարարեն նրան[14]։

Անդրկովկասը (Կասպից ծովափը, Թիֆլիսը, Երևանը և Նախիջևանը) գրավելու համար, գրում էր Օրին, ռուսական 25 հազար կողակ հեծյալներին և 10 հազար հետևակ զորքերին միանալու համար հանդես կգան վրաց և հայ զինված ուժերը։ Կենտրոնական Իրանի դիմադրության դեպքում, ազատարարների բանակը կռվով կանցնի Արաքսը՝ Թավրիզն ու Իրանական մետաքսի հայրենիք Գիլանը գրավելու համար[15]։ Օրին այստեղ շոշափում էր մի հեռանկար, որը Ռուսաստանի համար սուր այժմեականություն էր ստանալու հետագայում՝ Պետրոս Մեծի պարսկական արշավանքի ժամանակ։

Իր գրությունների մեջ Օրին քանիցս վկայակոչում էր Իմերեթի նախկին թագավոր Արչիլին՝ վրաց ազատագրական շարժման վաղեմի ղեկավարին, որն, ի վերջո, ապաստան էր գտել Մոսկվայում և Օրիի պես ու նրա հետ համերաշխ Ռուսաստանի հետ էր կապում իր հայրենիքի ազատագրման հույսը[16]։ Օրին ենթադրում էր, որ առաջիկա արշավանքի ժամանակ ինքը և Արչիլը կփակեն Արաքսի անցքը՝ պարսիկներին հնարավորություն չեն տա՝ ամայացնելու Հայաստանը և դրանով իսկ նրանք հնարավորություն չեն ունենա ռուսական զորքերին զրկելու պարենավորման հենակետից[17]։

Մոսկվայից Պֆալցի կուրֆյուրստին ուղղած մի նամակում Օրին գրում էր. «Վրաց իշխանը վաղուց է ճանաչում իմ ծնողներին և սիրով ու բարեհաճությամբ վերաբերում ինձ, վստահելով ամեն բանում և համերաշխ է բոլոր իմ գործողություններին»։ Ապագա համատեղ գործունեության համար նա ենթադրում էր օսմանցիների դեմ ներգրավել ոչ միայն Անդրկովկասի վրացիներին, այլև «թուրքմեններին» (իմա՝ ադրբեջանցիներին)։ Օրիի պես, ըստ երևույթին, Արչիլը ևս հետամուտ էր անդրկովկասյան ժողովուրդների ազատա-

---

[12] Հմմտ. Эзов, Сношение..., № 6 և դրա լատիներեն ու ռուսերեն հին թարգմանությունները, № 7 և 8։ Ցարին ներկայացված հայերեն ուղերձի քննությունը ցույց է տալիս, որ 1699 թ. ապրիլի 29-ին թվագրված այդ թուղթը փաստորեն խմբագրված է Օրիի և Մինաս վարդապետի կողմից, Կարլովիցի հաշտությունից հետո։ Տե՛ս այս մասին Աշոտ Հովհաննիսյանի «Հայ-ռուս օրիենտացիայի ծագման խնդիրը», Էջմիածին, 1921, և «Դրվագներ», II, էջ 341։

[13] Տե՛ս, Эзов, Сношение..., № 33, 36 37, 40—44։

[14] Տե՛ս նույն տեղում, № 79, 80 83, (1 և 2), հմմտ. նաև № 110։

[15] Տե՛ս նույն տեղում, № 65։

[16] Տե՛ս «Переписка на иностранных языках грузинских царей с российскими государями 1639—1700 гг.», СПб., 1861, էջ XXV։

[17] Տե՛ս Эзов, Сношение..., № 141, 145։

վըրական ընդհանուր ճակատ ստեղծելու ուղեգծին, որն իրեն լիովին արդարացրեց Պետրոս Մեծի պարսկական արշավանքի տարիներին։

1703 թ. Օրին դեսպանական պրիկազին ներկայացրեց իր ցուցումներով մշակված Հայաստանի աշխարհագրական քարտեզը։ Նա ցարի ուշադրությունն էր հրավիրում այն բանի վրա, որ Անդրկովկասի իրանական մասում, Երևանի



Պետրոս Մեծ

բերդից զատ, ուրիշ ամրություն չկար։ Քիչ բերդեր կան նաև Արևելյան Անատոլիայում, գրում էր Օրին, և ընդամին այդ երկիրն ունի գլխավորապես հայ և հույն բնակչություն։ Թուրքերը չեն կարող պլխի չընկնել, որ Անդրկովկաս մանելուց հետո ռուսների առաջ ճանապարհ է բացվելու դեպի Կ. Պոլիս։ Եթե թուրքերը փորձեն դիմադրություն ցույց տալ ռուսներին, ցարը պետք է դաշինք որոնի թուրքերի մշտական թշնամի Ավստրիայի հետ[18]։

Անդրկովկասյան ժողովուրդներից զատ, Թուրքիայի դեմ Օրին նախատեսում էր հույների, քրդերի, արաբների և ասորիների համատեղ պայքարը[19]։

Հայ պատվիրակներին հասկացրին, որ ցարը կարող կլինի իր ձեռքն առնել Հայաստանի ազատագրման գործը միայն շվեդների դեմ մղվող պատերազմի ավարտումից հետո։

Մեզ են հասել մելիքների անունից կազմված գրություններ, որոնք 1703 թ.

---

[18] Տե՛ս «Армяно-русские отношения в первой трети XVIII в.», т. II, ч.I, Ереван, 1964, док. № 107.

[19] Տե՛ս Эзов, Сношение..., փաստ. 98 և 100։

*ներկայացված են եղել Մոսկվայի դեսպանական պրիկազին և հաստատում են հայ մելիքներին Օրիի արած այն հավաստիացումը, թե ցարը բարեհաճ տրամադրություն է հայտնել՝ շվեդական պատերազմից հետո իր ձեռքն առնելու Հայաստանի ազատագրման գործը[20]։*

*Այդ գրությունների վավերականությունը կասկածի տեղիք է տվել քննական պատմագիտությանը։ Կարծիք է հայտնվել, որ մելիքների կողմից իրենց ստացած լիազորությունների վրա հիմնված, Օրին և Մինաս վարդապետը օգտագործել են նրանց կնիքները կրող մաքուր թղթեր և դրանց վրա պատասխան գրել մելիքների անունից[21]։ Քանի որ դեսպանական ատյանը այդ թղթերը ընկալում էր որպես մելիքներից ստացված պատասխան և Օրիի բանակցությունների ժամանակ դրանք կատարեցին իրենց նպատակադրած խնդիրը, ուստի և դրանք պետք է դիտվեն որպես այնպիսի փաստաթղթեր, որոնք լուսաբանում են հայ ազատագրական ձեռնարկումների ռուսական կողմնորոշման այս բախտորոշ փաստի պատմությունը։*

*Աչքի առաջ ունենալով իրանական արշավանքի հեռանկարը, Պետրոս ցարը անհրաժեշտ գտավ հետախուզել Անդրկովկասի ապագա ռազմաբեմը և պարզել տեղական բնակչության տրամադրությունները՝ Ռուսաստանի հանդեպ։ Օրին պատրաստակամություն հայտնեց մասնակցելու հետախուզական այդ աշխատանքներին։ Այդ անհրաժեշտ էր, մանավանդ, հայ մելիքների հետ իր հանդիպումն ու կապերն ամրապնդելու համար։*

*Օրիի ցանկությունը ոչ միայն հավանություն գտավ դեսպանական ատյանի կողմից, այլև նպատակահարմար համարվեց, որ Իրան ուղղվելիք առաքելությունը գլխավորի հենց ինքը՝ Օրին։ Նպատակահարմար համարվեց, մանավանդ, օգտագործել գերմանացի հովանավորողների հետ նրա ունեցած առնչությունները, այդ առաքելության համար հավատարմագրեր ձեռք բերելու նպատակով։ Այդ անհրաժեշտ էր, որպեսզի վարագուրվեր Օրիի կապը Ռուսաստանի հետ և պատճառ չդառնար Ռուսաստանի նկատմամբ Իրանի կասկածամտության, որ սրվել էր, հատկապես, Վոլգայի վրա ռուսների ուժեղ նավաշինարարության կապակցությամբ։ Ենթադրվում էր նաև, որ Օրիի արևմտյան հովանավորողները նրան կտրամադրեին սպաներ, ինժեներներ ու զինագործներ՝ Իրան ուղեկցելու և, ի վերջո, դրանով նա հնարավորություն կունենար ռուսական ապագա ռազմարշավի համար Աստրախանում կարաբինակիրների գունդ կազմակերպելու[22]։ Օրիի իրանական առաքելությունը դյուրացնելու և մասնավորապես նախատեսված գնդի կազմակերպումը գլուխ բերելու նպատակով ցարը նույնիսկ կարաբինակիրների գնդապետի կոչում շնորհեց նրան։*

*1704 թ. գերմանական կայսրին և Պֆալցի կուրֆյուրստին հասցեագրված հանձնարարականներով Օրին ժամանեց Վիեննա։ Սակայն Օրիի գերմանական հովանավորողները նպատակահարմար չգտան ռուս-շվեդական պատերազմի պայմաններում Օրուն տալ իրենց հավատարմագիրը՝ այլ հարմար նկատեցին նրա համար համապատասխան հանձնարարագրեր ստանալ Հռոմի պապից։ Ըստ այդմ, Օրին պիտի մեկներ Սպահան՝ քրիստոնյաների դեմ Իրանում*

---

*20 Տե՛ս նույն տեղում, վավ. 98, 100, 103, 204։*

*21 Տե՛ս Աշոտ Հովհաննիսյան, Հայ-ռուս օրիենտացիայի ծագման խնդիրը և նույնի «Դրվագներ», II, էջ 523—534։*

*22 Տե՛ս* «Армяно-русские отношения в первой трети XVIII в.», ч. I, *վավ. 91, 92, 94, 1—2 հոդվածները։*

սկսված Հալածանքներին վերջ դնելու համար Հռոմի կողմից Իրանի շահի միջնորդությունը խնդրելու պատրվակով։

Բոլոր այս նախազգուշությունները, սակայն արդելք չեղան, որ երբ, 1708 թ. սկզբներին, Օրին հասավ Իրանի սահմանագլուխ Շամախի քաղաքը, նրան դիմավորեին ոչ թե որպես ռուսական հանձնարարականով պաշտպանված պապական լեգատի, այլ՝ որպես պապական հավատարմագրով ծպտված ռուսական դեսպանի։ Ահա թե ինչու Իրանում նրան առավել մեծ թշնամանքով դիմավորեցին հենց տեղում գործող լատին միսիոներները և մասնավորապես առևտրական արտոնագրեր ստանալու համար Իրանի հետ բանակցությունների մեջ մտած կաթոլիկ Ֆրանսիայի դեսպանորդը։ Վերջինիս հետ կապված շրջաններում խմորվեցին զրույցներ, թե ռուսական ծառայության գնդապետ Օրին ծագում է հայ արքաների սերնդից և մտադրություն ունի ռուս թագավորի օգնությամբ վերականգնել իր նախնիների թագավորությունը։ Եղան նույնիսկ կարծիքներ, թե նա ինքն իսկ այն մարդն է, որին ենթադրվում է բազմեցնել հայկական գահին։ Որպես ապացույց մատնանշվում էր, թե այդ մասին նույնիսկ փակագիր վկայություն կա նրա «Իսրայել Օրի» անվան մեջ, ուր դժվար չէ նշմարել ֆրանսերեն «il sera roi» («նա թագավոր կլինի») անագրամը[23]։ Նման հերյուրանք հեղհեղողները նպատակ ունեին խափանել Օրիի առաքելությունը, թեև, փաստորեն, բարձրացված աղմուկը միայն սաստկացրեց նախապաշարումներով բռնված շահ Սուլթան-Հուսեյնի տարակուսանքը, երկյուղ առաջացնելով նրա մեջ, թե Օրիի ձեռնունայն վերադարձը կարող է զայրացնել ցարին։ Շահի այդ երկյուղն էլ հենց արագացրեց «պապական դեսպանի» մեկնումը Շամախուց՝ Սպահան։

Իրանի մայրաքաղաքում Օրիի մուտքը կատարվեց պատշաճ հանդիսավորությամբ։ Եվ թեպետ նրա բանակցությունների անմիջական արդյունքը աննշան եղավ, սակայն Օրիի երկամյա դեգերումը Իրանում և Անդրկովկասում մեծապես ծառայեց նրա բուն նպատակին։ Ռուսական ծառայության հայազգի գնդապետի շքեղ դեսպանությունը արտակարգ տպավորություն թողեց Օրիի հայրենակիցների և առաջին հերթին «ազգը» ներկայացնող վերնախավերի՝ հայ եկեղեցականների, մելիքների և վաճառականների վրա, նրանց ակնկալող հայացքը ավելի որոշակիորեն շրջելով դեպի Ռուսաստան։

Սպահան ուղևորվելիս և Սպահանից վերադառնալիս, Օրին հանդիպումներ ունեցավ հայոց ընդհանրական կաթողիկոսի՝ Ալեքսանդր Ջուղայեցու հետ։ Այդ առումով ցարին հասցեագրած նամակում վերջինս հավաստում էր, որ Օրիի իրանական դեսպանությունը «համընդհանուր հիացմունք առաջացրեց» և որ հայազգի դեսպանը մեծ խնդություն ու հրճվանք պատճառեց իրեն՝ կաթողիկոսին, հավաստիացնելով հայ ազգի նկատմամբ ցարի տածած սիրո մասին[24]։ Այնուամենայնիվ հայ եկեղեցու վեհապետը շրջահայացորեն զգուշացավ Ռուսաստանի նկատմամբ քաղաքական համակրանքի որևէ պատասխանատու հայտարարությունից։ Նա խուսափեց Ռուսաստանի քաղաքական հովանավորության մասին որևէ ակնարկից անգամ, վարքագիծ, որ հատկանշական էր Ալեքսանդր կաթողիկոսի հաջորդների համար ևս, որոնք լավագույն դեպքում իրենց գրություններում մեջ սահմանափակվում էին ցարի «բարենպատակ գործերին» ծառայելու մասին մշուշապատ ակնարկներով միայն։

[23] *Krusinski*, Tragica vertentis belli persici historia, Leopoli, 1740, էջ 262։

[24] Տե՛ս «Армяно-русские отношения в первой трети XVIII в.», ч. I, վավ. 155։

*Այս ընթացքում տեղի ունեցավ նաև Օրիի հանդիպումը Գանձասարի Եսայի կաթողիկոսի հետ։ Սերված լինելով Խաչենի հինավուրց իշխանների տոհմից, Եսայի կաթողիկոսն արտահայտում էր ոչ միայն հայ բարձր եկեղեցականության, այլև Արցախի հայ մելիքների մեծ մասի տրամադրությունները։ Ղարաբաղի բեկլարբեկությունը սերտ կապեր ուներ ոչ միայն հայկական ողջ լեռնաստանի, այլև Կասպիական ծովեզրի՝ մետաքսառատ Շամախու, Գանձակի և մերձակա այլ հայաշատ վայրերի հետ։ Գանձասարի հոգևոր պետերը մրաց ղեկավար շրջանների հետ ևս լավ հարաբերությունների մեջ էին։ Մոսկվայի, Աստրախանի և բովանդակ Հարավային Ռուսաստանի ու Ուկրաինայի հայ եկեղեցական համայնքները Գանձասարի կաթողիկոսությանը ենթարկելու նպատակին հետամուտ՝ Եսային քաղաքական շեշտված հակում ուներ դեպի Ռուսաստանը։ Հայ իշխող դասի ներկայացուցիչների մեջ առաջիններից մեկն էր նա, որ ի վերջո դիմաշրջվեց դեպի Օրիի մոսկովյան ծրագիրը և հետագայում հանդես եկավ որպես այդ ծրագրի կենսագործման եռանդուն պրոպագանդող և կազմակերպիչ։*

*Ընկերանալով Օրիին, 1710 թ. Եսայի կաթողիկոսը պատրաստություն տեսավ երկու եպիսկոպոսների հետ մեկնելու Մոսկվա, ներկայանալու ցարին՝ իր ու իր երկրի բաղձանքները նրան հայտնելու համար։*

*Որոշ հիմքեր կան ասելու, որ Սպահանից վերադառնալիս, Օրին եղած պիտի լինի նաև Գանձակում և հանդիպում ունեցած Ղարաբաղի հայ ղեկավարների հետ։ Այս բանի վկայությունն է հիշյալ վայրերի մի շարք հայ եկեղեցական և աշխարհական գործիչների 1721 թ. նամակը՝ հասցեագրված Պետրոս I-ին։ Նամակը ստորագրողները վկայում են, որ Օրին տեղեկացել է իրենց երկրի բոլոր ելումուտերի, ճանապարհների, մետաքսի արտադրության և իրանական զորաբանակի մասին։ Եսայի կաթողիկոսից ու Ղարաբաղի չորս վանահայրերից զատ, այդ նամակի տակ կան Ջրաբերդի Մելիք-Եսայու և գանձակեցի ու ղափանցի երեք «պատվավոր քաղաքացիների» ստորագրությունները*[25]*։*

*Իրանում դեգերելու ժամանակամիջոցին, Օրին տեղեկություններ էր հավաքում նաև Թուրքիայի ռազմական ուժերի ու հնարավորությունների մասին։ Մոսկվա հղած իր տեղեկագրերում անդրադառնում էր Ռուսաստանի և Թուրքիայի զինաքախման հեռանկարներին։ Իր տեղեկագրերից մեկում նա գրում է, որ Կ. Պոլսին մոտենալու առավել կարճ ճանապարհն անցնում է Փոքր Ասիայի ցամաքային մատույցներով։ Օրիին ակներևաբար հայտնի էին Պետրոս Մեծի մտորումները՝ Թուրքիայի ավերակների վրայով Կ. Պոլիս մտնելու մասին, որոնցից ցարը հրաժարվեց, հավանորեն, միայն Պրուտի արշավանքի անհաջող ելքից հետո (1711)։ Օրիին առավելապես մտահոգում էին այն արգելքները, որոնք կարող էր ստեղծել Թուրքիան՝ ռուսների Իրան արշավելու դեպքում։ Նա նախատեսում էր Թուրքիայի կովկասյան գործակալների՝ Դաղըստանի ֆեոդալների դիմադրությունը։ Հնարավոր այդ դիմադրության դեմ Օրին խորհում էր Շիրվանում քաղաքական հակակշիռ ստեղծելու մասին։ Այդ նպատակով է, որ նա անհրաժեշտ համարեց հանդիպում ունենալ և բարեկամություն հաստատել Շիրվանի տեղական ղեկավարների հետ։ Առանձնապես*

---

[25] *Տե՛ս* «Армяно-русские отношения в первой трети XVIII в.», ч. 1, *վավ. 161։*

բարեկամացավ Ղուրայի խանի հետ, չանք չխնայելով նրան Ռուսաստանի կողմը թեքելու։ Նիզարադ նավահանգստի մոտ, ինչպես հետագայում տեղեկացնում էր Մինաս վարդապետը, Օրին կամուրջի հիմք դրեց, ուր նույնիսկ ամրացրեց ռուսական զինանիշը։ Խանի համաձայնությամբ տեղական գետերից երկուսի արանքում հարմար տեղ ընտրեց՝ ապագայում այդտեղ քաղաք կառուցելու, ի նշան «ցարի և շահի բարեկամության»[26]։

Հայ քաղաքական նշանավոր գործչի այս հոգսերի ու գործողությունների մեջ դժվար չէ նշմարել՝ իր ժողովրդի ազատագրական շարժումը ազգային մեկուսացման փակուղուց դուրս բերելու բացառիկ շրջանկատ ու հեռահայաց ձգտումը։ Նրա նախատեսումներն ու վարքագիծը լիակատար արդարացում գտան հետագայում՝ XVIII դարի 20-ական թվականներին, Անդրկովկասյան ժողովուրդների ազատագրական շարժման ժամանակ։

Մոսկվա հղած իր տեղեկագրում Օրին չէր շարադրել Իրանում ու Անդրկովկասում արած իր դիտողությունների և եզրակացությունների մանրամասն զեկուցագիրը։ Ըստ երևույթին, այդ բանը նա կատարելու էր Մոսկվա վերադառնալուց հետո։ Սակայն անակնկալ մահը (1711 թ. սեպտեմբեր) նրան միջոց չտվեց իրագործելու այդ մտադրությունը։

Օրիի սկսած գործը շարունակեցին նրան գործակցող Մինաս վարդապետը և մանավանդ հայ մելիքների ու յուզբաշիների քաղաքական գլխավոր խորհրդատուն ու ղեկավարը՝ Եսայի կաթողիկոսը։ 1718 թ. Պետրոս ցարին հղած իր նամակում Եսային գրում էր, որ հայ մելիքների, յուզբաշիների ու նրանց ստորադրյալների հետ մեկտեղ կամենում է գտնվել ցարի հովանու ներքո և պատրաստ է իր ծառայությունները մատուցելու նրան, հենց որ վերջինս իր զորքերով մտնելու լինի Անդրկովկասի սահմանները։ Այդ օրվա հետ էր կապում Եսային հայ ժողովրդի ազատագրման հեռանկարը[27]։

Օրիի և իր գործակիցների ուլենշող գործունեությունը պատմականորեն բախտորոշ գործողությունների վերածվեց միայն 1720-ական թվականների սկզբներին։

Անդրկովկասի ժողովուրդների պատմության շրջադարձային այս պահին միայն դեպի Ռուսաստան կողմնորոշվող հայ ազատագրական շարժումը զինված պայքարի բնույթ ստացավ։ Այն իր մեջ ներգրավեց ոչ միայն շարժումը կազմակերպող ու ղեկավարող հայ հասարակական վերնախավերին, այլև ժողովրդի լայն զանգվածներին, ի տարբերություն դրան նախորդող ժամանակաշրջանի, երբ հայ ազատագրական շարժման ռուսական կողմնորոշումը գտնըվում էր սոսկ գաղափարական խմորման ու նախապատրաստման շրջանում, երբ շարժումը համակել էր առանձին գործիչների միտքը, սակայն լայն արձագանք չէր գտել ժողովրդական զանգվածներում։ XVIII դարի 20-ական թվականները մի ժամանակաշրջան էին, երբ Հայաստանի ազատագրմանը նախանձախնդիր գործիչները, ահով պաշարված, հույժ գաղտնապահություն էին բանեցնում, երբ հարկ էր լինում բացահայտելու իրենց նպատակադրումները։ Պատահական չէ, որ դեսպան Վոլինսկուն տված իր մի հրահանգում ցարը առանձնապես կամենում էր տեղեկանալ՝ «կան արդյոք նշանավոր մարդիկ հայ ազնվականների և վաճառականների մեջ և ինչպես են նրանք վերաբեր-

---

[26] Նույն տեղում, վավ. 308, 2—3-րդ կետերը։

[27] Նույն տեղում, վավ. 156։

վում դեպի ցարական մեծությունը»[28]։ Կամ Օրիի գործակից Մինաս վարդապետին հղելով Անդրկովկաս, ռուսական կառավարությունը նրա միջոցով դեսպան Վոլինսկուն ուղղած հրահանգում պատվիրում էր՝ «տեղեկություններ հավաքել հայ ժողովրդի մասին, իրազեկ դառնալ նրա թվաքանակին և ուժին, պարզել, թե որ չափով է նա հակված ցարական մեծության կողմը»[29]։ Ակներև է, որ ինչպես Օրիի իրանական դեսպանագնացության, այնպես էլ նրա գործակցի՝ դեպի Անդրկովկաս ձեռնարկած ուղևորության ժամանակ տակավին հարկ կար նոր ի նորո ճշտելու և հավաստիանալու հայ ժողովրդի իրական վիճակի, նրա քաղաքական հեռանկարների, դեպի Ռուսաստան կողմնորոշվելու տրամադրության մասին։

## 3. ՊԵՏՐՈՍ ՄԵԾԻ ԻՐԱՆԱԿԱՆ ԱՐՇԱՎԱՆՔԸ ԵՎ ԱՆԴՐԿՈՎԿԱՍՅԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐԸ

XVII դարի վերջին տասնամյակներում Իրանին ենթակա ժողովուրդների ծանր կացությունը հաջորդ դարի սկզբներին վերածվում էր քաղաքական տագնապի։ Կենտրոնական իշխանության տկարացումը, տեղերում սաստկացող կամայականություններն ու բռնությունները հպատակ ժողովուրդների մեջ ոչ միայն խոր անբավականություն էին սերմանում, այլև անկախություն նվաճելու համար պայքարի բուռն տրամադրություններ զարթնեցնում։

Հպատակների դժգոհություններով և միջցեղային ու միջֆեոդալական ներհակություններով պառակտված Սեֆյան Իրանի տարբեր ծայրերում խմորվում էին և բռնկվում տեղական ցեղապետերի ու ֆեոդալների զինված ապստամբություններ։ Առևտրական պայմանագիր կնքելու նպատակով 1715—1717 թթ. Իրանում դեգերող ռուսական դեսպան Վոլինսկին գրում էր. պարսիկները «ի վիճակի չեն պաշտպանվելու ոչ միայն թշնամիներից, այլև իրենց ապագա ապստամբներից և սակավ են այն վայրերը, ուր չեն ծագել ապստամբություններ»։ Նույն երևույթն է նկատի ունեցել նաև XVIII դարի հայ պատմիչներից մեկը, երբ գրել է, թե շահի ծառաները և ծառայակիցները թագավորացել էին և թագավորը ծառա դարձել՝ կրելով միայն թագավորի անունը[30]։

1715 թ. արաբները գրավել էին Պարսից ծոցի կղզիները։ Նույն տարում սկսեցին ապստամբել իրանական քրդերը։ 1719 թ. սրանք գրավեցին Համադանը և սպառնում էին Սպահանին։ 1717 թ. Մուղանի դաշտում գլուխ էին բարձրացրել Շահսևան կոչվող թրքախոս ցեղերը։ 1719 թ. ոտքի ելած ուզբեկները ասպատակում էին Խորասանի կողմերը։

Նույն այդ տարիներին սպառնալից ծավալ էին ստանում լեզգիների ասպատակությունները։ Տակավին 1712 թ. լեզգիներին գլխավորող Սուրխայ խանի և Հաջի Դավութի հեծյալները հարձակվեցին ու ավարի ենթարկեցին Շամախու և նրա շրջակայքի գյուղերը՝ սպանելով 300 ռուս առևտրականների և կողոպտելով միլիոնների արժեք ունեցող նրանց ապրանքապահեստները։ Թեպետ տեղական խաները ճնշեցին լեզգիների այս հարձակումները, սակայն 1719 թ. նրանք կրկնեցին իրենց «չափիղունը», այժմ արդեն ոչ միայն ապրան-

---

[28] С. Соловьев, История России с древнейших времен, М., 1868, т. XVIII, էջ 28։
[29] Эзов, Сношение..., վավ. 204։
[30] Տե՛ս Խաչատուր Ջուղայեցի, էջ 226։

քառաա Շամախին ավարի տալու, այլև 1717 թ. Իրանի հետ դեսպան Վոլինսկու կնքած առևտրական պայմանագիրը և Անդրկովկասում առող ռուսական ազդեցությունը ոչնչացնելու վճռականությամբ։

Ինչպես XVII դարում Սպահանի հայ առևտրական ընկերության հետ վարած բանակցությունների ընթացքում, այնպես էլ իրանական պետության հետ ռուսական դեսպանի ունեցած հանդիպումների ժամանակ, Ռուսաստանը հետամուտ էր իրանական մետաքսի ամբողջ արտահանությունը Թուրքիայի ցամաքային ճանապարհներից շրջելու Դնեպրի, Կասպից ծովի և Վոլգայի ջրուղին։ Այդ նպատակի իրագործումը հրամայական դարձավ, երբ Հյուսիսային պատերազմը մոտեցավ իր ավարտին և կարելի էր այլևս չկասկածել, որ Բալթիկ ծովի արևելյան ափերի կարևոր տեղամասը դառնալու է Ռուսաստանի սեփականություն՝ առևտրական հանգույցի դեր տալով Իրանից Արևմուտք անցնող ճանապարհին։

Սակայն այդ ցանկությունը հանդիպում էր Իրանի և, մանավանդ, Թուրքիայի դիմադրությանը։ Լեզգիների քանիցս կրկնվող հարձակումները ձեռնարկվում էին հենց Թուրքիայի սադրանքով։ 1720 թ. լեզգի հրոսակախմբերը Սուրխայի առաջնորդությամբ ավերեցին Լոռվա գյուղերն ու ավանները, ջարդեր կատարեցին և մեծաքանակ գերիներով ու ավարով վերադարձան Դաղստան։ 1721 թ. օգոստոսի 15-ին նրանք խուժեցին Շամախի, կոտորեցին 4—5 հազար շիա բնակչություն և կողոպտեցին ռուս առևտրականներին։ Անդրկովկասի 30 հազարի հասնող խանական զորքերը անկարող եղան զսպելու Թուրքիայի հրահանգներով գործող լեզգի ֆեոդալներին։

Նույն տարվա աշնանն ու հաջորդ գարնանը լեզգի ասպատակիչները երկիցս մտան Քուռ, Արաքս, Թարթառ, Խաչեն և Կարկառ գետահովիտների հայաշատ շրջանները, կողոպուտի և գերեվարության ենթարկելով բնակչությանը։ Վարանդայի Մելիք-Բաղիրը միայն հարուստ նվերների գնով կողոպտիչներից ազատեց իր գավառը։ 1722 թ. գարնանը լեզգիները Մուղանի կողմից մտան Դիզակի գավառը և ասպատակեցին Խաչենը։ Նրանց դիմադրեց միայն Ջրաբերդը, որի պաշտպանությունը իրենց ձեռքն էին առել Շամախուց ժամանած երիտասարդ մարտիկների ջոկատները՝ Ավանի, Շրուանի, Շահինի և Սարուխանի ղեկավարությամբ։ Զինված դիմադրության հանդիպելով Ջրաբերդում, լեռնցի ասպատակիչներն ստիպված եղան Քուռի վրայով նահանջել դեպի Դաղստանի լեռները։

Ի պատասխան Շամախում կատարված դեպքերի, 1721 թ. Պետրոս Մեծը որոշեց մեկընդմիշտ զենքի ուժով լուծել իրանական մետաքսի արտահանության խնդիրը։ Այս բանն անհրաժեշտ էր, քանի որ օսմանյան Թուրքիան օգտագործելով Իրանի ծանր դրությունը, իրեն հայտարարում էր Անդրկովկասի և Ատրպատականի «օրինավոր ժառանգորդը», սպառնալով զինակալել Սեֆյանների տիրապզրկված երկրամասերը։

Տակավին իր դեսպանության ժամանակ Վոլինսկին էլ գտնում էր, որ ցարը կարող է իր կողմը գրավել Պարսկաստանի ժողովուրդներին, միայն զենքի միջոցով, ինչպիսին էր այժմ նաև Պետրոս ցարի կարծիքը։

1722 թ. օգոստոսին ռուսական զորքերը մտան Դերբենդ և պատրաստվում էին շարունակել արշավանքը՝ Իրանի Կասպյան ամբողջ ծովեզերքը գրավելու նպատակով։ Հայերն ու վրացիները ցնծությամբ ընկալեցին ռուսական արշավանքի լուրը։ Հիրավի, տակավին արշավանքից առաջ էր Պետրոս

*ցարը բանակցությունների մեջ մտնել հայ և վրացի ներկայացուցիչների հետ, խոստանալով կազմակերպել հայ-վրացական պետություն՝ Ռուսաստանի հովանու ներքո[31]։ Վրաստան ուղարկված իշխան Տուրկեստանովի միջոցով նա Վախթանգին առաջարկում էր՝ իր զորքերով առաջ շարժվել Կասպից ծովեզրի ուղղությամբ՝ Դերբենդի և Բաքվի միջև գտնված որևէ վայրում ռուսական զորքերի հետ հանդիպելու համար։ Ցարը միաժամանակ զգուշացնում էր Վախթանգին, որ պետք չէ վաղաժամ արթնացնել Թուրքիայի կասկածամտությունը և չպետք է թույլ տալ, որ Թուրքիան խոչընդոտներ հարուցի այդ «աստվածահաճո գործի դեմ»[32]։ Իհարկե սխալ կլիներ ենթադրել, թե ցարը առաջ էր քաշում հայ-վրացական թագավորության գաղափարը, ելնելով հայ և վրաց ժողովուրդների ինքնորոշման ձգտումներից։ Նա ընդառաջում էր հայ և վրաց ղեկավարների «ազատագրման» գաղափարին, որքանով դա կարող էր նպաստել Կասպիականի ավազանում Ռուսաստանի ամրանալուն։*

*Վախթանգի հետ կապված հայ գործիչներին հայտնի էր Պետրոսի ծրագիրը, և նրանք հոժարամիտ էին դրան։ 1722 թ. գարնանը և ամռանը Գանձակում և Թիֆլիսում Եսայի կաթողիկոսը հանդիպումներ է ունենում Վախթանգի հետ, գործուն մասնակցություն բերելով հայ-վրացական զինակցությանը։ Նրանց գործունեությունն աչքի առաջ ուներ Թիֆլիսի հայոց վիճակավոր Մինաս Փարվիզյանը, երբ 1722 թ. դեկտեմբերին Վախթանգի մասին գրում էր. «Հաւաքեաց զմնացեալ և զցրուեալ ազգս հայոց և ի տեղւոյ տեղիս ամրացոյց և խնամարկեաց և եդ պահապան յամենայն ուրեք ի վերայ նոցա»[33]։ Անդրկովկասի սահմանները պաշտպանելու և այդ ուղղությամբ միջոցառումներ մշակելու համար Վախթանգը ուներ նաև Իրանի լիազորությունները, քանի որ Թավրիզ ապավինած գահազրկված շահ Թահմազ II-ը նրան էր նշանակել Անդրկովկասում գտնվող իրանական բանակի ընդհանուր զորահրամանատար և նրան էր հանձնարարել Դաղստանի հարձակումներին դիմագրավելու գործը։ Այս մասին տեղեկացնելով Պետրոսին, Վախթանգը միաժամանակ հայտնում էր, որ մտադիր է Գանձակում կենտրոնացած իր զինված ուժերը միավորել իրանական զորքերի հետ, ռազմական գործողություններ սկսել լեզգիների դեմ՝ սպասելով ցարի կարգադրությանը[34]։*

*Հայ և վրաց ռազմական ուժերի և նրանց ղեկավարների հանդիպումը տեղի ունեցավ Գանձակի մոտ՝ Չոլակ գյուղում, 1722 թ. սեպտեմբերի 22-ին։ Վախթանգի 30-հազարանոց բանակը այդ օրը ողջագուրվում էր Գանձասարի Եսայի կաթողիկոսի 10 հազարանոց «ընտիր և սպառազեն» հայ զինվորության հետ[35]։ Տեսարանը հանդիսավոր էր ու բացառիկ։ Ողջույնի հրացանաձգությունից որոտում ու թնդում էր Չոլակը։ Վառոդի փոշեխառն ծխից կայծակնափայլ ամպն այնպես էր փակել արեգակի շողերը, որ եղբայրաբար հանդիպման եկած հայ և վրաց զորքերը հազիվ էին նշմարում միմյանց։ Հայ և վրաց*

---

31 *Տե՛ս* *В. И. Лысцов*, Персидский поход Петра I, 1722—23 гг., *1951, էջ 190 և հետ., 216 և հետ.։*

32 «Армяно-русские отношения в первой трети XVIII в.», ч. II, *վավ. 165։*

33 *Эзов*, Сношение..., *էջ 336։*

34 *Տե՛ս* «Переписка на иностранных языках грузинских царей», *էջ 139 և հետ.։*

35 *Տե՛ս* Եսայի կաթողիկոս–Հասան Ջալալյան, *Պատմութիւն կամ յիշատակ ինչ-ինչ անցից՝ դիպելոց յաշխարհին Աղուանից, Շուշի, 1839, էջ 58 և հտն., 342։ Այսուհետև՝* Եսայի կաթողիկոս։

մարտիկներին Վախթանգը ավետում էր քրիստոնյաների փրկության ժամանակի մերձեցումը[36]։

Չոլակում համախմբված զորքերը սրտատրոփ սպասում էին ռուսական զորքերի Շամախի մտնելուն և պատրաստվում հոկտեմբեր ամսի սկզբներին համաձայնեցված վայրում հանդիպել հյուսիսից արշավող ազատարարների հետ։

Սակայն Գանձակի մոտերքում երկու ամիս դեգերելուց հետո, նոյեմբերին միայն լուր ստացվեց ռուսական արշավանքի ընդհատման և Պետրոսի Աստրախան վերադառնալու մասին։ Ցարին դիմավորելու պատրաստված հայ-վրացական զորքերը գլխիկոր ցրվեցին տները։

Պարզվեց, որ արշավանքի հենց սկզբին Կասպից ծովեզրին ռուսները հանդիպել էին զորքերի փոխադրման, պարենավորման և բժշկա-սանիտարական սպասարկման մեծ դժվարությունների։ Ծովամերձ շրջանների ճահճուտները ռուսական բանակից մարդկային ահավոր զոհեր էին խլել։ Բացի այդ, հասկանալի դարձավ, որ առանց թուրքերի հետ պատերազմելու հնարավոր չպիտի լիներ տիրանալ լեզգիների գրաված Շիրվանին ու առաջ շարժվել հայ-վրացական ուժերին միանալու համար։ Պարզվում էր նաև, որ երկարատև շվեդական պատերազմից նոր ելած Ռուսաստանի համար դյուրին չէր այդ պատերազմը։ Այն էլ մի պետության դեմ, որի թիկունքում կանգնած էին Անգլիան և Ֆրանսիան, և որոնք Ռուսաստանին ներհակող իրենց գաղութատիրական շահերն ունեին թե՛ Իրանում և թե՛ Թուրքիայում։

Լուր առնելով Ռուսաստանի և Վրաստանի միջև հաստատված կապերի մասին, շահ Թահմազ II-ը Վախթանգին մեղադրեց պետական դավաճանության մեջ և 1722 թ. վերջերին հրամանով նրան զրկեց Քարթլիի վալիի ու Իրանական զորահրամանատարի իրավունքներից։ Շահն այդ պաշտոնները հանձնեց նրա հակառակորդին՝ Կախեթի Կոստանդին թագավորին, որը հայտնի է նաև Մուհամադկուլի խան մուսուլմանական անունով։ Զորահրամանատարության հետ մեկտեղ վերջինիս հանձնեց նաև Երևանի, Գանձակի ու Ղարաբաղի բեկլարբեկությունները։ 1722 թ. վերջերից զինաբախման մեջ մտնելով Վախթանգի հետ, 1723 թ. մայիսին Մուհամադկուլի խանը գրավեց Թիֆլիսը և քաղաքի դռները լայնորեն բացեց օգնության հրավիրված լեզգի ավարառուների առջև[37]։ Թողնելով Վրաստանի մայրաքաղաքը, Վախթանգն ստիպված եղավ անցնել Ռուսաստան։

Նախապես Պետրոսը հակված էր այն մտքին, թե Վրաստանի և Հայաստանի անկախության կամ ինքնուրույնացման հարցը հնարավոր է վճռել խաղաղ բանակցությունների միջոցով, բայց պարզվեց, որ դա ևս իրագործելի չէ։ 1723 թ. ամռան սկզբներին թուրքերը մտան Թիֆլիս և գահընկեց հայտարարեցին Վախթանգին։

Վերադառնալով Աստրախան, ցարը հույս ուներ, թե հաջորդ տարում՝ գրավելով Բաքուն և ամրանալով Կասպիականի ափերին, ռազմական գործողություններ կսկսի՝ Շամախին, Գանձակը, Թիֆլիսը, Երևանը գրավելու և հայ-վրացական թագավորության ծրագիրը գլուխ բերելու համար։ Սակայն պարզ-

---

[36] Տե՛ս «Переписка на иностранных языках грузинских царей», էջ 139 և հտն.։

[37] Տե՛ս Եսայի կաթողիկոս, էջ 64 և հտն.։

վեց, որ նրա նախագծումները անիրագործելի էին անգամ Բաքուն գրավելուց հետո։

Տևական չեղավ նաև Կոստանդինի իշխանությունը Թիֆլիսում։ Թուրք նվաճողները շտապեցին քաղաքից վտարել Վախթանգին զորավիգ դարձած Թիֆլիսի հայ «քաղաքամարտիկ զորականներին» և այն հայ մոքալաքներին՝ «որք պհողիս և զորգիս, զինչս և զանձինս եդեալ էին ի վերայ նորա (Վախթանգի) յօժար սրտիւ»[38]։ Իրենց վերապահելով զինվորական իշխանությունը՝ թուրքերը քաղաքի վարչությունը հանձնեցին Վախթանգի մահմեդականացած Բակուր որդուն՝ Շահնավազին։ Մուհամադկուլի խանը իրանական բեկլարբեկի պաշտոնով ամրացավ Գանձակում, հենվեց Գանձակի, Բորչալուի և Ղազախ-Շամշադինի խաների վրա, իր շուրջը ուժեր կուտակեց և նախապատրաստվեց դիմադրելու թուրքերին։ Հավատարիմ մնալով իրանական կողմնորոշմանը, նա հետամուտ եղավ թուրքերի դեմ դիմադրություն կազմակերպողներին միավորելու քաղաքականության[39]։

Դժվար չէ պատկերացնել այն վիճակը, որին 1723 թ. դատապարտված էր լեռներում մեկուսացած հայ զինվորությունը։ Վախթանգի անկումով փլվել էր հայ-վրացական այն զինակցությունը, որի վրա հենված նրանք հարել էին հայ-վրացական թագավորություն ստեղծելու հեռանկարին։ Վախթանգի պարտությունից հետո այդ գաղափարի իրագործումը հանվեց օրակարգից։ Հայերը նորից ընկած էին մեկուսացման օղակի մեջ։ Նրանք պաշարված էին իրանական և թուրքական ուժերի կողմից։ Սակայն, այս վիճակում իսկ, լիակատար հուսահատության չմատնվելով, նրանք լարում էին իրենց ամբողջ կարողությունը՝ երկրի ինքնապաշտպանությունն ապահովելու համար։

## 4. ՀԱՅԿԱԿԱՆ ՍՂՆԱԽՆԵՐԻ ՊԱՅՔԱՐԸ ԻՐԱՆԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԴԵՄ ԵՎ ԳԱՆՁԱԿԻ 1724 ԹՎԱԿԱՆԻ ՀԱՅ-ԱԴՐԲԵՋԱՆԱԿԱՆ ՊԱՅՄԱՆԱԳԻՐԸ

Սեֆյանների դեմ բարձրացրած շարժումների ծավալումը և Իրանի շուրջը սրված միջազգային իրավիճակը մեծ բարդություններ էին առաջացնում անդրկովկասյան ժողովուրդների կյանքում։ Խոշոր փոփոխություններ եղան մասնավորապես լեռնային Հայաստանում։ Գահավիժող անցքերի բերումով Անդրկովկասի գավառներում և, հատկապես, Սյունյաց ու Արցախի լեռնային շրջաններում ռազմական ու վարչական մեքենայի քայքայումը խիստ հալված էր հասցրել Իրանի հեղինակությունը։ Այդ գավառների վարչական ղեկն ու ինքնապաշտպանությունը, փաստորեն, անցել էր տեղական բնիկ կառավարիչների՝ մելիքների ու յուզբաշիների, տանուտերերի ու քյադխուդաների ձեռքը։

Դարասկզբին Ղարաբաղի հայաբնակ մեծ գյուղերը 100—150 թուման (այսինքն՝ 1000—1500 ոսկի ռուբլի), իսկ փոքրերը 30—40 թուման (300—400 ոսկի ռուբլի) հարկ էին վճարում Իրանին[40]։ Մոտավորապես նույնը պետք եղած լինի նաև Ղափանում։ Իրանական վարիչների չքացումը հարկային թե-

---

[38] Եսայի կաթողիկոս, էջ 64 և հտն.։

[39] Տե՛ս «Ժամանակագրություն Պետրոս դի Սարգիս Գիլանենցի» («Կռունկ», Թիֆլիս, 1863, էջ 200 և հտն.,) և Եսայի կաթողիկոս, էջ 62 և հտն.։

[40] Տե՛ս Եսայի կաթողիկոս, էջ 19 և հտն.։

թևություն էր բերում տեղաբնակչությանը. միաժամանակ բարձրանում էր մահալների գլուխ կանգնած մելիքների ու յուզբաշիների նշանակությունը։ Նրանց ազատագրական ձգտումները ոչ միայն հենվում էին հայ գյուղացիների վրա, այլև կենդանի մղումներ ստանում նրանցից։

1720-ական թվականների սկզբներին լեզգիների ձեռնարկած հարձակումների կապակցությամբ Ղարաբաղի և Ղափանի մահալներում տեղի էր ունենում ինքնապաշտպանական ժողովրդական ջոկատների համախմբում։ 1721—1722 թթ. ինքնապաշտպանության գործը տարերայնորեն վեր է ածվում իրանական իշխանության դեմ ուղղված ժողովրդա-ազատագրական շարժման՝ գործնականապես հանգելով իրանական հարկահանների ու պաշտոնատերերի գործառնությունները տեղացիներին փոխանցելուն։ Իշխանության այս փոխանցումը ուժի մեջ մտավ և հարատևեց 1721 թվականից մինչև 1727 թվականը։ Հատկանշական է, որ 1726 թ., երբ Ղարաբաղի լեռնային շրջանները խուժած թուրքերը պահանջում էին նախընթաց հինգ տարիների ապառքը, նրանց դիմադրող ղափանցիներն այրում էին հարկային հին պահանջագրերը[41]։ Շարժման ղեկավարները ժամանակին այս երևույթի մեջ նշմարում էին հայոց ազգային հանգած իշխանության «նոր նորոգում»[42]։

«Նոր նորոգված» հայկական ինքնավարության տեղական մարմիններն իրենց ուժերը լարում էին լեռնահայաստանում իրանական իշխանության մնացուկները վերացնելու համար։ 1722 թ. Բարդայի (Գյուլիստանի), Ջրաբերդի և Գանձակի հայ զինված ուժերը ջանքեր էին գործ դնում պաշտպանելու Լեռնային Ղարաբաղի մատույցները և փակելու Գանձակի ու Թիֆլիսի ճանապարհները ադրբեջանական այն ֆեոդալների առաջ, որոնք հարկեր էին պահանջում նրանցից կամ հարկահանության պատրվակով ավերում ու թալանում էին հայկական մահալների գյուղերը։ Նման զինաբախումներ տեղի էին ունենում նաև հարևան շրջաններում։ 1723 թ. հոկտեմբերին Դիզակի մահալում, Հադրութ գյուղի մոտ, հայկական զինված ջոկատները խանական հեծյալների հետ ունեցան զինաբախում, որի ժամանակ վերջիններս կորցրին 2000 մարդ[43]։

Հայկական լեռնաշխարհի ինքնապաշտպանության հանգրվանները տեղական բերդերն ու բնական ամրությունները էին, որոնք ժամանակակից գրագրությունների մեջ սղնախներ են կոչվում։ Օտար այդ բառով Ղարաբաղի լեռնային գավառներում նշվում էին թաքստյան կամ դիմադրության լեռնային պատնեշներն ու բերդերը։ XVIII դարի 20-ական թվականներին Ղարաբաղում կային մելիքական հինգ իշխանություններ, որոնք ռազմա-քաղաքական առումով համախմբված էին նույնքան պաշտպանողական հանգրվանների կամ սղնախների շուրջը[44]։ Ռուսերեն գրագրությունների մեջ «սղնախ» տերմինը

---

[41] Համտ. Ա. Աբրահամյան. Մի էջ Անդրկովկասի ժողովուրդների և հայ-ռուսական հարաբերությունների պատմությունից, Երևան, 1953, էջ 131, նաև «Ընտիր պատմություն Դավիթ բեկին», Վաղարշապատ, 1871, էջ 56։

[42] Տե՛ս Եսայի կաթողիկոս, էջ 58։ „Армяно-русские отношения в первой трети XVIII в.“, т. I, ч. II, փաստ. 169։

[43] «Армяно-русские отношения в первой трети XIIIV века», т. II, ч. I, փաստ. 194 և 195։

[44] Ղարաբաղի «Խամսայի» կամ հինգ մելիքությունների վարչա-քաղաքական և կալվածական իրավունքների մասին տե՛ս Ձ. Պողոսյանի «Խամսայի մելիքների իրավունքների և պարտականությունների մասին» հոդվածը. «Բանբեր Հայաստանի արխիվների», 1966, № 1, էջ 197—208։

հաճախ իմաստավորվում էր «հայկական հավաքույթ» (армянское собрание) հասկացողությամբ, դրա տակ նկատի ունենալով համապատասխան սղնախներում համախմբված հայ ռազմա-քաղաքական միավորումները։

Քսանական թվականների սկզբներին Ղարաբաղի այս հինգ միավորումներից առաջինն ընդգրկում էր Քուրակ-չայ և Թարթառ գետերի հովիտներով սահմանագծված Գյուլիստանի և Ջրաբերդի մահալները, ռազմա-քաղաքական կենտրոններ ունենալով Գյուլիստանի բերդը և Երիցմանկանց վանքը։ Երկրորդը՝ Խաչեն և Բալլուչայ գետերով սահմանագծվող Խաչենի մահալը, կենտրոն ունենալով Գանձասարի վանքը։ Երրորդը Բալլուչայ գետից մինչև Դիզափայտի լեռնաշղթան ընկնող Վարանդայի մահալի մի մասը՝ Ծովատեղ-Ավետարանոց կենտրոնով։ Չորրորդ միավորման մեջ մտնում էր Վարանդայի մահալի մյուս մասը՝ կենտրոն ունենալով Շոշ կամ Քարագլուխ կոչված սղնախը, իսկ հինգերորդը՝ Դիզակի միավորումն էր, Տող կենտրոնով և Քիրս լեռան սղնախով։

Սղնախներ կային նաև լեռնահայաստանի մյուս մահալներում՝ Ղափանում, Լոռիում, Գեղարքունիքում և Քոլանիում։ Սակայն դրանց մասին տեղեկություններ գրեթե չեն պահպանվել։

Սղնախների մարտական կորիզը կազմում էին հայ մելիքների ռազմական մանր ջոկատները, որոնք իրանական տիրապետության օրոք հսկում էին մելիքներին ենթակա գյուղերի ներքին կարգապահությանը և հարկ եղած դեպքում զինական պարտավորություններ կատարում։ Երևանում, Գանձակում և Շամախիում զորահավաքին ու ջոկատների ղեկավարմանը մասնակցում էին քաղաքաբնակ հայ երիտասարդության ներկայացուցիչներ։ Այսպես, 1720 թ. սկզբներին Ղարաբաղի սղնախներում կազմակերպական և ռազմական գործունեությամբ համբավ ստացան «շիրվանցի տղերքը», այսինքն՝ Շամախու խանական զորքերի մեջ ծառայող հայ զինվորականները։ Դրանցից մեկն էր Ավան յուզբաշին, որը Ղարաբաղ էր անցել դեռ 1717 թ. և անուն հանել սղնախների ռազմական հետագա մարտերի ժամանակ։

Կարիքի դեպքում հայ մարտիկները համախմբվում էին սղնախներում, ուստի և հայ զորքերի ու զինապարտների թվաքանակը մի քանի հազարից երբեմն հասնում էր երեք-չորս տասնյակ հազարի, իրենց շարքերում հաշվելով 30 հազար ձիավոր և 10 հազար հետևակ զինապարտ։

Զինապարտների մի մասը կռվում էր շախմախի հրացաններով կամ ատրճանակներով։ Զենքի վարպետներն օգտագործում էին տեղում արդյունահանվող աննշան քանակի երկաթը, պղինձը, արճիճը, արծաթը և գործի դնում տեղում եղած վառոդ պատրաստելու պարագաները՝ աղբորակ և ծծումբ։ Հրացաններ շինող վարպետներ կային, սակայն չկային թնդանոթի վարպետներ։ Ապավինելով երկրի բնական ամրություններին, մարտիկները կարողանում էին դիմադրել հարձակվող թշնամուն, բայց տևապես դիմանալ թնդանոթային կրակին և, մանավանդ, հակահարձակման անցնել թնդանոթաձիգների դեմ՝ բնավ անկարող էին։ Այդ իսկ պատճառով հայկական սղնախներն ի վիճակի չէին խոշոր մասշտաբի հարձակողական գործողություններ ծավալել[45]։

Անկատար սպառազինությունից զատ, սղնախների ինքնապաշտպանու-

[45] Տե՛ս «Армяно-русские отношения в первой трети XVIII в.», т. II, ч. I, էջ XLV և հետ.։

թյունը մեծապես տուժում էր նաև ներքին հակամարտություններից։ Հայերի հետ կապ պահպանելու համար Պետրոս Մեծի կողմից հղված էլչի (պատգամաբեր) Իվան Կարապետը, հանգամանորեն ծանոթանալով սղնախների իրադրությանը, գրում էր, թե տեղական հայ գյուղապետերն իրենց հպատակների հետ վարվում էին գրեթե այնպես, ինչպես «անօրեն» ճնշողներն ու գռփողները։ Նրանցից ամեն մեկն իշխում էր մի կամ երկու գյուղի և դրանց հասույթներն ուտում իր 10 կամ 20 ձեռնավորների միջոցով։ Ոչ մեկը նրանցից չէր ճանաչում մյուսի հեղինակությունը և նրանց մեջ չկար մեկը, որ միավորեր ու գլխավորեր բոլորին, եթե ոչ հօգուտ ժողովրդի, գեթ ի շահ հայ իշխող դասի հավաքականության[46]։ Հայ վարիչների հոռի անհնազանդության մասին գանգատվում էր նաև Գանձասարի Եսայի կաթողիկոսը, որի հորդորներն անգամ նրանք արհամարհում էին հաճախ։



Գանձասարի վանքը

XVII դարի վերջերից Սեֆյան Իրանում հասունացող քաղաքական տագնապին ուղեկցող միջֆեոդալական և միջցեղային արյունահեղ բախումներն ու պարբերաբար կրկնվող ավարառումները եկամտի սովորական աղբյուր էին նաև տեղաբնակչության հաշվին սնվող հայ մելիքների ու նրանց զինված ջոկատների համար։ Տիրող դասի համար ասպատակումները («չափըլունները») եկամտի մշտական աղբյուր էին։ 1722 թ. մայիսին լեզգիների դեմ գանձակեցիներին օգնության հասնող վրաց զորքերն անգամ վարձատրվում էին ռազմական ավարի հաշվին՝ քաղաքի շրջակա գավառների մահմեդական և քրիստոնյա բնակչությանը թալանելով։ Ինքը՝ Վախթանգն իսկ, 25 հազար

---

46 Տե՛ս «Армяно-русские отношения в первой трети XVIII в.», ч. II, էջ. 204—210։

ոչխար և 9 հազար արջառ ստացավ զորքի ավարից՝ իրեն հասնող «տասնորդի» հաշվին[47]։

Ամենից շատ այս իրավիճակից տուժում էին տեղական գյուղացիները, որոնց մասին Պետրոս Մեծի էլչին հավաստիացնում է, թե գիշեր ցերեկ աղոթում էին, որ լիներ մեկը՝ ցարի հրամանով պատժեր զանցառուներին և զինված ուժի օգնությամբ օրենք ու կարգ սահմաներ այս երկրում[48]։

1720-ական թվականներին Անդրկովկասում ստեղծված նոր պայմանների հետևանքով հայ կյանքում ասպարեզ եկան իրանահայ առևտրական միջավայրից ելած մի շարք գործիչներ, որոնք ակտիվորեն կապվեցին հայ ազատագրական շարժման հետ և միայն ռուսական կողմնորոշման մեջ տեսան հայ ժողովրդի փրկությունը։ Նորատիպ այդ գործիչներից էին Պետրոս Մեծի կողմից հղված Իվան Կարապետը, հայկական Նսկադրոն կազմակերպող և ղեկավարող Պետրոս դի Սարգիս Գիլանենցն ու իր գործակիցները, Վախթանգ թագավորի դիվանագիտական հանձնարարությունները կատարող Ղուզանենց Փարսադան բեկը և իր մերձավորները։ Նորատիպ այս գործիչների մեջ առավել արգասավոր եղավ Իվան Կարապետի կատարած աշխատանքը։

1724 թ. սկզբին Պետրոս Մեծի հայ ժողովրդին ուղղած կայսերական հրովարտակը Ղարաբաղ հասցնելով, Իվան Կարապետը հաղորդեց, որ ցարը, ընդառաջելով հայ մեծամեծերի դիմումներին, իր հովանու տակ է առնում հայերին և ցանկանում է նրանց ազատել անօրենների լծից։ Ցարը միաժամանակ հայտնում էր, որ գա հնարավոր կդառնա միայն Կասպից ծովեզրին ռուսների ամրանալուց հետո։ Մինչ այդ անհրաժեշտ է, որ հայերը դիմանան ստեղծված դժվարություններին։ Եթե իրանցիների հետ գժտված ղեկավարների համար վտանգավոր է տեղում մնալը, ցարը հոժար է նրանց գաղթավայր հատկացնել Կասպիականի ափերին։ Բնակչությունը պիտի հանգիստ մնա տեղում, մինչև որ ցարը հոգա նրա ազատության մասին[49]։

Այս խոստումներից խանդավառ, սղնախների ղեկավարները շարունակեցին երկրի ինքնապաշտպանությունը՝ միշտ հետևելով Իվան Կարապետի խորհրդին։ Նրա առաջարկի համաձայն սղնախները համախոսական դիմումներ հղեցին Պետրոս Մեծին՝ խնդրելով իր հովանու տակ առնել իրենց և պաշտպանել «անօրենների» սրից։ Միասնության հորդորելով նրանց ղեկավարներին, էլչին հրահանգում էր վերջ դնել ներհակություններին և միավորել դիմադրության կոտորակված ուժերը։ Նա եռանդուն գործունեություն ծավալեց նաև՝ երկրում կարգ ու հանգստություն հաստատելու համար։

1724 թ. ամռանը Իվան Կարապետը կապ հաստատեց նաև Ղափանի դիմադրական շարժման ղեկավարների հետ։ Ղարաբաղի սղնախների ուժերով նա օգնության հասավ ղափանցիներին, նրանց ևս հուսադրելով Ռուսաստանի հովանավորության խոստումով։

Ղարաբաղի ու Ղափանի սղնախներից և Մուղանի շահսևաններից զատ, թուրքական ռազմակալության վտանգին ենթակա Անդրկովկասյան մարզերի մեծ մասը հավատարիմ էր մնացել Իրանին։ Թուրքիայի կողմից Անդրկովկասին սպառնացող վտանգի դեմ Իվան Կարապետը հնարամիտ էր համախմբել,

---

47 Տե՛ս Եսայի կաթողիկոս, էջ 51 և հտն.։

48 Տե՛ս «Армяно-русские отношения в первой трети XVIII в.», ч. II, վավ. 219։

49 Տե՛ս նույն տեղում, վավ. 185, 186։

քաղաքական գործակցություն ստեղծել և մարտական ընդհանուր ճակատ հարդարել հայկական սղնախների, վրացական և ադրբեջանական զինական ուժերի, ինչպես նաև Իրանի անդրկովկասյան ֆեոդալների միջև։ Կասկած չկա, որ Իվան Կարապետի ուղեգիծը բխում էր Ռուսաստանի քաղաքականությունից։ Մտաբերենք, թեկուզ, որ իրանական արշավանքը ձեռնարկելիս ցարը ոչ միայն պատերազմ չհայտարարեց Իրանին, այլև պատրաստակամություն հայտնեց պաշտպանելու շահին նրա դեմ ապստամբած լեզգիներից։

Այս չխանգարեց, սակայն, որ ցարը հայ-վրացական թագավորություն ստեղծելու ծրագիր մշակեր, նույն շահի դեմ ապստամբություն բարձրացնելու պատրաստ Վախթանգ թագավորի ղեկավարությամբ։ 1723 թ. ամռանը, Գիլանը գրաված գեներալ Լևաշովի միջոցով, նա փորձում էր անգամ կապվել շահի դեմ ապստամբած աֆղանների ղեկավար Միր Մահմուդի հետ, պատրաստակամություն հայտնելով Իրանի գահակալ ճանաչելու նրան, եթե միայն հրաժարվեր սուլթանի հետ կապվելու և Թուրքիային հպատակություն հայտնելու մտքից[50]։ Ցարական քաղաքականության գլխավոր խնդիրը Իրանի պաշտպանությունը չէր, այլ Թուրքիայի դեմ պայքարի ընդհանուր ճակատ ստեղծելու խնդիրը։ Այս քաղաքականությունը հասկանալի կդառնա, եթե հաշվի առնենք թուրքերի հարձակման հարաճուն վտանգը Անդրկովկասում։

Մտնելով Թիֆլիս, թուրքերը պատրաստվում էին գրավել Երևանը և ռազմակալել ամբողջ Անդրկովկասը։ Այս իրադրության մեջ Պետրոս ցարը որոշեց վերջ դնել Անդրկովկասում ծավալվող հակաիրանական շարժմանը և ոգեգրել Անդրկովկասյան ժողովուրդների և Իրանի միջև հակաթուրքական դիմադրություն կազմակերպելու ուղեգիծ։

Ահա թե ինչու ժամանելով Ղարաբաղ, Իվան Կարապետը Ղարաբաղի և Գանձակի «մուսուլման» բնակչությանը կոչ արեց համաձայնություն կնքել Ղարաբաղի «քրիստոնյաների» հետ։ Պետրոս ցարը, ասված է նրա կոչի մեջ, բարյացակամ է Ղարաբաղի մուսուլմանության հանդեպ և բարեհաճ «շահի ալքի» (իմա՝ իրանցիների) նկատմամբ, որ ինքը՝ Իվան Կարապետը, ժամանել է հայերին հաշտեցնելու նրանց մուսուլման իշխանավորների հետ։ Մի այլ գրության մեջ նա հաղորդում էր, որ երկիրը (իմա՝ Անդրկովկասը) թուրքական 60—70-հազարանոց բանակի հարձակումից պաշտպանելու համար, ինքը սղնախների կողմից լիազորություն ունի հպատակություն հայտնելու Գանձակի խանական իշխանությանը, ինչպես նաև նրանց հայտնելու սղնախների պատրաստակամությունը՝ վերջ տալու եղած գժտություններին[51]։

Անդրկովկասի ադրբեջանական բնակչությունը չէր մոռացել թուրքերի հին արշավանքները և նրանց դաժան տիրապետության ժամանակները։ Նրան հուզում էր, մանավանդ, լեզգիների շարժման ժամանակ Դաղստանի լեռնաբնակ սյունիների անհանդուրժելի քաղաքականությունը շիաների նկատմամբ։ Ահա թե ինչու ադրբեջանցի շիաները մեծ թշնամանքով էին տրամադրված օսմանցիների նվաճողական նկրտումների հանդեպ և պատրաստ էին իրենց կյանքով պաշտպանել դավանակից Իրանի խանական իշխանությունը։ Այդ

---

[50] Տե՛ս *П. Г. Бутков*, Материалы по новой истории Кавказа с 1722 по 1803 гг., СПб., 1869, т. I, էջ 44 և հտն.։

[51] Տե՛ս «Армяно-русские отношения в первой трети XVIII века», т. II, ч. II, վավ. 235։

նպատակով, թուրքերին դիմադրելու համար նրանք պատրաստ էին ձեռք մեկնել վրացիներին և հայերին։

1723 թ. ամռանը, միանալով Կախեթի Կոստանդին թագավորի կամ որ միևնույնն է Գանձակի բեկլարբեկի՝ Մուհամադկուլի խանի զորամասերի հետ, Գանձակի ադրբեջանցի և հայ բնակչության զինված ուժերը 18—20 օր հերոսաբար դիմադրեցին Թիֆլիսից իրենց քաղաքի վրա արշավող Իբրահիմ փաշայի բանակին։ Թուրքական զորքը պարտություն կրեց և նահանջի դիմեց, Գանձակի պատերի տակ թողնելով հազարավոր սպանվածներ։ Վրացական և ադրբեջանական զորամասերից զատ, Գանձակի պաշտպանությանը մասնակցում էին նաև հայ մերձավոր սղնախների մարտական ուժերը։ 1723 թ. օգոստոսին վերջիններս դիմադրում էին նաև լեզգիների առաջնորդ Հաջի Դավուդբեկին, երբ սա ջանում էր անցնել Քուռը՝ Գանձակի վրա հարձակում գործելու և թուրքերի հետ միանալու համար[52]։

Գանձակի պատերի տակ տեղական ժողովրդի տարած փայլուն այդ հաղթանակը մի ամբողջ տարով հետաձգեց թուրքերի հարձակումը Երևանի վրա։ Միաժամանակ այն նախապատրաստեց իրանական իշխանությունների, իրանական կողմնորոշում ունեցող վրաց ու ադրբեջանական ֆեոդալների և հայկական սղնախների միջև 1724 թ. մարտի 24-ի Գանձակի պայմանագրի կնքումը։ Շահ Թահմազ II-ի ներկայացուցիչների, Ռուսաստանը ներկայացնող էլչի Իվան Կարապետի և Գանձակի բեկլարբեկի Մուհամադկուլի խանի մասնակցությամբ ու միջնորդությամբ կնքված այդ պայմանագիրը վավերացումն էր, փաստորեն, այն համագործակցության, որ իրականացավ 1723 թ. ամռանը, Գանձակի ու մերձակա շրջանների մուսուլման և քրիստոնյա բնակչության համատեղ դիմադրությամբ։

Գանձակի պայմանագրում համաձայնություն կայացավ իրանական կողմնորոշում ունեցող Գանձակի խանության ղաջար իշխանավորների և նրանց հպատակվելու պատրաստակամություն հայտնող սղնախների հայ բնակչության ղեկավարների միջև։ Վերջիններս պարտավորվում էին հրաժարվել Գանձակ քաղաքի «սրբաբների» (կալվածատերերի) և մյուս շիա մուսուլմանների դեմ իրենց ունեցած ապստամբական դիրքորոշումից և խոստանում օգնություն գալ քաղաքի ազգաբնակչությանը՝ թուրքերի կողմից հարձակում լինելու դեպքում։ Գանձակի կառավարիչները, կալվածատերերը, մուսուլմանական զինված երիտասարդությունն ու քաղաքացիների մյուս հատվածները փոխադարձաբար խոստանում էին՝ մեղապարտ ճանաչել ու պատժել ղաջարներին կամ քաղաքացիներին, եթե նրանք փորձեն կողոպտել սղնախներն ու Ղարաբաղի քրիստոնյաներին կամ օգնության չգան նրանց թուրքերից պաշտպանելու համար։

Գանձակի պայմանագիրը ժողովուրդների համագործակցության տիպական ֆեոդալական վավերագիր էր։ Այն կնքվում էր Իրանի հետ կապված և հակաթուրքական կողմնորոշում ունեցող Գանձակի մուսուլման կառավարիչների ու կալվածատերերի և նրանց հայ վասալների ու հպատակների միջև։ Միաժամանակ այդ պայմանագիրը նորից ճշտում էր ու ամրապնդում իրանական կողմնորոշում ունեցող Գանձակի բեկլարբեկի Մուհամադկուլի խանի,

[52] Նույն տեղում, վավ. 190, համտ. նաև 1723 թ. օգոստոսին Անտոն քահանայի գրած նամակը, նույն տեղում, վավ. 188։

կամ որ միևնույնն է՝ Կախեթի Կոստանդին թագավորի գլխավորած վրացիների հակաթուրքական դիրքավորումը։ Ի դեպ, ուշագրավ է, որ նույն՝ 1724 թ. Պետրոս Մեծին ուղղած իր նամակում Մուհամադկուլի խանը ցարին խնդրում էր օգնության գալ Իրանի տիրապետության տակ գտնված և իր բեկլարբեկության ենթակա Անդրկովկասի հայաբնակ և վրացաբնակ մարզերին[53]։

Այսպիսով, համաձայն Գանձակի պայմանագրի, Ռուսաստանի հովանուն ապավինող ու Իրանի պաշտպանությանը ենթարկված Անդրկովկասյան երեք ժողովուրդների ներկայացուցիչները որոշում են միավորել իրենց ուժերը, երկրամասի վրա կախված գլխավոր վտանգը՝ թուրքական հարձակումը վանելու համար։

Գանձակի պայմանագրի ստորագրումից հետո, հայերի զինագրական պայքարը շրջվելով թուրքական ակտիվացող հարձակումների դեմ՝ կորցնում է իր հակաիրանական բնույթը։ Գանձակի մուսուլմաններն ու Ղարաբաղի ողնախները 200 հոգուց բաղկացած պատվիրակություն են հղում շահ Թահմազի մոտ՝ տեղեկացնելու ստորագրված պայմանագրի մասին։ Շահի մոտ պատվիրակություն գնաց նաև Դավիթ-Բեկի ղեկավարությամբ թուրքերի դեմ պայքարող ղափանցիների կողմից։ Պատվիրակները վերադարձան Ղարաբաղի և Ղափանի ողնախների ղեկավարներին շահի հղած խալաթներով։ Սակայն, սա իրանական լծի դեմ մղված պայքարի ժամանակավոր ընդմիջում էր, որը կորչելու էր իր ուժը թուրքական զինակալումը Անդրկովկասում վերջանալուց հետո։

## 5. ՌՈՒՍ-ԹՈՒՐՔԱԿԱՆ ՊԱՅՄԱՆԱԳԻՐԸ ԵՎ ԵՐԵՎԱՆԻ ՈՒ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՂՆԱԽՆԵՐԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԸ ԹՈՒՐՔԱԿԱՆ ԶԻՆԱԿԱԼՈՒԹՅԱՆ ԴԵՄ

Հաշվի առնելով թուրքերի դեմ պատերազմելու դժվարությունը, 1724 թվականի հունիսի 12-ին Կ. Պոլսում ռուսները պայմանագիր կնքեցին սուլթանական կառավարության հետ։ Այդ պայմանագրով թուրքերը ճանաչեցին Ռուսաստանի տիրապետությունը՝ Դերբենդից մինչև Մազանդարան ընկած Կասպից ծովի առափնյա շրջաններում։ Փոխադարձաբար ռուսները ճանաչեցին թուրքերի իրավունքները Իրանի անդրկովկասյան տիրույթների նկատմամբ, ներառյալ Թիֆլիս, Գանձակ, Նախիջևան քաղաքները, Ղարաբաղի ու Ղափանի մարզերը, ինչպես նաև նրանց տիրապետությունը Արդեբիլ-Թավրիզ գծից դեպի հյուսիս և Թավրիզ-Քերմանշահ գծից դեպի արևմուտք ընկած իրանական հողերի վրա։

Անդրկովկասյան ժողովուրդների համար կարի ծանր այս պայմանագրի ստորագրումից հետո, թուրք հրամանատարությունը կոչ ուղղեց իրեն հատկացված երկրամասում զենք բարձրացրած բնակչությանը՝ վայր դնել զենքերը և հպատակվել սուլթանի իշխանությանը։ Սակայն, ապավինելով իրենց ուժին և տակավին կառչելով Ռուսաստանից սպասվող օգնության տկար հույսից, Անդրկովկասի որոշ վայրերում շարունակվեց պայքարը թուրք զավթիչների դեմ։

Թուրք հրամանատարության առաջնահերթ խնդիրն էր՝ վերացնել Ռու-

---

[53] Տե՛ս «Переписка на иностранных языках грузинских царей», էջ 168 և «Армяно-русские отношения в первой трети XVIII в.», ч. II, վավ. 244։

*սաստանի և Թուրքիայի արանքում խցկված հայկական սեպը[54]։ Այդ խնդիրը լուծելու համար թուրքերը պիտի տիրանային Երևանի բերդին և հատկապես ընկճեին նրա շրջակայքի հայ բնակչությանը, որը պատրաստվում էր զենքով դիմադրել զավթիչներին։*

*Իր տրամադրության տակ ունենալով Կարսի բերդի հարյուրավոր թնդանոթները, 1724 թ. հունիսին Արիֆ Ահմեդ փաշան Գյումրիի վրայով մտավ Արարատյան դաշտ և պատրաստվեց պաշարել Երևանը։ Այդ նպատակով Սուրմալուի, Շորագյալի և Ապարանի շրջանների շուրջ երեք հարյուր «անհուսալի» գյուղերի բնակիչներ քշվեցին Թուրքիայի խորքերը։ Տասնյակ հազարավոր չարքաշ աշխատավորներ դատապարտվեցին թուրքական դաժան ստրկության[55]։*

*Անցնելով Ջորսը, 1724 թ. օգոստոսին թուրքերը գրավեցին Նախիջևանն ու Օրդուբադը, ապա թափանցեցին Գողթն, իսկ հարավում գրավեցին Համադանը, որից հետո համակենտրոնացրին իրենց ուժերը՝ Երևանն ու Թավրիզը գրավելու համար[56]։*

*Երևանի հերոսական պաշտպանությունը հայ ժողովրդի այս ժամանակաշրջանի պատմության ամենանշանավոր դրվագներից մեկն է։ Քաղաքի պաշարումը սկսվեց հունիսի 7-ին և տևեց երեք ամիս։ Թուրքական զորքերի թվաքանակը քաղաքի տակ 30—35 հազարի էր հասնում։ Նրանց դիմադրողները Երևանի բնակչությունն էր և շրջակա գյուղացիները, որոնց ընդհանուր թիվը թուրք աղբյուրները 5000 մարդ են նշում, հայկական աղբյուրները՝ կրկնակին։ Մուհամադկուլի խանի ղեկավարությամբ բերդի պաշտպանությանը մասնակցում էին Գանձակից և Լոռուց բերված զինված ուժերը։ Ական դնելով բերդապարսպին, թշնամին խռռոչներ առաջացրեց նրա մեջ և քանիցս մեծ ուժերով գրոհեց քաղաքի վրա։ Սակայն ամեն անգամ քաղաքն անձնվիրաբար պաշտպանող հայ երիտասարդների հերոսության ու արյան գնով թշնամին ետ էր շպրտվում՝ կրելով մեծ կորուստներ[57]։ Թշնամու շարքերից շատ զոհեր էին խլում ոչ միայն հայերի գնդակները, այլև Արարատյան դաշտում տարածված ամառային ջերմախտը։ Ջդիմանալով դժվարություններին, թուրք զինվորները սկսեցին դժգոհել, սակայն կռվողների նորանոր լրացումներով թուրքերը խեղդում էին հոգնած ասկյարների տրտունջները։ Դրան զուգահեռ, պաշարված քաղաքում սրվում էր պարենի և զինամթերքի կարիքը, որը հարկադրեց Երևանի Մեհրալի խանին՝ քաղաքը հանձնելու բանակցություններ սկսել թշնամու հետ։*

*Սեպտեմբերի 26-ին պաշարված քաղաքը անձնատուր եղավ։ Խուժելով արնաքամ եղած քաղաքը, իրենց վայրագ սովորությամբ, թուրքերը գերեվարեցին բազմաթիվ կանանց ու երեխաների։ Այնուամենայնիվ քիչ չեղավ նաև*

---

54 *Տե՛ս* «Армяно-русские отношения в первой трети XVIII в.», т. II, ч. II, *վավ. 315, էջ 249, 250։*

55 *Տե՛ս «Թուրքական աղբյուրները...», հատ. I, էջ 155 և հտն.։*

56 *Տե՛ս* Վ. Մ. Մարտիրոսյան, *Անդրկովկասի ժողովուրդների համագործակցությունը և Երևանի 1724 թվականի պաշտպանությունը, «Պատմա-բանասիրական հանդես», 1965, № 2, էջ 187—191։*

57 *Տե՛ս J. de Hammer*, Histoire de l' Empire Ottoman, Paris, 1839. *հատ. 14-րդ, էջ 126 և հտն.։*

մոլեգնած թշնամու կորուստը։ Թուրքական աղբյուրների վկայությամբ միայն սպանվածների թիվը քսան հազարի էր հասնում[58]։

Երևանի դիմադրությունը արգելակում էր թշնամու առաջխաղացումը դեպի Արարատյան և դեպի Ղարաբաղի ու Ղափանի ամրացված շրջանները։ 1725 թ. գարնանը միայն, առաջ շարժվելով առանց դիմադրության հանձնված Համադանից, Աբդուլլա փաշան կարողացավ գրավել Թավրիզը, որից հետո հերթական դարձավ նաև հայկական սղնախների նվաճումը։

Դեռևս 1724 թ. գարնանն էին թուրքերը փորձել գրավել Լոռին։ Սակայն, բերդի կայազորն ու հայ բնակիչները ետ մղեցին նրանց այդ հարձակումը։ Ավելի մեծ ուժերով թուրքերը վերսկսեցին իրենց նոր հարձակումը մի տարի հետո՝ Սարու Մուստաֆա փաշայի հրամանատարությամբ։ Նրանք մտան Ղազախ, Շամշադին, Լոռի ու Բորչալու և 1725 թ. օգոստոսին գրավեցին Լոռու բերդը։ Նույն տարվա հոկտեմբերին կատաղի հարձակմամբ գրավեցին Գանձակը[59]։ Գանձակեցիների դիմադրությունն այս անգամ տևեց երկու օր։ Կա տեղեկություն, որ անձնատուր եղած քաղաքի հայ բնակիչները ապավինում էին սղնախների երկիրը[60]։

Տևական դիմադրության հանդիպեց թշնամին միայն Ղարաբաղի և Ղափանի լեռնային շրջաններում։ 1725 թ. փետրվարին, վեց հազարանոց թուրքական զորամասը առանց դիմադրության մտավ Վարանդա, տեղավորվելով մահալի 33 գյուղերում։ Սակայն, վճռելով իրենցից վանել սպառնացող ստրկացումը, գյուղացիները գիշերային հարձակումով ոչնչացնում են իրենց տներում տեղավորված ասկյարների մեծ մասին, սպանում հրամանատար փաշաներից երկուսին և գերի վերցնում երրորդին[61]։

«Ռոթգլխանի վիշապն արդեն եկել է և երկրի բոլոր չորս կողմերը կոխել և նրա պոչը մեզ էլ կը հասնէ»,—գրում էր Երից-մանկանց սարսափահար Ներսես կաթողիկոսը և առաջարկում՝ հպատակվել թուրքերին և կանխել հայերի ոչնչացումն ու գերեվարումը։ Ստեղծված իրադրության մեջ սկսում է փոխվել նույնիսկ Եսայի կաթողիկոսի դիրքը։ 1726 թ. գարնանը գրած իր մի նամակում հուսահատված կաթողիկոսը Ռուսաստանից հրատապ օգնություն էր աղերսում, առանց որի նա վտանգավոր էր համարում դիմադրությունը։

Մի պահ նրան և սղնախցիների ղեկավարներին ոգեշնչեց այն աղոտ լուրը, թե ռուսները 60 հազարանոց բանակով պատրաստվում են հարձակում սկսել՝ Շամախին գրավելու համար։ Իվան Կարապետը նույնիսկ առաջարկեց ռուսներին դիմավորելու համար սղնախների զորքերը շարժել Շամախի։ Բայց շատ շուտով պարզվեց, որ Կ. Պոլսում կնքված պայմանագրի համաձայն հանձնաժողով է նշանակված՝ նոր սահմանագիծ անցկացնելու նպատակով։ Ստանալով այդ տեղեկանքը, Եսայի կաթողիկոսը և Ղարաբաղի մի խումբ մելիքներ ու քյադխուդաներ այլևս անիմաստ համարեցին դիմադրությունը և որոշեցին վայր դնել զենքերը։

Շատ բնորոշ է 1726 թ. հունիսի 19-ի Եսայի կաթողիկոսի գրած նամակը Իվան Կարապետին, որտեղ ասված է. «Հարկ է, որ համոզես մեր տղաներին

[58] Տե՛ս նույն տեղում։

[59] Տե՛ս *Ismail Nami Danismend*, Izahli osmanli tarihi kronolojisi, Ստամբուլ, 1955, էջ 15։

[60] Տե՛ս «Армяно-русские отношения в первой трети XVIII в.», т. II, ч. II, փաստ. 325, էջ 264—265։

[61] Տե՛ս նույն տեղում, փաստ. 310, 312, 315, 318։

հանգիստ մնալ և չտարվել դեղջուկների տրամադրությամբ. բայց եթե, այնուամենայնիվ, կռվի բռնվեն (թուրքերի հետ), թող հենց իրենք էլ պատասխանատու լինեն հետևանքների համար»[62]։ Նամակի այս տողերը վկայում են այն մասին, որ Ղարաբաղի և Ղափանի հայ ազատագրական շարժումը հենվում էր հասարակ գյուղացիության վրա, ղեկավար գործիչները կապվում էին զանգվածային այդ շարժման հետ և գլխավորում այն՝ մասամբ իրենց սեփական, մասամբ էլ ընդհանրության շահերից դրդված։ Նույն տարվա նոյեմբերին Ղարաբաղի մի խումբ մելիքների և քյադխուդաների հետ Եսայի կաթողիկոսը Բարդայում հանդիպում ունեցավ ռուս-թուրքական նոր սահմանագիծն անցկացնող հանձնաժողովի հետ։ Հանդիպումը համազոր էր սղնախների իշխող վերնախավի անձնատրությանը։

Խորապես ողբերգական եղավ Եսայի կաթողիկոսի վախճանը։ Նրանք, ովքեր դեռ շարունակում էին դիմադրել թշնամուն, նրան մեղադրում էին դավաճանության մեջ։ Եվ ընդհակառակը, նրանք, ովքեր, ապարդյուն սպասելով ռուսների օգնության, կորուստներ էին ունեցել դիմադրական շարժումից, նրան պախարակում էին և ասում, որ նա չարաչար խաբել է իրենց։ Ռուս կառավարությանն ուղղած մի զեկուցագրում Մինաս վարդապետը հաղորդում էր, թե սղնախների հայերը վրդովված են կաթողիկոսի դեմ և վերջինս խոր վշտի մեջ սուզված և չարաչար «վիրավորանքներ կրելով վերջացրեց իր կյանքը»[63]։

1727 թ. Լեռնային Ղարաբաղի քաղաքացիական իշխանությունների հայտարարած զինադադարը կատարված իրողություն էր արդեն, սակայն դա համազոր չէր սղնախների լիակատար ենթարկվածությանը։

Կ. Պոլսում ստորագրված պայմանագրից հետո ռուսները չէին կարող սղնախներին զինական օգնություն ցույց տալ։ Զինական օգնության փոխարեն սղնախների բնակչությունը Մերձկասպյան նորանվաճ երկրամասը գաղթելու և այն շենացնելու հրավերներ էր ստանում միայն։ Հետևել այդ հրավերին, կնշանակեր հրաժարվել հայրենի երկրից ու նրա ազատագրման հեռանկարներից։ Այդ իսկ պատճառով սղնախների ղեկավարները ոչ միայն մերժեցին արտագաղթի ծրագիրը, այլև լարեցին իրենց վերջին ուժերը թշնամուն դիմադրելու համար։

Տակավին Բարդայի հանդիպումից առաջ, 1726 թ. սեպտեմբերին, Ղարաբաղի ռազմական ուժերը ապստամբեցին թուրք զավթիչների դեմ, որոնք եթե ոչ Կ. Պոլսի պայմանագրով, գեթ Գանձակի և Թավրիզի 1725 թ. անկումից հետո ենթակա բոլոր երկրամասերի լիիրավ տերերն էին համարում իրենց։

Ապստամբած սղնախներին միացան Մուղանի դաշտի և Ղարաբաղի ու Ղափանի միջև ապրող Կարաչորլու քուրդ ցեղերը։ 1726 թ. օգոստոսի սկզբներին ռուս զորահրամանատար Լևաշովը հաղորդում էր, որ թուրքերը քանիցս մեծ ուժեր են կենտրոնացրել հայերի դեմ, սակայն չորս անգամ տանուլ տվել զինաբախումը։ Մի քանի անգամ նրանք հարձակվել էին նաև շահսևանների վրա, բայց անզոր էին գտնվել ընկճելու նրանց[64]։ Թուրք պատմագիր Չելեբիզադեն հավաստում է հայերի, Կարաչորլու քրդերի և Մուղանի շահսևանների

---

62 Նույն տեղում, վավ. 345։

63 Նույն տեղում, վավ. 380, էջ 13։

64 Տե՛ս Ա. Աբրահամյան, նշված աշխատությունը, էջ 132։

հետ թուրքական 15 հազարանոց հեծելազորի ապարդյուն բախումների մասին։ Ի վերջո, սեփական զորքերի տրտունջների ճնշման տակ թուրքերը հաշտություն են կնքում Կարաչորլու քրդերի հետ՝ նրանց ցեղապետերին սուլթանական կալվածքներ շնորհելու և հայերից սահմանադատվելու խոստում ստանալով[65]։

1726 թ. աշնան վերջին Սարու Մուստաֆայի բանակը մոտեցավ Լեռնային Ղարաբաղի կենտրոնին, ամրակոծեց Ավան յուզբաշու կառուցած Քարագլխի (Շուշիի) բերդը։ Ութօրյա մարտերից հետո Սարու Մուստաֆային հաջողվեց գրավել բերդի մի մասը։ Գնդակահարելով 400 մարդ, վերցնելով բազմաթիվ գերիներ և մեծ քանակությամբ ձիեր ու անասուններ, թուրքերը վերահաս ցրտերի պատճառով վերադարձան Գանձակ։ Սակայն հաջողությունները էժան չէին նստել նրանց. ռազմական գործողությունների ժամանակ նրանք կորցրել էին երկու զորագլուխ և 800 շարքային։

Քարագլխի անկումից հետո Ավան յուզբաշին իր տրամադրության տակ գտնված ուժերի մնացորդներով պատսպարվում է Թարխան յուզբաշուն ենթակա Դիզակի կենտրոնում՝ Տող բերդաավանի լանջին կառուցված համանուն ավանում։ Ի վերջո Ավանն ու Թարխանը լքում են սղնախները և ապաստան գտնում Ռուսաստանում։

Ավելի տևական եղավ Լեռնային Ղարաբաղի պարտիզանական ջոկատների դիմադրությունը՝ որի հենակետերն էին Գանձակին մերձակա Գյուլիստանի և Ջրաբերդի սղնախները։ 1727 թ. սկզբներին ռուս զորահրամանատար Դոլգորուկովը իր կառավարությանը զեկուցում էր, որ հայկական զինված ուժերը դեռ շարունակում են մարտեր մղել Գանձակում համակենտրոնացած Սարու Մուստաֆայի բանակի դեմ։ Հայերը ոչ միայն դիմադրում են լեզգիների օժանդակությամբ զորացած թուրքական բանակի հարձակումներին, այլև ութօրյա հաղթական մարտերից հետո թշնամուն հարկադրում են նահանջել Գանձակ[66]։ 1729 թ. ցարին հղված մի դիմումի մեջ նույն զորահրամանատարը հավաստիացնում էր, որ սղնախներում հազարավոր զինվորներ պահում են իրենց զիրքերը և ոչ մեկը նրանցից անձնատուր չի լինում թշնամուն[67]։

Հետևելով Գանձակի պայմանագրին, սղնախները շարունակեցին իրենց դիմադրությունը նաև հետագայում, այս անգամ կողմնորոշվելով դեպի Իրանի ազատագրական շարժման ղեկավար Նադիրի կողմը։ Դիմադրական շարժման ծավալմանը նպաստում էր մանավանդ թուրքերի հարկային քաղաքականության սաստկացումը։ Եթե սկզբնապես թուրքերը վարում էին համեմատաբար մեղմ հարկային քաղաքականություն, ապա 1728 թ. հարկերը գանձում էին Թուրքիայում գործող չափերով՝ մտցնելով հարկման նոր տեսակներ և խիստ բարձրացնելով իրենց պահանջի ընդհանուր գումարը[68]։

1729—1731 թթ. հայ դիմադրական շարժման մեջ աչքի էր ընկնում Գյուլիստանի սղնախը, որի հրամանատարը հայկական աղբյուրի համաձայն կոչվում է «Աբրահամ սպարապետ», իսկ սուլթանական ֆերմաններում քանիցս

---

[65] Տե՛ս «Թուրքական աղբյուրները...», հատ. Ա, էջ 159։

[66] Տե՛ս նույն տեղում, վավ. 355։

[67] Տե՛ս նույն տեղում, վավ. 375, կետ 5 և վավ. 376։

[68] Հմմտ. Հ. Փափազյան, Վաղարշապատ գյուղի 1725—1728 թթ. թուրքական հարկացուցակները, «Բանբեր Մատենադարանի» № 5, էջ 440—446։

հիշվում է «գյավուր Աբրահամ» անունով, որում նկատի է առնված ոչ միայն նրա հայ ազգությունը, այլ երևի նաև նրա ռազմավարության կատաղի բնույթը[69]։ Ուշագրավ է, որ Գյուլիստանում ծավալված այս դիմադրական պայքարին մասնակցեցին 1722 թ. Հայաստանից Լեհաստան փախած և 1728 թ. Ղարաբաղ եկած հայ այն մարտիկները, որոնց գլուխ էր կանգնած յուզբաշի Գրիգոր Ստեփանյանը[70]։ «Գյավուր» Աբրահամի շուրջը խմբվում էր ոչ միայն հայ, այլև ադրբեջանցի երիտասարդությունը։ Այդ գործողություններին վերջ տալու համար սուլթանը որոշեց միավորել Երևանի Իբրահիմ փաշայի, Բայազետում նստող Մահմուդ փաշայի, քուրդ ամիրների և Դաղստանում, Շիրվանում ու Գանձակում գտնված իր զորքերը[71]։ Այս մասին հրատարակած ֆերմանում սուլթանը հրամայում էր, որ եթե «գյավուրները» համաձայնվեն գանձարան մուծել իրենց հարկերը, հպատակվեն սուլթանին և վստահելի պատանդներ հանձնեն, պետք է կատարել նրանց խնդիրքը։ Հակառակ դեպքում սուլթանը հրամայում էր հարձակում գործել, քանդել բնակատեղիներն ու ամրությունները և նրանց երկրում «հարկ եղած ավերածություններ» կատարել[72]։

Աղնախների այս վերջին ապստամբական շարժումը արձագանք էր գտել նաև Թուրքերի գինակալությանը ենթարկված այլ վայրերում՝ Ղարաբաղում, Արդաբիլում, Խալխալայում, Շիրվանում և Մարաղայում, ընդգրկելով տասնյակ հազարավոր կռվողներ։ Աղնախների սխրանքները համընկնում էին Թուրք նվաճողների դեմ ոտքի ելած իրանական ժողովուրդների համաշավիղ ընթացքին։

## 6. ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ԿՌԻՎՆԵՐԸ ՍՅՈՒՆԻՔՈՒՄ

XVIII դարի 20-ական թվականներին Սյունիքում ծավալված ազատագրական շարժման մասին մեզ հասած պատմագրական հիմնական սկզբնաղբյուրը նույն դարի կեսերին Մխիթարյան վանական Ղուկաս Սեբաստացու շարադրած աշխատությունն է՝ «Ընտիր պատմութիւն Դավիթ բէգին» վերնագրով, որին աղբյուր են ծառայել 1722—1728 թթ. Սյունիքի ապստամբությանը մասնակից մեղրեցի Ստեփանոս Շահումյանի և շարժման մի քանի այլ մասնակիցների պատմած հուշերը[73]։

Այդ հուշերում Շահումյանը հանդես է գալիս որպես շարժման նախաձեռնող, որ վրաց Վախթանգ թագավորի որդի Շահնավազին (Բակուրին) ներկայացրել է Ղափանի 50 «տանուտերերի» կեղծ կնիքներն ու ստորագրությունները կրող մի դիմում, խնդրելով Սյունյաց երկիրը հղել մեկին, տեղում հայ զինվորություն կազմակերպելու և երկիրը թշնամիներից պաշտպանելու համար։ Դավիթ-Բեկի գործունեությունը Ղափան դիտված է որպես այդ դիմումի հետևանք[74]։

---

[69] 1091 և հտն., 1095 և Մ. Բարխուդարյան, Արցախ, էջ 241 և հտն. և Րաֆֆի, Խամսայի մելիքությունները, 1883, էջ 10, ծան.։

[70] Վ. Ա. Պարսամյան, Լեհահայերի մասնակցությունը Դավիթ բեկի ապստամբությանը, Երևան, 1962, էջ 142։

[71] «Акты», II, էջ 1093։

[72] «История Азербайджана», Баку, 1958, հատ. I, էջ 312։

[73] Տե՛սՂ. Ալիշան, Սիսական, էջ 301։

[74] Տե՛ս «Ընտիր պատմութիւն Դաւիթ բէգին», էջ 3—5։

«Ընտիր պատմության» շարադրողի պատկերացմամբ «տանուտերերը» դրանք ընտանիքի, տոհմի ցեղի ու ազգի պետերն էին, այսինքն՝ Ղափանի «իշխանները», զորապետներն ու մելիքները։

Իրանի ծայրամասը հանդիսացող Անդրկովկասյան երկրամասի վալիին՝ Վախթանգին էր վերապահված տերության այդ հատվածի սահմանների ռազմական պաշտպանության իրավունքն ու պարտականությունը։ Ուստի նա, անկախ հայ տանուտերերի վերոհիշյալ համախոսականից, պետք է մտահոգվեր զինված ուժերի ղեկավարման գործով։ 1719 թ. ի վեր՝ կողմնորոշվելով դեպի Ռուսաստան, վրաց Վախթանգ թագավորն էր դարձյալ անդրկովկասյան ժողովուրդների ազատագրական պայքարի հիմնական ղեկավարը։ Նրա մոտ էին հանդուցավորվում Անդրկովկասի ազատագրական շարժման կարևոր թելերը։ Հավանական է, ուրեմն, որ 1720-ական թվականներին նա հայ զորավար Դավիթ-Բեկին ուղարկեր ղեկավարելու Զանգեզուրում ծավալված ապստամբական կռիվները[75]։

Գանձասարի Եսայի կաթողիկոսը նույնպես հաստատում է, որ ինչպես Ղարաբաղի ավանխներում, այնպես նաև Ղափանում, երկրի պաշտպանության հարցը կարող էր լուծում ստանալ Իրանի անդրկովկասյան կուսակալի, ներկա դեպքում՝ Վախթանգ թագավորի ու նրա հայ խորհրդատուների բարեհայեցողությամբ[76]։ «Իշխանն վրաց մեծ էր, և զայսպիսի զօրագլուխ յայնմ գաւառի կացուցանել նմա անկ էր» խոստովանում է նաև «Ընտիր պատմությունը»[77]։

Այսպես, ուրեմն, ըստ մեր աղբյուրի, 1722 թ. վերջերին Վախթանգ թագավորի հրահանգով հավաքագրված իր սակավաթիվ հայ մարտիկներով Դավիթ-Բեկը ժամանել է Ղափան, հայերի պաշտպանության գործն իր ձեռքն առնելու համար։

Ցավոք, մեր աղբյուրը Դավիթ-Բեկի կենսագրության վերաբերյալ ոչ մի մանրամասնություն չի հաղորդում։ Ավելի ուշ, առանց հիմնավոր ապացույցի, Դավիթ-Բեկին ազգակից լինելու պատվի համար իրար հետ վիճում էին Ղափանի հին տոհմերից երկուսը՝ Մելիք-Փարսադանյաններն ու Օրբելյանները։ «Ընտիր պատմությունը», սակայն, առիթ է տալիս կասկածելու ոչ միայն այդ հավակնությունների իրավացիությանը, այլև Դավիթ-Բեկի սյունեցի լինելուն, որը եզրակացված է սույն գրքի այն վկայությունից, թե իբր Դավիթ-Բեկը հրաման էր ստացել «երթալ յիւր հայրենի յաշխարհն Սիւնեաց, որ այժմ կոչի Խափան, զօրաժողով լինել անդ, և պահել զերկիրն Հայոց»[78]։

Սակայն բնագրի այս հատվածը չկա «Ընտիր պատմության» մեզ հասած և ոչ մի ձեռագիր օրինակում, այդ թվում նաև այն բնագրում, որը հիմք է հանդիսացել վկայակոչվող 1871 թ. հրատարակության։ Ձեռագրերում ամենուրեք Դավիթ-Բեկը հիշվում է որպես «մցխեթացի» կամ «մծխիթացի ի հայկազեան տոհմէ»։ Այսուհանդերձ, չի բացառվում այն հնարավորությունը, որ Դավիթ-Բեկն իրոք ազգակից լիներ Ղափանի տոհմերից մեկին։ XVIII դարում Վրաստանն այն երկիրն էր, որտեղ զինվորական ծառայության էին մտնում

---

[75] Տե՛ս Աշ. Հովհաննիսյան, Դավիթ-Բեկի գլխավորած Ղափանի ապստամբությունը, «Բանբեր Երևանի համալսարանի», 1970, № 1, էջ 97—98։

[76] Տե՛ս Եսայի կաթողիկոս Հասան-Ջալալյան, Պատմութիւն յիշատակ ինչ ինչ անցից դիպելոց յաշխարհին Աղուանից..., էջ 53։

[77] «Ընտիր պատմություն», էջ 4։

[78] Նույն տեղում, էջ 5։

Անդրկովկասի տարբեր կողմերից Թիֆլիս գաղթած հայերը, որոնցից և կազմվեց Դավիթ-Բեկի առաջին փոքրաթիվ ջոկատը։ Այդ հայ զինվորականներին հաճախ «վրացի» էին հորջորջում, սակայն, ինչպես ճիշտ բացատրում է «Ընտիր պատմությունը», «սոքա վրացի ասին, ըստ որում էին յերկրէն վրաց, այլ ոչ ի յազգէ նոցա. վասն զի Դաւիթ և ամենայն զօրաւարք իւր էին ի յազգէ Հայոցս լուսաւորչական»[79]։

XVIII դարում «մցխեթեցի» անունը հաճախ գործածվում էր «թիֆլիսեցի» իմաստով։ Առանձնապես հայտնի էին առևտրական քարավաններին ուղեկցող թիֆլիսեցի հայ զինվորականները, որոնց մասին Հարություն Արարատյանը գրում էր. «Այն ժամանակ թիֆլիսեցիք կամ վրացոց հպատակները գովված էին ու ամեն տեղ համարվում էին քաջ ու կտրիճ մարդիկ»[80]։

Բացի «Ընտիր պատմությունից», Դավիթ-Բեկի, նրա գործակիցների ու ժամանակակիցների մասին որոշ տեղեկություններ է պարունակում նաև 1746 թ. Աստրախանում գրված մի հիշատակարան, որի հեղինակն է թիֆլիսեցի Ղուզանենց Փարսադան բեկի որդի Թաղին։ Վերջինս հայտնում է, որ Վրաստանի «պարոնի» (իմա՝ վրաց թագավորի) հրամանով Ալիխանի որդի Դավիթ-Բեկը, հետո առնելով զորապետ Աբդլմասեհին, մեկնել էր Ղափան՝ կռվելու տեղի խաների ու օսմանցիների դեմ։ Հիշատակարանում նշված է նաև, որ կռվի ժամանակ Դավիթ-Բեկն ու Աբդլմասեհը զոհվել են։ Այստեղ ասված է, որ Դավիթ-Բեկը հանդիսանում էր թիֆլիսեցի Փարսադան բեկի փեսան, այսինքն՝ հիշատակարանի հեղինակ Թաղիի քրոջ ամուսինը։ Փարսադան բեկի ընտանիքի հիշատակված անդամները վրացական կամ ռուսական ծառայության մեջ գտնվող զինվորականներ էին։ Այդպիսիք էին նաև Աբդլմասեհն ու նրա Թաղի և Ռափայել եղբայրները, որոնք մասնակցություն էին ունեցել Պետրոս Մեծի իրանական արշավանքին[81]։

Զինվորական էր նաև Փարսադան բեկը։ Տվյալներ կան կարծելու, որ նա այն անձնավորությունն է, որը 1716 թ. կապ էր հաստատել հայերի ռուսական կողմնորոշման այդ ժամանակվա գաղափարակիցներից մեկի՝ Մինաս Տիգրանյանի հետ, իսկ 1717—1718 թթ. Վախթանգ թագավորի հանձնարարությամբ բանակցություններ վարել Պետրոս Մեծի կողմից Ռուսաստանի և Իրանի միջև խաղաղ հարաբերություններ մշակող դեսպան Վոլինսկու հետ։ Փարսադան բեկի միջոցով էր, որ Վախթանգը դեսպան Վոլինսկուն պատրաստակամություն հայտնեց զինակցելու ցարին։ Թաղիի հիշատակարանից տեղեկանում ենք նաև, որ 1722 թ. Փարսադան բեկը մասնակցել է Պետրոսի արշավանքին, որից հետո անցել է Արդաբիլ, ուր և վախճանվել է[82]։

Վերոհիշյալ բոլոր տվյալները գալիս են հաստատելու Դավիթ-Բեկի մերձավոր կապերը Վախթանգ թագավորի և նրա հավատարիմ գործակիցների հետ։

«Ընտիր պատմության» մեջ նկատելի են նրա կազմողի ու խմբագրողի

---

79 Նույն տեղում, էջ 76։

80 «Վաղարշապատեցի Հարություն Արարատյանի կյանքը», Թիֆլիս, 1922, էջ 172։

81 Տե՛ս «Բանբեր էջմիածնի գիտական ինստիտուտի», գիրք Ա և Բ, Վաղարշապատ, 1921—22, էջ 135 և հտն. հմմտ. *А. Н. Хачатрян*, Армянское войско в XVIII в., Ереван ,1968, էջ 238։

82 Տե՛ս *С. М. Соловьев*, История России с древнейших времен, изд. третье, М., 1884, т. XVIII, էջ 34 և հտն։

մտայնությունն ու կրոնա-բարոյական հայացքների հետքերը։ Մխիթարյան վանականի շարադրած այդ գրքում ընդգծված է Դավիթ-Բեկի տիպականացված պատկերը, ուր արտացոլված է իդեալական «տանուտիրոջ» մասին շարադրողի ունեցած պատկերացումը։ «Աղնուական, բարեպաշտ, արդարակըրով, ծանոթ գրոց, արիասիրտ, երկայնամիտ խորհրդով, զօրաւոր բանիւք և գործովք և վրէժխնդիր թշնամեաց Ազգին մերոյ, ինքն և ամենայն հետեվողք իւր»[83]։

Պատմության շարադրողը, հիմք ունենալով դեպքերի ականատես և մասնակից Ստեփանոս Շահումյանի խորը ապրումներով և հայրենասիրական ջերմ շնչով պատումածները, անխնա մերկացնում է շարժման հակառակորդներին, անարգանքի սյունին գամելով հատկապես ուրացողներին։

Դեպքերի ընթացքը նկարագրելիս, վանական խմբագիրը մեծ մասամբ առաջնորդվում է քրիստոնեական գաղափարախոսությամբ։ Սրանով հանդերձ, քննաբար մերձենալով «Ընտիր պատմությանը», կարելի է զանազանել իրականն ու ոչ իրականը։

Հետևելով Ղափանի ապստամբության ընթացքին, դժվար չէ նկատել, որ Դավիթ-Բեկի գլխավորած շարժումը ցեղերի ու ազգությունների փոխադարձ բնաջնջման պատերազմ չէր, այլ հայ գյուղացիական զանգվածների վրա հենված ազգային ապստամբություն՝ ուղղված արդեն կործանված Սեֆյան պետության դրածո հարստահարիչների, օսմանյան նվաճողների, ինչպես նաև նրանց հետ համակերպված հայ հասարակության վերնախավերի դեմ։ Եթե իր սկզբնավորման պահին Ղափանում ծայր առած պայքարը Իրանի խառնակ վիճակից օգտվելով իշխանության ձգտող տեղական ֆեոդալների դեմ բարձրացված ապստամբություն էր, հետագայում այն վերածվեց Անդրկովկասի նվաճման նպատակով հարձակման անցած թուրք զավթիչների և նրանց համակերպված հայ ֆեոդալների դեմ ծավալված հայ գյուղացիական զանգվածների դիմադրության։

Ի տարբերություն Ղարաբաղում ծավալված ազատագրական շարժման՝ Ղափանի ապստամբությունն ուղղված էր գավառի բնակչության մեջ արդեն զգալի տոկոս կազմող թրքախոս քոչվոր ցեղերի առաջնորդների և իշխող վերնախավերի դեմ։ Հետագայում, XVIII դարի 20-ական թվականների կեսերին, օսմանյան ռազմակալման պայմաններում, Ղափանը ասպատակող ու կողոպտող խաներից ու փաշաներից զատ, գավառի աշխատավոր գյուղացիությանը հարստահարում էին նաև վերջիններիս ձեռքին գործիք հանդիսացող առևտրավաշխառուական դասի ներկայացուցիչները, որոնք կապված էին Թուրքիայի և Իրանի առևտրական մեծ ճանապարհի հետ և «ծածկապէս դաշնադիրք էին ընդ օսմանցւոց»[84]։ Այսուհանդերձ նվաճողների դեմ դարերով կուտակված ատելության ու անհաշտ պայքարի բնույթ ստացած Ղափանի հայ զանգվածների ազգային-ազատագրական տրամադրություններն էին, որ մարտական թափ ու գաղափարական ուղղություն էին հաղորդում այստեղ ծավալված շարժմանը։

Ժամանելով Զանգեզուր, Դավիթ-Բեկը ստիպված էր անմիջապես համառ գոտեմարտի մեջ մտնել երկրում հաստատված քոչվորական մի քանի խոշոր ցեղային միավորումների դեմ, որոնք օտար տիրակալների և ինքնուրույնու-

83 «Ընտիր պատմութիւն», էջ 6։

84 Նույն տեղում, էջ 63։

թյան ձգտող քոչվոր վերնախավի ռազմական հենարաններն էին։ Առաջին կործանիչ հարվածը տրվեց Ղարաչոռլու կոչվող ռազմիկ ցեղին, որը տեղավորված էր դեպի Որոտանի ձորը տանող ճանապարհի վրա և ունենալով ռազմական շոշափելի առավելություններ, առաջին լուրջ պատնեշն էր հայկական զինված ուժերի միավորման և համագործակցության ճանապարհին։

Մուտք գործելով Սյունյաց աշխարհի կենտրոնը, Դավիթ-Բեկը նախ հաստատվեց Շինուհայր ավանում և անմիջապես ձեռնամուխ եղավ բերդի կառուցմանը։ Այստեղ նա իր մոտ հրավիրեց Տաթևի առաջնորդին և շրջակայքի հայ զինվորության ղեկավարներին, առաջարկելով միավորել ուժերը, հակառակորդի հավանական հարձակումները դիմագրավելու համար։

Ջախջախված ղարաչոռլուներին օգնության հասան Օթուզիքի կոչվող ցեղերը, որոնք միավորվել էին Ջիվանշիր մեծ ցեղի հետ։ Չնայած իրենց թվական գերակշռության, ջիվանշիրցիները ևս ջախջախիչ պարտություն կրեցին։

Այս ընթացքում Դավիթ-Բեկի խիզախ զորավարներից Մխիթար բեկն հանկարծակի հարձակմամբ ոչնչացրեց Քյուրթլար կոչվող խոշոր ավանում կենտրոնացած հակառակորդի զինական ուժերը։

Դավիթ-Բեկի և Մխիթար սպարապետի տարած հաղթանակների համբավը արագ տարածվեց ամբողջ Ղափանի շրջանում։ Շինուհայրի բերդում Դավիթ-Բեկին ներկայացան Չավնդուրի տանուտեր Թորոսը և Գողթնի ու Հին Ջուղայի տանուտերերը, հայտնելով իրենց պատրաստակամությունը՝ կռվելու նրա դրոշի ներքո։

Զինվորների թվաքանակով և ռազմական գերազանցությամբ աչքի ընկնող հակառակորդների դեմ Դավիթ-Բեկը կիրառում էր նման պայքարին բնորոշ, թշնամու գերազանց ուժերը ցլատող ու ընդդարմացնող ահաբեկչական տակտիկա։

Աքտակարգ ջանք էր բանեցնում Դավիթ-Բեկը նաև Սյունյաց երկրում բնավորվելու ձգտող Ղափանի թրքախոս, ինչպես նաև քրդական ցեղերին և նրանց պարագլուխներին երկրի սահմաններից քշելու ուղղությամբ։ Գույքաթափ ու զինաթափ անելով տեղի վաչկատուն ցեղերին, խլում էր նրանց տերերի երիվարներն ու ոչխարները և այդ ամենը կենտրոնացնելով իրեն ենթակա բերդերում՝ ծառայեցնում իր ձեռնարկած պատերազմի պետքերին։ Այդպես էր վարվում նա նաև իրեն դիմադրող մելիքների հետ. խլում էր նրանց կալվածներն ու հանձնում իրեն հավատարիմ հրամանատարներին։ Եվ քանի որ սրանց մեջ կարող էին տարաձայնություններ առաջանալ գրավված հարստության, ռազմամթերքի ու պարենի համար, բաշխումը կատարում էր անձամբ։

Անողոք էր Դավիթ-Բեկը մելիքական դասի այն ներկայացուցիչների նկատմամբ, որոնք, գերադասելով իրենց անձնական շահերը, մեկուսի դիրք էին գրավում կամ գործակցում էին հակառակորդի հետ։ Անպատիժ չէր թողնում նաև իր հավատարիմ զորականներին, եթե նրանք սխալներ կամ զանցանքներ էին թույլ տալիս։ Այսպես, նա հարկադրված եղավ կարճատև կալանքի տակ առնել Մելիք-Փարսադանին և Տեր-Ավետիսին, բախվեց Չավնդուրի հրամանատար Թորոսի, Կալերի հրամանատար Պապի և անգամ իր մերձավոր զինակից Մխիթար բեկի հետ։

Տաթևի Մելիք-Բաղիրն ու իր որդիները մահմեդականություն ընդունելով

«շահղուլիներ» («շահի ստրուկներ») հայտարարեցին իրենց։ Նրանք ամրացան Տաթևում և պատրաստվեցին դիմադրելու Դավիթ-Բեկին։ Այդ դիմադրությունը, սակայն, շատ արագ ընկճվեց։ Մելիք-Բաղիրը գլխատվեց, բռնագրավվեց նրա ունեցվածքը, որից հետո Դավիթ-Բեկը հաստատվեց Տաթևում։ Ավելի լավ չեղավ նաև Երիցվանիկի Մելիք-Ֆրանգյուլի վարքագիծը, որը մահմեդականություն ընդունելուց հետո պատճառ դարձավ Դավիթ-Բեկի հերոս հրամանատարներից մեկի՝ Թորոսի կործանմանը։ Ենթադրվում է, որ Մելիք-Ֆրանգյուլը ևս գլխով հատուցեց այդ դավաճանության համար։ Պատժի այդ անողոք եղանակը գործադրում էին նաև Դավիթ-Բեկի զորավարները։ Վահրևվարի կողմերում Պապ զորավարը բնաջնջեց ուրացողների երեք տուն և բռնագրավեց նրանց ունեցվածքը։

Սակայն շարժման գլխավոր թշնամիները, ինչպես ասվեց, տեղական ֆեոդալներն ու խաներն էին, որոնք, օգտվելով երկրում ստեղծված անիշխանությունից, փորձում էին իրենց ենթարկել Ղափանի հայությանը։ Այս հանգամանքը ստիպում էր Ղափանի հայ տանուտերերին ու մելիքներին խուսափելու ներքին տարաձայնություններից և գյուղացիական զինված ջոկատների գլուխն անցած միանալու Դավիթ-Բեկի գլխավորած շարժմանը։

Խոսելով Դավիթ-Բեկի շուրջ հավաքվող մարտիկների մասին, «Ընտիր պատմությունը» գրում է. «...առ նա ժողովէին ի Հայոց ամենայն արք զօրութեանց յամենայն կողմանց գաւառին որ լսէին զնմանէ... որք նեղեալք և տառապեալք էին ի դառն ծառայութենէ այլազգեաց, արք, որք զանձինս իւրեանց նզեալք էին առ ի ազատ լինելոյ ի լծոյ ծառայութեանն այլազգեաց»[85]։

Զգալով իրենց սպառնացող վտանգը, Դավիթ-Բեկի դեմ ռազմական ուժեր են կուտակում Ղափանի ֆեոդալ ղեկավարները, Օրդուբադի և Նախիջևանի խաները և Բարգուշատի սուլթանը։

Պայքարը հետզհետե բորբոքվեց Զնյվա և Որոտան բերդերի շուրջը, որոնք պաշարողական համառ մարտերից հետո գրավվեցին հայ մարտիկների կողմից։ Սիսիանից անցնելով Փոքր Ղափան, մոտ 6—7 հազարանոց բանակով, Դավիթ-Բեկը գիմադրեց հակառակորդի բազմահազար հետևակ և հեծյալ զնդերին։ Այս ահեղ գոտեմարտում նրան օգնության են հասնում Կալերի, Գենուազի և Մեղրիի մարտիկները։ Կռվի սաստկացումը Ղարաբաղի սղնախներին հարկադրում է օգնություն հասցնել Դավիթ-Բեկին։ 1724 թ. գարնանը Ավան յուզբաշու և Իվան Կարապետի գլխավորությամբ Ղարաբաղի սղնախների 2000 մարտիկներ անցնում են Ղափան[86]։

Ղափանցիների կռվադաշտի ընդարձակումը ռազմական գործողությունների մեջ ներգրավեց ոչ միայն Նախիջևանի, այլև Արաքսի մյուս ափին գտնվող Ղարադաղի խանին։ «Ընտիր պատմությունից» զատ այդ մասին վկայում են նաև ռուսական արխիվների տվյալները։ Երկու աղբյուրներն էլ հաստատում են, որ այս կռիվներում հայերն ավելի քան հազար մարդու կորուստ ունեցան[87]։

1724 թ. ամռանը բուռն մարտեր են ծավալվում Բարգուշատի և Լևաղի շրջաններում, կռիվներում աչքի է ընկնում Ջավնդուրի հրամանատար Թորոսը,

---

85 «Ընտիր պատմություն», էջ 6։

86 Տե՛ս «Армяно-русские отношения в первой трети XVIII в.», т. II, ч. I, էջ LVII։

87 Տե՛ս «Ընտիր պատմություն», էջ 14։

որը Կևաղի շրջանում կոտորում է խանի հոտերի հովիվներին։ Դարանամուտ հայ մարտիկները թիկունքից հարվածում են Ղափանի լեռները բարձրացած քոչվորներին և մեծ վնաս հասցնում նրանց։ Միաժամանակ, Ափնիս գյուղի մոտ նրանք հարձակվում են Բարգուշատի խանին օգնության հասած Կևաղի Սաֆիկուլի խանի վրա։ Նահանջելով հայերի հարվածներից, Սաֆիկուլին իր հետ Օրդուբադի կողմերն է գաղթեցնում Կևաղի մի քանի թրքաբնակ գյուղերի բնակչությանը, իսկ Պապ հրամանատարը հարձակվում է ու ավերում Կևաղի կողմերում մնացած հակառակորդի մյուս գյուղերը։

Այս ընթացքում էր, որ Զավնդուրի հրամանատար Թորոսը զոհ դարձավ ուրացող Մելիք-Ֆրանգյուլի դավին, իսկ երբ Թորոսին փոխարինած Նուբարի ուժերը բախվում են Սաֆիկուլի խանի հետ, Պապը խուսափում է վերջինիս հետ ընդհարվելուց, հիմք տալով Դավիթ-Բեկին երկչոտության համար նրան գլխատելու հրաման տալ։

Շատ չանցած Կևաղի խան Սաֆիկուլին նոր ուժեր հավաքելով հարձակվում է Գենավուզի վրա և հրդեհի մատնում այդ շրջանի գյուղերը։ Դավիթ-Բեկը հրամայում է Մխիթար բեկին վրեժխնդիր լինել. վերջինս արշավելով, հրդեհի ու ավարի է մատնում հակառակորդի գյուղերը։

Մինչդեռ համարյա անընդմեջ շարունակվում էին փոխադարձ ավերիչ հարձակումները, Դավիթ-Բեկը Ղափանի կենտրոնում կառուցեց Հալիձորի բերդը, այնտեղ կուտակելով անհրաժեշտ քանակությամբ ռազմամթերք, պաշեն ու հանդերձանք։

«Ընտիր պատմություն» շարադրանքից, որտեղ բավական մանրամասն նկարագրված են Դավիթ-Բեկին ենթակա բոլոր կողմնապետերի ու հրամանատարների վարած կռիվները, ամենայն հստակությամբ երևում է, որ չնայած ստեղծված բարդ իրադրությանը, Դավիթ-Բեկին հաջողվել էր Սյունիքում ստեղծել զուտ հայկական մի իշխանություն, որը շրջապատված թշնամի ուժերով, շարունակական կռվի մեջ էր նրանց դեմ։

Հաստատվելով Հալիձորում, Դավիթ-Բեկը հրամանատարների միջոցով ղեկավարում էր առանձին գավառների պաշտպանողական ու հարձակողական կռիվները, հրահանգելով իր զորավարներին օգնության հասնել միմյանց, հատկապես այն ճակատներում, որտեղ թշնամին սպառնում էր հայերի դիմադրությանը։ Կամ մերթընդմերթ անձամբ, իր ձեռքի տակ եղած պահեստի ուժերով, վրա հասնելով և ամիջապես մարտական գործողությունների մեջ մտնելով, ահ ու սարսափ էր տարածում, ահաբեկելով հակառակորդին։

Հայկական զինված ուժերը Սյունիքում տիրում էին մի շարք ամրությունների, ինչպիսիք էին Որոտանի ու Ջեյվայի բերդերը։ Ամրացված էին նաև Շինուհայրն ու Տաթևը, Մեղրին ու Խնձորեսկը և կառուցվել էր Հալիձորի անառիկ բերդը։

Ամրություններում հաստատված էին բերդապահ կայազորներ, որոնք բացի բերդի հսկողությունից, պահպանում էին նաև մերձակա գյուղերն ու ավանները և Դավիթ-Բեկի հրամանով մասնակցում էին թշնամի ուժերի դեմ մղվող ճակատամարտերին։

Հայկական զինված ուժերը տեղաբաշխված էին հետևյալ բերդերում ու լեռնային ամրացված ավաններում. Շինուհայրի կայազորը բաղկացած էր

550 մարդուց՝ հրամանատարությամբ Բայինդուրի, Բալիի, Մինասի և Ստեփանոսի, Տաթևում կար 400 զինվոր, որոնց գլխավորում էին Դիչին, Այդին, Եսայեն, Տիրացուն և Սիմեոնը, Մելիք-Փարսադանը 250 և Տեր-Ավետիսը 468 կռվողներով հաստատված էին Հալիձորի բերդում, Զամնդուրում շուրջ 2000 մարտիկների գլխավորում էին Թորոսը, Բայինդուրը, Նուբարը, Վարդանը, Փարսադանը, Թովմասը, Թուրինջն ու Հովհաննեսը, Կալերում կար 700 կռվող՝ Պապի հրամանատարությամբ, որի օգնականն էր Ստեփանոս Շահումյանը, Մեղրիի կայազորը բաղկացած էր 400 զինվորից՝ հրամանատարությամբ Կոստանդինի, Հովհաննեսի, Սարիի և Առաքելի։



Հալիձորի բերդը

Հիշյալ կայազորներից բացի, թվարկված են նաև Դավիթ-Բեկի այլ զորականներ իրենց զինված ջոկատներով, ինչպես օրինակ, Հին Ջուղայի Մաղամելիքի և Դիլանչու որդիներն իրենց զինվորներով, Սիսիանի հրամանատարը՝ 500 կռվողներով, Մելիք-Ղուչին՝ 200 զինվորից բաղկացած ջոկատով, Տեր-Գասպարը՝ 250 զինվորով, Բաղաբերդցի Ադամը՝ 150 զինվորով, Կուլբերդցի Ղազարը՝ 110 զինվորով և Սարգիսը Շվանիձորի 250 մարտիկներով։

Հրամանատարական կազմի մի մասը Ղափան էր ժամանել Դավիթ-Բեկի հետ Վրաստանից (Մխիթար բեկ, Բայինդուր, Գորգի, Հովհաննես, Ավթանդիլ և այլք), իսկ մյուսները բնիկ տանուտերեր, գյուղական ավագներ, նախկին քահանաներ ու մելիքներ էին (Թորոս, Պապ, Վարդան, Պալի, Ադամ, Նուբար, Սարգիս և ուրիշներ)։

Վերոհիշյալ բոլոր զինվորների ընդհանուր թիվը հասնում էր 6—7 հազարի։ Կասկածից դուրս է, որ խոշոր ճակատամարտերի ժամանակ բնակչության ավելի հոծ զանգվածներ էին ընդգրկվում ռազմական գործողությունների մեջ, ուստի բազմապատկվում էր շարժմանը անմիջական մասնակցություն ունեցողների թիվը։

1725 թ. ուժեղ կռիվներ բորբոքվեցին Գողթնում։ Երբ Պապին մահապատժի ենթարկելուց հետո Դավիթ-Բեկը Կալեր ավանից անցավ դեպի Զավնդուր, Սաֆիկուլի խանը Օրդուբադի դաղու և շեյխ-ուլ-Իսլամի որդիների հետ դաշնակցած, Հարձակման անցավ և հասավ մինչև Մեղրի ավանը։ Մի օր տևող ճակատամարտից հետո, անհրաժեշտ չհամարելով շարունակել մարտը, Դավիթ-Բեկը վերադառնում է Հալիձոր։ Ըստ երևույթին ճակատամարտի ընթացքում թշնամուն պատճառած կորուստները նկատի ունենալով, նա գտնում էր, որ հակառակորդը ի վիճակի չի լինի նորից հարձակման անցնելու։ Սակայն շուտով, Թավրիզից և Ղարադաղից մարտական նոր համալրում ստանալով, թշնամու ուժերը նորից հարձակման են անցնում և գրավում են Մեղրու Փոքր թաղը, մեղրեցիները հերոսական դիմադրություն են ցույց տալիս քաղաքի ներսում։ Օրհասական մարտերը շարունակվում են այնքան ժամանակ, մինչև որ Զավնդուրի 2000 հայ մարտիկները Բայինդուր զորապետի հրամանատարությամբ օգնության են հասնում և հալածում հակառակորդին մինչև Օրդուբադի սահմանները՝ կենդանի ուժի և նյութական մեծ վնաս պատճառելով նրան։

Վերադառնալով Հալիձոր, Դավիթ-Բեկը իր զորականներին ուղարկում է հալածելու Բարգուշատից և մերձարաքսյան տափաստաններից Ղափանի և Սիսիանի լեռները բարձրացած քոչվորներին։ Այս արշավանքները նպատակ ունեին երկիրը մաքրել օտար տարրերից, միաժամանակ՝ ձեռք բերել մեծ թվով անասուններ։ Քոչվորության դեմ մղվող կռիվներում աչքի են ընկնում Մխիթար բեկն ու Տեր-Ավետիսը, որոնք, հալածելով նրանց, տասնյակ հազար ոչխար և տավար քշեցին ու հասցրին Հալիձոր։ Այս հողի վրա նորից բորբոքվեցին կռիվները Բարգուշատի Ֆաթհալի խանի և Մխիթար բեկի զորքերի միջև։ Կռիվների ընթացքում գերի ընկավ Ստեփանոս Շահումյանը, որին, սակայն, շուտով հաջողվեց փախչել Բարգուշատից և ազատվել գերությունից։

Մինչդեռ փոփոխակի հաջողություններով շարունակվում էին կռիվները Դավիթ-Բեկին ենթակա կողմնապետերի և շրջակա օտարազգի ֆեոդալների ու խաների միջև, գնալով ավելի էր խորանում երկրում տիրող ընդհանուր անիշխանությունը՝ նպաստավոր իրավիճակ ստեղծելով օտար ներխուժման համար։

1724 թ. հարձակման անցան օսմանյան զորքերը, հրով ու սրով ընկճելով Անդրկովկասի ժողովուրդների հերոսական դիմադրությունը։ 1725 թ. գարնանը նրանք արդեն մոտեցել էին Սիսիանի ու Ղափանի բարձունքներին, նպատակ ունենալով ռազմակալման ենթարկել այդ շրջանը ևս և ճնշել այնտեղ ծավալված ազատագրական շարժումը։

Թուրքական առաջատար գնդերի սկզբնական ընդհարումները Ղափանի հայկական զորքերի հետ ոչ մի հաջողություն չբերեցին նրանց։ 1725 թ. մայիսի 11-ին գաղտնի խորհրդական Պ. Ա. Տոլստոյին ներկայացրած զեկուցագրում Իվան Կարապետը նշում է, որ «Թուրքերը հասել են Ղափան, ընդհարումներ են ունեցել Դավիթ-Բեկի հրամանատարության տակ գտնվող հայկական զորքերի հետ, մեծ զոհեր են տվել և այժմ այնտեղ թուրքեր չկան»[58]։

Համոզվելով, որ Ղափանի լեռնային պայմաններում չափազանց դժվար է հաշիվ մաքրել արյան գնով ազատություն ձեռք բերած ապստամբ հայ գյուղացիության հետ, թուրքական հրամանատարությունը անցավ քաղաքական

[58] «Армяно-русские отношения в первой трети XVIII в.», т. II, ч. II, էջ. 312։

ակտիվ ու խորամանկ գործունեության, փորձելով սիրաշահել տեղական բնակչության ունևոր դասի ներկայացուցիչներին և մեծամեծ խոստումներով իր կողմը գրավել շրջակա մահմեդական համայնքների պարագլուխներին։

Նույնպիսի նենգ քաղաքականություն վարելով և օգտվելով առևտրավաշխառուական դասի ծառայություններից, նվաճողներին շուտով հաջողվեց մուտք գործել Իրանի ու Թուրքիայի առևտրական մայրուղու հետ կապված շրջանները՝ Օրդուբադ, Ագուլիս, Մեղրի և ռազմակալման ենթարկել Նախիջևանն ու Ղափանի մերձակա գավառները, ահ ու սարսափ տարածելով կաղմալուծել կարճ ժամանակում ստեղծված Ղափանի հայ զինվորության միասնությունը։

Մխիթար բեկի և Ղափանի մի քանի յուզբաշիների ստորագրությամբ ռուսաց ցարին ուղարկված գրությունից պարզ երևում է, որ 1726 թ. գարնանը թուրքերն արդեն թափանցել էին Ղափանի ներքին գավառները, ծանր կացություն ստեղծելով ամրություններին ապավինած հայկական փոքրաթիվ ուժերի համար։ Ահա թե ինչ է գրված այդ աղերսագիր-ուղերձում. «...Օսմանցիքն բազմահոյլք հոլովազորօք եկին Ջարմակայ գլուխքն, բազում քաղաք, վանք, անապատք, գեղորանք առան, տիրեցան, և քրիստոնեաք անխնայաբար կոտորեցին։ Զի անչափ անիրաւութիւն առնէին, որ երկու տարեկան, մէկ տարեկան և կէս տարեկան աղջկունք, երախէք առեալ տանէին ի մօրց գրկէն առ յաչս մօրն սրախողխող առնէին, և մայրքն գերի առեալ աւար առնէին, և եկեղեցիք ձիանք կապէին՝ թալա (ախոռ) շինէին, խաչ և սրբութիւնք ջարթէին. կուս աղջկունք ի մէջ եկեղեցում պղծէին, զի այնպէս անառակ բան առնէին, որ ոչ է պարտ ասելն և կամ ճառելն, զի ոչ է պարտ քրիստոնէից լսելն։ Այլ ինչ երկարեմք, յետ սոցա գիմեցան առ մեզ, եւ մեք աստուծոյ զօրութիւնն ապաւինեցաք, և յուսացաք աթոռ թագաւորութիւնդ քոյ, և ակն ունելով ձերում իշխանութիւնն և յաստծոյ յօգնութիւնն, սպառազինեալ պատերազմեցաք յետ օսմանցոց, աստուծով յաղթեցաք նոցա և բազում գերիք եւս ազատեցաք, եւ այժմս օսմանցիք բազմացեալ եկեալ են Դ (4) կողմանէ մեզ պատեալ, գեղորանքն առեալ ընդ մեզ պատերազմում, զի ոչ եմք կարում ասար և անդրն շրջիլ, այլ մնացեալ եմք ի մէջ ղալին (բերդ), որպէս հաւքն ի մէջ ղափաղի (վանդակ)։ Զի խնդրեմք զբարձր զօրապետ թագաւորութենէդ, վասն աստուծոյ սէրն և յուսոյ արքայութեանն և վասն հոգոց ձերոց և Քրիստոսի խաթերն համար՝ պիտի որ օգնութիւն հասուցանէք մեզ, որ այս մնացեալ անչարակեալ քրիստոնեաքս վասն Քրիստոսի սէրն զթագաւորին հրամանաւն ազատէք, որ չլինեն անօրինաց գերի»[89]։

Հիմք ունենալով այն փաստը, որ ցարին ուղղված գրությունը ստորագրված է Մխիթար բեկի կողմից, ինչպես նաև վկայակոչելով 1746 թ. Աստրախանում գրված Ղուզանենց Թաղիի հիշատակարանը (ըստ որի Դավիթ-Բեկը զոհվել էր թշնամիների դեմ մղված մարտերում) ուսումնասիրողներից ոմանք ենթադրում են, որ Դավիթ-Բեկը պետք է վախճանված լինի 1726 թ. առաջ, որից անմիջապես հետ Ղափանի զինվորության ղեկավարությունն անցել է Մխիթարին[90]։

---

[89] «Армяно-русские отношения в первой трети XVIII в.», т. II ч. II, վավ. 335։

[90] *П. Т. Арутюнян*, Освободительное движение армянского народа в первой четверти XVIII века, М., 1954, էջ 258—260։ չմմտ. Ա. Հովհաննիսյան, Դավիթ-Բեկի ղեկա-

Այս տեսակետի կողմնակիցները կասկածի տակ են առնում «Ընտիր պատմության» հետագա շարադրանքը, որտեղ թուրքերի դեմ մղվող կռիվներում և Հալիձորի ճակատամարտում հայկական զորքերին գլխավորում է Դավիթ-Բեկը և հաղթական կռիվներից հետո միայն հիվանդանում է ու 1728 թ. մահանում Հալիձորի բերդում։

Ինչպես վերը տեսանք, Մխիթար բեկի նամակը հաստատում է 1726 թ. սկզբներին Ղափանում ստեղծված ծանր կացության և հայկական զորքերի հուսալքման ու ցլատման մասին «Ընտիր պատմության» հաղորդած տեղեկությունները։ Նման պայմաններում դժվար է ճշգրտել, թե ինչ հանգամանքներում է գրված և ինչպիսի նախաձեռնության հետևանք է այդ ուղերձը։ Մի բան պարզ է, սակայն, որ ուղերձի հեղինակները միանգամայն անտեղյակ էին քաղաքական այն անցուդարձերին, որոնք լիովին բացասում էին ռուսների կողմից ուղարկվելիք որևէ ռազմական օժանդակություն։

«Ընտիր պատմությունը» մի քանի խոսքով է միայն անդրադառնում թուրքերի ներխուժման ժամանակ Դավիթ-Բեկի զինակիցների միջև առաջացած անհամաձայնության և նրան լքելու իրողությանը[91]։ Ուստի դժվար է պարզել ուժերի այդ կաղմալուծման և Դավիթ-Բեկի մեկուսացման պատճառները։ Պետք է ենթադրել սակայն, որ դա հետևանք չէր միայն թուրքական գերազանց ուժերի, հատկապես Բեքիր և Արաբ-Ալի փաշաների ծավալած ռազմական գործողությունների։ Ամենայն հավանականությամբ ուժերի կազմալուծմանը նպաստել են դասակարգային ներհակությունները ու դրսից ակնկալվող օգնության և դաշնակիցներ որոնելու վերաբերյալ թեր ու դեմ կարծիքները։

Այդպիսի խառն ու անկազմակերպ իրադրության արդասիք էր իրականում ոչ մի շոշափելի արդյունք չխոստացող Մխիթար բեկի և նրան համախոհ յուզբաշիների ստորագրությամբ 1726 թ. մարտի 24-ին շարադրված աղերսագիր-ուղերձը։

Ռուսաստանի և Թուրքիայի միջև 1724 թ. հունիսին կնքված պայմանագիրը բացասում էր Կասպից ծովի առափնյա շրջանները նվաճած ռուսական զորքերի որևէ շարժում դեպի Անդրկովկասի ներքին նահանգները, որոնք ըստ այդ պայմանագրի պետք է գտնվեին թուրքական զինվորական իշխանությունների տնօրինության տակ։

Ստեղծված օրհասական իրադրության մեջ Ղափանի հայությունը ևս ստիպված էր ապավինել միայն իր ուժերին։ Այդ ուժերը սակայն ցլատված էին և ընկճված։ Թուրքերը թափանցել էին երկրի ներքին շրջանները, կողոպուտի և ավերածության ենթարկելով ապստամբ գյուղերն ու ավանները։ Տեղի մելիքներից ու տանուտերերից շատերը, որոնք նախապես ընդունել էին Դավիթ-Բեկի գերիշխանությունը, երես էին դարձրել նրանից և ենթարկվել նվաճողներին։ Նահանջելով թշնամու գերազանց ուժերի առաջ, 1727 թ. գարնանը Դավիթ-Բեկն, իր մի քանի հավատարիմ զինակիցների հետ, ամրացել էր Հալիձորի բերդում և համալրում էր իր ուժերը, պատրաստվելով ահեղ գոտեմարտի։ «Բայց Դաւիթ յայսմ ամենայնի ոչ լքաւ,—գրում է պատմագիրը,

---

վորած Ղափանի ապստամբությունը, «Բանբեր Երևանի համալսարանի», 1970, № 1, էջ 108 և հտն.։

[91] Տե՛ս «Ընտիր պատմութիւն», էջ 43—44։

—ոչ կասեցաւ ի խորհրդոցն, ոչ զանգիտեաց ի բազմութենէ բարբարոսայն, և ոչ դադարեցաւ ի քաջագործութեանցն, և ոչ յուսահատեցաւ յաստուածային խնամոցն։ Այլ արիաբար զբերդն ամրացուցանէր, զհամբար բերդին պատրաստէր, վզօրականսն առ ինքն ժողովէր և բազմացուցանէր»[92]։

«Ընտիր պատմության» շարադրողը չափազանց վառ գույներով է նկարագրում Հալիձորի հերոսական պաշտպանությունը, խիստ նվազեցնելով հայ մարտիկների թիվը և բազմապատկելով թշնամու ուժերը։ Սակայն ինչպիսին էլ որ եղած լինի ուժերի հարաբերակցությունը (իսկ դա անպայման եղել է հօգուտ նվաճողների), իրողությունն այն էր, որ յոթ օր տևող պաշարողական մարտերից հետո օսմանյան բանակը չկարողացավ թափանցել բերդի պարիսպներից ներս և չդիմանալով հայ զինվորների հանկարծակի հակահարձակմանը, խուճապահար փախուստ տվեց մարտի դաշտից։ Պարսպից դուրս ձեռնարկված խիզախ հարձակման քաջարի հրամանատարները Մխիթար բեկն ու Տեր-Ավետիսն էին, որոնք ոգևորելով հայ զինվորներին, վճռական մարտի տարան նրանց, ջախջախիչ պարտության մատնելով թշնամուն։ «Քաջացարուք, մի երկնչիք,—գոչում էին նրանք՝ դիմելով իրենց զինվորներին,—ելեք զհետ մեր, եթէ հասանել իցէ վախճան մեր, քաջութեամբ մեռցուք, զի լաւ լիցի մեզ արիութեամբ արտաքոյ պարսպաց մեռանիլ, քան աստէն առաջի աչաց մերոց տեսանել զմահ ընտանեաց և բարեկամաց մերոց...»[93]։

Թուրքական զորաբանակների և նրանց հետ դաշնակցած Բարգուշատի Ֆաթհ-Ալի խանի, Ղարաբաղի խանի, Ղարաչորլուների և սրանց միացած տեղական ֆեոդալների բազմահազար զորքերի դեմ, շարժմանը հավատարիմ մնացած հայկական փոքրաթիվ ուժերի Հալիձորի տակ տարած հաղթանակը նոր թափ հաղորդեց Ղափանի ազատագրական կռիվներին և ամրապնդեց ապստամբ գյուղացիության հավատը սեփական ուժերի նկատմամբ։ Հետապնդելով ջախջախված թշնամուն, որը կռվի դաշտում թողել էր մի քանի հազար սպանված, մարտական դրոշներ և ռազմամթերք ու հանդերձանք, ապստամբների արագ բազմապատկվող ուժերը մեծ արագությամբ կարողացան Ղափանի երկիրը մաքրել օսմանյան զորքերից և առաջանալ դեպի Մեղրի։

Թեև Ղափան մտած թուրքական զորքերը ջախջախված էին և դուրս շպրտված երկրից, սակայն ապստամբության ղեկավարներին շարունակում էր մտահոգել դրսից օգնություն ստանալու և հուսալի դաշնակիցներ ձեռք բերելու հարցը։

Մինչ Ղափանում այս դեպքերն էին տեղի ունենում, Ատրպատական ներխուժած օսմանյան նվաճողների դեմ ծավալված ազատագրական պայքարը գլխավորում էր Սեֆյան շահ Թահմազ II-ը։ Նրան հավատարիմ խաներից շատերը սպառազեն ապստամբների գլուխն անցած Ատրպատականի հյուսիսային շրջանները մաքրել էին օսմանյան նվաճողներից։ Շահ Թահմազի առաջապահ ջոկատները կանգնած էին Ագուլիսից ոչ շատ հեռու՝ Դուզալի շրջանում։ Դավիթ-Բեկը Մխիթարին և Տեր-Ավետիսին 66 զինվորներից բաղկացած ջոկատով ուղարկեց բանակցելու Դուզալի խանի հետ, առաջարկելով

92 «Ընտիր պատմություն», էջ 44։

93 Նույն տեղում, էջ 49—50։

նրան, միացյալ ուժերով շարունակել պատերազմը օսմանցիների դեմ։ Այս ընթացքում, Նախկինում Դավիթ-Բեկի դեմ թշնամաբար տրամադրված Լևազի խանը աշխատում էր համոզել իր եղբորը՝ Դուզալի խանին, դաշնակցել Դավիթ-Բեկի հետ և համատեղ ջանքերով Թուրքերին դուրս քշել Գողթնից։ Վերադառնալով Դուզալի խանի մոտից, Մխիթար բեկին ու Տեր-Ավետիսին հաջողվում է Թուրք հարստահարիչների ձեռքից լեռներում ապաստանած մեղրեցիներին հավաքել ու սպառազինել, և ապա գաղտնի մուտք գործել Մեղրի ու համախմբել տեղի կռվող ուժերը։ Դուզալի խանը ևս ուղարկում է 50 հոգուց բաղկացած մի ջոկատ։ Երկու քաջարի զորավարները ապստամբ մեղրեցիների գլուխն անցած, անսպասելի Թափանցում են բերդի պարիսպներից ներս և կռվի բռնվելով հանկարծակիի եկած օսմանյան զինվորների հետ, քշում են նրանց դեպի Արաքսի առափնյա կիրճը և՝ երկու կողմից կրակի տակ առնելով, գլխովին ոչնչացնում են մի քանի հազար զինվորներից բաղկացած բանակը։



Մեղրու բերդի արևելյան աշտարակը

Մեղրու բերդում ապստամբները կոտորեցին Թուրք հարկահաններին և այրեցին օսմանյան իշխանությունների կազմած Ղափանի ու մերձակա մի քանի շրջանների հարկացուցակները։

Հաջողությամբ շարունակելով պայքարը օսմանյան ռազմակալման դեմ և կործանիչ հարվածներ հասցնելով նրանց Բեխ ավանում, Բարգուշատի մատույցներում, Մանլևում և այլուր, Դավիթ-Բեկը եկավ Մեղրի և իր հետ վերցնելով Մեղրու և Ջավնդուրի կռվողներին, անցավ դեպի Կարճևան՝ այնտեղից դեպի Օրդուբադ արշավելու համար։

1727 թ. է վերաբերում Ղափանի ապստամբության ղեկավարների նոր ձեռնարկը, կապ հաստատելու Ատրպատականում գտնվող շահ Թահմազի հետ։

Վերջինս, ընդունելով հայերի պատվիրակությանը, հատուկ հրովարտակով ճանաչում է Դավիթ-Բեկի իշխանությունը Ղափանի երկրում և հանձնարարում է շարունակել պայքարը օսմանցիների դեմ՝ մինչև նրանց արտաքսումը երկրի սահմաններից։ «Ընտիր պատմության» մեջ հատկապես ընդգծված է շահ Թահմազի հրովարտակը և փորձ է արված տալ նրա թարգմանությունը մտովի վերաշարադրությամբ։ Նշված է հատկապես, որ Թահմազը Դավիթ-Բեկին արտոնել է նաև դրամ կտրել և նրան ու նրա զորավարներին պարգևատրել է թանկարժեք նվերներով։

Օրդուբադի գրավումից հետո ռազմական գործողությունների թատերաբեմ դարձավ Ագուլիսը, որտեղ և երևան եկավ առևտրա-վաշխառուական դասի նենգավոր վարքագիծը։ Ագուլիսի քալանթար Մելիք-Մուսին, որ ապաստան էր տվել Օրդուբադից փախած թուրք հարկահաններին, թեև առերես հնազանդություն հայտնեց Դավիթ-Բեկին, սակայն, արտահայտելով ունևոր վերնախավի ձգտումները, գաղտնաբար գործակցում էր և օժանդակում թուրքերին։ Նրա խորհրդով վերջիններս հարձակվեցին Դավիթ-Բեկի և նրա զինակիցների վրա, որոնք հաստատվել էին Թովմա առաքյալի վանքում։ Օսմանյան զորքերի երիցս կրկնվող հարձակումները հանդիպելով Դավիթ-Բեկի և նրան օգնության եկած շահ Թահմազի զինվորների քաջարի դիմադրությանը, ավարտվեցին չարաչար պարտությամբ։

Սակայն Թահմազի հանձնարարությամբ հայերի հետ դաշնակցած խաները Ագուլիսի մոտ մղված վճռական ճակատամարտում փախուստի դիմեցին, կռվի ամբողջ ծանրությունը թողնելով հայ մարտիկների վրա։ Ետ մղելով օսմանցիների գրոհը, Դավիթ-Բեկի զորքերը հետապնդում են նաև մարտի դաշտը լքած, դեպի Թավրիզ փախչող խաներին, ավարի ենթարկելով նրանց ունեցվածքը։

Թովմա առաքյալի վանքում ամրացած Դավիթ-Բեկի, Մխիթար բեկի և նրանց զինակիցների համար շուտով ստեղծվում է վտանգավոր վիճակ։ Մելիք-Մուսին իր համախոհներով բացահայտ անցնում է թուրքերի կողմը և հարձակում է գործում ղափանցի մարտիկների վրա։ Ագուլեցիք սպանում են նաև իրենց մոտ բանագնաց եկած Մելիք-Փարսադանին։ Խուսափելով եղբայրասպան կռիվներից, Դավիթ-Բեկն ու իր զինակիցները քանդում են վանքի պարիսպը, ճեղքում պաշարման շղթան ու հեռանում դեպի Ղափան։

1728 թ. սկսվում է թուրքական զորքերի ընդհանուր հարձակումը, որի նպատակն էր ծնկի բերել Սյունյաց ու Արցախի զինված հայությանը և այդ շրջանները ևս ենթարկել օսմանյան զինվորական իշխանությանը։ Ղափանի հայ զինվորության համար սկսվում է ծանր ու անհավասար պայքարի մի ժամանակաշրջան։ Դավիթ-Բեկի մահից հետո կամ թերևս ավելի վաղ, վերջինիս հիվանդության ժամանակ, իր ձեռքը վերցնելով հայկական զինված ուժերի ընդհանուր հրամանատարությունը, Մխիթար բեկը շարունակում է հավատարիմ մնալ ազատագրական շարժման մեծ ղեկավարի մարտական ավանդներին։

Երբ Տեր-Ավետիսի դավաճանության հետևանքով թուրքերը խաբեությամբ կարողացան մուտք գործել Հալիձորի բերդը և դրժելով տված խոստումը կոտորեցին ու գերեցին բերդի բնակիչներին, Մխիթար բեկին հաջողվեց գիշերով դուրս գալ բերդից և նոր զորքեր հավաքելով հաղթական մարտեր մղել թշնամու կանոնավոր զորքերի ու նրանց միացած տեղական ֆեոդալների դեմ։

Ամբողջ Ղափանում թնդում էր Մխիթար բեկի հանկարծահաս հարձակումների ու տարած հաղթանակների համբավը։ Ղափանի ապստամբ գյուղացիությունը շարունակում էր ազատագրական պայքարը թուրքական զավթիչների դեմ՝ խմբվելով Մխիթար բեկի դրոշի ներքո։

Կռիվները մեծ մասամբ պարտիզանական բնույթ էին կրում և ահարեկում էին նվաճողներին, մեծ կորուստներ պատճառելով նրանց։ «Ընտիր պատմության» չափազանց սեղմ տողերում խոսվում է հայ զինվորության տարած նորանոր հաղթանակների, բազում ամրությունների, գյուղերի ու ավանների ազատագրման, Օրդուբադի պաշարման ու գրավման, օսմանյան զինվորների մեծ կոտորածի և մեծաքանակ ռազմական ավարի ձեռք բերման մասին[94]։

Այսուհանդերձ դրությունը շարունակում է մնալ օրհասական։ Հալիձորը գրավված էր ու ավերված։ Թշնամին նորանոր ռազմական համալրումներ էր ստանում, իսկ ամենից սարսափելին այն էր, որ երկրի ներսում խորանում էին տարաձայնությունները Մխիթար բեկի և նրա մերձավոր զինակիցների միջև։ Չկար այլևս միասնական հրամանատարական կենտրոն, թեև ժողովրդական զինված ջոկատները, ապավինած լեռնային անմատչելի վայրերին, շարունակում էին դիմադրություն ցույց տալ։

Այս անկազմակերպ իրադրության մեջ, երբ յուրաքանչյուր շրջան ու ավան մտահոգված էր միայն իր համայնքի անվտանգությունը ապահովելու գործով, Խնձորեսկի բերդում իր իսկ հայրենակիցների դավադրության զոհ է դառնում Ղափանի ազատագրական կռիվների անվանի զորավար ու փառաբանված հերոս Մխիթար բեկը։

Ժողովրդական զրույցներն ու բանավոր ավանդությունները պատմում են այն մասին, որ Ղափանի հայության ազատագրական պայքարը շարունակվել է նաև հետագայում։ Նվաճողների դեմ կռիվները ղեկավարել են Մելիք-Փարսադանի թոռ Այվազ բեկն ու Ստեփան իշխանի որդի Մելիք-Ղուկասը։ Միավորելով Քաջարանց, Փուխրուտ, Փիր-Մազրա, Քրդիկանց ու Հանդ գյուղերի ապստամբ գյուղացիներին, Կալեր գյուղի մոտ տեղի ունեցած մեծ ճակատամարտում նրանք պարտության են մատնել թուրքական զորքերին և սրանց միացած տեղական ֆեոդալներին[95]։

Այս և բազմաթիվ այլ զրույցների ու ավանդությունների պահպանումը ժողովրդի մոտ, վկայում են, որ Ղափանի ժողովրդական զանգվածների դիմադրությունը օսմանյան ռազմակալման դեմ շարունակվել է մինչև 1730-ական թվականները, երբ Թավրիզն ու Արդաբիլը վերագրավելուց հետո, պարսկական զորաբանակները Նադիրի հրամանատարությամբ անցան Շիրվան և պաշարելով Գանձակը, կապ հաստատեցին Արցախի ու Սյունյաց հայ մելիքների և հավանաբար նաև Ղափանում դիմադրություն շարունակող հայկական զինված ուժերի հետ։

## 7. ԹՈՒՐՔԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՎԱՐՉԱ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԱՐԵՎԵԼՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Թուրքական ռազմակալումը Արևելյան Հայաստանում և Ադրբեջանում հանդարտ ընթացք չունեցավ և չավարտվեց լիակատար տիրապետությամբ։

94 «Ընտիր պատմություն», էջ 71։

95 «Ազգագրական հանդես», 1904, XII, էջ 197—198։

Թեև գրավված էին բոլոր կարևոր բերդերն ու ամրությունները և հսկողություն էր սահմանված գլխավոր ճանապարհների վրա, սակայն մինչև 1735 թ. չէին դադարում ապստամբական ելույթները։ Ինչպես Սյունիքում, Արցախում և այլ վայրերում, այնպես նաև Ատրպատականում թուրքական զորքերը շարունակ պատերազմական վիճակում էին, կռվելով մի կողմից լեռնաշխարհի ըմբոստացած հայության և մյուս կողմից ադրբեջանական ռազմիկ ցեղերի միավորումների դեմ։

Սակայն, ինչպես նախորդ արշավանքների ժամանակ, ամենուրեք թուրքական նվաճումներին հաջորդում էր բնակչության ընդհանուր աշխարհագիրը և ապա հարկատու ստացվածքների և հաստատությունների հաշվառումն ու դրանց գրանցումը հարկային մատյաններում։ Պահպանելով նվաճված երկրների ներքին վարչական բաժանումն ու գյուղական համայնքների հնուց անտի հաստատված իրավունքները, յուրաքանչյուր նահանգում (վիլայեթ, էյալեթ կամ լիվա) գործի էին գրվում նույն նահանգի համար «Արքունի ընդարձակ դավթարում» հաստատված հարկային օրենքները։

1727 թ. Գանձակի էյալեթի համար կազմված կանուննամեն վկայում է, որ Իրանից նվաճված նահանգներում թուրքական իշխանությունները առաջին հերթին մտահոգված էին կարգավորելու հարկահանության գործը։ Նոր նվաճված շրջաններից հնարավորին չափ շատ եկամուտ ստանալու համար, անմիջապես գործի էին դրվում Օսմանյան կայսրության բոլոր ծայրերում գործող ուրույն հարկային օրենքները։ Ինչպես թուրքերի կողմից նվաճված բոլոր երկրներում, այնպես էլ Անդրկովկասում, յուրաքանչյուր նահանգի հարկերը գրանցելիս, հարկային-ֆինանսական պաշտոնյաները միշտ հաշվի էին առնում նվաճումից առաջ երկրում տիրող հարկերի և տուրքերի ավանդական չափերը։

Գանձակի էյալեթի կանուննամեում, որը վերաբերում էր նաև Լոռի-Փամբակի և Աղստևի շրջաններին ու Արցախական աշխարհին, նշված է հատկապես, որ «Աջեմի (պարսիկների) ժամանակ Արրանի հողում չորսից մեկ տասանորդ և տասնհինգից մեկ բահրա վերցնելը օրենք է եղել։ Բահրա կոչվածը, աջեմի տերմինով, ամեն գյուղից հոսող ջրի առվի տիրոջը վճարվող հարկն է եղել, հողի տերը չորսից մեկը տասանորդ տալուց հետո առվի տիրոջն էլ տասնհինգից մեկը բահրա է տվել։ Այժմ էլ այդ ձևով են վերցնում։ Արրանի համեմատությամբ լեռնային հայաբնակ գյուղերի հողերը քիչ, անբերրի և բնակավայրերը անարժեք լինելով, աջեմի ժամանակ տասից մեկը տասանորդ և տասնհինգից մեկը բահրա են տվել։ Այս էլ ըստ հին ձևի է վերցվում»[96]։

Կանուննամեներում նշված է նաև, թե որ շրջանում ինչ հացահատիկային և տեխնիկական կուլտուրաներ են մշակվում և որից ինչ չափով է գանձվում հօգուտ պետության։ Նշված են միաժամանակ տեղական չափ ու կշռի միավորները և տրված են դրանց օսմանյան համարժեքները։

Պահպանելով տեղական սովորութային օրենքները, այսինքն՝ կալվածատեր-ֆեոդալների և պետության նկատմամբ հողագործ գյուղացիության պարտ-

---

[96] «Օսմանյան օրենքները Արևմտյան Հայաստանում», էջ 120, հմմտ. O. L. Barkan, XV ve XVI asırlarda. Osmanli Imperatorlugunda ziral ekonominin hukuki ve mali esasları. I c. Kanunlar, Istanbul, 1945, էջ 196—197։

րից ի վեր սահմանված պարտավորությունները, թուրքական իշխանությունները Արևելյան Հայաստանում և Ադրբեջանում բնակչության աշխատավորական խավերից գանձում էին նաև օսմանյան բոլոր հպատակներին պարտադրվող այլ հարկեր ու տուրքեր[97]։

Արևելյան Հայաստանում և Անդրկովկասի թուրքական ռազմակալման ենթարկված այլ նահանգներում 1728 թ. անց է կացվում նոր աշխարհագիր և կազմվում են «Նոր ընդարձակ մատյաններ»։ Այս հարկացուցակներում բարձրացված են 1724—25 թթ. հարկացուցակներում եղած հարկերի սակերը և ավելացված են այլ հարկեր։ Այսպես, օրինակ, Վաղարշապատ գյուղի նոր հարկացուցակից պարզվում է, որ 1725 թ. ցուցակով գյուղից գանձվող հարկերի ընդհանուր դրամական համարժեքն ավելացված է 2,3 անգամ[98]։

Նվաճումից անմիջապես հետո անցկացված աշխարհագրի ժամանակ կիրառվել են հարկերի համեմատաբար ցածր սակեր, որոնք չէին կարող հագուրդ տալ զավթիչների թալանչիական պահանջներին։ Երեք տարի հետո արդեն թուրքական հարկահանությունը երևան է գալիս իր ամբողջ ծանրությամբ, և բոլոր այն վայրերում, որոնք լիովին նվաճված ու հնազանդեցված էին օսմանյան բանակի ձեռքով, հարկապահանջությունը խստագույնս իրագործվում է «Նոր մատյանի» բազմապատկված չափերով։ Բնորոշ է, որ այս դաժան հարկային քաղաքականությունը կիրառվում էր այնպիսի մի ժամանակ, երբ դեռ գրավված նահանգներում շարունակվում էին ըմբոստ ելույթները օտար նվաճողների դեմ, և երբ լեռնային ընդարձակ շրջաններ դեռևս լիովին չէին հնազանդեցված թուրքական իշխանություններին։

Գանձակի շրջանի կանուննամեում մանրամասն նշված են նաև շուկաներում և ճանապարհապաշտպան կետերում վաճառականական ապրանքներից գանձվող մաքսի սակերը։ Ավելի ճիշտ, այնտեղ ամփոփված են պարսից տիրապետության շրջանում հաստատված տուրքերի սակերը, որոնք պետք է ուղեցույց հանդիսանային թուրքական պաշտոնյաներին։ Այդ նշանակում է, որ նվաճմանը հաջորդող հենց առաջին տարիներին թուրքական հարկային-ֆինանսական պաշտոնեությունը անմիջապես հսկողություն է սահմանել արհեստավորության ու շուկայում կատարվող առևտրի վրա և, ըստ նախապես հաստատված սակերի, կշռեքի վարձ, մաքս և այլ տուրքեր է գանձել արտահանվող ու ներմուծվող ապրանքներից[99]։

Թուրքական իշխանությունները հատուկ ուշադրություն են նվիրել մետաքսի առևտրին։ Իր ժամանակի այդ ամենաթանկարժեք և եվրոպական շուկաների ամենագնայուն ապրանքը միշտ էլ հետաքրքրել է օսմանյան սուլթաններին, որոնք Իրանի հետ կնքվող պայմանագրերում Սեֆյան շահերից խոստումներ էին կորզում տարեկան որոշ քանակությամբ մետաքս ստանալու համար։

Ժամանակավորապես ռազմակալման ենթարկված Արևելյան Հայաստանում ու Ադրբեջանում թուրքերը 10 տարի շարունակ գործադրում էին հարկահանության օսմանյան եղանակները՝ հարստահարման և ունեզրկման ենթարկելով

97 Տե՛ս նույն տեղում, գլուխ VI։

98 Տե՛ս Հ. Փափազյան, Վաղարշապատ գյուղի 1725 և 1728 թթ. թուրքական հարկացուցակները, «Բանբեր մատենադարանի», № 5, էջ 451—452։

99 Տե՛ս «Օսմանյան օրենքները Արևմտյան Հայաստանում», էջ 122, հմմտ. Օ. Լ. Բարքանի նշված աշխատության համապատասխան էջերը։

գյուղի և քաղաքի աշխատավոր բնակչությանը։ Հարկահանությունն ու նյութական բարիքների կողոպուտը իրագործվում էր զինվորական մարմինների ձեռքով և ուղեկցվում բիրտ ուժի գործադրությամբ։

Պետական-վարչական պաշտոնները վերափոխված էին և պարսկական պաշտոնյաներին փոխարինելու էին եկել թուրք պաշտոնյաները, երկրում հաստատելով օսմանյան վարչասիստեմը։

Այս ընթացքում, սակայն, հողային հարաբերությունների մեջ էական փոփոխություններ տեղի չունեցան։ Պետական կամ «դիվանի» հողերը գտնըվում էին «միրիի» պաշտոնյաների անմիջական տնօրինության տակ։ Մուլքային սեփականությունները պահպանվում էին նույնությամբ, եթե դրանց տերերը չէին հակադրվել նոր իշխանությանը։ Դրանից զատ, թուրքական իշխանությունները դաժան դատաստան էին տեսնում ըմբոստ գյուղացիների և գյուղական համայնքների հետ, որոնք փորձում էին օգտվել խառը դրությունից և հրաժարվում էին կալվածատիրոջը ռենտա վճարել[100]։

Սուլթանական հրովարտակներով և տեղական փաշաների հրամանագրերով հաստատվում և պաշտպանվում էին էջմիածնի կալվածատիրական իրավունքները։ Յուրաքանչյուր շրջանի հարկացուցակում առանձին թվարկված էին վակֆային կալվածները, նշված էր նաև, թե գյուղացիները բերքի որ տոկոսը պետք է տան վանքին[101]։

Հաստատելով հայ եկեղեցական իշխանությունների իրավունքները և հարկային արտոնություններ շնորհելով բարձրաստիճան հոգևորականությանը, ինչպես նաև առանձին դեպքերում փորձելով սիրաշահել հայ առևտրական դասի ներկայացուցիչներին, թուրքական իշխանությունները ձգտում էին նրանց միջոցով հնազանդ պահել նվաճված նահանգների աշխատավոր բնակչությանը, որն անհուն ատելությամբ և ցասումով էր լցված թուրքական գիշատիչ ռազմակալության հանդեպ։

## 8. ԻՐԱՆԻ ՀԶՈՐԱՑՈՒՄԸ ՆԱԴԻՐԿՈՒԼԻ ԽԱՆԻ ԺԱՄԱՆԱԿ ԵՎ ՀԱՅ ՄԵԼԻՔՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԴԻՐՔԵՐԻ ԱՄՐԱՊՆԴՈՒՄԸ

Աֆղանների տիրապետությունը Իրանում կայուն քաղաքական և տնտեսական հիմքեր չուներ։ Միր-Մահմուդի և նրա հորեղբորորդու՝ Աշրաֆի ժամանակ (1722—1729) սեֆյաններից հետո անիշխանության մատնված երկրամասերը ենթակա էին ամենասանձարձակ ահաբեկման և հարստահարության։ Աֆղանական զինված ջոկատները շրջում էին նահանգից-նահանգ և հարկահանության անվան տակ կողոպտում բնակչությանն ու սարսափելի բռնություններ գործում։

Ինչպես թուրքերի կողմից նվաճված Արևելյան Հայաստանում և Ադրբեջանում չէին դադարում զանգվածային ապստամբությունները օտար ռազմակալության հանդեպ, այնպես էլ Իրանի կենտրոնական և արևելյան շրջաննե-

---

100 Մատենադարան, Կաթ. դիվան, թղթ. 1գ, վավ. 301, 302, հմմտ. «Ջամբռ», էջ 250։

101 Հ. Փափազյան, Վաղարշապատ գյուղի 1725 և 1728 թթ. թուրքական հարկացուցակները, «Բանբեր մատենադարանի», № 5, էջ 453, տե՛ս նաև Մատենադարան, Կաթ. դիվան, թղթ. 1գ, վավ. 316, 320, 332, հմմտ. «Ջամբռ», էջ 249—250։

րում՝ Քիրմանում, Խորասանում, Մազանդարանում և այլուր, գնալով ավելի ու ավելի էր բորբոքվում ազատագրական պայքարն ընդդեմ աֆղանական բռնակալության։

Աֆղան նվաճողների դրությունը ավելի ծանրացավ հատկապես Աշրաֆի օրոք, որը կարճ ժամանակամիջոցում պարտավորված էր ճակատել մի կողմից շահ Թահմազ II-ի և Աստարաբադի Ֆաթհ-Ալի խան Կաջարի և մյուս կողմից Գիլանում հաստատված ռուսական զորքերի ու Իրան ներխուժած թուրքական ուժերի դեմ։ Ռուսների դեմ մղած կռիվներում Աշրաֆը ծանր պարտություն կրեց, իսկ մի քանի անհաջող ընդհարումներից հետո, 1727 թ. հոկտեմբեր ամսին կնքված պայմանագրով նա ստիպված եղավ ճանաչել թուրքերի տիրապետությունը Արևելյան Հայաստանի, Ադրբեջանի, Քուրդիստանի, Խուզիստանի և Կենտրոնական Իրանի մի քանի նահանգների վրա։ Այս բանը վճռական նշանակություն ունեցավ և նոր թափ հաղորդեց արևելյան նահանգներում ծավալված ազատագրական շարժմանը։

Հանդես գալով Խորասանում և գլխավորելով այնտեղ հաստատված Կըզըլբաշ ցեղերի ու քրդական մի քանի ցեղային միավորումների ապստամբական ելույթները, ինչպես նաև կարճ ժամանակում մի քանի վճռական հաղթանակներ տանելուց հետո, մեծ համբավ վաստակեց Աֆշար ցեղի Կըրկլու ցեղախմբի նախկին շարքային ռազմիկ Նադիրկուլի խանը։ Շահ Թահմազ II-ը, որը երկրի արևմտյան նահանգներում պայքար էր ծավալել թուրքական ուժերի դեմ, սիրով ընդունեց Նադիրկուլու ծառայությունը՝ վերանվանելով նրան Թահմազկուլի խան։

1729 թ. սեպտեմբերի վերջերին Մեհմանդուստ գետի հովտում և նույն թվականի նոյեմբերի 13-ին մայրաքաղաք Սպահանից 60 կիլոմետր հեռու գտնվող Մուրչեխորթ գյուղի մոտ գլխովին ջախջախելով Միր-Մահմուդի աֆղանական զորքերին, Թահմազկուլի խանը հաղթական մուտք գործեց Սպահան, որից անմիջապես հետո շահ Թահմազ II-ը վերադարձավ մայրաքաղաք ու բազմեց հոր գահի վրա։

Մի պահ թվում էր, թե կարճատև ընդհատումից հետո նորից վերահաստատվեց Սեֆյան հարստության իշխանությունը, մնում էր միայն շարունակել և հաղթական ավարտին հասցնել թուրք-աֆղանական ռազմակալման դեմ երկրում ծավալված համաժողովրդական պայքարը։ Սակայն, երբ Նադիրկուլին հաջողությամբ գլխավորում էր աֆղանների և ուզբեկների դեմ մղվող կռիվները՝ մեկը մյուսի ետևից ազատագրելով երկրի արևելյան նահանգների քաղաքներն ու գյուղերը, շահ Թահմազը, հակառակ Նադիրկուլու բազմիցս նախազգուշացումներին՝ խուսափել երկու ճակատով մարտեր մղելուց, ռազմական անհաջողություններ կրեց արևմուտքում և ստիպված եղավ ստորագրել թուրքերի կողմից առաջարկվող հաշտության պայմանագիրը, ըստ որի ամբողջ Անդրկովկասը անցնում էր թուրքերի տիրապետության տակ։

Օգտագործելով շահ Թահմազի անհաջողությունները և կնքված ստորացուցիչ պայմանագրի հետևանքով երկրում ծայր առած դժգոհությունները, 1732 թ. Նադիրկուլին կարողացավ գահընկեց անել շահ Թահմազին և իր խնամակալության ներքո շահ հայտարարեց նրա նորածին որդուն՝ Աբբաս III-ին։ Այդ թվականից սկսած, փաստորեն, Նադիրը դարձավ Իրանի ինքնիշխան տերը։

Թագավորական գահի նկատմամբ ցուցաբերած խորամանկ «անտարբե-

րությունը» մեծ չափով բարձրացնում էր Նադիրի հեղինակությունը և լայն ժողովրդականություն շնորհում նրան որպես ազատագրական շարժման անձնվեր առաջնորդի։ Նրա մեջ զուգորդված էին խորամանկ քաղաքագետն ու մարտերում կոփված ռազմագետ զորավարը։ Լավ հասկանալով և ճիշտ գնահատելով ազատագրական շարժման բուռն վերելքն ու ընթացիկ ժամանակամիջոցի նշանակությունը, նա ամենայն վճռականությամբ հավաքում և խմբավորում էր բոլոր զինական ուժերը հակահարված տալու Իրաք և Անդրկովկաս ներխուժած թուրքական զորքերին։

Նադիրի ձեռք բերած ռազմական հաջողությունները խուճապ և դժգոհություններ առաջացրին Թուրքիայում։ Ռազմա-ֆեոդալական վերնախավը և պալատական ավագանին խիստ բացասաբար էր տրամադրված սուլթան Ահմադի և մեծ վեզիր Դամադ Իբրահիմի հանդեպ։ 1730 թ. վերջերին թուրքական արքունիքում ծավալված գահակալական պայքարը ի վերջո ավարտվեց սուլթան Ահմադի գահընկեցությամբ։ Նոր սուլթան Մահմուդ I-ը ավելի քան անհաջող և վճռական դիրք գրավեց Նադիրի նկատմամբ։

1732 թ. ռուսների հետ կնքած պայմանագրից հետո, որով ռուսական զորքերն անմիջապես պետք է հեռանային Իրանի մերձկասպյան նահանգներից, Նադիրն արդեն հնարավորություն էր ստանում ամբողջ ուժերը կենտրոնացնելու Իրաքում և Անդրկովկասում հաստատված թուրքական զորքերի դեմ։

Թեև Նադիրը որոշ հաջողությունների հասավ Իրաքի ուղղությամբ մղվող կռիվներում, սակայն Ֆարսում ծագած ապստամբության պատճառով նա չկարողացավ մարտերը շարունակել մինչև հաղթական ավարտ և գրավել Բաղդադը։ Սուլթան Մահմուդը պաշտոնապես չճանաչեց Բաղդադի Ահմադ փաշայի հետ Նադիրի կնքած հաշտության պայմանագիրը, ըստ որի փաշան իր կառավարության անունից խոստանում էր զորքերը ետ քաշել մինչև 1639 թ. պայմանագրով հաստատված թուրք-իրանական սահմանը։ Մարտերում զոհված Թոփալ-Օսման փաշայի փոխարեն 1734 թ. արևելյան զորաբանակների ընդհանուր հրամանատար նշանակվեց Քյոփրուլուզադե Աբդուլլա փաշան, որը օժանդակ զորախմբերի գլուխն անցած Կոստանդնուպոլսից շարժվեց դեպի Կարս։ Մինչ այդ Նադիրն արդեն Թավրիզի ու Արդաբիլի վրայով մտել էր Շիրվան, պարտության մատնել լեզգի Սուրխային, գրավել ու ավերել Շամախին ու Կաբալայի և պաշարել Գանձակի բերդը։

Արցախի սղնախներում, Սյունիքում և Արարատյան երկրում զինվորված հայությունը, այդ թվում նաև հայ մելիքներն ու հոգևորականությունը դեռևս 1725 թ., առավել ևս 1732 թ. Ռեշտում ստորագրված ռուս-իրանական պայմանագրից հետո, թուրքական ռազմակալման դեմ մղվող իրենց հերոսական պայքարով ինքնըստինքյան հանդես էին գալիս որպես Նադիրի դաշնակիցներ։ Նադիրի մուտքը Անդրկովկաս և ռուսների հեռանալը Մերձկասպյան նահանգներից, ավելի իրական հիմքեր ստեղծեցին այդ ռազմա-քաղաքական գործակցության համար։

Հայ քաղաքական մտքի պատմության մեջ XVIII դարի 30-ական թվականները այն շրջաններից է, երբ պատմական ամենաբուռն վայրիվերումների պահին քաղաքական-հասարակական կյանքի ղեկի մոտ գտնվող անձինք, ստեղծված բարդ իրադրության պայմաններում, կարողանում էին արագ և ճիշտ կողմնորոշվել և վերցնել դեպքերի զարգացման ընթացքից բխող քաղաքական դիմորոշման նոր ուղղություն։

Պատմիչ Աբրահամ Երևանցու վկայությամբ դեռևս Թոփալ-Օսման փաշայի դեմ, Համադանի և Պարսկական Իրաքի սահմաններում մղվող կռիվներում, պարսկական բանակում մարտնչում էին 6 հայազգի զորախմբեր. «էին ի զօրս պարսից,—գրում է նա,—վեց քրիստոնեայք յազգէս մերմէ, որք էին հազարապետք Ղուլի (Նադիր) խանին և ունէին զօրս հարիւրաւորս, անուն միոյն՝ Դաւիթ, զոր Գորըցենցի բէկ ասեն, երկրորդն էր Ատովմին որդի Աբիճան, երրորդն էր չարնեցի Այդին բէկի որդի Աղաճանն, չորրորդն՝ չափնեցի Մուսիսին որդի Բալիգն. հինգերորդն՝ Ճագակերեանց Թոփուզի որդի Հախնազարն»[102]։

Նադիրի բանակում գործող հայկական զորախմբերը համալրվեցին և ավելի բազմացան հատկապես 1735 թ. Գանձակի պաշարման ամիսներին, իսկ երբ նա շարժվեց դեպի Կարս՝ ճակատելու Աբդուլլա փաշայի դեմ, Արցախի և Սյունյաց հայ զինվորությունը մելիքների գլխավորությամբ ուղեկցում էր նրան ամենուրեք։ Գեղարքունիքից անցնելիս Նադիրը մեծ պատիվներ տվեց Մելիքջան Մելիք-Շահնազարյանին, որն իր զորքերով եկել էր ծառայելու նրան։ Ավելի ուշ, երբ Մելիքջանը խարդավանքի զոհ դարձավ, Նադիրը Գեղարքունյաց մելիքությունը շնորհեց նրա որդուն՝ Մելիք-Մանուչարին և, ինչպես նշված է Հովհաննես Մելիք-Սելիմյանցի կազմած մի ժամանակագրության մեջ, «ետ նմա իշխանութիւն, ունել ընդ ինքեան զդահիճ, զբանտ և զշղթայս և անուանեաց զնա միրիմիրան կամ պէյլէրպէյի ի վերայ Արարատեան երկրի և մասին ինչ աշխարհին Սիւնեաց»[103]։ Նույն մելիքական տոհմից Նադիրի բանակում ծառայում էին նաև այլ մելիքներ։ Մեզ է հասել Նադիրի մի հրովարտակը, որտեղ հաստատված է Մելիք-Միանսար Մելիք-Շահնազարյանցի հավատարմությունն ու մատուցած ծառայությունները Նադիրին[104]։

XVIII դարի 30-ական թվականների հայ իրականության խոշորագույն քաղաքական դեմքը Դիզակի Մելիք-Եգանն էր։ Նադիրի պալատական պատմիչ Մուհամմադ-Քյազիմը բազմիցս հիշատակում է նրան, որպես նուրբ քաղաքագետին հատուկ արտակարգ ընդունակություններով օժտված իմաստուն մի գործչի, որը Նադիրի կողմից մեծ սիրո և վստահության էր արժանացել։ Վերլուծելով 1723 թ. Անդրկովկասի վիճակը, Մուհամմադ-Քյազիմը հայ զինվորության առաջնորդների մեջ առաջին տեղը հատկացնում է Մելիք-Եգանին և ապա հիշատակում նաև Մելիք-Թամրազի և Մելիք-Հարությունի անունները։ Ըստ նրա, այդ հայ մելիքները, որոնք գործում էին Սյունիք—Արցախում և Արարատյան երկրում, թուրքական զորքերի ներխուժումից առաջ, իրենց իշխանությունը տարածել էին մինչև Կուր և Արաքս ու սպառնում էին Գանձակի ու Երևանի բերդերին[105]։

Հավատարմություն հայտնելով Նադիրին, հայ մելիքները ոչ միայն զորքերով էին մասնակցում թուրքերի դեմ մղվող կռիվներին, այլև միաժամանակ ապահովում էին ռազմական հարկերի ու տուրքերի գանձումը իրենց իշխա-

---

102 Աբրահամ Երևանցի, Պատմութիւն պատերազմացն, Երևան, 1938, էջ 75—76։

103 Մատենադարան, Մելիք-Շահնազարյանների ֆոնդ, թղթ. 241, վավ. 124։

104 Հովհ. Մելիք-Սելիմյանց Զմյուռնիացի, Համառոտութիւն պատմութեան Հայկազանց, Մատենադարան, ձեռ. 2888, էջ 341ա, հմմտ. Լեո, Հայոց պատմություն, հատ. 3, Երևան, 1946, էջ 715։

105 Տե՛ս Մուհամմադ-Քյազիմ, Նամե-յե Ալամարա-յե Նադերի (պարսկ. բնագիր), հատ. 1, Մոսկվա, 1960, էջ 99։

նության տակ գտնվող շրջաններում։ Հայ մելիքների միջոցով էր հայթայթվում նաև բանակի համար անհրաժեշտ պարենն ու հանդերձանքը, քաշող ուժը, դումակում և պաշարողական մարտերում օգտագործվող բեռնակիր և ամրություններ կառուցող բանվորությունը։

Այս արտակարգ ռազմական հարկերն ու պարհակները, որ ընդհանուր տերմինով կոչվում էին «սուրսաթ», գանձվում էին ամենայն խստությամբ։ 1735 թ. պահպանվել են Արցախի հայ մելիքների Նադիրին տված մի քանի խնդրագրեր և զեկուցագրեր, որոնց մեջ կան Խաչենից, Վարանդայից, Ջրաբերդից և մյուս մահալներից սուրսաթի գանձման նկարագրություններ։ Մի զեկուցագրում Խաչենի Մելիք-Դավիթը խնդրում է Նադիրին, որպեսզի նրա զինվորները ապօրինի պահանջմունքներով չնեղեն իր հպատակներին։ Նրանց վիճակը առանց այն էլ ծանր է, քանի որ «դեռ առաջին սուրսաթը լրիվ չհավաքած, երկրորդ սուրսաթի գանձման հրահանգ է ստացվել»[106]։

1735 թ. մայիսին Նադիրը Գանձակը թողեց պաշարված և Լոռի-Փամբակի վրայով գնաց դեպի Կարս։ Աբդուլլա-փաշան, որ բանակ էր դրել Ղաղանչայում, փակվեց Կարսի բերդում և խուսափեց բաց դաշտում ճակատամարտ տալուց։ Կարսի շրջանը ասպատակության և ավարի ենթարկելուց հետո, Նադիրն իր զորքերով նորից անցավ Ախուրյանը և բարձրանալով դեպի Կարբի, բանակ դրեց Եղվարդի շրջակայքում։

Այս շրջանում է ահա, որ նորից առիթ ունենք արձանագրելու հայ վերնախավի որոշակիորեն նպատակադրված քաղաքական գործունեության դրըվագները։ Հայ և պարսկալեզու աղբյուրների վկայությամբ, այդ օրերին Նադիրի մոտ էին գտնվում Արևելյան Հայաստանի համարյա բոլոր հայ մեծամեծները. Դիզակի Մելիք-Եգանը, Գեղարքունյաց Մելիքջան Մելիք-Շահնազարյանցը, Երևանի Մելիք-Մկրտումն ու Մելիք-Հակոբջանը և շատ ուրիշներ։

Ժամանակն, անշուշտ, նպաստավոր էր, երբ Իրանի նոր առաջնորդը անձամբ գտնվում էր հայկական հողում, հոծ հայ բնակչություն ունեցող Արարատյան երկրում, որտեղ նա պատրաստվում էր վճռական ճակատամարտ տալ թուրքական ուժերի դեմ։ Այս բանը լավ էր գիտակցում նաև ինքը՝ Նադիրը, և օսմանցիների դեմ մղած մեծ գոտեմարտում նա հայերի վրա նայում էր որպես հուսալի դաշնակցի։ Պատեհ էր առիթը հայ աշխարհիկ և հոգևոր ֆեոդալականության համար վերահաստատելու և ավելի քան ամրապնդելու իրենց իշխանական դիրքն ու իրավունքները և հայ եկեղեցական իշխանությունը օժտելու ավելի լայն իրավունքներով ու արտոնություններով։

«Յուշ արարին ինձ իշխանքն մեր՝ որք կային ի բանակին և Մելիքջան քալանթարն, թէ հարկ է գալ քեզ ի տեսութիւն խանին ընծայիւք և պատրաստութեամբ»,—գրում է կաթողիկոս Աբրահամ Կրետացին[107]։ Առաջին իսկ հանդիպմանը ցուցաբերած արտակարգ բարյացակամ վերաբերմունքը Աբրահամ կաթողիկոսի նկատմամբ, թելադրված էր Նադիրի հայ զինակիցների կողմից։ Մուհամմադ-Քյազիմ պատմիչը բավական մանրամասն նկարագրում է, թե ինչպես Մելիք-Եգանը բացատրում էր Նադիրին կաթողիկոսի և հայ եկեղեցու նկատմամբ նրա կողմից ցուցաբերվող հոգատար վերաբերմունքի քաղաքական նշանակությունը։

---

[106] Մատենադարան, Կաթողիկոսական դիվան, թղթ. 2բ, վավ. 181։
[107] Աբրահամ Կրետացի, էջ 11—12։

*«Անհամար նվերներ մատուցելով Նադիրին,—գրում է Մուհամմադ-Քյազիմը,—Մելիք-Եգանը խնդրում էր վեհապետին, որպեսզի նա բարեհաճի այցելել այդ սուրբ վայրը (էջմիածին)..., դրանով նա կուրախացնի եվրոպական երկրների (Ֆրանգստանի) թագավորներին և կպատվի կարողություն և ուժ ունեցող բոլոր մելիքներին, և բոլոր հայ համայնքների համար, որոնք ապրում են այս և ուրիշ երկրներում, արևից էլ պարզ կդառնա նրանց նկատմամբ եղած սերն ու գթությունը, և քանի պտտվում է երկիրը, աշխարհի բոլոր մասերում կհռչակվի ու կփառաբանվի Նրա հոգատարությունը իր ծառաների և այրող ատելությունը թշնամիների նկատմամբ»*[108]:

*Այցելելով էջմիածին, Նադիրը նոր հրովարտակներով հաստատում է կաթողիկոսի, հոգևորականության և հայ համայնքի հնուց սահմանված իրավունքները*[109]: *Ըստ Մուհամմադ-Քյազիմի, նա վանքի վերանորոգումը հանձնարարում է հմուտ վարպետների՝ հատկացնելով հազար թուման, տաճարը զարդարում հինգ ման (15* կգ) *կշռող ոսկե ջահով և կարգադրում Քիրմանի նահանգային սարքարարությանը ամենաընտիր գորգերը բարձել պետական գրաստներին և ուղարկել էջմիածին*[110]:

*Սխալ կլիներ այս բոլորը դիտել սոսկ որպես «տաղանդավոր բռնակալների հատուկ անհասկանալի քմահաճույք»*[111]: *Ազատագրական կռիվների փորձված զորավարը լավ էր հասկանում ռազմական գործողությունների ընթացքում տեղական բնակչության ցուցաբերած օգնության նշանակությունը: Պատահական չէր, որ նա Աբդուլլա փաշայի դեմ ճակատ հարդարեց այնպիսի մի վայրում, որը գերազանցապես հայկական բնակչություն ուներ: Իսկ այցելությունը էջմիածին, անձամբ ներկա լինելը պատարագին, կաթողիկոսի մեծարումն ու կատարած նվիրատվությունները ավելի քան վստահություն էին ներշնչում ամբողջ տասը տարի թուրքական սարկության շղթաների մեջ տառապած հայ աշխատավորությանը և բարեկամաբար տրամադրում Իրանի նոր առաջնորդի նկատմամբ:*

*1735 թ. հուլիսի 8-ին Եղվարդի մոտ մղված մեծ ճակատամարտում, չնայած թվական բացարձակ գերակշռության, թուրքերը ջախջախիչ պարտություն կրեցին: Ճակատամարտի ընթացքն ու վախճանը մանրամասն նկարագրում են Աբրահամ Կրետացին, Մուհամմադ-Քյազիմը և Նադիրի արքունի քարտուղար Միրզա Մուհամմադ-Մեհդի խան Աստարաբադին*[112]: *Պարսկական հրետանու կրակային հզորությունը, հեծելազորի շեշտակի ճակատային հարվածն ու թուրքական հրետանու հանկարծակի գրավումը թշնամու բանակի խորքը մխրճված ջեզայիրչիների կողմից, լիովին կազմալուծեց թուրքական զորքերի մարտական կարգը, որին և հաջորդեց անկանոն ու խուճապահար նահանջը:*

*Օսմանյան փառաբանված ենիչերական զորամասերը և հատկապես Թեյմուր փաշայի հրամանատարության տակ գտնվող Վանի քուրդ աշիրաթների զորագնդերը, խույս տալով արյան դաշտից, մի մասը Աշտարակի և Կարբիի,*

---

108 Մուհամմադ-Քյազիմ, *Նամե-յե Ալամարա-յե Նադերի (պարսկ. բնագիր), հատ. 1, էջ 633:*

109 *Տե՛ս* Աբրահամ Կրետացի, *էջ 13:*

110 *Տե՛ս* Մուհամմադ-Քյազիմ, *էջ 632—634:*

111 Լեո, *Հայոց պատմություն, հատ. 3, Երևան, 1964, էջ 715:*

112 *Տե՛ս* Աբրահամ Կրետացի, *էջ 17—19,* Մուհամմադ-Քյազիմ, *էջ 600—607,* Միրզա Մուհամմադ-Մեհդի խան Աստարաբադի, *Թարիխ-ե Նադերի, Թավրիզ, 1869, էջ 85—89:*

իսկ մյուս մասը էջմիածնի վրայով փորձեցին նահանջել և շտապ անցնել Ախուրյանի արևմտյան ափը։ Սակայն, ինչպես գրում է Միրզա Մուհամմադ-Մեհդի խանը, նահանջի ճամփան փակել էին տեղի հայ գյուղացիների աշխարհազորական ջոկատները։ Եվ այսպես, թուրքերին երկու կողմից սեղմելով Քասաղի կիրճում՝ մի կողմից պարսկական հարձակվող հետևակն ու հեծելազորը, մյուս կողմից՝ հայ զինվորված գյուղացիությունը, գլխովին ոչնչացրին նահանջող թշնամուն։ Այստեղ Դամադ Մուստաֆա փաշայի և այլ բարձրաստիճան փաշաների հետ սպանվեց նաև սարասկար Աբդուլլա փաշան, որի գլխատված դիակը Նադիրն ուղարկեց Կարսի փաշային ի տես[113]։

Այս հաղթական ճակատամարտից հետո Նադիրն իր զորքերով բարձրացավ դեպի Կոտայք և Գեղարքունյաց լեռները։ Երկու ամիս բանակին հանգիստ տալուց հետո, նորից անցավ Ախուրյանը և գնաց պաշարելու Կարսի բերդը։ Նա միաժամանակ ասպատակ սփռեց Կարսից մինչև Կարին և Բայազետ, կողոպուտի և գերեվարության ենթարկելով Արևմտյան Հայաստանի հարյուրավոր գյուղեր ու քաղաքներ։

Սակայն, շուտով, Աբդուլլա փաշայի տեղը նոր սարասկար նշանակված Ահմադ փաշան, որը Բաղդադից ետ էր կանչվել և արտակարգ լիազորություններով ուղարկվել էրզրում, հատուկ պատվիրակություն ուղարկեց Կարս և հաշտության բանակցություններ սկսեց Նադիրի հետ։ Թուրքերն արդեն համաձայնվում էին հանձնել Երևանի, Գանձակի ու Թիֆլիսի բերդերը և ետ քաշել զորքերը Անդրկովկասից[114]։

Հաշտությունից հետո Նադիրը գնաց Թիֆլիս, իր հետ տանելով Աբրահամ կաթողիկոսին։ Այստեղ նա նորից պատիվներ տվեց նրան և նրա խնդրանքով գերությունից ազատեց շատ հայերի։ Նոր հրովարտակներով բավարարելով կաթողիկոսի բոլոր պահանջները, Նադիրը կրկին ու կրկին շեշտում էր նրա և հայ ժողովրդի մատուցած ծառայությունները։ Միաժամանակ հանձնարարեց Երևանի Մուհամմադղուլի խանին՝ ուշադիր լինել նրա նկատմամբ։ «Այլ և ազգիս մերոյ զոհ և շնորհակալութիւն եղեր,—գրում է Աբրահամ Կրետացին,—թէ ինձ լաւ ծառայութիւն արարին մտերմաբար, և միամիտ սպասաւորեցին յամենայն զօրութենէ, և յամենայն յանձնէ, ամենայն դիմօք, և չի լինի թէ նեղացնէք զազգս Հայոց՝ կամ վնասէք, զի զայնպիսին պատուհասակոծ առնեմ»[115]։

Դեպի Դաղստան կատարած անհաջող արշավանքից հետո՝ 1735 թ. նոյեմբերին Նադիրը բանակ դրեց Մուղանի դաշտում և հրավեր ուղարկեց Իրանի բոլոր նահանգների մեծամեծներին, բեկլարբեկիներին, խաներին, մելիքներին և պետական բարձրաստիճան պաշտոնեությանը, ռազմիկ ցեղերի առաջնորդներին, ամիրներին և հոգևորականության ներկայացուցիչներին շտապ հավաքվելու այնտեղ՝ կարևոր խորհրդակցության։ Մուղանի «կուռուլթայում» (ավագանու ժողով) ներկայացված էր Իրանի աշխարհիկ և հոգևոր, մուսուլման և այլադավան ավատատիրության վերնախավը. կանչված էին նաև հայ մելիքներն ու կաթողիկոս Աբրահամ Կրետացին։

Ավագանու ժողովը միաձայն Իրանի գահի միակ արժանի թեկնածու ճա-

---

[113] Տե՛ս Միրզա Մուհամմադ-Մեհդի խան Աստարաբադի, Թարիխ-ե նադերի, էջ 55։

[114] Տե՛ս նույն տեղում, էջ 89—90։

[115] Աբրահամ Կրետացի, էջ 34։

նաչեց բազում ճակատամարտերում հաղթանակներով փառաբանված. երկիրն օտար տիրապետությունից ազատագրող Նադիրին· Փառնամուտին, պարսից տիրանդական ամանորին. Մուղանում տեղի ունեցավ Նադիրի թագադրության հանդեսը։ Դրանից հետո Իրանի նոր շահն ընդունեց թուրքական պատվիրակությունը և կնքեց հաշտության պայմանագիր, որով հռչակեց նաև սուննի և շիա մուսուլմանների միջև դարավոր թշնամության վերացումը։ Այնուհետև նա բարձր պաշտոններով և նոր ավատներով վարձատրեց մարտերում աչքի ընկած և հավատարմությամբ վստահության արժանացած ամիրներին ու ավատատերերին։ Բեկլարբեկիներ, վեզիրներ և այլ պաշտոնյաներ նշանակեց, որոնք հրովարտակներ ստանալով, մեկնեցին իրենց պաշտոնատեղիները։ Երևանի բեկլարբեկի նշանակվեց Հերաթի Փիր-Ահմադ խանը։ Այստեղ ևս Նադիրը հանձնարարում է նոր խանին՝ հոգատար լինել կաթողիկոսի և հայերի նկատմամբ։ Ավելին, խանի կողմից որևէ օրինազանցություն նկատելու դեպքում կաթողիկոսը Նադիրի լիազորությամբ կարող էր զգուշացնել նրան, և եթե վերջինս չլսեր, կաթողիկոսը կարող էր դիմել Թավրիզի Իբրահիմ խանին (Նադիրի եղբորը), իսկ եթե նա էլ ընթացք չտար բողոքին, հայոց խալիֆան իրավունք ուներ անձամբ դիմելու շահին։

Նադիրն այստեղ հաստատում է նաև Երևանի մելիքներ՝ Մելիք-Մկրտումի և Մելիք-Հակոբջանի իրավունքները[116] և, ներկայացնելով Փիր-Ահմադ խանին, հանձնարարում է նրանց խոսքից չշեղվել, ամեն հարցում կաթողիկոսի և նրանց հետ խորհրդակցել։ Ղզլբաշներին և Երևանի աղաներին չվստահել. միայն նրանց վստահել։ Երևանի աղաները պետք է նրանց ենթարկվեն, քանի որ երկիրն ու ժողովուրդը նրանցն է և նրանք են որ պիտի երկիրը շենացնեն[117]։

Արարատյան երկրի քալանթար նշանակվեց Մելիքջան Մելիք-Շահնազարյանցը։ Այդ բեկլարբեկիից հետո վիլայեթի ամենակարևոր և ամենաազդեցիկ պաշտոնն էր։ Աբրահամ կաթողիկոսը շեշտում է հատկապես, որ Արարատյան երկրի՝ ինը մահալների մելիքները ենթարկվում էին նրան «և դողային առջևն իբրև ղնոքար»[118]։

Եվ այսպես, թեև երկրի ներքին գործերի տնօրինումը հայ մելիքների և հոգևորականության իրավասությանն ու վերահսկողությանն էր ենթարկված, սակայն, որպես սահմանամերձ կուսակալություն, Երևանի բեկլարբեկիությունը կառավարվում էր զինվորական նահանգապետի՝ շահի հավատարիմ ամիր Փիր-Ահմադ խանի միջոցով։

Այլ էր, սակայն, վարչա-քաղաքական իրավիճակը Արցախական աշխարհում։ Նախկինում Գանձակի բեկլարբեկիությանը ենթակա Գուլիստանի, Խաչենի, Ջրաբերդի, Վարանդայի և Դիզակի մահալների հայությունը սղնախների քայքայումից հետո զենքը ցած չէր դրել և, ինչպես տեսանք, մելիքների ղեկավարությամբ հերոսական մարտեր մղելով օսմանցիների դեմ, փաստորեն ինքնիշխան էր դարձել։ Դիզակի Մելիք-Եգանի գլխավորությամբ Արցախի հայ մելիքների զինակցությունը Նադիրի հետ ավելի քան ամրապնդեց նրանց իշխանությունը, ծնունդ տալով նոր վարչական միավորի՝ «Խամսայի մելիքություն-

---

[116] Պահպանվել է Մելիք-Մկրտումի և Մելիք-Հակոբջանի կալվածներին և հարկային արտոնություններին (մուաֆության) վերաբերող Նադիրի հրովարտակի բնագիրը (տե՛ս Մատենադարան, կաթ. դիվան, թղթ. 1գ, վավ. 1032)։

[117] Տե՛ս Աբրահամ Կրետացի, էջ 56։

[118] Նույն տեղում, էջ 61։

ներին»[119]։ Նադիրը, փաստորեն, վավերացրեց այն, ինչ 15 տարիների հերոսական պայքարի շնորհիվ ձեռք էր բերել Արցախի ազատատենչ հայությունը։

Գանձակի բեկլարբեկիությունից անկախ, «մահալ-ե խամսե» անունով հինգ մելիքությունների միավորված նահանգը, կենտրոն ունենալով Տող ավանը, Դիզակի Մելիք-Եգանի գլխավորությամբ ճանաչվեց որպես հայկական ինքնավար մի երկիր, որի սահմանները ձգվում էին Գանձակի հարավային շրջաններից մինչև Արաքս գետը։ «Մէկն Թալիշ, մէկն Ջմյաթ (Ջարաբերդ), մէկն Խաչէն, մէկն Վարանդայ, մէկն Քոչէզ, մէկն Տուղաղ, այսդունց (սրանց) խանը (Նադիրը) պակլարպէկայ տեղ ար(ար) ինձ...», այսպես է գրում իր մասին Մելիք-Եգանը՝ իր տան դռան ճակատին թողած արձանագրության մեջ։ Մելիք-Եգանը հարևան Շիրվանի, Գանձակի, Երևանի բեկլարբեկիների նման ուղղակի ենթարկվում էր Նադիրի եղբորը, սիփահսալար Իբրահիմ խանին, որը նստում էր Ատրպատականի կենտրոն, փոխարքայանիստ Թավրիզ քաղաքում։

Պատմական բախտորոշ այս ժամանակաշրջանում Մելիք-Եգանի նման տաղանդավոր պետական-քաղաքական գործչի խելամիտ ջանքերը, զինվորական-կազմակերպչական համարձակ գործունեության հետ զուգորդված, նոր շունչ տվին ազատագրական պայքարին ու գոտեպնդեցին լեռնաշխարհի զինավառ հայությանը, ամրացնելով հավատքը միասնության և հաղթանակի նկատմամբ։

Դիզակի Տող ավանում մինչև օրս էլ դեռ կանգուն է մելիքների տոհմական դամբարանը։ Համեստ շիրմաքարի չափածո տապանագրի մեջ տրված է Մելիք-Եգանի անձնավորության և իշխանության բնութագիրը.

Այս է տապան քաջ իշխանին,
Եկան անուն մեծ Մէլիքին,
Որ է որդի բարեպաշտին
Ղուկաս անուն վարդապետին.
Եղև սիրեցեալ ամենայնին
Նատիր անուն թագաւորին,
Տիրապետաց սայ ի երկրին
Ի Աղուանից ի նահանգին,
Յոյժ պատուեցաւ Պարսից ազգէն
Քան զիշխանս Հայոց երկրին... ՌՃՂԳ (1744 թ.)[120]։

Ճանաչելով, սակայն, ազատության համար մարտնչող հայ ժողովրդի նվաճած իրավունքները և արտոնություններ շնորհելով հայ իշխող դասի ներկայացուցիչներին, Նադիրը նպատակ ուներ վերջ տալ հայերի ռուսական կողմնորոշմանը և իրեն հավատարիմ հայ մելիքների ու հոգևորականության միջոցով միշտ հնազանդ պահել հայ աշխատավոր բնակչությանը։

Իրար հաջորդող հաղթանակները Նադիրին հասցրին մինչև շահնշահի գահին։ Նա կարողացավ ազատել Իրանը օտարազգի նվաճողներից, ժառանգելով, սակայն, օտար․ ռազմակալման և անընդմեջ պատերազմների հետևանքով

[119] «Խամսա» արաբերեն նշանակում է «հինգ»։
[120] Մ. Բարխուդարյանց, Արցախ, Բաքու, 1895, էջ 75։

*ծայրահեղ աղքատության հասած և տնտեսապես քայքայված մի լայնածավալ երկիր։*

*Աղբյուրների վկայությամբ 1735—1736 թթ. սովն էր մոլեգնում Անդրկովկասում։ Աբրահամ Կրետացին նկարագրում է երկրում տիրող ծանր վիճակը, մթերքների սղումն ու դրամի ծայրահեղ պակասը։ Աբդուլլա փաշայի դեմ տարած հաղթանակից հետո Նադիրն արդեն մտահոգված էր երկրի տնտեսության վերականգնման հոգսերով։ Նա կաթողիկոսի և Երևանի բեկլարբեկիի հետ խորհրդակցում էր ուղիներ գտնել՝ հողագործների վիճակի բարելավման, գյուղատնտեսությանը զարկ տալու, ինչպես նաև առևտրին ու վաճառականությանը նպաստող պայմաններ ստեղծելու մասին։ Կաթողիկոսի խնդրանքով Նադիրը հրամայեց բացել Երևանի փողերանոցը (զառաբխանեն), տնօրինությունը հանձնարարելով Մելիք-Հակոբջանին, և ապա խանի ու կաթողիկոսի անունից նամակներ ու կոնդակներ հղվեցին Կարսում, Կարինում, Թոխաթում, Բայազետում, Վանում, Բաղեշում և Արևմտյան Հայաստանի այլ քաղաքներում բնակվող հայ և թուրք վաճառականությանը, հայտնելով նրանց, որ արդեն խաղաղություն է հաստատվել և ապահով պայմաններ են ստեղծվել վաճառականական քարավանների երթևեկության համար[121]։*

*Հաղթանակներով ոգևորված Իրանի նոր շահնշահը, սակայն, տնտեսական ծանր վիճակից դուրս գալու լավագույն միջոցը համարում էր արտաքին արշավանքների կազմակերպումը, հույս ունենալով նվաճված երկրների կողոպուտով լցնել պետական գանձարանը և հարստացնել իր իշխանության գլխավոր հենարանին՝ ռազմա-ավատատիրական դասակարգին։ 1737 թ. Նադիրը ներխուժեց Աֆղանստան, գրավեց Հերաթն ու Հնդկաստանի սահմանի մոտ գտնվող Ղանդահար քաղաքը։ Այստեղից նա մեծ զորքով մուտք գործեց Հնդկաստան, որն այդ ժամանակ տնտեսական ու քաղաքական տագնապ էր ապրում։ 1739 թ. փետրվարի 24-ին Կառնալ քաղաքի մոտ մղված մեծ ճակատամարտում Նադիրը գլխովին ոչնչացրեց Մուհամմադ շահի բանակը, իսկ ապրիլի 20-ին գրավեց Դելհին։ Կողոպտվեց և ավարի մատնվեց Մեծ Մողոլի շահերի ամբողջ հարստությունը, գրավվեց վիթխարի քանակությամբ ոսկի և թանկագին ակնեղեն։*

*Պետական գանձարանը անբավ հարստությամբ լցնելուց հետո, առանձին հրովարտակով Նադիրը Իրանի բնակչությանը երեք տարի ազատեց պետական հարկերից[122]։ Հարկային պարտավորությունների այդ կարճատև ընդհատումով նա նպատակ ուներ թեթևացնել ռայաթների վիճակը և հնարավորություն տալ նրանց վերականգնելու ու զարգացնելու պատերազմական ծանր հարկերի ու անընդհատ զորաշարժերի հետևանքով քայքայված տնտեսությունը։ Սակայն արտադրողական ուժերի չափազանց ցածր մակարդակը՝ մի կողմից, ֆեոդալական դաժան շահագործումը՝ մյուս կողմից, բացառում էին տնտեսական կյանքի արմատական բարելավման որևէ հնարավորություն։ Պետական հարկերի մասնակի թեթևացումը ոչնչով չէր պարտավորեցնում կալվածատեր-ֆեոդալներին, որոնք, ընդհակառակը, օգտվելով այդ պատեհությունից, ավելի*

---

121 Տե՛ս Աբրահամ Կրետացի, *էջ 26—27, 34։*

122 *Հրովարտակի բնագիրն ու ռուսերեն թարգմանությունը տե՛ս* *М. Р. Арунова* и *К. З. Ашрафян,* Государство Надир-шаха Афшара, М., 1958, *էջ 87—93։*

էին սաստկացնում կիսաձորտային վիճակում գտնվող գյուղացիության շահագործումը։

Աբրահամ կաթողիկոսի ժամանակներին վերաբերող վավերագրերը վկայում են, որ այն ժամանակ, երբ Նադիրը մի կողմից պատերազմում էր օսմանցիների դեմ, մյուս կողմից նրա ուղարկած հարկային-ֆինանսական պաշտոնյաները Արարատյան երկրում անց էին կացնում հարկատու բնակչության և մշակելի տարածությունների հաշվառում[123]։ Այդ նշանակում է, որ մինչև 1739 թ. խստագույնս գործել է պետական հարկապահանջությունը, ետին թշվառության մատնելով գյուղի և քաղաքի աշխատավորությանը։ Նույնիսկ Աբրահամ կաթողիկոսը ստիպված է եղել բազմիցս բողոքելու հարկային պաշտոնյաների էջմիածնի մուաֆության իրավունքների ոտնահարման դեմ[124].

1742 թ., երբ Նադիրը նվաճել էր նաև Միջին Ասիան և պատժիչ արշավանքի դուրս եկել դեպի Դաղստան, նոր թափով վերսկսվեց բնակչության ընդհանուր աշխարհագիրն ու հարկման ենթակա տնտեսությունների հաշվառումը ամբողջ երկրում։ Աղբյուրները վկայում են, որ հարկերի գանձումը կատարվում էր բազմապատկված չափերով։ Սիմեոն կաթողիկոս Երևանցին խոսում է այդ տարիներին վանքերի մուլքային սեփականություններից գանձվող հարկերի բազմապատկված չափերի մասին, նշելով նաև, որ դա միայն էջմիածնին չէր վերաբերում. «Եւ որպէս զԱթոռոյս մլքից խարճսն յաւելացուցին սոքա, նոյնպէս և բոլոր երկրիս մլքիցն յաւելացուցին»,—գրում է նա[125]։

Նադիրյան տիրապետության շրջանից պահպանված հրովարտակներն ու էջմիածնի կաթողիկոսների, շահական արքունիքի և Թավրիզի փոխարքայության միջև եղած գրագրությունները գալիս են ապացուցելու, որ սնտեսական կյանքի այս ծայրահեղ աննպաստ և անկայուն պայմաններում անգամ, ինչպես Աբրահամ կաթողիկոս Կրետացին (1734—1737), այնպես նաև նրան հաջորդած Ղազար Ջահկեցին (1737—1751) լայն գործունեություն էին ծավալել Արարատյան երկրի ցրված հայության վերախմբավորման, Արևմտյան Հայաստանից մեծ թվով հայ գյուղացիության դեպի Երևանի ու Նախիջևանի շրջակայքում գտնվող գյուղերը գաղթեցնելու ուղղությամբ[126]։

Այս վերանորոգչական գործունեությանը զուգահեռ, նրանք ջանք չէին խնայում տեղական մահմեդական իշխանավորների հափշտակողական և բռնի կրոնափոխության ձգտումները չեզոքացնելու ուղղությամբ[127]։ Միաժամանակ, ազդու հրովարտակներ ստանալով Նադիրից, անհաշտ պայքար էին մղում կաթոլիկ կղերականության, հատկապես Նախիջևանի շրջանում հայ համայնքի միասնականությունը կազմալուծողների քայքայիչ գործունեության դեմ[128]։

1740-ական թվականներից էջմիածնի տնտեսական վիճակը ավելի ու ավելի է սկսում կայունանալ։ Վակֆային հողերի մեծ մասի բռնագրավման

---

[123] Տե՛ս Մատենադարան, Կաթ. դիվան, թղթ. 1 դ, վավ. 354, Համտ. Սիմեոն Երևանցի, «Ջամբռ», Վաղարշապատ, 1873, էջ 144։

[124] Տե՛ս Նույն տեղում։

[125] Նույն տեղում, էջ 147։

[126] Տե՛ս Մատենադարան, Կաթ. դիվան, թղթ. 1դ, վավ. 376, 379։

[127] Տե՛ս Նույն տեղում, վավ. 369, 370, 377, 391, 396, 399, 400։

[128] Տե՛ս Նույն տեղում, թղթ. 1դ, վավ. 375, 380, Համտ. Մ. Օրմանյան, Ազգապատում, հատ. Բ, մասն Գ, Բեյրութ, 1960, էջ 2929—2935։

ու սեփականացման օրենքը հայ եկեղեցական կալվածներին չէր վերաբերում։ Այլ ընդհակառակը, ինչպես տեսանք, Նադիրը նույնությամբ վերահաստատում էր էջմիածնի կալվածատիրական իրավունքները բոլոր վանքապատկան գյուղերի նկատմամբ։ Արևմտյան Հայաստանից և հայ գաղթավայրերից ուխտավորների անարգել երթևեկությունը նույնպես մեծ եկամուտներ էր ապահովում։ Նյութական համեմատաբար ապահով վիճակը, բնականաբար, հնարավորություն էր տալիս վերոհիշյալ կաթողիկոսներին որոշ դրական արդյունքների հասնելու համազգային նշանակություն ունեցող տնտեսական և քաղաքական ձեռնարկումների մեջ։

Սակայն բռնակալական մի երկրում, որտեղ ժողովուրդների ճակատագիրը ենթակա էր թագավորի քմահաճույքներին ու կամայականությանը, չէր կարելի սպասել ազգային կյանքի քիչ թե շատ հարատև բարգավաճում։

Դաղստանում կրած անհաջողություններից հետո և արքունիքում ծայր առած խարդավանքների հետևանքով, Նադիրը իր կյանքի վերջին տարիներին դարձել էր նենգ ու կասկածամիտ մի բռնակալ։ Վակֆային և կալվածատիրական հողերի բռնագրավումները մեծ դժգոհություններ էին առաջացրել հոգևոր և աշխարհիկ ավատատերերի շարքերում։ Պետականացված հողերը սպասված եկամուտը չէին ապահովում։ Ծանր հարկապահանջությունն ու երկրի ծայրամասերում տիրող անիշխանությունը լիակատար քայքայման էին մատնել ժողովրդական տնտեսությունը։

1744 թ., նոր կողոպուտի հույսով և Դաղստանում կրած պարտությունների հետևանքով կորցրած հեղինակությունը վերականգնելու համար, Նադիրը նորից պատերազմ սկսեց Թուրքիայի դեմ, նպատակ ունենալով գրավել Բաղդադը։ Կռիվները փոփոխակի հաջողություններով շարունակվեցին մինչև 1746 թ., առանց շոշափելի արդյունքի։

Ընդարձակ կայսրության բոլոր ծայրամասերում չէին դադարում ժողովրդական ապստամբությունները, որոնք ցնցում էին Նադիրի թագավորության առանց այն էլ խարխլված հիմքերը։ Բռնակալներին հատուկ հիվանդագին կասկածամտությունը Նադիրին մղում էր անլուր գազանությունների իր իսկ հարազատների նկատմամբ։ Ենթարկվելով պալատական բանսարկություններին, նա հրամայեց կուրացնել իր որդուն՝ Ռզակուլի Միրզային, որից հետո կորցնելով անդորրը, գտնվում էր կիսախելագար վիճակում, մինչև որ 1747 թ. սպանվեց իր մերձավորների ձեռքով։

ԳԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ

# ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ XVIII ԴԱՐԻ ԵՐԿՐՈՐԴ ԿԵՍԻՆ

## 1. ԱՐԵՎԵԼՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԸ XVIII ԴԱՐԻ 50—70-ԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐԻՆ։ ԷՋՄԻԱԾՆԻ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՀԵՏ

*Նադիր շահի ջանքերը ժամանակավորապես միայն կանխեցին պարսից պետության քայքայումը։ Նրա սպանությունից հետո երկրում սկսվեց անիշխանություն, որը տևեց շուրջ հիսուն տարի։ Կենտրոնական իշխանության թուլացման հետևանքով աշխուժացան կենտրոնախույս ձգտումները, ավելի խորացան ներքին պառակտումները, և ֆեոդալական հակամարտ խմբավորումները կատաղի պայքար ծավալեցին իշխանության համար։ Լավ է բնորոշել այդ խառը վիճակը XVIII դարի մի հայ անանուն ժամանակագիր. «Ապա զկնի կենազրաւ լինելոյ սորին (Նադիրի),—գրում է նա,—վեր ի վայր տապալեցաւ իշխանութիւնն պարսից, և բոլոր Պարսկաստան. մի զմիով ելանէին. իւրաքանչիւր խանք և երևելիք յիւրաքանչիւր տեղեաց շարժեցան, և իւրաքանչիւր մասնաւոր գաւառ գրեթէ մի մի թագաւորութիւն ցուցին զինքեանս. և յարեան ի վերայ միմեանց պատերազմաւ»[1]։*

*Գահակալական պայքարի մեջ սկզբում հաջողության հասավ Նադիրի եղբորորդի Ադիլը՝ Խորասանում շահ հռչակելով իրեն։ 1748 թ. նա տապալվեց իր եղբոր՝ Իբրահիմի կողմից, որը նույնպես երկար չմնաց իշխանության գլուխ։ Նրան պարտության մատնեց Նադիրի թոռ Շահռուխը։ Վերջինիս իշխանությունը ևս շատ կարճ տևեց։ Մեշեդ քաղաքի շիա հոգևորականությունը դավադրությամբ գահընկեց արեց նրան և կուրացրեց։ Շահ հռչակվեց Սուլեյման II-ը, բայց սա էլ տապալվեց։ Կրկին իշխանության է կանչվում կուրացված Շահռուխը, բայց նրա փոխարեն, փաստորեն, կառավարում էր նրան շահ հռչակած Յուսուֆ-Ալի խանը, որի իշխանությունը, սակայն, դուրս չէր գալիս Խորասանի սահմաններից[2]։*

*Իրանում քիչ թե շատ կայուն վիճակ ստեղծվեց Զենդ ցեղի առաջնորդ Քարիմ խանի տիրակալության ժամանակ (1762—1779), որը գահից հեռաց-*

---

[1] «Դիւան հայոց պատմութեան», գիրք Ժ, Թիֆլիս, 1912, էջ 157—158։

[2] Տե՛ս *Н. В. Пигулевская, А. Ю. Якубовский, И. П. Петрушевский, А. В. Строева, А. М. Беленицкий,* История Ирана с древнейших времен до конца XVIII в., Л., 1958, էջ 325։

նելով իր զրածը՝ Իսմայիլ III-ին, կառավարում էր երկիրը՝ բավարարվելով միայն վաքիլ (խնամակալ) անունով։

Կենտրոնական իշխանության բացակայության և գահի համար մղվող պայքարի հետևանքով շատ իշխողներ, հատկապես սահմանամերձ մարզերում, անկախություն ձեռք բերեցին։ Դեռևս 1744 թվականին Նադիր շահի համաձայնությամբ Արևելյան Վրաստանում կառավարիչներ էին կարգվել Բագրատունյաց հարստության Վրաց ճյուղի վերջին շառավիղներից Թեյմուրազն ու նրա որդի Հերակլը, առաջինը՝ Քարթլիում, իսկ երկրորդը՝ Կախեթում։ Այդ երկրները համարվում էին վալիություններ, իսկ նրանց կառավարիչներն անմիջապես ենթարկվում էին Իրանի գահակալին։ Վրաց վալիները, որոնց նաև թագավոր էին կոչում, անդրկովկասյան խաների հետ համեմատած, ավելի արտոնյալ վիճակում էին։ Նադիրի մահից հետո Քարթլին ու Կախեթը անկախանում են, իսկ 1762 թվականին Հերակլի գլխավորությամբ վրացական այդ երկու վալիությունները միավորվում են և զգալի ազդեցություն ձեռք բերում Անդրկովկասում։

Իրանում սկսված անիշխանության հետևանքով, փաստորեն անկախ դարձան նաև Արևելյան Հայաստանում և Ադրբեջանում կազմակերպված՝ Երևանի, Նախիջևանի, Խոյի, Մակվի, Ղարաբաղի, Ուրմիայի, Գանձակի, Ղուբայի և մի շարք այլ խանություններ, որոնք ժամանակ առ ժամանակ արյունահեղ պայքարի մեջ էին մտնում միմյանց դեմ՝ իրենց տերիտորիալ ամբողջականության պահպանման կամ ազդեցության ոլորտներն ընդարձակելու համար։

Քաղաքական հեղհեղուկ պայմանների և հաճախակի դարձած ներքին կռիվների հետևանքով քայքայում էր ապրում Արևելյան Հայաստանի տնտեսությունը։ Հատկապես դժվարին էր առևտրական քարավանների անցուդարձի և ոռոգման սիստեմի անխափան աշխատանքի ապահովումը։ Արտակարգ պայմանները հնարավորություն էին տալիս իշխողներին նորանոր հարկեր դնելու բնակչության վրա։

Ջափազանց ծանր կացություն էր ստեղծվել Արարատյան երկրում։ Երևանի խանը, մտահոգված իր իշխանության ամրապնդմամբ, ձգտում էր վերջնականապես ոչնչացնել հայերի դիմադրողական ուժը և առաջին հերթին՝ Նադիր շահի պաշտպանությունը վայելող հայ իշխանական տների շառավիղներին։ Այդպիսիներից էր Մելիքջան Մելիք-Շահնազարյանի որդի Մանուչարը, որը Նադիրի կողմից բարձրագույն պատիվների արժանացած հայ մեծամեծերից մեկն էր։

Երևանի խանը, երկյուղ կրելով, որ Մելիք-Մանուչարը «բազմացուցեալ զզօրս իւր տիրեսցէ ամրոցաց և բռնասցի յերկրին Արարատայ», Նադիրի մահից անմիջապես հետո՝ 1747 թվականի հունիսի 22-ին, Մանուչարին խաբեությամբ հրավիրում է Երևանի այգիներից մեկը և սպանել տալիս[3]։

Ազատվելով իր հայ հակառակորդից, Երևանի խանը, այնուամենայնիվ, ի վիճակի չէր իշխանությունը իր ձեռքում պահելու։ Իրանի հյուսիսային մասերում անկախություն ձեռք բերած իշխանավորները, աչք ունենալով Արարատյան բարեբեր դաշտավայրի հարստությունների վրա, ձգտում էին գրավել այն։ Դրանցից էր Նադիրի զորավարներից Մուհամմադ խան Կաջարը, որը 1749 թվականին զորքով շարժվում է Երևանի վրա, գրավում շրջակայքը և շրջապատում

[3] Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 2868, էջ 341բ։

բերդը։ Երևանցիներն ստիպված օգնության խնդրանքով դիմում են Քարթլի-Կախեթի թագավորներին՝ փոխարենը խոստանալով հարկատու դառնալ նրանց։ Վրացական զորքը Թեյմուրազի և Հերակլի հրամանատարությամբ շարժվում է դեպի Երևան։ Վճռական ճակատամարտը տանուլ տալուց հետո, Մուհամմադ խանը հեռանում է Երևանից[4]։

Դրանից մի քանի տարի անց վրացական զորքը նորից է արշավում Արարատյան դաշտ՝ այս անգամ Երևանը Ազադ խանից պաշտպանելու համար։ Վրացական զորքը պարտության է մատնում Ազադ խանին և դուրս քշում նրան Արարատյան երկրի սահմաններից։ Սակայն այս ժամանակ Վրաստանը դեռևս թույլ էր և Երևանի խանությանը տնտեսականորեն հարկատու պահելը բարդությունների հետ էր կապված։ Քարթլիի ու Կախեթի միավորումից հետո Հերակլ II թագավորը մի քանի արշավանքներով (1762 և 1765 թթ.) ստիպում է Երևանի խանին կատարել Վրաստանի նկատմամբ ստանձնած պարտավորությունները, սակայն այդ երկար չի տևում։ Նա 1778 և 1779 թվականներին ստիպված է լինում նոր արշավանքներ կազմակերպել։ Վերջին արշավանքի ժամանակ Հերակլը Վրաստան է տեղափոխում Արարատյան երկրի ութ գյուղերի՝ Հախունիսի, Բլուրի, Ալեթլուի, Էվճիլարի, Քյալակարխի, Շահրիարի, Ղուրդուղուլու և Աշտարակի բնակիչներին, որոնց բնակեցնում է Գորիում, Հավլաբարում և Սղնախում[5]։

Հարկ է նշել, որ ձգտելով երկիրը հեռու պահել արշավանքներից ու ավերումներից, էջմիածնի կաթողիկոսները հաշտարար միջնորդի դեր էին խաղում Երևանի խանի ու վրաց թագավորի միջև։ Երկար բանակցություններից հետո 1781 թ. նոյեմբերին Հերակլ II-ի և Երևանի խանի միջև հաշտություն է կնքվում։ Խանը պարտավորվում է տարեկան 3000 թուման հարկ և պահանջի դեպքում զինվորական օգնություն ցույց տալ Հերակլին։ Հերակլը վերադարձնում է Վրաստան տարված գյուղացիների մի մասին և խոստանում վտանգի դեպքում օգնել խանին[6]։ Վրացական թագավորությունից հարկային կախման մեջ է ընկնում նաև Գանձակի խանությունը։

Անհանգիստ վիճակ էր ստեղծվել նաև Նախիջևանում։ Ադիլ շահի կառավարման օրոք ծայրահեղ կեղեքված ժողովուրդը հրաժարվել էր ճանաչել պարսից իշխանությունը՝ հանձին Նադիրի կողմից նշանակված Մուհամմադկուլի խանի։ Ապստամբները, որոնք գլխավորապես կենտրոնացել էին Աստապատ հայկական գյուղում, օգտագործելով տեղանքի պայմանները, զորեղ դիմադրություն են ցույց տալիս խանին։ Հնարավորություն չունենալով ճնշել ապստամբությունը, անօգնական մնացած խանը փախչում է երկրից։ Նրա փոխարեն խան է նշանակվում տեղի աղաներից Հեյդարկուլին, որը ժողովրդի հարստահարման գործում գերազանցում է իր նախորդին և դաժան հալածանքներ սկսում հատկապես հայ մեծատունների նկատմամբ։ Առավել ծանրացավ ժողովրդի վիճակը, երբ Ադիլից իշխանությունն անցավ նրա

---

[4] Տե՛ս պրոֆ. Լ. Մ. Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատ. Գ, Երևան, 1956, էջ 172։

[5] Տե՛ս «Հիշատակարան ազգային արդեան պատմութեան համար», «Կռունկ Հայոց աշխարհին», 1862, № 4, էջ 280։ Г. Кикодзе, Ираклий Второй, Тбилиси, 1948, էջ 104։

[6] Տե՛ս Վ. Ռ. Գրիգորյան, Երևանի խանությունը XVIII դարի վերջում (1780—1800), Երևան, 1958, էջ 73։

*Ադրբադրի Իբրահիմ Միրզային։ Մտադրություն ունենալով նվաճել ողջ Իրանը և դրա համար դրամի մեծ կարիք ունենալով, վերջինս սաստկացրեց հարկապահանջությունը։ Նախիջևանի հայերի ներկայացուցիչները մեկնում են Թավրիզ՝ Հեյդարի դեմ նորընծա շահին բողոք ներկայացնելու համար։ Շահը իշխանությունից հեռացնում է խանին, սակայն չի պակասեցնում հարկերը։*

*Հարկահանները կեղեքում էին բնակչությանը ամենադաժան միջոցներով։ Ովքեր անկարող էին վճարել հարկերը «մատնեցան ի գանս և ի տանջանս, ոմանք ի նոցանէ մեռան ընդ բրօք, և ոմանք անպիտանացան յոտից և ի ձեռաց. ոմանք ի ցաւոց ցնորեցան, և ոմանք խեղանդամ մնացին և ոչ գոյր միջնորդութիւն ազատութեան, զի ամենեքին զիւրեանց աղետից հոգային և ոչ ես էր այլուստ օգնութիւն ստացուածոց, զի ամենեքին աղքատացեալ էին յաւուրց անտի Մէհէմմէտ Ղուլի խանին»*[7]*։*

*Այս ծանր պայմաններում Հեյդարի փոխարեն շահը նոր կառավարիչ է ուղարկում Նախիջևան։ Վերջինս ազգությամբ վրացի էր՝ Բեհնամ անունով։ Նոր խանի հետ ժամանում են նաև մի քանի ազդեցիկ հայեր, որոնք հեռացել էին Նախիջևանից և գտնվում էին Թավրիզի կողմերում*[8]*։ Բեհնամ խանը ազատում է հայերին ծանր հարկապահանջությունից, նրանցից զորք հավաքում և հալածում իր թշնամիներին։*

*Չկամենալով հնազանդվել քրիստոնյաներին հովանավորող խանին, Օրդուբադի մահմեդական բնակչությունը պատրաստվում է արշավելու Բեհնամ խանի վրա։ Վերջինս նրանց դեմ է ուղարկում հայերից կազմված իր զորքը՝ շահկերտցի Ղազարի հրամանատարությամբ։ Սա շուտով պաշարում է Օրդուբադը։ Սակայն անակնկալ վրա է հասնում կաշառքով իր պաշտոնը ետ ստացած Հեյդարկուլին, ցրում է պաշարողների զորքը, Նախիջևանից հալածում Բեհնամ խանին և պատրաստություններ տեսնում վերջ տալու հայերի դիմադրությանը։*

*Հայերի դիմադրության հիմնական կենտրոնը Շահկերտ գյուղն էր, որի բնակիչների մեծամասնության պղնձագործ լինելու պատճառով ուներ նաև Ղազանչի (կաթսայագործ) անունը։ Շահկերտցիների ղեկավար Հովհաննես Խանդամիրյանը խելացի, համարձակ մի ռազմիկ էր և մեծ հեղինակություն էր վայելում ողջ գավառում։ 1750 թվականի կեսերին, երբ իմացվում է Հեյդարի դեպի Շահկերտ արշավելու լուրը, Խանդամիրյանը բնակչությանը կարգադրում է տեղափոխվել գյուղից վերև՝ լեռան վրա գտնվող ամրոցը, իսկ 500 հոգու՝ երիտասարդ ու տարեց մարդկանց զենք է բաժանում և պատրաստվում դիմադրության։ Շահկերտի պղնձագործ վարպետները շուտափույթ թնդանոթներ և պղնձե արկեր են ձուլում։*

*Թավրիզից օգնական զորք ստանալով, Հեյդարը հարձակման է անցնում։ Առաջին ընդհարումները պսակվում են հայերի հաղթանակով։ Շահկերտցիները կարողանում են ետ շպրտել դեպի վեր բարձրացող թշնամուն։ Պաշարողները սաստկացնում են թնդանոթաձգությունը և անցնում նոր հարձակման։ Սակայն շահկերտցիներին հաջողվում է, պաշտպանողական քաջարի մարտեր մղելով, ետ վանել Հեյդարի զորքի այս հարձակումները ևս՝ պատճա-*

---

7 Մ. Չամչյան, *Պատմութիւն Հայոց, հատ. Գ, էջ 842—843։*

8 *Տե՛ս նույն տեղում, էջ 843։*

ունելով թշնամուն մեծամեծ կորուստներ։ Վերջինս ստիպված է լինում հաշտություն կնքել խանդամիրյանի հետ[9]։

Ահա այսպիսի խառնակ վիճակի մեջ էր գտնվում Արևելյան Հայաստանի կենտրոնական մասը։ Անվերջանալի պատերազմները, հաճախակի միմյանց փոխարինող իշխողների դաժան կամայականությունները ու անհագուրդ հարկապահանջությունը բնակչությանը դրել էին ծանր վիճակի մեջ։ Դիմադրողական ուժերը ցրված էին, թույլ և անկազմակերպ։

Նադիր շահի սպանությունից հետո Իրանում ստեղծված անիշխանությունը բացասական հետևանքներ ունեցավ Ղարաբաղի հայ մելիքությունների համար։ Ղարաբաղի հարթավայրերում բնակություն հաստատած քոչվոր ցեղերը, որոնք օգտվում էին լեռնային արոտավայրերից, ձգտում էին ավելի ամուր հաստատվել այդ վայրերում։ Ջիվանշիր ցեղի առաջնորդ Փանահը Խորասանից բերել է տալիս Նադիրի կողմից այնտեղ գաղթեցված իր ցեղակիցներին, Ադիլ շահից ստանում է խանի տիտղոս, իրեն է ենթարկում հարթավայրի բոլոր քոչվոր ցեղերին և հարձակումներ ձեռնարկում շրջակա բնակավայրերի վրա։ Կողոպտած ինչքը առատաձեռն կերպով նա բաժանում էր իր կողմնակիցներին՝ նրանցից հավաքելով զինվորական ուժ[10]։ Նրա հիմնական նպատակն էր ամրանալ Լեռնային Ղարաբաղում, բայց ամեն անգամ այդ վայրերում ամրություններ կառուցելու նրա փորձերը հանդիպում էին մելիքների ուժեղ դիմադրությանը։ Սկզբում նա ցանկանում էր բերդ հիմնադրել Գարգառ գետի մոտ, Բայաթ կոչված ավերակ քաղաքատեղիում, բայց Գյուլիստանի և Ջրաբերդի մելիքները, միանալով Շիրվանի Հաջի Չելեբի խանի հետ, կարողանում են հալածել Փանահին այդ վայրից։ Նույն մելիքները, միացած Խաչենի Մելիք-Ալլահվերդու հետ, հարձակվում և ավերում են նաև Փանահի մեկ այլ բերդը, որ նա սկսել էր կառուցել Թարնակյուր (Տիգրանակերտ) գյուղի ավերակների վրա[11]։ Ղարաբաղում հաստատվելու Փանահ խանի մտադրությունն իրականանում է հայ մելիքների գժտության հետևանքով։ Վարանդայի Մելիք-Հովսեփի կրտսեր եղբայր Շահնազարը սպանում է եղբորը և իր ձեռքը վերցնում իշխանությունը։ Մյուս մելիքները՝ Գյուլիստանի Մելիք-Հովսեփը, Ջրաբերդի Մելիք-Ալլահկուլի Սուլթանը, Խաչենի Մելիք-Եսային, համախմբվում են Շահնազարի դեմ, պաշարում նրա Ավետարանոց բերդը, բայց վերահաս ձմռան պատճառով չկարողանալով գրավել՝ վերադառնում են, ավերելով Վարանդայի գյուղերի մեծ մասը[12]։ Եվ ահա, իր իշխանությունը փրկելու համար Շահնազարը օգնություն է խնդրում Փանահ խանից՝ ի տրիտուր բերդի կառուցման համար տեղ հատկացնելով նրան, և Փանահը 50-ական թվականների սկզբներին վերակառուցում է և ամրացնում Ավան յուզբաշու հիմնած Շուշի բերդը[13]։ Շատ չանցած Մելիք-Շահնազարը փաստորեն դառնում է այդ դաժան, բայց շրջահայաց ու խորամանկ խանի հպատակը։ Փանահ խանի հետ նա մասնակցում է Խաչենի Մելիք-Ալլահվերդու ամրոցի պաշարմանը, բայց վերջինս

---

9 Տե՛ս Լեո, Հայոց պատմություն, հատ. 3, էջ 721—724։

10 Տե՛ս „История Азербайджана", т. I, Баку, 1958, էջ 337։

11 Տե՛ս Րաֆֆի, Խամսայի մելիքությունները, էջ 48—49։

12 Տե՛ս նույն տեղում։

13 Տե՛ս „Армяно-русские отношения в первой трети XVIII века", сборник документов, т. II, ч. I, Ереван, 1964, էջ XLI—XLII:

*սասաթի չորդ է, տալիս նրանց և հալածում իր մելիքության սահմաններից[14]: Այնուամենայնիվ, Փանահ խանին հաջողվում է սպանել տալ Մելիք-Ալլահվերդուն և նրա փոխարեն մելիք նշանակել իրեն ծախված Միրզախան անունով նախիրի մի գյուղապետի[15]:*

*Այսպիսով, պարսից պետության մեջ տիրող անիշխանության, ինչպես նաև մելիքների միջև եղած հակամարտությունների հետևանքով, Ղարաբաղում ստեղծվում է մահմեդական խանություն, որը զգալի դեր է սկսում խաղալ Անդրկովկասի կյանքում: Ղարաբաղի խանության հիմնադիր Փանահը, իրենից կախյալ վիճակի մեջ դնելով Վարանդայի և Խաչենի մելիքներին, փորձեր է կատարում հպատակեցնելու նաև Խամսայի մյուս երեք մելիքներին: Սկսվում է պայքարի մի երկարատև շրջան, որի ընթացքում մելիքները հաճախ դաշնակցում են Շամախու Հաջի Չելեբի խանի, Ղուբայի Ֆաթալի խանի և վրաց թագավորի հետ: Փանահ խանը իրեն է ենթարկում Դիզակի Մելիք-Եսային, որի իշխանությունը ամենահարավայինն էր ու մեկուսացված իր դաշնակիցներից: Գյուլիստանի Մելիք-Հովսեփը և Ջրաբերդի Մելիք-Հաթամը ստիպված են լինում 60-ական թվականների սկզբներին իրենց հպատակներով հեռանալ Ղարաբաղից ու հաստատվել հարևան Գանձակի խանությունում, որտեղից նրանք հաճախակի հարձակումներ են գործում Ղարաբաղի խանի և նրա հպատակների վրա: 1767 թ. Գյուլիստանի ու Ջրաբերդի Մելիք-Խալիլ խանը պարտավորվում է չխառնվել նրանց գործերին[16]: Վերջինս, հետևելով իր հոր օրինակին, շարունակում է մեծացնել Ղարաբաղի մահմեդական բնակչության թիվը՝ ի հաշիվ այլ խանություններից ու Վրաստանից ներգաղթող թափառական քոչվոր ցեղերի[17]:*

*Այսպիսին էր Ղարաբաղի մելիքների վիճակը XVIII դարի 60-ական թվականներին: Նրանցից ոմանք կիսանկախ էին, ոմանք՝ հպատակ: Ղարաբաղի նորաստեղծ խանության տերերը, այսուհանդերձ, դեռևս քաղաքական որոշ կշիռ և հեղինակություն ունեին երկրում, ի վիճակի էին պահանջի դեպքում զինվորական որոշ ուժ դուրս բերել և հարևանների ոտնձգություններից պաշտպանել իրենց տիրույթները: Դրանով է պայմանավորված այն հանգամանքը, որ հայ ազատագրական շարժման գործիչները որոշ հույսեր էին կապում հայ պետականության այս վերջին մնացորդների հետ՝ քաղաքական և զինվորական որոշակի դեր վերապահելով նրանց Հայաստանի ազատագրման գործում:*

*Այս ծանր պայմաններում Արևելյան Հայաստանի բնակչությունը ենթարկվում է մի նոր աղետի՝ սկսվում է աֆղան Ազադ խանի արշավանքը: Օգտվելով Իրանում կենտրոնական իշխանության բացակայությունից, նա ամրապնդում է իր իշխանությունը Ատրպատականում, գրավում է Թավրիզը և 1751 թվականին արշավում դեպի Նախիջևան: Վճռական ճակատամարտում ջախջախում է Հեյդարկուլի խանին: Ազադ խանի հետ էր նաև մեզ ծանոթ հավատափոխ վրացի Բեհնամ խանը, որը Հին Ջուղայում անձամբ սպանեց Հեյդարկուլիին և կրկին ստանձնեց Նախիջևանի կառավարումը: Բեհնամ խանը*

---

[14] Տե՛ս Րաֆֆի, Խամսայի մելիքությունները, էջ 59:

[15] Տե՛ս նույն տեղում, էջ 59—60:

[16] Տե՛ս Մակար Բարխուդարյանց, Պատմութիւն Աղուանից, հատ. Բ, Թիֆլիս, 1907, էջ 111—112:

[17] Տե՛ս Լեո, Հայոց պատմություն, հատ. Գ, էջ 795:

նորից հովանավորում է հայ բնակչությանը, որը նախորդ խանի ժամանակ զրկվել էր նույնիսկ եկեղեցական ծեսերը կատարելու իրավունքից[18]։

Ազադ խանը մտադրություն ուներ իրեն ենթարկելու նաև Երևանի խանությունը՝ մի բան, որը հակասում էր Քարթլ-Կախեթի շահերին։ Հերակլ II-ը շտապ պատրաստություններ է տեսնում Ազադ խանին դիմագրավելու, սակայն Թեհնամ խանի միջնորդությամբ նրանց միջև հաշտություն է կնքվում։

Այս հաշտությունը, սակայն, կարճատև եղավ։ Հաջորդ տարում՝ 1752 թվականի հունիսին Ազադ խանը սկսում է իր հարձակումը Երևանի վրա։ Այս արշավանքը աղետավոր եղավ Արարատյան դաշտի և հատկապես Նախիջևանի ու Գողթան գավառի բնակիչների համար։ Կողոպտելով հանդիպած գյուղերը, արշավող զորքերն առաջ շարժվեցին մինչև Արարատյան դաշտ և կարողացան պաշարել Երևանի բերդը։ Շուտով իր զորքի գլուխն անցած, Քանաքեռ է հասնում Հերակլ թագավորը։ Վճռական ճակատամարտը տեղի է ունենում հուլիսի 28-ին։ Վրացական զորքը, որին միացել էր նաև Երևանի կայազորը, պարտություն է մատնում Ազադ խանին։ Նահանջող աֆղանները վերադարձի ճանապարհին թալանում են Նախիջևանը և Ագուլիսը։ Ագուլիսի հայերը ոմն Եսայու գլխավորությամբ, որին Մ. Չամչյանը կոչում է «այր հզոր և յոխորտ», պատրաստվում են դիմադրության։ Սակայն վատ կազմակերպիչ էր Եսային։ Ազադ խանի զորքը քաղաք է մտնում ոչ այն տեղից, որտեղից սպասում էին զինված ագուլեցիները։ Քաղաքը թալանվում է, բնակիչների մի մասին հաջողվում է փախչել, մյուս մասը կոտորվում կամ գերի է ընկնում։ Եսային մի քանի մեծամեծերի հետ թաքնվում է ս. Թովմա Առաքյալի եկեղեցում, սակայն, թշնամին իմանում է նրանց տեղը, կոտրում դռները և սրի քաշում բոլորին[19]։ Երեք օր Ագուլիսում մնալուց հետո Ազադ խանի զորքը 12.000 գերիներով հեռանում է Իրան[20]։

Արևելյան Հայաստանը մեծապես տուժում էր նաև հյուսիս-կովկասյան լեռնականների արշավանքներից։ Վերջիններս գլխավորապես ներխուժում էին Վրաստան, երբեմն էլ հասնում էին մինչև Արարատյան դաշտ և ավերածություն սփռելով ճանապարհին, վերադառնում մեծ թալանով։ 1759 թ. Անդրկովկաս է ներխուժում լեզգիների 8.000 հոգուց բաղկացած մի ջոկատ։ Վրաց թագավորներ Թեյմուրազին ու Հերակլին Իմերեթիայի Սողոմոն թագավորի օգնությամբ հաջողվում է ետ մղել լեզգիներին[21]։ Հաջորդ տարում լեզգիների արշավանքին ենթարկվեց նաև Արարատյան երկիրը։ Լեզգիները սկզբում ներխուժում են Քանաքեռ և գերի են վերցնում մի քանի հոգու։ Երևանցիները, որոնք Հերակլի կողմից նախապես զգուշացված էին, հարձակվում են լեզգիների վրա, մեծ կորուստներ հասցնում նրանց և ազատ արձակում գերիներին։ Մի քանի օր հետո լեզգիները Աշտարակի և Օշականի կողմից մոտենում են Էջմիածնին, պաշարում Հաջիղարա գյուղը։ Հետո Էջմիածնի հյուսիսային կողմով գնում են Սև ջրի ակունքները, գիշերում այնտեղ և մյուս օրն անցնում Արաքսը։ Սկզբում հարձակվում են Փարչենիսի վրա, բայց չկարողանալով

---

18 Լեո, *Հայոց պատմություն*, հատ. 3, էջ 725։

19 Տե՛ս Մ. Չամչյան, *Պատմութիւն հայոց*, հատ. Գ, էջ 854։

20 Տե՛ս Մ. Խաչիկյան, *Սուգ և կոծ ի վերայ գիւղաքաղաքին Ագուլեաց որպիսի լինիլն*, «Մասիս», Կ. Պոլիս, 1886, 22 փետրվարի, էջ 729—730։

21 Տե՛ս Հակոբ Շամախեցի, *Թուղթ առ Քրիստոսազոր արքայն Վրաց Հերակլ վասն ասպատակելոյ լէկզեացն յերկիրս մեր*, Մատենադարան, ձեռագիր № 2911, էջ 101բ։

*գրավել այն, ուղղվում են դեպի Դարաքյանդ, որտեղ ամրացել էին բազմաթիվ հայեր և ադրբեջանցիներ։ Լեզգիները գրավում են ամրոցը, գերում բոլորին, կողոպտում ամեն ինչ և վերադառնում։ Երևանի խանի խնդրանքով Հերակլը հարձակվում է լեզգիների վրա և ազատում գերիներին*[22]։

*Դրանից հետո էլ շարունակվում էին այդ ավերիչ արշավանքները, որոնցից ամենից ավելի տուժում էր Վրաստանը։ Տնտեսապես քայքայված այդ երկիրն ի վիճակի չէր այլևս կազմակերպելու հուսալի դիմադրություն, ուստի վրաց թագավորները որոշում են օգնություն ստանալու համար դիմել հյուսիսի հզոր հարևանին՝ Ռուսական պետությանը։ Այդ նպատակով 1760 թվականին Ռուսաստան է մեկնում Թեյմուրազ II թագավորը։*

*Ստեղծված ծանր կացությունից դուրս գալու հույսը Ռուսաստանի հետ էր կապում նաև ամենայն հայոց կաթողիկոս Հակոբ Շամախեցին, որը 1760 թվականի հուլիսին հատուկ կոնդակ է գրում Ելիզավետա կայսրուհուն և նկարագրելով լեզգիների արշավանքի հետևանքով Վրաստանին ու Հայաստանին հասած մեծամեծ հարվածները՝ եկեղեցիների ավերվելը, բնակավայրերի ամայացումն ու քրիստոնյաների տառապանքները, խնդրում է ընդառաջել Թեյմուրազ թագավորին։ Կոնդակում գրված է. «Եւ մի անտես և անյոյս առնիցէք զմեծահաւատ արքայդ այդ եկեալդ առ ոտս Ձեր և զմեզ աստի աղաչօղս, այլ որպէս հոգայք զՁեր օրհնեալ և բարգաւաճեալ ազգդ, խնդրեմք նոյնպէս զազգս մեր ողորմելի և զազգն վրաց հոգալ, վասն զի մեք ևս եմք հանապազ աղոթօղք սակս հաստատութեան թագաւորութեանդ Ձերոյ»*[23]։

*Չնայած կաթողիկոսը հնարավորություն չի ունեցել կոնդակն առաքելու հասցեատիրոջը*[24]*, այնուհանդերձ այն մի կարևոր վավերագիր է ռուսական արքունիքի հետ էջմիածնի հարաբերությունների և, ընդհանրապես, հայ ազատագրական շարժման վերաբերյալ։ Կոնդակն անտարակույս գրված է Վրաց թագավորների խորհրդով և կասկածից վեր է, որ Թեյմուրազ II-ը ռուսական իշխանություններին հայտնած պետք է լինի հայոց կաթողիկոսի տրամադրությունների ու դիրքորոշման մասին։*

*Հակոբ Շամախեցու հաջորդ Սիմեոն Երևանցի կաթողիկոսը ավելի եռանդուն և գործնական քայլերի դիմեց էջմիածնի և ռուսական արքունիքի միջև կապ հաստատելու ուղղությամբ։ Դրա համար առիթ ծառայեց ռուսահայերի թեմը էջմիածնի կաթողիկոսությանը ենթարկելու խնդիրը։ Ռուսահայոց հոգևոր առաջնորդը, սովորաբար, նշանակվում էր էջմիածնի կաթողիկոսների կողմից։ 1749 թվականից, սակայն, այդ կարգը խախտվում է և ռուսահայերը մտնում են Գանձասարի կաթողիկոսի վիճակի մեջ։ Այդ դրությունը շարունակվում է 17 տարի։ 1766 թվականին Սիմեոն Երևանցին էջմիածնում գումարում է եպիսկոպոսական ժողով, որտեղ որոշվում է այդ առթիվ հատուկ գրությամբ դիմել Եկատերինա II կայսրուհուն ու նրա որդի Պավել Պետրովիչին։ Կաթողիկոսի կոնդակը (գրված 1766թ. օգոստոսի 1-ին) Ռուսաստան է տանում էջմիածնի միաբան Դավիթ վարդապետը։*

---

22 Տե՛ս Հակոբ Շամախեցու «Թուղթ առ մեծազօր Հերակլ արքայն Վրաց՝ վասն ազատելոյ զգերիսն, օրհնութիւն և շնորհակալութիւն և իրիշայ վասն երկրիս», Մատենադարան, ձեռագիր № 2911, էջ 102ա։

23 Մատենադարան, ձեռագիր № 2911, էջ 99բ, տե՛ս նաև «Դիւան հայոց պատմութեան», Գ, Թիֆլիս, 1894, էջ 121։

24 Տե՛ս *А. Р. Иоаннисян*, Иосиф Эмин, Ереван, 1946, էջ 73—75։

Եկատերինա II-ը սիրալիր ընդունելություն է ցույց տալիս կաթողիկոսի պատվիրակին և 1768 թվականի հուլիսի 30-ի հրովարտակով վերականգնում էջմիածնի իրավունքները ռուսահպատակության նկատմամբ։ Հրովարտակի մեջ Եկատերինա II-ը հատուկ նշում է, որ հետևելով նախորդների՝ Պետրոս Մեծի և Եկատերինա Ալեքսեևնայի օրինակին, խոստանում է բոլոր հայերին, առավելապես Ռուսական կայսրության սահմաններում հաստատվածներին, պահել իր բարձրագույն կայսերական հովանավորության ներքո[25]։

Ռուսական կայսրուհու հայտարարությունը մեծ ոգևորություն առաջացրեց էջմիածնում։ Սիմեոն Երևանցին նրա պատվին հեղինակեց հատուկ մաղթանք, որն այնուհետև կատարվում էր հայկական եկեղեցիներում շուրջ մեկ ու կես դար[26]։

Սիմեոն Երևանցու և Եկատերինա II կայսրուհու փոխանակած գրությունները սկիզբ դրեցին այն կապերին, որոնք հետագա տասնամյակների ընթացքում զորացան՝ ի նպաստ Արևելյան Հայաստանի ազատագրման գործին։

## 2. ՀԱՅ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ՀՆԴԿԱՀԱՅ ԿԵՆՏՐՈՆԸ։ ՀՈՎՍԵՓ ԷՄԻՆԻ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ

Ազատագրական շարժմանն իրենց ակտիվ մասնակցությունը բերեցին նաև Հնդկաստանում հաստատված հայերը, որոնց թիվը XVIII դարի ընթացքում գնալով մեծանում էր։ Այդ ժամանակ հայկական կազմակերպված գաղութներ կային Հնդկաստանի Մադրաս, Կալկաթա, Սուրաթ, Բոմբեյ, Հայդարաբադ, Դեհլի, Ջիլրա, Մուրշիդաբադ և այլ քաղաքներում։ Հնդկահայերի քանակի մասին որոշակի տվյալներ չեն պահպանվել. մոտավոր հաշվումներով այն չպետք է պակաս լիներ 10 հազար մարդուց[27]։

Հնդկահայերի հիմնական զբաղմունքը առևտուրն ու արհեստներն էին։ Առանձնապես բարձր դիրքի էին հասել հնդկահայ առևտրականները, որոնց գործունեության համար Հնդկաստանում ստեղծված էին նպաստավոր պայմաններ։ Եվրոպական դրամատերերը դեռևս չէին կարողացել տիրել ողջ Հնդկաստանին և պայքարի մեջ էին ինչպես միմյանց, այնպես էլ կիսանկախ հնդկական իշխանների հետ։ Հայ առևտրականները վայելում էին հնդիկ իշխողների վստահությունը և նրանցից ստացել էին մի շարք արտոնություններ. նրանց առջև բաց էին ինչպես Հնդկաստանի ծովափնյա, այնպես էլ հեռավոր վայրերի շուկաները։ Առևտրական պայմանագիր ունենալով անգլիական «Արևելա-հնդկական» ընկերության հետ, հայերը միաժամանակ օգտվում էին այդ ընկերության ընձեռած պայմաններից՝ կարող էին երթևեկել անգլիացիների ազդեցության տակ գտնվող շրջաններում և իրենց ապրանքները փոխադրել անգլիական նավերով։ Հայ մեծահարուստ վաճառականներից ոմանք էլ ունեին իրենց սեփական նավերը և նավարկում էին եվրոպական երկրների դրոշներով[28]։

---

[25] «Դիւան հայոց պատմութեան», գիրք Գ, Թիֆլիս, 1894, էջ ԾԻԹ։

[26] *Г. Эзов*, Начало сношений Эчмиадзинского патриаршего престола с русски правительством, Тифлис, 1901, էջ 5—8։

[27] «Փորձ», Թիֆլիս, 1881, № 2, էջ 6։

[28] Տե՛ս *M. J. Seth*, Armenians in India from the earliest times to the present day, Calcutta, 1937, էջ 581։

Հայ վաճառականները շահեկան առևտրի շնորհիվ, շուտով մեծ գումարներ են կուտակում։ Օրինակ, Նոր Ջուղայեցի Մարգարյան եղբայրները 100.000 ռուփի դրամագլուխը երեսուն տարում հասցնում են 1.736.000 ռուփիի[29]։ Շահամիր Շահամիրյանը, որը Նոր Ջուղայից Հնդկաստան էր գաղթել որպես հասարակ գերձակ, թանկագին քարերի ու չոր մրգի առևտրով հսկայական հարստություն էր կուտակել և իր ժառանգներին թողեց 23 միլիոն ռուփի[30]։

Հայ առևտրականներից ոմանք նույնիսկ ձեռք էին բերել առևտրի առանձին ճյուղերի մենաշնորհը։ Օրինակ, մադրասցի առևտրական Պետրոս Ոսկանը XVIII դարի կեսերին ստանում է Մադրաս ապրանքներ ներմուծելու և շրջակա իշխանությունների ներքին մասերի հետ առևտուր անելու մենաշնորհը[31]։ Բացի առևտրական գործարքներից, հնդկահայ առևտրականներն իրենց են ենթարկում նաև արտադրության որոշ բնագավառներ։ Հենվելով Շերերի «Պատմություն Անգլիո վաճառականութեան» գրքի վրա, Լեոն պատմում է, որ հայ վաճառականները Հնդկաստանում գնում էին բամբակ և բաժանում բամբակ մանողներին, ստանալով նրանց թելը, այն հանձնում էին կտավագործներին, իսկ հետո պատրաստի կտավը ուղարկում Բանդար-Աբբաս նավահանգիստը, իսկ այնտեղից էլ արտահանում ոչ միայն Իրան և Թուրքիա, այլև եվրոպական շատ երկրներ[32]։

XVIII դարի երկրորդ կեսին դրությունը փոխվեց։ Անգլո-ֆրանսիական մրցակցությունը, որ այդ ժամանակ ծավալված էր Հնդկաստանում, ավարտվում է հօգուտ Անգլիայի։ Անգլիացիները շարունակում են Հնդկաստանում նորանոր տարածություններ գրավել և այդ նվաճած վայրերում սահմանափակել ինչպես եվրոպացի, այնպես էլ հայ վաճառականների իրավունքները։ Հայ առևտրական բուրժուազիան հեշտությամբ չի զիջում իր դիրքերը. նրա ներկայացուցիչներից շատերը միանում են իրենց երկրի անկախությունը պաշտպանող հնդիկներին և պայքար մղում անգլիացիների դեմ։ Չկարողանալով մրցել բրիտանական առևտրականների հետ, հայ առևտրականները կապիտալները փրկելու համար սկսում են նոր շուկաներ որոնել։ Նրանց հայացքներն ուղղվում են դեպի Հայաստան, դեպի իրենց հեռավոր հայրենիքը, որտեղ հարմար պայմաններ ստեղծելու դեպքում առևտրական կապիտալը կարող էր գտնել գործունեության լայն ասպարեզ։ Սակայն այդ ժամանակ Հայաստանը գտնվում էր օտար տիրապետության ներքո, հայկական պետականությունը դադարել էր գոյություն ունենալուց, Հայոց երկրում չկար անձի և գույքի ապահովություն։ Ուստի հնդկահայ առևտրական կապիտալի գաղափարախոսները երազում էին օտար բռնակալներին Հայաստանից դուրս քշելու, անկախ պետության և առևտրական կապիտալի համար ազգային շուկա ստեղծելու մասին։ Սակայն միայն այս հանգամանքը չէր, որ դրդում էր հնդկահայ մեծահարուստներին մտածելու հայրենիքի ազատագրության մասին։ Հենց հայրենիքի ողբալի դրությունը, ժողովրդի սարկացված, ծայր աստիճան հուսահատական վիճակը, հայրենի երկրի կարոտով տոչորվող մարդկանց ստիպում

---

29 Տե՛ս Ս. Վ. Տեր-Ավետիսյան, Նյութեր Հնդկաստանի հայ գաղութի պատմության համար, «Երևանի պետական համալսարանի գիտական աշխատությունների ժողովածու», հատ. 13, Երևան, 1940, էջ 6։

30 Տե՛ս „Кавказ", Тифлис, 1883, № 100.

31 Տե՛ս M. J. Seth, Armenians in India, էջ 581։

32 Տե՛ս Լեո, Հայկական տպագրություն, հատ. 2, Թիֆլիս, 1901, էջ 450։

էր մտահոգվելու նրա ազատագրման խնդրով, որը օրակարգի հարց էր դարձել այդ ժամանակներում։ Ազատագրական շարժման հնդկահայ գործիչների վրա մեծ ազդեցություն են ունեցել նաև եվրոպական լուսավորիչների առաջավոր գաղափարները, նրանց ոգևորել է Մովսես Խորենացու «Հայոց պատմությունը», իրենց անկախության համար Ղարաբաղի մելիքների մղած հերոսական պայքարը։

XVIII դարի երկրորդ կեսում ծավալված հայ ազատագրական շարժումը տվեց մի շարք նշանավոր դեմքեր, որոնք զգալի դեր խաղացին հայ ժողովրդին «թմրության քնից» սթափեցնելու և հայրենիքի ազատագրման գաղափարը տարածելու ուղղությամբ։ Այդ գործիչներից առավել աչքի ընկնողը Հովսեփ Էմինն էր, հնդկահայ մեծ հայրենասերը, որն իր կյանքի միակ նպատակն էր դարձրել օտար տիրապետությունից Հայաստանի ազատագրման գործը։

Հովսեփ Էմինը ծնվել է 1726 թվականին Իրանի Համադան քաղաքում։ Նրա հայրը վաճառական էր։ Ուրիշ շատերի նման նրանց ընտանիքն էլ ենթարկվում է բռնությունների ու կողոպուտի, ուստի նրանք ստիպված են լինում հեռանալ Հնդկաստան, հաստատվել Կալկաթայում։

Էմինի հայրը ձգտում էր իր որդուն դարձնել վաճառական, սակայն ապարդյուն։ Փոքր հասակից ականատես լինելով օտար տերերի դաժան բռնակալության ներքո գտնվող իր ժողովրդի տառապանքներին, Էմինը երազում էր տիրապետել ռազմական արվեստի գաղտնիքներին, դառնալ զինվորական և ոտքի հանել հայ ժողովրդին՝ օտար լուծը թոթափելու համար։ Նրա վրա մեծ ազդեցություն էր գործել Հընդկաստանում եվրոպացիների զինվորական կազմակերպությունը. նա ոգևորվել էր Հայոց պատմությամբ, քաջատեղյակ էր Արցախի հայության ազատագրական պայքարին։ Եվ ահա պատանի հայրենասերը որոշում է մեկնել Անգլիա, ռազմական գործ սովորել հայրենի երկրի ազատագրմանը նվիրվելու համար։



Հովսեփ Էմին

1751 թվականին Էմինը նավաստի է վարձվում «Արևելա-հնդկական ընկերության» նավերից մեկի վրա իր նման մեկ այլ հայ երիտասարդի հետ, ուղևորվում դեպի Անգլիա։ Յոթ ամսվա ծանր ճանապարհորդությունից հետո նրանք հասնում են Լոնդոն։ Սկսվում են ծանր օրեր Էմինի համար։ Չունենալով ապրուստի միջոցներ նա իր գոյությունը պահպանում է պատահական վաստակով։ Կարևոր նշանակություն է ունենում նրա համար պատահական հանդիպումը անգլիական գրող Էդմոնդ Բըրքի հետ, որը վեր է ածվում բարեկամու-

թյան։ Նա աշխատանք է տալիս էմինին, ղեկավարում նրա ինքնուսուցման գործը։

Մեկ այլ, նույնպես պատահական ծանոթություն, բաց է անում էմինի առջև անգլիական բարձր հասարակության դռները։ Այդ նոր ծանոթը անգլիական արիստոկրատիայի աչքի ընկնող ներկայացուցիչներից մեկը՝ լորդ Նորտումբերլենդն էր, որին չափազանց հետաքրքրում է իր ժողովրդի ազատության խնդրով հայրենի տունը լքած այդ երիտասարդը։ Սրա միջնորդությամբ էմինը բարեկամություն է հաստատում անգլիական մի շարք աչքի ընկնող գործիչների հետ և ընդունվում Վուլվիչի արքայական զինվորական ակադեմիան։ Վերջապես էմինը հնարավորություն ստանալով իրականացնել զինվորական գիտելիքներ ձեռք բերելու իր վաղեմի երազանքը, ակադեմիայում հմտանում է հրետանային գործի և ամրոցաշինության մեջ։

1757 թվականին էմինը մեկնում է Գերմանիա՝ մասնակցելու անգլո-պրուսական զորքերի կողմից Ֆրանսիայի դեմ մղվող պատերազմին, որը հայտնի է Յոթնամյա պատերազմ անունով։ Նրա նպատակն էր ձեռք բերել նաև պատերազմ վարելու գործնական գիտելիքներ։

Անգլիա վերադառնալուց հետո էմինը փորձեր է կատարում անգլիական պետական գործիչներին հետաքրքրելու Հայաստանի ազատագրման իր ծրագրով և ստանալու նրանց քաղաքական օժանդակությունը։ Այս նպատակով էմինը տեսակցում է Անգլիայի վարչապետ Պիտտի հետ, բայց շուտով պարզ է դառնում նրա համար, որ Անգլիայի շահերը միանգամայն հակասում են հայկական պետականության վերականգնման իր ձգտումներին։ Համոզվելով, որ անգլիական իշխանություններից օժանդակություն ակնկալելը անիմաստ է, Հովսեփ էմինը 1759 թ. մեկնում է Հայաստան, անցնում էրզրում, ապա՝ էջմիածին։

Այստեղ նա հնարավորություն է ունենում ավելի մոտիկից ծանոթանալու հայկական կյանքին, Անդրկովկասի քաղաքական կացությանը։ Այդ ծանոթությունն ստիպում է նրան փոփոխություններ մտցնելու իր ծրագրի մեջ։ Եթե նախկինում նա ձգտում էր լինել Ղարաբաղում և Վրաստանում, նրանց իշխողների օգնությամբ ազատագրել հայրենիքը, այժմ նա համոզվում է, որ միայն տեղական ուժերով անհնարին է իրագործել իր ծրագիրը։ Միակ ուժը, որն ընդունակ էր այդ անելու, Ռուսական կայսրությունն էր, ուստի էմինը որոշում է վերադառնալ Անգլիա, ձեռք բերել համապատասխան հանձնարարականներ և ապա մեկնել Ռուսաստան[33]։

1761 թվականի գարնանը էմինը հասնում է Լոնդոն։ Այստեղ նա անձնական ծանոթություն է հաստատում ռուսական դեսպան իշխան Գոլիցինի հետ, նրանից ստանում Ռուսաստան մեկնելու անցագիր և հանձնարարական՝ ուղղված արտաքին գործոց վարչությանը։

1761 թվականի աշնանը հասնելով Պետերբուրգ, էմինը տեսակցություն է ունենում ռուսական կանցլեր կոմս Մ. Ի. Վորոնցովի հետ, մանրամասն պատմում իր նպատակների մասին։

Վորոնցովը քաջ գիտակցում էր մահմեդական տիրապետությունից անդրկովկասյան քրիստոնյաների ազատագրման նպաստավոր լինելը Ռուսաստանի քաղաքական շահերի համար, ուստի համակրանքով է վերաբեր-

[33] Տե՛ս Р. А. Иоаннисян, Иосиф Эмин, էջ 70—80։

վում Էմինին և օգնություն ցույց տալիս նրան[34]։ Նա անցագիր է տալիս Էմինին և նրա մասին հանձնարարական նամակ գրում Հերակլ թագավորին։ 1762 թվականի մարտի կեսերին Էմինը դուրս է գալիս և Մոսկվայի վրայով մեկնում Աստրախան։ Քանի որ ձյան պատճառով կովկասյան ճանապարհները փակ էին, Էմինը չի կարողանում շարունակել իր ուղին և ինը ամիս մնում է Աստրախանում։ Բայց նա ժամանակը իզուր չէր վատնել հայաշատ այդ քաղաքում։ Երբ նա վերջապես դուրս է գալիս Աստրախանից, նրան են միանում նաև աստրախանցի մի խումբ հայ երիտասարդ կամավորներ՝ իրենց ձիերով ու զենքերով։ Այդ խանդավառ երիտասարդները պատրաստ էին կռվելու հայրենիքի ազատագրման համար։ Երբ Էմինը իր խմբով մոտենում է Ղզլար քաղաքին, նրանց են միանում նաև ղզլարցի զինավառ երիտասարդներ[35]։ Սակայն փաստաթղթերում եղած մի անճշտության պատճառով Ղզլարում Էմինին թույլ չեն տալիս շարունակելու ճանապարհը։ Կամավորներին նա ուղարկում է Թիֆլիս, իսկ ինքը Աստրախանի վրայով վերադառնում է Մոսկվա՝ այնտեղից Պետերբուրգ անցնելու համար։ Այս անգամ մայրաքաղաք հասնելու անհրաժեշտությունը վերանում է, որովհետև Եկատերինա II կայսրուհին իր ողջ արքունիքով ժամանել էր Մոսկվա։

Էմինը հանդիպումներ է ունենում կանցլեր Վորոնցովի և փոխ-կանցլեր Գոլիցինի հետ։ Վերջինից տեղեկանում է, որ կայսրուհին դրական վերաբերմունք ունի իր ծրագրերի նկատմամբ և պատրաստ է օգնելու, միայն թե ժամանակը դեռևս հասունացած չի համարում այդ գործի համար։

Ստանալով նոր անցագիր ու իր բարեկամների նյութական օժանդակությունը, Էմինը 1763 թ. փետրվարին Աստրախանի վրայով ճանապարհվում է դեպի Վրաստան։ Մոսկվայում նրան է միանում իր ազգական Մովսես Բաղրամյանը՝ Մադրասի հայրենասիրական խմբակի ապագա ակտիվ անդամներից մեկը։

Էմինի համբավը բավականին տարածվել էր։ Հայերը թե Աստրախանում և թե Հյուսիսային Կովկասի բնակավայրերում ընդունում էին նրան որպես Հայաստանի ապագա ազատարարի։

Պատվով ու ջերմությամբ է ընդունում նրան նաև Հերակլ թագավորը։ Վերջինս ուշադրությամբ լսում է Եվրոպայում կրթություն ստացած այդ խանդավառ հայ զինվորականի առաջարկությունները՝ լուսավորություն տարածելու, զինվորական դպրոցներ հիմնելու և այլ բարեփոխություններ կատարելու վերաբերյալ։

1763 թ. ամռանը Քարիմ խանի զորքերի Վրաստան ներխուժելու վտանգի ժամանակ Էմինը հանձնարարություն է ստանում իր ջոկատի մեջ որքան կարելի է շատ երիտասարդ հայեր ընդգրկելու։ Մի քանի օրում նա հավաքում է 800 հոգի։ Էմինը չափազանց ոգևորվել էր՝ կարծելով, թե Իրանի և Վրաստանի ռազմական ընդհարումը հնարավորություն կտար իրագործելու իր ծրագիրը։ Սակայն Քարիմ խանի թիկունքում ապստամբություն է բարձրանում և նա ստիպված է լինում վերադառնալ Սպահան։ Հերակլի կարգադրությամբ Էմինը ցրում է իր զորախումբը և Աստրախանից եկած կամավորների հետ միասին

[34] Տե՛ս А. Р. Иоаннисян, Иосиф Эмин, էջ 94—95։

[35] Տե՛ս «Հովսեփ Էմինի կյանքն ու արկածները», Հովսեփ Էմինի անգլերեն բնագրեն թարգմանեց Հ. Խաչմանյան, Բեյրութ, 1958, էջ 202—203։

մասնակցում Վրաստան ներխուժած լեզգիների դեմ մղվող կռիվներին։ Մի որոշ ժամանակ Հերակլի համաձայնությամբ նա ձեռնամուխ է լինում վրաց զորքը եվրոպական կարգով վարժեցնելու գործին[36]։

Դեռևս Մոսկվայում եղած ժամանակ Էմինը ծանոթացել էր Մշո ս. Կարապետ վանքի վանականներից մեկի՝ տեր Սուքիասի հետ և իմացել, որ իր ծրագրերը դրական վերաբերմունքի կարժանանան այդ վանքի վանահայր Հովնանի կողմից։ Ուստի նա նամակագրական կապ է հաստատում նաև Հովնանի հետ։ Վերջինս լիակատար հավանություն է տալիս նրա ծրագրերին և հավաստիացնում, որ հազարավոր արևմտահայեր պատրաստ են նրա դրոշի տակ մտնելու և պայքարելու՝ իրենց երկիրը թուրքական դաժան տիրապետությունից ազատագրելու համար։

## 3. ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ ԱՐԵՎՄՏՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

XVIII դարի կեսերին Օսմանյան կայսրությունը գտնվում էր քաղաքական և տնտեսական խորը ճգնաժամի մեջ։ Կյանքի բոլոր ասպարեզներում զգացվում էր թուրքերի հետամնացությունը. անկումային վիճակում էր պլուղատնտեսությունը, զարգացման միջնադարյան մակարդակին էին մնացել արհեստներն ու արդյունագործությունը, անվերջանալի պատերազմների հետևանքով խախտվել էր բնականոն առևտուրը։ Կենտրոնական իշխանության թուլացման և երկրի ծայրահեղ մասնատվածության հետ միաժամանակ ուժեղանում էին կենտրոնախույս ձգտումները։ Ծայրամասերում մի շարք փաշաներ փաստորեն վեր էին ածվել կիսանկախ տիրակալների, նրանցից ոմանք ժառանգական էին դարձրել իրենց պաշտոնը։ Թուրքական պետության թուլացման և աշխատավորների անլուր շահագործման վերաբերյալ հետաքրքրական տեղեկություններ կան թուրք հեղինակ Ջևդեթ-փաշայի «Պատմության» մեջ։ Ահա թե նա ինչպես է բնորոշում XVIII դարի վերջին տասնամյակներում Թուրքիայում ստեղծված կացությունը. «Որոշ ժամանակից ի վեր բռնությունների ու անիրավությունների աժեն սահմանը անցել էր և Օսմանյան կայսերական երկրում ռայաները մեծ թշվառության էին ենթարկվել, իրենց երկիրն ու հայրենիքը թողնելով՝ ցիր ու ցան եղել։ Դրանով երկիրն ավերվել՝ ագարակների ու բուսերի բնի էր վերածվել։ Այդ պատճառով Օսմանյան կառավարությունը պատերազմական գործում անկարող էր դարձել, զրկվել հաղթանակից...»։ Ջևդեթ-փաշան փորձում է բացատրել այդ թուլացման պատճառը. «Երկրի այս աստիճան ավերվածության պատճառը միայն պատերազմական շարժումները չէին. երկրի ավագանու, կադիների, նայիբների և այլ պաշտոնյաների կողմից, իրենց օգտին, պատերազմական տուրքերից մի քանի անգամ ավելի գումարներ աղքատների վրա բաժանելով, բռնությամբ և գազանությամբ գանձումը և նման բռնությունները թերևս ավելի մեծ տեղ էին բռնում։ ...Երկրի շինարարությունը կամ ռայաների բարօրությունը միտք անգամ չբերելով, նրանք իրենց ծախքերը հանելու և իրենց դրությունը բարելավելու համար աղքատների ձեռքից խլում էին նրանց ունեցվածքը, վաճառել տալիս նրանց անասուններն ու կենդանիները, հովանավորում ու քաջալերում ավա-

---

[36] Տե՛ս А. Р. Иоаннисян, Иосиф Эмин, էջ 137—138։

գանինների բռնությունները, որանք էլ մյուս կողմից կողոպտում էին աղքատներին»[37]։

Օգտվելով Օսմանյան կայսրության ընդհանուր թուլացումից, հպատակ ժողովուրդները ձգտում էին թոթափել թուրքական տիրապետության լուծը։ Ազգային-ազատագրական շարժումները ուժեղ էին հատկապես բալկանյան երկրներում։ Պատրաստ էին ապստամբելու հույները, Սերբիայի, Բոսնիայի, Հերցեգովինայի, Չերնոգորիայի և այլ վայրերի սլավոնական ժողովուրդները, որոնք օգնություն ստանալու համար դիմել էին Ռուսաստանին։ Անկախանալու լուրջ ձգտումներ է ցուցաբերում նաև Իմերեթիայի թագավոր Սողոմոնը, որին հաջողվում է մի շարք հաղթանակներ տանել թուրքական զորքերի նկատմամբ։ Թուրքական բռնակալության դեմ ազատագրական շարժում է սկսվում նաև Արևմտյան Հայաստանի մի շարք գավառներում։

Արևմտյան Հայաստանի բնակչության վիճակը XVIII դարի երկրորդ կեսին գնալով վատթարանում էր։ Թուրքական փաշաների և քուրդ բեյերի անսանձ բռնությունների, կրոնական հալածանքների և անհագուրդ հարկապահանջության հետևանքով ստեղծված ծանր դրությունը ավելի էր բարդանում շնորհիվ այն բազմաթիվ կռիվների, որ մերթ ընդ մերթ ծագում էին տեղական իշխողների միջև։ Վերջիններս չէին կամենում ճանաչել կենտրոնական իշխանությունը, ուստի սկսվում էին ընդհարումներ կառավարական զորքերի և տեղական ուժերի միջև։ Այդ կռիվների հետևանքով ավերվում և ամայանում էին բնակավայրերը, բնակիչները ոչնչանում, գերի էին տարվում կամ էլ բռնում արտագաղթի ուղին։ Օրինակ, Մանազկերտի շրջակայքում 350 գյուղ կար, մեծ մասամբ հայկական։ 1762 թ. քրդերի միջև սկսված ընդհարումների պատճառով այդ գյուղերից մնաց միայն հարյուրը։ Դարի վերջին նոր ընդհարումներ եղան Խնուսի բեյի հետ. նորից քայքայում և տեղահանում։ Գյուղերը նորից ավերվեցին և նրանց թիվը հասավ քսանի[38]։ Հայերը ստիպված էին հոգալ քրդական զորախմբերի ծախքը[39], երբեմն էլ ամրություններ կառուցել նրանց համար։ Մուշի Ալայեդդին բեյը, մի քուրդ ցեղապետ, 1741 թ. մշեցի հայերի ձեռքով իր համար կառուցել է տալիս մի ամրակուռ բերդ և ապստամբում Բաղեշի տիրոջ դեմ։ Թե որքան աշխատանք և միջոցներ են ծախսվել այդ բերդը կառուցելու համար, երևում է այն բանից, որ երբ մի քանի տարի հետո թուրքերը գրավում են բերդը և որոշում քանդել, դրա համար նրանց անհրաժեշտ է լինում 40 օր, իսկ քանդողների թիվը հասել է 15 հազարի[40]։ 1747 թ. Էրզրումի և Բայազետի փաշաներն իրենց զորքերով հարձակվում են Մուշի վրա, գրավում քաղաքը, ծանր տուգանք դնում քաղաքացիների վրա։ Ապստամբ բեյին թուլացնելու համար թուրքական զորքերը հրդեհում են այդ հայաշատ գավառի գյուղերը[41]։

Անտանելի էր հարկապահանջությունը։ Հակոբ Տիվրիկցի ժամանակագիրը պատմում է, որ հարկի տակ էին դրված բոլորը՝ սկսած հինգ տարեկան

---

[37] «Թուրքական աղբյուրները Հայաստանի, հայերի և Անդրկովկասի մյուս ժողովուրդների մասին», կազմեց Ա. Խ. Սաֆրաստյան, հատ. Ա, էջ 277—278։

[38] Տե՛ս Լեո, Հայոց պատմություն, հատ. 3, էջ 735։

[39] Տե՛ս Պ. Մուրադյանց, Նկարագիր Ս. Հովհաննու վանուց և վիճակի նորին Բագրևանդու, «Արարատ», 1889, հունվար, էջ 34։

[40] Տե՛ս Լեո, Հայոց պատմություն, հատ. 3, էջ 735։

[41] Տե՛ս նույն տեղում, էջ 734։

երևաններից[42]։ Հարկերից խուսափողները ենթարկվում էին ծանր պատիժների։ Սովորական հարկերին գումարվում էին նաև պատերազմական առիթներով դրված տուրքերն ու դանազան պարտավորությունները։ Չկատարողները ստիպված էին լինում լքել ամեն ինչ և հեռանալ իրենց բնակավայրերից։ Երբ 1775 թ. Սախըր փաշան իր մարդկանցով կանգ է առնում Տիվրիկում, նրանց ամբողջ ծախսը մեծ բռնությամբ և ճնշումներով հավաքում են քրիստոնյաներից. «Այսպէս զամենեքեան բռնադատութեամբ պէս պէս նեղութեամբ հատուցին զպարտս իւրեանց,—վկայում է Հակոբ Տիվրիկցին,—ոմանք պարտըլան եղեալ գնացին ի յօտար երկիր, և ոմանք չքաւորեալ փախեան ի յօթևանէն իւրեանց, և բազում էսկէր կայր ի վերայ երկրի ամենայն տեղիս»[43]։

Իրավազուրկ և հարստահարված հայ աշխատավորները երազում էին թուրքական ատելի լուծը թոթափելու և անկախություն ձեռք բերելու մասին։ Բայց նրանք քաջ գիտակցում էին, որ միայն սեփական ուժերով անզոր կլինեն պայքարելու թուրքական կանոնավոր զորքերի դեմ, անհրաժեշտ էր օգնություն ստանալ դրսից, իսկ այդ հնարավոր էր ակնկալել միայն քրիստոնյա պետություններից։ Արևմտյան Հայաստանում ծավալված ազատագրական շարժման կենտրոնը Մուշն էր, իսկ գլխավոր ոգեշնչողն ու կազմակերպիչը՝ Մշո ս. Կարապետ վանքի վանահայր Հովնանը։

Իմանալով Հովսեփ Էմինի ձգտումների մասին, Հովնանը հայտնում է նրան, որ ինքը հնարավոր ամեն ինչ կանի թուրքերի դեմ ապստամբություն սկսելու համար։ Եվ, իսկապես, կարճ ժամանակամիջոցում նա մեծ աշխատանք է տանում ապստամբությունը նախապատրաստելու ուղղությամբ։ Հովսեփ Էմինը Վրաստանում եղած ժամանակ նրա մոտ է ուղարկում իր փոքրիկ ջոկատի հրամանատար Սիմոնին։ Երբ Հերակլի պահանջով Էմինը ստիպված է լինում ցրել կամավորների իր ջոկատը, նրանց ուղարկում է Արևմտահայաստան[44]։ Այդ կամավորները, որոնց մեծ մասը ռուսահայեր էին, հատուկ առաջադրանքով էին ուղարկված Արևմտահայաստան և դա անպայման կապ ուներ Հովնանի նախապատրաստությունների հետ[45]։

Պատասխան նամակում Հովնանը վստահեցնում էր Էմինին, որ թուրքահայերն անմիջապես նրան կմիանան, եթե նա Արևմտյան Հայաստան մտնի վրացական զորքի հետ միասին[46]։ Հաջորդ նամակներում Հովնանը մանրամասն տեղեկություններ է հաղորդում իր պատրաստությունների մասին։ «Անցնող տասնմեկ ամիսներին գրելով էի զբաղած,—հայտնում է նրան Հովնանը,—ինձ շատ դյուրին եղավ՝ ձեզնով շահագրգռել ու ձեր հերոսական մտածողությամբ համակել բոլոր Պոլսի, Զմյուռնիայի, Կեսարիայի, Թոխաթի, Էրզրումի, Դիարբեքիրի, Վանի և այլ վայրերի անվանի հայերին»։ Այդ նույն նամակից պարզվում է, որ Հովնանը կապերի մեջ է մտել նաև եզդիների և ասորիների հետ, որոնք պատրաստակամություն էին հայտնել միանալու հայ ապստամբներին[47]։

Արևմտյան Հայաստանում առկա ազատագրական այս խմորումների և

---

[42] Տե՛ս «Մանր ժամանակագրություններ», հատ. 2, էջ 463։
[43] Նույն տեղում, էջ 457։
[44] Տե՛ս «Յովսէփ Էմին», էջ 245։
[45] Տե՛ս А. Р. Иоаннисян, Иосиф Эмин, էջ 147։
[46] «Յովսէփ Էմին», էջ 245։
[47] Տե՛ս նույն տեղում, էջ 267։

ազատագրության ծրագրերի մասին Հովսեփ Էմինը իրազեկ է պահում Հերակլ թագավորին։ Վրաց թագավորության և Թուրքիայի հարաբերությունները չափազանց լարված էին այդ ժամանակ և վտանգ կար, որ թուրքերը կհարձակվեն Արևելյան Վրաստանի վրա։ Այս պայմաններում, բնականաբար, վրաց թագավորին պետք է, որ հետաքրքրեր թուրքերի թիկունքում հայերի հնարավոր ազատագրության ծրագիրը։ Էմինը նրան առաջարկում է 6.000 ձիավորներով և 10.000 հետևակ զորքով շարժվել դեպի Բայազետ։ «Այստեղից անցեք Էրզրում, որ երեք օրվա ճանապարհ է,—խորհուրդ է տալիս նրան Էմինը,— Ձեր հաջորդ շրջանները պիտի լինեն Բասենը, Սասունը, Բիթլիսը։ Դուք այդտեղ պիտի ունենաք 12.000 հետևակ, մինչև որ թուրքերն արթնանան իրենց հավիտենական թմբիրից։ Ձեզ պիտի միանան Մշո հայերը՝ 10.000 ձիավորներով։ Ձեր ամբողջ ուժը պիտի լինի 40.000»[48]։

Դժվար է ասել, թե իրականության որքան մոտ էին Հ. Էմինի բերած այս թվերը, որոնք քաղված են, թերևս, Հովնանի նամակներից։ Բայց թեկուզ և չափազանցված, այդ տվյալները ցույց են տալիս, որ մեծ թվով հայ գյուղացիներ ու արհեստավորներ պատրաստ էին իրենց զենքով միանալու վրացական զորքին։ Հերակլը հավանություն է տալիս այս ծրագրին և Էմինի մարդկանցից մեկի՝ մահտեսի Գրիգորի ձեռքով 1764 թվականի մարտին խրախուսական նամակ հղում Հովնանին։ Սակայն այս Գրիգորը (որի մոտ էր նաև Հովնանին հասցեագրված Էմինի նամակը) Երևանում ձերբակալվում է խանի մարդկանց կողմից։ Նամակներն ընկնում են վերջինիս ձեռքը և նրանց բովանդակությունը հայտնի է դառնում Սիմեոն Երևանցի կաթողիկոսին։ Շատ չանցած կաթողիկոսը Հերակլ թագավորին ուղարկած իր նամակում խորհուրդ է տալիս հրաժարվել Հովնանի հետ գործակցելուց և իր երկրից վռնդել Էմինին, որի գործունեությունը, ըստ նրա, չափազանց վնասակար հետևանքներ կարող էր ունենալ հայերի համար։ Հարկ է նշել, որ Սիմեոն Երևանցին ընդհանրապես դեմ չէր հայ ժողովրդի ազատագրման գաղափարին, սակայն երկյուղ կրելով, որ հայերի ձգտումները հայտնի կդառնան մահմեդական բռնակալներին, որից և ժողովրդի վիճակն է՛լ ավելի կծանրանա, նա չափազանց զգուշավոր դիրք էր գրավել և դեմ էր բացորոշ գործողություններին։

Հերակլ թագավորը չէր կարող հաշվի չնստել հայերի մեջ անվիճելի հեղինակություն վայելող կաթողիկոսի բացասական այս վերաբերմունքի հետ, բացի այդ, 1764 թ. կեսերին Վրաստանի վրա թուրքական հարձակման վտանգ այլևս չկար։ Ուստի նա Էմինին հեռացնում է Վրաստանից և խզում իր կապերը Հովնանի հետ։ Այնուհետև Էմինը գնում է Հյուսիսային Կովկաս, այնտեղից էլ Ղարաբաղ, ուր մելիքների պայքարը կազմակերպելու ապարդյուն փորձեր կատարելուց հետո, 1767 թ. վերադառնում է Վրաստան և 1766 թ. գարնանը Իրանի ու Իրաքի վրայով մեկնում Հնդկաստան՝ միշտ երազելով պայքարի մեջ մտնել հանուն հայրենիքի ազատության։

## 4. ՄԱԴՐԱՍԻ ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱԿԱՆ ԽՄԲԱԿԻ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ

XVIII դարի 70—80-ական թվականներին Հնդկաստանի Մադրաս քաղաքում հնդկահայ մի խումբ հայրենասեր գործիչներ լուրջ աշխատանք են ծա-

[48] «Հովսեփ Էմին», էջ 259։

վայում Հայաստանի ազատագրման և հայկական անկախ պետություն ստեղծելու գաղափարը քարոզելու ուղղությամբ։ Հնդկահայ առևտրական բուրժուազիայի քաղաքական-հայրենասիրական այդ խմբակի անդամներից հայտնի են Մովսես Բաղրամյանի, Հակոբ և Եղիազար Շահամիրյանների և Գրիգոր Խոջաջանյանի անունները։ Խմբակի ոգեշնչողն ու ղեկավարը մեծահարուստ վաճառական Շահամիր Շահամիրյանն էր։

Հայաստանն ազատագրելու իրենց հույսերը մադրասցիները գրել էին հայ ժողովրդի վրա, որին նրանք ցանկանում էին ապստամբեցնել օտար տիրապետողների դեմ։ Այդ ապստամբությունն, ըստ նրանց, գլխավորելու էին Ղարաբաղի մելիքներն ու էջմիածնի հոգևորականությունը։ Զինված օգնություն ստանալով Ռուսաստանից և Վրաստանից, հայ ապստամբներն ազատագրելու էին իրենց հայրենիքը թուրք-պարսկական տիրապետությունից և այնտեղ ստեղծելու էին հայկական անկախ պետություն։ Այս ծրագիրն իրականացնելու համար մադրասցի հայրենասերները, որոնց վրա շատ զգալի էր եվրոպական լուսավորիչների ազդեցությունը, անհրաժեշտ էին համարում նախ և առաջ լուսավորել հայերին, առաջին հերթին՝ երիտասարդությանը, ծանոթացնել նրանց իրենց հայրենիքի պատմության և աշխարհագրության հետ։ Լուսավորությունն օգնելու էր հայ մարդկանց խորապես գիտակցելու ազատության և անկախության նշանակությունը, օտար տիրապետության ու միապետական կարգի վնասաբերությունը։ Դրանից հետո միայն հնարավոր կլիներ նրանց պայքարի հանել հայրենի երկրի ազատագրության համար։ Լուսավորության գործին նպաստելու համար 1771 թ. Շահամիր Շահամիրյանը Մադրասում հիմնադրում է տպարան։ Այդ տպարանում մադրասցիները լույս են ընծայում Հայաստանի ազատագրման և այնտեղ ստեղծվելիք քաղաքական-հասարակական կարգի վերաբերյալ ծրագրային վավերագրեր, այդ խնդիրների կապակցությամբ աշխույժ նամակագրություն են սկսում Ղարաբաղի մելիքների, էջմիածնի կաթողիկոսի, Հերակլ II թագավորի և բազմաթիվ այլ անձանց հետ։


Շահամիր Շահամիրյան

1773 թվականին, երկար թափառումներից հետո, Մադրաս է ժամանում Հովսեփ էմինը։ Հայ ազատագրական շարժման անխոնջ այդ գործիչը մեծ տպավորություն է թողնում Մադրասի խմբակի անդամների վրա։ Բազմաթիվ անհաջողությունները չէին ընկճել էմինին։ Նրա վճռականությունը և հայրենիքի ազատագրության համար մարտնչելու մեծ փափագը ոգևորում են նաև Մադրասի հայերին, նրանք որոշում են էմինի տրամադրության տակ դնել տարեկան 12.000 ռուփի, այդ գումարով զորախմբեր ստեղծելու համար[49]։

[49] Տե՛ս «Յովսէփ էմին», էջ 455։

Գրիգոր Խոջաջանյանը հայտնում է, որ դրանից բացի ինքը պատրաստ է այդ ծրագրի իրականացման համար կտակել իր հարստության մի մասը՝ պայմանով, սակայն, որ ծրագրին իր հավանությունը տար Սիմեոն կաթողիկոսը։ Այդ ժամանակ Մադրասում էր գտնվում Հովհաննես եպիսկոպոսը, որը հնդկահայերի մոտ հանգանակություն էր կատարում Երուսաղեմի վանքի համար։ Տեղեկանալով մադրասցիների մտադրության մասին, նա միջամտում է այդ գործին և խափանում այն։ Մադրասի մեծահարուստները, բացառությամբ Շ. Շահամիրյանի հրաժարվում են գործարքը վավերացնելուց[50]։

Այս օրերին Շ. Շահամիրյանի տպարանում Մովսես Բաղրամյանի աշխատասիրությամբ լույս տեսավ «Նոր տետրակ, որ կոչի յորդորակ» աշխատությունը, առաջին քաղաքական-հրապարակախոսական գիրքը հայ իրականության մեջ։

Մովսես Բաղրամյանը ղարաբաղցի էր, Մոսկվայում միացել էր իր հեռավոր ազգական Էմինին և շուրջ հինգ տարի եղել նրա հավատարիմ գաղափարակիցը։ Վրաստանում բաժանվելով Էմինից, Մ. Բաղրամյանը տեղափոխվում է Հնդկաստան։ Մադրասում ծանոթանում է Շ. Շահամիրյանի հետ և դառնում նրա որդիների ուսուցիչը և Մադրասի հայրենասիրական խմբակի ամենաեռանդուն անդամներից մեկը։

«Նոր տետրակի» նպատակն էր հայ երիտասարդների մեջ սեր արթնացնել Հայաստան երկրի նկատմամբ, ծանոթացնել նրանց հայ ժողովրդի անցյալի ու նրա հերոս պաշտպանների սխրագործությունների հետ։ «Նոր տետրակում» Հայաստանի հերոսական անցյալին հակադրված է տխրալի առօրյան, երբ երկիրը բաժան-բաժան էր եղել օտար տիրապետողների միջև։ Ցույց է տրված, թե ինչպես են օտարները կողոպտում հայ ժողովրդին, մանրամասն թվարկված են նրանց գանձած հարկերն ու տուրքերը։ Այդ ամենից հետո գիրքը կոչ է անում հայ երիտասարդներին՝ դուրս գալ օտար բռնակալների դեմ և զենքի ուժով նվաճել ազատությունը. «ապա լաւ ես է մեռանիլն մի անգամ քաջաբար՝ քան զկեալն զայսպիսի թշուառութեամբ»[51]։

«Նոր տետրակի» մեջ քննադատության է ենթարկվում միապետական կարգը։ Մանրամասն վերլուծելով հայոց պետականության անկման պատճառները, Բաղրամյանը գտնում է, որ այդ անկումը հետևանք էր հայ թագավորների և իշխանների միանձնյա իշխանության և կամայականությունների, հայերի ծուլության և տգիտության, անմիաբանության և անփութության։ Նա գտնում է, որ միայն մի մարդը ի վիճակի չէ ճշտորեն կառավարելու, նա կարող է սխալվել, իսկ միապետի սխալը դժբախտություն է ժողովրդի համար։ «Է բնականապէս ամենայն մարդ սխալական,—գրված է «Յորդորակ»-ի մեջ,—իսկ իշխանին սխալումն ոչ միայն վնասս, այլ և երբեմն հարուածս մեծամեծս և աշխարհաւերութիւնս բերէ ի վերայ բոլոր ազգին»[52]։

Ուրեմն միապետի իշխանությունը պետք է սահմանափակվի՝ «անխախտելի սահմանադրութեամբ և անեղծանելի յրնտիր և ի մեծամեծ խորհրդականաց և յազգի խորհրդարանաց»[53]։ Այլ կերպ ասած, պետք է ստեղծվի սահմանադրական միապետություն։

---

50 Տե՛ս А. Р. Иоаннисян, Иосиф Эмин, էջ 301—302։

51 «Նոր տետրակ, որ կոչի յորդորակ», էջ 25։

52 Նույն տեղում, էջ 158—159։

53 Նույն տեղում։

«Նոր տետրակում» արծարծված ազատագրական և լուսավորական գաղափարները, ինչպես նաև Հայաստանի ազատագրման Բաղրամյանի քաղաքական ծրագիրը կրում էին Հովսեփ Էմինի հասարակական-քաղաքական հայացքների և գաղափարների ազդեցությունը[54]։

«Նոր տետրակի» օրինակները մադրասցիները տարածում են հայերի մեջ, մի քանի օրինակ էլ ուղարկում Ղարաբաղի մելիքներին, որոնց պարզաբանում են իրենց նպատակները, կոչ անում ապստամբվել օտար բռնակալների դեմ։ Գրքերից ու զանազան նվերներից բացի, մադրասցիները մելիքներին ուղարկում էին նաև զենք[55]։

«Նոր տետրակի» մեկ օրինակ, մի ընդարձակ նամակի հետ, մադրասցիներն ուղարկում են Սիմեոն կաթողիկոսին (դժբախտաբար այդ նամակը չի պահպանվել, նրա մասին կարելի է գաղափար կազմել Սիմեոն կաթողիկոսի պատասխան նամակից)։ Մադրասցիները Հայաստանի ազատագրման գործն իրականացնելու համար նախագծել էին գործողության մի ամբողջ ծրագիր, ինչպես նաև շարադրել էին իրենց տեսակետները ապագա հայկական պետության քաղաքական կառուցվածքի մասին։

Նրանք անհրաժեշտ էին համարում Հերակլ II-ի և Ղարաբաղի մելիքների միաբանությունը, այն համարելով հետագա գործողությունների հաջողության նախապայման։ Առաջարկում էին օգնություն խնդրել Ռուսաստանից և այդ կապակցությամբ հատուկ դիմում ուղղել ռուսաց կայսրուհուն։ Կաթողիկոսին խորհուրդ էր տրվում պարզել հայերի քանակը, հատուկ նվիրակների միջոցով ռազմական գործ սովորեցնել բնակչությանը, նախապատրաստել նրանց զինված ապստամբության։ Առաջարկվում էր մի նախարար կարգել, որը ծերակույտի հետ միասին, օրենքի համաձայն, պետք է ղեկավարեր ժողովրդին. «ու այն նախարարը,—գրել էին նրանք,—ժամանակաւոր լիցի»[56]։

Ստանալով «Նոր տետրակը» և ծրագրային այս նամակը, Սիմեոն կաթողիկոսը, որը խիստ զգուշանում էր ազատագրական ձգտումների բացահայտ դրսևորումից, մի նամակ է հղում Շ. Շահամիրյանին և առաջարկում վերջ տալ այդ ամենին։ Մեկ այլ նամակով նա կարգադրում է հավաքել և այրել «Նոր տետրակի» օրինակները, փակել տպարանը, դադարեցնել Ղարաբաղի մելիքներին «վնասավոր» բաներ գրելը, հրաժարվել իրենց ծրագրերից և այդ գրքի հեղինակ Մովսես Բաղրամյանին հեռացնել իրենց շրջանակից։ Վերջինիս նա բանադրում է և սպառնում նույնն անել մյուսների նկատմամբ, եթե չկատարեն իր պահանջները[57]։

Կաթողիկոսի սպառնալիքները անզոր եղան կասեցնելու մադրասցիների գործունեությունը։ Տպարանը շարունակում է աշխատել, իսկ կապը Ղարաբաղի մելիքների, ինչպես նաև Գանձասարի կաթողիկոսի հետ չի ընդհատվում։

Հարկ է նշել, որ հետագայում՝ 1786 թ. «Նոր տետրակը» թարգմանվում է ռուսերեն և երկու հազար տպաքանակով լույս ընծայվում Պետերբուրգում։ Այդ թարգմանությամբ ռուս հասարակայնության ուշադրությունն էր հրավիրվում հայ ժողովրդի ազատագրման հարցի վրա։ Գրքի թարգմանությանը և

---

54 Տե՛ս А. Р. Иоаннисян, Иосиф Эмин, էջ 298—299։

55 Տե՛ս «Դիւան հայոց պատմութեան», գիրք Ը, մասն II, Թիֆլիս, 1908, էջ 378։

56 Տե՛ս նույն տեղում, էջ 275։

57 Նույն տեղում, էջ 576։



ՆՈՐ

ՏԵՏՐԱԿ

որ կոչի

ՅՈՐԴՈՐԱԿ

Շարադրեցեալ սակս սթափելոյ երիտասար-դացն, և մանկանցն Հայկազանց ՚ի վեհե-րոտեալ և ՚ի հեղգացեալ թմրութենէ քնոյ ծու-լութեան:

Եւ խանդաղատական տարփանօք Տպագրեցեալ ծանուք և ծախիւք Յակոբայ Շամիրեան կոչե-ցելոյ. աշխատութբ Մովսէսի Բաղրամեան հրա-հանգչին իւրոյ:

՚Ի յօգուտ Թարմահասակ՝ և Նորափթիթ ման-կանցն Հայոց:

՚Ի Հայրապետութեն Տեառն Սիմէօնի Տեառն Հայոց Կաթուղիկոսի:

Յամի մարդեղութեն քանի· 1772·
Եւ ՚ի թուին Հայոց· 1221:

Ի Հնդիկս ՚ի քաղաքն Մադրաս.

Ի տպարանի նոյնոյ Յակոբայ Շամիրեան կոչեցելոյ:

«Նոր տետրակի» տիտղոսաթերթը

տպագրության նյութական օգնություն էր ցույց տվել Շ. Շահամիրյանի որդին՝ Եղիազար Շահամիրյանը, որը 1785 թ. մեկնել էր Պետերբուրգ։ Հետաքրքրական է, որ այդ թարգմանության բաժանորդների թվում են եղել նաև ռուս մեծ զորավարներ Սուվորովն ու Կուտուզովը[58]։

---

[58] Տե՛ս *А. Р. Иоаннисян*, Россия и армянское освободительн ое движение в 80-х годах XVIII столетия, Ереван, 1947, էջ *176—177*։

Որոգրելով Հայաստանի ազատագրումը, մադրասցիները կամենում էին մի աշխատություն ևս լույս ընծայել, որի մեջ հիմնավորելով իրենց ազատագրական գաղափարները, շարադրել այն օրենքները, որոնցով պետք է ղեկավարվեին ապագա հայկական պետության քաղաքացիները։ Ահա այս նպատակով, դեռևս «Նոր տետրակի» տպագրման ժամանակներից մինչև 80-ական թվականները, մշակվեց և ապա 1788—1789 թթ. տպագրվեց Շ. Շահամիրյանի «Որոգայթ փառացը»՝ բուրժուական հանրապետության առաջին ծրագիրը և երկրորդ քաղաքական-հրապարակախոսական գիրքը հայ իրականության մեջ[59]։

«Որոգայթ փառացը» սկսվում է մի ընդարձակ առաջաբանով, որտեղ քննադատության է ենթարկվում կառավարման միապետական եղանակը և առաջ քաշվում օրենքի թագավորության գաղափարը։ Մանրամասն շարադրելով օրինակելի պետական կարգի գլխավոր սկզբունքները, Շահամիրյանը մերժում է ազնվականության ու եկեղեցու դասային արտոնությունները, ճորտությունն ու ավատատիրական կախման մյուս ձևերը։ Առաջաբանը զուտ տեսական բնույթ չի կրում. այն հայերին ուղղված յուրատեսակ մի դիմում է՝ օրենքները գնահատելու և ընդունելու, լուսավորության օգուտները հասկանալու մասին։ Միաժամանակ հայերին կոչ է արվում ազատագրական պայքարի ելնել օտար լծի դեմ և ազատագրել հայրենիքը. «Հարկաւոր է մեզ մեռանիլ ազատ և պատրաստիլ վասն մեր կեանս յաւիտենականս, քան թէ կալով մնալ կենդանի մարմնով ի կեանս անկարգութեամբ և ծառայութեամբ»[60]։

Համառոտակի անդրադառնալով հայոց պատմությանը, Շահամիրյանը գտնում է, որ հայ թագավորների անիրավ և գոռոզ իշխանությունն էր պատճառը, որ Հայոց երկիրը զրկվեց պետականությունից և ընկավ օտար տիրապետողների լծի տակ։

Մարդու ազատության գաղափարը կարմիր թելի պես անցնում է «Որոգայթ փառացի» միջով։ Աստված ստեղծելով Ադամին, գրում է Շահամիրյանը, նրա տրամադրության տակ է դրել «ամենայն ստեղծուածք ի վերայ երկրի և ի ներքոյ արեգական», հետևապես մարդիկ պետք է թագավորեն միայն բնության և ոչ իրենց նման բանական արարածների վրա, իսկ մարդկանց վրա թագավորելու է օրենքը։

Գրքի երկրորդ մասում տրված է Հայաստանի սահմանադրության նախագիծը, ըստ որի օտար լծից ազատագրված Հայաստանում, ավատատիրական հետամնաց կարգերի փոխարեն, ստեղծվելու էին այնպիսի կարգեր, որոնք պետք է նպաստեին բուրժուական հարաբերությունների զարգացմանը։

Շահամիրյանի երազած պետության մեջ ամենուրեք իշխելու էր օրենքը, իսկ այդ օրենքի ստեղծման իրավունքը, ինչպես նաև երկրի գերագույն իշխանությունը վերապահված էր «Հայոց տանը»՝ պառլամենտին, որի փոխանորդների ընտրությունը լինելու էր երկաստիճան, առանց որևէ ցենզի։ Յուրաքանչյուր ընտրական տեղամասից երեք տարի ժամանակով ընտրված երկու փոխանորդներից մեկը պետք է դառնար «Հայոց տան» տանուտեր, մյուսը՝

[59] «Որոգայթ փառացի» շարադրման և տպագրության ժամանակի մասին տե՛ս Л. Р. Иоаннисян, К истории возникновения „Западни честолюбия", «Տեղեկագիր» ՀՍՍՀ ԳԱ (հաս. գիտ.), 1948, № 3, էջ 11—25։

[60] «Որոգայթ փառաց», էջ 58։

պետական պաշտոնյա։ Փոխանորդներն էլ իրենց միջից ընտրելու էին տասներեք հոգու, որոնցից մեկը վիճակահանությամբ դառնալու էր նախարար՝ երեք տարի ժամանակով, իսկ մյուսները՝ խորհրդակիցներ, այսինքն՝ տեղակալներ։ Նախարարը օրենքների առաջին կատարողն էր, Հայոց երկրի ներկայացուցիչը, զորքերի գլխավոր հրամանատարը։ Նրան է վերապահված պատերազմ հայտարարելու կամ հաշտություն կնքելու իրավունքը։ Հարկ է նշել, որ նախարարի ընտրության կարգում արված են որոշ վերապահումներ։ Այսպես, 20-րդ հոդվածի համաձայն նախարար կամ խորհրդակից կարող էր ընտրվել «այր մի տէր պատուոյ և գաւառի», այսինքն՝ հարստության և գավառի տեր մեկը։ «Որոգայթում» ոչ մի տեղ ակնարկ չկա այն մասին, որ Հայաստանում լինելու էին նաև գավառատերեր։ Ազատագրական պայքարում մադրասցիները ակտիվ դեր էին հատկացնում նաև Ղարաբաղի մելիքներին, այսինքն՝ «գավառի» տեր մարդկանց։ Սահմանադրությունն էլ, ահա, այդ ակտիվությունը վարձատրած լինելու նպատակով, ստեղծում է նրանց համար ազատագրվելիք երկրում ղեկավար պաշտոն գրավելու հնարավորություն։ 52 և 53-րդ հոդվածների համաձայն նախարար կարող էր դառնալ նաև Հայկի, Վաղարշակի կամ Բագրատի հաջորդներից որևէ մեկը, ընդ որում այդ պաշտոնը տրվելու էր նրան ցմահ և նա իրավունք էր ստանում այն ժառանգություն թողնելու իր հաջորդներին։ Այս վերապահությունը ևս գործնական նպատակներով էր արվում։ Հայաստանի ազատագրման հույսերը մադրասցիները կապել էին նաև Բագրատունիներից սերված վրաց Հերակլ II թագավորի հետ և ցանկանալով շահագրգռած լինել նրան, խոստանում էին Հայաստանի նախարարի պաշտոնը։ Այսուհանդերձ երկու դեպքում էլ նախարարի իրավունքները չէին ընդլայնվում. Նա պարտավոր էր սրբությամբ պահպանել և կիրառել օրենքը, հակառակ դեպքում կարող էին նրան փոխել և փոխարենը նշանակել մեկ ուրիշի։

«Որոգայթ փառացում» պատշաճ տեղ է հատկացվում ապագա Հայաստանի զինված ուժերի հարցին։ Հայաստանի բոլոր բնակավայրերն ունենալու էին դպրոցներ։ Ուսուցիչների մի մասը մանուկներին գիր ու գրականություն էր սովորեցնելու, մյուս մասը՝ ռազմագիտություն։ Խնամք էր տարվելու գիտության և մշակույթի զարգացման ուղղությամբ։ Մանրամասն մշակված են նաև ապագա պետության արդարադատության, եկամուտների ու ծախքերի հետ կապված բազմաթիվ հարցեր։ Եկեղեցին անջատվելու էր պետությունից, դպրոցը՝ եկեղեցուց։

Այսպիսով, ապագա Հայաստանի հասարակական ու պետական կառուցվածքը նախագծելիս, Շահամիրյանն ու նրա գաղափարակիցները վճռականորեն մերժում էին ավատատիրական հասարակարգը։ Նրանց երազած Հայաստանում չպետք է լինեին ճորտեր ու դասային արտոնություններ վայելողներ։ Բոլորն ազատ ու հավասար էին լինելու օրենքի առաջ, հասարակարգը հիմնված էր լինելու բուրժուական մասնավոր սեփականության և բուրժուական գույքային հարաբերությունների վրա։

«Որոգայթ փառացը»՝ Հայաստանում սահմանադրական հանրապետություն ստեղծելու այդ ծրագիրը, խիստ առաջադիմական և բացառիկ կարևորություն ունեցող վավերագիր է, XVIII դարի հայ հասարակական մտքի արժեքավոր ստեղծագործությունը։

«Որոգայթ փառացի» հրապարակումից առաջ՝ դեռևս 1783 թ. Մադրասի

ԳԻՐՔ
ԱՆՈՒԱՆԵԱԼ
ՈՐՈԳԱՅԹ ՓԱՌԱՑ:

[illegible]

[illegible] 1773
[illegible] 1222

[illegible]

«Որոգայթ փառաց» տիտղոսաթերթը

տպարանում լույս ընծայվեց Մադրասի հայ գաղութի կանոնադրությունը՝ «Տետրակ որ կոչի նշաւակ վասն կառավարելոյ ինչս որրոց և առանց կտակի ննջեցելոց» վերնագրով։ «Նշաւակը» կազմված է «Որոգայթ փառացի» գաղափարների ոգով։ Հեղինակը, նույն ինքը՝ Շահամիր Շահամիրյանն է[61]։ Ըստ

---

61 Տե՛ս Թադ. Ավդալբեգյան, Շահամիր Շահամիրյանն ու հնդկահայոց համայնական ինքնավարությունը XVIII դարում, Հայագիտական հետազոտություններ, էջ 262—263։

«Նշավակի» Մադրասի հայ համայնքը ղեկավարելու են երեք կառավարիչներ, որոնք ընտրվելու են ընդհանուր ժողովի կողմից։ Եթե ընտրվողները պետք է լինեին «տէր ընչից և պատուոյ»[62], ապա ընտրողների նկատմամբ այդ սահմանափակումը գոյություն չուներ։ Բոլորն էլ հավասարապես օժտված էին ընտրական իրավունքով։ Մադրասի հայերի նվիրատվությունների, կտակների, առևտրականներից գանձվող գումարների ու այլ ստացվածքների հաշվին հիմնված է եղել բարեգործական դրամարկղ, այսպես կոչված՝ «Սնդուկ որբոց Մադրասի հայոց», որի միջոցները ծախսվել են որբերի, աղքատների, գաղթականների, ինչպես նաև ազգային դպրոցի վրա։

Հայ իրականության մեջ իր նախորդը չունեցող այս ուշագրավ կանոնադրության մեջ պարզորոշ կերպով դրված է ներգաղթի հարցը։ Հեղինակը հույս է հայտնում, որ երբ ազատագրվի Հայաստանը, «Մնացորդքն ի մէջ ցնծութեամբ ելցեն ի պանդխտութենէ առ գիրկս գորովագոյթ մօրն իւրեանց յԱրարատ յաշխարհ»[63]։ Գրելով այս մասին, հայրենակարոտ հեղինակը չի կարողանում զսպել իրեն և երանի է տալիս այդ ներգաղթողներին. «Եւ մի կարի լռել բերան իմ,—գրում է նա,—ասել երանի և բազմիցս երանի արանցն յայնոցունց, որում գտանիցին այն Ոսկէզօծ ժամանակն երջանկութեան»[64]։ Նախքան Հայաստանի ազատագրումը, Հնդկաստանից հարկադրաբար հեռացող հայրենակիցներին խորհուրդ էր տրվում ժամանակավորապես հաստատվել Հյուսիսային Կովկասի Ղզլար քաղաքում։ «Նշավակի» մեջ բերված է ռուսաց թագավորի և գաղթական հնդկահայերի միջև կնքվելիք պայմանագրի օրինակը։ 17 կետից բաղկացած այդ պայմանագիրը սահմանում էր, որ գաղթական հայերը Ռուսաստանում վայելելու են մի շարք արտոնություններ՝ ազատորեն զբաղվելու են առևտրով ու արհեստներով, կարող են գնել ու վաճառել կալվածքներ, ազատված են լինելու զինվորագրումից ու զինվորական հարկերից, ունենալու են իրենց դատարանը, եկեղեցին, նրանցից գանձվող հարկերը չեն գերազանցելու ռուսներից գանձվող հարկերից, անժառանգ մահացածների գույքը մնալու է համայնքին և, որ չափազանց կարևոր է ու շատ բնորոշ մադրասցի ազատամիտների համար, Ռուսաստանում իշխող ճորտատիրական կարգերը չեն տարածվելու հայ գաղթականների վրա՝ «Ի յաղգէ մերմէ մի լինիցի ծառայ, այլ միայն ազատ»[65]։

Մադրասի խմբակի կարևորագույն հրատարակություններից մեկն էլ Հայաստանի քարտեզն է՝ «Աշխարհացոյց Հայաստանեայցը», որը Շ. Շահամիրյանի պատվերով լույս ընծայվեց Վենետիկի Մխիթարյանների տպարանում 1778 թ.[66]։ «Աշխարհացոյց Հայաստանեայցը» կարծեք հավելվածն է «Նոր տետրակի» և «Որոգայթի», այն օժանդակում է ավելի լայն պատկերացում տալու Հայաստանի, նրա բնակավայրերի, լեռների ու ջրերի, սահմանների, հարևան երկրների և, ընդհանրապես, այն ամենի մասին, ինչ կարելի է հաղորդել քարտեզի միջոցով։ «Աշխարհացոյցը» կոչված էր նպաստելու հայ երիտասարդության մեջ հայրենասիրություն ներարկելու գործին, մեծ օգնու-

---

62 «Տետրակ որ կոչի նշաւակ», էջ 7։

63 Նույն տեղում, էջ 5։

64 Նույն տեղում։

65 Նույն տեղում, էջ 57։

66 Տե՛ս Վ. Գրիգորյան, Շահամիր Շահամիրյանի «Աշխարհացոյց Հայաստանեայցը», «Բանբեր մատենադարանի», № 6, Երևան, 1962, էջ 353—362։

թյուն պետք է ցույց տար երկրի ազատագրությանը նախանձախնդիր հայ իշխանավոր անձանց ու զորավարներին՝ իրենց ամենօրյա պայքարում։

Հարկ է նշել, որ Մխիթարյանները լավ են կատարել Շ. Շահամիրյանի պատվերը. նրանց փորագրած «Աշխարհացոյց Հայաստանեայցը», որը հայկական վերերորդ տպագիր քարտեզն է, տեխնիկայի այն ժամանակվա պայմաններում, անտարակույս, քարտեզագրական մի լուրջ նվաճում է եղել։

Քարտեզի հիշատակարանը շրջափակված է հայ ազգային հերոսների նկարներով. մի կողմում Հայկն է, աղեղը ձեռքին և Արամը՝ տեգով զինված, մյուս կողմում Տիգրանն է, արքայական փոքրիկ գավազանով, հետո՝ Տրդատը։ Այս նկարները քարտեզին գեղեցիկ տեսք տալու համար չեն միայն։ Շ. Շահամիրյանը «Որոգայթ փառացում» գրում է. «...Որպէս լուաք ի բերանոյ բազմաց թէ ի մէջ հարիւր արանց հայոց հազիւ մի այր գտանի, զի լուեալ իցէ ի բերանէ յումեքէ, եթէ հայոց ժամանակս էին տէր և թագաւոր ի վերայ երկրին Հայաստանեայց» և շարադրելով այդ գիրքը նպատակ ունի հիշեցնելու նրանց այդ ամենի մասին, որպեսզի «կարելի լինիցի փրկել ազգն հայոց ի ծառայութենէ և արասցէ մեզ երջանիկ և վայելուչ որդէգրութեան նախահարց մերոց Հայկայ, Արամայ, Տիգրանայ և այլն»[67]։ Վերոհիշյալ անձանց նկարների զետեղումը քարտեզի վրա, որ արված է անկասկած Շ. Շահամիրյանի պատվերով, հետապնդել է այդօրինակ նպատակ՝ ոգեշնչել հայ երիտասարդությանը հայրենիքի անկախության համար մարտնչած հերոսների կերպարներով։ Այդ տեսակետից բնորոշ են նաև հիշատակարանի զարդերը։ Դրանք դրոշներ, ղենքեր և երաժշտական գործիքներ են, որ խորհրդանշում են ազատամարտություն, զինված պայքար՝ հանուն հայրենի երկրի ազատության։

Քարտեզի վրա Հայաստանի մի մասը և Վրաստանը, որի հետ նաև Կովկասյան լեռնաշղթայի և Հյուսիսային Կովկասի մի մասը, վերցված են մի ընդհանուր սահմանի մեջ։ Ըստ երևույթին դա մադրասցիների երազած հայ-վրացական միասնական պետության տարածքն է, որը նրանք կամենում էին ստեղծել Ռուսական կայսրության հովանու ներքո։

## 5. ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱԶԱՏԱԳՐՄԱՆ ԾՐԱԳԻՐԸ 1768—1774 ԹԹ. ՌՈՒՍ-ԹՈՒՐՔԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ԺԱՄԱՆԱԿ

1768—1774 թթ. ռուս-թուրքական պատերազմը նոր թափ հաղորդեց հայ ազատագրական շարժմանը։ Չգտելով Օսմանյան կայսրության դեմ հանել թուրքահպատակ քրիստոնյա ժողովուրդներին, ռուսական իշխանությունները հայտարարում էին, թե պատերազմի հիմնական նպատակներից մեկն էլ քրիստոնյա ժողովուրդների ազատագրումն է։ Ռուսական գործակալները ձգտում էին բալկանյան սլավոններին և հույներին ապստամբեցնել թուրքերի դեմ։ Համառ լուրեր էին շրջում այն մասին, որ ռուսները զորք են մտցնելու Անդրկովկաս և Վրաստանի ու Իմերեթիայի թագավորների հետ միասին արշավելու են Թուրքիայի վրա։ Այս տեղեկությունները այնքան մեծ տպավորություն են թողնում սահմանամերձ վայրերի հայ բնակչության վրա, որ 1769 թ. ամռանը Թուրքիայից նրանք զանգվածաբար սկսում են գաղթել Վրաստան[68]։

Ապագա արշավանքի լուրը մեծ ոգևորություն առաջ բերեց նաև Ռուսաս-

[67] «Որոգայթ փառաց», էջ 124։
[68] Տե՛ս А. Р. Иоаннисян, Иосиф Эмин, էջ 266։

տանում բնակություն հաստատած հայերի մեջ։ Նորից հույսեր ծագեցին ռուսների օգնությամբ Հայաստանն ազատագրելու և Ռուսաստանի հովանավորության ներքո հայկական պետություն ստեղծելու։ Այդ նոր հույսերի արդյունքն էր նաև ռուսահայ մեծահարուստ Մովսես Սարաֆյանի կազմած Հայաստանի ազատագրման ծրագիրը, որը 1769 թ. հունիսի 8-ին ներկայացվեց Ռուսաստանի արտաքին գործերի կոլեգիային։

Մովսես Սարաֆյանն առաջարկում էր Թուրքիայի դեմ պատերազմի հանել վրաց երկու թագավորներին՝ Հերակլին ու Սողոմոնին և Վրաստան ուղարկել ռուսական բանակային կորպուս՝ գեներալի հրամանատարությամբ։ Միաժամանակ Ռուսաստանում բնակվող հայերից և վրացիներից կազմել կամավորական ջոկատ և ուղարկել Վրաստան։ Ջոկատի հրամանատարը լինելու էր հայ և ենթարկվելու էր ռուսական արշավախմբային կորպուսի հրամանատարին։ Սարաֆյանը թուրքերի դեմ պայքարի գործում մեծ տեղ էր հատկացնում նաև Ղարաբաղի մելիքներին։ Նա առաջարկում էր սկզբում գրավել Երևանը։ Բայց այդ հարցում ծրագիրը չէր համապատասխանում ստեղծված քաղաքական կացությանը, որովհետև Ռուսաստանը պատերազմական վիճակի մեջ էր միայն Թուրքիայի հետ, իսկ Երևանի գրավումը կնշանակեր ընդհարվել նաև պարսիկների հետ։ Սակայն այդ անհրաժեշտ էր համարում ծրագրի հեղինակը, որովհետև առաջ էր քաշվում ողջ Հայաստանի կամ նրա մեծագույն մասի ազատագրման հարցը, իսկ դա դժվար էր պատկերացնել առանց Երևանի գրավման։ Բացի այդ, Սարաֆյանի կարծիքով, երբ Երևանն անցներ ռուսական հսկողության տակ, հազարավոր հայեր Թուրքիայից և Իրանից կհավաքվեին այնտեղ և կմիանային ռուսական զորքին։ Երևանը գրավելուց հետո Հերակլ II-ը հարձակվելու էր Ախալցխայի և Կարսի, իսկ մյուս զորախմբերը՝ Բայազետի և ապա Վանի վրա, հետո բոլորը միավորվելով՝ շարժվելու էին դեպի Արևմուտք։ Հայաստանի ազատագրման գործում Սարաֆյանը գործուն դեր էր հատկացնում հայերին։

Ծրագրում չի անտեսված նաև հարցի տնտեսական կողմը։ Ըստ Սարաֆյանի Հայաստանի ազատագրումը առանձին ծախսեր չի պատճառելու ռուսական կառավարությանը. նվաճված քաղաքների վրա կարելի է հարկեր դնել, ռազմատուգանք վերցնել ոչ միայն մահմեդական, այլև քրիստոնյա բնակչությունից։ Ծայրահեղ անհրաժեշտության դեպքում կարելի է օգտագործել նաև եկեղեցիների ունեցվածքը։

Ծրագրի համաձայն, ազատագրված Հայաստանում պետք է ստեղծվեր ինքնուրույն հայկական պետություն և Ղարաբաղի մելիքներից մեկը պետք է դառնար Հայաստանի թագավոր։ Հայաստանի անկախության նկատմամբ թուրքերի հնարավոր ոտնձգությունները կանխելու համար ծրագրի հեղինակն առաջարկում էր Ռուսաստանի և Թուրքիայի միջև կնքվելիք հաշտության պայմանագրում հատուկ կետ մտցնել Հայաստանի մասին, որի համաձայն հայերը համարվելու էին Ռուսական կայսրության հպատակներ և թուրքերը իրավունք չէին ունենալու բռնություն գործադրել նրանց նկատմամբ։ Վտանգի դեպքում Ռուսաստանը ռազմական օգնություն էր ցույց տալու հայերին, վերջիններս էլ պահանջի դեպքում հնարավոր ամեն ձևով օգնելու էին Ռուսաստանին[69]։

---

[69] Տե՛ս А. Р. Иоаннисян, Иосиф Эмин, էջ 269—274։

Հայաստանի ազատագրման չափազանց հետաքրքրական այս ծրագիրը կազմվել է ռուսահայ ազդեցիկ շրջանակների գիտությամբ և կրում է Հ. Էմինի գաղափարների ազդեցությունը։ Նախորդը հանդիսանալով ավելի ուշ՝ 80-ական թվականներին երևան եկած հայ պետականության վերականգնման ծրագրերի, այս վերջինը ընդհանուր շատ բան ունի նրանց հետ՝ բացի մի կարևոր հարցից։ Եթե 80-ական թվականներին կազմված ծրագրերի համաձայն Հայաստանի թագը տրվելու էր իշխան Պոտյոմկինին, Սարաֆյանի ծրագիրը այդ թագը վերապահում է հայ մարդու[70]։

Սարաֆյանի ծրագրի մասին զեկուցում են Ռուսաստանի արտաքին գործերը գլխավորող Ն. Ի. Պանինին, որը, սակայն, դրա վրա առանձին ուշադրություն չի դարձնում։ Նրան հետաքրքրում էր միայն Թուրքերի դեմ սկսելիք արշավանքում հայերի մասնակցության հարցը, ուստի արտաքին գործերի կոլեգիայի աշխատակից իշխան Անտոն Մուրավովին, որը մեկնում էր Իմերեթիա՝ Սողոմոն թագավորի հետ մշտական կապ պահպանելու համար, հանձնարարվում է հետախուզել գործի հանգամանքները։ Տեղ հասնելուց հետո Ա. Մուրավովը հայտնում է Ն. Ի. Պանինին, որ Հերակլը վստահություն է տածում Երևանի հայերի նկատմամբ, գտնում է, որ նրանք լավ զինվորներ են ու նրանց կարելի է շարժել Թուրքերի դեմ[71]։

Ռուսական արշավանքի լուրը կրկին խանդավառում է Հովնան եպիսկոպոսին։ Նա Կ. Պոլսից վերադառնում է Մուշ։ Հ. Էմինի ինքնակենսագրությունից երևում է, որ Մուշում Հովնանը հրացաններ էր թաքցրել և այժմ պատրաստ էր հանձնելու զենք չունեցողներին[72]։

Թուրքերի դեմ ապստամբվելու մեծ ցանկություն ունեին նաև Թուրքական լծի տակ գտնվող ասորիներն ու եզդիները։ Ասորիների կաթողիկոսը Սալմաստի հայ եպիսկոպոս Եսայու միջոցով Հերակլին ուղարկած նամակով հավաստիացնում է, որ ասորիները 20.000 մարդ կարող են տրամադրել նրան։ Նույն Եսայի եպիսկոպոսը Հերակլի համաձայնությամբ բանակցությունների մեջ էր մտել եզդի ցեղապետ Ջոբան աղայի հետ, որը խոստանում էր իր բոլոր հպատակներով անցնել Հերակլի կողմը[73]։

Այսպիսով, Թուրքական լծի տակ տվայտող ժողովուրդները՝ թե՛ հայերը և թե՛ հարևան ասորիներն ու եզդիները, սպասում էին ռուսական զորքերին և պատրաստ էին զինված ապստամբությամբ դյուրացնել երկրի ազատագրումը։

Սակայն նրանց հույսերը չիրականացան։ Ռուսական կառավարությունը 1769 թվականի օգոստոսին Վրաստան ուղարկեց ընդամենը 600 զինվոր, իսկ հետո Հերակլի խնդրանքով նրանց թիվը հասցրեց 3767 հոգու։ Այդ զորամասի հրամանատարն էր գեներալ Տոտլեբենը, որը փաստորեն զբաղված էր Վրաստանը նվաճելու գործով[74]։ Թուրքերի դեմ մի քանի անհաջող արշավանքներ կատարելուց հետո, Տոտլեբենը հրաժարվեց ակտիվ գործողություններից։ Դրությունը չփոխվեց նաև գեներալ-մայոր Սուխոտինի ժամանակ, որը 1771 թվականի հունվարի 12-ին փոխարինեց Տոտլեբենին։

---

70 Տե՛ս *А. Р. Иоаннисян*, Иосиф Эмин, էջ 274—275։

71 Տե՛ս նույն տեղում, էջ 276։

72 Տե՛ս Յովսէփ Էմին, էջ 440։

73 Տե՛ս *А. Р. Иоаннисян*, Иосиф Эмин, էջ 287—289։

74 Տե՛ս *О. П. Маркова*, Россия, Закавказье и международные отношения в XVIII в., М., 1966, էջ 139։

Սակայն ռուսական այդ զորամասերի ակտիվությունը չէր կարող էական որևէ դեր խաղալ, որովհետև այդ պատերազմի ժամանակ Ռուսաստանը մտադիր չէր Անդրկովկասում լայն ճակատով և մեծ ուժերով ռազմական գործողություններ ծավալելու Թուրքիայի դեմ։ Ռուսական իշխանության նպատակն էր օգտագործել Վրաստանի ուժերը, որպեսզի թուրքերը իրենց ուժերի մի մասը եվրոպական ճակատից տեղափոխեին ասիական ճակատ[75]։ Այդ ժամանակ նպատակ չէր հետապնդվում Անդրկովկասը միացնելու Ռուսաստանին, ուստի և չէր կարող իրականանալ հայ ազատագրական շարժման ղեկավարների ակնկալությունը՝ Ռուսաստանի օգնությամբ օտարի լուծը թոթափելու և նրա հովանավորությամբ հայկական պետություն ստեղծելու մասին։

---

[75] Տե՛ս նույն տեղում, էջ 144։

## ԳԼՈՒԽ ՀԻՆԳԵՐՈՐԴ

# ՀԱՅ-ՌՈՒՍԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ XVIII ԴԱՐԻ 80—90-ԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐԻՆ

## 1. ՑԱՐԱԿԱՆ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ԱՐԵՎԵԼՅԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՀԱՅ ԳՈՐԾԻՉՆԵՐԻ ԲԱՆԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՌՈՒՍԱԿԱՆ ԱՐՔՈՒՆԻՔԻ ՀԵՏ

Քյուչուկ-Կայնարջիի հաշտության պայմանագիրը, որ կնքվեց Ռուսաստանի և Թուրքիայի միջև 1774 թ., զգալիորեն ամրապնդեց Ռուսաստանի դիրքերը Սև ծովի շրջաններում։ Ռուսաստանին անցան Ազովը, Ենիկալեն, Կերչն ու Կինբուրնը։ Թուրքիան ընդունեց Ղրիմի անկախությունը և բարեբեր այդ թերակղզու միակցումը Ռուսաստանին դարձավ օրակարգի հարց։ Ռուսական կառավարության առջև խնդիր էր ծառացել գերիշխանություն ձեռք բերել նաև Կասպից ծովի շրջաններում և հնդկական առևտուրը Իրանի ու Կասպից ծովի վրայով շուռ տալ դեպի Ռուսաստան։ Այս նպատակով XVIII դարի 80-ական թվականների սկզբին Ռուսաստանում եռանդուն կերպով պատրաստվում էին պարսկական արշավանքին։ Որոշված էր գրավել Անդրկովկասը և այնտեղ ստեղծել Ռուսաստանից կախման մեջ գտնվող վրացական և հայկական պետություններ, որոնք ամուր հենակետ էին հանդիսանալու Ռուսաստանի համար Թուրքիայի դեմ մղվելիք պատերազմների ժամանակ, ինչպես նաև մեծացնելու էին Ռուսաստանի ազդեցությունը Հյուսիսային Կովկասում։

Ռուսական իշխանության հաստատումը Արևելյան Հայաստանի վրա առաջադիմական կարևոր իրադարձություն կլիներ նրա բնակիչների կյանքում։ Պարսից հետամնաց, բարբարոս իշխանությանը հաջորդելու էր քաղաքական, տնտեսական և մշակութային կյանքի անհամեմատ առավել բարձր զարգացում ունեցող երկրի տիրապետությունը։ Այդ բանը ոչ միայն կփրկեր նրանց կորստից, այլև հնարավորություն կստեղծեր զարգանալու և առաջադիմելու։ Ռուսական իշխանությունների նվաճողական ծրագրերը համընկնում էին օտար լծից հայերի ազատագրման բուռն ձգտումներին և այդ պատճառով նրանք ուրախությամբ ու մեծ հույսերով էին սպասում ռուսական արշավանքին։

Իրանի դեմ նոր արշավանքի նախապատրաստման գործը հանձնարարվեց ռուս հռչակավոր զորավար Ա. Վ. Սուվորովին։ Նախքան Աստրախան մեկնելը և արշավախմբային զորամասերի հրամանատարությունն ստանձնելը, Սուվորովը սկսում է տեղեկություններ հավաքել Անդրկովկասի վերաբերյալ։ 1780 թվականի հունվարին իշխան Գ. Ա. Պոտյոմկինը, Ի. Պ. Գորիչը և Ա. Վ. Սուվորովը Պետերբուրգում հանդիպումներ են ունենում Հովսեփ արքեպիսկոպոս

Արղությանի և Հովհաննես Լազարյանի հետ։ Հ. Արղությանն իր օրագրում հետաքրքրական հիշատակագրություններ է թողել այդ հանդիպումների և բանակցությունների մասին։ Նա պատմում է, որ Ի. Պ. Գորիչը նախապես տեղյակ է պահում իրենց՝ պատրաստվող արշավանքի մասին, ապա հարց ու փորձ անում Իրանի վիճակի, քաղաքների հեռավորության, հայերի և թուրքերի զինվորական ուժերի մասին։ Սուվորովին հետաքրքրել են էջմիածինը և Ղարաբաղի մելիքները, Վրաստանն ու Հերակլ II թագավորը։ Մասնավորապես նա հետաքրքրվել է հայ ազատագրական շարժումներով։ Սուվորովը հուսադրում է Հ. Արղությանին և Հ. Լազարյանին, թե վերականգնվելու է հայկական պետականությունը. «Յուսադրութիւն արար յոյժ որպէս թէ նորոգելոց իցեն ի մեզ իշխանութիւն ինչ»։ Հայ գործիչները հայերեն մի քարտեզի վրա Գ. Պոտյոմկինին ցույց են տալիս Հայաստանի սահմանները և խնդրում «նորոգել ի մեզ զմասնաւոր տէրութիւն ի Մեծն Հայաստան ի քաղաքն Երևան»[1]։

Իշխան Գ. Պոտյոմկինը նրանց պատասխանում է, թե դա հնարավոր է, բայց անհրաժեշտ է, որ հայոց կաթողիկոսը տեղական մի քանի հայ իշխանավորների հետ միասին հայերին փրկելու խնդրանքով դիմի իրենց։ Այդ դեպքում ռուսները օգնության կգան։ Հ. Արղությանն ու Հ. Լազարյանը պատասխանում են իրենց տված բոլոր հարցերին և հեռանում մեծ հույսերով։ Հետաքրքրական է, որ Գ. Պոտյոմկինի կարգադրությամբ Հ. Լազարյանը նամակ է գրում Նոր Ջուղա՝ Հովսեփ էմինին և նրան հրավիրում Ռուսաստան[2]։ Ինչպես երևում է ռուսները չէին մոռացել հայրենի երկրի ազատագրությամբ տարվող էմինին և կարծում էին, որ նա իրենց շատ օգտակար կլիներ Անդրկովկասում ծավալվելիք ռազմական գործողությունների ժամանակ։

1780 թ. հունվարի 10-ին Հ. Լազարյանը զեկուցագիր է ներկայացնում Ա. Սուվորովին, որով հայտնում է, թե Հայաստանի ազատագրումը հեշտությամբ կարելի է իրականացնել, եթե հայերից մեկը ղեկավարի այդ գործը։ Վերջինս հաստատվելու էր Դերբենդում, նրան օժանդակություն էր ցույց տրվելու՝ Շամախին ու Գանձակը գրավելիս, ապա Ղարաբաղից և Սղնախից շատ հայեր կմիանան նրան։ Բավարար չափով զորք հավաքելուց հետո նա հեշտությամբ գրավելու էր Երևանը և մյուս քաղաքները։ Դրա համար Լազարյանը անհրաժեշտ է գտնում, որ ռուսները սկզբից ևեթ զինվորական ու տնտեսական օգնություն ցույց տան այդ հայ ղեկավարին։ Ապագա Հայաստանը, որ կստեղծվի Պարսկական Հայաստանի տերիտորիայի վրա և հետզհետե կմեծանա ի հաշիվ Թուրքահայաստանի, կմտնի ռուսական գերիշխանության տակ և ի վիճակի կլինի սեփական միջոցներով պահելու 15.000—20.000 զորք, իսկ պատերազմի դեպքում՝ 60.000։ Անհրաժեշտության դեպքում, նշված է այդ զեկուցագրում, այդ զորքը կարելի է ուղղել Թուրքիայի կամ այլ թշնամու դեմ[3]։

Այս զեկուցագիրը Ա. Սուվորովը ներկայացնում է Եկատերինա II կայսրուհուն[4]։

---

[1] «Յովսէփ կաթողիկոսի յիշատակարանը», «Կռունկ Հայոց աշխարհին», 1863, № 7, էջ 511։

[2] „Собрание актов, относящихся к обозрению истории армянского народа", т. II, М., 1838, էջ 69—70։

[3] Տե՛ս *А. Р. Иоаннисян*, Россия и армянское освободительное движение в 80-х годах XVIII столетия, էջ 23—24։

[4] Տե՛ս *М. Нерсисян*, Из истории русско-армянских отношений, книга первая, Ереван, էջ 55։

1780 թ. հունվարի վերջերին Սուվորովը մեկնում է Աստրախան և մեծ եռանդով ձեռնամուխ լինում արշավանքի նախապատրաստամանը։ Իր գործակալների միջոցով նա տեղեկություններ է հավաքում Իրանի և Անդրկովկասի խանությունների վերաբերյալ, կապեր հաստատում Ղարաբաղի մելիքների հետ։

Սուվորովին հրահանգված էր պատրաստություններ տեսնել Դերբենդի վրայով շարժվելու դեպի Գիլան և Դերբենդի, Բաքվի ու Գիլանի խաներին ենթարկելու Ռուսաստանին։ Միաժամանակ Գիլան էր շարժվելու նաև ռուսական նավատորմը։ Այդ արշավանքը ուժեղացնելու էր Ռուսաստանի ազդեցությունը Անդրկովկասում և մերձկասպյան շրջաններում, ապահովելու էր ռուսների առևտուրը Կասպից ծովով։ Պաշտոնապես առայժմ այսպիսի խնդիրներ էին դրվում Սուվորովի առջև, սակայն հաջողության դեպքում չէր բացառվում տերիտորիալ նվաճումներ կատարելու հարցը։ Այդ է պատճառը, որ Սուվորովի մոտ պատրաստ էին դեպի Ռեշտ, Ղարաբաղի վրայով Երևան և դեպի Սպահան ու Պարսից ծոց տանող ուղիների մանրամասն նկարագրությունները[6]։

Անցնում էին ամիսներ, սակայն ռուսական արշավանքը չէր սկսվում։ Գնալով ծանրանում էր Ղարաբաղի հայերի վիճակը։ Փանահին փոխարինած Իբրահիմ խանը ավելի էր սաստկացնում ճնշումները հայերի նկատմամբ։ 1781 թվականի փետրվարի 24-ին նա իր մոտ է կանչում Դիզակի Մելիք-Եսային և դավադրաբար սպանել տալիս։ Ջրաբերդի Մելիք-Ադամը, Գյուլիստանի Մելիք-Բեգլարը, Մելիք-Հովսեփի որդին և վեց այլ անձինք, մեծ մասամբ քյոխվաներ, 1781 թվականի սեպտեմբերի 2-ին օգնության խնդրանքով նամակներ են ուղարկում ռուսական իշխանություններին։

Եկատերինա II կայսրուհուն հասցեագրած նամակում նրանք պատմում են Ղարաբաղում մահմեդական տիրապետություն հաստատվելու մասին, նկարագրում իրենց ծանր վիճակը և հայտնում, թե «հանապազ ակն ունիմք փրկութեան ձերոյ»[6]։ Իշխան Գ. Պոտյոմկինին նրանք խնդրում են Սուվորովի գլխավորությամբ 10.000 ռուս հետևակայիններ ուղարկել Ղարաբաղ և հայտնում, որ իրենք պատրաստ են ապստամբելու։

Այս խնդրագրերը մնացին անպատասխան, իսկ դեպի Իրան ծրագրված արշավանքը հետաձգվեց։ Ռուսական հրամանատարությունը բավարարվեց կապիտան Վոյնովիչի գլխավորությամբ ծովային մի փոքրիկ արշավախումբ ուղարկելով դեպի հարավ, իսկ Սուվորովը 1781 թվականի դեկտեմբերի վերջերին Կազան մեկնելու հրաման ստացավ[7]։

1782 թվականի աշնանը ռուսական կառավարությունը որոշում կայացրեց շարունակելու արշավանքի պատրաստությունները։ Քարիմ խանի մահից հետո Պարսկաստանում ծայր առած ներքին կռիվները թուլացրել էին պարսիկներին, ուստի և հարմար առիթ էր ստեղծվել Անդրկովկասում եռանդուն գործողություններ ծավալելու։ Արշավանքը նախատեսվում էր սկսել 1783 թ. գարնանը. պատրաստությունները շարունակվում են իշխան Գ. Պոտյոմկինի ազգական, գեներալ Պ. Ս. Պոտյոմկինի ղեկավարությամբ։

---

[5] Տե՛ս նույն տեղում, էջ 27—28։

[6] ЦГВИА, ф. 52, оп. 1/194, св. 124, дело № 8, էջ 5—6։

[7] *А. Р. Иоаннисян*, Россия и армянское освободительное движение в 80-х г. XVIII столетия, էջ 33—35։

Նախատեսվում էր նվաճել դեռևս Պետրոս Մեծի կողմից գրավված և հետագայում պարսիկներին թողնված մերձկասպյան շրջանները, դիրքշխանություն հաստատել Վրաստանի վրա և ռուսական հովանավորության ներքո ստեղծել հայկական պետություն։ Գ. Ա. Պոտյոմկինը 1782 թ. սեպտեմբերի 2-ին գեներալ Պ. Ս. Պոտյոմկինին տված հրամանագրում արշավանքի ընդհանուր ծրագրից առանձնացնում է այն մասը, որը վերաբերում էր Արևելյան Վրաստանին և հայկական թագավորության վերականգնմանը։ «Ձեզ ուղարկված հրահանգներից,—գրում էր Գ. Ա. Պոտյոմկինը,—Դուք կիմանաք, թե որքան սերտ կապ պետք է հաստատել Հերակլի հետ։ Շահելով նրա վստահությունը, անպայման Դուք պետք է նրան կառավարեք։ Շուշիի Իբրահիմ խանին պետք է տապալել, որովհետև դրանից հետո Ղարաբաղը պետք է կազմի հայկական անկախ, միայն Ռուսաստանին ենթակա մարզ»[8]։

Եթե թուրքերը եվրոպական մայր ցամաքում ռազմական գործողություններ սկսեին Ռուսաստանի դեմ, ապա ռուսական հրամանատարությունը՝ վրացական և հայկական ուժերի օգնությամբ, Վրաստանի վրայով հարձակվելու էր Թուրքիայի վրա[9]։

1782 թ. նոյեմբերի 4-ին գեներալ Պ. Ս. Պոտյոմկինը ժամանում է Հյուսիսային Կովկասի Գեորգիևսկ ամրոցը, որտեղից նամակագրական կապ է հաստատում Հերակլ II-ի, Ղարաբաղի մելիքների, Սիմեոն Երևանցուն հաջորդած Ղուկաս կաթողիկոս Կարնեցու և ադրբեջանական խաների հետ։ Նա Անդրկովկասից տեղեկություններ է ստանում ճանապարհների, տնտեսության վիճակի, զինված ուժերի, քաղաքների մասին։ Այդ գործում նրան մեծ աջակցություն է ցույց տալիս Հ. Արղությանը, որը նույնպես ժամանել էր Գեորգիևսկ։

1783 թ. սկզբներին Դերբենդի Ֆաթալի խանը կրկին հարձակվում է Ղարաբաղի վրա։ Այդ արշավանքը ավելի աղետաբեր կլիներ Ղարաբաղի համար, եթե օգնություն չցուցաբերեր Հերակլ II թագավորը։ Լեռնականները հեռանում են Ղարաբաղից մեծ ավարով։ Ռուսական իշխանություններին ուղղված իրենց նամակներում Ղարաբաղի մելիքները նկարագրելով այդ արշավանքի պատճառած աղետները, խոսում են նաև այն հերոսական դիմադրության մասին, որ ցույց են տվել հայերը Ֆաթալիի հրոսակներին։

Լուր ստանալով ռուսական արշավանքի նախապատրաստության մասին, Ջրաբերդի և Գյուլիստանի մելիքները, Գանձասարի Հովհաննես կաթողիկոսը և այլ նշանավոր անձինք 1783 թ. մարտին նամակներ են հղում գեներալ Պ. Ս. Պոտյոմկինին և Հ. Արղությանին ու խնդրում փութացնել ազատարար արշավանքը. նրանք հայտնում են, որ Ղարաբաղը ի վիճակի է սննդով ապահովելու ռուսական զորքերին։

Ռուսական արշավանքի պատրաստությունները աշխուժացնում են ազատագրական շարժումը նաև Երևան քաղաքում։ Երևանի բնակիչները, որոնք գտնվում էին օտար հարստահարողների մշտական ճնշման ու շահագործման ներքո և շարունակ ենթարկվում էին պատերազմների ու ներքին կռիվների արհավիրքներին, երազում էին ռուսական զորքերի օգնությամբ ազատվել այդ

[8] *О. П. Маркова*, Россия, Закавказье и международные отношения в XVIII веке, էջ 161։

[9] Տե՛ս նույն տեղում, էջ 160։

ամենից, ուստի և աշխատում էին հնարավոր միջոցներով նպաստել արշավանքի նախապատրաստմանը։ Ամենից առաջ նրանք ռուսաց հրամանատարության ռազմական ու այլ բնույթի տեղեկություններ էին հաղորդում. այդ բանում առավել ջանք էր թափում Երևանում ծավալված ազատագրական շարժման նշանավոր դեմքերից Ստեփան Տեր-Սահակյանը։ Նա ծագումով հարուստ և նշանավոր ընտանիքից էր, ամբողջովին նվիրված հայոց երկրի ազատագրման գործին։ 1783 թ. աշնանը Տեր-Սահակյանը մեկնում է Ղարաբաղ, ծանոթանում մելիքների ռազմական կարողություններին և դեկտեմբերի 22-ին գեներալ Պ. Պոտյոմկինին հայտնում, որ Ղարաբաղի հինգ մելիքներն ունեն 5.000 հոգուց բաղկացած զորք, կարող են ստեղծել պարենի անհրաժեշտ պաշար և պատրաստ են դիմավորելու ռուսներին Գանձակի մոտակայքում[10]։

Ս. Տեր-Սահակյանի Ղարաբաղ կատարած այցելությունը ուշագրավ իրողություն է։ Հայտնի է, որ հայ ազատագրական շարժման այդ կենտրոնները՝ Ղարաբաղն ու Երևանը գործում էին անջատ-անջատ և դա էլ ազատագրական շարժման թուլության պատճառներից մեկն էր։ Ղարաբաղում Ս. Տեր-Սահակյանը, ամենայն հավանականությամբ, երևանցիներին հուզող հարցերի շուրջը մտքերի փոխանակություն է ունեցել մելիքների հետ և փորձ է կատարել ընդհանուր նպատակի համար համաձայնեցնել իրենց գործողությունները։

1782 թ. վերջերին Պ. Պոտյոմկինը ռուսական մի գործակալի՝ դոկտոր Յակով Ռայնեգսի հետ թանկարժեք նվեր և նամակ է ուղարկում Ղուկաս կաթողիկոսին։ Վերջինս տեղյակ էր ռուսական ծրագրերին և ռուսահայերին ու ռուսական պետական գործիչներին գրած նամակներում ցանկություն էր հայտնել, որ ռուսական տիրապետությունը տարածվի հայերի վրա։ Նա մեծ հարգանքով է ընդունում Ռայնեգսին։ Էջմիածնում գումարվում է խորհրդակցություն, որի մասնակիցները միահամուռ որոշում են Հայաստանի ազատագրման համար զինվորական օգնություն խնդրել ռուսներից։ Ահա թե ինչ է գրել այդ խորհրդակցության մասին իշխան Գ. Պոտյոմկինը Եկատերինա II թագուհուն։

«Այդ օրը արդեն կես գիշերից անցել էր, երբ խորհրդակցություն գումարվեց, որի ժամանակ բոլորը երդվեցին նախկինից առավել հավատարիմ լինել ռուսական կայսերական գահին և խնդրել ողորմած հովանավորություն և բարեհաճություն Հայաստանին՝ ուղարկելով որոշ քանակությամբ զորք, որը չխառնվելով ոչ մի գործի, սոսկ իր ներկայությամբ կարող է բազմապատկել հայ ժողովրդի քաջությունը։ Բոլոր մելիքները պատրաստ են թողնել մեր զորքերը իրենց ամրացված վայրերը, կերակրել նրանց և անել բոլոր անհրաժեշտ մատակարարումները»[11]։

1784 թ. ամռանը Հայաստանն ազատագրելու խնդրի շուրջ ռուսների հետ բանակցելու համար երևանցի հայերը Պետերբուրգ են ուղարկում Ս. Տեր-Սահակյանին։ Հասնելով Պետերբուրգ, Տեր-Սահակյանը կամ ինչպես անվանում էին նրան՝ «Արարատյան դեսպանը», ստանում է Հ. Արղությանի ուղարկած հայ-ռուսական պայմանագրի նախագիծը, որպեսզի նրանով դիմի ռուսական իշխանություններին[12]։ Արղությանը գրում է Տեր-Սահակյանին, որ նա ոչ միայն որպես Երևանի դեսպան է ներկայանալու ռուսական կառավարու-

---

10 Տե՛ս ЦГАДА, ф. Гос. архив, р. XXIII, д. №13, ч. VII, էջ 169։

11 *А. Р. Иоаннисян*, Россия и армянское освободит. движение..., էջ 55։

12 Տե՛ս նույն տեղում, էջ 121։

թյանը, այլև որպես ողջ հայության ներկայացուցիչ. «Դու ղէֆութաթ, այսինքն դեսպան և կամ միջնորդ ես յԵրևանու, այլև բոլոր ազգին Հայոց և ողորմելի մելիքացն Ղարաբաղու, որք մինչև ցայսօր լցին աղաղակաւ յականջս դոցա և մեր... ահա հասել է ժամ՝ կամ փառաւորեսցի ազգ մեր, կամ կանգնեսցի ըստ ծերունւոյն, և կամ անկեալ գլորեսցի»[13]։

«Արարատյան դեսպանը» իր հետ Ռուսաստան էր տարել Երևանի հայերի նամակները՝ հասցեագրված Եկատերինա II թագուհուն և իշխան Գ. Պոտյոմկինին, որոնցով նրանք խնդրում էին օգնություն ցույց տալ իրենց՝ ազատվելու պարսից լծից։ Բայց այդ օգնությունը ուշանում էր, որովհետև ռուսական հրամանատարությունը կրկին հետաձգել էր պարսկական արշավանքը և հույս ուներ մերձկասպյան շրջանների զգալի մասին և Արևելյան Անդրկովկասին տիրանալ խաղաղ բանակցությունների միջոցով։

## 2. ՀԱՅ-ՌՈՒՍԱԿԱՆ ԴԱՇՆԱԳՐԻ ՆԱԽԱԳԾԵՐԸ

Պարսկական արշավանքի նախապատրաստությունների ժամանակ, երբ օրակարգի մեջ էր նաև Հայաստանի ազատագրման և հայկական պետականության վերականգնման հարցը, հայ գործիչների կողմից մշակվում և ռուսական արքունիքին են ներկայացվում ապագա հայկական պետության և Ռուսական կայսրության միջև կնքվելիք դաշնագրերի երկու նախագծեր, որոնցից մեկի հեղինակը ռուսահայոց հոգևոր առաջնորդ Հովսեփ արքեպիսկոպոս Արղությանն էր, մյուսինը՝ հնդկահայ հայրենասեր Շահամիր Շահամիրյանը։

Հ. Արղությանը, որը 18 կետից բաղկացած դաշնագրի իր նախագիծը ռուսական իշխանություններին ներկայացրեց 1783 թ., առաջարկում էր վերականգնել հայկական թագավորությունը և հայոց թագավորի ընտրության իրավունքը վերապահել ռուսական կայսրուհուն, որը կարող էր թագավոր ընտրել հայերից կամ ռուսներից։ Այլ առիթներով արված ակնարկներից կարելի է ենթադրել, որ երկրորդ դեպքում Հ. Արղությանը և նրա համախոհները նկատի ունեին իշխան Գ. Ա. Պոտյոմկինին, որին այս ձևով կամենում էին շահագրգռել Հայաստանի ազատագրման գործը գլուխ բերելու համար։ Հատուկ կետով սահմանվում էր. «Որ ոք թագաւոր կացուսցի, լինիցի հայոց օրինօք և ի Վաղարշապատ թագաւորական քաղաքն, ի սուրբ էջմիածին օծանիցի, որպէս նախնի թագաւորքն մեր»։

Ըստ այդ նախագծի Ռուսական կայսրությունն ու Հայոց թագավորությունը միմյանց հետ կապված էին լինելու բարեկամության հավիտենական դաշինքով։ Հայկական պետությունը պաշտպանելու, Թուրքիային և Իրանին զսպելու համար Հայաստանում մշտապես պահվելու էր ռուսական զորք՝ գեներալի հրամանատարության տակ։ Հայոց թագավորի ժառանգներից մեկը գտնվելու էր ռուսական կայսեր արքունիքում։

Ռուսաստանից հայկական պետության վասալական կախման հարցին Հ. Արղությանը հատկացրել էր հատուկ կետ. «Հպատակութիւն մեր այնպէս եղիցի,—գրում է նա,—որպէս լինիւր երբեմն Յունաց և Պարսից տալով ի յարքունիս հարկացն և ի հանքաց ոսկւոյ և արծաթոյ. և ի ժամանակի պատերազմի յօգնութիւն միմեանց հասանեն, որքան և հարկն պահանջեսցէ»։

---

[13] Մատենադարան, ձեռագիր № 4496, էջ 238։

*Հայկական պետության մայրաքաղաքը պետք է լիներ Վաղարշապատը, Անին կամ էլ «յայլ պատշաճաւոր տեղի յԱյրարատ գաւառի»։ Հատուկ կետերով պարզաբանված էր, թե ինչպիսին են լինելու նորաստեղծ պետության կնիքը և պատվո նշանները։ Հայաստանն ունենալու էր իր դրոշը, կտրելու էր դրամ։ Առևտրական պայմանագիր էր կնքվելու Ռուսաստանի և Հայաստանի միջև, ըստ որում, առևտրի համար Հայաստանին էր տրամադրվելու մի նավահանգիստ՝ Կասպից ծովի ափին։*

*Հայ իշխանական ու նախարարական տների ներկայացուցիչները, որոնք կապացուցեին իրենց իրավունքները, կստանային իրենց տիրույթները։*

*15-րդ կետը սահմանում էր, որ Հայկական պետության մեջ չպետք է լինեն ճորտեր, որոնց հնարավոր լինի վաճառել առանձին-առանձին, այլ լինելու է այնպես, ինչպես «ի ժամանակս թագաւորաց մերոց և Օսմանցւոց և Պարսից»։ Այսինքն՝ բնակիչները լինելու են միայն թագավորի սեփականությունը, եթե վերջինս որևէ իշխանի գյուղ է նվիրելու, ապա՝ բնակիչներով միասին։ «Շնորհընկալ» իշխանը իր հերթին վաճառքի դեպքում կարող է «զգիւղն ընդ բնակչաց ի միասին ծախել, և ոչ թէ բնակիչսն, այլ գիւղն ընդ մլքոյն, այսինքն ընդ հողոյն և ջրոյն, զոր գործեն մարդիկք»։ Այլ կերպ ասած, ապագա Հայոց թագավորության մեջ պահպանվելու էր մուլքային հողատիրության իրավունքը*[14]*։*

*Հայ-ռուսական դաշնագրի Շ. Շահամիրյանի նախագիծը բաղկացած է քսան կետից։ Ըստ այդ նախագծի ազատագրվող Հայաստանը հռչակվելու էր հանրապետություն, որը կառավարվելու էր «Հայոց տան»՝ պառլամենտի կողմից։ Հայաստանի կառավարությունը գլխավորելու էր նախարարը, որը «լիցի ի բուն ազգէն և ի ժառանգութենէ Հայոց և դաւանութեան Հայաստանեայց սուրբ եկեղեցւոյ»։ Ռուսական կայսրությունը «Հայոց տունն» ընդունելու էր իբրև Հայաստանի թագավորի, որն իր մշտական դեսպանն էր ունենալու Պետերբուրգում։*

*Երկու պետությունները կապված էին լինելու միմյանց հետ անխախտ բարեկամությամբ։ «Հայոց տունը» բարեկամություն է անելու Հայաստանի ազատագրողի՝ Ռուսական կայսրության բարեկամների հետ և, ընդհակառակը, թշնամի է լինելու նրա թշնամիների հետ։ Նույն ձևով էլ վարվելու է Ռուսական կայսրությունը։*

*Ռուսական 6000 հոգուց բաղկացած զորք է մնալու Հայաստանում «վասն պահպանութեան երկրին և ազգին Հայոց»։ Քսան տարվա ընթացքում այդ զորքը մաս առ մաս հեռանալու է Հայաստանից։ Պահանջի դեպքում Հայաստանը 6000 կռվող զինվոր է դնելու Ռուսական կայսրության տրամադրության տակ։ «Ի նշան հնազանդութեան» ամեն տարի «Հայոց տունը» ռուսաց կայսրին հանձնելու է «քսան մսղալ զուտ ոսկի, երեք ձի և վեց խոյ»։*

*Ռուս արհեստավորներն ու առևտրականները, համապատասխան մաքս վճարելով, կարող են ազատորեն Հայաստան ներմուծել և վաճառել իրենց ապրանքները, նույնօրինակ իրավունքներ են ունենալու Ռուսաստանում հայ արհեստավորներն ու առևտրականները*[15]*։*

*Ինչպես տեսնում ենք, Հ. Արղությանի նախագծի համաձայն, Հայաստա-*

---

[14] *«Դիւան հայոց պատմութեան», հատ. Դ, էջ 731—734։*

[15] *Տե՛ս նույն տեղում, էջ 734—737։*

նում վերականգնվելու էին միապետական կարգերը և պահպանվելու էր հողի նկատմամբ ավատատերերի իրավունքը, մինչդեռ հնդկահայերի ծրագրով Հայաստանը հռչակվելու էր հանրապետություն, ուր ապահովված էին լինելու բուրժուական հարաբերությունների զարգացման համար անհրաժեշտ պայմաններ։

Այս նախագծերը վերին աստիճանի հետաքրքրական վավերագրեր են և ակնբախ կերպով վկայում են հայ ազատագրական շարժման մեջ առկա տարբեր հոսանքների, միմյանցից արմատականորեն տարբերվող այն հայացքների մասին, որ ունեին ապագա Հայաստանի պետական և սոցիալ-հասարակական կառուցվածքի նկատմամբ կղերա-ֆեոդալական և բուրժուական խավերը։ Առաջինների անունից, փաստորեն, հանդես էր գալիս Հովսեփ Արղությանը, վերջինների կողմից հնդկահայ առևտրական բուրժուազիան՝ ի դեմս Շահամիր Շահամիրյանի։ Երկու կողմերն էլ երազում էին այնպիսի պետության մասին, որտեղ պետք է ապահովված լինեին իրենց դասակարգային շահերը։ Ընդհանուրը, որ միավորում էր նրանց, հայկական պետականության վերահաստատման գաղափարն էր։ Հարկ է նշել, որ Հ. Արղությանի և նրա համախոհների մշակած նախագիծը ոչ մի հակասության մեջ չէր մտնում ցարական Ռուսաստանի պետական և հասարակական կարգերի հետ։ Այն ժամանակվա պայմաններում այդ ծրագիրը կարող էր ընդունելի լինել ռուսների համար։ Իսկ Շ. Շահամիրյանի ծրագիրը, որը, ինչ խոսք, ավելի առաջադիմական էր, սակայն լիովին կտրված էր իրականությունից, հաշվի չէր առնում այն իրողությունը, որ միապետական, ճորտատիրական Ռուսաստանը զենքի ուժով գրաված երկրում չէր հանդուրժի բուրժուական կարգեր և չէր ճանաչի այն որպես անկախ հանրապետություն։ Շահամիր Շահամիրյանի ծրագիրը փաստորեն մնում էր որպես գեղեցիկ երազանք[16]։

Սակայն անկախ այդ ամենից, երկու նախագծերն էլ չէին կարող ծառայել իրենց բուն նպատակին, որովհետև Ռուսական կայսրությունը, որը նախապատրաստվում էր արշավելու դեպի հարավ և ակնկալելով հայերի օժանդակությունը, առատ խոստումներ էր տալիս նրանց, այնուամենայնիվ չէր կարող պայմանագիր կնքել դեռևս գոյություն չունեցող պետության հետ։ Ահա թե ինչ է գրում այդ մասին Հովսեփ Արղությանը Շահամիր Շահամիրյանին.

«Եւ մինչ մեք զքանի գլուխս դաշանց յառաջադրութիւնս արարաք և թարգմանել ետուք ի ցուցս, այժմ պատասխանեցին, թէ թագաւորք ընդ թագաւորաց կարեն դնել զդաշինս. ազգի ձերում ո՞վ է թագաւո՛րն, որն համարձակիցի զդաշինս խնդրել»[17]։

## 3. ՌՈՒՍԱԿԱՆ ԴԻՎԱՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՀԱՅԿԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՎԵՐԱԿԱՆԳՆՄԱՆ ՀԱՐՑԸ

1782 թ. վերջերին վրաց թագավոր Հերակլը խնդրում է Եկատերինա II կայսրուհուն Արևելյան Վրաստանն ընդունել Ռուսական կայսրության հովանավորության ներքո։ Չնայած Անդրկովկասի ֆեոդալական մանր իշխանությունների վրա ունեցած իր ազդեցության, վրացական պետությունը շատ

---

[16] Տե՛ս А. Р. Иоаннисян, Россия и арм. освободительное движение.., էջ 163։

[17] Մատենադարան, ձեռագիր № 2699, էջ 102ա։

թուլացած և քայքայված վիճակում էր։ Հերակլի ձգտումը՝ ստեղծելու միասնական և ուժեղ պետություն, չէր իրականացել և Արևելյան Վրաստանը մնում էր որպես ֆեոդալական մասնատված մի երկիր։ Ընդունելով ռուսական պետության հովանավորությունը, Հերակլը հույս ուներ ռուսների օգնությամբ ամրապնդել Վրաստանի քաղաքական և տնտեսական վիճակը, միավորել վրացական հողերը մեկ ընդհանուր պետության սահմաններում։

Մինչև կլուծվեր այս հարցը, ռուսական հրամանատարությունը շարունակում էր արշավանքի պատրաստությունները, որոնք, սակայն, դանդաղ էին ընթանում։

1783 թ. ապրիլի 13-ին իշխան Գ. Պոտյոմկինի կարգադրությամբ գնդապետ Ս. Դ. Բուռնաշևը որպես կոմիսար ուղարկվում է Հերակլի մոտ։ Նրա խնդիրն էր ռուսական զորքերի համար Անդրկովկասում մթերքների պահեստներ նախապատրաստել և տեղեկություններ հավաքել «Թիֆլիսից մինչև Ղարադաղ և Ղարաբաղի գավառը, Թիֆլիսից մինչև Շուշի ամրոցը... այլև Թիֆլիսի վրայով մինչև Երևան և հետո աջ՝ Սև ծովի կողմը մինչև Տրապիզոն եղած տարածության մասին»[18]։

Ռուսական հրամանատարությունը նախատեսում էր արշավանքը անցկացնել հետևյալ ծրագրով. զորքերի մի մասը Դերբենդի վրայով և հետո Կասպից ծովի ափերով պետք է շարժվեր մինչև Էնզելի, իսկ մյուս մասը Կովկասյան լեռնաշղթայով՝ Վրաստան, այնտեղից էլ Ղարաբաղ և Ղարադաղ, որը պետք է նաև գրավեր Երևանը։ Արշավանքի նպատակը հայտարարված էր «Հայաստանի վերականգնումը»[19]։

Արշավանքի այս ծրագիրը ձևավորվեց հուլիս-նոյեմբեր ամիսներին։ Հուլիսի 24-ին Գեորգիևսկի ամրոցում ստորագրվեց պայմանագիր, որի համաձայն Քարթլ-Կախեթի թագավորն ընդմիշտ հրաժարվում էր Իրանի կամ այլ պետության վասալությունից և մտնում էր Ռուսաստանի հովանավորության ներքո։ Վրաց թագավորները, նախքան գահը ժառանգելը, պետք է հաստատվեին ռուսական կայսրուհու կողմից և հավատարմության երդում տային նրան։ Քարթլ-Կախեթի թագավորը հրաժարվում էր ինքնուրույն արտաքին քաղաքականություն վարելուց։ Դրա փոխարեն կայսրուհին պարտավորվում էր հովանավորել և պաշտպանել նրան[20]։

Համաձայն պայմանագրի, ռուսական երկու գումարտակ, չորս թնդանոթներով, մշտապես պետք է գտնվեին Վրաստանում։ Այդ զորքերը Թիֆլիս են ժամանում 1783 թ. նոյեմբերի 3-ին, իսկ 1784 թ. հունվարի 23-ին Հերակլը հավատարմության երդում է տալիս կայսրուհուն։

Պայմանագրի կնքումից մի քանի օր հետո՝ հուլիսի 30-ին գեներալ Պ. Ս. Պոտյոմկինը անդրկովկասյան խաներին ուղարկում է իշխան Գ. Ա. Պոտյոմկինի հրովարտակը, որով առաջարկվում էր նրանց հետևել Վրաստանի օրինակին և մտնել Ռուսաստանի հովանավորության տակ։ Հրովարտակներ և թանկարժեք նվերներ են ուղարկվում մասնավորապես Շաքիի, Շամախու, Թավրիզի, Խոյի, Թալիշի, Ղարաբաղի և Երևանի խաներին[21]։

---

[18] ЦГАДА, ф. Гос. архив, р. XXIII, д. №13, ч. V, էջ 85—86։

[19] *А. Р. Иоаннисян*, Россия и арм. освободительное движение..., էջ 91—92։

[20] Տե՛ս *П. Г. Бутков*, Материалы для новой истории Кавказа с 1722 по 1803 года, ч. II, էջ 123—128։

[21] Տե՛ս ЦГАДА, ф. Гос. архив, р. XXIII, д. 13, ч. V, էջ 124։

Ռուսական դիվանագիտությունը այս եղանակով ձգտում էր իր կողմը գրավել վերոհիշյալ իշխողներին և ավելի դյուրացնել Արևելյան Անդրկովկասի և մերձկասպյան շրջանների գրավման գործը։ Հարկ է նշել, որ Վրաստանի ռուսական հովանավորության ներքո անցնելը և այս առաջարկությունը մեծ ազդեցություն ունեցան անդրկովկասյան տիրակալների վրա։ Մեկը մյուսի ետևից նրանք սկսեցին հավաստիացնել ռուսներին, որ իրենք ևս կամենում են ընդունել նրանց հովանավորությունը։

Թուրքիան խիստ անհանգստացած էր Անդրկովկասում ռուսների ունեցած հաջողություններից և ամեն գնով աշխատում էր խաներին ետ պահել Ռուսաստանի հովանավորության տակ անցնելու մտքից։ Գնդապետ Ս. Բուռնաշևը գեներալ Պ. Պոտյոմկինին ուղղած զեկուցագրում (ստացված 1784 թ. փետրվարի 16-ին) հայտնում է, որ ըստ Հերակլի հայտնած տեղեկությունների, Թուրքերը մարդիկ են ուղարկել խաների մոտ՝ առաջարկելով նրանց միավորվել և հարձակվել Վրաստանի վրա, որի թագավորը «ռուսներին իր մոտ է կանչել»[22]։

Քանի որ ռուսների ազդեցությունն Անդրկովկասում դեռևս այնքան էլ մեծ չէր, իսկ նրանց դաշնակից Վրաստանը բավականին թուլացած էր, Թուրքերին այդ բանը մասամբ հաջողվում է։ Օրինակ, Երևանի Ղուլամ-Ալի նորընծա խանը, որի հայրը՝ Հուսեյն-Ալին ձևականորեն ճանաչել էր Ռուսաստանի գերիշխանությունը, թշնամական դիրք է բռնում ինչպես Վրաստանի, նույնպես և Ռուսաստանի նկատմամբ[23]։ Սակայն շուտով՝ 1784 թ. հունիսի 7-ին Ղուլամ-Ալի խանը և նրա եղբայրը զոհ են գնում ներքին դավադրության։ Թուրքերը փորձեր են կատարում իրենց ազդեցության տակ գցելու նաև նրա հաջորդին՝ Մուհամադ խանին։ Թուրքական սուլթանը նրան գրում է, թե վրաց թագավորը Ռուսաստանի հետ միացած ցանկանում է անդրկովկասյան խաներին գրավել Ռուսաստանի կողմը և ոչնչացնել նրանց, ուստի իրենք պետք է միավորվեն հակահարված տալու համար։ Սուլթանը հայտնում է միաժամանակ, որ ինքը հրաման է տվել Ախալցխայի և Բայազետի փաշաներին կապ պահպանել խաների հետ և այդ ամենի մասին իրազեկ պահել նրանց։ Ի վերջո, հուսադրում է, որ եթե թշնամին հարձակվի Երևանի վրա, ապա սահմանապահ փաշաները օգնության կգան Երևանին[24]։ Նույն բովանդակությամբ նամակներ են գրում նաև Կարսի Մուստաֆա փաշան և Ախալցխայի Սուլեյման փաշան[25]։

Մուհամադ խանը և նրա կողմնակիցները, չկամենալով նոր կռիվների մեջ մտնել, բացասական պատասխան են տալիս Թուրքերին[26]։ Հանգուցյալ խանի կողմնակիցները ապստամբում են Մուհամադի դեմ։ Արարատյան երկրում ստեղծվում է ծայր աստիճանի լարված վիճակ։ Ապստամբները, մի քանի քոչվոր ցեղերի գլուխ անցած, ասպատակում են երկիրը, հարձակվում գյուղացիների վրա, թալանում նրանց գույքը։ Ղուկաս Կարնեցու նամակներից մեկում կարդում ենք. «Ահա, որպէս գրեցաք, երկիրս խղճալի ի տատանման կայ. ամենայն գործք խափանեցեալ են, զի ոչ ոք կարէ յանդ յելանել։ Եւ մեք զամենայն առ մեօք եղեալսն զինուորեցուցեալ զգոյշ կամք»[27]։

---

[22] Նույն տեղում, մաս VII, էջ 173։

[23] Տե՛ս Վ. Ռ. Գրիգորյան, Երևանի խանությունը XVIII դարի վերջում, էջ 82։

[24] Տե՛ս ЦГВИА, ф. 52, по. 194, д. 331, ч. VIII, էջ 54—55։

[25] Տե՛ս նույն տեղում, էջ 49—50։

[26] Տե՛ս նույն տեղում, էջ 51։

[27] Մատենադարան, ձեռագիր № 2803, էջ 314բ։

*Երևանցիները օգնության խնդրանքով դիմում են Հերակլ թագավորին։ Վերջինս օգնական զորք է ուղարկում, որը միանալով Երևանի խանի զորքին, կարողանում է ընկճել և հնազանդեցնել ապստամբներին*[28]*։*

*1783 թ. գարնանը Հերակլ թագավորը գեներալ Պ. Ս. Պոտյոմկինին է ուղարկում Ղարաբաղի Իբրահիմ խանի նամակը, որով նա ցանկություն էր հայտնում մտնելու Ռուսաստանի հովանավորության տակ։ Ռուսական հրամանատարությունը լավ գիտեր, որ Իբրահիմը ժամանակ էր ուզում շահել։ «Նրա ցանկությունը,—գրում է Օ. Պ. Մարկովան,—չէր կարող անկեղծ լինել, որովհետև խանը գիտեր անկախ Հայաստանի վերականգնման ժամանակ իրեն սպասվող վիճակի մասին»*[29]*։*

*Չհրաժարվելով Իբրահիմ խանին տապալելու և Ղարաբաղում հայկական պետականությունը վերականգնելու իր որոշումից, ռուսական կառավարությունը հարմար էր գտնում առայժմ ընդունել Իբրահիմի հպատակությունը։ Բայց ռուսները չգիտեին, որ սկսելով այս բանակցությունները, Իբրահիմն արդեն մերձեցել էր թուրքերի հետ*[30]*։*

*1783 թ. ապրիլի 6-ին իշխան Գ. Ա. Պոտյոմկինը գրում է գեներալ Պ. Ս. Պոտյոմկինին, թե Ղարաբաղում հայկական պետություն ստեղծելով օրինակ կտրվի հայկական մյուս գավառներին, բացի այդ, շատ հայեր կտեղափոխվեն Ղարաբաղ։ Տենդագին պատրաստություններից հետո, 1783 թ. հունիսին, ռուսական զորքերը շարժվում են դեպի Դերբենդ, բայց ճանապարհին կանգ են առնում։ Թուրքիայի դրդումով Կուբանի շրջանում հուզումներ էին սկսվել ընդդեմ ռուսների և զորքերը ստիպված են լինում ուղղվել դեպի Կուբան։ Հետաձգելով արշավանքը, Գ. Ա. Պոտյոմկինը հրահանգում է Պ. Ս. Պոտյոմկինին, որ նա շարունակի հուսադրել հայերին*[31]*։*

*Ղարաբաղի մելիքների կապերը ռուսական իշխանությունների հետ հայտնի էին Իբրահիմ խանին և, օգտվելով ռուսական արշավանքի հետաձգումից, նա որոշում է վրեժխնդիր լինել նրանցից։ Նրան հաջողվում է խորամանկությամբ ձերբակալել Մելիք-Աբովին և Մելիք-Մեջլումին. մի քանի ամիս կալանավորված պահելուց և մեծ փրկագին ստանալուց հետո, Իբրահիմ խանն ստիպված է լինում ազատ արձակել նրանց, որովհետև հայ մելիքների պաշտպանության պահանջով հանդես է գալիս ռուսական հրամանատարությունը։ Շուշիում եղած ժամանակ մելիքները գաղտնի մարդ են ուղարկում Հերակլ թագավորի և գեներալ Բուռնաևի մոտ, օգնություն խնդրում՝ հայտնելով, որ իրենք պատրաստ են ռազմական օգնություն ցույց տալ թագավորին, եթե նա արշավի Ղարաբաղի վրա։*

*1784 թ. գարնանը ռուսական զորքերը կրկին պատրաստ էին արշավանքի, բայց Եկատերինա II-ը չի ցանկանում զորքեր ուղարկել Անդրկովկաս, որովհետև Ղրիմի վերաբերյալ պայմանագիրն արդեն կնքված էր և վերացել էր թուրքերի հետ ընդհարման վտանգը*[32]*։*

*Այդ ժամանակ քաղաքական այնպիսի իրադրություն է ստեղծվում, որ*

---

[28] *Տե՛ս նույն տեղում, էջ 364բ—365ա։*

[29] *О. П. Маркова*, Россия, Закавказье и международные отношения в XVIII веке, *էջ 188։*

[30] *Տե՛ս նույն տեղում, էջ 184։*

[31] *Տե՛ս նույն տեղում, էջ 185։*

[32] *Տե՛ս նույն տեղում, էջ 186—187։*

ռուսական կառավարությունը ձգտում է Հայաստանը, ինչպես նաև Արևելյան Անդրկովկասի մյուս մասերն ու մերձկասպյան շրջանները նվաճել խաղաղ ճանապարհով՝ դիվանագիտական բանակցությունների միջոցով։

1783 թ. Իրանի գահի հավակնորդներից մեկը՝ Ալի-Մուրադ խանը գրավել էր Սպահանը։ Բանակցություններ են սկսվում ռուսների և խանի միջև, վերջինս Ռուսաստան է ուղարկում իր ներկայացուցիչ Մուհամադ խանին։ Պարզվում է, որ Ալի-Մուրադ խանը պատրաստ է Ռուսաստանի համար ձեռնտու առևտրական պայմանագիր կնքել և ռուսներին զիջել դեռևս Պետրոս Մեծի կողմից նվաճված մերձկասպյան մարզերը (Դերբենդը, Բաքուն, Գիլանը, Մազանդարանը և Աստարաբադը), ինչպես նաև Արևելյան Անդրկովկասը (Ղարաբաղի, Ղարադաղի, Նախիջևանի ու Երևանի խանությունները), պայմանով, որ ռուսները ճանաչեն իրեն որպես Իրանի շահ և օգնություն ցույց տան ընդդեմ թուրքերի։

Ալի-Մուրադ խանի առաջարկությունները չափազանց հետաքրքրեցին ռուսական իշխանություններին։ Եկատերինա II կայսրուհուն Գ. Ա. Պոտյոմկինը հայտնում է հետևյալը. «Պարսկական երկրի կենտրոնի տիրակալ Ալի-Մուրադ խանը դաշինք է ուզում կնքել Ռուսաստանի հետ, կարելի է կամավորապես անջատել Պարսկական Հայաստանը»[33]։

Եթե Ալի-Մուրադ խանը Ռուսաստանին զիջեր Արևելյան Անդրկովկասն ու մերձկասպյան շրջանները, միևնույն է, այդ վայրերի իշխողները առանց դիմադրության չէին հրաժարվելու իրենց իշխանություններից։ Ռուսները շատ լավ գիտեին այդ, բայց համաձայնությունը Ալի-Մուրադի հետ ապահովելու էր Իրանի չեզոքությունը այս հարցում։ Եվ ավելին, հնարավոր թշնամուց պարսից շահը դառնալու էր բարեկամ և անգամ դաշնակից, եթե գործին խառնվեր Թուրքիան[34]։

Ալի-Մուրադ խանի հետ վերջնական համաձայնության հասնելու համար 1784 թ. աշնանը Սպահան է ուղարկվում գնդապետ Վ. Ս. Տոմարան։ Վերջինս Ալի-Մուրադից պահանջելու էր Արևելյան Հայաստանի, մերձկասպյան շրջանների մի զգալի մասի և Ադրբեջանի խաղաղ անջատումը Իրանից։ Նա աշխատելու էր համոզել խանին, որ պարսից ուժեղ պետություն ստեղծելու համար պետք է ազատվել այդ մարզերից, որովհետև ոչ պարսիկ բնակչությունը միշտ ձգտելու է թոթափել օտարի լուծը և այդ պայքարով թուլացնելու է պետությունը։ Բացի այդ, Իրանի պետական շահերի տեսակետից էլ ձեռնտու է Թուրքիայի և Ռուսաստանի միջև հայկական բուֆերային պետության գոյությունը[35]։

Ռուսաստանը պլանավորել էր ընդլայնել Վրացական թագավորության սահմանները Գանձակի խանության և հարակից շրջանների միացմամբ, կազմակերպել հայկական պետություն, Դերբենդի և մերձակա խանությունները միացնել Ռուսաստանին, հարավային մերձկասպյան շրջաններից ստեղծել ևս մեկ պետություն, որին տրվելու էր պատմական Աղվանք անունը, պայմանագրեր կնքել վասալ այդ պետությունների կառավարությունների հետ։ Միաժամանակ նախատեսվում էր թուրքերի հետ պատերազմ ծագելու դեպքում

[33] *О. П. Маркова*, Россия, Закавказье и международные отношения в XVIII веке, էջ 188։

[34] *А. Р. Иоаннисян*, Россия и арм. освободительное движение..., էջ 125—126։

[35] Տե՛ս *Н. Ф. Дубровин*, История войны и владычества русских на Кавказе, т. II, СПб., 1886, էջ 171—172։

միավորել Իրանի և Ռուսաստանի ուժերը։ Թուրքիայից նվաճված հողերից Իմերեթիան և Արևմտյան Վրաստանի մյուս իշխանությունները մտնելու էին ռուսական գերիշխանության տակ, Ախալցխան տրվելու էր Հերակլին, իսկ Թուրքահայաստանը միացվելու էր Արևելյան Հայաստանին։ Այսպիսով, ստեղծվելու էր հայկական մի ընդարձակ պետություն[36]։

Իրանի և Ռուսաստանի մերձեցման և Ռուսաստանին կատարվելիք հողային զիջումների հեռանկարը չափազանց անհանգստացնում էր Ֆրանսիային։ Ֆրանսիական կառավարությունը միջոցներ է ձեռք առնում արգելակելու այդ մերձեցումը։ 1785 թվականի գարնանը Սպահան է գալիս ֆրանսիական գործակալ կոմս Ֆերյեր-Սովբեֆը, որը պետք է համոզեր պարսիկներին՝ մերժել Ռուսաստանի առաջարկությունները և վերականգնել իրենց տիրապետությունը Անդրկովկասում։ Կոմս Ֆերյեր-Սովբեֆին հրահանգված էր նաև նպաստել իրանա-թուրքական հարաբերությունների բարելավմանը և Թուրքիայի ու Իրանի հետ դաշինք կնքել՝ ընդդեմ Ռուսաստանի[37]։

Գնդապետ Վ. Ս. Տոմարան, որ դուրս էր եկել Պետերբուրգից 1784 թվականի հոկտեմբերի սկզբներին, Թիֆլիսի վրայով Երևան է ժամանում 1785 թվականի գարնանը։ Նրա հետ միաժամանակ Սպահան էր վերադառնում Ալի-Մուրադ խանի դեսպան Մուհամադ խանը։ Սակայն Տոմարան խոյից այն կողմ չգնաց։ Այստեղ նա տեղեկություն ստացավ Ալի-Մուրադ խանի մահվան մասին և ստիպված եղավ բռնել վերադարձի ուղին։

Այսպիսով, ձախողվեցին ռուսական իշխանությունների ծրագրերը՝ դիվանագիտական բանակցությունների միջոցով դյուրացնելու Արևելյան Հայաստանի նվաճումը և այնտեղ ստեղծելու հայկական պետություն։

## 4. ՔԱՂԱՔԱԿԱՆ ԻՐԱԴԱՐՁՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ XVIII ԴԱՐԻ ՎԵՐՋԵՐԻՆ

Գեորգիևսկի պայմանագրի կնքումից հետո, երբ Վրաստանն ընդունեց Ռուսաստանի հովանավորությունը, Թուրքիան ավելի է ակտիվացնում իր ջանքերը Կովկասի լեռնական իշխաններին և անդրկովկասյան խաներին հանելու ռուսների դեմ և դրանով կասեցնելու նրանց առաջխաղացումը դեպի Անդրկովկաս։ Թուրքերը զինում էին լեռնականներին, առատ նվերներով սիրաշահում նրանց և դրդում հարձակումներ կատարել ռուսական սահմանապահ զորքերի ու Վրաստանի վրա։ Թուրքական գործակալներն իրենց ուշադրությունն առավելապես կենտրոնացրել էին Ավարիայի Ումմա կամ Օմար խանի վրա, որը Հերակլ թագավորից Վրաստանի վրա չհարձակվելու համար ամեն տարի նշանակալից գումարներ էր ստանում։ Բայց այդ ժամանակ Վրաստանը տնտեսական ծանր կացության մեջ լինելով, ի վիճակի չէր Ումմա խանին վճարելու սահմանված գումարը։ Դրանից վերջինս խիստ դժգոհ էր և պատրաստ էր բանակցելու Հերակլի թշնամիների հետ։ Թուրքական կառավարությունը որոշում է օգտագործել Ումմային և Ախալցխայի Սուլեյման փաշայի միջոցով պարգևներ ու դրամ է խոստանում, եթե Ումման իր զորքերն ուղարկի Ախալցխա՝ ռուսների դեմ գործելու համար[38]։

---

[36] Տե՛ս А. Р. Иоаннисян, Присоединение Закавказья к России и международные отношения в начале XIX столетия, Ереван, 1958, էջ XLII—XLIII։

[37] А. Р. Иоаннисян, Россия и арм. освободительное движение..., էջ 130—131։

[38] ЦГАДА, ф. Гос. архив, р. XXIII, д. №13, ч. IV, էջ 263։

Թուրքերը մտածում էին Վրաստանի վրա հարձակումներ ձեռնարկելու համար օգտագործել Արևելյան Հայաստանի կենտրոնական մասը՝ Երևանի խանությունը, որն ավելի մոտ է Թիֆլիսին։ Նրանք սովորաբար Վրաստանին հարվածում էին երկու ուղղությամբ՝ Ախալցխայի և Ջարո-Բելոկանի։ Այս երկու վայրերում էլ օգտագործում էին լեռնականներին։ Ախալցխայի կողմից կատարվող հարձակումներն այնքան էլ վտանգավոր չէին Վրաստանի համար, որովհետև սահմանները պաշտպանվում էին ոչ միայն վրացական, այլև ռուսական զորքերի կողմից։ Եթե թուրքերը կամ նրանց կողմնակիցները տեր դառնային Արարատյան երկրին, ապա հնարավոր կլիներ Վրաստանին հարվածել նաև հարավից։ Երևանի կորուստը կթուլացներ Հերակլին, ավելի կմեծացներ Թուրքիայի կշիռը Անդրկովկասում, լայն հնարավորություն կընձեռեր նրան տեղական դեպքերին հետևելու և ռուսների առաջխաղացումը դեպի հարավ կանխելու համար։

Հնարավորություն չունենալով ինքն իրականացնելու այս ծրագիրը, սուլթանն աշխատում էր այդ գործի մեջ ներգրավել Երևանի խանության հարևաններին։ Հ. Արղությանը 1785 թվականի փետրվարի 25-ին գրած մի նամակում հայտնում է, որ Ղարաբաղի և Խոյի խաները Ախալցխայի փաշայի միջոցով սուլթանից նվերներ ու նամակներ են ստացել։ Այդ նամակներով խաներին առաջարկվում է միավորվել և հարձակվել Երևանի վրա. «զորութիւն գրոյն այս է, թէ դուք միաբան լինիք և ջանայք Երևան աիրել, որ թշնամեաց ձեռին չմնայ և որքան զորութիւն և փող կամէք, տացից ձեզ»[39]։

Հ. Արղությանը գրում է, որ նման առաջարկություններ արվել են նաև մյուս խաներին. «Նմանապէս և Ցաթալի խանին, Թավրիզու, Նախիջևանու, Շամախու, Նուխու, Բաքուոյ խանիցն և լեզգուցն, Իսմինին. Շամխալին, Աւար խանին և այլոց մէկ ոսկէ սհաթ և բաւական ոսկի, որին երկու հազար, որին աւել-պակաս առաքեալ է խօնդքարն և Ախլցխու փաշայն իւր մարդովն առաքեալ է իւրաքանչիւրոցն։ Զօրութիւն այս, որ ընդդիմանան Վրաց և կործանեն և Երևանու տիրեն»[40]։

Անդրկովկասյան • խաները մերժում են սուլթանի այս առաջարկությունը։ Նրանցից ոմանք այդ անում են վախենալով ռուսական զորքերից[41], իսկ ոմանք էլ՝ չկամենալով փչացնել իրենց հարաբերությունները Ռուսաստանի հետ։

Լեռնականների մեծամասնությունը ևս բացասական պատասխան է տալիս թուրքերի առաջարկին, միայն Ավարիայի Ումմա խանն է համաձայնվում։ Ուստի թուրքերն իրենց ողջ ուշադրությունը կենտրոնացնում են դեպի Վրաստան կազմակերպվող արշավանքի վրա։ Նրանք Հյուսիսային Կովկասում կազմակերպում են իրեն մարգարե հայտարարած Շեյխ Մանսուրի ապստամբությունը ռուսների դեմ, որպեսզի Ումմա խանը կարողանա անարգել արշավել Վրաստանի վրա։ Կապը Վրաստանի և Ռուսաստանի միջև խզվում է։ Ռուսները ոչ միայն հնարավորություն չեն ունենում Վրաստանին ուղարկելու Հերակլ թագավորի խնդրած 200 փութ վառոդը և լրացուցիչ զորքը, այլև Վրաստանում եղած ռուսական զորքերի հանդերձանքն ու ռոճիկը[42]։

---

39 Մատենադարան, ձեռագիր № 4496, էջ 272—273։

40 Նույն տեղում։

41 Տե՛ս նույն տեղում։

42 Տե՛ս *Н. Дубровин*, История войны и владычества русских на Кавказе, т. II, էջ 85, 137։

1785 թվականի սեպտեմբերի 17-ին Ումմա խանը 20.000 մարդով անցնում է Տորի գետը և շարժվում Թիֆլիսի ուղղությամբ։ Թիֆլիսը գրավելու մտադրություն նա չուներ, սակայն դիմում է այդ քայլին՝ Հերակլին խաբելու համար, որն իր զորքով և գնդապետ Բուռնաշևի ռուսական երկու գումարտակներով հետևում էր իրեն։ Շուտով Ումման իր շարժման ուղղությունը փոխում է և գնում դեպի Բորչալու՝ ճանապարհին ավերելով ու թալանելով հանդիպած գյուղերը, սպանելով ու գերելով բնակչությանը։

Բորչալուում խանը բնակչությունից պատանդներ է վերցնում և Դեբեդի ձորով շարժվում դեպի Ախթալայի արծաթի հանքերը։ Նա գրավում է Ախթալայի ամրոցը, ավերում գործարանները, քանդում եկեղեցին։ Այստեղ խանը գերի է վերցնում Ախթալայի հանքերի ու արծաթի գործարանի 800 բանվոր, որոնցից 640-ին սպանել է տալիս[43]։

Սեպտեմբերի 26-ին Ումմայի զորքերը շարժվում են Լոռվա բերդի վրա, որի բնակչության մեծ մասը գաղթել էր Արարատյան դաշտից[44]։ Նա կանգ է առնում Օձուն գյուղի մոտ և այնտեղից մի ջոկատ ուղարկում Լոռվա ամրոցի շրջակա գյուղերն ավերելու։ Երեք օր հետո նրանք վերադառնում են Օձունից և հարձակվում ամրոցի վրա։ Ամրոցի պաշտպանները համառորեն դիմադրում են։ Ումմա խանը իր զինվորներին կարգադրում է անտառից փայտ բերել, լցնել ամրոցի պարիսպների տակ՝ այնքան որ կարողանան բարձրանալ նրանց վրա և մտնել ամրոցի ներսը[45]։ Ի վերջո ամրոցը նվաճվում է։ Ումմա խանը կարգադրում է ավերել այն։ Բնակիչների մի մասը սպանվում է, մյուսները գերեվարվում են։ Դրանից հետո խանն իր զորքով մտնում է Թուրքիայի սահմանները և Ախալքալաքի վրայով գնում Ախալցխա։

Ումմա խանի արշավանքի լուրը մեծ իրարանցում է առաջացնում նաև Արարատյան դաշտում։ Բնակիչները սարսափահար թողնում են ամեն ինչ, փախչում և ամրանում են երկրի անառիկ վայրերում, իսկ շատերն էլ մտնում են Երևանի բերդը։ Զնայած էջմիածնի վանքը շրջապատված էր պարիսպներով և այնտեղ կային պահապան հրացանակիր զինվորներ, բայց Ղուկաս կաթողիկոսը, անսալով Հերակլի և Երևանի Մուհամադ խանի խորհուրդներին, հավաքում է վանքի թանկարժեք իրերը և գնում Երևան։

Ումմա խանի արշավանքը մի կատարյալ դժբախտություն էր թե Վրաստանի և թե Հայաստանի համար։ Լեռնականները մեծ վնասներ հասցրեցին երկրի տնտեսությանը. նրանք ավերեցին ու կողոպտեցին բազմաթիվ գյուղեր, գերի տարան հարյուրավոր բնակիչներ։ Արշավանքի վտանգից Արարատյան երկրի բնակիչները երկու անգամ տեղահան եղան՝ երկար ժամանակով փակվելով անառիկ վայրերում։ Այդ տեղահանությունները քայքայեցին Երևանի խանության առանց այդ էլ քայքայված տնտեսությունը։

1786 թ. կեսերին Լոռու ամրոցում հաշտության բանակցություններ են սկսվում վրացիների և լեռնական լեզգիների միջև։ Հերակլը պարտավորվում է Ումմա խանին վճարել տարեկան 500 ռուբլի, որպեսզի նա նորից չհարձակվի Վրաստանի վրա։ Դրանից հետո խաղաղության դաշինք է կնքվում։

---

[43] Տե՛ս նույն տեղում, էջ 141։

[44] Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 4481, էջ 145բ։

[45] Տե՛ս «Յիշատակարան ազգային արդեան պատմութեան համար», «Կռունկ Հայոց աշխարհին», 1862, էջ 282։

Ումմա խանի հեռանալուց հետո էլ Արարատյան երկրի բնակչությունը հանգստություն չի գտնում։ Օգտվելով երկրում ստեղծված իրարանցումից և Մուհամադ խանի թուլությունից, խանության ներսում կենտրոնախույս ուժերը դարձյալ խռովություններ են սկսում, հարձակվում են միմյանց վրա, թալանում գյուղերը։ Ահա թե ինչ է գրել Ղուկաս կաթողիկոսը 1786 թ. մայիսի 26-ին Շ. Շահամիրյանին ուղղած իր նամակում.

«Բայց յետ լէզկեացն ահի և նեղութեանց, զորս կրեցաք և ևս ոչ գտանիմք զհանգիստ ի լրբութենէ անօրէն բնակչաց երկրիս։ Քանզի առ ի չգոյէ կատարեալ և ահաւոր իշխողի, որ կարիցէ զամենայնս ընդ ձեռամբ նուաճել. իւրաքանչիւր ոք զախորժակս իւր գործէ՝ընդդէմ միմեանց, վասն որոյ յառնեն ի վերայ միմեանց բազմութեամբ և աւարեն զգիւղորայս, կողոպտեն և մերկացուցանեն զքրիստոնեայս, և զուրբ Աթոռս պէս-պէս վնասուք վնասեն և զմեզ սրտամաշ առնեն»[46]։

Թուրքերը բացահայտ թե գաղտնի ձևով հրահրում էին Հյուսիսային Կովկասի լեռնականներին շարունակելու իրենց ավերիչ արշավանքները Վրաստանի վրա. նրանց նպատակն էր այդ եղանակով ստիպել Հերակլին հրաժարվելու ռուսական հովանավորությունից։ Վրաստանում եղած ռուսական գումարտակները ի վիճակի չէին ապահովելու վրացական սահմանների անվտանգությունը, իսկ 1787 թ. աշնանը նրանք ստիպված են լինում հեռանալ Վրաստանից։ Այդ նույն թվականի օգոստոսին սկսվել էր ռուս-թուրքական երկրորդ պատերազմը (1787—1791 թթ.) և ռուսական կառավարությունը նպատակահարմար չէր գտնում Անդրկովկասում ունենալ զորային փոքր միավորներ։ Ռուսական հրամանատարության կարծիքով այդ գումարտակներն իրական, շոշափելի օգուտ չտալով, ավելի էին բարդացնում Վրաստանի վիճակը։ Այդ պատերազմի ժամանակ Անդրկովկասում ռազմաճակատ չբացվեց և օրակարգից հանվեց Հայաստանը գրավելու և հայկական պետություն ստեղծելու ծրագիրը։

* *
*

Իրանում կենտրոնական իշխանության համար ծավալված պայքարը XVIII դարի վերջերին ավարտվեց Կաջարների հաղթանակով, որոնք լուրջ քայլերի են դիմում իրենց տիրապետությունը Անդրկովկասի վրա ևս տարածելու ուղղությամբ։ Սկզբում այդ արվում էր խաղաղ միջոցներով, բայց երբ դա չօգնեց՝ Կաջարների հարստության հիմնադիր Աղա Մուհամադ շահը 1795 թ. իրականացրեց մի ավերիչ արշավանք, իսկ երկու տարի անց՝ մեկ ուրիշը և կարողացավ վերահաստատել Իրանի գերիշխանությունը Արևելյան Անդրկովկասի մի մասի, այդ թվում նաև Երևանի խանության վրա։

Աղա Մուհամադը (1743—1797 թթ.) Կաջարների նշանավոր առաջնորդներից մեկի՝ Մուհամադ-Հասան խանի որդին էր, որը Նադիր շահի սպանությունից հետո ներգրավվել էր իշխանության համար մղվող պայքարում, բայց 1758 թվականին պարտություն կրելով Քարիմ խանից, սպանվել էր և նրա տիրույթները գրավվել էին հաղթողի կողմից։ Քարիմ խանի մահից (1779) հետո Կաջարները Աղա Մուհամադ խանի գլխավորությամբ անցնում են հակահարձակ-

---

[46] Մատենադարան, ձեռագիր № 4501, էջ 24բ—25ա։

մանի։ Վերջինս երկար ժամանակ որպես պատանդ պահվում էր Նադիրի հաջորդ Ադիլ շահի և հետո Քարիմ խանի մոտ։ Ադիլ շահի հրամանով վեց տարեկան հասակում նա ներքինացվել էր։ Քարիմ խանի մահից հետո Աղա Մուհամադը Շիրազից փախչում է Մազանդարան և իրեն անկախ հայտարարում։ Շուտով նա գրավում է Աստարաբադը, Գիլանը և իր ուժերը կենտրոնացնում Զենդերի դեմ։ 1785 թվականին նա գրավում է Թեհրանը, Ղումը, Քաշանը և Սպահանը[47]։ 90-ական թվականների սկզբին Աղա Մուհամադ խանը նվաճում է Շիրազը, Թավրիզը, իսկ հետո՝ Քիրմանը։ 1794 թվականին Աղա Մուհամադ խանը իրեն շահ է հռչակում, որից հետո եռանդուն գործունեություն է ծավալում Իրանի տիրապետությունը Արևելյան Հայաստանի, Քարթլ-Կախեթի և Ադրբեջանի վրա վերահաստատելու համար։

1795 թվականի մայիսի 7-ին Կովկասյան զորքերի հրամանատար գեներալ Ի. Վ. Գուդովիչը Գեորգիևսկից Եկատերինա II կայսրուհուն հայտնում է, որ Աղա Մուհամադ շահը ծրագրել է երկու ուղղությամբ հարձակում գործել Անդրկովկասի վրա, գրավել խանությունները, իսկ հետո արշավել Վրաստանի վրա[48]։ Նա գրում է, որ ինքը մի շարք նախազգուշական միջոցներ է ձեռք առել, խորհուրդ է տվել Հերակլին միավորվել հարևան խաների հետ՝ Աղա Մուհամադին հակահարված տալու համար։

Քննելով Գուդովիչի այս զեկուցագիրը, պետական խորհուրդը մայիսի 22-ին հավանություն է տալիս նրա միջոցառումներին և հայտնում, որ ամեն կերպ պետք է աջակցել Հերակլին ու խաներին, միաժամանակ ցուցմունք է տրվում խուսափել ընդհարումներից և աշխատել բարեկամական հարաբերություններ հաստատել Աղա Մուհամադ շահի հետ։

Պարսից արշավանքի վտանգը հայոց կաթողիկոսին ևս ստիպում է նախազգուշական միջոցների դիմել։ Նա եկեղեցական թանկարժեք սպասները ուղարկում է Կարս ու Թիֆլիս՝ ի պահպանություն։ Այնուհետև, տեղեկանալով, որ Հերակլ թագավորը պատրաստություններ է տեսնում թշնամուն դիմադրելու համար, կարգադրում է վանքի միջոցներից 100 թուման ուղարկել նրան[49]։ Որոշ ժամանակ անց, Հերակլի դեպի Ղազախ շարժվելու լուրն առնելուց հետո, կաթողիկոսը կարգադրում է զինվորական ծախսերի համար տալ նրան մի պատկառելի դրամագլուխ[50]։ Այս փաստերը վկայում են այն մեծ հույսերի մասին, որ ուներ հայոց կաթողիկոսը Հերակլի նկատմամբ՝ Աղա Մուհամադ շահի արշավանքի նախօրեին։

Երևանի խանը ևս պատրաստություններ է տեսնում։ Հարություն Արարատյանը, որն այն ժամանակ գտնվում էր Երևանում, պատմում է, որ խանը Աղա Մուհամադ շահից պաշտպանվելու համար յոթ տարվա պաշար է հավաքում և Երևանի բերդն է բերում 7000 զինվոր, որոնցից երեք հազարը հայ[51]։

Աղա Մուհամադ շահի արշավանքի պատրաստությունների լուրը մեծ խուճապ և ահաբեկում է առաջացնում Անդրկովկասի բնակչության մեջ։ 1795

---

[47] Տե՛ս «Жизнеописание Ага-Магомет хана Каджара», СПб., 1835, էջ 2—3։

[48] Տե՛ս *В. И. Левиатов*, Очерки из истории Азербайджана в XVIII в., Баку, 1948, էջ 164։

[49] Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 4481, էջ 339բ։

[50] Տե՛ս նույն տեղում, էջ 340ա։

[51] Տե՛ս «Жизнь Артемия Араратского, уроженца селения Вагаршапат, близ горы Арарат», т. II, СПб., 1813, էջ 11։

թվականի կեսերին Երևանից, Ղարաբաղից, Նախիջևանից ու այլ վայրերից քրիստոնյա և մահմեդական բնակչության մեծ խմբեր սկսում են հեռանալ դեպի Վրաստան։ Գաղթականները, որոնք շարժվում էին գլխավորապես Կուրի հովտով, սպառում են իրենց սննդամթերքը։ Սովը և համաճարակները հնձում էին նրանց շարքերը, իսկ կենդանի մնացածներին տեղական ֆեոդալները ստրկացնում էին[52]։

Աղա Մուհամադ շահը 1795 թվականի հունիսի վերջերին 50000 զորքի գլուխ անցած, անցնում է Արաքսը և ներխուժում Անդրկովկաս։ Նա զորքը բաժանում է երեք մասի, մի մասը իր երեք եղբայրներ Ալիկուլի և Ջաֆարկուլի խաների հրամանատարությամբ ուղարկում է Երևանի վրա, մյուս մասը՝ Մուղանի դաշտը՝ Շամախին և Նուխին նվաճելու համար, իսկ ինքը, հիմնական մասի գլուխն անցած, շարժվում է դեպի Շուշի և կանգ առնում յոթ վերստ հեռավորության վրա։

Խանությունններն իրեն հպատակեցնելուց հետո, շահը որոշել էր հարձակվել Վրաստանի վրա, ուստի Հերակլ II-ը նորանոր դիմումներ է անում ռուսական հրամանատարությանը՝ խնդրելով օգնել իրեն։ Բայց այդ օգնությունն ուշանում էր։ Պետք է ասել, որ ռուսական սահմանապահային իշխանությունը՝ հանձին գեներալ Ի. Վ. Գուդովիչի, պատշաճ նախաձեռնություն չցուցաբերեց։ Գուդովիչը երկարատև դրագրություն սկսեց Պետերբուրգի հետ, սպասելով կարգադրությունների։ Վրաստանին ռազմական օգնություն ցույց տալու մասին սեպտեմբերի 4-ի հրամանը Պետերբուրգից Գուդովիչին հասավ հոկտեմբերի 1-ին միայն[53]։

Վրաստանը մենակ էր մնում ահեղ թշնամու դիմաց և Հերակլը դաշնակիցներ էր որոնում։ Նրան օգնության է շտապում Իմերեթիայի Սողոմոն թագավորը իր 3000-անոց զորքով։ Հերակլը բանակցությունների մեջ է մտնում Երևանի խանի հետ։ Վերջինս Հերակլից օգնություն ստանալու ակնկալություն ուներ, սակայն Վրաց թագավորն ի վիճակի չէր օգնություն ցույց տալու Երևանի խանին և նա միայն իր ուժերով է մնում Ալիկուլի և Ջաֆարկուլի խաների 20000-անոց զորքի դեմ[54], որը հուլիսի վերջերին մոտենում է Երևանին[55]։ Մուհամադ խանը տեղահան էր արել Երևան քաղաքի և շրջակայքի բնակչությանը, նրանց հետ փակվել բերդում ու պատրաստվել երկարատև պաշարման։

Երևանի պաշարումը տևում է մեկ ամսից ավելի (35 օր), այդ ընթացքում Արարատյան երկիրը ենթարկվում է մեծ ավերածությունների։ Վարդան Օձնեցին պատմում է. «Իսկ Ալիղուլի խան սարդար, յետ բազում անգամ յորդորելոյ զխանն Երևանայ գալ ի հնազանդութիւն շահին և ընդդիմանալոյ նորա, զայրացեալ յոյժ, պատերազմեցաւ ընդ բերդականացն Երևանայ յաւուրս ինչ և անդէն սփռեալ զզօրս իւր յԱյրարատ գաւառ ասպատակեաց զամենայն երկիրն Գառնոյ առ Հրազդան գետով, քանդեալ աւերեաց զշինուածս տանց և հուր արկեալ այրեաց զամենայն արմտիս երկրիս նոցա, զոր յայնժամ հնձեալ գիզեալ էին»[56]։

---

[52] Տե՛ս նույն տեղում։

[53] Տե՛ս „Очерки истории СССР, М., 1956, էջ 734—735։

[54] Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 4331, էջ 79բ։

[55] Տե՛ս «Յիշատակարան ազգային արդեան պատմութեան համար», «Կռունկ Հայոց աշխարհին», 1862, № 4, էջ 284։

[56] Մատենադարան, ձեռագիր № 4331, էջ 85ա—85բ։

Պաշարված երևանցիները, այնուամենայնիվ, հույս ունեին, որ Հերակլը օգնության կգա իրենց։ Նրանք համառորեն դիմադրում էին և շատ վնասներ պատճառում թշնամուն։ Ստեղծված դժվարությունների մասին Ալիկուլի և Ջաֆարկուլի խաները նամակով հայտնում են շահին։ Նրանք գրում են, որ լուր է տարածվել Հերակլի գալու մասին և Երևանի Մուհամադ խանը շարունակ ձգձգում է շահի պահանջները կատարելը։ Պատասխան նամակով շահը կարգադրում է, որ Երևանը պաշարած զորքերը մնան իրենց տեղում և եթե Հերակլը գա, ապա աշխատեն ամրանալ որևէ տեղում, մինչև որ ինքը օգնության կհասնի նրանց[57]։

Աղա Մուհամադ շահը չի կարողանում հաղթահարել Շուշիի պաշտպանների դիմադրությունը, որոնք հաճախ դուրս էին գալիս ամրոցից և հարձակումներ կատարում պարսից զորքերի վրա։ Քիչ նեղություն չէին կրում շահի զորքերը նաև այն 12 հազար հայ ընտանիքներից, որոնք ամրացել էին Շուշին շրջապատող կիրճերի մեջ և շարունակ թիկունքից հարվածում էին պաշարողներին[58]։ 33 օր Շուշին պաշարելուց հետո շահը չի կարողանում գրավել այն և հրաման է արձակում ավերել շրջակայքը։ Երևանի պաշարողներին շահը հայտնում է, որ ինքը մտադիր է ձմեռել Շուշիի մոտ, սակայն մինչ այդ 20 հազար զորքով արշավելու է Վրաստան։ Նա հրամայում է Ջաֆարկուլի խանին՝ Երևանի մոտ թողնել չորս հազար զորք և մնացածով պատրաստվել իր մոտ գալու։ Իսկ եթե Երևանի խանը հնազանդվի և պատանդներ հանձնի, այդ դեպքում թողնել Երևանի պաշարումը[59]։

Երևանի դրությունն այդ ժամանակ չափազանց ծանր էր։ Զրկված արտաքին որևէ օգնությունից, Մուհամադ խանը երկյուղ էր կրում, որ ի վերջո շահը կարող է բոլոր ուժերը կենտրոնացնել Երևանի վրա և այն ժամանակ ոչ ոք չէր կարող երաշխավորել ոչ միայն քաղաքի բնակչության, այլև բերդում փակված մեծամեծների կյանքի համար։ Ուստի խանը նախամեծար է համարում շահին հպատակություն հայտնելը հետագա անհույս դիմադրությունից[60]։ Հաշտությունը կնքվում է 1795 թվականի օգոստոսի վերջերին։ Մուհամադ խանը պարտավորվում է Աղա Մուհամադ շահին հարկեր վճարել, պահանջի դեպքում զորքով և զենքով օգնել նրան։ Որպես երաշխիք վասալական այս պարտավորությունների կատարման, նա պատանդ է տալիս կնոջը և նորածին որդուն[61]։

Երևանը պաշարած Ալիկուլի խանը մեկնում է Գանձակ և միանում շահին. սկսվում է Աղա Մուհամադ շահի արշավանքը դեպի Վրաստան։ Վրացական զորքերը վճռական ճակատամարտում պարտություն են կրում, և սեպտեմբերի 12-ին ընկնում է Թիֆլիսը։ Քաղաքի բնակիչների մի մասը սրի է քաշվում, իսկ մնացածները տարվում են գերի։ Քաղաքի փողոցները ներկվում են հազարավոր զոհերի արյունով։

Սկզբնաղբյուրները ցույց են տալիս, որ վրաց մայրաքաղաքի պաշտպանությանը ակտիվորեն մասնակցել են նաև քաղաքի հայ բնակիչները։ Պահպանվել են նրանցից մի քանիսի անունները՝ հրետանու «պրեմիեր-մայոր»

---

[57] Տե՛ս „Грамоты и другие исторические документы XVIII столетия, относящиеся до Грузии", т. II, вып. II, СПб., 1902, էջ 95։

[58] Լեո, Հայոց պատմություն, հատ. 3, էջ 879։

[59] Н. Дубровин, История войны..., т. III, СПб., 1886, էջ 34—35։

[60] Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 4331, էջ 85բ։

[61] Տե՛ս նույն տեղում։

Դարբինի, Բրարիոնի, որոնք հիմնասարար ղոհվել են կռիվների ընթացքում[62]։ Ըստ ավանդության այդ ժամանակ նվաճողների ձեռքով նահատակվել է նաև մեծ բանաստեղծ Սայաթ-Նովան։

Յոթ օր քաղաքը թալանելուց, ավերելուց, հրկիզելուց և բնակչությանը կոտորելուց հետո, շահի զորքերը՝ հարուստ ավարով և հազարավոր գերիներով ծանրաբեռնված, շարժվում են դեպի Գանձակ, իսկ հետո՝ Մուղանի դաշտ և բանակ դնում այնտեղ։

Հարկ է նշել, որ գերիների մեջ բավականին մեծ թիվ են կազմել հայերը[63]։

Աղա Մուհամադ շահի այս արշավանքը մի սոսկալի դժբախտություն էր Անդրկովկասյան ժողովուրդների՝ հայերի, վրացիների ու ադրբեջանցիների կյանքում։ Առանց այդ էլ ներքին կռիվներից քայքայված բնակչությունը կրեց ավելի ահավոր և կործանիչ մի հարված։ Նրանցից տասնյակ հազարավորներ սպանվեցին կամ գերի տարվելով վաճառվեցին հեռավոր երկրներում։ Այդ դժբախտություններին հաջորդեցին սովն ու համաճարակները։

Աղա Մուհամադ շահի 1795 թվականի արշավանքը Երևանի խանության համար ունեցավ այն հետևանքը, որ նա դուրս եկավ արևելավրացական թագավորության վասալությունից և կրկին դարձավ պարսից պետության սահմանամերձ կուսակալություններից մեկը։

## 5. ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ԱՌԱՋԽԱՂԱՑՈՒՄԸ

Աղա Մուհամադ շահի արշավանքը խիստ թուլացրել էր Ռուսաստանի հեղինակությունը Անդրկովկասում և պայմաններ ստեղծել Իրանի կենտրոնական իշխանության ամրապնդման համար, ուստի ռուսական կառավարությունը 1795 թվականի հոկտեմբեր ամսից սկսում է շահի դեմ արշավելու պատրաստություն տեսնել։

1795 թվականի հոկտեմբերի 18-ին Պետական խորհուրդը գեներալ Գուդովիչին կարգադրում է ամեն բան անել Վրաստանը և Ռուսաստանին հավատարիմ խանությունները Աղա Մուհամադ շահի հարձակումներից ազատելու համար։ Պետական խորհրդի որոշման մեջ Արարատյան երկրի մասին ասված էր, թե նպատակահարմար չէ այնտեղ զորք ուղարկել, որովհետև Երևանի խանը Վրաստանից կախյալ է եղել և շատ հնարավոր է, որ Անդրկովկասում ռուսական զորքերի հայտնվելուց հետո, Երևանը կամավորապես կենթարկվի վրաց թագավորին։ Բացի դրանից, զորքեր չուղարկելով այնտեղ, կարելի էր խուսափել թուրքերի հետ հնարավոր բախումներից[64]։

Սակայն Պետական խորհուրդը սխալվում էր կարծելով, թե երբ ռուսները հայտնվեն Անդրկովկասում, Երևանը նորից կենթարկվի Վրաստանին։ Բանն այն է, որ Իրանի կենտրոնական իշխանության տիրապետությունը Երևանի վրա բավական ամրապնդվել էր։ Շահը իր մարդկանցից մեկին՝ Թավաքյալի խանին, 400 զինվորներով բերդապահ էր կարգել Երևանում[65], և դրանով խիստ

[62] Տե՛ս «Դիւան Հայոց պատմութեան», գիրք Ժ, էջ 367։

[63] Տե՛ս Վ. Ս. Նալբանդյան, Թբիլիսին հայ մատենագրության մեջ (սկզբից մինչև XVIII դարի վերջը), Երևան, 1958, էջ 164։

[64] Տե՛ս Н. Дубровин, История войны..., т. III, էջ 67։

[65] Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 4331, էջ 89բ։

հսկողություն պահմանել Մուհամադ խանի վրա։ Ուստի, անկախ այն բանից, որ խանի համար Վրաստանի դերիշխանությունը գերադասելի էր Աղա Մուհամադ շահի տիրապետությունից, նա ի վիճակի չէր առանց դրսի օգնության որևէ քայլ կատարելու։

Ռուսաց կառավարության որոշմամբ 1795 թվականի դեկտեմբերին Թիֆլիս է ժամանում 2000 հոգուց բաղկացած ռուսական մի ջոկատ՝ Վրաստանը Աղա Մուհամադ շահի նոր ոտնձգություններից պաշտպանելու համար։

Ռուսական հրամանատարությունը որոշել էր արշավանքը սկսել 1796 թ. վաղ գարնանը։ Ռազմական գործողությունները ծավալվելու էին երկու կողմից՝ Կասպիականի ափից և Վրաստանից։ Կոմս Զուբովի զորքերը Կասպից ծովի ափերով շարժվելու էին դեպի հարավ և Բաքվում միանալու էին նավատորմի հետ։ Իսկ Վրաստանում եղած զորքերը, որ երկու գումարտակից դառնալու էին կորպուս, պետք է գնային Ղարաբաղ, վերականգնեին հայ մելիքների իշխանությունները, օգնեին շահի տիրապետությունից ազատվել ձգտող ադրբեջանական խաներին, որից հետո գալու էին Կուրի ու Արաքսի միացման վայրը և այնտեղից կապ էին հաստատելու Վ. Զուբովի զորքերի հետ[66]։

Աշնանը ռուսական զորքերը շարժվելու էին դեպի հարավ՝ «Աղա Մուհամադ խանի իշխանությունը և ուժը ոչնչացնելու համար», իսկ նավատորմը դեսանտ էր հանելու Գիլանում՝ շահի եղբայր Մուրթազակուլիին այնտեղ խան դարձնելու համար (վերջինս գտնվում էր Ռուսաստանում և վայելում ռուսաց կառավարության վստահությունը)[67]։

Մինչ Ռուսաստանում արշավանքի պատրաստություններ էին տեսնում, Անդրկովկասում սկսվում են նոր կռիվներ։ 1796 թ. գարնանը Աղա Մուհամադ շահին լուր է հասնում, որ Խորասանում իր դեմ խռովություններ են սկսվել, մարտ ամսի կեսերին նա թողնում է Մուղանի դաշտը և գնում Խորասան։ Օգտվելով շահի բացակայությունից, Ղարաբաղի Իբրահիմ խանը որոշում է վրեժխնդիր լինել Գանձակի Ջավադ խանից, որը 1795 թ. արշավանքի ժամանակ օգնել էր Աղա Մուհամադ շահին։ Իբրահիմին է միանում նաև Ումմա խանը և նրանց զորքերը պաշարում են Գանձակը։ Գանձակի վրա է արշավում նաև Հերակլ II-ի 3000-անոց զորքը՝ արքայազն Ալեքսանդրի հրամանատարությամբ, բայց պարենի պակասի պատճառով վրաց զորքը ցրվում է։ Մայիս ամսին Գանձակի տակ մնում են ընդամենը հարյուր վրացական զինվորներ[68]։

Գանձակի պաշտպանները ծանր պայմաններում էին։ Նրանց շարքերը նոսրացնում էին սովն ու վարակիչ հիվանդությունները։ Շուտով Իբրահիմ և Ումմա խաները լուր են ստանում, որ Հերակլը 7000-անոց զորքով գալիս է Գանձակի վրա։ Չկամենալով հաղթության պտուղները կիսել նրա հետ, նրանք շտապ հաշտություն են կնքում Ջավադ խանի հետ և ռազմատուգանք վերցնելով, հեռանում այնտեղից[69]։

Երբ Գանձակը պաշարված էր, իր դաշնակցին օգնելու համար Աղա Մուհամադ շահը կարգադրում է Երևանի և Նախիջևանի խաներին օգնության հասնել Ջավադ խանին։ Խաները չկամենալով պատերազմել, շատ դանդաղ են պատ-

---

[66] Տե՛ս Н. Дубровин, История войны..., т. III, էջ 80։

[67] Տե՛ս նույն տեղում, էջ 81—82։

[68] Տե՛ս „Грамоты...,", т. II, вып. II, էջ 152։

[69] Տե՛ս նույն տեղում։

րասաությունններ տեսնում և ճանապարհ են ընկնում այն ժամանակ միայն, երբ Ջավադ խանն արդեն պատանդներ և ռազմատուգանք էր տվել պաշարողներին[70]։

1796 թվականի գարնանը կոմս Վ. Ա. Զուբովը ժամանում է Ղզլար, այնտեղ է գալիս նաև Հ. Արղությանը, որը հրավիրված էր արշավանքի ժամանակ ուղեկցելու կոմսին։ Հ. Արղությանը Անդրկովկասի վերաբերյալ բավականին տեղեկություններ է տալիս նրան և բացի այդ, գրավոր զեկուցագիր է ներկայացնում, որով խնդրում է օգնություն ցույց տալ հայ ժողովրդին։

1796 թվականի ապրիլի 18-ին ռուսական զորքերը Ղզլարից շարժվում են դեպի հարավ։ Մայիսի 10-ին գրավում են Դերբենդը։ Հ. Արղությանը տեղի հայերին և Անդրկովկասի հայ բնակչությանը հորդորում էր ամեն կերպ օգնություն ցույց տալ ռուսական զորքերին[71]։ Շուտով ռուսներին են հանձնվում նաև Ղուբան ու Բաքուն։ Հերթը հասնում է Գանձակին։ Ռուսական զորքերի այս հաջողությունները պայմանավորված էր նաև այդ վայրերի հայ և ադրբեջանցի աշխատավորների մեծ աջակցությամբ։ Հայտնի է, որ Դերբենդը ռուսներին հանձնվեց քաղաքային բնակչության ճնշմամբ և որ Բաքվի բնակիչները ուրախությամբ ընդունեցին Վ. Զուբովի կոչը և կամավորապես քաղաքի դռները բաց արեցին նրա զորքերի առջև։

Ուշագրավ է, որ կոմս Զուբովի արշավանքի ժամանակ Հ. Արղությանը նամակագրական կապ է ունեցել մեծ զորավար Ա. Վ. Սուվորովի հետ և արշավանքի մասին տեղեկություններ հաղորդել նրան[72]։

1796 թվականի աշնանը կոմս Վ. Զուբովը համալրում է ստանում և հոկտեմբեր ամսին մի զորաջոկատ՝ գեներալ Ս. Մ. Ռիմսկի-Կորսակովի հրամանատարությամբ ուղարկում Գանձակի վրա, դեպի ուր պիտի շարժվեին նաև Թիֆլիսում եղած ռուսական զորքերը։ Քաղաքը գրավելուց հետո նրանք պետք է միանային և ուղևորվեին Քուռ և Արաքս գետերի խառնվելու վայրը, որտեղ նրանց էր սպասելու Վ. Զուբովը՝ զորքերի հիմնական մասով։

Գեներալ Ռիմսկի-Կորսակովի զորամասը արշավանքի ընթացքում մեծ դժվարությունների է հանդիպում և եթե նրան չօգներ տեղական հայ բնակչությունը, ժամանակին չէր կարող տեղ հասնել։ Հայ գյուղացիները, որոնք այդ արշավանքի հետ էին կապում մահմեդական տիրապետությունից իրենց ազատագրումը, Հ. Արղությանի կոչով օգնության են հասնում ռուսներին՝ պարեն մատակարարում և իրենց սայլերով տեղափոխում զինամթերքը[73]։

Դեկտեմբերի 13-ին Գանձակի Ջավադ խանը քաղաքը հանձնում է ռուսներին։ Սակայն շուտով սուրհանդակներ են գալիս Ռուսաստանից և ռուսական գնդերին ետ դառնալու հրաման բերում։ 1796 թվականի նոյեմբերի 6-ին մահացել էր Եկատերինա II-ը և նոր կայսր Պավել I-ը, կամենալով իր ուշադրությունը նվիրել եվրոպական գործերին, չէր ցանկանում շարունակել այդ արշավանքը։

Ռուսական զորքերի հեռանալը ծանր հարված էր անդրկովկասյան ժողովուրդների և մասնավորապես հայերի համար։ Ղուկաս Կարնեցի կաթողիկոսն

---

70 Տե՛ս Լեո, Հայոց պատմություն, հատ. 3, էջ 885։

71 Տե՛ս ЦГВИА, РУА, д. № 280, էջ 3—4։

72 Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 2951, էջ 104բ։

73 Տե՛ս Լեո, Հայոց պատմություն, հատ. 3, էջ 894։

այդ օրերին Շ. Շահամիրյանին գրել է. «Առ տարաբախտութեան մերոյ՝ օրհասին մահու ծամանեալ յիշեցելոյ մեծի կայսերուհւոյ, խափանեցաւ գործն օգտակարագոյն աշխարհի, ըստ որում հարազատն Նորին Նորապսակ յաջորդն դարձ առնել ետ զօրացն՝ զամենայն, ընդ ձեռամբ արկեալսն թողլով հնոց տիրողացն աւերչացն»[74]։

Կաթողիկոսը փրկություն հուսալով ռուսներից, այնուամենայնիվ, չէր մոռացել Իրանի գահակալի հարձակման վտանգը և նախազգուշական միջոցներ էր ձեռք առել։ Նա ռուսների Գանձակում եղած ժամանակ, շահի վեզիր Հաջի Իբրահիմ խանի խորհրդով, Դավիթ և Հովհաննես վարդապետներին թանկարժեք նվերներով ուղարկում է շահի մոտ, հայտնում նրան իր հպատակությունը[75]։

1796-ը ծանր տարի էր ողջ Անդրկովկասի համար։ Աղա Մուհամադ շահի արշավանքի հետևանքները ծայրահեղ թշվառության հասցրին ժողովրդին։ Հատկապես դժվարին էր Ղարաբաղի, Սյունիքի ու Գանձակի բնակիչների վիճակը։ Անողոք սովը հնձում էր մարդկանց, ստիպում հեռանալ հայրենի վայրերից։ Այդ ծանր դրության սրտաճմլիկ նկարագրությունն է թողել Վարդան Օձնեցին. «Եւ ի սոյն 1796 ամի սկիզբն եղև սաստիկ սովոյ աշխարհին Աղուանից, Արցախայ, Սիւնեաց և Գանձակայ, քանզի ասպատակ զօրաց Մուհամմադ շահի այրեալ էին զարմտիս երկրին, և զնորաբոյս արտորայս կերակուր արարեալ երիվարաց իւրեանց, և զայլս սմբակակոխ սպառեալ։ Այնքան սաստկացաւ սովն ի յիշեալ տեղիս մինչև պակասեալ սուրբ անասնոց, ուտէին զանսուրբ կենդանիս, և բազումք վաճառէին ի պէտս հացի զզաւակունս իւրեանց, այլք կթուցեալք և նուաղեալք ի սովոյ քայլափոխել ոչ կարէին, այլ անկեալ ի ճանապարհի զոգիս փչէին, և շատք ի հեռաւորս գաղթէին, վասն այնորիկ ցիրուցան եղեն ամենայն բնակիչք աշխարհին այնմիկ, բազումք ի հայոց և սակաւք ի տաճկաց անցին ի Վրաստան, ի Սօմխէթ, յԵրևան, ի Կարս և յաշխարհն Սարմատացւոց՝ ի Մօզդօք և ի Ղզլարս»[76]։

Հեղինակի այս տողերը միանգամայն ճշմարտապատում են, նա հետագայում անձամբ տեսել է այդ գաղթականներից ոմանց և լսել նրանց պատմությունը։

Հ. Արղությանը Թիֆլիսից գրում է, թե բնակչությունը տառապում է սովից, և որ մարդիկ մի կտոր հացի համար վաճառում են իրենց զավակներին, հավատափոխ լինում[77]։

Ծանր էր նաև Արարատյան երկրի վիճակը։ Այստեղ ևս զգացվում էր պարենի պակասը։ Բացի դրանից, բնակչությունը նեղվում էր արտասովոր ձմռան խիստ ցրտերից։ Երևանի Ալիկուլի խանը նոր հարկեր ու պարտավորություններ է դնում բնակչության վրա։ Ի լրումն այս ամենի, նա հրաման է արձակում Արարատյան երկրից իրեն համար հայ օրիորդներ հավաքել։ Իմանալով այս մասին, Ղուկաս կաթողիկոսը կարգադրում է 8 տարեկանից վեր բոլոր աղջիկներին ամուսնացնել, և երբ խանի ծառայողները կամենում են

---

74 «Դիւան», գիրք Ա—Բ, էջ 30—31։

75 Տե՛ս նույն տեղում, էջ 31։

76 Մատենադարան, ձեռագիր № 4331, էջ 91բ—92ա։

77 Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 2951, էջ 121բ։

իրագործել նրա հրամանը՝ Երևանի խանության մեջ հարեմ տանելու օրիորդ այլևս չէր մնացել[78]։

Աղա Մուհամադ շահը այս ժամանակ մեծ պատրաստություն է տեսնում Անդրկովկասի վրա կրկին հարձակվելու համար։ Այդ նպատակով նա զենք և զորք է պահանջում Երևանի խանից։ Ղուկաս Կարնեցին 1797 թ. փետրվարի 14-ին գրել է. «Շահն ի մեծի պատրաստութեան է, ոյր սակս և այժմ կրկին Զ (6) թնդանօթս և Դ (4) ղօմբարայս և Ռ (1000) գնդակս է խնդրեալ տանիլ ի Դավրէժ, ուր և ինքն ի գարնանամտին իւրեանց գալոց է ճակատիլ ընդ յարուցելոցն։ Խնդրեալ է և զխանն մեր Ռ (1000) հեծելովքն երկրիս։ Առ որս եթէ յորպիսի տառապանս կան բնակիչքն երկրիս, խոհեմութեամբդ կարես իմանալ»[79]։

Մուհամադ խանը, որ 1797 թ. հունվարին ոմն Մատթեոսի ձեռքով խնդրանք էր ուղարկել կոմս Զուբովին՝ իրեն օգնելու համար և մերժում ստացել, նորից փորձ է կատարում ռուսներից օգնություն ստանալու։ Նա 25 հոգու ուղեկցությամբ Գևորգ Խուբովին ուղարկում է Թիֆլիս՝ Հ. Արղությանի մոտ և խնդրում, որպեսզի վերջինս համոզի Հերակլ թագավորին ու գեներալ Ռիմսկի-Կորսակովին պաշտպանելու իր երկիրը Աղա Մուհամադ շահից։ Նմանօրինակ խընդրանքով նախիջևանցի Մակար Մելիքովի միջոցով ռուսներին էր դիմել նաև Նախիջևանի Քյալբալի խանը[80]։

Քանի որ ռուսական զորքերը Անդրկովկասից հեռանալու հրաման էին ստացել, իսկ Հերակլը շատ թույլ էր, խաների խնդրանքը նորից մերժվում է։ Գ. Խուբովը այս մասին անմիջապես հայտնում է խանին։ Շատ չանցած Երևանի և Նախիջևանի խաները հարկադրված մեծարժեք նվերներով ներկայանում են շահին, որը նրանց մեղադրում է դավաճանության մեջ և պատժի ենթարկում։ Խուբովը գրում է, թե նա սպանել կտար Երևանի խանին, եթե նրա մեծամեծներից մի քանիսը գթություն չխնդրեին։ Նա կուրացնում է Քյալբալի խանին, իսկ Երևանի խանին բանտարկում է[81]։

Ալիկուլի խանը մի մեծ գումար է պահանջում կաթողիկոսից։ Վերջինս գնում է Երևան, 38 օր մնում է այնտեղ, աշխատելով գոնե մի քիչ պակասեցնել գումարը, բայց չի հաջողվում և պարտամուրհակ տալով ետ է վերադառնում։

Արարատյան երկիրը դարձյալ շատ ծանր վիճակում էր։ Ղուկաս Կարնեցին 1797 թվականի մայիսի 5-ին գրել է. «Իսկ կացութիւն երկրիս յանցեալն և նարդենիս ի զանազան հարկապահանջութեանց և ի պէս-պէս ծանր գործառնութեանց՝ ի սաստիկ սղութենէ հացի և ամենայն պիտոյից, ի յետին դառնութիւն. չքաւորութեան ժամանել՝ յոգիս են ապաստան և կասկածանօք ապառնի վտանգից թախծիմք առ հասարակ»[82]։

Այս պայմաններում էր Արարատյան երկիրը, երբ Աղա Մուհամադ շահը, օգտվելով ռուսական զորքերի հեռանալուց, 1797 թվականի գարնանը նոր արշավանք սկսեց դեպի անդրկովկասյան երկրները։ Նախօրոք մի նամակ

---

[78] Տե՛ս Մ. Մսերեանց, Պատմութիւն կաթողիկոսաց Էջմիածնի ի Սիմէոնէ ցՅօվհաննէս, Մոսկուա, 1876, էջ 9։

[79] Մատենադարան, ձեռագիր № 4501, էջ 407ա։

[80] Տե՛ս Е. Хубов, Описание достопамятных происшествий в Армении, էջ 9—10։

[81] Տե՛ս նույն տեղում, էջ 10—11։

[82] Մատենադարան, ձեռագիր № 2922, էջ 33ա։

*ուղարկելով Հերակլ II-ին, որով պահանջում էր հնազանդվել իրեն, շահը Խուդաֆիրինի կամուրջով անցնում է Արաքսը և շարժվում դեպի Շուշի։*

*Իբրահիմ խանը այլևս հնարավորություն չուներ դիմադրելու, ուստի մի քանի բեկերի հետ միասին փախչում է Դաղստան, ճանապարհին՝ Թարթար գետի մոտ պարտության մատնելով իր ետևից շահի ուղարկած 2000 հեծյալներին։*

*Աղա Մուհամադ շահի զորքերը գրավում են Շուշին և հաստատվելով այնտեղ անարգել սկսում են կողոպտել ու ավերել Ղարաբաղը։ Երկար կտևեր այս վիճակը, եթե 1797 թվականի մայիսի կեսերին իր պալատականների ձեռքով չսպանվեր շահը։ Դրանից հետո պարսից զորքը խառնիճաղանջ խմբերով հեռանում է դեպի Իրան, ուր պայքար էր սկսվել իշխանության համար։*

*Տեղեկանալով շահի սպանության մասին, Ղուկաս Կարնեցին հնարավորություն է ստանում շնորհավորելու Պավել I-ի կայսր դառնալը*[83]*։*

*1797 թվականի հուլիսի 20-ին գրած իր նամակում Ղ. Կարնեցի կաթողիկոսը նկարագրում է հայերի ծանր վիճակը, հայտնում, որ նրանցից շատերը սրի են քաշվել, ոմանք գերի են տարվել, իսկ մնացածները գտնվում աղքատության մեջ են։ Քանի որ իրենց տիրողներն իրենց թշնամիներն են, ուստի և հայերը արժանի չեն համարում նրանց համար աղոթել. հայկական պետականության անկումից հետո եկեղեցին ժամերգություն է կատարում միայն ի պատիվ քրիստոնյա թագավորների և իշխողների։ Բայց հայերը առավել ևս պարտական են աղոթել ռուսական թագավորների համար, որոնք միշտ ողորմած և խնամածու են եղել իրենց նկատմամբ։ Պետրոսի ժամանակներից սկսած մինչև Եկատերինա II-ը հայերը ռուսների կողմից «գտեալ են զառատազեղ շնորհսն մարդասիրութեան և զպաշտպանութիւն կենաց իւրեանց»։ Եվ այժմ շնորհավորելով Պավել I-ի գահակալությունը, կաթողիկոսը խնդրում է հովանավորության տակ առնել հայ ժողովրդին և Ռուսաստանում բնակություն հաստատած հայերի նկատմամբ ճանաչել էջմիածնի հոգևոր իշխանությունը։*

*Կայսրը բավարարում է կաթողիկոսի խնդրանքը։ 1798 թ. փետրվարի 26-ի կայսերական հրովարտակում ասված էր, որ Պավել I-ը իր նախորդների՝ Պետրոս I-ի, Եկատերինա I-ի և Եկատերինա II-ի նման հայոց կաթողիկոսին, հայ մելիքներին, յուզբաշիներին ու կառավարիչներին, այլև «ողջ հայ ազնիվ ժողովրդին» և առանձնապես ռուսական կայսրության սահմաններում բնակվող հայերին, վերցնում է իր կայսերական ողորմածության ու պաշտպանության ներքո և ճանաչում է կաթողիկոսի հոգևոր ու եկեղեցական իշխանությունը Ռուսաստանում հաստատված հայ ազգաբնակչության նկատմամբ*[84]*։*

*Արարատյան դաշտի բնակչությունն այս ժամանակ կրկին դժվարին վիճակում էր։ Շահի սպանությունից հետո պարսկական մի ջոկատ Շուշիից գալիս է Երևան՝ Ալիկուլի խանի մոտ, որն իր եղբոր սպանության լուրն առնելուց հետո փակվել էր Երևանի բերդում։ Ստանալով այդ համալրումը, խանը, Ղուկաս Կարնեցու խոսքերով «Ոգի առեալ և ևս սկսաւ զժանտութիւն ի գործ արկանել առ քաղաքացիսն և առ մեզ՝ պահանջմունս առնելով»*[85]*։*

---

[83] *Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 2922, էջ 33բ։*

[84] *Տե՛ս Մատենադարան, Արխիվային բաժին, Ռուսական ցարերի և Նապոլեոն I-ի հրովարտակները, № 2։*

[85] *Մատենադարան, ձեռագիր № 4501, էջ 459բ։*

Երևանցիների համբերությունը սպառվել էր. նրանք զինված դուրս են գալիս խանի դեմ և ստիպում նրան հեռանալ քաղաքից։ Շատ չանցած Նախիջևանից բերված զորքի օգնությամբ Երևանում հաստատվում է Մակվի սուլթանի որդի Հասան խանը։ Վերջինս Երևանում իշխում է ընդամենը մեկ ամիս և այդ ընթացքում նորանոր հարկեր դնում առանց այդ էլ վերջին աղքատության հասած բնակչության վրա։

Իրանի նորընծա Ֆաթալի շահը, տերության հյուսիսային սահմանները ամրապնդելու շահերից ելնելով, որոշում է ազատ արձակել Երևանի, Խոյի ու Նախիջևանի խաներին՝ իրենից կախյալ մնալու պայմանով։ Շահի տված զորքի ուղեկցությամբ Մուհամադ խանը վերադառնում է Երևան, որտեղից 1797 թ. սեպտեմբերի 15-ին հեռացել էր Հասան խանը։

Քաղաքական հեղհեղուկ պայմանների, անվերջանալի կռիվների հետևանքով տնտեսապես ծայր աստիճանի քայքայված բնակչությանը այդ ժամանակ մի նոր ծանր փորձություն էր սպասում։ Երկրում սկսվում է ժանտախտը, որը գնալով սաստկանում է և անգամ ստեղծվում է արտագաղթի վտանգ։

1798 թ. գարնանը սկսվում են նոր կռիվներ։ Լուրեր են հասնում, որ Խոյի խանը թշնամացել է շահի հետ և Ուրմիայի ու Նախիջևանի խաների հետ միացած կամենում է արշավել Երևանի վրա։ Երկրում սկսվում է մեծ իրարանցում։ Թողնելով ամեն ինչ, բնակչությունը հավաքվում է ամրացված վայրերում, սակայն արշավանքը տեղի չի ունենում և մարդիկ վերադառնում են իրենց տները։ Մեկ ամիս անց նորից խուճապ է ստեղծվում. «Դարձեալ ալեկոծեցան սաստիկ, քան զառաջինն»,—գրում է Ղուկաս կաթողիկոսը[86]։ Բայց այս անգամ էլ Ջաֆարկուլի խանը չի կարողանում իրագործել արշավանքը, որովհետև նրա ապստամբությունը ճնշելու համար Թավրիզ էր եկել Սուլեյման սարդարը։ Ջաֆարկուլիի կողմնակիցները լքում են նրան, իսկ ինքը փախչում է Թուրքիա։ Նրան են հետևում նաև Խոյի հազարավոր բնակիչներ։

1798 թվականի վերջերին Երևանի խանը շահից Երևանում իշխելու ֆերման է ստանում, որի դիմաց նրանից պահանջվում է 300.000 ռուբլի և պատանդներ։ Խանը չի ցանկանում այդքան գումար վճարել և բանակցություններ է սկսում Վրաստանի հետ՝ օգնություն ստանալու համար։

1799 թվականի կեսերին Սուլեյման սարդարը գահաժառանգ Աբբաս Միրզայի հետ գալիս է Սալմաստ՝ Երևանի ու Խոյի վրա արշավելու նպատակով։ Երևանի ու Խոյի խաները միավորում են իրենց ուժերը և ընդառաջ գնում գահաժառանգի զորքերին։ Ճակատամարտն ավարտվում է վերջիններիս հաղթանակով։ Խոյը նվաճվում է։ Սուլեյմանը բանակցություններ է սկսում Երևանի խանի հետ և հրավիրում նրան շահի մոտ, բայց խանը հրաժարվում է։

Ձնայած ռուսական հրամանատարությունը փորձեր էր անում բանակցությունների միջոցով պարսիկներին ետ պահել Անդրկովկասի վրա հարձակվելու մտադրությունից, սակայն Ֆաթալի շահը շարունակում է արշավանքի պատրաստությունները։ 1800 թվականի գարնան վերջերին նրա զորքերը Աբբաս Միրզայի ու Սուլեյման սարդարի հրամանատարությամբ դուրս են գալիս Թավրիզից և ուղղվում դեպի Երևան։ Այս մասին էջմիածնի միաբանները գրել են. «Վերստին բորբոքեցաւ բոցն պարսկական բռնութեան յայսկոյս։ Յորմէ

[86] Մատենադարան, ձեռագիր № 4501, էջ 468բ։

զարհուրեալ ամենայն բնակիչք երկրիս, իշխօղն ամրացաւ ի դղեակն և այլքն ամենեքեան տարագիր եղեն յայգր և յայլ կողմս»[87]։

Պարսից զորքերը շուտով մտնում են Արարատյան դաշտ և բանակ դնում Արաքսի ափին։ Սկսվում են բանակցություններ՝ Երևանը հանձնելու վերաբերյալ։ Խանը մերժում է և օգնության խնդրանքով դիմում Վրաստանի ու ռուսաց հրամանատարությանը։ Վրաստանում ռուսական կառավարության լիազոր մինիստր Կովալենսկին և Գիորգի XII թագավորը խոստանում են օգնել։ Շուտով պարսից թագաժառանգի զորքերը պաշարում են Երևանը։ Սակայն նրանք թնդանոթներ չունեին և այնքան էլ հաջողությամբ չեն գործում բերդականների դեմ։ Ավելին, բերդականները կարողանում են մի քանի անգամ դուրս գալ բերդից և հակահարձակման անցնել։

Այս ընթացքում Աբբաս Միրզան նամակ է ուղարկում Գիորգի XII-ին և պահանջում ենթարկվել իրեն, հակառակ դեպքում սպառնում է հարձակվել Վրաստանի վրա։ Իմանալով այդ մասին, Պավել I կայսրը կարգադրում է Վրաստան ուղարկել զորային նոր միավորումներ, որը Աբբաս Միրզային ստիպում է հրաժարվել Վրաստանի վրա հարձակվելու մտքից։ Երբ Երևանի խանը պարտավորվում է ռազմատուգանք վճարել, Աբբաս Միրզան վերացնում է Երևանի պաշարումը և 40 օր Արարատյան երկրում մնալուց հետո, իր զորքերով հեռանում է այնտեղից։

Այս նոր արշավանքը ցույց տվեց, որ Իրանը չէր հաշտվել Անդրկովկասը կորցնելու մտքի հետ։ Ուշագրավ է Երևանի խանի բռնած դիրքը։ Հարձակման վտանգի դեպքում նա օգնության խնդրանքով դիմում էր վրացիներին ու ռուսներին, ձևացնելով, թե ցանկանում է մտնել ռուսական հովանավորության տակ։ Սակայն իրականում նրա նպատակն էր անկախ լինել թե պարսից շահից, թե ռուսներից ու վրացիներից։ Այս էր պատճառը, որ պարսկական վտանգի վերացումից հետո նա ոչ միայն մոռացավ խոստումները, այլև աշխատեց ընդլայնել իր տիրապետության սահմանները՝ չխուսափելով անգամ զինված ընդհարումների մեջ մտնել Վրաստանի հետ։ Այսպես, դեռ մեկ ամիս էլ չէր անցել Աբբաս Միրզայի հեռանալուց, երբ նա զորք ուղարկեց Շորագյալ, այն վրացիներից գրավելու համար։ Ջնայած Գիորգի XII-ը իշխան Ցիցիանովի հրամանատարությամբ 400 զինվոր ուղարկեց Շորագյալ, սակայն խանի զորքը հարձակվեց այդ խմբի վրա, պարտության մատնեց նրան, գրավեց և ավերեց Շորագյալի ամրոցը։ Շորագյալի շրջանին տիրելուց հետո, խանը մտադիր էր գրավել նաև Փամբակը, որն իրեն էր շնորհել Աղա Մուհամադ շահը։ Ի պատասխան դրա ռուսները զորքերը մոտեցրին Երևանի խանության սահմաններին, և խանը ստիպված եղավ հրաժարվել Փամբակը գրավելու մտադրությունից։

Այս ընթացքում Վրաստանի դրությունը գնալով ծանրանում էր։ Մի կողմից թուրքական ու պարսկական պետությունների հարձակման վտանգը, ինչպես նաև լեռնականների անընդհատ հարձակումները, մյուս կողմից էլ երկրում իշխող ֆեոդալների և առաջին հերթին թագավորական ընտանիքի անդամների միջև եղած հակասություններն ու անվերջ պայքարը ուժասպառ էին արել երկիրը։ Միակ փրկությունը Ռուսաստանին միանալու, ռուսական զենքի պաշտպանությանն ապավինելու մեջ էր, որը տեղի ունեցավ Գիորգի XII-ի

[87] Մատենադարան, ձեռագիր № 2922, էջ 73ա։

մահվանից մոտ մեկ տարի հետո։ 1801 թ. սեպտեմբերի 12-ին Ալեքսանդր I-ի հրովարտակով վերացվեց վրաց թագավորությունը և Վրաստանը վերջնականապես միացվեց Ռուսաստանին։ «Այդ նշանավոր օրվանից,—գրում է վրաց գրող Ի. Ճավճավաձեն,—Վրաստանը հանգստություն ձեռք բերեց։ Հավատակից երկրի հովանավորությունը ցրեց վախը թշնամու հանդեպ, որն ուզում էր գրավել Վրաստանը։ Տագնապալից, խոշտանգված երկիրը ազատվեց ավերումից և ջարդուխումից, հանգստացավ պատերազմներից և հարձակումներից»[88]։

Պատմական այդ իրադարձությունը ոչ միայն նշանակալից երևույթ էր վրացիների, այլև անդրկովկասյան մյուս ժողովուրդների կյանքում, որովհետև դրանով սկիզբ դրվեց ողջ Անդրկովկասը Ռուսաստանին միացնելու գործին։ Ռուսական կառավարության առաջնահերթ խնդիրներից մեկն այժմ Երևանի գրավումն էր։

---

[88] *А.А. Олонецкий*. Из истории великой дружбы (Очерки из истории грузино-русских взаимоотношений в первой половине XIX столетия). Тбилиси, 1954, էջ 3։

ԳԼՈՒԽ ՎԵՑԵՐՈՐԴ

# ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԱՐԵՎԵԼՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ XVI—XVIII ԴԱՐԵՐՈՒՄ

## 1. ԱՐԵՎԵԼՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԸ ԿԸԶԸԼԲԱՇՆԵՐԻ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՏԱԿ

*Զաքարյանների տիրապետության շրջանում Արևելյան Հայաստանում հաստատված հայ ֆեոդալական տների վերջին բեկորները (Դոփյաններ, Պռոշյաններ, Վաչուտյաններ և ուրիշներ) սկսած դեռևս XIV դարի երկրորդ կեսից հետզհետե կորցնում են իրենց իշխող դիրքերը*[1]*։* **XV** *դարում Արևելյան Հայաստանում քիչ թե շատ իշխանական իրավունքներ էին վայելում միայն Խաչենի Հասան-Ջալալյանները, Սյունյաց Օրբելյանների վերջին ներկայացուցիչներ՝ Սմբատի որդի Բեշքենն ու սրա որդին՝ Ռուստամը և մի քանի, ավելի նվազ իշխանություն ունեցող ֆեոդալական գերդաստաններ*[2]*։ XV, մասամբ նաև XVI դարի ընթացքում բուռն կերպով շարունակվում էր հայ ֆեոդալականության այդ վերջին ներկայացուցիչների հետևողական հետապնդումն ու ունեզրկումը քոչվոր նվաճողների կողմից։*

*XV դարը իրավացիորեն դիտված է որպես հայկական ֆեոդալիզմի եզրափակիչ դար։ Հիմնականում այդ հարյուրամյակի ընթացքում էր, որ հայ աշխարհիկ ֆեոդալականությունը, որպես որոշակի քաղաքական ուժ, դուրս մղվեց պատմության թատերաբեմից։*

*XVI դարում ևս հայ ֆեոդալականության վերջին մնացորդների ունեզրկման և վերացման գործում շարունակում էր կարևոր դեր խաղալ, դեռևս խալիֆաթի տիրապետության շրջանից հաստատված, «Բեյթ-ուլ-մալի» մուսուլմանական հաստատությունը*[3]*։ Մահմեդական իշխանավորները պահանջում էին իրենց իշխանության սահմաններում գտնվող ընդարձակ հողային տարածությունների տեր հայ ֆեոդալական տների ներկայացուցիչներից հավատափոխ լինել, հակառակ դեպքում սպառնալով նրանց հողերը բռնագրավել և հայտարարել «Բեյթ-ուլ-մալի» սեփականություններ։*

*Աղբյուրներում բազմաթիվ են վկայությունները հայ ֆեոդալների բռնի*

---

[1] Տե՛ս Հ. Մանանդյան, *Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատ. III, էջ 328—329։*

[2] Տե՛ս Թովմա Մեծոփեցի, *էջ 117—118, «ԺԵ դարի հիշատակարաններ», մասն Ա, Առաջաբան, էջ XLVII—XLVIII,* Հ. Փափազյան, *Մի էջ Արևելյան Հայաստանի քաղաքական կյանքի պատմությունից, ՀՍՍՀ ԳԱ «Տեղեկագիր» (հաս. գիտ.), 1955, № 8։*

[3] *«Բեյթ-ուլ-մալը» նշանակում է պետական գանձարան։*

մահմեդականացման կամ, հակառակ դեպքում, նրանց հողերի զանգվածային հափշտակման մասին։ Նշված է, սակայն, որ հայ աշխարհիկ ֆեոդալականության վերացման այս պրոցեսը բավական երկար է տևել և ուղեկցվել է դեռևս իրենց իշխանական դիրքերը պահպանած հայ ֆեոդալների կողմից տարբեր ձևերով դրսևորվող դիմադրության և պայքարի փաստերով։

Որքան էլ համառ լիներ դիմադրությունը, հայ ֆեոդալներից շատերը, իրենց կալվածատիրական իրավունքներից չզրկվելու համար, ի վերջո տեղի էին տալիս և մահմեդականություն ընդունում։ Անշուշտ կային նաև այնպիսիք, որոնք շարունակում էին դիմադրել և նյութական զոհողությունների գնով փորձում էին պահել իրենց հողային տիրույթները։ Սակայն, շարունակ ենթակա լինելով հարստահարման, հետզհետե նվազում էին նրանց հողատիրական կարողությունները և նրանք վերածվելով մանր հողատերերի կամ դուրս մղվելով կալվածատեր-ֆեոդալների շարքից, գնում էին իրենց բախտը փորձելու առևտրի և վաճառականության ասպարեզում։

Պետական հեղաշրջումներից հետո, ինչպես նաև համարյա ամբողջ XVI դարի ընթացքում շարունակվող ռազմական գործողություններին հաջորդող կարճատև դադարների ժամանակ, ետ նվաճված երկրամասերում անց էին կացվում հողերի նոր հաշվառումներ։ Բարձրագույն դիվանից գործուղված լիազորները կատարում էին մանրամասն քննություն, ստուգում էին կալվածագրերն ու սեփականության փաստաթղթերը, ցուցակագրում էին գյուղերն ու ագարակները և կազմում մշակելի տարածությունների նոր ցուցակներ։ Այս ընթացքում էր, որ ավելի շատ էին տեղի ունենում հողերի նոր բռնագրավումներ։ Հարքունիս էին գրավվում կամ «Բեյթ-ուլ-մալի» սեփականություններ հայտարարվում այլ և այլ պատճառներով նոր իշխանության կողմից հետապնդվող ֆեոդալներին և հատկապես կրոնի «հակառակորդներին» (քրիստոնյաներին) պատկանող հողերը։

Այնպես, որ եթե XV դարում դեռևս հիշվում են մի քանի հայ խոշոր ֆեոդալ-կալվածատերեր, ապա XVI դարում՝ հազվադեպ են հիշատակվում։

Խոշոր հողային սեփականատիրությունը հայ իրականության մեջ հանդուրժվում էր միայն վանական հողատիրության բնագավառում։ Ուստի XV դարի ընթացքում կիրառվող հալածանքների պայմաններում հայ ֆեոդալական տների վերջին ներկայացուցիչներից շատերը, իրենց հողային կարողությունների մնացորդները հափշտակումից փրկելու նպատակով «նվիրում» էին վանքերին և հոգևոր կարգ ընդունելով, փորձում պահպանել իրենց իրավունքները այդ կալվածքների և իշխող դիրքը՝ հայ աշխատավորության նկատմամբ։

Սակայն, ինչպես աստվածապետական օսմանյան Թուրքիայում, այնպես նաև Շահ Իսմայիլի հիմնադրած կըզըլբաշների կիսաաստվածապետական իշխանության ներքո, հայ հոգևորականության վայելած արտոնությունները ոչ այլ ինչ էին, եթե ոչ միայն հարկատու այլադավան համայնքների ղեկավարներին տրված զուտ հարկային առանձնաշնորհումներ։ Դրանք իրենց բովանդակությամբ արմատապես տարբերվում էին բարձրաստիճան ամիրներին և կըզըլբաշ ցեղերի առաջնորդներին տրված «սոյուրղալներից» և «օլքաներից», որոնք ունեին ֆեոդալական անձեռնմխելիության իրավունքներ և պետության ռազմա-քաղաքական հենարանն էին հանդիսանում։ Պարզ է, իհարկե, որ ինչպես յուրաքանչյուր ֆեոդալական հասարակության մեջ, այնպես էլ XVI—XVII

դարերի Սեֆյան տիրապետության շրջանում «պատերազմի մեջ և դատարանում բարձրագույն հրամանատարությունը հանդիսանում էր հողային սեփականության ատրիբուտ»[4]։ Ուստի կըզըլբաշների տերության հենց սկզբնական շրջանից քոչվոր ավագանու գերիշխանությունը Արևելյան Հայաստանում XVI—XVII դարերում այս առումով միանգամայն բացարձակ էր և համատարած։

XVI դարի պատերազմական համարյա անընդմեջ գործողությունների շրջանում երկրի ավատատիրական հարաբերությունների հիմքում թեև շարունակում էր գոյատևել նախորդ դարի թուրքմենական տիրակալների օրոք ձևավորված «սոյուրղալական» օրինակարգը, սակայն կըզըլբաշ ցեղերի ռազմաֆեոդալական նոր ցեղախմբերի («ուլուսներ» և «էհշամներ») կազմավորման և խոշոր տեղաշարժերի այս բուռն շրջանում այդ օրինակարգը քայքայման բավական որոշակի ընթացք ապրեց՝ իր տեղը զիջելով պարգևական հողատիրության «թիուլային» ձևին։

Արևելյան Հայաստանում կըզըլբաշ ցեղերի նոր տեղաշարժերի և խոշոր ավատների («օլքաներ») վերաբաշխման հետևանքով Այրարատի, Վասպուրականի, Սյունյաց, Արցախի և Գուգարաց նահանգների մեծ մասում ժառանգական տիրույթներ ստացան Ռումլու, Ուսթաջլու, Շամլու, Թաքալու, Կաջար, Քանգարլու, Բայաթ, Զուլկադար, Սա գլու և այլ ցեղերի առաջնորդները, որոնք իրենց ցեղերով և ցեղախմբերով բնակություն հաստատեցին հատկապես սահմանամերձ շրջաններում, իսկ կըզըլբաշներին հավատարիմ մնացած քրդական Դունբուլի, Մահմուդի, Փազուկի և այլ ցեղեր ավատներ ստացան Ալաշկերտի արևելյան հատվածում, Մակվում և Խոյի ու Սալմաստի շրջաններում։

XVI դարի սկզբում Իրանի և Թուրքիայի միջև ծավալվող ավերիչ պատերազմներից հետո, 1515 թ. կնքված հաշտության պայմանագրով ամբողջ Արևմտյան Հայաստանն ու Հյուսիսային Միջագետքը ընկավ Թուրքիայի տիրապետության տակ։ Դրանից հետո շնայած ավելի քան մեկ հարյուրամյակ՝ մինչև հաջորդ դարի 30-ական թվականները, նորից շարունակվեցին խոշոր մասշտաբի արշավանքներն ու պատմական Հայաստանի տերիտորիայի վրա ծավալվող ռազմական գործողությունները, սակայն, ինչպես 1555, այնպես էլ 1639 թվականներին կնքված պայմանագրերը էական փոփոխություններ չմտցրին 1515 թ. գծված սահմանների մեջ։

Ըստ այդ բաժանման, թուրք-իրանական սահմանը Հայաստանում սկիզբ էր առնում Ջավախքի լեռներից, Չըլդըր լճից դեպի արևելք անցնում էր փոքրիկ լեռնաշղթայի ուղղությամբ դեպի հարավ, ապա, թեքվելով դեպի արևելք, հասնում էր մինչև Ախուրյանի վերին հոսանքը։ Այստեղից գետի հունով սահմանն իջնում էր մինչև Ախուրյան և Արաքս գետերի միացման վայրը, որից հետո Արաքսի հոսանքն ի վեր թեքվում դեպի արևմուտք և, Կաղզվանին չըհասած, իջնում էր դեպի հարավ՝ Հայկական Պարը։ Հայկական Պարից սահմանը շարունակվում էր լեռնաշղթայի ջրբաժան գծով դեպի արևելք և Մասիսների գագաթներով գնում միանում էր Վասպուրականի լեռներին, որտեղից ուղիղ գծով՝ Զագրոս լեռնաշղթայի վրայով, անցնում էր թուրք-իրանական ներկա սահմանագծով։

---

[4] Կ. Մարքս, Կապիտալ, I, Երևան, 1933, էջ 298։

Այսպիսով, կըզըլբաշների տերության սահմանների մեջ էին մտնում պատմական Հայաստանի Սյունիք, Արցախ, Ուտիք, Փայտակարան և Պարսկահայք նահանգներն ամբողջությամբ և Այրարատի, Գուգարաց աշխարհի ու Վասպուրականի արևելյան գավառները։

Երկրի ներքին վարչական բաժանումը Սեֆյանների օրոք կատարված էր ըստ վիլայեթների, որոնք սկիզբ էին առնում դեռևս իլխանական շրջանից։ Դրանք, փաստորեն, համընկնում էին իլխանության շրջանի թումաններին, որոնց եկամուտները նախապես հաշված չէին և որոշակի ռազմական պարտավորության դիմաց տրվում էին կըզըլբաշ ցեղերի ամիրներին կամ բեկլարբեկիներին։

Սեֆյանների վարչության մանրամասն նկարագիրը պարունակող «Թաղքիրաթ-ալ-մուլուքում», որտեղ մեկ առ մեկ թվարկված են Սեֆյան Իրանի բոլոր նահանգներն ու նրանցից ստացվող եկամուտները, հիշատակված են չորս վալիություններ՝ Արաբական Իրաքի, Լոռստանի, Վրաստանի, Քուրդիստանի, և 13 բեկլարբեկիություններ։ Արևելյան Հայաստանն ու Ադրբեջանը ընդգրկված էին Ազերբայջանի (Ատրպատական), Չուխուր-Սա՚դի, Ղարաբաղի և Շիրվանի բեկլարբեկիությունների մեջ[5]։

Բացի Գուգարաց աշխարհից, որը համարյա ամբողջությամբ մտնում էր Արևելյան Վրաստանի կամ Քարթլ-Կախեթի վալիության մեջ, Սեֆյան Իրանի տիրապետության տակ գտնվող հայկական նահանգները կամ նրանց առանձին գավառները տեղաբաշխված էին այնպես, որ ենթարկվում էին Չուխուր-Սա՚դի, Ղարաբաղի և Ազերբայջանի բեկլարբեկիություններին։

Իր սահմանամերձ դիրքով և հայ հոծ բնակչությամբ առանձնահատուկ նշանակություն ուներ հատկապես Չուխուր-Սա՚դի վիլայեթը։ Այրարատյան նահանգի կենտրոնական մասը՝ Արարատյան դաշտն իր շրջակայքով, Չուխուր-Սա՚դ (հայկական աղբյուրներում՝ «Սահաթա փոս») սկսեց անվանվել XIV դարի վերջերից, այստեղ իշխող թուրքմեն տիրակալ Ամիր Սա՚դի անունով, որի որդիներն ու թոռները շարունակեցին իշխել այնտեղ՝ կենտրոն ունենալով Երևան քաղաքը։ XV դարում Չուխուր-Սա՚դի վիլայեթը ավելի ընդարձակվեց, ընդգրկելով նաև Ախուրյանից Արևմուտք ընկած գավառները և Կարս ու Կաղզվան քաղաքները։ Սակայն XVI դարի թուրք-իրանական նոր սահմանի հաստատումից հետո, այդ վիլայեթի մեջ, որպես նահիե կամ մահալ, իրենց նոր անվանումներով, մտնում էին Այրարատի Վարաժնունիք (Դարաչիչագ), Նիգ (Ապարան), Շիրակ (Շորագյալ), Մազազ-Ուրծ-Մասսյացոտն (Գառնի-Վեդի), Ճակատք (Սուրմալու), Արագածոտն (Կարբի), Կոտայք (Գրխբուլաղ) և Սյունյաց աշխարհի Գեղարքունի, Սոթք (Գյոգչադանգիզ) գավառները։

Վիլայեթները թեև հիմնականում կազմված էին ավելի փոքր վարչական միավորներից՝ նահիաներից կամ մահալներից, որոնք կառավարվում էին հաքիմների կամ նայիբների միջոցով, սակայն առանձին մեծ կամ փոքր շրջաններ օլքայի կամ ֆեոդալական տիրույթի իրավունքով տրված էին քոչվոր ցեղերի առաջնորդներին, որի դիմաց նրանք սպառազեն ռազմիկներ կամ յասաղքեշներ էին տրամադրում պետությանը։ Այդպիսին էր, օրինակ,

---

[5] Տե՛ս „Tadhkirat al- mulūk, a manual of safavid administration", by V. Minorsky. London, 1943, էջ 100—102։ Այսուհետև՝ „Tadhkirat al-mulūk":

Նախիջևանի օլքան, որը տրված էր Քյանգարլու ցեղի ավագանուն և մնաց նրանց ձեռքում մինչև XIX դարի սկիզբը։

Նախիջևանը իր շրջակա գավառներով, որ իլխանների ժամանակ առանձին «թուման» դառնալով, Սեֆևիների օրոք ևս շարունակում էր կոչվել «Թուման-ե Նախիջևան» ընդգրկում էր Սյունյաց աշխարհի Նախիջևան, Ճահուկ (Շահբուզ), Երնջակ (Ալինջա), Գողթն (Ազադ Ջիրան), Վայոց Ձոր (Դարե-յե էլեգիս), Ծղուկ (Սիսաջան) գավառները և, որպես մեծ օլքա, մինչև XVII դարի սկիզբը ենթարկվում էր Ադրբեջանի կամ Թավրիզի բեկլարբեկիին, իսկ XVII դարից հետո ենթակա էր Չուխուր-Սա՛դի բեկլարբեկիությանը։

Ադրբեջանի բեկլարբեկիին ենթակա էր նաև Կապանի երկիրը կամ Ղափանաթի օլքան, որը իլխանների տիրապետության շրջանում Սյունյաց Օրբելյանների ինչուն էր։ Սեֆևիների օրոք այն ընդգրկում էր Զանգեզուրի և Ղարաբաղի լեռնաշղթաների միջև ընկած լեռնային երկիրը, որի մեջ մտնում էին Սյունյաց Արևիք (Մեղրի), Կովսական (Մնջավան), Քաշունիք (Բարգուշատ), Ձորք (Քեղի), Հաբանդ (Զանգեզուր), Աղահեճք (Քաշաթաղ-Քուշթասիֆ) գավառները և Արցախի որոշ մերձակա շրջաններ։

Ադրբեջանի վիլայեթի կազմի մեջ անմիջապես մտնում էին Վասպուրականի արևելյան գավառներից Արտազի (Մակու), Ճուաշ-ռոտի (Ջորս), Մարակերտի կամ Մարանդի (Մարանդ), Պարսպատունիքի (Արասբար) գավառներն ու Պարսկահայք նահանգն ամբողջությամբ։ Հայ ազգաբնակչությունը մեծ թիվ էր կազմում հատկապես Մակվի, Ջորսի, Արասբարի, ինչպես նաև նախկինում Պարսկահայք նահանգի մեջ մտնող Հեր (Խոյ), Զարևանդ (Սալմաստ) և Թրաբի (Ուրմիա) գավառներում կամ նահիաններում։

Ղարաբաղի վիլայեթը, որն իր կենտրոն Գանձակի կամ Գյանջայի անունով կոչվում էր նաև Գյանջայի բեկլարբեկիություն, ընդգրկում էր Կուրից մինչև Արաքս ընկած մի ընդարձակ տարածություն։ Նրա լեռնային շրջանները, որոնք համապատասխանում էին պատմական Հայաստանի Արցախ նահանգին և Գարդման-Փառիսոսի ու Ուտիքից երկրներին, ունեին հոծ հայկական բնակչություն։ Առանձնապես աչքի էին ընկնում Դիզակի, Վարանդայի, Խաչենի, Ջրաբերդի և Գյուլիստանի նահիաններր կամ մահալները, որոնք կառավարվում էին հայ մելիքների կողմից և ներքին ինքնավարություն էին վայելում։ XVIII դարում, հատկապես Նադիրից հետո, դրանք միավորվեցին «խամսա» (հնգյակ) անվան տակ, որոնց ընդհանուր կառավարիչ նշանակվեց Դիզակի մելիքը։ Ավելի ուշ, երբ քայքայվեց այս միությունը և Շուշիում հաստատվեցին Ջիվանշիր Փանահ խանն ու նրա հետնորդները՝ հիմնելով Ղարաբաղի կիսանկախ խանությունը, այս վիլայեթի հյուսիսային մասը Գանձակ կենտրոնով առանձնացան և կազմեցին գանձակի խանությունը, որը հարևան Չուխուր-Սա՛դի կամ Երևանի խանության հետ միասին վասալական կախման մեջ էր Քարթլ-Կախեթի վալիից։

Ադրբեջանի, Չուխուր-Սա՛դի և Ղարաբաղի վիլայեթները լինելով սահմանամերձ նահանգներ, ինչպես ասվեց, կառավարվում էին զինվորական կուսակալների կամ բեկլարբեկիների միջոցով, որոնք որպես ռազմիկ ցեղերի առաջնորդներ կամ ամիրներ, արաբերեն կոչվում էին նաև «ամիր-ուլ-ումարա» (իշխանաց-իշխան)։ Բեկլարբեկիներն ունեին անսահմանափակ իրավունքներ և իրենց վստահված վիլայեթի տերն ու տնօրենն էին։ Նրանք խաղաղ ժամա-

նակ գլխավորում էին վիլայեթի քաղաքացիական իշխանությունը, իսկ պատերազմի ժամանակ զինված ուժերի հրամանատարներն էին և իրավունք ունեին ռազմական արշավանքների ժամանակ սեփական դրոշակ կրելու ու թմբկահարելու։ Նրանք սովորաբար կրում էին խան տիտղոսը և մեծարվում ալիջահ (փառապանծ) և ալիշա՛ն կամ ազիմ-ուլ-շա՛ն (գերապատիվ, բարձրապատիվ) բարձր կոչումներով։

Համեմատաբար ավելի փոքր տիրույթների՝ օլքաների տերերը կոչվում էին հաքիմ և կրում էին սուլթան տիտղոսը, իսկ բոլուքների և նահիանների կառավարիչները, որոնք մեծ մասամբ նշանակվում էին քոչվոր ավագանու ավելի ստորին խավերից կամ շահի ղուլամներից, կոչվում էին նայիբ կամ միրբոլուք և մեծարվում էին բեկ տիտղոսով։

Կենտրոնական իշխանության թուլության հետևանքով քոչվոր արիստոկրատիան կարողանում էր ամրապնդել իր իշխանությունը երկրի տարբեր նահանգներում և հաճախ բեկլարբեկիությունը առանձին վիլայեթներում վերածվում էր ժառանգական տիրույթի։ Այդպես էր, օրինակ, Գանձակի կամ Ղարաբաղի վիլայեթում, որտեղ XVI դարից սկսած մինչև XVIII դարի վերջերը իշխում էին Զիադօղլու-Կաջար ցեղի պարագլուխները։ Նախիջևանի օլքան նույն ժամանակներում շարունակում էր մնալ Քյանգարլուների ձեռքում, Մակվում մինչև XX դարի սկիզբը իշխում էին Բայաթ ցեղի առաջնորդները և այլն։

Դրությունը մի քիչ այլ էր Չուխուր-Սա՛դում կամ Արարատյան երկրում. XVI դարում կռվախնձոր լինելով ռումլուների և ուսթաջլուների միջև, XVII դարի վերանվաճումից հետո շահ Աբբասը Երևանի բեկլարբեկիությունը տվեց Ամիր-Գունա խանին, որը Կաջար ցեղի Աղջակոյունլու ցեղախմբից էր։ Նրա որդին՝ Թահմազկուլի խանը, այդ վիլայեթում իշխեց մինչև 1636 թ., որից հետո՝ մինչև Սեֆևիների բարձումը, շուրջ 80 տարի այս վիլայեթում իշխեցին 14 բեկլարբեկիներ, որոնցից միայն երկուսը հեռավոր ազգակցություն ունեին Կաջարների հետ և իշխեցին միայն 3—6 տարի։ Մյուս բեկլարբեկիները տոհմիկ ծագում չունեին և առաջ էին քաշվել շահի անձնական ղուլամներից։

XVII դարի երկրորդ կեսում Սեֆյան շահերը խուսափում էին սահմանամերձ վիլայեթները տալ տեղում բնակություն հաստատած կըզըլբաշ ցեղերի առաջնորդներին, վախենալով, որ վերջիններս կարող են գործիք դառնալ հարևան երկրի ձեռքում և ձգտել ինքնուրույնության։ Այս քաղաքականությունը շեշտված կերպով երևան էր գալիս հատկապես Արարատյան երկրում, որը իր ազգաբնակչության կազմով ևս խիստ տարբերվում էր մյուս վիլայեթներից։ Այստեղ հայերը ճնշող մեծամասնություն էին կազմում։

Բեկլարբեկիներն ունեին որոշակի հարկային և մաքսային եկամուտներ, որի դիմաց նրանք պարտավոր էին տվյալ վիլայեթից ապահովել սպառազեն մարտիկների նախապես որոշված քանակը։ «Թազքիրաթ-ալ-մուլուքի» տվյալներով XVII դարի վերջում և XVIII դարի սկզբում հայաբնակ գավառներ ունեցող վերոհիշյալ երեք վիլայեթներից ստացվող եկամուտների և զինված ուժերի հարաբերությունը հետևյալ պատկերն էր ներկայացնում[6]։

---

[6] Տե՛ս „Tadhkirat al-mulūk", էջ 161։

| Վիլայեթ | Եկամուտ (դինարներով) | Զինվորների թիվը |
|---|---|---|
| Չուխուր-Սա՛դ . . . . . . . | 259106326 | 4287 |
| Ղարաբաղ . . . . . . . . . . | 247260978 | 6084 |
| Ադրբեջան . . . . . . . | 312344906,5 | 11439 |
| Գումար . . . . . . . . . . . | 818712210,5 | 21810 |

Ի. Պ. Պետրուշևսկու հաշվումներով (գումարելով նաև Շիրվանի վիլայեթի 5856 զինվորները) XVIII դարի սկզբներին Սեֆևիների պետության զինված ուժերի համարյա կեսը հավաքագրվում էր Ադրբեջանից ու Հայաստանից[7]։

Բեկլարբեկիները և տեղական հաքիմները բնակչության նկատմամբ ունեին նաև դատական իրավունքներ։ Քաղաքացիական բոլոր տեսակի վեճերը՝ կապված կենցաղային, տնտեսական, ժառանգական և այլ հարցերի հետ, քննվում էին հոգևորական ատյաններում, որ կոչվում էր «Շար՝», իսկ քրեական գործերը լսվում էին «Ուրֆի» կամ սովորութային դատարաններում, որը գլխավորում էր խանի կողմից նշանակված «դիվանբեկին»։ Ուրֆի ատյաններում լսվում էին նաև, այսպես կոչված, «չորս պատահարներին» վերաբերող գործերը (սպանություն, բռնաբարություն, ատամ ջարդել, կուրացնել), մահվան դատավճռի իրավունք ուներ միայն խանը։ Հայ համայնքի ներսում ծագած քաղաքացիական բնույթի դատերը իրավունք ունեին վարելու հայ հոգևորականներից կազմված դատական ատյանները։ Շահ Աբբաս II-ի 1650 թ. հրովարտակով հաստատվում էր մայրաքաղաքի գլխավոր հոգևորական ատյանի («Դիվան-ալ-սադարաթի») այն վճիռը, ըստ որի՝ «եթե քրիստոնյաները իրար մեջ վեճ ունենան և դիմեն իրենց եպիսկոպոսներին կամ քահանաներին, ոչ ոք թող արգելք չհանդիսանա և նեղություն չպատճառի, իսկ եթե կողմերից մեկը մուսուլման լինի, այդ դեպքում վեճը պետք է հարթեն տեղի Շար՝ ի անդամների և մուսուլման ղազիների (դատավորների) միջոցով»[8]։

## 2. ՀԱՅԱԲՆԱԿ ՆԱՀԱՆԳՆԵՐԻՑ ՍՏԱՑՎՈՂ ԵԿԱՄՈՒՏՆԵՐԻ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ԵՎ ԱՌԵՎՏՐԱ-ՖԻՆԱՆՍԱԿԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ

Սեֆյան Իրանի հայաբնակ նահանգներն իրոք երկրի ամենաեկամտաբեր նահանգներն էին։ Դա պայմանավորված էր ոչ միայն բնակչության խտությամբ և համեմատաբար զարգացած գյուղատնտեսությամբ, այլ ներքին ու արտաքին և տարանցիկ առևտրով, որը մաքսային խոշոր եկամուտներ էր խոստանում խաներին և բեկլարբեկիներին։ Վերջիններս մեծ նախանձախնդրություն էին ցուցաբերում իրենց վիլայեթի հայ բնակչության բազմապատկման գործում, որը կարևոր նշանակություն ուներ երկրի շենացման, առևտրի ու արհեստների զարգացման համար և ավելացնում էր նրանց եկամուտների աղբյուրները։ Հայ ռայաթները բազմաթիվ այլ հարկերից բացի, կանխիկ դրամով վճարում էին նաև հատուկ գլխահարկ՝ «ջիզյա», որը չափազանց մեծ գումար էր կազմում։ Հայտնի է, որ 1604 թ. բռնագաղթից մի քանի

[7] Տե՛ս *И. П. Петрушевский*, Очерки по истории феодальных отношений в Азербайджане и Армении в XVI—начале XIX вв., էջ 142։

[8] «Մատենադարանի պարսկերեն վավերագրերը, Հրովարտակներ», պրակ Բ, վավ. 41։

տարի հետո բեկլարբեկիներ Ամիր-Գունա խանն ու նրա որդին՝ Թահմազղուլի խանը, ամեն կերպ նպաստում էին գաղթականների վերադարձին, սիրաշահում և օգնում էին նրանց։ Ավելին, չբավարարվելով միայն դրանով, Արևմտյան Հայաստանի մերձակա շրջաններից ևս մեծ թվով հայ ընտանիքներ բռնի կերպով բերում և բնակեցնում էին Արարատյան երկրում։

Բեկլարբեկիների վարչա-քաղաքական գործունեությունը արտահայտվում էր Ֆ. Էնգելսի հայտնի այն բնորոշմամբ, ըստ որի «Արևելքում կառավարությունը միշտ էլ ունեցել է միմիայն երեք վարչություն՝ ֆինանսական (կեղեքում երկրի ներսում), ռազմական (ներքին և արտաքին երկրների ավարառություն) և հասարակական աշխատանքների վարչություն (հոգատարություն վերարտադրության մասին)»[9]։

Պարզ է, սակայն, որ այս երեք վարչությունները բոլոր ժամանակներում հավասարազոր չէին։ Այս կամ այն վարչության գործունեությունը սերտորեն պայմանավորված էր ընթացիկ քաղաքական դրությամբ։ Ըստ այդմ էլ մեր աղբյուրները մերթ ընդ մերթ ընդգծում են խաների ու բեկլարբեկիների ծավալած գործունեության այս կամ այն կողմը։

Բնորոշ է այս տեսակետից 1605—1625 թթ. Արարատյան երկրի բեկլարբեկի Ամիր-Գունա խանի գործունեության գնահատականը, տրված Զաքարիա Սարկավագ Քանաքեռցու կողմից. «Այր քաջ և սրտապինդ և արի ի պատերազմունս, անահ և աներկիւղ շէնարար և սիրող քրիստոնէից», որ «ի տիրելն իւրում Երևանայ, իսկոյն ձեռն էարկ շինութեան և մարդաշատութեան։ Նախ սկսաւ շինել զբերդն և ապա ապարանս և զայգիս և զբուրաստանս և զպարտէզս, և հանել զառուս և առաւելուլ զջուրսն։ Այլ և ի տեղիս-տեղիս թեթևացոյց զհարկն և եբարց դծանր լուծ ի պարանոցէ ռամկաց։ Բայց զի բազմացոյց զուխրայն. այսինքն կռռն...»։ Այնուհետև Քանաքեռցին նկարագրում է նրա կատարած արշավանքները դեպի Կարին, Մուշ, Վան և Արևմտյան Հայաստանի մերձակա շրջանները, որտեղից բերված մեծ թվով հայ գաղթականությանը նա բնակեցրեց Երևանի և Էջմիածնի միջև գտնվող Քյալարա, Գյոյգումբեթ, Կավակերտ, Փարաքար, Սապատ և այլ գյուղերում[10]։

Հայաբնակ վիլայեթները առանձնապես աչքի էին ընկնում իրենց բարձրորակ և բազմատեսակ հացահատիկային ու տեխնիկական կուլտուրաներով, որոնք մեծ քանակությամբ վաճառվում էին Իրանի տարբեր կողմերից և հարևան երկրներից եկող առևտրականներին։ XVII դարի երկրորդ կեսում ապրանքային արտադրությունը Արարատյան երկրում, Նախիջևանում, Ղափանում և այլ գավառներում բավական լայն չափեր էր ընդունել և կարևոր դեր էր խաղում երկրի տնտեսության մեջ։

Հայտնի է, որ ինչպես Արարատյան երկրում, այնպես նաև Նախիջևանի օլքայում, Մակվում, Խոյում, Սալմաստում, Ուրմիայում և այլ վայրերում բնակվող հայերը զբաղվում էին խաղողամշակությամբ ու գինեգործությամբ։ Դարերի պատմություն ուներ այգեգործությունը Հայաստանում։ Զարգացած էր նաև բանջարանոցային տնտեսությունը. մշակվում էր «վարունգ, սեխ, մեղրապտղ և խավարտ (կանաչեղեն)»[11] և բանջարանոցային այլ կուլտուրա-

---

[9] Ֆ. Էնգելս, 1853 թ. հունիսի 6-ին Մարքսին գրած նամակից, Մարքս, Էնգելս, Հատընտիր նամակներ, Երևան, 1936, էջ 91—92։

[10] Տե՛ս Զաքարիա Սարկավագ, հատ. Ա, էջ 45—47։

[11] Նույն տեղում, էջ 59։

ներ։ Ֆրանսիացի բուսաբան Տուրնեֆորի վկայությամբ, XVII դարում Արարատյան դաշտում բացի հիմնական հացահատիկներից մշակվում էր նաև բրինձ, բամբակ, կտավատ, ձմերուկ, սեխ, զանազան այլ մրգեր և ծխախոտ[12]։

Սակայն, ինչպես պարզ երևում է XVII—XVIII դարերի մի քանի հարկացուցակներից, ցորենը, գարին, կորեկը և բրինձը հիմնական հացահատիկային կուլտուրաներն էին և զբաղեցնում էին մշակելի տարածությունների մեծ մասը։ Դրանով է բացատրվում քաղաքներում և գյուղերում գործող ջրաղացների մեծ թիվը։ Միայն Երևանի Զորագյուղ թաղամասում գործում էին 50-ից ավելի ջրաղացներ, որոնց մեծ մասը 3—4 քար ունեին։ Զգալի թիվ էին կազմում նաև չալթուկի դինգերն ու քրքրանները, որոնք պատկանում էին երևանցի խոջաներին կամ էջմիածնի վանքին։ Զարգացած էր նաև բուսական յուղերի արտադրությունը։ Այդ են վկայում բազմաթիվ ձիթհանքերի կամ սրանոցների առկայությունը Երևանում, էջմիածնում, Տաթևում, ինչպես նաև Շիրակի ու գեղարքունյաց խոշոր բնակավայրերում։

Ֆրանսիացի ճանապարհորդ Շարդենի վկայությամբ, այգեգործության համար նպաստավոր վայրերում հայ գյուղացիությունը մշակում էր խաղողի ընտիր տեսակներ։ Այգիների առուծախին վերաբերող կալվածագրերում համարյա միշտ հիշատակվում են հնձանները։ Այդ նշանակում է, որ հենց տեղում էլ մշակվում էր խաղողը[13]։

Ասվեց, որ Արարատյան դաշտում, Շարուրում և այլուր տեխնիկական կուլտուրաներից մշակվում էր նաև բամբակ։ Հայաստանում բամբակամշակության մասին վկայում են դեռևս X դարի արաբա-պարսկական աղբյուրները։ XVI—XVII դարերի աղբյուրներում որոշակի տվյալներ չկան բամբակի հումքի մշակման և մանածագործական արհեստանոցների առկայության մասին։ Կան որոշ տեղեկություններ, որ XVIII դարում, հատկապես բամբակի արտահանման գործով, զբաղվել են երևանցի, կարբեցի, ձորագեղցի ու էջմիածնեցի խոջաները և էջմիածնի վանքը, որն ուներ նաև զտման արհեստանոց։

Քոչվոր, անասնապահությամբ զբաղվող ցեղերը յայլաղներում արտադրում էին յուղ, պանիր, ճրագու և անասնապահական այլ մթերքներ, որոնց մի զգալի մասը հանվում էր շուկա։ Անասնապահության մեջ, անշուշտ, ավելի զարգացած էր ոչխարաբուծությունը։

Զարգացած անասնապահության հետ սերտ աղերս ուներ կաշեգործությունը, որով զբաղվել են Արևելյան Հայաստանի մի քանի քաղաքներում և բավարարել շուկայի պահանջները։ Կաշին ոչ միայն շատ կարևոր լայն սպառման ապրանք էր, այլև միջնադարում ուներ մեծ նշանակություն բանակի համար, հատկապես հեծելազորային հանդերձանքի պատրաստման գործում։

Հողագործությանը զուգահեռ գյուղացիության օժանդակ տնտեսություններից էին շերամապահությունն ու մեղվաբուծությունը։ Շերամապահությամբ զբաղվում էին հատկապես Սյունյաց և Արցախի լեռնային շրջաններում։ Արտադրվող մետաքսը երկրից արտահանվող ամենաթանկարժեք ապրանքներից էր, որի մենաշնորհը շահերը վերցնում էին իրենց ձեռքը։ Նրանք ունեին իրենց առևտրական գործակալները («թաջեր-ե խասսե-յե շարիֆե»), որոնք մեծ

[12] Տե՛ս Ղ. Ալիշան, Այրարատ, էջ 233։

[13] Տե՛ս կալվածագրեր, I, կազմեց Հ. Փափազյան, Երևան, 1968, վավ. 15։

մասամբ Նոր Ջուղայի հայ խոջաներից էին։ Մետաքսի արտահանման գլխավոր կենտրոններն էին Կապան և Ագուլիս քաղաքները։

Աշխարհագրական և կլիմայական պայմանները նպաստավոր էին նաև մեղվաբուծության համար։ Հայ և օտար աղբյուրները բազմիցս հիշատակում են Հայաստանում զարգացած մեղվաբուծության մասին։ XVI—XVIII դարերում ևս ավանդական զամբյուղե փեթակներով մեղվաբուծությամբ զբաղվել են հիմնականում ալպյան արոտավայրերով հարուստ ծաղկաառատ շրջաններում։ Տեղեկություններ կան, հատկապես, Գեղարքունյաց, Կոտայքի, Արագածոտնի, Տաթևի և լեռնային այլ շրջանների մեղվաբուծության մասին։

Գյուղացիության սեզոնային զբաղմունքներից էին որսորդությունն ու ձկնորսությունը։ Վայրի կենդանիների, հատկապես ընտիր մորթի և կաշի ունեցող գազանների որսը ձմռան ամիսներին եկամտաբեր զբաղմունք էր։ Իսկ ձկնորսությունը Սևանա լճում և լեռնային գետակներում (շուկայական նպատակներով կամ իրենց կարիքների համար) միշտ էլ զբաղեցրել է գյուղական բնակչության որոշ մասին[14]։

Պետք է ասել, որ գյուղական աշխատավորությունը ուներ նաև այլ բնույթի, մեծ մասամբ արհեստագործական օժանդակ զբաղմունքներ, որոնցից առավել հայտնի են գորգագործությունը, կտավագործությունն ու կավագործությունը։ Գորգագործությամբ զբաղվում էին առավելապես Լոռի-Փամբակի, Ղազախի, Արագածոտնի և Շիրակի, ինչպես նաև Սյունյաց և Արցախի անասնապահական շրջաններում։ Գյուղացիները ձմռան ամիսներին տնայնագործական եղանակով արտադրում էին նաև կապերտներ, գործում հասարակ կտավեղեն՝ անձնական գործածության համար։ Կավագործությունը, սակայն, պայմանավորված էր տվյալ վայրում անհրաժեշտ հումքի առկայությամբ։ Դրա համար էլ այդ արհեստով զբաղվում էին որոշ գյուղերում, օրինակ, Երևանի մոտ գտնվող Նորք գյուղը կոչվում էր նաև «Ջոլմագչի», որ նշանակում է «կավագործ, բրուտ»։

Երկրի ընդերքի օգտագործման վերաբերյալ տեղեկություններ կան ավելի վաղ ժամանակներից։ Սակայն ունենք նաև ռուսական տիրապետությանը նախորդող ժամանակաշրջանին վերաբերող որոշ տեղեկություններ, որոնք վկայում են միայն Կողբի աղահանքերի, Լոռվա և Ղափանի պղնձի օգտագործման մասին։ Նշված ժամանակաշրջանում ցածր մակարդակի վրա էր գտնվում նաև քարհանքերի օգտագործումը։ Շինարարության մեջ մեծ կիրառություն ուներ թրծված և հատկապես չթրծված աղյուսը։

Հայաբնակ նահանգներից ստացվող եկամուտների մի զգալի մասն էլ գոյանում էր ճանապարհների պահպանության համար գանձվող գումարներից։ Արևելյան Հայաստանով էին անցնում մի քանի քարավանային ճանապարհներ։ XVII դարի վաճառական Զաքարիա Ագուլեցին իր օրագրության մեջ մանրամասն նկարագրում է այդ ճանապարհներից մի քանիսը, չմոռանալով նշել նաև ճանապարհապահպան կետերը (ռահդարխանեներ) և մաքսատները։ Նա թվարկում է այդ կետերում ծառայող երեք կարգի պաշտոնյաների՝ ռահդարներ, բաջչիներ և գումրուգչիներ, որոնցից առաջինները նստում էին մեծ կամ փոքր վարչական կենտրոններում և ճանապարհապահպան վայրերում, իսկ մյուսները՝ սահմանամերձ մաքսատներում[15]։

---

[14] Տե՛ս Chardin J., Voyages..., հատ. II, էջ 166։

[15] Տե՛ս «Զաքարիա Ագուլեցու օրագրությունը», էջ 7։

Առաջին մեծ ճանապարհը, որ Թավրիզի վրայով կապվում էր կենտրոնական Իրանի և այնտեղից էլ Հնդկաստանի ու Միջին Ասիայի հետ, Ջուղայի մոտ անցնելով Արաքսը, Նախիջևանի, Երևանի, Էջմիածնի և Կաղզվանի վրայով տանում էր դեպի Կարին։ Այս ճանապարհը կոչվում էր Էրզրումի կամ վաճառականների ճանապարհ։ Երևանից դեպի Էրզրում տանող մի այլ ճանապարհ Եղվարդով, Ապարանով, Արագածի հյուսիսային փեշերով ձգվում էր դեպի արևմուտք, կտրում Ախուրյան գետը, Ղարսի վրայով գնում Հասանղալա և այստեղ միանում էր նույն մայրուղուն։ Սրան զուգահեռ եղել է նաև մեկ այլ ճանապարհ, որը Էջմիածնից Քասախ գետի աջափով, Կարբի գյուղաքաղաքի վրայով ձգվում էր դեպի հյուսիս և Ապարանում միանում նույն ճանապարհին։ Այստեղից մեկ այլ ճյուղ շարունակվում էր դեպի Լոռի և Բորչալուի վրայով գնում Թիֆլիս։ Այս ճանապարհը սկզբնաղբյուրներում և վավերագրերում կոչվում է Վրաստանի ճանապարհ[16]։ Կար նաև Երևանից Թիֆլիս գնացող մեկ այլ ճանապարհ, որի նկարագրությունը գտնում ենք ֆրանսիացի ճանապարհորդ Շարդենի մոտ։ Այդ ճանապարհը՝ մոտավորապես համապատասխանում էր ներկայիս Երևան-Աղստաֆա խճուղուն։ Շարդենը հիշատակում է այս ճանապարհի վրա գտնվող Բջնի, Կարաքեշիշ, Դիլիջան, Շենքար (Սև Քար), Մելիք-Քյանդի և Քյոփրու-Քյանդի ծանոթ տեղանունները[17]։ Այս նույն ճանապարհով էլ Երևանը կապվում էր Գանձակի հետ, որն իր հերթին Շամախու վրայով կապված էր այն գլխավոր առևտրական ճանապարհին, որն Անդրկովկասը կապում էր Ռուսաստանին։

Ռահդարխանները ու մաքսատները շատ էին և ցրված բոլոր ճանապարհների վրա։ Միայն Արաքսի ափին գտնվող Ջուղա քաղաքից մինչև Կաղզվան ձգվող ճանապարհի վրա հինգ ռահդարխաններ ու մաքսատներ կային[18]։ Թե որքան կարևոր եկամտի աղբյուրներ էին ռահդարխանները, այդ պետք է եզրակացնել նաև այն փաստից, որ շատ հաճախ դրանք կապալով տրվում էին մասնավոր մարդկանց, որոնք միանվագ որոշ գումար մուծում էին պետական գանձարանը և իրավունք ստանում մեկ լրիվ տարի տվյալ ռահդարխանի եկամուտը գանձելու[19]։ XVIII դարի 80-ական թվականներին Երևանի Ղուլամ-Ալի խանը պատասխանելով Հերակլ I-ի մի գրությանը, որով վերջինս պահանջում էր մեղմացնել վաճառականական ապրանքներից գանձվող մաքսերը, գրում էր. «Ձերդ ողորմածության համար պետք է պարզ լինի, որ Երևանի երկրի հիմնական եկամուտը նույն այս ռահդարխանների վարձակալության գումարներից է գոյանում և եթե ապրանքներից գանձվող մաքսերի հարցում փոփոխություն մտցվի և զեղչ կատարվի, այն ժամանակ իմ երկրի գործերը պիտի խանգարվեն և ես անել դրության մատնվելով չպիտի կարողանամ բարձրագույն դիվանին հատուցվող տարեկան կապալային գումարները վճարել»[20]։

Ոչ պակաս եկամտաբեր հաստատություններ էին նաև վիլայեթների կենտրոններում և վարչական ու առևտրական համեմատաբար ավելի մեծ քաղաքներում փողերանոցները կամ «զառաբխանները», որոնք գտնվում էին

---

16 Մատենադարան, Կաթողիկոսական դիվան, թղթ. 1զ, վավ. 943, 944, 945։

17 Տե՛ս Chardin J., Voyages..., հատ. II, էջ 141—156։

18 Տե՛ս «Զաքարիա Ագուլեցու օրագրությունը», էջ 7—8։

19 Տե՛ս նույն տեղում, էջ 81, 91, 101, 107։

20 Մատենադարան, Արաբատառ ֆոնդ, ձեռագիր № 233, էջ 242—243։

բեկլարբեկիների անմիջական հսկողության տակ։ Փողերանոցներ կային Թավրիզում, Երևանում, Նախիջևանում, Կարբիում, ավելի ուշ նաև Շուշիում և այլուր։ Վաճառականներն ու առևտրականները ցանկացած քանակությամբ կարող էին այնտեղ դրամ կտրել, վճարելով որոշ տոկոս դրամահատման վարձ։ XVII դարում դրամահատման խոշոր կենտրոն էր Երևանի փողերանոցը, որի մասին մանրամասն տեղեկություններ է հաղորդում Զաքարիա Ագուլեցին. Նրա եղբայր խոջա Շմավոնը երկար ժամանակ եղել է Երևանի փողերանոցի վերակացուն։

Փողերանոցների վարձակալությունից խաները մեծ եկամուտներ էին ստանում։ XVII դարի երկրորդ կեսում Երևանի փողերանոցը հերթով վարձակալել են ագուլեցի, երևանցի, ջահկեցի, ձորագեղցի մեծահարուստ հայ խոջաները։ Թե ինչպիսի խոշոր եկամտի աղբյուր էին փողերանոցները, դա պարզ երևում է թեկուզ այն բանից, որ 1663 թ. երևանցի խոջա Սարգիսը ղառաբխանեի մեկ տարվա եկամուտը վարձակալում է 1500 թումանով։ Երևանի փողերանոցից ստացվող մեկ տարվա եկամուտը 70 անգամ ավելի էր, քան Արարատյան երկրի խոշորագույն ֆեոդալական տնտեսություններից մեկի՝ Էջմիածնի վանքից գանձվող բոլոր հարկերը միասին վերցրած[21]։

Սակայն որքան էլ որ մեծ լինեին այս կարգի առևտրական, վարչական և հատկապես այլ և այլ առիթներով բնակչությունից ձեռք բերվող եկամուտները, ֆեոդալական այնպիսի երկրում, ինչպիսին էր Սեֆյան Իրանը, որի կազմի մեջ էին մտնում Արևելյան Հայաստանի վերոհիշյալ շրջանները, պետական գանձարանը հարստացնող հիմնական եկամտի աղբյուրը մնում էր աշխատավոր գյուղացիության ֆեոդալական շահագործումը և հողային ռենտան, որը գանձվում էր բազմատեսակ հարկերի ու այլ պարտավորությունների անվան տակ։

## 3. ՀՈՂԱՏԻՐՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՀՈՂԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

XVI—XVIII դարերում ինչպես Արևելյան Հայաստանում, այնպես էլ ամբողջ Իրանում մշակելի հողային տարածությունները ըստ պատկանելության հինգ խմբի էին բաժանվում. 1) Պետական կամ դիվանի հողեր, 2) Արքունի կամ խասսե-յե շարիֆե, 3) Մուլք կամ հայրենիք, 4) Վանքապատկան-մզկիթապատկան հողեր կամ մովկուֆաթ, 5) Համայնքապատկան հողեր։

1. Պետական հողերը սկզբնաղբյուրներում և պատմական վավերագրերի մեջ երկու անունով են հիշվում՝ դիվանի և խալիսե։ Այն հողերը, որոնց եկամուտները ամբողջապես հատկացվում էին տարբեր վայրերում ծառայության մեջ գտնվող պետական պաշտոնյաներին ու զինվորականությանը և ենթակա էին երկրի կենտրոնական ֆինանսական տեսչության՝ մուսթովֆի ուլ-մամալիքի տնօրինությանը, կոչվում էին դիվանի հողեր, իսկ այն հողերը, որոնք անմիջապես հատկացված էին տվյալ վիլայեթին և նրանց եկամուտները ամբողջապես տնօրինվում էին տեղական իշխանությունների կողմից, սովորաբար անվանվում էին խալիսե հողեր։

Արևելյան Հայաստանում մեծ թվով դիվանի և խալիսե գյուղերի առկայությունը հետևանք էր հատկապես այն բանի, որ սահմանամերձ և հաճախակի պատերազմական գործողությունների թատերաբեմ լինելով, միշտ ենթա-

[21] Տե՛ս նույն տեղում, թղթ. 1գ, վավ. 392։

կա էին ավերածության և հետևաբար հաճախ էր պատահում, որ գյուղատերերը քաղաքական հանգամանքների բերմամբ լքում էին կալվածները և հեռանում, իսկ այդ կալվածները ի վերջո բռնագրավվում էին և մտնում դիվանի հողերի շարքը։ Նույն բանը տեղի էր ունենում նաև այն դեպքում, երբ խաներից որևէ մեկը իր բեկլարբեկիության շրջանում ձեռք էր բերում մեծ թվով սեփական մուլքային գյուղեր և երբ անհավատարմության կամ զեղծարարության մեջ ամբաստանվելով հեռացվում էր պաշտոնից, այդ մուլքերը նույնպես հարքունիս էին գրավվում և դրվում էին դիվանի տրամադրության տակ։

XVII դարի սկզբում շահ Աբբաս I-ը կազմակերպելով նոր կադրային բանակ, միաժամանակ ձգտում էր ընդարձակել դիվանի հողերը, որպեսզի կարողանար նոր զինվորականությանն ապահովել անհրաժեշտ քանակությամբ թիուլներով և ռոճիկի դիմաց տրվող այլ հողային եկամուտներով։

Դիվանի գյուղերից ստացվող ռենտա-հարկը հիմնականում իրացվում էր առանձին գյուղերից և գյուղախմբերից ստացվող ամբողջ հարկերը կամ դրանց մի մասը ռոճիկի դիմաց զինվորականությանն ու պետական պաշտոնեությանը հանձնելով։ Հարկային գումարների փոխանցումները կատարվում էին տարբեր ձևերով։

Ամենատարածված ձևը թիուլն էր, որը տրվում էր ոչ անպայման դիվանի գյուղերից ստացվող եկամուտներից, այլ նաև կալվածատիրական գյուղերից գանձվող հարկերից։ Դիվանի գյուղերից տրվող թիուլները, եթե դրանք տրվում էին գյուղի ամբողջ ռենտա-հարկը գանձելու իրավունքով, դիտվում էին որպես ժամանակավոր, ոչ ժառանգական հողատիրություն։ Թիուլդարը իրավունք ուներ գանձելու միայն այդ գյուղերից որոշակի հարկեր, որոնք բավական մանրամասն նշվում էին թիուլնամեի մեջ։ Շատ հաճախ, երբ գյուղն իր բոլոր հարկային պարտավորություններով պատասխանատու էր դառնում թիուլդարին և այդ վիճակը շարունակվում էր տասնյակ տարիներ, իսկ երբեմն էլ թիուլդարի մահվանից հետո՝ փոխանցվում նրա ժառանգներին, այդ դեպքում արդեն թիուլդարի և նրա հարկատու ռայաթների միջև ստեղծվում էին հողատիրոջ և նրա հողը վարձակալող հողագործ ռայաթի փոխհարաբերություններ, որոնք հաճախ ավելի ամուր էին, քան մուլքատեր-կալվածատիրոջ և նրա ռայաթների փոխհարաբերությունները։ Այստեղ ևս ստեղծվում էր անմիջական պատասխանատվություն, որն արտահայտվում էր գյուղական համայնքի հավաքական պատասխանատվության ձևով։ Ինչպես դիվանի, այնպես նաև ոչ դիվանի գյուղերի թիուլդարները նույն գյուղի ռայաթների նկատմամբ ունեին նաև վարչական ու դատական իրավունքներ։

Դիվանի գյուղերից ստացվող եկամուտների մի այլ ձև կոչվում էր համեսալե (ամենամյա), որ նույնպես նշանակում էր առանձին հարկատու օբյեկտների ամբողջ ռենտա հարկի կամ նրա մեկ մասի գանձման իրավունքի հանձնումը զինվորականությանն ու պետական պաշտոնյաներին։ Մի անգամ այդ իրավունքը ստանալուց հետո, համեսալե ստացողները ամեն տարի իրավունք ունեին որոշված գումարը կամ մթերքը ստանալու տվյալ օբյեկտից, ցնոր տնօրինություն։ Ըստ էության համեսալեն համարյա նույնն էր, ինչ որ թիուլը, այն տարբերությամբ, սակայն, որ թիուլներ ավելի շատ տրվում էին ամբողջական դիվանի գյուղերն ու գյուղախմբերը իրենց ամբողջ հարկային պարտավորություններով, իսկ համեսալեի գումարները ավելի փոքր էին և մեծ մասամբ տրվում էին ինչպես դիվանի, այնպես նաև ոչ դիվանի գյուղերից

գանձվող հարկերի ընդհանուր գումարի մի մասը կամ որոշ հարկեր ամբողջությամբ։ Համխասալե ստացողները կոչվում էին համխասալեդար։

Բացի թիուլից ու համխասալեից, գոյություն ունեին նաև ռոճիկների հատուցման այլ ձևեր, որոնցից կարելի է հիշատակել թանխահ-ե մավաջիբ-ը (ռոճիկի գումար)։ Ի տարբերություն թիուլի և համխասալեի, թանխահների նշանակման հրամանագրերում չէր նշվում այն օբյեկտի անունը, որտեղից պետք է ստացվեր ռոճիկի գումարը, այլ հրամանագիրը ուղղվում էր դիվանատան պաշտոնյաներին՝ մուսթովֆիներին և գրագիրներին, հանձնարարվելով ամեն տարի ռոճիկի դիմաց որևէ հարկատու օբյեկտի անունով թանխահ տալ։ Այդ նշանակում էր, որ ռոճիկի թանխահ ստացողները ամեն տարի նոր գրություն պետք է ստանային և գնային իրենց ռոճիկը յուրաքանչյուր տարի տարբեր վայրից ստանալու։ Այս ձևը կոչվում էր նաև եքսալե (միամյա)։

Դիվանի գյուղերից, ինչպես նաև այլ հարկատու օբյեկտներից գանձվող ռենտա-հարկը հանդիսանում էր եկամտի այն գլխավոր աղբյուրը, որով պայմանավորված էր պետության ֆինանսական հենարանի՝ դիվանական գանձարանի հարստությունը։ Հետզհետե ընդարձակվող դիվանի հողերի անմիջական ղեկավարությունը պահանջում էր հսկայական վարչա-տնտեսական աշխատանք, որպիսին վեր էր Սեֆյան Իրանի ուժերից։ Այդ իսկ պատճառով միշտ իրեն վերապահելով այդ հողերի սեփականության իրավունքը, պետությունը դրանցից ստացվող եկամուտների մի մասը թիուլի, համխասալեի և այլ ձևերով, ի դիմաց ռոճիկի, տալիս էր պետական պաշտոնյաներին ու զինվորականությանը, իսկ մնացյալ մասը կապալով հատկացնում մասնավոր մարդկանց, որոնք միանվագ որոշ գումար էին մուծում պետական գանձարանը և իրավունք ստանում գանձելու այս կամ այն վայրի մեկ տարվա ամբողջ հարկերը։ Դիվանի գյուղերի ամբողջ ռենտա-հարկը, ինչպես նաև այլ հարկատու տնտեսությունների վարձակալման այս ձևը կոչվում էր իջարե կամ զաբթ, իսկ վարձակալները՝ մուսթա՛ջիրներ կամ զաբիթներ, որոնք սովորաբար ունեին նաև վարչական ֆունկցիաներ։

2. Արքունի կալվածները, որոնք կոչվում էին խասս կամ խասսե-յե շարիֆե, Արևելյան Հայաստանում մեծ թիվ չէին կազմում։ Պատճառն այն էր, որ շահը և թագավորական ընտանիքի անդամները նախընտրում էին հողեր ունենալ մայրաքաղաքի մոտ։ Երկրի կենտրոնական նահանգներում, սահմանամերձ և հաճախ հարձակումների ենթակա վայրերում կալվածներ ունենալը այնքան էլ նպատակահարմար չէր։

Զաքարիա Ագուլեցին մանրամասն տեղեկություններ է տալիս Ագուլիսի և Նախիջևանի մոտակայքում գտնվող 5 խասս գյուղերի (Ագուլիս, Մեղրի, Շոռոթ, Լեհրամ, Աստապատ) մասին։ Խասս գյուղերի համայնքները թեև վարչական հարցերում ենթարկվում էին տեղական մարմիններին, սակայն հարկային պարտավորություններով կապված էին արքունիքին կից վարչա-տնտեսական կառավարչության՝ «խասսե-յե շարիֆեի սարքարության» հետ և ենթարկվում էին նրա կողմից նշանակված խասսեդարներին, որոնք միաժամանակ վարում էին նույն վայրի ոստիկանապետի (դարուղա) պաշտոնը։

Խասս գյուղերից ստացվող եկամուտները XVII—XVIII դարերում չէին տրվում որպես ռոճիկ։ Ընդհակառակը, խասսե-յե շարիֆեի ծառայողները մեծ մասամբ թիուլներ էին ստանում դիվանի գյուղերից և բնակչությունից գանձվող այլ պետական հարկերի հաշվին։ Զաքարիա Ագուլեցու վկայությամբ,

սալյան, խասս գյուղերը սովորաբար վարձակալվում էին մասնավոր մարդկանց կողմից։ Ըստ որում որպես մուլթազիմներ կամ զաբիթներ հանդես էին գալիս և՛ բարձրաստիճան պաշտոնյաներ, և՛ մանր ու խոշոր հողատիրության ու քաղաքային արիստոկրատիայի ներկայացուցիչներ, և՛ խոշոր առևտրականներ, որոնք վարձակալության շրջանում օգտվում էին խասսեդարներին վերապահվող բոլոր իրավունքներից։

3. Վանական հողատիրությունը Հայաստանում բավական հին պատմություն ունի։ Դրանք այն հողերն էին, որ տարբեր ժամանակներում առհավետ նվիրվել էին կրոնական հաստատություններին և տվյալ ժամանակաշրջանում գտնվում էին այս կամ այն վանքի վանահոր կամ մզկիթին պատկանող կալվածների տնօրենի՝ մութավալլիի անմիջական տնօրինության տակ։ Այս հողերը, սկսած դեռևս արաբական տիրապետության շրջանից, կոչվում էին վակֆ։ Վակֆային կալվածներն ու այլ ստացվածքները, որ ընդհանուր տերմինով կոչվում էին մովկուֆաթ, մի անգամ նվիրվելով որևէ կրոնական հաստատության, առհավետ ամրացվում էին նրան և այլևս որևէ ձևի օտարման ենթակա չէին։

XVI—XVIII դարերում և դրանից էլ շատ առաջ Հայաստանում եղել են նաև մզկիթապատկան հողեր։ Պետք է նշել, սակայն, որ այս երկու կրոնական հաստատությունների (վանքեր և մզկիթներ) հողատիրական իրավունքների միջև զգալի տարբերություններ կային։ Մզկիթապատկան կալվածները ամբողջապես էին ազատվում պետական հարկերից, իսկ վանքապատկան կալվածները՝ մասամբ միայն։

XV դարի մասնակի կայունացումից հետո, վանական հողատիրությունը XVI դարում սկսում է անկում ապրել։ XVI—XVII դարերում Արևելյան Հայաստանում բացի էջմիածնի վանքից, իրենց հողային կարողություններով ավելի աչքի էին ընկնում Հավուց Թառի, Գանձասարի, Տաթևի, Ագուլիսի, Դարաշամբի և Մակվի Թադեոս Առաքյալի վանքերը։ Պահպանված բազմաթիվ կալվածագրերից և այլ փաստաթղթերից երևում է, որ նրանց կալվածները նախորդ դարերի համեմատ խիստ աղքատացել էին։ Այս շրջանում նրանք ջանում էին միայն պահպանել անցյալից ժառանգած կալվածները, քան ընդարձակել դրանք։ Մինչև XV դարը ամբողջական գյուղեր և այլ կալվածներ նվիրվում էին վանքերին հայ խոշոր ֆեոդալների և մեծահարուստ կալվածատերերի կողմից, որոնք XVI դարում դուրս էին եկել ասպարեզից, ուստի վանքապատկան կալվածները ոչ միայն չէին հարստանում, այլ գնալով նվազում էր դրանց թիվը։ XVII դարի սկզբում էջմիածնի վանքի պատկանելիությունից դուրս էին եկել XV դարի 30-ական թվականներին Սյունյաց Օրբելյանների վերջին ներկայացուցիչ Ամիր Ռուստամի նվիրած բոլոր յոթ խոշոր գյուղերը։

Զունենալով հողային համեմատաբար խոշոր նվիրատվությունների որևէ հեռանկար, էջմիածնի կաթողիկոսները 1640 թ. հետո սկսում են վանքի միջոցներով գնել բազմաթիվ գյուղեր։ Դարավերջում արդեն վանքն ուներ 23 մեծ ու փոքր գյուղ, մեծ քանակությամբ ընդարձակ վարելահողեր, այգիներ, ինչպես նաև ջրաղացներ, ձինգեր և այլ ստացվածքներ։

Վանքապատկան կալվածները սեփականության տեսակետից երկու խմբի էին բաժանվում. ա) կանխիկ դրամով գնված կալվածներ, որոնք անվանվում էին մուլք-ե զարխարիդ (գանձագին մուլքեր), բ) մովկուֆաթ (վակ-

ֆային կալվածներ), որոնք նվիրվել կամ վակֆ էին տրվել հավատացյալների կողմից։

XVII—XVIII դարերում Հայոց եկեղեցու հոգևոր կենտրոնի՝ էջմիածնի, ինչպես նաև այլ վանքերի կալվածների և հատկապես մուլքային գյուղերի մի զգալի մասը «գանձագին» էր և որպես այդպիսին ենթակա էր հարկման։ Գանձագին կալվածներն անհրաժեշտության դեպքում կարող էին վաճառվել, վարձու տրվել կամ գրավ դրվել, իսկ վակֆերը բացի կարճատև (մինչև 3 տարի) վարձակալությունից այլ կարգի օտարումների ենթակա չէին։

Թեև XVI—XVII դարերում ամբողջական գյուղերի նվիրատվությունները համարյա վերացել էին, սակայն առանձին հողակտորներ, այգիներ և այլ ստացվածքներ դեռ շարունակվում էին նվիրաբերվել գյուղական և քաղաքային բնակչության տարբեր խավերի կողմից։ Այդ հողերի օգտագործման իրավունքն էր միայն տրվում վանքերին։ Դրանք շարունակում էին մնալ գյուղական համայնքի մշակելի տարածությունների ընդհանուր տարածության մեջ։ Վանքը սովորաբար դրանք մշակում էր նույն գյուղի ռայաթների կոռային կամ վարձու աշխատանքով և կամ վարձով էր տալիս նույն գյուղի գյուղացիներին։ Այդ հողերի համար վանքը հողային հարկեր չէր վճարում և չէր մասնակցում գյուղական համայնքից գանձվող հարկերին։ Դրանց վերաբերող հարկերն էլ նախկին կարգով շարունակում էին վճարել նույն գյուղի ռայաթները։

Լինելով վակֆային սեփականություններ և վաճառքի ու այլ կարգի օտարումների չենթարկվելով, այս կարգի հողերը գնալով ավելի էին ընդարձակվում, որի հետևանքով կրճատվում էին վանքերին ավելի մոտ գտնվող գյուղական համայնքների հողերը, և ռայաթները ստիպված էին լինում որոշ գործարքի մեջ մտնել վանքի հետ և կիսրարության կամ այլ պայմաններով վարձակալել դրանք։

4. Մուլքը կամ հայրենիքը հողի մասնավոր սեփականության հնագույն հաստատություններից էր։ Հողատիրության այս ձևը XVI—XVIII դարերում պայմանավորված չէր պետական կամ զինվորական ծառայությամբ։ Հայկական թե մատենագրական և թե մանավանդ վիմագիր աղբյուրները վկայում են, որ դեռևս IX—X դարերում Հայաստանում կային մեծ քանակությամբ գյուղեր, որոնք որպես հայրենիք կամ մուլք պատկանել են առանձին սեփականատերերի և որոնց սեփականատիրական իրավունքը ժառանգաբար անցնում էր սերնդից սերունդ և ենթարկվում զանազան կարգի օտարման։

XVI—XVIII դարերում, ինչպես այդ երևում է պահպանված բազմաթիվ կալվածագրերից և այլ դիվանական փաստաթղթերից, գյուղատիրոջ կամ մալիքի սեփականատիրական իրավունքը տվյալ գյուղի նկատմամբ արտահայտվում էր նույն գյուղի համայնքի անդամ հողագործ գյուղացիներից հողային ռենտա գանձելու իրավունքով։ Գյուղի ընդհանուր հողային տարածությունների և ջրի տնօրինման կամ այլ հարցերում նրան այլ իրավունքներ չէր վերապահվում. այդ իրավունքները վերապահված էին գյուղական համայնքին։ Սակայն կալվածատիրոջ քաղաքական հեղինակությունը, նրա գրաված դիրքը պետական-վարչական ապարատում կամ արքունիքում մեծապես կարող էր ազդել կալվածատիրոջ և գյուղական համայնքի միջև գոյություն ունեցող փոխհարաբերությունների վրա։ Այլ խոսքով ասած, արտատնտեսական ճնշումը կարևոր դեր էր խաղում։

Կալվածատիրական հողային ռենտան հիմնականում բնամթերքով էր

գանձվում։ Ըստ տեղի և ժամանակի, ռենտայի նորմերը փոփոխական էին։ Առանձին վիլայեթներում և մահալներում, երբեմն նույնիսկ նույն մահալի տարբեր գյուղերում ռենտայի նորմերը տարբեր էին։ Աղբյուրներում հանդիպում են բերքի 1/25—3/10-ի չափով հատուցման մասին վկայություններ։ Այս հարցում վճռական նշանակություն ուներ ռոգման սիստեմի կալվածատիրական կամ համայնական սեփականություն լինելու հանգամանքը։ Ամեն պարագայում ռենտայի վճարման չափը և կարգը նշվում էր մուլքատիրոջ և գյուղական համայնքի միջև կնքվող պայմանագրի մեջ։ Գոյություն ուներ ռենտայի հատուցման երկու հիմնական ձև.

ա) Ըստ տվյալ տարվա բերքի, նրա որոշ մասը կալվածատիրոջը հատուցելու պայմանով, որ կոչվում էր հասթ-օ-բուդ (ըստ եղածի)։ Այս դեպքում չափվում էր ամբողջ բերքը և վերցվում նրա որոշ տոկոսը։

բ) Առանց բերքը չափելու, յուրաքանչյուր տարի միանվագ որոշ քանակությամբ հացահատիկ և այլ մթերքներ կամ կանխիկ դրամ վճարելու պայմանով, որը կոչվում էր մակթա՛ (կտրված, որոշված)։

Աշխատավոր գյուղացիության արտադրած հավելյալ արդյունքի միայն մի մասն էր, որ յուրացվում էր կալվածատիրոջ կողմից։ Մյուս, ավելի խոշոր մասը, պետական հարկերի և այլ պարտավորությունների ձևով հատուցվում էր պետությանը, մասամբ նաև եկեղեցուն։ Իսկ քանի որ պետական հարկերը հաստատուն էին, գանձվում էին պետական պաշտոնյաների միջոցով և հաճախ գերազանցում էին սահմանված չափերը, ուստի ինքնըստինքյան սահմանափակվում էին կալվածատիրական ռենտայի աճման հնարավորությունները։ Այդ էր պատճառը, որ գյուղերի մուլքատերերը ամեն կերպ աշխատում էին հարստահարման և պարտքի դիմաց բռնագրավումների միջոցով իրենց իսկ ռայաթներից խլել նրանց կողմից մշակվող հողերի օգտագործման իրավունքը և զբաղվել կալվածքային տնտեսությամբ. իսկ հողից և արտադրության մյուս միջոցներից զրկված հողագործ ռայաթներին աշխատեցնել որպես հողի վարձու մշակներ։

5. Համայնքապատկան գյուղեր էին կոչվում այն սակավաթիվ գյուղերը, որոնք մուլքային տիրության իրավունքով պատկանում էին նույն գյուղի համայնքի անդամ հողագործ ռայաթներին։ Այս դեպքում ամբողջ գյուղական համայնքը հանդես էր գալիս որպես տվյալ գյուղի բոլոր մշակելի տարածությունների սեփականատեր, որով և պայմանավորվում էր համայնքի յուրաքանչյուր անդամի սեփականության իրավունքը այն հողակտորների վրա, որոնք գտնվում էին համայնքի տվյալ անդամի անմիջական տնօրինության տակ և մշակվում էին նրա կողմից։

Դարաշամբում գտնվող մի քանի համայնքապատկան գյուղերի կալվածագրերից պարզ երևում է, որ թեև այս կարգի գյուղական համայնքները ազատ էին կալվածատիրական լծից, սակայն մանր ու խոշոր կալվածատերերի և կրոնական հաստատությունների կողմից շարունակ փորձեր էին կատարվում նրանց հողերը զավթելու և բռնի կերպով կալվածատիրական լուծը նրանց վզին փաթաթելու ուղղությամբ։

Շարիաթական կալվածագրերում և հարկային մատյաններում այս գյուղերը դասվում էին մուլքերի շարքը և իրավական ձևակերպմամբ համարվում էին մուլքային սեփականություններ։ Կալվածագրերում շեշտվում էր, որ «գյուղը որպես մուլք, պատկանում է գյուղի ռայաթների համայնքին»։ Իսկ քանի

որ մուլքատիրոջ սեփականատիրական իրավունքը արտահայտվում էր գյուղի ընդհանուր բերքի որոշ տոկոսի գանձումով, ուստի վավերագրերում հատկապես շեշտվում էր, որ «ռայաթները ստացած բերքից պետք է վճարեն միայն պետական հարկերը (բահրաշե-յե դիվանի)» և քանի որ գյուղի մուլքատերերը իրենք էին, ուստի ռենտայի կալվածատիրոջը վճարվող մասը մնում էր իրենց։

## 4. ՀՈՂՕԳՏԱԳՈՐԾՄԱՆ ԵՂԱՆԱԿՆԵՐՆ ՈՒ ՀՈՂԱԳՈՐԾ ԳՅՈՒՂԱՑԻՈՒԹՅԱՆ ՍՈՑԻԱԼ-ԻՐԱՎԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ

Հողագործ աշխատավորության հողի սեփականատիրոջ նկատմամբ ունեցած կախումն ու տնտեսական ենթակայության ձևերը տարբերվում էին ըստ տեղի և ժամանակի։ Սակայն դա սերտ աղերս ուներ նաև այն հարցի հետ, թե ինչպիսին էին հողատիրոջ սեփականատիրական իրավունքները այդ հողերի նկատմամբ։

XVI—XVIII դարերի կալվածագրերում և պաշտոնական այլ վավերագրերում թվարկվում են երկու կարգի հողային սեփականություններ. ա) գյուղեր, որոնք շարիաթական տերմինով արաբերեն կոչվում են կարիյյե և բ) ագարակներ, որոնք արաբերեն կոչվում են մազրա՚ե։

Մուլքային սեփականություններ հանդիսացող գյուղերում կամ կարիյյեներում հողի օգտագործման իրավունքը վերապահված էր նույն գյուղի ռայաթներին, որ արտահայտվում էր գյուղական համայնքի համայնական տիրության իրավունքով։ Գյուղացին պարտավոր էր միայն իր օգտագործած հողի համար ռենտա վճարել կալվածատիրոջն ու պետությանը, որից հետո նա ճանաչվում էր իր մշակած հողի տերը և իրավունք ուներ ուզած ձևով մշակել և օգտագործել այն կամ փոխանցել մեկ ուրիշի։ Այլ էր մազրաեներում սահմանագծված հողերի վրա աշխատող գյուղացիության իրավական վիճակը։ Եթե գյուղերը վաղնջական ժամանակներից ազատ համայնքներ էին՝ հետագայում միայն ֆեոդալական կախման ենթարկված, ապա մազրաեները վաղ շրջանի դաստակերտների նման առանձին ունևորների կամ ազդեցիկ ֆեոդալների ջանքերով (մեծ մասամբ աշխատավոր զանգվածների բռնի, անվճար աշխատանքով) ոռոգված ու մշակելի դարձված ընդարձակ տիրույթներ էին, որտեղ հողի և՛ սեփականության, և՛ օգտագործման իրավունքները ամբողջապես վերապահված էին կալվածատիրոջը։ Հողն այստեղ մշակվում էր վարձկան հողագործների միջոցով կամ բերքի որոշ տոկոսը հողագործին թողնելու պայմանով տրվում էր օգտագործման՝ մենատնտես գյուղացիներին։

Եթե ստրկատիրական շրջանում ագարակներում և դաստակերտներում բնակեցվում էին ռազմական արշավանքների ընթացքում ձեռք բերված գերիներ կամ տնտեսական ճնշումների հետևանքով ստրկական կախման մեջ ընկած ունեզուրկ գյուղացիներ, ապա XVI—XVIII դարերի մազրաեներում կենտրոնացվում էին ծանր հարկապահանջության հետևանքով ունեզրկված, արտադրության միջոցներից զուրկ գյուղացիներ կամ բռնի կերպով այլ կողմերից քշված ռայաթներ։

XVII դարի երկրորդ կեսից սկսած գյուղատերերից շատերին հաջողվում էր օգտվել հետզհետե սաստկացող հարկապահանջության հետևանքով նյութական ծանր պայմանների մեջ ընկած ռայաթների վիճակից և պարտքի դիմաց առինքնել իրենց իսկ սեփական գյուղի սահմաններում գտնվող ընդար-

ճակ հողեր։ Այսպիսով, մեծ կամ փոքր հողակտորները դուրս էին գալիս համայնքի իրավասությունից և փաստորեն դառնում կալվածատիրոջ մազրաաները, իսկ ռայաթները ստիպված էին նույն հողերը վերստին վարձակալել կալվածատիրոջից, պարտավորվելով բացի գյուղից գանձվող ընդհանուր ռենտայից, այդ հողերի համար հավելյալ ռենտա վճարել։

Սոցիալական բուռն հակամարտությունների, կալվածատիրոջ և գյուղական համայնքի միջև տևական պայքարի ու դիմադրության բազմաթիվ փաստերի առկայությամբ հանդերձ, գյուղերի մեծ մասում XVII դարի երկրորդ կեսից սկսած ավելի էր խորանում կալվածատերերի կողմից համայնքապատկան հողերի հափշտակման և աշխատավոր գյուղացիության բռնի հողազրկման պրոցեսը։

Կալվածատերերից շատերին հաջողվում էր սեփական հողերը մշակել նույն գյուղի ռայաթների պարտադիր կոռային աշխատանքով։ Դա հատկապես շատ տարածված էր վանական հողատիրության մեջ, որտեղ տարբեր գյուղերում գտնվող եկեղեցական հողերը պարտավոր էին մշակել նույն գյուղի ռայաթները։ Այդ գյուղերում փաստորեն կալվածատիրական ռենտայի մի մասը վճարվում էր աշխատանքով, մյուս մասը՝ մթերքով։ Տաթևի վանահայր Հովհաննես վարդապետի դավթարից արտագրված ցուցակում մանրամասն նշված է, թե վանքապատկան գյուղերի ռայաթները, որոնք մեծ մասամբ ռենտան վճարում էին մակթայով, անկախ տվյալ տարվա բերքից, վանքի հողերի վրա տարվա մեջ քանի օր և ինչ կարգի աշխատանքներ պիտի կատարեին[22]։

Մուլքային սեփականություններ հանդիսացող մազրաաների և գյուղական ռայաթներից ունեզրկման ճանապարհով սեփականացված հողերի մշակման տարածված ձևերից էր վարձու աշխատանքը, որը սկսեց ավելի մեծ չափեր ընդունել հատկապես XVII դարի վերջերին և ավելի տարածված ձև դարձավ XVIII դարում։ 1770—1780-ական թվականներին Երևանի խաների տված մի շարք հրամանագրերում հատկապես նշվում էր, որ քաղաքի մեծ մզկիթին, ինչպես նաև բարձրաստիճան հոգևորականությանը նվիրված մազրաաներին ամրացված են եղել որոշակի թվով ռանջբարներ, որոնք պարտավոր էին մշակել այդ հողերը հօգուտ մզկիթի կամ հոգևոր ֆեոդալի[23]։

Ռանջբարները մեծ մասամբ հողից և արտադրության միջոցներից զրկված հողագործներ էին, որոնք մշակում էին կալվածատիրական մազրաաները և ստանում էին բերքի որոշ մասը որպես աշխատավարձ։ Դրանք հողագործ բանվորներ էին, որոնց մեջ կային մասնագետ այգեգործներ, վարուցանք, հունձ և այլ կարգի դաշտային աշխատանքներ կատարողներ։

Ռայաթները, թեև իրենց կալվածատերերի ճորտերը չէին և առուծախի չէին ենթարկվում, սակայն նրանք ազատ չէին կարող փոխել իրենց բնակության վայրը։ Շահ Սուլթան Հուսեյնի հիջրեթի 1122 (1710—1711) թ. մի հրովարտակում բավական մանրամասն շարադրված է ռայաթների իրենց հարկային պարտավորություններով տվյալ հարկատու բնակավայրին ամրացված լինելու օրենքը։ Ըստ այդ օրենքի, որը կոչվում էր «Գերագույն խոսք», եթե ռայաթները լքում էին իրենց բնակավայրը և բնակություն էին հաստա-

---

[22] Տե՛ս «Ժամանակագրութիւն Ստեփաննոսի Օրբելեանի», հավելված, էջ 44։

[23] Տե՛ս Մատենադարան, Արարատյան ֆոնդ, ձեռագիր 233, էջ 211—212, 352—353։

*տում մի այլ վայրում, մինչև 12 տարի ենթակա էին վերադարձման, իսկ 12 տարին անցնելուց հետո այլևս ոչ ոք իրավունք չուներ նրանց ետ վերադարձնելու։ Նույն հրովարտակից միաժամանակ պարզվում է, որ եթե տեղափոխված ռայաթները 12 տարվա ընթացքում շարունակում էին իրենց պետական հարկերը վճարել նախկին վայրում, ապա կարող էին մնալ այնտեղ և 12 տարուց հետո վերջնականապես գրանցվել նոր վայրի հարկային մատյաններում[24]։ Այսպիսով, հարկերի հատուցման կարգը չխախտելու դեպքում, ռայաթների տեղափոխությունները մի տեղից մի ուրիշը հնարավոր էր դառնում։*

*Սակայն մուլքային գյուղերում նման տեղափոխությունները հազվադեպ էին։ Կալվածատերերը միշտ էլ կարողանում էին օգտվել վերոհիշյալ օրենքից և ետ վերադարձնել ռայաթներին։ Սրանով հանդերձ պատմական վավերագրերում և այլ սկզբնաղբյուրներում հաճախ է հանդիպում «ցրված ռայաթներ» (ռուայա-յե մութաֆարիկե) արտահայտությունը։ Դա նշանակում է, որ չնայած անվերջ հետապնդումներին, ռայաթները, ինչպես առանձին տնտեսություններով, այնպես էլ ամբողջ համայնքով հեռանում էին իրենց գյուղից և բնակություն հաստատում մի այլ վայրում։*

*Տարբեր էր, սակայն, գյուղացիների սոցիալ-իրավական վիճակը Լոռի-Փամբակում և Արևելյան Հայաստանի այն շրջաններում, որոնք ենթակա էին Արևելյան Վրաստանի վալիությանը։ Այստեղ գյուղացիները ճորտական կախման մեջ էին և հողի հետ միասին վաճառքի էին ենթարկվում։ Կալվածագրերում առաջին հերթին նշվում էր ճորտ «շինականների», այնուհետև միայն՝ նրանց տների, հողերի, ջրերի, արոտավայրերի և մյուս ստացվածքների վաճառքը, 1660—1670-ական թվականներին Սանահնի վանքին կատարված մի նվիրատվության արձանագրության մեջ կարդում ենք. «Կամաւն ամենազաւրին աստուածոյ ես՝ պարոն Ջալբէկի որդի Գասպարս, իմ որդի Գօգիս, Բէրաւս, Բէժիս, Խաւսիս մեր կամաւ և յօժարութեամբ մեր ըղզովս մեր Ռոնակա Ծիլ շինական Շիխու Մխիթարն, Ակոբն, Խէչիկն ծախեցինք վերայ Սարգիս պարոն-տէրին ի դրան մերս լուսոյ սուրբ Աստուածածինս, իրանց տանովն, իրանց տեղովն, իրանց հողովն, իրանց ջրովն. թէ պահէզատեղ, թէ այգու տեղ, թէ հորսագահ, իր արօտգահովն, թէ սար, թէ ձոր ամէն ծախեցինք ի վերա Սարգիս պարոն-տէրին։ Պարոն-տէրն գնեց՝ վախմ արաւ Սանահնա սուրբ Աստուածածնին»[25]։*

*Սոցիալ-իրավական վիճակի որոշակի զանազանությամբ հանդերձ, հայ աշխատավոր գյուղացիությունը Արևելյան Հայաստանում, ինչպես նաև Սեֆյան Իրանի տիրապետության տակ գտնվող Արևելյան Վրաստանի, Ադրբեջանի և բուն Իրանի հայաբնակ շրջաններում ենթակա էր ֆեոդալական դաժան շահագործման ու հարստահարման ոչ միայն կալվածատեր-ֆեոդալների և մանր ու խոշոր հողատիրության, այլև առավելապես շահական արքունիքի, պետական ստորին և վերին պաշտոնեության կողմից, որը բազմաթիվ և բազմազան հարկերով ու տուրքերով նստած էր աշխատավորության ուսերին։*

---

[24] Տե՛ս Հ. Դ. Փափազյան, *Ռայաթների իրավական ազատության հարցը Արևելյան Հայաստանում 16—18-րդ դդ. և շահ Սուլթան-Հուսեյնի հրովարտակը, «Էջեր հայ ժող. պատմության և բանասիրության» (հոդվածների ժողովածու նվիրված ակադ. Ա. Գ. Հովհաննիսյանի ծննդյան 80-ամյակին), Երևան, 1971, էջ, 127—136։*

[25] *Մատենադարան, ձեռագիր № 3031, էջ 208ա—208բ։*

## 5. ՀԱՐԿԱՅԻՆ ՍԻՍՏԵՄԸ ԵՎ ԲՆԱԿՉՈՒԹՅՈՒՆԻՑ ԳԱՆՁՎՈՂ ՀԱՐԿԵՐՆ ՈՒ ՏՈՒՐՔԵՐԸ XVI—XVIII ԴԴ.

Հողի օգտագործման համար գանձվող հարկը կամ որ նույնն է՝ հողային ռենտան, որ գանձվում էր բնամթերքով և կոչվում էր բահրե կամ բահրաչե, Սեֆյան տիրապետության շրջանում բաժանվում էր երկու մասի. ա) պետական կամ բահրաչե-յե դիվանի և բ) կալվածատիրական կամ բահրաչե-յե մալիքանե։ Վերջինս Արևելյան Հայաստանում, հատկապես Արարատյան երկրում կոչվում էր նաև մուլք, որովհետև համարվում էր մուլքային սեփականության եկամուտ։

Այն գյուղերում, որոնք որպես մուլք պատկանում էին առանձին կալվածատերերի՝ բահրաչե-յե մալիքանեն գանձում էին կալվածատերերը կամ մալիքները, իսկ այն գյուղերում, որոնց մուլքը պատկանում էր նույն գյուղի ռայաթներին, գյուղացիները բահրաչե-յե մալիքանե չէին վճարում։ Վանքապատկան այն գյուղերում, որոնք անմիջապես վակֆ լինելով ազատված էին հարկերից և այն մուլքային գյուղերում, որոնց տերերը զանազան ծառայությունների դիմաց մուաֆության իրավունք էին վայելում, գյուղացիները պետական և կալվածատիրական բահրաչեն պարտավոր էին վճարել վանքին կամ կալվածատիրոջը։ Խասս գյուղերում երկու բահրաչեններն էլ գանձվում էին հօգուտ արքունիքի, իսկ դիվանի գյուղերում՝ հօգուտ պետական գանձարանի։ Այնպես որ գյուղացիների վճարած հողային ռենտայի քանակը, անկախ այն բանից, թե այն ինչ համամասնությամբ էր բաժանվում պետության և կալվածատիրոջ միջև, մնում էր անփոփոխ։

Բնակչությունից գանձվող հողային և այլ հարկերի հաշվառումն ու գրանցումը նահանգային և կենտրոնական հարկային մատյաններում կատարվում էր ըստ նախապես գոյություն ունեցող հին դավթարների՝ հաշվի առնելով ժամանակի ընթացքում տվյալ վայրերում կատարված շինարարական և հատկապես ոռոգման աշխատանքներն ու բնակչության աճը։

Սկզբնաղբյուրներից պարզվում է, որ նոր, ամբողջական հարկային օրենսգրքեր կամ «կանուննամեներ» չկային։ Մինչև XVIII դարի սկզբները անհրաժեշտության դեպքում դիմում էին XV դարում Ուզուն-Հասանի ժամանակ կազմված «Կանուննամեին»։

Հարկերի հաշվառման և ընդհանուր աշխարհագրի հետաքրքիր նկարագրություններ են պահպանված XVII դարի պատմիչ Զաքարիա Սարկավագի պատմության մեջ և XVIII դարի սկզբի եկեղեցական ու քաղաքական գործիչ Եսայի կաթողիկոս Հասան Ջալալյանի «Պատմութիւն համառօտ Աղուանից երկրի» արժեքավոր գրքում։ Ռայաթների ֆիզիկական խոշտանգումների, սարսափի ու ահաբեկման միջոցով հարկահանները կամ մումայիզները կարողանում էին հաշվառման ենթարկել բոլոր հարկման ենթակա ստացվածքները, ընտանի կենդանիներն ու չափահաս մարդկանց։

Զաքարիա Սարկավագը պատմում է Երևանի Թահմազկուլի խանի (1625—1635) գլխավոր հարկահան Ասլան աղայի միջոցով Քանաքեռում ռայաթների ու նրանց ինչքի հաշվառման մասին և կենդանի նկարագրությամբ պատկերում XVII դարի ծանր հարկապահանջության մռայլ իրականությունը Արևելյան Հայաստանում։

«Եւ եկն նախ ի Քանաքեռ,—գրում է Զաքարիա Սարկավագը,—յաւուրս

ձմերայնոյ և կոչեալ առաջի իւր զդեղականս՝ ցուցանել զգլուխն իւրեանց։ Եկն նախ Մելիքն Դաւիթ և եբեր Ը(8) որդին իւր և ղորդի դստերն, և եցոյց։ Գային ամենեքեանս որդւովք իւրեանց՝ և մտանէին ի գիրն։ Իսկ հայրն իմ Մկրտիչ շալակեաց զիս զՋաքարիայս և զեղբայրն իմ զԽաչատուր առաջի արկեալ գնաց, և իբրև ետես զմեզ փոքր և կաղ՝ և թիւր ոտամբ, բարկացաւ՝ և ասէ, զառողջ որդիսն քո պահեալ ես, և զանդամալոյծքդ բերեալ ես, և հրամայեաց արկանել յերկիր ի վերայ երեսացն, և բերեալ ջուր թափեցին ի վերայ անձինն, յոտաց մինչև ցգլուխն՝ ջրողող արարին, և նստոյց այր մի ի վերայ գլխոյն և այր մի ի վերայ ոտիցն և հրամայեաց չորից զինուորաց Բ (2) կողմամբ հարկանել և այնքան հարին, մինչ զի մորթն ի մարմնոյ ի բաց ոստեաւ, և ինքն անշնչացաւ, և համարեցին զնա մեռեալ և ապա քարշեալ զնա թաղեցին ի մէջ փայինի։ Եւ այր մի Բարսեղ անուն, և այր մի Ղազար անուն հանին զԻ (20) եղնգունսն, և այլ ումն Մարուգէ անուն երևանցի կախեցին զմիոյ ձեռանէն և այնքան հարին, մինչև յօդուածքն ամենայն խախտեցան։ Եւ այսպէս ահ նորա տիրեաց ի վերայ ամենեցուն՝ մեծաւ սաստիւ։ Վասն որոյ ոչ մնաց ստնդեայ մանուկ զոր ոչ ցուցին։ Եւ եթէ ծերք գային, հրամայէր երթևեկս առնել առաջի իւր և տեսանէր, զի թէ գլուխն ի կոր ունէր և Բ (2) ձեռքն զկնի իւր տանիւր, ոչ գրէր, իսկ թէ գլուխն ուղիղ ունէր և ձեռքն առաջի տանիւր՝ զնա գրէր։ Եւ ոչ ոք իմացաւ զայս։ Իսկ եթէ մանկունք գային, բերէր առասան և շուրջ պատէր զպարանոցաւ պատանոյն և երկոքին ծայրք պարանի դնէր ի բերան մանկանն և ասէր ըմբռնել ատամամբ և օղ արարեալ տանէր ի վերայ գլխոյն, եթէ անցանէր զգլխովն թողոյր զնոսա գնալ և եթէ ոչ անցանէր զգլխովն՝ գրէր զնա։ Եւ այսպէս գրեաց զամէնն յոյժ ճշտիւ՝ զմարդ, զկով, զձի, զջորի, զէշ, զոչխար, զջրաղաց, զձիթաղաց, զարուեստս, զբրնձաղաց, զայգիս և զպարտէզս և այլ որ ինչ գտաւ՝ գրեաց և ի ներքոյ հարկի արար։ Եւ էարկ ի դիւան արքունի զամենայն գրեալսն»[26]։

Շուրջ մեկ հարյուրամյակ հետո, Սեֆյան պետության մայրամուտին, երբ շահ Սուլթան-Հուսեյնը արքունիքի ուռճացած ծախսերը հոգալու համար փորձում էր, աշխատավորության հարստահարումը բազմապատկելով, լցնել արքունի գանձարանը և կրկնապատիկ ու եռապատիկ չափերով ավելացնում էր ռայաթներից, արհեստավորներից, առևտրականներից և առհասարակ ամբողջ բնակչությունից գանձվող հարկերը, նորից ամբողջ երկրով մեկ տեղի էր ունենում հարկատու օբյեկտների ու բնակչության նոր հաշվառում, որի ընթացքում կիրառվում էին նույնքան և ավելի քստմնելի միջոցներ։

«Ի տասներորդ ամի թագաւորութեան իւրում,—գրում է Եսայի Հասան-Ջալալյանը,—Հիւսէին կոչեցեալ Շահ-սուլդանն արար հրաման մարդաթիւ և աշխարհագիր առնել ազգիս Հայոց և ամենայն ազգաց ընդ իշխանութեամբ իւրով եղելոց։ Եւ ելեալ հրամանատարք նորին արք իբրու հաւատարիմք տան նորա գրիչք և քարտուղարք, զի անսխալ և առանց թաքուցանելոյ գրեսցեն զամենայն հասակ ի հնգետասնամենից և ի վեր, սպառնացեալ ի հրովարտակին այսպէս. «Եթէ ոք գտցէ զթագուցեալ և զղօղեալ ոք և յայտնեսցէ զայն արքունի, գլուխ ղօղելոյն՝ արքայի, և ինչք նորա աւար այնմ լիցի, որ գուշակեացն»։ Զոր և արարին իսկ, զի յոյժ յուզմամբ և որոնմամբ զննեալ տեղեկանային պէս-պէս հնարիւք և սպառնալեօք։ Ի գիւղի ուրումն զտանուտէր գիւղին և

[26] Զաքարիա Սարկավագ, հատ. 1, էջ 66—67։

զքահանայսն և զհիւրընկալն, զոր գզիր ասեն, արգելուին ի տունս ուրոյն և զատ ի միմեանց, և ապա ասել տային զանուանս արանց եղելոց ի գիւղին և գրէին և բերեալ ի մի վայր հաւասար տեսանէին, և թէ աւելի կամ պակաս գտանէին ասացեալքն միմեանց (և զի թուղթ ես առնուին և բերանոյ նոցա, այսինքն մուշալկա, զի թէ սուտք գտցեն, այնքան տուգանս վճարեսցեն), կախելով ի փայտէ բրածեծ առնէին զարսն ասացեալ ի սակս տուգանին, ընդ նմին կաշառս յոլովս և տասանորդս և զկարգեալ վարձս զինուորացն առաւել քան զչափն առնուին, և ապա զդրեալն կրկնէին...»[27]։

Այնուհետև նույն հեղինակը պատմում է, թե ինչպես բոլոր հարկերը և հատկապես գլխահարկը եռապատկել են և սկսել անմիջապես բռնի իրացնել. «Եւ ցրուեցան զօրքն ընդ երկիրս և ընդ գիւղօրայս ի թիւ արկեալ զրովն և քանզի յոյժ ծանր էր լուծն և ոչ կարէին տանել, վասն որոյ չարչարէին և կեղեքէին և ջարդելով առնուին ըստ չափու իւրեանց ի յոլովիցն՝ յոլով և ի փոքունցն՝ փոքր, կի մեծ դեղն հարիւր յիսուն, հարիւր, կամ յիսուն թուման և յոյժ փոքրն յերեսուն և կամ ի քսան թումանէ չէր պակաս»[28]։

Երբ վերը նկարագրված ահ ու սարսափի պայմաններում հաշվառման էին ենթարկվում ռայաթների առանձին տնտեսությունները, չափվում մշակելի տարածությունները և ցուցակագրվում բոլոր չափահաս աշխատունակ տղամարդիկ, դրանցից գանձվող բոլոր հարկերը հանրագումարի էին բերվում և ընդհանուր գումարներով արձանագրվում հարկային մատյաններում։ Յուրաքանչյուր գյուղի անվան տակ նախ միանվագ գրվում էր այդ գյուղից գանձվող բոլոր հարկերի ընդհանուր գումարը՝ դրամով հաշված։ Ապա այդ ընդհանուր գումարի տակ նշվում էր, թե դրանից որքանն է կանխիկ դրամով հատուցվելու և որքանը՝ բնամթերքով։ Իսկ ավելի ներքևում առանձին-առանձին ցույց էր տրվում, թե այդ գումարից որքանը որ հարկի հաշվից է հատուցվելու։ Հարկերի այդ ընդհանուր գումարի բաշխումը համայնքի առանձին տնտեսությունների վրա, որ կոչվում էր թովջիհ, կատարվում էր համայնքի ներսում և պետությանը չէր վերաբերում։ Գյուղական համայնքը պատասխանատու էր հարկերի այդ ընդհանուր գումարի հատուցման համար։

Դատելով թիուլնամեներից, համեսալեի և պետական պաշտոնյաների ռոճիկների այլ կարգի հատուցումներին վերաբերող շահական հրովարտակներից և դիվանական այլ վավերագրերից, կարելի է ասել, որ պետական ռենտա-հարկի գանձման հիմնական ձևը ռոճիկի դիմաց, ընդհանուր գումարներով դրանց հանձնումն էր զինվորականությանն ու պետական պաշտոնյաներին։ Հանձնարարական գրություններ (հավալե և բարաթ) ստացող պաշտոնյաները այդ հարկերը ստանում էին և՛ բնամթերքով, և՛ կանխիկ դրամով։ Բերքից ստացվող բահրաշեն գանձվում էր հասթ-օ-բուդի կամ մակթաի ձևով, սակայն ավելի տարածված էր ձեռքից ստանալու (բեդասթ գերեֆթան) ձևը, որ նշանակում էր թիուլնամեի մեջ նշված գումարը ստանալ համայնքից կանխիկ և ռայաթների կալերին չմոտենալ։ Այս դեպքում թիուլային գումարը քառապատկվում էր, որպիսի հաշվարկը իր ժամանակի հաշվապահական տերմինով կոչվում էր բարավորդ։ Ռայաթները շատ հաճախ համաձայնվում էին վճարել նախատեսված գումարի չորս անգամ ավելին, միայն թե թիուլդարի գործակատարները նրանց գյուղը չմտնեին ու բերքը չչափեին։

[27] Եսայի Հասան-Ջալալյան. Պատմութիւն համառօտ Աղուանից երկրի, էջ 13—14։
[28] Նույն տեղում, էջ 15։

Նույն գյուղից ստացվող պետական հարկերը կարող էին գանձվել տարբեր մարդկանց կողմից։ Նույնիսկ նույն հարկի մի մասը կարող էր տրվել մի մարդու, իսկ մյուս մասը՝ մեկ ուրիշի։ Թեև հարկերի հաշվառման ձևը բոլոր վայրերում համարյա թե նույնն էր, սակայն դրանց գանձման ձևերը առանձին գյուղերում տարբերվում էին իրարից։ Անկախ այն բանից, թե պետական ռենտա-հարկը իր որ մասով ում կողմից էր գանձվում, բոլոր դեպքերում այն նախօրոք հաշվվում էր, ըստ առանձին հարկերի ի մի էր բերվում և ընդհանուր գումարներով գրանցվում էր դիվանական մատյաններում։ Բոլոր դեպքերում այդ գումարները գանձվում էին առավելագույն չափերով և մի քանի տարին մեկ անգամ դրանց վրա ավելանում էին դրամի արժույթի անկման ու հարկերի հատուցումը ուշացնելու կամ ժամկետանցության հետևանքով առաջացող հավելումներ և վերադիր տոկոսներ։

Թեև թիուլնամեներում նշվում էին թիուլային գումարների այն առավելագույն չափերը, որոնք թիուլդարները իրավունք չունեին գերազանցելու, սակայն պահպանվել ու մեզ են հասել բազմաթիվ խնդրագրեր և բողոքագրեր, որոնց մեջ ռայաթները բողոքարկում են թիուլդարների ոտնձգությունների դեմ, պահանջելով, որպեսզի վերջիններս դուրս չգան թիուլնամեում նշված սահմաններից։ Մուլքային գյուղերում թերևս այդ բողոքները կարող էին որոշ արդյունք տալ, քանի որ այստեղ կալվածատերը ևս որոշ չափով շահագրգռված էր փրկելու իր ռայաթներին տնտեսական քայքայումից։ Սակայն դիվանի գյուղերում, որոնց թիվը, ինչպես ասվեց, Արևելյան Հայաստանում բավական մեծ էր, և որոնք հաճախ ամբողջությամբ տրվում էին մեկ անձնավորության, ռայաթները ենթարկվում էին ամենաանձարձակ կողոպուտի և հարստահարության։

Բացի պետությանը տրվող բահրաչեից, մալոջհաթից ու ջիզյայից, որոնք մանրամասն հաշվառման ենթարկվելով գանձվում էին բնակչությունից, կային նաև այլ հարկեր ու տուրքեր, որոնք թեև ոչ մի տեղ չէին գրանցվում, սակայն դարերից ի վեր հաստատված լինելով, սկսած դեռևս իլխանական և հատկապես թուրքմենական տիրապետության շրջանից, ամենայն խստությամբ գանձվում էին հօգուտ մեծ ու փոքր ֆեոդալ-իշխանավորների և բարձրաստիճան կամ ստորին պետական պաշտոնեության։

Ահա XVI—XVIII դարերի սկզբնաղբյուրներում հանդիպող հարկային տերմինների ու զանազան առիթներով բնակչության տարբեր խավերից գանձվող հարկերի ու տուրքերի ոչ լրիվ ցանկը։

1. **Մալ** կամ **մալիյյե** էր կոչվում այն հիմնական հարկը, որ գանձվում էր բոլոր տեսակի եկամտաբեր սեփականություններից, սկսած սերմանելի տարածություններից, այգիներից, բանջարանոցներից և այլ հողային ստացվածքներից մինչև ջրաղացները, ձիթհանքերը, ջրանցքներն ու աղբյուրները, քաղաքներում՝ բաղնիքներից ու ներկատներից, խանութներից ու այլ եկամտաբեր վայրերից և հաստատություններից։ Գյուղերում այն գանձվում էր ջճաթ կոչվող հողային հարկի հետ միասին և կոչվում էր **մալոջճաթ**:

2. **Չոբանբեկի-ն** այն հարկն էր, որ կանխիկ գրամով գանձվում էր մանր եղջերավոր անասունների դիմաց։ Որոշ աղբյուրներում այս հարկը անվանվում էր նաև **fողավ**:

3. **Ջիզյա** էր կոչվում այլակրոնության հարկը կամ գլխահարկը, որ գանձվում էր յուրաքանչյուր չափահաս քրիստոնյա տղամարդուց, տարին մեկ

անգամ, երեք նորբեր՝ ստորին, միջին և վերին սակերով, ըստ հարկատու ռայաթի (զիմմի) կարողության։ XV դարից սկսած ջիզյա տերմինին զուգահեռ աղբյուրներում գործ է ածվում նաև **թաֆավութ-ե** ջիզյա (ջիզյայի տարբերություն) տերմինը։ Յուրաքանչյուր հարկատու համայնքի գլխահարկը միշտ հաշվվում էր միատեղ և միանվագ պահանջվում էր տվյալ համայնքից։ Տարիներ հետո, հաշվի առնելով բնակչության աճն ու դրամի կուրսի աստիճանական անկումը, որոշ տոկոսներ էին բարդվում հարկերի մայր գումարների վրա, որոնք կոչվում էին **թաֆավութ** (տարբերություն) և գանձվում էին առանձին։

4. **Բիգար**—ռայաթների պարտադիր, անվճար աշխատանքը ամրությունների, բերդերի, ջրանցքների, ճանապարհների վրա և ռազմական արշավանքների ժամանակ։ Որոշ աղբյուրներում այս պարտավորությունը արաբական տերմինով կոչվում էր **սուխրա**:

5. **Շիգար**—հիշվում է միշտ բիգարի հետ միասին։ Դա ռայաթների պարտադիր աշխատանքն էր հօգուտ արքունիքի, որոշ ուսումնասիրողների կարծիքով նաև ֆեոդալների՝ որսի ժամանակ (շքար—որս)։

6. **Ուլաղ** և **ուլամ**—այս երկու համանիշ տերմիններով էր կոչվում ռայաթների այն պարտավորությունը, որ նրանք կատարում էին իրենց փոխադրական միջոցները տրամադրելով զինվորականության ու պետական պաշտոնեությանը։ Ձիերի, էշերի, ջորիների, ուղտերի և այլ փոխադրամիջոցների հավաքագրումներ կատարվում էին նաև խոշոր զորաշարժերի ժամանակ։ Այս դեպքում գյուղացիներն իրենք ես պարտավոր էին հետիոտն ուղեկցել և տեղափոխել բանակի պաշարն ու հանդերձանքը։

7. **Ավարիզ** հոգնակի՝ **ավարիզաթ** տերմինով էր կոչվում ռայաթների արտակարգ պարտադիր աշխատանքը զանազան պատահարների (հեղեղ, մորեխ և այլն) ժամանակ, որը հաճախ փոխարինվում էր դրամական տուրքով։

8. **Սուրսաթ**-ները ռազմական արշավանքների ժամանակ հարկատու բնակչության վրա դրվող այն պարտավորություններն էին, որոնք հատուցվում էին հատկապես մեծ քանակությամբ հացահատիկով և այլ մթերքներով։ Ռայաթները ոչ միայն պարտավոր էին ամենակարճ ժամկետում տալ պահանջված քանակությամբ մթերքները, այլև սեփական գրաստներով տանել այն և օրդույում (բանակատեղի) հանձնել զորամասի հրամանատարությանը։

9. **Չերիք** էր կոչվում բնակչության և հատկապես քոչվորության զինվորական կամ աշխարհազորային պարտավորությունը։ Աղբյուրներում հանդիպում է նաև **զար-ե չերիք** (չերիքի ոսկի) տերմինը, որից պարզվում է, որ այս պարտավորությունը հողագործ բնակչության համար փոխարինվում էր դրամական տուրքով։

10. **Իխրաջաթ-ե կալ'ե** (ամրոցի հարկ)—տուրքեր, որ ռայաթները պարտավոր էին հատուցել մոտակա ամրոցների ու բերդերի բերդապահ կայազորի կարիքները հոգալու համար (շինարար բանվորներ, մթերքներ, վառելիք և այլն)։

11. **Սավարի**-ն հատուկ տուրք էր, որ գանձվում էր ռայաթներից, երբ տվյալ վայրից անցնում կամ այնտեղ իջևանում էր շահը կամ թագավորական ընտանիքից որևէ մեկը իր շքախմբով։

12. **Նզուլ** անվան տակ հասկացվում էին այն պարտավորությունները,

որոնք, մեծ մասամբ բնամթերքով, հատուցվում էին այն դեպքերում, երբ գյուղում իջևանում էին բարձրաստիճան զինվորականներ ու պետական պաշտոնյաներ կամ օտարերկրյա դեսպանություններ։

13. Կոնալղա—այսպես էր կոչվում թագավորական սուրհանդակներին, նամակատարներին (չափար) և ընդհանրապես պաշտոնական, հաճախ նաև ոչ պաշտոնական գործերով երթևեկող բարձրաստիճան և կրտսեր պաշտոնեությանը հյուրընկալելու պարտավորությունը, որ հայկական աղբյուրներում անվանվում է բռնաճյուր:

14. Ալաֆե և ուլուֆե—գյուղերում իջևանող պետական պաշտոնյաների գրաստներին տրվող կերը։ Այս տուրքը մեծ մասամբ հատուցվում էր մթերքով (խոտ, դարման, գարի և այլն)։ Շատ դեպքերում, սակայն, այն փոխարինվում էր դրամական տուրքով։

15. Խիդմաթանե—Թուրքերեն անվանվում էր նաև դուլուղ և գանձվում էր իբր վարձատրություն այն ծառայության, երբ հարկահանները զանազան առիթներով գալիս էին գյուղ և զբաղվում հարկերի ճշտման և գանձման գործերով։

16. Էնդաս—երբ դարուղաները, թիուլդարները կամ տվյալ վայրի պետական հարկերի կապալառուները զբաղվում էին ռայաթների միջև ծագած վեճերի քննությամբ, դրա համար կողմերից գանձում էին հատուկ տուրք, որը կոչվում էր ռասմ-ե էնդաս (պատահարի տուրք)։ XVI—XVII դարերում գյուղից գանձվող հարկերի ընդհանուր գումարի մեջ նախատեսվում էր նաև որոշ տոկոս (տասը դինարից կես դինար), որ համայնքը պարտավոր էր վճարել թիուլդարին, անկախ այն բանից, թե այդ տարի գյուղում վեճեր քննվել են, թե ոչ։

17. Ռասմ-ալ-սադրուր—սադրի կամ գլխավոր կրոնական դատավորի օգտին գանձվող տուրք։

18. Ռասմ-ալ-վիզարաթ—վեզիրի, Արևելյան Հայաստանում հատկապես Ադրբեյջանի վեզիրի օգտին գանձվող տուրք։

19. Ռուսում-ե դարուղեգի—տուրք, որ գանձվում էր հօգուտ տվյալ մահալի կամ նահիյայի դարուղայի (գլխավոր ոստիկանապետ ու հարկահան)։ Ավելի տարածված էր միայն դարուղեգի տերմինը։

20. Սալամի նաև սալամանե կամ հոգնակի սալամաթ էր կոչվում այն տուրքը, որ պարտադիր նվերների ձևով հատուցվում էր նոր նշանակված խանին, հաքիմին, թիուլդարին և մյուս իշխանավորներին, երբ համայնքի ներկայացուցիչները գնում էին ներկայանալու նրանց և բարի գալուստ մաղթելու։

21. Էյդի—ֆեոդալ-իշխանավորներին կամ տեղական բարձրաստիճան նահանգապետներին ու այլ պետական պաշտոնյաներին մուսուլմանական մեծ տոների ժամանակ (էյդ-ե ֆեթր, էյդ-ե ղադիր, էյդ-ե ղուրբան) նվերների անվան տակ տրվող պարտադիր տուրք։

22. Նովրուզի—պարսկական նոր տարվա առաջին օրը՝ գարնանամուտին, ֆեոդալին կամ պետական պաշտոնյաներին մատուցվող պարտադիր նվեր-տուրք։

23. Փիշքաշ—զանազան առիթներով բնակչության կողմից ֆեոդալին և պետական պաշտոնյաներին մատուցվող նվերներ։

24. Թարհ—այսպես էր կոչվում պետական պաշտոնյաների կողմից բնակչության նկատմամբ կիրառվող այն հարկադրանքը, երբ ռայաթներին ստի-

պում էին որևէ ապրանք չնչին գնով զիջել իրենց կամ, ընդհակառակը, որևէ ապրանք բարձր գնով գնել իրենցից։

25. Դասթանդազ տերմինի տակ հասկացվում էր պետական պաշտոնյաների այլազան ոտնձգությունները ռայաթների ինչքի և ունեցվածքի նկատմամբ։

28. Շանակիսաթ—ապօրինի պահանջմունքներ, շահատակություններ, հարստահարություններ։

27. Շիլթաղաթ—պետական պաշտոնյաների կողմից զանազան զրպարտություններով, կեղծ ու հնարովի պատրվակներով ռայաթներից որևէ բան շորթելը։

28. Իխրաջաթ կամ խարիջիյաթ ընդհանուր անունով էին անվանվում այն բոլոր արտակարգ ծախքերը, որ վերը նշած տարբեր առիթներով պարտադրվում էին առանձին հարկատու համայնքների։

29. Վջուհաթ, թավաջջուհաթ, մութավաջջեհաթ-ե դիվանի անվանվում էին բոլոր տեսակի պետական հարկերը, որոնք մեծ մասամբ գանձվում էին կանխիկ դրամով։

30. Հոկուկ-ե դիվանի կամ թաքալիֆ-ե դիվանի տերմիններով արտահայտվում էր հարկատու բնակչության պետության նկատմամբ ունեցած բոլոր տեսակի հարկային պարտավորությունները։

Սակայն սա դեռ բոլորը չէր։ Աշխատավոր գյուղացիությունը շահագործման էր ենթարկվում նաև իր իսկ համայնքի ներսում բույն դրած գյուղական ավագների, քյադխուդաների, մելիքների ու գյուղացիության դասի այլ ներկայացուցիչների կողմից։ Գյուղական ավագները, տանուտերերն ու քյադխուդաները բացի այն, որ զանազան խարդախությունների ու չարաշահումների միջոցով հափշտակում ու յուրացնում էին համայնքի միջոցները, համայնքի անդամ հողագործ գյուղացիներից գանձում էին նաև հատուկ տուրքեր, որոնք կոչվում էին ռուսում-ե քյադխուդայի (քյադխուդայական տուրքեր)։

Գյուղի և քաղաքի հայ աշխատավորությունը ուներ նաև պարտավորություններ եկեղեցու նկատմամբ, որը նույնքան պարտադիր էր, որքան մյուս հարկերը։ Հայոց եկեղեցու իշխանավորներն իրենց այդ իրավունքները հաստատել և ամրապնդել էին շահական հրովարտակներով ու ռաղամներով, որոնց մեջ խստորեն կարգադրվում էր հայ ռայաթներին՝ հնուց ընդունված բոլոր հոգևոր տուրքերը անթերի վճարել եկեղեցու սպասավորներին[29]։

Եկեղեցական տուրքերը բաժանվում էին երեք խմբի, որոնց մասին բավական մանրամասն հիշված է Հակոբ Շամախեցի (1759—1763) և Սիմեոն Երևանցի (1763—1780) կաթողիկոսների կոնդակներում։

ա) Հայրապետական հասք և տուրք, որոնք տրվում էին կաթողիկոսներին։

բ) Եպիսկոպոսական կամ առաջնորդական հասք և տուրք, որոնք տրվում էին առանձին թեմերի առաջնորդներին կամ այն վանքերին, որոնց վիճակի մեջ էին մտնում տվյալ գաղութի ռայաթները։

գ) Քահանայական հասք և տուրք, որոնք վճարվում էին քահանաներին՝ ծնունդի, մկրտության, ամուսնության, թաղման, տնօրհնեքի, գերեզմանօրհնեքի, մատաղի և այլ ծիսակատարությունների համար։

Ինչպես մեռոնի բաժանման կամ նվիրակության համար կաթողիկոսի անունով գանձվող տուրքը, այնպես նաև պտղին, գանձանակը, հոգեբաժինը,

[29] Մատենադարան, Կաթողիկոսական դիվան, թղթ. 1ա, վավ. 13, 20, 26, 32, 57, թղթ. 2ա, վավ. 11, 13բ. 134, թղթ. 2բ, վավ. 111։

քառասնիկը, կտակը, աթոռամասը, կնքագրամը, կոլոպուտը (եպիսկոպոսների հանդերձի համար տրվող տուրք), տեառնականը, խաչօրհնեքը և այլ եկեղեցական տուրքեր, ամբողջապես գանձվում էին կանխիկ դրամով։ Իսկ եպիսկոպոսական և մանավանդ քահանայական տուրքերը մեծ մասամբ բնամթերքով էին հատուցվում։

Բավական է մի հայացք նետել վերը թվարկված բազմաթիվ հարկերի ու տուրքերի, պետության և նրա պաշտոնյաների նկատմամբ աշխատավորության ունեցած այլ և այլ պարտավորությունների վրա, համոզվելու համար, որ պարտավորությունների այն մասը, որ չէր մտնում նախապես հաշվառման ենթարկված պետական ռենտա-հարկի և գլխահարկի ընդհանուր գումարի մեջ շատ ավելի ծանր էր, և դա էր, որ անողոք կերպով կողոպտում ու հարստահարում էր ժողովրդին՝ մատնելով կատարյալ թշվառության։

Զաքարիա Ագուլեցու օրագրության մեջ հաճախ ենք հանդիպում այսպիսի տողերի. «Թվին ՌՃԺԹ (1670) ապրիլ ԺԲ (12)-ումն Թավրիզու Միրզայ Իբրահիմէն Ալիղուլի բէկ անում դարուղայ եկաւ Ագուլիս Ժ (10) ձիաւորաւ. Ի (20) օր կացաւ Ե (5) թուման ղուլուղ տվին, ապայ գնաց։ Օրն ԵՌ (5000) դիան խարջ ունէր»[30]։ Կամ «Թվին ՌՃԺԹ (1670) յունիսի Ե (5)-ումն այսօր Թավրիզու Միրզայ Իբրահիմէն դարուղայ եկաւ Ագուլիս՝ համ մալիջհաթն տանի, անումն Բահրամ բէկ, Ի (20) ձիաւորաւ եկաւ Թ (9) օրի կացաւ։ Օրն մին թուման խարջ ունէր։ Ապայ ԺԷ (17) թուման ղուլուղ առաւ ապայ գնաց միուս խասէրն»[31]։ Այսպես էր ահա, որ պետական պաշտոնյաներն ու հարկահանները որևէ պատրվակով, 10—20 և ավելի ձիավորներով գալիս էին և օրերով ու շաբաթներով մնալով, զանազան տուրքերի ու պարտավորությունների անվան տակ, գանձումներ էին կատարում և կողոպտում ու հարստահարում ռայաթներին։

Գյուղական համայնքները համաձայնվում էին նախօրոք որոշ գումար տալ թիուլդարին կամ զաբիթին, որպեսզի վերջիններս որևէ հարցով իրենց գյուղը դարուղա չուղարկեն։ «Այսմ ամի խաս գեղորէից մէլիքներն գնացին Երևան, Միրզա Իբրահիմն տեսան, մին քանի թուման փէշքաշ արարին, որ այս տարի դարուղայ չուղարկի։ Ղաբուլ եղաւ»,—գրում է Զաքարիա Ագուլեցին[32]։

Միջին հաշվով միայն դարուղաների երթևեկության համար համայնքի կատարած ծախսերը հավասար էին լինում ամբողջ տարվա համար պետությանը վճարվող հարկերի 1/5-ին։ Սա դեռ միայն դարուղաների համար ծախսվող գումարն էր։ Իսկ ինչքան էր ծախսվում նույն տարվա մեջ տվյալ վայրում իշխանող բարձրաստիճան պաշտոնյաների, Խասսե-յե Շարիֆեի ղուլամների, թագավորական ընտանիքի անդամների և այլ անկոչ հյուրերի վրա։

Պետական ռենտա-հարկի ընդհանուր գումարին մի քանի անգամ գերազանցող այս ահռելի ծախսերն ու սանձարձակ կողոպուտը հարյուրամյակներ շարունակ բզկտում էին ժողովրդական տնտեսությունը, այն մատնելով լճացման և քայքայման, որպիսի պայմաններում բացառվում էր տնտեսական կյանքի վերընթաց զարգացման որևէ հնարավորություն։

---

[30] Զաքարիա Ագուլեցի, էջ 90։

[31] Նույն տեղում, էջ 94։

[32] Նույն տեղում, էջ 126։

ԴԼՈՒԽ ՅՈԹԵՐՈՐԴ

# ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԱՐԵՎՄՏՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ XVI—XVIII ԴԱՐԵՐՈՒՄ

## 1. ԵՐԿՐԻ ՎԱՐՉԱԿԱՆ ԲԱԺԱՆՈՒՄՆ ՈՒ ԱՎԱՏԱՏԻՐԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԸ

*XVI դարի երկրորդ կեսին Օսմանյան Թուրքիան, որի քաղաքական գերիշխանության տակ ընկել էր և Արևմտյան Հայաստանը, հասավ իր քաղաքական ու ռազմական հզորության գագաթնակետին։ Դա ասիական ընդարձակածավալ կայսրություն էր, որի թևերը տարածվում էին դեպի Եվրոպայի ու Աֆրիկայի մայր ցամաքները։*

*Կայսրության գերագույն կառավարիչն ու տերը համարվում էր սուլթանը՝ աստուծո շուքը երկրի վրա («Զիլուլլահ»)։ Նա միահեծան կայսր էր և ինքնակալ տեր, իր հպատակների կյանքի ու գույքի լիիրավ տնօրենը։ Կայսրության երկրորդ դեմքը մեծ վեզիրն էր, փաստորեն նրա ձեռքումն էր գտնվում երկրի կառավարման ղեկը, նա էր բարձրաստիճան պաշտոնյաներ նշանակում, վարում արտաքին գործերը և այլն։*

*Կայսրության ամբողջ տերիտորիան բաժանված էր նահանգների կամ կուսակալությունների (էյալեթ կամ վիլայեթ), որոնք կառավարվում էին սուլթանի կողմից նշանակված բեյլերբեյերի կամ միրիմիրանների կողմից։ Պատերազմի դեպքում վերջինները հանդիսանում էին իրենց նահանգների ռազմական ուժերի գերագույն հրամանատարները։*

*Յուրաքանչյուր նահանգ իր հերթին բաժանվում էր մեծ կամ փոքր շրջանների, որոնք կոչվում էին սանջակներ կամ լիվաներ, սանջակներն էլ բաժանվում էին ավելի փոքր վարչական միավորների՝ կազաների։*

*Օսմանյան պետության վարչա-քաղաքական բաժանումը սերտորեն առնչված էր երկրում տիրող հողատիրության ֆեոդալական սիստեմի ու ավատաբաշխման սկզբունքի հետ։ Դեռևս XVI դարի առաջին կեսում կատարված վարչա-քաղաքական բաժանումը հետագայում ենթարկվել է հարատև փոփոխությունների, որը պայմանավորված է եղել Եվրոպայում և Ասիայում թուրքերի կատարած նոր նվաճումներով և դրանցից բխող տնտեսական ու քաղաքական շահերով։ Այս առումով, դժվար է պնդել, որ անգամ 1639 թ. Կասրե Շիրինի հաշտությունից հետո Արևմտյան Հայաստանում կազմակերպված վարչական միավորները դարձան կայուն ու որոշակի։*

*Համաձայն XVII դարի թուրքական աղբյուրների, մասնավորապես՝ կանուննամեների, կայսրության ասիական մասի հայկական մարզերը բաժանվել*

են հետևյալ վարչական միավորների՝ էյալեթների կամ վիլայեթների. 1) Էրզրումի, 2) Վանի, 3) Կարսի, 4) Չըլդըրի, 5) Ռումի (Սեբաստիայի), 6) Դիարբեքիրի։

Էրզրումի վիլայեթի մեջ մտել են հետևյալ սանջակները՝ Էրզրում, Սպեր, Բասեն, Թորթում, Խնուս, Կարահիսարի-շարկի կամ Շապին-Գարահիսար, Կուզուչան, Մամերվան կամ Նարիման, Կեղի, Մժնկերտ, Մանազկերտ, Բայազետ։

Վանի էյալեթի մեջ մտել են Վան, Ադիլջևազ (Արծկե), Արճեշ, Մուշ, Բերկրի, Կարկա, Կեսանի, Ասիաբերդ, Աղաքիս, Բենիկուտուր, Կալա-Բայազետ, Բերդա, Օվաջիկ սանջակները։

Կարսի էյալեթն ունեցել է հինգ սանջակ՝ Փոքր Արդահան, Խուջուջան, Զարեշատ, Քեհրան, Կաղզվան։

Չըլդըրի էյալեթի մեջ մտել են Չըլդըր, Օլթի (Ուղթի), Խերթուշ (Խերթվիս), Արտուջ (Արտանուջ), Արդահան, Հաջրեք, Փոսխով (Փոցխով), Մախջել (Մաճախալի), Աջարա, Բենեք (Բանակ), Բարդքեք (Բերդագրակ), Լիվանե, Շեվշար (Շավշեթի) սանջակները։

Դիարբեքիրի էյալեթի մեջ մտել են հետևյալ սանջակները՝ Ամիդ (Դիարբեքիր), Խարփուտ (Խարբերդ), Արղնի, Նիսիբին (Մծբին), Հիսընքեֆ, Չմշկածագ, Սղերթ, Մեֆարկին (Նփրկերտ), Ակչակալա, Սենջար, Խաբուր, Սաղման, Կալեր, Մեհրան, Թերջիլ, Օթուք, Ճապաղջուր և Ջերմիկ սանջակները (սրանց մի մասն էր միայն պատմական Հայաստանի տարածքի վրա գտնվում)։

Թուրքիայի վարչական բաժանման Մ. դ'Օսոնի կազմած ցուցակից (XVIII դարի վերջ) երևում է, որ օսմանյան պետությունը, հարկահանական շահերից ելնելով, էյալեթների մեջ մտնող փոքր սանջակները միացնելու և ավելի մեծ վարչական շրջաններ ստեղծելու գիծ է բռնել։ Եթե, օրինակ, XVII դարում Վանի էյալեթի մեջ մտնում էին տասներեք սանջակներ, ապա XVIII դարի վերջին եղել է ընդամենը հինգ սանջակ (Բիթլիս, Ադիլջևազ, Ախլաթ, Մուշ, Արճեշ)։

Բացի վերոհիշյալ էյալեթներից, հայերի հոծ զանգվածներ էին բնակվում նաև Կիլիկիայում և Օսմանյան կայսրության այլ վայրերում։ Թուրքական աղբյուրներում հայաբնակ էյալեթների շարքում հիշատակվում են նաև Մարաշն ու Ադանան։ Մարաշի էյալեթի սանջակներն էին՝ Կարսի Զուլկադրիյեն, Մալաթիան, Այնթափն ու Սիմսաթը, իսկ Ադանայինը՝ Սիսը և Թարսուսը։

Արևմտյան Հայաստանի հողային տարածությունների մեծագույն մասը գտնվում էր թուրք և քուրդ ֆեոդալների ձեռքին։ Դարեր տևած անհավասար մարտերում հայ ֆեոդալական դասակարգը պարտություն էր կրել ու զիջել իր դիրքերը օտար նվաճողներին։ Որոշ վայրերում միայն պահպանվել էին հայկական կիսանկախ իշխանություններ և իրենց ներքին գործերի տնօրինության իրավունքը պահող համայնքներ։ Հողային տիրույթներ ունեին նաև հայկական վանական նշանավոր հաստատությունները։

Իր գոյությունը պահպանած հայկական իշխանություններից ամենաուժեղը լեռնային Սասունն էր։ Որպես վարչական միավոր այն մտնում էր Բիթլիսի կազմի մեջ (այստեղ իշխում էին քրդական Ռուզակ ցեղի առաջնորդները), սակայն պահպանում էր իր կիսանկախ դիրքը։ Կենտրոնական կառավարության բազմիցս փորձերը՝ վերջ տալու լեռնականների կիսանկախու-

թյանը, անցել էր անհաջող։ Ղ. Ինճիճյանը 1806 թ. գրել է, թե Սասունի «բնակիչք, որոնք քուրդք և հայք, որոց երկոքին ևս ղմի և զնոյն ազատութիւն ունին, արք յաղթանդամք և քաջասիրտք, երևելիք ի կորովութիւնս մարմնոյ, ահեղք ի պատերազմի, որոց միայն ստուարաթիւ հերոց՝ մանաւանդ ոմանց ի նոցանէ ահացուցանէ ղտեսօղսն, որք ի սկզբանէ անտի միշտ եղեն ինքնագլուխ, ոչ ումեք ծառայելով. և ոչ ոք ի փաշայից կամ ի պէյից կարող գտաւ ղսոսա նուաճել, սակս զօրութենէ ուժոյ սոցա, և սակս ամուր վայրացն, յորս ապաստանեալ ոչ ումեք թողուն մուտս առնել։ Ունին իւրեանց մասնաւոր պէյ ինքնագլուխ»[1]։

Սասունից բացի հայկական կիսանկախ իշխանություններ կային նաև Սավուրում, Իսյանում, Մոկսում, Շատախում, Ճապաղջրում, Խնուսում և այլուր։ Շատախի կիսանկախության մասին նույն Ղ. Ինճիճյանը գրում է. «Նստի [ի Շատախ] մէլիք յազգէս Հայոց, և ի գործ ածէ զամենայն իշխանութիւն և զդատաւորական պաշտօն, զի ոչ թողուն քուրդ պէյից նստիլ աստէն, որպէս և ի Մոկս»[2]։

Կիլիկյան Հայաստանում ամենաուժեղ հայկական կիսանկախ իշխանությունը Զեյթունն էր՝ Ուլնիան։ Օսմանյան կառավարությունը բազմիցս հանդիպելով հպարտ լեռնականների հզոր դիմադրությանը, ստիպված սուլթան Մուրադ IV-ի ժամանակ 1626—1627 թթ. հատուկ հրովարտակով պաշտոնապես ճանաչեց Զեյթունի ինքնավարությունը։

XVI—XVIII դարերի հայկական, թուրքական ու եվրոպական աղբյուրների վկայություններից երևում է, որ Արևմտյան Հայաստանում գերիշխել է հողատիրության թուրքական ֆեոդալական սիստեմը։ Բոլոր մշակելի հողային տարածությունները բաժանվել են երեք խմբի՝ 1) պետական հողեր, 2) վակֆային հողեր և 3) մասնավոր սեփականատիրական հողեր (մուլք կամ հայրենիք)։

Պետական հողերի (արզ-ի միրիե կամ արզ-ի մեմլեքեթ) մի մասը գտնվում էր սուլթանի, նրա ընտանիքի և պետական պաշտոնեության անմիջական տնօրինության տակ, իսկ մյուս, ավելի մեծ մասը բաժանված էր խոշոր ու մանր ֆեոդալների միջև որպես վարձատրություն պետության նկատմամբ վերջիններիս կատարած ծառայությունների։ Այդ պարգևական հողերը հատուկ հաշվառման հետևանքով գրանցման մատյաններում (դավթարներում) արձանագրված տարեկան եկամտի չափի համաձայն կոչվել են խասսեր (խասսերից ստացված տարեկան եկամուտը կազմում էր 100.000 ակչե)[3] և ավելի, զեամեթներ ու թիմարներ։ Այս հողերից ստացված եկամուտները հատկացվում էին պետական պաշտոնյաներին։ Զեամեթի տարեկան եկամուտը կազմում էր 20.000 ակչե։

Հողատիրության երկրորդ տարածված ձևը վակուֆներն էին, այսինքն՝ այն հսկայական հողային տարածությունները, որոնք տնօրինվում էին մուսուլման ու քրիստոնյա հոգևորականության կողմից։

---

[1] Հ. Ղազարյան, Արևմտահայերի սոցիալ-տնտեսական և քաղաքական կացությունը 1800—1870 թթ., Երևան, 1967, էջ 67։

[2] Նույն տեղում, էջ 69։

[3] Ակչե (akçe) —Թուրքական արծաթ դրամի միավոր։ Ակչե հայերեն նշանակում է սպիտակ։ Առաջին օսմանյան ակչեները կշռում էին քառորդ մսխալ (1,2 գր. արծաթ)։ Հետագայում ակչեի կշիռը գնալով պակասել է, կամ պղնձի տոկոսը դրամի մեջ խիստ ավելացել։

**Մասնավոր սեփականատիրական** հողերը հատկացվում էին պաշտոնյաներին պետության նկատմամբ մատուցած հատուկ ծառայության դիմաց։ Հողատիրության այս ձևը XVI դարում տարածված չէր, սակայն նույն դարի վերջին, առևտրա-վաշխառուական հարաբերությունների աշխուժացման հետևանքով սեփականատիրական հողերը բազմապատկվեցին կայսրության դատնազան մասերում, որոնց թվում նաև Արևմտյան Հայաստանում։

Արևմտյան Հայաստանում մուլքի կամ հայրենիքի իրավունքով հողային տարածություններ ունեին ոչ միայն թուրք և քուրդ ֆեոդալները, այլև հարուստ հայ գյուղացիներն ու մեծատուն առևտրականները։

Փոքր Ասիայի նվաճման սկզբնական ժամանակաշրջանում օսմանյան հասարակությունը, որի հիմնական զանգվածը քոչվորական ու կիսաքոչվորական ցեղերն էին, հազիվ էր մուտք գործել վաղ ֆեոդալիզմի փուլը։ Օսմանյան կայսրության սոցիալ-տնտեսական զարգացումը ընթանում էր երկու ուղիով. մի կողմից օսմանցի թուրքերը նույնությամբ թողնում էին Փոքր Ասիայում և Արևմտյան Հայաստանում մինչև նվաճումը գոյություն ունեցող ու զարգացող ֆեոդալների (նկատի ունենք Հայաստանի նախկին տիրակալներին) հողօգտագործման նախկին հաստատությունները (վակֆ, մուլք և այլն), մյուս կողմից՝ զարկ էին տալիս զեամեթի ու թիմարի թուրքական ֆեոդալական հողատիրության ձևերին։ XVI և հատկապես XVII դարից զեամեթներն ու թիմարները վերածվեցին պարզապես հողային տիրույթների, այլևս պայմանավորված չլինելով պետության նկատմամբ ֆեոդալի ունեցած որևէ պարտավորության հետ։

XVI—XVIII դարերում Օսմանյան կայսրության մեջ առկա հողատիրության երեք հիմնական ձևերն ունեին իրենց բազմաթիվ տարատեսակները։ Դրանց մասին մանրամասն տեղեկություններ է հաղորդում XVII դարի պետական-հասարակական գործիչ Ավնի Օմար էֆենդին՝ սուլթան Մուրադ IV-ին ուղղած իր «Օսմանյան կայսերական դավթարի բովանդակությունը» վերնագրով զեկուցագրի մեջ։

Այս զեկուցագրում հիշատակված հողատիրության տարատեսակներից հայկական աղբյուրներում առավելապես հանդիպում ենք մալիքանե, արփալըկ, բաշմակլըկ, յուրթլուկ, օջակլըկ, հյուքյումեթ և այլ տերմիններին։

Մալիքանեն կայսրության մեջ լայն տարածում ստացավ հատկապես 1695 թ. հունվարի 30-ի սուլթանական հրամանագրից հետո, երբ կապալառության (իլթիզամ) տրված ֆեոդա;ի տարեկան եկամուտը (մուկատա ան) վերածվեց ցմահ հատկացված եկամտի։ Սուլթանական հրամանագիրը հետամուտ էր ապահովել պետական գանձարանի հարկային շահերը, քանի որ մուկատա՛անների դեպքում, հաճախակի փոփոխվող կապալառուները (մուլթեզիմները) բացարձակապես կողոպտում էին գյուղացիությանը։

Մալիքանեի մյուս ձևը սուլթանների կողմից խոշոր ֆեոդալին հատուկ ծառայության համար նվիրաբերված հողն էր։ Սուլթան Մուրադ IV-ին ուղղված վերոհիշյալ զեկուցագրում ասված է. «Նրանց (ֆեոդալների) ձեռքում նախկին սուլթաններից և աշխարհի ապավեն ներկա փադիշահից հրովարտակներ՝ «մուլք-նամե»-ներ կան։ Դրանք (նվիրաբերված հողերը) նման են ժառանգական սեփականության։ Ցանկության դեպքում դրանց տիրապետում են սեփականության իրավունքով և փոխանցում ժառանգաբար։ Ըստ ցանկության

դրանք կարող են վաճառվել, նվիրաբերվել որևէ մեկին կամ վակֆի վերածվել։

Արփալըկը (բառացի՝ գարու համար) պետության նկատմամբ ցուցաբերած ծառայության դիմաց զառամյալ պաշտոնյաներին նվիրված հողն էր։ Արփալըկ է նվիրվել ֆեոդալներին նաև որպես լրացուցիչ տիրույթ[4]։ Առանձին ֆեոդալների որպես արփալըկ, տրվել են ոչ միայն մի շարք գյուղեր, այլև ամբողջ քաղաք՝ իր շրջակայքով։ Էվլիա Չելեբիի վկայությամբ Ամասիան, Շապին-Դարահիսարը XVII դարի 40-ական թվականներին, ինչպես և Վանը XVI դարի կեսերին, տրվել են առանձին ֆեոդալների՝ արփալըկի իրավունքով։

Գոյություն է ունեցել երկու տեսակ արփալըկ։ Մի դեպքում արփալըկը համարվել է խասս հող և ժառանգական բնույթ է ունեցել, մյուս դեպքում արփալըկը տրվել է ֆեոդալին որպես ցմահ կամ ժառանգական տիրույթ։

Բաշմակլըկը (բառացի՝ բաշմակի, կոշիկի համար), ինչպես և արփալըկը, խասս հողերի մի տարատեսակն է, որը տրվում էր պալատում բարձր դիրք ունեցող կանանց։

Յուրթլուկը, օջակլըկը, հյուքումեթը (բառացի՝ հայրենի վայր, օջախ, իշխանություն) ընդարձակ շրջաններ էին, որոնք ժառանգաբար անցնում էին քուրդ ֆեոդալներին։

1515—1516 թթ. Օսմանյան կայսրության հետ Քուրդիստանի միացումից հետո, քուրդ ֆեոդալների դրությունն ամրապնդվեց Արևմտյան Հայաստանի հարավային մասերում։ Գիտակցելով քուրդ ֆեոդալների ռազմական ուժը, Օսմանյան կայսրությունը նրանց նկատմամբ վարում էր մեղմ ու սիրաշահող քաղաքականություն, թողնելով նրանց տիրապետության տակ ամբողջական շրջաններ՝ յուրթլուկի, օջակլըկի ու հյուքումեթի իրավունքներով։

Արևմտյան ու Հարավային Հայաստանում XVI—XVIII դարերում քրդական ցեղերն ընդարձակ շրջաններ էին զբաղեցրել։ Համաձայն «Շերեֆ-նամեի», Վանի վիլայեթում հաստատված էին հետևյալ քրդական ցեղերը. 1) Նեմիրան ցեղը՝ Խիզանի ամիրի գերիշխանության տակ, 2) Մահմուդի ցեղը, որը հիմնականում բնակվում էր Խոշաբում (Վանի, Ոստանի և Սալմաստի միջև), 3) Դումբուլի ցեղը՝ Սոկմանի շրջակայքում, 4) Փազուկի ցեղը՝ Արճեշի և Արծկեի (Ադիլջեվազ) սանջակներում, 5) Ռուզակի կամ Ռոժակի մեծ ցեղը՝ Բաղեշի (Բիթլիսի) շրջակայքում։ «Շերեֆ-նամեում» հիշատակվում են նաև Հաքարի, Բեյիլան, Բիլբասի, Կավալիսի, Քիսանի կամ Կեյսանի, Շիկակի և այլ ցեղերի անուններ, որոնք հաստատվել էին հարավային Հայաստանի տարբեր շրջաններում։

Հարավային Հայաստանում, ուր XVI դարում հիմնականում իշխում էին քուրդ ֆեոդալները, սուլթանական կառավարությունը չէր կարողանում մշակելի հողեր բաշխել իր ֆեոդալներին՝ զեամեթի ու թիմարի իրավունքով։ Այս վայրերում զեամեթներ ու թիմարներ անհամեմատ ավելի քիչ են եղել, քան Բարձր Հայքում կամ Արևմտյան Հայաստանի այլ շրջաններում։ Շատ շրջաններում զեամեթներ ու թիմարներ առհասարակ չեն եղել։

Քրդական այդ ցեղերը գտնվում էին հասարակական զարգացման ցածր մակարդակի վրա։ Տակավին պահպանվում էին ցեղային-նահապետական հարաբերությունները, որոնք մեծ դեր էին կատարում քուրդ ժողովրդի կյան-

---

[4] Տե՛ս „Chèref-nâmeh", հատ. Բ, մասն Ա, էջ 164 և այլն։

*քում։ Ցեղերի մեծ մասը շարունակում էր քոչվորական կամ կիսաքոչվորական կյանք վարել։*

*Հարավային Հայաստանում քուրդ իշխողների մեջ դիրքով ու ազդեցությամբ աչքի էին ընկնում Բաղեշի (Բիթլիսի) խաները՝ Ռուզակի ցեղից, որոնց պետական-պաշտոնական վավերագրերում տրվում էր «վեհաշուք խան», «ինքնակալ իշխան», «աշխարհիկ ու հոգևոր տեր» և այլ տիտղոսներ։ Տիրույթից ստացված գրեթե ամբողջ եկամուտը մտնում էր խանի գանձարանը։ XVII դարի 40-ական թվականներին Բիթլիսի Աբդալ խանը այն աստիճան իրեն անկախ էր զգում օսմանյան պետությունից, որ թույլ չէր տալիս Վանի թուրք փաշային միջամտելու իր ներքին գործերին։ Քուրդ ֆեոդալներից ոմանք մինչև իսկ դրամ էին կտրում իրենց անուններով։ Թե ինչպիսի փոխհարաբերություններ գոյություն ունեին նրանց և սուլթանի միջև, բացահայտում է Շարաֆ խան Բիթլիսին նշելով, որ քուրդ ֆեոդալները բոլոր դեպքերում էլ պահպանում էին իրենց ինքնուրույնությունը՝ պարտավորվելով գերագույն տիրակալին (սուլթանին) վճարել նվերներ (փեշքեշ) և մասնակցել ձեռնարկած ռազմական արշավանքներին[5]։*

*Հարավային և Արևմտյան Հայաստանի տերիտորիայի մի մասը XVI—XVIII դարերում բնակեցված էր քոչվոր ու կիսաքոչվոր ցեղերով[6]։ Նվաճողների վարած հատուկ քաղաքականությամբ նրանց քանակը զգալի չափով ավելացավ։ Թուրք կառավարողները նրանց միջոցով տարանջատում էին ու թուլացնում տեղական նստակյաց բնակչությանը։*

*XVI դարի օսմանյան օրենքներում քոչվորներին իրավունք էր վերապահվում շարժվել իրենց հոտերի հետ ցանկացած ուղղությամբ։ «Արոտատեղիների համար որոշված սահմաններ չկան։ Հնագույն ժամանակներից կարգն այս է՝ հոտը որ կողմն էլ շարժվի, այնտեղ էլ թող արածեցվի։ Հնագույն ժամանակներից անհամատեղելի է արոտավայրերի ծախելն ու բաժանելը։ Եթե մեկը բռնությամբ մշակի, ապա անհրաժեշտ է [հողը] դարձյալ արոտավայրի վերածել… գյուղերի բնակիչները ոչ մի առնչություն չունեն արոտավայրերի հետ և հետևաբար չեն կարող որևէ մեկին արգելել քոչը»։*

*Ենթարկվելով ցեղի առաջնորդին, քոչվորները, սովորաբար, զինվորականներ էին համարվում։ Պատերազմի ժամանակ նրանցից հեծյալների գումարտակներ էին կազմվում, որոնք իրենց ռազմական առաջնորդի գլխավորությամբ պարտավոր էին ծառայել սուլթանին։*

*Ընդարձակ արոտավայրերի առկայությունը Հայաստանում մեծ չափով նպաստում էր քոչվորության արմատավորմանը։*

## 2. ՀՈՂՕԳՏԱԳՈՐԾՄԱՆ ԵՎ ՀՈՂԻ ՎԱՐՁԱԿԱԼՄԱՆ ՁԵՎԵՐՆ ՈՒ ԱՇԽԱՏԱՎՈՐ ԳՅՈՒՂԱՑԻՈՒԹՅԱՆ ՎԻՃԱԿԸ

*Խասերի, զեամեթների ու թիմարների տեր ֆեոդալներն իրենց հողերը բաժանում էին այն գյուղացիներին, որոնք հատուկ վճարով (թափուի իրավունքով) գրանցվում էին դաֆթարներում։ Դա ոչ այլ ինչ էր, քան գյուղացիության հողին ամրացնելու ձևերից մեկը։ Թափուի վճարումից հետո գյուղա-*

[5] „Cheref-nameh", *հատ. Ա, մասն I, էջ 34։*

[6] *Տե՛ս Ahmed Refik*, Anadolu'da Türk aşiretleri, Istanbul, 1932, *էջ* VI—X:

ցիները հնարավորություն էին ստանում մշակելու իրենց հողակտորները։ Թափու ֆեոդալի կողմից գանձվում էր ամեն անգամ, երբ հողակտորը մի հողատիրոջից անցնում էր մեկ ուրիշին։ Ըստ որում, նշանակություն չուներ այն հանգամանքը, թե փոխանցումը կատարվում էր վաճառքի, նվիրատվության թե ժառանգություն ստանալու միջոցով։ Բացառություն թույլատրվում էր միայն այն ժամանակ, երբ հողը փոխանցվում էր անմիջական ժառանգին՝ որդուն, որը տիրում էր հողին առանց թափու վճարելու։ Էրզրումի Կանուննամեում ասված է, որ հայրական հողը՝ հանդիսանում է որդու ժառանգական մուլքը (սեփականություն)[7]։

Թափուն ոչ միայն հողակտորին տիրապետելու իրավունքի համար գանձվող տուրք էր, այլև մի պարտականություն, որի հիման վրա հողագործը որպես ռայաթ (գյուղացի) ամրացվում էր ֆեոդալին պատկանող այս կամ այն որոշակի կալվածքին[8]։

Գյուղացու հողակտորի մշակման իրավունքը ժառանգվում էր հետևյալ եղանակներով՝ հորից որդուն հողը փոխանցվում էր առանց թափուի վճարման. եթե որդին չափահաս չէր, ապա հողակտորը ժամանակավորապես տրըվում էր մեկ ուրիշի։ Եթե վախճանվածը մի քանի որդիներ ուներ, ապա հողը տրվում էր ամուրի (մյուջերեդ) որդուն, սակայն մյուս որդիներն էլ պարտավոր էին հողակտորը համատեղ մշակել և ֆեոդալներին վճարել նախատեսված հարկերն ու տուրքերը։ Եթե մահացած գյուղացին միայն դուստր ուներ, ապա հազվադեպ էր հողակտորը փոխանցվում նրան. սովորաբար այն տրվում էր ուրիշի։ Եթե մահացած գյուղացին ժառանգներ չուներ, ապա նրա հողակտորը, թափուի վճարումը կատարելուց հետո, կարող էր անցնել եղբորը, հորը, մորը կամ մերձավոր որևէ ազգականի։

XVI—XVII դարերի թուրքական պաշտոնական վավերագրերի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ ֆեոդալները հաճախ խախտում էին վերոհիշյալ կարգը և հողը փոխանցում մի հողօգտագործողից մյուսին։

Չնայած այն հանգամանքին, որ հայ գյուղացիությունը Արևմտյան Հայաստանում մշակում էր ֆեոդալ նվաճողներին պատկանող կամ ժամանակավորապես վերջիններիս տնօրինության տակ գտնվող հողերը, այնուամենայնիվ նա ընդգրկված էր գյուղական համայնքի մեջ, որն իրավազոր էր լուծելու հողօգտագործման հետ առնչվող որոշ հարցեր։

Ելնելով պետության շահերից, օսմանցի նվաճողները հաճախ հաշվի էին առնում որևէ շրջանում վաղուց ի վեր գոյություն ունեցող կարգերը, սովորույթները, տնտեսությունը վարելու եղանակն ու մինչև իսկ հարկային սիստեմը։ Մասամբ այդ պատճառով գյուղական համայնքը հայկական շրջաններում պահպանում էր իր կենսունակությունը։

XVI—XVIII դարերում բնակչության ճնշող մեծամասնությունը կազմող հայ գյուղացիությունն Արևմտյան Հայաստանում շարունակում էր դաժանորեն շահագործվել օտար տիրապետողների՝ խասսերի, զեամեթների ու թիմարների տեր ֆեոդալ-նվաճողների, զանազան քուրդ ցեղապետերի ու պետական բարձրաստիճան պաշտոնեության կողմից։ Դրանցից ետ չէին մնում շրջանային վարչությունների ցածրաստիճան պաշտոնյաները, հարկահավաքները,

---

[7] *O. L. Barkan*, XV ve XVI inci asırlarda Osmanlı İmperatorluğunda zirai ekonominin hukuki ve mali esasları, Istanbul, 1945, էջ 66։ Այսուհետև՝ *O. L. Barkan*, Kanunlar.

[8] Տե՛ս *J. Hammer*, *Staatsverwaltung*, հատ. 1, Վիեննա, 1815, էջ 377։

ոստիկանները։ Սկզբնաղբյուրներում հաճախակի հիշատակվում են դեֆթերդար, ալայբեյի, ենիչերի-աղասի, սուբաշի, մուհթեսիբ, էմին, ամիլ, նայիբ, շահնե կոչվող պաշտոնյաները[9]։

Արևմտյան Հայաստանի տարբեր մասերում, ինչպես ասացինք, հողային տիրույթներ ունեին նաև հայկական վանական-եկեղեցական հաստատությունները։ Միայն Վանի շրջանում կային 64 վանքեր, Բաղեշի շրջանում՝ 48 և այլն։ Վանքապատկան կալվածները, չնայած նույնպես ենթարկվում էին չարաշահումների ու կամայականությունների, ինչպես առանձին պետական պաշտոնյաների, այնպես էլ տեղական ֆեոդալների կողմից, սակայն ունեին հարկային որոշ արտոնություններ։ Էրզրումի Կանուննամեի 13-րդ հոդվածից երևում է, որ տեղական իշխանությունները հոգևորականությունից գանձել են հողային տուրքեր, ամուսնության դրամ, ժառանգության բաժին, առաջնորդական հարկ և այլն, իսկ նրանց մշակելի հողային տարածությունների դիմաց՝ բահրա և օրինական կոչված հարկեր։ Կամախի Կանունի 4-րդ հոդվածն ամբողջովին նվիրված է մարհասիհ (առաջնորդական) հարկին։

Կլիմայական բարենպաստ պայմանների շնորհիվ Արևմտյան Հայաստանի շատ նահանգներում հողագործությունից առատ բերք էր ստացվում։ Այդ մասին են վկայում XVI—XVIII դարերի աղբյուրները։ Խոսելով Էրզրումի դաշտի մասին, Էվլիա Չելեբին գրում է, որ այն «...ըստ երկարության ու լայնության երկուական փարսախ տարածությամբ կանաչապատ ու բերքառատ մի դաշտ է և ունի հարյուրավոր բարեշեն գյուղեր» և ապա «ամառ ու ձմեռ բանջարեղենն այստեղ անպակաս է։ Հացահատիկի խոշոր տեսակներն առատ են»։

«Եվ դաշտքն (Էրզրումայ) ունին կթանձրութիւն խոտոյ և շրջաբերութիւն սերմանաւոր խոտոց»,—գրում է Հակոբ Կարնեցին[10]։

Հիացական տողեր է գրանցել Էվլիա Չելեբին նաև Մշո դաշտի մասին. «Մի խիստ ընդարձակ ու բաց դաշտավայր է... խոտը այնքան առատ է, որ եթե որևէ մի բանակ գա այստեղ հաստատվի ու այստեղ եղած անասունները գիշեր-ցերեկ արածեն, դաշտի կանաչությունից ոչինչ չի պակասի»։

Արևմտյան Հայաստանում հացահատիկային կուլտուրաների հիմնական կենտրոնները այդ դարերում եղել են Էրզրումի, Մշո, Սեբաստիայի դաշտերը, Դիարբեքիրի ու Վանի շրջակայքը։ Աղբյուրների վկայությամբ Վանը եղել է մրգաստան։

Ամբողջ Արևմտյան Հայաստանը հայտնի էր նշանավոր ալպյան մարգագետիններով։

---

[9] Դեֆթերդար էին կոչվում ֆինանսական գործերով զբաղվող պետական պաշտոնյաները։ Ալայը (բառացի՝ գունդ) հիմնականում կազմված էր թիմարի տեր ֆեոդալների զինվորական ուժերից։ Խաղաղ ժամանակ ալայբեյին էին ենթարկվում երեք-չորս սուբաշիներ։ Ենիչերի-աղասին տեղական ենիչերական կայազորի պետն էր, միաժամանակ հետևում էր շրջանի կարգ ու կանոնին։ Սուբաշիները կատարում էին ներկա հասկացողությամբ ոստիկանապետի դեր. իրականության մեջ նրանք ամեն տեսակ բռնությունների, կամայականությունների գործադրիչներն էին հանդիսանում. պատահական չէ, որ Դարանաղցին նրանց հեգնում է՝ անվանելով «շումբաշիք»։ Մուհթասիբը (բառացի՝ հաշվառու) այն պաշտոնյան էր, որը հետևում էր արհեստավորների ու վաճառականների ծախած ապրանքների գներին, ապրանքների չափի ու կշռի ճշտությանը։ Էմինը գյուղական վայրերում ֆեոդալների հավատարմատար ներկայացուցիչն էր։ Ամիլը գյուղացիներից ֆեոդալի օգտին բնատուրք ու դրամական ռենտա հավաքողն էր։ Նայիբները (քաղաքային վայրերում անվանվում էին կադիներ կամ ղադիներ) շարիաթական դատավորներն էին, շահնեն՝ քաղաքագլուխը։

[10] «Մանր ժամանակագրություններ», հատ. Բ, էջ 548։

*Սակայն օսմանյան պետության մեջ իշխող ծանր ռեժիմը խոչընդոտում էր գյուղատնտեսության զարգացմանը։ Տեղի ֆեոդալ-կալվածատերերի ու պետական պաշտոնյաների կամայականությունը չափ ու սահման չուներ։ Եվ, բնականաբար, գյուղացին չէր բավարարվում իր քրտինքով աճեցրած առատ բերքից։*

*Գյուղացիների շահագործումը սաստկացնելու, ինչպես և պետության հսկայական ռազմական ծախսերն ապահովելու համար, նրանք ամեն կերպ ձգտել են օրինականացնել գյուղացիների ամրակցումը հողին։ Այդ մասին են վկայում XVI դարի թուրքական կանուննամեները։ Համաձայն այս օրենսդրական վավերագրերի, դավթարներում գրանցված գյուղացին իրավունք չուներ ինքնակամ թողնել իր ապրած վայրն ու գնալ մի ուրիշ տեղ։ Իր հողակտորը թողնելու և հեռանալու դեպքում ֆեոդալին հատուկ իրավունք էր վերապահվում փնտրել նրան և, եթե փախուստից չէր անցել տասը տարի, ետ բերել իր նախկին բնակավայրն ու տուգանել պատճառած «վնասների» համար։*

*«Եվ եթե ռայաթը,—գրված է Էրզրումի Կանուննամեում,—իր տրամադրության տակ հող ունենալով հանդերձ փախչի, ապա սիփահին (ֆեոդալը) օրենքով իրավունք ունի նրան ետ դարձնել իր նախկին վայրը։ Սակայն մի տեղում տասը տարուց ավել ապրողներին ետ բերելը արգելված է»[11]։*

*Ֆեոդալին իրավունք էր վերապահվում իր հողի վրա գրանցված գյուղացույց պահանջել բազմաթիվ պարհակներ, նույնիսկ այն դեպքում, երբ վերջինս ցանքը կատարել էր ոչ թե իր, այլ մի ուրիշ կալվածատիրոջ հողում։*

*Ֆեոդալների կամայականություններից ու թուրք-պարսկական անվերջ պատերազմներից քայքայված գյուղացիները դրությունից փրկվելու ելքը գտնում էին փախուստի և ուրիշ վայրերում վերաբնակվելու մեջ։ Ֆեոդալները, սակայն, փնտրում էին փախած գյուղացիներին ու ետ բերում նախկին բնակավայրերը։ XVI դարի օսմանյան բոլոր կանուննամեներում կարելի է հանդիպել հատուկ հոդվածների, որոնք պարտադրում են տեղական պաշտոնյաներին, որպեսզի վերջիններս վերադարձնեն փախած գյուղացիներին ու չբնակեցնեն երկիրը։*

*Քրիստոնյա գյուղացիությունը ենթարկվում էր կրոնական ու ազգային խտրանքի, բռնության, կամայականության։ Սակայն, ինչպես շատ պատկերավոր գրել է XVII դարի ֆրանսիացի հեղինակ Միշել Ֆեբուրը «նրանք (թուրքական ֆեոդալները) հանդուրժում են քրիստոնյաներին ու հրեաներին այն պատճառով, որ նրանցից ավելի մեծ շահ ունեն, քան իրենց հավատակիցներից ու թույլ են տալիս նրանց ապրել ճիշտ այնպես, ինչպես դա արվում է ոչխարների ու մեղուների հետ՝ նրանց կաթի ու մեղրի համար»[12]։*

*XVI դարի վերջին թուրք ֆեոդալները, կորցնելով եկամտի այնպիսի կարևոր մի աղբյուր, ինչպիսին էր ռազմական ավարը, ավելի սաստկացրին գյուղացիների շահագործումը։ Շահագործման սաստկացումը արտահայտվում էր ֆեոդալական ռենտա-հարկի չափի բարձրացումով, բնակչության ձեռքից նրանց ստեղծած նյութական բարիքների ուղղակի հափշտակությամբ, գյուղացիների հողերի բռնագրավումով, վաշխառուների հարստահարիչ գործունեությամբ և այլն։ Հարկային նոր քաղաքականությանը զուգահեռ, պետու-*

---

11 *O. L Barkan*, Kanunlar, էջ 64։

12 *Michel Febure*, Estat présent de la Turquie, Paris, 1675, էջ 217։

թյունը սկսեց իջեցնել ոսկու և արծաթի տոկոսը պետական դրամի մեջ։ Թուրքական դրամի ակչե կոչվող միավորի պարունակած արծաթի տոկոսը մեկ հարյուրամյակի ընթացքում կրճատվեց 3—4 անգամ։ Շրջանառության մեջ մտան այսպես կոչված կեղծ ակչեներ։ Այդպիսի պայմաններում սուլթանական կառավարությունը, ելնելով հարկային շահերից, գյուղերում եղած իր բոլոր հարկահան ներկայացուցիչներին հրահանգում էր հարկերը գանձել միայն մաքուր արծաթով կամ ոսկով։ Այդ համազոր էր գյուղացիության բացարձակ կողոպուտի։

Ինչպես գյուղատնտեսական մթերքների, այնպես էլ արհեստագործական ապրանքների գները սկսում են բարձրանալ։ 1585—1595 թվականների ընթացքում գները բարձրացան մոտ տասը անգամ։ Վաշխառությունը լայն ծավալ ընդունեց XVI դարի վերջերից սկսած։ Վաշխառուները խեղդում էին ժողովրդին պարտքերի տակ։ Նրանց ամենամեծ զոհերը մարաբա կոչվող գյուղացիներն էին։ Այդպես էին կոչվում այն գյուղացիները, որոնք վաշխառուից վերցրած պարտքի դիմաց գրավ էին դնում իրենց հողը, անասունները, այգին ու պարտեզը, պարտավորվելով տարեկան աճեցրած բերքի կեսը հանձնել պարտատիրոջը։ Նման պայմաններում գյուղացին երբեք չէր ազատվում իր պարտքերից։ Եթե նա հրաժարվեր կիսարարության սկզբունքից, ապա գրավ դրված ամբողջ ունեցվածքն անցնում էր վաշխառուի ձեռքը։

Մարաբայությունը տարածված էր Հարավային և Հարավ-արևմտյան Հայաստանում։ Անելանելի վիճակից փրկվելու հույսով շատ գյուղացիներ լքում էին իրենց հողակտորը, մեկնում խոշոր քաղաքներ և օրավարձով աշխատում կառավարական հիմնարկներում ու շինարարության վրա։ Կառավարությունը պարբերաբար հրամաններ էր արձակում ու խստիվ կարգադրում փախած գյուղացիներին՝ վերադառնալ իրենց հայրենի օջախն ու զբաղվել հողագործությամբ։ Սակայն փախուստը գյուղից շարունակվում էր։ 1781 թվականին սուլթանական հրովարտակում ասված էր. «խեղճ հպատակները փախչում են, որը և հանդիսանում է իմ վեհապանծ կայսրության անկման պատճառներից մեկը»։

Եթե սկզբնական շրջանում թուրք ֆեոդալներն իրենց տրամադրված հողերին նայում էին զուտ հարկահանության տեսակետից, հողագործությունից ստացված եկամուտը նրանց համար ուներ միայն երկրորդական նշանակություն (գլխավորը ռազմական ավարն էր), ապա XVI դարի վերջում պատկերը փոխվեց։ Հողագործությունից ստացված եկամուտը ֆեոդալի համար դարձավ գլխավորն ու միակը։ Խոշոր ֆեոդալներն սկսեցին ամեն կերպ ընդարձակել իրենց կալվածներն ու ավելացնել դրանցից ստացված եկամուտները։ XVI դարի վերջին վերացվեց մի քանի ավատներ մի մարդու ձեռքը կենտրոնացնելու արգելքը։ XVII դարում, հատկապես նրա երկրորդ կեսում, կալվածների խոշորացումը ավելի ուժեղացավ։ Խոշոր կալվածատեր-ֆեոդալները սկսեցին կամայականորեն ավելացնել հարկերն ու տուրքերը։

Այսպիսով, նախկին սիփահուն, փաստորեն, սկսեց փոխարինել կալվածատեր-ֆեոդալը, որի հիմնական նպատակն էր գյուղացու առավելագույն շահագործումը։

Թե որքան ծանր ու անտանելի էր դարձել հպատակ գյուղացիության վիճակը կայսրության մեջ XVII դարի 40-ական թվականներին, ուրշակի գաղա-

փար է տալիս Կոչիբեյը՝ սուլթան Մուրադ IV-ին ուղղած իր հայտնի ուղերձում.

«...Կարճ ասած, այսպիսի կեղեքումներ և հարստահարություններ դեռ չէին կատարվել ոչ մի երկրում, ոչ մի պետության մեջ։ Եվ, սակայն, եթե մահմեդական երկրի բնակչությունից մեկն ու մեկը ենթարկվում է նույնիսկ ամենաթեթև հարստահարության, ահեղ դատաստանում դրա պատասխանատվությունը կընկնի տիրակալի և ոչ թե նրա պաշտոնյաների վրա, և տիրակալը չի կարող արդարանալ տիեզերքի տիրոջ առջև, ասելով՝ ես իմ հպատակներին հանձնել էի այս մարդկանց։ Սովից մեռնողների հեկեկանքներից փըլվում են տների պատերը, իսկ կեղեքվողների արտասուքները՝ խեղդում են կայսրությունը կորստյան ալիքների մեջ։ Անհավատությունից աշխարհը չի կործանվի, այլ կանգուն կմնա իր տեղում, իսկ հալածանքներով [կանգուն] չի մնա»[13]։

XVI—XVIII դարերի հայերեն ձեռագրերի հիշատակարանները լի են տրտունջներով ու հայ ժողովրդի ծանր վիճակի նկարագրությամբ։ Այդ հիշատակարաններում հաճախակի կարելի է հանդիպել այսպիսի տողերի. «ի դառն և ի վշտաբեր ժամանակիս, յորում կամք ի նեղութիւնս ի տառապանս ի այլասեռից ազգաց, զի զամենեսեան չարչարեն և նեղեն, տուժեն և տուգանեն, կեղեն և կեղեքեն, և այլ ազգի-ազգի վշտաւք տանջեն»[14]։

1642 թվականին շարադրած իր մի հիշատակարանում կարահիսարցի գրիչ Մանուելը գրում է, որ ձեռագրի ընդօրինակման աշխատանքները կատարել է «ի նեղ և ի դառն ժամանակիս, որ վասն ծովացեալ մեղաց մերոց ընդ բռամբ ածեալ աշխարհս ընդ չարաշուք և ընդ մարդախողող և ընդ գազանադէմ ազգին նետողաց (թուրքերի), զոր ազգի-ազգի նեղութեամբ և չարչարանօք և հարկապահանջութեամբ կեղեքեն և աւերեն զաշխարհս, և ոչ ուստեք հասանի օգնութիւն, ոչ յերկնէ և ոչ յերկրէ, ոչ այլ ուստեք»[15]։

## 3. ՀԱՐԿԵՐՆ ՈՒ ՀԱՐԿԱՅԻՆ ՍԻՍՏԵՄԸ ԱՐԵՎՄՏՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Օսմանյան կայսրության մեջ բոլոր հարկերը բաժանվում էին երկու հիմնական խմբերի.

1. Հարկեր, որոնք հիմնվում էին շարիաթի վրա և 2. Հարկեր, որոնք հիմնվում էին սովորույթի վրա։

Առաջին խմբի մեջ մտնում էին հետևյալ հարկերը՝ աշար կամ ուշր (տասանորդ), խարաջ և ջիզիե։ Այս շարիաթական հարկերի հիման վրա տարբեր ժամանակաշրջաններում ու տարբեր տեղերում նշանակել ու գանձել են բազմաթիվ ու բազմապիսի հարկեր (համաձայն թուրք ուսումնասիրողների տվյալների՝ ավելի քան ութսուն)։

Հայկական նահանգներին վերաբերող կանուննամեների համաձայն այստեղ գոյություն ունեին ֆեոդալական ռենտայի բոլոր երեք ձևերը՝ աշխատա-

---

13 Ц. Д. Смирнов, Кочибей Гемюрджинский и другие османские писатели XVII в. о причинах упадка Турции, СПб., 1878, էջ 249։

14 Մատենադարան, ձեռագիր № 4796, էջ 433բ։

15 «Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց մատենադարանին Մխիթարեանց ի Վիեննա», հատ. Ա, Վիեննա, 1914, էջ 321։

վճար, բնավճար, դրամավճար։ Բայց բոլորից շատ տարածված էր բնավճարը, որի մեջ հիմնականում մտնում էին ուշրը կամ աշարը, խարաջը, բահրան և սալարիեն։

Ուշրը կամ աշարը թուրքերի մոտ նշանակում էր պետության կամ ֆեոդալ-կալվածատերերի օգտին մուսուլման ռայաթից վերցված բնատուրքը, բերքի $^1/_{10}$ չափով (երբեմն՝ ավելի)։ Արևմտյան Հայաստանին վերաբերող օսմանյան կանուննամեներից պարզ երևում է, որ ուշրը գանձել են ոչ միայն մուսուլման ռայաթներից, այլև ոչ-մուսուլմաններից, տվյալ դեպքում՝ հայերից[16]։

Խարաջը ոչ-մուսուլման բնակչությունից գանձվող հիմնական հարկն էր։ Տվյալ ժամանակաշրջանի օսմանյան վավերագրերում խարաջ տերմինի տակ հասկացվում էր ջիզյան (գլխահարկը)։

Բահրա բառացի նշանակում է մաս, բաժին։ Այսպես էր կոչվում հողային ռենտան, որը վճարում էր գյուղացին կալվածատեր-ֆեոդալին կամ պետությանը՝ տարեկան բերքի $^1/_5$—$^1/_3$-ի չափով։

Սալարիե-սալարլըկ՝ պարսկերեն սալար բառից է, որը նշանակում է առաջնորդ, հրամանատար, պետ։ Այսպես էր կոչվում այն հարկը, որը գանձվում էր գյուղացիությունից պետական պաշտոնյաների օգտին։

Հատկապես ծանր հարկ էր Արևմտյան Հայաստանի բնակչության համար ջիզյան (գլխահարկը)։ Ջիզյա էին պահանջում ոչ միայն տեղի բնակիչներից, այլև տվյալ վայրից հեռացածներից և, նույնիսկ, մեռածների հաշվով, եթե նրանց անունները դեռևս չէին հանվել հարկացուցակներից։

Ջևականորեն օրենքը պահանջում էր հաշվի առնել հարկատուի նյութական վիճակը։ Հարկատուները բաժանվում էին հարուստների (ա՛լա), միջակների (էվսատ) և աղքատների (էդնա), սակայն կյանքում այդ սկզբունքը գրեթե չէր կիրառվում։

Մինչև XVI դարի վերջը ջիզյայի չափը եղել է 25-ից մինչև 70 ակչե։ XVII դարի սկզբին այն հասել է 250—300 ակչեի, դառնալով բյուջեում առաջացող ճեղքվածների փակման կարևորագույն միջոցներից մեկը։

«Եթե պետությունը դրամի կարիք ունենար,—գրում է XVII դարի Օսմանյան կայսրության ներքին վիճակին քաջատեղյակ մի ֆրանսիացի ուսումնասիրող,—ապա հարկի այս տեսակը (ջիզյան) կրկնապատկվում էր»[17]։

XVI—XVIII դարերում ոչ-մուսուլմանների համար գլխահարկ էր նաև իսփենջը, որը գանձվում էր բոլոր գյուղացիներից, անկախ այն բանից՝ նրանք հող մշակո՞ւմ են, թե՞ ոչ։ «Գյուրջիստանի վիլայեթի ընդարձակ դավթարում» մատնանշված բոլոր տեսակի հարկերի մեջ իսփենջը առաջնակարգ տեղ է գրավում։

XVI դարի երկրորդ կեսից սկսած, հատկապես դարի վերջերից, խիստ ավելանում են թեքյալիֆ-ի դիվանիյե (պետական պարտավորություններ) կամ, ավելի հաճախ, թեքյալիֆ-ի շակկա (արտակարգ հարկեր) կոչվող տուրքերը։

Պատերազմների ժամանակ Թուրքական ղեկավարող շրջանները հպատակներից գանձում էին ևս մի հարկ՝ իմդադ-ի սեֆերիե (օգնության ար-

---

[16] Տե՛ս O. L. Barkan, Kanunlar, էջ 66։

[17] Ebasci Elias, Etat actuel de l'empire ottoman, հատ. Ա, Փարիզ, 1792, էջ 232 և հաջ.։

շավանքի կարիքների համար) անունով։ Կային նաև իմդադ-ի ջիհադիե (օգնություն սրբազան պատերազմի համար), բեդել-ի նուզուլ (իջևանելու փոխարեն) և այլ անուններով հարկեր, որոնց չափերը սահմանված չլինելով՝ կախված էին ֆեոդալների ու պետական պաշտոնյաների կամայականություններից։

Արևմտյան Հայաստանում տարածված երևույթ էր պարհակային աշխատանքը ֆեոդալի օգտին։ Ռեսմ-ի ըրգադիե էր կոչվում գյուղացու պարհակային աշխատանքը տարվա մեջ մի քանի օրվա սահմաններում։

Ռեսմ-ի ըրգադիեն Էրզրումի քաղաքի Կանուննամեի մեջ անվանվում է ռեսմ-ի մուշակ (գյուղացու, մշակի հարկ)։ Ռեսմ-ի մուշակը տարեկան վեցօրյա ձրի աշխատանք էր ֆեոդալի օգտին կամ դրա փոխհատուցումը դրամով՝ տարեկան 24 ակչեի սահմաններում։ «Նրանց (հայերի) ըրգադիեի հարկը մեկ շնչին տասներկու մուշակ էր, որ մեկ օրը վեց օսմանյան ակչեի հաշվով՝ քառասունչորս ակչեի է հավասար։ Վերցնում են երկու մասով՝ գարնան սկզբին և հունձքի ժամանակ»[18]։

Պատերազմի ժամանակ բնակչությանը ստիպում էին աշխատել բերդերի, ճանապարհների, շինարարության կամ վերանորոգման վրա։ Այդ մասին են վկայում XVI—XVIII դարերի հայերեն ձեռագրերի բազմաթիվ հիշատակարաններ[19]։ Այսպես, 1556 թ. ոմն Հուսեյն փաշայի հրամանով Վանի և Արճեշի բնակչության անվարձահատույց աշխատանքով մեկուկես տարվա ընթացքում կառուցվեցին ռազմական ամրություններ։

Այս բոլոր արտակարգ կոչված հարկերն ու պարհակային աշխատանքները գյուղացիությանը հասցնում էին ծայրաստիճան աղքատության։ «Պետության նահանգներում,—գրում է թուրք պատմագիր Մ. Սելանիկին,—արտակարգ հարկերը հպատակ ժողովրդին հասցրին այն բանին, որ նրա համար զզվելի դարձավ այս աշխարհը և այն ամենը, ինչ գտնվում է այստեղ»։

Դրամով գանձվող հարկեր էին՝ ռեսմ-ի բաղ (հարկ այգու համար), ռեսմ-ի բոստան (հարկ բանջարանոցի համար), ռեսմ-ի կովան կամ ռեսմ-ի կուվվերե (հարկ մեղվաբուծության համար), ռեսմ-ի ադնամ (հարկ ոչխարաբուծության համար), ռեսմ-ի արուս (հարկ ամուսնության համար) հարկերը։

Բացի այս բոլորից, գյուղացիները պարտավոր էին կատարել «նվիրատվություններ» իրենց ֆեոդալին զանազան մուսուլմանական տոների առթիվ և այլն։

Հայաստանի հարավ և հարավ-արևմտյան մասերում հարկերը գանձվել են, ինչպես այդ մատնանշված է Բիթլիսի վիլայեթի Կանուննամեում՝ «քրդերի սովորության համաձայն»։ Գյուղացիությունից գանձված ապօրինի հարկերի քանակը այնքան շատ էր, որ դրանք «բռնությունների շարան» են կոչվում[20]։

Քաղաքային ազգաբնակչությունից գանձվող հարկերի մեջ էական տեղ էին գրավում առևտրից գանձվող հարկերը։ Կանուննամեների ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ պետությունը հարկեր էր գանձում փաստորեն բոլոր ապրանքներից՝ ինչպես տեղում գնված ու վաճառվածներից, այնպես էլ տարանցիկ առևտրից։ Հարկերը կոչվում էին բաջ (մաքս), բաջ-ի բազար (շուկայական հարկ), թամղա-ի սիյահ (սև կնիք), բաջ-ի բու-

---

[18] Տե՛ս «Օսմանյան օրենքները Արևմտյան Հայաստանում», էջ 87։

[19] Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 6278, էջ 449—450, 466, 472—473 և այլն։

[20] Տե՛ս «Օսմանյան օրենքները Արևմտյան Հայաստանում», էջ 86—87։

գուրզ (մեծ բաշ՝ տարանցիկ առևտրից գանձվող հարկ), ռեսմի-ի ինտիսաբ (հաշվառումի օգտին գանձվող հարկ) և այլն։

## 4. ՔԱՂԱՔՆԵՐՆ ՈՒ ՔԱՂԱՔԱՅԻՆ ԿՅԱՆՔԸ ԵՎ ՀԱՅ ՎԱՃԱՌԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԴԵՐԸ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵՋ

*Հայաստանի քաղաքները և արհեստագործությունը մեծ հարված ստացան XVI դարում և XVII դարի առաջին երեսնամյակում մղված թուրք-պարսկական պատերազմներից։*

*Նախորդ շրջանում արհեստագործության և առևտրի նշանավոր կենտրոններ հանդիսացող քաղաքների մեծ մասը (Խլաթ, Մուշ, Արճեշ և այլն) զրկվել էին միջազգային իրենց կապերից, հետադիմել և գրեթե չէին տարբերվում գյուղերից[21]։*

*Պատմական Հայաստանի այս մասերում աչքի էին ընկնում միայն Բիթլիսը (Բաղեշ) և Վանը։ Առևտրա-արհեստագործական խոշոր կենտրոններ էին նաև էրզրումն ու Երզնկան։*

*Շարաֆ խանի վկայությամբ, Բիթլիսում եղել են մոտ 800 խանութներ ու արհեստանոցներ, իսկ է. Չելեբու վկայությամբ այդ քաղաքն ունեցել է 40 հազար բնակիչ, 1200 խանութ և քարաշեն մի մեծ, ծածկված շուկա։*

*XVII—XVIII դարերում Թուրքիայում արհեստագործական արտադրության ամենախոշոր կենտրոնը Կոստանդնուպոլիսն էր. այստեղ հաստատված արհեստավորության մեծագույն մասը կազմում էին հայերն ու հույները։ Կենցաղային իրերի, ինչպես և աշխատանքի գործիքների արտադրության պահանջները բավարարվում էին տեղական արհեստագործական արտադրությամբ։ Գրեթե նման պատկեր էր տիրում նաև Արևմտյան Հայաստանի խոշոր քաղաքներում՝ Վանում, Երզնկայում, էրզրումում և Դիարբեքիրում։*

*XVI—XVII դարերում Արևմտյան Հայաստանի խոշոր քաղաքները վերածվել էին ռազմական ամրոցների ու քաղաքացիական վարչության կենտրոնների։ Արհեստագործական արտադրությունը, որը կարգավորվում ու տնօրինվում էր պետության կողմից, պետք է նախ և առաջ բավարարեր բանակի, պալատի ու ֆեոդալների պահանջները։ Արևմտյան Հայաստանում նշված դարերում առավելապես զարգացած էին արհեստագործության հետևյալ ճյուղերը՝ մետաղամշակման հետ կապված արհեստները, գործվածքների արտադրությունը, գորգագործությունը, կաշվի արդյունագործությունը, բրուտագործությունը և քարակոփությունը։*

*Արտադրողական ուժերի զարգացում է նկատվում Արևմտյան Հայաստանի այն քաղաքներում, որոնք գտնվում էին ավերիչ պատերազմների ոլորտից դուրս, տարանցիկ առևտրի մայրուղիների վրա. դրանցից էին՝ էրզրումը, Երզնկան, Թոխաթը։ էրզրումի մասին Տավերնիեն գրում է. «Այստեղ կան շատ քարավանատներ։ Այս քաղաքը, ինչպես և Թոխաթը հանդիսանում է Թուրքիայի տարանցիկ մեծ առևտրի կայաններից մեկը»։ Ուշագրավ են Թոխաթի մասին նրա գրանցած տողերը. «Հատկապես նկատելին Թոխաթում այն է, որ այս քաղաքը հանդիսանում է դեպի Արևելք տանող խոշոր տարանցիկ կայաններից մեկը։ Այնտեղ անվերջ գալիս են կարավաններ Պարսկաստանից, Դիար-*

---

[21] Տե՛ս „Chèref- nâmeh", հատ. Բ, մասն Ա, էջ 220—221, 222—223 և հտն.։

րեքիրից, Բաղդադից, Կոստանդնուպոլսից, Զմյուռնիայից, Սինոպից և այլ վայրերից»[22]։

Հայազգի արհեստավորները զգալի դեր են կատարել Փոքր Ասիայի արհեստների զարգացման գործում։ Դեռևս սելջուկների ժամանակ հայերի ձեռքին էր գտնվում մետաղամշակությունը և առհասարակ տեղական արդյունաբերության մեջ մեծ էր նրանց տեսակարար կշիռը։ Հենց այս պատճառով էլ, սկսած սուլթան Մուհամադ II-ի ժամանակներից, թուրք ղեկավարող շրջանները Արևմտյան Հայաստանի զանազան մասերից պարբերաբար հայ արհեստավորներին դեպի Կ. Պոլիս էին քշում[23]։ Աղբյուրներում հիշատակվում են Ստամբուլի այն թաղամասերը, ուր բնակվել են Արևմտյան Հայաստանից ու Փոքր Ասիայից բերված արհեստավորները։

Թուրքիայում XVII—XVIII դարերում ֆեոդալական հարաբերությունների գերիշխանությունն իր կոնկրետ արտահայտությունը գտավ համքարական կազմակերպության ու արհեստագործական արտադրանքի պետական տնօրինման մեջ, մի հանգամանք, որը սահմանափակում էր արտադրողական ուժերի զարգացման հնարավորությունը։ XVII—XVIII դարերում հայ արհեստավորները չեն ընդգրկվել Թուրքիայում գոյություն ունեցող համքարությունների (ֆութուվվաթ) մեջ, ուր իշխում էր մուսուլմանական ֆանատիզմը։ Ըստ երևույթին, հայերը միավորվում էին ուրույն համքարական կազմակերպություններում։ Աղբյուրների կցկտուր տեղեկություններից կարելի է ենթադրել, որ Արևմտյան Հայաստանում արհեստավորների ու նրանց համքարական կազմակերպությունների ներքին կյանքը կարգավորում էին ոչ միայն իրենց՝ համքարական կազմակերպություններն ու տեղական իշխանությունները, այլև հայոց պատրիարքությունը, որի կարգադրությունները պարտադիր էին բոլոր արհեստավորների համար։

Արևմտյան Հայաստանի ընդերքը հարուստ էր օգտակար հանածոներով։ Հատկապես մեծ նշանակություն ունեին Գյումուշխանեի արծաթի հանքերը, որոնց մասին է. Չելեբին գրում է. «Այստեղ գտնված արծաթի հանքերը ոչ մի երկրում չկան... Բնակիչները ամբողջությամբ ազատված են հարկերից և պարտավոր են արծաթի հանքերը մշակել։ ...Կան 70 արծաթի հանքեր, որոնց մի մասը շահագործվում է ու մի մասն էլ անգործության է դատապարտված»։ Ի միջի այլոց, ոչ միայն Գյումուշխանեում, այլև մի շարք այլ վայրերում հարկի ու տուրքի փոխարեն բնակչությանը ստիպել են աշխատել պետական շինարարական կառույցներում և այլ վայրերում։ Է. Չելեբին հաղորդում է, որ Վանում «կան երեք հայկական թաղամասեր, որոնց բնակիչները բերդի ծառայողներ են ու խարաջի (գլխահարկի) փոխարեն պարտավոր են (մշտապես) նորոգել բերդը»։ Ըստ Էրզրումի Կանոննամեի 57-րդ հոդվածի, Էրզրումի գավառներից մեկում եղած պղնձի չորս հանքերում աշխատելու համար տեղի բնակչությունը ազատված է եղել չիզյայից, իսփենչից, բահրայից, ավարիզից և այլ հարկերից։

---

[22] J. B. Tavernier, հատ. Ա, էջ 11—12, 20։

[23] 1473 թ. Դերջանում Ուզուն-Հասանին հաղթելուց հետո սուլթան Մուհամադ Ֆաթիհը Էրզրումի, Երզնկայի, Բաբերդի, Տիվրիկի, Սեբաստիայի, Դիարբեքիրի և այլ վայրերի հայ արհեստավորներին հավաքագրեց ու բռնությամբ տեղափոխեց Ստամբուլ։ Հետագայում՝ 1479, 1514, 1534 թթ. տեղի ունեցան հայ արհեստավորների նոր բռնի տեղահանումներ՝ մայրաքաղաքում վերաբնակեցնելու նպատակով։

Հանքային հարստությունները, ընդհանրապես, պատկանում էին պետությանը և արդյունահանվում էին կամ կապալառուների (մյուլթեզիմ), կամ էլ պետության հատուկ հավատարմատարների՝ էմինների կողմից։ Ինչպես կապալառուները, այնպես էլ էմինները, պարտավոր էին յուրաքանչյուր տարի պետությանը տալ որոշակի քանակությամբ հանքանյութ. Նախատեսված քանակից ավելի արտադրված հանքանյութը պատկանում էր իրենց, ուստի և նրանք ամենադաժան ձևով շահագործում էին հանքագործ բանվորների աշխատանքը։

* *
*

XVI դարում ամրապնդվում է հայ վաճառականությունը ոչ միայն Հայաստանի սահմաններից դուրս, ուր զարգացման համար նպաստավոր հող ուներ, այլև բուն Հայաստանում։

Դեպի Հնդկաստան ծովային ճանապարհի հայտնագործությունից հետո Առաջավոր Ասիան դեռևս ամբողջապես չէր կորցրել իր երբեմնի նշանակությունը եվրոպական առևտրի համար։ Այսպես կոչված «Լևանտյան» առևտրի տեսակարար կշիռը դեռևս պատկառելի էր։ Թուրքիան չկարողացավ ոչնչացնել Արևելքի հետ Արևմուտքի ավանդական առևտրական կապերը, և հայ ու հույն վաճառականներից գանձված մաքսահարկերը կազմում էին սուլթանական գանձարանի կարևորագույն եկամտի աղբյուրներից մեկը։

Միջերկրական և Սև ծովերից դեպի Իրան ու Հնդկաստան տանող առևտրական ուղիները ոչ միայն անցնում էին Հայաստանի վրայով, այլև Հայաստանի մի շարք քաղաքներ տարանցիկ առևտրի կայաններ էին։

Տարանցիկ հիմնական ուղիները (Պոլիս—Թոխաթ—Էրզրում—Թավրիզ, Զըմյուռնիա—Թոխաթ—Էրզրում—Թավրիզ, Տրապիզոն—Էրզրում—Թավրիզ) խափանվել էին XVI դարի վերջերին թուրք-պարսկական պատերազմների, երկրի ընդհանուր ավերածության, թուրքերի կողմից Անդրկովկասի ռազմակալման ու հետագայում ջալալիների ապստամբությունների հետևանքով, սակայն XVII դարի 20—30-ական թվականներից՝ նորից դարձել էին բանուկ։

Առևտրական այս ուղիներով կատարվող առևտրի զգալի մասը գտնվում էր հայ վաճառականների ձեռքին։

«Հայերը փոքրասիական նահանգներում,—գրում է XVII դարի Թուրքիայի ներքին կյանքը խորը ուսումնասիրած հայազգի պատմաբան Մ. դ՛ Օսոնը,— շատ հաճախ են իրենց նվիրում վաճառականության։ Այդ հարուստ քարավանները կազմողները հենց նրանք են, և ոչ մահմեդականները։ Հայերը յուրաքանչյուր տարի գնում են Ասիայի տարբեր շրջանները, որպեսզի այնտեղ տարածեն աշխարհի չորս մասերի արտադրանքը»[24]։

Տարանցիկ առևտրի հիմնական ապրանքներն էին տարբեր տեսակի թանկագին քարերը, պերճանքի առարկաները, մուշտակներ, գորգեր, բրդյա և մետաքսյա զանազան կերպասներ, արևելյան համեմունքներ և հատկապես հում մետաքս։

Սակայն առևտրական հարաբերությունների զարգացմանը մեծապես

---

[24] *M. d' Ohsson*, Tableau général de l' Empire Ottoman, Paris, 1788—1824, հատ. IV, էջ 207։

խանգարում էր Թուրքիայի քարավանային ուղիների անապահովությունը։ Խոսելով առևտրական ուղիների վտանգավոր լինելու մասին, Ժ. Տավերնիեն հայտնում է, որ վաճառականներն ամենուրեք ենթարկվում են ավազակների հարձակումներին։ «Ամբողջ Թուրքիան,— գրում է նա,— լի է ավազակներով, որոնք թափառում են մեծ խմբերով ու սպասում ճանապարհի վաճառականներին։ Եթե նրանք հանդիպում են հարուստ վաճառականների, ապա կողոպտում են նրանց ու շատ հաճախ զրկում կյանքից»[25]։

Այս դժվարություններով հանդերձ XVI—XVIII դարերում հայ վաճառականներն ունեցան զգալի հաջողություններ Թուրքիայի ներքին ու արտաքին առևտրի ասպարեզում։

## 5. ՀԱՅ ՀԱՄԱՅՆՔՆԵՐԻ ԻՐԱՎԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ ՕՍՄԱՆՅԱՆ ԿԱՅՍՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

«Ամենացածր բարբարոսական աստիճանում գտնվող» թուրք ֆեոդալների գերիշխանության տակ հայ ժողովրդի համար չկար կյանքի ու գույքի ապահովություն։ Զուրկ մարդկային ամենատարրական իրավունքներից, կրոնական կույր մոլեռանդության պայմաններում, հայ աշխատավորությունը ենթարկվում էր ամենադաժան հալածանքների ու անլուր տառապանքների։

XVII դարի սկզբում Արևմտյան Հայաստանի գավառներում ճանապարհորդած Սիմեոն Լեհացու վկայությամբ թուրքերն ամեն կերպ աշխատում էին վիրավորել հայերի արժանապատվությունը։ Նա այսպես է իր Ուղեգրության մեջ նկարագրում հայ ժողովրդի տառապանքը. «Եւ յայնմ ամի (1613 թ.), յորում ես էի Թոխաթ, ել հրաման չար, թէ եկեղեցիս և վանորայս մի վառեսցեն մոմեղէն ճրագ, այլ եղէ. և թէ ուրեք գտանէին՝ տուգանէին։ Եւ այսպիսի տառապանք և նեղութիւն էին ի ձեռս տաճկաց, վասն որոյ յոյժ աղքատ և չքաւոր են, զի միշտ զրկեն, զզվեն, տուգանեն, զրպարտեն և առաւել հարկս պահանջեն»[26]։

Թուրքական ղեկավարող շրջանները ցանկանում էին, որ քրիստոնյա հպատակի արտաքինն իսկ խոսեր նրա ստորադաս վիճակի մասին։ Այսպես, 1588 թ. հայ, ինչպես և հրեա տղամարդկանց կարգադրվում է սպիտակ փաթեղի փոխարեն կրել սև դդակ[27]։ Քրիստոնյա հպատակների վախը բռնակալներից այնքան մեծ էր, որ ոչ ոք չէր համարձակվում հարուստ երևալ կամ շքեղ մի տուն կառուցել[28]։ Արևմտյան Հայաստանի քաղաքներում քրիստոնյաներին թույլ էր տրվում բնակվել միայն հատուկ թաղամասերում։ Նրանց արգելված էր կառուցել նոր եկեղեցի կամ նորոգել հները, իսկ կառուցվածներն էլ գրավվում էին մզկիթների վերածելու համար։

1659 թ. Հակոբ Կարնեցին հայտնում է, որ հայրենի քաղաքում ու շրջակա գավառներում եկեղեցիներից շատերը վեր են ածվել մզկիթների ու բաղնիքների։ Նա գրում է.

Կարնո քաղաքս պատուական,
Որ մաւր Յիսուսի է կառուցման,

[25] J. B. Tavernier, հատ. Ա, էջ 2։
[26] Սիմեոն Լեհացի, էջ 194։
[27] Տե՛ս «Մանր ժամանակագրություններ», հատ. Բ, էջ 516։
[28] Տե՛ս Michel Febvre, նշված աշխատությունը, էջ 166։

Ցեկեղեցիք բազում որ կան
Մէջ քաղաքիս Թիւ յոթելեան,
Տաճկունքն առին զամենեսեան,
Արին մզկիթ և զորն համամ։

Քրիստոնյա հպատակը իրավունք չուներ վկա լինելու դատարանում, ուր քննարկվում էր մահմեդականների գործը։ Եթե որևէ թուրք հարձակվեր քրիստոնյայի վրա, վերջինս իրավունք չուներ դիմելու ինքնապաշտպանության, հակառակ դեպքում խստագույնս կպատժվեր, կհարկադրվեր հավատափոխության և այլն[29]։

Օսմանյան կայսրության մեջ հաճախակի էին հպատակ ժողովուրդների բռնի մահմեդականացման դեպքերը։

«Տաճիկք մեծ վարձք համարելով զքրիստոնէից ուրանալ զՔրիստոս և ի մահմեդի օրէնս և ի կրօնս դառնալ,—գրում է Գրիգոր Դարանաղցին,—զխաչ և զեկեղեցի բեկանել և խորտակել և հաւատացեալք, որ ոչ հաւանին Մահմեդի և չար կրօնից նորին, ազգի-ազգի տանջանօք չարչարեն և հրով այրեն և համարեն պաշտօն աստուծոյ մատուցանել»[30]։

Կրոնական հալածանքներն առավել խստանում էին պատերազմների ժամանակ։ Կեղծ մեղադրանքներով նահատակվում էին անմեղ մարդիկ։ Այդ մասին են վկայում բազմաթիվ ձեռագիր հիշատակարանները, ժամանակագիրները և նահատակվածների մասին գրված վարքերը։

Թուրք տիրապետության տակ հեծող հայկական նահանգների բնակչության համար կատարյալ մի պատուհաս էր դևշիրմեն՝ մանկահավաքը։ Պետական մարմինների կարգադրությամբ կայսրության քրիստոնյա բնակչություն ունեցող նահանգներից և, մասնավորապես, Արևմտյան Հայաստանից բռնի հավաքագրում էին ֆիզիկապես ամենաուժեղ ու գեղեցկադեմ մանկահասակ տղաներին, հավատափոխ անում, ենիչերիական բանակի շարքերը լրացնելու նպատակով։

Հայկական նահանգներում մանկահավաքներ կատարվել են 1531—1536, 1543, 1547, 1550, 1560, 1622 թվականներին։

Երեխաներին ծնողներից և հարազատներից բռնի բաժանելու պատկերը մի կատարյալ ողբերգություն էր։ XVI դարի հիշատակագիր Թադեոս Սեբաստացին այսպես է նկարագրում մանկահավաքը.

Ողորմագին դիմօք արտասուէին
Ծնողքն և ազգականքն և եղբարք նոցին,
Մինչ զի զամենեսեան ի յողբ շարժէին,
Զոր ոչ կարէ պատմել լեզու մարդկային։
Սևազգեստ լինէին, քուրձ զգենուէին,
Մոխրաթաւալ անձամբ աղաղակէին,
Տարակուսեալ հոգով ի տուն նստէին,
Հանգուցեալ մեռելոցն երանի տային։
Յորժամ բաժանեն զնոսա ի ծնողաց

---

[29] Տե՛ս Գրիգոր Դարանաղցի, Ժամանակագրութիւն, էջ 467—468։
[30] Նույն տեղում, էջ 152։

Անդ եղև աղաղակ մեծ կոծումն և լաց,
Որպէս որ բաժանեն զգառն ի մաքեաց.
Եւ եղև մեծ աղէտ տարակուսանաց։

Մանկահավաքի ժամանակ թուրք պաշտոնյաները գործադրում էին անասելի բռնություններ։ «Ի թւին ՋՁ (1531) տղայ ժողովեցին ի քրիստոնէից. աՙ ու վախ, լաց և աղաղակ և խեղճ բաներ շատ եղև»,—կարդում ենք Անանուն Սեբաստացու ժամանակագրության մեջ։ Ինչպես վկայում է Գր. Դարանաղցին, մանկահավաքը կանխելու նպատակով հայերը հանձն են առել ծանր տուրք վճարել սուլթանական կառավարությանը՝ «օղլանչի ստակ» անվան տակ։

Ստանալով մոլեռանդ մուսուլմանական դաստիարակություն, ենիչերիները դառնում էին ռազմատենչ սուլթանների հիմնական հենարանը։ Սկսած XVI դարի վերջից ենիչերիների բանակը փաստորեն հանդիսացավ երկրի լիիրավ տերն ու տնօրենը, չարիք ու պատուհաս դառնալով նախ և առաջ քրիստոնյա հպատակների գլխին։

Թե ինչ չարիք են եղել ենիչերիները հայ հոծ զանգվածների համար, վկայում է Սիմեոն Լեհացին. «Եւ այնպէս չար էին եանչարիքն,— գրում է նա,—որ քրիստոնէից չի տային ձի հեծնալ, ոչ ջորի, ոչ լաւ չուխայ ագանիլ, ոչ այգի, ոչ տուն մեծ, այլ զամենայն յափշտակէին ի ձեռաց։ Նաև առաջնորդաց չտային քննել հաս-չհաս կամ օրէնք պահել, զի թէ ոք կամէր կին առնուլ և չհասութք լինէր, չերթային առ հովիւ կամ առաջնորդ, այլ (երթային առ) ենչարի մի և տային կաշառ, և նա գայր իրիցուն թօփուզով պսակ տայր առնել, և նա ակամայ պիտեր խօսիցն չելնէր, ապա թէ ոչ բազում չարիս անցուցանէր ի գլուխն և վնաս և տուգանք ձգէր զնոսա, այլ և եկեղեցեաց և վանօրէից։ Եւ թուրքաց աշխարհն ամենայն այզպէս են»[31]։

Հայ աշխատավորության համար մեծ չարիք էին նաև աղջկաժողովները, որ կատարվում էր թուրք փաշաների ու սուլթանների հարեմների համալրման համար։

* *
*

Այսպիսով, Արևմտյան Հայաստանում ստեղծված օսմանյան վայրագ կարգերը ոչ միայն արգելակում էին երկրի արտադրողական ուժերի զարգացմանը, այլև ուղղակիորեն քայքայում ու ոչնչացնում էին այդ ուժերը։

Վարելով անվերջ պատերազմներ և ուժեղացնելով գյուղացիության ու քաղաքի առևտրա-արհեստավորական խավերի շահագործումը, իշխող ֆեոդալական դասը Թուրքիայում մաշում ու թշվառության էր դատապարտում ինչպես ամբողջ կայսրության, այնպես էլ Արևմտյան Հայաստանի նյութական բարեկեցության հիմնական աղբյուրը հանդիսացող աշխատավոր բնակչությանը։

XVI դարի արշալույսից, կարճատև ընդհատումներով, մինչև 1639 թ. հարատևած թուրք-պարսկական պատերազմներն ունեցան ամենասոսկալի հետևանքներ Արևմտյան Հայաստանի բնակչության համար։ Դրությունը ավելի քան ծանրանում էր նրանով, որ այդ պատերազմների ժամանակ Արևմտյան

[31] Սիմեոն Լեհացի, էջ 193։

*Հայաստանի տարբեր մասերում կենտրոնական կառավարության դեմ բոնկվում էին առանձին ֆեոդալների ապստամբությունները։ Հարավ-արևմտյան Հայաստանի բնակչությունը տուժում էր քուրդ ֆեոդալների միջցեղային անվերջ ընդհարումներից։ Հատկապես մղձավանջային իրադրություն ստեղծվեց երկրում ջալալի կոչված ավազակախմբերի շուրջ քառորդ դար տևած ապստամբությունների ժամանակ։ Քաղցն ու կարիքը, մորակն ու սուրը, հրանոթն ու հրացանը, կեղեքիչ ու ստրկացուցիչ հարկային սիստեմը, թուրք ֆեոդալների վարած համաձուլման քաղաքականությունը ստիպում էին հայ բնակչությանը արտագաղթել երկրից ու ապաստան փնտրել օտար երկնակամարների տակ։*

*1639 թ. Կասր-և Շիրինում կնքված հաշտության պայմանագրից հետո Իրանի տիրապետության տակ ընկած Արևելյան Հայաստանում ստեղծվեցին որոշ խաղաղ նախապայմաններ երկրի արտադրողական ուժերի վերականգնման համար։ Արևմտյան Հայաստանում, սակայն, դրությունը մնաց անփոփոխ։ Թուրքիան ապրեց լճացման ու անկման երկարատև ժամանակաշրջան, որն արդյունք էր տիրապետող ռազմա-ավատատիրական սիստեմի քայքայման։*

## ՀԱՅԿԱԿԱՆ ԳԱՂԹԱՎԱՅՐԵՐԸ XIV—XVIII ԴԴ.

*Տակավին վաղ միջնադարում սկզբնավորված և դարեր շարունակ հարատևած աշխարհասփյուռ հայ գաղթավայրերի գոյությունը հայ ժողովրդի պատմությունն ամբողջացնող ու նրա առանձնահատկությունը բնութագրող կարևոր գործոններից է։ Մայր երկրից պարբերաբար կատարվող զանգվածային արտագաղթերը և գաղթաշխարհի առաջացումը պայմանավորված է եղել Հայաստանի տնտեսական և քաղաքական դրության մի շարք յուրօրինակ հանգամանքներով։ Տարբեր պատմական փուլերում տարբեր երանգ ու ծավալ է ունեցել արտագաղթը։ Մի հանգամանք, սակայն, անփոփոխ է մնացել. որքան անապահով ու ծանր է եղել երկրում դրությունը, անքան մեծ չափեր է ընդունել բնակչության արտահոսքը և, ընդհակառակը, խաղաղ շինարարական տարիներին թուլացել ու գրեթե դադարել է այն։*

*Այս տեսակետից խիստ հատկանշական է սույն՝ չորրորդ հատորն ընդգրկող XIV—XVIII դարերի պատմությունը՝ հաջորդաբար կրկնվող արշավանքների, ավերածությունների և բռնագաղթերի ժամանակաշրջանը։ Հիրավի, մոնղոլական տիրապետությանը հաջորդող շրջանն ու Լանկ-Թամուրի ասպատակությունների դժնդակ տասնամյակները և ապա Կարա-կոյունլու և Աղ-կոյունլու թուրքմենական ցեղերի կռիվներն ու երկպառակությունները, պարսկա-թուրքական հարյուրամյա պատերազմները, ջալալիների ապստամբական շարժումները քայքայման էին հասցրել հայ ժողովրդի տնտեսությունն ու երկրում ստեղծել կյանքի ու սեփականության անապահով վիճակ։ Բնականաբար, հիշյալ դարերում սկսվում է այնպիսի ուժեղ արտագաղթ, որպիսին չէր եղել վաղ միջնադարում։*

*Հարկ է նշել, որ զանգվածային արտագաղթի հոսանքն ուղղվում էր հիմնականում դեպի այն երկրամասերը, որոնք ծանոթ էին հայ առևտրական կապիտալի ներկայացուցիչներին դեռևս զարգացած ֆեոդալիզմի ժամանակաշրջանից։ Ղրիմում, հարավ-արևելյան Եվրոպայի երկրներում, Կ. Պոլսում, Սիրիայի և Իրանի վաճառաշահ քաղաքներում և այլ վայրերում հայկական համայնքներ գոյություն ունեին դեռևս նախորդ դարաշրջանում, մինչև հոծ բնակչություն ունեցող գաղթօջախների ստեղծումը XIV—XVIII դարերում։*

*Ֆեոդալիզմի վայրէջքի ու հետադիմության այս մռայլ ժամանակներում են ձևավորվել ու հետագա զարգացում ապրել ռուսահայ՝ Աստրախանի, Մոսկվայի, Պետերբուրգի, Ղզլարի, Մոզդոկի, ինչպես նաև ավելի երիտասարդ Նոր Նախիջևանի (1779) և Գրիգորիոպոլի (1792) գաղթօջախները։ Նրանք շուտով դառնում են ռուսահայ հասարակական-քաղաքական ու մշակութային կյանքի կենտրոններ և կարևոր դեր են կատարում հայ և ռուս ժողովուրդների մերձեց-*

ման ու փոխըմբռնման գործում, ամեն կերպ նպաստելով օտար բռնակալական լծից Հայաստանի ազատագրմանը։

Այդ նույն ժամանակ են բարգավաճում Արևմտյան Ուկրաինայի, Մոլդովայի ու Լեհաստանի, ինչպես նաև Արևելյան Եվրոպայի մյուս երկրների՝ Բուլղարիայի, Վալաքիայի, Հունգարիայի հայ գաղութները։

Նշանակալից դեր են կատարում, մանավանդ, արևելյան երկրների գաղթավայրերը, մասնավորապես Կոստանդնուպոլսի ազգային կյանքով աչքեցուն մարդաշատ գաղութը, Ջմյուռնիայի, Սիրիայի ու Եգիպտոսի հայ համայնքները։

Նշված ժամանակաշրջանում են կազմավորվում ու զարգանում, միջազգային առևտրում մեծ դեր կատարած, Նոր Ջուղա հայաքաղաքի և հեռավոր Հնդկաստանի հայկական գաղթավայրերը։ Ինչպես հայտնի է, վերջիններս դարձան քաղաքական ու մշակութային կյանքի, հայ ազատագրական շարժման կենտրոններ։

Սակայն հայ գաղթավայրերի նշանակությունը չի սպառվում աշխարհի տարբեր մասերում ծվարած հայ զանգվածների գոյատևումը ապահովելով կամ թե մայր հայրենիքի հետ ունեցած հասարակական-քաղաքական շփումներով։

Հայաստանում ստեղծված ծանր վիճակի պայմաններում, երբ վերացել էր խաղաղ շինարարական կյանքի ու ստեղծագործական աշխատանքի ամեն մի հնարավորություն, հայ գաղթավայրերը բնականաբար դարձան հայկական տպագրության, գրականության, արվեստի ու ազատագրական մտքի կարևոր կենտրոններ և խոշոր դեր կատարեցին հայ ժողովրդի մշակութային ավանդույթների պահպանման ու զարգացման գործում։

Գաղթավայրերում հայ զանգվածները շփվել են հյուրընկալող երկրների ժողովուրդների հետ, հայ մշակույթը բեղմնավորվել է այդ երկրների մշակույթի բարերար ազդեցությամբ, փոխադարձաբար ներգործել նրանց վրա, նպաստել ժողովուրդների փոխըմբռնմանն ու համագործակցությանը։ Բավական է քենկուզ հիշել, որ առաջին հայկական տպարանները հիմնվել, առաջին հայ տպագիր գրքերն ու պարբերականները հրատարակվել են Հայաստանից դուրս՝ գաղթաշխարհի տարբեր հանգրվաններում։

Այսպիսով, ուշ միջնադարի հայկական գաղութները առանձնահատուկ դեր են կատարել մեր ժողովրդի պատմության, մասնավորապես նրա հասարակական-քաղաքական ու մշակութային կյանքի բնագավառում։ Ահա, նկատի ունենալով այդ հանգամանքները, սույն հատորում հատուկ բաժին է նվիրվում և ընդարձակ տեղ հատկացվում հայ գաղթօջախների պատմությանը։

Ցավոք, հարցի ուսումնասիրության արդի վիճակը հնարավորություն չի ընձեռում ըստ ամենայնի վերհանելու գաղթօջախների պատմությունը։

Թեպետ միշտ էլ գիտակցվել է անառարկելի այն ճշմարտությունը, որ առանց հայ գաղթավայրերի պատմության լուսաբանման հնարավոր չէ մեր ժողովրդի ամբողջական, գիտական պատմության ստեղծումը, սակայն մինչև վերջերս շատ քիչ աշխատանք է տարվել այդ ուղղությամբ։ Միայն վերջին տասնամյակում որոշակի հետաքրքրություն արթնացավ հայ գաղթավայրերի նկատմամբ։ Սկսված աշխույժ հետաքրքրությունն արդեն տալիս է իր առաջին արդյունքները, հրատարակվել են կամ տպագրության են պատրաստվում առանձին աշխատություններ, ծավալուն հոդվածներ հայ-

կական տարբեր գաղութների վերաբերյալ։ Ավելին, փորձեր են արվում ընդհանրացումներ կատարելու։ Հրապարակի վրա է Ա. Ալպոյաճյանի հայ գաղթաշխարհի եռահատոր պատմությունը, որում բավական հարուստ փաստական նյութ է կուտակված։ Ա. Աբրահամյանը համառոտակի ուրվագծել է աշխարհի տարբեր ծայրերում սփռված ավելի քան երեսուն գաղութների պատմությունը։ Հարկավ, նա հնարավորություն չի ունեցել հանգամանորեն հետազոտելու տարբեր գաղթավայրերին վերաբերող բոլոր աղբյուրներն ու նյութերը և տալ նրանց համակողմանի պատմությունը, մի խնդիր, որ հնարավոր կլինի կատարել առանձին գաղութների խոր ու բազմակողմանի մենագրական ուսումնասիրությունից հետո միայն։

Կատարված դրական աշխատանքը և ստացված արդյունքները միայն սկիզբն են ընթացքի մեջ մտած հայ գաղթավայրերի պատմության ստեղծման մեծ ու կարևոր գործի։ Ցայսօր կարևոր շատ գաղթավայրերի մասին տակավին չունենք ամբողջական ուսումնասիրություններ, մի հանգամանք, որ իր բացասական կնիքն է դրել տարբեր երկրների հայ զանգվածների պատմության ընթերցողներին ներկայացվող շարադրանքի վրա։ Հաճախ հարկադրված ենք եղել այս կամ այն գաղթավայրը ներկայացնել ոչ այնքան հայ ժողովրդի պատմության մեջ նրա խաղացած դերը հաշվի առնելով, որքան ելնելով տվյալ օջախի պատմության ուսումնասիրության արդի վիճակից։ Դրանով և հեղինակների գրելաձևի տարբերությամբ է պայմանավորված այս բաժնի առանձին հատվածների ծավալի և ընդգրկման անհամամասնությունը։ Այսուհանդերձ հատորիս խմբագրությունը լիահույս է, որ հայ գաղթաշխարհի պատմությանը նվիրված այս բաժինը, իր թերություններով հանդերձ, կնպաստի XIV—XVIII դարերի հայ ժողովրդի պատմության ամբողջացման, նրա առանձնահատկությունների բացահայտման գործին։

ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

# ՄԵՐՁԱՎՈՐ ԱՐԵՎԵԼՔԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԳԱՂԹԱՎԱՅՐԵՐԸ

## 1. ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼՍԻ ԵՎ ԶՄՅՈՒՌՆԻԱՅԻ ԳԱՂԹՕՋԱԽՆԵՐԸ

Հայաստանին հարևան Բյուզանդիան այն երկիրն էր, ուր դեռևս վաղ միջնադարում հանգրվան գտան գաղթի ուղին բռնած հայերը։ Բոսֆորի ափերին փռված Կ. Պոլիսը՝ Արևելքն Արևմուտքի հետ կապող այդ «ոսկե կամուրջը» աստանդական հայեր հյուրընկալեց տակավին V դարից, երբ Հայաստանը նըվաճվեց սահմանամերձ աշխարհակալ պետությունների կողմից, որոնց վարած քաղաքականությունը ուղղակի կամ անուղղակի պատճառ դարձավ գաղթագնացության։

Բյուզանդիայի մայրաքաղաքն էին գալիս հայ ճարտարապետներ, պատանդ տարված կամ կրթվելու առաքված թագաժառանգներ, իշխանազուններ. զինվորականներ, վաճառականներ։ Կամավոր եկվորները, հատկապես պարսկական տիրապետությունից գաղթողները չէին բավարարում հայերի խիզախության ու ընդունակությունների լավածանոթ բյուզանդական կայսրերի պահանջները, որոնք VI դարից ի վեր բռնագաղթեր էին կազմակերպում Հայաստանից, հայ զանգվածներին բնակեցնում Թրակիայում, Մակեդոնիայում և այլուր։

IX—X դարերի Կ. Պոլիսում արդեն կային բավականաչափ հայեր[1]։

Հետագա երկու հարյուրամյակներում հայկական տարրը նվազեց հունական մայրաքաղաքում։ Դրա պատճառը հունադավան կղերի վարած համաձուլման քաղաքականությունն էր։

XIII դարի վերջերին իրադարձությունները փոխվեցին ի նպաստ հայերի։ 1261 թ. Պալեոլոգները վերագրավեցին մայրաքաղաքը և հանդես եկան ընդդեմ կրոնական խտրականության։ Զգալով Արևելքից եկող մոնղոլական հորդաների վտանգը, նրանք ջանում էին հաշտության եզրեր փնտրել Հռոմի կղերապետության հետ, ոտքի հանել համաքրիստոնեական աշխարհը, սպառնացող վտանգին դիմագրավելու նպատակով։

1307 թ. մարտի 19-ին Կիլիկյան Հայաստանի մայրաքաղաք Սսում գումարված եկեղեցական ժողովին մասնակցում էին 26 հայ եպիսկոպոսներ[2], դրանց թվում Կ. Պոլսի հայ գաղութի հոգևոր պետը։ 1360 թ. Կ. Պոլսի մեջ

[1] Ш. Диль, История Византийской империи, М., 1948, էջ 75:

[2] Տե՛ս Հ. Աղեքսանդր Պալճեան, Պատմութիւն կաթողիկէ վարդապետութեան ի Հայս, Վիեննա, 1878, էջ 281։

հայերն ունեին ս. Սարգիս եկեղեցին և նրա շուրջը համախմբված հայկական համայնք։ Նույն տարում կաֆայեցի Կողմաս անունով հայ վաճառականը կառուցել տվեց երկրորդ եկեղեցին, որը Ղրիմից վերագաղթած հայ առևտրականների դրամով վերաշինվեց և ընդարձակվեց 1436 թ.[3]։

1453 թ. մայիսի 29-ին թուրքական բանակը Մուհամադ II Ֆաթիհի գլխավորությամբ գրավեց Բյուզանդական կայսրության մայրաքաղաքը, որի անհուսալի ու համառ պաշտպանությանը մասնակցում էին նաև գաղութի հայերը[4]։ Սուլթանը թույլատրեց իր զինվորներին երեք օր շարունակ կողոպտել քաղաքը։ Բյուզանդական զինվորների և քաղաքի բնակչության մի մասը սպանվեց, մնացյալը գերեվարվեց։

Սուլթան Մուհամադ Ֆաթիհի առաջին հոգսը եղավ Կ. Պոլսի վերաշինումը։ Նրա հրամանով նոր բռնագաղթեր կազմակերպվեցին Փոքր Ասիայի քաղաքներից։ Բռնագաղթվածներին նա ազատում էր գլխահարկից, տրամադրում բնակարաններ, հողամասեր, կալվածքներ։ Գաղթեցվում էին հույներ, հրեաներ, ինչպես նաև ստվարաթիվ հայեր։ Սուլթանը նկատում էր հայ արհեստավորների կատարած դերը Ստամբուլի գեղեցկացման և հեռավոր ափեր կտրող վաճառականների շնորհքը՝ նորակառույց պալատները զարդարելու գործում։ Ֆաթիհը և նրա հաջորդները շարունակեցին հայկական նոր զանգվածներ բնակեցնել Կ. Պոլսում։ Դեպի մայրաքաղաք բռնագաղթի ենթարկվեցին հայեր՝ Բրուսայից, Բարբերդից, Արաբկիրից, Ամասիայից, Կիլիկիայից, Եվդոկիայից, Ակնից։ Այդ եղանակով 1457 թ. գաղթողներ եղան Թեոդոսիայից, 1479 թ.՝ Ղարամանիայից, 1493 թ.՝ Անկյուրիայից, Ակքերմանից, 1514 թ.՝ Թավրիզից[5]։

Թուրքերի գրավումից քառորդ դար անց, 1478 թ. վիճակագրական մի տեղեկության համաձայն, Կ. Պոլսում կային 100—120 հազար բնակիչներ, որոնք բնակվում էին 16.026 տներում և ըստ ազգությունների ունեին հետևյալ պատկերը. 9486 տուն մահմեդական, 3743 տուն հույն, 1647 տուն հրեա, 817 տուն հայ, 267 տուն կաֆայեցի (սրանց մի մասը հայեր էին), 332 տուն եվրոպացի, 31 տուն գնչուներ[6]։ Ուրեմն, XV դարի այս հայ գաղթավայրի Ստամբուլ և Ղալաթիա մասերում արդեն բնակվում էր շուրջ 1000 հայ ընտանիք։

Հետագա դարերում թիվը բազմապատկվեց։ Բռնագաղթերի ու պանդխտության ճանապարհով բերվածների հաշվին ստեղծվեցին նոր արվարձաններ, ստվարացան նախկին թաղամասերը։ Կ. Պոլիսը գնալով դառնում էր խճանկարը ողջ արևմտահայության, այսինքն՝ մի համայնք, որի մեջ Արևմտյան Հայաստանի ամեն մի նահանգ, ամեն մի գավառ, նույնիսկ ամեն մի գյուղ իր մասնիկն ու ներկայացուցիչն ուներ։

Կ. Պոլսի հայ բնակչությունն ավելի ստվարացավ XVI—XVIII դարերում և հասավ մինչև 200.000-ի։ Սուլթան Սելիմը, Չալդրանի հաղթանակից հետո, հազարավոր ընտանիքներ, մեծ մասամբ հայեր, քշեց Կ. Պոլիս։ Դրան հաջորդեցին 1577 թ. Նախիջևանի, ապա Թավրիզի բռնագաղթերը։ Թուրք-պարսկա-

---

[3] Տե՛ս «Հնգադարեան յիշատակարան Սամաթիոյ ս. Գէորգ եկեղեցւոյ, պատրաստուած Պետրոս Կարապետեանէ», Իսթամբուլ, 1935, էջ 15։

[4] Տե՛ս Հ. Աճառյան, Հայկական աղբյուրները Բյուզանդիայի անկման մասին, Երևան, 1957, էջ 7—8, 267—272։

[5] Տե՛ս Երեմիա Չելեպի Քյոմուրճեան, Ստամպօլոյ պատմութիւն, Վիեննա, 1913, էջ 210։

[6] Տե՛ս նույն տեղում, էջ 52 և հաջ.։

կան 1578—1590 թթ. և 1604—1638 թթ. երկարատև պատերազմները, շահ Աբբասի արշավանքները, ջալալիների ասպատակությունները Արևմտյան Հայաստանում ժողովրդին հարկադրում էին թողնել հայրենի երկիրը և ապաստանել օտար մայրաքաղաքում։ Այնպես որ XVII դարի կեսերին Կ. Պոլսում արդեն 8000 տուն տեղացի և 50 հազար էլ պանդուխտ հայեր կային[7]։ XVIII դարի վերջին մայրաքաղաքի ընդհանուր բնակչության թվում հայերն ու հույներն արդեն մեծամասնություն էին կազմում։

Կ. Պոլսի գրավումից քիչ անց՝ 1461 թ., մայրաքաղաքի հայադավանները ձևավորվեցին իբրև առանձին համայնք։ Սուլթանի հրամանագրով Հովակիմ եպիսկոպոսը նշանակվեց առաջնորդ։ Տրվեցին մի շարք արտոնություններ։ Կ. Պոլսի համայնքապետերն առաջին հրովարտակը ստացել են ոչ շուտ, քան 1540-ական թվականները, այսինքն՝ սուլթան Սուլեյման Կանունիի տիրակալության շրջանում[8]։

Հակոբ Սիրունին ապացուցել է, որ առաջին պատրիարք Հովակիմն ավելի վաղ էր հասել հունական մայրաքաղաքը, քան թուրքերը, ըստ որում այս անունով եղել են մի քանի անձնավորություններ, որոնցից մեկն է միայն բազմել պատրիարքական աթոռին՝ 1461 թ.։ Հովակիմ պատրիարքը նստել է Սամաթիայի ս. Գևորգ եկեղեցում և 1478 թ. աթոռը հանձնել է Նիկողայոս եպիսկոպոսին[9]։

Այս շրջանից էլ ձևավորվել են հայոց պատրիարքի, ավելի ճիշտ՝ պատրիարքարանի իրավունքները, ինչպես նաև պարտականությունները սուլթանական կառավարության հանդեպ։ Սկզբում Կ. Պոլսի պատրիարքներին էին ենթարկվում Փոքր Ասիայի՝ Բուրսայի, Այդընի, Կասթեմունիի, Անկյուրիայի և Սեբաստիայի շրջանները, քանի որ միայն սրանք էին հպատակեցված կայսրությանը։ Դարավերջի քառորդին, երբ օսմանյան զորքերը նվաճեցին Տրապիզոնն ու Ղրիմը, այդ թեմերը նույնպես անցան պատրիարքի իրավասության տակ։ Հետագա դարերում, պարբերական փոփոխություններով, ընդարձակվեցին հայոց պատրիարքի «կառավարչության» շրջանները, սուլթանները սրանց հոգևոր իշխանությանը հպատակեցրին նվաճած հայկական ու հայաբնակ գրեթե բոլոր մարզերի առաջնորդարաններն ու հոգևոր վիճակները, նույնիսկ այն թեմերը, որոնք 1441 թ. ի վեր պատկանում էին Էջմիածնի կաթողիկոսությանը։

Ստեղծված իրավիճակը երկար չտևեց։ XVII դարում վանեցի Զաքարիայի, Խուլ Հովհաննեսի, Գրիգոր Դարանաղցու և այլոց միջև ծագած գավազանակռվի պատճառով պատրիարքարանի իրավասության սահմանները վերաձևվեցին, տրոհվեցին թեմերը, իսկ որոշ մարզերի հոգևոր կառավարությունն էլ, իբրև «տերունական թեմեր» անցան Էջմիածնի Մայր աթոռին (Զմյուռնիա, Վասպուրական, Տիգրանակերտ)։ Այդուհանդերձ, մինչև սահմանադրության վավերացումը, Կ. Պոլսի պատրիարքները դիտվում էին իբրև արևմտահայերի հոգևոր պետեր և փաստորեն միջնորդ օղակ էին ազգի ու օսմանյան պետության միջև։

Պատրիարքների իրավունքների մասին եղած հրովարտակներից մեզ

---

[7] Տե՛ս Գրիգոր Դարանաղցի, Ժամանակագրութիւն, էջ 461—463։

[8] Հ. Պէրպէրեան, Նյութեր Կ. Պոլսո Հայոց պատմության համար, Վիեննա, 1965, էջ 100—115։

[9] «Էջմիածին», 1963, Դ, էջ 27—31։

հասած հնագույնը 1764 թ. հունիսի 3-ին Գրիգոր Պասմաճյանին տրված «բերաթն» է, որը ցայսօր գիտական շրջանառության մեջ դրվածներից գրեթե ամենարովանդակալիցն է։ Ըստ սուլթանական հիշյալ հրովարտակի, Կ. Պոլսի պատրիարքը իրավունք ուներ տնօրինելու Անատոլիայի ու Ռումելիայի հայ աղգաբնակչության հոգևոր գործերը, ընտրել տալ կամ հրաժարեցնել առաջնորդներին, թեմակալներին։ Ամուսնության, ամուսնալուծության և քաղաքացիական այլ խնդիրների դեպքում նրան էր պատկանում վճռական խոսքի իրավունքը։ Պատրիարքն էր կարգավորում վակֆային հողերի, կտակների, հոգաբարձության խնդիրները, նվիրակներ հղում եկեղեցական տուրքերի և նվերների հավաքման համար, գավառներից ստացած բողոքները հանձնում սուլթանին կամ Բ. Դռանը, պատժում, երբեմն էլ պատժել տալիս աղանդավորության ուղին բռնած «մոլորյալ հայերին»։ Պատրիարքն էր արտոնում վանքերի ու եկեղեցիների կառուցումը, դպրոցների ու նախակրթարանների բացումը մայրաքաղաքում, տպարանների հիմնումը, գրքերի տպագրությունը։ Մինչև XIX դարակեսը պատրիարքները փաստորեն առինքնել էին նաև դրաքննիչների պաշտոնը։

Արևմտահայ «հոտի հովվապետն» ուներ ընդարձակ կալվածքներ, իրեն ենթակա երկու տասնյակից ավելի պաշտոնյաներ, բանտախցեր, դատական ու ոստիկանական իրավունքներ։ Սուլթանը պատրիարքին ու նրա 15 ծառայողներին ազատել էր հարկերից, արտոնել ձի հեծնել, հագնվել այնպիսի տարազ, ինչպես «նրանք ցանկանային» և այլն։ Հրովարտակը բովանդակում է նաև այլ իրավունքներ, որոնք միայն թղթի վրա էին, իսկ իրողության մեջ հակառակն էր կատարվում։ Սուլթանները, մեծ վեզիրները հայոց պատրիարքին սիրաշահում էին, երբ արևմտահայության հարկավորությունն էին ունենում, մասնավորապես թուրք-պարսկական ու ռուս-թուրքական պատերազմների պահերին, իսկ ընդհանուր առմամբ հայ բարձրաստիճան պաշտոնյան «գյավուր», «ռայա», «զիմմի» մականուններով կառավարության աչքում ավելի ցածր `էր, քան մահմեդականը։

Թուրք պատմագրությունն այսօր էլ ճգնում է հավաստել, թե հայ եկեղեցին ընդհանրապես ազատ է եղել հարկատվությունից, մինչդեռ սուլթանների հրապարակած ֆերմանները հակառակն են ապացուցում։ Հայոց պատրիարքը պարտավոր էր 100 հազար ակչե միանվագ հարկ տալ արքունիքին, որպեսզի կարողանար ստանալ սուլթանական հրովարտակը՝ իր պաշտոնում հաստատվելու մասին[10]։ Հենց այդ հարկագումարն էլ սուլթաններին և մեծ վեզիրներին շահագրգռում էր հաճախակի փոփոխելու պատրիարքներին, որպեսզի ամեն մի նորընտիր պատրիարքից կորզեին 100 հազար ակչե։ Պատահական չպետք է համարել, որ Հովակիմից սկսած (1461 թ.) մինչև Հակոբ եպիսկոպոս Պոլսեցին (1848 թ.) պատրիարքական աթոռին հերթականորեն բազմել են 82 (այլ հաշվով 85) անձնավորություն։ Վերջին հարյուրամյակում դրամի ավելի կարիք զգացող սուլթանները, առանց պատճառի փոփոխել են սրանց, երբեմն նույն մարդուն երկու անգամ նշանակելու արտոնություն տվել և ամեն անգամ էլ ստացել սահմանված հարկագումարը։

Անցնելով պաշտոնի, պատրիարքները պարտավոր էին հայ եկեղեցիներից, առաջնորդարաններից, վանքերից հավաքել «միրի մուկաթա» հարկը

10 Տե՛ս Ղ. ԻՆՃԻՃԵԱՆ, Աշխարհագրութիւն, հատ. Ե, էջ 117։

(100—140 հազար ակչե) և հանձնել կառավարությանը։ Պատրիարքները միաժամանակ պարտավոր էին նոր վեզիրին տալ 500 ղուրուշ, վեզիրի տեղակալին՝ 250 ղուրուշ, չավուշ բաշուն՝ 200 ղուրուշ[11]։ Նվերների անվան տակ պատրիարքները տուրք էին տալիս ենիչերի աղասուն և նրա օջախի չավուշներին, որը վճարվել է դրամով և թանկարժեք հագուստներով։

Անշուշտ հարկագումարի անփոփոխ վիճակի ու անընդհատ ավելացման գործում քիչ մեղք չունեին նաև հոգևորականները, աթոռակալի եկած եպիսկոպոսներն ու արքեպիսկոպոսները։

Այսպիսով, Կ. Պոլսի հայոց պատրիարքները կառավարում էին ոչ միայն գաղթավայրի հայկական համայնքը, այլև ողջ արևմտահայությանը, գանձում էին հարկերի մի քանի տեսակներ և հանձնում կառավարությանը։ Սուլթաններն էլ իրենց քաղաքականության մի մասը հոգևորականության միջոցով էին իրականացնում հայաշատ գավառներում։ Հոգևոր դասին որոշ արտոնություններ տալով, ջանում էին օգտագործել նրանց հեղինակությունը՝ հպատակներին հնազանդ և օտար պետությունների ազդեցություններից հեռու պահելու համար։

Կ. Պոլսի բոլոր պատրիարքները չէ, որ կարող էին աչք գոցել հայերի նկատմամբ Թուրքիայի վարած ազգային ու սոցիալական անտանելի քաղաքականության հանդեպ։ Կ. Պոլիսը տալիս է նաև այնպիսի պատրիարքներ, բարձրաստիճան հոգևորականներ, որոնք, մասնավորապես XVII դարում, հարում էին Եվրոպայի ռազմա-քաղաքական միջամտության ճանապարհով Հայաստանը Թուրքիայի և Իրանի բռնատիրությունից ազատելու գաղափարին։

Մայրաքաղաքի հոգևոր կենտրոնը հիմնականում մնում էր իբրև կղերաավատատիրական ինստիտուտ, որը նպատակահարմար չէր տեսնում դիմադրական որևէ շարժում կազմակերպել ոչ միայն Կ. Պոլսում, այլև Արևմտյան Հայաստանի գավառներում։

Իրար հաջորդող պատրիարքները տեսանելի ու անտեսանելի բազմաթիվ թելերով աղերսվում էին պալատում դիրք ստացած մեծահարուստ հայ չելեբիների հետ, մի դասի, որը ձևավորվեց մոտավորապես XVI դարի վերջերին, երկու հարյուրամյակ շարունակ սեփականեց Թուրքիայի քաղաքականության պաշտպանության ֆունկցիաները, կանխելով XVIII և XIX դարերի պոլսահայ ամիրայությանը։

Չելեբի պատվանուն են ստացել մայրաքաղաքում, Զմյուռնիայում ու գավառներում ծվարած այն հայ երևելիները, որոնք դառնալով թուրք փաշաների և հայ եպիսկոպոսների սեղանավորներ՝ պարապում էին վաշխառությամբ, տոկոսով դրամ էին տալիս, սուլթանի առաջ երաշխավորներ դառնում և ժողովրդից կորզած առատ հասկաքաղով ուռճացնում սեփական դրամաքսակները։ Նման զբաղմունք ունեցող, մեծահարուստ ու դիրքատեր չելեբիներից էին Աբրահամ Աբրոյից սկզբնավորված Աբրոյենց չելեբիական հայտնի տոհմը։

Հայ չելեբիները, սակայն, միայն վաշխառուներ ու պաշտոնյաներ չէին։ Նրանցից շատերը նախկին խոջաներ էին, տարանցիկ առևտրով պարապողներ, որոնք սուլթաններին մատուցած ծառայության կամ ցուցաբերած հավատարմության համար նույնպես չելեբի պատվանունն էին ստացել, սակայն պահպանել էին նաև խոջա մակդիրը։

---

11 Տե՛ս նույն տեղում։

Աղգայիններին, հատկապես մայրաքաղաքի հայ բնակչության աչքում հեղինակություն ստանալու, նրանց վրա ազդեցություն ձեռք բերելու դիտավորությամբ, չելեբիները հովանավորել են ժամանակի կրթված մարդկանց։

Արրա Չելեբին հովանավորել է նշանավոր մտավորական Երեմիա Չելեբի Քյոմուրճյանին, ընդօրինակել տվել հայկական ձեռագրեր, սեփական ծախսերով շինել կամ վերակառուցել Կ. Պոլսի ս. Նիկողայոս, Սիլիվրիի ս. Գևորգ, Կանդիլյայի ս. Կարապետ և Ֆիլիպպեի ս. Գևորգ եկեղեցիները։ Խոջա Երեմիայի որդի Մաղաքիա Չելեբին, օգտագործելով մեծ եպարքոս Ահմեդ փաշայի վրա ունեցած իր ազդեցությունը, 1649 թ. իջեցնել տվեց թիավարական տուրքի չափը և պոլսահայերին ազատեց «մեծ զրկանքներից»։

XVI—XVII դարերում Կ. Պոլիսը աշխույժ առևտրական կենտրոն էր դարձել։ Աշխարհագրական հարմարավետ դիրքը, գավառի հետ համեմատած «տանելի պայմանները», միջցեղային զինաբախումների բացակայությունը մայրաքաղաք էին ձգում հայ առևտրականներին, որոնք Հայաստանում, Իրանում դրամագլուխ դիզելով, գալիս էին դեպի Բոսֆորի ափերը, նախ ընդգրկվելու առևտրական ավելի գործոն ու լայն հարաբերությունների հորձանուտի մեջ, ապա և նոր հանգրվանը վաճառականական թելերով կապելու գավառներին, ինչպես և Պարսկաստանին, Ռուսաստանին, հեռավոր Հնդկաստանին, կամրջելու թուրք-եվրոպական ծովային ու քարավանային առևտուրը։

Հայ առևտրականներն այստեղ ունեին մեծ թվով խանութներ, առանձին շուկաներ, խաներ (իջևանատներ), վաճառանոցներ։ XVII դարում աչքի ընկնող և բազմամարդ իջևանատներն էին Խոջա խանը, ուր օթևանում էին հիմնականում Իրանից եկած հայ վաճառականները, Մահմուտ փաշա խանը, Ենիկյուրի խանը, Ջելետ խանը և Պեքիար օղլարը։ XVIII դարում հիշատակվում են նաև Վեզիր խանը, Վալիդե խանը, Ենի խանը։ Հայ առևտրականները հիմնականում իջևանում էին Խոջա խանում։ 1660 թ. Խոջա խանի այրվելուց հետո հայ վաճառականների հանգրվանավայրը դարձավ Ղալաթիայի առևտրական թաղամասը։

XV—XVI դարերում սակավ են հանդիպում վկայություններ խոջաների մասին, սակայն հաջորդ դարում սրանք այնքան են ուժեղանում, որ XVII դարը ոմանց կողմից «խոջայական կապիտալի ոսկեդար» է անվանվում։

Պոլսահայ առևտրական դասը XVII դարից սկսած խոջա պատվանունն էր կրում, որն ունենալով պարսկական ծագում և բազմաթիվ իմաստներ, գաղթավայրի այս շրջանի հայերի համար գործածվում էր բացառապես վաճառականի փոխարեն կամ փոխաբերությամբ։ Խոջաներն իրենց առևտրական գործունեությունն սկսել էին Իրանում, աստիճանաբար տարածվել Փոքր Ասիայում, մահմեդական Արևելքում, Ռուսաստանի հայ գաղթավայրերում։

Կ. Պոլսի հայ գաղութի խոջաներից XVII դարում հայտնի դեմքեր էին վանեցի խոջա Ռուհիջանը, երզնկացի խոջա Հովսեփը, խոջա Դավիթը, նրա որդի՝ արդեն չելեբի Գրիգորը, Բոլբուլի խոջա Աստվածատուրը, ակնցի խոջա Վահրամը, տիվրիկցի մահտեսի Վահրամը, խոջա Կիրակոսը, խոջա Նահապետը և շատ ուրիշներ։

Հայ մեծատուն խոջաներն ընդհանուր առմամբ հայ կոմպրադորական բուրժուազիայի նախորդներն էին, որոնք խարսխվելով Կ. Պոլսում, ջանում էին ազգի ներքին գործերը տնօրինող հիմնարկների մեջ տեղեր զբաղեցնել։ 1650-ական թվականներին արդեն սրանց ազդեցության տակ էր Ղալաթիայի

առևտրական թաղամասը՝ ս. Գրիգոր Լուսավորիչ եկեղեցով, որի «մեծաշուք իշխաններն ու ներսփոխաններն էին» խոջա Դանիելը, խոջա Մկրտիչը, խոջա Եղիան և ուրիշներ[12].

Խոջաներն իրենց գործարքները սկսել էին Հայաստանի քաղաքներում և, շատերը նեղվելով թուրք ու քուրդ ավազակախմբերի ասպատակություններից, չունենալով տարանցիկ առևտուր անելու հնարավորություններ, հարկադրաբար հանգրվանել էին առափնյա քաղաքներում։ Կ. Պոլիս գալով, նրանք չէին կարող միանգամից մոռանալ հայրենի բնաշխարհը, ժողովրդի սոցիալ-քաղաքական անտանելի ճնշումները, մանավանդ որ շարունակում էին առևտուր անել Հայաստանի վրայով։ Հետևաբար, նախքան չելեբիանալը, սուլթանի պալատում տեղեր գրավելը (որը ոչ բոլորին էր հաջողվում), գավառահայ գաղթական խոջաները ընդդիմադիր դիրքում էին տիրապետող խանա-փաշայական վարչակարգի նկատմամբ և շատերը նույնիսկ ժողովրդին ազատագրական պայքարի հանելու փորձեր էին անում։

Այլ էին գավառի հետ կապված, քարավանային առևտրով զբաղվող, առավել ևս գավառահայ վաճառականները։ Սրանք էին տոն տալիս XVII դարի հայ ազատագրական շարժմանը, արտահայտում ժողովրդական զանգվածների բաղձանքները, սակայն փրկության սպեղանի առաջադրելով ոչ թե համաժողովրդական զինված պայքարը, այլ տարաշխարհից ստացվելիք օգնությունը, կաթոլիկ Եվրոպայի կամ պապական Հռոմի միջամտությունը։

Կոստանդնուպոլսի հայկական գաղութի հիմնական դասը կազմում էին աշխատավորական զանգվածները, էսնաֆությունների (համքարությունների) մեջ համախմբված արհեստավորները, մանր ու միջին առևտրականները, օրավարձու մշակները, գավառից եկող պանդուխտները, այլ խոսքով՝ ներքնախավերը։

Հայտնի է, որ Մուհամադ Ֆաթիհով սկզբնավորված հայ բռնագաղթյալներից սուլթանները նախընտրում էին մայրաքաղաք բերել արհեստավորներին՝ սեփական ապարանքները զարդարելու, նորերը կառուցելու նպատակով։ Դրա հետևանքով աստիճանաբար Արևմտյան Հայաստանի ամենատարբեր գավառներից բերված, իսկ հետագայում նաև «կամավորապես պանդխտած» և մայրաքաղաքում կենտրոնացված հայ արհեստավորների մեծ մասը ստեղծեցին իրենց էսնաֆությունները։ Նրանք պանդուխտներին կռնակ տված, դարձան թուրքական անիշխանության առելությամբ նայող ամենաառաջավոր դասը մայրաքաղաքում, խուլ ձևով արտահայտեցին գավառի շահերը։ Սրանք այս շրջանում թույլ, հետագայում ավելի ուժեղ պայքարի մեջ մտան ամիրաների, սարաֆների, հայ վերնախավի հետ, ջանացին նրանց ձեռքից խլել ազգային գործերի ղեկը, դրանով իսկ հակադրվեցին նաև սուլթանական իրավակարգին։

Կ. Պոլսի հայ արհեստավորներից ամենահարգին ու սուլթաններին հարկավորները կառուցողներն էին, որոնց խալֆա էին անվանում։ XVII դարում հանրահայտ է դառնում Մուհամադ IV խան կոչվող սուլթանի արքունի ճարտարապետ բարբերդցի Գրիգոր խալֆան, որի փեսան՝ Պալի Պալյանը նախահայրն էր Պալյան կառուցող ճարտարապետ-ամիրաների, որդին՝ Մինաս խալֆա Պալյանը, որ կառուցեց Նուր-ի Օսմանիե մզկիթը, Ահմադ III-ի և Մահմուդ I-ի սիրելին էր։

---

[12] Տե՛ս Բ. Կյուլեսերյան, Հովհաննես Կոլոտ պատրիարք, Վիեննա, 1904, էջ 120։

*Հայ խալֆաները և արհեստավորները, որոնք համախմբված էին Պալյան ճարտարապետների շուրջը, XVII—XVIII դարերում Թուրքիայի մայրաքաղաքում կառուցեցին գեղեցիկ շինություններ. Սարայ Բուրնի պալատը (հրդեհված 1875 թ.), Պեշիկթաշի հին պալատը և բազմաթիվ այլ շքեղ պալատներ ու շենքեր, վերակառուցեցին Այա Սոֆիան և շատ այլ եկեղեցիներ, որոնք արդեն մզկիթի էին վերածված[13]։*

*Բազմամարդ ու ազդեցիկ էին նաև կղմինդրագործների (քիրեմիտչի), իշապանների, բաղանչիների հայկական էսնաֆությունները։ Կեսարացի հայերի պատրաստած ականներով էր թուրքական բանակը պայթեցնում պարիսպներ ու բերդեր[14]։ Թուրք ուղեգրողը, արհամարհանքով, բայց և այնպես հիշատակում է լաղմչիների էսնաֆության մասին, «աղտոտ դաս մը, որուն շնորհիվ է սակայն, որ Կ. Պոլիսը մաքուր կմնա»։ Հիշատակվում են XVII դարի հայ փորագրիչները, որոնց մեջ հայտնի են խաչատուր հայը՝ Ունքափանի մեջ, Այդըն հայը՝ Բեդեստանի մոտ։ Կային միություններ կազմած նվագողներ-ձեռնածուներ, ծաղրածուներ, երգիչներ, պարողներ, դափ խփողներ, որոնց, հույների և հրեաների հետ միասին, ընկերակցում էին նաև ճայեր[15]։*

*Կ. Պոլսի արհեստագործության մեջ, ինչպես սկզբնական շրջանում, առավել ևս XVIII դարում, ծաղկման հասավ ոսկերչությունը։ Հայ ոսկերիչները միաժամանակ թանկագին քարեր (մասնավորապես ադամանդ) մշակող լավագույն արհեստավորներ էին։*

*Եթե XVI—XVII դարերի հայ արհեստավորների ու արհեստավորական կազմակերպությունների մասին փաստերը սակավ են, ապա XVIII դարի երկրորդ կեսի աղբյուրները հաղորդում են, որ Կ. Պոլսի բազմահազար հայ արհեստավորությունն արդեն համախմբվել էր 65 էսնաֆությունների մեջ[16]։ Դրանցից կարևորներն էին՝ սեղանավորների, ոսկերիչների, հացագործների, ծաղկարարների, մուշտակագործների, դերձակների, պղնձագործների, հյուսների, գավաթագործների, խոհարարների, թուր շինողների, կոշկակարների էսնաֆությունները։ Էսնաֆական միություններ ունեին նաև բժիշկները, վարսավիրները, գրավաճառները, նպարավաճառները։*

*Կ. Պոլսի էսնաֆություններն ունեին դարավոր ավանդույթով սրբագործված կանոններ, ընտրում էին իրենց ղեկավար մարմինները, միասնաբար դիմագրավում վերահաս աղետները, ձեռք մեկնում աղքատին ու կարոտյալին, դժբախտության մեջ ընկնող հայրենակիցներին։ Էսնաֆները փաստորեն կազմում էին գաղութի հայ ազգաբնակչության ամենակենսունակ, ժողովրդի ճակատագրով հետաքրքրվող դասը, և ազգի ներքին գործերի տնօրինության փորձեր էին անում։ Համախմբելով գաղութի աշխատավորական զանգվածներին, սրանք ձգտում էին հակադրվել ունևոր վերնաշերտերին, ինչպես նաև սուլթանական բռնապետությանը և հենարան դառնալով առաջադեմ, գավառի ճակատագրով հետաքրքրվող վաճառականներին, փաստորեն սատար էին հանդիսանում հայ ազատագրական շարժմանը։*

*Կ. Պոլսի հայ գաղթավայրում XVI—XVIII դարերում տեղեր էին զբաղեցնում գավառահայերը՝ դրսեցիները, որոնք հարատև պայքարի մեջ էին արդեն*

---

13 Տե՛ս Գէորգ Մեսրոպ, «Հայկարան» («Պարբերագիրք»), Սոֆիա, 1931, Բ. մաս, Գեղարուեստ, էջ 253—254։

14 Տե՛ս «Էվլիա Չելեբի Սիյահաթնամեսի», Ա, 1314, (1898), էջ 515—516, 629—630։

15 Նույն տեղում, էջ 632, 645—648։

16 «Դիվան Հայոց պատմության», գիրք Ժ, Թիֆլիս, 1912, էջ 338։

տեղաբնիկներ դարձած, ներսեցի հորջորջում ստացածների հետ։ Գալիս էին Եվդոկիայից, Սեբաստիայից, Տիվրիկից, Կամախից և Արևմտյան Հայաստանի բազմաթիվ այլ շրջաններից։

XVII դարի կեսերին դրսեցիների թիվն այնքան ստվար էր, որ նրանց հարկերը դիզվելով հայրենի գավառների ազգաբնակչության վրա, վճարումն անհնար էր դառնում, ուստի պատվիրակներ էին գալիս Քյոփրյուլու եպարքոսի մոտ, խնդրում կամ գաղթողների գլխահարկը տեղում առնել, կամ էլ իրենց ազատել նրանց փոխարեն հարկեր վճարելու պարտականությունից։ Գնալով պանդուխտների թիվը շատացավ և եղան պահեր, երբ 50 հազարի հասավ, սակայն միշտ պահելով դրսեցի մականունը, միշտ պայքարի մեջ մնալով գաղութի ներսեցի կոչվող հայ վերնախավի հետ։

Այսպիսով, Կ. Պոլսի մարդաշատ հայ գաղութը միջնադարում սոսկ մի գաղութ չէր, այլ «տեսակ մը հայ աշխարհ հայ հողեն հեռու, որ բազկերակը պիտի դառնար պահ մը հայ կյանքին, երբ ամեն ինչ խամրեր էր հայ հողին վրա,—գրում է Հ. Սիրունին,—խճանկար մը պիտի դառնար պահ մը ան, ուր պիտի գային բոլոր հայ գավառները, իրենց բարքերը բերել, իրենց ավանդությունները, հետքեր իրենց ընտանեկան սովորություններեն, իրենց բարբառներ»[17]։ Կ. Պոլիսը դառնում էր նաև արևմտահայ մշակույթի նշանավոր կենտրոններից մեկը։

Մայրաքաղաքի մշակութային հորդահոս շարժումը հարկավ վերապահված էր հետագա հարյուրամյակին՝ XIX դարին։ Սակայն XVIII դարում էլ այստեղ կային մշակութային հիմնարկներ, տպարաններ, դպրոցներ, որոնք որակ են կազմել՝ համեմատած խավարապատ Թուրքիայի ու նրա կազմի մեջ մտնող Արևմտյան Հայաստանի լուսակարոտ իրավիճակին։

Հայերի աշխարհիկ դպրոցը Կ. Պոլսում սկիզբ առավ XVIII դարի վերջերին, երբ սուլթան Սելիմը 1789 թ. արտոնեց հայոց պատրիարքարանին եկեղեցիներին կից դպրոցներ բացել։ Առաջին դպրոցը բացվեց Գում-Գաբուում՝ մայր եկեղեցուն կից[18]։

Դպրոցական տարածուն ցանցի բացակայությունից և ժողովրդի ապրելակերպի դժնդակ պայմաններից օգտվելով, եվրոպացիները՝ կաթոլիկներ ու բողոքականներ, Կ. Պոլսում հիմնում են իրենց դպրոցները, աղգապառակտիչ սերմեր ցանում բազմամարդ այս գաղթավայրում։

Կ. Պոլսի գաղութում ծաղկում էր ապրել հայ տպագրությունը։ Առաջին տպարանն այստեղ հաստատեց Աբգար դպիրը, 1567 թ., որը տպագրեց հինգ գիրք, սրան հաջորդեց հարյուրամյա դադարի շրջանը, մինչև Հրապարակ կիջներ նշանավոր բանասեր Երեմիա Չելեպի Քյոմուրճյանը և կհիմներ իր տպարանը, որն ընդամենը երկու տարվա կյանք ունեցավ և տպագրեց երկու գիրք։

Սրանից քսան տարի անց Գրիգոր Մարզվանցին հիմնում է իր տպարանը և 45 տարիների ընթացքում տպագրում 14 անուն գիրք։ Հետագա տարիներին Կ. Պոլսի հայկական տպարանների թիվը հասնում է շուրջ 25-ի։ Հատկանշական է, որ կրոնա-բարոյագիտական երկերի կողքին տպագրվում են պատմական գործեր, ողբերգություններ, թարգմանություններ։ Գրատպությունը սկսում է մտնել պոլսահայ կենցաղի մեջ։

[17] «Էջմիածին», 1963, Ա, էջ 32։

[18] Վ. Ս. Եկտոնյան, Հայկական դպրոցը 1800—1870 թթ., «Լրաբեր», 1971, № 4, էջ 40։

Այսպիսով, XV—XVIII դարերի պոլսահայ մարդաշատ ու կենսունակ գաղթավայրը դարձել էր ոչ միայն տնտեսական, այլև մշակութային ակնառու կենտրոն, որի զարգացման բարձրակետը վերապահված էր նոր պատմաշրջանին։

* *
*

Կոստանդնուպոլսից հետո Թուրքիայի տնտեսապես զարգացած մյուս կենտրոնը Զմյուռնիան էր (Իզմիրը)։ Մոտավորապես երեքհազարամյա հնություն ունեցող այդ քաղաքը ձգվում էր ծովի ափերով, եզերվում էգեյան ծովախորշով, առևտրական ու տնտեսական կապերով առնչակցվում ինչպես եվրոպական Արևմուտքին, այնպես էլ ասիական Արևելքին։

Լանկ-Թամուրի արշավանքից ավերված, բնակչության կեսից ավելին կորցրած Զմյուռնիան, 1419 թ. գրավվեց օսմանյան թուրքերի կողմից, սակայն վերջիններս չկարողացան անմիջապես հաստատուն խարիսխ նետել այդտեղ։ Կարճ ժամանակամիջոցում, Կ. Պոլսից ու այլ տեղերից ճողոպրած հույները համախմբվեցին էգեյան ջրերի ափերին, դիմագրավեցին թուրքական վայրագությունները և ընկան միայն ձևական կախվածության մեջ։ Զմյուռնիայի կիսանկախ վիճակը վերջնականապես վերացվեց 1624 թ., երբ թուրքական զորամիավորումները արյունահեղությամբ, ավերածություններով վերանվաճեցին այն և տեղակայեցին կառավարական զորքեր։

Զմյուռնիայի աշխարհագրական հարմարավետ դիրքը և համեմատաբար տանելի քաղաքական ու տնտեսական պայմանները վաղուց ի վեր դեպի քաղաքն էին ձգել նաև հայ գաղթականներին։ Հայերի մասին վկայող առաջին փաստաթուղթը 1261 թ. Միքայել Պալեոլոգ կայսեր և ճենովացիների միջև կնքված դաշնագիրն է, որի մեջ հույների կողքին հիշվում են նաև հայ «հաջողակ վաճառականները»[19]։ Հին գերեզմանաքարերի վրա մնացած արձանագրությունները, ժողովրդի խոսակցական լեզվի ու բառապաշարի մի մասն ապացուցում են, որ հայերը Զմյուռնիա են գաղթել Հայաստանի արևելյան հատվածից՝ սկսած XI և XII դարերից[20]։

XIV դարի վերջին՝ Կիլիկյան թագավորության կործանումից հետո, Զմյուռնիան ավելի հայաշատ դարձավ։ Կիլիկիայից արտագաղթած հազարավոր հայ գերդաստանների մի մասը հաստատվեց Հռոդոսում, Կրետեում, Կիպրոսում, Իտալիայում, մի մասն էլ հանգրվանեց այստեղ։ 1605 թ. շահ Աբբասը ավերեց Արարատյան դաշտը, բռնագաղթեցրեց հայերին և քշեց Իրանի խորքերը։ Արևելահայերի, մասնավորապես երևանցիների, նախիջևանցիների ու ղարաբաղցիների 500-ից ավելի ընտանիքներ հետագայում խարիսխ գցեցին Զմյուռնիայում։ Սակայն ամենախոշոր գաղթը եղավ XVIII դարում՝ Աղա-Մուհամադ խանի արշավանքից հետո։ Այս անգամ քաղաք էին գալիս կարբեցիներ, օշականցիներ, աշտարակցիներ, և գաղթօջախի հայերի թիվը հասնում է 12 հազարի։

Քաղաքի ընդհանուր ազգաբնակչության թիվը հաստատուն չի եղել։ Երկրաշարժերը, պարբերաբար կրկնվող հրդեհները հաճախակի կործանում էին փայտաշեն Զմյուռնիայի ամբողջ թաղամասեր, հազարավոր ընտանիքներ

---

[19] Տե՛ս Ա. Ալպոյաճյան, Զմյուռնիո տպարանները, «Պատմա-բանասիրական հանդես», 1964, № 2, էջ 68։

[20] Տե՛ս «Բիւզանդիոն», № 2326, «Արևելք», № 4558։

հեռանում էին այլ վայրեր, պակասում էին քաղաքաբնիկները, նորից համալրվում գաղթական եկվորներով։ 1631 թ. զմյուռնիացիների թիվը 90 հազարի էր հասնում, որից 8 հազարը՝ հայեր[21], 1731 թ.՝ 76 հազար, որից 7 հազարը՝ հայեր, 1772 թ.՝ 102 հազար, 6 հազարը՝ հայեր, 1800 թ.՝ 104 հազար, 12 հազարը՝ հայեր[22]։

Գաղթօջախի հայերը տարբեր զբաղմունքներ ունեին և տրոհված էին մի քանի դասերի ու խմբերի։ Ի տարբերություն Կ. Պոլսի, Զմյուռնիան չկարողացավ տալ ամիրաների և սեղանավորների այն հսկա թիվը, որը 200 տարի շարունակ մեծ դեր կատարեց իր ազդեցությունը տարածելով տնտեսական կարևոր գերատեսչությունների վրա։ Սակայն այստեղ էլ կային փոքրաթիվ հայ ամիրաներ, խոշոր հողատեր-կալվածատերեր, բազմաթիվ խանութատերեր։

Գաղութի մյուս դասը արհեստավորությունն էր, որը, սակայն, այնքան էլ մեծ թիվ չէր կազմում ընդհանուր ազգաբնակչության համեմատ։ Հայ արհեստավորներից հայտնի էին նուրբ ոսկերիչները, հմուտ գորգագործները, դարբինները, ներկարարները, մետաքսագործները)։ Վերջիններս բավարարում էին ոչ միայն քաղաքի բնակչության պահանջները, այլև մեծ համբավ ունեին Եվրոպայում ու Ռուսաստանում։

Տակավին 1717 թ. հունվարի 28-ին Պետրոս Մեծը Զմյուռնիայից Մոսկվա հրավիրեց Պետրոս Ապրոյին և նրա եղբայրներին, արտոնություններ ու նյութական հնարավորություններ տվեց նրանց, հանձնարարելով մետաքսագործական արհեստանոց բացել և ռուսներին սովորեցնել այդ արհեստը[23]։

Քաղաքում գործում էին չթագործական արհեստանոցներ։ Արտադրանքը ներկվում էր, գունազարդվում տեղի բասմախանաներում և դուրս բերվում օտար շուկաներ։ Հայերն ունեին տասից ավելի այդպիսի արհեստանոցներ և ստեղծում էին ծաղկանկար այնպիսի վերնաշապիկներ, վարագույրներ, սեղանի սփռոցներ, որոնք շլացնում էին նույնիսկ եվրոպացիներին։ 1790 թ. հիմնըվեց բասմայի մեծ գործարան։ Այստեղ աշխատում էին 400-ից ավելի հայ բանվորներ, որոնք ներկում ու ծաղկանկարում էին կտավը[24]։

Զմյուռնիայում կային օրամշակ բանվորներ, հազարավոր պանդուխտներ, հողագործության հետ կապված ագարակատերեր, սակայն այդ բոլորով հանդերձ քաղաքը մնում էր հայ վաճառականների խոշոր կենտրոն և ունևոր, թվաշատ ու անվանի հիմնական դասը առևտրականներն էին։ Տակավին XVII դարում Զմյուռնիան Օսմանյան կայսրության ամենախոշոր վաճառաշահ քաղաքներից էր։

Քաղաքի վաճառականական կապիտալի ծաղկմանը նպաստում էր աշխարհագրական դիրքը։ Համաշխարհային վաճառականության մեջ Զմյուռնիան, մինչև Սուեզի ջրանցքի բացումը, պահում էր առևտրական հանրաճանաչ կենտրոնի իր դերը։ Ասիայից ապրանքները՝ գյուղատնտեսական մշակված ու անմշակ մթերքները, ցամաքային քարավաններով բերվում էին Զմյուռնիա և նավերով ուղարկվում Վենետիկ, Ամստերդամ, Եվրոպական մյուս քաղաքները։ Ասիայի խորքերից եկող քարավաններն անցնում էին Հայաստանով և հիմնա-

[21] Տե՛ս Հակոբ Վ. Քոսյան, Հայք ի Զմյուռնիա և ի շրջակայս, հատ. 1, Զմյուռնիա, 1899, էջ 43։

[22] Տե՛ս ՀՍՍՀ ՊՊԿԱ, ֆոնդ 57, գործ 9, թերթ 113—114։

[23] Տե՛ս «Հայք ի Զմյուռնիա և ի շրջակայս...», էջ 32—33։

[24] Տե՛ս «Տեղագրութիւնք ի Փոքր և Մեծ Հայս», Վենետիկ, 1864, էջ 10։

կանում առաջնորդվում էին հայերի կողմից։ Արաքսի հովիտը հնդկական ապրանքների և պարսկական արտադրության փոխադրության ճանապարհն էր։ Զմյուռնիայի հայերի մի մասը վերաբնակված էր Արարատյան երկրից. այժմ նրանք իրենց ձեռքն էին կենտրոնացնում այդ առևտուրն ու փոխանակությունը։ Ակնհայտ է, որ քաղաքի հայ վաճառականների առևտուրը դուրս էր գալիս տեղական շրջանակներից, կապվում օտար շուկաների հետ։

Զմյուռնիայի հայ վաճառականները ներմուծում էին անգլիական բամբակյա և բրդյա նուրբ գործվածքներ, ֆրանսիական ու շվեյցարական մետաքսեղեն, ավստրիական ապակեղեն և շաքար, եգիպտական բրինձ, ռուսական կարագ ու նավթ, իտալական զենքեր։ Քաղաքը դառնում էր մի տեսակ մառան, որն ընդունում էր եվրոպական ապրանքներ, բաժանում ասիական մարզերին, հանգրվան տալիս արևելյան քարավաններին, փոխադրում նրանց բեռները և կազմակերպում վաճառքը[25]։ Շ. Մոնտեսքյոյի վկայությամբ Զմյուռնիայից ամեն օր հայկական քարավաններ էին ուղևորվում Պարսկաստան և ասիական մայր ցամաքի այլ երկրներ։ Միջերկրական ծովով Զմյուռնիայի հայ վաճառականները կապված էին եվրոպական երկրների հետ[26]։

Զմյուռնիան միաժամանակ արևմտահայ մշակույթի կարևոր կենտրոնն էր, երկրորդը Թուրքիայում՝ Կ. Պոլսից հետո։ Այստեղ կային տպարաններ, Մեսրոպյան վարժարան, նախակրթական դպրոցներ, ազգային հիվանդանոց։

Կ. Պոլսից ու Զմյուռնիայից բացի, դեռևս VIII—X դարերում հայկական ստվար համայնքներ էին ստեղծվել Փոքր Ասիայի մի քանի գավառներում, որոնք նոր համալրումներ էին ստանում Արևմտյան, նույնիսկ Արևելյան Հայաստանից։ Այդ եկվորները հիմնականում արհեստավորներ ու առևտրականներ էին՝ բռնագաղթեցված հայրենի երկրից։ Հայ արհեստավորներին բռնագաղթեցրին մասնավորապես դանիշմանդների տիրապետության շրջանում։ Սելջուկյան սուլթան Սուլեյման իբն Գութլիմիշը (1075—1086) աշխարհավեր իր արշավանքների ժամանակ, որոշ արտոնություններ տալով հայ «շնորհալի» ղանգվածին, տեղակայեց նոր մայրաքաղաք Գոնիայում, նրանց ձեռքբերով կառուցեց ու շքեղազարդեց իր նստավայրը։

Դեպի Փոքր Ասիա սփռվող հայկական զանգվածը մարդաշատ դարձավ և նոր օջախներ ձևավորեց XIV—XV դարերում։ Կիլիկիայի հայկական թագավորության բարձումից հետո Սսից, Այնթապից, Մարաշից ու Տարսոնից հազարավոր հայ գերդաստաններ հեռացան և ապրելու ու գոյատևելու հարմարավետ օջախներ փնտրեցին աշխարհի տարբեր ծայրերում։ Նրանց մի մասը հաստատվեց Փոքր Ասիայի բյուզանդապատկան քաղաքներում, որոնք շուտով նվաճվելու էին ասիական բեմահարթակ իջած օսմանյան թուրքերի կողմից։

XIV—XV դարերում Ագուլիսից, Նախիջևանից, Ջուղայից, Երևանից, Կարսից հայ գերդաստաններ են արտագաղթում և բնակություն հաստատում հատկապես այն քաղաքներում, որոնք ընկած լինելով քարավանային գլխավոր ճանապարհների վրա, կարևոր դեր էին կատարում միջազգային առևտրում. այդ քաղաքներից էին Անկյուրիան, Բուրսան, Սիվրի-Հիսարը, Ակշեհիրը և այլք։ XV դարի վերջերին հայկական մարդաշատ գաղթօջախներ կային նաև Կուտինայում (Քոթահյա), Պուրտարում, Ասարլըգում, Թավշանլըըում և այլ

[25] Տե՛ս «Տեղագրութիւն ի Փոքր և ի Մեծ Հայս», էջ 10։
[26] Տե՛ս Шарль Монтескье, Персидские письма, 1936, էջ 59:

*տեղերում։ Սրանցից ամենավաղը հայկական տարր ընդունեց Ադրիանապոլիս (Էտիրնե) քաղաքը։*

*Տակավին բյուզանդական տիրապետության վերջին տասնամյակներին Ադրիանապոլսում հաստատվել էր հայ եպիսկոպոսություն։ 1316 թ. հայոց առաջնորդարան էր հիմնվել Անկյուրիայում, իսկ XV դարից նույն իրավունքներով հայոց առաջնորդարաններ կային Բուրսայում և Կուտինայում։ «Առաջին հայերը, որոնք Պոլիս մտան թուրքերուն կողմեն գրավելեն հետո,— գրում է Հ. Սիրունին,— բնականաբար Պուրսայեն և Էտիրնեեն էին։ Օսմանյան կայսրության երկու նախկին մայրաքաղաքներն ալ հայ համայնքներ ունեին Պոլսո գրավման ատեն»[27]։ Թուրքական աղբյուրներին քաջածանոթ Ֆրանց Բաբինգերը ի մի բերելով Թուրքիայի հայ գաղթավայրերի մասին եղած հակասական տվյալները, գրում է, որ մինչև 1478 թ. «Կը թվի, թե բավական կարևոր հայ գաղութ մը կապրեր Պրուսիայի մեջ, ուր իր ապրուստը կշահեր վաճառականությամբ։ Այլապես, Ղալաթիո թաղին մեջ էր, որ կարելի էր գտնել հայության ստվար թիվ մը. հոն ճարպիկ առևտրականներ էին անոնք և այդպես էլ մնացին մինչև մեր օրերուն։ Թուրքիո մնացյալ մասին, մասնավորապես Ռումելիի շրջանին մեջ, անոնք բացառապես կապրեին ամենակարևոր քաղաքները, ինչպես Ադրիանապոլիս, Փիլիպպոպոլիս, Վառնա և ծովափնյա նավահանգիստները։ Անոնց թիվը դժվար թե կես միլիոնը անցած ըլլա. Ֆաթիհի շրջանին պետք է եղած ըլլա շատ ավելի նվազ»[28]։*

*Ադրիանապոլսի հայկական գաղութը գնալով բարգավաճեց։ Այստեղ իրենց ամառանոցներն ունեին Կոստանդնուպոլսի հայ երևելիները, խոջաներն ու չելեբիները, որոնց շուրջը աստիճանաբար խմբվում էին արհեստավորներ, պարտիզպաններ, մանրավաճառներ։ Քաղաքում հիմնվեց առանձին հայաբնակ թաղամաս։ XVII դարի վերջին Ադրիանապոլսում հայ բնակիչները կազմում էին 250 տնտեսություն, իսկ XVIII դարակեսին սրանց թիվը հասնում է 314-ի։*

*1453 թ. հոկտեմբերի 28-ին Մուհամադ Ֆաթիհի հրամանով Անկյուրիայից մի խումբ հայեր, որոնց գլխավորում էին չորս հայտնի վաճառականներ, գաղթեցվեցին Կ. Պոլիս։ Աբրահամ Անկյուրացու վկայություններից եզրակացնում ենք, որ նշանավոր այդ քաղաքում եղել է հայաշատ գաղութ, որը հետագայում էլ չի մարել և գնալով փարթամացել է։ 1464 թ. ընդօրինակված մի ձեռագրի հիշատակարանից պարզվում է, որ «Հայոց ՋԺԳ (1464) ապրիլ ամսոյ ԻԲ (22) եղև վերափոխումն տէր Ներսէս եպիսկոպոսի Անկիւրիոյ»[29]։ Ուրեմն XV դարում Անկարայում ևս հայ եպիսկոպոս է նստել։*

*Հայաբնակ բազմաթիվ գյուղեր կային նաև Ղարամանիայում[30]։*

*1487 թ. մարդահամարի համաձայն Տրապիզոնում եղել են 226 տուն մահմեդական, 734 տուն հույն, 129 տուն հայ, 23 տուն ճենովացի[31]։ Հետագա դարերում հայկական տարրը ավելի ուժեղացավ Տրապիզոնում և նույնիսկ օտարները նրան «հայաքաղաք» կոչեցին։ Վաճառաշահ այդ քաղաք տեղափոխվողները հիմնականում Բաբերդի, Համշենի և Սյուրմենեի շրջաններից էին։ XVIII դարի վերջին Տրապիզոնում շուրջ 800 ընտանիք հայեր էին ապրում․*

[27] Հ. Սիրունի, *Պոլիս և իր դերը, հատ. 1 (1453—1800), Պեյրութ, 1965, էջ 117։*

[28] *Նույն տեղում, էջ 178։*

[29] Լ. Խաչիկյան, *ԺԵ դարերի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, մասն Բ, էջ 216։*

[30] Տոքթ. Վ. Թորգոմյան, *Յիշատակարան Ամիրտոլլաթայ Սաղմոսին, «Հանդէս ամսօրեայ», օգոստոս, 1895, էջ 247։*

[31] *Տե՛ս* Հ. Սիրունի, *նշված աշխատությունը, էջ 188։*

Հայկական գաղթավայրեր էին հաստատված նաև Կիպրոսում, Ջմյուռնիայի մերձակա շրջաններում, Այտընի փաշայության մեջ և Օսմանյան կայսրության այլ շրջաններում։

## 2. ՍԻՐԻԱՅԻ ԳԱՂԹՕՋԱԽՆԵՐԸ

Կիլիկիայի հայկական պետության կործանումից հետո հայկական հոծ զանգվածներ ապաստան գտան նաև Սիրիայում, աշխուժացնելով այդտեղ արդեն գոյություն ունեցող հայկական գաղթօջախները, որոնք XV—XVII դարերում վերելք ապրեցին՝ կապված միջազգային առևտրական հարաբերություններում սիրիական քաղաքների դերի բարձրացման հետ։

Ոսկե Հորդայի և Իլխանության պատերազմները, ինչպես և Կոստանդնուպոլսի, Տրապիզոնի, Ղարամանիայի գրավումը նպաստեցին այն բանին, որ Արևմուտքի և Արևելքի միջև տարանցիկ առևտրի Կասպից ծով—Աստրախան—Ազով ուղին փոխարինվի Թավրիզ—Հալեպ ուղեգծով։ Թավրիզից դեպի Հալեպ ամենակարճ և բանուկ ճանապարհն անցնում էր Հայաստանի Բերկրի, Արճեշ, Արծկե, Խլաթ, Բաղեշ քաղաքներով։ Բաղեշից դեպի Հալեպ կամ Եդեսիա ճանապարհը երկփեղկվում էր, մեկը գնում էր Նփրկերտի և Ամիդի, մյուսը՝ Հիսն-Կեֆի և Մերդինի վրայով։ Օգտագործվում էր նաև Թավրիզից Էրզրում, Երզնկա, Սեբաստիա, Հալեպ ճանապարհը։ Հալեպից դեպի Միջերկրական ծով դուրս էին գալիս երկու ճանապարհ, առաջինն անցնելով Համայից, Հոմսից և Դամասկոսից հասնում էր Տրիպոլի, իսկ երկրորդը՝ Անտիոքի և Բեյլանի վրայով՝ Ալեքսանդրետի նավահանգիստը։ Այդ ճանապարհների տարբեր հանգրվաններում և նրանց հարող շրջաններում գտնվող հայկական գաղթօջախները հասան զարգացման բավական բարձր աստիճանի։

Իր թվով և կարևորությամբ նշանակալից էր հատկապես Հալեպի գաղութը։ XIV դարի կեսերից Հալեպում կային փոքրաթիվ հայեր։ Նրանք կազմակերպել էին ուրույն համայնք, որի գլուխ կանգնած էր տանուտերը կամ ռեյիսը։ XV դարում Հալեպի առևտրական նշանակության մեծանալու հետ մեկտեղ զարգացավ նաև հայկական գաղութը։ Կառուցվեց ս. Աստվածածին եկեղեցին և գաղութը օժտվեց եկեղեցա-վարչական իշխանությամբ։ Մինչև դարավերջ Հալեպ ժամանող առևտրականները և Հալեպի վրայով Երուսաղեմ ուխտի գնացողներն այնքան բազմացել էին ու հայերի թիվն այնքան էր աճել, որ կառուցվեց նաև մի նոր եկեղեցի (ս. Քառասուն մանկանց), առաջնորդարան, ինչպես և հյուրատուն, ուր կարող էին օթևանել առևտրականների և ուխտավորների քարավանները։

XVI—XVII դարերում Հալեպի հայկական գաղութը բազմամարդացավ Ջուղայից, Երևանից, Ղարաբաղից, Էրզրումից, Բաղեշից, Սեբաստիայից, Ակնից, Մալաթիայից, Սասունից, Արաբկիրից, Ամիդից, Տիգրանակերտից, Մարդինից, Ուրֆայից և այլ վայրերից գաղթած ամենատարբեր զբաղմունքի տեր հայերով։ 1616 թ. Հալեպում բնակվող հայերի թիվը հաշվվում էր շուրջ 300 տուն[32], իսկ 1652 թ. նրանց թիվը հասել էր ավելի քան 20 հազարի[33]։ XVII դարի վերջերից, երբ Հալեպը աստիճանաբար զրկվեց միջազգային առևտրի խոշոր կենտրոն լինելու իր դիրքից, հայկական գաղութն անկում ապրեց։

---

[32] Սիմեոն Լեհացի, էջ 220։

[33] Տե՛ս «Documents Inédits pour servir a l'histoire du Christianisme en Orient (XVI—XIX)», London, 1907, t. I, էջ 54։

*1745 թ. այնտեղ կային 200 հազար մուսուլմաններ, 5 հազար հրեաներ և 30 հազար քրիստոնյաներ, այդ թվում՝ 13000 հույներ, 6720 հայեր, 3750 ասորիներ և այլն[34]։*

*Հայկական հոծ գաղութներ կային Հալեպից դեպի Ալեքսանդրետ ձգվող առևտրական ճանապարհի տարբեր հանգրվաններում։ Անտիոքը, Բեյլանը և Ալեքսանդրետը բնակեցված էին զգալի թվով հայերով։ Բեյլանը եպիսկոպոսական թեմ էր և որպես այդպիսին մնաց ընդհուպ մինչև XVIII դարի վերջերը։ Համարյա ամբողջովին հայաբնակ էին Սվեդիան և նրա գյուղերից Յողուն-Օլուկը, Խդրբեկը, Հաջի-Հաբիբլին, Վաքըֆը, Կաբուսիեն և Բիտիասը։ Հայաբնակ էին նաև Քեսաբը և նրա գյուղերը՝ Կարադուրանը, Կորկունը, Ջակալջըքը, Ցինարջըքը, Կայաջըքը, Բաղչաղազը և այլն։ Ոչ քիչ թվով հայեր ապրում էին նաև մերձակա արաբական, ալավիտական և թուրքմենական գյուղերում։*

*Հարավային Սիրիայի տարբեր քաղաքներում կազմավորված հայկական գաղութները XVII դարից անկում ապրեցին այն բանի հետևանքով, որ լքվեց Հալեպ—Դամասկոս—Տրիպոլի առևտրական ճանապարհը։ Դամասկոսի հայկական գաղութի բարգավաճ անցյալի մասին վկայում են XV—XVI դարերում կառուցված ս. Սարգիս վանքը, համանուն եկեղեցին, ինչպես և հյուրատունն ու վանքապատկան ընդարձակ կալվածները։ XVII դարի սկզբներին Դամասկոսում մնացել էին այդ հաստատություններում ծառայող սակավաթիվ կղերականներ և մի քանի տուն հայեր։ Հետագայում Դամասկոսի ուխտավորական կայան դառնալը նպաստել է գաղութի թվական աճին և հասարակական կյանքի աշխուժացմանը։ Վկայություններ կան, որ Դամասկոսի հայերը, չհանդուրժելով Երուսաղեմի հայ կղերի միահեծան իշխանությունը, հանդես են բերել ինքնավարական ձգտումներ, փորձել են գրավել վանքապատկան կալվածները։ Գրիգոր Շղթայակիրը հատուկ կոնդակով (1748 թ.) ազդարարել է Դամասկոսի հայերին, որ տեղի կալվածները կազմում են Երուսաղեմի պատրիարքության սեփականությունը, և սպառնացել է պատժիչ միջոցներ գործադրել անհնազանդների դեմ[35]։*

*Լաոդիկեի (Լաթակիա) երբեմնի բարգավաճ հայկական գաղութը, որը ձուլվելու և արտագաղթի հետևանքով թուլացել էր, վերստին աշխուժացավ XVIII դարում, հատկապես երբ այդ քաղաքը Երուսաղեմ ուխտի գնացողների կայան դարձավ՝ Հալեպի և Դամասկոսի միջև։ 1756 թ. Լաոդիկեում կառուցվել է հյուրատուն, իսկ 1776 թ. ս. Աստվածածին եկեղեցին։ Հայկական բնակչություն կար նաև Լաոդիկեի մերձակա գյուղական վայրերում։*

*Կիլիկիայի հայկական պետության կործանումից հետո Տրիպոլի քաղաքը, Ղազիրի շրջանը և Ջունի, Զղարդա, էհդին գյուղերն ընդունեցին բավական թվով հայ գաղթականներ, որոնք, սակայն, ժամանակի ընթացքում մեծ մասամբ ձուլվել են տեղական քրիստոնյա բնակչության հետ։ Դեպի Լեռնային Լիբանան վերստին հայերի հոսանք է սկսվել XVII դարի կեսերից, երբ քրիստոնյա ֆեոդալները, ձգտելով իրենց կիսանկախ իշխանության ամրապնդմանը, ապաստան էին տալիս օսմանյան լծի ներքո քաղաքական և կրոնա-դավանական հալածանքի ենթարկված քրիստոնյաներին։ XVIII դարում զգալի թվով կաթոլիկ հույներ, ասորիներ և հայեր գաղթել էին Լեռնային Լիբանան։*

[34] *Տե՛ս A. Russell,* The natural history of Aleppo, London, 1794, t. II, *էջ 26։*

[35] *Տե՛ս* Տ. Սավալանյանց. *Պատմություն Երուսաղեմի, հատ. 2, Երուսաղեմ, 1931, էջ 738—739։*

Կեսրվանի ֆեոդալ շեյխ Խաղինը գաղթականներին տալիս էր հող և գրամ, որպեսզի նրանք մշտական բնակություն հաստատեն իր տիրույթներում[36]։ Հայ կաթոլիկները կառուցել են վանքեր ու եկեղեցիներ Զմմառում, Աշխուդում և այլ վայրերում։ Նրանց մի մասը ժամանակի ընթացքում ձուլվել է։ Հայկական ծագում ունեն մինչև օրս գոյատևող Բեյթ-Արմանի, Բեյթ-Բիտար, Բեյթ-Ջուեյն, Բեյթ-Մուրատ և այլ հայտնի գերդաստանները։

Սիրիայում հայերը, տեղական քրիստոնյաների նման, ունեին կրոնահամայնքային թեմական կազմակերպություն։ Հյուսիսային Սիրիայի հայկական թեմերը (Հալեպ, Բեյլան և այլն) վարչականորեն ենթարկված էին Կիլիկիայի կաթողիկոսությանը, իսկ Լաոդիկեն և Դամասկոսը ուղղակի կախման մեջ էին Երուսաղեմի հայոց պատրիարքարանից։ Պատրիարքի նշանակած վեքիլ-վարդապետները զբաղվում էին հոգևոր և ուխտավորների գործերով, հոգում եկեղեցու և հավատացյալների կարիքները։ Հյուսիսային թեմերի գլուխ կանգնած էին Սսից ուղարկված թեմակալ առաջնորդները, որոնք աշխարհական խորհրդականների աջակցությամբ վարում էին համայնքային գործերը։ Խորհրդականները նշանակվում էին հայ մեծատուններից։ XVI դարի վերջերից հաստատված կարգի համաձայն, ինչպես մյուս համայնքները, այնպես էլ հայերը պարտավոր էին քաղաքային իշխանության մոտ ունենալ իրենց աշխարհական վեքիլը կամ ներկայացուցիչը, որը հաստատվում էր վիլայեթի փաշայի կողմից։ Վեքիլի գլխավոր պարտականությունն էր հայ համայնքից պետական հարկերի գանձումը։

Հայերը կարևոր դեր էին կատարում Սիրիայի միջազգային տարանցիկ առևտրի, ապրանքափոխանակության և արհեստագործության մեջ։

Թուրքերի կողմից Կոստանդնուպոլսի գրավումից հետո Հալեպը դարձավ առևտրական խոշոր հանգույց, որտեղ անմիջական շփման մեջ էին մտնում եվրոպական և ասիական առևտրականները։ Վենետիկի, Ֆրանսիայի, Հոլանդիայի, Անգլիայի և այլ երկրների առևտրականները Հալեպում էին կատարում իրենց գործարքները, այնտեղ էին փոխանակում իրենց մահուդն արևելյան ապրանքների հետ։ Հալեպի առևտրական նշանակությունն է՛լ ավելի բարձրացավ 1535 թ., երբ ֆրանս-թուրքական առևտրի և բարեկամության պայմանագիրը եվրոպական առևտրականների առջև լայնորեն բացեց թուրքական՝ ներառյալ Սիրիայի նավահանգիստները։ Հալեպում, Ալեքսանդրետում, Տրիպոլիում և այլ քաղաքներում հաստատվեցին եվրոպական տարբեր երկրների առևտրական մնայուն գործակալություններ, որոնք օգտվում էին հիմնականում հայ խոջաների միջնորդությունից։

XVI դարի Հալեպը հայերեն ձեռագրերում հորջորջվում է «մեծ մայրաքաղաք» և հիշատակվում Արևելքի խոշորագույն շուկաների շարքում։ Գովերգելով իր հայրենի քաղաքը, Ստեփանոս Թոխաթեցին գրել է.

Վաճառականք, ճանապարհորդք
Գնային Շիրվան եւ Շամախի
Շամ 'ւ Հալապ 'ւ Ցըստամպոլի
Պուռսայ եւ այլ բազում տեղի[37]։

---

[36] Տե՛ս A. K. Sanjian, The Armenian Communities in Syria under ottoman dominion. Cambridge, 1965, էջ 60։

[37] Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 2672, էջ 401բ։

Վենետիկցի ականավոր առևտրական Ֆրիդրիխը, պատմելով Հալեպի շուկայում 1563 թ. հանդիպած առևտրականների մասին, առաջին հերթին հիշատակում է ջուղայեցի խոջաներին, նրանց անվանելով «Հայաստանցի վաճառականներ»։ Հալեպի հայոց գերեզմանատանը XVI դարից պահպանված 14 տապանաքարերից 13-ը Հին Ջուղայից Հալեպ քաղաքում «ղարիպ մնացած» խոջաներինն են[38]։ Ջուղայի բռնագաղթից հետո Հալեպում էլ ավելի բազմացան ջուղայեցի առևտրականները։

Հալեպի հայ խոջաներն ամենից ավելի աշխույժ կապերի մեջ էին եվրոպական առևտրական կապիտալի առաջամարտիկ Վենետիկի հետ։ Կան բազմաթիվ վկայություններ վենետիկցիների հետ համագործակցող հալեպահայ խոջաների և նրանց գործարքների մասին։ Վենետիկում հաճախ քննարկվել են հայ խոջաների բողոքները և ընդունվել համապատասխան որոշումներ։ 1534, 1537, 1541, 1567, 1574 և հետագա տարիներին Վենետիկի հանրապետությունը իրավացի համարելով հայերի պահանջը, նրանց ազատել է մի շարք հարկերից ու մաքսերից։ Իսկ 1588 թ., երբ Հալեպում հայ խոջաներից գանձվել էին սովորականից բարձր հարկեր, Վենետիկից կարգադրվել են նրանց վերադարձնել ավել գանձված դրամը, ընդգծելով, որ պետք է առհասարակ բարյացակամ լինել հայ առևտրականների նկատմամբ, որպեսզի նրանք չխզեն իրենց կապերը Վենետիկի հետ։ 1590—1612 թթ. մաքսային վճարումները իջեցնելով, Վենետիկի հանրապետությանը հաջողվեց շուրջ մեկ հազարից քսանչորս հազար ուղտաբեռի հասցնել Իրանից Հալեպ տարվող հում մետաքսի քանակությունը[39]։

XVI դարի կեսերից սովորական երևույթ էր Վենետիկում, Ջենովայում, Լիվոռնոյում, Ամստերդամում, Մարսելում և այլ քաղաքներում հալեպահայ խոջաներին հանդիպելը։ Եվրոպայում նրանց ընձեռում էին ազատ և շահավետ առևտրի պայմաններ։ Այդ տեսակետից հետաքրքրական է Ֆրանսիայի Լյուդովիկոս XIII թագավորի հրովարտակը պարսիկ և հայ վաճառականների մասին։ Այդ հրովարտակում ասված է, որ հատուկ պաշտպանության և հովանավորության ներքո են դրվում այն պարսիկ և հայ վաճառականները, որոնք Ֆրանսիա են տանում իրենց ապրանքները[40]։ Կարդինալ Ռիշելիեն, իր հերթին, հայ վաճառականներին տվեց ապրանքներ տեղափոխելու արտոնյալ պայմաններ, որպեսզի նրանք Ֆրանսիա տանեն այնքան քանակությամբ մետաքս և ուրիշ ապրանքներ, որքան պահանջ լինի։

Հայ խոջաները հիմնականում Ֆրանսիա էին տանում Իրանի և Սիրիայի հում մետաքսը։ Նրանք համարվում էին Ֆրանսիայի մետաքսյա գործվածքների արդյունաբերությանը հումք հայթայթող խոշոր գործակալներ, որոնց մրցակցությանը չտոկալով ճգնաժամ ապրեց մետաքս արտահանող այնպիսի երկիր, ինչպիսին էր Լիբանանը։ XVII դարի կեսերից Լիբանանում մետաքսի առևտրի անկման պատճառը, ըստ արաբ պատմաբան Ադել Իսմայիլի, հայերի մրցակցությունն էր, որոնք, նրա ասելով, «սեփական միջոցներով և իրենց հաշվին Ֆրանսիա էին տանում Սիրիայի և Իրանի մետաքսի խոշորագույն մասը»[41]։

---

38 Տե՛ս Ա. Սյուրմեյան, *Պատմություն Հալեպի ազգային գերեզմանատանց և արձանագիր հայերեն տապանաքարերու*, Հալեպ, 1935, էջ 12, 13 և 25։

39 Տե՛ս Ղ. Ալիշան, *Հայ-Վենետ*, էջ 430, 431 և 464—465։

40 Տե՛ս *Charles-Diran Tékeian*, Marseille, la Provenne et les Arméniens, Marseille, 1929, էջ 25—26։

41 *A. Ismail*, Histoire du Liban du XVII s. a' nos joars, t. I, Paris, էջ 134։

*Սակայն XVII դարի վերջերից Ֆրանսիայում ամենևին էլ հարթ չէր ընթանում հայ խոջաների առևտուրը։ Ֆրանս-թուրքական հարաբերությունների սրումը՝ մի կողմից, Պարսկաստանում և Սիրիայում ունիթորական շարժման դեմ հայերի ծավալած պայքարը՝ մյուս կողմից, հայ խոջաների դեմ բացասաբար էին տրամադրում մոլեռանդ կաթոլիկներին։ Մարսելում դժվարությունների_հանդիպող հայ խոջաները, աստիճանաբար երես դարձնելով Ֆրանսիայից, իրենց մետաքսը տանում էին ուրիշ շուկաներ։ Արդեն 1671 թ. Լյուդովիկոս XIV թագավորի ֆինանսների դերատեսուչ Կոլբերը Պրովանսի պառլամենտի նախագահ Օպպեդին հանձնարարում էր հովանավորել հայ առևտրականներին, նրանց տալ այն ամբողջ պաշտպանությունը, որ նրա պաշտոնը թույլատրում է, որպեսզի նրանք վերստին Ֆրանսիա տանեն իրենց մետաքսը[42]։*

*Հալեպի խոջաները բավականին առևտուր էին անում նաև Հոլանդիայի հետ։ Ամստերդամում հաստատված ջուղայեցի առևտրականներն աշխույժ կապեր էին պահպանում Թավրիզի, Զմյուռնիայի, Հալեպի և ուրիշ շուկաների հետ։ Պահպանվել է դեպի Հոլանդիա հում մետաքս արտահանելու վերաբերյալ մի համաձայնագիր[43], որը կնքվել է 1616 թ. Ամստերդամում, մի կողմից «ֆլաման ազգի բանագնացների» և մյուս կողմից հալեպահայ նշանավոր խոջաներ՝ Պետիկի և Սանոսի միջև։ Այդ համաձայնագրում խոջա Պետիկը հանդես է գալիս որպես Հոլանդիայի թագուհու էմինը, այսինքն՝ նրա առևտրական գործերի ներկայացուցիչը Հալեպում։*

*Հալեպահայ խոջաները Ռուսաստանում որոնել են ոչ թե շուկաներ, այլ տարանցիկ առևտրի ապահով ճանապարհ։ 1725 թ., երբ օսմանյան զորքը ներխուժեց Արևելյան Հայաստան՝ փակելով Թավրիզ—Հալեպ ճանապարհը, Գիլանում կանգ առած թուրքահայ առևտրականները, որոնք մեծ մասամբ Հալեպից և Դամասկոսից էին, դիմեցին Ռուսաստանի կառավարական սենատին՝ Ռուսաստանի վրայով դեպի Եվրոպա մետաքս փոխադրելու իրավունք խնդրելով։*

*Հայերը աշխույժ դեր էին կատարում նաև Սիրիայի ներքին առևտրի տարբեր բնագավառներում։ XVII դարի սկզբներին հայ խոջաների ձեռքում էր Հալեպի մաքսատունը, փողերանոցը և այլն։ Տարբեր ժամանակներում նրանք կապալով են վերցրել նաև Տրիպոլիի և Ալեքսանդրետի մաքսատների շահագործման մենաշնորհը։ Հալեպում, Ալեքսանդրետում, Անտիոքում և Բեյլանում հիմնականում հայերը և հույներն էին մեծածախ, մանրածախ և միջնորդ առևտրականները։ Դամասկոսում և Լաոդիկեում հայերը զբաղված էին գերազանցապես մանր առևտրով, իսկ Սվեդիայի, Քեսաբի և Լաոդիկեի գյուղերում՝ գյուղատնտեսությամբ։*

*Սիրիայում հայերը հռչակված էին որպես ընտիր արհեստավորներ՝ ոսկերիչներ, ներկարարներ, սադափագործներ, դերձակներ, մուշտակագործներ, մետաքսագործներ, կաշեգործներ, դաջողներ, ինչպես նաև սննդի արտադրության և շինարարության հետ կապված վարպետներ։ Հալեպում բավական տարածում էին գտել մագաղաթ և թուղթ կոկելու, բուսական և քիմիական ներկեր պատրաստելու, ձեռագիր կազմելու և վերանորոգելու արհեստները։ Ամենից ավելի բարձր զարգացման էին հասել ոսկերչությունն ու ակնագործությունը։ Առաքել*

---

42 *Տե՛ս Charles-Diran Tékéian*, Marseille, la Provenne et les Armeniens, էջ 23։

43 Տե՛ս Ա. Սյուրմեյան, *Պատմություն Հալեպի Հայոց*, հատ. 3, Փարիզ, 1950, էջ 288—289։

Դավրիժեցին դրվատանքով հիշատակում է հալեպցի Մուրատ Սարգսին (1592—1662), որը աշխարհաբար լեզվով պատրաստել է մի արհեստագիտական ձեռնարկ՝ «Վասն անուանց եւ որպիսութեանց պատուական ականց», որտեղ նկարագրված են ավելի քան երեսուն տեսակ թանկագին քարեր և դրանցից յուրաքանչյուրի մշակման եղանակները։ Ձեռնարկի վերջում բերվում են օգտակար գիտելիքներ ոսկերչական արհեստի վերաբերյալ։ Պատշաճ բարձրության էր հասել նաև ներկարարությունը։ 1680 թ. մի խումբ հալեպցի հայ ներկարարներ դիմել են ֆրանսիական հյուպատոս Լորան դ'Արվիեոյին, խնդրելով, որ դյուրացնի ֆրանսիական լեղակի ներմուծումը[44]։

Սիրիայում բնակություն հաստատած հայերը, իրենց բախտակից հույների, ասորիների և հրեաների հետ միասին գտնվում էին սոցիալ-տնտեսական և իրավական ծանր դրության մեջ։ Նրանց նույնիսկ արգելվում էր թավշյա գլխարկ, դեղին կոշիկներ, կարմիր գոտի և զենք կրել, ձի հեծնել, կոչնակ հնչեցնել և այլն։ Նրանք վճարում էին ծանր հարկեր։ Ոչ մուսուլմանները գլխահարկից (խարաջից) բացի, վճարում էին հինգ տեսակ հարկեր՝ պատերազմական տուրք, արտակարգ հարկ, գրպանի դրամ կամ պարտադիր նվեր սուլթանին, հարդի տուրք և բանակի տուրք։ Բացի դրանից քրիստոնյաներն ու հրեաները վճարում էին նաև չքեղության տուրք, տանը գինի ունենալու իրավունքի հարկ և այլն։ Ժողովրդի գլխին հարկերից ավելի խոշոր չարիք էին հարկահան պաշտոնյաների կամայականությունները։ Այն դեպքում, երբ խարաջ սահմանված էր 11, 6, 5 և 3³/₄ ղուրուշի չափով, հարկահանները գանձում էին դրա տասնապատիկը։ 1594 թ. Կարկառում (Հալեպի կուսակալություն) գրված մի ձեռագրի հիշատակարանում ասված է. «Մեկ մարդոյն վեց ֆլորի խարաճ առնէին»[45], այսինքն՝ 21 գրամ ոսկի կամ 360 գրամ արծաթ։

Սիրիայի քրիստոնյաների և հրեաների վիճակը ծանրացավ մանավանդ XVI դարի վերջերից, երբ կենտրոնական իշխանության թուլացման հետևանքով ծայր առան ներքին երկպառակությունները ու ապստամբությունները։ 1598—1599 թթ. Կարա-Յազըջիի հրոսակները կողոպտեցին ու ավերեցին Հալեպը, Դամասկոսը և շրջակա գյուղերը։ 1604—1608 թթ. Ջանփոլադ-օղլի Ալին ապստամբություն բարձրացրեց Լիբանանում, Սիրիայում և Կիլիկիայում։ Աղբյուրներում պահպանվել են բազմաթիվ փաստեր Հալեպի հայերի, հույների և ասորիների դաժան հալածանքների վերաբերյալ։ Խրախուսվելով սուլթանի պաշտոնատարներից, մոլեռանդ տարրերը, ենիչերիների գլխավորությամբ պաշարում էին քրիստոնյաներով բնակված թաղերը, թալանում եկեղեցիները, խանութները, տները և նրանց բռնադատում կրոնափոխ լինելու կամ փրկագին վճարելու։ Ովքեր ի վիճակի չէին փրկագին վճարելու, խոշտանգվում և բանտ էին նետվում, իսկ նրանց զավակները, որպես գերի՝ վաճառվում էին շուկաներում։ Մեզ է հասել մի ողբ կրոնափոխության բռնադատված երկու հալեպցի պատանիների՝ հույն Դավթի և հայ Բալիի նահատակության մասին։

Ծանր հարկերի և կամայականությունների ենթակա էին նաև հայ խոջաները։ Հալեպից Թավրիզ ապրանք փոխադրող առևտրականները վճարում էին բազմատեսակ «խալշ ու բալշեր», ինչպես նաև հարկադրված էին «փեշքաշներ» անել մաքսատան կամ քաղաքային պաշտոնյաներին։ Սակայն խոջաների

---

[44] Տե՛ս Ա. Սյուրմեյան, Պատմություն Հալեպի հայոց, հատ. 3, էջ 974։

[45] Դ. Սրվանձտյան, Թորոս աղբար, հատ. 2, Կ. Պոլիս, 1884, էջ 454։

առևտրին ամենից ավելի ծանր հարված էին հասցնում ավազակները, որոնք գործում էին ոչ միայն ամայի վայրերում, այլև քաղաքներում։ Աղբյուրներում հաճախ կարելի է հանդիպել նշումներ խոջաների սպանության մասին («զարկին խանչալով զխոջա Սիսիճանն եւ մեռաւ ի Հալապ» և այլն)։ 1630-ական թվականներին սուլթանի հրամանով գլխատվել է Հալեպի խոշորագույն խոջաներից Պետիկը և թալանվել նրա հսկայական հարստությունը։

Սիրիայում ազատագրական պայքարի տրամադրությունները որոշակի դրսևորվեցին XVI դարի վերջերից, երբ օսմանյան տիրապետության դեմ Եվրոպայում և Բալկաններում ծայր առան ապստամբություններ։ Այդ ազատագրական ինքնաբուխ շարժումներին թև էին տալիս ֆրանսիական արքունիքը և պապական դիվանագիտությունը, ելնելով Սիրիայում հետապնդած իրենց շահերից։ Պայքարելով վերանորոգչական (ռեֆորմացիա) շարժման դեմ, Վատիկանը պաշտպանում և աջակցում էր Ֆրանսիայի քաղաքականությանը Սիրիայում՝ ընդդեմ անգլիական և հոլանդական ազդեցության։ Վատիկանի ուժեղ քարոզչությունը՝ խաչակրաց նոր արշավանքի մասին, օսմանյան լծից ազատագրվելու հույսեր ներշնչեց ինչպես ուրիշ ժողովուրդների, այնպես էլ հայերին։

Այդ հույսերն ավելի բորբոքվեցին Կանդիայի կամ Կրետեի պատերազմի տարիներին (1645—1669)։ Պապական դիվանագիտությանը հաջողվեց սուլթանական բռնակալության ներքո ստրկացված քրիստոնյա ժողովուրդներին հույս ներշնչել, որ այդ պատերազմը սկիզբն է խաչակրաց հետագա արշավանքների, որոնք պետք է գլխավորեր Լյուդովիկոս XIV թագավորը՝ հանուն Արևելքի քրիստոնյաների ազատագրության։

Մինչդեռ Եվրոպայում ամենուրեք աղմկում էին դեպի Արևելք խաչակրաց արշավանք կազմակերպելու մասին, Արևելքում Ալեքսանդր VII պապի և Լյուդովիկոս XIV թագավորի գործակալները նոր եռանդով աշխատում էին հունական, հայկական և ասորական եկեղեցիները ենթարկել Վատիկանի գերիշխանությանը։

XVII դարի վերջերից, երբ գնալով նվազում էր Հալեպի նշանակությունը միջազգային տարանցիկ առևտրի ասպարեզում, Սիրիայի հայկական գաղութներն աստիճանաբար թուլացան և մարդաթափ եղան։ Բացի այս, արտաքին կապերից զրկված, փակ տնտեսությամբ ապրող Հալեպի և մյուս քաղաքների զգալի չափով նոսրացած հայության հասարակական կյանքը պարբերաբար փոթորկվում էր լուսավորչական և կաթոլիկ եկեղեցու կողմնակիցների պայքարով։ Հայ կաթոլիկ կղերը, որին հաջողվել էր ուրույն պատրիարքություն հաստատել Լեռնային Լիբանանում (1740), փորձում էր գրավել լուսավորչական թեմերը։

Սիրիայի հայությունն ստեղծել է մշակութային ուշագրավ արժեքներ։ Նշանակալից տեղ էր գրավում Հալեպի դասատունը, որտեղ ընդգրկված զգալի թվով գրիչները, ծաղկողները, կազմողները ընդօրինակել ու նկարազարդել են ավետարաններ, սաղմոսներ, ժողովածուներ, տաղարաններ, բժշկարաններ և այլ բնույթի ձեռագրեր։ Աչքի ընկնող գրիչներից են Հովհաննես Ուռհայեցին, Խաչատուր Ջեյթունցին, Ղազար դպիրը, Սարգիս Խիզանցին, Աստվածատուր Ուրֆացին, Ղազար Բաբերդցին, Աբրահամ Երեցը, Խաչատուր դպիրը և ուրիշներ։ Անվանի ծաղկողներ էին Իսրայել Համթեցին, Մկրտիչ Լեհացին և Վարդան Լեհացին։ Դասատան շուրջ հարյուր տարվա (XVI դարի վերջերից մինչև

XVII դարի վերջերը) վաստակից պահպանվել են ավելի քան երկու հարյուր ձեռագրեր, որոնց զգալի մասը գտնվում է Հալեպի հայոց առաջնորդարանում և Զմմառի հայ կաթոլիկների վանքում։

Հալեպում բավական բարձր զարգացման էին հասել նկարչությունն ու որմնանկարչությունը։ Ա. Դավրիժեցին հաղորդում է. որ պարսկահայ նկարիչ վարպետ Մինասն իր արվեստը կատարելագործել է Հալեպում։ Մինչև օրս էլ Սիրիայի հայկական եկեղեցիներում առկա են XVII—XVIII դարերի հալեպահայ նկարիչներ Ումեի որդի Անանիայի, Հանանիայի որդի Ծըճի, Մկրտչի, Մուրատի, Խաչատուրի, Հակոբի որդի Ներսեսի և ուրիշների պատրաստած սրբանկարները։ Ուսումնասիրողները հայ նկարիչների գործ են համարում Հալեպի հնօրյա բնակարաններում հայտնաբերված բարձրարվեստ շատ որմնանկարներ։

## 3. ԵԳԻՊՏՈՍԻ ԳԱՂԹՕՋԱԽՆԵՐԸ

Եգիպտոսում մամլուքյան տիրապետության հաստատումից հետո եգիպտահայ գաղութի համար սկսվեց մի ծանր ժամանակաշրջան։ Պատերազմելով Կիլիկիայի հայկական պետության դեմ, մամլուք սուլթանները եգիպտական շուկաները լցնում էին հայ գերիներով։ 1266 թ. Եգիպտոսի սուլթան Բեյբարսի զորքերը պարտության մատնեցին հայոց բանակը, այրեցին արքայանիստ Սիսը, ավերեցին ամբողջ երկիրը մինչև Բարձրբերդ և Ադանա, վերցրին հազարավոր գերիներ, այդ թվում և հայոց թագավորի որդուն՝ Լևոնին։ 1274—1275 թթ. եգիպտական զորքերը, միանալով Կիլիկիայի սահմանամերձ վայրերում հաստատված թուրքական քոչվոր ցեղերին, կողոպտեցին և ավերեցին Սսից մինչև Կոռիկոս, գրավեցին Տարսոնը՝ այն ժամանակվա Կիլիկիայի մայրաքաղաքը, իսկ բնակիչներին սպանեցին կամ գերեվարեցին։ 1292 թ. սուլթան Աշրաֆն ավերեց Հռոմկլան, նրա բնակիչներին և հայոց կաթողիկոսին գերի վերցրեց։ Կողոպտչական այդ արշավանքները կրկնվեցին նաև հետագայում։

Եգիպտոսը բազմաթիվ գերիներ էր ընդունում նաև Կովկասից։ 1416 թ. թաթարները Հայաստանից և Վրաստանից վերցրած տասնյակ հազարավոր գերիների վաճառում էին մեծ մասամբ Եգիպտոսում։ 1440 թ. Ջհանշահը հայերով և վրացիներով բնակեցված Շամշուլտե քաղաքից գերել է ավելի քան 10.000 բնակիչ և ուղարկել Խորասանի ու Եգիպտոսի շուկաները[46]։

Կահիրեում և Վերին Եգիպտոսի Ասիութ նահանգում ապրում էին անազատ հայերի մեծ խմբեր, որոնք օգտագործվում էին որպես ստրուկ։ Նրանց երեխաներին համախմբում էին զինվորական ճամբարներում, դաստիարակում մոլի մուսուլմանական ոգով և ծառայության դնում բանակում։ 1290 թ. սուլթանական 10.000 մամլուքներից 3700-ը իրենց մայրենի լեզուն և ազգային ծագումը մոռացած հայեր և չերքեզներ էին[47]։ Հայոց Լևոն թագավորի խոստովանահայր Հովհաննես Դարդելը Կահիրեում հանդիպել է մահմեդականություն ընդունած բազմաթիվ հայերի, որոնք խորհրդականի պաշտոնով ծառայում էին եգիպտական արքունիքում։ Հայկական ծագում ունեին Մուվֆըգ-էդ-դին Աբուլ

---

[46] Տե՛ս «ԺԵ դարի հիշատակարաններ», մասն Ա, էջ 508։

[47] Տե՛ս *Makrizi*, Histoire des sultans Mamelouks, t. I, Paris, 1832, էջ 386։

Յաքուտը, Բաշ-Էդ-դին Աբդ-ալ Բասգակը, Ֆախր-Էդ-դին Աբդ-ալ-Ղանին, Էմիր ալ-Ջեյշը և ուրիշ ականավոր պետական գործիչներ։

Եգիպտահայերի վիճակն ինչ-որ չափով բարելավվեց XIV դարի սկզբներին, երբ մամլուք սուլթանները, հովանավորելով հայ եկեղեցու հակալատինական դիրքորոշումը, հայերին տվեցին որոշ կրոնական ազատություններ։ Սուլթանական ֆերմանով 1311 թվականին Երուսաղեմի հայոց վանքը հռչակվեց պատրիարքություն, այն բացասական վերաբերմունքի շնորհիվ, որ միաբանությունը ցուցաբերել էր 1316 թ. Սսում և 1309 թ. Ադանայում գումարված հայ եկեղեցական ժողովների լատինամետ որոշումների դեմ։ Եգիպտահայերի վիճակն առավել ևս բարելավվեց 1322—1323 թթ., երբ հաշտություն կայացավ Կիլիկիայի հայոց թագավորի և Եգիպտոսի սուլթանի միջև։ 1325 թ. Կոստանդին կաթողիկոս Դրազարկցին մեկնել է Կահիրե՝ նպատակ ունենալով կարգավորել Եգիպտոսի և Կիլիկիայի հայկական պետության փոխհարաբերությունները, բարելավել եգիպտահայերի վիճակը։ Այդ նույն նպատակով Կահիրեում եղել է նաև Կիլիկիայի հայ իշխաններից Հեթում Նղրցին։

Այդ պայմաններում եգիպտահայ թեմը վերակազմվելով ենթարկվեց Երուսաղեմի պատրիարքությանը։ Կահիրեի հայաբնակ Գոմ-ալ-Արման կոչված արվարձանում սկսեց գործել ս. Մինաս եկեղեցին, որի ավերակները պահպանվել էին մինչև XIX դարի սկզբները։

Եգիպտահայերի հիմնական զբաղմունքներն էին գյուղատնտեսությունը և արհեստները։ Ասիութ քաղաքում կային հայ ջուլհակներ, որոնց արտադրանքը տարբերվելով սովորական գործվածքներից, կոչվում էր «հայկական կտավ»[48]։ Աշմունեյն քաղաքում պատրաստում էին Հայաստանի կիրմիզի (որդան կարմիր) նման կարմիր գույնի գործվածքներ և գորգեր։

Մամլուք սուլթանների ցուցաբերած կրոնական հանդուրժողականությունը նպաստում էր գրչության օջախների ստեղծմանը։ XIV դարում Սկիտեի անապատում ապրել և գործել են հայ վանականներ, որոնք պատրաստել են բազմալեզվյան մի շարք ձեռագրեր (հայերեն, արաբերեն, ղպտերեն, հունարեն)։ 1352 թ. Մանվել անունով հայ կրոնավորը գրել է ձեռագիր՝ «Ի քաղաքիս Մսր կոչեցելոյ»։ 1415 թ. Կահիրեում գրված մի ձեռագիր նվիրաբերվել է Երուսաղեմի վանքին և այլն։

1517 թ. Եգիպտոսն ընկավ օսմանյան ռազմա-ֆեոդալական բռնակալության լծի ներքո։ Կառավարիչ-փաշաները կամ վալիները սուլթանից կապալով գնում էին իրենց պաշտոնը, կեղեքում և կողոպտում բնակչությանը։ Ամենից ավելի անտանելի էին մամլուքների արյունոտ հակամարտությունները, որոնց, որպես կանոն, ուղեկցում էր քրիստոնյաների կոտորածը, թալանը, կանանց առևանգումը և այլն։ Այդ պայմաններում եգիպտահայերից շատերը գաղթեցին, ձուլվեցին կամ էլ կրոնափոխ եղան։ Գաղութն անկում է ապրել, բայց գոյատևել է։

XVII դարի սկզբներին վերստին հայերի հոսանք սկսվեց դեպի Եգիպտոս։ 1615 թ. Կահիրեում կային ավելի քան 200 տուն հայեր՝ «ամենն ջելալոց փախուցեալ»։ Նրանք համախումբ ապրում էին հայոց թաղում, ունեին եկեղեցի և մի մատուռ, որի շուրջը հայկական գերեզմանատունն էր։ Կահիրեի հռչակավոր խան-ալ-խալիլի շուկայում աշխատում էին Պոլսից, Տիգրանակերտից և Հալեպից

[48] Հ. Նալբանդյան, Արաբական աղբյուրները Հայաստանի և հարևան երկրների մասին, էջ 20։

գաղթած հայ ոսկերիչնիր, զինագործնիր և այլ արհեստավորներ, որոնց համքարության պետը (կույումճի բաշի) նույնպես հայ էր՝ տիգրանակերտցի խոջա Իպրահիմշահը[49]։ Խան-ալ-Խալիլում, Հինախանում և այլ շուկաներում հաստատված էին հայ առևտրականներ, որոնք զբաղվում էին տարբեր գործվածքների, գորգերի, մետաքսի մեծածախ և մանրածախ առևտրով։ Կային նաև ոչ մեծ թվով ջուղայեցի առևտրականներ, որոնք կապեր էին պահպանում Հնդկաստանի, Արաբիայի, Հաբեշստանի շուկաների հետ։ Եվրոպական ճանապարհորդ Գևորգ Սանդիսը, որը 1610 թ. եղել է Կահիրեում, բարձր է գնահատում հայերին, գրելով. «Նրանք աշխատում են չարքաշ և ապրում պարկեշտ կերպով»[50]։

XVIII դարում եգիպտահայ գաղութն աշխուժացավ շնորհիվ այն բանի, որ Արևմուտքը Հեռավոր Արևելքի հետ կապող Բենգալ—Բասրա—Հալեպ—Պոլիս անապահով դարձած ճանապարհը փոխարինվեց Սուեզ—Կարմիր ծով ճանապարհով։ Կահիրեն, Ռաշիտը (Ռոզետ), Դամիետը, ավելի ուշ նաև Ալեքսանդրիան դարձան միջազգային տարանցիկ առևտրի և ապրանքափոխանակության խոշոր հանգույցներ, որոնցում եվրոպացի վաճառականներն օգտվում էին հիմնականում հայ և հույն միջնորդ առևտրականների ծառայություններից։ Վկայություն է պահպանվել այն մասին, որ 1791—1798 թթ. զմյուռնիացի հայ առևտրականները կապալով շահագործում էին Ռաշիտի մաքսատունը։

Իր թվով և կարևորությամբ Կահիրեի հայկական գաղութը գրավում էր առաջին տեղը։ Դարբ-ալ-Գինինե թաղում, ս. Սարգիս եկեղեցու շուրջ համախմբված ապրում էին Հայաստանի և Թուրքիայի ամենատարբեր գավառներից գաղթած հայեր, հիմնականում արհեստավորներ, առևտրականներ, լումայափոխներ, որոնց թիվը 1798—1800 թթ. հասնում էր 2000-ի[51]։ 1749 թ. պետական փողերանոցի սառաֆ՝ ոմն Այվազի տրամադրած միջոցներով ս. Սարգիս եկեղեցին հիմնովին վերանորոգվել է, իսկ հետագա տարիներին՝ ընդհուպ մինչև դարավերջ, մեծատունների և հասարակ ժողովրդի դրամական նվերներով ձեռք են բերվել եկեղեցական կալվածքներ։

Կահիրեից հետո իր նշանակությամբ կարևոր էր Ալեքսանդրիայի հայկական գաղութը, որը կազմավորվել էր XVIII դարի վերջերին, երբ այդ նավահանգիստը ներգրավվեց Հնդկաստանի հետ կատարվող առևտրի ոլորտը։ Նրա առաջին հայ բնակիչները անգլիական կապիտալի հետ շաղկապված պոլսեցի և զմյուռնիացի հայ առևտրականներն էին։ 1792 թ. այնտեղ գործում էր մի հայկական եկեղեցի։ Միջազգային առևտրական փոխանակության կենտրոնատեղին Ալեքսանդրիա տեղափոխվելու հետ զուգընթաց, անկում ապրեցին Ռաշիտի և Դամիետի հայկական համայնքները։

Եգիպտահայ գաղութի բնորոշ կողմերից էր հին և նոր խավի առկայությունը։ Հին կամ այսպես կոչված «տեղացի» հայերը, երկար ժամանակ կտրված ապրելով հայրենի բնաշխարհից, խառն ամուսնություններ էին կնքում դավանակից ղպտիների և հաբեշների հետ, որոնց մայրենի լեզուն աղավաղվում էր ղպտերենից և արաբերենից կատարված փոխառություններով։ Հին գաղութի շրջանակներում պատահում էին նաև կրոնափոխության

49 Տե՛ս Սիմէոն Լեհացի, *Ուղեգրութիւն*, էջ 216։

50 *G. Sandys*, Relation of a Journey, London, 1627, vol. II, էջ 122։

51 Տե՛ս *M. Jomard*, Description de l'Egypte... t. 18e, Paris, 1829, էջ 330, 303 և 364։

դեպքեր։ Ծագումով հայ են համարվում XVII—XVIII դարերի պետական գործիչներ Ալի-ալ-Արմանին, Օսման Չելեբին, Սուլեյման Բարեմ Զեյլուն, Մուստաֆա Ջերերջին, Մուրադ բեյը և ուրիշներ։ Նոր խավը կազմում էին Արևմտյան Հայաստանից և Թուրքիայի հայաբնակ շրջաններից նոր եկած գաղթականներն ու պանդուխտները, որոնք բարերար ազդեցություն էին գործում ձուլման վտանգի ենթարկված հին խավի վրա։ Նրանց ներկայությունը նպաստում էր հայկական սովորույթների և բարքերի պահպանմանը։

Եգիպտահայ գաղութը կազմակերպված էր որպես ազգային-եկեղեցական համայնք. և ինչպես նախկինում, ենթարկվում էր Երուսաղեմի հայոց պատրիարքությանը։ Պատրիարքի նշանակած վեքիլ կամ տեսուչ վարդապետները հոգում էին եկեղեցական, վարչական, կալվածական և այլ գործեր։

XVIII դարի կեսերից Եգիպտոսում գնալով ուժեղացան կենտրոնախույս տրամադրությունները, մամլուք իշխանները միջոցներ էին ձեռնարկում թոթափելու թուրքական լուծը։ Այդ ձեռնարկումներում գործուն կերպով հանդես էին գալիս նաև հայերը։ 1771 թ. Եգիպտոսի կառավարիչ Ալի բեյը, օգտվելով ռուս-թուրքական պատերազմից, փորձեց Ռուսաստանի օգնությամբ վերականգնել երկրի անկախությունը։ Նա երկու պատգամավոր ուղարկեց ռուսական զորահրամանատար իշխան Օրլովի մոտ, առաջարկելով զինակցության և բարեկամության դաշինք կնքել Թուրքիայի դեմ։ Պատգամավորները, որոնցից մեկը հայ էր՝ Հակոբ անունով, հաջողությամբ կատարել են իրենց առաքելությունը։ Ռուսաստանից Եգիպտոս են ուղարկվել թնդանոթներ, զինամթերք, ինչպես և ռուս սպաներ, որոնց հանձնարարված էր իրազեկ դառնալ եգիպտական բանակի հնարավորություններին։

Հայերը կարևոր մասնակցություն են ունեցել նաև 1798 թ. Նապոլեոն Բոնապարտի նվաճողական արշավանքին դիմադրելու պայքարին։ Եգիպտական նավատորմի հրամանատարը եղել է Մոալլեմ Նիկոլա կամ Նիկողայոս անունով մի հայ, որին ֆրանսիացիները գերի են վերցրել և արգելափակել միջնաբերդի բանտում։ Եգիպտական զորքի կազմում եղել են նաև Հայաստանում և Վրաստանում ծնված բազմաթիվ հայազգի զինվորականներ՝ մամլուք Ռուստամը և ուրիշներ, որոնք աչքի են ընկել ֆրանսիական ներխուժողների դեմ մղված կռիվներում։ Հետագայում հայազգի մամլուքներից ոմանք, ծառայության մտնելով ֆրանսիական բանակում, մեկնել են Ֆրանսիա։

Ֆրանսիական զորքերի ներխուժումը և, մանավանդ, նրանց հեռանալուց հետո Եգիպտոսում ստեղծված անիշխանությունը, ծանր հարված հասցրեց եգիպտահայ գաղութին։ Անգլիական կապիտալի հետ շաղկապված զմյուռնիացի և պոլսեցի հայ առևտրականների մենաշնորհները չեղյալ համարվեցին, իսկ 1800 թ. մարտին, երբ ֆրանսիական զորքը նահանջում էր, մոլեռանդ ամբոխը թալանեց նաև Կահիրեի հայաբնակ թաղերը։

Եգիպտահայ մշակույթի մասին պահպանվել են սուղ տեղեկություններ։ Եվրոպացի ճանապարհորդները հաճախ դրվատում են եգիպտահայ ճարտարապետների վարպետությունը, նրանց ձեռակերտը համարելով Եգիպտոսի միջնադարյան ճարտարապետության մի շարք հուշարձաններ։ XVIII դարում Եգիպտոսում ապրել և ստեղծագործել է նշանավոր հայ նկարիչ Հաննա-ալ-Արմանին կամ Հովհաննես Հայը։ Նրան վերագրվող մի քանի հարյուր սրբանկարներ պահպանվել են Կահիրեի ղպտիների թանգարանում, եկեղեցիներում և վանքերում։

ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

# ՆՈՐ ՋՈՒՂԱՅԻ ԵՎ ՀՆԴԿԱՍՏԱՆԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԳԱՂԹԱՎԱՅՐԵՐԸ

## 1. ՆՈՐ ՋՈՒՂԱՅԻ ԳԱՂԹՕՋԱԽԸ

Իրանում հայ գաղթօջախներ սկսել են առաջանալ դեռևս III—V դարերում, տասնամյակներ շարունակվող պատերազմների ընթացքում պարբերաբար կազմակերպվող զանգվածային բռնագաղթերի հետևանքով։ Հայ պատմիչների տեղեկությունների համաձայն այդ դարերում Իրան է գաղթեցվել հազարավոր հայ բնակչություն։

Իրանում հայ նոր բնակավայրեր ստեղծվեցին XI դարից սկսած՝ թուրք-սելջուկների արշավանքներից հետո, դրանք գլխավորապես կենտրոնացված էին Իրանի հյուսիսային նահանգներում (Ատրպատականում) և հարավում (Սպահանի մերձակա շրջաններում)։

XI—XIV դարերում հայկական բնակավայրեր կային Թավրիզում, Սուլթանիեում, Մարաղայում, Ռեշտում և Իրանի մի շարք այլ քաղաքներում ու մարզերում։

XVI դարում իրանա-թուրքական համարյա անընդմեջ և արյունահեղ պատերազմների ընթացքում պատերազմող կողմերը ռազմական գործողությունների թատերաբեմ դարձած վայրերի բնակչությանը ենթարկում էին զանգվածային տեղահանության։ Աղբյուրներից հայտնի է, օրինակ, որ թուրք զավթիչները բազմիցս Թավրիզից և Հյուսիսային Իրանի այլ քաղաքներից գերության են քշել հազարավոր հայ ընտանիքներ։ Նույնպիսի քաղաքականություն էին վարում նաև Սեֆյան տիրակալները։ Հատկապես շահ Թահմազ I-ը Իրանի և Թուրքիայի միջև «մեռյալ տարածություն» ստեղծելու նպատակով հաչող արշավանքների դեպքում բռնի տեղահանության էր ենթարկում ինչպես Թուրքիայի, այնպես էլ Իրանի սահմանամերձ շրջանների բնակչությանը, նրանց վերաբնակեցնելով իր պետության ներքին շրջաններում։

Այսպիսով, առավելապես Արևմտյան Հայաստանի հայ բնակչության հաշվին XVI դարում իրանահայ գաղթօջախը դառնում էր ավելի ստվարաթիվ։

Նրա մեծացմանն ու ընդարձակմանը հետագայում նպաստեց նաև այն, որ թուրքական ծանր հարկապահանջության, հալածանքների, սոցիալական և ազգային ճնշման ու հարստահարությունների հետևանքով Արցախից, Սյունիքից ու մի շարք այլ շրջաններից հայ բնակչության առանձին խմբեր լքեցին իրենց հայրենիքը և գաղթեցին Իրան[1]։

---

[1] Տե՛ս Առաքել Դավրիժեցի, էջ 15—16։

Իրանի հյուսիսային շրջանների հայ բնակչություն ունեցող քաղաքները, ինչպես նաև Արաքս գետի ձախափնյա հայաբնակ քաղաքներ Ջուղան, Վանանդը, Բիստը, Ագուլիսը, Նախիջևանը, Օրդուբադը, Մեղրին և այլն, վաղեմի ժամանակներից հայտնի էին որպես առևտրական-քարավանային ճանապարհների կարևոր հանգուցակետեր, որոնք կարևոր դեր էին խաղում Իրանի, Անդրկովկասի, Միջին Ասիայի և Մերձավոր ու Միջին Արևելքի միջև կատարվող առևտրում։ Դրանց մեջ հատկապես աչքի էր ընկնում Ջուղան, որը XVI դարի վերջին տասնամյակներում արդեն միջազգային առևտրի խոշորագույն կենտրոն էր։

Հատկապես մեծ էր ջուղայեցի վաճառականների դերը իրանա-եվրոպական առևտրում, որը XVI դարում գերազանցապես կատարվում էր հայ վաճառականների միջոցով։

Մեծ ուշադրություն դարձնելով Սեֆյան պետության ներքին և արտաքին առևտրի զարգացման հարցերին, ինչպես նաև ցանկանալով լայնորեն ծավալել շահական մենաշնորհ հանդիսացող հում մետաքսի արտահանման գործը, հատուկ հրամանագրով շահ Աբբաս I-ը (1587—1629) ջուղայեցի խոշոր վաճառականներին 1592 թ. շնորհեց առևտրական մի շարք արտոնություններ[2]։ Սակայն ջուղայեցիներին և նրանց կապիտալը շահավետ կերպով իր նպատակներին ծառայեցնելու համար Իրանի տիրակալը ձգտում էր նրանց ամբողջապես վերցնել իր հսկողության տակ։ Շուտով ներկայացավ այդ ծրագրի իրագործման հարմար առիթը։ 1603 թ. սեպտեմբերին պատերազմ սկսելով օսմանյան պետության դեմ և ձեռնամուխ լինելով դեպի Իրան բռնագաղթին, շահ Աբբասը հրամայեց բռնի տեղահանության ենթարկել նաև ջուղայեցիներին հրամայելով նաև «մինչև հիմք այրել ու ավերել Ջուղան»[3]։

Եթե Արևելյան և Արևմտյան Հայաստանի բնակչության բռնի տեղահանությամբ շահ Աբբասը առավելապես հետապնդում էր ռազմագիտական նպատակներ, այն է՝ Իրանի և Թուրքիայի միջև ստեղծել «մեռյալ տարածություն», դժվարացնելու համար թուրքական բանակների առաջխաղացումը դեպի Անդրկովկաս և Իրան, ապա Անդրկովկասի և Հյուսիսային Իրանի վաճառաշահ քաղաքների և առաջին հերթին Ջուղայի բնակչությանը բռնագաղթի ենթարկելով, նա գերազանցապես հետապնդում էր իր պետության համար կարևոր նշանակություն ունեցող մի շարք տնտեսական և քաղաքական նպատակներ։ Շահը ցանկանում էր ջուղայեցի վաճառականներին օգտագործել իր երկրի ներքին և արտաքին առևտուրը զարգացնելու գործում։ Միաժամանակ նա ձգտում էր բարձրացնել երկրի կենտրոնական շրջանների, հատկապես Սեֆյան պետության նոր մայրաքաղաք Սպահանի տնտեսական նշանակությունը, հարստացնել շահական գանձարանը և, վերջապես, ջուղայեցիների օգնությամբ իրականացնել Իրանի արտաքին առևտրի ուղին թուրքական ցամաքային ճանապարհից դեպի հարավ՝ Պարսից ծոց տեղափոխելու իր վաղեմի ծրագիրը։

Վերջինիս իրագործումով շահ Աբբասը մտադիր էր նաև տնտեսական հարված հասցնել իր հակառակորդ օսմանյան Թուրքիային, զրկելով նրան իրանական հում մետաքսից դանձվող հսկայական մաքսատուրքից։

---

[2] Տե՛ս Հ. Տեր-Հովհաննեանց, Պատմութիւն Նոր-Ջուղայու որ յԱսպահան, հատ. I, Նոր-Ջուղա, 1880, էջ 158—159։

[3] Ա. Դավրիժեցի, էջ 57 և հտն.։

Հետամուտ լինելով վերոհիշյալ ծրագրերին, գաղթեցված 300 հազար հայ բնակչության հիմնական զանգվածին, հատկապես առևտրական և արհեստավորական տարրերին շահ Աբբասը բնակեցրեց երկրի կենտրոնական շրջաններում, գլխավորապես իր մայրաքաղաք Սպահանում և շրջակա մահալներում (Լընջան, Ալինջան, Գանդիման, Ջղախոռ, Փերիա, Բուրվառի, Քարվանդ), ինչպես նաև Բախթիարիում (Չհարմհալ)։

Գաղթեցրած բնակչության որոշ մասը տեղավորվեց Թավրիզում, Քաշանում, Համադանում, Ղազվինում, Սուլթանաբադի շրջանի Բուրվառի և Գյափլա շրջաններում, Շիրազում և այլ վայրերում։

Իրանում հում մետաքսի արտահանությունը զարգացնելու նպատակով շահը Կասպից ծովի մերձակա նահանգները՝ Գիլան և Մազանդարան գաղթեցրեց հազարավոր հայ ընտանիքներ, որոնցից, Շարդենի վկայությամբ, 40 տարուց հետո մնաց միայն մի փոքր մասը, իսկ մնացածները մահացան վատառողջ կլիմայի և կյանքի անասելի ծանր պայմանների հետևանքով։

Սակայն աղբյուրների վկայությամբ շահը արտակարգ բարյացակամ վերաբերմունք է ունեցել գաղթեցված բնակչության առևտրական դասի, հատկապես ջուղայեցիների նկատմամբ։ Հատուկ հրովարտակով Սպահանի հարավային մասում, Զաենդերուդ գետի ափին, նա շահապատկան հողերից ջուղայեցիներին հատկացնում է մի ընդարձակ տարածություն՝ նոր ավան հիմնելու համար. ավանը ստանում է Նոր Ջուղա անունը։ Այն սկսում է արագորեն կառուցվել և բարգավաճել։ Ի հիշատակ իրենց նախկին հայրենի բնակավայրերի, նորաստեղծ ավանի թաղամասերին տրվեցին համապատասխան անուններ՝ Ջուղայեցիների, Երևանցիների, Դաշտեցիների և այլն։ Ժամանակակիցների վկայությամբ Նոր Ջուղան հիմնադրվելուց ընդամենը երկու տասնամյակ անց, XVII դարի 20-ական թվականներին նա ուներ ավելի քան 30 հազար բնակչություն և իր ճոխությամբ, հարստությամբ ու ճարտարապետական շինությունների գեղեցկությամբ կարող էր մրցել նույնիսկ Սեֆյան շահերի մայրաքաղաքի հետ։

Ջուղայեցիներին Իրանի հետ կապելու և նրանց իր նպատակներին ծառայեցնելու համար շահ Աբբասը նրա բնակչությանը, հատկապես առևտրական դասին և հոգևորականությանը, տրամադրեց մի շարք արտոնություններ և իրավունքներ։ Նախ, շահը ջուղայեցիներին թույլատրեց օգտվելու «Արքունի խասսերին» վերապահվող բոլոր իրավունքներից։ Այդ իրավունքից օգտվող շրջանները և քաղաքները Սեֆյան Իրանում համարվում էին արտոնյալ համայնքներ՝ մասնավորապես հարկային քաղաքականության բնագավառում և օգտվում էին կառավարության ամենալայն հովանավորությունից։ 1606 թ. հրապարակած իր հրովարտակներից մեկում շահը հրամայում էր, որ Նոր Ջուղայի բնակչության նկատմամբ իր բոլոր հպատակները պարտավոր են վերաբերվել նույնպիսի բարյացակամությամբ, ինչպես վերաբերվում է ինքը՝ շահը։ Վերջինիս կողմից հրապարակված մի շարք այլ հատուկ օրենքներով ջուղայեցիների իրավունքները պաշտպանվում էին տեղական իշխանությունների կամայականություններից։

Մասնավորապես մահմեդական մոլեռանդ ամբոխի թշնամական ելույթներից հայ վաճառականության անձի և գույքի պաշտպանության համար շահ Աբբաս I-ը հրապարակեց հատուկ հրովարտակ, ըստ որի վաճառական հային սպանողը ենթարկվում էր մահապատժի։

Նոր Ջուղան ստացավ նաև ինքնավարության իրավունք։ Առանց պարսկական իշխանությունների միջամտության նա ուներ քալանթար (քաղաքապետ) ընտրելու արտոնություն, որը իրավասու էր տնօրինելու Նոր Ջուղայի ներքին գործերը։ Քալանթարի պաշտոնում սովորաբար ընտրվում էին Նոր Ջուղայի առավել հարուստ և ազդեցիկ վաճառականները, որոնք իրականացնում էին նաև գաղթօջախի պաշտոնական հարաբերությունները Սեֆյան իշխանությունների հետ։ Քալանթարները գործուն մասնակցություն էին ցուցաբերում առավել կարևոր պետական գործերը լուծելու մեջ, հանդիսանում էին



Տեսարան Նոր Ջուղայից

շահի խորհրդականները, մասնակցում էին օտարերկրյա դեսպանների հետ շահական արքունիքի բանակցություններին, հաճախ կազմակերպում էին օտարերկրյա դեսպանների ընդունելություններ և այլն։

Հակառակ Իրանում գոյություն ունեցող ավանդական կարգերին և շարիաթով հաստատված օրենքին, ըստ որի շահի քրիստոնյա հպատակը իրավունք չուներ պետության մեջ գրավելու բարձր վարչական պաշտոններ, շահ Աբբաս I-ը խախտելով այդ օրենքները և ըստ էության դեմ գնալով մահմեդական բարձր հոգևորականությանը, հայ ազդեցիկ խոջաներին շնորհում էր զանազան

պաշտոններ։ Աղբյուրներից մեկի վկայությամբ, խոջա Մարջան անունով ջուղայեցիներից մեկը շահ Աբբաս I-ի տիրապետության օրոք զբաղեցնում էր Սեֆյան կառավարության ֆինանսական վարչության գլխավոր կառավարչի պաշտոնը[4]։

Դատական վեճերը լուծվում էին տեղում, քեդխուդայի գլխավորությամբ, որը հանդիսանում էր քալանթարի տեղակալը։ Հայերի և տեղական մահմեդականների միջև վեճեր ծագելու դեպքում, հաճախ շահ Աբբասի հրամանով, դատական իշխանությունները վճիռ էին կայացնում հօգուտ հայերի։

Աղբյուրների վկայությամբ, շահը հարուստ և ազդեցիկ ջուղայեցիներին տրամադրել էր այն բոլոր իրավունքներն ու արտոնությունները, որոնցից օգտվում էին Սեֆյան պետության բարձրաստիճան ներկայացուցիչները[5]։

Շահ Աբբաս I-ը հանդուրժողական վերաբերմունք է ցուցաբերել նաև կրոնական հարցում։ Նա ոչ միայն չէր արգելակում Նոր Ջուղայում հայկական եկեղեցիներ և վանքեր կառուցելու գործին, այլև ինքն էր խրախուսում դրանց շինարարությունը, հաճախ այդ նպատակով նույնիսկ շահական գանձարանից բաց թողնելով միջոցներ[6]։ Իրանահայ բնակչության եկեղեցական և հասարակական գործերը ղեկավարելու համար XVII դարում ստեղծվում է թեմ, որի կենտրոնը դառնում է Նոր Ջուղան։ Այս թեմի մեջ են մտել ոչ միայն Իրանի բազմաթիվ գաղթօջախների, այլև Հնդկաստանի, Բաղդադի և մի շարք այլ վայրերի հայ համայնքները։ Որպես լուսավորչական եկեղեցու թեմական կենտրոն, Նոր Ջուղան նշանակալից դեր էր խաղում իրանահայերի հասարակական-մշակութային կյանքում։

Ինչպես տեսնում ենք, շահական կառավարության կողմից Նոր Ջուղային տրված վերոհիշյալ արտոնություններից և իրավունքներից օգտվում էին գաղթօջախի բնակչության ոչ բոլոր խավերը։ Շահագրգռված լինելով Իրանի արտաքին առևտրի զարգացման և իրանական քաղաքացիական բյուրոկրատիայի տնտեսական ու քաղաքական դիրքերի ամրապնդման մեջ, շահական կառավարությունը գլխավորապես հովանավորում էր հայ վաճառականներին՝ մեծածախ առևտրով զբաղվող խոջաների վերնախավին, ինչպես նաև լուսավորչական հոգևորականությանը։

Այն կարգուկանոնը, որով որոշվում էր Նոր Ջուղայի գաղթօջախի բնակչության իրավական վիճակը, բխում էր Սեֆյան կառավարության պետական քաղաքականության ընդհանուր բնույթից, որի նպատակն էր ընդլայնել Իրանի առևտրական և քաղաքական կապերը օտարերկրյա պետությունների հետ։ Հայերի նկատմամբ հովանավորողական քաղաքականությունը շահ Աբբաս I-ի կառավարության կողմից դիտվում էր որպես այդ նպատակին հասնելու կարևորագույն միջոցառումներից մեկը։

Օգտվելով վերոհիշյալ իրավունքներից և արտոնություններից, ինչպես նաև ստանալով առևտրի կատարյալ ազատության իրավունք, ջուղայեցի վաճառականները անմիջապես ձեռնամուխ եղան առևտրական լայն գործունեության։

Հայտնի է, որ XVII դարում եվրոպական մանուֆակտուրաների զարգաց-

---

[4] Տե՛ս Հ. Քյուրդյան, Ջուղայեցի խոջա Նազար և իր գերդաստանը (առանձնատիպ), էջ 23։
[5] Տե՛ս J. B. Tavernier, էջ 616, 627։
[6] Տե՛ս Վահան Ալաճեան, Նոր Ջուղայի եկեղեցի սրբատեղիներ, Նոր Ջուղա 1927, էջ 3։

*ման պատճառով հում մետաքսը հանդիսանում էր միջազգային առևտրի կարևորագույն ապրանք։ Ունենալով տարանցիկ առևտրի հարուստ փորձ և լավ ծանոթ լինելով հում մետաքսի վաճառահանման համաշխարհային կարևոր շուկաներին, նրանք լայնորեն ծավալեցին այդ թանկարժեք հումքի արտահանման գործը։ Ջուղայեցի վաճառականներն սկսեցին հանդես գալ որպես իրանա-արևմտաեվրոպական առևտրի ամենախոշոր միջնորդներ։*

*Սկզբնական շրջանում շահը ջուղայեցի վաճառականներին առանց տոկոսի հատկացնում էր դրամական վարկեր և ապրանքներ, որպեսզի նրանք ծավալեն առևտրական գործունեություն։*

*Պիետրո դելլա Վալլեի վկայությամբ, հենց որ շահական ատրճանավորները նահանգներից հում մետաքսը տեղափոխում էին մայրաքաղաք, շահը իր մոտ էր կանչում առավել փորձված ջուղայեցի վաճառականներին և նրանց հանձնելով հում մետաքսի հակեր, ուղարկում էր եվրոպական երկրներ՝ այն վաճառահանելու համար*[1]*։*

*Շուտով ջուղայեցիների և անգլիական Արևելա-Հնդկական ընկերության միջև սկսվում է սուր մրցակցություն իրանական մետաքսի արտահանման մենաշնորհը ձեռք բերելու ուղղությամբ։ Այդ պայքարից հաղթող են դուրս գալիս ջուղայեցի խոջաները, որոնք օգտագործելով իրենց սերտ կապերը շահական արքունիքի և անձամբ շահի հետ, համոզում են նրան չեղյալ հայտարարել 1617 թ. առևտրական պայմանագիրը անգլիացիների հետ։ Այնուհետև մետաքսի արտահանության մենաշնորհը աճուրդով վաճառվում է հայ խոջաներին, որոնք իրենց եվրոպացի մրցակիցներին դուրս մղելու նպատակով համաձայնվում են արքունիքին յուրաքանչյուր հակ հում մետաքսի համար վճարել 50 թուման ոսկեդրամ։*

*XVII դարում թուրքական քարավանային ճանապարհով իրականացվող Իրանի արտաքին առևտուրը ամբողջապես գտնվում էր հայ վաճառականների, գերապանցապես ջուղայեցի խոջաների ձեռքում։ Այդ ճանապարհով իրանական, ինչպես նաև արևելյան այլ երկրներից բերված ապրանքները տեղափոխվում էին Մերձավոր Արևելքի առևտրական կենտրոնները։ Բազմաթիվ աղբյուրներ վկայում են եվրոպական վաճառականների հետ ջուղայեցի խոջաների աշխույժ առևտրի մասին՝ Հալեպում, Ալեքսանդրեթում, Զմյուռնիայում, Կ. Պոլսում, Տրիպոլիում և այլ քաղաքներում։ Ջուղայեցի վաճառականներից առավել խոշորները նույնիսկ ստանձնում էին Մերձավոր Արևելքում եվրոպական պետությունների մշտական առևտրական ներկայացուցիչների դեր։ Իրենց ապրանքները բեռնավորելով եվրոպական նավերի վրա, Միջերկրական ծովի վրայով նրանք տեղափոխում էին Ֆրանսիա, Հոլանդիա, Իսպանիա, Պորտուգալիա, իտալական քաղաք-հանրապետություններ՝ Վենետիկ, Լիվոռնո, Ջենովա, ինչպես նաև Անգլիա, Գերմանիա, Ավստրիա, Սկանդինավյան երկրներ և այլուր, որտեղ նրանք ունեին մշտական առևտրական ներկայացուցիչներ։*

*Խոսելով ջուղայեցի վաճառականների առևտրական լայն կապերի մասին, ֆրանսիացի Տուռնեֆորը գրում էր. «Նրանք ոչ միայն հանդիսանում են Լևանտ-*

---

[1] Տե՛ս *Pietro della Valle*, Voyages dans la Turquie, l'Egypte, la Palestine, la Perse, les Indes Orientales et autres lieux, t. IV, Rouen, 1745, էջ 417։

յան առևտրի տերը, այլև Եվրոպայի առավել մեծ քաղաքների առևտրի նշանակալից մասի տերը»[8]։

Աղբյուրների վկայությամբ, նրանք առևտրական լայն գործառնություններ էին կատարում նաև ասիական շուկաներում՝ հաճախակի լինում էին Տոնկինում, Սիամում, Տիբեթում, Բիրմայում, Հնդկաստանում, Ճավայում, Ֆիլիպիններում, Չինաստանում, Ճապոնիայում և այլուր։

Իրանահայ վաճառականները առաջնակարգ դեր էին խաղում նաև եվրոպական երկրներից արդյունաբերական ապրանքների ներմուծման գործում։

Նրանք անգնահատելի ծառայություններ էին մատուցում նաև իրանական ժողովրդին, իրանահայերին և առհասարակ հայ ժողովրդին եվրոպական մշակույթին հաղորդակից դարձնելով և ընդհակառակը՝ նպաստում էին այն բանին, որ եվրոպացիները ծանոթանան իրանական և ընդհանուր արևելյան մշակույթի, արհեստագործության, արվեստի հետ։

Իրանի արտաքին առևտրի մեջ իրենց գերակշռող դիրքը պահպանելու համար ջուղայեցի վաճառականները ստիպված էին համառ ու հետևողական պայքար մղել եվրոպական առևտրական կապիտալի դեմ, աշխատելով խափանել նրա ջանքերը հայերին առևտրական ասպարեզից դուրս մղելու և Սեֆյան պետության արտաքին առևտրի մենաշնորհը իրենց ձեռքը վերցնելու ուղղությամբ։

Առաջին հերթին պաշտպանելով իր առևտրական շահերը, հայ վաճառականությունը հանդես էր գալիս եվրոպական կապիտալի՝ Իրանի շուկաները թափանցելու դեմ։ Առհասարակ պետք է նշել, որ XVII դարում Իրանում արևմտաեվրոպական երկրների զավթողական ձգտումների դեմ պայքարի կազմակերպման գործում բացառիկ մեծ դեր են խաղացել Նոր Ջուղայի հայ վաճառականները, օգտվելով իրանական հասարակայնության ամենալայն խավերի աջակցությունից։

Այսպիսով, Նոր Ջուղան խաղում էր կարևոր դեր ոչ միայն Իրանի տնտեսական, այլև քաղաքական կյանքում։

XVII դարի կեսերից սկսած ջուղայեցի վաճառականները սկսում են կազմակերպել առևտրական ընկերություններ, որոնք հնարավորություն են տալիս նրանց ընդլայնելու իրենց առևտրական գործունեությունը և ավելի կազմակերպված ձևով դիմադրելու եվրոպական առևտրական կապիտալի ուժեղացող գրոհին։ Այսպես կոչված «Ջուղայի հայ առևտրական ընկերությունը» առևտրական պայմանագրեր էր կնքում ոչ միայն օտարերկրյա առևտրական ընկերությունների, այլև առանձին պետությունների հետ։ Հիշյալ ընկերությունն էր, որ 1667 և 1673 թթ. առևտրական պայմանագրեր կնքեց Ռուսաստանի հետ, որոնց համաձայն նրան իրավունք էր տրվում ազատ առևտուր անել Ռուսաստանի, ինչպես նաև Ռուսաստանի վրայով՝ Արևմտյան Եվրոպայի երկրների հետ։ Ջուղայեցի վաճառականների մի այլ ընկերություն Սուրաթում 1688 թ. առևտրական պայմանագիր կնքեց անգլիական Արևելա-Հնդկական ընկերության հետ, ըստ որի հայ վաճառականները հիշյալ ընկերությունից

---

[8] P. de Tournefort, Relation d'un voyage du Levant, t. II, Paris, 1718, Lettre, XX, էջ 158։



Հայ խոջայի տուն Նոր Ջուղայում

ստացան այն բոլոր արտոնությունները ու իրավունքները, որոնցից օգտվում էին անգլիական վաճառականները[9]։

Հարկ է նշել, որ Ռուսաստանի հետ Նոր Ջուղայի առևտրական ընկերության կնքած վերոհիշյալ պայմանագիրը հավասարազոր էին ռուս-իրանական առևտրական պայմանագրի, ուստի դրանք նպաստեցին այդ երկու երկրների միջև առևտրական, ինչպես նաև քաղաքական կապերի ամրապնդմանը։ Փաստերը վկայում են, որ ցարական կառավարությունը այդ շրջանում Ռուսաստանի հետ իրանահայ վաճառականների առևտուրը դիտում էր որպես կարևոր քաղաքական միջոցառում, որն ընդունակ էր նպաստելու ռուս-իրանական առևտրական և քաղաքական կապերի ամրապնդմանը։ Պատահական չէ, որ երբ 1689 թ. ռուսական կառավարությունը արգելեց բոլոր արևելյան վաճառականներին Ռուսաստանի վրայով առևտուր անել արևմտաեվրոպական պետությունների հետ, բացառություն արեց միայն Նոր Ջուղայի Հայ առևտրական ընկերությանը[10]։ Հարկ է նշել, որ XVII դարում Ռուսաստանի հետ իրանահայ վաճառականների առևտրական սերտ կապերը նպաստեցին հայ ժողովրդի ռուսական կողմնորոշման ձևավորմանը։

---

[9] Տե՛ս *H. B. Morse*, The chronicles of the East India company trading to China, vol. I, Oxford, 1926, էջ 174։

[10] Տե՛ս «Русско-индийские отношения в XVII в.», Сборник документов, М., 1958, док. № 242.

Իրանա-ռուսական առևտրական-տնտեսական բանակցությունների ժամանակ ջուղայեցի հայ վաճառականները, որոնք հանդես էին գալիս որպես իրանական կառավարության պաշտոնական դիվանագիտական ներկայացուցիչներ, շոշափում էին նաև քաղաքական խնդիրներ, մասնավորապես Ռուսաստանի հետ հակաթուրքական դաշինք ստեղծելու հարցը։

Աղբյուրները վկայում են, որ եթե իրանա-ռուսական առևտրում հայ վաճառականներից բացի մասնակցություն էին ցուցաբերում նաև շահի մահմեդական հպատակները՝ պարսիկները, ադրբեջանցիները և այլք, ապա Ռուսաստանի վրայով Արևմտյան Եվրոպայի երկրների հետ տարանցիկ առևտրով զբաղվում էին բացառապես իրանահայ խոջաները։

Խոջաներն իրենց առևտրով ոչ միայն հարստացնում էին շահական գանձարանը, այլև իրենք էին կուտակում հսկայական հարստություններ։ Շրջանառության մեջ գտնվող նրանց կապիտալները հասնում էին միլիոնների։ Տավերնիեյի վկայությամբ ջուղայեցի խոջաներից մեկը իր մահից հետո թողել էր մոտ 40 միլիոն թումանի հասնող հարստություն[11]։

Սեֆյան շահերը վարպետորեն օգտագործում էին ջուղայեցիների լայն առևտրական կապերը օտարերկրյա պետությունների հետ ոչ միայն առևտրական հարաբերություններ հաստատելու, այլև քաղաքական կապեր ստեղծելու համար։ Առևտրական գործերով Նոր Ջուղայի վաճառականներին ուղարկելով Եվրոպա, Սեֆյան կառավարությունը միաժամանակ նրանց տալիս էր դիվանագիտական բնույթի հանձնարարություններ։ Ջուղայեցի խոջաները հատկապես գործուն մասնակցություն էին ցուցաբերում իրանա-եվրոպական բանակցություններում հակաթուրքական ռազմական դաշինք կնքելու, Իրանի արտաքին առևտրի ուղին թուրքական ճանապարհից դեպի Պարսից ծոց թեքելու, ինչպես նաև եվրոպական երկրների հետ առևտրական պայմանագրեր կնքելու հարցերում։ Այսպես, 1603 թ. շահի հրամանով Վենետիկի հանրապետություն է մեկնում իրանական դիվանագիտական մի առաքելություն, որի 12 անդամներից երեքը ջուղայեցիներ էին[12]։ Իսկ 1607 թ. ջուղայեցի խոջա Շիոշ անունով անվանի վաճառականը ուղևորվում է Վենետիկ, որպես Սեֆյան կառավարության դեսպան, թուրքերի դեմ ռազմական դաշինք և առևտրական պայմանագիր կնքելու համար բանակցություններ վարելու նպատակով[13]։ Նույն հարցերով խոջա Սաֆար անունով մի այլ վաճառական, որպես Շահ Աբբաս I-ի դեսպան 1608—1619 թթ. բանակցություններ էր վարում իսպանական թագավորի, Վենետիկի դոժի, Հռոմի պապի, Տոսկանայի մեծ դքսի և եվրոպական այլ քաղաքական գործիչների հետ։

Շահի կողմից Եվրոպա ուղարկվող դեսպանություններից զատ, Սեֆյան կառավարությունը որոշ երկրներում ուներ մշտական ներկայացուցիչներ, որոնց միջոցով կապեր էր պահպանում եվրոպական պետությունների կառավարող շրջանների հետ։ Այդ նպատակով ևս հաճախ շահը օգտվում էր եվրոպական պետությունների բարձր շրջաններին մոտ կանգնած հարուստ և ազդեցիկ ջուղայեցի վաճառականների ծառայություններից։ Հայտնի է, օրինակ,

---

[11] Տե՛ս J. B Tavernier, էջ 418—419։

[12] Տե՛ս G. Berchet, La Republica di Venezia e la Persia, Torino, 1865, տե՛ս № 29, 31, 39, 44 փաստաթղթերի մեկնաբանությունները, էջ 192, 195, 214։

[13] Տե՛ս նույն տեղում, էջ 47։

որ ջուղայեցի Միրմանյան առևտրական ընտանիքը մշտական բնակություն էր հաստատել Լիվոռնոյում, որպես շահի ներկայացուցիչ՝ Տոսկանայի դքսությունում[14]։ Այսպիսով, XVII դարում Նոր Ջուղան հանդիսանում էր կարևոր գործոն իրանա-եվրոպական հարաբերություններում, հանդես գալով Սեֆյան պետության արտաքին տնտեսական և քաղաքական հարաբերություններում որպես առաջավոր և ծանրակշիռ ուժ՝ մեծապես նպաստում էր տնտեսական և քաղաքական խնդիրների իրագործմանը։

Պատմական աղբյուրները վկայում են, որ Նոր Ջուղայի բնակչության սոցիալական կազմը միատարր չէր։ Մեծաքանակ առևտրով զբաղվող վաճառականության, ինչպես նաև հոգևորականության կողքին, նշանակալից տոկոս էին կազմում միջին ու չքավոր խավերը, մանր առևտրականները, որոնք կախված էին խոշորներից, հողագործները և մասնավորապես արհեստավորները։ XVII—XVIII դարերում Նոր Ջուղայում հատկապես բարձր զարգացման էին հասել ոսկերչությունը, գորգագործությունը, կերպասագործությունը, ներկարարությունը և այլն։ Ջուղայահայ արհեստավորները լայնորեն օգտվել են իրանական արհեստի հարուստ ավանդույթներից, իրենց հերթին մեծապես ազդելով նրա զարգացման վրա։

Կրկնակի շահագործման ենթարկվելով Սեֆյան իշխանությունների և մեծահարուստ հայ խոջաների ու նրանց շահակից հայ հոգևորականության կողմից, Նոր Ջուղայի արհեստավորությունը դասակարգային անհաշտ պայքար է մղել նրանց դեմ։ Աղբյուրները վկայում են, որ XVII դարի 30—40-ական թվականներին Նոր Ջուղայի հայ արհեստավորության մեջ ծագել է աղանդավորական մի շարժում, որը իր հետապնդած նպատակներով իրականում սոցիալական ու դասակարգային բնույթ ուներ։ Այդ շարժման գլխավոր կազմակերպիչներն ու գաղափարական առաջնորդներն էին դերձակ Թումիկը և Սև Պետրոսը, որոնք, ինչպես երևում է, ունեցել են շատ հետևորդներ։

XVII դարի 70—80-ական թվականներից սկսած, Իրանի տնտեսական անկմանը զուգընթաց, Նոր Ջուղան աստիճանաբար կորցնում է իր նախկին շուքը։ Պետության եկամուտների կրճատումը ստիպում է Սեֆյան կառավարությանը ուժեղացնել տնտեսական ճնշումը ոչ միայն ժողովրդի աշխատավորական խավերի, այլև քրիստոնյա հոգևորականության և առևտրական դասի նկատմամբ։ Նոր Ջուղայում շահական իշխանությունների հարստահարությունները դարձան սովորական երևույթ։ Ուժեղացան ազգային և կրոնական հալածանքները։

Եթե շահ Աբբաս I-ից հետո նրա գահը ժառանգած շահ Սեֆին (1629—1642) և շահ Աբբաս II-ը (1642—1666) Նոր Ջուղայի հայերի նկատմամբ վարում էին հարաբերականորեն բարյացակամ քաղաքականություն, ապա շահ Սուլեյմանի (1666—1694) և նրա հետնորդ շահ Սուլթան Հուսեյնի (1694—1722) տիրապետության շրջանում Սեֆյան կառավարության տիրապետող վերնախավի քաղաքականությունը Նոր Ջուղայի բնակչության նկատմամբ կտրուկ փոփոխության է ենթարկվում։ Կառավարությունը ծանր հարկեր է դնում Ջուղայի վրա, տարբեր պատրվակների տակ, այդ թվում մեղադրելով մահմեդա-

[14] Տե՛ս Վ. Մ. Ուղուրլեան, Պատմութիւն հայոց գաղթականութեան և շինութեան եկեղեցւոյ նորա ի Լիվոռնոյ քաղաքի՝ հանդերձ յաւելուածովք, Վենետիկ, 1891, էջ 202։

կան պետության սկզբունքների խախտման մեջ, սկսում է դրամ կորզել ջուղայեցիներից և այլն։ Դրան գալիս է լրացնելու բռնի դավանափոխության քաղաքականությունը։ Շահ Սուլթան Հուսեյնի կառավարման ժամանակ նույնիսկ հրապարակվեց մի օրենք, ըստ որի հային սպանող մահմեդականը կարող էր ազատվել պատժից, որպես արյան գին վճարելով ոչ մեծ դրամական տուգանք կամ որոշակի քանակությամբ ցորեն, կամ բրինձ[15]։

Գյուղատնտեսության և արհեստների արտադրանքի կրճատումը հանգեցրեց Իրանի ապրանքափոխանակության ծավալի կտրուկ նվազեցման։ Երկրի ընդհանուր տնտեսական անկման և ապահովության կրճատման պայմաններում կրճատվեց նաև Ջուղայի վաճառականության առևտուրն ու եկամուտները։ Շատ հաճախ խաները և շահական պաշտոնյաները կազմակերպում էին զինված ավազակախմբեր հայ վաճառականների առևտրական քարավանները կողոպտելու համար։

XVII դարի վերջին առևտրի պայմանների վատթարացման, անձնական և գույքային ապահովության բացակայության, տնտեսական ճնշման քաղաքականության հետևանքով Նոր Ջուղայի հայ առևտրական բուրժուազիան սկսեց ելք որոնել իր կապիտալներն ու սեփական գոյությունը փրկելու համար։ Նա սկսեց առևտրական շրջանառությունից հանել իր կապիտալի մի մասը և տեղավորել եվրոպական բանկերում։ Արդեն XVII դարի 70—80-ական թվականներից սկսվում է Նոր Ջուղայի վաճառականության զանգվածային արտագաղթը դեպի Լևանտի առևտրական կենտրոնները, մասնավորապես Կ. Պոլիս, Զմյուռնիա, Վենետիկ, Լիվոռնո, Մարսել, Ամստերդամ, Լեհաստան, Ռուսաստան, ինչպես նաև ասիական երկրներ՝ Հնդկաստան, Բիրմա, Ինդոնեզիա և այլն։

Իրանահայերի այդ նոր արտագաղթի հետևանքով Ասիայի և Եվրոպայի հայ գաղթօջախները, որոնցից մի քանիսը XVI—XVII դարերում հիմնվել էին Հին և Նոր Ջուղայի վաճառականների կողմից, գնալով ավելի բազմամարդ էին դառնում։

Նոր Ջուղան ապրեց առանձնակի ծանր օրեր աֆղանների արշավանքի ժամանակ։ 1722 թ. Սեֆյան պետության մայրաքաղաք Սպահանի պաշարման օրերին աֆղանները սոսկալի ավերածության ու կողոպուտի ենթարկեցին Նոր Ջուղան, գլխատեցին նրա քալանթարին, գերության քշեցին հարյուրավոր երիտասարդների և իրենց հարեմները լցրեցին բազմաթիվ հայ աղջիկներով։ Միաժամանակ նրանք ստիպեցին Ջուղայի բնակչությանը որպես փրկագին վճարել 70 հազար թուման, որը վերջնականապես աղքատացրեց ու քայքայեց երբեմնի հարուստ այդ գաղութը։

XVIII դարի 40-ական թվականներից Իրանում ծայր առած միջֆեոդալական արյունահեղ բախումները և դրանց հետևանքով երկրի տնտեսական վիճակի վատթարացումը, բացահայտ կողոպուտն ու հարկային ծանր լուծը իրանահայ բնակչության վիճակը դարձրին է՛լ ավելի անմխիթարական։

Այս բոլորի հետևանքով XVIII դարի կեսերին արտագաղթը Նոր Ջուղայից ընդունեց ավելի ու ավելի համատարած բնույթ։ Գաղութը դատարկվում ու անշքանում էր։ Նրա բնակչության զգալի մասը հետագայում ևս շարունակելով

---

[15] *Տե՛ս К. Патканов*, Дневник осады Испагани афганами, веденный Петросом ди Саркис Гиланенц в 1722 и 1723 гг., СПб., 1870, էջ XX:

կայքեր դերապանցապես դեպի Հնդկաստան, ստվարացրեց և ավելի կոբովի ու կենսունակ դարձրեց այդ գաղթօջախը։

XVII—XVIII դարերում Նոր Ջուղան ոչ միայն հանդիսանում էր առաջնակարգ նշանակություն ունեցող տնտեսական կենտրոն, այլև հայ մշակույթի խոշոր օջախ։

XVII դարի 30-ական թվականներից սկսած Նոր Ջուղայում սկսվեց լուսավորական ուժեղ շարժում։ Նոր Ջուղա բերելով հայ մշակույթի լավագույն ավանդույթները, ջուղայահայերը ձեռնամուխ եղան դրանց արմատավորմանը Իրանում, ստեղծելով ինքնատիպ մի մշակույթ, որը հարստացրեց հայ ժողովրդի հոգևոր գանձարանը նոր արժեքներով։

Հարկ է նշել, որ Նոր Ջուղայում սկսված մշակութային ու լուսավորական շարժման համար զորեղ խթան հանդիսացավ Սեֆյան Իրանի և եվրոպական կաթոլիկ միսիոներների կողմից տարվող համաձուլման քաղաքականությանը դիմագրավելու անհրաժեշտությունը։ XVII դարի 30-ական թվականներին Թեմի առաջնորդ Խաչատուր Կեսարացու նախաձեռնությամբ հիմնվում է դպրոց կամ ինչպես այն ժամանակ են կոչել՝ համալսարան, որտեղ դասավանդվում էին ամենաբազմապիսի առարկաներ՝ երաժշտություն, բանաստեղծություն, համարողական արվեստ, քերականություն, փիլիսոփայություն, բնական գիտություններ, աստվածաբանություն և այլն։ Այս դպրոցը տվել է մի շարք նշանավոր գործիչներ, որոնք կարևոր դեր են խաղացել ոչ միայն հիշյալ գաղթօջախի մտավոր և բարոյական առաջընթաց շարժման մեջ, այլև համայն հայկական մշակութային կյանքում։

XVII դարում Նոր Ջուղայի դպրոցներից աչքի ընկնող դեր է խաղացել նաև Ամենափրկիչ վանքի վանական դպրոցը, որի սաները ուսումնասիրել են նաև եվրոպական և ասիական լեզուներ։ Դպրոցի հիմնական խնդիրներից մեկն է եղել երեխաներին սովորեցնել «արվեստ վաճառականության»։ Այդ նպատակով վանական դպրոցի դասապետ Կոստանդ Ջուղայեցին գրում է մի դասագիրք «Աշխարհաժողով գիրք» վերնագրով[16], որտեղ բազմապիսի տեղեկություններ կան աշխարհի տարբեր երկրների առևտրական-տնտեսական կյանքի, արտադրվող ապրանքների, չափերի ու կշիռների, շրջանառության մեջ գտնվող դրամական միավորների և այլնի մասին։ «Աշխարհաժողովը» ավելորդ անգամ վկայում է, որ չափազանց լայն են եղել աշխարհագրական այն սահմանները, ուր հասել են ջուղայեցի վաճառականները։

XVII դարում Իրանի մի շարք հայաբնակ վայրերում՝ Շիրազում, Սպահանում և այլ տեղերում, եվրոպական կաթոլիկ միսիոներները բաց են անում դպրոցներ՝ բացառապես հայ երեխաների համար։ Նույնանման մի դպրոց հիմնադրվում է նաև Նոր Ջուղայում[17], որի նպատակն էր հայ մանուկներից պատրաստել իրանա-եվրոպական առևտրի միջնորդ վաճառականներ և, վերջին հաշվով, հայությունից հեռացնել և կաթոլիկության մեջ ներգրավել հայ մատաղ սերնդին։ Սակայն իրենց իսկ՝ միսիոներների խոստովանությամբ այս դպրոցը չի ունեցել առանձին հաջողություն, որովհետև գաղթօջախի բնակչության մեծ մասը, որը համառ պայքար էր մղում իր ազգային-կրոնական ինք-

---

[16] Տե՛ս Մատենադարան, ձեռագիր №№ 8443 և 5994։

[17] Տե՛ս „A chronicle of the Carmelites in Persia and the Papal Mission of the XVII and XVIII centuries", vol. I, London, 1939, էջ 319, 445, 484, vol. II, էջ 1080, 1082։

ուրույնությունը պահպանելու համար, խուսափել է երեխաներին ուսման տալ միսիոներների դպրոցում։ Հետագայում՝ 1710 թ. Նոր Ջուղայում բացվում են ևս երկու դպրոցներ։

Նոր Ջուղայի Ամենափրկիչ վանքում հիմնվում է նաև մատենադարան, որտեղ հավաքում են Հայաստանից և այլ վայրերից բերված, ինչպես նաև Նոր Ջուղայում ընդօրինակված հարյուրավոր արժեքավոր ձեռագիր մատյաններ։

XVII—XVIII դարերում Նոր Ջուղայում մեծ զարգացման է հասնում մանրանկարչությունը, որմնանկարչությունը և դրչության արվեստը։ Մեզ հասած փաստերը վկայում են, որ հիշյալ գաղթօջախում եղել է նկարչական մի դպրոց, որի ներկայացուցիչներն իրենց վարպետությամբ, արվեստի բազմազանությամբ և բարձր գեղարվեստական ճաշակով աչքի են ընկել որպես իրանահայ արվեստում վրձնի անզուգական վարպետներ։ Նրանք զարմանալի վարպետությամբ նկարազարդել են Ջուղայի հայկական եկեղեցիները, խոջայական ապրանքները, հայկական ձեռագիր մատյանները, ինչպես նաև գծել են իրենց ժամանակի նշանավոր անհատների դիմանկարները։ Կարծիք կա այն մասին, որ հայ նկարիչներն են Եվրոպայից Իրան մտցրել կտավների վրա նկարելու արվեստը։ Համենայն դեպս անժխտելի է, որ նրանք ազդեցություն են գործել իրանական նկարչական արվեստի վրա, իրենց հերթին ազդեցություններ կրելով նրանից։

Նոր Ջուղայում բարձր զարգացման է հասել նաև ճարտարապետությունը, որի վկայությունը խոջայական շքեղ ապարանքներն են, բազմաթիվ եկեղեցիները, հասարակական շինությունները, ինչպես նաև Ջուղայի գերեզմանատան նուրբ ու բարձրարվեստ զարդանկարներով քանդակված խաչքարերն ու շիրմաքարերը[18]։

Ջուղայի լուսավորչական գործիչների, հատկապես Խաչատուր Կեսարացու ջանքերով հիշյալ գաղթօջախում հիմնվում է նաև տպարան, որը առաջինն էր Իրանում։

XVII—XVIII դարերում Նոր Ջուղայում նկատվել է նաև պարսկահայ աշուղական գրականության և ժողովրդական բանահյուսության բավականին աշխուժ վերելք[19]։ Այդ մասին են վկայում մեզ հասած թվով ոչ մեծ, բայց բովանդակությամբ արժեքավոր և հուզիչ տաղերն ու բանաստեղծությունները։

XVII դարում հայ իրականության մեջ Նոր Ջուղան ոչ միայն կարևորագույն մշակութային կենտրոն էր, այլև, առանց վերապահության կարելի է ասել, գերազանցապես նա էր տոն տալիս հայ մշակութային կյանքի մի շարք բնագավառներին, դրանց հաղորդելով թարմ շունչ ու կենսունակություն։

Այն, որ հայ կյանքի ղեկավարությունը փաստորեն գտնվում էր ջուղայեցիների ձեռքում, հայտնի էր նույնիսկ եվրոպացիներին։ Պատահական չէ, որ Վատիկանը XVII դարում առավել ուժգին գրոհ էր ծավալել հենց Նոր Ջուղայում։

Հայ ժողովրդի վրա կախված ուծացման և ձուլման այդ ահեղ սպառնալիքը ևս ի չիք դարձավ շնորհիվ այն համառ ու հետևողական պայքարի, որ

---

[18] *Մանրամասն տե՛ս John Carswell*, New Julfa, The Armenian churches and other buildings, Oxford, 1968.

[19] *Տե՛ս* Ա. Երեմյան, *Փշրանքներ ջուղայահայ և հնդկահայ բանահյուսությունից (XVII—XIX դդ.), Վիեննա, 1930*։

մղում էր Նոր Ջուղայի գաղթօջախը՝ ազգային դեմքն ու գոյությունը պահպանելու համար։

Մյուս կողմից, նկատի առնելով այն հանգամանքը, որ Իրանում եվրոպական պետությունների շահերի օգտին բացառիկ կարևոր դեր էին խաղում նաև կաթոլիկ եկեղեցին ու նրա գործակալները, կարելի է ասել, որ իրանահայերի պայքարն ընդդեմ միսիոներների օբյեկտիվորեն ուղղված էր Իրանում արևմտաեվրոպական գաղութարարների զավթողական ծրագրերի դեմ։

## 2. ՀՆԴԿԱՍՏԱՆԻ ԳԱՂԹՕՋԱԽՆԵՐԸ

Հնդկաստանը Արևելքի այն երկրներից է, ուր հայերը ոտք են դրել և հնդիկ ժողովրդի հետ փոխհարաբերությունների մեջ մտել տակավին վաղ ժամանակներից։

Հայաստանի մի շարք քաղաքներ հարյուրամյակներ շարունակ ծառայել են իբրև Հնդկաստանի հետ կատարվող ապրանքափոխանակության կենտրոններ։ Պրոկոպիոսի (VI դար) վկայությամբ Դվինում առևտուր անող վաճառականների շարքում կային նաև հնդիկներ[20]։ Մյուս կողմից հայտնի է, որ Անիի հռչակավոր Կաթողիկեի ջահը հայ վաճառականները բերել էին Հնդկաստանից։

Հայերի Հնդկաստան այցելելու մասին արժեքավոր փաստեր կան XII դարի անանուն հայ ճանապարհորդի «Անուանք քաղաքացն Հնդկաց և Պարսից» աշխատության մեջ։ Շարադրանքից երևում է, որ հայ հեղինակը եղել է Հնդկաստանի մի շարք քաղաքներում և իշխանություններում[21]։

Հին շրջանում Հնդկաստանի հետ հայերի ծանոթության և առևտրի նպատակով այցելությունների մասին է խոսում Հեթում պատմիչը։

Հայ-հնդկական առևտրական հարաբերությունները առանձնապես աշխույժ բնույթ են ստանում XVI—XVII դարերում։ Հայերի հաճախակի այցելությունները Հնդկաստան, բնականաբար, նրանց հնարավորություն էր տալիս մոտիկից ծանոթանալու երկրի հետ։

Սկսած XVI դարից, Հնդկաստանի զանազան վայրերում, հատկապես ծովափնյա քաղաքներում, հաստատվում են առաջին հայ համայնքները։

Կոստանդ վարդապետի՝ Նոր Ջուղայի հայկական դպրոցի աշակերտների համար կազմած առևտրական ձեռնարկի մեջ մատնացույց են արվում տասնյակ առևտրական կենտրոններ Հնդկաստանում, որոնք ծանոթ էին հայ վաճառականներին, և ուր բնակություն էին հաստատել հնդկահայերը։

Հնդկահայ գաղթօջախների գոյացմանը և ստվարացմանը զգալիորեն նպաստել է մողոլ կայսրության ազատամիտ գահակալներից մեկի՝ Աքբար թագավորի (1556—1605) քաղաքականությունը։ Երկրի արդյունաբերությունը զարգացնելու և առևտուրը ծավալելու նպատակով նա իր թագավորության սահմաններում եկեղեցական ազատ իրավունք էր տվել ձեռներեց հայ վաճառականներին։ Հայ առևտրականներին արտոնված էր ցանկացած ապրանքն արտահանել և ներմուծել, մտնել կայսրության այնպիսի շրջաններ, ուր արգելված էր օտարականների մուտքը, իրենց ապրանքներն առաջին հերթին փոխադրելու միջոցներ ստանալ և այլն։

---

[20] Տե՛ս Прокопий Кессарийский. История войн римлян с персами СПб, 1898, էջ 181—182:

[21] «Բ․ Նրեր Մատենադարանի», № 4, 1958, էջ 317—328։

Հնդկահայ հնագույն և մարդաշատ գաղթավայրերից մեկը գտնվել է Ագրայում։ Աքբար թագավորը այնտեղ հաստատված հայ բնակչությանը հողամաս է հատկացրել և անկաշկանդ գործունեության լայն հնարավորություններ տվել։ 1562 թ. Ագրայում ապրող հայերի համար նա նույնիսկ պետական ծախսով եկեղեցի է կառուցել, որն ապացույց է մնայուն հայ համայնքի առկայության։

Աքբարն այնքան մեծ վստահություն է ունեցել հնդկահայերի նկատմամբ, որ իր պետության մի քանի կարևոր պաշտոններ վստահել է նրանց։ Հայտնի է, որ բարձրագույն դատավոր Միր Աբդուլը հայ է եղել, արքունիքի պալատական բժշկուհի Հուլիանան՝ հայուհի, արտաքին գործերի նախարարության մեջ աշխատող թարգմանների ու դիվանագետների մի մասը հայեր էին։ Հայուհի էր Աքբարի թագուհիներից մեկը՝ Մարիամ Զամանի Բեկումը[22]։

Մեզ է հասել մի ավանդություն Աքբարի կողմից որդեգրված մի հայ երեխայի մասին։ Երբ Աքբարը, ծպտված շրջագայության ժամանակ, Քաշմիրում հանդիպում է Հակոբ անունով ջուղայեցի մի հայ վաճառականի և ծանոթանում նրա ընտանիքի հետ։ Այստեղ նա տեսնում է վաճառականի մանկահասակ որդուն, հավանում և առաջարկում իր որդեգիրը դարձնել։ Թագավորն իր որդեգրած երեխայի՛ն վերանվանում է Զուլղարնայն։ Վերջինս հետագայում նշանակվում է Հուգլիի և Փենջաբի կառավարիչ։

Ագրայի հայկական գաղթօջախն ավելի է մեծանում շահ Աբբասի բռնագաղթից և Նոր Ջուղայի հիմնադրումից հետո։ Նոր Ջուղայի մեծահարուստ վաճառականները Հնդկաստանի մեծ ու վաճառաշահ քաղաքներն են ուղարկում իրենց մշտական գործակատարներին։ Երկու տասնամյակ անց բազմաթիվ նոր գաղթավայրեր են ստեղծվում Հնդկաստանում, ուր վաճառականներից բացի բնակություն են հաստատում արհեստավորներ և այլ զբաղմունքի տեր մարդիկ։ Ըստ Մեսրոպ Սեթյանի Ագրայում ապրող հայերի մեջ եղել են նաև պետական պաշտոնյաներ, զորավարներ, զինվորներ, թնդանոթաձիգներ, զինագործներ, ճարտարապետներ և այլ մասնագետներ։

Ագրայի հայ արհեստավորությունը, ինչպես երևում է, գործուն մասնակցություն է ունեցել տեղական զենքի արտադրության մեջ։ Հայտնի է, օրինակ, թնդանոթ ձուլող լավագույն մասնագետ Հովհանջան Ջուղայեցին, որի պատրաստած թնդանոթների վրա դրոշմված է եղել իր անունը՝ հնդկերեն, պարսկերեն և հայերեն լեզուներով։

Հնդկաստանի մողոլ կայսրության շրջանում փոքրիկ գաղթօջախ է եղել Մուրշիդաբադում՝ Բենգալիայի մողոլ փոխարքաների մայրաքաղաքում։ Այստեղ հայերը ապրել են քաղաքի Սեյիդաբադ կոչվող արվարձանում։ Ըստ տեղեկությունների, մողոլ կայսր Աուրանգզեբը (1658—1707), հետևելով Աքբարի քաղաքականությանը, աշխատել է խրախուսել հայ բնակչության ներգաղթը Հնդկաստան։ 1665 թ. Սեյիդաբադում նա հողամաս է հատկացրել հայերին շենքեր կառուցելու համար և մի շարք արտոնություններ շնորհել։ Հետագայում Բադրշահը ևս կայսերական հրովարտակով նորից հաստատել է իր նախորդների կողմից հնդկահայերին տրված առանձնաշնորհումները. ըստ նրա արտոնագրի մահացած հայերի շարժական և անշարժ գույքը մնացել է հայերի իրավասության տակ։

[22] Տե՛ս M. J. Seth, Armenians in India, Calcutta, 1937, էջ 151—166։

Սեյիդաբադում հայերին տրված արտոնությունների մասին վկայություն ունի XVIII դարի երկրորդ կեսում Հնդկաստանում պաշտոնավարած անգլիացի Բոլթը։ Նա գրում է. «Հայերը, որոնք մեծ հաջողություն են ունեցել Հնդկաստանում, մնայուն գաղութներ են ունեցել նաև Բենգալիայի մեջ, մասնավորապես Սեյիդաբադում։ Նրանց վաճառականությունը նույնպես հաստատված է եղել մողոլ թագավորների ֆերմանով, որով իրենց երկու գլխավոր ապրանքների վրա՝ մահուդի և հում մետաքսի, մաքս է որոշված եղել հարյուրից 3,5 տոկոս»[23]։

Հնդկահայ գաղթօջախների մյուս խումբը ստեղծվել է XVII—XVIII դարերում, ծովային ճանապարհով Պարսկաստանից Հնդկաստան եկած հայ գաղթականների կողմից՝ գլխավորապես նավահանգստային քաղաքներում։ Ըստ որում, հայ բնակչության ներհոսը դեպի Հնդկաստանի ծովափնյա նշանավոր քաղաքներ շարունակվել է մի քանի տասնամյակ։ Որքան ծանրացել է նրանց վիճակը Իրանում և Անդրկովկասում, այնքան ավելի է ուժեղացել պարսկահայերի գաղթը դեպի Հնդկաստան։

Ծովային ճանապարհի վրա հայկական գաղթականության առաջին հանգրվանը եղել է Սուրաթը, որը Հնդկաստանի ամենից նշանավոր նավահանգիստն էր Հնդկական թերակղզու արևելյան ափին՝ Բասրայից և Բանդար-Աբբասից եկող առևտրական նավերի համար։

Սուրաթում հայեր լինելու մասին տեղեկություններ ունենք դեռևս XVI դարից։ Այստեղ գտնվել է հայերեն 1579 թ. արձանագրությամբ տապանաքար[24]։ Հայկական գաղթօջախն այդ ժամանակ, իհարկե, փոքր է եղել։ Սուրաթում մնայուն և բազմամարդ հայկական համայնք ստեղծվել է XVII դարում, որը գոյատևել է մինչև XVIII դարի վերջերը։

Սուրաթի հայ համայնքի սոցիալական բոլոր խավերի մեջ գործուն դեր են ունեցել վաճառականները, որոնք սեփական օվկիանոսային նավեր են ունեցել և խոշոր դեր կատարել տարանցիկ առևտրի բնագավառում։

Սուրաթում բնակվել են նաև մեծ թվով կերպասագործներ, որոնք խոջաներից վարկ ստանալով, կազմակերպել են հումքի հայթայթումը, թել մանելը, կտոր գործելը[25]։

Հնդկաստանի արևելյան նավահանգիստներից աչքի ընկնող հայկական գաղութ է եղել Մադրասում (կոչվել է նաև Ջինի Փաթան)։ Քաղաքը 1504 թ. սկսած պորտուգալացիների առևտրական կայանն էր։ 1602 թ. այն գրավել են անգլիացիները, ս. Գևորգ բերդի շրջակայքում հիմնել Մադրասի նոր քաղաքամասը, ուր և տեղավորված է եղել հայկական գաղթօջախը։

Մադրասում հայկական մնայուն համայնքն ստեղծվել է XVI դարի կեսերից։ Դրա անհերքելի ապացույցը Մադրասից ոչ հեռու գտնվող ս. Թովմայի բլրի վրա կառուցված հայկական եկեղեցին է եղել, որն այժմ կանգուն չէ, սակայն պահպանվել է կառուցման 1547 թ. արձանագրությունը, որպես խոսուն վկա հայկական անհետացած գաղթօջախի[26]։

Հնդկաստանի պատմության լավագույն մասնագետ Ֆրանսուա Մարտինը,

---

23 M. J. Seth. Armenians in India., էջ 325։

24 Տե՛ս նույն տեղում, էջ 225։

25 Տե՛ս Լեո, Հայ տպագրության պատմություն, հատ. 2, Թիֆլիս, 1904, էջ 451։

26 Տե՛ս Գուշակյան, Հնդկահայք, էջ 44։

Մադրասի հայկական համայնքի մասին խոսելիս, գրում է. «Հավաստի հաստատված է, որ Սուրբ Թովմասի բուն սկզբնավորությունը բազմաթիվ այն հայերի գործն էր, որոնք այստեղ իրենց բնակությունն էին հաստատել»։

Մեսրոպ Սեթին հայտնի է եղել 1790 թ. ընդօրինակված մի ձեռագիր, որի գրիչ Հովհաննես-Սարգիսը իր հիշատակարանում հայտնել է, թե Մադրասի հայ համայնքը բազմաթիվ նոր գաղթականներ է ընդունել ու հայաբնակ կարևոր կենտրոն դարձել 1666 թ.[27]։

Մադրասի հայ համայնքն ավելի է մեծացել և աչքի ընկնող դեր կատարել հատկապես XVII դարում։ Հայկական թաղամասը գտնվել է նոր քաղաքի կենտրոնական մասում՝ նրա գլխավոր մայրուղու վրա, որ կոչվել է Հայկական փողոց։ Փողոցն իր այդ անունը պահել է մինչև մեր օրերը։

Հնդկահայ խոշոր գաղութ է եղել նաև Բոմբեյ քաղաքում։ Ցանկանալով Բոմբեյը դարձնել վաճառաշահ մի քաղաք, անգլիացիներն այստեղ են հրավիրել Սուրաթի հայերին, տրամադրելով նրանց հողամաս և վարկ՝ տներ կառուցելու համար։ Այստեղի խոշոր վաճառականներից էր խոջա Մինասը, որը սեփական օվկիանոսային նավեր է ունեցել «Օքսենտ», «Հույս» և այլ անուններով։

Հայերը Բոմբեյում կենտրոնացած են եղել քաղաքի Հայկական կոչվող թաղամասում։ Այդ թաղամասը կտրող փողոցը կոչվել է Հայկական փողոց։ Հայ համայնքն իր համար եկեղեցի է կառուցել, որը կանգուն է մինչև այսօր։

Բենգալիայի հայկական հնագույն գաղթօջախներից է Չիչրան, որը սկզբում հոլանդական առևտրական կայան էր, իսկ հետո անցել է անգլիացիներին։

Չինսուրայում հայերը սկսել են հավաքվել և գաղթօջախ ստեղծել 1645 թ., կապված խոջա Մարգարի գործունեության հետ։ Հետագայում հայկական այս գաղթօջախը զգալիորեն բարգավաճել է։ Հայ համայնքն այստեղ ևս ունեցել է իր եկեղեցին (կառուցվել է 1697 թ.)։

Հայերը Կալկաթայի հնագույն բնակիչներն էին։ Կալկաթան անգլիացիների կողմից նավահանգստի է վերածվում 1690 թ., իսկ Մեսրոպ Սեթն անվիճելի փաստերով ցույց է տվել, որ Կալկաթայի Մաթունաթի թաղամասում հայեր են բնակվել տակավին 1630 թ. (այդ թվականը կրող հայկական տապանաքար է գտնվել այնտեղ)։

Հայկական փոքր համայնքներ են եղել նաև Հնդկաստանի բազմաթիվ այլ քաղաքներում։

XII—XVII դարերում եվրոպացիների Հնդկաստան ներխուժելուց և այնտեղ հաստատվելուց հետո, ինչպես հայտնի է, ծավալվեց կատաղի պայքար հնդիկ ժողովրդի և գաղութարարների միջև։ Հնդիկ ժողովուրդը զենք վերցրեց երկրից դուրս վտարելու անկոչ հյուրերին, որոնք սկսել էին կեղեքել երկիրը։ Հնդիկ ժողովրդի համար ճակատագրական այս ծանր օրերին հնդկահայերը աներեր կանգնեցին հնդիկ հայրենասերների կողքին։

Եվրոպացիների Հնդկաստան թափանցելուց առաջ հայերը ճանաչված էին Հնդկաստանում։ Օգտվելով հնդիկ ժողովրդի և տեղական իշխանությունների բարյացակամ վերաբերմունքից, նրանք ծավալել էին լայն գործունեություն հատկապես արտաքին առևտրի բնագավառում։ Հայերի ձեռքումն էր գտնվում, հիմնականում, Եգիպտոսի, Ռուսաստանի, Լիվոռնոյի, Վենետիկի և եվրոպա-

[27] Տե՛ս M. J. Seth, Armenians in India, էջ 579։

կան այլ երկրների հետ կատարվող առևտուրը։ Հայերի կողմից վարձված արաբական և եվրոպական նավերն ակոսում էին Հնդկական օվկիանոսը, մուտք գործում Սումատրա, Ֆիլիպիններ, Չինաստան և հեռավոր արևելքի այլ երկրներ։ Առևտրի համար ստեղծված բարենպաստ պայմանները հնարավորություն էին տալիս նաև հայ արհեստավորներին և նրանց հետ կապված հայ բնակչության մյուս խավերին հաստատվել Հնդկաստանի քաղաքներում։

Երբ Եվրոպացիները սկսեցին մուտք գործել Հնդկաստան, նրանք հնդկահայ առևտրականների նկատմամբ ցուցաբերեցին բարյացակամ վերաբերմունք, գործադրեցին բոլոր միջոցները սիրաշահելու հայ վաճառականներին, որպես Հնդկաստանին լավ ծանոթ, հնդկական իշխանությունների մոտ մեծ հեղինակություն ունեցող, արևելյան լեզուները և սովորույթները լավ իմացող անձնավորությունների։ Ե՛վ անգլիական, և՛ ֆրանսիական, և՛ հոլանդական արևելյան հնդկական ընկերություններն իրենց գործունեության առաջին շրջանում աշխատում էին գործակիցներ փնտրել հայ վաճառականների շրջանում։ Հնդկական իշխանությունների հետ բանակցությունների ժամանակ եվրոպացիների համար միջնորդի դերում հանդես էին գալիս հնդկահայ խոջաները։

Հնդկաստանում եվրոպացիների գործունեության առաջին շրջանում հայ առևտրականների նկատմամբ ցուցաբերած սիրաշահող քաղաքականության ցուցանշական փաստը այն պայմանագիրն է, որ 1688 թ. կնքվել է Անգլիայի Արևելա-հնդկական ընկերության և հնդկահայ վաճառականների ներկայացուցիչ խոջա Փանոս Քալանթարյանի միջև։ Ըստ այդ պայմանագրի, հայ վաճառականներն ստանում էին անգլիական աղդեցության տակ գտնվող բոլոր երկրներում անգլիացուն հավասար իրավունք, կարող էին երթևեկել ցանկացած վայրերը, բնակություն հաստատել ցանկացած տեղում, կալվածքներ ունենալ, պաշտոններ վարել և այլն։ Անգլիական Արևելյան ընկերությունը նույնիսկ հանձն էր առնում իր ծախսով հայկական եկեղեցիներ կառուցել Հնդկաստանի այն վայրերում, ուր կային հայ համայնքներ, բայց դեռ չունեին եկեղեցիներ[28]։

Սակայն այս միայն առաջին շրջանում։ Եվրոպացիների Հնդկաստանում հաստատվելուց հետո, սկսվեց մեծ մրցակցություն նախ իրենց՝ եվրոպացիների, ապա եվրոպացիների և հայ վաճառականների միջև։ Հայ վաճառականությունն այս մրցակցության ընթացքում ստացավ ծանր հարված և սկսեց դուրս մղվել առևտրական շուկաներից։ Առանձին-առանձին և կամ փոքր «կոմպանիաներով» առևտուր անող հայերը կամ նրանց հետ կապված մյուս խավերը, ինչքան էլ հմուտ և ճկուն լինեին, բնականաբար, չէին կարող լուրջ դիմադրություն ցույց տալ հզոր բանակ և նավատորմ ունեցող Արևելա-հնդկական ընկերությանը, որը շատ հաճախ իր գործարքները կատարում էր արյունահեղ արշավանքներով և բռնի ուժով։

Պարսկաստանի վրայով անցնող ցամաքային ճանապարհի անապահովությունը XVIII դարում նպաստեց ծովային առևտրի զարգացմանը։ Հնդկահայերը, որոնք մրցակցության սկզբում սեփական նավեր չունեին, կարճ ժամանակում կամ գնեցին և կամ կառուցել տվեցին սեփական նավեր, որոնց ղեկների մոտ կանգնած էին հայ ծովային կապիտաններ։ Հայկական այդ նավերը շրջում էին հայկական կոչվող կարմիր-նարնջագույն դրոշակով։ Ան-

[28] Տե՛ս «Ազգասէր», Կալկաթա, 1846, № 39։

գլիացիներն ու ֆրանսիացիները, բնականաբար, բարի աչքով չէին նայում հայ վաճառականների գործունեությանը։ Դրանով պետք է բացատրել, որ եվրոպական գաղութարարները հնդկական ջրերում շրջագայող հայկական նավերը ամեն կերպ աշխատում էին դուրս հանել շարքից։ Այսպես, Հնդկաստանից Նոր Ջուղա ուղարկված մի նամակից իմանում ենք անգլիացիների կողմից հայկական մի նավի բռնագրավման մասին։ Տեղեկություններ կան նաև հայկական «Արշակ» անունով նավի բռնագրավման մասին և այլն։

Այս ամենից, բնականաբար, տուժում էին ոչ միայն հնդկահայ առևտրական խավը, այլև հնդկահայ մանր ձեռնարկատերերը և արհեստավորները, որոնք հայ գաղթօջախների բնակչության հիմնական մասն էին կազմում և պատվերներ էին ստանում ու իրենց գործունեությամբ կապված էին հայ առևտրականների հետ։

Կարճ ժամանակում հնդկական հողի վրա եղած հայկական համայնքներից այնպիսիները, որոնք փոքր թվով բնակչություն ունեին և թույլ էին, սկսում են քայքայվել, իսկ որոշ տեղերում էլ դադարում են գոյություն ունենալուց։ Ստեղծված պայմաններում հայերը, մեծ կամ փոքր խմբերով, թողնում են անգլիացիների և մյուս եվրոպայինների գրաված տերիտորիաները և տեղափոխվում Հնդկաստանի ու նրա հարևան երկրների գաղութացումից դեռևս ազատ շրջանները։

Անգլիացիները ոչ միայն սկսում են հայերին ստորճանաբար դուրս մղել առևտրական շուկաներից, արգելքներ ստեղծել արհեստագործության զարգացման համար, այլև անցնում են բացահայտ հալածանքների. ապօրինի դատական գործեր են հարուցում, բռնագրավում նրանց ունեցվածքը, բանտ նետում և այլն։ Հայ գաղթօջախներն ընկնում են անգլիացիներից անտեսական կախման մեջ։ Շուտով անգլիացիները հնդկահայերի վրա սկսում են նայել որպես թշնամիների։ Հայտնի է, օրինակ, որ 1746 թ. Մադրասի մոտ անգլիական ծովակալ Գրիֆֆը ապօրինաբար բռնագրավում է բենգալական հայերի մի առևտրանավ։ Անգլիական դատարանը, որին հանձնարարված էր այս գործի քննությունը, իր որոշման մեջ արդարացնում է ծովակալ Գրիֆֆի արարքը, քանի որ բռնագրավված նավը, նրա որակմամբ, հանդիսանում է «թշնամական սեփականություն»։

Ահա թե ինչով պետք է բացատրել հնդկահայ բնակչության որդեգրած քաղաքական կողմնորոշումը։ Հնդկահայ համայնքի բոլոր խավերն էլ, հիմնականում, գաղութարարների դեմ թշնամաբար էին տրամադրված, իհարկե, յուրաքանչյուրը ելնելով իր շահերից։ Համատեղ պայքարի ելնելով անգլիացիների դեմ, հայերը պաշտպանում էին ոչ միայն իրենց երկրորդ հայրենիքը, այլև իրենց անձնական շահերը։

Հնդկահայերը հնդիկ ժողովրդի ազատագրական շարժումներին մասնակցել են տարբեր ձևերով։ Հնդկական իշխանությունների կողմից հովանավորված և արտոնված հայ վաճառականները հնդիկներին օգնել են դրամական միջոցներ տրամադրելով, հայ զինագործներն օգնել են զենք պատրաստելով, իսկ հայ զինվորականները մտել են հնդկական բանակ և հնդիկ ժողովրդի հետ ուս-ուսի կռվել գաղութարարների դեմ։

Հնադույն տեղեկությունները հնդիկ ժողովրդի ազատագրական պայքարին հնդկահայերի մասնակցության մասին վերաբերում են 1662 թ., երբ պորտուգալական գաղութարարները փորձել են տիրել Մալաբարին և տապալել տեղա-

կան հնդիկ իշխանությունը։ Տեղի հայ բնակչությունը գործուն մասնակցություն է ունեցել պորտուգալացիների դեմ հնդիկների պայքարին։ Եվ հնդկական իշխանությունները, գաղութարարների դեմ հաղթանակ տանելուց հետո, Մալաբարի կառավարիչ են նշանակել հայազգի Մարկոս անունով մեկին։

Հայ-հնդկական զինական դաշնակցության և գաղութարարների դեմ մղած ազատագրական պայքարի ամենից ակնառու փաստը՝ 1760—1764 թթ. Բենգալիայում հնդիկ ժողովրդի մղած ազատագրական կռիվներին հնդկահայերի անձնազոհ մասնակցությունն է։

1760 թ., ինչպես հայտնի է, Հնդկաստանի անգլիական իշխանությունները, մեծաքանակ հարկ ստանալու և արտոնություններ ձեռք բերելու պայմանով, Բենգալիայի նավաբ են նշանակում Միր Կասիմին։

Վերջինս, հակառակ անգլիացիների ակնկալությունների, ձգտում է Բենգալիան դուրս հանել գաղութային տիրապետությունից, վերականգնել նրա քաղաքական ինքնուրույնությունը։

Իր գահակալության առաջին իսկ օրից, Միր Կասիմը իրեն շրջապատում է հակաանգլիական դիմորոշում ունեցող մարդկանցով և պատրաստվում ազատագրական պայքարի։ Անգլիացի գաղութարարներին Հնդկաստանի արևելյան ափերից դուրս վտարելու նպատակով ձեռնամուխ է լինում մարտունակ բանակ կազմակերպելուն։ Իր այդ մտադրությունն իրականացնելու համար բանակի հրամանատար է կարգում կազմակերպչական ընդունակություններով օժտված հայ զինվորական Գրիգոր Հարությունյանին, որը հայտնի է Գորգին խան անունով։

Վերջինս կազմակերպում է Բենգալիայի բանակը՝ հնդիկ և հայ զինվորներից։ Ստեղծում է 12 գունդ, որոնց հրամանատարները հայ և հնդիկ փորձված զինվորականներ էին։ Տեղում կազմակերպում է նաև զենքի ու զինամթերքի արտադրություն։

Հրացանների պատրաստման և թնդանոթների ձուլման գործում գործուն մասնակցություն են ունեցել հայ զինագործները՝ Շահնազարի ղեկավարությամբ, որի 1761 թ. ձուլած «Զամզամա» կոչվող հրանոթը այժմ ցուցադրված է Հնդկաստանի Լահոռ քաղաքի թանգարանում։

Բենգալիայի քաղաքական կյանքում կարևոր դեր են սկսում խաղալ հայերը։

Անգլիացիների դեմ մղած ազատագրական կռիվներում աչքի են ընկնում հազարապետ Մարգար Հարությունյանը, որն արժանանում է Բենգալիայի նավաբի բարձր պարգևին, Գրիգոր Այվազյանը՝ իր զորագնդով, հարյուրապետներ՝ նոր-ջուղայեցի Մկրտիչ Զաքարյանը, Մելքում Աստրախանցին, Նիկողայոս Երևանցին և շատ ուրիշներ։

Անգլիացիները, պարտություն կրելով բաց ճակատում, սկսում են դավադրական աշխատանք տանել թիկունքում։ Նրանք փորձում են պառակտում մտցնել Միր Կասիմի կուսակիցների շրջանում։ Միր Կասիմի առջև ամբաստանում են Գորգին խանին և մյուս հայ հրամանատարներին, սակայն նավաբը մնում է անդրդվելի։

Այնուհետև անգլիացիները փորձում են կաշառել Գորգին խանին։ Մեծամեծ խոստումներ տալով առաջարկում են անցնել անգլիացիների կողմը։ Սակայն նա մերժում է՝ պատասխանելով, որ մինչև իր մահը հավատարիմ է մնալու հնդիկներին։

«Քավ լիցի ինձ լինիլ տիրադրուժ, մանաւանդ զի հեռի է յաղգէն մերմէ այդպիսի տիրադրժութիւն, զի որոյ որ ծառայեն Հայք, միամտութեամբ սրտի մնան հաստատունք մինչև ի մահն իւրեանց»[29]։

Շատ չանցած անգլիացիները նոր ուժեր ստանալով անցնում են հակագրոհի և կասեցնելով հնդիկների հարձակումը, ստիպում նահանջել։ Զգալով մոտալուտ վտանգը, Գորգին խանը ապստամբների հիմնական ուժերը դասավորում է Կալկաթայից եկող ճանապարհների ուղղությամբ և պատրաստվում թշնամուն ճակատամարտ տալու Ռազմաճակատը ուժեղացնելու համար, նա երկրի մյուս մասերում պահվող զորամասերից մի քանի միավորումներ տեղափոխում է այստեղ։ Տեղափոխված հնդկական զորամասերի թվում էին նաև Մարգար Քալանթարյանի և Ղազար Հակոբյանի զորամասերը։ Հիմնական ճակատամարտը տեղի է ունենում Սանթա Դարիա կոչվող դաշտավայրում՝ Գանգեսի վտակներից մեկի ափին։ Անգլիական լավ վարժված և զինված բանակին հաջողվում է ճեղքեր բացել հնդիկ հայրենասերների ռազմաշարքերում, անցնել նրանց թիկունքը և վտանգավոր դրություն ստեղծել։

Հնդիկ-անգլիական կռիվները շարունակվում են 1762—1763 թթ.։ Ուշադրավ է այն փաստը, որ ամեն անգամ գաղութարարների դեմ տարած հաղթանակի ժամանակ, ըստ սովորության, երբ բարձրացնելիս են եղել հնդկական դրոշակը, բարձրացվել է նաև հայկականը՝ որպես խորհրդանիշ հայ-հնդկական զինակցության։

Անգլիացիները 1763 թ. կազմակերպում են Գորգին խանի սպանությունը. Հնդիկ հայրենասերները, կորցնելով սիրած հրամանատարին, զենքը վայր չեն դնում։ Սակայն հետագա դեպքերը անհաջող շրջադարձ են ունենում Բենգալիայի նավաբի համար, և նա ստիպված հեռանում է քաղաքական ասպարեզից։

Հնդիկ ժողովրդի ազգային-ազատագրական շարժումները Բենգալիայում ճնշելուց հետո անգլիական գաղութարարները վրեժխնդիր եղան հնդկահայերի նկատմամբ։ Անգլիայի համայնքների պալատը, քննության առնելով հնդկահայերի բռնած դիրքը Բենգալիայի շարժումների ժամանակ, այն որակեց իբրև «անշնորհակալ վերաբերմունք» և հնդկահայերին զրկեց Արևելա-հնդկական ընկերության պայմանագրով նախատեսված առանձնաշնորհումներից։

* * *

Ուշ միջնադարում հայկական փոքրաթիվ գաղթօջախներ կային նաև Ասիական մայրցամաքի տարբեր երկրներում՝ Չինաստանում, Բիրմայում, Ֆիլիպինյան կղզիներում և այլ վայրերում։

Չինաստանը Հին Արևելքի այն երկրներից է, ուր հայերը ոտք են դրել հնագույն ժամանակներից սկսած։ Տեղեկություններ կան այն մասին, որ հնում հայ վաճառականները երթևեկում էին Չինաստան և այնտեղից արտահանում մետաքս ու այլ ապրանքներ, գործարքներ կնքում տեղի հայերի հետ[30]։

Հայ առևտրականները շարունակել են առևտուրը Չինաստանի հետ նաև վաղ միջնադարում, որի ժամանակ նրանց հաճախ ուղեկցել են հայ հոգևորականները՝ քարոզչության նպատակով[31]։

---

29 Թ. Խոջամալեան, Պատմութիւն Հնդկաց, Կալկաթա, 1848, էջ 100։

30 Տե՛ս H. Well, The Outline of History, London, 1895, էջ 475։

31 Տե՛ս Հ. Քյուրտյան, Հում մետաքսի վաճառականությունը և հայերը, (առանձնատիպ), էջ 139։

Սակայն հայկական գաղթօջախների հիմնումը Չինաստանում կապված է մոնղոլական առաջին արշավանքների հետ։ Հայտնի է, որ մոնղոլական հրոսակները հազարավոր գերիներ քշեցին Հայաստանից և տարան դեպի Քաբուլ, Սամարղանդ և ներկայիս Չինաստանի հյուսիսային շրջանները։

Երկրի հյուսիսում հաստատված այս հայ տարագիրները զբաղվում էին առևտրով և արհեստագործությամբ։ Նրանք շուտով թափանցեցին երկրի խորքերը և հասան մինչև Խաղաղ օվկիանոսի ափերը։

Հայերը բնակվում էին Չինաստանի կենտրոնական և առևտրական քաղաքներում։ Հատկապես մեծ էր նրանց թիվը Կանտոնում։ Տեղեկություններ կան, որ 1307 թ. առաջ Կանտոնից ոչ հեռու կառուցվել է հայկական գեղեցիկ մի եկեղեցի[32]։

Հայկական առաջին այս գաղթօջախները, սակայն, երկար կյանք չունեցան։ Նրանց մի մասը զոհ գնաց թաթար-մոնղոլական խժդժություններին։ XVI—XVII դարերում սկսվում է հայ-չինական հարաբերությունների նոր շրջան։ Չինաստանի հետ աշխույժ առևտուր են սկսում իրանահայ և հնդկահայ վաճառականները։ Եվրոպացի ճանապարհորդները վկայում են, որ XVI—XVII դարերում հայերը աչքի ընկնող դիրք են ունեցել Չինաստանի առևտրի մեջ։

XVII դարի կեսերին Կանտոնից Հռոմ ուղարկված մի նամակում հիշատակված է, որ այնտեղ ապրում են 30 հայ ընտանիքներ[33]։

Անգլիական Արևելա-հնդկական ընկերության և հնդկահայ վաճառականների միջև 1688 թ. կնքված վերոհիշյալ պայմանագրի չորրորդ կետով իրավունք էր տրվում հայերին՝ անգլիացիներին հավասար մաքսով և պայմաններով Չինաստանում առևտուր անելու[34]։ Օգտվելով այդ արտոնությունից հայերը առևտրական լայն գործունեություն ծավալեցին։ Շուտով նրանք այնպիսի մրցակիցներ դարձան անգլիացիների համար, որ վերջիններս, որպես «թշնամու սեփականություն» սկսեցին բռնագրավել հայ վաճառականների նավերը, որոնք դուրս էին գալիս Չինաստանից։

XVIII դարի սկզբներին հայկական առևտրական օջախներ կային Շանհայում, Կանտոնում և Մակաոյում։

Հավանաբար, հայկական գաղթօջախների կղզյակներից ամենից մարդաշատը և հայտնին Կանտոնն է եղել։ XVII դարում Կանտոնի հայ գաղթօջախի մասին գիտեին ոչ միայն Նոր Ջուղայում, այլև էջմիածնում։ 1765 թ. Սիմեոն կաթողիկոսի կազմած հայկական գաղթօջախների ցուցակում հիշվում է «Չինու երկիրը», Կանտոնը, Մակավը[35]։

XVIII դարի վերջերից մեզ են հասել մի քանի հետաքրքիր վավերագրեր չինաբնակ հայերի մասին։ Նրանցից մեկը՝ կանտոնաբնակ գանձակեցի Մնացական Ղասապյանը, հայրենիքից հեռացած և օտարության մեջ հարստացած մի վաճառական, խոշոր մի գումար է կտակել իր հայրենի երկրին[36]։ Մեկ ուրիշը՝ չինաբնակ Հովհաննես Մաթևոսյանը, 80000 ռուփի է կտակել Նոր Նախիջևանին։

---

32 Տե՛ս «Երևան», Կ. Պոլիս, 1860, էջ 229։

33 Տե՛ս «Արև», Կահիրե, 1958, 1 օգոստոսի։

34 Տե՛ս *M. J. Seth*, Armenians in India, էջ 420։

35 Տե՛ս «Ջամբռ», էջ 48։

36 Տե՛ս «Դիվան Հայոց պատմության», գիրք 14, էջ 312։

Չինաստանում հաստատված անգլիացիների հալածանքների հետևանքով XVIII դարի վերջերին հայերից շատերը տեղափոխվում են Մակաո, Սինգափուր և այլ վայրեր։

Չինաստանի աչքի ընկնող հայ մտավորականը Կանտոնում ծնված և կրթված, չինարեն լեզվի ուսուցիչ և թարգման Հովհաննես Ղազարյանն է եղել։ Նա է անգլերենից չինարեն թարգմանել Աստվածաշունչը, որի մի մասը հրատարակվել է Սերամբուրում։ Ըստ չինագետ մասնագետների՝ դա Աստվածաշնչի առաջին և հաջող թարգմանությունն է չինարեն[37]։

XVI—XVII դարերից հայկական գաղթավայրեր են եղել Բիրմայում՝ Ավայում, Պեգուում և այլուր։ XVII դարում հայերը Բիրմայի առևտրական կյանքում այնպիսի նշանակալից դեր էին կատարում, որ տակավին այնտեղ ամուր չհաստատված եվրոպացիները դիմում էին նրանց միջնորդությանն ու օգնությանը[38]։ Ինչպես Ֆիլիպինների, այնպես էլ Բիրմայի հայ համայնքները առաջացել և մշտապես համալրվում էին Նոր Ջուղայից և Հնդկաստանից եկող հայերով։ XVIII դարի կեսերից Բիրմայի շատ վայրերում, հատկապես ծովափնյա քաղաքներում, ստվարացավ հայերի թիվը Նոր Ջուղայից եկող թարմ հոսանքով։ Բիրմայի հայերը մասնակցել են անգլիական գաղութարարների դեմ տեղի բնակչության մղած ազատագրական պայքարին. նրանցից Գրիգոր Այվազյանը եղել է այդ պայքարը գլխավորողներից մեկը։

XVII դարից հայկական գաղթօջախ կար նաև Ֆիլիպինյան կղզիներում, հատկապես նրա մայրաքաղաք Մանիլայում։ Մանիլայի փոքրաքանակ հայ առևտրական գաղութը հանդիսանում էր յուրօրինակ մի հենակետ ու կապող օղակ Հեռավոր Արևելքի, Չինաստանի, Հնդկաստանի և Նոր Ջուղայի հայ գաղթավայրերի միջև։

Մեզ հասած պատմական փաստերը, նյութական մշակույթի հուշարձանների մնացորդները խոսում են այն մասին, որ հնդկական հողի վրա ես հայերը ստեղծել են այնպիսի արժեքներ, որոնցից մի քանիսը դուրս են գալիս ազգային սահմաններից և տեղ գրավում հնդկական մշակույթի մեջ։

Հնդկական ճարտարապետության պատմության մեջ են մտել Մալաբարի շրջանում կատարված մի շարք կառույցները, որոնք հայ մտքի արգասիք են։ Հայտնի են հատկապես եռահարկ բազմակամար կամուրջը և հոյակապ քարե սանդուղքները 133 և 160 աստիճաններով։

Հնդկահայ մշակույթի մասին խոսելիս չպետք է մոռանալ Կալկաթայի «Հայկական» նավահանգիստը, հայ ճարտարապետների նախագծած և կառուցած եկեղեցիները և զանազան այլ շինությունները։

Սակայն հնդկահայերի ստեղծած մշակութային ամենաարժեքավոր ներդրումը հայ պարբերականի առաջնեկն է՝ «Ազդարարը», որը իր շուրջը համախմբեց հնդկահայ հասարակական, քաղաքական ու մշակութային գործիչներին և նպաստեց հայ ազգային-ազատագրական պայքարի գաղափարախոսության ձևավորմանը։ «Ազդարարը» տպագրվել է 1794—1796 թթ. Մադրասում։

Հնդկահայ գաղթօջախը մեծ երախտիք ունի նաև հայ տպագրության ասպարեզում։ Այստեղ XVIII դարի վերջերին հիմնադրվեցին մի քանի տպարան-

---

37 Տե՛ս «Սիոն», 1959, էջ 276։

38 Տե՛ս նույն տեղում, էջ 158։

ներ, հրատարակվեցին բազմաթիվ մեծարժեք աշխատություններ, հատկապես Մադրասում, Կալկաթայում և Բոմբեյում։

XVII—XVIII դարերում Հնդկաստանում գործել են հայ գրչության փոքրիկ օջախներ, ուր ընդօրինակվել են ձեռագրեր և կատարվել թարգմանություններ։ Հայերեն ձեռագրեր են գրվել Սուրաթում, Կալկաթայում, Մադրասում, Չինսուրայում, Բոմբեյում և այլ քաղաքներում։

Հնդկահայ մտավորական Թովմաս Խոջամալյանի գրչին է պատկանում XVIII դարի 60-ական թվականներին գրված «Հնդկաստանի պատմություն» մեծարժեք աշխատությունը, որը հնարավորություն է տալիս լուսաբանելու Հնդկաստանի պատմության եվրոպական ներխուժումների շրջանի մի շարք կընճռոտ հարցեր։ XVIII դարում է գործել նաև Հակոբ Ջուղայեցի Սիմոնյանը, որի գրչին պատկանող «Հեյդար Ալու վարքը» նվիրված է Հնդկաստանի ազգային-ազատագրական պայքարի ամենից պայծառ դեմքերից մեկին։ Սիմոնյանի աշխատանքը Մայսորի հերոսին նվիրված ուսումնասիրություններից առաջինն է։ Հայ հեղինակը եղել է Հեյդարի մտերիմն ու խորհրդականը՝ հակաանգլիական պայքարի տարիներին։

Հնդկահայ գաղթօջախներն ունեն նաև իրենց անվանի ներկայացուցիչները գեղարվեստական գրականության ասպարեզում։

Հնդկահայ մշակույթը արժեքավորելիս չի կարելի լռությամբ անցնել մեծանուն մի բանաստեղծի կողքով, որը հիշատակվում է Ֆիրդուսու, Խայամի, Սաադիի, Հաֆեզի նման մեծատաղանդ բանաստեղծների հետ միասին։ Դա Սարմասն է։ Նշանավոր Հենրի Քինը նրա մասին գրում է. «Սարմասը մի հայ վաճառականի սրնտիկ կեղծանունն է, որը Հնդկաստան է եկել դեռևս Շահ Ջհանի օրոք.... Նա լավ գրում էր և հիանալի տիրապետում էր բանաստեղծություն հորինելու արվեստին»[30]։

---

[29] Հնդկաստանի Մադրաս քաղաքի անվանի գործիչների՝ Շ. Շահամիրյանի, նրա որդիների, Մովսես Բաղրամյանի և մյուս հայրենասերների գործունեությունը լուսաբանված է սույն հատորի առաջին մասի համապատասխան ենթագլխում, ինչպես նաև հայ մշակույթի պատմությանը նվիրված բաժնում։ Կրկնությունից խուսափելով՝ այստեղ չենք անդրադառնում Մադրասի հայրենասիրական խմբակի գործունեությանը։

ԳԼՈՒԽ ԵՐՐՈՐԴ

# ՈՒԿՐԱԻՆԱՅԻ ԵՎ ԱՐԵՎԵԼՅԱՆ ԵՎՐՈՊԱՅԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԳԱՂԹԱՎԱՅՐԵՐԸ

## 1. ՂՐԻՄԻ ԳԱՂԹՕՋԱԽՆԵՐԸ

Ղրիմը հայերին ծանոթ էր հնագույն ժամանակներից։ Տիգրան Մեծի և Միհրդատ Եվպատորի աշխարհակալությունից հետո հայերը վաճառատեղիներ ունեին Սև և Կասպից ծովերի հյուսիսային ափերին և առևտուր էին անում այդ երկրամասերում թափառող ցեղերի հետ։

Տավրիկյան աշխարհի մասին հայերեն առաջին տեղեկություններից մեկը հաղորդում է VII դարի հայկական «Աշխարհացույցը»։ Սկսած VIII դարից, կարևոր մասնակցություն ցուցաբերելով Բյուզանդիայի քաղաքական ու տնտեսական կյանքին, հայերը վերջինիս միջոցով թափանցում են Տավրիկիա՝ տարբեր շարժառիթներով ու նպատակներով։ VIII դարի սկզբներին այստեղ էր գտնվում հայազգի իշխանավոր Վարդանը, որը հենվելով ապստամբ խերսոնեսցիների վրա՝ վերադարձավ Կոստանդնուպոլիս և տապալելով Հուստինիանոս II-ին, ինքը բազմեց կայսերական գահին (711—713)։ X դարում Խերսոնեսի իշխանավորներից էր հայազգի Կալոկիրը, որի միջոցով Բյուզանդիան փորձում էր դիվանագիտական կապերի մեջ մտնել Կիևի իշխան Սվյատոսլավի հետ[1]։

XI դարից նկատելի զանգվածներով Ղրիմում սկսում է հաստատվել մշտական հայ բնակչություն։ Այդ դարերին հայ գաղթական հոսանքները Ղրիմ են անցնում Բյուզանդիայի քաղաքական և կրոնական ճնշման, սելջուկների՝ դեպի Հայաստանի ու Փոքր Ասիայի շրջանները խորանալու, առևտրական և այլ շարժառիթներով։

XI դարի առաջին կեսին արդեն նկատելի է հայերի տեղաշարժը Կ. Պոլսից և Բալկաններից դեպի Սև ծովի հյուսիսային շրջաններն ու Ղրիմի բաղաքները։ Այդ նույն ժամանակ արտագաղթի դիմած հայերը Ղրիմ են անցնում նաև Փոքր Ասիայից։ Հայերը տեղափոխվում էին Մերձդանուբյան շրջաններով, Կ. Պոլիս—Ղրիմ և Տրապիզոն—Ղրիմ ծովային ուղիներով, ինչպես նաև Հյուսիսային Կովկասի վրայով։

XIV դարում Ղրիմ են գալիս հայ բնակչության նոր հոսանքներ։ Թերա-

---

[1] Տե՛ս Ю. Кулаковский, Прошлое Тавриды, Киев, 1914, էջ 112:

կղզին դառնում է նաև այն կամրջակը, որի վրայով արտագաղթի դիմած հայությունը անցնում է ռուսական, ուկրաինական և լեհական շրջանները։ Մոնղոլների տիրապետության ժամանակ ծայր առած արտագաղթի հետևանքով հայ բնակչության մի ստվար հատված տեղափոխվում է նախ Ոսկե Հորդա, իսկ այնտեղից էլ, կոտրելով թաթարների դիմադրությունը, մոտ 1330-ական թվականներին գալիս է Ղրիմ։ «Ելեալ ի յԱխսարայէ իշխանք և ազնիւք և հասարակ ժողովուրդք վառեալք զինու պատերազմելով ընդ թաթարացն հեղքեալ դան ի Ղրիմ,— գրված է մի նշանավոր հիշատակարանում,— և բնակին ի Թեոդոսիա, ի Կաղարաթ և ի Սուրխաթ և ի կողմանս սոցա. այս եղև ՉԶԹ (1330) թուին»։ Դրան նախորդել էր Ախսարայի հայերի և Կաֆայի ճենովական հյուպատոսի միջև կայացած համաձայնությունը[2]։

Հայերի թիվը թերակղզու վրա այնքան է ավելանում, որ թաթարներից հետո նրանք բռնում են երկրորդ տեղը[3]։ XV դարի 70-ական թվականներին միայն Կաֆա քաղաքում 70 հազար բնակչից մոտ 46 հազարը հայեր էին[4]։

XV դարի 70-ական թվականներին ղրիմահայոց քանակական կազմը կրում է նոր փոփոխություններ։ 1475 թ. թուրքական նավատորմը՝ դաշնակցած թաթարների հետ, ծովից ու ցամաքից շրջապատում է Կաֆան։ Քաղաքի բնակիչները (հիմնականում հայեր) իրենց հայազգի հրամանատարի գլխավորությամբ վճռական դիմադրություն են ցույց տալիս։ Սակայն հնգօրյա պաշարումից հետո թշնամին կարողանում է նրանց զրկել խմելու ջրից և հրետանու օգնությամբ շատ տեղերում քանդել քաղաքի պարիսպները։ Պաշարվածները հանձնվում են թուրքական հրամանատարությանը։

Թուրքական տիրապետության հաստատման պատճառով հայ բնակչության մի զգալի մասը հեռանում է թերակղզուց և հաստատվում Լվովում, Կամենիցում և այլուր։ Նշանակալից թվով հայեր գերեվարվում և քշվում են Կ. Պոլիս։ Այդպես էր, սակայն, թուրքական տիրապետության առաջին շրջանում։ Հետագայում, Հայաստանից և այլ վայրերից կատարված մասնակի գաղթերի և մանավանդ XVII դարի սկզբին ջալալիների շարժման հետևանքով ծայր առած արտագաղթերի հետևանքով ղրիմահայոց թիվը կրկին ավելանում է։

XI—XII դարերից սկսած ընդհուպ մինչև XVIII դ. վերջին քառորդը, երբ հայերն ու հույները արտագաղթեցին Ղրիմից, հայ բնակչությունը բավականին պատկառելի զանգվածներով ապրում էր Կաֆայում (Թեոդոսիա), Սուդակում, Սուրխաթում (Հին Ղրիմ), Կեոզլևում (Եվպատորիա), Կազարաթում, Ղարասուբազարում (Բելոգորսկ), Ակմեչիթում (Սիմֆերոպոլ), Բախչիսարայում, Չեմբալոյում (Բալակլավա), Օրաբազարում (Արմյանսկ), Ինկերմանում և այլ քաղաքներում ու Խայալ, Բախչելի, Օրթալանկ, Թոպտի, Խամշլի, Ղշլավ զուտ հայկական գյուղերում։

Ղրիմի հայկական այս գաղթօջախները, քաղաքական պայմանների բերումով, XIII—XVIII դարերում գրեթե միշտ կախյալ հարաբերությունների մեջ են եղել թաթարական գերիշխանությունից, սրան զուգընթաց՝ ջենովական

---

2 Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 7442, էջ 281։

3 Տե՛ս Тунманн, Крымское ханство, Симферополь, 1936,

4 Տե՛ս „Atti della societa' Ligure di storia Potria" (այսուհետև „Atti„), Genovia, 1879, VII, էջ 343։

առևտրա-վարչական տիրակալությունից (XIII—XV դարեր)։ 1475 թ. հետո նրանք ենթակա էին թուրք-թաթարական համատեղ բռնատիրությանը։ Գաղութահայ կյանքի ելևէջներն այստեղ մշտապես կախված են եղել այդ տիրապետողների քմահաճույքներից։

Չնայած թուրք-թաթարական և ջենովական իշխանություններից քաղաքական որոշակի կախյալ վիճակում գտնվելուն, այնուամենայնիվ ղրիմահայ գաղութը իր ներքին կյանքի կարգավորման խնդիրներում օգտվել է յուրատեսակ ինքնավարությունից, կառավարվել ազգային ավանդույթներով ու սովորույթներով։ Հայերը Ղրիմում, մանավանդ մինչև 1475 թ., ունեին իրենց զինված ուժը։ Հայկական մարտական ուժերը առանձնապես զգալի էին Կազարաթ բերդապահ քաղաքավանում։ Սրա շնորհիվ ջենովական Կաֆան պաշտպանվում էր թաթարական հարձակումներից։ Դրա համար էլ «ի վերայ ջրոյն Կազարաթի» Կաֆայի ջենովական հյուպատոսը Մուղալյանց հայ իշխանին որոշակի վճարով կարգել էր կուսակալ[5]։ Հայերն իրենց զորքն ունեին նաև Կաֆայում[6]։

Սկզբում՝ XI—XIII դարերում, ղրիմահայերի հիմնական զբաղմունքը առևտուրն էր։ Հաջորդ դարերին այն գնալով ընդլայնվում է, սակայն դրան զուգընթաց կարևոր նշանակություն են ստանում նաև արհեստագործությունն ու երկրագործությունը (մանավանդ այգեգործությունը)։

Ղրիմի քաղաքները խոշոր դեր են խաղացել միջնադարյան առևտրի մեջ, Արևելքի և Արևմուտքի առևտրական կապերում, մանավանդ այն ժամանակ, երբ մոնղոլական նվաճումների հետևանքով զգալապես բարձրացել էր Տանա, Կաֆա և Տրապիզոն մտնող քարավանային բանուկ ճանապարհների դերը։ Ղրիմի ինչպես ներքին, այնպես էլ տարանցիկ առևտրի մեջ առաջատար տեղը մինչև 1475 թ. պատկանում էր ջենովացի և հայ առևտրական դասին, իսկ XV դարի վերջերից մինչև XVIII դարի 70-ական թվականները՝ հայ և ռուս վաճառականներին։ Ղրիմում հաստատված առևտրական գաղթակետերում, ջենովացիները իրենց փոքրաթիվության պատճառով առևտրի մեջ լայն տեղ էին տալիս հայ վաճառականությանը և հայ առևտրա-վաշխառուական կապիտալին։

Տավրիկյան հայերի առևտրական գործունեությունը XIII—XV դարերում ընդգրկում էր Ղրիմի վաճառաշահ քաղաքներ Կաֆան, Սուդակը, Սուրխաթը, իսկ XVI—XVIII դարերում առևտրական կարևոր կենտրոններ դարձած Ղարասուբազարն ու Արմյանսկի Բազարը։ Սակայն նրանց գործունեությունը չէր ամփոփվում միայն Ղրիմում. նրանք առևտրական գործուն կապեր էին հաստատել Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրների հետ։ Ռուսական շրջանների, Եվրոպայի և մահմեդական աշխարհի հետ առևտուր անելիս ղրիմահայ վաճառականները սովորաբար գործածում էին իրենց սեփական կնիքները, որոնց վրա դրոշմված էին ռուսերեն, լատիներեն և արաբերեն անվանատառեր՝ առևտրական գործարքների ժամանակ հավաստելու համար նրանց անձնավորությունը[7]։

---

[5] Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 7442, էջ 282բ։

[6] Տե՛ս Հ. Վ. Քուշներյան, Պատմություն գաղթականության խրիմու հայոց, Վենետիկ, 1895, էջ 120։

[7] Տե՛ս Մատենադարան, Կաթողիկոսական դիվան, թ. 1, վավ. 43։

Բազմազան էին առևտրի ապրանքները։ Ղրիմ էին ներմուծվում գլխավորապես գործվածքեղեն, մորթեղեն, մետաքս, գինի, մրգեղեն, պերճանքի առարկաներ, համեմունք, զենք և այլն։ Սրանք բերվում էին ոչ միայն տեղում վաճառելու, այլև Հյուսիսի և Արևելքի շուկաները տեղափոխելու նպատակով։ Ղրիմից արտահանվում էին հաց, ձուկ, կաշվեղեն, մոմ, աղ, մորթեղեն և այլ ապրանքներ։ Առևտուր էին անում թե առանձին վաճառականներ և թե առևտրական միավորումներ, որոնց անդամակցում էին նաև հայերը։

Աշխույժ էր ղրիմահայ վաճառականների կապը լեհական շրջանների և մասնավորապես Լվովի հետ։ Լեհաստանում, Գալիցիայում, Տրանսիլվանիայում, Բանատում և Լիտվայում նրանք նույնիսկ իրենց առևտրական գործակալներն ունեին։ Մասնավորապես սերտ էր կապը Լվովի հետ, ուր ստվար թվով հայ բնակչություն կար։ Լվովը նրանք դարձրել էին առևտրական կապող օղակ Արևելքի ու Արևմուտքի միջև, նրա վրայով կատարում էին քարավանային երթևեկ և կազմակերպում արևելյան ապրանքների վաճառք, որին մասնակցում էին նաև եվրոպացի վաճառականները։

Ղրիմահայ վաճառականներին էր պատկանում թաթարական շրջանների առևտրի մենաշնորհը, մանավանդ 1475 թ. հետո, երբ նրանց ձեռքն է անցնում Ղրիմի առևտրի պատկառելի բաժինը։ Հնարավորություն ունենալով ազատորեն երթևեկելու թաթարական շրջաններում և քաջ ծանոթ լինելով մահմեդական ժողովուրդների նիստ ու կացին հայերը անարգել ու արդյունավետ առևտուր էին անում։

Չերքեզիայի և Ղրիմի խանության ենթակա կովկասյան մյուս տերիտորիաներում առևտրի նախաձեռնությունը նույնպես պահում էին ղրիմահայ վաճառականները։ Չերքեզիայից նրանք բերում էին մորթեղեն, մոմ, մեղր և այլ ապրանքներ։

Թաթարական ֆեոդալական ավագանին, տեսնելով, որ հայ վաճառականների շնորհիվ խանություն են ներմուծվում արևելյան ու արևմտյան ապրանքներ, ոչ միայն չէր խոչընդոտում նրանց առևտրական ձեռնարկումներին, այլ հաճախ նույնիսկ խրախուսում էր հայ առևտրականներին, նրանցից ընտրելով նաև իր համար գործակալներ՝ առևտուր և այլ հանձնարարություններ կատարելու համար։

Միջնադարյան Ղրիմի առևտրական կապերը սերտ էին Սև ծովի փոքրասիական շրջանների և առանձնապես Տրապիզոնի հետ։ Սկսած XIII դարից, ղրիմահայերը ամենագործուն մասնակցությունն էին բերում Ղրիմի և փոքրասիական շրջանների միջև ծավալվող առևտրին։ Նրանք Ղրիմից Տրապիզոն էին բերում ձուկ, արծաթ, գործվածքներ, ցորեն։

Ղրիմահայ գաղութը մասնակցել է նաև Կովկասի և Հայաստանի հետ կատարվող առևտրին։ Իրենց հերթին Հայաստանի վաճառականներն էլ Ղրիմի մշտական հյուրերն էին։ Գողթանցի վաճառականների թիվը XVIII դարում Կաֆայում այնքան մեծ էր, որ նրանք մի քանի հյուրանոցներ էին զբաղեցրել[8]։ Տրապիզոնի և Կոստանդնուպոլսի վրայով ղրիմահայերը առևտուր էին անում Կիլիկիայի և Սիրիայի հետ, այնտեղից միաժամանակ Ղրիմ բերելով Կիլիկիայում արտադրված ապրանքներ։ Սև ծովի հյուսիսային շրջաններում շըր-

[8] Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 1050, էջ 311։

ջանառության մեջ են եղել նաև Կիլիկիայի հայկական թագավորության դրամները[9]։

Միջնադարում տավրիկյան առևտրի գլխավոր ուղղություններից մեկն էլ ձգվում էր դեպի Կ. Պոլիս, որտեղից այն դառնում էր երկու մասի՝ մեկը դեպի Արևմտյան Եվրոպա, մյուսը՝ Կիլիկիա, Սիրիա, Եգիպտոս։ Լատինական կայսրության անկումից հետո (1261) այդ առևտրական ուղին կյանքի կոչեց ճենովացիների առևտրական հենակետը Կ. Պոլսում։ Ղրիմահայ վաճառականների այցելությունները Կ. Պոլիս և Զմյուռնիա այնքան պարբերական էին դարձել, որ ժամանակի ընթացքում նրանք այնտեղ հաստատել էին իրենց առևտրական հենակետերը։

Ղրիմահայերը շփվում էին նաև ռուսական պետության հետ։ XV դարի վերջին քառորդից սկսած առևտրական և դիվանագիտական առնչությունները ռուսական պետության և Ղրիմի խանության միջև ընդունում են աշխույժ բնույթ և համեմատաբար լայն չափեր։ Երկու պետությունների տնտեսական ու դիվանագիտական կապերը նշանակալից չափով կենսագործվում էին ղրիմահայերի մասնակցությամբ։

XV—XVI դարերում ղրիմահայ բազմաթիվ վաճառականներ Ղրիմ-ռուսական առնչություններում հանդես էին գալիս ուղղակի դիվանագիտական հանձնարարություններով։ 1487 թ. Աստվածատուր անունով ղրիմեցի մի հայ վաճառականի միջոցով Իվան III-ը կապ էր պահպանում թաթարներից դժգոհ Թամանի հրեա իշխան Զաքարիայի հետ[10]։ XVI—XVII դարերում Ղրիմ-Մոսկովյան դիվանագիտական հարաբերություններում կարևոր դեր էին կատարում նշանավոր այլ ղրիմահայեր։

XVIII դարի առաջին տասնամյակից սկսած, երբ Իսրայել Օրու և նրա կուսակիցների ջանքերով հայերի ռուսական կողմնորոշումը որոշակի կերպարանք էր ստացել, ղրիմահայ շատ գործիչներ աշխատում են օգտակար լինել իրենց ազգակիցների քաղաքական նկրտումներին։ Ղրիմահայ վաճառականներից մեկը 1722 թ. Մինաս վարդապետի միջոցով ռուսական իշխանություններին մանրամասն զեկուցագիր է ներկայացնում Թուրքիայում կատարվող ռազմական նախապատրաստությունների մասին, իսկ 1724 թ. ղրիմահայ վաճառական Սապերը գեներալ-լեյտենանտ Մատյուշկինին տվյալներ է հայտնում զորքերի այն տեղաշարժերի մասին, որ սկսել էր ձեռնարկել թուրք-թաթարական կողմը դեպի Ազով[11]։

Ղրիմահայերի առևտրական գործունեությունը նշանակալից էր, մանավանդ, Մոսկվայում, ռուսական և ուկրաինական շրջաններում։ Տակավին XIV դարում Ղրիմի Սուդակ (Սուրոժ) քաղաքի անունով Մոսկվայում առաջացել էր վաճառականների մի հատուկ խավ՝ սուրոժցի-հյուրեր անունով, որոնց մեջ կային նաև Ղրիմից ելած հայ վաճառականներ։ XV դարի վերջին քառորդից սկսած, երբ Իվան III ցարի և Մենգլի-Գիրեյի ջանքերով Ղրիմ-Մոսկովյան կապերը աշխույժ բնույթ էին ստացել, հայ վաճառականների այցելությունները Մոսկվա ավելի հաճախակի են դառնում։ Նրանցից ոմանք Մոսկվայում

---

9 *Տե՛ս Г. Микаелян*, История Киликийского армянского государства, Ереван, 1952, էջ 199:

10 *Տե՛ս* «Сборник русск. ист. об-ва», т. 41, СПб., 1884, էջ 72:

11 *Տե՛ս* Центр. гос. архив военно-морского флота (ЦГАВМФ), ф. 233, оп. 1, д. 222а, л. 119, 124, ф. 223, д. 228, л. 100.

նույնիսկ իրենց առևտրական տներն են հիմնում։ Դրանցից էր վաճառական Գուլսար՝ Թաթար խանի և Կաֆայի թուրքական փաշայի հետ կապված մեծահարուստ մի անձնավորություն, որի մահից հետո նրա ունեցվածքի հարցը տարիներ տևող դիվանագիտական քաշքշուկի առիթ ծառայեց Մոսկվայի և Ղրիմի միջև[12]։

XVI—XVIII դարերում տավրիկահայ վաճառականների գործունեությունը ռուսական շրջաններում լայն չափերի է հասնում։ Նրանք սկսում են Մոսկվա այցելել թե ուղղակի Ղրիմից և թե Ազովի վրայով։

Որոշակի համակրանք տածելով դեպի հյուսիսի հավատակից ժողովուրդը և ելնելով իրենց առևտրական գործունեության համար սլավոնական շրջաններում բարենպաստ ու ազատ հնարավորություններ ստեղծելու հեռանկարից, ղրիմահայ վաճառականները մեծ փութկոտություն և եռանդ էին ցուցաբերում թաթարական ասպատակությունների հետևանքով Ղրիմ քշված քրիստոնյա գերիների փրկագնման և նրանց հայրենիք տեղափոխելու գործում։ Հայ վաճառականների կողմից ռուս գերիների փրկագնումը և հայրենիք վերադարձնելը հաճախակի էին դարձել հատկապես XVII դարում։

Ռուսական շրջանները և առհասարակ հյուսիսի հետ աշխուժացող առևտուրը XVIII դարի 30-ական թվականներին Թերակղզու հյուսիսային պարանոցում կյանքի է կոչում տարանցիկ առևտրի մի նոր կենտրոն՝ Արմյանսկի Բազար (այժմ Արմյանսկ) քաղաքը, որի հիմնադիրներն ու բնակիչները Պերեկոպի հայերն էին։ Քարավանային առևտրի պահանջները սպասարկող այս նշանավոր վայրը հայտնի էր իր իջևանատներով, ճաշարաններով, հյուրանոցներով։ Այս նույն ժամանակներում ղրիմահայ մի քանի վաճառականներ, ոմն Կարապետի գլխավորությամբ, Նեժին քաղաքում հիմնել էին իրենց առևտրական կենտրոնը, որի վրա հենվելով՝ Ղրիմի, Պարսկաստանի, Վրաստանի ու Թուրքիայի հայ վաճառականները աշխույժ առևտուր էին անում ռուսական և ուկրաինական շրջաններում։

Առևտրի հետ միասին ղրիմահայերի կյանքում նշանակալից տեղ էին բռնում արհեստները։ Թաթարները, որոնք վարում էին կիսաքոչվորական կյանք և հիմնականում անասնապահներ էին, չէին զբաղվում արհեստագործությամբ, և զբաղմունքի այս տեսակը հիմնականում իրենց վրա էին վերցրել հայերը և հույները։ Արհեստավորները հաճախ միավորվում էին համքարությունների մեջ և երբեմն հանդես գալիս նաև առևտրականների դերում։ Համքարությունների մեջ մտնող արհեստավորները միատարր չէին։ Այնտեղ ևս առկա էր դասային շերտավորում։ Արդեն XIII դարում Կաֆայում կային տնտեսապես սնանկացած և պարտքերի մեջ թաղված հայ արհեստավորներ։ Հայ արհեստավորների գործունեությունը նշանակալից էր Կաֆա, Սուրխաթ և Ղարասուբազար քաղաքներում։ Գաղութում զարգացում էին ստացել այս ժամանակվա արհեստագործության գրեթե բոլոր հիմնական տեսակները՝ կաշեգործություն, հյուսնություն, դարբնություն, ոսկերչություն, ջուլհակություն, կոշկակարություն, բրուտագործություն և այլ արհեստներ։

Հայ ազգաբնակչության մի ստվար մասը Թերակղզու զանազան շրջաններում կապված էր հողի հետ, իր ապրուստը հայթայթում էր այգեգործությունից, դաշտավարությունից և անասնապահությունից ստացած եկամուտ-

[12] Տե՛ս «Сборник русск. ист. об-ва», № 41, էջ 271—272, 282—284, 295։

ներով։ Հայերի և հույների շնորհիվ թաթարները ժամանակի ընթացքում ընտելացան հացահատիկի մշակությանը։ Բանջարաբուծությունն ու այգեգործությունը այնքան լայն զարգացում էին ստացել ղրիմահայերի մոտ, որ XVI դարում նրանք նույնիսկ պտուղներ և սոխ էին արտահանում[13]։

Ղրիմահայերը զարկ էին տվել խաղողագործությանը և գինեգործությանը։ XVIII դարի գերմանացի ճանապարհորդ Էռնստ Կլեմանը վկայում է, որ ղրիմահայերը գինին օգտագործում էին «ջրի նման»[14]։ Այգեգործությամբ էին զբաղվում ոչ միայն հայկական գյուղերը, այլև Կաֆա, Սուրխաթ, Ղարասուբազար և այլ քաղաքների հայ բնակչության մի մասը։ Ճենովայի Հանրապետության սևծովյան գաղթավայրերի 1449 թ. կանոնադրությունը, լուրջ կարևորություն տալով խաղողագործությանը Կաֆայում, արգելում էր այգեկութի ժամանակ՝ սեպտեմբերի 15-ից մինչև հոկտեմբերի 15-ը, քաղաքում դատական նիստեր գումարելը։

Սակայն հայերի և հույների վերաբնակեցումից հետո (1778) այգեգործությունը Ղրիմում անկում է ապրում։ Զբաղեցնելով քրիստոնյա բնակչության նախկին բնակավայրերը, թաթարները, անծանոթ այգեգործական կուլտուրային՝ խոպանի վերածեցին այգիները։ «Ղրիմը անկում ապրեց այն պահից,— գրում է ադմիրալ Ն. Ս. Մորդվինովը,— երբ լեռնային մասից դուրս եկան քրիստոնյաները և թաթարները մտան նրանց այգիներն ու տները»[15]։

Ղրիմի հայկական գաղութը միատարր չէր։ Նրանում առկա էին ժամանակի սոցիալ-տնտեսական հարաբերություններով պայմանավորված սոցիալական բոլոր խմբերը։ Դասային բաժանվածություն գաղութում գոյություն ուներ նրա սկզբնավորման շրջանից ևեթ։ Սակայն հետագա դարերում գաղութի բնակչության ստվարացմանը և առևտրի, արհեստների ու հողագործության զարգացմանը զուգընթաց այն գնալով առավել պարզորոշ է դառնում։ Ունևոր դասը ներկայացնում էին հարուստ վաճառականները, հողատերերը, վաշխառուները, արհեստավորության առավել կարող շերտը, եկեղեցին՝ իր հողամասերով և եկամտաբեր այլ աղբյուրներով։

Հայտնի է, որ XIII դարից ի վեր նյութապես ուռճացած հայ առևտրականներից շատերը կրում էին «պարոն» տիտղոսը։ Այդպես էր նաև Ղրիմում։ Այստեղ հարուստ դասակարգի ներկայացուցիչները կրում էին իշխան, խոջա, պարոն, էմիր, բեյ և այլ հորջորջումներ։ Կաֆայի մեծահարուստ ազնվականական դասի ներկայացուցիչներն էին Պահլավունիք, Մուղալենք, Դարիչանենք և Աղամալենք կոչվող գերդաստանները[16]։ XV դարի 70-ական թվականներին Կաֆայի հայության քաղաքական-կրոնական պայքարը փորձում էին իրենց ցանկացած հունով տանել 10 հայ մեծահարուստ դրամատեր-բանկիրներ։ Ճենովացիների տիրապետության շրջանում Կաֆայի հայ ունևոր վերնախավը գործակցում էր ճենովացի պաշտոնեության և ունևոր դասի հետ՝ ընդդեմ իր ազգակից հայ աշխատավորության։ Դասակարգային սանդուղքի մյուս ծայրում գտնվում էին քայքայված արհեստավորները, աշխատավոր գյուղացիները, որոնք ժամանակի ձեռագրերում հիշվում են ռամիկ, հասարակ

[13] Տե՛ս П. Н. Сумароков, Досуги Крымского судьи, ч. II, СПб., 1805, էջ 203:

[14] „Orient et Byzance", IV, 2, Paris, 1930, էջ 348։

[15] «Записки императорского об-ва сельского хозяйства Южной России», книга шестая, Одесса, 1873, էջ 364:

[16] Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 7442, էջ 281։

ժողովուրդ անունների տակ։ Կաֆայում և Սուդակում XIV—XV դարերում կային նաև վարձու բանվորներ։

Հայ աշխատավորությունը Ղրիմում ենթարկվում էր կրկնակի շահագործման՝ ազգային և սոցիալական։ Մի կողմից նա կրում էր գաղութի ունևոր վերնախավի, մյուս կողմից՝ ճենովացի և թուրք-թաթարական շահագործողների լուծը։ Դեռևս ճենովացիների տիրապետության շրջանում թերակղզու հարավարևելյան ծովափին բնակություն հաստատած հայերը վճարում էին հողային, աղի և պարենային հարկ, գլխահարկ, շինարարության հարկ և տարատեսակ մաքսեր։ XIV դարի կեսերին տեղացի բնակչության մեջ ճենովացիներին ամենից բարձր գլխահարկ վճարում էին հայերը. հույների 179 և հրեաների 75 սոմոյի դիմաց նրանցից վերցնում էին 749 սոմո գլխահարկ[17]։ XV դարի կեսերին Ղրիմի ճենովական ոլորտում ապրող տեղացի բնակչության տնտեսական վիճակը այնքան էր ծանրացել, որ հարկերի գանձումը դարձել էր անհնարին։ «Վերջին երկու ամիսների ընթացքում հարկ ենք նշանակել,—գրում էր Կաֆայի հյուպատոսը Ճենովա,—բայց մեզ թվում է, որ այժմ ժամանակը չէ հայերից, հույներից և այլ ժողովուրդներից այն հավաքել։ Մենք չգիտենք որտեղից գտնել հարկատուներ, որովհետև այստեղ դրամ ունեցող մարդիկ չկան»[18]։ Ճենովական վարչությանը նշանակալից եկամուտ էին բերում մաքսերը։ 1449 թ. կանոնադրությամբ մաքս էր վերցվում արվարձաններից Կաֆա բերվող 15 տեսակի մթերքների դիմաց[19]։

Հայերից և հույներից գանձվող հարկերը կազմում էին խանի եկամուտների գլխավոր աղբյուրը։ Միայն խանական գանձարանին նրանք վճարում էին ուշուր՝ բերքի տասնորդը, զաքյաթ՝ անասուններից և թռչուններից ստացված եկամտի 1/6-ը, պետիր՝ հոգևոր հարկ, գլխահարկ։ Մինչև 1777 թ. առանձին հարկեր էին գանձվում խանական պաշտոնյաների համար։

Հարկային լուծը հայ աշխատավորության վրա ավելի է ծանրանում 1475 թ. հետո, երբ թաթար խանից բացի նրանց սկսեցին հարկադրել նաև թուրքական իշխանությունները։ Հարկերն ու մաքսերն այնքան ավելացան, որ միայն Կաֆայի, Եվպատորիայի ու Բալակլավայի նավահանգիստներից գանձվող հարկերից թուրքական սուլթանը տարեկան 20 հազար ակչե բաժին էր հանում խանին, ղալղա-սուլթանին և Նուր-էդդինին[20]։ Հարկադրվել էին Կաֆայի հայկական եկեղեցիները. սրանց դիմաց քաղաքի հայ համայնքը ամեն տարի թուրքական գանձարանն էր մուծում որոշակի քանակությամբ հարկեր։ Թուրքական փաշային անմիջականորեն ենթակա Կաֆայում հարկերն այնքան էին ծանրացել, որ դրանց պատճառով քաղաքի բնակչությունը XVII դարի 20-ական թվականներին սկսում է փախչել Ղարասուբազար։ Թե՛ ճենովացիները և թե՛ թաթարները հարկերի գանձումը տալիս էին կապալով, որն ավելի

---

17 *Տե՛ս И. А. Гольдшмидт*, Каффа—генуэзская колония в Крыму в конце XII—первой половине XV вв. (диссертация), М., 1952, էջ 247:

18 „Atti", VI, էջ 367։

19 *Տե՛ս* «Записки Одесского об-ва истории и древностей» (այսուհետև՝ ЗООИД), т.У, Одесса, 1863, էջ 720—721:

20 *Տե՛ս В. М. Смирнов*, Крымское ханство под верховодством Оттоманской порты до начала XVIII в., Казань, 1887, էջ 823:

էր ծանրացնում հարկատուների վիճակը։ Կաֆայի հյուպատոսը հայերը կապալառուներին էր հանձնում հրապարակային աճուրդի միջոցով։

Թաթար-թուրքական իշխանությունների կողմից գանձվող հարկերն ու մաքսերը, ինչպես և կատարվող պարհակները ժամանակի պահանջների համեմատ փոխում էին իրենց ձևերն ու չափերը։ Այդ պահանջները անհագուրդ էին դառնում, մանավանդ, թաթարների կողմից ավարառական նպատակներով պարբերաբար ձեռնարկված ասպատակությունների և թուրքական զինվորականության ռազմական միջոցառումների նախօրյակին։ Վարելով անարտադրողական կյանք, թաթար ֆեոդալական ավագանին իր ապրուստի հիմնական միջոցներից մեկը դարձրել էր ասպատակությունները, որոնց ժամանակ կողոպտում և Ղրիմ էր բերում մեծ քանակությամբ ավար ու գերիներ։ Միայն XVII դարի 20—30-ական թվականներին Ղրիմի հայերին թուրքերը մի քանի անգամ «տէֆտէր արին», այսինքն հարկադրման նպատակով մարդահամար կատարեցին և մեծ քանակությամբ դրամ ու պարեն վերցրին[21]։

Թաթարներն ու թուրքերը չէին բավարարվում «օրինական» տուրքերով։ Իրենց տիրապետության շրջանում (XIII—XVIII դարեր) թաթարները ամեն մի առիթով «դողման» ու «երերման» մեջ էին գցում ղրիմահայ գաղթօջախները, կողոպտում ու սրի քաշում նրա բնակիչներին։

Ղրիմի հայ բնակչությունը մշտապես ենթակա է եղել ազգային-կրոնական հետապնդումների թե՛ ճենովացիների և թե՛ թաթարների կողմից։ Կաթոլիկությունը տարածելու նպատակով 1318 թ. Հռոմը Կաֆայում ստեղծում է իր եպիսկոպոսությունը։ 1333 թ. այստեղ իրենց վանքն են հիմնում հայ դոմինիկյան միաբանները։ Ղրիմի հայերին կաթոլիկացնելու համար հռոմեական եկեղեցին դիմում էր զանազան միջոցների՝ համոզելուց սկսած մինչև բռնություն։ Ղրիմահայությունը վճռականորեն դիմադրում էր քարոզիչների այդ միտումներին, որոնց նպատակը ի վերջո նրան ձուլելն էր։ Ղրիմահայերի՝ ազգային եկեղեցու համար կաթոլիկությանը հարյուրամյակներ շարունակ ցույց տված դիմադրությունը միաժամանակ սոցիալական պայքարի երանգ ուներ, որովհետև այն ուղղված էր գաղութի առևտրա-վաշխառուական վերնախավի մի մասի դեմ, որը միտում էր ճենովացիներին հավասար արտոնություններ ստանալ առևտրի մեջ և այդ պատճառով էլ հարում էր կաթոլիկությանը։ Բայց կաթոլիկ քարոզիչների ջանքերը հիմնականում մնացին անհետևանք, մանավանդ 1453 թ. Կոստանդնուպոլսի անկումից հետո, երբ թուրքերի դեմ Արևմուտքի օգնությունը ապահովելու հույսերը ջարդուփշուր եղան։

1768—1774 թթ. ռուս-թուրքական պատերազմը ճակատագրական եղավ Ղրիմի հայկական գաղութի համար։ Պատերազմից հետո ցարական կառավարությունը, ելնելով քաղաքական-տնտեսական որոշակի միտումից, ձեռնամուխ է լինում ղրիմահայերի և հույների տեղահանմանը և վերաբնակեցմանը Ազովի նահանգում։ Տեղահանվեցին 12.598 հայեր։

Այդ տեղահանմամբ միջնադարյան ղրիմահայ գաղութը վերանում է։ Սակայն հետագայում Եկատերինոսլավից հայ կաթոլիկ համայնքի՝ Ղարասուբազար վերադառնալու և Նոր Նախիջևանից, Թուրքիայից ու այլ վայրերից նոր գաղթականների Ղրիմ անցնելու հետևանքով թերակղզու վրա կրկին հաստատվում է հայ բնակչություն։

---

[21] Տե՛ս «Մանր ժամանակագրություններ», հատ. I, էջ 213—226։

Իր գոյության հարյուրամյակների ընթացքում Ղրիմի հայկական գաղութը սերտ կապեր է հաստատել Հայաստանի և Կիլիկիայի, ինչպես նաև Լվովի, Կոստանդնուպոլսի, Մոլդավիայի, Հյուսիսային Կովկասի և հայաշատ այլ վայրերի հետ։ Հայրենիքի և հայ գաղթօջախների հետ ունեցած սերտ կապը մեծապես նպաստում էր ազգային մշակույթի պահպանմանն ու զարգացմանը։



Ղրիմի Ս. Խաչ վանքը

Հայ ազգային մշակույթի շատ ճյուղեր՝ դպրոցներ, ճարտարապետություն, գրականություն, գրչություն, մանրանկարչություն, գեղարվեստական արհեստագործություն և այլ բնագավառներ միջնադարյան Ղրիմում բավականին ծաղկուն վիճակ էին ապրում։ Չնայած շրջապատող միջավայրից կրած որոշ ազդեցության, հայ մշակույթն այստեղ պահպանել էր իր ազգային կնիքն ու հայ ժողովրդի բազմադարյան մշակույթի լավագույն ավանդույթները։ Ավելին, մշակութային մի շարք մարզերում (մասնավորապես ճարտարապետության և բրուտագործության) Ղրիմում բնակվող մյուս ժողովուրդները որոշակի ազդեցություն են կրել հայկականից[22]։

Ղրիմահայ մշակույթի զարգացմանը նշանակալից ծառայություն են մատուցել միջնադարյան դպրոցները։ Հայկական բազմաթիվ դպրոցներ կային Կաֆայում, Սուրխաթում, Ղարասուբազարում, Սուրբ Խաչ վանքում և այլուր։ Թեև դպրոցները գործում էին վանքերին ու եկեղեցիներին կից, սակայն աստվածաբանության հետ միասին աշակերտներին տրվում էին նաև աշխարհիկ գիտելիքներ, ուսուցանում էին փիլիսոփայություն, գրչության արվեստ, երաժըշտություն, մանրանկարչություն, տոմարագիտություն և այլ առարկաներ։

Ղրիմը հայ գրչության աչքի ընկնող կենտրոններից էր։ Այստեղ էին գանըվում գրչության նշանավոր օջախներ Կաֆան, Սուրխաթը, Ղարասուբազարը։ Միջնադարի թոհ ու բոհից փրկվել և մեզ են հասել ղրիմահայոց ավելի քան 240 ձեռագրեր։ Ղրիմում իրենց ժրաջան գործունեությունն էին ծավալել «մեծանուն և բազմաբեղուն» գրիչ Նատերը՝ գրչական իր ամբողջ տոհմով հանդերձ (XIV դար), Քրիստոստուրը, Թադեոս Ավրամենցը և Օղսենտը (XV դար), Զաքարիա աբեղան, Նիկողայոս Մելանավորը, Հովակիմ Երեցը (XVII դար), Գրիգոր Երեցը (XVIII գար) և շատ ուրիշներ։

Ղրիմի հայկական մշակույթի փայլուն էջերից է բանաստեղծ-տաղասացների ստեղծագործությունը։ Սրանց գործունեությունը առանձնապես ծաղկուն վիճակ էր ապրում XVII դարում։ Այդ ժամանակ են ստեղծագործել նշանավոր տաղասացներ Սիմեոն, Խասպեկ, Վարդան, Վրթանես Կաֆացիները, Ստեփանոս Թոխաթեցին, Մարտիրոս Ղրիմեցին և ուրիշներ։

Գիտության մի շարք ճյուղերի նկատմամբ ղրիմահայերը ցուցաբերել են որոշակի հետաքրքրություն։ Դպրոցներում և վանքերում ուսումնասիրվում էին փիլիսոփայություն, տոմարագիտություն, բնագիտություն, բժշկագիտություն։ Բժշկության մեջ հայերն այնքան էին առաջադիմել, որ թաթար խաները, ըստ մեծի մասին, նրանց էին վստահում իրենց ապաքինումը[23]։

Տավրիկյան աշխարհում ղրիմահայերը ծավալել էին շինարարական լայն գործունեություն։ Նրանք կառուցել էին բազմաթիվ շենքեր, որոնց ճարտարապետությունը խարսխված է հայ շինարարական արվեստի ավանդույթների վրա։ Այդ կառույցներից են Հին Ղրիմ քաղաքին մերձակա Սուրբ Խաչ վանքը (1358), Հովհաննես Մկրտչի (1348) և Հրեշտակապետաց (1408) եկեղեցիները Կաֆայում, Բախչելի գյուղի սբ. Փրկչի վանքը (XIV—XV դարեր) և այլն։ XV դարում, ճենովացիների համաձայնությամբ, հյուսիսից թաթարական հարձակումների դեմն առնելու նպատակով, հայերը Կաֆան շրջապատում են աշտարակակիր երկրորդ պարսպով, որ կրում էր Հայոց-բերդ անունը։

---

[22] Տե՛ս *А. Л. Якобсон*, Средневековый Херсонес (XII—XIV), М.—Л., 1950, էջ 79—109, 117—119:

[23] Տե՛ս *В. Х. Кондораки*, Ук. соч., т. 3, ч. 10, էջ 59:

Նշանակալից էր հայ համայնքների ջրաշինարարական գործունեությունը հարավ-արևելյան Ղրիմում, ուր խմելու ջրի հարցը լուրջ դժվարություն էր ներկայացնում։ Տակավին 1316 թ. Կաֆայի հայ եպիսկոպոսը կառուցում է ջրմուղ։ Ժամանակի տեխնիկայի վերջին խոսքին համապատասխան հայ ջրաշինարարները նման ջրմուղներ են կառուցել Կաֆայից 12 կմ հեռավորության վրա գտնվող Դվույակորնի ծովածոցում, Սուրբ Խաչ վանքում, Թոփլի հայկական գյուղում[24]։ Հայկական հինավուրց ավանդույթին համապատասխան՝ ղրիմահայոց մոտ, լայն տարածում էին գտել աղբյուր-հուշարձանների կառուցումը և խաչքարեր կանգնեցնելը։

## 2. ՈՒԿՐԱԻՆԱՅԻ ԵՎ ԼԵՀԱՍՏԱՆԻ ԳԱՂԹՕՋԱԽՆԵՐԸ

Միջնադարյան Լեհաստանի և Ուկրաինայի հայկական գաղթօջախները հիմնականում գտնվում էին ներկայիս Արևմտյան Ուկրաինայի հողերում՝ Գալիցյան Ռուսիայում, Վոլինում և Պոդոլիեում։ XIV դարի կեսերից այս երկրամասերն անցան Լեհաստանին և այդ պատճառով էլ տեղի հայկական գաղթօջախները հետագայում պատմության մեջ հիշատակվում են որպես Լեհաստանի (կամ Ռեչ Պոսպոլիտայի) հայկական գաղթավայրեր։

Հայերի՝ ուկրաինական հողերում զանգվածաբար հաստատվելու մասին հնագույն գրավոր ավանդությունները վերաբերում են XI դարին։ Ըստ այդմ 1062 թ. Գալիցիայի և Վոլինի իշխան Ֆյոդոր Դմիտրիևիչը իր երկիրն է հրավիրում հայերի մի մեծ խմբի՝ ընձեռելով նրանց զանազան իրավունքներ և արտոնություններ[25]։ Այս ավանդության մի այլ վարկածով այդ նույն թվականին իշխան Իզյասլավի հրավերով Կիև է գնում հայ ռազմիկների 20 հազարանոց մի խումբ՝ պոլովցիների դեմ մղվող պատերազմին մասնակցելու համար։ Հետագայում հայ ռազմիկների մեծ մասը բնակություն է հաստատում այնտեղ և զբաղվում արհեստներով, առևտրով ու հողագործությամբ[26]։

Թեև այս տեղեկությունները կրում են ավանդությունների բնույթ, սակայն, մի շարք ուսումնասիրողների կարծիքով, հեռու չեն իրական հիմքերից, մանավանդ, եթե հաշվի առնենք XI դարի կեսերից Հայաստանում ստեղծված քաղաքական և տնտեսական ծանր վիճակը։

Բացի ավանդություններից, պահպանվել են նաև խիստ սակավաթիվ, բայց բավական ստույգ և արժանահավատ պատմական փաստեր, որոնք անառարկելիորեն վկայում են, որ դեռ XI—XII դարերում Կիևում գոյություն է ունեցել հայկական գաղթօջախ։ Այսպես, ըստ Կիև-պեչորյան «Հարանց վարքի» մեջ զետեղված Աղապիտի վարքի, XI—XII դարերում Կիևյան Ռուսիայի իշխաններ Վսեվոլոդ Յարոսլավովիչի (1077, 1078—1093) և, ապա, Վլադիմիր Վսեվոլոդովիչ Մոնոմախի (1113—1125) կառավարման ժամանակաշրջանում Կիևում բնակվել են հայեր, որոնց առանձին ներկայացուցիչներ կապեր են ունեցել նույնիսկ իշխանական տների հետ։ Այդ ժամանակ Կիևում ապրել է մի հայ բժիշկ, որը բուժում էր Ալեքսանդրիայից բերված դեղաբույսերով իր

---

[24] Տե՛ս «Известия Гос. географического общества», № 79, вып. 7, М., 1939, էջ 1044։

[25] Տե՛ս Ks. Zachariasiewicz, Wiadomosc o ormianachw Polsce, Lwow, 1842, էջ 10։

[26] Տե՛ս S. Baracz, Rys drlecjow ormianskich, Tarnopol, 1869, էջ 60—61 (այսուհետև՝ Rys)։

հայրենակիցներին։ Իբրև անվանի բժիշկ, նրան իր մոտ է հրավիրում նաև Վլադիմիր Մոնոմախը[27]։

Նույն աղբյուրը վկայում է նաև, որ Կիևո-պեչորյան վանքի վանականները տեղի դիտուն հայերի, ինչպես նաև Մերձավոր Արևելքից եկած ասորիների և այլոց հետ վիճում էին դավանաբանական հարցերի շուրջ[28]։

Հայ ճարտարապետության և նկարչության նմուշները իրենց արտացոլումն են գտել Սոֆիայի տաճարի, Միխայլովյան ոսկեգմբեթ վանքի և Կիևի հին ճարտարապետական այլ կոթողների պատերի վրա[29]։

Հետագա դարերին վերաբերող պատմական փաստերը նույնպես կցկտուր են և չափազանց սահմանափակ պատկերացում են տալիս Կիևյան Ռուսիայի հետ հայերի ունեցած կապերի մասին։ Բայց և այնպես դրանք պարզորոշ ձևով վկայում են, որ Կիևում հայկական գաղութը ոչ միայն պահպանել է իր գոյությունը, այլև ժամանակի ընթացքում զգալիորեն աճել է ու զարգացել։ Պետք է ենթադրել, որ ինչպես հետագայում՝ XV—XVII դարերում ամբողջ Ուկրաինայում և Լեհաստանում, այնպես էլ դրանից առաջ Կիևում հայերը հիմնականում զբաղվում էին արհեստներով, առևտրով, երկրագործությամբ և կատարում էին զինվորական ծառայություն։ Միաժամանակ նրանք մեծ հետաքրքրություն էին հանդես բերում Կիևյան Ռուսիայի մշակույթի նկատմամբ։ Այս տեսակետից ուշագրավ է այն, որ մինչև XIII դարի կեսերը հայերեն է թարգմանվել հին ռուսական գրականության կարևոր հուշարձան «Բորիսի և Գլեբի վարքը»[30]։

Կիևի, հավանաբար նաև ամբողջ միջին ու արևելյան Ուկրաինայի հայկական գաղութների զարգացման համար ճակատագրական նշանակություն ունեցան մոնղոլական, ապա և թաթարական արշավանքները։ Կիևյան Ռուսիայի անկման և օտարազգի նվաճողների երկարատև տիրապետության հետևանքով Ուկրաինայում ստեղծվեց սոցիալ-տնտեսական և ազգային-կրոնական դրեթե նույնպիսի ծանր իրավիճակ, ինչպիսին գոյություն ուներ Հայաստանում։ Նվաճողների մշտական բռնությունները, չկանոնավորված հարկային սիստեմը, ազգային ու կրոնական հալածանքները դրեթե լրիվ բացառում էին առևտրով, արհեստներով և երկրագործությամբ զբաղվելու հնարավորությունները և մեծ սպառնալիքի տակ էին դնում նույնիսկ բնակչության ֆիզիկական գոյությունը։

Այդ պատճառով Մերձդնեպրյան (այդ թվում նաև Կիևի) և Արևելյան Ուկրաինայի հայերի մեծ մասը ստիպված էր գաղթել Գալիցյան Ռուսիա, Պոդոլիա, Վոլին, ինչպես նաև Լեհաստան։ Իհարկե դրանից հետո էլ հայեր էին բնակվում Մերձդնեպրյան և ձախափնյա Ուկրաինայում, բայց նրանց թիվը աննշան էր և ոչ մի կերպ չէր կարող համեմատվել Արևմտյան Ուկրաինայի և Լեհաստանի հայկական գաղթավայրերի հետ, որոնք արագորեն աճեցին թե՛ քանակապես և թե՛, մանավանդ, տնտեսապես։

Ուկրաինայի արևմտյան շրջաններում հայերի բնակեցման մասին առավել

---

[27] Տե՛ս *Л. М. Меликсет-Бек*, Из истории армяно-украинских отношений. Сб. «Ист. связи и дружба украинского и армянского народов», Ереван, 1961, էջ 49:

[28] Տե՛ս *М. Н. Тихомиров*, Древне-русские города, М., 1956, էջ 293.

[29] Տե՛ս *Д. И. Мышко*, О жизни армян в Киеве в XV первой половине XVII вв. См. сб. «Ист. связи и дружба украинского и армянского народов», Киев, 1965.

[30] Տե՛ս *Л. С. Хачикян*, Армянские колонии на Украине в XVI—XVII вв. См. сб. «Великая дружба», Ереван, 1954, էջ 196:

ստույգ պատմական հիշատակությունները վերաբերում են XIII և հետագա դարերին։ Իշխան Դանիել Գալիցկին հիմնելով Լվով քաղաքը (XIII դարի 60-ական թվականներ), հայ գաղթականներ է հրավիրում և բնակության համար նրանց հողեր տրամադրում քաղաքի հյուսիսային մասում[31]։ Լեհական այլ աղբյուրների համաձայն, դեռ XIII դարի սկզբում հայեր էին բնակվում այն բլրալանջին, որի մոտ հետագայում հիմնադրվեց Լվով քաղաքը[32]։

XIV դարում հայերը Լվովում արդեն զգալի թիվ էին կազմում, կառուցել էին երկու եկեղեցի (ս. Հակոբ և ս. Խաչ) և մեկ վանք, բաղնիք, կամուրջ և այլն։

Այդ նույն աղբյուրները վկայում են, որ XIII դարում հայ գաղթականները բնակություն էին հաստատել նաև Պոդոլիեում, մասնավորապես Կամենեց-Պոդոլսկ քաղաքում և նրանից ոչ հեռու գտնվող երկու գյուղերում, որոնք կոչվում էին Օրմիանիե և Օրմիանկի։ Սկսած 1250 թ. Կամենեց-Պոդոլսկում գործում էր հայկական եկեղեցի[33]։

Այստեղ արդեն XIV դարի կեսերին գոյություն ուներ հայոց դատարան, որը վարում էր քաղաքում բնակվող հայերի դատական գործերը։ Որոշ ժամանակ անց Վլադիսլավ III թագավորի անունից տեղի հայերին շնորհվեց առևտրով զբաղվելու արտոնություն, որը զգալիորեն նպաստեց Կամենեց-Պոդոլսկի հայ համայնքի տնտեսական բարգավաճմանը և բնակչության թվի ավելացմանը։ Եթե 1575 թ. Լվովում ապրում էր 60 հայ ընտանիք, Կամենեց-Պոդոլսկում նույն ժամանակ նրանց թիվը հասնում էր 300-ի[34], իսկ XVII դարի առաջին կեսին այնտեղ բնակվում էր մինչև 1200 հայ ընտանիք, որը կազմում էր քաղաքի ընդհանուր բնակչության կեսից ավելին[35]։ XVI—XVII դարերում քաղաքի հայ համայնքի միջոցներով կառուցվեց դպրոց և հիվանդանոց։ Հաշվի առնելով քաղաքում բնակվող հայերի զգալի աճը և ընդառաջելով վերջիններիս խնդրանքին, Վլադիսլավ IV թագավորը 1635 թ. թույլ տվեց քաղաքում կազմակերպել իրենց առանձին մագիստրատը։ Կամենեց-Պոդոլսկի հայկական գաղթօջախի բարգավաճումը ընդհատվեց 1672 թ., երբ քաղաքը գրավեցին թուրքերը։ Թուրք ենիչերիները քաղաքի բնակչության մի մասին կոտորեցին, իսկ մյուս մասին (առավելապես հայերին) աքսորեցին Մակեդոնիա։ Ճիշտ է, հետագայում Յան Սոբեսկու ջանքերով Մակեդոնիա աքսորված հայերը նորից վերադարձան, և նույնիսկ սեյմի որոշմամբ 15 տարով ազատվեցին ամեն տեսակի հարկերից և տուրքերից, բայց նրանց մեծ մասը բնակություն հաստատեց Լվովում, իսկ Կամենեց-Պոդոլսկի գաղթօջախը այլևս չվերականգնեց իր նախկին նշանակությունը[36]։

XIV—XV դարերում Վլադիմիր, Լուցկ և արևմտա-ուկրաինական մյուս քաղաքներում հայ գաղթօջախների գոյության մասին վկայում են մի շարք

---

[31] Տե՛ս B. Zimorowicz, Historya miasta Lwowa, Krolestw Galicji i Lodomeri stolicy, Lwow, 1835, էջ 69։

[33] Տե՛ս T. Cromnicki, Ormjanie, wich historja, prawa, przywileje, Warszawa. 1889, էջ 9։

[33] Տե՛ս նույն տեղում, էջ 70։

[34] Տե՛ս Dr. Anton J., Zamieczki podolskie na kresach multanskich, I. II, Warszawa 1880, s. 116.

[35] Տե՛ս Dr. Anton J., Nowe opowiadania historyczne, Lwow, 1883, s. 140—141.

[36] Տե՛ս T. Cromnicki, նշված աշխատությունը, էջ 57—58։

կաթողիկոսական կոնդակներ (1375, 1384, 1410 և այլ թվականներից)[37], ինչպես նաև լեհական ծառում մնացող պատմական փաստաթղթեր։

Լուցկում և Յազլովեցում հայկական համայնքներ են հիմնվել գրեթե Լվովի և Կամենեց-Պոդոլսկի գաղթօջախների հետ միաժամանակ։ XIV դարում Լուցկում գոյություն է ունեցել հայոց եկեղեցի, որը կրում էր սբ. Ստեփանոսի անունը։ 1445 թ. լիտվական իշխան Սվիդրիգայլոն այդ եկեղեցուն նվիրում է քաղաքից ոչ հեռու գտնվող Ցեպերով գյուղը, իսկ 1510-ական թվականներին նույն եկեղեցու առաջնորդ Հակոբը եկեղեցական կալվածքներն ավելացնում է, գնելով Օստրով գյուղը[38]։ Լուցկի հայ բնակչությունը հիմնականում զբաղվում էր արհեստագործությամբ և առևտրով, իսկ քաղաքամերձ հողերում՝ նաև երկրագործությամբ։ Այստեղ էլ համայնքի դատական գործերը վարում էին հայազգի դատավորները։

XIV—XVII դարերում դեռ շարունակվում էր արևմտա-ուկրաինական հողերում հայկական նոր գաղթօջախների առաջացման պրոցեսը։ Դա պայմանավորված էր մի կողմից լեհ ֆեոդալների՝ առևտուրը ընդլայնելու նպատակով նոր քաղաքներ հիմնելու ձգտումով, մյուս կողմից՝ եկեղեցական հալածանքներից ապահովագրվելու ցանկությամբ։ Այդ ժամանակամիջոցում հիմնված կամ տնտեսական վերելքի ուղին բռնած քաղաքներում հայերը ընդհանուր առմամբ ավելի արտոնյալ պայմաններում էին գտնվում, քան հին քաղաքներում։

Նման քաղաքների շարքում առավել նշանակալից էին Զամոստիեն, Ստանիսլավը, Զոլոչևը։

1585 թ. Լեհաստանի կանցլեր Յան Զամոյսկին մի արտոնագիր շնորհեց Զամոստիե քաղաքում բնակվող հայերին։ Արտոնագրի, համաձայն այնտեղ բնակվող հայերը անցնում էին իր հովանավորության տակ, իրավունք էին ստանում կառուցել եկեղեցի, դավանել իրենց ազգային կրոնը, հիմնել մագիստրատ և դատարան, զբաղվել առևտրով և արհեստներով։

Ստեղծված նպաստավոր պայմանների շնորհիվ քաղաքի հայ բնակչությունը արագորեն աճեց։ Այստեղ հայեր էին գալիս Լվովից, Կամենեց-Պոդոլսկից, բուն լեհական քաղաքներից և նույնիսկ Հայաստանից։ Զամոստիեն առևտրական լայն կապեր ուներ Կոստանդնուպոլսի, Ադրիանապոլի, Պարսկաստանի, Լիտվական մեծ իշխանության, ինչպես նաև Վենետիկի, Լիսաբոնի և այլ քաղաքների ու երկրների հետ։ Զամոյսկիների մեծ ուշադրության և հոգատարության շնորհիվ քաղաքը տնտեսապես բարգավաճում էր նույնիսկ այն ժամանակ, երբ Լեհաստանի տնտեսական անկման հետևանքով նախկին խոշորագույն առևտրա-արհեստագործական կենտրոնները (Կրակով, Պոզնան, Լյուբլին, Գդանսկ, Լվով և այլն) վաղուց արդեն կորցրել էին իրենց երբեմնի տնտեսական փառքը։ Բայց և այնպես այդ ճակատագրից չկարողացավ խուսափել նաև Զամոստիեն։ XVIII դարի կեսերին նա ևս սկսեց անկում ապրել։ Սակայն մինչ այդ էլ հայերի թիվը այնտեղ խիստ նվազել էր և այդ պատճառով 1738 թ. քաղաքի հայկական մագիստրատը դադարեցրեց իր գործունեությունը[39]։

---

[37] Տե՛ս Ղ. Ալիշան, Կամենից, Վենետիկ, 1896, էջ 6—7։

[38] Տե՛ս Rys, էջ 152—153։

[39] Տե՛ս *Miroslawa Zakrrewska-Dubasowa*, Ormanie Zamojscy i ich rola w wymianie handlowej i kulturatnej miadry Polska a Wschodem, Lublin, 1965.

XVII դարի երկրորդ կեսին Լեհաստանի հայկական գաղթօջախների շարքում նշանակալի տեղ էր գրավում Ստանիսլավը (ներկայումս Ուկր. ՍՍՀ Իվանո-Ֆրանկովսկ քաղաքը)։ 1662 թ. Գալիցիայի ստարոստա Անջեյ Պոտոցկին այստեղ կառուցեց մի ամրոց, որը պետք է արտաքին հարձակումներից պաշտպաներ Լեհաստանի անդրդնեստրյան տիրույթները։ Այդ նույն ժամանակ էլ հայերը սկսեցին բնակություն հաստատել Ստանիսլավում։ 1669 թ. նրանք հիմնվեցին նրանից ոչ հեռու գտնվող Լիսեցում, 1679 թ. Տիսմենիցայում, XVII դարի վերջերին՝ Գորոդենկայում և Օբերտինում և, վերջապես, 1715 թ. նաև Կուտիում։

Ստանիսլավում հայերի առևտրա-արհեստագործական գործունեության համար նույնպիսի բարենպաստ հեռանկարներ բացվեցին, ինչպես Զամոստիեում։ Սահմանամերձ այդ քաղաքի մոտով ձգվում էր Կոստանդնուպոլիս տանող առևտրական ճանապարհը։ 1677 թ. հունվարին Անջեյ Պոտոցկին հայերին տվեց մի արտոնագիր, որը նրանց ընձեռում էր քաղաքի լեհական համայնքի հետ հավասար իրավունքներ և պարտականություններ։ Դրա հիման վրա հայերը կազմակերպեցին ազգային ինքնավարություն, ազատվեցին Պոտոցկիների տիրույթում մաքսեր վճարելու պարտավորությունից, ճանաչվեց արհեստանոցներ, խանութներ, հողամասեր և այլ սեփականություն ունենալու և դրանք ժառանգաբար փոխանցելու նրանց իրավունքը։ Այդ արտոնագիրը նույն թվականին հաստատվեց թագավոր Յան Սոբեսկու կողմից, իսկ մեկ տարի անց լրացվեց Անջեյ Պոտոցկու նոր արտոնագրով, որը Ստանիսլավի հայերին իրավունք էր տալիս օգտվելու այն բոլոր իրավունքներից և արտոնություններից, որոնք հայերը ձեռք էին բերել յուրաքանչյուր առանձին համայնքում։ 1684 թ. ֆրանսիացի ճանապարհորդ գ՚Ալեյրակը հաղորդում էր. որ Ստանիսլավի բնակչությունը բաղկացած է անչափ հարուստ հայերից, որ դատելով տղամարդկանց և կանանց հագուստից, ինչպես և հաճախակի տեղի ունեցող տոնավաճառներից, Ստանիսլավը կարելի է համարել թագավորության սիրտը։

Չնայած քաղաքատեր ֆեոդալների ստեղծած նպաստավոր պայմաններին, XVIII դարի առաջին կեսին հայկական համայնքը քայքայվեց։ Քաղաքի հայ բնակչությունը տեղափոխվեց Լեհաստանի այլ քաղաքներ, ինչպես նաև հարևան երկրներ[40]։

Միջնադարյան Լեհաստանի և Ուկրաինայի բոլոր հայկական գաղթավայրերի պատմության մեջ բացառիկ մեծ է Լվովի հայ գաղթօջախի ունեցած նշանակությունը։ Հիմնադրման օրից մինչև XVIII—XIX դարերը Լվովը հանդիսանում էր ոչ միայն Լեհաստանի, այլև ամբողջ Արևելյան Եվրոպայի հայկական գաղթօջախների ոչ պաշտոնական, սակայն բոլորի կողմից ճանաչված մայրաքաղաքը։ Իր առևտրական և ռազմա-ստրատեգիական կարևորության շնորհիվ բացառիկ մեծ էր այդ քաղաքի նշանակությունը նաև ամբողջ Լեհաստանի համար և այդ պատճառով էլ նա գտնվում էր արքունիքի հատուկ ուշադրության ներքո։

Լվովահայ գաղութի տնտեսական կշիռը XV—XVII դարերում այնքան մեծ էր, որ հնարավոր չէր քաղաքի կյանքին վերաբերող որևէ հարց լուծել, առանց

---

40 Տե՛ս *Czeslaw Chowaniec*, Ormianiew stanislawowie w XVII—XVIII wieku, Stanislawow, 1928.

հաշվի առնելու հայկական առևտրա-արհեստագործական վերնախավի շահերը։ 1367 թ. Լվովը հոգևոր կենտրոն դարձավ ամբողջ հարավ-արևելյան Եվրոպայի հայության համար։ Ազգային, մշակութային, իրավական և կյանքի այլ ասպարեզներում նա յուրատեսակ չափանիշ էր դարձել Լեհաստանի, Ուկրաինայի, Մոլդավիայի, Վալախիայի և այլ շրջանների հայկական գաղթավայրերի համար։ Իրավական հարցերի մեկնաբանման համար հաճախ դիմում էին Լվովի հայոց դատարանին։ Վերջինս կատարում էր երբեմն նաև վճռաբեկ ատյանի դեր հայոց մյուս դատարանների նկատմամբ։

Լվովի հայերը իրավական և տնտեսական արտոնություններ ունեին դեռևս Գալիցյան Ռուսիայի իշխանների օրոք։ Երբ XIV դարի կեսերին այս հին ռուսական հողերն անցան լեհ ֆեոդալների տիրապետության տակ, Լեհաստանի թագավոր Կազիմիր III-ը (1333—1370) 1356 թ. իր արտոնագրով Լվով քաղաքին շնորհեց մագդեբուրգյան կամ գերմանական քաղաքային իրավունք, որը լայն տարածում էր գտել միջնադարյան Լեհաստանի քաղաքներում։ Այդ արտոնագրում հատուկ նշված էին նաև Լվովի ոչ կաթոլիկ բնակչության, այդ թվում առաջին հերթին հայերի ընդհանուր իրավունքները։ Լեհ թագավորն իր արտոնագրով սահմանում էր, որ եթե հայերը, ռուսինները (ուկրաինացիները), հրեաները չեն ցանկանում օգտվել մագդեբուրգյան իրավունքից, ապա քաղաքային կյանքի բոլոր հարցերում կարող են առաջնորդվել իրենց ազգային օրենքներով և սովորույթներով[11]։ Իր մի այլ արտոնագրով Կազիմիր III-ը 1367 թ. Լեհաստանի հայերի հոգևոր առաջնորդ էր ճանաչում և Լվովում հաստատվելու իրավունք տալիս Գրիգոր եպիսկոպոսին, որը դեռ 1361 թ. նշանակվել էր Վլադիմիրի, Լուցկի և Լվովի թեմի առաջնորդ։

Այս փաստերը վկայում են այն մասին, որ արդեն XIV դարում ոչ միայն Լվովը, այլև Լեհաստանում և Ուկրաինայում գտնվող շատ գաղթավայրեր հասել էին զգալի բարգավաճման։ Գաղթավայրերի արագ զարգացմանը և աճմանը նպաստեց այն հանգամանքը, որ մի կողմից Գալիցիայի, Պոդոլիեի և Վոլինի հին ռուսական իշխանները, ապա նաև լեհական ֆեոդալները ներգաղթող հայերի համար նպաստավոր պայմաններ ստեղծեցին, իսկ մյուս կողմից, իրենք իսկ հայերը բնակություն հաստատելու ժամանակ սկզբից ևեթ ճիշտ գնահատեցին այդ շրջանների տնտեսական նշանակությունը։ Այստեղ խաչաձևվում էին հյուսիսից հարավ և արևմուտքից արևելք ձգվող առևտրական կարևոր ճանապարհները։ XIII դարում Հարավ-արևելյան Եվրոպայի և Լեհաստանի քաղաքների տնտեսական արագ զարգացման հետևանքով զգալիորեն աշխուժացան այդ շրջանների առևտրական հարաբերությունները։ Գնալով մեծանում էր արևմուտքից Լեհաստանի, Հարավային Ռուսիայի և Սև ծովի վրայով դեպի արևելյան երկրներ տանող առևտրական ուղու նշանակությունը։ XIV դարի սկզբներին Վոլինի Վլադիմիր քաղաքը կատարում էր Լեհաստանի արևելյան առևտրի գլխավոր կենտրոնի դերը։ Սակայն նույն դարի երկրորդ կեսից, երբ Լեհաստանը արդեն զավթել էր Գալիցյան Ռուսիան, այդ կարևոր դերը անցավ Լվովին։ Գդանսկի միջոցով Լվովը կապված էր Բալթիկ ծովի հետ։ Լվովից Հարավային Ռուսիայի վրայով դեպի Արևելք էր ձգվում այսպես կոչված «թաթարական ճանապարհը»։ Գալիցյան Ռուսիան, Պոդոլիեն, Մոլդա-

[11] Տե՛ս Ուկր. ՍՍՀ Լվովի կենտրոնական պետական պատմական արխիվ (հետագայում ԼԿՊՊԱ), ֆ. 52, ց. 4, պահպ. միավոր 11։



Լվովի հայոց մայր եկեղեցին (XIVդ.)

վիան և Սև ծովի հյուսիս-արևմտյան և հյուսիսային ափերը այն վայրերն էին, որտեղ հանգուցվում էին արևելքի և արևմուտքի տնտեսական և առևտրական կապերը։ Ունենալով միջազգային առևտրի հարուստ փորձ, հիանալի տեղյակ լինելով արևելյան և արևմտյան շուկաների պահանջներին, տիրապետելով այդ շրջանում լայնորեն տարածված թուրքերեն և այլ լեզուներին, հայ գաղթականները, որոնք բնակություն էին հաստատել Լվովում, Կամենեց-Պոդոլսկում,

Լուցկում, Ստանիսլավում, Բրոդիում, Յազլովեցում, Սնյատինում, Յարոսլավում, Զամոստիեում, Ռաշկովում, Զոլոչևում, Կուտիում և մի շարք այլ քաղաքներում, մի քանի հարյուրամյակ իրենց ձեռքում էին պահում Լեհաստանի արևելյան առևտուրը։

Հայկական համայնքները առանձին ազգային ինքնավարություններ էին՝ օժտված դատական և այլ հարցեր տնօրինելու որոշակի իրավունքներով։ Ինքնավարությունն իրականացնող մարմինների կառուցվածքը և իրավասության շրջանակները սահմանվում էին քաղաքատեր ֆեոդալների և թագավորների հատուկ արտոնագրերով։ Լվովի հայկական ինքնավարությունն իրականացնում էր հայկական դատարանը, Կամենեց-Պոդոլսկում, Զամոստիեում, Ստանիսլավում՝ հայկական մագիստրատը։

Լեհ թագավորների և առանձին իշխանների օրենսդիր ակտերում կարելի է նույնիսկ հանդիպել որոշակի կանոնների, որոնք վերաբերում էին հայկական ինքնավար մարմինների ընտրությունների անցկացման կարգին։ Այսպես, 1563 թ. պետրկովյան սեյմը Լվովի լեհական մագիստրատին պարտավորեցնում է ուշադիր լինել հայկական ինքնավար հիմնարկների ընտրություններին, ինչպես այդ «պահանջում են թագավորական կարգադրությունները»։ Սեյմը հաստատում է Լվովի հայերի իրավունքը՝ ընտրելու իրենց 12 ավագներին, իսկ ավագները ընտրված էին համարվում միայն այն բանից հետո, երբ հայոց եկեղեցում երդվում էին հավատարիմ լինել լեհ թագավորներին[42]։

1576 թ. մայիսի 26-ին, հաստատելով Կամենեց-Պոդոլսկի հայերի իրավունքներն ու արտոնությունները, Ստեփան Բատորի թագավորը սահմանում է, որ այդ քաղաքի հայ բնակչությունը պետք է ամեն տարի ընդհանուր համաձայնությամբ ընտրի իր վոյթին (դատավորին) և հայկական մագիստրատի անդամներին[43]։ Լեհական թագի մեծ հեթման և կանցլեր Յան Զամոյսկու 1589 թ. արտոնագրի համաձայն, Զամոստիե քաղաքի հայ ինքնավար հիմնարկությունը ևս կազմվում էր ամենամյա ընտրությունների միջոցով։ Ինչպես բոլոր նման արտոնագրերում, այստեղ ևս հատուկ նշվում էր, որ ընտրությունները պետք է տեղի ունենան քաղաքատեր-ֆեոդալի ներկայացուցիչների հսկողության ներքո[44]։

XVII—XVIII դարերում այդ ընտրությունների նախապատրաստման և անցկացման գործում, ինչպես նաև համայնքի ներքին կյանքին վերաբերող շատ այլ հարցերում, սկսեց մեծ դեր խաղալ այսպես կոչված «40-ի կոլեգիան» կամ ինչպես հայկական աղբյուրներում է հիշատակված «քառասուն աղբարքը»։ Ռեչ Պոսպոլիտայում այս հաստատության կազմակերպումը կապված էր XV—XVI դարերում լեհական քաղաքներում սոցիալական հակասությունների ուժեղացման հետ։ Քաղաքային վարչությունները, որոնք ամբողջությամբ գտնվում էին խոշոր վաճառականության ձեռքում, չէին ներկայացնում արհեստավորների, մանր առևտրականների և բնակչության ստորին խավերի շահերը։ Այս վերջինների մղած պայքարի հետևանքով էլ սկզբում բուն լեհական, ապա և արևմտա-ուկրաինական քաղաքներում ստեղծվեցին «40-ի

---

[42] Տե՛ս Rys, էջ 110—111։

[43] Տե՛ս նույն տեղում, էջ 94։

[44] Տե՛ս *M. Zakrrewska-Dubasowa*, Organizacja ojminyormianskiy w XVI—XVII wicku, kocrnik lubelski, III Lublin, 1960, էջ 69—70։

կոլեգիանները», որոնք գործում էին քաղաքային խորհուրդներին կից և մասնակցում քաղաքի կառավարմանը[45]։

«Քառասուն աղբարց» հայկական կոլեգիանները բաղկացած էին տեղի հայ առևտրական և արհեստավորական վերնախավի ներկայացուցիչներից ու իրենց գործունեության և մասնավորապես համայնքի ինքնավար մարմինների ընտրությունների ժամանակ, իհարկե, ելնում էին առաջին հերթին իրենց նեղ դասային շահերից։

Հայկական բոլոր համայնքներում ընտրությունների օրը համարվում էր ազգային տոն։ Եկեղեցում կատարված հանդիսավոր պատարագից հետո ընտրողները գնում էին հայոց քաղաքապետարան, որտեղ ինքնավարության վարչությունը հաշիվ էր տալիս համայնքի և եկեղեցու նյութական միջոցների ծախսման և եկամուտների մասին, ապա ընտրում էին նոր վոյթին և խորհրդականներին, որոնք հաստատվում էին քաղաքատեր ֆեոդալի ներկայացուցիչների կողմից։

Ինքնավար մարմինները իրականացնում էին դատական իշխանությունը, լեհական իշխանությունների առջև ներկայացնում էին ամբողջ համայնքի, ինչպես նաև նրա առանձին անդամների և խմբերի շահերն ու իրավունքները, միջնորդում էին առևտրա-ֆինանսական ու քաղաքացիական գործարքներում և, վերջապես, տնօրինում էին հայկական եկեղեցու նյութական և մասամբ էլ դատական հարցերը։

Հայկական մարմինների դատական իշխանությունը տարածվում էր բոլոր այն հայերի վրա, որոնք մշտական բնակություն էին հաստատել Ռեչ Պոսպոլիտայի քաղաքներում, բացառությամբ միայն նրանց, ովքեր կաթոլիկություն էին ընդունել և օգտվում էին գերմանական իրավունքից։ Սակայն վերջինների թիվը մինչև եկեղեցական ունիան (XVII դարի կեսեր) մեծ չէր։

Դատական գործերը քննվում էին լեհահայոց դատաստանագրքի հիման վրա։ Օրենքների այդ ժողովածուի հիմքում ընկած էր Մխիթար Գոշի «Դատաստանագիրքը», որը զգալիորեն փոխվել էր մագդեբուրգյան կամ գերմանական իրավունքի ազդեցության տակ, իսկ որոշ փոփոխություններ էլ կատարել էր լեհ թագավոր Սիգիզմունդ I-ը՝ 1519 թ. լեհական սեյմում այն հաստատելու կապակցությամբ[46]։

Հայ ինքնավար մարմինների ներկայացուցիչները ներկա էին լինում լեհական թագավորների թագադրությանը, որտեղ նրանք հավաստում էին հայերի հավատարմությունը Ռեչ Պոսպոլիտային ու նորընտիր թագավորին և խնդրագիր էին ներկայացնում իրենց համայնքների իրավունքների ընդլայնման կամ առևտրի ու արհեստագործության պայմանների բարելավման մասին։

Ինքնավար հիմնարկությունները զբաղվում էին նաև հայ եկեղեցու գործերով։ Միջնադարյան Հայաստանում եկեղեցին սովորաբար ինքն էր տնօրինում իր գործերը, թե հոգևոր և թե ունեցվածքային։ Այդպես չէր Արևմտյան Ուկրաինայի և Լեհաստանի գաղութներում։ Հայ եկեղեցին այնտեղ ինքնուրույն էր միայն հոգևոր հարցերում, իսկ նրա ամբողջ ունեցվածքը համարվում էր հայ համայնքի սեփականություն և գտնվում էր հայկական աշխարհիկ իշ-

45 Տե՛ս «История Польши», т. I, М., 1956, էջ 160։

46 Տե՛ս „Studia and historia prawa polskiego", IV, Lwow, 1909. O. Balzer, Statut ormianskiw zatwirdzieniu Zigmunta I 2 r. 1519, էջ 5։

իշխանությունների անօրինության տակ։ Եկեղեցին ինքնուրույն չէր գործում մանավանդ այնպիսի հարցերում, ինչպիսիք էին թեմի եկեղեցիների առաջնորդների ընտրելը, հոգևորականների նկատմամբ դատական գործեր վարելը և այլն։ Ճիշտ է, Լվովում գոյություն ուներ առանձին հոգևոր դատարան, բայց նրա անդամների մի զգալի մասը գաղութի ազդեցիկ աշխարհականներն էին։

Եկեղեցու ունեցվածքը տնօրինելու համար ինքնավար մարմիններում կային հատուկ պաշտոնյաներ, որոնք կոչվում էին պրովիզորներ։

Այսպիսով, Արևմտյան Ուկրաինայի և Լեհաստանի հայկական գաղութների ներքին կյանքի գրեթե բոլոր հարցերը տնօրինվում էին ինքնավար մարմինների միջոցով։ Դրանց միջոցով էլ կարգավորվում էին գաղութների և լեհական քաղաքային ու պետական իշխանությունների համար ընդհանուր հետաքրքրություն ներկայացնող հարցերը։

Լեհահայերի ինքնավարությունը գոյություն ունեցավ մինչև XVIII դարի 70-ական թվականները։ Լեհաստանի առաջին բաժանումից (1772 թ.) հետո Ավստրիայի տիրապետության տակ անցած ինչպես ամբողջ Գալիցյան Ռուսիայում, այնպես էլ այնտեղ գտնվող հայկական գաղթօջախներում սահմանվեցին ավստրիական միասնական օրենքներ։

Արևմտյան Ուկրաինայի և Լեհաստանի հայկական բնակչությունը մինչև XVI—XVII դարերը գերազանցապես զբաղվում էր առևտրով և արհեստագործությամբ։ Լվովի, Կամենեց-Պոդոլսկի, Ստանիսլավի և այլ քաղաքների հայ վաճառականները Օսմանյան կայսրության երկրներից, Իրանից, Հնդկաստանից, Եգիպտոսից և այլ վայրերից Լեհաստան էին ներմուծում թանկարժեք գորգեր, կերպասներ, գոհարեղեն, զենք, ոսկուց և արծաթից պատրաստված պերճանքի առարկաներ, չոր միրգ, համեմունք, գինի և այլ ապրանքներ։ Մոլդավիայից, Հունգարիայից և հարևան մյուս երկրներից նրանք բերում էին մեծ քանակությամբ խոշոր եղջերավոր անասուններ, ձիեր, կաշի, որոնք դարձել էին հայկական առևտրի ավանդական առարկաները։ Արևելքից հայերի բերած ապրանքները գնում էին լեհ, ուկրաինացի և գերմանացի վաճառականները և իրացնում Լեհաստանում ու Արևմտյան Եվրոպայի երկրներում։

Վիճակագրական բավարար տվյալների բացակայության պատճառով հնարավոր չէ ստույգ պատկերացում կազմել լեհական համընդհանուր առևտրում հայկական առևտրի տեսակարար կշռի մասին։ Սակայն դատելով մաքսային գրանցումների, առք ու վաճառքի վերաբերյալ կազմված արձանագրությունների տվյալներից և լեհ ժամանակակիցների վկայություններից, կարելի է եզրակացնել, որ հայկական առևտրի ծավալը մինչև XVII դարի կեսը բավական զգալի է եղել։ Այդ են վկայում թեկուզ և առանձին հայ վաճառականների առևտրական գործարքների վերաբերյալ փաստերը։ Այսպես, 1600 թ. Կոստանդնուպոլսից Լվով է ժամանում հայ վաճառականներին պատկանող մի խոշոր քարավան, որով փոխադրված ապրանքների մեջ լվովահայ վաճառական Զախար Իվաշկևիչի բաժինը կազմում էր 740 դուկատի շաֆրան, 340 դուկատի գոտիներ և 9777 դուկատի այլ ապրանքներ[47]։ Մի այլ հայ վաճառական՝ Նիկոլայ Բերնատովիչը՝ միայն մեկ քարավանով Լվով է տանում 15 հազար լեհական զլոտիի արժողությամբ ապրանքներ[48]։ Իվաշկևիչների և Բերնատո-

[47] XVI—XVII դդ. մեկ դուկատը պարունակում էր 3,5 գրամ ոսկի։

[48] Տե՛ս ԼԿՊՊԱ, ֆ. 52, ց. 3, հ. 55, էջ 708։ Զլոտին XVII դարում պարունակում էր մոտ մեկ գրամ ոսկի։

մինչների առևտրական տները իրենց վիթխարի գործառնություններով հռչակված էին ոչ միայն Լվովում, այլև համայն Լեհաստանում, Լվովի 150 վաճառականներ մշտական առևտրական գործարքների մեջ էին գտնվում այդ երկու ընտանիքների հետ. Նիկոլայ Բեռնատովիչը իր առևտրական ներկայացուցիչներն ուներ Պինսկում, Լյուբլինում, Պոզնանում, Գնեզնոյում, Վիլնյուսում, Սանդոմիրում, Ռավա-Ռուսկայայում, Ռոգատինում և այլ քաղաքներում[49]։

Հայտնի է, որ լեհ թագավորները մեծահարուստ հայերից պարտքով խոշոր գումարներ էին վերցնում։ Օրինակ, լվովահայ վաճառական Քրիստոֆ Ավետիք Բեռնատովիչը Վլադիսլավ III թագավորի խնդրանքով արքայական գանձարանին տրամադրել է 100.000 դուկատ ոսկով և արծաթով[50]։

XVI դարի վերջին հայ վաճառականների առևտրական կարողությունն այնքան էր աճել, որ Լվովի լեհ վաճառականները սկսել էին դժգոհել և նույնիսկ բողոքել թագավորին, թե հայերը սպառնում են ամբողջովին տիրել քաղաքի շուկային։ Եվ, իրոք, այդ ժամանակ Լվովի շուկայում եղած 60 մեծ ու փոքր խանութներից 44-ը պատկանում էին հայերին[51]։

XIV—XVIII դարերում հայ առևտրականների իրավունքները և հայ ու լեհ վաճառականների առևտրական փոխհարաբերությունների հարցերը կարգավորվում էին թագավորների և քաղաքատեր ֆեոդալների հատուկ հրամանագրերով։ Օրինակ, եթե մինչև XV դարի սկիզբը հայ վաճառականները իրավունք ունեին առևտուր անել միայն արևմտա-ուկրաինական քաղաքներում, ապա Վլադիսլավ Յագելլո թագավորի 1402 թ. դեկրետով նրանք իրավունք ստացան առևտուր անել Լեհական թագավորության և Լիտվական մեծ իշխանության ամբողջ տարածքի վրա։ 1642 թ. հայերին թույլ տրվեց զբաղվել ոչ միայն մանրածախ, այլև մեծածախ առևտրով[52]։

1578 թ. հուլիսի 7-ի արտոնագրով Ստեփան Բատորի թագավորը հայերի առևտրական իրավունքները լիովին հավասարեցրեց կաթոլիկ վաճառականների իրավունքներին։ Բայց XVII դարում սկսված լեհական քաղաքների տնտեսական անկման և հայերի նկատմամբ կիրառվող կրոնական հալածանքների հետևանքով բազմաթիվ հայեր հեռացան լեհական քաղաքներից, վերջնականապես ընկավ նրանց երբեմնի հզորությունը։

Միջնադարյան Ռեչ Պոսպոլիտայի արևմտա-ուկրաինական քաղաքներում զգալի թիվ էին կազմում հայ արհեստավորները։ Սակայն լեհական արհեստագործական արտադրության մեջ հայերի դերը այնքան նշանակալից չէր, որքան առևտրի ասպարեզում։ Լեհաստանում գոյություն ունեցող զանազան սահմանափակումների հետևանքով մինչև XVII դարի սկիզբը հայ արհեստավորները զրկված էին կաթոլիկական համքարություններում աշխատելու հնարավորությունից։ Լվովի կաթոլիկ ոսկերիչների համքարության կանոնադրության մեջ, որ կազմվել էր 1600 թ., ուղղակի ասված էր. «Մեր ոսկերչական արհեստի համար հարկավոր են բարեխիղճ մարդիկ, որոնք հավատարիմ են կաթոլիկ դավանանքին։ Լվովի ոսկերիչները ոչ մի հերետիկոսի կամ հերձվա-

49 Տե՛ս նույն տեղում, էջ 73, 253։

50 Տե՛ս *S. Baracz*, Żywoty slawnych ormian w Polsce, Lwów, 1856.

51 Տե՛ս *И. Линниченко*, Черты из истории сословий в Юго-Западной (Галицкой) Руси в XIV—XV вв., М., 1894, էջ 228:

52 Տե՛ս *L. Charewiczowa*, Ograniczenia gospodarcze nacyj schizmatyckich i żydów ]wów, 1925, էջ 205—206։

ծովի չեն կարող ընդունել և հանդուրժել իրենց շարքերում... Բացառություն կարող են կազմել այն ռուսինները (իմա՝ ուկրաինացիները) և հայերը, որոնք կընդունեն ունիան Հռոմի եկեղեցու հետ»[53]։

Հայ արհեստավորներին ոչ միայն չէին ընդունում կաթոլիկական համքարություններում, այլև երբեմն ընդհանրապես արգելում էին զբաղվել արհեստներով։ Այդ պատճառով էլ նրանք ստիպված էին կամ գաղտնի զբաղվել արհեստներով, կամ համառ, երկարատև պայքար մղել սեփական համքարություններ ստեղծելու համար։ Նույն այդ պատճառով էլ նրանք չէին կարողանում լայն մասնակցություն ունենալ արհեստագործական արտադրության շատ ճյուղերում և ստիպված էին սահմանափակվել հիմնականում կաշվի վերամշակմամբ ու ոսկերչությամբ։ Լեհահայերը կարողացան այս արհեստները հասցնել կատարելության։ Հայ ոսկերիչների պատրաստած իրերը, լինելով չափազանց նրբաճաշակ և որակյալ, մեծ ընդունելություն էին գտնում Լեհաստանում և նրա սահմաններից դուրս։ Պատահական չէր, որ նրանց պատվիրատուների թվում հաճախակի կարելի էր հանդիպել իշխանների և արքունի բարձր պաշտոնյաների։ Յան Սոբեսկին Լվովում ուներ մի արհեստանոց, որը կատարում էր արքունիքի հատուկ պատվերները։ Այնտեղ էր աշխատում նաև հայազգի հռչակավոր ոսկերիչ Բեդրոս Զախարիասևիչը, որը թանկարժեք քարերով, ոսկով ու արծաթով զարդարում էր թագավորի անձնական զենքերը և հագուստը։ Նման գործեր էին կատարում նաև ուրիշ անվանի հայ վարպետներ[54]։

Հայ ոսկերիչ և ասեղնագործ վարպետները լեհական գեղարվեստական արհեստագործության մեջ լայնորեն տարածեցին հայկական և արևելյան մոտիվները, որոնք նկատելի ազդեցություն ունեցան լեհական միջնադարյան մշակույթի մի շարք ճյուղերի արևելականացման գործում։

Բարձր կատարելության էին հասել նաև հայազգի կաշեգործ վարպետները։ Նրանք կաշվից պատրաստում էին զամշ, սեկ (սաֆյան), անայլին մաշիկներ, զանազան գույնի կոշիկներ, գոտիներ, ձիու լծասարք և այլն։ Լեհաստանում և Արևմտյան Ուկրաինայում հատկապես մեծ համբավ էին ձեռք բերել նրանց պատրաստած սեկերը։ Այս արտադրանքը XVI—XVII դարերում փաստորեն դարձել էր հայերի մենաշնորհը և զարմանալի չէր, որ հենց սեկ պատրաստող հայ արհեստավորներին հաջողվեց հաղթահարել գոյություն ունեցող բազմաթիվ խոչընդոտները և Լվովում ստեղծել առաջին հայկական կաշեգործական համքարությունը (1620)։

XVII դարում կաշեգործ հայերը համքարություններ կազմակերպեցին նաև Ստանիսլավում և այլ քաղաքներում։

Արհեստագործական արտադրության մեջ հայերի մասնակցությունը չէր սահմանափակվում միայն համքարությունների շրջանակներով։ Մեծ թիվ էին կազմում նաև այն արհեստավորները, որոնք միավորված չէին համքարություններում (պարտաչներ)։ Սրանք պատահական եկամուտով ապրող մարդիկ էին, որոնք չունենալով նույնիսկ քաղաքացու իրավունքներ, ապրում և աշխատում էին քաղաքների արվարձաններում և իրենց արտադրանքով բավարարում էին ինչպես այդ արվարձանների, այնպես էլ մերձակա գյուղերի բնակչության պահանջները։ Պարտաչների իրավազուրկ և աղքատիկ վիճակն է՛լ ավելի էր

---

[53] Wł. Lozinski, Zlotnictwo lwowskie, Lwów, 1912, էջ 36։

[54] Տե՛ս նույն տեղում, էջ 150։

վատանում այն պատճառով, որ նրանք մշտապես հալածվում էին համքարու-թյունների ու քաղաքային իշխանությունների կողմից։

Հայ արհեստավորների առավել արտոնյալ խավն էին կազմում նրանք, ովքեր իրավունք էին ձեռք բերում աշխատելու կաթոլիկական համքարություններում և իշխանական կամ թագավորական հատուկ արհեստանոցներում։ Այդպիսի արհեստանոցներում աշխատելու իրավունք էին ստանում իրենց արհեստին կատարելապես տիրապետող, հմուտ վարպետները, որոնք մեծ կապեր ունեին մեծահարուստ շլյախտիչների, մագնատների և արքունի բարձր աստիճանավորների հետ։ Յան Սոբեսկու, լեհական թագի մեծ գետման Ստանիսլավ Յաբլոնովսկու, իշխաններ Ստանիսլավ Բելզեցկու և Զամոյսկիների հովանավորության տակ աշխատում էին հայ վարպետներ, որոնք օգտվում էին թագավորից ստացած լայն իրավունքներից։ Նրանցից մի քանիսը նույնիսկ կրում էին «Թագավորի քարտուղար» մեծադղորդ տիտղոսը, որն, իհարկե, լոկ ձևական նշանակություն ուներ և շնորհվում էր հատկապես ընդգծելու համար, որ այդ արհեստավորները գտնվում են թագավորական բարձր հովանավորության ներքո։

Արևմտյան Ուկրաինայի և Լեհաստանի քաղաքներում ոսկերիչներից և կաշեգործներից բացի կային նաև հայ դերձակներ, բրուտներ և այլ արհեստի մարդիկ։

Ցավոք, վիճակագրական տվյալներ չեն պահպանվել լեհահայերի ընդհանուր տնտեսական կարողության վերաբերյալ։ Բայց և այնպես այդ մասին որոշ պատկերացում կարելի է կազմել մի ցուցակի հիման վրա, որ կազմել է Լվովի մագիստրատը 1656 թ.։ Ըստ այդ ցուցակի, Լվով քաղաքի ամբողջ շարժական և անշարժ գույքը, դրամական արտահայտությամբ, կազմել է 5.247.479 զլոտի, որից 1.277.000 զլոտին պատկանում էր հայ համայնքին[55]։

Տնտեսապես բավական ուժեղ էին նաև Կամենեց-Պոդոլսկ, Զամոստիե, Ստանիսլավ և մի քանի այլ քաղաքներում հաստատված հայերը։ Տնտեսական հզորությամբ և քաղաքական լայն կապերով էլ պայմանավորված էր հայերի հասարակական մեծ կշիռը լեհական և արևմտա-ուկրաինական քաղաքներում։

Լվովի լեհական մագիստրատի 1663 թ. սահմանած կարգի համաձայն, համաքաղաքային ժողովներում, որոնք սովորաբար գումարվում էին քաղաքի կյանքին վերաբերող ընդհանուր հարցերը քննարկելու համար, առաջին տեղը և խոսքը պատկանում էր քաղաքի լեհական ինքնավարությանը, երկրորդ տեղն ու խոսքը՝ հայոց համայնքի ներկայացուցիչներին[56]։

Հայերի ձեռքում էր գտնվում քաղաքի վարչա-տնտեսական կարևոր լծակներից մեկը՝ գլխավոր թարգմանի պաշտոնը, որի խնդիրը ոչ այնքան Լվով ժամանած բազմալեզու վաճառականության համար թարգմանչական գործ կատարելն էր, որքան օտար վաճառականների նկատմամբ պետական հսկողություն իրականացնելը։

XVI—XVII դարերում զգալիորեն մեծանում է լեհահայերի դերը Ռեչ Պոսպոլիտայի պետական-քաղաքական կյանքում։ Ուշագրավ է հատկապես նրանց մասնակցությունը դիվանագիտության և երկրի պաշտպանության գործում.

---

55 Տե՛ս Н. К. Кривонос, В. В. Грабовецкий, Армянская колония во Львове в XVI—XVII вв., ՀՍՍՀ ԳԱ «Տեղեկագիր» (հաս. գիտություններ), 1958, № 12, էջ 66։

56 Տե՛ս «Учреждения Западной Украины до восстановления ее в едином Украинском Советском Социалистическом государстве», Львов, 1955, էջ 25։

որը լայն չափեր ընդունեց XVI—XVII դարերում՝ թուրքական ագրեսիայի դեմ մղված ծանր ու երկարատև պայքարի ժամանակներում։

Թուրքական կայսրությունը, որ այդ ժամանակ հասել էր իր հզորության գագաթնակետին, լուրջ վտանգ էր ներկայացնում հարավային և հարավ-արևելյան Եվրոպայի պետությունների համար։ Սուլթանական Թուրքիայի հարձակումներից պաշտպանվելը և նրա հետ բնականոն հարաբերությունններ պահպանելը XVI—XVII դարերում եվրոպական երկրների և մասնավորապես Լեհաստանի արտաքին քաղաքական առավել բարդ խնդիրներից մեկն էր։ Թեպետ Լեհաստանը հակաթուրքական լիգայի մյուս երկրների հետ միասին ռազմական միջոցներով բավական արդյունավետ պայքար էր մղում օսմանյան ագրեսիայի դեմ, բայց և այնպես իր ծրագրերում նա փոքր տեղ չէր հատկացնում դիվանագիտությանը, ձգտելով բանակցությունների միջոցով կանխել թուրքերի հետագա առաջխաղացումը, իսկ եթե այդ հնարավոր չէր, ապա նոր դաշնակիցներ ներգրավել հակաթուրքական պայքարի մեջ։ Հենց այդ ասպարեզում էր, որ զգացվում էր փորձառու հայ վաճառականների և դիվանագետների կարիքը[57]։

XVI—XVII դարերում դիվանագիտական հանձնարարություններ կատարող լեհահայերի կարելի էր հանդիպել Կոստանդնուպոլսում, Սպահանում, Ղրիմի խանությունում, Վիեննայում և այլուր։ Ռեչ Պոսպոլիտայի հայազգի դիվանագետների շարքում բացառիկ դեր է ունեցել կոմս Սուլեյման Կոստանդին դե Սիրին, որը լեհական արքունիքի հանձնարարությամբ մի շարք չափազանց պատասխանատու դիվանագիտական հանձնարարություններ է կատարել Ավստրիայում, Կոստանդնուպոլսում, Իրանում, Ռուսաստանում և ուրիշ երկրներում։ Պյոտր Գրիգորևիչը, որին անցյալի լեհ պատմաբանները անվանում են «արտակարգ մի անձնավորություն», լեհական արքունիքի դիվանագիտական ու ֆինանսական խոշոր գործակալ էր և ընդարձակ կապեր ուներ եվրոպական արքունիքների և Բ. Դռան հետ։ XVI դարի վերջում և XVII դարի սկզբին լեհական արքունիքում ծառայում էր Սեֆեր Մուրատովիչ ազգանունով մի հայազգի դիվանագետ, որը կատարում էր Սիգիզմունդ III-ի դիվանագիտական և պետական հատուկ հանձնարարությունները։

Պատմական մի շարք վկայություններից երևում է, որ լեհահայերը մասնակցել են նաև Ռուսաստանի հետ լեհական պետության վարած տնտեսական և դիվանագիտական բանակցություններին։ Մասնավորապես հայտնի է, որ 1645 թ. օգոստոսին Մոսկվա ժամանած Գավրիիլ Ստշելկովսկու գլխավորած դեսպանության կազմում էր նաև հայազգի Պյոտր Իվանովը։ Դրանից երկու տարի հետո, 1647 թ. Մոսկվա է մեկնում Յուրի Գիչի գլխավորած մեկ այլ լեհական դեսպանություն, որի կազմում էր հայազգի Գասպար Շիմանսկին։ Երբ այդ դեսպանությունն ավարտում է իր բանակցությունները Մոսկվայում և մեկնում է Իրան, ճանապարհին Գիչը մահանում է և դեսպանության գլուխ է անցնում Շիմանսկին։ Վերջինս Իրանում բանակցություններ է վարում շահի հետ։ Լեհաստան վերադառնալուց հետո Յան Կազիմիր թագավորը դիվանագիտական հանձնարարությունը հաջող կատարելու համար Շիմանսկուն ցմահ նշանակում է Լվովի գլխավոր թարգման։

---

[57] *Տե՛ս И. Линниченко,* Общественная роль армян в прошлом Юго-Западной Руси, Киев, 1895, էջ 6—7:

Լեհահայ դիվանագետները եռանդուն մասնակցություն էին ցուցաբերում Ռուսաստանի, Լեհաստանի և Իրանի միջև տնտեսական ու քաղաքական կապերի ամրապնդման, ինչպես և հակաթուրքական ուժերի ծավալման ու ակտիվացման գործում։ Բոգդան Գուրդին (վրաստանցի հայ՝ գուրջի), նրա եղբայր Փարսադան Գուրդեցկին և շատ ուրիշներ կատարում էին ոչ միայն Լեհաստանի շահերից բխող դիվանագիտական հանձնարարություններ, այլև Հայաստանի ազատագրման ծրագրեր էին կազմում։

Հայեր էին բնակվում նաև Զապորոժյան Սեչում։ Վերջին տարիներս կատարված հետազոտությունների շնորհիվ հայտնաբերվել են մի շարք ուշագրավ պատմական փաստեր այն մասին, որ Սեչի հայերը զապորոժյան զինված ջոկատներին օգնում էին ոչ միայն նյութապես, այլև գործուն մասնակցություն էին ունենում այդ ջոկատների ռազմական գործողություններին՝ ուղղված լեհական տիրապետության դեմ։ Այսպես, Չյորնի Կամենում գործող Բելոցերկովյան գնդում էր ծառայում Ստեփան Վուրմենինը (Վուրմենին ուկրաիներեն նշանակում է հայ), Չերկասյան գնդում՝ Սեմյոն Կարավանովը, Սեմյոն Կուտլուբայը, Սեպեր Չերկեսը, Իվաշկո Կարավանենկոն, Ումանյան գնդում՝ Վասիլ Սարաչինը, Իվան Օրուշյանենկոն, Սեմյոն Ուրգիյանենկոն (սա կազակական զորքի գնդապետ էր) և ուրիշներ։

Զապորոժյան գնդերին զգալի օգնություն էին ցույց տալիս հայ առևտրականները, որոնք իրենց քարավաններով կազակներին մատակարարում էին վառոդ, զենք, հագուստ, պարենամթերք, դեղորայք և այլն[58]։

Սակայն Ուկրաինայի և Լեհաստանի հայերը շատ ավելի լայն չափով մասնակցում էին ուկրաինական և լեհ ժողովուրդների պայքարին՝ ընդդեմ թուրքական ագրեսիայի։

XVII դարի լեհ պատմիչ Բ. Զիմորովիչը հաղորդում է, որ լեհական աշխարհազորում գոյություն ուներ առանձին հայկական ազգային զորամաս[59]։ Կամենեց-Պոդոլսկը, Լվովը և մյուս քաղաքները թուրքական բանակների կողմից պաշարվելու ժամանակ հայերը կատարում էին հետախուզական առաջադրանքներ։ Ենիչերիների համազգեստով նրանք թափանցում էին թուրքական բանակատեղին և կարևոր տեղեկություններ հավաքում թշնամու բանակի վերաբերյալ։

XVI—XVII դարերում տեղի ունեցած գրեթե բոլոր թուրք-լեհական պատերազմներում լեհահայերը մասնակցություն են ունեցել։ Ուշագրավ է այն փաստը, որ 1683 թ. սեպտեմբերի 12-ին տեղի ունեցած Վիեննայի ճակատամարտում, որն ավարտվեց թուրքերի պարտությամբ, Յան Սոբեսկու գլխավորած լեհական բանակի շարքերում կռվում էին հինգ հազար հայեր[60]։

Լեհահայ գաղթօջախների բնակչությունը Ռեչ Պոսպոլիտայի բանակին օժանդակում էր նաև նյութապես. կտակով կամ նվիրատվություններով լեհահայերը զգալի միջոցներ էին տրամադրում ռազմական ամրությունների կառուցման կամ վերանորոգման, թնդանոթներ, հրացաններ, հագուստ ու պարենամթերք ձեռք բերելու համար։

---

58 Տե՛ս *Ф. П. Шевченко,* Армяне в украинском казацком войске в XVII—XVIII вв., см. сб. «Ист. связи и дружба украинского и армянского народов», Киев, 1965, էջ 93—100:

59 Տե՛ս *B. Zimorowicz,* նշված աշխատությունը, էջ 304։

60 Տե՛ս Wielka encyklopedia powszechna, serya II, I. V—VII, Warszawa, 1908, էջ 400։

XVII դարի վերջին քառորդում և հատկապես Յան III Սոբեսկու կառավարման շրջանում (1674—1696) լեհական արքունիքում ծրագրեր էին մշակվում հայկական անկախ թագավորություն ստեղծելու մասին։ Լեհաստանի կառավարող շրջանների կարծիքով, այդ թագավորությունը պետք է գտնվեր Հռոմի եկեղեցու և Լեհաստանի հովանավորության տակ և լիներ բավականաչափ ուժեղ, որպեսզի Պարսկաստանի հետ միասին կարողանար արևելքից շրջափակել հարվածներ հասցնել Օսմանյան կայսրությանը։ Սոբեսկին դեռ մինչև Լեհաստանի թագավոր ընտրվելը, 1669 թ. սկսում է բանակցություններ վարել Հակոբ Ջուղայեցի կաթողիկոսի հետ հայկական անկախ պետություն ստեղծելու վերաբերյալ։ Թագավոր ընտրվելուց հետո այդ հարցին նա կրկին անդրադառնում է 1683 թ. թուրքերի դեմ Վիեննայի մոտ տարած հաղթանակից հետո։ Թագավորի հանձնարարությամբ Սուլեյման Կոսաանդին դե Սիրին 1686 և 1688 թթ. մեկնում է Իրան և շահին հորդորում միանալու հակաթուրքական լիգային։ 1696 թ. Սոբեսկին Հայաստան է ուղարկում իր քարտուղար Շիմոն Բեդրոսովիչին՝ հայկական թագավորություն ստեղծելու մասին Նահապետ կաթողիկոսի հետ բանակցելու նպատակով։ Սակայն նույն թվականի ապրիլի 17-ին Սոբեսկին մահանում է, իսկ դրանից երեք տարի հետո Կարլովիցում Ավստրիայի, Լեհաստանի և Թուրքիայի միջև կնքվում է հաշտություն, որի համաձայն Թուրքիան հրաժարվում է Ռեչ Պոսպոլիտայի տերիտորիաների (Պոդոլիե և Աջափնյա Ուկրաինա) նկատմամբ ունեցած իր հավակնություններից։ Դրա հետևանքով Սոբեսկու «հայկական ծրագրերը» լեհական արքունիքի համար կորցնում է իր հետաքրքրությունը[61]։

Օսմանյան կայսրության դեմ մղած երկարատև պատերազմների, Ռուսաստանի դեմ կատարած ռազմական արշավանքների, ներքին ապստամբությունների և շլյախտական անկարգությունների հետևանքով XVII դարի կեսերից Ռեչ Պոսպոլիտան սկսեց տնտեսական, ապա և քաղաքական անկում ապրել, որը հետագայում է՛լ ավելի խորացավ և XVIII դարի 70—90-ական թվականներին հասցրեց լեհական պետության բաժանմանը Ավստրիայի, Պրուսիայի և Ռուսաստանի միջև։

Ռեչ Պոսպոլիտայի տնտեսական և քաղաքական անկումը զուգադիպեց երկրի քրիստոնյա ազգային փոքրամասնությունների դեմ կաթոլիկ եկեղեցու սկսած կրոնական հալածանքի քաղաքականության հետ։ XVI դարի 80—90-ական թվականներին, հաղթանակ տանելով ռեֆորմատորական շարժման դեմ, Լեհաստանի կաթոլիկական ռեակցիան, երկիր թափանցած ճիզվիտների գլխավորությամբ, անողոք պայքար էր ծավալել «հերձվածողությունը» վերացնելու համար։ XVII դարի առաջին կեսին կատաղի գրոհներ ձեռնարկվեցին նաև հայ եկեղեցու դեմ։ Այդ պայքարում կաթոլիկ եկեղեցին օգտագործեց բարձրաստիճան հայ հոգևորականությանը։ 1626 թ. էջմիածնից փախած կաթողիկոս Մելքիսեդեկը, այլասերված և կաշառակեր մի անձնավորություն, ապաստան գտավ Լվովում։ Այնտեղ նա լեհահայության եպիսկոպոսի ընտրությունները վերածեց խայտառակ դրամաշորթության։ Մեծ կաշառք ստանալով լվովահայ մեծահարուստ Թորոսովիչների ընտանիքից, նա տեղի հայ հասարակությունից գաղտնի եպիսկոպոս ձեռնադրեց 23-ամյա Նիկոլ Թորոսովիչին և նրան նշանակեց լեհահայ թեմի առաջնորդ։ Այդ գործարքը մեծ վայրույթ

[61] Տե՛ս նույն տեղում։

առաջացրեց հայ բնակչության մեջ։ Ոչ միայն Լվովի, այլև մյուս բոլոր քաղաքների հայերը վճռականորեն հրաժարվեցին Նիկոլին ճանաչել որպես թեմի օրինական առաջնորդ։ Զայրացած բնակչությունը գրավեց Լվովի հայոց եկեղեցին և Թորոսովիչին թույլ չտվեց այնտեղ մտնել։ Իսկ քաղաքի հայոց դատարանը, էջմիածնի կաթողիկոսարանի նվիրակ Խաչատուր Կեսարացի վարդապետի-գլխավորությամբ նիստ գումարեց, որպեսզի դատի Նիկոլին։ Բայց Խաչատուր վարդապետը տեսնելով, որ դրությունը գնալով սրվում է և սպառնում պառակտել ամբողջ գաղութը, փորձում է հաշտեցնել երկու կողմերին։ Լվովի հայ ավագները վճռականորեն մերժում են վարդապետի այդ միջամտությունը։ Նիկոլը իր հերթին սպառնում է դիմել արքունի դատարանին և հարկադրել՝ իրեն հնազանդվելու։

Լեհահայերի զայրույթի պատճառը ոչ միայն եպիսկոպոսի անօրինական ու խարդախ ճանապարհով ձեռնադրվելն էր, այլև Նիկոլի թեկնածության միանգամայն անընդունելի լինելը, որովհետև վերջինս իր բնավորության գծերով և բարոյական կերպարով չէր տարբերվում արկածախնդիր և կաշառակեր կաթողիկոսից։

Պայքարի սուր պահին Նիկոլին օգնության հասան ճիզվիտները և քաղաքային իշխանությունները, որոնք, օգտվելով հարմար առիթից, փորձեցին հարվածել հայ գաղութին, սահմանափակել նրա տնտեսական իրավունքները, վերացնել հայերի առևտրական ու արհեստագործական մրցակցությունը։

Հռոմի եկեղեցու ճիզվիտ գործակալները Նիկոլին խոստացան օգնություն ցույց տալ միայն այն դեպքում, եթե վերջինս ընդունի կաթոլիկություն։ Նիկոլի կողմից այդ պայմանը անմիջապես ընդունվելուց հետո ճիզվիտները և Լվովի քաղաքային իշխանությունները զինված ուժի միջոցով հայերին ստիպեցին թողնել եկեղեցին և այն հանձնեցին ապօրինի եպիսկոպոսին։

Լվովցի հայերն իրենց ներկայացուցչին ուղարկեցին էջմիածին, Մովսես կաթողիկոսի մոտ և խնդրեցին նրա օգնությունը։ Կաթողիկոսը նամակով դիմում է Վլադիսլավ թագավորին, լեհերի արքեպիսկոպոսին, Հռոմի պապին և խնդրում՝ չնեղել լեհահայերին ու եկեղեցին վերադարձնել նրանց։ Ստանալով կաթողիկոսի նամակը, Վլադիսլավ թագավորը հրամայում է եկեղեցին վերադարձնել հայերին, սակայն ճիզվիտները ամեն կերպ դիմադրում են, հայտարարելով, որ թագավորը աշխարհիկ իշխանավոր է, իսկ եկեղեցին պատկանում է Պապին, հետևաբար միայն Պապն է իրավասու տնօրինելու այդ հարցը։

Կաթոլիկ եկեղեցու և ճիզվիտների կողմից քաջալերվելով, Նիկոլ Թորոսովիչը հրաժարվում է հնազանդվել հայ ինքնավար մարմիններին և սկսում է անխնա վատնել եկեղեցու հարստությունները։

Ճիզվիտները եռանդագին գործունեություն էին ծավալել լեհահայերի եկեղեցական միությունը իրականացնելու նպատակով։ Հռոմի թելադրանքով և օգնությամբ նրանք ձգտում էին կաթոլիկական դավանանքը հայերի մեջ տարածել իրենց իսկ՝ հայերի միջոցով։ Այդ նպատակով ճիզվիտները Լվովում հիմնեցին դպրոց, որը կրոնավորներ էր պատրաստում հայոց եկեղեցու համար։ Դպրոցում հայ մանուկներին և պատանիներին կաթոլիկական ոգով դաստիարակելու համար Վատիկանը 1664 թ. Լվով ուղարկեց Հայաստանում երկար տարիներ գործած մոլի քարոզիչ Կղեմես Գալանոսին, բայց սա շուտով մահացավ։ Նրան փոխարինեց Ալոիս Մարիա Պիդուն՝ կազմակերպչական ընդունակություններով օժտված խորամանկ մի կրոնավոր, որը տիրապետում էր

հայերենին և գիտեր հայոց պատմությունը։ Խտրություն չդնելով միջոցների միջև, Պիդուն, փաստորեն, ամբողջովին իր ձեռքը վերցրեց հայոց եկեղեցու կառավարման գործը և իր շուրջը համախմբելով գաղութի անկայուն տարրերին, կատաղի պայքար ծավալեց բոլոր նրանց դեմ, ովքեր դիմադրում էին հայերի մեջ կաթոլիկություն տարածելուն։

Նիկոլ Թորոսովիչի մահից հետո Լվովի հայ եկեղեցու առաջնորդ ձեռնադրվեց Վարդան Հունանյանը, որը 1689 թ. հոկտեմբերի 10-ին պապական նվիրակ Գանդելմիի նախագահությամբ հրավիրեց լեհահայ եկեղեցու ժողով, որտեղ Լեհաստանի և Արևմտյան Ուկրաինայի հայոց եկեղեցին պաշտոնապես և վերջնականապես հայտարարվեց Էջմիածնի Մայր աթոռից անկախ և Հռոմի կաթոլիկ եկեղեցուն միացված։

Մոտ կես դար տևեց լեհահայերի պայքարը Հռոմի և Լեհաստանի կաթոլիկական ռեակցիայի միացյալ ուժերի դեմ։ Թեև պայքարը տեղի էր ունենում եկեղեցու և դավանանքի շուրջը, սակայն իր էությամբ՝ ազգապահպանության համար մղվող պայքար էր։ Այդ պայքարում լեհահայերը ստիպված էին լարել գաղթօջախի տնտեսական և հասարակական ուժերը, խոշոր զոհողություններ կատարել ամբողջ գաղութին հուզող հարցերը լուծելու համար։ Բողոքելով քաղաքային իշխանությունների և կաթոլիկ եկեղեցու անօրինական գործողությունների դեմ, նրանք բազմիցս դիմեցին վանազան դատարանների, հույս ունենալով օրինական ճանապարհով վերականգնել իրենց ազգային իրավունքները։ Հաճախ այդ անպտուղ դատական պրոցեսները տարիներ էին տևում, կլանելով վիթխարի դրամական միջոցներ։ Լեհական քաղաքների ընդհանուր տնտեսական քայքայման և ոչ կաթոլիկ բնակչության նկատմամբ կիրառվող ազգային-կրոնական հալածանքների պատճառով շատ և շատ լեհահայեր ստեղծված մղձավանջից դուրս գալու այլ ելք չէին տեսնում, քան Լեհաստանից հեռանալը։ Նրանք մեծ խմբերով տեղափոխվում էին Մոլդավիա, Վալախիա, Տրանսիլվանիա, Բուլղարիա, անցնում էին Զապորոժյան Ուկրաինա, բնակություն հաստատում ռուսական տիրապետության տակ գտնվող հողերում կամ վերահաստատվում Ղրիմում։

Դեռ մինչև 1635 թ. Սիմեոն Լեհացին ստիպված էր ցավով արձանագրել այն փաստը, որ Յազլովեցում, Լուցկում և Ռեչ Պոսպոլիտայի մյուս քաղաքներում մնացել են սակավաթիվ հայեր։ Լուցկում, որտեղ անցյալում բնակվում էին մի քանի հարյուր տուն հայեր, այդ ժամանակ մնացել էր ընդամենը երկու տուն։ Կամենեց-Պոդոլսկում 1614 թ. ապրում էր մոտ 1200 հայ ընտանիք[62]։ Եկեղեցական հալածանքների, տնտեսական քայքայման և թուրք-թաթարական հաճախակի ասպատակությունների պատճառով 1820 թ. այնտեղ մնացել էր 70 ընտանիք[63]։ Լվով քաղաքում, որը իր հիմնադրման օրից հանդիսանում էր «լեհահայոց մայրաքաղաքը», 1600 թ. կար ավելի քան 1000 հայ ընտանիք, իսկ 1784 թ. այնտեղ մնացել էին միայն 212 հայեր[64]։ 1664 թ. այլևս ոչ մի հայ չէր մնացել Գալիչ և Վլադիմիր քաղաքներում[65]։

Լեհահայ գաղութի նոսրացած բնակչությունը սկսեց աստիճանաբար ձուլ-

---

62 Տե՛ս Dr. Antoni J., Nowe opowiadanie historyczne, էջ 165—166։

63 Տե՛ս Մ. Բժշկյան, Ճանապարհորդություն ի Լեհաստան, Վենետիկ, 1830։

64 Տե՛ս Ուկր. ՍՍՀ Լվովի ԿՊՊԱ, ֆ. 52, ց. 3, պահպ. միավոր 516, 128 (1596—1600), էջ 119, 605։

65 Տե՛ս T. Gromnicki, նշված աշխատությունը, էջ 71—72։

վել լեհերի հետ։ Ուժասպառ եղած երբեմնի մեծահարուստ հայերը այժմ ձըգտում էին խառը ամուսնությունների միջոցով ընտանեկան կապեր հաստատել լեհերի հետ։ Էջմիածնի Մայր աթոռի վերահսկողությունից լեհահայ եկեղեցու դուրս մնալու հետևանքով թուլացան առանց այն էլ ոչ զորեղ հոգևոր և մշակութային կապերը հայրենիքի հետ։ XVIII դարի վերջին, Ռեչ Պոսպոլիտայի անկումից և Լեհաստանի բաժանումից հետո, ավստրիական իշխանությունները Գալիցիայում վերացրին լեհական, հայկական և մյուս բոլոր օրենքներն ու դատարանները, ինչպես նաև հայկական ինքնավարությունը։ Եկեղեցու միացումից հետո այդ հանդիսացավ երկրորդ ծանր հարվածը, որը ոչ միայն վերջ տվեց լեհահայ գաղութի ազգային ինքնուրույնությանը, այլև վերջնականապես կանխորոշեց այդ երբեմնի խոշոր և հարուստ գաղթօջախի պատմության թատերաբեմից անհետանալու հանգամանքը։ Ճիշտ է, դեռ XIX դարում և XX դարի սկզբին էլ Արևմտյան Ուկրաինայի և Լեհաստանի քաղաքներում պահպանվել էին գաղութի բնակչության վերջին սերունդները, սակայն նրանք էթնիկական տեսակետից արդեն լիովին տարրալուծվել էին լեհ ազգի մեջ։

Ապրելով օտար միջավայրում, հայրենիքից հազարավոր կիլոմետրեր հեռու, լեհահայերը երկար դարեր պահպանեցին և յուրահատուկ պայմաններում շարունակեցին զարգացնել ազգային մշակույթը։

Լվովում և Կամենեց-Պոդոլսկում լայնորեն զարգանում էր մատենագրությունը, պատմագրությունը, թարգմանչական գործը։ Ցավոք, լեհահայոց պատմության վաղ շրջանի (XI—XV դարեր) գրավոր հուշարձաններից շատ քիչ բան է մեզ հասել, սակայն XVI—XVIII դարերում ստեղծված գործերից շատերը հասել են մեզ։ Այս շրջանի մատենագրությունը ներկայանում է այնպիսի կարկառուն դեմքերով, ինչպիսիք են Սիմեոն Լեհացին, Հովհաննես Կամենեցացին, Ստեփանոս Ռոշքան, Ստեփանոս Լեհացին, Հովհաննես Ավագերեցը և ուրիշներ։

Լեհահայ գաղութում ապրել և ստեղծագործել են նաև բանաստեղծներ ու առակագիրներ։ Դրանցից են Մինաս Թոխաթեցին, Հակոբ Թոխաթեցին, Պարսամ Տրապիզոնցին և ուրիշներ։

Լեհահայերի մշակութային կյանքի կարևոր օջախներից էին դպրոցները, գրադարանները, հիվանդանոցները և այլ հաստատություններ։ Լվովում, Կամենեց-Պոդոլսկում և մի շարք այլ քաղաքներում գոյություն ունեցած դպրոցներում դասավանդվում էին քերականություն, առոգանություն, թվաբանություն, հռետորական և թարգմանչական արվեստ։ Պիդուն հաղորդում է, որ 1668 թ. Լվովի հայ կաթոլիկական դպրոցում բեմադրվել են ողբերգություններ, որոնցից մեկը սբ. Հռիփսիմեի նահատակության մասին։

XVI—XVII դարերում Լվովում գոյություն է ունեցել նաև հայկական ազգային հիվանդանոց, որը պահվել է տեղի հայ համայնքի մեջ կատարված հանգանակությունների, նվիրատվությունների և կտակված գումարների հաշվին։

Ուշագրավ է, որ Լվովում 1616 թ. Հովհաննես Քարմատանենցը հիմնում է հայկական տպարան, թեպետ և այն ունենում է շատ կարճատև կյանք։

Լվովում և մյուս հայաշատ քաղաքներում կային նշանակալի թվով հայեր, որոնք ունեին անձնական գրադարաններ։ Խոշոր գրադարան գոյություն ուներ

Լվովի Հայոց եկեղեցում, ուր պահվում էին հայերեն, լեհերեն, ղփչաղերեն և այլ լեզուներով բազմաթիվ ձեռագիր մատյաններ։



Հայկական զարդաքանդակ գերան (Լվով, XVII դ.)

Արևմտյան Ուկրաինայի և Լեհաստանի հայկական գաղութներում նկատելի զարգացում ապրեցին արվեստի մի շարք ճյուղեր և հատկապես ճարտարապետությունը, նկարչությունը, գեղարվեստական ոսկերչությունն ու ասեղնագործությունը։ Այս բնագավառից պահպանվել են հատուկենտ նմուշներ, որոնք իրենցից ներկայացնում են առավելապես ճարտարապետական կառուցվածքներ և մասամբ էլ կերպարվեստի ստեղծագործություններ։ Ոսկերչության, ասեղնագործության և կիրառական արվեստի այլ ճյուղերի մասին կարելի է պատկերացում կազմել միայն մատենագրական աղբյուրների հիման վրա և լեհական թանգարաններում պահվող որոշ իրերից, որոնք դեռևս մասնագիտական ուսումնասիրության չեն ենթարկվել։

Ճարտարապետական կառուցվածքների մեջ հիմնականը եկեղեցիներն են, որոնք կառուցվել են գրեթե բոլոր այն քաղաքներում, որտեղ ապրում էր հայ բնակչություն։ Հատկապես մեծ արժեք է ներկայացնում Լվովի հայկական տաճարը, որը կառուցվել է 1363 թ.։ Թեև հետագայում նրա զանգակատունը և օժանդակ շենքերը մի քանի անգամ վերակառուցվել են, բայց այսօր էլ ճարտարապետական ոճով նա ներկայացնում է միջնադարյան Հայաստանի ճարտարապետության ոգուն և սկզբունքներին լիովին համապատասխան մի հետաքրքիր կոթող։ Եկեղեցու բակում գտնվող մի քանի տապանաքարերն ու խաչքարերը վկայում են, որ հայկական ազգային ճարտարապետության այդ բնորոշ ձևը իր զարգացումն է ապրել նաև լեհահայոց գաղթօջախներում։

Լեհահայ նկարիչների արվեստի մասին պատկերացում են տալիս ոչ միայն եկեղեցիների որմնանկարները և ձեռագիր մատյանների մանրանկարները, այլև առանձին նկարիչների կտավներ։ XVI դարի վերջին և XVII դարի առաջին կեսին իրենց ստեղծագործություններով հայտնի էին հայազգի նկարիչներ Պավել Բոգուշը և նրա որդիները՝ Սիմեոնը և Յանը։ Աշխարհիկ թեմաներով կատարված իրենց գործերով նրանք նշանակալի ավանդ են մուծել լեհական կերպարվեստի զարգացման ասպարեզում։ Մեծ հետաքրքրություն է ներկայացնում հատկապես Սիմեոն Բոգուշի խոշոր կտավներից մեկը՝ «Կեղծ Դմիտրիի և Մարինա Մնիշեկի ամուսնությունը Մոսկվայում», որը բացի իր գեղարվեստական արժեքից, ուշագրավ է նաև այն տեսակետից, որ ստույգ

պատկերացում է տալիս Կեղծ Դմիտրիին շրջապատող մի շարք ռուս և լեհ պատմական անձնավորությունների մասին։

Լեհահայ գաղութներում և ամբողջ Լեհաստանում մեծ հռչակ էին վայելում հայ ոսկերիչները, ասեղնագործողները և կաշվե իրերի վարպետները։ Նրանց պատրաստած պերճանքի առարկաները, ոսկեթելով և թանկարժեք քարերով զարդանախշած հագուստները, զենքերը, ձիասարքերը իրենց գեղեցկությամբ ու նրբին ճաշակով լայն ընդունելություն էին գտնում Լեհաստանում և նրա սահմաններից դուրս։

## 3. ԲՈՒԼՂԱՐԻԱՅԻ ԳԱՂԹՕՋԱԽՆԵՐԸ

Սկսած V դարի երկրորդ կեսից, հայ ժողովրդի մեծ ու փոքր հատվածներ ստիպված բռնում են արտագաղթի ճամփան։ Արտագաղթը զանգվածային բնույթ է ստանում VIII—X դարերում։ Կազմակերպելով հայերի պարբերական բռնագաղթեցում, բյուզանդական կայսրերը ձգտում էին թուլացնել Հայաստանի դիմադրական կարողությունն և, մյուս կողմից, ռազմունակ գաղթականներով ամրապնդել կայսրության հյուսիսային սահմանները՝ Բալկանյան թերակղզում։ Հատկապես մեծ չափերի է հասնում հայ աղանդավորների, մասնավորապես պավլիկյանների բռնագաղթը։ Բնակություն հաստատելով Բալկաններում, հայերը հիմնադրում են ազգային համայնքներ և գաղթօջախներ, որոնք, ըստ բնակչության դավանանքի, կարելի է բաժանել երեք մասի՝ հայլուսավորչական, պավլիկյան և քաղկեդոնական գաղութներ։ Ընդ որում, վերջին երկու տիպի համայնքների բնակչությունը ժամանակի ընթացքում անհետացավ՝ ձուլվելով տեղական ժողովուրդների հետ։ Առավել կենսունակ գտնվեցին հայ-լուսավորչական գաղթօջախները, որոնց բնակչությունը, համախմբված լինելով Ֆիլիպոպոլսի (Պլովդիվ) առաջնորդության շուրջը, իր գոյությունը պահպանեց երկար ժամանակ և սերտ հարաբերություններ հաստատեց բուլղարների հետ։

Անդրկովկասի, այդ թվում նաև Հայաստանի, իսկ այնուհետև Բուլղարիայի նվաճումը թուրքերի կողմից հայ-բուլղարական հարաբերությունների և բուլղարահայ գաղթօջախների պատմության մեջ նոր փուլի սկիզբ դրեց։ Ասպատակելով ու գրավելով բազմաթիվ երկրներ, թուրքական զավթիչները սկսեցին վարել սոցիալական, քաղաքական ու ազգային ճնշման մի քաղաքականություն, ըստ որի բոլոր քրիստոնյաները, անկախ ազգության ու դավանանքի, ենթարկվում էին դաժան ճնշումների։ Սակայն, ի տարբերություն Հայաստանի, որը դարձավ թուրքական սուլթանների և իրանական շահերի միջև մղվող երկարատև ու ավերիչ պատերազմների թատերաբեմ, Բուլղարիան գտնվում էր համեմատաբար խաղաղ պայմաններում։ Ահա թե ինչու հայկական զանգվածները, թողնելով հայրենի երկիրը և դիմելով տարագրության, բնակություն էին հաստատում նաև բուլղարական հողում։

Հայ և օտար աղբյուրները վկայում են, որ XIV—XVIII դարերում Հայաստանից ու Կիլիկիայից, ինչպես նաև Ղրիմի, Լեհաստանի, Ռումինիայի ու մի շարք այլ երկրների հայկական գաղթավայրերից տեղի է ունեցել բնակչության նկատելի ու պարբերական հոսք դեպի Բուլղարիա։ Այսպես օրինակ, Կիլիկյան հայկական թագավորության անկումից հետո, XV դարի առաջին տասնամյակ-

ներին զգալի թվով հայեր գաղթեցին նաև Բուլղարիա։ Մեկ հարյուրամյակ անց հայ բնակչության նման տեղաշարժ եղավ և Ղրիմից։ Գրավելով Աքքերման քաղաքը սուլթան Բայազիդ II-ը տեղաբնակ հայերին գաղթեցրեց հարավ՝ Բուլղարիա և Կոստանդնուպոլիս։ XVI դարի կեսերին բուլղարական հողերում բնակություն հաստատեցին մեծ թվով նախիջևանցիներ, շոռոթցիներ, կարբեցիներ, ինչպես նաև ռումինահայեր։ Թուրք-պարսկական բախումների և ջալալիների խժդժությունների հետևանքով XVII դարի սկզբին հարյուրավոր հայեր գաղթեցին Բալկաններ։ Մի փոքր անց՝ կապված Ղրիմի թերակղզում մոլեգնող սովի հետ, Բուլղարիա գաղթեցին բազմաթիվ հայեր Կաֆայից։ Ղրիմահայ գաղթականներից ոմանք, գրում է այդ անցքերին ժամանակակից Գրիգոր Դարանաղցին. «յԸստամբօլ եկին և ոմանք ի Թրակիա, որ Ուռումէլ ասի, ի Վառնայու անցանելով մինչև ի Պէլըրղատ, մինչև ի Պուղտանաց աշխարհն և ի Լեհացն»[66]։

Այդ ժամանակաշրջանի բալկանահայության և ընդհանրապես հայ գաղթականության մասին հետաքրքիր տեղեկություններ է հաղորդում նաև Սիմեոն դպիր Լեհացին։ «Եւ թէ հաշուես ի Պուղտանա մինչև Ստամպօլ, այսինքն Ուռումէլին մինչև մեծն Վանատիկ, նա չկայ քաղաք, գեղ կամ չֆտլիկ, որ հայ չկենայ»[67],—իրավացիորեն նկատել է նա։

Հայերի խմբային և զանգվածային գաղթեր ու բռնագաղթեր դեպի Բուլղարիա, Բալկաններ և հարակից երկրներ կատարվել են նաև հետագայում։ 1673 թ. սուլթան Մուհամեդ IV-ը գրավեց Լեհաստանի Կամենեց-Պոդոլսկ քաղաքը և փորձեց տեղաբնակ հայերին Սև ծովի վրայով գաղթեցնել հարավ՝ Փոքր Ասիա։ Երեք առագաստանավերով, նկարագրում է Ղևոնդ Ալիշանը, նրանք դուրս բերվեցին բաց ծով, ուր հանդիպեցին ուժեղ փոթորկի։ Նավերից մեկն ընկղմվեց, իսկ մյուս երկուսը նետվեցին բուլղարական ափերը՝ Ղալաթիա (Վառնայի մոտ) և Սոզոպոլ (Բուրգասից հարավ) ծովագյուղերը։ Աղետից փրկված գաղթականները բնակություն հաստատեցին բուլղարական հողում[68]։

Գտնվելով տնտեսական ու կուլտուրական զարգացման ավելի բարձր աստիճանի վրա, ունենալով սեփական գիր ու գրականություն, դարավոր ավանդույթներով սրբագործված եկեղեցի ու ինքնատիպ դավանանք, գաղթական հայերը անհետ չկորան աշխարհագրական այդ միջավայրում։ Նրանք թարմ ուժերով համալրեցին դեռևս բյուզանդական ժամանակաշրջանից Բուլղարիայում գոյություն ունեցող հայկական համայնքները և հիմնադրեցին հայկական նոր գաղթավայրեր։

Թուրքական տիրապետության սկզբնական տարիներին փոքր ի շատե հոծ հայության հանդիպում ենք Հարավային Բուլղարիայի կենտրոնական քաղաք Ֆիլիպոպոլսում (Պլովդիվ)։ XIV—XV դարերում այստեղ գոյություն է ունեցել ոչ մեծ, բայց ինքնամփոփ հայկական համայնք, որը հետագայում համալրվել է նորեկ հայերով։ Անցնելով Ֆիլիպոպոլսով, Սիմեոն դպիրն այնտեղ հանդիպել է «երեցի մը և հարյուր տուն հայի»։ 1675 թ. այնտեղ մշտական բնակություն է հաստատում Կամենիցի աղետյալ հայերի մեծ մասը, կառուցվում է

[66] Գրիգոր Դարանաղցի, էջ 95—96։

[67] Սիմեոն Լեհացի, էջ 8։

[68] Տե՛ս Ղ. Ալիշան, Կամենից, էջ 169։

եկեղեցի ու, այդպիսով, ձևավորվում է հայկական գաղթօջախը, որն իր գոյությունը պահպանում է առ այսօր[69]։

Ոչ պակաս հնություն ունի նաև ժամանակակից Սոֆիայի հայկական գաղթօջախը։ XV—XVI դարերում այնտեղ բնակվում էին նաև հայեր, որոնք որոշ դեր էին խաղում քաղաքի ներքին ու արտաքին առևտրում[70]։ XVI դարի կեսին Սոֆիայի հայ համայնքը համալրվում է Նախիջևանից ու Շոռոթից, իսկ XVII դարի սկզբին՝ Արևմտյան Հայաստանից, հատկապես՝ Մալաթիայից ու Դիարբեքիրից եկած գաղթականությամբ։ Հենց այդ ժամանակ էլ, հավանաբար, հիմնադրվում է Սոֆիայի հայոց եկեղեցին, որը մասնագետները համարում են քաղաքի հնագույն կառույցներից մեկը։ XVII դարի կեսին Սոֆիայի հայկական գաղթօջախի բնակչության թիվը հասնում էր 1600-ի, քաղաքն ու նրա հայ ղաղութն ապրում էին վերելք[71]։ Սակայն այն ընդհատվում է 1670-ական թվականներին, երբ թուրքերը, նախապատրաստվելով արշավանքի դեպի Լեհաստան, քաղաքը վեր են ածում ռազմական ճամբարի և ահ ու դող տարածում բնակչության վրա։ Հենց այդ օրերին Մարտիրոս Ղրիմեցին, անցնելով Սոֆիայով, բախտ չի ունենում մտնելու հայոց եկեղեցի և այդ մասին զավեշտական մի ոտանավորի մեջ գրում է.

Աղդմամբ չարին պատահեցայ
Ի չեօլ քաղաքն Սոֆիա...
Ջի էր անթիւ զօրք հեծելաց,
Գնացաք ի ժամն, դուռ ոչ էր բաց,
Յահէ զօրացն ամրափակած[72]...

Փաստերը վկայում են, որ Սոֆիայի, ինչպես նաև նրա հայկական գաղթօջախի անկումը եղել է կարճատև։ XVII դարի վերջում և գրեթե ամբողջ XVIII դարի ընթացքում քաղաքային կյանքն այնտեղ հիմնականում զարգացում է ապրել։ 1690-ական թվականներին Սոֆիայի հայերը բարգավաճում են այն աստիճան, որ կարողանում են սեփական միջոցներով վերանորոգել տեղի եկեղեցին, որը կանգուն մնաց ընդհուպ մինչև նորագույն ժամանակները։

Հայաշատ կենտրոններից էր նաև բուլղարական երկրորդ թագավորության մայրաքաղաք Վելիկո Թրնովոն (Թրնովո), որը լինելով բանուկ առևտրաարհեստագործական կենտրոն, դեպի իրեն էր ձգում բազմաթիվ տարագիր հայերի։ XV դարի կեսից այնտեղ հանդիպում ենք կաֆայեցի հայ առևտրականների ու արհեստավորների։ XVI դարի կեսերին և XVII դարի սկզբին տեղի փոքրաթիվ հայ համայնքում կարևոր դեր են կատարում նախիջևանցի, շոռոթցի և ղափանցի հայ վաճառականները, որոնք բնակություն են հաստատում հիմնականում քաղաքի Պոպ-Յորկի և Վարուշ տեղամասերում, որոնք հետագայում կոչվեցին Հայկական թաղամաս։ Թրնովոյի հայկական գաղթօջախը XVII դարի կեսերից մինչև XVIII դարի վերջերը ապրեց տնտեսական ու մշակութային կյանքի նկատելի վերելք։ XVIII դարի վերջերից, կապված բնակչության արտագաղթի հետ՝ Թրնովոյի հայկական գաղթօջախն սկսում է աստիճա-

69 Տե՛ս Ն. Գասապյան, Ֆիլիպեի շրջանի հին հայկական եկեղեցիներու և վանքերու մասին («Մասիս» տարեգիրք, Սոֆիա, 1934)։

70 Տե՛ս *К. Иречек*, Пътувания по България, ч. II, София, 1899, էջ 122, 140։

71 Տե՛ս Eusebius Fermendzin, Acta Bulgariae ecclesiastica. ob a. 1565 usque ad a. 1799, Zagrabiae, 1877, էջ 73։

72 Տե՛ս Ա. Մարտիրոսյան, *Մարտիրոս Ղրիմեցի*, Երևան, 1958, էջ 89։

նաքար անկում ապրել։ 1808 թ. Մինաս Բժշկյանը անցել է Թրնովոյով և նկատել, որ տեղի հայերը սակավաթիվ են, զանվում են տնտեսական ու բարվոք վիճակում, թեև ունեն «գեղեցկաշեն եկեղեցի»[73]։

Բուլղարիայի սեծովյան կարևորագույն նավահանգիստ Վառնան հանդիսացել է ոչ միայն նախադուռ, այլ նաև հանգրվան հայ գաղթականության համար։ Սկսած XV դարի կեսերից այստեղ հանդիպում ենք մշտական բնակություն հաստատած ղրիմահայ առևտրականների։ Հետագայում, հատկապես XVII դարի սկզբին, Վառնայի հայկական համայնքը համալրվում է նոր գաղթականներով։ Թուրք ճանապարհորդ Էվլիա Չելեբին, որ անցել է այդ քաղաքով 1656 թ., տեղեկություն է հաղորդում այնտեղ «Հայկական թաղամասի» առկայության մասին։ Հենց այդ ժամանակ էլ, հավանաբար, հայկական համայնքին հաջողվում է ձեռք բերել թուրքական երկու մզկիթների միջև ընկած մի շինություն, որը հարմարեցվել և օգտագործվել է իբրև աղոթատեղի։ Դարավերջին Վառնայի հայկական գաղթօջախը մեծանում և ամրապնդվում է։ 1700 թ. պաշտոնական դիմում է կատարվում թուրքական իշխանություններին եկեղեցի կառուցելու թույլտվության խնդրով, սակայն մերժում է ստացվում։ Ի վերջո 1842 թ. կառուցվում է մինչև այժմ կանգուն եկեղեցին ու թեմական դպրոցը[74]։

XV դարի կեսից որոշ թվով ղրիմահայ գաղթականներ բնակություն են հաստատել նաև Բուլղարիայի մերձդանուբյան կարևորագույն քաղաք-նավահանգիստ Ռուսչուկում (Ռուսե)։ XVI դարում և հատկապես XVII դարի սկզբին՝ երևանցի, ղափանցի, շոռոթցի և նախիջևանցի վաճառականներով համալրվում է այդ գաղթավայրը, այդ ժամանակ էլ, հավանաբար, հիմնադրվում է եկեղեցին և ավարտվում ռուսչուկահայ գաղթօջախի ձևավորման պրոցեսը։ Ռուսչուկի հայությունը կենտրոնացած էր քաղաքի հյուսիս-արևմտյան թաղամասում՝ Յենիմահլայում։ Մինաս Բժշկյանը 1808 թ. անցել է Ռուսչուկով և նկատել, որ այն «բարեշէն քաղաք» է, «երեւելի վաճառատեղի»։ «Բնակիչք են ի զանազան ազգաց... Հայք էին 150 տունք. եւ եկեղեցի է յանուն Աստուածածնին, քարաշէն, այլ անշուք»[75]։

XVII դարի սկզբին հայ գաղթականության համար հանգրվան ծառայեց նաև Հյուսիսային Բուլղարիայի կարևորագույն բերդաքաղաք Շումենը (Կոլարովգրադ), որը դարձել էր մարդաշատ ու բարգավաճ առևտրա-արհեստագործական կենտրոն։ Դրանք Պարսկահայաստանից և Ղրիմից գաղթած 10—12 ընտանիքներ էին, որոնք բնակություն հաստատեցին բերդաքաղաքից դուրս՝ Չիֆլիթ-բայր (այժմ Քյոշկլեր) կոչված բարձունքի հարավ-արևելյան փեշերի տակ, ուր և հայտնաբերված է հայկական հնագույն գերեզմանատունը։ XVIII դարի կեսին Շումենի հայկական համայնքը համալրվում է նոր գաղթականներով, կառուցվում է եկեղեցի։ Այսպիսով, ավարտվում է Շումենի հայկական գաղթօջախի ձևավորումը, որը գոյություն ունեցավ շուրջ 150 տարի[76]։

XVII դարի արշալույսին հայկական գաղութ ձևավորվեց նաև հյուսիս-արևելյան Բուլղարիայի առևտրա-արհեստագործական ակնառու կենտրոն

---

[73] Տե՛ս Մ. Բժշկյան, Ճանապարհորդություն ի Լեհաստան, էջ 213, Ն. Դասապյան, Վելիքո-Թռնովո («Մասիս» տարեգիրք, Սոֆիա, 1935, էջ 213—227)։

[74] Տե՛ս Ա. Մարկոս, Վառնայի հայ գաղութը («Երևան», Սոֆիա, 2 դեկտեմբերի 1960 թ.)։

[75] Մ. Բժշկյան, Ճանապարհորդություն ի Լեհաստան, էջ 210։

[76] Տե՛ս Ս. Փաշաճյան, Շումենի հայերը («Յառաջ», Փարիզ, 10—11 օգոստոսի 1961 թ.)։

Պրովադիա քաղաքում։ Այն, ի տարբերություն բուլղարահայ շատ համայնքների, կարճ ժամանակամիջոցում ապրեց բուռն զարգացում։ 1608 թ. այստեղով անցել է Սիմեոն Լեհացին և վկայություն թողել հայկական համայնքի մասին, որ կազմված էր հիմնականում Ղրիմի և Փոքր Ասիայի հայ գաղթականներից. դարակեսին այն համալրվում է պարսկահայ գաղթականներով։ Գոյատևելով շուրջ 200 տարի, Պրովադիայի հայ գաղթօջախը XIX դարի սկզբից սկսեց ապրել խոր ճգնաժամ։ Արտագաղթի հետևանքով երբեմնի բազմամարդ և ծաղկող գաղթօջախը նոսրացել էր, իսկ եկեղեցին գտնվում էր կիսավեր վիճակում։

Համանման պատմություն ունի նաև Ռազգրադի հայ համայնքը, որը նույնպես կազմակերպվել է XVII դարի սկզբին։ Դարակեսին այստեղ բնակվում էր 70 հայ ընտանիք, թվով շուրջ 460 հոգի։ Նրանք համախմբված էին մի թաղամասում, որը ստացավ «Հայկական» անունը։

XIV—XVIII դարերում մեծ ու փոքր խմբերով հայեր են բնակվել նաև բուլղարական Բուրգաս, Ահելու, Այտոս, Թաթար-Բազարճըկ (Բազարճըկ), Հաջի-օղլու-Բազարճըկ (Դոբրիչ, Տոլբուխին) և մի շարք այլ քաղաքներում ու ավաններում։

Բուլղարահայ գաղթականության ճնշող մեծամասնությունը, ինչպես վկայում են հավաստի աղբյուրները, կազմում էին բավականին փորձված և հմուտ արհեստավորները։ Նրանց հիմնական զբաղմունքներից էին ոսկերչությունը, պղնձագործությունը, դարբնությունը, թիթեղագործությունը, մանածագործությունը, դերձակությունը, կաշեգործությունը, հյուսնությունը, վարսավիրությունը, ժամագործությունը, հացագործությունը և այլն։ Մեծ համբավ էին վայելում, օրինակ, Սոֆիայի հայ դարբինները, որոնք, ի դեպ, միավորված էին հատուկ համքարության մեջ։ Առավել համբավավոր էին շումենահայ պղնձագործները, որոնք նույնպես միավորված իէն համքարության մեջ։ Ընդ որում, համքարության ղեկավարությունը կարողացել էր կարգավորել ձուլյլ պղնձի ներմուծումը Տրապիզոն-Վառնա ծովային ճանապարհով և արտադրանքի արտածումը՝ Կոստանդնուպոլիս։

Հայ գաղթականները ակտիվ դեր էին խաղում նաև միջնադարյան Բուլղարիայի առևտրական կյանքում։ Հայ արհեստավորը, որպես կանոն, ուներ իր փոքրիկ արհեստանոցը, որը միաժամանակ օգտագործում էր իբրև վաճառատեղի։ Բացի այս մանր արհեստավոր-վաճառականներից, բուլղարահայության շարքում եղել են նաև խոշոր առևտրականներ։ Նրանք ակտիվ դեր են կատարել Բալկանների ոչ միայն ներքին, այլև, կապված լինելով մի շարք եվրոպական ու ասիական առևտրական շրջանների հետ՝ տարանցիկ առևտրում։

Բնակվելով բուլղարական քաղաքներում, հայ գաղթականները նպաստել են այնտեղ արհեստների ու առևտրի, հետևաբար նաև քաղաքների զարգացմանը։ Թուրքական տիրապետության ժամանակաշրջանում, ինչպես նշում են բուլղար պատմաբանները, հայերը տարատեսակ արհեստների ու առևտրի բնագավառում իրենց ցուցաբերած հմտությունների և ձեռներեցության շնորհիվ նկատելիորեն խթանել են երկրի քաղաքային կյանքի զարգացմանը[77]։

---

[77] Տե՛ս *Д. Цончев* и *Т. Николов*, Водач за старините в В. Търново околността му, В. Търново, 1933, էջ 16։

Հայ գաղթականները միայն քաղաքներում և ավաններում չէ, որ բնակություն են հաստատել։ Նրանց զգալի մասը գյուղացիներ էին և հաստատվել են գյուղական վայրերում։ Դեռ ավելին, բուլղարական հողում նրանք հիմնադրել են ամբողջական գյուղեր, զբաղվել հողագործությամբ, մասնավորապես՝ այգեգործությամբ, խաղողագործությամբ և բանջարաբուծությամբ։ Ի տարբերություն քաղաքային գաղթավայրերի, հայ գաղթականներին չի հաջողվել գյուղական վայրերում հիմնադրել փոքր ի շատե կայուն ու կենսունակ ազգային համայնքներ, կառուցել եկեղեցիներ, կազմակերպել ազգային այլ հաստատություններ։ Հայկական գյուղական համայնքների բնակչության մի մասը ունեզրկվելով կամ, առանձին դեպքերում, հարստանալով, հոսում էր դեպի քաղաքները՝ համալրելով այնտեղ գոյություն ունեցող հայկական գաղթօջախները, իսկ մյուս, ավելի մեծ մասը՝ զրկված լինելով ազգային հիմնարկություններից, միաձուլվում էր տեղական բնակչությանը։ Պատմության թատերաբեմից անհետացած հայկական գյուղական համայնքների և ամբողջական գյուղերի հիշատակները պահվել են բազմաթիվ այն տեղանունների մեջ, որոնք արմեն (հայ) ազգի անվան հետ են կապվում։ Մինչև XIX դարն իսկ Բուլղարիայում կային գյուղեր, որոնք կրում էին էրմենսկո, Արմինոր, էրմենովո, Արմենոֆոր, Արմենիթե, Արմյանկովցի, Արմենիցա, էրմենլուի, էրմենլի, Արմենքյոյ և այլ շատ բնորոշ հայկական անուններ[78]։

Բուլղարահայ մի շարք գաղթավայրեր դարձել են հայկական գրչության ու մշակույթի նշմարելի օջախներ։ Ֆիլիպոպոլսում, Սոֆիայում, Ռուսչուկում և Վառնայում ընդօրինակվել ու նկարազարդվել են հայկական ձեռագրեր, որոնցից մի քանիսը հասել են մինչև մեր օրերը։ Այդ ձեռագրերը, ինչպես նաև Բուլղարիայում հայտնաբերված մի շարք այլ հուշարձաններ ու մասունքներ լոիկ վկաներն են XIV—XVIII դարերում բուլղարահայ զաղութներում զարգացած մշակութային կյանքի[79]։

Դարեր շարունակ բնակվելով բուլղարական հողում և զարգացնելով ազգային մշակույթը, գաղթական հայերը նկատելի ազդեցություն են թողել բուլղար ժողովրդի մշակույթի վրա։ Այդ ազդեցությունը հատկապես նշմարելի է, ինչպես ընդգծել են մասնագետները, բուլղար ճարտարապետության, մասնավորապես՝ եկեղեցական շինարարության մեջ և կիրառական արվեստի բնագավառում։ Վկայակոչելով Պերուշտիցայի բուլղարական եկեղեցու շինարարական տեխնիկան ու ոճը, ակադեմիկոս Գավրիլ Կացարովը անվերապահորեն գրել է. «Բուլղար եկեղեցիների վրա հայ ճարտարապետության ազդեցությունը ակներև է»[80]։ Բուլղար նկարիչ Վլադիմիր Պեշևը գտնում է, որ հայկական կուլտուրան ունեցել է իր ազդեցությունը բուլղարական կուլտուրայի հատկապես կիրառական արվեստի վրա։ Բուլղարական և, ընդհանրապես, բալկանյան երկրների միջնադարյան քանդակագործների և նկարիչների ստեղծագործություններում որոշակի արտահայտություն են գտել արևելյան, մասնավորապես հայկական տիպի զարդաքանդակներն ու սրբապատկերները։

---

[78] Տե՛ս *С. В. Овнанян,* Армяно-болгарские исторические связи и армянские колонии в Болгарии во II половине XIX в., Ереван, 1968, էջ 39, 47.

[79] Տե՛ս Հ. Քյուրտյան, *Պուլկարահայ մշակույթի հիշատակարաններ* («Մասիս», Սոֆիա, 1935, էջ 187—198)։

[80] Գ. Քացարով, *Պատմական կապեր Պուլկարիո և Հայաստանի միջև* («Մասիս», Սոֆիա, 1934, էջ 243)։

Բուլղարիայի Զեմենի վանքում, որը նկարազարդվել է XIV դարում, արսիդի երկու կողմերում նկարված սրբերի շարքում հանդիպում ենք նաև Գրիգոր Լուսավորչի պատկերին։ «Ըստ... եկեղեցու հայրերի շարքում գրաված տեղի, կարելի է հետևցնել,—իրավացիորեն գրում է Սիրարփի Տեր-Ներսեսյանը,—որ Գրիգոր Լուսավորիչը համարվել է նրանց համազորը»[81]։

Թուրքական իշխանությունները, ղեկավարվելով «բաժանիր և տիրիր» ախրահռչակ սկզբունքով, մշտապես սերմանում էին հակամարտություն Բալկաններում բնակվող քրիստոնյա ժողովուրդների միջև, ամեն կերպ խոչընդոտում նրանց բնական զարգացումն ու մերձեցումը։ Բուլղարահայերը, սակայն, չէին օգտվում արտոնություններից, այլ հավասարապես կեղեքվում և հալածվում էին թուրքերի կողմից և, այդպիսով, զերծ էին «քրիստոնյաների միջև առելություն գրգռելու հատուկ թուրքական սիստեմի» ազդեցությունից, որի հետևանքով էլ սերտորեն կապվել և որոշ իմաստով մերվել էին բուլղարների հետ։ Ուս-ուսի տված նրանք երարասև ու ծանր, քողարկված ու բացահայտ պայքար են մղել թուրքական տիրապետության դեմ, որի ընթացքում տվելի է կոփվել հայ և բուլղար ժողովուրդների դեռևս բյուզանդական ժամանակաշրջանից եկող բարեկամությունը և մարտական համագործակցությունը։

Այս անհավասար պայքարում նրանք, ինչպես հայտնի է, հենվում էին մեկ ընդհանուր դաշնակցի՝ ռուսական հզոր պետության վրա, որը ելնելով իր իսկ ռազմա-քաղաքական շահերից, նրանց ցույց էր տալիս տարատեսակ աջակցություն և ուղղակի ռազմական օգնություն։ Պարբերաբար ծագող ռուս-թուրքական պատերազմների ընթացքում բալկանահայերը բուլղարների և մյուս քրիստոնյա ժողովուրդների հետ ամեն կերպ նպաստում էին ռուսական զենքի հաղթանակին՝ տեսնելով դրա մեջ թուրքական ծանր լծի թոթափման և ազգային ազատագրության միակ գրավականը։ Հենց այդ դարավոր պայքարի բովում էլ ծագել ու ձևավորվել է բալկանահայերի ռուսական կողմնորոշումը, որը ըմբռնել և ըստ արժանվույն գնահատել է ռուս բանաստեղծ-դեմոկրատ Ա. Ա. Օլինը։

«Եվրոպական Թուրքիայի գաղթականության մեջ,—գրել է նա,—շատ նշանակալից տեղ են զբաղեցնում հայերը։ Վաղ ժամանակներից գաղթած լինելով այս տեղեր, նրանք... համակրում են Ռուսաստանին, հետևաբար փոխադարձ համակրանք վայելելու իրավունք ունեն... Բարձրացնելով նրանց (իմա՝ հայերին) ուրիշների և իրենց սեփական աչքերում, Ռուսաստանը ծառայություն մատուցած կլինի ոչ միայն հայերին, այլ նաև իր ազդեցությանը Արևելքում»[82]։

XIX դարի սկզբին բուլղարահայ գաղութները և հայ-բուլղարական հարաբերությունները թևակոխեցին զարգացման մի նոր փուլ, որը կապված էր ինչպես բուլղար ու հայ ժողովուրդների սոցիալ-տնտեսական ու ազգային-քաղաքական կյանքում եղած էական տեղաշարժերի, այնպես էլ ցարական Ռուսաստանի արևելյան քաղաքականության աշխուժացման ու հաջողությունների հետ։

---

[81] Ս. Տեր-Ներսեսյան, Գրիգոր Լուսավորչի դիմանկարները բյուզանդական արվեստում («Գարուն», 1969, № 3, էջ 38)։

[82] АВПР, ф. «Посольство в Константинополе», д. 1615, л. 87—89.

## 4. ՀՈՒՆԳԱՐԻԱՅԻ ԵՎ ՏՐԱՆՍԻԼՎԱՆԻԱՅԻ ԳԱՂԹՕՋԱԽՆԵՐԸ

*Հայերն այստեղ հաստատվել են տակավին հունգարական պետության ստեղծման ժամանակաշրջանում և հիշատակվում են երկրի հին բնակիչների թվում։ Հունգար ժամանակագիրների տվյալներով դեռևս X—XI դարերում իրենց երկրում հաստատված հայերը իբրև քաղաքային տարր նպաստում էին նորաստեղծ պետության տնտեսական կյանքի ու քաղաքների զարգացմանը։ Անշուշտ հայերին ծանոթ էր նաև Տրանսիլվանիան, քանի որ այդ շրջանում արդեն Տրանսիլվանիան միացվել էր Հունգարիային։*

*Հունգարիայի պատմության արշալույսին հայերի առկայությունն այդ երկրում հետևանք էր պատմական այն իրողության, որ դեռևս VII—X դարերում Թրակիան և Բալկանյան թերակղզու մի մասը բյուզանդական կայսրերի կողմից բնակեցված էր Հայաստանից բռնագաղթեցված զանգվածներով։ Ահա այդ հայերի մի մասն է, որ IX—X դարերում Բուլղարիայից հավանաբար մուտք է գործել Վալաքիա, Տրանսիլվանիա և Հունգարիա։*

*Հիշյալ վայրերում հայերի թվի հետագա ստվարացմանը նպաստել է նաև 1218 թ. Կիլիկյան Հայաստանի թագավոր Լևոն II-ի և Հունգարիայի թագավոր Անդրեաս II-ի միջև բարեկամական դաշինքի կնքումը։ Ինչպես նշում է Սմբատ Գունդստաբլը, Հունգարիայի վեհապետը այցելել է Կիլիկյան Հայաստան, ուր Լևոն II թագավորը նրան մեծ պատվով ընդունել և արքայավայել պատիվների է արժանացրել[83]։*

*Հունգարիայում և Տրանսիլվանիայում հայերի գոյության մասին հիշատակություններ կան նաև հետագա ժամանակներում։ Բուդապեշտից արևմուտք գտնվող այն ժամանակվա մայրաքաղաք Էստերգոմում հայերի ստվարացման հետևանքով Հունգարիայի թագավոր Բելա IV-ը 1243 թ. հատուկ հրովարտակով կրկին հաստատում է իր նախորդների կողմից նրանց տրված առանձնաշնորհումները։ Հունգարացի արևելագետ Էդ. Շյուցը գտնում է, որ Հունգարիայի այն ժամանակվա մայրաքաղաք Էստերգոմը մոնղոլ-թաթարական հորդաներից պաշտպանելու գործում մասնակցություն են ունեցել նաև այնտեղ ապրող հայերը։*

*Միջին դարերում Հունգարիայում և Տրանսիլվանիայում հայ բնակչության առկայության մասին է խոսում նաև այն հանգամանքը, որ ինչպես անցյալում, այնպես էլ հետագայում (մասամբ նաև այժմ) այնտեղ գտնվում են «հայ» և «հայկական» բառերից կազմված բազմաթիվ տեղանուններ։ Այսպես, օրինակ, Հունգարիայի թագավոր Լադիսլավ IV-ը իր 1281 թվակիր հրովարտակում հիշատակում է* Terra Armenorum *(Հայոց հող) և* Monasterium Armenorum *(Հայոց վանք) վայրերը։ Հիշյալ տեղանունները գոյություն են ունեցել վերոհիշյալ թվականից շատ առաջ, քանի որ հրովարտակում դրանք հիշատակվում են օգոստինյանների միաբանությանը նվիրաբերվելու առթիվ։ Ռումինիայի պատմության XIII—XIV դարերի վավերագրերում ևս հանդիպում են բազմաթիվ տեղանուններ, որոնք կազմված են հունգարական* Örmen *(հայ) և ռումինական* Armean *(հայ) բառերից։*

*1343 թվակիր մի կնիքից երևում է, որ Տրանսիլվանիայի այժմյան Սիբիու*

[83] Տե՛ս «Սմբատայ սպարապետի տարեգիրք», հրատ. Ս. Վ. Ագըլյանի, Վենետիկ, 1956, էջ 221։

քաղաքի մոտ գտնվող Տըլմաշում գործել է «Տրլմաշի հայոց եպիսկոպոս Մարտինը»։ Պարզ է, որ հայ հոգևոր առաջնորդի հիշատակությունը վկայում է տվյալ վայրում հայկական կազմակերպված գաղթօջախի առկայության մասին։ Ավելի ուշ՝ 1399 թ. Տրանսիլվանիայի Բրաշով քաղաքում ևս հայեր են հիշվում, որոնք ոչ կաթոլիկ տարբեր ազգության բնակիչների հետ մեկ ընդհանուր եկեղեցի ունեին։

Հայերի թիվը XV դարում դարձյալ սկսում է աճել։ Դրան հիմնականում նպաստում է 1497 թ. լեհաստանի Ալբերտ թագավորի արշավանքի հետևանքով Մոլդովայի մայրաքաղաք Սուչավայից 700 հայ ընտանիքների գաղթը դեպի Հունգարիա, Տրանսիլվանիա և Գալիցիա։ Ավելի ուշ՝ 1551 թ., Մոլդովայի իշխան Շտեֆան Ռարեշի հալածանքը հայերի դեմ, դարձյալ պատճառ է հանդիսանում, որ բավականին հայեր նորից գաղթեն իրենց նախորդների հետքերով՝ դեպի հիշյալ երկրները։

XVI—XVII դարերում Տրանսիլվանիայի մի շարք քաղաքներում և հատկապես Բիստրիցայում բազմաթիվ հայ առևտրականներ են հիշատակվում, իսկ XVII դարում Հունգարիայում, մասնավորապես Բուդայում, գործում էին հայ առևտրականներ ու արհեստավորներ։

Տրանսիլվանիայում XVII դարի առաջին կեսին հայերի գոյության ուշագրավ փաստ է 1647 թ. Վաշարհեյում (ամենայն հավանականությամբ Տրանսիլվանիայի այժմյան Տըրգու Մուրեշ քաղաքում) ընդօրինակված և այժմ Մ. Մաշտոցի անվան Մատենադարանում պահվող ձեռագիր ժողովածուն։ Նրա գրիչ Խաչիկ Կաֆայեցին նշում է, որ իր ձեռագրի նախագաղափարը մնալու է տեղում ապրող խոջա Օհան Ծողեցու (իմա՝ Ջուղայեցու) մոտ, որից երևում է, թե այդ առևտրական կենտրոնը XVII դարում բնակեցված էր նաև հայերով։ Հիշյալ գրիչը այդ վայրերում իբրև առևտրական մասնակցել է տոնավաճառների[84]։

Մի քանի տարի անց, Մոլդովայից որոշ թվով հայեր դարձյալ գաղթում են Տրանսիլվանիայի մի քանի քաղաքներ ու ավաններ, ինչպես 1654 թ.՝ Ջուրջով, 1658 թ.՝ Բաշդբալով (հետագայում հայաքաղաք Եղիսաբեթուպոլիս) և Ցիկ Շոմլեո։ Սակայն հիշյալ գաղթականությունը որոշակի նշանակություն չունեցավ երկրի կյանքում և դրա համար էլ պատմության մեջ մնաց «փոքր գաղթականություն» անունով։

Մոլդովայից Տրանսիլվանիա հայերի զանգվածային գաղթ տեղի ունեցավ 1672 թ.։ Դրանով պետք է բացատրել այն հանգամանքը, որ Տրանսիլվանիայի հայերի մի մասի տոհմանունները հիշեցնում են մոլդովահայ երբեմնի հայաշատ կենտրոնների անունները, ինչպես, օրինակ, Ասցի (իմա՝ Յաշցի), Ուրմանցի (Ռոմանցի), Պոջանցի (Բոտոշանցի), Ֆոկշանցի, Սոչովցի (Սուչավացի), Խութինցի (Խոթինցի) և այլն[85]։ Հայ գաղթականական խմբերը սկզբնական շրջանում ապաստանել են Կարպատյան լեռներում, հույս ունենալով, որ խաղաղության վերահաստատումից հետո կկարողանան վերադառնալ Մոլդովայի իրենց բնակավայրերը։ Համոզվելով, որ նման հեռանկար չկա, նրանք ընդունում են Տրանսիլվանիայի իշխան Միքայել Ապաֆիի հրավերը, և նրանց

---

[84] Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 3519։

[85] Տե՛ս *Szongótt Kristof*, A magyarhoni örmény családok genealogiája... Szamosújvárt, 1898.

մի մասը բնակություն է հաստատում սեկույների մոտ՝ Ջուրջովում և Չիկում, իսկ մյուս մասը՝ սաքսոն գերմանացիների մոտ՝ Բիստրիցայում։ Որոշ թվով հայեր տեղավորվում են Տրանսիլվանիայի Բաշդբալով, Գեռլա, Գուրգեն, Չիկ Շոմլեո, Գանդա, Պետելե և այլ վայրերում։

Տրանսիլվանիա գաղթած հայերի թիվը շուրջ տասը հազար էր։ 1680 թ. Միքայել I Ապաֆի իշխանը հայերին տվեց ինքնավարության և ազատ առևտուր անելու իրավունք։ 1696 թ. Միքայել II Ապաֆին հայերին իրավունք վերապահեց առանձին դատավոր ունենալու և առևտրով ու արհեստներով զբաղվելու։ Սակայն այդ իրավունքներից հիմնականում օգտվում էր հայերի վերնախավը։

Հունգարիայում ապրող հայերը նշանակալից դեր խաղացին երկրի կյանքում։ XVII դարի 70-ական թվականներին Բուդայում գործում էր ծագումով Հալեպցի հայազգի դիվանագետ Պետրոս Ապետիքը (Պետիկ Հայը), որը բազմիցս եղել էր եվրոպական և ասիական արքունիքներում և աշխատում էր հակաթուրքական ուժեղ ճակատ ստեղծելու միջոցով օսմանյան Թուրքիայի լծից ազատագրել նախ Հունգարիան, ապա Հայաստանը։

Հունգարիայի սիրտը՝ Բուդան, մոտ 150 տարի շարունակ (1541—1686) հեծում էր թուրքական լծի տակ։ Նրա ազատագրման համար պայքարեցին նաև բազմաթիվ հայեր, որոնց շարքում առանձնահատուկ տեղ է գրավում Գաբրիել Թոխաթեցին։ Սա ծածկագիր նամակներով կարևոր տվյալներ էր հաղորդում ազատագրող բանակներին թուրքերի ռազմական պատրաստությունների ու շարժումների մասին։ Նրա խորհրդով ապստամբները հրդեհել են Բուդայի վառոդի պահեստը՝ նպաստել Հունգարիայի ազատագրման գործին։ Ուշագրավ է, որ ռուս արքունիքի կողմից Իսրայել Օրու համար նախատեսված շքախմբում եղել են նաև երկու անձնավորություններ՝ Սիմոն Վենիտերը և Անտրե Հարիտոնովը, որոնք, ըստ փաստաթղթի, «Հունգարական երկրից» էին։

Հայաստանում XVIII դարի 20-ական թվականներին ծավալված ազատագրական շարժումներին մասնակցելու ցանկություն էին հայտնել Արևելյան Եվրոպայի, այդ թվում և Հունգարիայի ու Վալաքիայի հայերը։

XVII դարի վերջին Ավստրիան իր իշխանությունը տարածեց նաև Տրանսիլվանիայի վրա և կաթոլիկություն տարածելու միջոցով աշխատեց ամրապնդել իր դիրքերը։ Սկզբնական շրջանում հայերը ազատ են եղել դավանանքի հարցում, սակայն շուտով բռնի կաթոլիկացված լեհահայ թեմի առաջնորդ Վարդան Հունանյանը (իբրև հաջորդ տիրահռչակ Նիկոլ Թորոսովիչի), որը ուշի ուշով հետևում էր Մոլդովայի հայերի մի մասի Տրանսիլվանիա դաղթելուն, կաթոլիկության քարոզչության սլաքներն ուղղեց մի կողմից Տրանսիլվանիայում ապաստանած, իսկ մյուս կողմից դեռևս Մոլդովայում մնացած հայերի վրա։ Նրանց մեջ քարոզչական մեծ աշխատանք ծավալեց Մոլդովայից գաղթած Օքսենտ վարդապետ Վրզարյանը, որը Հռոմում էր ստացել իր ուսումը։ Սակայն հայերի կաթոլիկացման գործը հեշտ չէ տեղի ունեցել։ Նրանք երկար ու համառ պայքար են մղել կաթոլիկական քարոզչության և լատինական նորամուծությունների դեմ, աշխատելով պահպանել իրենց ազգային ինքնուրույնությունը։ Ահա դրա շնորհիվ էլ հայերի մի մասը 1690 թ. Բաշդբալովում դարձյալ անցավ իր հնավանդ եկեղեցու գիրկը։

XVIII դարի սկզբներին Տրանսիլվանիայի հայ գաղթօջախի պատմության նշանակալից երևույթը երկրով մեկ ցրված հայ գաղթականության կենտրո-

նացումն էր նորաստեղծ հայաքաղաքներում։ Սոմեշ գետի ափին 1700 թ. հիմնըվեց Գեռլա հայաբնակ քաղաքը, որին օտարները Արմենոպոլիս կոչեցին, մյուս հայաքաղաքը Եղիսաբեթուպոլիսն էր (նախկինում՝ Բաշդբալով, այժմ՝ Դումբրըվեն)։ Հայաշատ կենտրոններ դարձան Ջուրջովը (այժմ՝ Գեորգեն) և Սեպվիզը (այժմ՝ Ֆրումոասա)։ Մեծ ու փոքր հայկական համայքներ ստեղծվեցին նաև Բիստրիցա, Դևա, Օդորհեյ, Ալբա-Յուլիա, Գուրգեն Սեն-Իմրե, Սաս-Սեբեշ և այլ քաղաքներում ու ավաններում, որոնցից մի մասում կառուցվեցին նաև եկեղեցիներ ու մատուռներ։ Ավելի ուշ հայաքաղաքների ունևոր վերնախավի մի մասը տեղափոխվեց Բանատի գավառի Տորոնտալ շրջանը, ձեռք բերելով այնտեղ ընդարձակ կալվածքներ։

Տրանսիլվանիայի հայերի ընդհանուր թիվը XVIII դարում հասնում էր շուրջ 15—20 հազարի։ Հայաքաղաքները զուտ հայկական կենտրոններ էին, օտարների բնակեցումն այնտեղ կայսերական հրովարտակներով արգելված էր. ժամանակավորապես միայն օտարազգի առևտրականներ կարող էին մուտք գործել քաղաքային վարչության արտոնագրով։

Հայաքաղաքները ինքնավար համայնքներ էին, որ կառավարվում էին քաղաքային վարչություններով։ Ինքնավարական կարևոր մարմին էր «Հայկական կոմպանիան», որը տնտեսական և իրավական կապող օղակ էր իրարից հեռու գտնվող երկու գաղթօջախների՝ Գեռլայի և Եղիսաբեթուպոլսի միջև։ 1689 թ. «Հայկական կոմպանիան» արդեն ուներ իր դատավորը՝ երեք օգնականներով, որոնք հսկում էին հարկերի հավաքմանը և իշխանական հրամանների կատարման ընթացքին (այդ պարտականությունը հետագայում անցավ Եղիսաբեթուպոլսի քաղաքային վարչությանը, որը ղեկավար դիրք ստացավ Տրանսիլվանիայի բոլոր հայերի նկատմամբ, ի բացառյալ ինքնուրույնությունից օգտվող Գեռլայի)։ 1714 թ. Գեռլան ունեցավ իր առաջին քաղաքային վարչությունը՝ գլխավոր դատավոր ընտրելով խաչիկ Ակոբշային, 12 «ծերերի» կամ խորհրդականների հետ։ Քաղաքային վարչությունը (խորհրդարանը) գլխավորում էր դատավորը կամ բիրովը, որը և քաղաքագլուխն էր, սակայն վերջինիս իրավունքները հետագայում սահմանափակվեցին նրա խորհրդականների կողմից։

1757 թ. հայաքաղաքներն ունեցան նաև իրենց Հարյուրոց ժողովը կամ Սուտան, որին գլխավորում էր Սուտաշը (հարյուրապետը)։ Ժողովը ենթակա էր քաղաքային վարչությանը և հաճախ նրա հետ միասին էր հավաքվում ժողովի։

Մեծ է եղել հայերի դերը Տրանսիլվանիայի տնտեսական կյանքում։ Ավստրիայի կայսր Հովսեփ II-ի գնահատմամբ «Եղիսաբեթուպոլսի հասարակության դերը առևտրում շատ նշանակալից է եղել»[86]։ Ֆրանսիացի հայագետ Ֆ. Մակլերը նույնպիսի բարձր գնահատական է տվել Գեռլայի հայերին[87], հունգարացի գիտնական Կյոլենտեն՝ Ջուրջովի հայերին և այլն։

Տրանսիլվանիայի հայ առևտրականների քարավանները հասնում էին Արևելքում մինչև Կ. Պոլիս, իսկ Արևմտյան Եվրոպայում՝ մինչև Գերմանիա,

---

86 Գր. Գովրիկյան, Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ, 1780—1825, Բ, Վիեննա, 1899, էջ 288։

87 Տե՛ս Fr. Macler, Rapport sur une mission scientifique en Roumanie (juin-août, 1927). „Revue des études arméniennes, t. XI, Paris, 1930, էջ 7։

Իտալիա ու Դանիա։ Հայերի հիմնական զբաղմունքներից էր անասունների վաճառքը։ Հայ վաճառականները արտահանում էին նաև մեծ քանակությամբ փայտ՝ հասցնելով հեռավոր երկրներ, մինչև Անգլիա, Ֆրանսիա և այլն։

Տրանսիլվանիայի հայերը նաև հմուտ արհեստավորներ էին։ Բիստրիցայի հայերից իբրև հարկատու հիշվող 72 ընտանիքների մեծ մասը փականագործությամբ, կաշեգործությամբ, սաղնագործությամբ և այլ արհեստներով էր զբաղվում։ Աչքի են ընկել հատկապես հայ կաշեգործները։ Տրանսիլվանիայի հայոց չորս կենտրոններում և Բանատում գոյություն են ունեցել հայ կաշեգործների համքարությունները։

XVIII դարում Տրանսիլվանիայում ստեղծված առաջին մանուֆակտուրաների շարքում հայտնի էին նաև երկու հայաքաղաքների՝ Գեռլայի կաշեգործության և Եղիսաբեթուպոլսի մոմագործության բավականին խոշոր ձեռնարկությունները[88]։ Նրանք կատարում էին նաև արտասահմանյան պատվերներ։ Գեռլայի առևտրականները Տրանսիլվանիայում վաճառում էին տարեկան 30 հազար, իսկ Հունգարիայում՝ 20 հազար կտոր կաշի։ Արտադրված բարձրորակ մոմերը հասցվում էին մինչև Վիեննա։ Հայերի կարևոր զբաղմունքներից էին նաև մսագործությունը, ոգելից խմիչքների պատրաստումը, մուշտակագործությունը և այլն։

Դժվար է նշել Տրանսիլվանիայում կատարված որևէ կարևոր իրադարձություն, որի մեջ հայերն իրենց ներդրումը չունենան։ Թուրքերի դեմ մղված մարտերի հետևանքով դատարկված արքունական դրամարկղին հայերը տվեցին 100 հազար ֆլորին, 15 հազար ֆլորին ծախսեցին պատերազմի հետևանքով ավերված Գեռլայի դղյակի վերականգնման համար և այլն։

Տրանսիլվանիայի հայերի մեջ ևս գոյություն է ունեցել դասային շերտավորում։ Բիստրիցայում XVIII դարի սկզբում ապրող 72 հարկատու հայ ընտանիքներից միայն 17-ն էր ունևոր, իսկ նրանց մեծ մասը միջակ և չքավոր տնտեսություններ էին։

Հայերը հաշտ ու բարեկամական հարաբերությունների մեջ էին հարևան հունգարացիների, ռումինացիների, սեկույների և սաքսոնցիների հետ։ Նրանք քաջածանոթ էին այդ ժողովուրդների լեզվին և կրել են դրանց ազդեցությունը։ Ուշագրավ է, սակայն, որ հունգարերեն լեզվի մեջ ևս մուտք են գործել ծագումով հայկական մի շարք բառեր։ Հայկական արվեստի հետքեր են զգացվում նաև Հունգարիայի ճարտարապետական որոշ կոթողների վրա։

Միջնադարյան Հայաստանի քաղաքներում և այլ գաղթավայրերում քաղաքաբնակ երիտասարդներին համախմբող ընկերությունների՝ «կտրիճվորաց եղբայրությունների» օրինակով, հայերը սկսեցին այստեղ ևս ստեղծել նման կազմակերպություններ, որոնց անդամակցում էին բոլոր պատանիներն ու չամուսնացած երիտասարդները։ Միայն Գեռլայի «կտրիճների եղբայրությունն» ունեցել է 728 անդամ։ Եղիսաբեթուպոլսում գործել են չորս տասը եղբայրություններ։ Իրենց եղբայրություններն են ունեցել նաև Ջուրջովի և Սեպվիզի հայերը։ Այդ եղբայրությունների համար 1729 թ. լեհահայ նշանավոր գործիչ Ստեփանոս Ռոշքան մշակել է հատուկ կանոնադրություն։

Գաղթավայրի պատմության լուսավոր էջերից է այն համառ ու երկարատև

---

[88] Տե՛ս Şt. Imreh, Despre începuturile industriei capitaliste din Transilvania în prima jumătate a secolului al XIX lea, Bucureşti, 1955, էջ 10։

պայքարը, որ մղեցին տարագիր հայերը իրենց ազգային ինքնուրույնությունը պահպանելու համար։ Չնայած բռնի կաթոլիկացման քաղաքականությանը, շատ հայեր պահպանում էին իրենց դավանանքը։ Պատահական չէ, որ XVIII դարի կեսերին Ավստրիայի կայսրերի կողմից հայերին տրված հրովարտակներում խոսվում է հայ «հերետիկոսների», այսինքն՝ ոչ կաթոլիկ հայերի արարողությունների արգելելու մասին։

Ավստրիական կայսրության սահմաններում, որ տարբեր ազգությունների մի խառնարան էր, հայերի ձեռք բերած արտոնությունները սոսկ տեղական ինքնավարության արժեք են ունեցել։ Հայերը պայքարել են իրենց ինքնուրույնությունը հատկանշող ազգային եպիսկոպոսության վերականգնման համար, քաջ գիտակցելով, որ այդ ճանապարհով միայն կկարողանան պահպանել կապը մայր հայրենիքի ու ժողովրդի հետ։ Իրենց մայրենի լեզուն ու ազգային սովորույթները պահպանելու համար մղված այս պայքարը, որը տևեց ավելի քան երկու դար, չնայած անհաջողության էր դատապարտված, սակայն հունգարահայությունը իր պատմության ընթացքում համառ ջանքեր է գործադրել հայ մշակույթի զարգացման, հայ մանուկներին մայրենի լեզվով դաստիարակելու ուղղությամբ։

Սկսած 1685 թ. Եղիսաբեթուպոլսում, իսկ 1700 թ. Գեռլայում գործում էին հայկական դպրոցներ։ 1724 թ. Եղիսաբեթուպոլսում բացվում է նաև աղջկանց դպրոց։ Իսկ երկու տասնամյակ անց՝ 1746 թ. նույն քաղաքում գործում էր արդեն երկու դպրոց, մեկը Վենետիկի Մխիթարյան միաբանության անդամների գլխավորությամբ, իսկ մյուսը՝ քաղաքային վարչության։ XVIII դարի վերջում Եղիսաբեթուպոլսի Մխիթարյան դպրոցը ապրում էր իր ծաղկման շրջանը։ Միքայել Չամչյանը ծրագրում էր նույնիսկ ընդարձակել այն, դարձնելով Արևելյան Եվրոպայի հայկական գաղթավայրի միակ բարձրագույն դպրոցը, սակայն քաղաքային վարչությունը չի նպաստում այդ գործին։ Քիչ անց Վենետիկի Մխիթարյաններից Ստ. Ագոնցը, Ալ. Ինճիճյանը և ուրիշներ մասամբ իրագործում են այդ ծրագիրը։ Դպրոցում դասավանդվում էր հայերեն, հունգարերեն, լատիներեն, ապա նաև գերմաներեն։ Միաժամանակ գործում էին նաև Գեռլայի, Ջուրջովի և Սեպվիզի հայկական դպրոցները։ Տրանսիլվանիայից լավագույն աշակերտներին բարձր ուսում ստանալու նպատակով ուղարկում էին Վենետիկ, Վիեննա, Պեշտ, Սիբիու և այլ քաղաքներ։ Միայն Եղիսաբեթուպոլսից տարեկան 20 հայ ուսանող մեկնում էր արտասահման ուսանելու։

Տրանսիլվանահայերը սրբությամբ պահպանում էին հայրենի երկրից բերված, ինչպես նաև Մոլդովայում և այլ գաղթավայրերում գրված ձեռագիր մատյանները, ստեղծում էին նորերը։ Հայ գրչության կենտրոններ են դառնում Վաշարհելը, Ջուրջովը, Եղիսաբեթուպոլիսը, Գեռլան, Բրաշովը։ Հայերն ունեցել են հարուստ գրադարաններ և օրինակելի դիվանատներ։

Գաղթավայրերում ստեղծվել են առածներ, առակներ, հեքիաթներ, հանելուկներ և ժողովրդական երգեր։ Այստեղ գրառվել են նաև հայատառ հունգարերեն և հայատառ ռումիներեն երգեր։ Թարգմանական գրականության մեջ XVIII դարում կարևոր արժեքներ են ստեղծել Թեոդորոս Մեղիաշցին, Բարսեղ Լասլոֆյանը, Վարդան Ագոնցը և ուրիշներ։

XVIII դարի սկզբներին Ջուրջովում Սիմեոն Թորոսյանը գրել է իր քաղաքի հայերի գաղթականության և հայկական եկեղեցու կառուցման ամփոփ

պատմությունը։ Սակայն պատմագրությունը Տրանսիլվանիայի հայերի մոտ մեծ զարգացում ապրեց հետագայում։ Հայերն իրենց սեփական ուժերով կազմել են լատիներեն-հայերեն, հայերեն-լատիներեն, հայերեն-իտալերեն, հայերեն-գերմաներեն և այլ բառարաններ։

Չկարողանալով ստեղծել հատուկ հայկական տպարան, Տրանսիլվանիայի հայերն իրենց անհրաժեշտ ծիսական գրքերն ու դասագրքերը XVIII դարի երկրորդ կեսին տպագրել էին տալիս Տրիեստի Մխիթարյան և Վիեննայի Անտոն Պոռթոլիի տպարաններում, ուր տպագրվել են «Տօնացոյց» (1776), «Հայնակ և Նեմեցնակ» (հայերեն և գերմաներեն), «Կարճառօտ քրիստոնեական վարդապետութիւն» (երկուսն էլ 1788) և «Գիրք աղօթից» (1793)։

Տրանսիլվանիայի հայերը կարևոր դեր են կատարել քաղաքաշինության և ճարտարապետության ասպարեզներում։ Նրանք հիմնովին կառուցել են Հայաքաղաքները և շենացրել այլ բնակավայրեր։ Գեռլա հայաքաղաքի հատակագիծը պատրաստել է Հռոմից այդ նպատակով հրավիրված Ալեքսա հայազգի ճարտարապետը, իսկ քաղաքաշինությանը մասնակցել է ամբողջ հայությունը։ Կառուցվել են նաև եկեղեցիներ ու հասարակական շենքեր, որոնցից մի քանիսի վրա մինչև այժմ էլ մնում են հայերեն արձանագրություններ։ XVIII դարում կառուցվեց Գեռլայի հայոց մայր տաճարը, որը նշանավոր հուշարձան է համարվում բովանդակ Տրանսիլվանիայում։

Հայերը զարգացրել են նաև նկարչությունը, երաժշտությունը, ոսկերչությունը, ասեղնագործությունը, ժանյակագործությունը և արվեստի ու արհեստի այլ մասնաճյուղեր։ Մասնագետների կարծիքով Տրանսիլվանիայի արևելյան կոչված գորգերը գործվել են հայ վարպետների կողմից և ունեն հայկական ոճ։

Տրանսիլվանիայի հայերի ստեղծած բազմերանգ և ուշագրավ մշակույթը շարունակեց իր նոր ընձյուղները արձակել նաև հետագայում։ Նրանք սիրով շարունակեցին պահպանել հայ գիրն ու գրականությունը, միաժամանակ հիշատակության արժանի դեր խաղացին նաև իրենց երկրորդ հայրենիքի մշակույթի պատմության մեջ։

Նկատի ունենալով հայերի խաղացած դերը Հունգարիայի կյանքում, հունգար պատմաբան Յա. Էլեքը գրել է. «Մաջար ազգը հայերի մեջ հավատարիմ մի դաշնակից և զոհաբերվող մի եղբայր գտավ, որը մեր երջանկության օրերին մեզ է փարում և դժբախտության օրերին մեզ չի լքում, որի վրա ամեն պարագայի վստահ կարող ենք լինել»[89]։ Ազգով ռումինացի, Գեռլայի հայկական դպրոցի երբեմնի աշակերտ և Ռումինիայի պառլամենտի երբեմնի նախագահ Շտեֆան Չիչիո-Պոպը գրել է. «Ես սիրեցի հայերին նախ և առաջ նրանց արժանիքների համար։ Թեև հայերը թվով փոքր էին, սակայն մեծ դեմքեր տվեցին հունգարներին։ Հունգարիայի կառավարական դեմքերից շատերը հայեր էին»[90]։

## 5. ՄՈԼԴՈՎԱՅԻ ԵՎ ՎԱԼԱՔԻԱՅԻ ԳԱՂԹՕՋԱԽՆԵՐԸ

Դնեստրի շուրջը կատարված պեղումները ցույց են տալիս, որ առևտրական կապեր են գոյություն ունեցել այդ երկրամասի և արևելյան երկրների՝ հատկապես Հայաստանի միջև։ Ակքերման քաղաքի շրջանում կատարված

---

[89] «Ճակատամարտ», Կ. Պոլիս, 1920, № 539, էջ 1։

[90] „Ararat", Bucureşti, 1940, № 187.

պեղումներից հայտնաբերվել են XIII դարի Կիլիկյան Հայաստանի թագավորներին պատկանող դրամներ, որոնք լավագույն ապացույց են այն իրողության, որ հայերին դեռ վաղուց ծանոթ են եղել Սև ծովի մոլդովական ափերը։

Հայկական հիմնական գաղթավայրերը Մոլդովայի տարբեր շրջաններում ստեղծվեցին XIV դարի սկզբներին։ Ռումինացի պատմաբանների կարծիքով հայերն այստեղ հաստատվել էին դեռևս մոլդավական իշխանապետության հիմնադրումից XIII դ. էլ առաջ։ 1330 թ. արդեն այնքան հայեր կային այնտեղ, որ մոլդովական իշխանության հիմնադրման ժամանակ նրանք հիշատակվում են երկրի բնակիչների շարքում։

1350 թ. Բոտոշանում և 1395 թ. Յաշում հայերը կառուցել էին իրենց քարաշեն եկեղեցիները։ 1365 թ., երբ Լվովում հիմնվեց հայ եկեղեցու հատուկ թեմ, այն իր իրավասության տակ առավ նաև Մոլդովայի հայերին։ Այդ նոր թեմի հիմնադրման մասին ուշագրավ տվյալ է գրանցված Մաշտոցի անվան Մատենադարանի 1379 թվակիր մի ձեռագրի մեջ. այնտեղ ասված է, որ Հովհաննես կրոնավորը Սիս գնալով Կոստանդին կաթողիկոսից ձեռնադրվել է արքեպիսկոպոս «Ամենայն Ռուսաց աշխարհի և Վլախաց», այսինքն՝ Արևմտյան Ուկրաինայի և Մոլդովայի հայերի[91]։

Հետագայում, Մոլդովայի հայկական գաղթավայրերի բազմամարդ դառնալու կապակցությամբ, Ալեքսանդրու չել Բուն (Բարի) իշխանի 1401 թ. հուլիսի 30-ի հրովարտակով, երկրի մայրաքաղաք Սուչավայում հայերի համար հաստատվում է առանձին եպիսկոպոսական թեմ՝ Հովհաննես եպիսկոպոսի գլխավորությամբ։ Սրա իրավասության տակ են դրվում Մոլդովայի բոլոր հայ եկեղեցիները։ Նույն իշխանը 1408 թ. հոկտեմբերի 8-ի հրովարտակով Լվովի գերմանացի և հայ առևտրականներին առանձնաշնորհումներ է տալիս և պատասում մի շարք մաքսեր վճարելուց։ Իբրև հետևանք դրա, շատ հայեր Լեհաստանից անցնում են Մոլդովա և հաստատվում Սուչավա, Սիրետ և Չերնովից քաղաքներում։ Սակայն ամենամեծ ներգաղթը տեղի է ունենում 1418 թ., երբ 3000 հայ ընտանիք հրավիրվում է Մոլդովա և բնակություն հաստատում յոթ տարբեր քաղաքներում։

Հայերին Մոլդովա հրավիրելու քաղաքականությունը շարունակվել է նաև հետագա տարիներին։ 1453 թ. Կ. Պոլսի գրավման ժամանակ Բերայում հաստատված հայերը (որոնք ծագումով ղրիմեցիներ էին), տեղափոխվում են Մոլդովա։ 1475 թ. թուրքերի կողմից Ղրիմի գրավումը պատճառ է դառնում մեծ թվով հայերի արտագաղթին, որոնց մի մասը դարձյալ ապաստան է գտնում Մոլդովայի հյուրընկալ երկրում և հաստատվում Սուչավա, Յաշ, Բոտոշան, Ֆոկշան և Ռոման քաղաքներում, ուր հայերն արդեն ստվար թիվ էին կազմում։

Սակայն մոլդովահայ գաղթավայրի այս բարգավաճ վիճակը երկար չի տևում։ Հաջորդ տասնամյակներում տիրող անբարենպաստ պայմանների հետևանքով ստվար թվով հայեր հարկադրված են լինում հեռանալ այդ երկրից։ 1484 թ., երբ սուլթան Բայազիդը գրավեց Քիլիան և Աղքերմանը, այդ քաղաքներից մեծ թվով հայեր բռնի գաղթեցրեց Կ. Պոլիս, ուր նրանք Սուլումանասթիրում առանձին մի թաղամաս կազմեցին։ Ուշագրավ է, որ այդ դեպքերից 120 տարի անց Սիմեոն Լեհացին նրանց դեռևս «Աղքերմանցի» է

---

91 Տե՛ս «ԺԴ դարի ձեռագրերի հիշատակարաններ», էջ 529։

կոչում[92]։ 1497 թ., երբ Լեհաստանի Ալբերտ թագավորը իր զորքով պաշարեց Սուչավան, այստեղից շուրջ 700 հայ ընտանիք արտագաղթելով, անցավ Հունգարիա, Տրանսիլվանիա և Գալիցիա։

Մոլդովայում որոշակի առանձնաշնորհումներից օգտվող հայերի դրությունը վատացավ, երբ Շտեֆան Ռարեշ (1551—1552) իշխանը, հունադավան մոլեռանդ կղերի գործակցությամբ, 1551 թ. բռնությամբ փորձեց հայերին դավանափոխ անել։ Այդ դեպքերին ականատես տաղասաց Մինաս Թոխաթեցին, իր «Ողբ ի վերայ Օլախաց երկրին հայերուն» հայտնի երկում, ուշագրավ մանրամասնություններ է հաղորդում Սուչավայի, Սիրետի, Բոտոշանի, Յաշի, Խոտինի, Վասլույի և Ռոմանի հայկական եկեղեցիների քանդման, ձեռագիր մատյանների այրման, ժողովրդին խոշտանգելու, նրանցից ոմանց բռնի հունադավան դարձնելու մասին[93]։ Այս հալածանքի հետևանքով հայերի մի մասն ստիպված գաղթում է Լեհաստան ու Տրանսիլվանիա։ Կրոնական քողի տակ կատարված այս հալածանքը, իրականում հետապնդել է հարուստ հայերի և նրանց փարթամ եկեղեցիների ունեցվածքին տիրանալու նպատակ։ Շուտով, սակայն (XVI դ. կեսերին), փոխվում է հայերի նկատմամբ տարվող քաղաքականությունը և փախստական ու աքսորական հայերի մի մասը վերադառնում է Մոլդովա։ XVI դարի վերջին և հատկապես XVII դարի սկզբներին ինչպես Արևմտյան, այնպես էլ Արևելյան Հայաստանի բազմաթիվ շրջաններից մեծ թվով հայեր են արտագաղթում։ Նրանց մի մասը բնակություն է հաստատում Մոլդովայի հայաշատ կենտրոններում, նոր աշխույժ հաղորդելով նրանց կյանքին։ Մայր հայրենիքից կատարվող այս արտագաղթերը հետևանք էին 1598—1608 թթ. ջալալիների շարժման, 1604—1605 թթ. շահ Աբբասի արշավանքների ու բռնագաղթի և, վերջապես, Փոքր Ասիայում և Հայաստանում տիրող մեծ սովի և անապահով դրության։

Հայերը Մոլդովայում հիմնադրեցին նաև մի շարք գյուղեր և ավաններ։ Դրա լավագույն ապացույցն է «հայ» բառով կազմված մեծ թվով տեղանունների առկայությունը։ Դրանցից են Արմենեշտ (Հայկական) գյուղը՝ Սուչավայի գավառում, Սատուլ Արմեանուլույը (Հայի գյուղը)՝ Յաշի գավառում, Վալեա Արմեանուլույը (Հայի հովիտը)՝ Բոտոշանի գավառում, Դեալուլ Արմեանուլույը (Հայի բլուրը)՝ Դորոհոյի գավառում, Արմենեշտը (Հայկական)՝ Բըրլադ քաղաքի մոտ և այլն[94]։

XV—XVII դարերը ռումին որոշ գիտնականներ համարում են հայկական առևտրի տիրապետության շրջան, քանի որ Մոլդովայի ինչպես ներքին, այնպես էլ արտաքին առևտուրը կենտրոնացած էր հիմնականում հայերի ձեռքին։ Վ. Բըրըցեանուն նշում է, որ հայերը կարողացան օգտագործել մոլդովական քաղաքների աշխարհագրական նպաստավոր դիրքը. գտնվելով դեպի Լեհաստան և Ռուսաստան տանող միջազգային տարանցիկ ճանապարհների վրա, այդ քաղաքները (մասնավորապես Սուչավան) վերածվեցին կարևոր կենտրոնների։ Սև ծովի ավազանում և հատկապես Աղքերմանում հիշատակվում են հայ առևտրականների առագաստանավեր։ Մոլդովական

[92] Տե՛ս Սիմեոն Լեհացի, էջ 346։

[93] Տե՛ս Ղ. Ալիշան, Կամենից, էջ 20—27։

[94] Տե՛ս *Vlad Bănăţeanu*, Armenii în toponomia romnâească şi toponomice româneşti de origine armeană, „Studii şi cercetări lingvistice", Bucureşti, 1960, № 2, էջ 206—207։

նորաստեղծ քաղաքներով էին անցնում հայ առևտրականների քարավանները, որոնք հայտնի էին «Կարելև արմենեշտ», այսինքն՝ հայկական կառքեր կամ սայլեր անունով։ Ալեքսանդրու չել Բունի 1408 թ. հրովարտակում նշվում էր, որ Լվովցի հայ առևտրականները Չերնովիցում յուրաքանչյուր սայլ ապրանքի դիմաց պետք է վճարեն 6 գրոշ մաքս։ Նրանք Վալաքիայից և Բրաշովից բերում էին մեղրամոմ, Հունգարիայից՝ սամույր, այլ վայրերից՝ կտավ, գորգեր, մետաքս, պղպեղ, խունկ, հունական գինի, իսկ Մոլդովայից տանում էին ոչխար, խոզ, ձի, սկյուռ, աղվես, ոչխարի մորթի։ Հայերը Արևմուտքից Արևելք, այսինքն Գերմանիայից մինչև Հնդկաստան էին տանում կերպասներ և մետաղ։ Ներմուծում էին պերճանքի զանազան ապրանքներ, ասեղնագործված իրեր, թանկագին քարերով զարդարված զենքեր։ Հայերը սկզբում այդ բոլորը Արևմուտքում էին գնում, իսկ հետագայում տեղում սկսեցին կազմակերպել որոշ ապրանքների արտադրանքը։ Նրանք XVI դարում հացահատիկ և մոլդովական գինի էին տանում դեպի Ռուսաստան և Լեհաստան, իսկ մեղրամոմ, մեղր, միս, յուղ՝ Կ. Պոլիս։ Հայերը Կրետեից Լեհաստան էին ներմուծում բարձրորակ գինիներ, իսկ Լեհաստանից Մոլդովա էին բերում թուղթ և այլն։

Հայերը առևտրական նպատակով զբաղվում էին նաև անասնաբուծությամբ, որի համար կապալով վերցնում էին ընդարձակ արոտավայրեր։ Իրենց աճեցրած գեղեցիկ ու դիմացկուն ձիերը վաճառահանում էին ինչպես տեղում, այնպես էլ երկրից դուրս՝ Ավստրիայում, Պրուսիայում և այլ երկրներում։

Մոլդովայի հայերը կարևոր դեր են կատարել նաև արհեստագործության ասպարեզում։ Այսպես, օրինակ, Յաշում ապրող 600 հայ ընտանիքներ զբաղեցնում էին մի քանի փողոցներ, ուր և ունեին իրենց արհեստանոցները։ Հայ արհեստավորներն զբաղվում էին մուշտակագործությամբ, վերմակագործությամբ, դերձակությամբ, կոշկակարությամբ, արծաթագործությամբ, հրուշակագործությամբ և այլն։ Քաղաքում շատ հարգի էին հայ կանանց պատրաստած ասեղնագործական և ժանյակագործական իրերը։ Բոտոշան քաղաքի բրեսլաները (այսինքն՝ համքարությունները) գրեթե ամբողջությամբ գտնվում էին հայերի ձեռքում։ Շատ հայ արհեստավորներ կային նաև Սուչավայում, Ռոմանում և հայաբնակ մյուս կենտրոններում։ Մեծ հռչակ ունեին մանավանդ հայ կաշեգործները. Նրանք ներքին և արտաքին շուկաների համար տարբեր գույնի բարձրորակ կաշիներ էին պատրաստում։

Մոլդովահայերն ունեցել են ինքնավարական նկատելի առանձնաշնորհումներ, իրենց ազգային եկեղեցին ունենալու և դավանանքին հետևելու արտոնություն։

Սկսած 1401 թ. մինչև 1686 թ հայերը երկրի մայրաքաղաք Սուչավայում և մասամբ Յաշում (որը 1565 թ. դարձավ երկրի մայրաքաղաքը) ունեցել են իրենց հոգևոր առաջնորդները, որոնց իրավասության տակ էին գտնվում երկրի հայկական բոլոր եկեղեցիներն ու հոգևոր պաշտոնները։ Հայկական եպիսկոպոսությունն այստեղ վերացել է 1686 թ., երբ նրանց վերջին եպիսկոպոսը՝ Մինաս Ջիլիֆտար Օղլուն, երկրում տիրող ծանր պայմաններից խույս տալով անցավ Տրանսիլվանիա, ուր գաղթել էր մոլդովահայության զգալի մասը։

Միջնադարյան Մոլդովայի հայերի կյանքում մեծ ժողովրդականություն են վայելել «կտրիճների եղբայրությունները»։ Նման եղբայրություններ դարեր շարունակ գործել են հայկական գրեթե բոլոր կարևոր գաղթօջախներում, ինչ-

պես Սուչավայում, Սիրետում, Յաշում, Բոտոշանում, Ռոմանում, Բակըույում և այլ վայրերում։

Մոլդովահայության խոշորագույն կենտրոն Սուչավայում հայերն ունեին իրենց առանձին քաղաքագլուխը, որը հաճախ է հիշատակվում իշխանական հրովարտակներում։ Նրանք ունեին նաև իրենց դատարանները և լեհահայերի նման, ամենայն հավանականությամբ, առաջնորդվում էին հայկական դատաստանագրքով։ Պատահական չէ, որ հիշյալ դատաստանագրքի մի քանի ձեռագրեր են մեզ հասել նաև Մոլդովայի հայաշատ կենտրոններից։ Հայկական դատարանը գլխավորում էր քաղաքագլուխը կամ վոյթը։ Քաղաքագլուխներից Սուչավայում հիշվում են Սերգիսը (XV դ.), Ծուռ Դիթակը (XVI դ.), Նորգոն, Խաչիկը, Թոադերը, Կյուրեղը և այլք (XVII դ.)։ Հայ քաղաքագլուխներ կային նաև Սիրետում, Վասլույում, Յաշում, հավանաբար նաև այլ քաղաքներում։

Մոլդովահայերը քաջաբար մարտնչել են իրենց նոր հայրենիքի թշնամիների, մասնավորապես թուրք զավթիչների դեմ։ Շտեֆան չել Մարեի գլխավորությամբ 1476 թ. թուրքերի դեմ մղված Վալեա Ալբըյի ճակատամարտի մասնակիցների թվում հիշվում են հայ զինվորներ, մասնավորապես թնդանոթաձիգներ։ Ինչպես հայտնի է այդ կռվում թուրքերը մեծ կորուստներ կրեցին և ետ շպրտվեցին։ Հայ զինվորները մասնակցել են նաև այլ մարտերի։

Երկրի քաղաքական կյանքում նույնպես նշանակալից դեր կատարեցին մոլդովահայ գործիչները։ XVI դարի երկրորդ հիսնամյակում Մոլդովայի իշխանությունն անցավ Սերպեկա կոչվող հայազգի դերդաստանին, որի ամենանշանավոր ներկայացուցիչը Յոան չել Կումպլիտը (ահարկու կամ անգութ) կամ Յոան Արմեանուլ (Յոան Հայ) էր։ Սա իշխեց 1572—1574 թթ. և դարձավ Մոլդովայի նշանավոր իշխաններից մեկը։ Հայազգի այդ իշխանը նպատակ էր դրել ռուսական, ուկրաինական, լեհական, մոլդովական և վալաքական միավորված ուժերով ամուր պատնեշ կանգնեցնել թուրքական առաջխաղացման դեմ և Մոլդովայի վրայից թոթափել թուրքական ծանր լուծը։ Նրան անգութ կոչեցին երկրի կենտրոնախույս ազնվականները, քանի որ իշխանը նրանց դեմ գործում էր կտրուկ միջոցներով։ Աշխատավոր զանգվածները, սակայն, զորավիգ էին կանգնած նրա ձեռնարկումներին և սիրով կոչում էին նրան՝ Մոլդովայի հայր։ Նա ականավոր ռազմագետ զորավար էր և մոլդովական ու կազակական ուժերով թուրքերի դեմ հաղթանակներ տանելուց հետո, անհավասար կռվում ընկավ հերոսի մահով։ 1577 և 1578 թթ. Մոլդովայի իշխանական գահին տիրացան Յոան Արմեանուլի երկու եղբայրները՝ Կարապետ Յոան Պոտկոավըն և Ալեքսանդր Սերպեկան. նրանք ևս զոհվեցին հերոսաբար։ 1592 թ. կարճ ժամանակով Մոլդովայի իշխան դարձավ Պետրու Կազակուլը՝ Ալեքսանդր Սերպեկայի որդին, իսկ նրա գործակիցն ու մտերիմն էր մի այլ հայազգի գործիչ՝ Ավագ Մաթիսովիչը։ Մոլդովայի իշխանական գահի հավակնորդների շարքում հիշատակվում են նաև Սերպեկա հայազգի ընտանիքից՝ Կոստանդինը, ինչպես նաև Լազար Սերպեկան, որոնք 1578 և 1591 թթ. իշխանական գահին տիրանալու անհաջող փորձ կատարեցին։

Բազմաթիվ են մոլդովական իշխանների կողմից իբրև դիվանագետ-խորհրդական, թարգման և այլ բարձրաստիճան պաշտոնների առաջ քաշված հայազգի գործիչները։ Դրանցից է Շտեֆան չել Մարե իշխանի թարգմանն ու խորհրդականը։

Մոլդովայի իշխան Պետրոս Ռարեշի օրոք (1541) հիշվում է հայազգի Պետրոս Վարդիկը, որը իշխանի ամենամոտ խորհրդականներից էր և որին ազնվականության աստիճան տրվեց։ Սա դարձավ նաև Սուչավայի հետման (զորքերի ընդհանուր հրամանատար) և բերդապահ։ Պահպանվել է վերջինիս նամակը Տրանսիլվանիայի վոյեվոդին, որի մեջ նա գրում է, թե հասել է ամբողջ քրիստոնյա աշխարհը թուրքերից ազատագրելու համար համախմբվելու ժամանակը։ Վերջինիս որդի Յուրաշկո Վարդիկովիչը 1580 թ. հիշվում է իբրև Յանկու Սասու իշխանի խորհրդական։ Հետագայում նրա սերնդից Թեոդորաշկո Վարդիկովիչը նշանակվում է Սորոկայի բերդի պարետ։

Հայերը գործուն մասնակցություն են ունեցել Դուկա իշխանի (XVII դ.) հարկային դաժան քաղաքականության դեմ ծավալված ժողովրդական շարժմանը, որի պարտությունից հետո ենթարկվել են ծանր հալածանքների։ Շուրջ 3000 հայ ընտանիքներ ստիպված լքել են մոլդովական հողը՝ ժամանակավոր ապաստան գտնելով Կարպատյան լեռներում։ Հետագայում նրանք անցան Տրանսիլվանիա, վերակենդանացնելով այնտեղ արդեն գոյություն ունեցող հայկական գաղթավայրը։ Այս մեծ արտագաղթից մոլդովահայ կենտրոնները խիստ թուլացան, սակայն շարունակեցին իրենց գոյությունը։ Չնայած անվերջ պատերազմներին, սովին, իրար հաջորդող գահակալական պայքարին, հայերն, այնուամենայնիվ, վերակազմակերպում են իրենց նոսրացած գաղթավայրերը։ Հայերի թվի հետագա ստվարացմանը նպաստում են մի շարք իշխանների կողմից նրանց տրված արտոնությունները։ 1693 թ. միայն Սուչավայում բնակվում էին շուրջ 3000-ի չափ հայեր։

Հարկ է նշել, որ ուժեղ դիմադրության են հանդիպել և ապարդյուն անցել զանազան պատրվակներով մոլդովահայերին կաթոլիկացնելու բոլոր փորձերը։ Իսկ երբ Նիկոլ Թորոսովիչի գլխավորությամբ լայն ծավալ ստացավ լեհահայերի բռնի կաթոլիկացումը, հայրենի ավանդույթներին հավատարիմ բազմաթիվ հայեր ապաստան գտան Մոլդովայի հայկական կենտրոններում։

XVIII դարի վերջին, մասնավորապես 1787—1792 թթ. ռուս-թուրքական պատերազմի տարիներին մոլդովահայ գաղթավայրերը զգալի կորուստներ ունեցան։ Ծանր վիճակի մեջ ընկան, մանավանդ, Քիլիայի, Իզմայիլի, Աղքերմանի, Բենդերի (Տիգինա) և Ղովշանի հայերը։

Ռուսահայոց հոգևոր առաջնորդ Հովսեփ արքեպիսկոպոս Արղությանը, որ այդ ժամանակ գտնվում էր Մոլդովայում, Նոր Նախիջևանի ս. Խաչ վանքը սովորելու ուղարկեց որբ մնացած 30 պատանիների, իսկ շուրջ 4000 աղետյալների տեղափոխեց Դուբասար, որտեղից էլ 1792 թ.՝ իր իսկ հիմնադրած Գրիգորիոպոլ հայկական նոր քաղաքը։ Այդ մեծ գաղթից հետո Աղքերմանում և ավելի ուշ նաև Իզմայիլում մնացին փոքրաթիվ հայ ընտանիքներ։

Մոլդովայի հայերը աշխատել են միշտ սերտ կապեր պահպանել հեռավոր հայրենիքի հետ։ Պայքարելով թուրքական զավթիչների դեմ, մոլդովահայերը հավատում էին, որ Մոլդովայի ազատագրումից հետո օրակարգի հարց է դառնալու նաև իրենց հայրենիքի անկախության վերականգնումը։

Նրանք սերտ կապերի մեջ էին նաև Նվզոկիայի, Երուսաղեմի, Մուշի, էջմիածնի, ինչպես նաև Ղրիմի, Լվովի, Կ. Պոլսի, Տրանսիլվանիայի և այլ հայաշատ կենտրոնների հետ։ Մոլդովայի հայերն էին, որ սատարեցին Լեհաստանի Սնյատին (1628), Ստանիսլավ (1670), Կուտի և այլ քաղաքների հիմնադրմանը։ Սուչավայի հայ վաճառականները Կամենիցում և Լվովում

նպաստեցին հայկական եկեղեցիների և դպրոցների շինությանը, ինչպես նաև հիմնեցին հիվանդանոց։

Մոլդովահայերն իրենց նպաստն են բերել հայկական մշակույթի զարգացմանը։ Սուչավայի մոտ գտնվող Զամկայի վանքում հայերն ունեցել են միջնադարյան վանական դպրոց։ Յաշ քաղաքում դպրոց լինելու մասին վկայություն է պահպանվել 1646 թ.։ Բոտոշանը ևս ունեցել է իր դպրոցը։ Այդպիսի դպրոցներ, անշուշտ, եղած պիտի լինեն նաև մյուս հայաշատ բնակավայրերում։

Մոլդովական հողում ստեղծագործել են հայ միջնադարյան բանաստեղծության մի շարք անվանի դեմքեր. Մինաս Թոխաթեցին 1551 թ. Սուչավայում շարադրեց իր նշանավոր ողբը՝ նվիրված հայերի հալածանքին։ 1593—1595 թթ. Յաշում տեղի ունեցած պատմական իրադարձությունների մասին ողբ է հորինել Հակոբ Թոխաթեցին։ Այս ստեղծագործությունները արժեքավոր սկզբնաղբյուրներ են նաև Մոլդովայի քաղաքական կյանքի պատմության համար։ Սուչավայում է ստեղծագործել Վրթանես Սոնկեցի տաղասացը, որը 1557 թ. այնտեղից չափածո նամակներ է գրել Լվովում ապրող իր դասընկեր Գրիգոր Վարագեցուն։ Այստեղ ստեղծվել են նաև աղբյուրագիտական բնույթի գործեր։ Հովհաննես Ավագերեցի, նրա որդու և թոռների կողմից Կամենիցում շարադրված տարեգրության մեջ Մոլդովայի քաղաքական կյանքի և հայկական գաղթավայրերի մասին առկա են հարուստ տվյալներ։ Տարեգրության հեղինակներն, անտարակույս, աշխատակիցներ են ունեցել Մոլդովայի հայաշատ կենտրոններում, որոնցից ճշգրիտ և մանրամասն տվյալներ են ստացել երկրի կյանքի վերաբերյալ։

1608 թ. Սիմեոն Լեհացին եղել է Մոլդովայում և իր «Ուղեգրության» մեջ անդրադարձել է Մոլդովայի հայաշատ կենտրոններին։ Ավելի ուշ այստեղ է գտնվել հոգևոր գործիչ և գիտնական Գրիգոր Կեսարացին։

Մոլդովահայերը շինարարական կարևոր աշխատանքներ են կատարել. կառուցել են մի քանի տասնյակ եկեղեցիներ և վանքեր։ Այս առումով առաջնակարգ տեղ է գրավում Սուչավան, ուր կառուցվել են շուրջ տասը եկեղեցական-վանական շինություններ։ Նրանցից հայտնի է Զամկայի վանքը՝ XV դարի սկզբի մի հուշարձան, որ վերանորոգվել է XVII դարի սկզբին, ունի նաև որմնանկարների մնացորդներ։ Նշանավոր ուխտատեղի է եղել Հաճկատարի վանքը՝ կառուցված 1512 թ.։ Յաշը ունեցել է երկու տաճար, որոնցից մեկը՝ 1395 թ. կառուցված, կանգուն է այժմ։ Աղքերմանն ու Բոտոշանը ունեցել են չորսական եկեղեցիներ։ Հայկական եկեղեցիներ են կառուցվել նաև Խոտին, Ռոման, Ֆոկշան, Գալաց, Օրհեյ, Իզմայիլ և այլ քաղաքներում։ Ուշագրավ են նաև հայերի քանդակազարդ գերեզմանաքարերը, որոնցից հնագույնը գտնվում է Սուչավայի ս. Խաչ եկեղեցում և ունի 1428 թ. արձանագրություն։ Մոլդովահայերն ունեցել են նաև իրենց երգերն ու պարերը։ Մոլդավական երկու պարեղանակներ, որոնք կրում են «Արմենեասկա» և «Բըլըրըեասկա» անունները, ռումինացի գիտնականների կարծիքով վերցված են հայերից։

Երկար տարիների համակեցությունը հայերի և ռումինացիների միջև փոխազդեցության հետքեր է թողել նաև նրանց արվեստի տարբեր ճյուղերում։ Ռումինացի գիտնականներն անդրադարձել են հայ ճարտարապետության և մասնավորապես հայ քանդակագործության թողած ազդեցություններին մոլդովական միջնադարյան հուշարձանների վրա։ Հայկական ազդեցություն է

նկատվում XVI—XVII դարերում կառուցված մոլդովական եկեղեցիների մի մասի սրածայր գմբեթների վրա և հատկապես նրանց արտաքին զարդաքանդակներում։ Եթե 1609 թ. Սուչավայի գավառում կառուցված Դրագոմիրնայի եկեղեցու միայն գմբեթն ուներ հայկական քանդակագործության հետքեր, ապա 1639 թ. Յաշում կառուցված Տրեյ Երարհի եկեղեցին իր արտաքին բոլոր մասերի վրա ունի հայկական ծագում ունեցող քանդակազարդեր։ Ուշագրավ է նաև, որ հայերն իրենց տաճարների մեծ մասը կառուցել են մոլդովական և ռուսական ոճով։

Ռումինացի գիտնականները հայկական ազդեցություն են նկատում նաև մոլդովական աշխարհիկ կառուցումների, այդ թվում բերդերի վրա։ Աղքերմանի բերդի (կառուցված շուրջ 1440 թ.) մի սալի եզրաքանդակները առնչվում են Սանահնի գլխավոր եկեղեցու զարդերի հետ[95]։

* *
*

Մի շարք տվյալներից երևում է, որ Վալաքիան հայերին պետք է ծանոթ լիներ, ամենայն հավանականությամբ, XIII դարի վերջերից։ Այսուհանդերձ, անվիճելի է, որ Հայաստանից և Ղրիմից գաղթած հայերն իրենց բնակավայրերը սկսեցին հաստատել այնտեղ XIV դարի երկրորդ կեսից, այսինքն՝ մոտավորապես այն ժամանակներից, երբ Մոլդովայում ևս հայերն ունեին իրենց գաղթօջախները։

XIV դարից հետո հայերի նորանոր գաղթեր են տեղի ունենում դեպի Վալաքիա։ 1453 թ., երբ Կ. Պոլիսն ընկավ թուրքերի ձեռքը, Բերայի հայերի մի մասն անցավ Դանուբյան երկրներ, այդ թվում նաև Վալաքիա։ 1475 թ. թուրք-թաթարական ասպատակողների կողմից Ղրիմի գրավումը նույնպես բազմաթիվ հայերի ոչ միայն Մոլդովա, այլ նաև Վալաքիա գաղթելու պատճառ դարձավ։

XVI—XVII դարերում Հայաստանում տեղի ունեցած և նախորդ էջերում բազմիցս հիշատակված քաղաքական իրադարձությունները պատճառ հանդիսացան, որ Արևմտյան և Արևելյան Հայաստանից գաղթականներ հասնեն նաև Վալաքիայի հյուրընկալ ափերը։ Հատկանշական է, որ Լեհաստանի հայերին կաթոլիկացնելուց հետո Նիկոլ Թորոսովիչն ու նրա հաջորդներն իրենց կոչում էին նաև Վալաքիայի և Մոլդովայի հայերի առաջնորդ։ Դրանից կարելի է հետևցնել, որ այդ ժամանակաշրջանում արդեն հայերը Վալաքիայում ունեին իրենց կենտրոններն ու եկեղեցիները։

Վալաքիայում նույնպես հիշվում են արմեն (հայ) անունով կազմված մի շարք տեղանուններ։ Դրանցից են Սըրատի գավառում՝ Արմենի (Հայեր) և Օդայա արմենիլոր (Հայերի մարգ), Յալոմիցիայի շրջանում՝ Արմենեշտ (Հայկական) և այլ վայրերը։ Վալաքիայի հայերի հնագույն կենտրոններն էին Արճեշը, Սլաթինան և Արևֆուն։ Այդ բնակավայրերը տվեցին հայազգի մի շարք դիվանագետներ և պետական բարձրաստիճան գործիչներ։ Հայտնի դեմքեր էին Հակոբ Արմեանուլը (Հակոբ Հայը), որը երկրի Միհայիլ իշխանի պատվիրակն էր, Սահակի որդի Ռադուն, որն իբրև խորհրդական հիշվում է Վալաքիայի իշխան Ռադու II-ի ժամանակ (երկուսն էլ XV դարի սկզբներից) և ուրիշներ։

[95] Տե՛ս V. Vătăşianu, Istoria artei feudale în ţările române. vol. I. Bucureşti. 1959, էջ 297 (և ծանոթագր.)։

Վալախիայի հայերի հնագույն կենտրոններից մեկը՝ Տրգովիշտեն, 1430—1660 թթ. երկրի մայրաքաղաքն էր։ XVI դարի վերջում մի ուղևոր հաղորդում է, որ Տրգովիշտեում հայերը թվով շատ են և ունևոր։

Դեռևս 1400—1435 թթ. այլազգի բնակիչների թվում հայեր են հիշատակվում նաև Բուխարեստում։ Ուշագրավ է, որ Բուխարեստի հիմնադրման մասին պահպանվել է նաև հայկական մի ավանդություն, որը հուշեր է պարունակում այդ քաղաքի զարգացման գործին հայերի մասնակցության մասին։

Բուխարեստում հաստատված լուսավորչական և կաթոլիկ հայերը 1581 թ. սկսեցին կառուցել իրենց փոքրիկ եկեղեցին, որն ավարտվեց 1629 թ. և կոչվեց Բըրըցիա (Եղբայրություն)։ Քաղաքի այն մասը, ուր հաստատվել էին հայերն ու կառուցել իրենց եկեղեցին՝ ստացավ Կարտիեր արմենեսկ (Հայկական թաղամաս) անունը։ Սակայն այդ եկեղեցին շուտով պապի հովանավորության տակ անցավ, իսկ լուսավորչական հայերըստիպված եղան հեռանալ և քաղաքի այն ժամանակվա ծայրամասում կառուցեցին փայտածածկ մի նոր եկեղեցի (1638 թ.), որը հետագայում վերակառուցվեց քարաշենի։ Եկեղեցու կից փողոցը, ուր հաստատվել էին հայերը, կոչվեց Հայկական փողոց։ Հայերը բնակվում էին նաև Բուխարեստի այլ թաղամասերում։

Բուխարեստի հայերը հիմնականում զբաղվում էին արհեստագործությամբ և առևտրով։ Թուրք ճանապարհորդ Էվլիա Չելեբին, որը 1665 թ. անցել է Բուխարեստից, հայտնում է, որ ռումինացիները սիրալիր վերաբերմունք են տածում հայերի նկատմամբ։

Բուխարեստի հայ արհեստավորների մասին եղած ցաք ու ցրիվ տեղեկությունների համադրումով կարելի է եզրակացնել, որ այնտեղ եղել են բազմաթիվ դերձակներ, հացագործներ, շինարար վարպետներ և այլ արհեստավորներ։ Դերձակները և հացագործները ունեցել են իրենց համքարությունները, որոնց կանոնագրությունները հաստատվել են երկրի իշխանի կողմից։ 1791 թ. Ալեքսանդրու Շուցու իշխանը վերահաստատել է հայերի «բրեսլայի» (համքարության) կանոնադրությունը և իր նախորդների կողմից տրված հրովարտակների օրինակով ինքը ևս հանձնարարել է հայ առևտրականներին՝ հնազանդ լինել իրենց ղեկավարներին[96]։ XIX դարի սկզբին Բուխարեստում կար 120 տուն հայ։ Բուխարեստից բացի հայկական փոքր համայնքներ կային նաև Վալախիայի այլ քաղաքներում։

Օլտենիայի նահանգում ևս հայերը շատ վաղ ժամանակներից պետք է հաստատված լինեին։ Այդ մասին են վկայում Արմեան (Հայ) անունից կազմված տեղանունների առկայությունը նաև այստեղ։ Դրանցից են Ռըմնիկուլ Վըլչեա գավառում՝ Արմեանուլ (Հայ) գյուղը, նույն գավառի Մըլայայի բարձունքում գտնվող Պիսկուլ Արմեանուլույ (Հայի Կատար) բնակավայրը և այլն։ Դեռևս XIV դարի վերջում այստեղ կառուցված Կոզիայի և Տիսմանայի նշանավոր ռումինական վանքերի վրա առկա է հայ ճարտարապետության ազդեցությունը։ Օլտենիայի մայրաքաղաք Կրայովայում նույնպես XVIII դարի սկզբներին գոյություն է ունեցել հայկական մի գաղթօջախ։

Դոբրուջա նահանգը ևս անծանոթ չէր հայերին։ Բաբագաղում հայերը հիշվում են 1500 թ.։ XVII դարի սկզբին արդեն այստեղի հայերն ունեին իրենց

---

[96] Տե՛ս Ս. Քոլանջյան, Բուխարեստի հայոց անցյալն ու ներկան, «Էջմիածին», 1950, № 7—8, էջ 62—63։

Ռեզեցին, ուր և 1649 թ. ձեռագրի մի հիշատակարան է շարադրվել։ 1679 թ., մոտ կես տարի՝ իր մարդկանցով այստեղ և Սիլիստրայում է հաստատվել ու ստեղծագործել բանաստեղծ Մարտիրոս Ղրիմեցին։ 1675 թ. Կ. Պոլսում մի ձեռագիր Հայսմավուրք է գրվել Բաբադաղի Վարագա ս. Խաչ եկեղեցու համար։ XIX դարի սկզբին այստեղի հայերի թիվը հասնում էր 40 ընտանիքի։ Սիլիստրայում հայերը հաստատվել են XVI դարի վերջից, որոնք 1630 թ. արդեն ունեին եկեղեցի։ XIX դարի սկզբին 20 տուն հայ էր մնացել այնտեղ։ XVII դարում հայեր էին ապրում նաև Իսակչայում, իսկ հաջորդ դարում՝ նաև Բազարճըկում և Կոնստանցայում։

Հայերի թիվը XVIII դարում չնայած պակասել էր, սակայն այդուհանդերձ վերոհիշյալ երեք նահանգներում ապրում էին շուրջ 3000—4000 հայեր, Վալաքիայում՝ 1500—2000, Դոբրուջայում՝ 1000, իսկ Օլտենիայում՝ մոտավորապես 500—1000։

Ստեղծելով գաղթօջախներ Վալաքիայում, Օլտենիայում և Դոբրուջայում, հայերը մասնակցել են նաև երկրի տնտեսական, քաղաքական և մշակութային կյանքին։ Մի քանի հայ գործիչներ մասնակցել են Վալաքիայի իշխանների պայքարին՝ ընդդեմ սուլթանական Թուրքիայի, համոզված լինելով, որ այդ պայքարը նպաստ է բերելու նաև հայ ժողովրդի ազատագրությանը։ Պետրոս Գրիգորովիչ հայը, իբրև դիվանագիտական գործակալ և զինվորական գործիչ, բազմիցս մասնակցել է Թուրքերի դեմ մղված ճակատամարտերին։ Սրա նպատակն էր Օսմանյան կայսրության դեմ Հարավային և Արևելյան Եվրոպայի պետությունների ու Պարսկաստանի միասնական դաշինքի ստեղծումը։ 1609 թ. Ավստրիայի կայսրը պարսից շահի մոտ է ուղարկում Պետրոս Գրիգորովիչի եղբայր Հովսեփ Գրիգորովիչին։ Թուրքիայի դեմ միասնական ճակատ ստեղծելու հարցի շուրջ բանակցություններ վարելու հանձնարարությամբ, Իրանից Պրագա է հասնում Հայոց կաթողիկոսի մերձավորներից՝ Դավիթ Արքեպիսկոպոսը[97]։

Վալաքիայի հայերի մշակութային կյանքին վերաբերող մեզ հասած տեղեկությունները շատ կցկտուր են։ Վալաքիայում հայերի կողմից կառուցված շինություններից կանգուն է մնացել միայն Ֆոկշանի հայոց ս. Գևորգ եկեղեցին (հիմնականում ռումինական ճարտարապետության ոճով), որի կառուցումը ենթադրվում է 1600 թվականին։ Տըրգովիշտեի հայկական տաճարի հետքն իսկ չի երևում։ Մեզ ոչինչ հայտնի չէ նաև Բուխարեստի հնագույն հայկական եկեղեցու մասին։ Գիտենք միայն, որ 1781 թ. վերստին կառուցված եկեղեցին ևս (քանդվել է 1910 թ.) ռումինական ոճ է ունեցել։

Անհամեմատ մեծ են հայ ճարտարապետության և քանդակագործության հետքերը Վալաքիայի և Օլտենիայի ռումինական մի քանի նշանավոր հուշարձանների վրա։ Ռումինացի գիտնականներ Գևորգե Բալշն ու Ն. Գիկա-Բուդեշտը, մանրազնին ուսումնասիրելով վերոհիշյալ նահանգների պատմական հուշարձանները, հանգել են այն եզրակացության, որ հայկական արվեստի ազդեցությունն ի հայտ է եկել դարերի ընթացքում, սկսած XIV մինչև XVII դարը։ Հայ արվեստի ամենամեծ ազդեցությունը նրանք տեսնում են Վալաքիայի ճարտարապետության փառքը կազմող Արճեշի հռչակավոր վանքի վրա։ Նրանց

---

[97] Տե՛ս *N. Iorga*, Armenii si romănii, o paralelă istorică (Academia Română, Grigorie M. Buluciiu), București, 1914, էջ 66։

կարծիքով 1515—1517 թթ. Նեագոյե Բասարաբ իշխանը միայն վերականգնել է այնտ Կառուցման հետ կապված Մանոլե (Մանուել) ճարտարապետի ավանդությունը, ըստ Թ. Թորամանյանի, պետք է որ Հայաստանից բերված լիներ. նա հիշատակում է այդ առասպելի հայկական տարբերակը։ Բալշը և ուրիշներ գտնում են, որ այդ հուշարձանի զարդաքանդակներից շատերը հայկական արվեստի կնիքն ունեն, ուստի, եզրակացնում են նրանք, Մանոլե ճարտարապետը հավանաբար հայ է եղել։ Պ. Կոստանտինեսկու-Յաշը ուշադրություն է դարձրել այն հանգամանքի վրա, որ Արճեշի եկեղեցու արևելյան մասում գտնվող երկու փոքր շինությունները կատարելապես նման են Անիի Ապուղամրենց, ս. Գրիգոր և ս. Փրկիչ եկեղեցիներին։ Նկատի ունենալով նաև Արճեշի եկեղեցու վրա երևացող հայ արվեստի ազդեցությունները, նա գտնում է, որ հիշյալ շինությունների կառուցողը Հայաստանից եկած պետք է լինի[98]։

Ռումինացի մեծանուն գիտնական Բ. Պ. Հաժդեուն դեռևս 1888 թ. էր այն եզրակացության, որ Վանա լճի մոտ գտնվող հայկական Արճեշից գաղթած հայերն են, որ հաստատվելով Վալաքիայում իրենց ծննդավայրի անունով կառուցել են Արճեշի վանքը և նույն անունը տվել նաև նրա մոտ գտնվող գետին ու քաղաքին։ Հայաստանի Արճեշից դեպի ռումինական Արճեշի մոտերը կատարված գաղթի մասին որոշակի տեղեկություն է պահպանվել 1370 թ. ձեռագիր մի հիշատակարանում։

---

[98] Տե՛ս P. Constantinescu-Iași, Relațiile culturale romîno ruse din trecut, București, 1954, էջ 93։

ԴԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ

# ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԳԱՂԹԱՎԱՅՐԵՐԸ

## 1. ՌՈՒՍԱՀԱՅ ԳԱՂԹԱՎԱՅՐԵՐԻ ՍԿԶԲՆԱՎՈՐՈՒՄԸ

*Հայ-ռուսական առնչությունները, որոնք սկզբնավորվել են դեռևս IX դարից, հաջորդ դարերի ընթացքում ավելի են ընդարձակվում ու խորանում։*

*Վոլգայի հուշակավոր դելտան Իթիլ քաղաքով Հյուսիսի լայն բացված դարպասն էր, ուր դեռ վաղնջական ժամանակներից մուտք էին գործում հայ, արաբ և արևելյան այլ վաճառականներ, շփվում ռուս, բուլղար, խազար բնակիչների հետ, տարբեր երթուղիներով գնում հեռուներ և շարունակում իրենց առևտուրը այլ վայրերում։ Վոլգյան ճանապարհից էին օգտվում Հայաստանի, Վրաստանի և Աղվանքի հայերը[1], որոնք, շարժվելով Մեծ գետի միջին հոսանքով դեպի վեր, հասնում էին Վոլգա-Կամյան բուլղարների թագավորության նշանավոր մայրաքաղաք Մեծ Բուլղար։ Այստեղ, ինչպես պարզվեց հատկապես վերջին տասնամյակներում Ա. Պ. Սմիրնովի կատարած պեղումներից, ստեղծվել և մինչև XIV դարը իր գոյությունը պահպանել էր հայկական մի գաղթօջախ[2]։*

*Այս վայրերում հայտնաբերվել են հայկական արձանագրություններով տապանաքարեր, որոնցից հնագույնը կրում է 1318 թվականը։ Այդ գերեզմանների պեղումներից ստացված նյութերի ուսումնասիրությունը պրոֆ. Սմիրնովին բերել է այն եզրակացության, որ Մեծ Բուլղարի հայկական գաղութն ունեցել է նաև իր եկեղեցին։*

*Թաթարական ասպատակությունների հետևանքով XIII—XIV դարերում Իթիլն ու Մեծ Բուլղարը աստիճանաբար կորցնում են իրենց նշանակությունը, 1240-ական թվականներից ապրանքափոխանակության կենտրոն է դառնում Ոսկե Հորդայի մայրաքաղաք Սարայը, ապա Նոր Սարայը՝ Սարայ-Բերկեն։ XIII դարում հայերի զանգվածային տեղաշարժ է եղել դեպի Ստորին Վոլգա, Աստրախան, որտեղ նրանք հաստատվել ու բնակվել են տասնյակ տարիներ, իսկ հետագայում անցել են Ղրիմ։ Ուշագրավ է 1319 թ. Սարայում գրված մի հիշատակարան, որի հեղինակը գանգատվում է գրչի համար անբարենպաստ, ցրտաշունչ եղանակից[3]։ Աստրախանում և հարևան վայրերում հայերի բնակու-*

---

1 Տե՛ս *Г. Г. Микаелян,* История Киликийского армянского государства, էջ 368։

2 Տե՛ս *А. П. Смирнов,* Волжские булгары, М., 1954, էջ 185—195։

3 Տե՛ս *«ԺԴ դարի ձեռագրերի հիշատակարաններ», էջ 155—156։*

թյան մասին է վկայում նաև ռուսական տարեգրությունը։ Այսպես, 1346 թ. ուժեղ համաճարակ է եղել Սարայում, Աստրախանում, որտեղ մեռել են «մուսուլմաններ, թաթարներ և հայեր»[4]։

Հայեր եղել են նաև Ազովում։ Գրիգոր քահանան իր 1341 թ. գրած հիշատակարանում նշում է. «Գրեցաւ գիրքս... ի քաղաքս յԱզախս, առ դրան սուրբ Լուսաւորչին...»։ Մի չափածո հիշատակարանի հեղինակ Ազովն անվանում է աննման քաղաք, ուր նա գնացել էր Կաֆայից։ Այն փաստը, որ այդ քաղաքում վաճառվել է հայերեն մի ավետարան[5], հիմք է տալիս խոսելու ոչ միայն այդտեղ մշտական հայ բնակչության գոյության, այլև Ազովի, Կաֆայի ու վոլգյան քաղաքների հայերի միջև մշակութային ու տնտեսական կապերի առկայության մասին։

Վոլգա-Դոնյան առևտրին մասնակցում էին հայ և ռուս վաճառականներ, որոնք աշխույժ գործարքներ էին կատարում Նիժնի Նովգորոդում, Կազանում, հավանաբար նաև Մոսկվայում[6]։

Ինչպես հաղորդում է ռուսական տարեգրություններից մեկը, 1368 թ. ուշկույնիկները կոտորել են «բուսուրմանն» և հայ վաճառականներին ու թալանել նրանց «անթիվ ապրանքները»[7]։ Մոսկվայի մեծացման ու հզորացման զուգընթաց հաճախակի են դառնում հայերի այցելությունները ինչպես Աստրախանից, Ազովից, այնպես էլ Ղրիմից և Կենտրոնական Եվրոպայի հայկական գաղթավայրերից։ Հովհաննես Մկրտչի տոնին Կազանում մեծ տոնավաճառ էր բացվում, որին մեծաքանակ ապրանքներով մասնակցում էին արևելյան, ռուսական (այդ թվում՝ մոսկովյան) վաճառականները[8]։

Մոսկվայում, արդեն XV դարում, կար հայկական փոքր գաղթօջախ, որն սկիզբ էր առել դեռևս XIV դարից։ Երբ 1390 թ. այրվեց Մոսկվայի պոսադը (Կրեմլի շուրջն ստեղծված արհեստավորա-առևտրական թաղամասը), պարզվեց, որ հրդեհն սկսվել էր հայազգի Աբրահամի տնից[9]։ Հայերի առկայության մասին է վկայում և այն փաստը, որ Կիպրիանոս Միտրոպոլիտը, կատաղի հակառակորդ լինելով «հայկական աղանդի», դժգոհություն է արտահայտում ռուսների ու հայերի միջև ամուսնական ու բարեկամական կապեր հաստատելու կապակցությամբ, պատվիրում է սեր ու բարեկամություն չհաստատել հայերի հետ, քանի որ նրանք ուղղափառ-քրիստոնյաներ չեն։ «Միտրոպոլիտների խստիվ ներշնչումների ետևում պարզ նկատվում է իրական դրությունը,— գրում է ակադեմիկոս Մ. Ն. Տիխոմիրովը,—շարքային ռուս մարդիկ մեծ տարբերություն չէին տեսնում ուղղափառ և հայկական դավանանքների միջև, հաճույքով շփվում էին և խնջույքներ ու բարեկամություն անում, ամուսնանում հայերի հետ ու նրանց թողնում իրենց եկեղեցիները»[10]։

Հայերը ոչ միայն մշտական բնակիչներ էին, այլև հյուրեր, որոնք գալիս էին Աստրախան՝ «փառավոր տոնավաճառի»։ Գրիգոր Լուսիկովը ռուս արքու-

---

[4] «Полное собрание русских летописей», т. XXV, էջ 175 (այսուհետև՝ ПСРЛ):

[5] Տե՛ս «ԺԴ դարի ձեռագրերի հիշատակարաններ», էջ 329—330։

[6] Տե՛ս *М. Н. Тихомиров,* Древняя Москва, М., 1947, էջ 98—99:

[7] ПСРЛ, т. XVIII, էջ 104:

[8] Տե՛ս *М. Н. Тихомиров,* Древняя Москва, էջ 98—99:

[9] Տե՛ս *И. Забелин,* История города Москвы, ч. I, М., 1902, էջ 98:

[10] *М. Н. Тихомиров,* Древняя Москва, էջ 143:

նիբին հղած իր 1673 թ. նամակում նշում է, որ հարյուր տարուց ավելի է, ինչ հայերն ապրում են Աստրախանի արվարձանում՝ ըստ ցարի հրամանի[11]։

Այն, որ Աստրախանում դեռևս նախառուսական շրջանում եղել է բավականին մեծ հայկական գաղթօջախ, հաստատվում է թեկուզ հետևյալ փաստով. Ուլյանովսկի մարզում կա մի լեռ, որը կոչվում է «Հայկական զառիթափ լեռ» (Армянская Крутая гора)։ Լեռն այսպես է կոչվել ի հիշատակություն Աստրախանի հայերի խռովության, որի ժամանակ նրանք այստեղ ամրություններ են կառուցել[12]։

Դեռևս XV դարում և XVI դարի առաջին կեսին հայկական գաղթօջախ է եղել նաև Կազան քաղաքում։ Ինչպես կարդում ենք «Կազանի պատմության» մեջ, 1550—1552 թթ., երբ սուր պայքար էր գնում Մոսկովյան պետության և Կազանի խանության միջև, Կազանում, ի թիվս արևելյան այլ վաճառականների, կային մեծ թվով հայեր, որոնց մեջ նաև փորձված թնդանոթաձիգներ։ Ի դեպ, ուշագրավ է, որ դեռևս այդ ժամանակ հայերի համակրանքը ռուսների կողմն է եղել։ Երբ թաթարները մահվան սպառնալիքով ստիպել են հայ թնդանոթաձիգներին կրակ բացել ռուսների դեմ, նրանք կամ հրաժարվել են, կամ կրակել այնպես, որ արկերը չընկնեն ռուսների վրա[13]։

Կազանում մինչև հիմա պահպանվել են «Հայկական փողոց», «Հայկական հրապարակ», «Հայկական գերեզմանատուն» անվանումները, գերեզմանատանը պահպանվել են տապանաքարեր և մոտ մեկ մետր շառավիղ ունեցող արևի ժամացույց։ Այս բոլորը վկայում են այնտեղ գոյություն ունեցած հայկական գաղութի մասին։

Ռուսաստանի վոլգյան քաղաքների և, մասնավորապես, հայկական գաղթավայրերի աճն ու ձևավորումը կատարվել է XVI դարի երկրորդ կեսից, երբ ուժեղացավ Մոսկովյան պետությունը և Կազանի ու Աստրախանի խանությունները միացվեցին Ռուսաստանին։ Դրանից հետո էլ թաթարական և թուրքական ասպատակությունները շարունակվում էին ու խանգարում քաղաքային կյանքի խաղաղ զարգացմանը։

## 2. ԱՍՏՐԱԽԱՆԻ ԳԱՂԹՕՋԱԽԸ

Ռուսաստանի հայկական ամենահին ու երկարակյաց գաղթօջախներից է եղել Աստրախանը։ Հայերն այստեղ հաստատվել են XVI դարի երկրորդ կեսում։ XVII դարի սկզբին մշտական բնակություն հաստատած հայերի թիվը այստեղ փոքր է եղել՝ ընդամենը 11 ընտանիք, սակայն, մեծաթիվ են եղել եկվոր հայ վաճառականները[14]։ Աստրախանը և Վոլգայի ափամերձ շրջանները տնտեսապես հետադիմեցին լեհ-շվեդական արշավանքների (1605—1612) և այս ժամանակաշրջանում ծավալված գյուղացիական շարժումների հետևանքով։ Դրանից հետո, երբ առևտրի համար ստեղծվեցին նպաստավոր պայման-

---

[11] Տե՛ս Центральный Государственный архив древних актов (ЦГАДА), ф. 100, 1672—1673 гг., № 1, л. 340—341:

[12] Տե՛ս «Географический словарь Российского государства», ч. I, М., 1801, էջ 200:

[13] Տե՛ս «Казанская история», М., 1954, էջ 135:

[14] Տե՛ս *Н. И. Веселовский*, Памятники дипломатических и торговых сношений Московской Руси с Персией, т. I, СПб., էջ 110—111 и 123—124:

ներ, հայ վաճառականները նորից սկսեցին շարժվել դեպի Աստրախան։ Ռուսական կառավարությունը հայերին թույլ տվեց բնակվել Աստրախանում, այսպես կոչված Սադովի Բուգրայի վրա՝ Վոզդվիժենսկայա եկեղեցու և հայկական տաճարի մոտ։ Հայերն օգտվեցին տրված արտոնությունից և գտնելով իրենց համար վստահելի ապաստան ու հովանավորություն, նշանակալիորեն բազմացան[15]։ Հայերն առաջին օտարերկրացիներն էին Աստրախանում, որ 1625 թ. արդեն ունեին հատուկ առևտրական հրապարակ, առևտրական իջևան (ռուսականը՝ ստեղծվել է միայն 1663—1665 թթ.) և գերեզմանատուն[16], իսկ 1640 թ. կառուցել են իրենց եկեղեցին։

Մեծահարուստ առևտրականներից բացի, Աստրախանում հաստատվել էին նաև բազմաթիվ հայ արհեստավորներ, որոնք իրենց արտադրական հմտությամբ ու փորձառությամբ կարևոր ծառայություն էին մատուցում քաղաքի բարգավաճմանը։

Ռուսաստանում մեծ նշանակություն էր տրվում հում մետաքսի արտադրությանը. տնտեսության այդ նոր բնագավառում հիմնական դերը կատարում էին հայ մասնագետները։ Չուվաշների լեզվում հում մետաքսը անվանվում էր «հայկական մետաքս»[17], քանի որ դրա ներմուծողներն ու մշակողները գերազանցապես հայեր էին։ 1658 թ. ռուսական արքունիքի պահանջով հում մետաքս էր ուղարկվում Աստրախանից Մոսկվա[18]։ Բելը իր ճանապարհորդական ակնարկներում հիշատակում է, որ Վոլգայում «որսում են օսետր և բելուգա ու պատրաստում հայկական ձկնկիթ»[19]։ Աստրախանի հայերն զբաղվում էին նաև խաղողագործությամբ ու գինեգործությամբ, հանդիսանալով կուլտուրտնտեսական այդ մշակույթի հիմնադիրները աշխարհագրական այդ միջավայրում։ Այլևայլ առիթներով տեղեկություններ են պահպանվել Աստրախանի հայ առագաստագործների, մետաքսագործների, սեկագործների և այլ մասնագիտության արհեստավորների մասին, որոնց թիվը հատկապես մեծանում է 1660-ական թվականներին։ Դրանցից է, օրինակ, սեկագործ Մարտին Մարտյանովը (Մարտիրոսյան), որը մեծ դեր է կատարել Ռուսաստանում այդ արհեստը զարգացնելու գործում։

1667 թ. առևտրական պայմանագիր կնքվեց Նոր Ջուղայի հայ վաճառականների և ռուսական արքունիքի միջև, որը մեծ նշանակություն ունեցավ ինչպես հայ-ռուսական տնտեսական ու քաղաքական կապերի ամրացման, այնպես էլ ռուսահայ գաղթավայրերի հետագա զարգացման համար։ Այդ պայմանագրի կնքումից հետո Վոլգյան մայրուղին դարձավ հայ վաճառականների բանուկ ճանապարհը, իսկ ռուսական քաղաքների հայաբնակ վայրերում ստեղծվեցին առևտրական քարավանների համար հանգրվաններ։ Այդ ժամանակվանից Աստրախանը սկսում է դառնալ ռուսահայության կենտրոն։

Հայկական առևտրական ընկերության լիազոր ներկայացուցիչ և շահի

---

[15] Տե՛ս *Рыбушкин,* Записки об Астрахани, М., 1841, էջ 18:

[16] Տե՛ս *А. Олеарий,* Описание путешествия в Московию, СПб., 1906, էջ 445: «Ключаревская летопись», Астрахань, 1887, էջ 19:

[17] *Марр,* Избранные работы, т. У, М., էջ 102:

[18] Տե՛ս *С. М. Соловьев,* История России с древнейших времен, т. III (изд. общественной пользы), СПб., 1862, էջ 697.

[19] «Бельевы путешествия через Россию в разные азиатские земли...», СПб., 1776, էջ 262.

*դեսպան Գրիգոր Լուսիկովը 1672 թ. ռուսական կառավարության առջև բարձրացնում է Աստրախանում հայկական նոր եկեղեցի կառուցելու հարցը, այն հիմնավորելով հետևյալ կերպ. «Հարյուրից ավելի տարի է, մեծ թագավորի կարգադրությամբ Աստրախանի արվարձանում հայերն ապրում են իրենց կանանցով... համաճարակ եղավ. գրանից հայերը մեռան և մնացին միայն 10 տուն։ Նրանք եկեղեցի ունեին և եկեղեցիներում քահանաներ։ Եվ բոյարին իշխան Յակով Օդոևսկին ն. ց. մեծության հրամանով նրանց քաղաքի պարիսպներից դուրս հանեց, իսկ եկեղեցին մնաց դատարկ։ Այժմ մեր եղբայրներից հում մետաքսով և այլ ապրանքներով Աստրախան են գալու և ապրելու են առևտրատանը, իսկ մեզ մոտ, քաղաքում հայկական եկեղեցին դատարկ է մնացել և մենք մեր դավանանքով աղոթելու տեղ չունենք, քանի որ քահանան ապրում է բերդաքաղաքից դուրս... իսկ մեր առևտրականները գիշերը քաղաք մտնել կամ քաղաքից դուրս գալ չեն կարող, որովհետև քաղաքի պարիսպը փակվում է և նրանք աստծուն աղոթելու տեղ չունեն»[20]։*

*Լուսիկովը խնդրում էր, որ Ալեքսեյ Միխայլովիչ ցարը թագավորական հրամանագրով Աստրախանի վոյեվոդներին կարգադրի հայերին իրենց քահանաների հետ վերաբնակեցնել քաղաքում՝ հին բնակատեղի իրենց տներում, իրավունք տան՝ հողամասեր գնելու, նոր եկեղեցի ու նոր տներ կառուցելու, իսկ վաճառված տները վերադարձվեն տերերին, նրանցից վերցնելով այնքան գումար, որքանով վաճառել էին։*

*Թեպետ 1682 թ. Աստրախանում արգելվեց այլազգիների մշտական բնակությունը, սակայն բացառություն արվեց հայերի, վրացիների և հնդիկների նկատմամբ։*

*Պետրոս I-ը քաջալերում էր հայերի բնակեցումը, նրանց արհեստների ու առևտրի ծավալումն ու զարգացումը Ռուսաստանում։ Նա ձգտում էր ոչ միայն ներմուծել հում մետաքս կամ մետաքսյա գործվածքներ, այլև ստեղծել հայրենի մետաքսագործություն։ Այդ նպատակով քաջալերում էր թթենիների ծառատունկը Աստրախանում և այլուր, որը հետագայում բավական արդյունավետ եղավ։ Մոսկվացի հայ Սաֆար Վասիլևը 1710 թ. մարտի 12-ին խնդրում է Պետրոս Մեծին թույլատրել իրեն Ռուսաստանում կառուցելու մետաքսամշակման գործարան[21]։*

*Աստրախանի և ընդհանրապես հայերի առևտուրը ուժեղ թափ է ստանում XVIII դարում։ Աղբյուրների վկայությամբ պարսկական առևտրի մեծագույն մասը գտնվում էր հայերի ձեռքում[22]։ Մանավանդ որ ոչ միայն XVIII դարի սկզբներին, այլև հետագայում Ռուսաստանում արտադրվող հում մետաքսը չէր բավարարում եղած պահանջը և ներմուծումը մնում էր որպես հիմնական միջոց։ Ներմուծվում էին նաև արևելյան այլ ապրանքներ՝ տարատեսակ գործվածքներ, համեմունք, չոր միրգ, քաղցրավենիք։ Եվրոպայից ու ռուսական քաղաքներից Աստրախան էին բերվում արդյունաբերական ապրանքներ, զանազան կտորեղեն, պերճանքի առարկաներ, ժամացույցներ, հայելիներ և այլն։*

*Հայ վաճառականների առևտրական գործունեության զարգացումը Աստ-*

---

20 ЦГАДА, ф. 100, д. 1672—1673 гг., № I, л. 340—341:

21 *Տե՛ս* ЦГАДА, ф. 100, д. 1710 г., № 3, л. 1—3:

22 *Տե՛ս* «Бельевы путишествия чрез Россию...», *էջ* 34:

րախանում հրապուրեց հայ բնակչության նորանոր խմբերի։ Եթե XVIII դարի սկզբին հայերն Աստրախանում ունեին ընդամենը երեսուն տուն, որոնց բնակչությունը կազմում էր մոտավորապես 150 մարդ, հետագա տասնամյակներում հայերի բնակեցումը Ռուսաստան այնքան լայն ծավալ ընդունեց, որ Աստրախանի հայ բնակչությունը ավելացավ 8—10 անգամ, իսկ XVIII դարի կեսերին հասավ ավելի քան 1500 մարդու[23]։

Թուրքական և պարսկական նվաճողների ծանր լծից բացի, հայերի՝ դեպի Ռուսաստան տեղափոխման գործում էական դեր էր խաղում ռուսական կառավարության վարած հովանավորող քաղաքականությունը։ Մեծ թվով հայ վաճառականների ու արհեստավորների բնակեցումը այնպիսի կարևոր կենտրոնում, ինչպիսին Աստրախանն էր, համապատասխանում էր Ռուսական պետության քաղաքական և տնտեսական շահերին։ Ամրապնդվում էին Ռուսաստանի դիրքերն Արևելքում, ընդլայնվում էր Կովկասի, Պարսկաստանի, Միջին Ասիայի ու Հնդկաստանի հետ կատարվող առևտուրը, ի վերջո, նպաստավոր պայմաններ էր ստեղծվում Հարավային Ռուսաստանի տնտեսական զարգացման համար։

1667 թ. պայմանագրով հայ վաճառականներին տրված խոշոր արտոնությունները պահպանվեցին նաև XVIII դարում։ Պետրոս I-ի օրոք՝ 1720 թ. հատուկ հրահանգով սենատը պարտավորեցրեց Աստրախանի նահանգապետ Վոլինսկուն հովանավորություն ու օգնություն ցույց տալ օտարերկրյա առևտրականներին։ Պարսկաստանի հետ 1732 թ. կնքված պայմանագիրը Ռուսաստանի հպատակ առևտրականների համար անմաքս առևտուր էր սահմանում։ Հայերի նկատմամբ այդ քաղաքականությունը շարունակվեց նաև XVIII դարի երկրորդ կեսին[24]։ Աստրախանի հայերը ազատված էին պետական ծառայություններից, իսկ 1746 թ. նրանց տրվեց սեփական դատարան ունենալու իրավունք, որն ուներ նաև վարչական լիազորություններ։ Բոլոր այս պարագաները, բնական է, նպաստում էին Աստրախանի հայկական գաղթօջախի բարգավաճմանը։ XIX դարի սկզբին Աստրախանում արդեն ապրում էր մոտ հինգ հազար հայ, որը կազմում էր քաղաքի բնակչության 1/6 մասը, զիջելով միայն ռուսներին[25]։ Հայերին էր պատկանում Աստրախանի բնակելի տների մոտ քսան տոկոսը, ինչպես նաև հինգ եկեղեցի։ XVII—XVIII դարերի ընթացքում, ընդհուպ մինչև Նոր Նախիջևանի հիմնադրումը, Աստրախանի հայկական գաղթօջախը Ռուսաստանի խոշորագույն հայկական կենտրոնն էր։

Աստրախանի հայերի հիմնական զբաղմունքը արհեստն ու առևտուրն էր։ Նրանք մեծ դեր էին խաղում հատկապես մետաքսի ներմուծման և մշակման գործում։ Առևտրականներից ու կրպակատերերից զատ, զգալի թիվ էին կազմում նաև ֆաբրիկանների աշխատողներն ու արհեստավորները։ Սրանք աշխատում էին բերովի հումքով, իսկ իրենց արտադրանքը հանում էին շուկա։

1741 թ. վաճառական Լուկա Շիրվանովին (Ղուկաս Շիրվանենց) թույլա-

---

23 Տե՛ս Ա. Յուխտ, *Աստրախանի հայկական գաղութի բնակչության սոցիալական կազմը XVIII դարի առաջին կեսում*, «Տեղեկագիր» ՀՍՍՀ ԳԱ (հաս. գիտ.), 1957, № 7, էջ 48։

24 Տե՛ս «Собрание актов, относящихся к обозрению истории армянского народа», ч. I, М., 1833, էջ 152, 162, 171, 174, 203, 227:

25 Տե՛ս *В. А. Хачатурян*, Население Армянской колонии в Астрахани во II половине XVIII в., «Տեղեկագիր» ՀՍՍՀ ԳԱ (հաս. գիտ.), 1965, № 7։

տրվում է «վաճառականության համար նավեր կառուցել»[26]։ 1773 թ. ծովագնաց նավեր կառուցելու և Կասպյան ծովով առևտուր անելու թույլտվություն է ստանում աստրախանցի հայ Գրիգոր Կամպանովը։ Աստրախանում, Մոսկվայում, ապա նաև Պետերբուրգում XVIII դարի կեսերին ուժեղանում է հայ առևտրական բուրժուազիայի մի շոկատ, որի հարստացումը մեծ մասամբ կապված էր վարձու բանվորական ուժի շահագործման հետ։ Այսպիսով, Ռուսաստանի կապիտալիստական զարգացման ճանապարհին տնտեսական կյանքի ոլորտի մեջ են մտնում նաև հայ մեծահարուստները, որոնք կապված էին ինչպես Արևելքի, այնպես էլ Արևմտյան Եվրոպայի շուկաների հետ։ Ռուսական պետությունը, ելնելով իր քաղաքական ու տնտեսական ծրագրերից, շարունակում էր հայ վաճառական արդյունաբերողներին ընդառաջելու քաղաքականություն վարել[27]։

XVIII դարի 20—30-ական թվականներին Ռուսաստանի հարավում սանղծվում են հայկական նոր գաղթավայրեր՝ Ղզլարը, Մոզդոկը, Սուրբ Խաչը։ Դրան զուգահեռ մեծանում և ուժեղանում են Մոսկվայի ու Աստրախանի հին գաղթավայրերը։

Վերոհիշյալ գաղթավայրերում հաստատված հայ վաճառականները նշանակալի դեր էին խաղում Իրանի, Անդրկովկասի և Ռուսաստանի միջև կատարվող ապրանքափոխանակության, ինչպես նաև Ռուսաստանի վրայով եվրոպական երկրների հետ կատարվող տարանցիկ առևտրի մեջ։

XVIII դարում Աստրախանի վրայով Ռուսաստան ներմուծվող ապրանքներից հիմնականը հում մետաքսն էր, որի 70—80 տոկոսը ներմուծում էին Աստրախանի հայերը։

Աստրախանի տնտեսական կյանքում հայերի խաղացած կարևոր դերի շնորհիվ ցարական կառավարությունը որոշեց բարելավել նրանց վարկավորման գործը։ Այդ նպատակով 1779 թ. հրապարակվեց հրամանագիր՝ Աստրախանում հատուկ հայկական բանկ հիմնելու մասին, որին հատկացվեց 50 հազար ռուբլի։ Ընդ որում փոխատվությունները կատարվում էին արտոնյալ պայմաններով։

Աստրախանի հայկական գաղթօջախում շարունակում էր զարգանալ արհեստագործությունը։ Հայ ջուլհակները, դերձակները, ներկարարները, կոշկակարները և մյուս վարպետները հռչակված էին ինչպես Աստրախանում, այնպես էլ նրա սահմաններից դուրս։ XVIII դարի կեսերին Աստրախանում կային արդեն 150 հայ արհեստավորներ, որոնց երրորդ մասը ջուլհակներ էին։ Նրանցից հետո ամենաբազմամարդ խումբը արծաթագործներն էին (20), այնուհետև դերձակները, կոշկակարները, մուշտակագործները, ներկարարները և այլն[28]։

Հումքի և վաճառահանման շուկաների մոտիկությունը նպաստեց, որ Աստրախանը XVIII դարի առաջին կեսին դառնա Ռուսաստանի մետաքսյա ու բամբակյա գործվածքների և «արևելյան ապրանքների» արտադրության

---

26 «Полное собрание законов Российской империи», т. XI, М., 1830, էջ 533:

27 Տե՛ս В. Восканян, Ново-торговый устав и договор с Армянской компанией, «Տեղեկագիր» ՀՍՍՀ ԳԱ (հաս. գիտ.), 1947, № 6։

28 Տե՛ս А. Юхт, Армянские ремесленники в Астрахани в первой половине XVIII в. «Տեղեկագիր» ՀՍՍՀ ԳԱ (հաս. գիտ.), 1958, № 1, էջ 38։

կարևորագույն կենտրոն։ Առաջին մետաքսագործական մանուֆակտուրան Աստրախանում ստեղծվել է 1734 թ. հայեր՝ Հովսեփ Իզբեկի և Ստեփան Տիգրանսկու կողմից։

XVIII դարի քսանական թվականներին Աստրախանի մանածագործական արդյունաբերությունն ուներ ավելի քան երկու հարյուր ղազգահ, որոնք, գրեթե առանց բացառության, պատկանում էին հայերին[29]։

1787 թ. տվյալներով Աստրախանում հաշվվում էր արդեն 38 մետաքսագործական և 85 բամբակե գործվածքների ֆաբրիկա, որոնք ունեին ընդհանուր հաշվով 968 ղազգահ. դրանց ճնշող մեծամասնությունը դարձյալ պատկանում էր հայերին[30]։

Աստրախանի արդյունաբերության մեջ գերազանցապես օգտագործվում էր վարձու աշխատանքը։ Դա նպաստում էր քաղաքի մանածագործական ձեռնարկությունների կապիտալիստական հունով զարգանալուն։ Աստրախանի հայկական գաղթօջախում գերակշռում էին փոքր մանածագործական արհեստանոցները։ 1787 թ. կար 500 օտարերկրացի արհեստավոր, որոնց ճնշող մեծամասնությունը հայեր էին։ Բացի այդ, մոտ 500 հայ կանայք տներում կատարում էին ֆաբրիկայի պատվերներ՝ քանդում մետաքսի ու բամբակաթելի ոլորքը, գործում և ասեղնագործում մետաքսով, ոսկով ու արծաթով և այլն։

Այսպիսով, Աստրախանի հայերի մեծ մասը կազմում էին աշխատավոր զանգվածները՝ արհեստավորներ, մանր առևտրականներ, ֆաբրիկաների աշխատողներ, ծառաներ և այլ զբաղմունքի մարդիկ։

Հայ ազգաբնակչության մեջ զգալի էր չքավորության քանակը, որն ապրում էր պատահական եկամուտներով։ Դրանց կողքին հայ խոշոր վաճառականները և արդյունաբերողները քաղաքի մեծահարուստներից էին։

Աստրախանի հայերի շրջանում առաջացած տնտեսական ու իրավական անհավասարությունը համայնքի ներսում սոցիալական հակասությունների սրման պատճառ էր հանդիսանում։ Ունևոր վերնախավի կամայականությունների դեմ գաղթօջախի աշխատավորները պայքարի ելույթներ կազմակերպեցին 1763—1764 թթ.։ Մի խումբ արհեստավորներ մի քանի ամիս անձնուրաց կերպով պաշտպանում էին աշխատավորական խավերի շահերը և պահանջում, որ հայկական դատարանի ղեկավարությունում լինի նաև իրենց ներկայացուցիչը։ Հայերի ունևոր վերնախավը, տեղական իշխանությունների օգնությամբ ճնշեց այդ շարժումը։

1720—1740-ական թվականներին երկարատև վեճերի առարկա դարձավ հայ բնակչությունից գանձվող պարհակների չափերի հարցը։ Վերջապես որոշվեց, որ հայերը պետք է ազատվեն ռուսական պոսադում (առևտրա-արհեստագործական թաղամաս) գրանցվելու պարտավորությունից և դրա հետ կապված սովորական հարկերից ու պարհակներից, որի փոխարեն պետք է տարեկան մուծեին 739 ռուբլի։ Բացի այդ, հայերն ազատվում էին իրենց տները զինվորականներին որպես օթևան տրամադրելու պարտավորությունից, որի դիմաց տարեկան մուծելու էին 600 ռուբլի՝ զորանոցներ կառուցելու համար

1746 թ. հիմնվեց հատուկ հայկական դատարան կամ ռաթհաուզը, որը

[29] Տե՛ս նույն տեղում, էջ 40։

[30] Տե՛ս Равинский, Хозяйственное описание Астраханской и Кавказской губерний, СПб., 1809, էջ 313—314:

հայերի ներքին ինքնավարման ու դատավարության մարմինն էր։ Ռաթհաուզը քննում էր քրեական ու քաղաքացիական գործերը, հետևում էր հարկերի բաշխմանն ու հավաքմանը, ներկայացնում էր հայերի շահերը ռուսական իշխանությունների առջև և այլն։ Ռաթհաուզը հաստատում էր արհեստագործական արտադրամասի ավագներին ու վերահսկում արհեստավորների գործունեությունը։ Ոստիկանական պարտականություններ կատարելու համար ռաթհաուզը քաղաքի հայաբնակ թաղերում նշանակում էր հարյուրապետներ ու տասնապետներ։

Քանի որ հայերին ու մյուս օտարերկրացիներին իրավունք էր վերապահված դատական գործերը վարել իրենց ազգային օրենքների ու ավանդույթների համաձայն, հայկական դատարանին անհրաժեշտ էր ունենալ դատաստանագիրք։ Դատաստանագիրքը կազմելու գործով զբաղվեցին գիտական լայն պատրաստություն ունեցող երեք գործիչներ՝ Եղիազար Գրիգորյանը, Գրիգոր Կամպանյանը և Սարգիս Օհանյանը։ 1765 թ. նրանք ավարտեցին աշխատանքը և ստեղծեցին հայ իրավունքի պատմության ուշագրավ հուշարձաններից մեկը՝ «Աստրախանի հայոց դատաստանագիրքը»[31]։

Ըստ դատաստանագրքի, դատարանը կազմված էր երկու ատյանից՝ ստորին և վերին։ Ստորին կամ մշտական գործող դատարանը կազմված էր ինը հոգուց, որոնց գլուխ կանգնած էին երեք դատավորներ։ Աստրախանի հայ բնակչությունը գույքային դրության համապատասխան բաժանված էր երեք կարգի, որոնցից յուրաքանչյուրն ընտրում էր մի դատավոր, ընդ որում, դատավորներից երկուսն իրենց դավանանքով պետք է լուսավորչական լինեին, իսկ երրորդը՝ հայ կաթոլիկ։ Դատավորներն ընտրվում էին տարին մեկ անգամ։ Դատական երկրորդ ատյանի ֆունկցիաները կատարում էր Իննի խորհուրդը, որը գործում էր հասարակական հիմունքներով։ Հայկական դատարանն իրավունք ուներ մեղադրյալների նկատմամբ կիրառել պատժի բոլոր տեսակները՝ տուգանքից մինչև մահապատիժ։

Աստրախանի հայերի ինքնավարությանը վերջ դնելու փորձ է կատարվում 1785 թ. քաղաքային կանոնադրության առնչությամբ, որի համաձայն Ռուսաստանի բոլոր հպատակները պարտավոր էին գրանցվել քաղաքային նորաստեղծ «կարգերից» մեկում։ Այս ռեֆորմը կոչված էր միասնական դարձնելու պետության դասային ու վարչական կառուցվածքը։ Բոլոր նրանք, ովքեր գրանցվում էին նոր «կարգերում», ենթարկվում էին քաղաքային մագիստրատի գերատեսչությանը և ստանում նույն իրավունքները, ինչ ուներ ռուսական բնակչությունը։ Սակայն, հայ բնակչության մեծ մասը դիմադրում էր նոր կանոնադրությանը, քանի որ դա նրան զրկում էր նախկին արտոնություններից։

Արևելյան առևտրի անկումը և հայերի պայքարը, ի վերջո, ստիպեցին կառավարությանը թույլատրել նոր «կարգերում» գրանցված հայ բնակչությանը պահպանելու նախկին արտոնություններն ու իրավունքները։

Աստրախանի հայերի դրության վատթարացումը և նրանց տնտեսական դիրքերի թուլացումը անդրադարձավ Աստրախանի արդյունաբերության ու արհեստների և Կասպից ծովի առևտրի զարգացման վրա։ Այս հանգամանքը ստիպեց Պավել I-ին 1797 թ. հրապարակել հրամանագիր, որով հայերը վեր-

[31] Ֆ. Գ. Պողոսյան, Աստրախանի հայոց դատաստանագիրքը, Երևան, 1967։

ստացան իրենց նախկին իրավունքները։ Վերականգնվեց նաև Հայկական դատարանը, որը գրեթե լուծարքի էր ենթարկվել։ Աստրախանում, ինչպես նաև Ղզլարում և Մոզդոկում, հայկական դատարանն իր գոյությունը պահպանեց մինչև 1841 թ.։

Աստրախանի հայերը ակտիվ դեր էին խաղում Ռուսաստանի սոցիալական և դասակարգային շարժումներում։ Նշանակալից է այն փաստը, որ 1669—1671 թթ. ծավալված գյուղացիական պատերազմի ժամանակ Ս. Ռազինի «մեղսակիցների» թվում դատապարտվել են նաև հայեր։ 1705—1706 թթ Աստրախանյան հայտնի ապստամբության մասնակիցների մոտակա շրջանների բնակչությանն ուղղած կոչերի տակ կան նաև 11 հայերի ստորագրություններ, որոնք երաշխավորված էին Աստրախանի հայ ազգաբնակչության կողմից[32]։

Շնորհիվ այն բանի, որ Աստրախանի վրայով էին անցնում Ռուսաստանը Անդրկովկասին կապող ուղիները, Վոլգյան քաղաքը այդ ժողովուրդների ոչ միայն տնտեսական, այլև քաղաքական ու կուլտուրական կապերի հանգուցակետն էր, ինչպես նաև Ռուսաստանի զանազան ռազմական ու դիվանագիտական ձեռնարկումների մեկնակետը։ Աստրախանի հետ են կապված հայկական ազգային-ազատագրական շարժման բազմաթիվ ականավոր գործիչներ։ XVIII դարի երեսնական թվականներին Աստրախան փոխադրվեցին 1720-ական թվականների հայ ժողովրդի ազատագրական շարժման շատ նշանավոր գործիչներ, ինչպես, օրինակ, Ավան Յուզբաշին, Դավիթ Նազարովը և ուրիշներ։ 1730-ական թվականներին այստեղ էր տեղավորված հայկական ու վրացական էսկադրոնների շտաբը։ 1762—1763 թթ. Աստրախանում մի քանի անգամ կանգ է առել Հովսեփ Էմինը, որին հաջողվել էր կամավորական ջոկատ կազմել ազատագրական շարժմանը մասնակցելու համար։

Ռուսաստանի հայկական գաղթավայրերի հասարակական կյանքում մեծ դեր էր խաղում նաև Հայ եկեղեցին՝ որպես ճանաչված կրոնական ու հասարակական կազմակերպություն։

1717 թ. Աստրախանը դարձել էր Ռուսաստանում բնակվող բոլոր հայերի թեմական կենտրոնը։

Ռուսահայերի թեմակալի պաշտոնով 1770-ական թվականներին Աստրախան ժամանեց Հովսեփ արքեպիսկոպոս Արղությանը, որը շատ բան արեց հայ-ռուսական հարաբերությունների ամրապնդման ու զարգացման համար։

Հայ ժողովրդի ազատագրական պայքարում ռուսահայերի անընդհատ աճող քաղաքական դերի արտահայտությունը եղավ նաև 1769 թ. կազմված Հայաստանի ազատագրման նախագծերից մեկը, որի կազմմանը մասնակցել են Աստրախանի գաղութի նշանավոր գործիչներ Մովսես Սարաֆովը, Դավիթ Նազարովի որդի իշխան Միքայելը, Գրիգոր Կամպանյանը և ուրիշներ։ Նախագիծը հայկական ազատագրական շարժման օգնության գործում մեծ դեր էր հատկացնում Աստրախանի հայերին։

Օտարերկրյա լծից հայերի ազատագրման գործին Աստրախանի հայերի աջակցությունն արտահայտվում էր նրանց կողմից ռազմա-քաղաքական բնույթի զանազան հանձնարարություններ կատարելու մեջ։ Պահպանվել են

---

[32] Տե՛ս *Н. Б. Голикова,* История составления обращений участниками Астраханского восстания 1705—1706 гг., журн. «История СССР», 1971, № 6, էջ 168։

Ա. Սուվորովին, Գ. Պոտյոմկինին, Հ. Արղությանին Աստրախանի հայերի հղած գիրություները, որոնցում նկարագրված է Իրանում, Անդրկովկասի խանություններում, Միջին Ասիայում և այլ վայրերում տիրող դրությունը։ Բոլոր այս փաստերը վկայում են, որ Աստրախանի հայերը երբեք չէին կորցնում իրենց հայրենիքը ազատագրված տեսնելու և այնտեղ վերադառնալու հեռանկարը։

Առևտրով և արդյունաբերությամբ գործուն կերպով զբաղվելը հայերից պահանջում էր լեզուների, աշխարհագրության, մաթեմատիկայի և այլ գիտությունների իմացություն։ Մեզ հետաքրքրող շրջանում Աստրախանում գրված և պահպանված հայկական ձեռագրերը ցույց են տալիս, որ Աստրախանում հայ բնակչության մեջ շատ են եղել տարբեր գիտություններով հետաքրքրվող կրթված մարդիկ։

Ճանաչողական մեծ արժեք է ներկայացնում Աստրախանի դատաստանագիրքը՝ իր ժամանակի պատմա-իրավական և մշակութային ամենահետաքրքիր հուշարձաններից մեկը։ Արժեքավոր են հատկապես օրենքների այդ ժողովածուի այն հոդվածները, որոնք վերաբերում են առևտրի բնագավառին ու կազմված են հայ առևտրական բուրժուազիայի դարավոր ավանդույթների հիման վրա։ Դատաստանագրքի այդ ընդարձակ բաժինները լույս են սփռում միջնադարյան արևելքի առևտրական իրավունքի վրա ընդհանրապես։

Աստրախանի հայկական առաջին ուսումնական հաստատությունը կազմակերպվել է 1780-ական թվականների սկզբներին։ Դա Հովսեփ Արղությանի ջանքերով ստեղծված հոգևոր ուսումնարանն էր։ Սակայն եկեղեցական փոքր դպրոցը չէր կարող բավարարել Աստրախանի հայկական բնակչության աճող պահանջները։ Անհրաժեշտություն էր զգացվում ստեղծել ուսումնական մի հաստատություն, որն ի վիճակի լիներ պատրաստել մաքսատանը, դատարանում ու վարչական հիմնարկություններում աշխատող, արտասահմանյան առևտուրը կարգավորող բարձրորակ մասնագետներ։ Աստրախանի հայկական գաղութի համար կենսական այս հարցը հնարավոր եղավ լուծել միայն XIX դարի սկզբին, երբ Նիկողայոս Աղաբաբյանը բացեց հայկական ուսումնարանը, որը հարյուր տարուց ավելի շարունակեց իր գոյությունը[33]։ Իսկ մինչ այդ (XVIII դարի կեսերին), Աստրախանի ռուս վաճառականության պահանջով, բացվեց հատուկ դասարան՝ ռուս երեխաներին արևելյան (այդ թվում և հայերեն) լեզուներ սովորեցնելու համար։ Հայոց լեզուն դասավանդվում էր նաև 1788 թ. բացված Աստրախանի ռուսական գիմնազիայում, որի կազմակերպմանը գործուն մասնակցություն էին ցույց տվել հայերը։

## 3. ՀԱՐԱՎԱՅԻՆ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ԵՎ ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ԿՈՎԿԱՍԻ ԳԱՂԹՕՋԱԽՆԵՐԻ ԱՌԱՋԱՑՈՒՄԸ

XVII—XVIII դարերում, շարունակելով հեծել Իրանի և Թուրքիայի գերիշխանության տակ, Հայաստանը ի վիճակի չէր սեփական ուժերով թոթափել տիրապետողների ծանր լուծը։ Այդ պատճառով էլ հայերը դեռ դարեր առաջ ազատագրական իրենց հույսը կապում էին դրսի օգնության հետ։ Եթե մինչև

33 Տե՛ս Վ. Ոսկանյան, Վ. Գրիգորյան, Աստրախանի Աղաբաբյան դպրոցի պատմությունից, «Սովետական մանկավարժ», 1956, № 3։

XVII դարը Հայերն իրենց ազատագրությունը շաղկապում էին Արևմտյան Եվրոպայի երկրների օգնության հետ, ապա XVII դարի վերջերից և XVIII դարի սկզբներից դրությունը փոխվում է։ Պետրոս I-ի օրոք հզորացող Ռուսաստանը, որը աստիճանաբար իր սահմաններն ընդարձակում էր դեպի Հարավ, որոշակի հետաքրքրություն էր դրսևորում նաև Անդրկովկասի ժողովուրդների նկատմամբ և, փաստորեն, դարձել էր արևելյան բռնատիրական երկու պետությունների լծից նրանց ազատագրող միակ իրական ուժը։ Ստեղծված պայմաններում ուժեղանում էր անդրկովկասյան ժողովուրդների հետաքրքրությունը Ռուսաստանի նկատմամբ և, բնականաբար, աշխուժանում էին նաև հայ-ռուսական հարաբերությունները։

Ռուսաստանի համար, ռազմա-քաղաքական ընդհանուր հետաքրքրությունից զատ, կարևոր նշանակություն ունեին նաև տնտեսական, մասնավորապես առևտրական շահախնդրությունները։ Հայերը, որոնք ծանոթ էին արևելյան երկրներին, ինչպես նաև տեղի ժողովուրդների լեզուներին ու սովորույթներին, հեշտությամբ ու հաջողությամբ էին առևտուր ծավալում այդ երկրների հետ։ Հայ վաճառականների դերը զգալի էր հատկապես ռուս-իրանական առևտրում։ Գերազանցապես նրանց ձեռքում էր գտնվում Իրանից Աստրախանի վրայով Ռուսաստան ներմուծվող մետաքսի առևտուրը։ Ահա ռազմա-քաղաքական և տնտեսական այս նկատառումներով էլ Ռուսաստանը հայերի նկատմամբ հովանավորող քաղաքականություն էր վարում։

Պետրոս I-ը 1724 թ. Ռուսաստանում բնակվող հայերին մի շարք արտոնություններ շնորհող հրամանագիր հրապարակեց։ Դրանից հետո, մինչև դարավերջը, մասնավորապես Եկատերինա II կայսրուհու օրոք, հրապարակվեցին օտարերկրացիներին, այդ թվում և հայերին տնտեսական ու իրավական առանձնաշնորհումներ տվող մի շարք կայսերական հրովարտակներ։

Հայերի՝ Ռուսաստանի տիրապետության տակ անցնելուն և այնտեղ բնակություն հաստատելուն նպաստում էին նաև XVIII դարի կեսերին Իրանում սկսված բռնությունները, ինչպես և երկրում ծայր առած ֆեոդալական երկպառակություններն ու անիշխանությունը։ Կյանքի ու գույքի անապահովության նման պայմաններում Իրանից սկսվում է գաղթականական մի մեծ շարժում, որն ընթանում էր երկու հիմնական ուղղությամբ. մեկը՝ դեպի Ռուսաստան, մյուսը՝ Հնդկաստան։

XVIII դարում, հատկապես նրա երկրորդ կեսին, հայկական առանձին զանգվածներ թողնում են մայր հայրենիքը, առևտրական ուղիներով տեղափոխվում են իրենց ծանոթ ու սահմանամոտ Հյուսիսային Կովկասի տարբեր վայրերը։

1730-ական թվականներին հիմնադրվում է Ղզլար ամրոցը։ Մի քանի տարի անց, 1736 թ. բավական թվով հայեր հաստատվում են Ղզլարի մոտ, ստանում հողամասեր և զբաղվում հողագործությամբ։ Ղզլար գաղթած հայերը 1740-ական թվականներին ազատվում են զինվորական ծառայության պարտականությունից, պայմանով, որպեսզի շարունակեն բնակվել նույն տեղում և զբաղվեն երկրագործությամբ։ Ղզլարում աստիճանաբար առաջանում է հայկական թաղամաս և ապա գաղթօջախ։

1762 թ. վերանորոգվում է Ղզլարի ամրոցը և մի շարք միջոցառումներ են ձեռնարկվում ինչպես Ղզլարը, այնպես էլ նրա շրջակայքը Կովկասի լեռնաբնակ ժողովուրդներով, ինչպես և հայերով ու վրացիներով բնակեցնելու

ուղղությամբ։ 1760-ական թվականներին Ղզլարում կային 70—80 հայ զինվորներ, որոնցից շատերը մասնակցում էին գաղութի հասարակական-քաղաքական կյանքին և հետաքրքրվում Հայաստանի բախտով։ Դարավերջին արդեն Ղզլարի հայ բնակչության թիվը անցնում էր երկու հազարից։

1763 թ. Կովկասյան գծի վրա, որպես սահմանամերձ ամրոց, հիմնադրվում է Մոզդոկը։ Նույն տարում նրա բնակչությունը աճում է Ղզլարից գաղթած հայկական ղանգվածների հաշվին։ Հայերը մասնակցում են ոչ միայն քաղաքի շինարարությանը, այլև եռանդուն առևտրական գործունեություն են ծավալում։ XVIII դարի վերջին քառորդում Մոզդոկը դառնում է Հյուսիսային Կովկասի տնտեսական ու առևտրական կարևոր կենտրոններից մեկը։ 1785 թ. Մոզդոկը ստանում է դավառական քաղաքի իրավունք։ Այնտեղ բնակվող տարբեր ժողովուրդների ներկայացուցիչները, այդ թվում և հայերը արդեն շատ հարցերում առաջնորդվում էին ազգային սովորույթներով։ Դարավերջին քաղաքի հայկական բնակչությունն այնքան է ստվարանում, որ կարիք է զգացվում կառուցելու երկու եկեղեցի։

Տակավին XIV—XVII դարերում հայերը հայտնի էին Դերբենդում, որտեղից հայ վաճառականներն աշխույժ առևտուր էին կատարում ռուսական պետության հետ։ Դերբենդում հայկական համայնք է ստեղծվել դեռևս XVIII դարի առաջին քառորդում։ Մինչև դարավերջ ավելի է ստվարանում տեղի հայ բնակչությունը։

1797 թ. հայ գաղթականների 3500 հոգուց բաղկացած մի մեծ խումբ անցնում է Կովկասյան լեռնաշղթան։ Այդ գաղթականների մի մասը, հին ամրոցի տեղում հիմնարկում է Սուրբ խաչ (այժմ Պրիկումսկ) քաղաքը և ստանում առևտրով ու արհեստներով ազատորեն զբաղվելու իրավունք, իսկ մյուս մասը հաստատվում է Մոզդոկի ու Ղզլարի գավառներում[34]։

XVIII դարի վերջին քառորդում Կովկասի նախադռներում հիմնադրվում է Նոր Նախիջևանի հայկական գաղթօջախը, իսկ ավելի արևմուտք, Դնեստրի ավազանում՝ Գրիգորիոպոլը։

Նոր Նախիջևանը Ռուսաստանի ամենախոշոր ու ամենանշանավոր հայկական գաղթավայրն էր և նշանակալից դեր է կատարել հայ ժողովրդի հասարակական-քաղաքական ու մշակութային կյանքում։ Նրա հիմնադրման հանգամանքները կապվում են Ռուսական կայսրության հարավային սահմաններն ընդարձակելու և ծով դուրս գալու խնդրի հետ։ Ռուսական կառավարությունը հարավի սահմանամերձ տարածությունները, մասնավորապես Սև ծովի հյուսիսային մասում ընկած դրեթե անմարդաբնակ տափաստանները բնակեցնելու, տնտեսական կյանքը, հատկապես առևտուրն ու արդյունագործությունը զարգացնելու նպատակով բարենպաստ պայմաններ էր ստեղծում և առանձնաշնորհումներ տալով, այնտեղ հրավիրում օտարերկրացիների։

1768—1774 թթ. ռուս-թուրքական պատերազմի հաջող ավարտից հետո Ռուսաստանին հաջողվեց ոչ միայն զգալի տարածություններ միացնել կայսրությանը, այլև Թուրքիայից անջատեց ու անկախ հայտարարեց Ղրիմի խանությունը, որով հնարավորություն ստեղծվեց թերակղզին հետագայում

[34] Տե՛ս *Н. Г. Волков*, О расселении армян на Северном кавказе до начала XX в. (*ՊԲՀ*, 1966, № 3);

ռուսական կայսրությանը միացնելու։ Ռուսական արքունիքի առաջին գործը եղավ Ղրիմի քրիստոնյա բնակչության գաղթի կազմակերպումը, որի նպատակն էր նաև թուլացնել Ղրիմի խանությունը և այդ՝ բնակելի դարձնել Ռուսաստանի հարավային համարյա անմարդաբնակ տափաստանները։

1778 թ. ամռանը Ղրիմի հայաշատ վայրերից գեներալ Ա. Վ. Սուվորովի գլխավորությամբ գաղթեցվում են 12600 հայեր։ Մեկ ու կես տարի դեգերելով և զրկանքներ կրելով, 1780 թ. հունվարին, վերջապես, հայ գաղթականները հասնում են Դոնի տափաստանը և Ս. Դմիտրի Ռոստովսկու ամրոցից (Դոնի-Ռոստով) մի քանի կիլոմետր հեռավորության վրա, Դոն գետի աջ ափին հիմնադրում են Նոր Նախիջևան քաղաքը, իսկ նրա շրջակայքում Չալթր, Թոփտի, Մեծ Սալա, Սուլթան Սալա և Նեսվիտա հայկական գյուղերը։

Գրիգորիոպոլի հիմնադրումը կապվում է ռուս-թուրքական հաջորդ՝ 1787—1791 թթ. պատերազմի հետ։ Հաշտության պայմանագրի համաձայն Մոլդովայից ու Բեսարաբիայից գաղթեցվում են շուրջ 4000 հայեր, որոնք նախապես տեղավորվում են Դուբասար քաղաքում, ապա Դնեստր գետի ավազանում հիմնադրում են Գրիգորիոպոլ քաղաքը, իսկ նրա մոտակայքում՝ Իոսիֆովկա և Վասիլևկա գյուղերը։ Քաղաքի հանդիսավոր հիմնադրումը տեղի է ունենում 1792 թ. հուլիսին։

Վերը հիշատակված հայկական գաղթավայրերը, շատ աննշան տարբերությամբ, տնտեսական, ինչպես նաև իրավա-քաղաքական արտոնություններ ստացան։ Նրանք տասը տարով ազատվեցին բոլոր տեսակի հարկերից։ Երկրագործները ստացան բավարար քանակությամբ հողատարածություն՝ 30 դեսյատին, որի դիմաց վճարելու էին հողահարկ։ Նորաբնակները ազատվեցին ռուսական զորքին օթևան և պարեն հատկացնելու պարտավորությունից (պոստոյ), բացառությամբ այն դեպքերի, երբ զորքը իրենց բնակավայրերի մոտից էր անցնելու, ազատվում էին նաև զինակոչությունից (ռեկրուտ)։ Նրանց իրավունք էր վերապահվում երկրի ներսում և նրա սահմաններից դուրս ազատ առևտուր անել, մրգատու այգիներ տնկել, գործարաններ ու ֆաբրիկաներ հիմնել։ Մի խոսքով, խրախուսվում էր առևտրի, երկրագործության, արհեստների ու արդյունաբերության զարգացումը՝ նորաբնակների ցանկությունների և ունակությունների համապատասխան։ Հայ գաղթավայրերում դատավարությունը կատարվում էր հայերեն լեզվով, ազգային սովորույթների ու իրավական նորմերի հիման վրա։ Վերոհիշյալ բոլոր գաղթօջախներում կիրառվում էր «Աստրախանի հայոց դատաստանագիրքը»։ Նորաբնակներն ունեին դավանանքի ազատություն՝ թույլատրվում էր կառուցել եկեղեցիներ, ազատորեն կատարել հայոց եկեղեցական ծիսակատարությունները, ենթարկվելով Էջմիածնի մայր Աթոռի հոգևոր գերիշխանությանը։

Տրված առանձնաշնորհումների սահմաններում և նրանց հիման վրա ձևավորվում է հայ գաղթավայրերի ինքնավարությունը։ Խոշոր համայնքներում ստեղծվում են մագիստրատներ, որոնք իրենց մեջ համակենտրոնացնում էին ամբողջ գաղթօջախի դատական, ոստիկանական և գործադիր իշխանության ֆունկցիաները։ Նոր Նախիջևանի հայկական մագիստրատը, օրինակ, բաղկացած էր հինգ անդամներից, որոնք ընտրվում էին ժողովրդի բոլոր խավերի կողմից՝ երեք տարի ժամանակով։ Նրանցից մեկը համարվում էր մագիստրատի նախագահ, երկու հոգի զբաղվում էին դատական գործերով, իսկ մյուս երկուսը՝ ոստիկանության խնդրով։ Դժվար չէ նկատել, որ տրված արտոնու-


МЫ ЕКАТЕРИНА ВТОРАЯ

**Եկատերինա II կայսրուհու 1779 թ. հրովարտակը Նոր Նախիջևան քաղաքի հիմնադրման և ինքնավարության մասին**

*թյունները հայ առևտրա-արդյունաբերական խավերի համար տնտեսական գործունեության լայն հնարավորություններ էին ստեղծում։*

*Վերոհիշյալ գաղթավայրերում երկրամասի բնա-աշխարհագրական պայմաններին համապատասխան սկսում են արմատավորվել ու զարգանալ արհեստագործությունն ու արդյունաբերությունը, երկրագործությունն ու առևտուրը։ Կարճ ժամանակամիջոցում զարգացում են ապրում տնտեսության շահութաբեր մի շարք ճյուղեր՝ մետաքսագործությունը, խաղողագործությունը, բամբակի ու բրնձի մշակումը։ Մետաքսի սեփական արտադրությունը աշխուժացնելու նպատակով ռուսական կառավարությունը ամեն կերպ նպաստում էր արտադրության այդ ճյուղի զարգացմանը։ Առանձնապես Ղզլարը, ինչպես նաև Նոր Նախիջևանը հայտնի էին շերամապահության, հետևաբար և մետաքսի հումքի իրենց արտադրությամբ։ Ռուսաստանի հարավում շերամապահությամբ առաջին զբաղվողներն ու այդ կուլտուրայի տարածողները հայերն էին։ 1735 թ. Ղզլարից 70 վերստ հեռավորության վրա, Թերեքի ձախ ափին, հայ վաճառական ու արդյունաբերող Սաֆար Վասիլևը հիմնում է մետաքսի գործարան, որի համար թույլտվություն ստացվել էր տակավին 1710 թ.*[35]*։ Հետագայում այստեղ են տեղափոխվում նաև Գիլանի հայ մետաքսա-*

[35] *Տե՛ս П. Г. Бутков,* Материалы для Новой истории Кавказа, ч. I, էջ 159։

արդյունաբերողները։ 1753 թ. Թավրիզից մի խումբ հայեր դիմում են Ղզլարի մետաքսարդյունաբերողներին՝ Ղզլար փոխադրվելու համար նրանց համաձայնությունը ստանալու նպատակով։



Նոր Նախիջևանի քաղաքի զինանշանը

Ղզլարի, Նոր Նախիջևանի և այլ հայկական գաղթավայրերում լայն տարածում գտավ նաև խաղողագործությունը, խաղողից գինի ու օղի ստանալու տնտեսության արդյունավետ ճյուղը։ Օղեթորման գործարաններում ստացվում էր մեծ քանակությամբ օղի, որը գինու հետ հարյուրավոր տակառներով վաճառքի էր հանվում Ռուսաստանի բանուկ ճանապարհների վրա ընկած գավառներում։ Զարգացան նաև արհեստները, մանավանդ հայերի համար ավանդական դարձած արհեստագործության այնպիսի ճյուղեր, ինչպիսիք են ոսկերչությունը, արծաթագործությունը, կաշեգործությունը և այլն։ Հայ վարպետների նուրբ ճաշակով պատրաստած զարդերն ու ձիասարքերը մեծ համբավ ունեին և լայն սպառում էին գտնում Կովկասի լեռնականների շրջանում։

Հայկական գաղթավայրերում լայն տարածում գտավ ու մեծ զարգացում ապրեց հատկապես առևտուրը։ Գաղութների բնակչության մի ստվար մասը

բովանդակ տարին ներքին, մանրածախ առևտուր էր անում Կովկասյան գծի և Ազովի ավազանի առևտրական կարևոր հանգույցներում, ուր ստեղծվել էին առևտրական կենտրոններ։ Հայերը ակտիվորեն մասնակցում էին Ռուսաստանի նահանգներում տարին երկու անգամ կազմակերպվող, մանավանդ մոտակա տոնավաճառներին։ Որոշակի էր հայ վաճառականների դերը նաև արտաքին առևտրում, որն իրագործվում էր երկու գլխավոր ուղիներով. Կասպից ծովով՝ Իրանի և արևելյան մյուս երկրների հետ, Սև ծովով՝ եվրոպական երկրների։ Պատահական չէ, որ հայ վաճառականները (Իվան Մակարով, Լուկա Շիրվանով, Գասպար Բոգդանյան և ուրիշներ) Կասպից ծովում ունեին իրենց առևտրական մասնավոր նավերը և աշխույժ առևտուր էին անում Իրանի հետ։ Իրանի հետ առևտուր անելու նպատակով 1758 թ. ստեղծված առևտրական բաժնետիրական ընկերության գլուխ էին կանգնած հայ վաճառականներ Իսախանով եղբայրները։ Այդ ընկերության ստեղծումը դժգոհություն էր առաջացրել Ղզլարի և Կովկասի այլ վայրերի առևտրականների մեջ, քանի որ արգելակվում էր լեռնականների հետ կատարվող նրանց առևտուրը։ Մի քանի տարի անց, 1762 թ. Եկատերինա II-ի հրամանով նորաստեղծ ընկերությունը լուծարքի է ենթարկվում[36]։

Եվրոպական երկրների ու քաղաքների հետ՝ Իտալիայի, Հունաստանի, Կոստանդնուպոլսի, Վենետիկի և առհասարակ միջերկրածովյան նավահանգիստների հետ, Սև ծովով առևտուր էին անում ինչպես Նոր Նախիջևանի, այնպես էլ Մոսկվայի ու Պետերբուրգի նշանավոր հայ վաճառականները։ Այսպես, XVIII դարի կեսերին եվրոպական երկրների հետ առևտուրը աշխուժացնելու նպատակով Ռուսաստանը սենատի հատուկ հրամանագրով վաճառականներին հրավիրում էր Դոնի Թեմերնիկի նավամատույցում առևտրական դրասենյակ հիմնել։ Օգտվելով կառավարության հովանավորությունից Մոսկվայի նշանավոր հայ վաճառական Վասիլի Խաստատովը 1755 թ. Դոնի գետաբերանում հիմնում է «Կոստանդնուպոլսի առևտրական կոմպանիան», որը գոյություն է ունենում յոթ տարի և բավական աշխույժ մտցնում արտասահմանյան մի շարք երկրների հետ կատարվող առևտրի մեջ։ Այսպիսով, Հյուսիսային Կովկասի հայ գաղթավայրերն իրենց ծավալուն առևտրով և առհասարակ տնտեսական գործունեությամբ մեծապես նպաստում էին ինչպես իրենց բնակավայրերի առաջադիմությանը, այնպես էլ Ռուսաստանի ներքին ու արտաքին առևտրին։

Վերը հիշատակված հայ գաղթավայրերի կյանքում նկատելի դեր կատարեց Լազարյան հայ իշխանական գերդաստանը և առանձնապես XVIII դարի երկրորդ կեսի նշանավոր գործիչ Հովհաննես Լազարյանը։ Վերջինիս հայրը՝ Աղազար Լազարյանը, 1747 թ. Նոր Ջուղայից իր չորս զավակներով եկել էր Ռուսաստան, սկզբում հաստատվել Աստրախանում, ապա տեղափոխվել Մոսկվա։ Առևտրա-արդյունաբերական հմուտ գործունեության շնորհիվ կարճ ժամանակում նրանք պատկառելի հարստության, բազմաթիվ գործարանների և ընդարձակ կալվածքների տեր են դառնում և, ստանալով ազնվականի կոչում, սերտ կապեր հաստատում ռուսական կառավարող շրջանների հետ։ Հարստանալով ու բարձր դիրքի հասնելով, Լազարյանները ոչ միայն կապերը

---

[36] Տե՛ս Վ. Դիլոյան, Լազարյանների հասարակական-քաղաքական գործունեության պատմությունից, Երևան, 1966, էջ 28—31։

չկտրեցին ու չխորթացան հայրենի ժողովրդից, այլ մշտական շփման մեջ էին և ապրում էին մայր երկրի ու Ռուսաստանում ապաստանած հայ զանգվածների կյանքով, որի շնորհիվ էլ աչքի ընկնող դիրք գրավեցին ռուսահայ գաղթավայրերի և հայ ազատագրական շարժման պատմության մեջ։ Հովհաննես Լազարյանը անմիջական մասնակցություն ունեցավ ղրիմահայերի գաղթի և Նոր Նախիջևանի հիմնադրման գործում, մեծապես նպաստեց Կովկասի մյուս գաղթավայրերի տնտեսական, հասարակական և հատկապես մշակութային կյանքին։

Հյուսիսային Կովկասի և առհասարակ ռուսահայ գաղթօջախների XVIII դարի վերջին քառորդի պատմությունը անխզելիորեն կապվում է ռուսահայ թեմի առաջնորդ, հայ ազատագրական շարժման մյուս նշանավոր գործիչ Հովսեփ Արղության անվան հետ։

Պետության չգոյության պայմաններում հայ եկեղեցին այն միակ համազգային կազմակերպությունն էր, որը կարող էր ներկայացնել ամբողջ ժողովուրդը։ Այդ հանգամանքը հաշվի էր առնում ռուսական արքունիքը, ուստի հայ-ռուսական հարաբերությունների ամրապնդման շրջանում վերականգնվում են նաև հարաբերությունները էջմիածնի հետ և ճանաչվում վերջինիս իրավունքները ռուսահայերի նկատմամբ։

Կաթողիկոսական գահ բարձրանալով Սիմեոն Երևանցին՝ ժամանակի կրթված ու գործունյա հոգևորականներից մեկը, 1768 թ. հատուկ պատվիրակ է ուղարկում Եկատերինա II-ի մոտ։ Կայսրուհին պատշաճ ձևով ընդունում է էջմիածնի ներկայացուցչին և հատուկ հրովարտակով ճանաչում Արարատյան աթոռի իրավունքները Ռուսաստանում ապրող հայերի նկատմամբ, որն ընդհատվել էր 1749 թ.։

1773 թ. ռուսահայ նորահաստատ թեմի առաջնորդ է նշանակվում և Աստրախան մեկնում ուշիմ ու եռանդուն երիտասարդ մի հոգևորական՝ Հովսեփ Արղությանը (1743—1801)։ Նա չէր սահմանափակվում լոկ հոգևոր գործերով, ակտիվորեն մասնակցում էր ռուս-հայկական հարաբերությունների և Հայաստանի ազատագրման քաղաքական ծրագրերի մշակմանը և այդ նպատակով ձեռնարկվող միջոցառումներին, ուստի և կարճ ժամանակում մեծ հեղինակություն է ձեռք բերում ոչ միայն իր ազգակիցների շրջանում, այլ նաև ռուսական արքունիքում։ Նրա անմիջական մասնակցությամբ է կատարվում Նոր Նախիջևանի և Գրիգորիոպոլի հիմնադրումը։ Ավելին, կարելի է ասել, որ XVIII դ. վերջին քառորդում ռուսահայ կյանքում կատարվող քիչ թե շատ նշանակալի բոլոր ձեռնարկումները իրականանում էին նրա մասնակցությամբ ու գործադրած ջանքերի շնորհիվ։ Մեծ էր նրա դերը Հարավային Ռուսաստանի հայ գաղթօջախներում դպրոցական և հատկապես տպագրական գործի կազմակերպման խնդրում։

Նոր Ջուղայի հայ վաճառական Գրիգոր Խալդարյանը 1781 թ. Հ. Արղությանի օժանդակությամբ Պետերբուրգում հիմնադրում է հայկական տպարան, որտեղ լույս են տեսնում մի շարք կարևոր գրքեր։ Խալդարյանի մահից հետո, փակման վտանգի առջև կանգնած տպարանը Հ. Արղությանի ջանքերով 1790 թ. տեղափոխվում է Նոր Նախիջևանի Ս. Խաչ վանքը, որով և հիմնվում է Հարավային Ռուսաստանի առաջին տպարանը։ Այստեղ և ապա Աստրախանում տպարանի գործունեության տասը տարվա ընթացքում հրատարակվում են ժամանակի հուզող հարցերին արձագանքող շուրջ քսանվեց աշխատություն,

որոնք ռուսահայերից զատ տարածվում էին նաև Կոստանդնուպոլսի և Հնդկաստանի հայության շրջանում։ Հրատարակվող դասագրքերը, բառարաններն և մյուս աշխատությունները նպաստում էին մանուկների ուսուցման գործին, ինչպես նաև ռուսաց լեզվին տիրապետելու, ռուսական պատմությանն ու մշակույթին ծանոթանալու խնդրին։ Մի շարք հրատարակություններով, ուր սերմանվում էր հայրենի երկիրն ազատագրելու միտքը, տպարանը ծառայում էր ազատագրական շարժման նպատակներին, իսկ կրոնական բովանդակություն ունեցող շատ գրքերում քննադատվում էր կաթոլիկական գաղափարախոսությունը։ XVIII դարի վերջին տասնամյակներում գաղթավայրերի մշակութային-լուսավորական կյանքի առաջընթացին Հ. Արղությանից բացի նըպաստում էր մտավոր գործիչների մի ամբողջ սերունդ։ Նրանցից հիշատակության արժանի են մանկավարժական և հրատարակչական բեղուն աշխատանք կատարող Թադևոս Մարուգյանը, ժամանակի գիտուն ու գրագետ մարդկանցից մեկը՝ Մարգար խոճենց Երևանցին և ուրիշներ։

## 4. ՄՈՍԿՎԱՅԻ ԳԱՂԹՕՋԱԽԸ

Մոսկվայի հայ գաղութը XVI—XVIII դարերում մեծ դեր է կատարել ռուսահայերի կյանքում, հատկապես հայ-ռուսական տնտեսական, քաղաքական ու մշակութային կապերի զարգացման և հայ ժողովրդի ազատագրական շարժման պատմության մեջ։

Հայերի Մոսկվայում լինելու մասին առաջին հիշատակությունները վերաբերում են XIV դարի երկրորդ կեսին։ Ռուս տարեգիրը հաղորդում է, որ Մոսկվայի մեծ իշխան Դմիտրի Դոնսկոյի գլխավորությամբ թաթարների դեմ մղված նշանավոր Կուլիկովյան ճակատամարտում (1380) զոհվել են նաև հայազգի Անդրեյ Սերկիզովը և Սիմեոն Մելիքովը (Մելիքովը առաջինն էր հաղորդել Մամայ իշխանի՝ Մոսկվայի վրա հարձակվելու լուրը)[37]։ Ժամանակով երկրորդ տեղեկությունը գրանցվել է տասը տարի հետո. 1390 թ. հուլիսին Մոսկվայում բռնկված հրդեհը սկսվել է հայազգի Աբրահամի տնից, ոչնչացնելով մի քանի հազար շենքեր՝ առևտրա-արհեստագործական թաղամասում (Պոսադում)։ Ինչպես նկատել է ակադեմիկոս Մ. Ն. Տիխոմիրովը, Մոսկովյան առևտրական գործարքներում կարևոր դեր էին կատարում հայ վաճառականները, որոնք Հովհաննես Կարապետի տոնին, արևելցի այլ վաճառականների հետ, լինում էին Կազանի տոնավաճառներին, գալիս ու գնում էին Մոսկվա, հաճախ երկարատև կամ մշտական բնակություն հաստատում այնտեղ[38]։ Հայերին նույնպիսի գնահատական է տալիս ակադեմիկոս Բ. Դ. Գրեկովը և շեշտում, որ նրանք Մոսկվա էին գալիս Կոստանդնուպոլսից, Թոխաթից, Ղրիմից[39]։

Ղրիմից հայերը Մոսկվա էին տանում վաճառելու ձիեր և արևելյան ապրանքներ։ Այս առևտրին, խոջա Կակոսի միջնորդությամբ, մասնակցում էր նաև Մոսկվայի արքունիքը։

Մոսկովյան մեծ իշխան Իվան III-ը (1462—1505) հաջողությամբ միա-

[37] Տե՛ս «Полное собрание русских летописей», том. IV, էջ 81—201:
[38] Տե՛ս *М. Н. Тихомиров*, Древняя Москва, М., 1947, էջ 92—99, 172—173:
[39] Տե՛ս *Б. Д. Греков*, Крестьяне на Руси, М., 1946, էջ 550:

վորեց Կենտրոնական Ռուսաստանի իշխանությունները և իրավամբ իրեն հայտարարեց «Համայն Ռուսիայի մեծ իշխան»։

Մոսկվայի հզորացումը ուժեղ տպավորություն գործեց ողջ աշխարհում, առավել ևս մեծ էր այդ բախտորոշ իրադրության նշանակությունը իրենց անկախությունը կորցրած և թուրքական նվաճումների նախադռանը գտնվող փոքր ժողովուրդների համար։ Թաթարական լծի տապալումից անմիջապես հետո Իվան III-ի մոտ են գալիս վրացական թագավոր Ալեքսանդրի դեսպանները՝ Նարիմանը, Դեմիյանը և Խուլի-Մարուտը և խնդրում օգնություն ու հովանավորություն։

Մոսկվայի դերը հայերի կյանքում ավելի ակնբախ դարձավ, երբ Իվան Ահեղի օրոք (1547—1584) Ռուսաստանը նվաճեց Կազանի ու Աստրախանի խանությունները։

Կազանից հաղթանակով Մոսկվա վերադարձած ցարին ու զորքին ցնծագին դիմավորողների շարքում կային նաև բազմաթիվ հայեր[40]։

Աստրախանի միացումը Ռուսաստանին վերջնականապես ամրապնդեց Մոսկովյան պետության դիրքերը Կասպից ծովի հյուսիսային ափերին և հնարավորություն ստեղծեց անմիջական կապեր հաստատել Անդրկովկասի հետ։

Մոսկվայի հետ կապերի ամրապնդմանն ու հայկական գաղութի աճմանը խանգարեցին գրեթե անընդմեջ շարունակվող թաթարական հարձակումները և 25-ամյա Լիվոնյան պատերազմը (1558—1583)։ Սակայն անգամ այդ պայմաններում փորձեր են արվում դիմելու Իվան IV-ին՝ Ռուսաստանից օգնություն հայցելու և առևտրական կապեր հաստատելու համար։ 1553 թ. Իվան IV-ին դիվանագիտական հարաբերություններ հաստատելու առաջարկություն է անում Թահմազ I-ը։ 1563 թ. Շամախու Աբդուլլա խանի դեսպանը, ժամանելով Մոսկվա, խնդրում է հովանավորություն և Ռուսաստանի հետ հայերի վաղեմի առևտրական կապերի վերականգնում[41]։ Քիչ անց (1594—1595) Մոսկվա են ժամանում նաև վրաց իշխանի դեսպանները՝ Խուրշուդն ու Արամը։

Այս շրջանում արդեն հայերի այցելությունը Մոսկվա այնքան հաճախակի էր դարձել, որ Կրեմլից ոչ հեռու ստեղծվել էր հայկական իջևանատուն, ուր կանգ էին առնում և առևտրական գործարքներ կատարում հայ վաճառականները[42]։

Հայ վաճառականների գործարքների մասին տեղեկություն է գրանցել անգլիացի Դ. Ֆլետչերը, որը 1588 թ. եղել է Ֆեոդոր Իվանովիչ ցարի մոտ։ Նա հայտնում է, որ Ռուսաստանից «թուրքական, պարսկական, բուխարական, վրացական, հայկական և քրիստոնեական աշխարհի զանազան արդյունաբերողներ արտահանում են 400—500 հազար ռուբլու մորթեղեն»[43]։ Այստեղ ուղղակի հիշատակված են հայերը, սակայն, մեծ հավանականությամբ, հայեր են եղել նաև թուրքական, պարսկական և վրացական կոչված արդյունաբերողների մեջ։

Մոսկվայի հայ բնակչության դերը մեծանում է 1650—60-ական թվական-

---

[40] Տե՛ս «Казанская история», М., 1957, էջ 154:

[41] Տե՛ս. «Историческое описание Древнего музея», М., 1807, տես նաև «Собрание актов относящихся к обозрению истории армянского народа», том II, М., 1838, էջ 17:

[42] Այս իջևանատան կամ քարվանսարայի մասին հնագույն տեղեկությունը 1599 թվականից է. այն գտնվել է Իլյինյան դարպասի մոտ (տե՛ս «Акты исторические», том II, էջ 19)։

[43] Д. Флетчер, О государстве русском, М., 1906, էջ 11:

ների, երբ ռուսական պետությունը վերամիավորելով Ուկրաինան և հաջողությամբ ետ մղելով Թուրք-Թաթարական հարձակումները, սկսում է վարել համարձակ արևելյան քաղաքականություն, ավելի մոտիկից զբաղվել Անդրկովկասի հարցերով։ Այս շրջանում արդեն, Մոսկվայում մշտական բնակություն են հաստատում ոչ միայն առևտրականներ ու արհեստավորներ, այլև մտավորականներ՝ թարգմանիչներ, դիվանագետներ։ Որպես հայազգի թարգմանիչներ հայտնի են աստրախանցի Թավաքալովի որդիներ Բորիսն ու Իվանը. վերջինս՝ 1654 թ. հանձնարարություն է ստանում հանդիպել Իրանից վերադարձած դեսպան Ռոստով Լոբանովսկու հետ։ Այդ դեսպանության հետ Աստրախանից Ռուսաստան է գալիս հայազգի Վասիլի Դաուդովը, որն ընդունվում է աշխատանքի Դեսպանական պրիկազում (Արտաքին գործերի ատյան), ծառայում 50 տարի՝ թարգմանչից հասնելով մինչև դեսպանի և վոյեվոդի պաշտոնների։ Նա կատարել է խոշոր ու պատասխանատու դիվանագիտական հանձնարարություններ Թուրքիայում, Ղրիմում, Ուկրաինայում[44]։ Թարգմանչի պաշտոնով Մոսկվայում ծառայել են նաև հայազգի Վասիլ Իվանովը, Աթանաս Իվանովը և ուրիշներ։ 1632 թ. Ղրիմից Մոսկվա է եկել Սարգիս Օվանեսովը (իր ռուս կնոջ հետ) և խնդրել մշտական բնակության իրավունք, հայտնելով, որ փախել է ազգային ու կրոնական ճնշումներից։ Սարգիս Օվանեսովը նույնպես աշխատանք է ստացել Արտաքին գործերի ատյանում[45]։

1660 թ. Մոսկվա են մեկնում Նոր Ջուղայի նշանավոր վաճառականներ խոջա Զաքարը իր 9 ընկերների հետ, ցարին տանելով բազմաթիվ պերճանքի առարկաներ, այդ թվում նշանավոր «Ադամանդյա գահը», որն այսօր էլ զարդարում է Կրեմլի Զինապալատը և ՍՍՀՄ ալմաստի ֆոնդի մեծարժեք գանձերից է։

Ինչպես հաղորդում է խոջա Զաքարը, գահը նրա արհեստանոցում գաղտնի պատրաստել են հայ վարպետները և գաղտնի էլ տարել Մոսկվա։ Գահի վրա լատիներենով գրված է. «Հզորագույն ու անպարտելի Մոսկովյան կայսր Ալեքսեյին, երկրի վրա բախտավորությամբ թագավորողին՝ մեծագույն արվեստով ու եռանդով պատրաստված այս գահը թող լինի բախտավոր նախանշանակ գալիքի...»[46]։ Այս մակագրությամբ հայ վաճառականներն արտահայտում էին իրենց հույսն ու հավատը Ռուսաստանի նկատմամբ, միաժամանակ ցույց տալով առևտրի իրենց մեծ հնարավորություններն ու հարստությունը։

1666 թ. փետրվարին Մոսկվա են գալիս հայկական առևտրական ընկերության 40 ներկայացուցիչներ, որոնց բանակցությունները դեսպանական ատյանում Յուրի Դոլգորուկիի և ապա Օրդին-Նաշչոկինի հետ ավարտվում են 15 ամիս հետո, արքունիքի և Հայկական ընկերության միջև առևտրական պայմանագրի կնքումով։ 1667 թ. մայիսի 31-ին պայմանագիրը հաստատվում է և «Ջուղայական կոմպանիան» իրավունք է ստանում տարանցիկ առևտուր անել Ասիայի ու Եվրոպայի միջև, Աստրախանից Վոլգյան մայրուղով գնալ մինչև Արխանգելսկ, մաքս վճարելով ապրանքի արժեքի 5 տոկոսի չափով։ Այս մեծ արտոնությունն էր, որ տրվում էր հայ վաճառականությանը, քանի

---

44 Տե՛ս ЦГАДА, ф. Сношения России с Персией (կարճ СРП), оп. I, ծ. 1653 г. № 5:

45 «Армяно-русские отношения в XVII в.», Ереван, 1953, էջ 3—4:

46 «Собрание актов относящихся к обозрению истории армянского народа», том I, М., 1833, էջ 64:

որ Ռուսաստանում տարանցիկ առևտրի իրավունք մինչ այդ չէր ստացել և ոչ մի պետության վաճառականություն, չնայած այդ ուղղությամբ վտանված դարավոր ու համառ ջանքերի։ Թեպետ պայմանագիր կնքող հայկական կողմը կոչվում էր «Ջուղայական կոմպանիա», բայց արտոնյալ ու մենաշնորհ առևտրի իրավունքը տրված էր ոչ միայն ջուղայեցիներին, այլև բոլոր հայ վաճառականներին[47]։ Պայմանագիր կնքելու համար Մոսկվա ժամանած 40 հայերի մեջ կային ինչպես Ջուղայի, այնպես էլ Թիֆլիսի, Շամախու, Ագուլիսի և այլ քաղաքների վաճառականներ։ Նրանց հետ Մոսկվա էր եկել նաև նշանավոր նկարիչ Բոգդան Սալթանովը, որն աշխատանքի է անցնում Կրեմլի Զինապալատում որպես նկարիչ և մեծ դեր կատարում ռուսական գեղանկարչության ու կիրառական արվեստի զարգացման գործում։

Ուշագրավ է և այն փաստը, որ Մոսկվա եկած հայերը միայն առևտրական գործերով չէին զբաղվում. նրանք մտահոգված էին նաև ռուսահայ գաղթավայրերի բարգավաճման, Հայաստանին օգնություն կազմակերպելու հարցերով։ Նրանց ստորագրությամբ ուղերձ է հղվում Կ. Պոլսի հայերին, որով կոչ է արվում օգնել Օրդին-Նաշչոկինի գլխավորությամբ Կ. Պոլիս առաքվող ռուսական դեսպանությանը։

Հայ վաճառականները և հատկապես նրանց ղեկավարներ Գրիգոր Լուսիկովը և Ստեփան Ռոմոդամսկին, որոնք մոտ երկու տարի մնացին Մոսկվայում, զգալի դեր կատարեցին հայ գաղութի կյանքում։ Մոսկվայում սկսեց գործել ս. Աստվածածին հայկական եկեղեցին[48]։

1666 թ. ապրիլին Մոսկվայում ստեղծվեց սաֆյանի (սեկի) գործարան, որի վարպետ կարգվեց սեկագործ Հայրապետ Մարտինովը։ Վարպետը ռուսերեն չգիտեր, բայց աշխատանքը կազմակերպելու և ռուս աշակերտներ սովորեցնելու համար նրան տրվել էր թարգմանիչ՝ «Նոր մկրտված» (այսինքն՝ ռուսական ուղղափառություն ընդունած) Բորիս Իվանովը։

Ինչպես երևում է սեկի գործարանի մասին պահպանված մատյաններից, դա պարզունակ ու համեստ գործարան էր, որի արտադրությունը կազմակերպված էր Հայաստանում ու Մերձավոր Արևելքում գոյություն ունեցող արհեստանոցների օրինակով։ XVII դարում Մոսկվայում դեռևս չկային արդյունաբերության զարգացման բարենպաստ պայմաններ։ Այդպիսին էր և սեկի ու թավշակաշու (զամշ) արտադրության վիճակը. տեխնիկան պարզունակ էր, արտադրանքի որակը՝ ցածր, ինքնարժեքը՝ բարձր. քիչ էին մասնագետներն ու բանվորները, սահմանափակ էր շուկան, ուստի այդ տնայնագործական տիպի արհեստանոցը կարողացավ իր գոյությունը պահպանել միայն 6 տարի։

1667 թ. պայմանագիրը Մոսկվան դարձրեց հայ վաճառականների, նրանց գործակատարների, արհեստավորների, դիվանագիտական ծառայողների մի զգալի զանգվածի համար կարևոր հանգրվան, որի հետ կապված էին տնտեսական ու քաղաքական շահեր ու հեռանկարներ։ Այդ տեսակետից հատկանշական է Ստեփան Ռոմոդամսկու և հատկապես Գրիգոր Լուսիկովի գործունեությունը Մոսկվայում՝ 1666—1672 թթ.։

Սրանք համոզում են ռուսական արքունիքի ներկայացուցիչներին ճանա-

---

[47] Տե՛ս В. К. Восканян, Новоторговый устав и договор с Армянской компанией, ՀՍՍՀ ԳԱ «Տեղեկագիր» (հաս. գիտ.), 1947, № 6։

[48] Տե՛ս ЦГИА СССР, ф. 880, оп. 5, д. 12, л. 10, 75.

պարհների ապահովության համար Վոլգայի վրա կառուցել ավաններ ու պահեստներ, դիմել Կովկասյան լեռներում իշխող ցեղապետերին և նրանց պարտավորեցնել բարյացակամորեն վարվել հայ ճանապարհորդների հետ, թույլատրել, որ հայերը մշտական բնակություն հաստատեն ռուսական քաղաքներում և այլն։ Լուսիկովը խառնվում էր նույնիսկ արտաքին հարաբերությունների հետ կապված գործերին, միջնորդում, որպեսզի լեհ դեսպանների հետ լեհաստան մեկնելու հրամանագիր տրվի Իրանից ժամանած դոմինիկյան կրոնավորներին (սրանք Իրանում բանակցություններ էին վարում հակաթուրքական կոալիցիա կազմելու համար). Նա խնդրում է նաև, որ Վրաստանի Թեյմուրազ թագավորի թոռ Նիկոլայ Դավիդովին իրավունք տրվի հայրենիք վերադառնալու և այլն[49]։ Ստեփան Ռազինի պարսկական արշավանքի (1668—1669) կապակցությամբ ռուս-պարսկական հարաբերությունների մեջ սառնություն ստեղծվեց։ Գրիգոր Լուսիկովը մեծ ջանքեր է թափում շահին համոզելու, որ Ռազինի կասպյան արշավանքը ռուսական արքունիքի ցանկությամբ չի եղել։ Նա պաշտոնապես հանդես է գալիս որպես շահի դեսպան, աշխատում է բարելավել ռուս-իրանական հարաբերությունները, օգնել լեհական դեսպան, հայազգի Բոգդան Գուրդիին՝ բարելավելու լեհ-իրանական փոխհարաբերությունները, նպաստում այդ երեք պետությունների միավորմանը՝ թուրք-թաթարական ագրեսիային դիմադրելու նպատակով։

1701 թ. Մոսկվայում էին գտնվում Իսրայել Օրին և Մինաս վարդապետը, որոնց գործունեությամբ Մոսկվայի հայ գաղութը փաստորեն դարձավ ռուսահայության գլխավոր կենտրոնը և հայ-ռուսական քաղաքական կապերի հիմնական օղակը։

Մոսկվայի գաղութի բազմամարդության մասին են վկայում 1703 թ. եկեղեցուն տրված նվերների ցանկը և մոտ 50 նվիրատուների անունները։ Այսպես, Ա. Ոսկանովը իր ընկերներով նվիրել է 2 մոմակալ, Մանուկ Վարդանովը՝ 32 մսխալանոց արծաթյա խաչ, Ավետ Լազարևը՝ երկու մեծ գեղանկարչական պատկեր, Սաֆար Մելիքովը՝ 80 մսխալանոց արծաթյա խաչ, Իվան Պավլովը՝ արծաթակազմ ավետարան և այլն։ Մոսկվայում ջրհոր շինելու համար հայազգի Մոսկով Զախարովը նվիրել է իր ժամանակի սակադնով մի մեծ գումար՝ 320 ռուբլի[50]։

Ինչպես XVIII դարի վերջին երեսնամյակում, այնպես էլ հետագա տասնամյակներում Մոսկվայի հայ բնակչության իրավունքները ճանաչվում ու պաշտպանվում էին 1667 թ. կնքված հայ-ռուսական առևտրական պայմանագրով և ցարի կողմից տրված արտոնագրով, որով արգելվում էր վնասել ու հարկերով նեղել հայերին։ Թյուրիմացությունների ու վեճերի դեպքում հայերը դիմում էին Ռատուշա, հաճախ դեսպանական ատյան կամ ուղղակի ցարին, ընդ որում հարցի լուծմանը մասնակցում էին Մոսկվայի հայ ավագանու ներկայացուցիչները, ինչպես օրինակ, Դաուդովը, Սաֆար Վասիլևը, Լև Ջալևը, Մինաս վարդապետ Տիգրանյանը։ Հայերին տրված իրավունքներն ու արտոնությունները, գույքի ու կյանքի ապահովությունը, առևտրական ու արդյունաբերական գործունեության նպաստավոր պայմանները ուժեղացնում էին հայերի ներհոսը Մոսկվա։ Դրան առանձնապես նպաստեց Պետրոս Մեծի

---

49 Տե՛ս ЦГАДА, ф. СРА, д. 1666—1674 гг., № 2, м. 231—234.

50 Архив внешней политики России (АВПР), ф. СРА, Д 1722, № 1, էջ 33—35.

հովանավորական քաղաքականությունը, որն արտահայտվեց մասնավորապես 1711 թ. Սենատին տրված հրամանագրում, որտեղ կոչ էր արվում նպաստել հայկական առևտրին, բարյացակամ լինել հայերի նկատմամբ և քաջալերել նրանց ներգաղթը Ռուսաստան։ Դրա օրինակն էր տալիս ինքը՝ Պետրոս I-ը, որը նույն թվականին Լեհաստանում հանդիպելով հայազգի Աղազարովին, նրան իրավունք է տալիս ընտանիքով Հոլանդիայից Մոսկվա փոխադրվել և մշտական բնակություն հաստատել այնտեղ[51]։

Մոսկվայում մշտական բնակություն հաստատած հայ վաճառականների, մանր առևտրականների ու արհեստավորների կողքին հանդես են գալիս վաշխառուներ, հողատերեր, գործարանատերեր, բանվորներ, վարպետներ։ Մոսկվայի հայ դրամատերերը իրենց գործունեությունը այլևս չեն սահմանափակում Աստրախանի, Արխանգելսկի, Ռիգայի ու Պետերբուրգի վրայով կատարվող տրանզիտով ու տեղական առևտրով, այլ ձգտում են ձեռք բերել հողամասեր, կառուցել նոր գործարաններ, օգտագործելով էժանագին բանվորական ուժը։ Այսպես, 1710 թ. մարտի 12-ին Մոսկվայի նշանավոր վաճառական Սաֆար Վասիլևը դիմում է Պետրոս I-ին, խնդրելով, որ Թերեք գետի մոտ ընկած Անդրեևսկի գյուղի շրջանում հողեր տրամադրվի՝ բրինձ ու բամբակ ցանելու, թթենիներ աճեցնելու, մետաքսի մշակման գործարան կառուցելու և Թույլատրվի գյուղացիներից ու կազակներից բանվորներ հավաքագրել։ Ս. Վասիլևի բոլոր խնդիրքները բավարարվում են (այդ թվում նաև հայկական եկեղեցի կառուցելու խնդիրը)։

Ինչպես գրում է Մոսկվայի արդյունաբերության պատմության հետազոտող պրոֆեսոր Ե. Զաոզերսկայան, «Հայերը Մոսկվայում հանդես են գալիս ոչ միայն որպես վարպետներ, այլև Իգնատ Շերիմանի նման որպես մետաքսագործական մանուֆակտուրայի տերեր, այստեղ բերելով գիտելիքներ ու հմտություն՝ ռուս մարդկանց համար անծանոթ գործում»[52]։ Ի. Շերիմանը ծագումով Նոր Ջուղայեցի էր՝ տեղի հայ առևտրական ընկերության անդամներից մեկը։ 1717 թ. ռուս մի քանի գործիչների ընկերակցությամբ Շերիմանը Մոսկվայում հիմնադրում է առաջին մետաքսի գործարանը։ Մի քանի տարում հնգապատկելով իր ներդրած կապիտալը (5000 ռ. դարձել էր 23069 ռ.), 1722 թ. Շերիմանը դուրս է գալիս այդ ընկերությունից և մերձմոսկովյան գյուղերից մեկում հիմնում իր առանձին մետաքսի գործարանը, որը 1752 թ., Ի. Շերիմանի մահից հետո դառնում է նրա որդի Զաքար Շերիմանի սեփականությունը, իսկ վերջինս 1758 թ. այն վաճառում է Լազարյաններին, որոնք այդ գործարանում աշխատեցնում էին հարյուրավոր ճորտեր[53]։

Հայերի հոսանքը դեպի Ռուսաստան և մասնավորապես Մոսկվա ուժեղանում է XVIII դարի կեսերին (20-ական թվականներին ծավալված ազատագրական կռիվների և նրանց ավարտին հաջորդած պատերազմների, անլուր շահագործման, անիշխանության ժամանակաշրջանում)։ Բազմաթիվ հայ ընտանիքների հետ Մոսկվա է տեղափոխվում նաև Լազարյանների մեծահարուստ գերդաստանը։ Լազարյանները սերտ կապեր են հաստատում ռուսական մայ-

---

[51] Տե՛ս *И. И. Коган,* Московские шелковые фабрики первой половины XVIII в., «Старая Москва», М., 1920, էջ 192։

[52] «Очерки истории СССР» (XVIII в., первая четверть), М., 1957, էջ 73։

[53] Տե՛ս Վ. Ա. Դիլոյան, *Լազարյանների հասարակական-քաղաքական գործունեության պատմությունից,* Երևան, 1966, էջ 47—48։

րաքաղաքների՝ Մոսկվայի ու Պետերբուրգի մեծահարուստների, բարձրաստիճան պաշտոնեության և արքունիքի անդամների հետ, ձեռք են բերում կալվածքներ և առանձնաշնորհումներ, իսկ 1776 թ.՝ ռուս ազնվականության տիտղոս։ Նրանց ջանքերով 1770 թ. Մոսկվայում կառուցվում է հայկական երկրորդ եկեղեցին[54]։

Մոսկվայում էր գործում նաև նշանավոր հայ վաճառական Վասիլի Խաստատովն իր եղբայրներով։ Խաստատովը Մոսկվայում ուներ մետաքսագործական ֆաբրիկա, որը լավագույններից մեկն էր Ռուսաստանում։ Նա 1755 թ. Մոսկվայում ստեղծված ռուսական առաջին բաժնետիրական (ակցիոներական) ընկերության «օբեր-դիրեկտորն» էր։ Տեմերնիկի նավահանգստից այդ ընկերությունը առևտրական գործառնություններ էր կատարում Կոստանդնուպոլսի, Իտալիայի, Վենետիկի և արտասահմանյան այլ վայրերի հետ[55]։

XVIII դարի 60-ական թվականներին Մոսկվայի երեք մետաքսագործական ֆաբրիկաներ պատկանում էին հայերին, իսկ երկուսում էլ հայերը հանդես էին գալիս որպես բաժնետերեր[56]։

Մոսկվայի հայ գաղութի դասակարգային կազմը և շերտավորումը բավական խայտաբղետ էր։ Մեծահարուստ վաճառականների կողքին ապրում էին մանր խանութպաններ, արհեստավորներ, գործակատարներ և այլ զբաղմունքի տեր մարդիկ։

Բավական թվով հայեր տեղափոխվեցին Մոսկվա նաև վրաց Վախթանգ VI թագավորի հետ միասին, երբ վերջինս ստիպված եղավ թողնել Վրաստանը։ Նրանք բնակություն հաստատեցին ներկայիս Մեծ և Փոքր վրացական անունը կրող փողոցների շրջակայքում։ Վախթանգի հետ տեղափոխված հայերի թվում կային ազնվականներ, պալատական պաշտոնյաներ և այլն։

Մոսկվայի հայ բնակչության մեծաթիվ լինելու մասին խոսում է այն փաստը, որ դեռևս XVII դարում Պրեսնյայում կառուցվում է հայկական առաջին եկեղեցին՝ ս. Աստվածածինը[57]։ Հետագայում, XVIII դարի 70-ական թվականներին, Մոսկվայում կառուցվում է երկրորդ հայկական եկեղեցին՝ ս. Խաչը։ Լազարյանները մեծ ջանք թափեցին այդ եկեղեցին կառուցելու թույլտվություն ստանալու համար, որովհետև 1742 թ. հունվարի 16-ի կայսերական հրամանագրով հայերին արգելվում էր եկեղեցիներ կառուցել։ Մի դարաշրջանում, երբ կրոնական դավանանքն էր համարվում ազգության գլխավոր հատկանիշը, եկեղեցիների կառուցումը իրոք որ խոշոր նշանակություն ունեցող իրադարձություն էր և վկայություն՝ բավական պատկառելի թիվ կազմող հայ բնակչության առկայության։ Հայ բնակչության ստվարությունը անհրաժեշտություն էր ստեղծում ունենալու նաև սեփական դպրոց։ Այդ ձգտումը ուժեղանում է հատկապես XVIII դարի երկրորդ կեսին, երբ ազատագրական շարժման նոր վերելքը բորբոքել էր ազգային զգացումները։ 1776 թ Մոսկվայի հայ հասարակությունը ռուսահայ թեմի առաջնորդ Հովսեփ արքեպիսկոպոս Արղությանի միջոցով դիմում է Սիմեոն կաթողիկոսին, խնդրելով ժամանակավորապես իրենց մոտ գտնվող Վարդան վարդապետին թողնել

---

[54] *Տե՛ս* «Сборник актов...», ч. III, էջ 129:

[55] *Տե՛ս А. Семенов,* Изучение исторических сведений о русской внешней торговле и промышленности, том I, СПб., 1859, էջ 173:

[56] *Տե՛ս Любомиров,* Очерки по истории русской промышленности, М., 1947, էջ 578:

[57] *Տե՛ս* ЦГАДА, ф. 1252, оп. I, д. 386:

Մոսկվայում, որպեսզի մայրենի լեզու ուսուցանի մատաղ սերնդին։ Դեռևս դրանից առաջ, այդ նույն նպատակով, Լազարյաններն էին դիմել Սիմեոն կաթողիկոսին, և վերջինս խոստացել էր մի ուսյալ հոգևորական ուղարկել Մոսկվա։ Հիշյալ դիմումներից երևում է, որ Մոսկվայի հայերն այդ ժամանակ քահանա ևս չեն ունեցել։ Հարգելով Մոսկվայի հայերի կրկնակի դիմումը, Սիմեոն կաթողիկոսը թույլատրում է Վարդան վարդապետին տասը տարով մնալ Մոսկվայում։

1788 թ., Պետերբուրգի հայկական տպարանի հիմնադիր Գրիգոր Խալդարյանի մահից հետո, երբ դրվեց տպարանը Պետերբուրգից մի այլ հայաբնակ վայր տեղափոխելու հարցը, Հովակիմ Լազարյանը ցանկություն հայտնեց տպարանը փոխադրել Մոսկվա և այնտեղ հիմնել ուսումնարան, քանի որ առավել նպատակահարմար էր համարում հայկական մեծ դպրոց ստեղծել Ռուսաստանի մայրաքաղաքում։

Վերոհիշյալ հանգամանքով բացահայտվում են Մոսկվայի հայկական գաղթօջախի կուլտուր-մշակութային ձգտումները, ինչպես և այն առաջատար դերը, որ կոչված էր խաղալու Մոսկվան ոչ միայն Ռուսաստանի հայկական գաղթավայրերի, այլև առհասարակ հայ ժողովրդի հոգևոր կյանքում։

## 5. ՊԵՏԵՐԲՈՒՐԳԻ ԳԱՂԹՕՋԱԽԸ

XVIII դարի սեմին Նևայի ափերին հիմնադրված Սանկտ-Պետերբուրգ մայրաքաղաքը կոչված էր նշանակալից դեր խաղալու ռուսական կայսրության քաղաքական ու տնտեսական կյանքում։ Ռուսական նոր մայրաքաղաքը դեպի իրեն ձգեց մեծ թվով հայ և այլազգի վաճառականներ, արդյունաբերողներ և արհեստավորներ, որոնք տնտեսական շահերով սերտորեն կապված էին Ռուսաստանի հետ։

Քաղաքի հիմնադրման առաջին իսկ տարիներին Պետերբուրգում բնակություն են հաստատում հայ վաճառականներ, որոնք այստեղ ստեղծում են իրենց առևտրական գրասենյակները և առևտուր կատարում եվրոպական երկրների հետ։ Հայ վաճառականների հայտնվելը Պետերբուրգում մեծապես առնչվում է Արխանգելսկի վրայով դեպի Եվրոպա տանող առևտրական նախկին մայրուղու նշանակության անկման և Բալթիկ ծովի վրայով կատարվող տարանցիկ առևտրի անընդմեջ զարգացման հետ։

Արդեն 1726 թ. ռուս-եվրոպական առևտրի 90 տոկոսը կատարվում էր Պետերբուրգի վրայով։ Պետերբուրգը դարձավ նաև տարանցիկ առևտրի նշանավոր կայաններից մեկը։ Այսպես, Աստրախանի և Պետերբուրգի վրայով Եվրոպա առաքվող արևելյան ապրանքների արժեքը 1733—1748 թթ. կազմել է 2.749659 ռուբլի, ընդ որում դրա մոտ 80 տոկոսը՝ 2.207883 ռուբլի արժեքումարով կատարվում էր հայ վաճառականների ձեռքով[58]։ Բավական մեծ էր նաև հայ վաճառականների դերը Եվրոպայից Ռուսաստանի վրայով դեպի Իրան կատարվող միջնորդ առևտրում։

Ռուսական նոր մայրաքաղաքի հետզհետե աճող դերի հետ մեկտեղ աճում

[58] Տե՛ս А. Юхт, Восточная торговля России в 30—40-х гг., XVIII в. и роль в ней армянских купцов, «Տեղեկագիր» ՀՍՍՀ ԳԱ (հաս. գիտ.) 1956, № 8, էջ 60։

էր նաև տեղի հայ ազգաբնակչությունը։ Վաճառականների և արհեստավորների կողքին հանդես էին գալիս նաև թարգմաններ, որոնք աշխատում էին դեսպանական պրիկազում (1720 թվականից Արտաքին գործերի պետական ատյան)։ XVIII դարի առաջին քառորդում այստեղ իբրև թարգմաններ աշխատում էին հայեր Աֆանասի Պանկրատովը[59], Լուկա Շիրվանովը (Ղուկաս Շիրվանենց)՝ սղնախներում Պետրոս I-ի ներկայացուցիչ, հայ ազատագրական շարժման հայտնի գործիչ Իվան Կարապետի եղբայրը և ուրիշներ։

Սկզբնական շրջանում Պետերբուրգի հայկական գաղթավայրը սկսեց կազմավորվել Վասիլևյան կղզում։ Հայերից առաջին խոշոր հողակտորը այստեղ ձեռք էր բերել Լուկա Շիրվանովը։ Վերջինիս տունը և հողամասը ազատված էր զինվորական պարհակից, որովհետև նրա տանն էին օթևանում «Բարձրագույն Դուռ ուղարկված նշանավոր հայերը»[60]։

1714 թ. արդեն Պետերբուրգում հայերի թիվն այնքան էր աճել, որ հայկական եկեղեցի կառուցելու անհրաժեշտություն էր զգացվում։ Սակայն այդ հարցը հիշյալ ժամանակաշրջանում դրական լուծում չստացավ, և Պետերբուրգի հայերի կարիքները հոգալու համար հոգևոր հովիվներ էին գալիս Մոսկվայից։ Միայն 1730-ական թվականներին է, որ Պետերբուրգում հաստատվեց ռուսահայ գաղթավայրերի հայտնի գործիչներից Հովհաննես քահանա Շերիստանյանը և այստեղ քահանայի պաշտոն վարեց մինչև իր մահը՝ 1787 թվականը։

Պետերբուրգի հայկական գաղութը մեծաթիվ չի եղել։ Ըստ արխիվային որոշ տվյալների, XVIII դարի վերջերին Պետերբուրգում մշտական բնակություն հաստատած հայերի թիվը կազմել է 120—150 մարդ[61], մինչդեռ ռուս հետազոտողներից մեկը 1794 թ. տեղի հայկական բնակչությունը հաշվում է 100 տուն։ Այնուամենայնիվ, Պետերբուրգի հայ գաղութը, փոքրաթիվ լինելով հանդերձ, նշանավոր դեր է խաղացել և ունեցել է տեսակարար մեծ կշիռ։

Հետաքրքիր է նշել, որ տասնյակ տարիներ բնակվելով Ռուսաստանում և հանդիսանալով Պետերբուրգի հայկական գաղութի կենտրոնական դեմքը, Լուկա Շիրվանովը միայն 1738 թ. է ընդունում ռուսական հպատակություն ու գրանցվում որպես «Սանկտ-Պետերբուրգի քաղքենի»։ Այս պարագան խոսում է այն մասին, որ Պետերբուրգի, ինչպես նաև Ռուսաստանի հայկական այլ գաղթավայրերի բնակչության մի ստվար մասը աշխատում էր պահպանել իր նախկին հպատակությունը, որպես առավել մեծ երաշխիք արտոնությունների պահպանման։

XVIII դարի կեսերին Պետերբուրգի կենտրոնական մասում, Ձմեռային պալատի շրջակայքում, հայտնվում են հայ նոր վաճառականներ, որոնք կառուցում են իրենց տները և առևտրական ու արդյունագործական հաստատությունները։ 1752 թ. Պետերբուրգում հիշատակվում է հայ վաճառական և ոսկերիչ, «Բենգալյան քաղաքացի» Արտեմի Շերիմանի անունը։ 1750-ական թվականներին Պետերբուրգում հաստատվեցին և որպես Պետերբուրգի քաղաքացիներ գրանցվեցին Նոր-ջուղայեցի Իսախանով չորս եղբայրները, որոնք 1758 թ. հիմնեցին Ռուսաստանի առաջին բաժնետիրական ընկերություններից

[59] Տե՛ս ЦГИА СССР, ф. 880, оп. 5, д. 108, л. 12:
[60] Տե՛ս ЦГАДА, ф. 1252, оп, I, д. 19, л. 6:
[61] Տե՛ս ЦГИА СССР, ф. 880, оп. 5, д. 108, л. 12:

մեկը՝ Իրանի հետ առևտուր կատարելու համար։ Այդ ընկերությունը երկարատև կյանք չունեցավ, որովհետև 1762 թ. Եկատերինա II-ի գահակալությունից անմիջապես հետո, վերացվեցին բոլոր տեսակի առևտրական մենաշնորհները։ Հայ վաճառականների կողմից նման առևտրական ընկերություն ստեղծելու փորձ կատարվեց նաև 1773 թ.։

Պետերբուրգի հայերը XVIII դարի կեսերին այնտեղ հիմնեցին մետաքսագործական ֆաբրիկաներ։ Մետաքսագործական ֆաբրիկաներ ունեին Արտեմի Մանուիլովը, Բոգդան Ախվերդովը, Լուկա Շիրվանովի որդի Պետրոս Շիրվանովը, Մանուչարյան եղբայրները, որոնցից առաջին երեքի ֆաբրիկաները տեղադրված էին Վասիլևյան կղզում։

Այդ ֆաբրիկաներում արտադրվում էին արևելյան զանազան գործվածքներ՝ մետաքսյա կերպասներ, գուլպաներ, ձեռնոցներ և այլն։ Հետաքրքրական է, որ այդ ֆաբրիկաների դազգահները բերված էին Մոսկվայից, հայ Ստեփան Յիտոնովի ֆաբրիկայից, որը շատ ավելի վաղ էր հիմնադրված[62]։

1760-ական թվականների սկզբներին Պետերբուրգ է գալիս ու իր առևտրական գրասենյակը հիմնում Հովհաննես Լազարյանը։ Շատ չանցած՝ 1764 թ. նա նշանակվում է պալատական ոսկերիչ և կարողանում է ամուր կապեր հաստատել արքունական շրջանների հետ, ակնառու դեր խաղալով նաև Պետերբուրգի ու ողջ Ռուսաստանի հայկական գաղթավայրերի ներքին կյանքում։

Պետերբուրգի փոքր, բայց հարուստ ու ճանաչում ստացած հայկական գաղթավայրը շուտով դառնում է հայ-ռուսական քաղաքական հարաբերությունների կարևորագույն մի օղակ՝ հատկապես Սիմեոն կաթողիկոսի կողմից ռուսական արքունիքի հետ բարեկամական կապեր ստեղծելուց հետո։ Պատահական չէ, որ շուրջ 30 տարի հայկական եկեղեցիների կառուցումն արգելակող հրամանագիրը 1770 թ. մայիսի 22-ի նոր հրամանագրով վերացվում է, իսկ մինչև այդ արդեն կարգադրվել էր հողամաս հատկացնել հայկական եկեղեցու շինության համար։ 1770—1779 թթ. հայտնի ճարտարապետ Ֆելտենի նախագծով կառուցվում է Պետերբուրգի ս. Կատարինե հայկական տաճարը, իսկ 1791 թ.՝ հայկական գերեզմանատան ս. Հարություն եկեղեցին։ 1779 թ. հիմնվում է Պետերբուրգի և Մոսկվայի հայկական եկեղեցիների միացյալ հոգաբարձությունը։ Առաջին հոգաբարձու է ընտրվում Հովհաննես Լազարյանը և մնում այդ պաշտոնում մինչև իր մահը՝ 1801 թ.։

Պետերբուրգի հայկական գաղթավայրի նշանակությունն առավել ևս մեծացավ 1781 թ., երբ այնտեղ հաստատվեց Գրիգոր Խալդարյանի տպարանը, որ գտնվում էր հայկական եկեղեցու մոտ գտնվող Հովհաննես Լազարյանի տանը։ Այս տպարանում առաջին հերթին հրատարակվեց մայրենի լեզվի «Այբբենարան» (1781), որը կոչված էր բավարարելու Ռուսաստանի հայկական գաղթավայրերի մատաղ սերնդին կրթելու պահանջները։

Հայ ազատագրական շարժման ռուսահայ նշանավոր գործիչներ Հովսեփ Արղությանը և Հովհաննես Լազարյանը Պետերբուրգում էին բանակցություններ վարում ռուսական կառավարության հետ՝ Հայաստանի ազատագրման և նրա ապագա քաղաքական կացության հարցերի վերաբերյալ, այնտեղ էին մշակում հայ-ռուսական դաշնակցային պայմանագրի ծրագրերը։ Մեծ աշխատանք էր տարվում նաև Հայաստանի անցյալը, հոգսաշատ ու տառապալից

[62] Տե՛ս ЦГАДА, ф. 1252, оп. I, д. 19, л. 18:

ներկան ռուս հասարակայնության և կառավարող շրջաններին ներկայացնելու համար։ Այդ նպատակով է, որ ռուսական զինվորական ծառայության մեջ գտնվող Վասիլ Վահանովը թարգմանում է Մովսես Խորենացու հայտնի ողբը՝ «Плач о Армении» վերտառությամբ, և հրատարակում 1786 թ., Վահանովի թարգմանությամբ։ Նույն՝ 1786 թ. Պետերբուրգում հրատարակվում է «Նոր տաղիկ, որ կոչի հորդորակ» երկը, որ ձոնվում է իշխան Գ. Ա. Պոտյոմկինին։ Կասկած չկա, որ ինչպես թարգմանությունների ընտրության, այնպես էլ հրատարակության կետ-նպատակը Հայաստանի վիճակի վերաբերյալ առավել լրիվ պատկերացում տալն էր, հայ ժողովրդի բաղձանքներն արտահայտելը և Հայաստանի ազատագրության գործում հարկ եղած ռազմա-քաղաքական օգնության կազմակերպումը։

Պետերբուրգի հայ գաղթօջախի գործիչներն, առհասարակ, շահագրգռություն էին հանդես բերում ինչպես իրենց, այնպես էլ ռուսահայ մյուս գաղթավայրերի ազգային լուսավորությունն առաջ մղելու գործում։ Պետերբուրգի հայ գաղթօջախի ակնառու անդամներից Մարգար Մանուչարյանը 1782 թ. դիմեց Պետերբուրգի գիտությունների ակադեմիային և խնդրեց ծրագիր նախապատրաստել՝ Աստրախանում հիմնվելիք հայկական դպրոցի համար[83]։

Պետերբուրգում 1799 թ. Հովհաննես Լազարյանի հանձնարարությամբ Գրիգոր վարդապետ Տեր-Ստեփանյան Արարատցու կողմից կազմվեց ապագա Լազարյան ճեմարանի կանոնադրության առաջին նախագիծը, որով ուրվագծվում էր այն խոշոր դերը, որ կոչված էր խաղալու Լազարյան ճեմարանը հայ մատաղ սերնդի դաստիարակության, հայկական մշակույթի զարգացման գործում[84]։

Գրավելով կենտրոնական դիրք ռուսահայ մյուս գաղթավայրերի նկատմամբ և ավելի մոտ կանգնած լինելով ռուս կառավարական շրջաններին, Պետերբուրգի հայկական գաղութի գործիչները խոշոր դեր են խաղացել նաև Աստրախանի, Նոր Նախիջևանի, Գրիգորիոպոլի, Ղզլարի և հայկական այլ գաղթավայրերի ամենօրյա խնդիրներին դրական լուծում տալու ուղղությամբ։ Այդ հարցում հատկապես խոշոր է Հովհաննես Լազարյանի գործունեությունը։ Վերջինիս, ինչպես նաև ռուսահայերի թեմակալ Հովսեփ Արղությանի միջնորդության և ջանքերի շնորհիվ XVIII դարի վերջում վերահաստատվեցին նախկին կայսրերի կողմից Ռուսաստանի հայ բնակչությանը տրված արտոնությունններն ու առանձնաշնորհումները։

Ուժեղ են եղել նաև Պետերբուրգի հայ գաղթօջախի առևտրա-տնտեսական կապերը ռուսահայ մյուս գաղթավայրերի և հատկապես Մոսկվայի ու Աստրախանի հետ։ Հիշյալ գաղթավայրերի միջոցով էին Պետերբուրգի հայ ձեռնարկատերերը ստանում իրենց ֆաբրիկաների համար անհրաժեշտ հումքը՝ մետաքս, ներկեր և այլն։ Մյուս կողմից, հիշյալ ձեռնարկությունների արտադրանքը մասամբ իրացվել է հայկական գաղթավայրերում։ Այս հանգամանքը ևս ստիպել է Պետերբուրգի հայ ֆաբրիկանտներին ու վաճառականներին՝ գործնական օգնություն ցույց տալ ռուսահայ գաղթավայրերի բնակչությանը։

---

[83] Տե՛ս К. Григорьян, Армянская культурная колония в Петербурге в XVIII веке, ՀՍՍՀ ԳԱ «Տեղեկագիր» (հաս. գիտ.), 1958, № 9, էջ 72։

[84] Տե՛ս Վ. Դիլոյան, Լազարյան ճեմարանի հիմնադրման պատմությունից, ՀՍՍՀ ԳԱ «Տեղեկագիր» (հաս. գիտ.), 1961, № 7։

*Պետերբուրգի հայ գաղթավայրի գործիչները կարևոր դեր են խաղացել նաև հայ և ռուս ժողովուրդների բարեկամական հարաբերությունների ամրապնդման գործում։ Այդ իմաստով չի կարելի երկրորդական համարել այն իրողությունը, որ Հովհաննես Լազարյանն իր միջոցներով Պետերբուրգից ոչ հեռու գտնվող Սոֆիա (Ցարսկոյե սելո) քաղաքում 1784 թ. հիմնեց քաղաքային ժողովրդական դպրոց։*

*Պետերբուրգի հայկական գաղթօջախը տնտեսական, առևտրական, քաղաքական և մշակութային կյանքում ունեցել է իր ուրույն տեղը, կարևոր դեր խաղալով հայ գաղթավայրերի պատմության մեջ։*

XIV—XVIII դարերի հայ մշակութային կյանքն իր տրոհվածությամբ, բազմաթիվ կորուստներով, ինչպես և մեծ ջանքեր պահանջած հաջողություններով, լիովին արտացոլում էր պատմական դժվարին այդ ժամանակաշրջանը։

Նախորդ՝ զարգացած ֆեոդալիզմի ժամանակաշրջանի մշակույթի հետ համեմատած, XV—XVI դարերում անկում ապրեց գիտությունը, փիլիսոփայությունը, արագ խամրեց ու վանական անապահով խցերում պարփակվեց դպրոցական գործը։ Երբեմնի բարձրարժեք ու մեծածավալ պատմագրական երկերին եկան փոխարինելու համեստ կրթական պաշար ունեցող շարքային գրիչների հիշատակարանները և մանր ժամանակագրությունները։

Առավել մեծ էր վայրէջքը մշակույթի այն ասպարեզներում, որոնք անմիջականորեն կապված էին նյութական շոշափելի միջոցների ու պատվերների հետ՝ ճարտարապետություն, նկարչություն, կիրառական արվեստի և նյութական մշակույթի այլ բնագավառներ։

Տվյալ ժամանակաշրջանի հայկական մշակույթի վիճակն ու զարգացման ընթացքը բնորոշելիս անհրաժեշտ է, սակայն, նշել, որ անկման երևույթները հավասարապես չեն տարածվում բոլոր դարերի ու մշակույթի բոլոր բնագավառների վրա։ Ժամանակագրական առումով ամբողջ այդ շրջանը բաժանվում է երեք խոշոր հատվածի.

1. XIV դարի երկրորդ կես—XV դարի 40-ական թվականներ. այս՝ շուրջ հարյուրամյա ժամանակամիջոցում արդեն հստակ նկատվում են անկման նշաններ մշակույթի որոշ ճյուղերում (պատմագրություն, ճարտարապետություն, մանրանկարչություն և այլն)։ Սակայն սոցիալ-տնտեսական ծայր աստիճանի քայքայման հարաճուն պրոցեսի պայմաններում նույնիսկ հայկական մշակույթի մի քանի ճյուղերում դեռ պահպանվում են նախորդ դարերի ավանդույթները և գիտության բարձր մակարդակը։ Առաջին հերթին այստեղ նկատի պետք է ունենալ Տաթևի և Մեծոփի դպրոցների գիտական ու մանկավարժական մեծ ավանդը, այդ դպրոցների հարկի տակ ստեղծված Հովհան Որոտնեցու և Գրիգոր Տաթևացու մեծարժեք փիլիսոփայական երկերը, Մատթեոս Ջուղայեցու, Թովմա Մեծոփեցու և Հակոբ Ղրիմեցու գիտական ու մեկնողական ստեղծագործությունները։

2. XV դարի երկրորդ կես—XVI դարն ամբողջությամբ՝ մշակույթի ամենախոր անկման ժամանակաշրջան։ Այս ժամանակամիջոցում չեն ստեղծվել պատմագրական, փիլիսոփայական և տեսական բնույթի այլ ուշագրավ երկեր։ Մշակութային ամլության այս մթնոլորտում որպես բացառիկ երևույթ է դիտվում բնագետ-բժիշկ Ամիրդովլաթ Ամասիացու ստեղծագործությունը։ Հայկական բնաշխարհում տիրող թանձր խավարը որոշ չափով աշխատում են փարատել գաղթօջախների մտավորականները։ Վենետիկում և ապա Կ. Պոլսում սկիզբ է առնում հայ տպագրությունը։

3. XVII—XVIII դարեր. Երկդարյա այս շրջանում մշակույթային անկման առաջն առնելու ջանքերը, ինչպես Հայաստանում, այնպես էլ գաղթավայրերում, վեր են ածվում հոգևոր զարթոնքի, ընդհատված ավանդույթների վերականգնման և ի վերջո մշակութային վերելքի, որ կատարվում է եվրոպական մշակույթի, գիտության բարեբեր ազդեցությամբ։ Համեմատաբար խաղաղ ու քաղաքական-տնտեսական ավելի բարենպաստ պայմաններում ստեղծվում կամ վերականգնվում են խոշոր կրթական կենտրոններ, կառուցվում են մի շարք աչքի ընկնող ճարտարապետական կոթողներ։ Իր դարն ապրած մանրանկարչության փոխարեն արվեստի ասպարեզում առաջատար տեղ են գրավում հաստոցային գեղանկարչությունը և որմնանկարչությունը։ Իրենց դիրքերն են վերականգնում պատմագրությունը և փիլիսոփայությունը։ Միջնադարյան մշակույթի ընդհատված ավանդույթների վերականգնման հետ մեկտեղ սկիզբ է առնում ազգային-ազատագրական շարժումների և հայ առևտրական բուրժուազիայի գաղափարախոսությունը, որն իր դրսևորումն է գտնում ինչպես գրականության և արվեստի մեջ, այնպես էլ փիլիսոփայական ու սոցիալ-քաղաքական ուսմունքներում։ Այս ժամանակաշրջանի վերջում ծավալվում է Մադրասի բուրժուա-լուսավորական և Վենետիկի Մխիթարյան միաբանության գրական-մշակութային գործունեությունը, որն ազդարարում էր միջնադարի ավարտը և մշակութային կյանքում նոր դարաշրջանի սկիզբը։

XIV—XVIII դարերի հայ մշակույթի այս առավել ընդհանուր և բնորոշ գծերը նշելով, այնուհանդերձ պետք է շեշտել, որ անկումն ու տեղատվությունը համատարած չեղավ հոգևոր գործունեության բոլոր ասպարեզներում։ Խոսքն այստեղ առաջին հերթին վերաբերում է գեղարվեստական գրականությանը, մասնավորապես քնարերգությանը։ Չնայած երկրի և ժողովրդի ողբերգական վիճակին, այն ոչ միայն պահպանեց նախորդ շրջանի քաղաքացիական ու անհատական լիրիկայի մոտիվները, այլև բռնեց աշխարհականացման ուղին, երգեց հասարակ մարդկանց թախիծն ու սերը, հայրենիքի կարոտն ու պանդուխտի տվայտանքը։ Կրթված ընտրյալներին մատչելի գրաբարը գեղարվեստական գրականության մեջ իր դիրքերը զիջեց կենդանի խոսակցական աշխարհաբարին։

Տվյալ ժամանակաշրջանի մշակութային կյանքի լուսավոր էջերից է նաև հայկական տպագրությունը, որն եկավ փոխարինելու մարող գրչական արվեստին։ Հակոբ Մեղապարտի առաջին տպագրական հաստոցից (1512) մինչև XVIII դարի վերջը, հայկական տպարաններից դուրս եկած ավելի քան մեկ հազար անուն գրքերը, իրենց բազմահազար տպաքանակով, մեծապես նպաստեցին մտավոր ժառանգության պահպանմանը, գրականության ու գիտական մտքի նվաճումների տարածմանը։

XV—XVI դարերի մղձավանջային իրադարձությունները, գերեվարությունները ու արտագաղթերը մեծ վնաս հասցրին հայկական մշակույթին, բայց չկարողացան խզել ժողովրդի հոգևոր կյանքը։ Մեծ էր մշակույթի պահպանման ու զարգացման գործում գաղթավայրերի դերը, որոնք այդ ամբողջ ժամանակաշրջանի ընթացքում վառ պահեցին ժողովրդի բազմադարյան մշակութային ավանդույթները մինչև XIX դարի սկիզբը, երբ քաղաքական բախտորոշ իրադարձությունները եկան բարենպաստ պայմաններ ստեղծելու նաև մայր հայրենիքում՝ պարսկական լծից ազատագրված նրա արևելյան հատվածում։

## ԴՊՐՈՑ ԵՎ ՄԱՆԿԱՎԱՐԺՈՒԹՅՈՒՆ

XIV—XVIII դարերի պատմա-քաղաքական խառնակ ու ծանր պայմաններում Հայաստանի մշակութային կյանքը շարունակեց հարատևել անհամաչափ առաջընթացով։ Եվ չնայած դրան, այդ ժամանակաշրջանի դպրոցները նույնպես հանդիսացել են մատենագրական, գիտական, մշակութային, ազգային-հասարակական խոշորագույն կենտրոններ։ Ժողովուրդը նրանց միջոցով է հաղորդակից դարձել անտիկ ու միջին դարերի գիտության և մշակույթի նվաճումներին։ Նրանց մեջ սերունդներ են դաստիարակվել՝ հայ իրականության մտավոր ու հասարակական բոլոր կարևոր մարզերի համար։ Իրենց առօրյա գործունեության ընթացքում հայկական դպրոցներն արձագանքել են ժամանակի համազգային բոլոր իրադարձություններին, հաճախ ծնունդ ու կերպարանք տալով հոգևոր գաղափարական և ազգային-հասարակական ձեռնարկումներին։

Հիշյալ ժամանակահատվածի ամենանշանավոր դպրոցը Տաթևի համալսարանն էր։ Նրա հիմնադիրն է խոշոր մատենագիր, մտածող ու հասարակական գործիչ Հովհան Որոտնեցին, որը Գլաձորի համալսարանի ամենաերևելի սաներից էր։ Իր ուսուցիչներ Եսայի Նչեցու և Տիրատուր վարդապետի մահվանից հետո՝ 1350-ական թվականներին նա անցնում է Որոտան, ապա լինում Թիֆլիսում, Դարանաղյաց գավառի վանքերում, Երուսաղեմում և 1373 թ. հաստատվում Տաթևում, ուր և հիմնում է նոր համալսարան։ Հակաունիթորական պայքարը մոտիկից վարելու համար նա 1379 թ. համալսարանը փոխադրում է Երնջակի շրջանի Ապրակունյաց վանք և առ առավելն երկու տարի այնտեղ դասավանդելուց հետո, վերստին հաստատվում Տաթևում՝ իր հռչակավոր սան Գրիգոր Տաթևացուն հանձնարարելով Ապրակունյաց վանքի դպրոցի ուսուցչապետությունը։ Նկատի ունենալով քաղաքական համեմատաբար նպաստավոր պայմանները և, թերևս, ընդառաջելով Սմբատ Օրբելյանի հրավերին, Գրիգոր Տաթևացին 1393 թ. համալսարանը վերջնականապես վերահաստատում է Տաթևում։ Վերջինիս մահից (1409 թ. դեկտեմբերի 27)[1] հետո թեև այն շարունակում է գործել Մխիթար րաբունապետի, Մատթեոս Ջուղայեցու (դեռևս Գրիգոր Տաթևացու կենդանության ժամանակ կոչված տելետության պաշտոնին)[2] և Հովհաննես Հերմոնեցու (Կոլոտիկ) ջանքերով, բայց շատ շուտով խամրում է՝ մոտավորապես 1410—1412 թվականներին։

Այստեղ դասավանդել են նաև Հովհաննես, Գրիգոր, Սարգիս, Բարսեղ, Ծերուն, Առաքել, Հակոբ, Վարդան, Կիրակոս, Գևորգ, Մատթեոս և այլ վարդապետներ, որոնց գործունեության մասին, դժբախտաբար, քիչ բան է հայտնի։ Հատկապես Հովհան Որոտնեցի և Գրիգոր Տաթևացի հանրագիտակ մանկավարժ-մատենագիրների ուսուցչապետության տարիներին Տաթևի համալսարանը վեր է ածվում գիտա-մշակութային ու գաղափարական-հասարակական գործունեության խոշորագույն կենտրոնի։ Այստեղ արմատավորվում են կրթական ու դաստիարակչական այն ավանդները, որոնք ստեղծվել էին նախորդ շրջանում գոյատևած համալսարանների գործունեության ընթացքում։

Տաթևի համալսարանում ուսուցման և հարակից ծախսերը կատարվում

---

1 Տե՛ս «ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», Ա, էջ 101—102։

2 Տե՛ս նույն տեղում, էջ 25։

կին վանքի ու տեղի ֆեոդալների հաշվին, ինչպես և շրջակա աշխատավոր բնակչության նյութական օգնությամբ։

Ուսման շրջանը սովորաբար 6—7 տարի էր, սակայն որոշ սաներ ուսումնառության նպատակով շարունակել են մնալ համալսարանում 12—16 տարի, ըստ երևույթին կատարելով նաև ուսուցչի օգնականի պարտականություն։ Սաների թիվը տատանվել է 80—100-ի միջև։

Համալսարանն ունեցել է դասավանդվող առարկաների բազմազան ծրագիր։ Ինչպես պարզվում է մեզ հասած տեղեկություններից, առաջին անգամ այստեղ է ուսումնական հաստատությունը մասնատվել երեք մասնագիտական բաժինների (ֆակուլտետների)[3]։ Դրանցից մեկում սաները ձեռք էին բերում երաժշտական տեսական պատրաստություն և կատարողական փորձ, մյուսում՝ տիրապետում էին մանրանկարչական-ծաղկարարական արվեստին, գրչագրությանը, կազմարարությանը և ձեռագրագիտական մշակույթի հետ կապված մյուս բոլոր արհեստներին։ Համալսարանի ուսուցչապետներն ու ուսուցիչները ոչ միայն տեսականորեն են հմուտ եղել, այլև գործնականորեն տիրապետել են այդ մասնագիտությանը։ Իրենց սաներին մագաղաթի մշակում, թղթի կոկում, թանաքի պատրաստում են սովորեցրել նույնիսկ Հովհան Որոտնեցին և Գրիգոր Տաթևացին[4]։ Վերջինս նաև վարպետ ծաղկող-նկարիչ է եղել[5]։ Այս բաժնի շոշափելի արդյունքն ակնհայտ է։ Մեզ են հասել բազմաթիվ ձեռագրեր, որոնք գրվել, ընդօրինակվել, ծաղկվել ու կազմվել են Տաթևում։

Տաթևի համալսարանում գրչության արվեստը գնահատվել է ոչ միայն դեկլարատիվորեն, այլև գիտական մշակման է ենթարկվել ճիշտ ու գրագետ ընդօրինակման համար։ Զարմանալի չէ, որ հիշյալ ուսուցչապետների և Տաթևի համալսարանի մյուս գործիչների երկերում գրչության արվեստի վերաբերյալ հետաքրքրություն ներկայացնող բազմաթիվ վկայություններ կան, որոնք թեև ավարտուն մի համակարգ չեն կազմում, բայց գեղագիտական-տեսական մտքի պատմության համար ունեն որոշակի նշանակություն։

Համալսարանի երրորդ՝ բարձրագույն բաժնի ուսանողները սովորում էին ոչ միայն կրոնա-աստվածաբանական առարկաներ, այլև փիլիսոփայություն, տրամաբանություն, ճարտասանություն, քերականություն, մատենագիտություն, պատմություն, աստղաբաշխություն, աշխարհագրություն, բնագիտություն, տարրաբանություն, մարդակազմություն, թվաբանություն, տոմարագիտություն, «ներքին և արտաքին» գրքերի մեկնություն և այլն։

Մանկավարժությունը, առավելապես միջնադարում, սերտորեն առնչվել է փիլիսոփայությանը, մանավանդ իմացաբանական հարցերում։ Միջնադարյան հայ վարդապետների մանկավարժական տեսակետներն ու սկզբունքները ի հայտ են գալիս, մասնավորապես, նրանց փիլիսոփայական աշխատանքներում։ Մարդը իր մտածողությամբ, զգայություններով, հոգեկան կերտվածքով, եղել է նրանց ուշադրության կենտրոնում։ Տաթևի դպրոցի ուսուցչապետներ՝ Հովհան Որոտնեցու և Գրիգոր Տաթևացու պաշտպանած փիլիսոփայական այն

---

3 Տե՛ս Լ. Խաչիկյան, Գլաձորյան համալսարանը և նրա սաների ավարտական ատենախոսությունները, Երևանի պետ. համալսարանի գիտական աշխատություններ, XXIII, Երևան, 1946, էջ 438։

4 Տե՛ս Ա. Մովսիսյան, Ուրվագծեր հայ դպրոցի և մանկավարժության պատմության, X—XV դդ., Երևան, 1958, էջ 386։

5 Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 7482։

տեսակետը, թե ճանաչելին գոյություն ունի՝ նախքան այն կճանաչվի մարդու կողմից, և որ ամեն ինչ ճանաչելի է դառնում մարդու զգայարանների միջոցով՝ միջնադարյան հայ մանկավարժներին բավարար չափով ազատ էր պահում սխոլաստիկայից ու դոգմատիզմից։ Նրանք առաջատար տեղ ու դեր էին վերապահում փորձին, որի նշանակությունը դեռևս իր ժամանակ (XI—XII դդ.) գիտակցել ու բարձր էր գնահատել Հովհաննես Սարկավագը։ Այստեղից էլ այն կարևոր հետևությունը, թե մարդուն կարելի է ուսուցանել ամեն օգտակար նյութ, ճանաչել տալ իր շրջապատը, կյանքը, բնական ու հասարակական երևույթները, հմտացնել նրան գիտական, աստվածաբանական, իմաստասիրական խնդիրներին։ Մերժելով նախածին կամ բնածին գաղափարների տեսությունը, մարդուն՝ ընդհանրապես, այդ թվում և աշակերտին դիտում էին իբրև «մաքուր սպիտակ կամ՝ լվացված մագաղաթ», որտեղ արձանագրվում է այն ամենը, ինչ որ ուսուցվում ու թելադրվում է նրան։ Այսպիսով, ոչ միայն մանկավարժի պատասխանատվությունն էր շեշտվում, կարևոր էր դառնում թե ինչ էր ուսուցվելու, այլև՝ թե ինչպես էր տարվելու դասավանդումը։ Վարդապետ-ուսուցիչներն իրենց գործին վերաբերվում էին մանկավարժական, գիտական, հասարակական բարձր գիտակցությամբ։ Դասավանդվող առարկաները մատուցվում էին խիստ ընտրությամբ, անշուշտ, ելնելով առավելապես միջնադարյան գիտական հետաքրքրությունների մակարդակից և բարոյական սկզբունքներից։ Լայնորեն կիրառվում էր մանկավարժական այն ճիշտ տեսակետը, ըստ որի հարկավոր էր աշակերտներին «դաս ասել նախ զպարզն, ապա զվերագոյնն», նախ փոքրը, որոշակին, ապա բարձրը և վերացականը, այն էլ անպայման հաշվի առնելով նրանց «ընդունակության և կարողության չափը» և տարիքային առանձնահատկությունները։ Ուսուցվող առարկան, հատկապես Տաթևում, ավելի էր կոնկրետացվում, նյութականացվում, գործ էին ածվում պանազան գծագիր-պատկերներ, մարդուն ուսումնասիրում էին նաև մարդակազմության տեսանկյունից, փիլիսոփայական-աստվածաբանական բարդ խնդիրները աշխատում էին բացատրել բնությունից, կյանքից վերցրած օրինակներով, երբեմն նաև առակներով։ Կրթա-դաստիարակչական տեսակետից միջավայրի դերը անհրաժեշտ չափով թեև չէր գիտակցվել, բայց կարևորություն էր տրվում նրան։ Բավարար փաստեր կան հաստատելու, որ ֆիզիկական դաստիարակությանը ևս ուշադրություն էին դարձնում։

Համալսարանի նշանավոր ղեկավարների՝ Հովհան Որոտնեցու և Գրիգոր Տաթևացու իմաստասիրական տարբեր հարցերի մասին կարդացած դասախոսությունները գրանցվել ու ձևավորվել են որպես դասագրքեր, որոնք մեծ դեր են կատարել նաև հետագա դարերում ծաղկած հայկական դպրոցներում։ Այդպիսի դասագրքերից են Արիստոտելի, Պորփյուրի, Փիլոնի և այլ փիլիսոփաների, ինչպես նաև սուրբ գրքերի մեզ հասած բազմաթիվ մեկնությունները, որոնցից են Հովհան Որոտնեցու «Համառոտ լուծմունք Պերի արմենիաս գրոցն», «Հաւաքեալ ի բանից իմաստասիրաց», «Համառոտ վերլուծութիւն Պորփիւրի դժուարալուծիցն», «Հաւաքումն համառոտ վերլուծութեան Ստորոգութեանցն Արիստոտէլի», Գրիգոր Տաթևացու «Համառոտ տեսութիւն ի գիրս Պորփիւրի», «Համառոտ լուծումն Առաքինութեանցն Արիստոտէլի», «Լուծումն համառոտ ի տեսութիւնն Դաւթի», «Գիրք հարցմանց» և այլ աշխատությունները։

Անկասկած, օգտագործվում էին նաև մարդակազմության, թվաբանու-

թյան, աստղաբաշխության, քերականության և մյուս առարկաների վերաբերյալ հայ և օտար այլ հեղինակների համապատասխան երկերը։

Տաթևի համալսարանը վարդապետական գիտական կոչում տալու ամենահեղինակավոր կենտրոնն է եղել։ Գլաձորի, թերևս նաև նախորդ համալսարանների օրինակով այստեղ ուսման շրջանն ավարտող սաները գրում էին ավարտաճառեր, պաշտպանում գիտական մի որևէ դրույթ[6]։

Հայոց եկեղեցու ինքնուրույն գոյությունից հրաժարվելու գնով կաթոլիկ եկեղեցու հետ միավորվելու քաղաքականություն վարող եկեղեցականները, որ հայտնի են ունիթոր անունով, Հայաստանի բնաշխարհում սկսում են աշխուժացնել իրենց գործունեությունը XIV դարի սկզբներից։ 1318 թվականին հռոմեական կաթոլիկ եկեղեցին Ատրպատականի Թավրիզ, Սուլթանիե և Մարաղա քաղաքներում եպիսկոպոսական նոր աթոռ է հաստատում։ Այս միջոցառման նպատակը հստակ էր. Արևելքում, հատկապես հայության մեջ, կրոնական «միություն» անվան տակ, կաթոլիկական քարոզչությունն ավելի ուժեղացնել ի նպաստ Հռոմի եկեղեցու և Արևմտյան երկրների քաղաքական ու տնտեսական շահերի։ Հայկական միջավայրում որոշ հաջողությունների է հասնում 1318 թվականին Մարաղայում հաստատված քարոզիչ Բարթուղիմեոս եպիսկոպոսը։ Շուտով սրան են հարում Գլաձորի դպրոցի սաներից Հովհան Քռնեցին և այլ հայ կղերականներ, ավելի ընդլայնելով ունիթորների ազդեցության ոլորտը։ Բարթուղիմեոսը, Հովհան Քռնեցու օժանդակությամբ, Նախիջևանի շրջանի Քռնա գյուղում վանք է կառուցում ու փոխադրվում այնտեղ։ Երնջակի շրջակայքում նրանք գրավում են ևս մի քանի վանքեր, ստեղծում են գիտական և քարոզչական գրականություն, թարգմանում են Ալբերտուս Մեծի «Համառօտ հաւաքումն աստուածաբանականի ճշմարտութեան», Թովմա Աքվինացու «Համառօտութիւն աստուածաբանութեան», «Յաղագս է խորհրդոց եկեղեցւոյ», «Յաղագս տնօրէնութեան Քրիստոսի», Բարթուղիմեոսի «Քարոզգիրք», «Յաղագս վեցօրեայ արարչութեան», Պետրոս Արագոնացու «Գիրք դատաստանաց», «Յաղագս եօթն մեղաց», «Գիրք առաքինութեանց և մոլութեանց» աշխատությունները և մի շարք այլ երկեր։

Հակաունիթորական պայքարում հաջողության հասնելու համար Հովհան Որոտնեցին, Գրիգոր Տաթևացին, նրանց սաներն ու հետնորդները ջանասիրաբար ուսումնասիրում են անտիկ մտածողների, քրիստոնյա եկեղեցու հռչակավոր գործիչների, հայ մատենագրության անվանի երախտավորների և հենց իրենց՝ ունիթորների երկերը։ Նրանք պատմա-քաղաքական և հասարակական-գաղափարական դժվարին պայմաններում գիտական լուրջ արժեքներ են ստեղծում, հարստացնելով հայ միջնադարյան մատենագրությունը։ Այս առումով ևս Տաթևի համալսարանը ազգային հասարակական կյանքի և գիտա-մշակութային առաջադիմության խոշորագույն օջախներից մեկն է հանդիսանում։

Տաթևի համալսարանից հետո հաջորդ առավել արդյունավետ և հռչակավոր ուսումնա-կրթական կենտրոնը Մեծոփի դպրոցն է եղել։

Գլաձորի համալսարանի սան՝ Մխիթար Սասնեցու ղեկավարությամբ այն գործում էր դեռևս XIV դարի առաջին կեսերին։ Բայց Հովհաննես Մեծոփեցու ժամանակ՝ 1390-ական թվականներից, ավելի է աշխուժանում։ Հովհաննես

[6] Տե՛ս Լ. Խաչիկյան, Գլաձորյան համալսարանը և նրա սաների ավարտական ատենախոսությունները, Երևանի պետ. համալսարանի գիտական աշխատություններ, XXIII, էջ 428—432։

Մեծոփեցին Ապրակունիսում աշակերտել է Հովհան Որոտնեցուն և Գրիգոր Տաթևացուն։ Ստանձնելով Մեծոփա վանքի վանահայրության պաշտոնը, նա դպրոցը վերակառուցում է ըստ Գլաձորի և Տաթևի համալսարաններում կիրառված դպրոցական համակարգի և ուսումնական ծրագրի։ 1408 թ. Գրիգոր Տաթևացին իր շուրջ 100 ուսանողներով փոխադրվում է այստեղ։ Շատ շուտով նրա շուրջ հավաքվում է ուսանողների հոծ բազմություն։ Գրիգոր Խլաթեցին, գրեթե 60 տարեկան վաստակավոր մի անձնավորություն, գալիս է վերստին աշակերտելու։ Այս օրինակին ուրիշ շատ հետևողներ էլ են լինում։

Սակայն Մեծոփա դպրոցը շուտով կորցնում է Գրիգոր Տաթևացուն։ Մեկմեկուկես տարի անց նա վերադառնում է Տաթև՝ քաղաքական, տնտեսական պայմանների վատթարացման, Աղթամարի Դավիթ կաթողիկոսի ու նրա կուսակիցների դավադիր գործունեության և իր ծերության պատճառով։ Նրա մահվանից հետո դպրոցի ղեկավարությունը կարճ ժամանակով ստանձնում են Գրիգոր Խլաթեցին (Ծերենց) և Հովհաննես Մեծոփեցին, ապա ուսուցչապետ է կարգվում անվանի մատենագիր և հասարակական գործիչ Թովմա Մեծոփեցին։

Դժբախտաբար, այս դպրոցին ևս երկարատև ու անդորր աշխատանքային կյանք չի վիճակվել։ Օտար նվաճողների խժդժությունները հարկադրել են Թովմա Մեծոփեցուն՝ իր աշակերտներով միաժամանակ հեռանալ նախ Բաղեշ (1436), ապա Մուշի Առաքելոց վանքը (1439)։ Բայց, ի վերջո, նա վերադառնում է Մեծոփ և վերսկսում ուսուցումը մինչև իր կյանքի վերջը՝ 1446 թվականը։ Դրանից հետո դպրոցը շուտով կորցնում է իր նշանակությունն ու դադարում գոյություն ունենալուց։

Թովմա Մեծոփեցու մանկավարժական գործունեության 40 տարիների ընթացքում այստեղ հանգամանալից հետազոտության նյութ են դառնում գիտության, գրականության և արվեստի գրեթե բոլոր բնագավառները։ Դասավանդվող հիմնական առարկաների համար հրավիրվում են ճանաչում գտած մասնագետներ, ինչպես տոմարագիտության համար՝ Հակոբ Ղրիմեցին։

Հետաքրքիր է նշել, որ առ այսօր մեզ հասած լեզվա-ուսուցողական առաջին հայերեն դասագիրքը. հորինվել է այստեղ՝ Թովմա Մեծոփեցու կողմից[7]։ Բանասիրության մեջ այն համարվել է «լեզվաբանական շատ լուրջ աշխատություն», որտեղ իմիջիայլոց պահպանվել են քրդերեն ամենահին գրավոր բնագիրը, աղվանական այբուբենի միակ օրինակը և այլն։ Թովմա Մեծոփեցին ուսուցման նպատակով մշակել է նաև «Մեկնութիւն աւետարանին Ղուկասու», «Մեկնութիւն Յայտնութեան Յովհաննու» և «Խմբագիր մեկնութիւն չորեքտասան թղթոցն Պօղոսի» երկերը։ Գրիգոր Տաթևացին ևս վկայում է, թե Մեծոփում եղած ժամանակ «դաս ասելով» հորինել է Հոբի գրքի, Արիստակես վարդապետի և Գևորգ Լամբրոնացու «Խրատ գրչութեան» և Հովհաննու ավետարանի մեկնությունները։ Հակոբ Ղրիմեցին այստեղ եղած տոմարագիտական և տիեզերագիտական դասագրքերը («տետրերը») գոհացուցիչ չի գտնում և այս առարկաների դասավանդումը գիտական բարձր մակարդակի վրա դնելու, ուսանողներին ավելի մատչելի դարձնելու նպատակով «դաս ասելով» շարադրում է այդ բնագավառի իր մի քանի աշխատությունները[8]։

Մեծոփա դպրոցին առընթեր եղել է բավականին հարուստ մատենադա-

[7] Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 7112։

[8] Տե՛ս «ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», Ա, էջ 359, 362, 86, 180—181։

րան։ Տեղում ընդօրինակում, ծաղկում, կազմում էին հայերեն բազմաթիվ ձեռագիր մատյաններ, որոնց մի մասը մեզ է հասել Թովմա Մեծոփեցու սրբագրությամբ, լրացումներով կամ հիշատակարաններով։ Նա ինքը միաժամանակ ուսուցանում էր գրչության արվեստ[9]։ Ուստի, նաև որպես գրչության օջախ Մեծոփա դպրոցը նշանակալից դեր էր կատարում։

Ոչ միայն մշակութային-գիտական, այլև ազգային-հասարակական կարևոր գործունեություն է ծավալվել այստեղ։ Գլաձոր-Տաթևյան ավանդները նշանակալից են նաև այս բնագավառում։ Այդ հատկապես դրսևորվել է կաթողիկոսական աթոռը Սսից Էջմիածին տեղափոխելու պատմա-քաղաքական խոշոր իրադարձության ժամանակ։

XIV դարից մինչև XV դարի առաջին կեսը բավարար արդյունավետությամբ գործում էր Սյունյաց աշխարհի Հերմոնի դպրոցը, հատկապես Գլաձորի համալսարանի անվանի մանկավարժ Տիրատուրի (XIV դարի առաջին կես) և Հովհան Որոտնեցու երևելի աշակերտ Հովհաննես Հերմոնեցու (XV դարի առաջին կես) ժամանակաշրջանում։

Այս ժամանակաշրջանում ուսումնա-գիտական նշանակալից արդյունքի են հասնում Եղիվարդի, Այրիվանքի, Հավուց-Թառի, Աստապատի, Սուխարա վանքի, Սալնապատի, Ցիպնա վանքի դպրոցները։ Դրանց գործունեության հետ են կապված հատկապես հետևյալ անվանի ուսուցիչների՝ Սիմեոն Այրիվանեցու, Սարգիս Ապրակունեցու, Վարդան Հոգոցեցու, Գրիգոր Խլաթեցու, մասամբ նաև որպես սաներ՝ Թովմա Մեծոփեցու և Առաքել Բաղիշեցու անունները։ Այս դպրոցները ուղղակի թե անուղղակիորեն առնչվում են Տաթևի համալսարանին, շարունակում նրա ուսումնա-գիտական ու մանկավարժական-դաստիարակչական ավանդները, շեշտը դնելով գիտա-փիլիսոփայական, հանրակրթական առարկաների ուսումնասիրման և գրչագրական-ձեռագրագիտական հմտություն ձեռք բերելու վրա։

XIV—XV դարերում բավական բարգավաճ վիճակում են եղել Երզնկայի Սեպուհ լեռան Ավագ և Կապոսի վանքերին առընթեր դպրոցները, որոնցում դարձյալ առավելապես ուշադրություն էր նվիրվում բնա-փիլիսոփայական և գիտական բնույթի առարկաների ուսումնասիրության գործին։ Այս դպրոցներում գործած ուսուցչապետներից առավել հայտնի են Կիրակոս, Գևորգ, Հովհաննես, Մկրտիչ, Աբրահամ Երզնկացիները և Հովհաննես Համշենցին։ Առանձնապես նշանակալից դեր են խաղացել Գևորգ Երզնկացին և Հովհաննես Համշենցին[10]։ Այս դպրոցներում ուսումնառության էին գալիս նաև հայկական պաղթօջախներից, և վկայություններ կան, որ դրանցում ուսանել են նույնիսկ ասորի երեխաներ[11]։

Այդ դպրոցները միաժամանակ գրչության մեծ կենտրոններ են եղել, որոնցից մեզ հասած ձեռագրերը բավական մեծ թիվ են կազմում։ XV դարի վերջերին երկուսն էլ անշքանում ու փակվում են։

Հայկական գաղթավայրերում, ինչպես հայտնի է, բուն Հայաստանում ստեղծված բազմաղան ավանդներից հատկապես պահպանվել են այնպիսինները, որոնք գիտա-մշակութային բնույթի են և հանդիսացել են ազգապահպան-

---

9 Տե՛ս նույն տեղում, էջ 305։

10 Տե՛ս «ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», Ա, էջ 142, Բ, էջ 204, 205, 207։

11 Տե՛ս Ա. Մովսիսյան, Ուրվագծեր հայ դպրոցի և մանկավարժության պատմության, էջ 302։

ման փրկարար գործոններ։ Նրանցում ամենուրեք հիմնվել են դպրոցներ, հորինվել են դասական, գրական, գիտական երկեր, ընդօրինակվել, ծաղկվել ու կազմվել են ձեռագրեր և այլն։

Դեռևս XIV դարի կեսերից Ղրիմում գործում էր ս. Խաչ վանքի դպրոցը։ Այն ուսումնա-կրթական բավականին աշխույժ կյանք է ապրում, բազմաթիվ աշակերտներից ոմանք դառնում են գրիչներ, ծաղկողներ, մատենագիրներ ու տաղասացներ։

XV դարում (1428—1475 թթ.) հռչակ էր հանել Ղրիմի հայոց Անտոնի անապատը, որի ուսուցչապետն էր Սարգիս փիլիսոփան։ Դպրոցի սաները այստեղ ուսումնասիրում էին ոչ միայն բոլոր դպրոցների համար ավանդական դարձած կրոնա-աստվածաբանական, քերականագիտական առարկաներ, այլև տոմարագիտություն, աստղաբաշխություն, համարողություն (թվաբանություն) և այլն։ Սարգիս փիլիսոփան «դաս ասելով» նրանց մեկնում էր Արիստոտելի, Պորփյուրի աշխատությունները և նրանց մասին հայ փիլիսոփաների, մասնավորապես Հովհան Որոտնեցու գրած մեկնությունները։ Այս առթիվ հետաքրքիր վկայություն է հաղորդում դպրոցի սան Թադեոս Ավրամենցը. «Լուծմունք Պերիարմենիասի Հովհաննու Որոտնեցւոյ» աշխատությունն ընդօրինակելիս, որպեսզի որևէ բան «ծածուկ և անհայտ» չմնա, նա ձեռագրի լուսանցքներում գրանցում է դասախոսության ընթացքում ուսուցչի տված մեկնաբանությունները[12]։

Հայաստանում և հայկական գաղթօջախներում XIV—XV դարերում գործում են բարձր կարգի այլ դպրոցներ ևս[13]։

Բուն Հայաստանի դպրոցների գործունեությունը խամրում է XV դարի կեսերից մինչև XVII դարի սկիզբը։ Հիմնական պատճառը երկրում տիրող իրադրությունն էր, հատկապես Սեֆյան Պարսկաստանի և Օսմանյան Թուրքիայի միջև բռնկված պատերազմները՝ XVI դարի սկզբից մինչև XVII դարի առաջին տասնամյակները։ Միայն Բաղեշի Խնդրակատար վանքի դպրոցն էր քիչ թե շատ առկայծում։

Պատմական այսօրինակ անբարենպաստ պայմաններում XVII դարի սկզբին կյանքի կոչված Սյունյաց Մեծ կամ Հարանց անապատը, անկասկած, ուշագրավ երևույթ էր։ Նրանով սկիզբ է դրվում Արևելյան Հայաստանի գիտամշակութային ապագա ծավալուն գործունեության թեպետ դանդաղ, բայց անխափան առաջընթացին։

Հեռավոր Երուսաղեմից Սարգիս եպիսկոպոսն ու Կիրակոս Պոնտացի քահանան, Մովսես Տաթևացու՝ Հայաստանի ուսումնական կյանքի ապագա խոշոր գործչի ու կաթողիկոսի, հեռատես խորհրդով գալիս են Սյունիք (1611—1621) և Տաթևի վանքի մերձակա մի վայրում եկեղեցական նոր միաբանության հիմք դնում։ Շատերն են միանում նրանց։ 1615 թ. այստեղ է գալիս նաև Մովսես Տաթևացին, և անապատը վերածվում է ուսման նշանավոր կենտրոնի։ Դրա համար, անշուշտ, կային որոշ նախադրյալներ. Մեծ անապատը իր աշխարհագրական դիրքի շնորհիվ մեկուսացած էր արտաքին աշխարհից, հեռու էր գտնվում պատերազմական գործողությունների թատերաբեմերից, վայելում էր Մելիք-Հայկազի բարյացակամ ուշադրությունը, այստեղ կային դեռևս բա-

12 Տե՛ս «ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ» Ա, էջ 394—395։

13 Տե՛ս Վ. Միքայելյան, Ղրիմի հայկական գաղութի պատմություն, Երևան, 1964, էջ 293։

նիմաց վարժապետներ, որոնք ինչ-որ չափով պահել էին Սյունյաց հին դըպրոցների գիտա-մանկավարժական ավանդույթները։ Կազմակերպչական իր սկզբունքներով, դասավանդվող առարկաներով ուսումնական այս կենտրոնը խոր հետք է թողնում հայ դպրոցական կյանքի ու մշակույթի պատմության մեջ ընդհանրապես։

Հարանց անապատի դպրոցում են դասավանդել Կիրակոս Պոնտացի քահանան, Մովսես Տաթևացին, Պողոս Մոկացին, Ներսես Մոկացին (Բեղլու), Թադևոս Տաթևացին։ Ներսես Մոկացին եկել էր հեռավոր Բաղեշի Ամիրդոլու (Ամլորդւոյ) վանքից և «արտաքին» գիտություններ էր դասավանդում։

Մովսես Տաթևացին իր 20—25 աշակերտներով շրջում է Հայաստանի գավառները ուսման ու գիտության նկատմամբ ժողովրդի մեջ սեր բորբոքելու նպատակով։ Պողոս Մոկացու հետ համագործակցելով, նա տարրական դըպրոցներ է հիմնում Աստապատում, Շոռոթում, Ագուլիսում։ Նրան են վերագրում նաև երեք կուսանոցների (կանանց վանքերի) հիմնադրումը Կարբիում, Հալիձորում և Շնհերում[14]։

Պաշտոնի փոփոխման բերումով Մովսես Տաթևացին մեկնում է Մեծ Անապատից։ Սակայն, միշտ հետամուտ ուսման գործին, 1620 թ. հիմնում է Երևանի Անանիա առաքյալի անապատը և մի քանի տարի անց՝ Հովհաննավանքի դպրանոցը։ Առաջինը շուտով բարգավաճում է, որին նպաստում է հատկապես Նոր Ջուղայի առևտրականների նյութական օժանդակությունը։ Մինչ այդ՝ այս երկու դպրոցներում «արտաքին» գիտություններ էր դասավանդել նշանավոր վարդապետ Մելքիսեդեկ Վժանեցին, որը Լիմ անապատից այս կողմերն էր տեղափոխվել։

XIV—XVI դարերի ընթացքում Էջմիածնի դպրոցը չի գործել։ Բացի պատմա-քաղաքական անբարենպաստ պայմաններից, տվյալ խնդրում բացասական դեր են կատարել եկեղեցա-վարչական զանազան տարակարծությունները, որոնք երբեմն իրարամերժ տխուր պայքարի են վերածվել։ Այս վիճակը երկարաձգվում է մինչև XVII դարի առաջին քառորդը, երբ մի քանի միաբանների խնդրանքով Էջմիածին է գալիս Մելքիսեդեկ Վժանեցին, որին աշակերտում են Ոսկան Երևանցի և Սիմեոն Ջուղայեցի նշանավոր գիտնական-վարդապետները։ Է՛լ ավելի կարգավորվեց Էջմիածնի դպրոցը, երբ Փիլիպպոս կաթողիկոսի կարգադրությամբ Հովհաննավանքի դպրոցը 1635—1637 թթ. տեղափոխվեց այստեղ։ Հովհաննավանքում, սակայն, ուսուցումը չի դադարում։ Այստեղ դասավանդում են նաև «Արհեստ արտաքնոց» (Սիմեոն Ջուղայեցի), «Երաժշտություն» (Նիկողայոս Իլովացի), ուսանում են «բազում աշակերտներ», որոնց թվում՝ Զաքարիա Քանաքեռցի պատմիչը, ընդօրինակում են ձեռագրեր։ Դպրոցին առընթեր մատենադարանում պահվել են «բազում գրքեր»[15]։

Էջմիածնում վերահաստատված դպրոցը շուտով բարգավաճում է, ունենալով մեծ թվով աշակերտներ և Ոսկան Երևանցու, Սիմեոն Ջուղայեցու, Ստեփանոս Լեհացու նման հմուտ գիտնական-ուսուցչապետներ։ Վերջիններս գիտական առաջադիմության ջերմ կողմնակիցներ են եղել։ Արդեն Մելքիսեդեկ Վժանեցու թողած գիտական ավանդը, հայ եկեղեցու անկախությանը շարունակ սպառնացող կաթոլիկության դեմ տարվող պայքարը, Եվրոպայի հետ հաճա-

---

14 Տե՛ս Ն. Ակինյան, *Մովսես Գ. Տաթևացի հայոց կաթողիկոսն և իր ժամանակը...*, Վիեննա, 1936, էջ 209։

15 Զաքարիա Քանաքեռցի, *Պատմագրութիւն*, Գ, էջ 34—35։

խացող առևտրական և գիտա-մշակութային առնչությունները առիթ և նախադրյալներ էին, որ Էջմիածնում ավելի հանգամանորեն ուսումնասիրեն «արտաքին» գիտությունները և ուսումնական համապատասխան ծրագիր իրագործեն։ Հատկապես Ստեփանոս Լեհացին, լինելով բարձր զարգացման տեր, օտար լեզուներ տիրապետող մի անձնավորություն հետամուտ է լինում, որ սաները խորը ուսումնասիրեն փիլիսոփայական ու ճշգրիտ գիտությունները և հաղորդակից լինեն Եվրոպայում ստեղծված գիտա-մատենագրական նվաճումներին։ Նա թարգմանական ծավալուն աշխատանք է կատարում, հիմնականում նկատի ունենալով սաների ուսման առաջընթացը։

Հիշյալ ուսուցիչների ժամանակ դպրոցը գրեթե հիմնովին վերափոխում է Էջմիածնի միաբանության կրթական վիճակը։ Այնտեղ արդեն կային «քաջաբան երևելի վարդապետներ, աստվածային գրքերի մեկնիչներ, լավ ու հմուտ դիտողներ»,—ինչպես վկայում է ինքը՝ Ստեփաննոս Լեհացին[16]։

Բավականին կարգավորված այս վիճակը, դժբախտաբար, չի հարատևում։ Դպրոցը դարձյալ դադարում է գործելուց քաղաքական և վանական ներքին վեճերի պատճառներով։ Միայն 1763 թվականից այն վերստին սկսում է ծաղկել Սիմեոն Երևանցու ձեռնարկած միջոցառումների շնորհիվ։

Սյունյաց Մեծ անապատը ճյուղավորվում ու ծավալվում է ոչ միայն մերձակա (Երևան, Հովհաննավանք, Էջմիածին, այնուհետև՝ Սևան, Տանձատափ, Շամքոր-Ջարեքագետ), այլև ավելի հեռու գավառներում։ Ներսես Մոկացին (Բեղլու) մինչև 1622 թվականը Մեծ անապատում «դաս ասելուց» հետո, երբ նվազ հետաքրքրություն է նկատում իր դասավանդած «արտաքին» գիտությունների հանդեպ, մեկնում է Լիմ և այնտեղ նոր դպրոց հիմնում։ Շուտով այստեղ բազմանում է ուսանողության թիվը, և դպրոցն ստանում է կարևոր դիրք։

Ներսես Մոկացու մահից հետո (1627), դպրոցի ղեկավարությունն (1627—1646) անցնում է Ստեփաննոս Մոկացու (Շատախեցու) ձեռքը։ Ուսանողության հետագա աճը նկատի առնելով, դպրոցի ղեկավարները իրագործում են մերձակա Կտուց անապատը վերակազմելու ծրագիրը։

Այս երկու անապատների դպրոցական կյանքի վերաբերյալ վկայություններից երևում է, որ Լիմն իր գոյությունը շարունակել է նաև XVIII դարում՝ նվազ ծավալով ու արդյունավետությամբ, իսկ Կտուցի դպրոցը երկար չի գոյատևել։

Բաղեշի Խնդրակատար վանքի դպրոցը գրեթե միակ քիչ թե շատ երևելի ուսումնական կենտրոնն էր XVI դարում։ Գրիգոր Արճիշեցու (Ջորթան) սան Ներսես Մատաղը վերակազմում է այդ դպրոցը և համեմատաբար աշխույժ գործունեություն ծավալում, որը շարունակվում է Ներսես Բաղիշեցու, Ներսես Ամկեցու, Հովհաննես Բրգութենցու, Հովհաննես Ոստանցու ժամանակ։

Նշանավոր էր նաև Բաղեշի Ամիրդոլու վանքի դպրոցը։ Այն հիմնվում է Բարսեղ Գավառցու կողմից XVI դարի վերջին տասնամյակում։ Սկզբնապես այստեղ շատ համեստ արդյունքներ են ձեռք բերվում։ Սակայն, երբ ղեկը անցնում է Վարդան Բաղիշեցու ձեռքը, բարեփոխվում է դպրոցի գիտա-կրթական մակարդակը, աճում է ուսանողության թիվը, խորանում են հետաքրքրությունն ու սերը մեր մատենագրական գանձերի նկատմամբ, հարստանում է դպրոցին

---

16 Տե՛ս Աշ. Հովհաննիսյան, Դրվագներ հայ ազատագրական մտքի պատմության, էջ 164։

ունեին իր մատենադարանը։ Ավելի լայն ուսումնասիրության նյութ են դառնում «նուրբ գրյանքն» ու «արտաքին գիտությունները», անշուշտ նաև հանրակրթական այն առարկաները, որոնք պարտադիր կերպով մաս էին կազմում տվյալ ժամանակի ուսումնական ծրագրերի։ Առանձնապես նշելի է հայ պատմագրության նկատմամբ ցուցաբերված հատուկ վերաբերմունքը։ Մեր պատմիչներից մի քանիսի (Կորյուն, Փավստոս Բուզանդ, Ղազար Փարպեցի, Սեբեոս, Ղևոնդ Երեց) երկերի մեզ հասած հնագույն, երբեմն միակ ձեռագրերն ընդօրինակվել են Բաղեշի դպրոցում[17]։

Այստեղ հոգ էր տարվում ոչ միայն տեղի, այլև շրջակա գավառների, մասնավորապես Առաքելոց վանքի մատենադարանում պահվող քայքայված ձեռագիր մատյանների նորոգման ու խնամքով պահպանման մասին[18]։

Հայերեն ձեռագրերի մեզ հասած առաջին ցուցակը կազմված է այս դպրոցում՝ Վարդան Բաղիշեցու կողմից, որը ձեռագրագիտական ու մատենագիտական կարևոր սկզբնաղբյուր է[19]։ Վարդան Բաղիշեցու մահով (1704) Ամրդոլու դպրոցն անշքանում և խամրում է[20]։ Այդ դպրոցի անվանի սան Հովհաննես Կոլոտը 1719 թվականին Կ. Պոլսի Սկյուտար հայաշատ թաղամասում հիմնում է նոր դպրոց։

Միջազգային խաչուղիների վրա ընկած և Եվրոպային մոտիկ՝ Կ. Պոլսում կյանքի կոչված այդ դպրոցին վերապահված էր առանձնակի դեր։ Այստեղ ոչ միայն արմատավորվում են բաղեշյան հայտնի դպրոցի ուսումնա-կրթական ավանդները, այլև եվրոպական դպրոցների փորձը[21]։ Ղուկաս Խարբերդցին, որը այս դպրոցի սաներից էր, թարգմանական արդյունավետ աշխատանք է տանում՝ եվրոպացի հեղինակների մի շարք երկեր թարգմանելով հայերենի[22]։

Այս դպրոցում հատուկ ուշադրություն է նվիրվում հայ պատմիչների երկերի հրատարակության գործին։ Հովհաննես Կոլոտի անմիջական ջանքերով լույս են ընծայվում Ագաթանգեղոսի, Հովհան Մամիկոնյանի, Փավստոս Բուզանդի, Մեսրոպ Վայոցձորեցու պատմագրական աշխատությունները, Գրիգոր Տաթևացու և այլ հեղինակների բազմաթիվ ստեղծագործությունները։ Մշակութային արժեքավոր ձեռնարկ պիտի համարել նաև Գում-Գափուի մատենադարան-դրադարանի հիմնադրումը, որը նախապես հիշյալ դպրոցին ծառայելու նպատակ է ունեցել։ Այս դպրոցը շարունակում է արդյունավետ գործել նաև հետագա տարիներին՝ Հակոբ Նալյանի (1741—1764) և Զաքարիա Փոքուզյանի (1768—1790) պատրիարքության օրոք։ Զաքարիա պատրիարքը Բարթողիմեոս Կապուտիկյանի միջոցով 1790-ական թվականներին բաց է անում Արմաշի դպրեվանքը։

Դպրոցական կյանքը աշխույժ ու յուրովի ընթացք է ապրում Նոր Ջուղայում։ XVII դարի 30-ական թվականներին Սյունյաց Մեծ Անապատի սան Խաչատուր Կեսարացու կողմից այստեղ դպրոց է հիմնվում, որն իր գոյության ավելի քան 50 տարիների ընթացքում մնում է գլխավոր և կենտրոնական

---

17 Տե՛ս Ն. Ակինյան, *Բաղեշի դպրոցը*, Վիեննա, 1952, էջ 2—3։

18 Տե՛ս Ա. Ալպոյաճյան, *Պատմություն հայ դպրոցի*, Կահիրե, 1946, էջ 464։

19 Տե՛ս *Մատենադարան*, ձեռագիր № 737, թ. 223բ—232ա։

20 Տե՛ս Ա. Ալպոյաճյան, *նշված աշխատությունը*, էջ 467—468, 575։

21 Տե՛ս *նույն տեղում*, էջ 575—577։

22 Տե՛ս Հ. Աճառյան, *Հայոց անձնանունների բառարան*, Գ, Երևան, 1946, էջ 153, տե՛ս նաև *Մատենադարան*, ձեռագիր № 82, թ. 166բ։

դպրոցը Նոր Ջուղայում։ Այնպիսի մի միջավայրում, ինչպիսին Նոր Ջուղան էր, որն իր գործարար առևտրականների շնորհիվ կապված էր Ասիայի ու Եվրոպայի մայրցամաքների մշակութային, գիտական, քաղաքական գրեթե բոլոր կարևոր կենտրոնների, ինչպես և բուն Հայաստանի հետ, այս դպրոցը կոչված էր կատարելու նշանակալից դեր։ Հայ խոջայական դասի և վաճառականների աջակցության շնորհիվ նյութական պայմաններ են ստեղծվում դպրոցի բարգավաճման համար։ Աշակերտները հիմնականում վերոհիշյալ խավերից լինելով, առևտրական գործնական ասպարեզին պիտանի դառնալու համար ավանդական առարկաների հետ միասին ուսումնասիրում էին տոմարագիտություն, հաշվողական առարկաներ, ձեռք էին բերում չափերի, կշիռների վերաբերյալ գիտելիքներ և այլն։ Կոստանդ Ջուղայեցու Թվաբանության ուշագրավ դասագիրքը առևտրականներին հասցեագրված հաշվապահական խրատներով՝ այս դպրոցի ուսումնական ծրագրի մասն էր կազմում[23]։ Կոստանդ վարդապետը, որպես գործարար հետաքրքրությունների տեր գիտնական-ուսուցիչ, կարևոր դեր է կատարել դպրոցի ուրույն թեքումի կայունացման և ուսումնասիրվող առարկաների ընտրության ու մշակման գործում։

Այս դպրոցը մի շարք անվանի դեմքեր է տվել, որոնց թվում են Հակոբ, Ստեփաննոս, Աղեքսանդր (երեքն էլ Ջուղայեցի) և Աստվածատուր Համադանցի կաթողիկոսները, Դավիթ, Սիմեոն, Խաչատուր, Մինաս, Հովհաննես Կոստանդ (բոլորն էլ Ջուղայեցի), Ոսկան Երևանցի և Հովհաննես Մրքուզ գիտնական-մատենագիրները։ Սրանցից շատերը միաժամանակ եղել են այս դպրոցի ուսուցիչներ[24]։ Սրանցից ոմանք առևտրական և ազգային-հասարակական կարևոր դեր են կատարել պարսկահայ, հնդկահայ, ռուսահայ գաղութներում և հայ ազատագրական մտքի զարգացմանը նշանակալից ծառայություններ մատուցել[25]։

Նոր Ջուղայի դպրոցը հանդիսացել է նաև գրչության արդյունավետ օջախ։ Բազմաթիվ ձեռագրեր այստեղ ընդօրինակվել, ծաղկվել, կազմվել և նորոգվել են։ Բարձր զարգացում է ապրել նաև որմնանկարչության արվեստը։ Դպրոցին առընթեր հիմնված մատենադարանը մինչև օրս շարունակում է իր գոյությունը և ունի շուրջ 600 հայերեն ձեռագիր։

Նոր Ջուղայի դպրոցը գոյատևել է մինչև XVIII դարի վերջերը, երբ աճող արտադաղթը և տնտեսական աննպաստ մի շարք գործոններ անտիճանարար անշքության մատնեցին տեղի հայ գաղութը։

XVIII դարի սկզբին հայ դպրոցական կյանքում երևան է գալիս մի նոր ուսումնական-կրթական օջախ, որը գիտական, գրական ու մշակութային արդյունավետ առաջընթացով խորը հետք է թողնում մեր պատմության մեջ։

Դեռևս XVII դարի վերջերին Մխիթար Սեբաստացին ծրագրում է հիմնել հոգևոր միաբանություն և դպրոց։ Հայաստանի քաղաքական անբարեհույս և տնտեսական ծանր պայմաններում դա խիստ դժվար իրագործելի ծրագիր էր։ Պատահական չէ, որ այդ հույսերով երկարատև թափառաշրջիկ կյանքը՝ Սեբաստիայից էջմիածին, Սևան, Բասեն, Հալեպ, Կիպրոս, Կ. Պոլիս, Էրզրում,

23 Տե՛ս Հ. Տեր-Հովհանյանց, Պատմութիւն Նոր Ջուղայի որ յԱսպահան, Բ, Նոր Ջուղա, 1881, էջ 253, 255։

24 Տե՛ս Խ. Ջուղայեցի, Պատմութիւն պարսից, էջ 117—118, 153—158, 214—215, 219։

25 Տե՛ս Աշ. Հովհաննիսյան, Դրվագներ հայ ազատագրական մտքի պատմության, Բ, Երևան, էջ 462, 576։

դարձյալ Կ. Պոլիս, դրական արդյունքի չի հասցնում նրան։ Հարկադրված՝ իր մի քանի համախոհներով, 1706 թ. նա հեռանում է Կ. Պոլսից և հաստատվում Մորեայի հունական Մեթոն քաղաքում։ Սակայն, շուտով ստիպված է լինում թողնել նաև Մեթոնը, որը գրավվում է թուրքերի կողմից, և անցնել Վենետիկ։ Այստեղ, 1717 թ. Սուրբ Ղազար կղզում նա հիմնադրում է հետագայում իր անունով Մխիթարյան կոչված միաբանությունը։ Վենետիկը, անշուշտ, նման նպատակի համար պատահաբար ընտրված վայր չէր։ Այն վաճառաշահ կենտրոն էր Եվրոպայում և քաղաքական, գիտական ու մշակութային կյանքի եռուն օջախ։ Հայերի համար ծանոթ վայր է եղել Ադրիատիկի նշանավոր այդ քաղաքը վաղեմի ժամանակներից։ Դեռևս XIV դարում այստեղ գոյություն է ունեցել «Հայոց տուն», իսկ 1512 թ. տպագրվել է առաջին հայերեն գիրքը։

Մխիթար Սեբաստացին կարճ ժամանակում կազմակերպում է միաբանության կյանքը և դպրոց հիմնում, ուր անմիջապես սկսվում է եռուն, նպատակասլաց ու մեղվաջան աշխատանք։

Դպրոց էին ընդունվում 12—16 տարեկան տղաներ, հիմնականում Կ. Պոլսից, մասամբ էլ Արևմտյան Հայաստանի տարբեր գավառներից։ 1732 թ. արդեն դպրոցն ուներ երկու բաժին՝ նորընծայարանի և քահանայության։ Դպրոցի առաջին ուսուցիչը եղել է ինքը՝ Մխիթարը, ապա Ստեփանոս և Մատթեոս Եվդոկիացիները, իսկ հետագա տարիներին՝ դպրոցի այլ շրջանավարտներ։

Սկզբնական շրջանում դասավանդվել են ավանդական այն բոլոր առարկաները, որոնք մշտական մասն են կազմել միջնադարյան հայկական դպրոցների ուսումնա-կրթական ծրագրի՝ հռետորություն, փիլիսոփայություն, աստվածաբանություն, տրամաբանություն, ուսումն սուրբ գրոց, քերականություն, «համարողական արուեստ» և այլն։ Աստիճանաբար, ավելի հաճախակի ու սերտորեն շփվելով եվրոպական դպրոցների գործունեության հետ, մոտիկից ծանոթանալով նրանց ծրագրերին ու սիստեմներին, Մխիթարյանները վերակառուցում են իրենց ուսումնական ծրագիրը և հատկապես լայն տեղ հատկացնում պատմական, աշխարհագրական, գիտական, գրական, լեզվագիտական առարկաներին։

Դպրոցի սաների մատենագրական ժառանգության ուսումնասիրությունը հաստատում է, որ նրանք բազմակողմանի և հիմնավոր գիտելիքներ էին ձեռք բերում, տիրապետում բազմաթիվ լեզուների։

Շրջանավարտների շարքում եղել են հմուտ պատմաբաններ, աշխարհագրագետներ, աստվածաբաններ, լեզվաբաններ, քերականագետներ, բառարանագիրներ, գրականագետներ, թարգմանիչներ, նույնիսկ մաթեմատիկոսներ, քիմիկոսներ, տնտեսագետներ, հանքաբաններ և այլն։ Մինչև XVIII դարի վերջն այստեղ ծավալվում է հայ իրականության մեջ աննախընթաց գիտամատենագրական գործունեություն։ Մանկավարժական և եվրոպական քերականական մտքի համեմատ հայերենի նոր քերականություն ստեղծելու ծրագրով կազմվում և հրատարակվում են քերականական երկեր[26]։ Մեծ հաջողություն է արձանագրվում բառարանագրության մարզում. հրատարակվում է Մխիթար Սեբաստացու «Բառգիրք հայկազեան լեզուի»[27] ծավալուն աշխատու-

---

[26] Տե՛ս Մ. Սեբաստացի, Դուռն քերականութեան աշխարհաբար լեզուին հայոց, Վենետիկ, 1727, Մ. Չամչյան, Քերականութիւն Հայկազեան լեզուի, Վենետիկ, 1779։

[27] «Բառգիրք Հայկազեան լեզուի» Ա, Վենետիկ, 1749, Բ, Վենետիկ, 1769։

*կյունը, որը հսկայական հետազոտական աշխատանքի, բանասիրական մանրախույզ քննությունների արդյունք է։ Օգտակար աշխատանք է կատարվում միջնադարյան հայ պատմագիրների երկերի հրատարակության գծով*[28]։

*Միքայել Չամչյանի «Պատմութիւն Հայոց»*[29] *եռհատոր մեծածավալ աշխատության տպագրությամբ Մխիթարյանները ծանրակշիռ ներդրում են կատարում հայ ժողովրդի հազարամյա պատմության գիտական ուսումնասիրության բնագավառում։*

*Դպրոցի, երբեմնի սաների և մանկավարժների ջանքերով հրապարակ են գալիս մի շարք գիտական աշխատություններ, որոնք միաժամանակ ուսումնական ձեռնարկներ էին տվյալ դպրոցի համար։ Դրանցից են՝ Ստեփանոս Ագոնցի «Ճարտասանութիւնը», Սուքիաս Աղամալյանի թվաբանական, Վրթանես Ասկերյանի տոմարագիտական, Ղուկաս Ինճիճյանի աշխարհագրական, Սահակ Պրոնյանի երկրաչափական երկերը*[30]։

*Այստեղ 1800 թ. սկսում է հրատարակվել հայերեն երկրորդ պարբերականը՝ «Տարեգրութիւնը»։*

*Մխիթարյանների ջանքերով մինչև XVIII դարի վերջը լույս է ընծայվել շուրջ 100 անուն գիրք։ Դպրոցին առընթեր կազմակերպված մատենադարանը հարստանում է միջնադարյան մշակույթի բոլոր բնագավառների մասին արժեքավոր տվյալներ պարունակող հարյուրավոր հայերեն ձեռագիր մատյաններով։*

*Սակայն, հարկ է նշել, որ Մխիթարյանների, հատկապես կրոնական-հասարակական գործունեությունը, հայ իրականության մեջ կաթոլիկության պրոպագանդայի ու ծավալման կարևոր օղակն է եղել։ Ուստի, բնականաբար, նրանց գիտական ու մատենագրական ժառանգությունը պիտի ներծծված լիներ կաթոլիկական դոգմատիզմի, սխոլաստիկ մտածողության, դավանաբանական շեշտված կողմնակալության, անցյալի ազգային ավանդներն ու, մասնավորաբար, մատենագրական ժառանգությունը վերանայելու ոգով։*

*Այնուհանդերձ, Մխիթարյանների XVIII դարի մտավոր գործունեությունը խոշոր նշանակություն ունեցավ հայագիտության ու հայ մշակույթի պատմության համար։ Նրանք ծավալում ուսումնասիրության նյութ դարձրին հայ ժողովրդի պատմությունը, լեզուն, մատենագրությունը, Հայաստանի աշխարհագրությունը, տեղագրությունը և այլն։ Կազմակերպեցին բարձրագույն դպրոց, հեղինակեցին բազմազան գիտական դասագրքեր, պատրաստեցին լայն ու խորը գիտելիքներով օժտված մասնագետներ։ Յուրացնելով եվրոպական գիտական մտքի արդյունքներն ու փորձը, նրանք այն տարածեցին հայ իրականության մեջ, ծավալելով մանկավարժական ու մատենագրական բեղմնավոր գործունեություն։*

*Վանական ու բարձրագույն կարգի դպրոցներին զուգընթաց Հայաստանի*

---

[28] *Տե՛ս* Մ. Խորենացի, *Ազգաբանութիւն տոհմին Յաբեթեան, Վենետիկ, 1752։ «Ղազարայ Փարպեցւոյ արարեալ պատմագրութիւն», Վենետիկ, 1793։*

[29] *Տե՛ս* Մ. Չամչեան, *Պատմութիւն Հայոց, Ա, Վենետիկ, 1784, Բ, Վենետիկ, 1785, Գ, Վենետիկ, 1786։*

[30] *Տե՛ս* Ս. Ագոնց, *Ճարտասանութիւն, Վենետիկ, 1775,* Ս. Աղամալեան, *Թուաբանութիւն, Վենետիկ, 1781։* Վ. Ասկերեան, *Մշտնջենաւոր պարզատումար եկեղեցական, Վենետիկ, 1782,* Ղ. Ինճիճեան, *Տեսութիւն համառօտ հին և նոր աշխարհագրութեան, Վենետիկ, 1791.* Ս. Պրոնեան, *Երկրաչափութիւն, Վենետիկ, 1794։*

և արտասահմանի հայաբնակ շատ վայրերում գործել են նաև տարրական-նախակրթական դպրոցներ, որոնք, չնայած համեստ արդյունքներին, կարողացել են գիտա-մշակութային նվաճումներին հաղորդակից դարձնել ժողովրդական լայն խավերին։ Այս կարգի դպրոցները բազմացել են առավելապես XVI—XVIII դարերում։ Դրանց բոլորի մասին բավարար հիշատակություններ չկան, առկա նյութերը թույլ են տալիս եզրակացնելու, որ դրանցից Ամիթի, Հալեպի. Կեսարիայի, Թոխաթի, Սեբաստիայի, Զմյուռնիայի, Կ. Պոլսի, Ղրիմի, Կամենեցի, Լվովի, Սուչավայի, Պաշպալովի, Գեռլայի և այլ հայաբնակ կենտրոնների դպրոցները արդյունավետ ու օգտակար աշխատանք են կատարել։

Այս դպրոցների շահեկան հատկություններից մեկն էլ այն է, որ դրանցից մի քանիսը՝ երկսեռ լինելով, ուսում ստանալու հնարավորություն էին ընձեռում նաև հայ աղջիկներին։ Դրանք համեմատաբար ավելի գործնական և առօրյա կյանքին օգտակար գիտելիքներ էին տալիս և ամբողջացնում էին տվյալ ժամանակաշրջանի հայ ուսումնա-կրթական գործի տարածման սահմանները։

## ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅՈՒՆ

Օտար բռնակալների արշավանքները և գերիշխանությունը ավերիչ հետևանքներ ունեցան ոչ միայն Հայաստանի տնտեսական ու քաղաքական, այլև նրա մշակութային, գիտական կյանքի համար։ Մտավոր կյանքը շարունակվեց միայն մի քանի վանական դպրոցներում, որոնք մեծ ճիգերով ջանում էին կանխել երկրում տարածվող խավարը։ Այդ լուսավոր օազիսներից էին Գլաձորի և Տաթևի համալսարանները, որոնք XIV դարում մեծ դեր կատարեցին հայ փիլիսոփայական մտքի և հոգևոր մշակույթի զարգացման գործում։

Այդ երկու համալսարանների ստեղծման և դրա հետ կապված տեսական մտքի զգալի աշխուժացման գործում որոշակի դեր խաղաց նաև կաթոլիկ եկեղեցու ոտնձգությունների դեմ ծավալված պայքարը։ Կաթոլիկ միսիոներների և հայ ունիթորների՝ հայոց եկեղեցու դեմ սկսած գրոհները վիժեցնելու նպատակով Արևելյան Հայաստանի հոգևոր և աշխարհիկ ֆեոդալները հիշյալ գիտաուսումնական հաստատությունների միջոցով ձգտում էին մտավորականների բանիմաց ջոկատ ստեղծել՝ գաղափարական պայքար մղելու համար։

Գլաձորի և Տաթևի համալսարաններում հասակ առած գիտնականները, փիլիսոփաները և եկեղեցական գործիչները իրենց բազմակողմանի գրական, տեսական և դավանաբանական աշխատություններով կարողացան ետ մղել կաթոլիկների գրոհները և այդ պայքարում կրկին անգամ յուրովի հիմնավորել հայ եկեղեցու ինքնուրույնությունը։ Երկու կղերական կազմակերպությունների՝ կաթոլիկ և հայ եկեղեցիների պայքարը, իհարկե, նեղ դավանաբանական բնույթ էր կրում և շատ հեռու էր ժողովրդական լայն զանգվածների շահերի արտահայտությունը լինելուց, բայց, այնուամենայնիվ, աշխատավորական լայն շերտերի բացասական վերաբերմունքը կաթոլիկ եկեղեցու ոտնգձությունների դեմ վճռական դեր խաղաց ունիթորների պարտության գործում։ Բանն այն է, որ Արևելյան Հայաստանում, ինչպես նաև Կիլիկիայում, հայ պետականության քայքայման և կործանման պայմաններում, ժողովրդական զանգվածները, ինչպես և իշխող դասերի առաջավոր ներկայացուցիչները հայ եկեղեցին

դիտում էին որպես ազգային ավանդույթների պահպան և աշխարհիկ իշխանության որոշ իրավունքների ժառանգորդ։ Ստեղծված պատմական իրադրության մեջ հայ եկեղեցու պաշտպանությունը և կաթոլիկ եկեղեցու ունձգությունների դեմ ծավալված տեսական և գործնական պայքարը, անտարակույս, պետք է գնահատել որպես ազգային ինքնուրույնության համար մղած պայքարի ձևերից մեկը։

Այդ տեսակետից հասկանալի է դառնում XIV դարի ընթացքում տեղի ունեցած անհաշտ պայքարը, որ մղել են Եսայի Նչեցու (Գլաձորի) և ապա Հովհան Որոտնեցու (Տաթևի) դպրոցները ունիթորների պարագլուխ Հովհաննես Քռնեցու ու նրա հետևորդների դեմ։ Ունիթորները ձգտում էին իրականացնել հայ և հռոմեական եկեղեցիների միացումը՝ ոչ միայն քարոզների և կաշառքների միջոցով, այլև փիլիսոփայական ապացույցների օգնությամբ։ Նրանց կողմից հայերեն թարգմանված Ալբերտոս Մեծի, Թովմա Աքվինացու, ինչպես և Նախիջևանի շրջանի Քռնա ավանում հաստատված կաթոլիկ միսիոներներ Բարթուղիմեոս Բոլոնիացու և Պետրոս Արագոնացու գործերը տարածում էին. կաթոլիկ եկեղեցու կողմից ընդունված չափավոր «ռեալիզմը»։

Միջնադարյան «ռեալիստները» պնդում էին, թե ռեալ գոյություն ունեն ընդհանուր հասկացությունները, որոնցից կախված է առանձնակի իրերի լինելությունը։

Ի հակադրություն դրան, նոմինալիստները պնդում էին, որ ընդհանուր հասկացությունները առանձնակի իրերի լոկ անուններն են (լատիներեն nominal, այստեղից և նոմինալիզմ տերմինը)։ Ըստ նոմինալիստների, ռեալ գոյություն ունեն միայն առանձնակի իրերը, իսկ ընդհանուր հասկացությունները ոչ միայն առաջնային չեն, այլև չունեն ռեալ գոյություն։ Նոմինալիզմը միջնադարյան փիլիսոփայության մեջ հանդես էր գալիս որպես մատերիալիստական տենդենցների կրող և առաջավոր գաղափարներին ծնունդ տվող մի ուղղություն։

Եսայի Նչեցու և Հովհան Որոտնեցու համալսարանների գլխավոր նպատակներից մեկը պայքարն էր կաթոլիկ գաղափարախոսության և դավանաբանության դեմ։ Հայ ունիթորների և կաթոլիկ քարոզիչների դեմ իրենց իմաստասիրական երկերով հանդես եկան Հովհան Որոտնեցին և նրա հավատարիմ աշակերտ ու գործի շարունակող Գրիգոր Տաթևացին։ Պատահական չէ, որ նշանավոր այս գործիչները կաթոլիկ եկեղեցու գաղափարախոսության դեմ պայքարելիս, հարեցին նոմինալիստական ուղղությանը, և հակադրելով այն «ռեալիզմին», զարգացրին նոմինալիզմի մեջ առկա մատերիալիստական տարրերը[1]։

Նոմինալիստական ուղղությունը հայ միջնադարյան փիլիսոփայության զարգացման գագաթնակետն էր։ Հենվելով բնական գիտությունների նվաճումների վրա, հայ նոմինալիստները իմացաբանության և տրամաբանության հարցերում առաջ քաշեցին մի շարք մատերիալիստական դրույթներ, որոնք չէին համապատասխանում իշխող կրոնա-աստվածաբանական գաղափարաբանության պահանջներին և ուղիներ էին հարթում գիտական մտածողության զարգացման համար։ Նոմինալիստական ուսմունքները ծաղկման իրենց ամենա-

---

[1] Տե՛ս Մ. Առևշատյան, Նոմինալիզմի առաջացումն ու զարգացումը միջնադարյան Հայաստանում, «Բանբեր Մատենադարանի», հատ. 6, Երևան, 1962։

բարձր կետին հասան Տաթևի դպրոցի փիլիսոփայության մեջ։ Սակայն հույժ անբարենպաստ քաղաքական ու տնտեսական պայմանները խանգարեցին Տաթևի դպրոցի գիտական վերելքին, այդ թվում նաև փիլիսոփայական գիտության հետագա զարգացմանը։

XV դարից սկսած, երկրի տնտեսական և հասարակական կյանքի անկման հետ միասին, անկում է ապրում նաև փիլիսոփայական գիտությունը, մի խոր անկում, որը Գրիգոր Տաթևացու մահվանից հետո (1409) տևում է մինչև XVII դարի կեսերը, մինչև Սիմեոն Ջուղայեցու շրջանը։ Վերջինս վերակենդանացնում է երկու և կես դարերի ընթացքում լճացած, իսկ ապա և անկում ապրած հայ փիլիսոփայական միտքը և նույնիսկ կարողանում բարձրացնել այն նախկին գիտական մակարդակին։ Սակայն փոխվել էին ժամանակները, իր ավարտին էր մոտենում միջնադարը, համաշխարհային փիլիսոփայական միտքը առաջ էր գնացել, եվրոպական փիլիսոփայության մեջ կարևոր դեր էին խաղում արդեն առանց շղարշի հանդես եկող մատերիալիստական և աթեիստական ուսմունքները։ Տվյալ ժամանակաշրջանի կղերական դասի հետ կապված հայ մտածողները շարունակեցին միջնադարյան փիլիսոփայության ընդհատված գիծը, մի հանգամանք, որը եթե համապատասխանում էր Հայաստանի իրականության մեջ իշխող ոգուն, ապա համաշխարհային գիտության զարգացման ընույթի հետ բաղդատած՝ արդեն ժամանակավրեպ էր և, կտրված լինելով փորձնական, բնական գիտություններից, ուներ գերազանցապես ուսուցողական արժեք։

Հայ փիլիսոփայական մտքի պատմության մեջ նոր էջ են բացում XVIII դարի վերջին քառորդում նորելուկ գաղութահայ բուրժուազիայի գաղափարախոսները, որոնք իրենց բոլոր սահմանափակություններով հանդերձ կտրվում են միջնադարից և հակադրվում ֆեոդալական հասարակարգի գաղափարներին ու սկզբունքներին։ Դրանք Մադրասի հայկական գաղութի բուրժուա-լուսավորական խմբի անդամներն էին (Շահամիր և Հակոբ Շահամիրյաններ, Մ. Բաղրամյան, Հ. Էմին)։

**Հովհան Որոտնեցու նոմինալիստական ուսմունքը:** *Հովհան Որոտնեցին* (1313—1386), միջնադարյան այդ ականավոր մտածողն ու գիտնականը, իր փիլիսոփայական և աստվածաբանական կրթությունն ստացել է Գլաձորի համալսարանում Եսայի Նչեցու և Տիրատուր վարդապետի ձեռքի տակ։

1345 թ. Տաթևի վանքի հին կրթական օջախում, Սյունիքի տեր Օրբելյան իշխանների օգնությամբ Հովհան Որոտնեցին հիմնադրում է մի դպրոց, որը 1373 թ. վեր է ածվում համալսարանի և դառնում միջնադարյան Հայաստանի խոշորագույն մշակութային կենտրոններից մեկը։ Այստեղ Որոտնեցին դասախոսություններ է կարդում իմաստասիրական հարցերի շուրջ և ստեղծում բազմաթիվ արժեքավոր աշխատություններ։ Նրա իմաստասիրական երկերից մեզ են հասել հինգը. «Վերլուծութիւն ստորոգութեանց Արիստոտէլի», Պորփյուրի «Ներածութեան» մեկնությունը հետևյալ վերնագրով՝ «Համառօտ վերլուծութիւն Պորփիւրի դժուարալուծիցն»[2], գոյաբանական (օնտոլոգիական)

---

[2] Այս երկու բնագրերը ռուսերեն թարգմանության հետ միասին լույս են տեսել մի գրքով՝ «Յովհաննու Որոտնեցւոյ Վերլուծութիւն ստորոգութեանց Արիստոտէլի», համահավաք տեքստը, առաջաբանը և ծանոթագրությունները Վ. Չալոյանի, ռուսերեն թարգմանութ. Ա. Ադամյանի և Վ. Չալոյանի, խմբագրությամբ Ս. Արևշատյանի, Երևան, 1956։

*հարցերին նվիրված «Հաւաքեալ ի բանից իմաստասիրաց» աշխատությունը[3], այնուհետև «Վերլուծութիւն Արիստոտէլի Յաղագս մեկնութեան գրոցն» և «Հաւաքումն յայտնաբանութեան ի Փիլոնէ իմաստնոյ»[4]։*

*Հովհան Որոտնեցին, ինչպես և նրա գաղափարական նախորդ Վահրամ Րաբունին, պատկանում էր միջնադարյան այն մտածողների թվին, որոնց ստեղծագործության մեջ կատարվում էր փիլիսոփայության՝ աստվածաբանությունից անջատվելու և ինքնուրույն, սեփական խնդիրներ ունեցող գիտություն դառնալու պրոցեսը։ Չնայած այն բանին, որ Հովհան Որոտնեցին իր ներքին համոզմամբ որպես հոգևորական ձգտում էր փիլիսոփայությունը ենթարկել աստվածաբանությանը, այնուամենայնիվ նրա փիլիսոփայական ժառանգությունը վկայում է, որ իրականում նրա ստեղծագործության մեջ փիլիսոփայության ինքնուրույնացման ընթացքը խորանում էր[5]։ Կրոնական նկատառումները նրա երկերում շատ հաճախ ետ են մղվում և բարձրացված աշխարհայացքային հարցերը քննվում են առավելապես իրենց գիտական-ճանաչողական առումով։ Հատկանշական է, որ Հովհան Որոտնեցու կարևորագույն փիլիսոփայական գործերը նվիրված են Արիստոտելի այն երկերին, որոնց մեջ Ստագիրացու ուսմունքի մատերիալիստական կողմը ավելի ցցուն է դրսևորվում։*

*Աշխարհի արարչագործության գաղափարը Որոտնեցին կասկածի չի ենթարկում։ Նրա համար աներկբայելի ճշմարտություն է, որ աշխարհը, բնությունը, նյութը ստեղծված են աստծո կողմից։ Ավելին, նա հատուկ գործ է գրում, նվիրված գոյաբանական հարցերին, որտեղ մեկ առ մեկ հերքում է իրեն հայտնի բոլոր մատերիալիստական ուսմունքները, որոնք առաջնային են համարում նյութը։ Ամփոփելով իր դատողությունները, Որոտնեցին հայտարարում է. «Այսպիսեաւ հարկ է մեզ ընտրութիւն առնել, և որ ըստ շաւղաց Աստուածաշունչ գրոց ընթանայ՝ ընդունել, իսկ որ արտաքոյ է ի շաւղաց Աստուածաշունչ գրոց՝ ոչ ընդունել, թէպէտ և ասողն մեծ ոք իցէ»[6]։*

*Փիլիսոփայության հիմնական հարցի իր իդեալիստական լուծումը Որոտնեցին ձգտում է հաստատել բազմապիսի կրոնական դրույթներով, չմոռանալով մատերիալիստական ուսմունքները հայտարարել աղանդ և հերձված։ Սակայն Որոտնեցու փիլիսոփայության բովանդակությունն ունի նաև մի այլ կողմ, որը նրա աշխարհայացքի բնութագրման համար չափազանց կարևոր է։ Խոսքը նրա իմացաբանության և տրամաբանության մասին է։*

*Որոտնեցին ընդունում է արտաքին աշխարհի գոյության առաջնությունն ու օբյեկտիվությունը, միաժամանակ պնդելով, որ մարդու զգացությունները երկրորդային են և անցյալ։ Նրանց առկայությունը կամ բացակայությունը չի կարող ազդել օբյեկտիվ իրականության գոյության վրա։ Ահա ինչպես է մատուցում Որոտնեցին փիլիսոփայական այդ կարևորագույն հարցի իր ըմբռնումը. «Զգայութիւնն ընդ մարմնոյն է եղեալ և է ի մարմնի, որպէս աչքդ,*

---

3 *Բնագիրը ռուսերեն թարգմ. հետ լույս է ընծայվել Մատենադարանի կողմից. տե՛ս* Ս. Արևշատյան և Ս. Լալաֆարյան, *Հովհան Որոտնեցու աշխատությունը տարրերի մասին, «Բանբեր Մատենադարանի», № 3, Երևան, 1956։*

4 *Այս վերջին երկու գործերը դեռևս լույս չեն ընծայվել։*

5 *В. К. Чалоян,* История армянской философии, Ереван, 1959, էջ 243—258:

6 Յովհան Որոտնեցի, *Հաւաքեալ ի բանից իմաստասիրաց, «Բանբեր Մատենադարանի», № 3, 1956, էջ 379։*

իսկ վզալին նախ է քան զքո մարմինդ։ ...Արդ, ի բառնալ ամենայն զգալեաց՝ բառնի և քո մարմինդ, և ընդ մարմնոյդ բառնի և զգայութիւնդ. ապա թէպէտ բառնաս վզգայութիւնդ՝ դեռ ևս մարմինդ է, և թէ մարմինդ բառնաս՝ զգալիքն ամենայն գոն»[7]։ Միջնադարյան մտածողի համար զարմանալի հստակությամբ Որոտնեցին պարզաբանում է օբյեկտի և սուբյեկտի փոխհարաբերության խնդիրը և իմացաբանության մեջ ոչ միայն հեռանում է աստվածաբանական դրույթներից, այլև մատերիալիստական մոտեցում է ցուցաբերում տվյալ հարցում։

Իմացության պրոցեսի ելակետը, ըստ Որոտնեցու, արտաքին աշխարհն է, մարդու զգայարաններից և բանականությունից անկախ գոյություն ունեցող իրերն ու երևույթները։ Զգացությունն ու միտքը իրենք ինքնաբերաբար չեն կարող բովանդակություն ունենալ։ Նրանք լոկ օբյեկտիվորեն գոյություն ունեցող արտաքին աշխարհի արտացոլումն են։ «Միտքն առանց կրելոյ ինչ իմացումն՝ պարզ է որպէս հայիլի մաքուր, որ տպաւորէ յինքն զնմանութիւն պատկերացն և նովաւ առաւելու ինչ ի մաքրութիւնն իւր, նմանապէս և իմացուած իրին՝ ի վերա մտացն»[8]։

Այսպես, մատերիալիստական ոգով է լուծում Որոտնեցին մարդկային մտածողության և իրական աշխարհի փոխհարաբերության հարցը։ Կասկածից վեր է, որ տվյալ դեպքում, Որոտնեցու տեսակետը գնահատելիս, խոսք կարող է լինել նրա ընդհանուր իդեալիստական աշխարհայացքում փայլատակած առաջադեմ մատերիալիստական առկայծման մասին։ Որոտնեցին, ինչպես նրանից առաջ Վահրամ Ռաբունին, իսկ հետագայում Գրիգոր Տաթևացին, իմացաբանության և տրամաբանության բնագավառում, ի տարբերություն օբյեկտիվ իդեալիստների, մերժում են ղաղափարների, իդեալների, հասկացությունների առաջնությունը, մի հանգամանք, որը որոշակիորեն սահմանազատում է իմացաբանության մեջ իդեալիստական մոտեցումը մատերիալիստականից։ Դրանում է հենց այն էական տարբերությունը, որ կա միջնադարյան նոմինալիստների և այսպես կոչված ռեալիստների միջև։

Որոտնեցու իմացաբանության և տրամաբանության հիմքը սենսուալիզմն է, որից և բխում են նրա փիլիսոփայության մատերիալիստական հակումները։ Նա առանձնապես շեշտում է զգայարանների դերը իմացման պրոցեսում։ Իմացումը, ըստ Որոտնեցու, սկսվում է զգացումներից և զգայական փորձից։ Հենվելով զգայարանների վկայությունների վրա, բանականությունը ճանաչում է իրի ամբողջությունը, թափանցում է իրի էության մեջ և ամրացնում է այն ընդհանուր հասկացություններում, տեսակի և սեռի հասկացությունների մեջ։

Քանի որ մարդու զգայական ճանաչումը, ինչպես և վերացական, բանական մտածողությունը արտաքին աշխարհի արտացոլումն են, ապա և նրանց ճշմարտությունը կախված է ճանաչվող իրերին նրանց համապատասխան լինելուց։ Ընդ որում, ոչ զգացությունը, ոչ էլ միտքը չեն կարող ոչ միայն առաջացնել որևէ իր, այլ նույնիսկ փոփոխել նրանք։ «Թէ ստորասութիւն և բացասութիւն յապառնին ճշմարտէ կամ ստէ, յայնժամ ամենայն ինչ ի հարկէ ըստ քո ստորասելոյդ լինի կամ բացասելոյդ՝ գոլ իրին և ոչ գոլն։ Որպէս թէ մին մարդն

---

7 Յովհան Որոտնեցի, Վերլուծութիւն «Ստորոգութեանց» Արիստոտէլի, Երևան, 1956, էջ 186։

8 Յովհան Որոտնեցի, Համառօտ լուծմունք «Պերի արմենիաս» գրոցն (Արիստոտէլի), հաւաքեալ ի Գրիգորէ աշակերտէ, Մատենադարան, ձեռագիր № 4268, էջ 150ա։



Ձեռագրի ոսկյա կազմ՝ Հովհ. Որոտնեցու և Գր. Տաթևացու դրվագյալ պատկերներով (XVդ.)

ստորասէ, թէ վաղիւն եղիցի անձրև և մինն բացասէ, թէ վաղիւն ոչ եղիցի անձրև, մինն ի սոցանէ ճշմարիտ է, որ և դիպիցի, եթէ անձրևն և եթէ ոչ անձրևն, այլ ոչ թէ ստորասութիւն քո հարկաւորեաց զանձրև, կամ բացասութիւն իմա հարկաւորեաց զոչ անձրևն, այլ իրին լինելն կամ ոչ լինելն»[9],—գրում է Որոտնեցին։

Ինչպես տեսնում ենք, նա առանց երկբայելու հաստատում է նյութական իրերի, արտաքին աշխարհի առաջնությունը մտքի նկատմամբ։ Ինքը՝ Որոտնե-

---

[9] Յովհան Որոտնեցի, *Համառօտ լուծմունք «Պերի արմենիաս» գրոց (Արիստոտէլի), Մատենադարան, ձեռագիր № 4268, էջ 176բ—177ա։*

ցին, գիտակցելով այդ հարցի կարևորությունը, առանձնապես կանգ է առնում դրա վրա տարբեր առիթներով՝ և ստորոգությունների (կատեգորիաների) հերթականության հարցը քննելիս, և մտքի բովանդակության երկրորդային բնույթը հաստատելիս, և ընդհանուրի ու մասնավորի փոխհարաբերության հարցը լուսաբանելիս, մի հարց, որն անշրջանցելի էր միջնադարյան մտածողների երկու իրարամերժ բանակների։

Որոտնեցին, մեկնելով տրամաբանական կատեգորիաները, հետևում է Արիստոտելի կողմից մշակված կատեգորիաների ծավալի, քանակի և հերթականության սխեմային։ Նա գտնում է, որ նրանց մեջ ամենակարևորը առաջին գոյացության կատեգորիան է, որովհետև առանց դրա, այսինքն՝ առանց կոնկրետ առանձնակի գոյերի, չէր կարող գոյություն ունենալ որևէ այլ բան։ Մնացած բոլոր կատեգորիաները՝ քանակ, առնչություն, որակ, տեղ, ժամանակ և այլն, կախված են առաջին գոյացության կատեգորիայից և արտացոլում են նրա կեցության տարբեր կողմերը[10]։

Հանձին Հովհան Որոտնեցու նոմինալիզմը միջնադարյան Հայաստանում գտավ իր ականավոր ներկայացուցչին։ Ցուցաբերելով ընդհանուրի և եզակիի, այսինքն՝ անհատի, իսկ մյուս կողմից տեսակի և սեռի փոխհարաբերության հարցը, նա քննում է դրանց երեք առումով՝ առաջնության, հավասարության և առավելության։ Ի վերջո նա գերապատվությունը տալիս է եզակիին, գալով հետևյալ եզրակացության. «Անհատն անկարօտ է սեռից և տեսակաց, զի ստորոգեսցին ի վերայ նորա. այլ նոքա կարօտ են ենթակային, զի ժողովեսցին և զանազանեսցին ի նա»[11], — ասում է Որոտնեցին։ Այնուհետև նա շարունակում է. «Ի լինելութիւն նոցա ամենեցուն (այսինքն՝ տեսակաց և սեռից) հարկ է անհատին գոլ, զի ոչ բաղկանայ սեռ առանց տեսակի և ոչ տեսակ առանց անհատի և ոչ պատահումն՝ առանց գոյացութեան։ Իսկ ի լինելութիւն անհատին ոչ է հարկաւոր նոցա գոլ, զի կարէ գոլ գոյացութիւն առանց պատահման, որպէս աստուած, և անհատ առանց սեռի և տեսակի, որպէս արեգակն և լուսին և աշխարհ»[12]։

Հարցի նման հստակ՝ դրվածքը միանգամայն պարզ է դարձնում, որ ընդհանուրի և եզակիի փոխհարաբերությունը Որոտնեցին դիտում է որպես մտածողության և իրական աշխարհի առնչակցության հարց, ընդ որում առաջնությունը անվերապահորեն տալով կոնկրետ իրերին, անհատին։ Իսկ որ Որոտնեցին իրոք քննում է ընդհանուր հասկացությունների և անհատ իրերի փոխհարաբերության խնդիրը և ոչ թե ընդհանուր և մասնավոր հասկացությունների առնչակցության հարցը, այդ բացահայտ երևում է հենց իր խոսքերից։ Անհատը նա դիտում է որպես ռեալ գոյություն ունեցող եզակի առարկա կամ էակ, բայց ոչ երբեք որպես անկյուն հասկացություն։ «Անհատն ձնանի, աճէ և մեռանի, փառք և տանջանք, գով և պարսաւ ընդունի, և ոչ սեռ և տեսակ և այլք, զի անհատն է անձնաւորեալ տեսակ և անհատ բնութիւն, և սեռ տեսակացեալ։ Այս է որ ասէ՝ իսկապէս և առաջին և մանաւանդ գոյացութիւն անհատին»[13]։

Այսպիսով, եզակի իրը, անհատը, ունի նյութական գոյություն. և նրա

---

[10] Տե՛ս Յովհան Որոտնեցի, Վերլուծութիւն «Ստորոգութեանց» Արիստոտէլի, էջ 28—30։
[11] Տե՛ս նույն տեղում, էջ 38։
[12] Նույն տեղում, էջ 40։
[13] Նույն տեղում, էջ 38։

առկայությամբ է պայմանավորված ընդհանուրի՝ տեսակի և սեռի հասկացությունների ոչ-նյութական գոյությունը։ Նրանց լինելությունը կախված է եզակիից և նրա բազմությունից[14]։ Ընդհանուրն իր հիմքում ունի կոնկրետ զգայական անհատ իրեր։ Այդ տեսակետից թեև նա ընկալվում է ոչ զգայարաններով, այլ միայն բանականությամբ, բայց այնուամենայնիվ իմացման կարևորագույն արդյունքն է, որովհետև այն եզակի իրերի, նրանց էական հատկանիշների ընդհանրացումն է։

Միջնադարյան փիլիսոփայության համար Որոտնեցու կողմից այս հանգուցային հարցի նման լուծումը մեծ դեր խաղաց Տաթևի փիլիսոփայական դպրոցի գաղափարական զարգացման մեջ։ Որոտնեցին դրանով իսկ կարևոր տվեց էմպիրիկ-սենսուալիստական հակումներին տվյալ դպրոցի իմացաբանության, տրամաբանության և բնագիտության մեջ. գիտության ասպարեզներ, որոնք Գլաձորի և Տաթևի համալսարաններում վերելք ապրեցին՝ օգտագործելով ու զարգացնելով հայ տեսական մտքի նախորդ շրջաններում ամբարված ժառանգությունը և ծառայեցին ժամանակի հրատապ սոցիալ-քաղաքական նպատակներին։

Ի հակադրություն արևմտյան սխոլաստների «չափավոր ռեալիստական» թևի, որոնց ուսմունքը լիովին համապատասխանում ու ծառայում էր կաթոլիկ եկեղեցու դավանաբանությամբ, XIII—XIV դարերի հայ փիլիսոփայության մեջ ուժեղացավ նոմինալիստական հոսանքը։ Կաթոլիկ եկեղեցին վախենում էր նոմինալիստական հոսանքից ոչ միայն նրա մատերիալիստական հակումների համար, այլև այն բանի համար, որ նա, ժխտելով ընդհանուրի առաջնությունը, իր մեջ պարունակում էր կաթոլիկության և Հռոմի եկեղեցու ընդհանուր, տիեզերական, աշխարհակալական կրոնի և կազմակերպության լինելու ժխտման վտանգը։ Եթե ընդհանուրը երկրորդային է, իսկ եզակին, անհատը՝ որոշիչ և առաջնային, ապա նույն նմանողությամբ առաջնային, ապա և ինքնուրույն, առանձին գոյության արժանի պետք է համարվեն ազգային եկեղեցիները և ոչ թե ընդհանուր համապարփակ կրոնական կազմակերպությունը։ Նոմինալիզմը օգտագործվեց հայ մտածողների կողմից կաթոլիկական գաղափարախոսության դեմ պայքարի համար։

**Գրիգոր Տաթևացի:** Վերը նշված գաղափարական հակամարտի ամենաականավոր դեմքերից էր նոմինալիստ-փիլիսոփա, Հովհան Որոտնեցու հավատարիմ աշակերտ և անմիջական հաջորդ Գրիգոր Տաթևացին (1346—1409), որն իր ուսուցչի մահվանից հետո գլխավորեց Տաթևի համալսարանը։ Նրա փիլիսոփայական հայացքների համար հատկանշական է բազմակողմանիությունը։ Տաթևացին արձագանքել է ժամանակի համարյա բոլոր հրատապ խնդիրներին, իր գիտությունը և եռանդուն կրոնա-քաղաքական ու մանկավարժական գործունեությունը ծառայեցնելով Հայաստանի լուսավորության և գիտության օջախները վառ պահելու գործին, մի գործ, որն այն ժամանակվա արտակարգ ծանր քաղաքական և տնտեսական վիճակում կապված էր մեծ դժվարությունների ու զրկանքների հետ։ Տաթևացին, իր նախորդների նման, հոգևորականի սքեմով պատվարված, կարողացավ Որոտնեցու մահվանից հետո՝ շուրջ քառորդ դար վառ պահել լուսավորության ջահը, կրթեց և Հայաստանի տարբեր կողմերն ուղարկեց իր բազմաթիվ սաներին։ Դրան զուգահեռ իր ստվարածա-

[14] Տե՛ս նույն տեղում, էջ 41։

վալ աշխատություններում նա շոշափեց այն ժամանակվա համարյա բոլոր հրատապ տեսական խնդիրները, բեղմնավորելով միջնադարյան հայ գիտությունն ու փիլիսոփայությունը խիզախ և իր ժամանակի համար առաջադեմ գաղափարներով։



Գրիգոր Տաթևացու դիմանկարը (Մատենադարան, ձեռագիր № 1203)

*Գրիգոր Տաթևացու փիլիսոփայության մեջ մատերիալիստական հակումները և մասնավորապես նոմինալիզմը գտան իրենց հետագա զարգացումը։ Նրա փիլիսոփայական հայացքները Վ. Ռաբունու և Հ. Որոտնեցու համեմատությամբ տարբերվում են իրենց ավելի բազմակողմանի և լայն բնույթով, որոնք դոլաբանությունից և իմացաբանությունից զատ ընդգրկում են բնագիտության, հոգեբանության, բարոյագիտության ու հասարակագիտության բազմապիսի խնդիրներ*[15]։

15 *Տե՛ս С. С. Аревшатян*, Философские взгляды Григора Татеваци, Ереван, 1957,

Տաթևացին, լինելով խոշոր հայ աստվածաբաններից մեկը, այսուհանդերձ, ի շարունակություն Որոտնեցու ուսմունքի, խորացրեց փիլիսոփայության աշխարհականացման պրոցեսը և տվեց գիտության ու հավատի բաժանման անհրաժեշտության տեսական հիմնավորումը։ Նա հարում է «ճշմարտության երկվության» ուսմունքին և գտնում, որ փիլիսոփայության, ինչպես և առհասարակ գիտության առարկան բնությունն է, նրա երևույթներն ու օրինաչափությունները, իսկ հավատը չպետք է և չի էլ կարող խառնվել գիտության գործերին։ Հավատի բնագավառը գերբնական, աստվածային գոյացությունների ճանաչումն է[16]։

Սահմանազատելով հավատի և գիտության բնագավառները, Տաթևացին շեշտում է, որ աշխարհը սկզբունքորեն ճանաչելի է։ Մարդու զգայարանները և միտքը հնարավորություն են տալիս ճանաչելու ողջ աշխարհը, չթողնելով անհայտ ոչ մի երևույթ և առարկա։ «Իմաստուն մտօք թափանց անցանեմք ընդ բնաւ ոլորտս երկնի և երկրի. և ոչ ինչ արտաքոյ մնայ ի լուսոյ իմաստութեան»[17]։ Միջնադարի պայմաններում Տաթևացին բանականության գովքն է երգում և անվանում այն միակ ճշմարիտ և անկաշառ դատավոր[18]։ Այս հանգամանքը չափազանց հատկանշական է Տաթևացու աշխարհհայացքի համար։ Առաջին հայացքից այն խոսում է Տաթևացու գաղափարախոսության հակասական և անհետևողական բնույթի մասին՝ «ճշմարտության երկվության» տեսությունը հավասարապես ընդունում է կրոնն ու գիտությունը։ Այնուհետև, լինելով նոմինալիստ, Տաթևացին աշխարհի ճանաչման գործում առաջնային և վճռական նշանակություն է տալիս զգայարաններին, ցուցաբերելով սենսուալիստական մոտեցում բնափիլիսոփայության և իմացաբանության կարևորագույն հարցերի նկատմամբ և, միաժամանակ, դրսևորում է ռացիոնալիզմի ուժեղ տարրեր։

Փիլիսոփայության հիմնական հարցը իր միջնադարյան դրվածքով, այսինքն՝ աստծո և բնության փոխհարաբերության առումով, Տաթևացին լուծում է կրոնա-իդեալիստական դիրքերից։ Աստվածն, ըստ Տաթևացու, առաջնային է իր ողջ էությամբ, նա արարիչն է աշխարհի և բնության, «սկիզբն ամենայն գոյացութեանց, որ ի նմանէ են սկսեալ և յառաջ եկեալ ամենայն բնութիւն արարածոց երևելեաց և աներևութից»[19]։ Բնության գոյության հիմքում ընկած չորս տարրերը՝ հողը, ջուրը, օդը և հուրը, արարչագործությունից հետո մշտընջենական են։ Նրանցից կազմվող բազմատեսակ իրերն առաջանում ու ոչնչանում են, իսկ տարրերը՝ երբեք, նրանք ունեն հավիտենական գոյություն[20]։

Տաթևացու փիլիսոփայության իր ժամանակի համար առաջադիմական, մատերիալիստական հակումներն առավել ցայտուն դրսևորվում են նրա իմացաբանության մեջ։ Իր կողմից կիրառվող հավատի և գիտության բնագավառ-

Ս. Արևշատյան, Տաթևի փիլիսոփայական դպրոցը և Գրիգոր Տաթևացու աշխարհհայացքը, «Բանբեր Մատենադարանի», հատ. 4, Երևան, 1958, В. К. Чалоян, История армянской философии, էջ 258–269, Ն. Թովմասյան, Գրիգոր Տաթևացու սոցիալ-տնտեսագիտական հայացքները, Երևան, 1966։

16 Տե՛ս Գ. Տաթևացի, Գիրք քարոզութեան (Ամառան հատոր), Կ. Պոլիս, 1741, էջ 72, 617։ Գիրք հարցմանց, Կ. Պոլիս, 1729, էջ 103։

17 Գր. Տաթևացի, Գիրք քարոզութեան (Ձմեռան հատոր), Կ. Պոլիս, 1740, էջ 187։

18 Տե՛ս Գր. Տաթևացի, Համառօտ հաւաքումն յԱռակաց գրոցն Սողոմոնի, Մատենադարան, ձեռագիր № 1264, էջ 376բ։

19 Գր. Տաթևացի, Ոսկեփորիկ, Կ. Պոլիս, 1746, էջ 15։

20 Տե՛ս Գր. Տաթևացի, Գիրք հարցմանց, էջ 181։

ների սահմանազատմանը համապատասխան, Տաթևացին հաստատում է ճանաչման երկու ձև՝ «շնորհական», որը զբաղվում է գերբնական գոյացությունների ընկալմամբ, և «բնական», որն ընդգրկում է իրական աշխարհի երևույթներն ու առարկաները։

Բաժանելով այս երկու բնագավառները և համարելով, որ հավատն անզոր է աշխարհի ճանաչման գործում, Տաթևացին այսուհանդերձ չի սահմանափակում «բնական» ճանաչման իրավունքները։ Նա առաջ է քաշում միջնադարյան փիլիսոփայի համար չափազանց խիզախ մի գաղափար, այն է՝ բանականության միջամտությունը հավատի գործերին։ Դուրս գալով սնոտիապաշտության և կույր հավատի դեմ, նա գտնում է, որ «շնորհական իմաստությունը» պիտի լուսավորվի «բնական ճանաչման» լույսով[21]։ Նման մոտեցումը, պարզ է, որ լայնացնում էր գիտության շրջանակները։

Ճիշտ է, Տաթևացին գտնում է, որ բանական իմացումը նման է մշտաշարժ վերընթաց կրակին[22] և այդ պատճառով էլ թույլ չպետք է տալ, որ այն դիպչի աստվածաբանության առարկային, քանի որ գիտության ներխուժումը հավատի բնագավառը ծնում է հերձված։ Սակայն նրա ակնարկը՝ «շնորհական» իմացումը «բնական» գիտությամբ լուսավորելու մասին, ի թիվս նրա բնափիլիսոփայական և իմացաբանական մի շարք այլ գիտական դրույթների, խարխլում էր սխոլաստիկայի շենքը։

XIV դարի պայմաններում Տաթևացին հանդես է գալիս «բնածին գաղափարների» տեսության դեմ ու գտնում, որ մտքի և հոգու բովանդակությունը կազմվում է արտաքին աշխարհի ազդեցության շնորհիվ։ «Հոգի մարդոյն բանական, որպէս անգիր պնակիտ է կամ լուացած մագաղաթ, որ զինչ դրեն ի վերայ, զայն առնու»[23]։ Հոգու, այդ «անգիր պնակիտի» լրացման գործում հսկայական դեր են խաղում զգայարանները։ Նրանք ճանաչման սկզբնական և անհրաժեշտ օղակն են, առանց որի իմացության պրոցեսը անհնարին է։ Որպեսզի այն տեղի ունենա, անհրաժեշտ են երկու պայման, «այսինքն՝ զի զգայութիւն առողջ իցէ, և զգալի առաջի եդեալ իրն յստակ, ապա թափանցէ յինքն ի սոցանէ պարզ տեսութիւն, ապա թէ ոչ՝ ոչ կարէ միտքն յստակապէս տեսանել սոքօք»[24]։

Զգայարանների վկայության հիման վրա միտքը ճանաչում է իրերի էությունը, նրանց բնությունը։ Իր գործունեության մեջ բանականությունը զգայարանների նկատմամբ գտնվում է կախյալ վիճակում և նույնպես անօգնական է, ինչպես արհեստավորը առանց իր գործիքների։ Իր այս սենսուալիստական գիծը Տաթևացին հստակորեն անց է կացնում նաև իմացաբանության մեջ, մի բան, որն ակներևաբար խոսում է նրա մատերիալիստական հակումների մասին։

Տաթևացու իմացաբանության մատերիալիստական շիթը առավել ևս ուժեղանում է, երբ նա դնում է ընդհանուրի և մասնավորի փոխհարաբերության հարցը։ Իր քննադատությունն ուղղելով այսպես կոչված ռեալիստների դեմ, որոնք առաջնային էին համարում ընդհանուր գաղափարները, «ունի-

---

21 Տե՛ս Գր. Տաթևացի, Գիրք քարոզութեան (Ձմերան հատոր), էջ 187։

22 Տե՛ս Գր. Տաթևացի, Գիրք հարցմանց, էջ 2։

23 Գր. Տաթևացի, Գիրք քարոզութեան (Ամարան հատոր), էջ 454։

24 Գր. Տաթևացի, Գիրք հարցմանց, էջ 148։

միրտալիստները», Տաթևացին պնդում է, որ միայն առանձնակի, մասնավոր իրերն ունեն մեկալ գոյություն, իսկ ընդհանուր գաղափարները երկրորդային են և հանդիսանում են մարդու մտածողության արգասիք։ «Անհատ է մանաւանդ և իսկագոյն և նախկին գոյացութիւն»[25],—ասում է Տաթևացին։ Նա մեղադրում է միջնադարում մեծ հեղինակություն վայելող հույն փիլիսոփա Պորփյուրին առաջին և երկրորդ գոյացությունների արիստոտելյան ուսմունքի աղավաղման համար։ Ըստ Տաթևացու, երկրորդ գոյացությունները, այսինքն՝ տեսակն ու սեռը, որպես ընդհանուր հասկացություններ կախված են առաջին գոյացություններից, մասնավոր իրերի, այսինքն՝ անհատների գոյությունից։ «Նախ գոյացութիւն ասէ զանհատն,—գրում է Տաթևացին, քննադատելով Պորփյուրին,—և երկրորդ՝ զտեսակն ու զսեռն. և պատուական, զի սեռն և տեսակն զօրութեամբ ունին, և անհատն ներգործութեամբ զնոսա. և լաւագոյն, զի ի ժողովիլ անհատիցն լինի տեսակն և սեռն, և ի բառնիլ անհատիցն բառնին և նոքա»[26]։

Սակայն Տաթևացին չի ժխտում ընդհանուր հասկացությունների նշանակությունը։ Համաձայն չլինելով «ծայրահեղ» նոմինալիստների հետ, որոնք առհասարակ չէին ընդունում ընդհանուր հասկացությունների գոյությունը և համարում էին դրանք «դատարկ հնչյուն» կամ «օդի սոսափյուն», Տաթևացին գտնում է, որ ընդհանուր հասկացությունները, որպես իրերի անուններ, զուրկ չեն օբյեկտիվ նշանակությունից։ Մարդկային ճանաչողությունը, ամփոփելով մասնակի, առանձին իրերի ընդհանուր գծերը, վերացական մտածողության միջոցով խմբավորում է նրանց սեռերի ու տեսակների մեջ և կարողանում է դրա շնորհիվ թափանցել իրերի էության մեջ։

Տաթևացու իմացաբանությունն իր առաջադեմ գաղափարներով լույս է սփռում նաև նրա հոգեբանական հայացքների վրա։ Եթե ընդհանուր հասկացությունների խնդրի լուծման ժամանակ նա դուրս է գալիս նորպլատոնական Պորփյուրի դեմ, ապա քննելով մարդկային հոգու բնությունը, նա առարկում է արդեն Պլատոնին, գտնելով, որ վերջինս մոլորվում է, երբ հայտարարում է հոգին առաջնային և մարմնին նախորդող, որովհետև, ասում է Տաթևացին, հոգին և մարմինը ծնվում են միաժամանակ սերմնական հեղուկից և համատեղ աճում ու զարգանում[27]։

Գտնելով, որ կատարյալ մարմինը, ինչպիսին մարդու մարմինն է, կարող է լինել բանական հոգու կրողը, Տաթևացին առանձնապես ընդգծում է ուղղահայաց կեցվածքի նշանակությունը բանականության գործունեության համար։ Շնորհիվ ուղղաձև քայլվածքի «մարդն իշխան և տէր է ամենայն կենդանեաց. վասն որոյ ամենայն կենդանիք գլխակոր են իբրև ծառայ և հնազանդ, և մարդն ուղղաձև իբրև ազատ և թագաւոր... Ի վեր է գլուխն, զի լեզուն և ձեռն սպասաւորեսցեն բանի և գործոյ։ Զի թէ կորագլուխ էր մարդն և երկոքին ձեռքն ի յերկիր հաստատեալ, ոչ կարէր գործել։ Եւ պիտանանայր լեզու երկայն և շրթունք ստուար, զի ժողովեսցէ զկերակուր. և յայնժամ ոչ կարէր սպասաւորել բանի որպէս այժմ»[28]։

25 Գր. Տաթևացի, Գիրք հարցմանց, էջ 550։

26 Գր. Տաթևացի, Լուծումն համառօտ ի տեսութիւն Դաւթի, Մատենադարան. ձեռագիր № 1695, էջ 47ա։

27 Տե՛ս Գր. Տաթևացի, Գիրք հարցմանց, էջ 254։

28 Գր. Տաթևացի, Գիրք հարցմանց, էջ 233։

*Մարդու կյանքի և մտավոր գործունեության համար միջնադարյան հայ մտածողի հանճարեղ կռահումը ուղղադնացության դերի մասին բացառիկ հետաքրքրություն է ներկայացնում ոչ միայն փիլիսոփայական մտքի, այլև առհասարակ գիտության պատմության տեսակետից։*

*Գրիգոր Տաթևացու այս միտքը զարգացրեց նրա աշակերտ* **Մատթեոս Ջուղայեցին,** *որն իր գրվածքներում ավելի շատ զբաղվել է բնագիտական և հասարակական հարցերով։*

*Հայ նոմինալիստ-փիլիսոփաները հարստացրին փիլիսոփայական և հասարակական-քաղաքական միտքը իրենց ժամանակի համար առաջադեմ տեսություններով և նախադրյալներ ստեղծեցին փիլիսոփայությունն՝ աստվածաբանական ամուլ ոլորտներից ազատագրելու համար։ Դժբախտաբար XIV դարից հետո օտար նվաճողների կրնկի տակ հեծող Հայաստանի չափազանց ծանր տնտեսական ու քաղաքական վիճակը խիստ բացասաբար անդրադարձավ հայկական մշակույթի, այդ թվում և փիլիսոփայության հետագա զարգացման վրա։ Նախկինում առաջացած նոմինալիստական ուսմունքները համապատասխան պայմաններ չունեին վերաճելու մատերիալիստական ուսմունքների, ինչպես այդ տեղի ունեցավ Արևմտյան Եվրոպայում։ Սակայն, դա, անշուշտ, ամենևին չի նսեմացնում հայ նոմինալիստների ավանդը միջնադարյան Հայաստանի և առհասարակ Արևելքի ժողովուրդների փիլիսոփայական մտքի պատմության մեջ։ Այն գիտական մեծ արժեք է ներկայացնում միջնադարյան հայ մշակույթի պատմության և հատկապես մատերիալիստական ուսմունքների զարգացման նախապատմության ուսումնասիրման համար։*

*Հայաստանի վիճակը XV դարի սկզբից ավելի ծանրացավ։ Լանկ-Թամուրի ասպատակություններից հյուծված երկիրը թատերաբեմ դարձավ թուրքմենական ցեղերի արյունալի հակամարտության։ Երկրի տնտեսական քայքայումը և անապահով վիճակը հարվածի տակ դրեցին սակավաթիվ կրթական օջախները, այդ թվում և դրանցից ամենախոշորը՝ Տաթևի համալսարանը։ Անկում է ապրում փիլիսոփայական դպրոցը և նոմինալիստական ուղղությունը, որն ստեղծել էին Հ. Որոտնեցին և Գր. Տաթևացին։*

*Վերջինիս աշակերտ և քեռորդի* **Առաքել Սյունեցին** *արդեն հեռացավ իր ուսուցչի ավանդած ուսմունքից և հակվեց դեպի աստվածաբանությունը և փիլիսոփայական խնդիրների իդեալիստական մեկնաբանությունը։ Նրա ստվարածավալ և միակ փիլիսոփայական աշխատությունը Դավիթ Անհաղթի «Սահմանաց գրքի» մեկնությունն է։ Այդ աշխատությունը մի նմուշ է միջնադարյան սխոլաստիկ մեկնաբանության, ուր հին հեղինակի աշխարհիկ մտածելակերպը և փիլիսոփայական գաղափարները համարեցվում են կրոնական պահանջներին և թուլացնում փիլիսոփայության ինքնուրույնությունը, որն այնքան մեծ ճիգերով ձեռք էին բերել նախորդ սերնդի հայ մտածողները[29]։*

*Առաքել Սյունեցին գտնում է, որ առանց աստծո գաղափարի չի կարող լինել իմաստասիրություն։ Ըստ Ա. Սյունեցու, այն ամենը, ինչ ունի սահմանում, գոյություն ունի։ Սակայն աստված չի ենթարկվում որևէ սահմանումի, բայց դա չի նշանակում, որ նա գոյություն չունի։ Այստեղ նա կրկնում է*

---

[29] *Տե՛ս В. К. Чалоян,* История армянской философии, *էջ 291—297*։

աստծո գոյության տիեզերաբանական ապացույցը, պնդելով, թե անճանաչելի և անսահմանելի աստծո գոյությունը ապացուցվում է նրա ստեղծագործությամբ՝ աշխարհի գոյությամբ։ Այդ ապացույցին նա ավելացնում է նաև արիստոտելյան առաջին շարժիչի գաղափարը, որը ոչ միայն ստեղծում է աշխարհը, չորս տարրերը, այլև շարժման մեջ է դնում այդ ամենը[30]։

Աշխարհի ճանաչումը, ըստ Ա. Սյունեցու, անհնար է առանց զգայարանների։ Ճիշտ է, վերջնական խոսքը պատկանում է բանականությանը, բայց եթե որևէ տեղեկություն արտաքին աշխարհի մասին չի անցել զգայարանների միջով, ասենք, չի ընկալվել աչքով, ապա նա չի կարող ըմբռնվել նաև մտքով[31]։ Այստեղ դեռ պահպանվում է կապը Տաթևի դպրոցի սենսուալիստական ուսմունքի, մասնավորապես Գր. Տաթևացու իմացաբանության հետ։ Ա. Սյունեցին հետևելով իր ուսուցչին, ընդգծում է զգայության կարևոր դերը ճանաչման պրոցեսում և այն հանգամանքը, որ միտքն առանց զգայարանների չի կարող գործել։

Չնայած այս ուշագրավ գաղափարին, որը դեռևս խոսում է Ա. Սյունեցու և Տաթևի դպրոցի նախորդ ներկայացուցիչների միջև եղած կապի մասին, այնուամենայնիվ իր գաղափարների ընդհանուր ուղղությամբ և ոգով նա չնպաստեց փիլիսոփայության ինքնուրույնացմանը և, ընդհակառակը, կրկին ենթարկեց այն աստվածաբանական խնդիրներին։

Առաքել Սյունեցիով սկսված հայ միջնադարյան փիլիսոփայության վայրէջքը բավականին արագ խորացավ և տևեց շուրջ երկու դար։ Ստեղծված փիլիսոփայական ժառանգությունը XV դարի 20-ական թվականներից սկսած մինչև XVII դարի կեսերը իրենց գոյությունը պահպանած վանական դպրոցներում օգտագործվում էր միայն ուսուցողական նպատակներով, այն էլ իր պարզունակ և սխոլաստիկ ձևով։

XVII դարի կեսերից միայն հրապարակ են գալիս նոր դեմքեր և ինքնուրույն փիլիսոփայական երկեր, որոնք իրավունք են տալիս խոսելու ուշ-միջնադարյան հայ փիլիսոփայության զարգացման մի նոր շրջանի մասին։ Փիլիսոփայական և առհասարակ տեսական մտքի որոշակի աշխուժացումն այդ շրջանում պայմանավորված էր համեմատաբար կայուն և խաղաղ դրությամբ, որ ուներ Հայաստանը թուրք-պարսկական երկարատև պատերազմներից հետո։ Զգալի աշխուժացում է նկատվում հայ ունևոր դասերի և վերնախավի շրջանում, ուր հասունանում էին ազատագրական տրամադրությունները։ Ընդլայնվում ու ստեղծագործական որոշ աշխատանք են ծավալում կրթական կենտրոնները՝ Էջմիածնի, Սյունյաց Մեծ Անապատի, Բաղեշի Ամրդոլուի, Լիմի և այլ վայրերի վանական դպրոցները։ Ի տարբերություն նախորդ շրջանների, մշակութային կյանքում ավելի ու ավելի մեծ դեր են սկսում խաղալ Հայաստանից դուրս գտնվող գաղթօջախները։ Սկսվում է հայ ֆեոդալական հասարակության, այդ թվում և նրա փիլիսոփայության զարգացման վերջին շրջանը։

Այդ ժամանակաշրջանի ամենաուշագրավ մտածողն է հանդիսանում Սիմեոն Ջուղայեցին (մհ. 1657 թ.), որին պատկանում է հայ փիլիսոփայական

---

30 Առաքել Սիւնեցի, Լուծմունք յաղագս Սահմանաց (գրոց) Դաւթի Անյաղթ փիլիսոփայի, Մադրաս, 1797, էջ 216։

31 Նույն տեղում, էջ 480։

մտքի նախկին մակարդակի վերականգնման պատիվը։ Ս. Ջուղայեցուց մնացել են մի քանի փիլիսոփայական երկեր, որոնց մեջ կարևորագույններն են «Տրամաբանությունը» («Համառօտ հաւաքումն տրամաբանութեան») և Պրոկղի «Շաղկապք աստուածաբանականք» երկի մեկնությունը։ Այդ գործում գրեթե երկու դար տևած դադարից հետո գիտական միտքը նորից ինքնուրույն մասնագիտական մոտեցում է ցուցաբերում իմաստասիրական խնդիրների հանդեպ։ Ավելին, Ս. Ջուղայեցու մոտ շոշափելի կապ է նկատվում Տաթևի դպրոցի փիլիսոփայության հետ։ Անտարակույս, նա հենվում է նախորդ շրջանի հայ փիլիսոփայական գրականության վրա և կարծես շարունակում այն նույն կետից, որտեղ տարբեր պատճառներով կանգ էր առել նրա զարգացումը։

Փիլիսոփայության հիմնական հարցը Ս. Ջուղայեցին լուծում է իդեալիզմի դիրքերից[32]։ Աշխարհն ըստ նրա, աստծո արարչագործության արդյունք է, իսկ ինքը՝ աստվածն անեղ է և հավերժ։ Նա իր մեջ «զորությամբ» կրում է աշխարհի լինելությունը, որը նրա կամքով «ներգործությամբ» ի կատար է ածվում։ Հնարավորությունից իրականություն դարձած գոյերն արդեն նյութեղեն իրերի աշխարհն են կազմում, որը գտնվում է անվերջանալի շարժման մեջ։ Բնության հիմքում ընկած են չորս տարրերը՝ հողը, ջուրը, կրակը և օդը։ Այդ նյութական գոյացությունների հավերժական շրջապտույտը թույլ չի տալիս, որ աշխարհը ծերանա։ Բնությունը գտնվում է անընդհատ շրջապտույտի և նորոգման մեջ[33]։

Գոյացությունների աշխարհը նյութական է և իրեղեն, որի ճանաչումը հետզհետե լցնում է հոգու կամ մտքի բովանդակությունը։ Ճանաչման այդ պրոցեսը բաղկացած է հինգ աստիճաններից՝ զգացություն, երևակայություն, հիշողություն, կարծիք և մտածողություն։ Գոյն ամբողջությամբ ճանաչվում է վերջին, ամենաբարձր աստիճանում, բայց նրան հասնելու համար այն պետք է անցնի նախորդ աստիճանները, մանավանդ առաջինը, ուր ճանաչվող գոյը ըննվում է զգայարանների կողմից։ Առանց զգայարանների միտքը չի կարող հասու լինել գոյի էության. միտքը հենվում է նրանց վրա, ընդհանրացնում զգայարանների հաղորդումները տվյալ գոյի որակական հատկանիշների մասին և հասու լինում նրա էությանը։

Ս. Ջուղայեցու իմացաբանությունն ունի որոշակի մատերիալիստական բնույթ։ Նա բավականին հստակ շեշտում է ճանաչվող առարկայի առաջնությունը ճանաչող մտքի կամ զգացության հանդեպ, հաստատելով, որ գիտության առարկան նախորդում է գիտությանը, ինչպես և ճանաչվող գոյը՝ ճանաչմանը, կամ զգալապես ընկալվող իրը՝ զգայությանը։ «Մակացելին նախկին է քան զմակացութիւն, քանզի մակացելիք բազումք գոն, զորոց զմակացութիւնսն չև ևս եմք ստացեալ, իսկ մակացելիքն գոն և ասին մակացելիք։ Նմանապէս և զգալիք նախկին են քան զգացումն»[34]։

Նույն այս սկզբունքը կիրառվում է նաև նրա տրամաբանության մեջ, որ-

---

[32] Տե՛ս В. К. Чалоян, История армянской философии, էջ 312։ Гр. Мирзоян, Философские взгляды Симеона Джугаеци, автореферат канд. диссертации, Ереван, 1967. Հր. Միրզոյան, Սիմեոն Ջուղայեցի, Երևան, 1971։

[33] Տե՛ս Սիմէոն Ջուղայեցի, Մեկնութիւն գրոցն Պրոկղի, Մատենադարան, ձեռագիր № 1828, էջ 20ա։

[34] Ս. Ջուղայեցի, Համառօտ հաւաքումն տրամաբանութեան, Կ. Պօլիս, 1728, էջ 51։

անդ պարզորոշ երևում է նոմինալիստական գիծը։ Ըստ Ս. Ջուղայեցու, ընդհանուրի գոյությունը պայմանավորված է եզակիի առկայությամբ[35]։ Ընդհանուրը սոսկ մտածողության արդյունք չէ, որովհետև ընդհանուր գաղափարը (որևէ բանի մասին) գոյանում է ոչ թե ինքնստինքյան, ոչ թե ոչնչից, այլ իրականում գոյություն ունեցող եզակի իրերից։

Անդրադառնալով «ռեալիստների» և նոմինալիստների վեճին, որոնց նա նույնացնում է պլատոնականների և արիստոտելականների հետ Ս. Ջուղայեցին աներկբայելիորեն կանգնում է վերջինների կողմը, գտնելով, որ պլատոնականները գլխի վրա են շրջում հարցի լուծումը, որովհետև ոչ թե ընդհանուրն է ստեղծում եզակի (իրիը), այլ եզակին է ստեղծում ընդհանուրը[36]։ Ս. Ջուղայեցու այս հստակ նոմինալիստական տեսակետը ուշագրավ մի էջ է ուշ միջնադարի հայ փիլիսոփայության համար, որը երկարատև անկումից հետո վերականգնեց նախկինում հայ մտածողների կողմից արծարծված մատերիալիստական գաղափարները։

Եթե XIII—XIV դարերում հայ նոմինալիստները համաքայլ էին ընթանում համաշխարհային փիլիսոփայական մտքի զարգացմանը, իսկ որոշ հարցերում կանխում Եվրոպայի փիլիսոփաներին, ապա XVII դարի երկրորդ կեսին, երբ Արևմուտքում իրենց ուսմունքներով հանդես էին եկել Ֆ. Բեկոնը և Թ. Հոբսը, Պ. Գասենդին և Բ. Սպինոզան, որոնք իրենց փիլիսոփայությունը հակադրեցին աստվածաբանությանն ու սխոլաստիկային և բազմակողմանի մատերիալիստական տեսություններով պայքար ծավալեցին փիլիսոփայական իդեալիզմի դեմ, Ս. Ջուղայեցու և նրան ժամանակակից հայ փիլիսոփաների երկերը իրենց հարցադրումներով և լուծումներով ետ էին մնում փիլիսոփայության առաջավոր գծից։

Այսուհանդերձ, Ս. Ջուղայեցու փիլիսոփայական ժառանգությունը որոշակի պատմա-գիտական արժեք է ներկայացնում։ Հատկապես պետք է նշել նրա տրամաբանության դասագիրքը, ուր ամփոփված է միջնադարյան հայ տրամաբանական ուսմունքների բովանդակությունը ուսուցողական նպատակներով։ Ճիշտ է, Ս. Ջուղայեցին ինքն ասում է, թե նա լոկ շարադրում է Արիստոտելի տրամաբանությունը, սակայն նա ինքնուրույն ձևով շարադրում է իր տրամաբանական հայացքները, հենվելով ինչպես Արիստոտելի, այնպես և հայ իմաստասերներ Դավիթ Անհաղթի, Հովհան Որոտնեցու, Գրիգոր Տաթևացու և այլոց աշխատությունների վրա։

Իր գործերով Ս. Ջուղայեցին ոչ միայն վերակենդանացրեց փիլիսոփայական գիտությունը Հայաստանում, այլև որոշ չափով նպաստեց նրա տարածմանը և փիլիսոփայական տերմինոլոգիայի հետագա մշակմանը։ Նրա գործերն ուսուցողական նպատակով օգտագործվում էին շուրջ մեկ և կես դար։ Դրանց օգտակարության և Անդրկովկասի գրասեր շրջանակների պահանջներին համապատասխանելու մասին է վկայում նաև այն հանգամանքը, որ XVIII դարում նրա գործերը թարգմանվեցին վրացերեն և որոշակի հետք թողեցին նաև վրաց փիլիսոփայական մտքի պատմության մեջ[37]։

---

[35] Տե՛ս նույն տեղում, էջ 33—34։

[36] Տե՛ս Ս. Ջուղայեցի, Մեկնութիւն գրոց Պրոկղի, Մատենադարան, ձեռագիր № 1828, էջ 32ա։

[37] Տե՛ս Г. Каландаришвили, Очерки по истории логики в Грузии, Тблиси, 1952.

Նույն ժամանակաշրջանի և հասարակական շերտի գաղափարախոսների թվին է պատկանում Ստեփանոս Լեհացին (մհ. 1687 թ.), որը հայ մշակույթի պատմության մեջ հայտնի է իր հմուտ թարգմանություններով, մասնավորապես Արիստոտելի «Մետաֆիզիկայի», Պրոկլի, Հովսեփ Փլաբիոսի «Պատմության» և այլ նշանակալից հուշարձանների։ Նրա հայացքների ուսումնասիրման համար կարևոր աղբյուր են հանդիսանում փիլիսոփայական-աստվածաբանական տերմինների բառարանը և «Մետաֆիզիկայի» մեկնությունը։

Իր փիլիսոփայական հայացքներով Ս. Լեհացին պատկանում է տվյալ ժամանակաշրջանի համեմատաբար առաջադեմ, լուսավորյալ թևին։ Հայկական միջավայրում նա տարածում է աշխարհիկ բնույթի փիլիսոփայական գիտություն։ Ս. Լեհացին, ինչպես և Սիմեոն Ջուղայեցին, դուրս չի գալիս միջնադարյան փիլիսոփայության շրջանակներից։ Բայց, ի տարբերություն Ս. Ջուղայեցու, մեկնելով Արիստոտելի հայացքները, տալիս է նրանց իդեալիստական երանգ, մասնավորապես, երբ լուծում է ընդհանուրի և եզակիի առընչակցության խնդիրը։ Ս. Լեհացին այս հարցում հարում է «ռեալիստներին» և գտնում, որ ընդհանուրը, սեռի և տեսակի հասկացությունները նախորդում են եզակիին և առաջնային են կոնկրետ իրերի նկատմամբ[38]։ Ըստ Ս. Լեհացու, ամեն մի ճշմարիտ գաղափար իր էությամբ առաջնային է նրան համապատասխանող իրի հանդեպ, որը կախման մեջ է գտնվում մտքից, նրա ընդհանուր գաղափարից[39]։ Այդ սկզբունքին համաձայն, ընդհանուրը հռչակվում է նրա կողմից առաջնային, հավերժական, որը չի սահմանափակվում ոչ տեղով, ոչ ժամանակով։

Ճշմարտությունը, ըստ Ս. Լեհացու, նախ գոյություն ունի մտքում, իսկ հետո՝ համապատասխան իրերի մեջ, ընդ որում սկզբից աստծո գիտության մեջ, որը անձև նյութին, իրերին հաղորդում է որակական հատկանիշներ։ Իրերն աստծո մտքում նախապես գոյություն ունեցող տեսակների նմանահանություններ են[40]։

Լիովին համահունչ այս բացատրության, Ս. Լեհացին լուծում է աստծո և բնության հարաբերակցության խնդիրը։ Աստծո գիտությունը աշխարհի գոյության պատճառն է[41], նրա կամքով է առաջ եկել բնությունը, մարդը, նրա հոգին և մտածելու կարողությունը։ Նյութն ինքնին գոյություն չունի. նա սկզբից ստեղծվում է անորակ և անձև որպես սոսկ քանակ, իսկ այնուհետև, աստծո գաղափարով ստանալով որակ և տեսակ, առաջ է գալիս որպես նյութական իր[42]։

Անհրաժեշտ է նշել, որ Ս. Լեհացին, իր իդեալիստական տեսակետները շարադրելիս, միաժամանակ ցուցաբերում է դիալեկտիկական մտածողության սաղմեր, որոնք, անշուշտ, մեծ հետաքրքրություն են ներկայացնում դիտական մտքի պատմության համար։ Այսպես, նա նկատում է իրերի և երևույթների մեջ գոյություն ունեցող հակասությունները, շեշտում, որ ամեն մի բան

[38] Տե՛ս Ստեփանոս Լեհացի. Լուծմունք մետաֆիզիկայի, Մատենադարան, ձեռագիր № 3844, էջ 51բ։

[39] Տե՛ս Ստեփանոս Լեհացի, Բանք իմաստասիրականք և աստուածաբանականք, Մատենադարան, ձեռագիր № 5074, էջ 430ա։

[40] Տե՛ս նույն տեղում, էջ 430ա։

[41] Տե՛ս նույն տեղում, էջ 292ա։

[42] Տե՛ս նույն տեղում, էջ 441բ—442ա։

*առաջ է գալիս որպես հակասությունների հետևանք, իսկ այդ առաջացումն էլ որևէ բանի ոչնչացման հետևանք է։ Ամեն մի գոյացում և վերացում, ըստ Ս. Լեհացու, տեղի է ունենում մի հակասությունից մեկ ուրիշ հակասության անցնելու պատճառով[43]։ Այս հակասությունները հատուկ են իրերին, որովհետև, նշում է նա, նրանք փոփոխական են իրենց բնությամբ. Նրանց ներսում պայքարող հակասությունները և դրսից եկող ներգործությունները պահում են իրերի աշխարհն անհատնում փոփոխության ու շրջապտույտի մեջ։ Ս. Լեհացին գնահատում է ներքին հակասությունը, որպես ամեն մի իրին հատուկ էական օրինաչափություններից մեկը, իրերի շարժման կամ փոփոխության պատճառ։ Հայ միջնադարյան փիլիսոփայության մեջ սա դիալեկտիկական մտածողության ամենաուշագրավ առկայծումներից մեկն է։ Ճիշտ է, այն դրսևորվում է իդեալիստական հողի վրա, բայց, այնուամենայնիվ, արժանի է բարձր գնահատականի, որպես փիլիսոփայական մտքի արժեքավոր նվաճումներից մեկը։*

*Ուշ միջնադարի, XVI—XVIII դարերի հայ փիլիսոփայական մտքի պատմության մեջ իրենց գործերով որոշ տեղ են գրավում նաև Հովհաննես Ջուղայեցին, Պաղտասար Դպիրը, Հակոբ Նալյանը և Խաչատուր Էրզրումցին։ Սակայն այս մտածողների ժառանգությունը, պատկանելով ֆեոդալական մշակույթի մայրամուտի շրջանին, չնայած իր քանակային հարստության, ուներ առավելապես ուսուցողական նշանակություն և տոգորված էր իրենց դարն ապրած միջնադարյան սխոլաստիկ և աստվածաբանական գաղափարներով։*

*Այս ուղղության վերջին և ամենացայտուն ներկայացուցիչն է* Սիմեոն Երևանցին *(1710—1780)։ Լինելով հայ ֆեոդալական դասերի գաղափարախոսության արտահայտիչ, նա խուսափում է նոր վտանգավոր ուսմունքներից, որոնք տակնուվրա էին արել ամբողջ ժամանակակից եվրոպական գիտությունը և կյանքը։ XVIII դարի երկրորդ կեսին նա անհրաժեշտ է համարում նոր շարադրանքով կրկնել Դավիթ Անհաղթի, Գրիգոր Տաթևացու և Սիմեոն Ջուղայեցու մեկնությունները, նվիրված Արիստոտելի, Պորփյուրի և Պրոկլի գործերին, փաստորեն գրեթե ոչ մի նոր միտք կամ մեկնաբանություն չավելացնելով իր նախորդների ուսմունքներին։ Բայց նույն ժամանակ անհրաժեշտ է գտնում եռանդուն կերպով հարձակվելու հայ բուրժուական լուսավորիչների վրա, որոնք մտահոգված էին Հայաստանի ազատագրման գործով և առաջադրեցին հանրապետական կարգեր ստեղծելու գաղափարը։*

*Ճիշտ է, Ս. Երևանցին խոսում է ժողովրդի կրթական մակարդակը բարձրացնելու մասին, հորդորում է սիրել գիտությունն ու իմաստությունը։ Նա տպարան և թղթի գործարան է հիմնադրում Էջմիածնում ու հրատարակչական գործունեություն ծավալում, բայց նրա լուսավորչական աշխատանքը և գիտա-փիլիսոփայական գրվածքները տարածում էին միջնադարի գաղափարախոսությունը և պաշտպանում կղերա-ֆեոդալական միջավայրի շահերը։ Ս. Երևանցին, անտարակույս, պատկանում էր այդ միջավայրի լուսավորյալ շերտին, բայց նա, որպես մտածող և հայոց եկեղեցու գերագույն պետ, չէր հանդուրժում ֆեոդալիզմի դեմ ուղղված նոր հեղափոխական գաղափարներ։ Այդ պատճառով էլ նա հանդես եկավ որպես հայ նորելուկ բուրժուազիայի, նրա աշխարհայացքի և քաղաքական ծրագրերի հակառակորդ։*

---

[43] *Տե՛ս նույն տեղում, էջ 389։*

**Մադրասի բուրժուա-լուսավորիչների խմբակը:** Պատմական դեպքերի և հայ ժողովրդի ճակատագրի բերումով նոր, բուրժուական դասակարգը սկսեց առաջ գալ ոչ թե օտար լծի տակ հեծող բուն Հայաստանում, այլ աշխարհով մեկ սփռված հայկական գաղթօջախներում, ուր XVII—XVIII դարերում հետզհետե առաջնակարգ և ղեկավար դիրք էր գրավել հայ բուրժուական խավը։ Այդ նոր հասարակական շերտին էր պատկանում ապագան, որովհետև նրա կյանքը կապված էր նոր արտադրա-հասարակական հարաբերությունների հետ։ Եվ ահա XVIII դարի երկրորդ կեսին երևան եկան այդ նոր դասակարգի գաղափարախոսները՝ իրենց քաղաքական ծրագրերով և փիլիսոփայական հայացքներով։ Հայ նորածին բուրժուազիան, որոշ դիրքի և հարստության տիրանալով օտար երկնքի տակ, ձգտում էր ազատել հայրենիքը Թուրքիայի և Պարսկաստանի լծից, ունենալ ազգային պետություն և սեփական ազգային շուկա։ Այդ է պատճառը, որ առաջին հայ բուրժուական գաղափարախոսները եռանդուն կերպով մշակում էին Հայաստանի ազատագրման ծրագրեր, աշխատում բարձրացնել արթնացող ազգային-ազատագրական շարժման ալիքը։ Միաժամանակ մշակվում էր նաև ապագա հայ բուրժուական պետության ստեղծման նախագիծը։

Բուրժուական հասարակական-քաղաքական և փիլիսոփայական մտքի առաջին արտահայտիչները հայ իրականության մեջ հանդիսացան Մադրասի հայկական գաղութի լուսավորական խմբակի անդամներ Մովսես Բաղրամյանը, Շահամիր Շահամիրյանը (1723—1797) և Հովսեփ Էմինը (1726—1809)։ Այս երեք գործիչներն էլ տոգորված էին հայ ժողովրդին լուսավորելու երազով։ Նրանք առաջադեմ, հեղափոխական գաղափարների պաշտպաններ էին, բայց որպես բուրժուա լուսավորիչներ իրենց հայացքների և քաղաքական ծրագրերի իրականացումը կապում էին գիտության և լուսավորության տարածման հետ։ Անշուշտ, նրանց հայացքների վրա որոշակի ազդեցություն են ունեցել ժամանակի եվրոպական, մասնավորապես անգլիական և ֆրանսիական լուսավորիչների և քաղաքական մտածողների գաղափարներն ու ուսմունքները։ Հայկական գաղութներում աճած նոր բուրժուական խավը, շփվելով Արևմտյան Եվրոպայի մշակույթի հետ, ձգտում էր այնտեղ ծնված նոր առաջադեմ ուսմունքները այս կամ այն չափով հարմարեցնել հայկական պայմաններին, նպաստել ազգային-ազատագրական պայքարին ու տեսնել իրենց հայրենիքը վերածնված և ազատ։

Մադրասի բուրժուա-լուսավորական խմբի անդամների աշխարհայացքը իր որոշ կողմերով և մանրամասներով դեռևս կապված էր հնի հետ։ Այստեղ երբեմն իրենց զգացնել է տալիս այն հանգամանքը, որ նրանք ապրում ու գործում են ֆեոդալական, ասիական երկրում։ Սակայն չնայած հին աշխարհայացքի մնացուկներին, Մադրասի խմբակի անդամները առաջինն էին հայ իրականության մեջ, որ բացեիբաց հանդես եկան նոր, այն ժամանակվա համար միանգամայն առաջադիմական սկզբունքներով և դրանք հակադրեցին միջնադարյան ոգուն ու աշխարհհայացքին, ճորտատիրությանը և առհասարակ ֆեոդալիզմին, որպես բանականությանն ու խղճին չհամապատասխանող մի իրավակարգի։

Հայ լուսավորիչներ Շ. Շահամիրյանի, Մ. Բաղրամյանի և Հ. Էմինի հայացքների առանցքը «բնական իրավունքի» գաղափարն էր։ Ամեն մի երևույթ, ասում էին նրանք, լինի այն մարդկային հասարակության թե բնության մեջ,

կատարվում է ըստ որևէ օրենքի։ Առանց օրինաչափության չի կարող գոյություն ունենալ ոչ մի բան։ Իսկ «բնական իրավունքը» բխում է հենց այդ օրինաչափություններից, որին ենթարկվում և որով ապրում է մարդ արարածը։ Եթե ոտնահարվում է մարդու «բնական իրավունքը», այդ նշանակում է, որ հասարակությունը իր սահմանած սովորույթներով ու օրենքներով դեմ է գնում բնությանը։ Օրենքները պետք է բխեն մարդու բնությունից և համապատասխանեն նրա բնական պահանջներին։ Իսկ այդ պահանջներն են անհատի ազատությունը, մարդկանց իրավահավասարությունը։ Մինչդեռ բռնության վրա հիմնված հասարակարգը դեմ է բնությանը և անօրինական է։ Բնական իրավունքի խախտումը, որ կատարվում է թագավորների, բռնակալների և իշխանների կողմից, ավերիչ հետևանքներ ունի հասարակության համար։

Հ. Էմինը և Շ. Շահամիրյանը առաջ են քաշում այն տեսակետը, որ ժողովուրդն իրավասու է ապստամբել բռնակալների դեմ իր բնական իրավունքը վերահաստատելու համար, և նա այն ժամանակ իրավունք ունի բռնություն գործադրել, որպեսզի ճանապարհ հարթի համընդհանուր, համաժողովրդական կամքի դրսևորման համար։ Հասկանալի է, որ այդ համընդհանուր կամքը և «բնական իրավունքը» հասկացվում են նրանց կողմից որպես բուրժուական հասարակությանը համապատասխանող նորմեր և մասնավոր սեփականության վրա հիմնված հասարակարգի պահանջ։ Որպես նոր դասակարգի գաղափարախոսներ, նրանք ներկայացնում են այդ «բնական օրենքը» և ընդհանուր կամքը որպես ամբողջ ժողովրդի կենսական շահերն արտահայտող սկզբունք, մի բան, որը միանգամայն հասկանալի է հնի դեմ պայքարի բարձրացող նոր դասակարգի ներկայացուցչի համար։ «Եթէ կամիք ազատ լինիլ և թագաւորիլ հաւասարապէս ի վերայ աշխարհին ձերոյ և ազատապէս տէր ի վերայ ստացուածոց ձերոց, ստանալ պատիւ վասն առաքինութեան ձերոյ, սրբել աղտս անօրէնութեան, և մաքրել խղճմտանս ձեր՝ հարկաւոր է... ընտրել ձեզ օրէնս բարիս՝ ըստ կամաց և ըստ հաճոյից համահաւասար ժողովրդոց ի զօրութենէ բանական հոգւոյ ձերոյ՝ կալ և մնալ ձեզ կախեալ ըստ օրինաց ձերոց, զի ոչ ոք իցէ որ իշխեսցէ ի վերայ ձեր, բայց օրէնս ձեր»,—ասում է Շ. Շահամիրյանը[44]։ Ազատության և մարդկանց իրավահավասարության գաղափարներն են արծարծում նաև Մ. Բաղրամյանն ու Հ. Էմինը։ Դա բոլորովին նոր, իշխող աշխարհայացքից և հասարակական-քաղաքական ընդունված տեսակետներից որակապես տարբերվող մի սկզբունք էր, որն արտահայտում էր բուրժուական դասակարգի շահերը և ուղղված էր Հայաստանում տիրող ֆեոդալական կարգերի և օտար բռնակալության դեմ։

Մադրասի խմբակի հայ լուսավորիչներն իրենց գրվածքներով ու գործունեությամբ ձգտում էին ամեն կերպ նպաստել ազգային-ազատագրական շարժմանը, տեսնել Հայաստանը ազատ, բարգավաճ, առաջադեմ մի երկիր, ուր իշխելու են ոչ թե արտոնյալ ավատատերերը և հոգևորականությունը, այլ ժողովուրդը, ուր հասարակության ձեռներեց, աշխատասեր անդամները քաջալերվելու են պետության կողմից արդյունագործությամբ և առևտրով երկիրը հարստացնելու համար։ Նրանք առաջարկում էին ապագա ազատագրված Հայաստանում ստեղծել ժողովրդապետություն, ուր ամուր օրենքներով ապա-

---

[44] Շ. Շահամիրյան, Որոգայթ փառաց, Թիֆլիզ, 1913, էջ 21։

հռչված կլինեն ամեն մարդու և՛ ազատությունը, և՛ անվտանգությունը, և՛ նրա մասնավոր սեփականատիրական իրավունքները։

Այդ ապագա հանրապետության համար Շ. Շահամիրյանը գրում է սահմանադրության նախագիծ՝ «Որոգայթ փառաց» երկը, որը հանդիսանում է հայ հասարակական-քաղաքական մտքի փայլուն հուշարձան։ Իհարկե, այնտեղ շարադրված գաղափարները, համեմատած բուն Հայաստանի տնտեսական զարգացման աստիճանի և քաղաքական վիճակի հետ, դեռ վաղահաս էին և ժամանակավրեպ։ Մադրասի հայ բուրժուա լուսավորիչները առաջադրեցին այն իրավիճակի համար մի երևակայական նախագիծ։ Թուրք և պարսիկ բռնակալներից Հայաստանի ազատագրումը նրանք կապում էին ցարական Ռուսաստանի օժանդակության և ռազմական միջամտության հետ, սակայն հաշվի չէին առնում, որ ճորտատիրական Ռուսաստանը Անդրկովկասում հետապնդում էր սեփական շահեր և Հայաստանի ազատագրումից հետո չէր համակերպվելու մի այնպիսի իրավակարգի հետ, որն անհարիր լիներ ցարիզմի էությանը։ Չնայած այն հանգամանքին, որ Մադրասի խմբակի անդամների ծրագիրն այն ժամանակ անիրագործելի էր, նրանց գաղափարները վկայում էին գաղութահայ բուրժուական խավի քաղաքական առաջադեմ ձգտումների և հասունացող պահանջների մասին։

«Որոգայթ փառացում», ինչպես և հայ բուրժուա լուսավորիչների այլ երկերում (Հ. Շահամիրյանի և Մ. Բաղրամյանի «Նոր տետրակ, որ կոչի յորդորակ», Հ. Էմինի «Ինքնակենսագրությունը») առաջադրված ծրագրերն ու տեսակները, ինչպիսիք են ժողովրդապետության, անհատի ազատության, հանրապետության ղեկավար պետական մարմինների ընտրության, ճորտության վերացման և մասնավոր սեփականության անձեռնմխելիության մասին արծարծված գաղափարները, բոլորովին նոր, դեպի ապագա նայող և ապագան ազդարարող գաղափարներ էին ոչ միայն հայ իրականության, այլև ամբողջ Արևելքի համար։ XVIII դարի հայ բուրժուա լուսավորիչների գործերը, հատկապես «Որոգայթ փառացը» առաջինն էին ողջ Ասիայում, որոնց մեջ հնչեց պայքարի կոչն ընդդեմ նեխած ֆեոդալական կարգերի ու ճորտատիրության և հռչակվեց բանական օրենքների վրա հիմնված, նոր բուրժուական հասարակության ստեղծման գաղափարը։

Մադրասի խմբակի լուսավորիչներով հայ հասարակական և փիլիսոփայական մտքի պատմության մեջ սկսվում է նոր փուլ՝ բուրժուական գաղափարախոսության շրջան, որը հետզհետե, կապիտալիզմի զարգացմանը զուգընթաց հաջորդ՝ XIX դարում հաղթահարեց և ասպարեզից դուրս մղեց ֆեոդալական-կղերական գաղափարախոսությունը։ Շ. Շահամիրյանը, Մ. Բաղրամյանը, Հ. Շահամիրյանը և Հ. Էմինը միջնադարյան խավարամոլության և բռնապետության դեմ սկսվող մեծ պայքարի նախակարապետներն էին։

## ԳԻՏՈՒԹՅՈՒՆ

Հայաստանի տարբեր նահանգներում, ինչպես ցույց տրվեց վերը, դեռևս շարունակում էին իրենց գոյությունը պահպանել տնտեսապես ապահով վիճակ ունեցող մի շարք վանական հաստատություններ, որոնց կից գործում էին միջնակարգ և բարձրագույն դպրոցներ։ Ուսումնական այդ կենտրոնների

շուրջ համախմբված գիտնական վարդապետները ձգտում էին ոչ միայն յուրացնել նախորդ սերունդների ստեղծած գիտելիքները, այլև հարստացնել դրանք նոր փաստերով ու դրույթներով։ Այս ամենը, սակայն, կատարվում էր եկեղեցու ընձեռած անձուկ սահմաններում. ինչպես ամենուրեք, այնպես էլ Հայաստանում գիտությունը ստանձնել էր աստվածաբանության հլու կամակատարի դերը։

Եկեղեցու նշանավոր գաղափարախոսները, ընդունելով գիտական ուսումնասիրության կարևորությունը, իրենք իսկ զբաղվում էին դիտական աշխատանքով. միակ ճշգրիտ գիտությունը, սակայն, նրանց կողմից աստվածաբանությունն էր համարվում։ «Գիտելի է,—գրում է նրանցից մեկը,—զի զանազանութիւն է ի մէջ աստուածաբանութեանն և այլ գիտութեանց։ Զի թէպէտ և այլ գիտութիւնք երբեմն ճշտութիւն ունեն, սակայն բազում ստութիւնք և խաբեութիւնք խառնեալք են։ Եւ այս է պատճառն, զի այլ գիտութիւնք յենուն ի բանականն և ի մոլորեալ բանականութիւն մարդկան, բայց մեր աստուածաբանութիւնս և աստուածային գիրք՝ միշտ ճշմարիտ են»։ Գիտական հետազոտությունների նկատմամբ եկեղեցու դիրքորոշումը Գր. Տաթևացին ձևակերպել է հակիրճ ու դիպուկ հետևյալ բանաձևով. «Բնական քննութեանն հետևի հերձուած, իսկ հաւատոյն՝ ուղղափառութիւն»։

Տաթևի բարձրագույն դպրոցի և նրանից սերված մյուս ուսումնական հաստատությունների նշանավոր վարդապետները՝ Հովհան Որոտնեցին, Գրիգոր Տաթևացին ու նրանց աշակերտները, հավատարիմ մնացին այս սկզբունքին։ Նրանք, ըստ մեծի մասին, վերաշարադրեցին նախորդ դարերում հայերեն լեզվով ստեղծված ինքնուրույն և թարգմանական գիտական գրականության մեջ ամբարված բնագիտական արժեքավոր տեղեկությունները, սակայն անկարող եղան տեսական նոր դրույթներ առաջ քաշել և ընդարձակել բնական երևույթների ուսումնասիրության ավանդական սահմանները։

Իր դասախոսությունների մեջ Հովհան Որոտնեցին, աստվածաբանական և փիլիսոփայական պրոբլեմներից բացի, քննարկել է նաև բնագիտական բազմաթիվ հարցեր։ Մասնավորապես ուշագրավ են «Ի սկզբանէ տէր զերկիր հաստատեցեր և գործք ձեռաց քոց երկինք են» բնաբանով նրա դասախոսությունները, որոնց մեջ ի մի են բերված հայ մատենագրությանը հայտնի գիտելիքները չորս սկզբնական տարրերի (էլեմենտների) մասին։ Որոտնեցին քննադատում է անտիկ բնափիլիսոփայության բոլոր ներկայացուցիչներին, որոնք բնությունը դիտում են որպես մեն մի տարրի (հող, ջուր և այլն) փոխակերպման արդյունք. նա մերժում է նաև այն մատերիալիստ մտածողներին, որոնք ամենայն ինչի սկիզբ «զհիւլէ ասացին՝ այսինքն զնիւթ»։

Հենվելով Արիստոտելի վրա, Որոտնեցին տարրերի առաջացումը պատկերացնում է այսպես. ի սկզբանե ստեղծվել է անորակ գոյացությունը և աննյութական չորս որակություններ՝ ջերմություն, ցրտություն, գիճություն և չորություն։ Եվ ահա, այս որակությունները, համակցելով գոյացության հետ, ծնունդ են տալիս տարրերին՝ հրին, ջրին, օդին և հողին. «Իսկ որ ի ջերմն հպեալ նիւթ՝ հուր եղև, իսկ որ ցուրտ՝ ջուր եղև, իսկ որ գէջ՝ օդ եղև, և որ ի չոր՝ երկիր (այսինքն՝ հող). այսպէս չորս տարերք կազմեցան ի նիւթոյ և ի տեսակէ»։

Տարրերը, գոյացական հատկություններից բացի, ունեն նաև պատահական հատկություններ. ըստ որում մեկի պատահականը մյուսի գոյացական

հատկությունը լինելով՝ բոլոր տարրերն էլ շղթայաձև շաղկապվում են միմյանց։ «Ունին տարերք,—գրում է նա այդ մասին,—տեսակ գոյացական և տեսակ պատահական․ գոյացական ունի երկիր զչոր, իսկ պատահական զցուրտ․ գոյացական ունի ջուր զցուրտ և պատահական՝ զգէջ․ գոյացական ունի օդ զգէջ և պատահական՝ զջերմն, գոյացական ունի հուր զջերմն և պատահական՝ զչոր»։

Բնության մեջ գոյություն ունեցող տարրերն արդյունք են տարրերի տարբեր համամասնությամբ միացությունների, ըստ որում համապատասխան պայմանների ազդեցությամբ մի տարրից առաջանում է մյուսը, սակայն տարրափոխությունն անմիջաբար տեղի է ունենում միայն ընդհանուր հատկություններ ունեցող տարրերի միջև։

Յուրաքանչյուր տարր բնության մեջ ունի իր որոշակի տեղը կամ դիրքը, որ պայմանավորված է նրա կշռով. հողը ծանրագույն տարրն է՝ «ամենայն տարերաց մայրը»։

Հովհան Որոտնեցին, չորս տարրերի ուսմունքից բացի, իր դասախոսությունների մեջ շոշափում է նաև բնագիտական և տիեզերագիտական բազմապիսի այլ հարցեր, փորձում յուրովի դասակարգել կենդանական աշխարհը։ Նրա կարծիքով բոլոր կենդանիները, ըստ իրենց ծննդյան կերպի, բաժանվում են երեք խոշոր խմբերի․ առաջինի մեջ մտնում են նեխման հետևանքով ծնունդ առածները (Որոտնեցին կարծում է, թե այդ ճանապարհով են առաջանում մժեղները, ճանճերը, որդերը և այլք), ձվից ծնվողները՝ կազմում են երկրորդ մեծ խումբը, իսկ մոր արգանդից ծնվող կենդանիները՝ դասվում են երրորդ խմբի մեջ։

Կենդանիների մի մասը բուսակեր է, մյուս մասը՝ միայն մսակեր, իսկ երրորդը՝ խառնակեր, «զի ուտեն ունդս և ուտեն միս»։

Այս դասակարգումից հետո Որոտնեցին ծանոթացնում է իր ունկնդիրներին նաև Ոլիմպիոդորոս փիլիսոփայի դասակարգությանը, որի համաձայն կենդանիները բաժանվում են ցամաքային և ջրային խոշոր խմբերի, իսկ ցամաքայիններն, իրենց հերթին, արյունավոր (մարդ, ձի, ոչխար) և անարյուն (մորեխ, մրջյուն, մեղու) ենթախմբերի և այլն[1]։

Իր բազմաթիվ աշխատությունների, մասնավորապես հանրագիտարանի բնույթ ունեցող «Հարցմանց գրքի» մեջ՝ տիեզերագիտական, կազմախոսական, կենդանաբանական ու բնագիտական հարցեր է քննարկել նաև Գրիգոր Տաթևացին։ Կանգնած լինելով ժամանակի գիտության ամենաբարձր մակարդակի վրա, նա փորձում է գոհացում տալ իր հարցասեր ունկնդիրներին․ ինչպես է երկիրը հաստատ մնում տիեզերքի կենտրոնում, ինչ կառուցվածք ունի երկինքը և ինչպես է շարժվում, ինչ հատկություններով են օժտված արեգակը, լուսինը, մոլորակները, ինչպես է առաջանում ծիածանը, կայծակն ու որոտումը, որտեղից են ստեղծվում ամպերը, անձրևը, ձյունն ու կարկուտը, ծովի ջրերն ինչու են աղի և հարյուրավոր համանման հարցեր են քննարկվում Տաթևացու կողմից։ Եվ այս բոլորի պատասխանը տրվում է Բարսեղ Կեսարացու, Գրիգոր Նյուսացու, Անանիա Շիրակացու, Հովհան Երզնկացու և

---

[1] Տե՛ս «Յովհաննու Որոտնեցւոյ Հաւաքեալ ի բանից իմաստասիրաց» («Բանբեր Մատենադարանի», № 3, էջ 353—386), Տ. Ղազանչյան, Էլեմենտների ուսմունքը հայ բնափիլիսոփայության մեջ («Տեղեկագիր» ՀՍՍՀ ԳԱ (հաս. գիտ.), 1946, № 2—3, էջ 27—55)։

օտարազգի ու հայ նշանավոր այլ գիտնական-վարդապետների տեսակետների խնլամիտ համադրումով։

«Հարցմանց գրքի» երկու ընդարձակ հատորներ նվիրված են բույսերի, կենդանիների ու մարդու կազմության և բնության հարցերին։ Բնախոսական, ֆիզիոլոգիական և սաղմնաբանական խնդիրները Գր. Տաթևացու կողմից նույնպես ներկայացվում են ժամանակակից գիտության ընձեռած փաստերի լույսի տակ, այստեղ, սակայն, ավելի քան աշխատության մյուս մասերում, գիտական շարադրանքն ընդմիջարկվում է կրոնա-բարոյախոսական անպտուղ բացատրություններով։ Գր. Տաթևացու և նրան ժամանակակից մյուս գիտնականների աշխատությունների մեջ առատորեն տեղ գտած բարոյախոսական ընդարձակ շեղումները, սխոլաստիկ մեկնաբանություններն ու դատողությունները, անտարակույս, բացասաբար են ազդում նրանց գիտական արժեքի վրա և իջեցնում նրանց ճանաչողական նշանակությունը։

Բնագիտական հարցերը Գր. Տաթևացին քննարկել է միջնադարյան Հայաստանում համընդհանուր տարածում գտած անտիկ բնափիլիսոփայության դրույթների լույսի տակ։ Ամեն մի գոյ, ըստ այդ ուսմունքի, բաղկացած է չորս տարրերից և նրանց մեջ տեղի ունեցող երևույթները պայմանավորված են այդ նույն տարրերի զույգ տարամերժ հատկություններով։ Ուշագրավ է այն հանգամանքը, որ մեր գիտնականի կարծիքով տարրերը օժտված են ոչ թե երկու, այլ մի քանի սասնյակ հատկություններով. նա առանձին-առանձին անդրադառնում է տարրերից յուրաքանչյուրին, բացահայտում նրանց նշանակությունը բնության երևույթների մեջ և մարդկային կյանքում։ Ուշադրության արժանի է նաև Տաթևացու փորձը ինքնուրույն ստորաբաժանումներով սխակավորելու բուսական և կենդանական աշխարհի ներկայացուցիչներին. բույսերը ստորաբաժանված են ըստ իրենց պտուղների պիտանիության, թռչունները՝ ըստ իրենց թևերի ձևի, իսկ ձկներն՝ ըստ «թևերի» և թեփերի[2]։

Գրիգոր Տաթևացին միջնադարյան հայ գիտության ամենախոշոր ներկայացուցիչներից էր, որ իր աշխատություններով, որոնցից շատերը դեռևս չեն հրապարակված և ուսումնասիրված, ընդհանուր հայտարարի բերեց զարգացած ֆեոդալիզմի ժամանակաշրջանի հայ գիտական մտքի ստեղծած արժեքները։ Մեծ գիտնականի մահվանից հետո (1409) հրապարակ են իջնում Տաթևի համալսարանի գիտական ավանդույթներով դաստիարակված մի շարք վարդապետներ, որոնք, հաղթահարելով մեծ դժվարություններ, փորձում են ուսումնական նոր հաստատություններ ստեղծելով պահպանել գիտական մտքի մակարդակը և նոր հետազոտություններ ծավալել։ Այդ փորձերը, սակայն, ըստ մեծի մասին, չեն պսակվում հաջողությամբ։ Լանկ-Թամուրի արշավանքների տասնամյակներին ամայացած երկրում այլևս չկային նյութական պայմաններ և բարոյական ազդակներ ծանրակշիռ գիտական գործունեության համար։

Աննպաստ այս պայմաններում հրապարակ իջած գործիչներից արժանի են հիշատակության երկուսը՝ Մատթեոս Ջուղայեցին և Հակոբ Ղրիմեցին,

---

2 Ավ. Տեր-Պողոսյան, Բիոլոգիական մտքի զարգացումը Հայաստանում, հնագույն ժամանակներից մինչև XVIII դարը, Երևան, 1960, էջ 394—397։

որոնք հախստացրեցին հայ մատենագրությունը գիտական նշանակություն ունեցող աշխատություններով։

Մատթեոս Ջուղայեցին, իր մեկնողական երկերի և քարոզների մեջ շոշափում է բնագիտական հարցեր և երբեմն ինքնուրույն դատողություններով ու նոր լուսաբանություններով փորձում ընդարձակել բնական երևույթների մասին առկա պատկերացումները։ Բնության մեջ գոյություն ունեցող նյութերի հատկություններն ուսումնասիրելու ճանապարհով նա հանգում է այն եզրակացության, որ բնության մեջ ի սկզբանե ստեղծված պետք է լինեն հետևյալ տասը անխառն նյութերը՝ ոսկին, արծաթը, պղինձը, անագը, կապարը, երկաթը, լաժվարդը (իմա՝ գոճաղմ—լազուր), սնդիկը, ծծումբը և զանազան թանկագին քարեր։ Պղնձի հատկությունները նա ներկայացնում է այսպես. «Իսկ պղինձն ունի բազում հատկութիւն. նախ՝ զի ժանգ ունի բնական և դառն է, և առանց կապարի ոչ հալի։ Երկրորդ՝ զի մաշէ զգործօնեայս իւր։ Երրորդ՝ զի վնասակար հոտ ունի... Չորրորդ՝ զի որակ կարմիր ունի։ Հինգերորդ՝ զի ապականիչ է ոսկոյ և արծաթոյ։ Վեցերորդ՝ զի միայնակ ինքն ոչ ունի գեղեցկութիւն և ոչ յանօթ պիտոյանայ։ Եւթներորդ զի ջեռուցանէ զջուրն։ Ութերորդ՝ զի ազդումն տայ ի կերակուրն փութով։ Իններորդ՝ զի ջերմութիւն հրոյն թափանցէ ի նա խսկոյն՝ յորժամ հասանէ ի նա։ Տասներորդ՝ զի նա է միաւորիչ երկաթի»։ Այս նույն եղանակով որոշված են նաև մյուս նյութերի հատկությունները։

Մեջ բերված հատվածի մեջ երևան է գալիս սխոլաստիկ վարդապետը՝ նյութի հատկություններն անպատճառ տասը կետով ամփոփելու իր ձգտումով, սակայն ներկայանում է նաև քննախույզ բնագետը, որ կարողանում է զատորոշել այս կամ այն նյութի հատկությունները, ուշադրություն է դարձնում մետաղի գույնի վրա, նկատում նրա ջերմահաղորդիչ լինելու, շուտ օքսիդանալու, այլ մետաղների հետ համաձուլվելու և այլ հատկությունները։

Արժանի են սևեռուն ուշադրության նաև Մ. Ջուղայեցու բնագիտական հայացքները։ Իր քարոզներից մեկում, զարգացնելով մարդու ուղղագնացության մասին իր ուսուցիչ Գր. Տաթևացու արտահայտած միտքը, Մ. Ջուղայեցին հանգում է այն գաղափարին, որ մարդիկ ևս՝ մյուս կենդանիների նման, սկզբից եղել են չորքոտանի. հետո միայն անհրաժեշտությունից դրդված՝ կանգնել են ետևի ոտքերի վրա, իսկ առաջին երկուսն ուղղելով՝ դարձրել իրենց համար աշխատանքային գործիք։ Անասունների և մարդկանց տարբերությունը Ջուղայեցու կարծիքով կայանում է հենց նրանում, որ առաջինները, զուրկ լինելով մտածելու ունակությունից, մնացել են չորքոտանի։ Բնաշրջական (էվոլյուցիոն) ուսմունքի ձևավորումից շատ առաջ արտահայտած այս միտքը պատիվ է բերում ամենածանր պայմաններում ստեղծագործած մեր գիտնականին[3]։

Գիտական ավելի մեծ վաստակ ունի Հակոբ Ղրիմեցին՝ Գևորգ Երզնկացի անվանի վարպետի սանը, որ XV դարի 10-ական թվականներին տոմարագիտական և բնագիտական հարցերի մասին դասախոսություններ է կարդացել Մեծոփի դպրոցում։ Նրա «Մեկնութիւն տոմարի» և «Յաղագս բնութեան» (սկսվում է «Ի չորից գոյացեալ զմարդն» բառերով) ընդարձակ աշխատու-

[3] Տե՛ս Լ. Խաչիկյան, Մատթեոս Ջուղայեցու կյանքն ու մատենագրությունը («Բանբեր Մատենադարանի», № 3, 1956, էջ 82—83)։

*թյունները, ինչպես նաև մանր գիտական հոդվածները նոր միայն գրավում են բանասերների ուշադրությունը*[4]*։*

*«Մեկնութիւն սամարի» աշխատությունը 1416 թ. Մեծոփի դպրոցում Հ. Որոմեցու կարդացած դասախոսությունների գրառումն է, որ երկար ժամանակ ուսումնական ձեռնարկի դեր է կատարել, և առավելս քան որևէ այլ գրվածք գաղափար է տալիս միջնադարյան Հայաստանի բարձրագույն ուսումնական հաստատություններում քառյակ* (quadrivium) *գիտությունների՝ թվաբանության, երկրաչափության, երաժշտության և աստղաբաշխության գծով դասավանդվող գիտելիքների ծավալի և բովանդակության մասին։ Աշխատության սկզբի մասերը գիտական նորույթներ քիչ են պարունակում. ուշադրության արժանի է այն հանգամանքը, որ մեր հեղինակն այստեղ ևս դրսևորում է իրեն որպես հմուտ մասնագետ, որ ոչ միայն լավատեղյակ է իր նյութին, այլև կարողանում է գիտական կուռ բանաձևումներ առաջարկել (օրինակ՝ «ուղղական գիծն կարճ է քան վխոտորնակ գիծն», «որքան է ի միջին կիտէն ի բոլորակ ծիրն, վեց այնչափ է իւր բոլորակ ծիրն» և այլն)։ Դասավանդվող նյութը դյուրըմբռնելի մատուցելու մտահոգությամբ Հ. Որոմեցին ցուցադրում է ալյուսակներ ու գծագրեր և, որպես հմուտ մանկավարժ, կյանքից վերցված օրինակներով պարզաբանում դժվարամարս նյութը։ «Իմա, որդի,—գրում է նա մի տեղով,—զի սասաիկ դժուարին է անվարժ մտաց տումարական մակացութիւնս վասն յաւելեալ թուոյն բանիւ հասկացուցանել, այլ զգալի օրինակի կարօտանայ, զի տէսցէ աչօք և մտօքն իմանալ կարասցէ. բայց նախ բանիւ ասասցուք և ապա դրոշմեալ ի քարտի՝ զօրինակն տացուք տեսանել պղնձի աշայս»*[5]*։*

*Աշխատության ամենաընդարձակ բաժինը, ուր քննարկվում են աստղաբաշխական և տոմարագիտական կարևոր խնդիրներ, հանրագումարն է հանգիսանում այդ նյութի մասին միջնադարյան Հայաստանում կուտակված գիտելիքների։ Տիեզերքի կառուցվածքի մասին Հ. Որոմեցու պատկերացումները, անտարակույս, խարսխված պետք է լինեին Պտղոմեոսի կողմից ձևավորված և համընդհանուր ճանաչում գտած երկրակենտրոն (գեոցենտրիկ) սիստեմի վրա։ Ըստ այդմ՝ երկիրն անշարժ բևեռված է ճիշտ կենտրոնում տիեզերքի, որը շրջափակված է երկնակամարի անմոլար գնդով. աստղերը հաստատված են այդ գնդի վրա, «որպէս բևեռս առ տախտակի» և երկնակամարը, աստղերի հետ միասին, արևելքից արևմուտք շարժվելով, 24 ժամվա ընթացքում ամբողջական մի պտույտ է կատարում տիեզերքի առանցքի շուրջը։ Երկնակամարի ու երկրի միջև, միմյանցից տարբեր հեռավորությամբ գտնվող բյուրեղյա թափանցիկ գոտիների վրա ամրացված են մոլորակները՝ Լուսինը, Փայլածուն (Մերկուրի), Արուսյակը (Վեներա), Արեգակը, Հրատը (Մարս), Լուսնթագը (Յուպիտեր) և Երևակը (Սատուրն)։ Սրանք նույնպես շարժվում են երկրի շուրջ, բայց «երկակի». իրենց վրա բևեռված մոլորակների հետ միասին թափանցիկ գոտիները պտտվում են երկրի շուրջ՝ արևելքից արևմուտք շրջագծով, միաժամանակ պտույտ գործելով յուրաքանչյուրն իր առանցքի*

---

[4] *Հ. Որոմեցու աշխատություններից մի քանիսը, մասնավորապես վերոհիշյալ «Ի չորից գոյացեալ զմարդն» սկսվածքով բնագիտական ուշագրավ գրվածքը, ձեռագրերում պահպանվել է առանց հեղինակի անվան։ Տվյալներ կան հաստատելու, որ դրանց հեղինակը Հ. Որոմեցին է։*

[5] *Մատենադարան, ձեռագիր № 2014, էջ 80բ։*

շուրջ՝ արևմուտքից արևելք։ Պտղոմեոսյան այս տեսությունը հնարավորություն էր ընձեռում միջնադարյան աստղաբաշխներին որոշելու մոլորակների դիրքը երկնակամարին «ամրացված» աստղատների-կենդանաշրջանի համաստեղությունների նկատմամբ։



Աստղաբաշխ Կարապետ Վարդապետ (Մատենադարան, ձեռ. № 1780)

Երկրակենտրոն այս աշխարհայացքը, որ հնում սրբագործվում էր քրմների, իսկ միջնադարում՝ եկեղեցու սպասավորների կողմից, հանգեցնում էր այն մտքին, որ ուսումնասիրելով տարբեր մոլորակների և կենդանակերպերի փոխադարձ դիրքավորումը, հնարավոր է կանխագուշակել առանձին մարդկանց և, նույնիսկ, ազգերի ու պետությունների ճակատագրերը։ Միջին դարերում, հակագիտական այս նախադրյալի հիման վրա, ամենուրեք տարածվեց աստղագուշակությունը և նրա հետ սերտ աղերս ունեցող հմայական բժշկությունը, ալքիմիան և գիտության քողի տակ պատսպարվող անպտուղ զբաղմունքի այլ տեսակներ։ Աստղահմայությամբ զբաղվում էին ոչ միայն բախտախնդիր ու խաբեբա մարդիկ, այլև նշանավոր գիտնականներ (Մելանխտոն, Տիխո Բրագե, Կեպլեր)։

Հայաստանում ևս վխտում էին բախտագուշակ աստղահմայներ, որոնք անաշխատ կյանք էին վարում՝ շարաշահելով ժողովրդի հավատը գիտության նկատմամբ։ Սրանց կողմից էին գրի առնվում միջնադարյան հայկական ձեռագրերի մեջ պահպանված մեծաքանակ գուշակողական, աստղահմայական բնագրերը (ախտարքներ, ռամգրքեր և այլն)։

Հակոբ Ղրիմեցին ոչ միայն իր գիտելիքները չի չարաշահել՝ գուշակություններ կատարելով, այլև խիզախ դիրք է բռնել ընդդեմ խավարամտության

*ու բախտագուշակության։ Նա ընդունելի է համարել միայն կենդանակերպերի ազդեցությունը բնական այն երևույթների վրա, որոնք առնչվում են տարվա եղանակների փոփոխության հետ։ Ըստ Ղրիմեցու, օրինակ, երբ Արեգակը մուտք է գործում խոյ համակարգության սահմանները՝ «Երկիր ծնանի զբոյսս, և ծառք և տունկք՝ զտերևս և զծաղիկս, կենդանիք ծնանին զնմանս իւրեանց...» և այլն։*

*Գիտնական Ղրիմեցու կերպարը բացահայտվում է նաև աշխարհի վախճանը դուշակող տգետ աստղաբաշխ-տոմարագետների դեմ նրա մղած գիտական բանավեճով։ XIII դարի սկզբներից սկսած որոշ հայ «տոմարագետներ», ոչ լրջամիտ հաշվումներ կատարելով, հանգել էին այն տեսակետին, որ Հայոց ՊԿԵ, այսինքն՝ մ. թ. 1416 թվականին Լուսինը կատարյալ ձև ստանալով, այլևս չի նվազելու. երկու լուսատուներից մեկը երկնակամարի վերին կիսագնդում գտնվելով, մյուսը ներքին՝ միաժամանակ ու երկուստեք լուսավորելու են աշխարհը, և տեղի է ունենալու «վախճան ժամանակի»—Քրիստոսի երկրորդ գալուստը։ Այս բանդագուշանքների առաջն առնելու համար 1416 թ. մի քանի տարի առաջ Հ. Ղրիմեցին ինչ-որ աշխատություն է գրել և տասը կետով ապացուցել դրանց հիմնազուրկ լինելը։ Մեծ գոհունակությամբ Ղրիմեցին արձանագրում է այդ իրողությունը, երբ լրանում է նշված թվականը և բոլորը համոզվում են, որ ճշմարտությունն իր կողմն է. «Եւ գոհացաք զաստուծոյ,— գրում է նա,—զի զոր ինչ մեկնեցաք, նա ճշմարիտ եղև»[6]։*

*Իր աշխատությունների մեջ Հակոբ Ղրիմեցին շոշափել է նաև բազմաթիվ բնագիտական հարցեր՝ լայնորեն օգտագործելով նախորդ շրջանի գրականության մեջ ամբարված օգտակար նյութերը, ինքնուրույն ուշագրավ դիտողություններով հարստացնելով դրանք։ Բնությունը նա քննարկում է որպես մի ամբողջություն, որի մեջ տարանջատված են գոյի չորս վիճակները՝ անշունչ առարկաները, որ գոյություն ունեն միայն, «տունկերը» (բուսական աշխարհի ներկայացուցիչներ), որ և՛ գոյություն ունեն և՛ ապրում են, կենդանիները, որ գոյություն ունեն, ապրում են և զգում, և, վերջապես, մարդիկ, որ ի լրումն այդ ամենի՝ նաև մտածում են։ Դրանք, լինելով վերընթաց զարգացող բնական շղթայի օղակներ, շաղկապված են միմյանց. բնության մեջ նույնիսկ պահպանվել են փոխանցման վիճակի գոյաձևեր. օրինակ՝ մագնիս քարը, որը անշունչ առարկա է, բայց քարշողական զորությամբ հաղորդակցվում է բույսերի հետ, կամ խեցեմորթը, որ ծովի հատակին քարի վրա աճած ծառ լինելով, միաժամանակ կենդանի էակ է և այլն[7]։*

*Հ. Ղրիմեցին անդրադարձել է նաև այն հարցին, թե ինչպես չորս տարրերը, որ ընկած են բոլոր գոյերի հիմքում, մշտնջենավոր են՝ «ոչ առաւելուն երբեք և ոչ նուազին»։ Այս հարցին տված պատասխանով բացահայտվում է մեր բնագետի դիալեկտիկական մտածելակերպը. հավանաբար ծանոթ լինելով Ա. Շիրակացու հայտնի բանաձևին նա գրում է. «Ջի նորոյն լինելութիւն ապականութիւն գործէ հնոյն. և ապականութիւն հնոյն՝ լինելութիւն գործէ նորոյն. և ըստ ամենայնի մնան մշտնջնաւորապէս, ոչ առալելեալ և ոչ նուազեալ»։*

---

[6] Երուսաղեմի Ս. Հակոբյանց վանքի մատենադարան, ձեռագիր № 1244, էջ 210—211։

[7] Անտիկ բնագիտության այս տվյալները մատչելի էին հայ գիտնականներին Նեմեսիոս Եմեսացու «Յաղագս բնութեան մարդոյ» աշխատությունից, որ թարգմանվել էր հայերեն VIII դարի սկզբներին։

Բուսական և կենդանական աշխարհի զարգացման հարցերը՝ սաղմնային վիճակից սկսած մինչև կատարյալ հասունացումն ու մահը, Ղրիմեցին բնութագրել է հաշվի առնելով ժառանգական հատկությունները, արտաքին միջավայրի ազդեցությունը և ժամանակի ազդակները[8]։

Հայ գիտական մտքի պատմության մեջ իր տեղն ունի Հ. Ղրիմեցու կրտսեր ժամանակակից, «քաջ տումարագէտ և աստեղաբաշխ» կոչված Եսայի Ղրիմեցին, որն ապրել է իր ծննդավայրում և լինելով հայաշատ Կաֆա (Թեոդոսիա) քաղաքի մերձակայքում գտնվող Ս. Անտոնի վանքի միաբան, 1441 թ. կազմել է տոմարական բարդ աղյուսակներ պարունակող մի ուսումնասիրություն, իսկ երեք տարի հետո՝ «Տումար արեգական և լուսնի» աշխատությունը[9]։

Ցավոք այս գիտնականի երկերն առ այսօր չեն գրավել մասնագետների ուշադրությունը։ Եսայի Ղրիմեցին, հաղորդակից լինելով Ղրիմում բնակություն հաստատած ճենովացի գիտնականների հետ, հնարավորություն ուներ ընդարձակելու միջնադարյան հայ տոմարագիտության ավանդական սահմանները։

Միջնադարյան հայ բնագիտական մտքի կարկառուն ներկայացուցիչներից է բժիշկ ու կենսաբան Ամիրդովլաթ Ամասիացին (ապրելով մինչև զառամյալ ծերություն, մահացել է 1496 թ.)։ Բուժող բժշկի մեծ համբավ վաստակած, բազմաթիվ լեզուներ տիրապետած, թուրքական սուլթանի անձնական բժշկի պաշտոնը գրաված այս գիտնականը հեղինակել է շուրջ մեկ տասնյակ աշխատություններ, որոնցից «Ուսումն բժշկութեան» և «Անգիտաց անպէտը» բացառիկ գիտական նշանակություն ունեն։ Իր մշտաղբաղ ու անհանգիստ կյանքի արդյունքը այսպես է ամփոփում մեծ գիտնականը 1469 թ. մի հիշատակարանում. «Ես շատ դժարութիւն և պատահմունք եմ քաշել ի յանօրինաց, ի յայլազգացն, ի դատաւորաց, ի թագաւորաց և իշխանաց. եւ շատ գրեանք էի ժողովել ի յարապոց, և ի պարսից, և ի թուրքաց, եւ շատ ղարիպութիւն էի քաշել, և զժամանակին զչարն և զբարին և զպատահմունքն էի կրել. զհարստութիւն և զաղքատութիւն էի քաշել, և ի յերկրէ ի յերկիր շատ բժշկութեան ղարուխտն էի գործել. եւ փորձել էի ես իմ միտքն շատ դեղեր և թարքպնի (բաղադրություն) և շատ ծառայել էի հիւանդաց... և շատ չար և բարի էի տեսել։ Եւ հիմա եղայ ես հիմայ, որ ոչ հարստութեան կու խնդամ, և ոչ աղքատութեան կու տրտմիմ, և զամէն չարն և զբարին մէկ կու տեսնամ, և անհոգել եմ այս ամէն ցանկութենէն կենցաղոյս...»։

Այս ինքնակենսագրական բնութագրի մեջ չկա որևէ չափազանցություն. Ամիրդովլաթն, իրոք, գիտական իր ուսումնասիրություններն ստեղծել է տարբեր լեզուներով գոյություն ունեցող բժշկական ձեռագրերի մեջ ցրված նյութերի համադրության ճանապարհով, այդ բոլորն ստուգելով ու ճշգրտելով բուժող բժշկի հարուստ իր կենսափորձով։

Ամիրդովլաթ Ամասիացին, հին և միջնադարյան բոլոր բժիշկների նման,

---

[8] Հ. Ղրիմեցու «Ցաղագս բնութեան մարդոյ» աշխատությունը հարուստ ու բազմազան նյութեր է պարունակում կազմախոսության, բազմացման ֆիզիոլոգիայի, մարդու զգայարանների բնախոսական գործունեության և հարակից հարցերի մասին։ Ա. Ս. Կծոյանն իր «Բժշկագիտությունը Հայաստանում XI—XIV դարերում» (Երևան, 1968) արժեքավոր ուսումնասիրության մեջ, բացահայտել է ձեռագիր այս աշխատության պատմա-գիտական նշանակությունը, չիմանալով, սակայն, որ նրա հեղինակը Հակոբ Ղրիմեցին է։

[9] Տե՛ս «ԺԵ դարի հիշատակարաններ», Ա, էջ 696։

գիտական իր հետազոտությունները կատարել է առաջնորդվելով համընդհանուր ճանաչում գտած հեղահյութային ախտաբանության (հումորալ պաթոլոգիա) հիպոկրատյան ուսմունքով, որի համաձայն բոլոր հիվանդությունները անխտիր հետևանք են մարմնի մեջ եղող չորս հիմնական հեղուկների՝ արյան, խարտյաշ մաղձի, լորձի և սև մաղձի բնությունից սահմանված համամասնության խախտման։ Ըստ այդմ էլ կազմակերպվում էր հիվանդությունների բուժումը՝ «հակառակը հակառակով» (contraria contraris) սկզբունքով. մարմնի մեջ արյան հավելում նկատելով՝ առաջարկում էին արյունը պակասեցնող դեղամիջոցներ, մաղձային հիվանդությունների ժամանակ՝ զրգրումը կանխող սնունդ և լուծողականներ, լորձի առատության դեպքում՝ սուր և չոր նյութեր, իսկ սև մաղձի հավելման արդյունք համարվող հիվանդությունների դեպքում՝ աշխատում էին մարմնի մեջ ավելացնել հեղուկ նյութերի քանակը։

Ամիրդովլաթի կողմից առավել բծախնդրությամբ մշակված գիտական մասնաճյուղը՝ դեղագիտությունն է։ Նրա բնագիտական գիտելիքների բազմազանության և խորության մասին անսպառ տվյալներ են ամբարված «Անգիտաց անպէտ» ստվարածավալ աշխատության մեջ։ Այստեղ ուշագրավ տվյալներ են գրանցված 1700-ից ավելի բույսերի, կենդանիների և հանքանյութերի ու նրանց բուժիչ հատկությունների մասին (իրականում տրված են 3754 դեղանյութերի անուններ, սակայն նրանց կեսից ավելին հոմանիշներ լինելով, թվաքանակից դուրս են ընկնում)։ Ամիրդովլաթի աշխատությունն, այսպիսով, ավելի հարուստ բովանդակություն ունի, քան ամենակատարյալը համարվող XIII դարի արաբ բժիշկ Բեյթարի «Դեղագիտարանը»։ «Անգիտաց անպէտի» մեջ, այբբենական դասակարգումով, նկարագրվում են բոլոր դեղանյութերի (մասնավորապես բույսերի) հատկությունները, տեղեկություններ են հաղորդվում նրանց տեսակների մասին, նշվում շատերի աճման վայրերը, տրվում արմատների, տերևների և ծաղիկների կազմաբանությունն ու առանձնահատկությունները։ Հաճախ հեղինակը հայտնում է նաև, թե որտեղ է տեսել այս կամ այն բույսը, հաստատում նրանցից պատրաստած դեղերի ազդեցության ճշմարտությունը կամ, ընդհակառակը, ժխտում՝ «չէ օգուտ» խոսքով։

Այս բոլորն այնպիսի հիմնական արժանիքներ են, որ մեր բնագետբժշկին բարձրացնում են իրեն ժամանակակից եվրոպական գիտնականների մակարդակից։

Հայ մշակույթի պատմության մեջ արժանավոր տեղ է գրավել Ամիրդովլաթ Ամասիացին նաև իր ժողովրդասիրությամբ, գիտության նվաճումներն անշահախնդիր տարածելու և բժշկի բարոյական կերպարը բարձրացնելու անկեղծ ձգտումով։ Նա պահանջում է բժշկության արհեստով զբաղվողներից՝ լինել անկաշառ, արհամարհել նյութական շահը, հավասարապես բուժել հարուստ և աղքատ մարդկանց, գրքերի ընթերցումով հանապազ խորացնել իրենց գիտելիքները և այլն։ Իր աշխատությունները նա շարադրել է ժամանակի խոսակցական լեզվով, քաջ գիտակցելով, որ «ամենայն մարդ չկարէ քերական կարդալ և կամ արտաքին գրեանք, որ զայս խրթին բաներն յիմանա. այնոր համար եղաւ աշխարհաբառ»։ Խախտելով արաբական բժշկագիտության դարավոր ավանդույթը, մեր բժշկապետը, հաղթահարելով մեծ դժվարություններ, դեղագիտական իր գլուխգործոցի մեջ նշում է նաև այս կամ այն դեղի պատրաստման համար օգտագործվելիք նյութերի ճշգրիտ չափերը՝ չափ ու կշիռ

ընդունված միավորներով, այն դեպքում, երբ «ամենայն բժշկապետքն զայս ծածկել էին և չէին գրել ի բժշկարանին»։

Ամիրդովլաթ Ամասիացին իրավամբ համարվում է մեծագույն բնագետ ու բուժող բժիշկ, հայ գիտական գրականության ամենախոշոր ներկայացուցիչներից մեկը[10]։

Ամիրդովլաթից հետո՝ XVI—XVII դարերում, Հայաստանի տարբեր շրջաններում և հայկական գաղթավայրերում աշխատող բժիշկներից շատերը, լայնորեն օգտագործելով Ամասիացի բժշկապետի և նախորդ դարաշրջանում ծաղկած մյուս հայ նշանավոր բժիշկների դասական աշխատությունները, շարադրեցին բժշկագիտական նոր երկեր, հատկապես տարբեր ծավալի ու արժեքի դեղագիտարաններ։ Դրանց մեջ, անտարակույս, կարող են դտնվել ժողովրդական բժշկության հազարամյա փորձով ստուգված և ուսանելի դեղատոմսեր, առանձին հիվանդությունների ախտորոշման և բուժման մասին դիտողություններ և այլն. ընդհանուր առմամբ, սակայն, ձեռագիր այդ աշխատություններով հայ միջնադարյան բժշկագիտությունը առաջընթաց քայլ չկատարեց։

Այս ժամանակաշրջանի հայ բժիշկներից արժանի են հիշատակության պատմական Փոքր Հայքի Սեբաստիա մայրաքաղաքում ծնված ու ստեղծագործած Հովասափ, Բունիաթ և Ասար Սեբաստացիները, որոնք օգտակար գործունեություն ծավալեցին հայ բժշկագիտության լավագույն ավանդների պահպանության և տարածման ուղղությամբ։

Հովասափ Սեբաստացին, որ ծանոթ դեմք է որպես բանաստեղծ ու նկարիչ, ապրել է XVI դարի 10—60-ական թվականներին։ Նրա գրչին է պատկանում բժշկագիտական փոքրածավալ մի ուսումնասիրություն, որի մեջ համառոտակի քննարկվում են տեսական, դեղագիտական, սաղմնաբանական, կաղմախոսական ու բնախոսական կարևոր խնդիրներ։ Հայտնի են այդ աշխատության երկու ձեռագիր ընդօրինակություն, ուր նշված է հեղինակի անունը[11] և լեզվական խմբագրության ենթարկված մի փոփոխակ, որ Բունիաթ Սեբաստացին ագուցել է Ամիրդովլաթի «Ոգտումն բժշկութեան» աշխատության իր կատարած խմբագրության սկզբի մասում՝ որպես նրա տեսական-կաղմախոսական բաժին։ Հայ բժշկության պատմության մասնագետները բարձր են գնահատել Ամիրդովլաթի աշխատությունից իրենց հայտնի այդ երկը, անտեղյակ լինելով, որ դրա հեղինակը Հովասափ Սեբաստացին է։ Սաղմնաբանության, մարդակազմության և հարակից հարցերի շուրջ Հովասափի շարադրանքի մեջ նրանք գտել են ուշագրավ փաստեր, որոնք վկայում են գիտության այդ բնագավառներում տեղի ունեցած առաջընթաց շարժման մասին[12]։

---

[10] Ամիրդովլաթի կյանքի ու գիտական գործունեության մասին հանգամանալից տեղեկություններ կարելի է գտնել հետևյալ աշխատությունների մեջ. Л. А. Оганесян, История медицины в Армении, часть третья, Ереван, 1946, էջ 1—86, Ավ. Տեր-Պողոսյան, նշված աշխ., էջ 398—433։

[11] Դրանցից մեկը Մաշտոցի անվան Մատենադարանի № 7049 ձեռագիրն է, մյուսը Զմմառի վանքի մատենադարանի Անտոնյան հավաքածուի № 212 ձեռագիրը։ Աշխատության առաջաբանում Հ. Սեբաստացին գրել է. «Բայց մեք անպիտան ծառայս ձեր մեղապարտ Յովասափ անուն սարկաւագ Սեբաստացի, կամեցայ զընտիրն հաւաքել և բացայայտել փոքր է շատէ ի գրոց իմաստասիրական և բժշկական զամենայն ցեղ ցաւոյ ըստածումն, զեփելն զտրորելն զամենայն դեղոց և խնամ ածել ցաւածին...» և այլն։

[12] Տե՛ս Л. А. Оганесян, նշված աշխ., էջ 21—28, Ավ. Տեր-Պողոսյան, նշված աշխ., էջ 401—414։

Բունիաթ Սեբաստացին, բայց խմբագրական աշխատանքներ կատարելույ. 1630 թ. Սամոսն քաղաքում գրել է մի բժշկարան։ Արդյունավոր է եղել նաև Ասար Սեբաստացու գործունեությունը։ 1622 թ., օգտվելով Մխիթար Հերացու, Ամիրդովլաթի, Ահարոնի, Սանփանոսի և այլ հայ բժիշկների գործերից, նա կազմել է «Գիրք բժշկական արհեստի» աշխատությունը, խմբագրել է նաև Աբուսայիդի «Մարդակազմությունը» նրա մեջ ներմուծելով այլ աշխատություններից քաղված նյութեր, որոնցից բացառիկ նշանակություն ունի Մխ. Հերացու ակնաբուժական պատառիկը։

Այս ժամանակաշրջանի գիտական մտքի պատկերն ամբողջացնելու համար անհրաժեշտ է մի քանի խոսք ասել նաև ալքիմիայի մասին։ Արաբական քիմիական դրականության ազդեցությամբ XIII—XIV դարերում Հայաստանում են սկսում են տարածվել թարգմանական և ինքնուրույն ալքիմիական ձեռնարկներ։ Դրանք բոլորն էլ խարսխված էին տեսական այն դրույթի վրա, որի համաձայն բոլոր մետաղներն անխտիր, թեպետ և զանազանվում են միմյանցից, բայց ընդհանուր հատկություններ ունեն, քանի որ «ի մին նիւթէ ընծային և գոյանան»։ Մետաղներից ոսկին է միայն բնության ավարտուն հորինվածքը. մյուսները նույնպես բարենպաստ պայմաններում ոսկի էին դառնալու «Ամենայն պղնձեղէն մարմին (այսինքն՝ մետաղ)՝ բնութիւնն կամի ոսկի առնել,—գրված է մի ձեռագրում,—և ըստ բնութեան այնպէս լինելոց էր. այլ վասն պակասութեան նիւթին կամ կերպին է կամ եռուցմանցն ի ներքոյ երկրի՝ ըստ պակասութեան և ըստ աւելորդութեան՝ անկատար մնան ի յոսկոյ բնութենէ»։ Ալքիմիկոսները հավատացած էին, որ լրացնելով բնության անկատար թողածը, սնդիկի, ծծումբի և այլ նյութերի ներգործությամբ, հնարավոր է վերափոխել հասարակ մետաղները, նրանցից արծաթ և ոսկի ստանալ[13]։

Նվիրյալ ալքիմիկոսները, առաջնորդվելով ոչ գիտական այս դրույթով, հուսախաբվում էին ի վերջո, անկարող լինելով ազնիվ մետաղներ ստեղծել, բայց նրանցից շատերին հաջողվում էր գործնական աշխատանքների ընթացքում նոր հայտնագործումներ կատարել, բացահայտել տարբեր նյութերի անծանոթ հատկությունները, խթանել մետաղամշակության ու արհեստագործության այլ ճյուղերի զարգացմանը։ Հայ ալքիմիկոսների գերակշիռ մասը զբաղված էր հենց արհեստների զարգացմանը նպաստող հետազոտություններով։ Ստեփանոս Իմաստասերի, Դանիել Աբեղայի, Օհան Թոխաթեցու, Ղազար եպիսկոպոսի, Հարություն Էրզրումցու և այլ ալքիմիկոս-վարպետների ջանքերով միջնադարյան Հայաստանում մեծ հաջողություններ արձանագրվեցին դիմացկուն և բարձրորակ ներկեր ու թանաքներ պատրաստելու գործի մեջ, զարգացավ արծաթագործությունն ու պղնձագործությունը. գործնական աշխատանքների ընթացքում կուտակված փորձը նպաստեց հայ վարպետներին ստանալու նաև զանազան դիմացկուն շինանյութեր, խեցեղեն ու տարբեր ջնարակներ, օճառ, բուրավետ օծանելիք, բուժիչ դեղանյութեր, լավորակ մագաղաթ ու կաշիներ և այլն։ Անշուշտ, կային նաև ալքիմիկոսի անունով թափառող բախտախնդիր մարդիկ, որոնք անազնիվ մետաղներից ոսկի ստանալու սին խոստումներով խաբում էին դյուրահավատ և ընչաքաղց մարդկանց, դրամաշորթությամբ զբաղվում։ Այսպիսի մի հայ ալքիմիկոսի մասին ստույգ տեղե-

13 Տ. Ղազանչյան, Քիմիան և նրա զարգացման ուղիները Հայաստանում (դոկտորական դիսերտացիայի ավտոռեֆերատ), Երևան, 1949, էջ 17—19։

կություններ են պահպանվել. XV դարի սկզբներին Պարսկահայքի Մարաղա քաղաքում հայտնվում է մի սուտ ճգնավոր, ներկայանում որպես աստվածավոր, որ կարող է «առնել զարծաթն ոսկի», «ի բազում անձանց մեծ և անվանի» հավաքում է մեծ քանակությամբ արծաթ, և երկար ժամանակ սուտ հույսեր տալով, ի վերջո ազատում է իր գլուխը՝ մի գիշեր փախչելով «ի հեռագոյն երկիր»[14]։

Գիտության վիճակն այսպիսին էր Հայաստանում. մտավոր գործունեության այդ բնագավառին զինվորագրված մարդիկ, քաղաքական և տնտեսական ամենաբարենպաստ պայմաններում, դերագույն ճիգերով ձգտում էին պահպանել զարգացած ֆեոդալիզմի ժամանակաշրջանի գիտական մտքի ձեռքբերումները, նոր սերունդներ դաստիարակել այդ ավանդույթներով։

Այլ էր վիճակը Եվրոպական մայր ցամաքում. այստեղ, նույն այս ժամանակաշրջանում, սաղմնավորվում էին կապիտալիստական արտադրական հարաբերությունները, ստեղծվում էին մանուֆակտուրային արդյունաբերական ձեռնարկություններ, կատարելագործվում գործիքներն ու մեքենաները. աշխարհագրական մեծ հայտնագործությունների հետևանքով աննախընթաց վարգացում էր ապրում առևտուրը։ Եվրոպացի մարդը, շփվելով Ասիայի, Աֆրիկայի և նորահայտ Ամերիկայի մինչ այդ անծանոթ ժողովուրդների հետ, ընդարձակում էր տեսական ու գործնական իր գիտելիքները։ Այս պայմաններում գիտությունը նոր հատկանիշներ էր ձեռք բերում, մտնում զարգացման նոր փուլի մեջ։ 1543 թ. հրապարակվում է Կոպեռնիկոսի «Երկնային շրջանների պտույտի մասին» հռչակավոր ուսումնասիրությունը, որով աստղաբաշխությունն ազատագրվում է երկրակենտրոն սիստեմի դարավոր կաշկանդումներից ու զարգացման մայրուղի մտնում. գիտական այս սխրագործությամբ աստվածաբանությունը ջախջախիչ հարված է ստանում։ 1609 թ. Գալիլեյը հեռադիտակն ուղղում է երկինք, անժխտելի փաստերով ապացուցելով Կոպեռնիկոսի տեսության ճշմարտացիությունը։ Հեռադիտակի հետ միասին գիտական հետազոտություններին ի սպաս է դրվում նաև մանրադիտակը, որի օգնությամբ կարևոր գյուտեր են արվում բժշկության և հարակից գիտությունների բնագավառում։ Ա. Վեզալիուսը 1543 թ. հրապարակում է «Մարդու մարմնի կառուցվածքի մասին» ուսումնասիրությունը, որով մերժվում է Գալենի հնացած անատոմիան և հիմք դրվում ժամանակակից կազմախոսությանը։ Առաջին անգամ լինելով, տրվում է մարդու կազմության գիտական պատկերը՝ հերձումների ճանապարհով կուտակված ճշգրիտ տվյալների հիման վրա։ Վ. Գարվեյը (1578—1657) հայտնագործում է արյան շրջանառության դերը կենդանի օրգանիզմում, որով հիմք է դրվում գիտական կենսաբանության. նա է համարվում նաև սաղմնաբանության հիմնադիրը։ Եվ այսպես, գիտությունը դուրս է գալիս խանձարուրային իր վիճակից, բոլոր մարզերում հեղաբեկիչ նշանակություն ունեցող տեսական հայտնագործություններ և գյուտեր են կատարվում։

Արևելյան ժողովուրդներից հայերն առաջինն էին, որ հաղորդակից դարձան եվրոպական գիտության նվաճումներին և, ինչպես թարգմանություններ կատարելով, այնպես էլ ինքնուրույն երկեր շարադրելով հարստացրին հազարամյա հայ մատենագրությունը նոր արժեքներով։ Ինչ-որ չափով խախտվեց

---

[14] Տե՛ս Մխիթարիչ Ապարանեցի, Գիրք ուղղափառաց... (Marcus Antonius v. d. Oudenrijn, Linguae haicane scriptores, Bernae, 1960, էջ 220)։

նաև եկեղեցու մենաշնորհը գիտության նկատմամբ. գիտության ասպարեզ իջան նաև աշխարհական մարդիկ, որոնք հակադրվելով «Բանական ճննութեանն ճնտնի ճնրձուած» իր դարն ապրած դիրքորոշմանը, մշակեցին մի նոր մոտեցում գիտության նկատմամբ, որ Ավետիք Տիգրանակերտցին (սրա մասին՝ քիչ հետո) ձևակերպեց՝ «Լաւ է շատգէտ մեղաւոր, քան թէ անառակ (իմա՛ անբան, ՝տգէտ) արդար» խորիմաստ բանաձևով։ Եկեղեցու գաղափարախոսները պատվիրում էին, աստուծո դեմ չմեղանչելու համար, խուսափել բնական երևույթների քննությունից, հավատ ընծայել Աստվածաշնչին և եկեղեցական հայրերին, իսկ աշխարհիկ գիտության ներկայացուցիչը գերադասում էր լինել բնախույզ և բանիմաց՝ թեկուզ և մեղքի մեջ ընկնելով, քան թե արդար, բայց անբան ու տգետ մեկը։

Հայերեն լեզվով թարգմանական և ինքնուրույն գիտական երկեր ստեղծվեցին առաջին հերթին աստղաբաշխության և մաթեմատիկայի բնագավառում։

1621 թ. Հովհաննես Անկյուրացին թարգմանեց գերմանացի աստղաբաշխ, աշխարհագետ, քարտեզագիր Պետրոս Ապիանի (1495—1552) «Կոսմոգրաֆիա» նշանավոր աշխատությունը, որով առաջարկվում էին աշխարհագրական երկայնության որոշման նոր եղանակներ՝ երկնային մարմինների, մանավանդ լուսնի գիտական դիտարկումների ճանապարհով։ Այդ աշխատության հայերեն թարգմանության ձեռագրում նկարված է մի հայ աստղաբաշխ՝ Կարապետ վարդապետը՝ աստղաբաշխական քանոնի օգնությամբ դիտումներ կատարելիս։ 1671 թ. «ի ֆրանկաց» թարգմանված մի աշխատության մեջ տրվում է 1671—1700 թթ. տեղի ունենալիք Արեգակի և Լուսնի բոլոր խավարումների ցանկը՝ բացեի ճշտությամբ։ Նույն այս տարիներին եվրոպական գիտության ընձեռած տվյալների հիման վրա Իսահակ Ջուղայեցին շարադրում է «Վասն ժամուց աւուրնչեան և գիշերոյ, որք առաւելուն և նուազին» աշխատությունը։ Հեղինակն ընդունում է երկրի գնդաձևությունը, նրա պտույտն իր առանցքի շուրջը. ցերեկվա և գիշերվա ժամերի տևողությունը որոշում է հաշվի առնելով իր գտնված վայրի (Սպահան) աշխարհագրական լայնությունը։

1695 թ. Ամստերդամում տպագրվում է «Համատարած աշխարհացոյց» անունով մեծ քարտեզը, Ղուկաս, Թովմա, Մատթեոս Վանանդեցիների և օտարազգի հմուտ փորագրիչների համատեղ ջանքերով։ Հաջորդ թվականին լույս է տեսնում «Աշխարհացոյցի» շատ կարևոր «Բանալին»։ Այս գործերի գիտական ղեկավարը՝ Ղուկաս Նուրիջանյան Վանանդեցին էր. նա էր հայ հին մատենագրության ծալքերից պեղում, կամ նոր հորինում աշխարհագրական անվանումները, նա էր հայացնում աստղաբաշխական տերմինները, համաստեղությունների անունները և այլն[16]։

Հայ գիտնականները, եվրոպական լավագույն օրինակների հետևողությամբ, ստեղծում էին կատարելագործված աստղաբաշխական գործիքներ՝ աստրոլաբ, ամիլյար սֆերա, ռուպի տայրե և այլն, նոր հայտնագործված կամ կատարելագործված գործիքներով ու փորձանոթներով հարստանում էր նաև հայ վարպետ-ալքիմիկոսի աշխատանոցը։ Ղուկաս Վանանդեցու գործընկեր Մատթեոսի պատրաստած հայերեն բացատրություններ ունեցող աստրոլաբը՝

---

[16] Ղուկաս Վանանդեցու ստեղծած տերմիններից շատերն ավելի հաջող են, քան այժմ գործածության մեջ մտածները։ Այսպես, օրինակ, նա ունի Ծնկնի, փխ.՝ Հերկուլես, Մարգաձի փխ. Կենտավր, Ջրօձ՝ Հիդրա, Շնիկ՝ Փոքր շուն, Մարտիկ՝ Օրիոն և այլն։

աստղաբաշխական գեղեցիկ մի գործիք, հասել է մեզ։ Այդ գործիքի օգնությամբ հնարավոր է որոշել լուսատուների բարձրությունը, կենդանակերպանի համաստեղությունների դիրքը գիշերվա տարբեր ժամերին, տարվաների հեռավորությունն ու բարձրությունը, լուսատուների հասարակածային կոորդինատները, տվյալ վայրի աշխարհագրական լայնությունը, գիշերվա և ցերեկվա տևողությունը, աշխարհի կողմերը և այլն[16]։

Աստղաբաշխության ուղիով զարգանում է նաև մաթեմատիկան։ XVI դարում արևմտահայ մի անհայտ անձնավորություն կազմում է հայերեն առաջին թվաբանության դասագիրքը՝ տասնորդական «պոզիցիոն» սիստեմով և արաբական թվանշաններով։ Նրա նպատակն է եղել ցույց տալ տասնորդական սիստեմի առավելությունները հայկական այբբենական թվահաշվի նկատմամբ, սովորեցնել իր հայրենակիցներին թվաբանական չորս գործողությունները դյուրին կատարելու այն ժամանակ եվրոպական երկրներում կիրառվող եղանակները։ Դասագրքի երկրորդ բաժնում, նկատի ունենալով հայ վաճառականների ամենօրյա գործունեությունը, հեղինակը կազմել է թվաբանական խնդիրներ, յուրաքանչյուր խնդրին առընթեր տալով լուծման բանալին։ Առաջին խնդիրն, օրինակ, այս է. «Երկու հոգի օրթախ եղան (այսինքն՝ ընկեր դարձան). մէկն ունի սարմիայ (դրամագլուխ) 167 և մէկն ունի 243, վաստակեր են 134 ստակ. ամեն մարդու ինչ պիտի ընկնի...». (այնուհետև տրվում է լուծման եղանակը)։

Շատ չի ուշանում նաև թվաբանության տպագիր դասագիրքը. այդ լինում է գերմանացի մաթեմատիկոս Քրիստափոր Կլավիուսի (1537—1612) «Գործնական թվաբանության համառոտ շարադրանք» աշխատության հայ առևտրականների համար պատրաստված թարգմանությունը, որը լույս աշխարհ է գալիս 1675 թ. Մարսելում, «Արհեստ համարողութեան՝ ամբողջ և կատարեալ» խորագրով։ Գրքի բովանդակության և օգտակարության մասին թարգմանիչը հայտնում է հետևյալը. «Տեսնելով զհարկաւորութիւն մերազնեայց վաճառականաց վասն կատարելապէս ոչ գիտելոյ զարհեստն համարողութեան, վայելուչ վարկայ զգիրքս զայս թարգմանել ի մերս բարբառ, որպէս զի սովաւ վարժեցեալք կարիցեն դիւրապէս պարապիլ ի գործս իւրեանց թարց դեգերման մտաց». այսպես՝ գրաբար լեզվով գրված է միայն գրքի առաջաբանն ու վերջաբանը, իսկ բուն դասագիրքը շարադրված է աշխարհաբարով[17]։ XVI—XVII դարերում շրջանառության մեջ են դրվում գործնական թվաբանության տպագիր ու ձեռագիր այլ ձեռնարկներ ևս, իսկ Վենետիկի Մխիթարյան միաբանության անդամ Ս. Աղամալյանցը 1781 թ. հրատարակած իր «Թուաբանութեան» երկրորդ մասն ամբողջապես նվիրում է այնպիսի հարցերի, որոնք, գործնականից ավելի տեսական նշանակություն ունենալով, «ոչ միայն սխորժելի են մտքի և կենցաղային այլ պետքերի համար, այլև ճանապարհ են հարթում դեպի մյուս չափաբանական գիտությունները»։ Աղամալյանցը սովորեցնում է ամբողջ և կոտորակային թվերից քառակուսի և խորանարդ արմատ հանել, համեմատությունների տեսություն, թվաբանական և երկրաչափական պրոգրեսիաներ, բազմանկյուն թվեր, զուգադրություններ, փոխադրություններ,

[16] Տե՛ս Բ. Ե. Թումանյան, Հայ աստղագիտության պատմություն, հնագույն ժամանակներից մինչև XIX դարի սկիզբը, Երևան, 1964, էջ 157—163։ Այստեղից են քաղված նաև աստղաբաշխական երկերի եվրոպական լեզուներից կատարված թարգմանությունների մասին տվյալները։

[17] Տե՛ս Գ. Բ. Պետրոսյան, Մաթեմատիկան Հայաստանում հին և միջին դարերում, Երևան, 1959 (նաև «Սովետական Հայաստան» օրաթերթի 1969 թ. հուլիսի 24-ի համարը)։

լոգարիթմներ և այլն։ Գրքի վերջում տրված է 1—1000 թվերի լոգարիթմական աղյուսակը։

Մաթեմատիկական մտքի զարգացմանը մեծապես կարող էր խթանել Էվկլիդեսի «Երկրաչափության» ամբողջական հայերեն թարգմանությունը, որ անուղղակի որոշ տվյալների համաձայն իրագործվեց դարի սկզբներին, Գրիգոր Կեսարացու ջանքերով։ Իր գործին հմուտ թարգմանիչը ստեղծել է երկրաչափական մի քանի տասնյակ տերմինների հայկական հաջող համարժեքները և, մատուցվող նյութն ավելի դյուրըմբռնելի դարձնելու մտահոգությամբ, տեղ-տեղ ուշագրավ փոփոխություններ ու լրացումներ է կատարել։ Մի առիթով նա գրում է. «Մենք փոխեցաք զապացոյցն Եւգլիտին վասն տալոյ զլաւագոյն ապացոյց մի, որ առաւել լուսաւորէ զմիտս ընթերցողին» մի այլ առիթով նշում, որ «Եւգլիտն այսպէս սահմանեալ է, իսկ մեք ասեմք առաւել առհասարակ (այսինքն՝ պարզ, դյուրին)» և այլն[18]։

Այս թարգմանությունը, ցավոք, մնաց ձեռագիր վիճակում, ուստի անծանոթ ընթերցող լայն շրջաններին։ Հայաստանում երկրաչափական գիտելիքների տարածմանը մեծ չափով նպաստեց Մխիթարյան վարդապետ Սահակ Պրոնյանի «Երկրաչափութիւնը», որ լույս տեսավ 1794 թվականին, բաղկացած լինելով երեք ընդարձակ բաժիններից։ Առաջին բաժինը նվիրված է սահմանումներին և աքսիոմաներին, ապա առանձին պրակներով խոսվում է գծի և նրա տեսակների, անկյունների, եռանկյունների, շրջագծի և այլ հարցերի մասին։ Երկրորդ բաժինը նվիրված է քառանկյուններին, բազմանկյուններին, մակերևույթների համեմատությանը և հատմանը։ Վերջին բաժնում սահմանվում են երկրաչափական մարմինները (գլան, կոն, բուրգ, գունդ), ապա քըննարկվում մարմինների նմանության և հավասարության, մակերևույթների և ծավալների չափման ու համեմատության հարցերը և այլն։ Բոլոր բաժինների վերջում տրված են խնդիրներ ու նրանց լուծման եղանակները։

Ս. Պրոնյանն իր առջև խնդիր էր դրել եվրոպական լեզուներով գոյություն ունեցող լավագույն աշխատությունների հիման վրա, «ընտրելագոյն ոճով և հեշտընկալ բացատրութեամբ» հայ երիտասարդության համար պատրաստել երկրաչափական գիտելիքների ամբողջական մի ձեռնարկ, մշակելով հայերեն գիտական տերմինոլոգիա։ Այս խնդիրն իրագործված է հաջողությամբ[19]։

Թվաբանական և երկրաչափական վերոհիշյալ աշխատություններով տասնորդական կամ «պոզիցիոն» կոչվող սիստեմը և արաբական թվանշանները ճանաչելի դարձան Հայաստանում և հայ գաղթաշխարհում, սակայն հին հայկական այբբենական թվանշաններն ու հաշվային սիստեմը երկար ժամանակ չէր զիջում իր դիրքերը. որոշ բնագավառներում այն գործածության մեջ էր նույնիսկ XIX դարի ընթացքում։ Այնքան մեծ էր հազարամյա ավանդույթով սրբագործված հայկական այբբենական համարողության ուժը, որ XVII դարի կեսերին Նոր Ջուղայի միջավայրում, տասնորդական և հայկական սիստեմների զուգորդությամբ, կյանքի կոչվեց թվարկության ինքնատիպ մի նոր սիս-

---

[18] «Երկրաչափութիւն Եւգլիտին», տեքստը հրատարակության պատրաստեցին Գ. Բ. Պետրոսյան և Ա. Գ. Աբրահամյան, Երևան, 1962։

[19] 1810 թ. Վենետիկում լույս ընծայվեց նաև նույն հեղինակի «Եռանկիւնաչափութիւն» աշխատությունը, որով հայ ընթերցողը հնարավորություն ստացավ մայրենի լեզվով ծանոթանալու ուղղագիծ և սֆերիկ եռանկյունաչափության տարրերին, բնական թվերի լոգարիթմներին, ուղանկյուն և շեղանկյուն եռանկյունների առանձնահատկություններին և այլն։

տեմ։ Պարսկահայ վաճառականների մեծամասնությունը, բաց տեղյակ լինելով արաբական թվերին և «ալոլիֆիոն» թվարկությանը, առևտրական գործարքների հաշվապահությունը կատարում էր նորանոր և ինքնատիպ այս եղանակով։ Հայ այբուբենի առաջին երկու իննյակները նույնությամբ կիրառվում էին այդ սիստեմի մեջ՝ որպես միավոր և տասնավոր թվեր.

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| ա | բ | գ | դ | ե | զ | է | ը | թ |
| 1 | 2 | 3 | 4 | 5 | 6 | 7 | 8 | 9 |
| ժ | ի | լ | խ | ծ | կ | հ | ձ | ղ |
| 10 | 20 | 30 | 40 | 50 | 60 | 70 | 80 | 90 |

Հարյուր, ինչպես և հազար թվերը, նույնպես գրվում էին նախկին ձևով՝ Ճ—100, Ռ—1000։ Փոխված էր, սակայն, հարյուրավոր և հազարավոր մյուս թվերի գրության եղանակը. հայկական այբուբենի մյուս տառերն իրենց թվական նախկին արժեքներով (դիցուք, Ն—400, կամ Տ—4000 և այլն) այլևս չէին օգտագործվում։ Հարյուր (Ճ) կամ հազար (Ռ) թվից առաջ դրվում էր պահանջվող միավոր կամ տասնավոր թիվը. 400-ը, օրինակ, գրվում էր ԴՃ (4.100), 4000-ը՝ ԴՌ (4.1000) ձևով։ Մեկ նմուշ ևս. հայկական հին թվարկության սիստեմով հնգանիշ 56789 թիվը, օրինակ, գրվելու էր Ծ̂ՑՉՁԹ ձևով, իսկ նոր սիստեմով ԾԶՌ.ԷՃ.ՁԹ (այսինքն՝ 56.1000+7.100+89=56789)։ Այս նոր գրությամբ մեծապես դյուրանում էր թվաբանական պարզ գործողությունները կատարելը։

Մշակվել էր նաև կոտորակների գրության նոր եղանակ. ամբողջական թվերից հետո, ըստ անհրաժեշտության, դրվում էին ուղղահայաց, հորիզոնական և դարձյալ ուղղահայաց մեկ, երկու կամ երեքական գծիկներ, այսպես. ≡ ||| ≡, կամ —||=, կամ =|— և այլն (գծախմբերից որևէ մեկի բացակայության դեպքում նրա փոխարեն դրվում էր թանձր մի կետ)։ Առաջին խմբի յուրաքանչյուր գծիկը ամբողջական թվի $\frac{1}{4}$-ի նշանակությունն ուներ, երկրորդ (հորիզոնական) խմբի գծիկներից յուրաքանչյուրը՝ $\frac{1}{16}$ էր նշանակում, իսկ երրորդ խմբի մեկ գծիկը — $\frac{1}{64}$։ Ըստ այդմ վերոհիշյալ կոտորակներից առաջինը (որի բոլոր խմբերում երեքական գծիկ է նշանակված) ընկալվում էր այսպես. $\frac{3}{4}+\frac{3}{16}+\frac{3}{64}$, այսինքն՝ $\frac{53}{64}$, երկրորդ կոտորակը նշանակում էր $\frac{1}{4}+\frac{2}{16}+\frac{2}{64}$, այսինքն՝ $\frac{26}{64}$, կամ $\frac{13}{32}$ և այլն։

Պահպանվել են հայ վաճառականների կողմից գրանցված մի քանի հաշվետվություններ, որոնց մեջ լայնորեն կիրառված է տասնորդական սիստեմի ազդեցությամբ բարեկարգված հայկական այբբենական թվարկության այս նոր փոփոխակը[20]։

Հայ ընթերցող շրջանները XVII դարի սկզբներից հաղորդակից են դառնում նաև բժշկության և հնագիտության մարզերում եվրոպական գիտության ձեռք բերած նվաճումներին։ Եվրոպական բարձրագույն ուսումնական հաստատություններում կրթություն ստացած մի շարք հայ բժիշկներ ինքնուրույն և թարգմանական արժեքավոր երկերով հարստացնում են հայ մատենագրությունը։ Ասպարեզ են իջնում նաև խավարի մեջ խարխափող իրենց հայրենակիցների մտավոր հորիզոնը լուսավորելու ազնիվ գաղափարով ոգեշնչված, գիտության ծարավի ինքնուս գործիչներ, որոնք անասելի խոչընդոտներ հաղ-

[20] Լ. Խաչիկյան, Հովհաննես Ջուղայեցու հաշվետումարը (Armeniaca, mélanges d'études Arméniennes, Venise, 1969, էջ 245)։

թահարելով, նոր արժեքներ են ստեղծում իրենց նախասիրած բնագավառներում։

Այդպիսի ինքնուս գործիչներից է Աբրահամ Պոլսեցին՝ հայ միջնադարի միակ կենդանաբանը, որ 1611 թ. Կոստանդնուպոլսում շարադրել է ինքնատիպ և հետաքրքրական մի ուսումնասիրություն՝ «Պատմութիւն անասնոց և գազանաց, չորքոտանեաց, սողնոց և թիւնաւորաց, թռչնոց և մարդկան, ծովային ձկանց և անասնոց և գազանաց, և այլ ժըժմակաց ծովու և ցամաքի...» ընդարձակ խորագրով։

Ընթերցող լայն շրջանների համար շարադրված այս գրքի նյութը «բազում ջանիւ և աշխատութեամբ» հեղինակն ամբողջացրել է հայերեն, հունարեն, լատիներեն, արաբերեն, պարսկերեն և թուրքերեն լեզուներով ձեռք բերած գրավոր ու բանավոր աղբյուրներից, հարստացնելով այդ ամենն իր անձնական փորձի և դիտողականության միջոցով կուտակած նյութերով։

Առաջնորդվելով, հավանաբար, եվրոպական վերածննդի ժամանակաշրջանի նշանավոր կենդանաբանների դասակարգության սկզբունքներով, մեր հեղինակը կենդանական աշխարհի ներկայացուցիչներին բաժանել է հինգ խոշոր խմբերի. 1. Չորքոտանիներ (նկարագրում է 50 տեսակ), 2. Թռչուններ (44 տեսակ), 3. Ջրային կենդանիներ ու զեռուններ (12 տեսակ), 4. Ծովային պատենավոր («կէճէպ» ունեցող) ժըժմակներ և 5. Ձկներ ու խեցեմորթներ (48 տեսակ)։ Խոսում է նաև կենդանակերպ ու մարդակերպ հրեշների մասին, ինքն էլ իմանալով, որ դրանք «առասպելք» են։ Կենդանիների նկարագրությունները, նրանց բնութագրումները՝ ձևաբանական են և գերազանցապես ճիշտ։ Մեծ ուշադրություն է նվիրված կենդանիների վարք ու բարքին, սնմանը, բնատանեցմանը, խնամելու կերպին և այլն, հանգամանքներ, որ հաճելի և հետաքրքրական դարձնելով կենդանաբանական չոր նկարագրությունները, նաև գրավիչ նյութ են հանդիսանում ժողովրդական ընթերցանության համար և ապացույց տալիս հեղինակի կենսաբանական ըմբռնումների խորության մասին։ Հատուկ արժեք է ներկայացնում աշխատության Կոստանդնուպոլսի շրջակա ծովերի ձկներին նվիրված ընդարձակ բաժինը, որն առավել չափով կազմված է անձնական դիտողությունների և ուսումնասիրության միջոցով ձեռք բերված տվյալների հիման վրա։ Իր գրքի մեջ մեր կենդանաբանը հաղորդում է նաև աշխարհագրական և պատմա-մշակութային նշանակություն ունեցող հետաքրքրական տեղեկություններ։

Ուշադրավ այս աշխատությունը շատ բարձր է գնահատվել հայ մշակույթի պատմաբանների կողմից. «Այսպես թե այնպես,— գրել է նրանցից մեկը,— խորին երախտագիտության է արժանի Աբրահամ Պոլսեցին, որ որպես առաջինը մեր անցյալի ամբողջ գրականության մեջ, մեզ կենդանաբանական մի գիրք է թողել գիտական գրեթե այն բարձրության, որ ժամանակի եվրոպական կենդանաբանությունն է ունեցել՝ իր առավել և թերի կողմերով»[21]։

Եվրոպական բժշկագիտության տեսական և գործնական նվաճումների մասին հայ ընթերցողը տեղեկություններ է ստանում թարգմանական և ինք-

[21] Ավ. Տեր-Պողոսյան, նշված աշխ., էջ 460։ Աբրահամ Պոլսեցու «Կենդանաբանության» միակ ձեռագիրը պահվում է Վենետիկի Մխիթարյան միաբանության մատենադարանում։ «Բազմավէպ» ամսագրի 1898 թ. համարներում (էջ 1—6, 66—74, 120—128) տպագրված անստորագիր մի հոդվածի մեջ (հեղինակը, հավանաբար, Ղ. Ալիշանն է) տեղեկություններ են տրված այդ ձեռագիր աշխատության մասին և բերված են ընդարձակ քաղվածքներ։

նույն այն երկերից, որ հատ ու կենտ սկսում են երևան գալ տակավին XVII դարի ընթացքում, իսկ հաջորդ դարի կեսերին բազմապատկվում են։ Հայկական խոշոր գաղթավայրերում սկսում են աշխատել եվրոպական համալսարաններում սովորած բժիշկներ, որոնցից մի քանիսը, բուժող բժշկի մեծ համբավ ձեռք բերելով, զբաղվում են նաև գիտական աշխատանքով, շարադրում ու տպագրում են բժշկական արժեքավոր գրքեր։

Ծանոթանանք նախ Պետրոս Քալանթարյանի գործունեությանը, որ ծնվել է Նոր Ջուղայում, սովորել Եվրոպայում, ապա բնակություն հաստատել Մոսկվայում։ 1793 թ. Նոր Նախիջևանում հրատարակվում է նրա հեղինակած բժշկարանը, բաղկացած երկու ինքնուրույն մասերից։ Առաջին մասում շարադրված են ախտաբանության և բուժման կարևորագույն խնդիրները, ըստ որում հիվանդությունների ախտանիշերը թվարկված են համառոտակի, իսկ բուժման միջոցները՝ հանգամանորեն։ Երկրորդ մասը լատինա-հայկական բժշկական բառարանն է, ուր տրված են 363 տերմինների բացատրություններ (այստեղ մեջ են բերված նաև մի քանի ռուսերեն տերմիններ)։ Եվրոպական բժշկությունից բացի, Քալանթարյանը հայկական միջնադարյան աղբյուրների միջնորդությամբ ծանոթ է նաև արաբական բժշկագիտությանը և ըստ հարկի օգտագործում է նաև միջնադարյան բժշկության բանական տվյալները։

Նույն ժամանակ է ասպարեզ իջել նաև Հովակիմ Օղուլլուխյանը. ծնվել է, հավանաբար, Տրապիզոնում, սովորել Վիեննայի համալսարանում, այնուհետև հաստատվել է Կոստանդնուպոլսում և որպես բուժող բժիշկ մեծ անուն վաստակել։ Գրել է երեք աշխատություն. 1783 թ. — լատիներեն լեզվով «Ախտաբանություն» (Pathologia), մի այլ գործ, որ շարադրված է հոլանդացի նշանավոր բժիշկ Բոերգավի երկերի հիման վրա և, վերջապես, 1785 թ. «Դեղագիտություն» (Materia medica) աշխատությունը, որ լույս է տեսել 1806 թ. Վենետիկում։ Դեղանյութերն այստեղ դասակարգված են, ըստ իրենց տարբեր ներգործության, մի շարք խմբերի տակ (սրտային, գրգռիչ և այլն)։ Նախ տրվում է տվյալ խմբի մեջ ընդգրկված դեղանյութերի ընդհանուր բնութագիրը, ապա ամեն մի նյութի անվանումը՝ լատիներեն, հայերեն և թուրքերեն լեզուներով, իսկ այնուհետև՝ նրանց ֆիզիկա-քիմիական հատկությունները և բուժական ազդեցությունը։

Առավել նշանավոր է եղել Ստեփանոս Շեհրիմանյանը՝ տաղանդավոր բժիշկ և բնագետ, որ ծնվել է Թիֆլիսում, սովորել Իտալիայում, աշխատել Կոստանդնուպոլսում, ապա վերադարձել իր ծննդավայրը, ուր և կնքել է իր մահկանացուն 1818-ից հետո (ճիշտ տարեթիվը հայտնի չէ)։

1791—1796 թթ. Կոստանդնուպոլսում ժանտախտի համաճարակ էր բռնկվել. Շեհրիմանյանն այդ տարիներին անձնվեր աշխատանք է կատարել որպես բուժող բժիշկ և իր կուտակած հարուստ փորձի հիման վրա, օգտագործելով նաև գիտական գրականության մեջ առկա տվյալները, շարադրել է «Անդեղեայ ժանտախտի» կարևոր ուսումնասիրությունը, առաջնահերթ նպատակ ունենալով՝ սովորեցնել ժողովրդին վարակից զերծ մնալու միջոցառումները։ Ժանտախտի մասին այս գրվածքը, մասնագետների գնահատությամբ, հայ բժշկական գրականության առավել ծանրակշիռ ու արժեքավոր ստեղծագործություններից է։

Հայ բնագիտական մտքի պատմության մեջ բացառիկ տեղ է գրավում Շեհրիմանյանի «Տնկաբանութիւն կամ փղորայ Հայաստանի» կոթողային աշ-

*խատությունը, որ այսօր իսկ, իր գրությունից ավելի քան 150 տարի հետո (շարադրվել է 1794—1818 թթ.), պահպանում է ճանաչողական ու գիտական իր նշանակությունը։ Աշխատությունը կոչվում է «Փղորայ» (այսինքն՝ ֆլորաբուսականություն) Հայաստանի, բայց նրա մեջ տեղ են գտել նաև բազմաթիվ բույսեր, որոնք չեն աճում մեր երկրում։ Այստեղ, այբբենական շարահարությամբ թվարկված են 800 (հոմանիշները չհաշված) բույսերի անուններ և գրանցված նրանց մասին բուսաբանական ու դեղագիտական ընդարձակ տեղեկություններ։ Սկզբից տրվում է բույսի անունը՝ հայերեն, լատիներեն, արաբերեն, պարսկերեն (երբեմն նաև հունարեն և եբրայերեն), ապա նրա ձևաբանական նկարագրությունը՝ աճման վայրերի նշումով։ Դրան հաջորդում են բույսերի բուժական հատկությունների մասին տվյալները. հիշատակվում են այն հիվանդությունները, որոնց բուժման համար օգտագործվում են նրանք, տրվում են տեղեկություններ նրանց տեսակների, օգտագործման եղանակների, երբեմն նաև չափ ու քանակի մասին։*

*Մեծ բարեխղճությամբ հեղինակը նշումներ է կատարում այս կամ այն բույսի վերաբերյալ գրանցած տեղեկության աղբյուրի մասին. ըստ այդմ նա լայնորեն օգտագործել է անտիկ հեղինակների (Դիոսկորիդես, Պլինիուս, Հիպոկրատ, Գալեն), եվրոպական բնագետների (Լիննեյ, Յորսկալ), ինչպես և հայ ու միջնադարյան Արևելքի այլ բժիշկների (Ամիրդովլաթ, Միրզա Մյումին) աշխատությունները։*

*Ս. Շեհրիմանյանի «Տնկաբանությունը» գիտական ամենալուրջ սկզբունքներով կազմված մի ծանրակշիռ ուսումնասիրություն է, որ չունի իր նմանակը ոչ միայն հայ, այլև հարևան ժողովուրդների գիտական գրականության մեջ*[22]*։*

*XVII—XVIII դարերի ընթացքում հրապարակ իջած և գիտության տարբեր բնագավառներում արժեքներ ստեղծած վերահիշյալ հայ գործիչները, գրեթե առանց բացառության, իրենց կյանքն անց են կացրել եվրոպական գիտական կենտրոններում (Ամստերդամ, Մարսել, Վենետիկ, Մոսկվա), կամ էլ Հայաստանից հեռու գտնվող այնպիսի գաղթավայրերում (Կ. Պոլիս, Սպահան), որոնք տնտեսական ու մշակութային սերտ կապերի մեջ էին եվրոպական երկրների հետ։ Այս հանգամանքն, անշուշտ, նպաստավոր է եղել հայ մտավորականների համար. նրանք, հաղորդակից լինելով եվրոպական գիտության նվաճումներին, կարողացել են ձերբազատվել միջնադարյան հայ գիտության կաշկանդիչ ավանդույթներից ու ստեղծել ժամանակակից գիտության մակարդակին համապատասխան արժեքներ։*

*Օսմանյան Թուրքիայի և Սեֆյան Պարսկաստանի տաժանելի տիրապետության տակ կեղեքվող հայկական նահանգներում, ուր շարունակում էր ապրել ու մաքառել աշխատավոր հայ ժողովուրդը, մշակութային գործունեության ծավալման և, մասնավորապես, գիտության զարգացման համար չկային նույնիսկ ամենանվազագույն նախադրյալներ։ Անբարենպաստ այս պայմանները, սակայն, չէին կարող արգելակել հեռավոր գաղթավայրերում ստեղծված հոգևոր արժեքների ներթափանցմանը հայրենի երկիր. տարբեր ուղիներով ստացվող տպագիր գրքերը, ձեռագիր աշխատությունները և այլ արժեքներ՝ ձեռքից ձեռք էին անցնում, կլանվում գրաճանաչ մարդկանց կողմից, ընդարձակում նրանց մտահորիզոնը և խթանում գիտության նկատմամբ հետաքրքրության խորաց-*

[22] Տե՛ս *Л. А. Оганесян*, նշված աշխատության „Армяне-врачи воспитанники европейских университетов" գլուխը (էջ 193—245)։

մանը։ Մայր երկրում ևս վանականի խուցը դադարում էր գիտական զբաղմունքի միակ աշխատանոցը լինելուց, գրիչ էր վերցնում աշխարհական մարդը՝ վաճառական և արհեստավոր, նոր մոտեցում դրսևորելով բնության ու հասարակական կյանքի երևույթների նկատմամբ։

Այս նոր միջավայրի ծնունդ էր գիտությանն անհունորեն սիրահարված մտավորական Ավետիք Բաղդասարյան Տիգրանակերտցին, որ 1684—1719 թթ. ընթացքում, հաղթահարելով մեծ դժվարություններ, թափառելով երկրից երկիր, ստեղծել է թվաբանության, տոմարագիտության, աստղաբաշխության, երաժշտագիտության և գիտության այլ ճյուղերի մասին հետաքրքրական նյութեր պարունակող մի ընդարձակ ժողովածու — «Տէֆտէր գիրք» խորագրով։ «Ծանուցումն առ ուսումնասէր ընթերցողս» ներածական խոսքի մեջ Տիգրանակերտցին իր աշխատանքի պայմանների, օգտագործած աղբյուրների և ժողովածուի բովանդակության մասին գրում է. «Այս գիրքս ամենայն տումարական արվեստից և աստղաբաշխական ճետվէլից և մեկնութեանց տէֆտէր է, զորս ես նուաստ Աւետիք ընթերցող՝ ծնունդ Տիգրանակերտեան, որ և սնեալ եղէ ի բաղում քաղաքս, այսինքն նախ ի Էրզրում. կացի անդ ամս ԺԴ (14), և յետոյ ի Տիգրանակերտ քաղաքն փոխեցայ, ի Բաղեշ, ի Վան, ի Պարսից երկիրն, ի Քրդաստան, ի Արապիստան, ի Անատօլի, ի Սեբաստիա, ի Թոխաթ։ Պատճառ ի շրջիլն այսքան աշխարհ՝ վասն գրասիրութեանս և մէրէֆեթի (այսինքն՝ արվեստի, գիտության) աղագաւ. ոչ թէ ի Հայոց գրաց միայն, այլ ամենայն ազգաց գրոց, այսինքն՝ Արապաց, Ֆարսից, Ջհտաց, Ղըպտից, Ասորոց, Ֆրանկաց, ի Յունաց գրոց և վարպետաց. հարցեալ և ժողովեալ անհամար մեկնութիւն և ճէտվէլ աղիւսակք, մեծաւ սաժանմամբ, ամառ և ձմեռ դեգերելով...»։ Իր ժողովրդին լուսավորելու համար գիտական նյութեր հավաքելու ճանապարհին մեր ինքնուս գիտնականը հաղթահարել է աներևակայելի դժվարություններ. «Շատ նախատինք լսեցի որովայնամոլ և արբշիռ ուսումնատեաց եկեղեցականաց», «համբերէի վշտաց և նեղութեանց», «դեգերեալ մաշէի ի դրունս ուսուցիչ իմաստասիրաց»,—համեստորեն արձանագրում է նա։ Էրզրում քաղաքում մի քանի օրով կանգ առած ֆրանսիացի մի գիտնականի մոտ (որ մեկնելու էր Չինաստան), Տիգրանակերտցին տեսնում է աստղաբաշխական արժեքավոր նյութեր։ Ֆրանսիացի ճանապարհորդը, չանսալով մեր գիտնականի թախանձանքներին, անսպասելիորեն մեկնում է Էրզրումից. երկու ամսից լուր է ստացվում, որ նա կանգ է առել Թավրիզում։ Ավետիքը, ինչպես ինքն է գրում,— «անյապաղ ելեալ Արզրումայ՝ ի ձմեռային ցրտասառոյց և ի բքաբեր օդոց զանց առնելով» գավառից գավառ հետիոտն անցնելով, հասնում է Թավրիզ, ներկայանում գիտնական-ճանապարհորդին, զարմացնում նրան իր նպատակասլաց հարցասիրությամբ և իրականացնում իր ծրագիրը՝ հայերեն թարգմանելով անծանոթ աստղաբաշխական աշխատությունը։

Ավետիք Տիգրանակերտցու ձեռագիր աշխատությունների մասին տեղեկություններ պարունակող անստորագիր հոդվածաշարի հեղինակը (ամենայն հավանականությամբ՝ Ղ. Ալիշանը) հայտնում է, որ նրա գործերի մեջ ստույգի հետ սուտն էլ կա, ճմտության հետ ճմայություն ևս, բայց շատ բարձր է գնահատում նրա գիտական վաստակը, «սուր ու զորավոր միտքն ու կարողությունը»[23]։

[23] Ավետիք Տիգրանակերտցու ձեռագիր աշխատությունները պահվում են Վենետիկի Մխիթարյանների մատենադարանում. Նրանց մասին «Բազմավէպի» մեջ (1897 թ. էջ 317—321,

Հայ գիտական մտքի ուշ միջնադարյան շրջանի ամբողջական պատկերը գծելու համար՝ դեռևս շատ դժվարություններ են հաղթահարվելու։ Ձեռագիր և հնատիպ գրքերի մեջ կան դեռևս չբացահայտված ու չարժեքավորված բազմաթիվ բնագրեր՝ միջնադարյան գիտության տարբեր բնագավառների մասին արժեքավոր նյութերով. կան տաղանդավոր ու նվիրյալ մի շարք գործիչներ, որոնք սա այսօր չեն գրավել գիտության պատմաբանների ուշադրությունը, արդեն հայտնի նյութերն էլ սպասում են ավելի հանգամանալից ու մասնագիտական քննության։

## ՊԱՏՄԱԳՐՈՒԹՅՈՒՆ

XIV դարից սկսած անկում ապրեց նաև հայկական պատմագիտությունը։ Հաջորդ երկու հարյուրամյակի ընթացքում ևս չստեղծվեցին քիչ թե շատ նշանավոր պատմագիտական աշխատություններ, բացառությամբ Թովմա Մեծոփեցու (1378—1446) «Պատմութիւն համառօտաբար վասն Լանկ-Թամուրայ և այլոցն, որ արարեալ է քաջ վարժապետին Թումայ վարդապետին» գրքի[1]։

Թովմա Մեծոփեցին, որ ծնունդով Քաջբերունիքից էր և հռչակավոր վարդապետ ու փիլիսոփա Գրիգոր Տաթևացու աշակերտը, իր ժամանակի ամենակրթված և եռանդուն գործիչներից էր։ Ժամանակակիցները նրան մեծարում էին «պտխեղերալույս րաբունի», «մեծ հռետոր», «քաջ քարտուղար» տիտղոսներով։

Մեծոփեցու աշխատությունը Լանկ-Թամուրի արշավանքների, ինչպես նաև Կարա-կոյունլու և Աղ-կոյունլու քոչվոր ցեղերի մղած պատերազմների շրջանի Հայաստանի ու Միջին Արևելքի պատմության համար շատ կարևոր աղբյուր է։

Թովմա Մեծոփեցու պատմությունն սկսվում է 1386 թվականից։ Նա բավական մանրամասն նկարագրում է Լանկ-Թամուրի արշավանքները, Անկարայի մոտ սուլթան Բայազիդի կրած պարտությունը, դրանց ուղեկցող բնակչության բռնի գերեվարությունն ու կոտորածները։ Առավել հանգամանալից է Մեծոփեցու աշխատության այն մասը, որը նվիրված է Լանկ-Թամուրի հաջորդների կառավարմանը։ Լինելով ոչ միայն ժամանակակիցը, այլև նկարագրվող բուռն իրադարձությունների ականատեսն ու մասնակիցը, նա տվել է ավերիչ պատերազմների, կողոպուտի և գերեվարության, ինչպես նաև ժողովրդի ուսերին ընկած հարկային ծանր լծի լիակատար պատկերը։ Նրա «Պատմությունը» յուրատեսակ մի տարեգրություն է։

Ձեռագրերի մեջ, որպես կանոն, «Պատմությանը» կցվում է նաև Թովմա Մեծոփեցու «Յիշատակարանը»։ Սա համարյա միակ աղբյուրն է կաթողիկոսական աթոռը Սսից Էջմիածին փոխադրելու հետ կապված իրադարձությունների մասին։ «Յիշատակարանը» մեծ հետաքրքրություն է ներկայացնում նաև այն տեսակետից, որ նրանում տրված է XIV—XV դարերում հայ հոգևորակա-

375—380, 423—425, 459—463) տպագրված է բնդարձակ հոդվածաշար։ Արժեքավոր է նաև Տիգրանակերտցու մասին Լեոյի գեղեցիկ շարադրությունը («Հայոց պատմություն», Գ, էջ 421—424)։

[1] Բնագիրը հրատարակվել է 1860 թ. Փարիզում։

*նության բարքերի անկման նկարագիրը, մի բան, որը շարունակվեց և հետագայում, ընդհուպ մինչև XVII դարը։*

*Թովմա Մեծոփեցու կյանքին ու գործունեությանն է նվիրված նրա աշակերտներից մեկի գրած վարքը՝ «Պատմութիւն Մեծի րաբունապետին Թումայի, վոր արարեալ է Կիրակոսի բանասեր վարդապետի»²։*



**Թովմա Մեծոփեցու ինքնագիր հիշատակարանը (Մատենադարան, ձեռ. № 9247)**

*XIV—XV դարերի իրադարձությունների մասին կարևոր տեղեկություններ է հաղորդում նաև Թովմա Մեծոփեցու ավագ ժամանակակից, գրական գործիչ ու բանաստեղծ Գրիգոր Ծերենց Խլաթեցին (1350—1425)։ Նրա գրչին է պատկանում «Յիշատակարան աղետից» խորագրով չափածո պատմությունը, որը նվիրված է 1386—1422 թվականների իրադարձություններին՝ Լանկ-Թամուրի արշավանքներին ու թուրքմենական ցեղերի պատերազմներին։ Լինելով ականատեսի ստեղծագործություն, «Յիշատակարան աղետիցը» պարունակում է արժեքավոր և ստույգ պատմական տեղեկություններ։*

*Թովմա Մեծոփեցու և Գրիգոր Խլաթեցու ստեղծագործությունները հայկական պատմագիտության նախորդ ծաղկուն շրջանի վերջին արձագանքներն են։*

*Հաջորդ երկու հարյուրամյակի պատմական իրադարձություններին մեզ ծանոթացնող հիմնական աղբյուրը հիշատակարաններն ու մանր ժամանակագրություններն են։*

*Հիշատակարանները սովորաբար գրվում էին ձեռագրեր արտագրողների ու նկարազարդողների կողմից՝ պատվիրատուի կամ իրենց անունից։ Դրանցում, նման գրությունների համար սովորական դարձած պատվիրատուի և գրչի ու նրանց մերձավոր ազգականների, բարեկամների և հովանավորողների*

---

² Տե՛ս Դ. Հովսեփյան, *Թովմա Մեծոփեցու կեանքը (կենսագրական նոր նյութերով)*, Վաղարշապատ, 1914։ Լեո, *Հայոց պատմություն*, հատ. 3, Երևան, 1946։ Մ. Աբեղյան, *Հայոց հին գրականության պատմություն*, հատ. 2, Երևան, 1946։ Л. С. Хачикян, Историография Армении («Очерки истории исторической науки», т. I, М., 1955, էջ. 3 և 4-ի համապատասխան բաժինները)։

անունների թվարկման կողքին, ընդօրինակողները շատ հաճախ գրառում էին նաև իրենց տպավորությունները այն իրադարձությունների մասին, որոնց ժամանակակիցն ու ականատեսն էին։ Դեպքերի թարմ հետքերով արված այդ գրառումները սույն տեղեկություններ են հաղորդում զանազան իրադարձությունների ու փաստերի մասին, ընդ որում, հաճախ շատ դունեղ, վառ, իսկ երբեմն էլ չափածո ձևով։

Նկարագրելով պատմական որևէ որոշակի փաստ, կամ դեպքերի սահմանափակ մի շար, հիշատակարանները, ամբողջությամբ վերցրած, տալիս են այն ժամանակի իրադարձությունների ընթացքի ճշմարիտ և ամբողջական պատկերը։ Նրանցում կարևոր տեղեկություններ են պահպանվել ժողովրդի վիճակի, պատերազմների, բնակչության գերեվարության, երկրի ավերման, հարկերի ու զանազան բռնությունների մասին։ Ավելին, հիշատակարանները հնարավորություն են տալիս ճշտելու մի շարք պատմական փաստեր, թվականներ ու անուններ։

Այլ կարգի պատմական սկզբնաղբյուրներից հիշատակարանները տարբերվում են մի շարք ուշագրավ առանձնահատկություններով։ Գրված լինելով նկարագրվող անցուդարձերին ականատես ու ականջալուր մարդկանց կողմից, նրանց մեջ ամփոփված տեղեկություններն ավելի վստահելի են։ Հիշատակագիրները գերազանցապես աշխատավոր խավերի հետ կապված գրիչներ ու մանրանկարիչներ էին և պատմական, տնտեսական ու մշակութային երևույթները նկարագրել ու գնահատել են ժողովրդական խավերի հայեցակետից։

Անցյալի աչքի ընկնող պատմագիրներից մի քանիսն, ինչպես օրինակ, Առաքել Դավրիժեցին (XVII դ.), իսկ այնուհետև Մ. Չամչյանը (XVIII դ.), հասկացել էին հիշատակարանների նշանակությունը որպես պատմական աղբյուր և ավել կամ պակաս չափով օգտագործել իրենց աշխատություններում[8]։

Այդ շրջանի պատմագիտության մյուս ձևը ժամանակագրություններն էին, որոնք գերակշռող են դառնում XV—XVII դարերում։ Որոշ ժամանակագրությունների հեղինակներ հայտնի են, իսկ մեծ մասինը՝ անհայտ։ Մանր ժամանակագրությունները մեծ մասամբ նեղ, տեղական բնույթ են կրում, լուսաբանելով մի որևէ կարճ ժամանակամիջոցում տեղի ունեցած իրադարձություններ։ Ժամանակագրությունների բնորոշ առանձնահատկությունն այն է, որ դրանց հեղինակները չեն աշխատել իրենց համար պարզել պատմական դեպքերի ներքին կապն ու օրինաչափությունները, այդ պատճառով էլ նրանց շարադրանքը իրենից ներկայացնում է փաստերի չոր թվարկում, առանց որևէ մանրամասնության կամ գնահատականի։

Մանր ժամանակագրությունները հարուստ նյութ են պարունակում Հայաստանի և սահմանակից երկրների պատմության, մասնավորապես Կարա-կոյունլու և Աղ-կոյունլու ցեղերի պայքարի, Հայաստանի առանձին մարզերի, հայկական գաղութների կյանքի ու սոցիալական պայքարի վերաբերյալ։ Դրանցից կարելի է քաղել Հայաստանի աշխարհագրության, բարբառագիտության, ազգագրության վերաբերյալ բազմաթիվ կարևոր տեղեկություններ։

Ժամանակագրությունները, որպես պատմագիտական ստեղծագործության

---

[8] Ներկայումս պատմաբանները ձեռքի տակ ունեն XIV և XV դարերի հիշատակարանների ժողովածուները, որոնք հրատարակել է Լ. Ս. Խաչիկյանը, «ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», Երևան, 1950, «ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», Մաս Ա—Գ, Երևան, 1955—1967։

տեսակ, ավելի զարգացած ձևով, շարունակում են զգալի տեղ գրավել նաև հետագա հարյուրամյակներում, չնայած այն փաստին, որ սկսած XVII դարից ապրեց հայ պատմագրությունը[4]։

Հիշատակարանների և մանր ժամանակագրությունների կողքին պետք է հիշատակել Սիմեոն Ապարանցու (XVI դարի երկրորդ կես), Մամիկոնյան և Պահլավունի երկու նշանավոր իշխանական տոհմերին նվիրված չափածո պատմությունը՝ «Վիպասանութիւն սակս Պահլաւունեաց զարմի և Մամիկոնեանց սեռի», ուր հին հայկական պատմիչների աշխատություններից քաղվածաբար բերված են տեղեկություններ Հայաստանի պատմության առավել հերոսական շրջանների մասին։ Չունենալով գեղարվեստական արժեք, այս ստեղծագործությունը, ներծծված լինելով օտարերկրյա լծից հայ ժողովրդի ազատագրության գաղափարներով՝ սիրված ու տարածված է եղել։ Դիմելով հայերի հերոսական անցյալին, Սիմեոն Ապարանցին իր ժամանակակիցներին կոչ էր անում հետևել նախնիների օրինակին։

Հիշատակարաններն ու մանր ժամանակագրությունները արտահայտություններն են այն բուռն ժամանակաշրջանի, երբ Հայաստանը փոփոխակիորեն գտնվում էր թուրքմենական, պարսկական և օսմանյան զավթիչների տիրապետության տակ և բազմամյա արյունահեղ պատերազմների ասպարեզ էր։ Միաժամանակ, որպես պատմական գրականության ձև, դրանք հիմք են ծառայել XVII—XVIII դարերի պատմագրական ստեղծագործությունների նոր ձևերի՝ հուշագրությունների, կենսագրական կամ պատմական բնույթ ունեցող օրագրերի, ուղեգրությունների և տեղագրական աշխատությունների զարգացման համար։

XVII դարի 30—40-ական թվականներից մշակութային կյանքի աշխուժացման պայմաններում սկսվում է նաև հայ պատմագիտության զարթոնքը, ինչպես բուն Հայաստանում, այնպես էլ Եվրոպայի ու Ասիայի (մասնավորապես Պարսկաստանի ու Հնդկաստանի) հայկական գաղթօջախներում։

Այդ շրջանի պատմագիրների ստեղծագործությունները զգալի արժեք են ներկայացնում, հատկապես նախորդ ժամանակաշրջանում ստեղծված պատմագրական երկերի բաղդատությամբ։

Նրանցից առաջինը Գրիգոր Դարանաղցին կամ Կամախեցին է (1576—1643)։ Իր մանկությունն անցկացնելով հայրենի գավառում, ապա լինելով Էջմիածնում և հայկական մշակութային այլ կենտրոններում, Դարանաղցին հետագայում այցելել է Ղրիմ, Կոստանդնուպոլիս, Երուսաղեմ, վերջապես եղել է Հռոդոսի հայկական գաղութի առաջնորդը, որտեղ և անց է կացրել իր կյանքի վերջին տարիները։ 1634—1640 թթ. գրել է մի շարք երկեր, որոնցից կարևորագույնը «Ժամանակագրություն» ծավալուն պատմական աշխատությունն է[5]։

«Ժամանակագրությունը» բաժանվում է երկու մասի. առաջինն ընդգրկում է 1018-ից մինչև 1539 թվականն ընկած ժամանակամիջոցը և բովանդակում է այդ շրջանի Հայաստանի համառոտ պատմությունը, երկրորդը՝ հեղինակի կենդանության օրոք տեղի ունեցած իրադարձությունների նկարագրությունն է։ Որպես պատմական աղբյուր առավել կարևոր է երկրորդ մասը, որտեղ հեղի-

---

[4] Տե՛ս «Մանր ժամանակագրություններ (XIII—XVIII դդ.)», կազմեց՝ Վ. Հակոբյան, Երևան, հտ. 1, 1951, հտ. 2, 1956։

[5] Տե՛ս Գրիգոր Դարանաղցի, Ժամանակագրութիւն, Երուսաղեմ, 1915։

նակը հանդես է գալիս որպես ականատես, իսկ հաճախ նաև դեպքերին մասնակից։ Աշխատության մեջ մանրամասն նկարագրված են այն իրադարձությունները, որոնց ասպարեզն էր թուրքական տիրապետության տակ հեծող Արևմտյան Հայաստանը և, հատկապես, իր հայրենի գավառը՝ Էրզրումի վիլայեթը։ Գրիգոր Դարանաղցու «Ժամանակագրությունը» շատ արժեքավոր աղբյուր է ջալալիների շարժման պատմության համար, այն պատկերացում է տալիս Օսմանյան կայսրության սոցիալ-տնտեսական և քաղաքական ճգնաժամի մասին։ Նրա պարզ ու խոսակցական լեզվով շարադրված նկարագրություններից ուրվագծվում է ժամանակի հասարակության տարբեր շերտերի կյանքի պատկերը, հայ վաճառականության ու հոգևորականության վարքն ու բարքը։ Շատ արժեքավոր են նաև Կոստանդնուպոլսի, Երուսաղեմի և Հռոդոսի հայկական գաղութների մասին Դարանաղցու հայտնած տեղեկությունները։

XVII դարում երևան եկած պատմական աշխատությունների մեջ ամենակարևոր տեղը գրավում է Առաքել Դավրիժեցու «Պատմությունը»[6]։

Առաքելը ծնվել է մոտավորապես XVI դարի վերջին, Թավրիզում։ Կյանքի մեծ մասը, որպես հոգևորական, անց է կացրել Էջմիածնում։ Դավրիժեցին հայ մատենագրությանը քաջածանոթ, բանիմաց, նոր գիտելիքներ ձեռք բերելու տենչով առլեցուն գործիչ էր. ժամանակակիցները նրան «Պատմագիր» հարգալից կոչումն էին շնորհել։ Լինելով կաթողիկոսի նվիրակը, Առաքելը շատ էր ճանապարհորդում։ Մասնավորապես՝ դեպի Հունաստան։ Այդ ճանապարհորդությունների ժամանակ նա հսկայական նյութ էր հավաքել, որն հետագայում օգտագործեց իր «Պատմության» մեջ, երբ Փիլիպպոս Աղբակեցի կաթողիկոսի հանձնարարությամբ, 1651—1662 թթ. սկսեց շարադրել այն։ Դավրիժեցին մահացել է 1670 թ. և թաղվել Էջմիածնում։ Դեռևս կենդանության օրոք, 1669 թ. նրա «Պատմությունը» հրատարակվել է Ամստերդամում։

Առաքել Դավրիժեցին նպատակ էր դրել իր «Պատմության» մեջ տալ Արարատյան երկրի XVII դարի առաջին կեսի քաղաքական պատմությունը (նրա հիշատակած վերջին տարեթիվը 1658-ը է)։ Սակայն նա հաճախ դուրս է եկել իր առջև դրված աշխարհագրական ու ժամանակագրական շրջանակներից, մի շարք կարևոր ու արժեքավոր տեղեկություններ հաղորդելով Նոր Ջուղայի ու Լվովի հայկական գաղութների, Օսմանյան կայսրության մեջ տիրող վիճակի, ինչպես նաև վրացիների, պարսիկների և այլ ժողովուրդների մասին։

«Պատմության» գլխավոր և հիմնական մասը նվիրված է Հայաստանի և հարևան երկրների (հատկապես Իրանի ու Թուրքիայի) քաղաքական պատմությանը։ Հեղինակը մանրամասն տեղեկություններ է հաղորդում Հայաստանի տերիտորիայում պարսկական ու թուրքական բանակների վարած ռազմական գործողությունների մասին։ Գեղարվեստական որոշակի արժեք են ներկայացնում գրքի այն էջերը, որոնք նվիրված են շահ Աբբաս I-ի կողմից հայերին Իրանի խորքերը բռնի գաղթեցնելու և հայ ժողովրդի համար այդ գաղթի աղետալի հետևանքների նկարագրությանը։

Դավրիժեցու «Պատմությունը» խիստ արժեքավոր նյութ է պարունակում

---

6 «Պատմութիւն Առաքել վարդապետի Դաւրիժեցւոյ», Վաղարշապատ, 1896։

Անդրկովկասի սոցիալ-տնտեսական պատմության, պարսկական ու օսմանյան վարչա-հարկային կարգերի վերաբերյալ։ Այն կարևոր աղբյուր է նաև ջալալիների շարժման, Գևորգի Սահակաձևի գլխավորությամբ վրաց ժողովրդի մղած ազատագրական պայքարի, ինչպես նաև Լվովի հայկական համայնքում ծավալված դավանաբանական վեճերի և ունիթորության դեմ մղվող պայքարի պատմության համար։

Մեծ հետաքրքրություն են ներկայացնում «Պատմության» այն գլուխները, որոնք նվիրված են XV—XVI դարերում երկրի մշակութային կյանքի անկմանը և XVII դարում սկսված վերելքի շրջանին, այդ ժամանակի ականավոր մշակութային գործիչներին, որոնց շնորհիվ նորոգվեց դպրոցական կյանքն ու վերելք ապրեց հայ միջնադարյան մատենագրությունը։

Դավրիժեցու հաղորդած տեղեկությունները աչքի են ընկնում ստույգությամբ և հաստատվում են ինչպես մի շարք ժամանակակից պարսկական փաստաթղթերով, այնպես էլ Լվովում պահվող հայագիտական նյութերով։ «Պատմությունը» ունի նաև թերի կողմեր. կան կողմնակի շատ նյութեր, շարադրանքի թելը բազմիցս կտրվում է և, որպես դրա հետևանք, հաճախակի են կրկնությունները։ Այս թերությունները, սակայն, բնավ չեն նսեմացնում Դավրիժեցու աշխատության պատմագիտական արժեքը։ Դավրիժեցին հառնում է ընթերցողի առջև որպես իր ժողովրդին ջերմորեն սիրող, նրա հոգսերով ու երազանքներով տոգորված գործիչ։ Դավրիժեցու գործը հայ ժողովրդի դառն ճակատագրի, նրա մեջ թաքնված կենսունակ մեծ ուժի պատմությունն է։

XVII դարի աչքի ընկնող պատմագիրներից երրորդը Զաքարիա Քանաքեռցին է։ Ծնվել է 1627 թ. Քանաքեռ գյուղում (այժմ Երևան քաղաքի արվարձաններից), ուսումն ստացել է Հովհաննավանքում, որտեղ և անց է կացրել իր ողջ կյանքը, մահացել է 1699 թ.։

Որպես Հովհաննավանքի ցածրաստիճան միաբան, Զաքարիա սարկավագը բազմիցս հեռավոր ճանապարհորդություններ է կատարել, այցելել է Ղազվին, Զմյուռնիա, Կ. Պոլիս և այլ վայրեր։

Զաքարիայի երեք մասից բաղկացած «Պատմությունը»[7] սկսվում է Արշակունիների իշխանության հաստատումից և հասցվում մինչև 1699 թ.։ Ժամանակագրական այս շրջանակներում շարադրված նյութը հավասարարժեք չէ։ Առաջին գլուխները բովանդակությամբ խիստ աղքատ են և պարունակում են փաստական բազմաթիվ սխալներ։ Զաքարիայի գրքի հիմնական ու արժեքավոր մասը XVII դարի պատմությունն է, որն այդ ժամանակաշրջանի ուսումնասիրության համար ուշագրավ նյութեր է պարունակում։ Առաջին հատորի 28-րդ գլխից սկսած Զաքարիան նկարագրում է այն դեպքերը, որոնց ժամանակակիցն ու ականատեսն է եղել ինքը։

Զաքարիայի աշխատությունը կազմված է ինքնուրույն խորագրերով օժտված առանձին «պատմություններից» որոնք շարահարված են ժամանակագրական կարգով։ Դրանք հաճախ չեն կապակցված միմյանց հետ, երբեմն էլ շաղկապվում են լոկ որևէ գործող անձի, կամ գործողության վայրի ընդհանրությամբ, բայց ծայրից ծայր գրված են վառ պատկերավոր լեզվով, գեղջկական անմիջականությամբ ու պարզությամբ։

---

[7] «Զաքարիա Սարկավագի Պատմութիւն», Ա, Բ, Գ, հատոր, Վաղարշապատ, 1870
Закарий Канакерци, Хроника. Пер. с армянского, предисловие и комментарии М. О. Дарбинян-Меликян, М., 1969.

Քանաքեռցու «Պատմությունը» մեծաքանակ և ստուգապատում նյութեր է պարունակում Հայաստանի ու հարևան երկրների սոցիալ-տնտեսական կյանքի տարբեր բնագավառների մասին։ Այն տալիս է հասարակ մարդկանց, գերազանցապես գյուղացիների դառն կյանքի ճշգրիտ նկարագիրը։

Բացառիկ արժեք են ներկայացնում հատկապես Մեխլուի գլխավորած սոցիալական շարժմանը վերաբերող Զաքարիա Քանաքեռցու հաղորդած տեղեկությունները, որոնք պարզ պատկերացում են տալիս այդ շարժման գաղափարախոսության և ընթացքի, նրա մեջ ընդգրկված սոցիալական և էթնիկական տարբեր շերտերի մասին։

Կենցաղային զանազան, հաճախ երկրորդական թվացող, մանրուքների պատկերման շնորհիվ Զաքարիայի պատմածները բացառիկ արժեք են ստանում նաև որպես ազգագրական նյութ։

«Պատմության» երրորդ մասը նվիրված է Հովհաննավանքի տնտեսական կյանքին. մանրամասնորեն թվարկված են վանքապատկան կալվածքները և եկամտաբեր օբյեկտները, մեջ են բերված վիմական արձանագրություններ. վանքի ներքին ու արտաքին տեսքի մանրամասն նկարագրությունը արժեքավոր է նաև հայ ճարտարապետության պատմության համար։

Ձևի, լեզվի ու մատուցվող նյութի նկատմամբ ունեցած մոտեցման տեսակետից գրական ստեղծագործություն հիշեցնող «Պատմությունը» շնորհիվ իր այդ հատկությունների, հնարավորություն է տալիս թափանցելու ժողովրդական կյանքի խորքերը. տեսնելու նրա այն կողմերը, որոնք միջնադարյան այլ գրվածքներից դրեթե իսպառ բացակայում են։ Զաքարիայի ստեղծագործությունը պատվավոր տեղ է գրավում հայ պատմագրական հուշարձանների շարքում։

XVII դարի պատմագրության մեջ աչքի են ընկնում Լեհաստանի, Ուկրաինայի, Թուրքիայի և այլ երկրների հայկական գաղթավայրերում ստեղծված գրական ստեղծագործությունները։ Դրանց թվին է պատկանում Հովհաննես Կամենացու «Խոտինյան պատերազմի պատմությունը»[8], որտեղ մանրամասն նկարագրված են Խոտինյան պատերազմի հետ առնչվող իրադարձությունները։ Գիրքն ավարտվում է սուլթան Օսման II-ի սպանության պատմությամբ։ Ըստ հեղինակի այն գրված է 1627 թ., այսինքն՝ պատերազմն ավարտվելուց վեց տարի անց։ Շարադրված, լինելով ականատեսի կողմից, մասամբ պատերազմի անմիջական մասնակիցների պատմածների, ինչպես նաև գրավոր աղբյուրների (հատկապես Օքսենտ Կամենացու հայատառ ղփչաղերեն «Ժամանակագրության») հիման վրա, այդ աշխատությունը մի շարք մանրամասնություններ է պարունակում Խոտինյան պատերազմի, Կամենեց-Պոդոլսկի հայկական գաղութի, Լեհաստանի և Ռումինիայի մասին։

1637 թ., Կոստանդնուպոլսում, քահանայի ընտանիքում ծնվել է Երեմիա Չելեբի Քյոմուրճյանը[9] (մահացել է 1695 թ.), հայ մտավորականության ամենակրթված ներկայացուցիչներից մեկը՝ գիտնական ու աչքի ընկնող հասարակական գործիչ, որը մեծ դեր է խաղացել արևմտահայերի, հատկապես Կոստանդնուպոլսի ու Երուսաղեմի հայկական համայնքների հասարակական

---

[8] Յովհաննէս Կամենացի, Պատմութիւն պատերազմին Խոտինու, աշխատասիրությամբ Հ. Ս. Անասյանի, Երևան, 1964։

[9] Տե՛ս Հ. Ս. Սահակյան, Երեմիա Քյոմուրճյան, Երևան, 1964, Կ. Դանիելյան, Հայ միջնադարյան... 

կյանքում։ Տիրապետելով արաբական ու եվրոպական մի քանի լեզուների, Երեմիա Քյոմուրճյանը գրել է պատմագիտական, աշխարհագրական, վիճաբանական, քարտեզագրական բազմաթիվ աշխատություններ, գրական ստեղծագործություններ, նամակներ, ճառեր։

Չափածո գրված «Պատմութիւն համառօտ երեքհարիւր տարւոյ» երկը նրա պատմագիտական ամենավաղ ստեղծագործությունն է, որի մեջ շարադրված է օսմանյան սուլթանների պատմությունը։ Ավելի ուշ Երեմիան, նույնպես չափածո, գրեց այդ պատմության համառոտած տարբերակը (երկու գործերն էլ մինչև օրս մնում են ձեռագիր վիճակում)։

Փաստերը քննադատաբար իմաստավորելու և վերլուծելու կարողությունն օգնեցին նրան ստեղծելու Օսմանյան կայսրության կյանքի վառ պատկերը նրա բոլոր դրսևորումներով։ Նկարագրելով Թուրքիայի պետական կարգը, նրա վարչական ու հարկային սիստեմը, բազմաթիվ պատերազմները (Իրանի ու Հարավ-արևելյան Եվրոպայի ժողովուրդների դեմ), Երեմիա Քյոմուրճյանը հատկապես ընդգծում է Թուրքիայի սոցիալ-տնտեսական ու պետական ամբողջ սիստեմի ճգնաժամային երևույթները, XVI—XVII դարերի պալատական հեղաշրջումներն ու զինվորական խռովությունները, ժողովրդի ցնցող աղքատությունը և նվաճված ժողովուրդների՝ հայերի, բուլղարների, հույների, ալբանացիների, արաբների ծանր վիճակը։

Երեմիա Չելեբին իր ամբողջ հասարակական գործունեությունն ու գրական ստեղծագործությունն ի սպաս էր դրել հարազատ ժողովրդի շահերին։ Նա գտնում էր, որ հայերի ազգապահպանության և ինքնագիտակցության զարթոնքի կարևորագույն միջոցը մայրենի լեզվի զարգացումն է, լուսավորության տարածումը։ Այդ նպատակով 1676 թ. Կոստանդնուպոլսում նա տպարան է հիմնում։ Նույն այդ նպատակին էր ծառայում նաև նրա «Համառօտ հարցմունք և պատասխանիք» աշխատությունը։ Գրքի սկզբի մասը վերաբերում է քրիստոնեությանը, այնուհետև տրված են Հայաստանի պատմության ու մշակույթի վերաբերյալ հարցեր ու պատասխաններ։ Իր մյուս՝ «Հայաստանի պատմութիւն» աշխատության մեջ Քյոմուրճյանը փառաբանում է հայ ժողովրդի հերոսական անցյալը, հայ թագավորների ռազմական հաղթանակները։

Հայ ժողովրդի վիճակը, տնտեսական, կրոնական ու ֆիզիկական այն ճնշումները, որոնց նա ենթակա էր մշտապես, գտնվել են պատմաբանի ուշադրության կենտրոնում, ընդ որում նրա համակրանքը աշխատավոր ժողովրդի կողմն է, որին ամեն կերպ ճնշում ու հարստահարում էին իշխանավորները։

Կյանքի վերջին տարիներին Երեմիա Չելեբին գրեց «Տարեգրական պատմութիւնը», որը դեռևս ձեռագիր վիճակում է։ Այդ աշխատությունը բաժանված է երեք մասի։ Առաջինում տրված է Կոստանդնուպոլսում տեղի ունեցած տարբերային աղետների պատմությունը, երկրորդ մասը նվիրված է կենտրոնական ու հարավ-արևելյան Եվրոպայի երկրների դեմ Օսմանյան կայսրության մղած պատերազմների, ինչպես նաև Օսմանյան պետության ներքին կյանքի նկարագրությանը, իսկ վերջին, երրորդ մասում տրված է հայոց եկեղեցու պատմությունը, մասնավորապես, հոգևորականության զանազան խմբավորումների պայքարը.

Երեմիա Չելեբիի գրական ժառանգությունից շատ քիչ բան է հրատարակված։ Պատմագրական տպագրված աշխատությունների թվին է պատկանում

«Ստամպոլոյ պատմութիւնը»[10], որը ուշագրավ նյութեր է պարունակում ոչ միայն Ս. Պոլսի, այլև XVII դարի ամբողջ Թուրքիայի առևտրի, արհեստների, գյուղատնտեսության մասին։

Հատուկ հետաքրքրություն է ներկայացնում Քյոմուրճյանի «Օրագիրը»[11]։

Հայ գրականության մեջ օրագիրը (ուղեգրությունների, հուշագրությունների և տեղագրական աշխատությունների հետ միասին) առաջին անգամ երևան է եկել XVII դարում։ Գրական ստեղծագործությունների այդ տեսակները քանմկապես թերևս գերազանցում են զուտ պատմագիտական աշխատություններին և պակաս արժեք չեն ներկայացնում։

Քյոմուրճյանի «Օրագիրը» բացահայտում է լայն հետաքրքրությունների տեր այդ մարդու, ջերմ հայրենասերի դիմապատկերը։ Քյոմուրճյանն ապրում էր իր ժողովրդի ու ժամանակի հետաքրքրություններով, այդ պատճառով էլ նրա «Օրագիրն» աչքի է ընկնում բովանդակության զարմանալի հարստությամբ։ 1648—1662 թթ. ընթացքում Թուրքիայում կատարված կարևորագույն դեպքերի, հայկական գաղութների ազգային-հասարակական ու եկեղեցական գործերի ուշագրավ նկարագրությունները, սուլթանների, պետական ու եկեղեցական գործիչների բնութագրությունները, կենցաղային վառ ուրվանկարները Երեմիա Չելեբիի այդ աշխատությանը տալիս են մեծ արժեք, նրա համար բացառիկ տեղ ապահովելով հայ գրականության առավել նշանավոր հուշարձանների շարքում։ Հիանալի տիրապետելով գրաբարին, նա, այնուամենայնիվ, իր «Օրագիրը» գրել է ժամանակի խոսակցական՝ գեղեցիկ ու պատկերավոր լեզվով։

Երեմիա Քյոմուրճյանի բազմաթիվ աշխատությունները անտարակույս մեծ հետաքրքրություն են ներկայացնում ոչ միայն Հայաստանի պատմության, այլև արևելագիտության համար ընդհանրապես։

XVII դարի կարևոր սկզբնաղբյուրներից է նաև Զաքարիա Ագուլեցու (1630—1691) «Օրագիրը»[12], որը բովանդակում է նաև ուղեգրության ու ժամանակագրության տարրեր։

Զաքարիան ծնվել է Ագուլիս գյուղաքաղաքում, որը զգալի դեր էր կատարում Անդրկովկասի և Իրանի միտաքսի արդյունահանման մեջ։ Ագուլեցի վաճառականները առևտրական սերտ կապեր էին հաստատել Իրանի, Թուրքիայի և եվրոպական մի շարք երկրների հետ։ Արդեն մանկությունից ծնողները Զաքարիային պատրաստում էին առևտրական ասպարեզի համար։ Իր գործունեությունը նա սկսել է նախ Իրանի ու Թուրքիայի շուկաներում, իսկ 1658 թ. առևտրական գործերով շրջել է Եվրոպայի տարբեր երկրներում՝ Իտալիայում, Հոլանդիայում, Իսպանիայում, Պորտուգալիայում։ «Օրագիրն» սկսել է գրել 1647 թ.։ Այն բովանդակում է գերազանցապես տեղեկատու բնույթի այնպիսի տվյալներ, որոնք առաջին հերթին կարող են հետաքրքրել վաճառականին։ «Օրագրի» առաջին մասը բովանդակում է առևտրական երթուղիների նկարագրությունը. նշված են այն քաղաքները, գյուղերը, իշխանատները, որոնցով անցնում է առևտրականների ուղին, ցույց են տրված բնակավայրերի միջև

10 Երեմիա Չելէպի Քէօմիւրճեան, Ստամպօլոյ պատմութիւն, հրատարակեց և ծանոթագրեց տոքթ. Վահրամ Թորգոմյան, Վիեննա, հ. Ա, 1913, հ. Բ, 1932, հ. Գ, 1939։ Կա նաև թուրքերեն թարգմանությունը։

11 «Օրագրութիւն Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեանի», հրատ. Մ. Նշանյան, Երուսաղեմ, 1939։

12 «Զաքարիա Ագուլեցու Օրագրությունը», Երևան, 1938։

եղած տարածությունը, փոխադրամիջոցները, մաքսերի չափերը, օգտագործվող կշիռները, չափերն ու դրամները։ Երկրորդ մասում Ագուլեցին մանրամասն նկարագրում է իր ճանապարհորդությունները, սկսած 1647 թ. մարտի 5-ից և վերջացրած 1681 թ. հոկտեմբերի 11-ով։ Օրագրության մեջ մանրամասնորեն գրանցված են մեր վաճառականի ու նրա եղբոր ընտանիքի անդամների կյանքի հետ կապված բոլոր անցուդարձերը՝ ամուսնություն, ծնունդ, մահ, շարժական ու անշարժ կալվածքների ձեռք բերում, սնանկություն, ծանր տնտեսական վիճակ և այլն, և այլն։ Տեղեկությունները գրառված են Երևանի և Նախիջևանի խանությունների սահմաններում տեղի ունեցած քաղաքական դեպքերի ֆոնի վրա։ Խիստ արժեքավոր են երևանյան կառավարիչների, գյուղացիների պարհակների, ռազմական տուրքերի, հողի արժեքի ու պարենամթերքի գների մասին եղած տվյալները։ «Օրագիրը» պարունակում է նաև հարուստ ազգագրական նյութ։

Իր բնույթով Զաքարիա Ագուլեցու «Օրագրին» մոտ է Նորջուղայեցի հայ վաճառական տեր Դավթի որդի Հովհաննեսի «Հաշվետումարը»։

1682 թ. վերջին Հովհաննես Ջուղայեցին առևտրական գործերով դուրս է գալիս Սպահանից, իջնում Բենդեր-Աբբաս և ծովով մեկնում Հնդկաստան։ Հնդկաստանի տարբեր քաղաքներում վաճառելով բերած մահուդը, նա գնում է մեծ քանակությամբ լեղակ և թանկարժեք գործվածքներ և ապա (1686 թ. փետրվարին) մեկնում է Տիբեթ։ 1686 թ. սեպտեմբերի 30-ին Հովհաննես Ջուղայեցին մտնում է Լհասա։

Տիբեթում նա մնում է մոտ հինգ տարի (1686—1692)։ Այդ տարիների ընթացքում սովորում է տիբեթերեն, ծանոթանում ժողովրդի կենցաղին։ Իր «Հաշվետումարի» մեջ գրանցված են արժանահավատ և ստույգ տեղեկություններ առևտրի, հարկերի ու տուրքերի, Լհասայի դատարանի ու դատավարության մասին, որոնց կարևորությունն ավելի է բարձրանում, քանի որ մինչև XX դարի սկզբները Տիբեթը փակ է եղել արտաքին աշխարհի համար և նրա միջնադարյան տնտեսական կյանքի մասին շատ քիչ նյութեր են պահպանվել։

Հովհաննես Ջուղայեցու «Հաշվետումարը» կարևոր սկզբնաղբյուր է Իրանից Հնդկաստան, Նեպալ, Տիբեթ ներմուծվող և արտահանվող ապրանքների, դրանցից գանձվող մաքսերի չափերի, ապրանք ու դրամ փոխադրելու եղանակների և հարակից այլ հարցեր լուսաբանելու համար։ Արժեքավոր շատ տեղեկություններ կան նաև հնդկական քաղաքների (Սուրաթ, Ագրա, Փաթնա, Կալկաթա և այլն) հայկական համայնքների տնտեսական կյանքի մասին։

Նյութի ընդգրկումով և ուշագրավ բովանդակությամբ Հովհաննես Ջուղայեցու «Հաշվետումարը» իր ուրույն տեղն է գրավում հայ միջնադարյան պատմագրության մեջ[13]։

Օրագրին, որպես գրական ստեղծագործության, անմիջականորեն հարում են ուղեգրությունները։ Գրականության այս տեսակը Հայաստանում հայտնի էր նաև մինչև XVII դարը։ Այս տեսակի ամենավաղ ստեղծագործություններից մեկը անանուն հեղինակի ուղեցույցն է, որ վերնագրված է «Անուանք քաղաքացն Հնդկացն և Պարսիցն» (XII դ.)։

Այնուհետև պետք է հիշատակել Մարտիրոս Երզնկացուն, որն ապրել է

[13] Հովհաննես Ջուղայեցու «Հաշվետումարի» ձեռագիրը անտիպ է, սույն տեղեկությունները «Հաշվետումարի» մասին քաղված են Լ. Խաչիկյանի գրած հոդվածից (տե՛ս Journal of the Asiatic Society, vol. VIII, № 3, 1966, էջ 153—186)։

XV դարի երկրորդ կեսին և նկարագրել է Եվրոպայի մի շարք երկրներում իր կատարած ճանապարհորդությունը։ Իր ուղեգրական նոթերը Մարտիրոս Երզնկացին վերնագրել է՝ պատմութիւն Ֆռանկաց երկրին, զոր տեսեալ է Երզնկացի Մարտիրոս եպիսկոպոսն»[14]։

Մարտիրոս Երզնկացու մասին կենսագրական տեղեկություններ չեն պահպանվել։ Իր ճանապարհորդությունն սկսելով 1489 թ. հոկտեմբերին, նա Կոստանդնուպոլսի վրայով հասել է Իտալիա, ապա հետիոտն անցել է Շվեյցարիայի, Գերմանիայի, Ֆլանդրիայի, Անգլիայի, Ֆրանսիայի, Իսպանիայի մի շարք քաղաքներով, նավարկել է Պիրենեյան թերակղզու շուրջը ու հասել մինչև Կադիքս, այնուհետև Իսպանիայի ու Ֆրանսիայի միջերկրածովային ափով հասել Իտալիա, որտեղից և 1496 թ. փետրվարին վերադարձել է հայրենիք։

Մարտիրոս Երզնկացու «Ուղեգրությունը» ուխտագնացի թռուցիկ նոթերի տիպիկ օրինակ է, սակայն այդ կարճ, մի քանի էջանոց նոթերում կարելի է հանդիպել հետաքրքիր մանրամասնությունների Եվրոպայի բազմաթիվ քաղաքների և, հատկապես, Իսպանիայի նավահանգիստների մասին։

Մարտիրոսից մեկ դար հետո, գրեթե նույն երթուղով, եվրոպական երկրներում ճանապարհորդել է Սարգիս անունով մի աբեղա։ Հատկապես ուշագրավ են նրա «Ուղեգրության» Իսպանիային և Պորտուգալիային նվիրված էջերը, որոնց մեջ կան օգտաշատ տվյալներ մի շարք նշանավոր քաղաքների և միջնադարում հռչակված սրբավայրերի մասին[15]։

Հետաքրքրական է նաև Փիրզադա Ղափանեցու «Ուղեգրությունը»։ Նա XVI դարի վերջին այցելել է եվրոպական մի շարք երկրներ՝ Լեհաստան, Իտալիա, Ֆրանսիա, Իսպանիա, Անգլիա, Դանիա, Շվեդիա։ Հաբեշստանի նկարագրությանն է նվիրել իր նոթերը Հովհաննես Ախթամարցին (XVI դ.)։ Ղրիմի մասին է գրել Խաչատուր Կաֆայեցին (XVI դ.) և այլն։

XVII դարից սկսած ուղեգրություններն ավելի ընդարձակ են դառնում, նրանցում հեղինակի անձնական կյանքին վերաբերող ավելի շատ փաստեր են ընդգրկվում, ուշագրավ տեղեկություններ են գրանցվում այցելված երկրների ժամանակակից կյանքի ու անցյալի մասին։

Ավգուստինուս Բաջեցին, որ ծնունդով Երնջակից էր, XVII դարի սկզբին Պարսկաստանից ուղևորվում է Եվրոպա, այցելում Մոսկովյան պետություն, ապա անցնում Լեհաստան, Գերմանիա, Իսպանիա, Իտալիա։ Ընդհանուր առմամբ իր լակոնիկ շարադրանքի մեջ նա ավելի մանրամասն կանգ է առել Հռոմի ու Մադրիդի մի քանի եկեղեցիների բնութագրման վրա։ Առավել հետաքրքրություն է ներկայացնում 1604 թվականին շահ Աբբաս I-ի կազմակերպած բռնագաղթի նկարագրությունը, ինչպես նաև Մոսկովյան պետության մասին հայտնած տեղեկությունները։

Ուղեգրությունների բազմաթիվ հեղինակների շարքում իրավամբ նշանավոր տեղ է գրավում Սիմեոն Լեհացին։

Սիմեոնը ծնվել է 1584 թ. լեհական Զամոստյե փոքրիկ քաղաքում։ 20 տարեկան հասակում նա ուխտագնացություն է կատարում դեպի սուրբ վայ-

---

[14] Վ. Հակոբյան, Մարտիրոս Երզնկացու ճանապարհորդական նոթերը, (ՀՍՍՀ ԳԱ «Տեղեկագիր», 1957, № 6)։

[15] Լ. Խաչիկյան, Սարգիս աբեղայի «Ուղեգրությունը» («Պատմա-բանասիրական հանդես», 1970, № 3, էջ 125—148)։

յունը, որը տևում է 12 տարի և որի արդյունքն է լինում նրա «Ուղեգրությունը»[16]։

Սիմեոնի «Ուղեգրությունը» այդ տիպի միջնադարյան հայ գրականության ֆոնի վրա առանձնանում է և՛ իր ձևով, և՛ բովանդակությամբ։ Չնայած եկեղեցական կրթությանը, Լեհացին լայն շրջանակի հետաքրքրասիրության ու դիտողականության տեր մարդ էր։ Նույնատիպ գրքերի համար սովորական դարձած կրոնական տեսարժան վայրերի նկարագրությանը տուրք տալով, Լեհացին միաժամանակ մեծ տեղ է հատկացնում իր հանդիպած ժողովուրդների սովորույթների, բարքերի, կրոնական ծեսերի, ճարտարապետական հուշարձանների նկարագրությանը, արժեքավոր տեղեկություններ է հաղորդում արհեստների, առևտրի, հողագործության մասին։ Բովանդակության հարստությամբ Լեհացու «Ուղեգրությունը» չի զիջում եվրոպական նշանավոր ճանապարհորդների հուշագրություններին։ Նա ամեն ինչ գնահատում է Թուրքիայում հետապնդումների և հալածանքների ենթարկվող ազգությունների և ստորին խավերի ներկայացուցչի տեսանկյունից։ Եվ դրանումն է Լեհացու գրվածքի առավելությունը։

Լեհացին իր տպավորությունները գրի է առել ճանապարհին, տեսածի ու լսածի անմիջական ազդեցության տակ, վերջնական խմբագրումը կատարել է Լվովում, ուխտագնացությունից վերադառնալուց հետո։

1608 թ. փետրվարի 15-ին սկսված և 12 տարի տևած իր ճամփորդությունը սկսելով Լվովից, Սիմեոն Լեհացին այցելել է Ստամբուլ, Բալկանյան երկրներ, Իտալիա, Մեծ Հայք, Եգիպտոս, Պաղեստին, Սիրիա, Անատոլիա։

Սիմեոնն անցել է Օսմանյան կայսրության գրեթե ողջ տարածքով, նրա գրառումները բավական լրիվ պատկերացում են տալիս այդ պետության սոցիալ-տնտեսական և քաղաքական կյանքի շատ կողմերի, կայսրության լծի տակ հեծող իրավազուրկ ժողովուրդների՝ հայերի, հույների և այլ ազգերի աշխատավորների մասին։ Սիմեոնին, մասնավորապես, ցնցել էր ֆելլահների աղքատությունը։

«Ուղեգրության» էջերում շատ հաճախ են հանդիպում տեղական իշխանությունների կամայականությունների ու չարաշահումների, ջալալիների ապստամբության հետևանքով մի շարք մարզերի ամայացման ու ավերի նկարագրություններ։

Սիմեոն Լեհացու «Ուղեգրությունը» դեպքերի չոր թվարկում չէ, հեղինակը անտարբեր չի նկարագրվող իրադարձություններին, ջերմորեն արձագանքում է դրանց, բացահայտելով իր համակրանքն ու հակակրանքը։ Խոր, իսկական հայրենասիրությամբ է ներծծված Սիմեոնի ամբողջ ստեղծագործությունը։ Հեղինակի ուշադրության կենտրոնում, որտեղ էլ նա գտնվելիս լինի, միշտ մնում են նրա հայրենակիցները, նրանց ճակատագիրը, տառապանքներն ու երազանքները։

Հայ ժողովրդի արթնացող ազգային ինքնագիտակցության ոգին, որն հատուկ է XVII դարի մշակութային կյանքին, միավորում է այնպիսի տարբեր հեղինակների, ինչպիսիք են Առաքել Դավրիժեցին, Երեմիա Քյոմուրճյանը և Սիմեոն Լեհացին։

---

16 Սիմէոն դպիր Լեհացւոյ ուղեգրութիւն և յիշատակարանք. ուսումնասիրեց և հրատարակեց Հ. Ներսես Վ. Ակինյան, Վիեննա, 1936։

Հակոբ Կարնեցու (1622—1662) «Տեղեկագիր Վերին Հայոց»[17] ոչ մեծ աշխատությունը Բարձր Հայքի (հետևելով հայ պատմագրական ավանդույթին, Կարնեցին այսպես էր կոչում Էրզրումի վիլայեթը, որը XVII դարում կազմում էր Արևմտյան Հայաստանի զգալի մասը) 23 գավառների աշխարհագրական, գյուղատնտեսական, ազգագրական, պատմա-տեղեկագրական ակնարկն է։

Կարնեցին մանրամասն նկարագրում է այդ երկիրը, սևեռուն ուշադրություն դարձնելով ազգագրական տվյալների, գյուղատնտեսության, բնական հարստությունների վրա։ Հեղինակը հատկապես մանրամասն գրում է իր հայրենիքի՝ Կարինի մասին։ Նկարագրելով Կարինի հայերի ներքին կյանքի իրադարձությունները, միաժամանակ խոսում է տեղական վարչության ու կենտրոնական իշխանությունների, փաշաների իշխանության ու լիազորությունների, տեղական ու կենտրոնական իշխանությունների փոխհարաբերության, դատավարության և այլ հարցերի մասին։

Այս ոչ մեծ, ընտիր գրաբարով գրված աշխատությունը զգալի հետաքրքրություն է ներկայացնում իր բազմազան տեղեկություններով։

XVIII դարը, որ Հայաստանի պատմության մեջ բնորոշվում է Իրանի ու Օսմանյան Թուրքիայի լծից ազատագրվելու համար հայ ժողովրդի մղած պայքարով, իր արտացոլումն է գտել նաև պատմագիտության բնագավառում։ Եթե XVII դարում գերակշռում էր կղերա-ֆեոդալական պատմագրությունը, ապա XVIII դարում կարելի է արդեն խոսել աշխարհիկ պատմագրության ինչպես որակական, այնպես էլ քանակական գերակշռության մասին։

XVIII դարի ավանդական պատմագրությունը ներկայացված է մի շարք աշխատություններով, որոնք հիմնականում աղբյուրագիտական նշանակություն ունեն։ Դրանք տոգորված են կղերա-ֆեոդալական գաղափարախոսությամբ և քաղաքական իրադարձություններն ու քաղաքական գործիչներին գնահատում են նախ և առաջ հայկական եկեղեցու շահերի տեսանկյունից։ Այդ հանգամանքը, սակայն, չի նվազեցնում այդ ստեղծագործությունների աղբյուրագիտական նշանակությունը. նրանք զգալի հետաքրքրություն են ներկայացնում որպես Հայաստանի ու հարևան երկրների քաղաքական ու սոցիալ-տնտեսական պատմության սկզբնաղբյուր։

Այս սկզբնաղբյուրներից ժամանակագրական առումով առաջինը Աբրահամ կաթողիկոս Կրետացու ոչ մեծ աշխատությունն է, գրված ծավալուն հիշատակարանի կամ օրագրի ձևով[18]։ Կրետացու ծննդյան տարեթիվը հայտնի չէ։ Ավելի քան 25 տարի նա եղել է Թեքիրդաղի (Հռոդոս) հայոց հոգևոր առաջնորդ։ 1734 թ. որպես ուխտավոր եկել է Էջմիածին, քիչ հետո ընտրվել կաթողիկոս և մահացել այստեղ՝ 1736 թվականին։ Նրա կաթողիկոսության շրջանը քաղաքական բուռն իրադարձությունների, մեծ մասամբ Հայաստանի տարածքի վրա մղվող թուրք-իրանական պատերազմների, Նադիր շահի բարձրացման տարիներն էին։

Կրետացին իր օրագրում մանրամասն նկարագրել է բոլոր իրադարձություններն ու այն ամենը, ինչ տեղի է ունեցել նրա՝ Էջմիածին գալուց և կաթողիկոս ընտրվելուց հետո, անցած երկու տարիների ընթացքում։ Այստեղ կան

17 Հակոբ Կարնեցի, Տեղագիր Վերին Հայոց, «Մանր ժամանակագրություններ», հատ. Բ, էջ 541—582։

18 Աբրահամ Կաթողիկոսի Կրետացւոյ Պատմագրութիւն անցից իւրոց և Նատիր շահին Պարսից, Վաղարշապատ, 1870։

նրա կատարած ուխտագնացությունների, քաղաքական կարևոր դեպքերի, Նադիր շահի ու նրա մերձավորների հետ ունեցած իր հանդիպումների և զրույցների, ինչպես նաև զանազան կենցաղային ու ծիսական երևույթների նկարագրություններ։ Մանրամասն նկարագրված է նաև Մուղանի դաշտում կայացած մեծ կուրուլթայը, որտեղ Նադիրն ընտրվեց Իրանի շահ։ Գրված լինելով ականատեսի և քաղաքական մի շարք կարևոր իրադարձությունների մասնակցի կողմից, Կրետացու աշխատությունը XVIII դարի առաջին երեք տասնամյակների արժեքավոր սկզբնաղբյուր է նաև Մերձավոր Արևելքի պատմության համար։

Զգալի հետաքրքրություն է ներկայացնում Խաչատուր Ջուղայեցու «Պատմութիւն Պարսից»[19], որի էջերում հավաքվել և համակարգվել են Իրանի պատմության վերաբերյալ հայկական պատմագրական հուշարձաններում ամփոփված բոլոր տեղեկությունները։ Գիրքը կազմված է երկու մասից. առաջինում տրված է Կյուրոսից մինչև Քերիմ խան եղած պարսկական թագավորների, ինչպես նաև Նոր Ջուղայի առաջնորդների ժամանակագրությունը և վերջիններիս համառոտ կենսագրությունները, իսկ երկրորդ մասը Քերիմ խանի պատմությունն է, որը Ջուղայեցին գրել է որպես ժամանակակից և ականատես։ Շարադրանքը որոշ չափով ժամանակագրության բնույթ է կրում։ Երբ նյութը շատ է, Խաչատուրը պատմությունն ավելի մանրամասն է շարադրում, իսկ երբեմն ուղղակի թվարկում է թագավորներին ու տարեթվերը։ Սերված լինելով շահ Աբբասի կողմից Սպահան գաղթեցված հայերից, Խաչատուր Ջուղայեցին բազմաթիվ էջեր է նվիրում հայերի բռնագաղթին։ Շատ հետաքրքիր են Նոր Ջուղայի, ինչպես նաև Նոր Ջուղայում հայկական առաջին տպարանի հիմնադիր, նշանավոր Խաչատուր վարդապետի լուսավորական գործունեության մասին հաղորդվող տեղեկությունները։

Խաչատուրի աշխատությունը XVII դարի առաջին կեսին Նոր Ջուղայում եղած աղանդավորական շարժման պատմության հիմնական աղբյուրն է։ Այդ ուսմունքի կողմնակիցները չէին ընդունում Քրիստոսի աստվածային էությունը, ժխտում էին եկեղեցական խորհուրդները, հոգևորականներին համարում էին խաբեբաներ և այլն։

Ջուղայեցու աշխատությանը հատուկ են միջնադարյան պատմագրության շատ ներկայացուցիչների երկերում նկատվող թերությունները։ Շարադրանքի թելը բազմիցս կտրվում է երկարաշունչ դատողություններով, շատ տեղ է հատկացվում դավանաբանական հարցերին, հեղինակի գնահատականները հաճախ տառապում են կողմնակալությամբ։

Հայաստանի եկեղեցական-քաղաքական նշանավոր գործիչ, կաթողիկոս Սիմեոն Երևանցու (կաթողիկոսության տարիներն են 1763—1780) կրոնական, փիլիսոփայական ու պատմագիտական բնույթի բազմաթիվ ստեղծագործությունների շարքում իր ուշագրավ բովանդակությամբ ուրույն տեղ է գրավում «Ջամբռ» աշխատությունը[20]։ Նշանավոր այդ գործիչը շատ ուժ ու եռանդ է դրել էջմիածնի աթոռի քաղաքական դերը, հեղինակությունն ու նյութական բարեկեցությունը ամրապնդելու գործում, և իր աշխատությունն էլ հենց գրել

---

19 Խաչատուր արեղայի Ջուղայեցւոյ Պատմութիւն Պարսից, աշխատասիրութեամբ Բաբկէն վարդապետի Աղաւնեանց, Վաղարշապատ, 1905։

20 Սիմեոն կաթողիկոս Երևանցի, Ջամբռ, Վաղարշապատ, 1873։

է այդ նպատակով։ Առաջին տասներկու գլուխները՝ Հայոց եկեղեցու պատմությունն է, գրված էջմիածնի աթոռի առաջնության ու իրավունքների հաստատման միտումով, երկրորդ մասում տրվում է էջմիածնի տիրույթների ու ընդհանրապես ամբողջ ունեցվածքի ցուցակը՝ նրա տնտեսական յուրօրինակ պատմությունը (գլ. 13—19) և, վերջապես, վերջին հինգ գլուխներում բերվում է պարսկերեն ու թուրքերեն այն հրովարտակների համառոտ բովանդակությունը, որոնք պահվում էին էջմիածնի վանքի դիվանում։ Անշարժ կալվածքների առուծախի, եկեղեցական տնտեսությունների, վարձկան մշակների և այլ բազմաթիվ երևույթների մասին «Ջամբռ»-ի մեջ գրանցված տեղեկությունները մեծ արժեք են ներկայացնում Հայաստանի տնտեսական կյանքի պատմության համար։ Այդ իմաստով Սիմեոն Երևանցու աշխատությունը հայ պատմագրության կարևորագույն հուշարձաններից է։

Կղերա-ֆեոդալական պատմագրության ամենացայտուն ներկայացուցիչը Վենետիկի Մխիթարյան միաբանության անդամ Միքայել Չամչյանն է։ Բազմավաստակ այդ գիտնականը ի շարս այլ աշխատությունների, գրել է եռահատոր «Պատմություն Հայոցը», որը լույս է տեսել XVIII դարի 80-ական թվականներին և մեծ դեր է կատարել հայկական պատմագիտության հետագա զարգացման գործում։

Այստեղ առաջին անգամ ամփոփված է Հայաստանի ամբողջական պատմությունը։ Հեղինակն օգտագործել է բազմաթիվ աղբյուրներ՝ ձեռագրեր, հիշատակարաններ, դիվանական վավերագրեր, հունական, լատինական, արաբական սկզբնաղբյուրներ, եվրոպական գիտնականների աշխատություններ և այլն։

Չամչյանը գրքի առաջաբանում բացատրում է իր «Հայոց պատմության» գրության շարժառիթները. «Ու ամենեսին ցանկալի է ծանօթութիւն սկզբնաւորութեան իւրեանց ազգի և տեղեկութիւն անցից անցելոց ի նմին»։ Այդ աշխատությունը արգասիքն է հարազատ ժողովրդի պատմական անցյալի նկատմամբ ունեցած այն մեծ հետաքրքրության, որը հետևանք էր հայ ժողովրդի ազգային ինքնագիտակցության զարթոնքի՝ XVII և մանավանդ XVIII դարերում։

Առաջաբանում նշված են նաև այն դժվարությունները, որոնց հանդիպել է հեղինակն իր գործը ձեռնարկելիս։ Դրանք են՝ պատմիչների երկերում հանդիպող հակասական տեղեկությունները, ժամանակագրության և սկզբնաղբյուրների մատնանշման բացակայությունը, գրչական աղճատումները, ընդմիջարկությունններ և այլն։ Հեղինակը կետ առ կետ հիշատակել է իր հետազոտական աշխատանքի հիմնական փուլերը.

1. Բնագրական աղճատումների սրբագրություն՝ զանազան ձեռագրերի համեմատության հիման վրա։

2. Իրական փաստերի բացահայտում՝ մատենագրական հուշարձաններում առկա հակասությունների վերլուծության ճանապարհով։

3. Բնագրերի մեջ ներմուծված պատահական կամ գիտակցված ընդմիջարկությունների զտում։

4. Հայ պատմիչների երկերից բացակայող տեղեկությունների լրացում՝ այլալեզու սկզբնաղբյուրների, հիշատակարանների և այլ օժանդակ նյութերի հիման վրա։

5. Հայ ժողովրդի պատմության համադրում այլ ժողովուրդների, հատկապես պարսիկների, հույների և հռոմեացիների պատմության հետ։

6. Հայաստանի պատմության ճշգրիտ ժամանակագրության սահմանում՝ հիմք ընդունելով գլխավորապես զանազան աշխարհակալների գահակալության տարիները, տիեզերական ժողովների տարեթվերը և այնպիսի նշանավոր պատմական գործիչների օրոք տեղի ունեցած իրադարձությունները, ինչպիսիք են Կյուրոսը, Դարեհը, Ալեքսանդր Մակեդոնացին և ուրիշներ։ «Զսոցա ժամանակս իբր չափ և կանոն ունելով մեր առաջի, ընդ սոսին համեմատեցաք զընթացս պատմութեան մերոյ իբրև ընդ փորձաքարս»։

Այսպիսով, Չամչյանի հետազոտական աշխատանքի բնորոշ գծերն են՝ սկզբնաղբյուրների քննական մշակումը և տվյալների գիտական վերլուծությունը։ Հենց սրանով էլ նա դրել է Հայաստանի պատմության համեմատաբար ստույգ ժամանակագրության հիմնաքարը։

Առաջաբանին հաջորդում է հայ և օտար աղբյուրների տեսությունը, ըստ որում հիշատակվում են ոչ միայն մեզ հասած, այլև մասամբ անհետ կորած, սկզբնաղբյուրներ։

Չամչյանի եռահատոր աշխատության յուրաքանչյուր հատորը բաղկացած է երկու գրքից (ընդամենը վեց գիրք), որոնք նվիրված են հայոց պատմության հետևյալ շրջաններին. 1. Հայաստանի պատմության հնագույն շրջան, 2. Արշակունյաց թագավորություն, 3. Պարսիկ մարզպաններ, արաբական ոստիկաններ և հայ նախարարներ, 4. Բագրատունիների թագավորություն, 5. Կիլիկյան հայկական պետականություն, 6. «Անիշխանության» շրջան, «յորում կային և կան ազգ մեր յանիշխանութեան»։

Գրքերից ամեն մեկին կցված են ուսումնասիրության հավասար ծավալ ունեցող ընդարձակ մեկնաբանություններ, որոնց մեջ ներկայացված են զանազան մատենագիրների ցուցումներ և այլևայլ գիտնականների կարծիքներ։ Այս բաժնում Չամչյանը մանրամասն լուսաբանում է այս կամ այն հարցի կապակցությամբ իր հայեցակետը։

Մենագրության լուսանցքներում նշված են պատմական իրադարձությունների թվականները և այն աղբյուրները, որոնց հիման վրա շարադրված է տվյալ բաժինը։

Վերոհիշյալ անուրանալի արժանիքներին զուգընթաց, Չամչյանի գրքում նկատվում են շատ որոշակի հակումներ։ Որպես կաթոլիկ հոգևորականության տիպիկ ներկայացուցիչ, նա Հայաստանի պատմությունը դիտում է, առաջին հերթին, որպես եկեղեցու պատմություն, ձգտելով ապացուցել, որ հայերը միշտ հակված են եղել դեպի կաթոլիկությունը։ Հենց այս դիրքերից էլ նա գնահատում է պատմական իրադարձություններն ու նշանավոր գործիչներին։ Ի նպաստ իր՝ Հայաստանի մասին որպես ամբողջ մարդկության օրրանի ունեցած պատկերացումների, նա անտեսում է հին դասական պատմագիրների վկայությունները, բավարար քննադատական մոտեցում հանդես չի բերում միջնադարյան սկզբնաղբյուրների նկատմամբ։ Նրա գրքում զգալի տեղ են գրավում նահապետների այնպիսի վարքագրություններ, որոնց մենք հանդիպում ենք միջնադարյան աշխատությունների մեջ։

Գաղափարական տեսակետից հանդիսանալով միջնադարյան պատմագիտական մտքի արդյունք, Չամչյանի «Պատմություն Հայոցը» առաջին աշխատությունն է, որում բազմաթիվ սկզբնաղբյուրների մշակման ու համեմատու-

թյան հիման վրա առաջին անգամ տրված է Հայաստանի ամբողջական պատմությունը և համեմատաբար ստույգ ժամանակագրությունը։ Այս տեսակետից սույն աշխատությունը կանգնած է գիտական նոր պատմագրության շեմին։ Ներկայումս էլ Չամչյանի «Պատմությունը» պահպանում է Հայաստանի պատմության կարևոր սկզբնաղբյուրի նշանակությունը։

Իր ժամանակի համար առաջադիմական գաղափարներ էր արտահայտում հայկական աշխարհիկ պատմագրությունը, որը սերտորեն կապված էր XVIII դարում զարգացող հայ ժողովրդի ազատագրական շարժման հետ։

Դավիթ-Բեկի գլխավորությամբ 1722—1730 թթ. Սյունիքում ծավալված ազատագրական կռիվների պատմությունը, կռիվներին մասնակից Ստեփանոս Շահումյանի և այլոց բանավոր հուշերի հիման վրա շարադրել է Վենետիկի Մխիթարյան միաբան Ղուկաս Սեբաստացին[21]։

Փոքրածավալ այս պատմությունը սկսվում է լեզգիների ասպատակության հետևանքով Ղափանի բնակչությանը հասած աղետների նկարագրությամբ, իսկ այնուհետև հեղինակը մանրամասն պատմում է Դավիթ-Բեկի այնտեղ ժամանելու, նրա կողմից ապստամբական ջոկատներ կազմակերպելու, Դավիթ-Բեկի գործակիցների և Ղափանի ազատագրության համար նրանց մղած պայքարի մասին։

Մխիթարյան վանականը պատմական անցուդարձերը գնահատել է կրոնական հայեցակետից և դրսևորել պատմական երևույթների մեկնաբանման ճակատագրապաշտական մոտեցում։ Նա համոզված է, որ պատերազմի բախտը չի որոշվում ոչ կռվողների քանակով և ոչ էլ ռազմավարական հմտությամբ, այլ ասված է միայն, որ հաղթանակ է պարգևում ում որ կամենում է։ Այս և այլ կարգի թերություններով հանդերձ Դավիթ-Բեկի պատմությունը առ այսօր մնում է Ղափանի ազատագրական կռիվների մասին ընդարձակ տեղեկություններ պարունակող միակ սկզբնաղբյուրը։

Ազատագրական շարժման պատմության համար բացառիկ արժեք պետք է ներկայացներ այդ շարժման նվիրյալ գործիչներից մեկի՝ Գանձասարի կաթողիկոս Եսայի Հասան-Ջալալյանի «Պատմությունը», որից պահպանվել է միայն մի բաժին՝ Պարսկաստանի պատմության համառոտ ակնարկը[22]։ Այստեղ հատկապես կարևոր են հարկային ծանր քաղաքականությունը բացահայտող ճշգրիտ ու պատկերավոր տվյալները։

Այս ժամանակաշրջանի պատմագրության ամենահետաքրքիր հուշարձաններից մեկն էլ Պետրոս դի Սարգիս Գիլանենցի[23] «Օրագիրն» է։ Պետրոս Գիլանենցը վաճառական էր, որը, թողնելով առևտրական ասպարեզը, ամբողջությամբ նվիրվել էր հայ ժողովրդի ազատագրական պայքարին։ Իր միջոցներով հեծյալ ջոկատ կազմակերպելով, նա ծառայության է մտնում Կասպից ծովի հարավային ափերը գրաված ռուսական զորքերի շարքերում։ Դեպի Պարսկաստան աֆղանների կատարած արշավանքի ժամանակ Պետրոս Գիլանենցը գտնվում էր Ռեշտում, որտեղ ռուսական ռազմական հրամանատարության

21 Ընտիր պատմութիւն Դաւիթ Բէգին և պատերազմաց հայոցն Խափանու, Վաղարշապատ, 1871։

22 Հասան-Ջալալյան Եսայի, Պատմութիւն կամ յիշատակ ինչ-ինչ անցից դիպելոց յաշխարհին Աղուանից, Շուշի, 1839։

23 Պետրոս դի Սարգիս Գիլանենց, Ժամանակագրութիւն Ջուղայեցւոց բարբառով գրած, «Կռունկ Հայոց աշխարհին», 1863, փետրվար և մարտ։

համար կարևոր տեղեկություններ էր հավաքում, մանրազնին վերլուծում էր դրանք և հետո ծավալուն նամակների ձևով ուղարկում Գիլանի կառավարիչ Լևաշովին։ Այդ զեկուցագրերն էլ հենց, որոնք ներկայացնում են 133 առանձին հոդված, կազմում են Գիլանենցի «Օրագիրը»։ Նրա համար որպես տեղեկությունների աղբյուր ծառայում էին բազմաթիվ, մեծ մասամբ հայ, վաճառականները, որոնք Ռեշտ էին գալիս Իրանի ու Թուրքիայի տարբեր մասերից։ Դրա շնորհիվ Գիլանենցի երկամյա (1722—23) օր-օրի կազմած օրագիրը տալիս է այն ամենի պատկերը, ինչ որ տեղի էր ունենում այդ երկրներում։ «Օրագրում» ոչ միայն մանրամասն նկարագրված են աֆղանների արշավանքները, Նոր Ջուղայի ավերումը, սուլթան Մահմուդի մուտքը Սպահան, այլև տրվում են կենցաղային բնույթի մի շարք մանրամասնություններ՝ պարենամթերքի գները Սպահանի պաշարումից առաջ և հետո, Ջուղայում աֆղանների թալանած հարստությունների արժեքը և այլն։

«Օրագրում» արտացոլվել է հայ ժողովրդի անսահման հավատը Ռուսաստանի օգնությամբ պարսկա-թուրքական լծից ազատագրվելու հնարավորության վերաբերյալ։

Թուրք նվաճողների դեմ Երևանի բնակչության պայքարի նկարագիրն է նույն ժամանակաշրջանի քաղաքական պատմությանը նվիրված Աբրահամ Երևանցու «Պատմություն պատերազմաց» խորագիրը կրող գիրքը[24]։ Հեղինակի մասին գիտենք միայն, որ նա Երևանի բնակիչ է եղել և, դատելով իր գրվածքից կրթված ու ռազմական գործից հասկացող աշխարհիկ անձնավորություն։ Սկսելով աֆղանների կողմից Սպահանը գրավվելուց հետո Իրանում ծայր առած անիշխանության նկարագրությունից, Երևանցին անցնում է հայ-թուրքական, թուրք-վրացական, աֆղանա-իրանական և հատկապես իրանա-թուրքական հարաբերությունների ու պատերազմների մանրամասն նկարագրությանը։ Հատկապես ուշագրավ են այն էջերը, ուր պատմում է, թե ինչպես էին Կարբիի ու Երևանի հայերը պատրաստվում դիմադրելու օսմանյան զորքերին, ինչպես էին տեղի ունենում հայերի ղեկավարների խորհրդակցությունները, թվարկում է նրանց անունները, նկարագրում այն համառ, հերոսական դիմադրությունը, որ ցույց տվեցին հայերը օսմանցիների գերազանց ուժերին, որոնք պաշարել էին Երևանը։ Դա ականատեսի և դեպքերի անմիջական մասնակցի պատմություն է։ Զգալի հետաքրքրություն են ներկայացնում պատերազմող բանակների տեխնիկայի, ինչպես նաև Թահմազկուլի խանի քաղաքական ու ռազմական գործողությունների մասին նրա հայտնած ուշագրավ տեղեկությունները։ Թուրքերի դեմ Արփաչայի հովտում Թահմազկուլի խանի տված ճակատամարտի նկարագրությունը պատկանում է Աբրահամ Երևանցու գրքի ամենավառ էջերի թվին։

XVIII դարի հայկական աշխարհիկ պատմագրության ամենանշանավոր աշխատություններից են հայկական ազատագրական շարժման աչքի ընկնող գործիչներից մեկի, իր ժամանակակիցների վրա զգալի ազդեցություն գործած Հովսեփ Էմինի հուշերը, շարադրված անգլերեն լեզվով[25]։

Երեմիա Չելեբիի «Օրագրի» նման, Հովսեփ Էմինի հուշագրությունները

---

[24] Աբրահամ Երևանցի, Պատմութիւն պատերազմաց (1721—1736 թթ.), Երևան, 1938։

[25] The Life and Adventures of Joseph Emin, an Armenian, written in English by himself, London, 1792, տե՛ս նաև՝ *А. Р. Иоаннисян*, Иосиф Эмин, Ереван, 1945.

դուրս են գալիս անձնական կյանքի նկարագրության սահմաններից։ Ամբողջությամբ նվիրվելով հայ ժողովրդի ազատագրության գործին, Էմինը եռուն գործունեությամբ, բուռն դեպքերով ու նշանավոր մարդկանց հետ հանդիպումներով լի կյանք է ապրել։ Լինելով դրական մեծ տաղանդի տեր, Էմինը ավելի է ղանալ իրադարձությունների փայլուն նկարագրությունը, իր կյանքի ընթացքում հանդիպած մարդկանց պատկերավոր բնութագրերը, նրա նկարագրած դեպքերից շատերը առաջին հայացքից թվում են չափազանցված, նույնիսկ անհավանական, սակայն մի շարք փաստաթղթեր ու ժամանակակիցների վկայությունններ հաստատում են նրա ճշմարտացիությունը։

Էմինի կենսագրությունը ոչ միայն հայ ժողովրդի ազգային-ազատագրական շարժման պատմությունն է, այլև XVIII դարի կեսերի Անդրկովկասի, Հյուսիսային Կովկասի ու Իրանի պատմության, կյանքի ու կենցաղի ուսումնասիրության առաջնակարգ մի սկզբնաղբյուր։

Պարսկա-Թուրքական դարավոր լծից հայ ժողովրդի ազատագրության գաղափարներն իրենց վառ արտահայտությունն են գտել նաև Արևելյան Հայաստանի սահմաններից դուրս՝ Հնդկաստանի ու Եվրոպայի հայկական գաղթավայրերում։

Հենց այդ գաղափարներն են XVIII դարի 70-ական թվականներին Մադրասում բնակություն հաստատած մեծահարուստ վաճառական Շահամիր Շահամիրյանի կազմակերպած խմբակի գործունեության հիմքը։

Խմբակի անդամները դիմեցին այդ ազատագրական գաղափարների տարածման առավել ազդու զենքին՝ մամուլին։ Խմբակի ղեկավարի որդու՝ Հակոբ Շահամիրյանի անունով Մադրասում տպարան բացվեց։ 1773 թ. տպարանը լույս ընծայեց Հակոբ Շահամիրյանի և նրա դաստիարակ, մադրասյան խմբակի եռանդուն գործիչ Մովսես Բաղրամյանի «Նոր տետրակ, որ կոչի յորդորակ» գիրքը[26], որի նպատակն էր հայ ժողովրդին, հատկապես երիտասարդությանը, մղել հայրենիքի ազատագրության գործուն պայքարի։ Հին պատմագիրների մի շարք ստեղծագործությունների հիման վրա «Յորդորակի» մեջ շարադրված է Հայաստանի պատմությունը՝ սկսած «ջրհեղեղից» մինչև դարի վերջին տասնամյակները։ Հատուկ շեշտ է գրված հայ ժողովրդի անցյալի հերոսական էջերի վրա։ Հայ ժողովրդի ստրկական վիճակի ու ճնշումների պատկերը այստեղ զուգորդված է Ղարաբաղի ազգային-ազատագրական պայքարի նկարագրությամբ։ Այս գիրքը ժողովրդի առաջավոր մարդկանց առջև խնդիր էր դնում պայքարել տգիտության դեմ, հայ ժողովրդի մեջ լուսավորություն տարածել, արթնացնել նրա ազգային ինքնագիտակցությունը։

XIX դարի շեմին հայ պատմագրությունը հանդես եկավ որպես գիտական մտքի և առհասարակ հոգևոր մշակույթի ամենահարուստ ճյուղերից մեկը։ Պատմագրության կղերա-ֆեոդալական ուղղության պսակը, նրա զարգացման գագաթնակետն հանդիսացող Միքայել Չամչյանի «Հայոց պատմությունը» գտնվում էր եվրոպական գիտության մակարդակի վրա, իսկ աշխարհիկ ուղղության պատմագիրները թեև զիջում էին նրան իրենց գիտական պաշարով ու գրական արժանիքներով, սակայն արդեն նոր ձևով էին իմաստավորում հայ

[26] «Նոր տետրակ, որ կոչի Յորդորակ», Մադրաս, 1772։

ժողովրդի պատմությունն ու մշակույթը, ներկայացնելով այն ազգային-ազատագրական շարժման շահերի տեսակետից։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

XIV—XVIII դարերի հայ գրականությունը որպես տվյալ ժամանակամիջոցի պատմա-քաղաքական և սոցիալ-տնտեսական իրադարձությունների գեղարվեստական արտացոլք, բավականին բարդ ու ինքնատիպ տեսք ունի։ Այդ դարերում նախորդ՝ զարգացած ֆեոդալիզմի ժամանակաշրջանի գեղարվեստական արժեքները գտնվում էին շրջանառության մեջ և յուրովի ծառայում նոր ժամանակներին։ Ավելին, դասական հեղինակների լավագույն երկերն այժմ ավելի շատ էին ընդօրինակվում ու տարածվում, քան իրենց ժամանակին։ Այդ են վկայում մեզ հասած ձեռագրերը և գրչական կենտրոնների գործունեությանը վերաբերող տվյալները։ Պատկերն ավելի հստակ կլինի, եթե հաշվի առնենք նաև տպագրության գյուտը և հայ տպարանների եռանդուն գործունեությունը, որն սկսվում է հենց մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում։ Հայ տպարաններից դուրս եկած գեղարվեստական գրականության հիմնական արտադրանքը պատկանում էր անցյալի ժառանգությանը։ Հաճախ գրիչները, երգիչները, ասացողները, հրատարակողները փոփոխում, վերախմբագրում էին առակների, երգերի, հանելուկների հին նմուշները և նրանց շարքերը լրացնում նորանոր միավորներով։ Անցյալի ժառանգությունը ծառայում էր նոր ժամանակներին նաև նոր ու ժամանակակից մեկնաբանություններ գրելու ճանապարհով։

Քննվող ժամանակաշրջանում նկատվում է նաև գրականության աշխարհականացման պրոցեսի հետագա խորացում։ Գրական ստեղծագործությունը ավելի քան երբևէ մոտենում է ժողովրդին, դառնում ավելի լայն զանգվածների սեփականություն, առիթ տալով, որ գրիչ վերցնեն նաև կրթական համեստ պաշար, բայց բնական շնորհք ու բանաստեղծական կարողություն ունեցող անձինք։

XIV—XVIII դարերի գեղարվեստական գրականության մասին ավելի հստակ պատկերացում կազմելու համար անհրաժեշտ է ամփոփ գծերով ներկայացնել չափածո և արձակ այն ժողովածուները, որոնք ստեղծվել էին այս շրջանում, կամ ավելի հին լինելով՝ շարունակում էին հոգևոր սնունդ տալ այս ժամանակաշրջանի մարդկանց։

Հոգևոր չափածոյի բնագավառում նորից իշխում էին Շարակնոց կոչվող ժողովածուները, որոնք, կանոնիկ կերպարանք ընդունած լինելով, համարյա չէին զարգանում, չնայած տարածվում էին ավելի մեծ չափերով։ Շարականների ժողովածուների կողքին X դարից սկսած երևան են գալիս Գանձարան ժողովածուներն իրենց գանձերով, տաղերով, մեղեդիներով։ Դրանք X դարի երկրորդ կեսից ապրում են զարգացման բուռն շրջան։ Անհանգ ու ազատ բանաստեղծությամբ շարադրված գանձերի կողքին երևան են գալիս հանգերով և հատուկ տաղաչափությամբ ստեղծված գանձերը, որոնց մեջ զգալի տեղ են գտնում եկեղեցական ու քաղաքական պատմության հետ կապված հարցեր։ Համապատասխան զարգացում են ապրում գանձարանային տաղերն ու մեղեդիները, որոնցից անբաժան էր երաժշտությունը։

Շարակնոցներից ու Գանձարաններից ավելի XIV—XVIII դարերի համար բնութագրական են Տաղարան կոչված ժողովածուները, որոնք դեռևս նախորդ շրջանում ունեին իրենց անդրանիկ դրսևորումները։ Շնորհունակ պատվիրատուներից շատերը իրենց ճաշակի համաձայն ընտրություն էին կատարում տարբեր հեղինակների տարբեր բնույթի բանաստեղծություններից և ստեղծում մի նոր տաղարան-ժողովածու, որոնք ավելի մեծ ընդունելության էին արժանանում և՛ որպես երգարան, և՛ որպես ընթերցարան։ Հայ տպագրության երախայրիքների շարքում իր արժանի տեղն է գրավում Հակոբ Մեղապարտի կազմած «Տաղարան է սայ հոգոյ և մարմնոյ» խորագիրը կրող ուշագրավ ժողովածուն։ Նման ժողովածուները հոգևոր երգերի և որոշ շարականների հետ միասին, նույն կազմի մեջ բովանդակում էին սիրո, բնության, հայրենասիրության, վարք-վկայաբանության, բնական աղետների (սով, երկրաշարժ և այլն), կենցաղային մանրուքների, ծիսական արարողությունների, զավեշտաժամանցի և նման այլ հարցերի վերաբերող բազմաձև ու բազմապիսի ստեղծագործություններ։

Այս տաղարանների արժեքներից մեկն էլ այն էր, որ դրանց էջերը աստիճանաբար տրամադրվում էին ժողովրդական երգերին և առհասարակ ժողովրդա-գուսանական բանահյուսության արտադրանքներին։ Ըստ այդմ, այժմ ավելի, քան նախորդ ժամանակներում նկատելի է դառնում ժողովրդական բառ ու բանից օգտվելու, ժողովրդական մոտիվներով գրելու, մշակումներ կատարելու սովորությունը։ Առաջ է գալիս բոլորովին աշխարհիկ տաղարան-ժողովածու ստեղծելու անհրաժեշտություն։ «Տաղարան» կոչվող ժողովածուներում կենտրոնական տեղ են գրավում սիրո երգերը՝ ծավալով ու չափով տարատեսակ գողտրիկ ստեղծագործություններ։ Բացի դրանից, սիրո բանաստեղծությունների մեջ ձևավորվում են այլաբանական երգեր, որոնք դրամատիկական որոշակի շարադրանքի և ընդարձակ ծավալի շնորհիվ հաճախ մոտենում են ուրույն գրատեսակի։ Այս երգերի խմբում յուրովի առանձնանում են «Տաղ սիրոյ և գարնան» կոչվածները, ուր հատուկ տեղ է տրվում բնության զարթոնքին և գարնանային տեսարանների գովերգությանը։ Հաճախ դրանց գումարվում են խնջույքային տրամադրություն ունեցող հավելումներ՝ ստեղծելով «Տաղ սիրոյ, գարնան և ուրախութեան» և այլն։ Հետամուտ լինելով այս ընթացքին, տեսնում ենք, որ բանաստեղծը հաճախ տալիս է միայն բնության ու գարնան երգեր, իսկ հաճախ էլ՝ սոսկ ուրախության ու խնջույքի։ Հոգևոր նպատակներ հետապնդող բանաստեղծներն էլ այս ամենը, փոքրիկ շեղումով ու ծանոթագրությամբ, օգտագործում են իրենց նպատակների համար՝ ստեղծելով հաճախ երկիմաստ երգեր, որոնց մեջ սերը, գարունը և ուրախությունը դիտվում են հոգևոր առումով։

Երգերի այս խումբն, իհարկե, սկսվել էր նախորդ շրջանից, սակայն ավելի հստակվեց, զարգացավ և բազմացավ XIV—XVIII դարերում։

Բանաստեղծությունների մեկ այլ խումբ են կազմում երգիծական բովանդակություն ունեցողները։ Այստեղ կարելի է հանդիպել սոսկ զավեշտական նմուշների, ուր նյութ են դարձել «հարիսա» ճաշը, գինին, ծխախոտը և այլն։ Հաճախ զավեշտի առարկա են դարձել լուն ու խայտոջիլը, էշը, դանակն ու ցավող ակռաները։ Տաղեր են նվիրվել նաև հարբածների, ագահների, կենցաղային այլ մանրուքների ծաղրմանը։ Նման բանաստեղծությունների կողքին շուտով հայտնվում են հասարակական չարիքների, կենցաղային այլանդակու-

թյունների դեմ ուղղված ուժեղ սարկազմի նմուշներ։ Այս ստեղծագործությունների խմբում կարող են դասվել նաև չափածո առակներ՝ այլաբանական մոտիվներով, որոնք նույնպես տոգորված են հասարակական բովանդակությամբ։ Սրանց այս խմբի համար էլ որոշ նախադրյալներ կարելի է գտնել անցյալի գրողների մոտ, սակայն նրա իսկական ձևավորումն ու զարգացումը ընկած է XIV—XVIII դարերի սահմաններում։

Տաղարաններում հանդիպող բանաստեղծությունների մեջ ուրույն խումբ են կազմում վիճաբանական բնույթի ստեղծագործությունները, որոնք հիմնականում գաղափարական պայքարի արտահայտություններ են։ Դեռ Հովհաննես Սարկավագն էր տվել նման ստեղծագործության առաջին փայլուն օրինակը։ Հաջորդ նմուշը պատկանում է XIV դարի առաջին կեսի բանաստեղծ Տերտեր Գրիչ Երևանցուն։ Դրանից հետո, մեր հետաքրքրող ժամանակահատվածում, երևան են գալիս ժողովրդական բանահյուսության գանձարանից փոխ առնված և հայտնի ու անհայտ երգիչների ձեռքով մշակված նորանոր վիճաբանություններ՝ նվիրված հոգու և մարմնի, երկնքի և երկրի, Գաբրիել հրեշտակի և այգեգործի հակամարտություններին։ Բնորոշն այս բոլորի համար հոգևոր և աշխարհիկ գաղափարների հակասությունների դրսևորումն է, ուր ի վերջո ցույց է տրվում կամ նրանց միասնությունը, հավասարազորությունը, կամ էլ աշխարհիկ գաղափարների հաղթանակը։

Տաղարաններում մեծ տեղ էր հատկացվում բանաստեղծությունների մեկ այլ խմբի, որին պատշաճում է «Ողբ» անունը։ Դրանք հիմնականում քաղաքական-հայրենասիրական ստեղծագործություններ են՝ կապված այս կամ այն ասպատակության, աղետի ու դժբախտության հետ։ Այստեղ նկարագրվում են կոտորածներ, տեղահանություններ, գերեվարություններ, մանկահավաքի սրտաճմլիկ տեսարաններ, բնակավայրերի հրկիզումներ, ավերածություններ և այլ դժնդակ իրողություններ։ Կան ողբեր էլ, որոնց նյութը վերաբերում է առանձին անձանց տխուր ճակատագրին։ Ողբեր էլ կան, որոնք նկարագրում են գաղթած հայերի դեմ օտարների կազմակերպած կրոնական և այլ հալածանքները՝ նոր բնակավայրերում։

Այս խմբի ստեղծագործություններին են մոտենում վկայաբանական ողբերը՝ նվիրված հայրենի երկրում կամ օտար ափերում հանուն հայրենի դավանանքի ընկած այս կամ այն աննկուն նահատակի հիշատակին։ Դրանք սովորաբար զուգորդվում են արձակ պատմություններով, որոնք մեծ մասամբ պատկանում են ժամանակի գեղարվեստական արձակին։

Քննվող բանաստեղծություններին հարազատ են ողբերի այն տեսակները, որոնք վերաբերում են բնական մահով կամ պատահական դիպվածով, երբեմն էլ կենցաղային ու անձնական հաշիվների պատճառով մեռած ու սպանված հերոսական գործիչների, հարազատների, որդիների հիշատակին։ Նույնը կարելի է ասել նաև մահտարաժամից, երկրաշարժից, սովից և այլ նման պատճառներից զանգվածաբար մեռածներին և ավերված շեներին ու քաղաքներին հատկացված ողբերի մասին։

Քիչ չեն նաև առհասարակ մեռածներին նվիրված ընդհանուր բնույթի ողբերը, որոնք հատուկ տեղ ունեն «Մաշտոց» կոչվող ժողովածուներում՝ սովորաբար «Ողբ ննջեցելոց» խորագրի տակ։

Այս ստեղծագործությունների ծնունդը նույնպես ընկած է նախորդ ժամանակների սահմաններում, սակայն դրանք զանգվածային բնույթ ստացան,

ստորաբաժանումների ենթարկվեցին և գրականության մեջ հատուկ որակ ու բնույթ կայմեցին XIV—XVIII դարերի հայ իրականության մեջ՝ թե՛ մայր հայրենիքում և թե՛ բոլոր գաղթավայրերում։

XIV—XVIII դարերի տաղարաններում առանձին տեղ ունեն այն բանաստեղծությունները, որոնք նվիրված են հայրենիքի գաղափարին։ Դրանց մի մասը կարոտի երգ է, ուր բացորոշ հիշատակվում են հայրենիքն ու հարազատները։ Այդպիսիներից են, օրինակ, կռունկին ուղղված և պանդուխտին («ղարիպ») նվիրված գողտրիկ բանաստեղծությունները։ Կան համապատասխան այնպիսի ստեղծագործություններ էլ, որոնց մեջ հայրենիքի գաղափարը քողարկվում է այլաբանորեն։ Բանաստեղծն իրեն պատկերում է սոխակի կերպարանքով և խոսքն ուղղում իր կարոտած «վարդ»—հայրենիքին։ Այլաբանական այս մոտիվներն առանձին որակ ստացան XVI—XVIII դարերում և կատարելության հասան Պաղտասար դպրի ու Պետրոս Ղափանցու գրչի տակ։ Կան նաև այլ կարգի հայրենասիրական բանաստեղծություններ։

Երգերի այս խումբը մեծ հարազատություն ունի մի կողմից սիրո և բնության երգերի հետ, իսկ մյուս կողմից՝ ողբերի, որովհետև դրանց մեջ նույնպես զգալի տեղ է գրավում հայրենասիրությունը, հայրենիքի կարոտը, ինչպես նաև ողբացյալ հայրենիքի ազատագրության երազանքն ու հույսը։

Տաղարանները հարուստ են նաև բազմաթիվ այլ բանաստեղծություններով, որոնք նվիրված են կենցաղային զանազան հարցերի, ունեն գիտական (տիեզերագիտություն, տոմար, պատմություն, աշխարհագրություն և այլն) բնույթ, հանդիսանում են մնացուկներ հին պատկերացումների, տաղաչափում են զանազան խրթնաբանություններ և յուրովի ընդլայնում չափածո խոսքի սահմանները։ Դրանց մի մասն ունի ուսուցողական նպատակ և կապված է ժամանակի դպրոցների ու դասընթացների հետ։

Ուրույն խումբ են կազմում հոգևոր բանաստեղծությունները։ Սկիզբ առնելով վաղ ժամանակներից, XIV—XVIII դարերում այս ստեղծագործությունները շարունակում են զարգանալ և հին նմուշների հետ միասին բավարարել հավատացյալ սերունդների հոգևոր պահանջները։ Նախկին երկար ու միահանգ բանաստեղծությանն այժմ հետևում են ամփոփ ու ավարտուն ձևերը՝ օժտված բազմահանգությամբ և արվեստի այլ առանձնահատկություններով։ Այլաբանական մտածողությունը թափանցում է նաև այս երգերի մեջ, որպեսզի ավելի հմայիչ ու սիրելի դարձնի գովերգության առարկան։

Ընդհանուր առմամբ, սակայն, հոգևոր բանաստեղծությունը նախորդ ժամանակների և իր ժամանակի աշխարհիկ մոտիվների համեմատությամբ զգալի զարգացման չի հասնում։ Միայն առանձին անհատների գրչի տակ է, որ այն, որոշ տեղաշարժ ապրելով, ձգտում է արծարծել խոհա-խրատական դատողություններ և արձագանքել ժամանակի պահանջներին։

Տաղարանների մեջ թերևս ամենից ուշագրավ տեղը գրավում են հայրենները՝ իրենց գողտրիկ շարքերով։ Ճիշտ է, սրանք գալիս են նախորդ շրջանից, ինչպես նաև ժողովրդա-գուսանական բանահյուսության անսպառ շտեմարանից, բայց XIV—XVIII դարերի գրական աշխարհում շարունակում են խաղալ վիթխարի դեր։

Գտնվելով երբեք չթուլացող հետաքրքրության ոլորտում, հին հայրենները նոր ժամանակներում ապրում են մշտանորոգ կյանքով, մի կողմից տալով նորանոր տարբերակներ, իսկ մյուս կողմից առիթ հանդիսանում նորաստեղծ

շարքերի։ Բանաստեղծները XIV—XVI դարերում նույնպես շարունակում են հետևել Գրիգոր Նարեկացուց սկսվող սովորությանը և հորինել հայրենների առանձնահատկություններով օժտված տարբեր բանաստեղծություններ։

Ուշագրավ է նաև կաֆա կոչվող երգերի հարստացումը՝ ինչպես գեղարվեստական արձակի էջերում, այնպես էլ առանձին շարքերով։ Աչքի են ընկնում հատկապես Գրիգորիս Աղթամարցին, Զաքարիա Գնունեցին, Հովասափ Սեբաստացին և ուրիշներ։ Այդ կաֆաների շնորհիվ Աղեքսանդր Մակեդոնացու, Պղնձե քաղաքի թարգմանական պատմությունները նոր բույր ու երանգ են ստանում և է՛լ ավելի սերտորեն կապվում XIV—XVIII դարերի հայ իրականության հետ։

XVI—XVII դարերում հայ բանաստեղծության մեջ առաջ է գալիս բանաստեղծության ու երգի մի նոր տեսակ, որը հայտնի է «աշուղական» անունով։ Դա ընդհանուր արևելյան համարված մի քնարերգություն էր՝ իրեն հատուկ գրելաձևերով, ոճով և այլ առանձնահատկություններով, որի այս ձևի ստեղծագործությունների նախանշանները չնայած կային մեր հին բանաստեղծության մեջ, սակայն նրանք զարգանալ սկսեցին XVI—XVII դարերից։ Աշուղական կոչված գրական տեսակները, հայ երգիչների կողմից զարգացվելով, դարձան ժամանակի հայ գրականության բաղկացուցիչ մասերը։ Այդպիսի ստեղծագործություններ հորինում էին հիմնականում ժողովրդական զանգվածներին մոտ կանգնած, երգելու և նվագելու շնորհքով օժտված անհատները։ Անկախ իրենց ձևի արևելյան ծագումից, աշուղական երգերը հայ բանաստեղծ-երգիչների ձեռքին դարձան հայ ժողովրդի քաղաքական վիճակն ու երազանքները, ազատագրական տենչերն ու մտորումները դրսևորելու նոր միջոցներ։ Նրանք մեծ դեր խաղացին հատկապես սիրո թեմայի մշակման և կենցաղի այլևայլ կողմերն արտացոլելու առումով։

Որոշ բանաստեղծներ (Նաղաշ Հովնաթան, Պաղտասար Դպիր, Պետրոս Ղափանցի և այլք) հմտորեն կարողացան ազգային հին ձևերի և աշուղականի համադրումով ստեղծել նորօրակ երգեր ու բանաստեղծություններ։ Այդ ուղղությունն ի վերջո զարգացման այնպիսի գագաթնակետի հասավ, ինչպիսին էր համաշխարհային աշուղական գրականության հսկան՝ Սայաթ-Նովան, իր հայերեն, վրացերեն և ադրբեջաներեն երգերով։

XIV—XVIII դարերի տաղարաններում սկիզբ է առնում երգերի մի բոլորովին նոր տեսակ՝ հայատառ թուրքերենը։ Մի կողմից թուրք-թաթարական բռնությունների հետևանքով իրենց մայրենի լեզուն կորցրած հայկական առանձին զանգվածների, մյուս կողմից պատմական Հայաստանի տարածքի վրա բնակություն հաստատած թուրքախոս ցեղերի գոյությունը հրապարակ բերեց թուրքերեն լեզվով երգեր հորինող հայ բանաստեղծներ ու երգիչներ, որոնք իրենց ստեղծագործությունները գրի էին առնում հայկական այբուբենի օգնությամբ։ Նման երգերի առաջին ամբողջական նմուշները հայտնի են XIV դարի կեսերից. հաջորդ դարերում և հատկապես XVIII դարում դրանք ապրում են զգալի զարգացում ու տարածում՝ յուրովի վկայելով թուրքական բռնությունների և նրանց հետևանքների մասին։

Իրենց արվեստով դրանք հիմնականում աշուղական ձևերով գրված ստեղծագործություններ են՝ նվիրված սիրո և ուրախության, գարնան ու ծաղկանց, ինչպես նաև հայրենիքի ու հարազատների գովերգությանը։ Հաճախ էլ

հայտատա թարգրերեն երգերով զովերգվում են հայոց եկեղեցին ու քրիստոնեական հավատը։

Ընդվոլ ժամանակահատվածի չափածո բավականաչափ հարուստ է նաև պոեմներով։ Սկզբնական շրջանի համար ուշագրավ են Առաքել Սյունեցու «Ադամգիրքը» և «Դրախտագիրքը», Առաքել Բաղիշեցու «Հովասափի և Բարաղամի պատմությունը», Գրիգոր Լուսավորչի կյանքին նվիրված պոեմը և այլ գործեր։ Հետագայում որոշ պոեմներ են ստեղծում Հովասափ Սեբաստացին, Երեմիա Չելեպի Քյոմուրճյանը և ուրիշ հեղինակներ։ Թարգմանական գրականությունից հատուկ արժանիքներ ունի Փարեզի և Վեննայի պոեմը։ Գրիգորիս Աղթամարցին, Սիմոն Ապարանցին, Մարտիրոս Ղրիմեցին և ուրիշներ ստեղծում են երկարաշունչ, պոեմանման քերթվածներ՝ աստվածաշնչային և պատմական թեմաներով։

Այս ստեղծագործությունների մեջ ևս, այս կամ այն չափով, նստած է իր ժամանակի ընդհանուր ոգին, հասկանալի լեզուն, ժողովրդական բառապաշարն ու մտածողությունը, առօրյա իրականության վերարտադրությունը։ Աստիճանաբար ավելի են խտանում նրանց մեջ աշխարհիկ տրամադրությունները, իսկ ձևի հարցերն ապրում են զգալի առաջխաղացում։

Ըստ երևույթին ժողովրդական բանահյուսության մեջ հնուց ի վեր զարգացած են եղել նաև փոքրիկ խաղիկները, որոնց արձագանքները հետզհետե սկսում են թափանցել նաև XIV—XVIII դարերի բանաստեղծության մեջ։ Փոքրածավալ, քառատող-ութատող ստեղծագործությունների գրական առաջին մշակումներին հանդիպում ենք Ներսես Շնորհալու մոտ՝ ի դեմս նրա հանելուկների, ապա Կիրակոս բանաստեղծի «Գովք թալնոց»-ում։ Այս խմբին են, վերջին հաշվով, պատկանում նաև հայրեններն ու կաֆաները, որոնց գրական ուշագրավ առաջին շարքերը տվել են Հովհաննես Երզնկացին, Ֆրիկը և ուրիշներ։ Սակայն, պետք է նկատել, որ իսկական ժողովրդական խաղիկները երևան են գալիս ավելի ուշ՝ XVII—XVIII դարերում։ Այս առումով ուշագրավ են Ստեփանոս Դաշտեցու համապատասխան շարքերը, Սայաթ-Նովայի մոտ հանդիպող առանձին նմուշները և այլ օրինակներ։

Այսումենայնիվ, XIV—XVIII դարերի չափածոյի տարերքը կազմում են տաղ-բանաստեղծությունները և հայրենները։

XIV—XVIII դարերում կարևոր տեղաշարժեր կատարվեցին նաև գեղարվեստական արձակի բնագավառում։ Պետք է նկատել, սակայն, որ գեղարվեստական արձակի ուսումնասիրությունը դեռ նոր է սկսվել, ուստի դժվար է ամբողջական խոսք ասել նրա մասին։ Պետք է նկատի ունենալ և այն հանգամանքը, որ XIV—XVIII դարերում գրականության այդ բնագավառը դեռևս գտնվում էր չկազմավորված, նախնական վիճակում։

Միջնադարյան գեղարվեստական արձակի նմուշներ կարելի է գտնել պատմագրքերում, ժամանակագրությունների մեջ, Հայսմավուրքներում, Ճառընտիրներում, Քարոզգրքերում, Հարանց վարքերում, Ոսկեփորիկ ժողովածուներում և նման բնույթի այլ ձեռագիր հավաքածուների մեջ[1]։

Այս խմբի նյութերին հարազատ էին քարոզները՝ ծնված հիմնականում քննվող ժամանակահատվածում՝ Գրիգոր Տաթևացու, Գևորգ Երզնկացու, Մատ-

[1] Տե՛ս «Էջեր հայ միջնադարյան գեղարվեստական արձակից» ժողովածուն (խմբագրությամբ և առաջաբանով Կ. Մելիք-Օհանջանյանի, Երևան, 1957)։

թեոս Ջուղայեցու, Առաքել Սյունեցու, Ղուկաս Լոռեցու, Սիմեոն Երևանցու և այլոց կողմից։

Մեծ կյանք էր վերապահված առակներին նաև XIV—XVIII դարերում, որոնք խմբվում էին մեկ ընդհանուր՝ «Աղուեսագիրք» խորագրի տակ։ Ուշագրավն այն է, որ ինքնուրույն ու թարգմանական առակների մեծ մասը, հատկապես Վարդան Այգեկցու առակները, լրանում էին ժողովրդական ու անհատական նորանոր նմուշներով։ Ընդօրինակությունների ժամանակ նրանց մեջ մուծվում էին նոր գաղափարներ, առաջացնելով տարբերակների զանազան շերտեր։ Փոփոխվում էին հատկապես նրանց մեկնաբանությունները։ Վերջին հաշվով այնպես էր ստացվում, որ առակների մեծ մասը սերնդից-սերունդ անցնելով նորոգվում էր և հնչում որպես նաև տվյալ ժամանակների ստեղծագործություն։

Մեծ տարածում, լրացում և զարգացում էին ապրում եկեղեցու հայրերի և սրբերի մասին եղած զրույցները՝ հաճախ միանալով առակներին, քարոզներին, խրատներին և նման այլ շարքերի։ «Հարանց վարք» կոչված թարգմանական զրույցներն ու պատմվածքները շարունակում էին տարածվել և խաղալ օգտակար դեր՝ գեղարվեստական արձակի համապատասխան նոր նմուշների ստեղծման առումով։

Այս ընդհանուր ընթացքին գումարվում էին վարքագրական և հատկապես օրըստօրե շատացող վկայաբանական գրվածքները, որոնք նույնպես յուրովի պատկանում են գեղարվեստական արձակի բնագավառին։ Ըստ այդմ էլ առանձին փոփոխություններ էին մտնում «Յայսմաւուրք» կոչված ժողովածուների մեջ՝ նրանց եւս հաղորդելով ժամանակակից ոգի։

Վերոհիշյալ գրականության մեջ աստիճանաբար ձևավորվում էր գեղարվեստական արձակի մի ուրիշ ճյուղը, որին «զրույցներ» անունն է տրվում[2]։ Դրանք մի կողմից գալիս են առակներից, իսկ մյուս կողմից՝ ձգվում մինչև մանրավեպն ու հեքիաթը։ Քիչ չեն նաև Հարանց վարքերից, ժողովրդական առօրյայից առնված նմուշները՝ նրանց շարքերում։ Իրենց ամբողջությամբ դրանք բազմաթեմա ու գողտրիկ ստեղծագործություններ են, ապրած հատկապես XIV—XVIII դարերի կյանքով ու առօրյայով։

Միջնադարյան գեղարվեստական արձակի մասին խոսելիս, հատուկ տեղ պիտի հատկացնել նաև ձեռագրերի հիշատակարաններին, որոնց մեջ հասած հարստության հիմնական բաժինը պատկանում է XIV—XVIII դարերին։ Հին ժամանակներից եկող գրական այս տեսակը, անկախ իր նպատակից, ժամանակագրական և գրչագրական բնույթից, պատկանում է նաև գեղարվեստական արձակի բնագավառին։ Անձնական տրամադրվածությունն ու անկեղծ խոսքն այստեղ հաճախ այնքան են հզորանում, որ վեր են ածվում բանաստեղծության, տալով արձակի ու չափածոյի միաձույլ ամբողջություն։

Գաղափարական բովանդակությամբ XIV—XVIII դարերի գեղարվեստական գրականությունը շոշափում էր հատկապես հայրենասիրության գաղափարը։ Դրանից անբաժան էր հայ եկեղեցու դրվատանքը, ինչպես նաև օտար իշխողների և դավանաբանական շեղումների դեմ անողոք պայքարի ոգին։ Վիթխարի տեղ էր հատկացվում բարոյա-խրատական քարոզին, դաստիարակչության հարցերին։ Դրվատվում էր խելքը, գիտությունը, ազնվությունը, ար-

---

[2] Արմենուհի Սրապյան, Հայ միջնադարյան զրույցներ, Երևան, 1969։

*դպրությունը։ Ծաղրվում և պախարակվում էին հասարակական չարիքները, սոցիալական անիրավությունները, կենցաղային այլանդակությունները։ Իր ամբողջությամբ այն հետապնդում էր հայ ժողովրդի գոյատևման հաղթանակը, նրա աշխատասեր ու լուսավոր ապագայի երազանքը։*

*Այս շրջանի մեծագույն հաղթանակը պիտի համարել գրական ձևերի հարստացումը, նրանց մշակումն ու հղկումը, թեմաների ու ժանրերի սահմանների լայնացումը, գրականության հասարակական դերի մեծացումը և աշխարհականացման ոգու հաղթանակը։ Ըստ այդմ էլ իշխում էր ոչ միայն աշխարհիկ ոգին, այլև ձևը՝ ընդհուպ մինչև բարբառների մուտքը գրավոր դպրություն։*

*XIV—XVII դարերի գրականության զարգացման պատկերն ուրվագծելու նպատակով, ստորև համառոտակի լուսաբանվում է ժամանակի հեղինակների կյանքն ու գրական ժառանգությունը՝ ըստ գրական կենտրոնների հաջորդականության։*

Առաքել Սյունեցի.—*Առաքել Սյունեցին Տաթևի դպրոցի ականավոր ներկայացուցիչներից է։ Կենսագրական որոշակի տեղեկություններ նրա մասին չեն պահպանվել, բայց իր և ուրիշների կատարած նշումներից պարզվում է, որ նրա կյանքն ընկած է եղել XIV դարի երկրորդ կեսի և XV դարի առաջին քառորդի միջև։ Հայտնի է նաև, որ նա եղել է Գրիգոր Տաթևացու քրոջ որդին և նրա սաներից մեկը։*

*Ստանալով ժամանակի բարձրագույն ու բազմակողմանի կրթություն, Առաքել Սյունեցին թողել է քերականության մեկնություն, դաստիարակչական ձեռնարկ, քարոզներ, փիլիսոփայական երկեր, ներբողներ, բանաստեղծություններ և պոեմներ*[3]*։*

*Առաքել Սյունեցու ուժը, ինչպես Մ. Աբեղյանն է նկատել, առարկայական, տեսանելի, շոշափելի դարձնող մտածողությունն է։ Ամենավերացական գաղափարներն անգամ նրա գրչի տակ նյութականանում են, կոնկրետանում իրենց՝ նշանակությամբ ու իմաստով, որպես իրական երևույթներ։*

*Սյունեցու ստեղծագործություններում Աստվածամոր, Քրիստոսի և սրբերի գովերգությունը կատարված է աշխարհիկ սիրո երգերի հետևությամբ։ Հաճախ նա այնքան է խորանում այս վերջինների առանձնահատկությունների մեջ, որ կարծես խոսքը սիրո, այն էլ կրքոտ ու խիստ մարմնական սիրո մասին է։ Ահա Քրիստոսին նվիրված երկու քառատող.*

*Զհանդարտիմ ի յանկողնի,*
*Հանգիստս հատեալ ի գիշերի,*
*Որպէս արբեալ՝ կամ մոլի*
*Վառեալ ի սէր քո սքանչելի...*
*Տարփմամբ ըղձամ հառաչագին,*
*Համբուրելոյ զքեզ կրկին.*
*Տուր ինձ զըստինս քո լուսածին,*
*Ուստի բըղխէ կաթն և գինին...*

---

[3] *«Առաքել Սիւնեցի և իր քերթուածները», Վենետիկ, 1914։* Առաքել Սիւնեցի, *Ադամգիրք, Վենետիկ, 1907։* Առաքել Սիւնեցի, *Դրախտագիրք, Վենետիկ, 1956։*

Որպեսզի ընթերցողը չշփոթվի, հեղինակը հաջորդ տողերով հավաստիացնում է, թե խոսքը հոգևոր սիրո մասին է։

Մեծ արժեք ունեն Առաքել Սյունեցու վառ երևակայությամբ գրված, հավատալիքների աշխարհին վերաբերող ստեղծագործությունները, հոգևոր մտապատկերների ներաշխարհի բացահայտումները. նրանց մեջ կարծես ներկայացված են անդրշիրիմյան աշխարհից վերադարձած ականատեսի թարմ տպավորությունները։ Այդպիսիներից է, օրինակ, հոգեվարք կոչվող երևույթի բանաստեղծական վերարտադրությունը։ Երևում է հրեշտակը, պահանջում է հանգուցյալի հոգին, ստանում է այն՝ երկինք տանելու. բայց ահա ճանապարհին, շանթ ու որոտ արձակելով, հուր ու բոց շնչելով, հայտնվում են չար ոգիները, սատանաները, փաստարկում, որ նա մեղավոր է և պատկանում է իրենց։ Նրանք քրքջում, աղմկում, «ղողանջում», կախվում, քաշքշում են. որպեսզի հափշտակեն իրենց կոհը։ Վերջինս սարսափից թալկանում է, ուշաթափվում, սակայն չար ուժերը չեն հաղթում, որովհետև սուրբ հրեշտակը սաստում է նրանց և անվնաս երկինք տեղափոխում ստացած հոգին։

Անդրաշխարհային երևակայական կյանքի հետաքրքրաշարժ վերարտադրություն է հանդիսանում հատկապես «Դրախտագիրք» կոչված պոեմը։ Հեղինակը, քրիստոնեական բարոյականության խրատը տեղ հասցնելու նպատակով, ընթերցողներին և ունկնդիրներին առաջնորդում է դեպի հանդերձյալների «առօրյան», գերեզմանից մինչև ահեղ դատաստան, մինչև դրախտ ու դժոխք։ Ամեն ինչ այնքան առարկայական, նյութական, պարզ ու կենցաղային գծերով է տրված, որ կարծես, հիրավի, կա ևս մի աշխարհ, ետմահու կյանք՝ իր ուրույն առօրյայով։ Այդ մասին մերթ հեղինակն ինքն է պատմում, մերթ էլ մեռյալներին է խոսեցնել տալիս։

Խիստ կենդանի գծերով է տրված հանգուցյալների վիճակը, խոհը, անձկությունը, հուզմունքն ու աղերսանքը։ Կարծես ապրողների բանտարկված հարազատ եղբայրներն են իրենք և կամենում են խորհուրդներով օգնել դեռևս լույս աշխարհում գտնվող իրենց եղբայրներին։ Տխուր առօրյա, տանջանք, ձանձրույթ, մերժում, աշխարհի հետ գեթ խոսքով կապվելու կարոտ. ահա այնտեղի կյանքը.

Ցայս տեղս ոչ գործ կայ ու ոչ ժղլանք
Կամ բանատեղ մեզ.
Այլ միշտ ձմեռն է և գիշեր
ու ճար չկայ մեզ...
Մեք կամք խիստ դառն և լալագին
ու այլ ճար չկայ մեզ...
Ծայրիւ մատին ջուր կու խնդրեմք
ու ոչ, զայն չեն տալ մեզ...

Խիստ ծանր է նրանց վիճակը. նրանք մտովին միշտ կապված են ապրողների հետ, բայց հաղորդակից լինել չեն կարողանում.

Մեք զձեզ միշտ կու տեսանեմք
դուք չեք տեսնուլ մեզ,
Ցայնժամ մեք յայս մեր բանտրէս
ո՞նց տանք խաբար ձեզ։

Այստեղ կարևորն այնքան հեղինակի հոգևոր նպատակները չեն, որքան բանաստեղծության մարդկայնացումը, մարդկային հոգու նորանոր ծալքերի բացահայտումը, իրականության ճանաչումով անիրականի պատկերումը։ Այս տեսակետից ուշագրավ են Առաքել Սյունեցու քերթվածներում ու պոեմներում սփռված կենցաղային, սոցիալական, քաղաքական բնույթի բազմաթիվ տեղեկությունները։ Ահա ծաղկաքաղ որոշ հատվածներ նման տեղերից.

Ոմանք զմարգիկ գերի վարեն,
Եւ այլք գընեալ ծառայս պահեն...
Ոմանք լինին կատակերգուք,
Այլք մոլեգնեալք և ծաղրածուք,

Այլ խեղկատակք անկար խաղուք,
Եւ այլք գուսանք՝ դիւաց պարուք...
Կաշառ առնուլ 'ւ երեսպաշտել...
Կշռօք խաբել, ղշափն այլայլել...

Ուշագրավ են «Դրախտագրքի» այն տողերը, որտեղ այս կյանքը ներկայացվում է «գյուղի», իսկ հանդերձյալը՝ «քաղաքի» օրինակով։ Չնայած թեման է թելադրում մեկի մասին խոսել բացասաբար, իսկ մյուսի մասին դրվատանքով, սակայն և այնպես այստեղ էլ հեղինակը շատ բան է վերցրել առօրյա իրականությունից.

Օտար գեղիդ խաղն և գուսանն
  ձայն կուժի տան քեզ.
Այն քաղաքի կուժն ու ողբալն
  ծափս ծափէ քեզ...
Ցայդ գեղդ զրկողքն ու կողոպտողքն
  կու նեղացնեն զքեզ.
Ցայն քաղաքին որքան կենաս՝
  ոչով չխօսի ընդ քեզ...
Ցայդ գեղդ շատ չարք և անօրէնք
  զահմաթ կու տան քեզ...

Եվ Առաքել Սյունեցին, որ նպատակ ուներ մեզ տանելու դեպի անդրշիրիմյան աշխարհը, ծանոթացնելու նրա անթափանցելի ներքին իրականությանը, միաժամանակ ծանոթացնում է այս աշխարհի կոնկրետ առօրյային, նրա զանազան մեծ ու մանր երևույթներին։ Առաքել Սյունեցու կերպարները՝ թե՛ կենդանի մարդ, թե՛ մեռած, թե՛ մարմին, թե՛ հոգի՝ նյութական են, հասկանալի, սրտամոտ, հարազատ, ծանոթ ու վշտահար։ Այդ մարդը նման չէ ոչ Գրիգոր Նարեկացու, ոչ Գրիգոր Տղայի, ոչ էլ մանավանդ Կոստանդին Երզնկացու կերտած կերպարներից և ոչ մեկին։ Արդեն ընկճված է նա, հաշտված անդրշիրիմյան աշխարհ մեկնելու գաղափարի հետ, թեկուզ և չի կամենում։ Եվ դա է ուշագրավը, այդ դժկամությունը, դժգոհությունը՝ գովերգված «քաղաքի» անհրապույր, անմարդասեր, թեկուզ և բարեպաշտ աշխարհից։ Դրախտի տեսարանների մասին արված դրվատական տողերը չեն ցրում ստացված ճնշող տպավորությունները։ Դրանով էլ զգում ես միջնադարյան մարդու կրկնակի ծանր հոգեվիճակը՝ պայմանավորված այս աշխարհ—«գե-

ղում» նրա կրած հալածանքներով՝ կողոպտիչներից, զրկողներից, այն աշխարհում՝ սրբերի խստությունից ու սատանաների հետապնդումներից, խոշտանգումներից։ Այդ վիշտն ու ողբն է ահա, որ այնքան յուրովի վերարտադրել է Առաքել Սյունեցին։

Ուրույն տեղ ու արժեք ունի մեր գրականության պատմության մեջ նաև նույն հեղինակի «Ադամգիրքը» («Կողգիրքը»)։ Այստեղ մշակված է աստվածաշնչային ավանդությունը՝ Ադամին ու Եվային դրախտից արտաքսելու մասին։ Նյութի մշակումը նույնքան ուշագրավ է՝ իր պոեմային և դրամատիկական կառուցվածքով։ Այն կարծես բեմականացման նպատակով է շարադրված, որպեսզի հատուկ դերակատարներ կարողանային ներկայացնել հեղինակին, Աստծուն, Ադամին, Եվային՝ մենախոսություններով և երկխոսություններով։ Երևակայականն այստեղ էլ տրված է նյութականացված մանրամասներով, հոգեբանական, կենցաղային, առօրյա երևույթների բացահայտմամբ ու նկարագրությամբ. Ահա մի նմուշ.

Տէրն ասէ—էր խաբեցիր, ըզդու, ով կին,
Զքեզ օգնական տուի ըզմին...
Նա ասէ—Քո էր ստեղծեալ օձ ըզժնային,
Եւ ըզպտուղ մահու ծառին.
Միաբանեալ զիս խաբեցին...

Հետևելով նույն բարոյական դաստիարակության նպատակին, հեղինակը կարողանում է ստեղծել իր ժամանակի համար հետաքրքրաշարժ ընթերցանության նյութ։ Այստեղ էլ կյանքից առնված շատ իրողություններ ու անուղղակի տեղեկություններ կան, որոնք մի կողմից հավաստիություն են ներշնչել ընթերցողին, իսկ մյուս կողմից հեղինակի վերաբերմունքն են դրսևորել նրանց նկատմամբ։ Արգելված պտուղն ուտելուց հետո, Եվան այնպես է հանդիմանում ու համոզում Ադամին, որպեսզի նա էլ փառազրկվի, ինչպես երկրային կամակոր կինը ստիպում է ամուսնուն՝ իր կամքը կատարել։ Սակայն Ադամը լոկ այդ պատճառով չէ, որ լսում է նրան, այստեղ մեծ դեր է խաղում սերը։ Գրիգոր Նարեկացուց հետո Առաքել Սյունեցին երկրորդ բանաստեղծն է, որ գնահատում է Ադամի սերը.

Խաւարեցաւ միտքն Ադամայ,
Յորժամ ետես խաբեալ զԵւա.
Կամէր լըսել բանից նորա,
Զի ունէր սէր մեծ ընդ նըմա։
Տարակուսեալ լինէր անձին,
Կընո՞չ լըսել, թէ Արարչին.
Խելքն ընդ աչացն գընացին,
Եթող զԱստուած և ոչ ըզկին...

Առհասարակ, թե՛ բովանդակությամբ, թե՛ ստեղծագործական կատարման համար ընտրված նյութով, թե, հատկապես, դրամատիկական կառուցվածքով «Ադամգիրքը» թարմ խոսք էր մեր գրականության համար։

**Գրիգոր Խլաթեցի (Ծերենց).**—Հայ մատենագրության համեստ այս մշակը ծնվել է 1350 թվականին՝ Խլաթում և իր գիտակցական ողջ կյանքը, շուրջ 50 տարի, նվիրել գրչության, մանկավարժության, բանաստեղծության և հոգևոր

ծառայության բնագավառներին։ Աշխատանքի հիմնական կենտրոնը հանգիստացել է Քաջբերունիքի Ցիպնա վանքը, ուր և 1425 թ. սպանվել է քուրդ ասպատակողների կողմից։

Գրիգոր Խլաթեցու հոգևոր ժառանգության մեջ հատուկ տեղ են գրավում նրա խմբագրած ու լրացրած «Յայսմաւուրք» և «Գանձարան» ժողովածուները, ինչպես նաև բանաստեղծությունները։ Որպես գրիչ նա թողել է բազմաթիվ ձեռագրեր, որոնց մի մասը պահպանվել ու հասել է մեզ։ Այդ բոլորի մեջ առկա է, Մ. Աբեղյանի բնորոշումով ասած, «մաքառման» ոգին՝ տոգորված իր ժամանակի ամենապերճախոս հայրենասիրությամբ։ «Յայսմաւուրք» ժողովածուների մեջ հանուն հավատքի, իսկ դրա միջոցով նաև հանուն հայրենիքի ծառայած անվանի գործիչների հիշատակն էր փառաբանվում։ Գրիգոր Խլաթեցին այդտեղ մուծում էր նաև հայոց նոր նահատակների և գործիչների վարքն ու վկայաբանությունը՝ միաժամանակ ծառայելով գեղարվեստական արձակի զարգացմանը։ «Գանձարան» ժողովածուները նույնպես, որ համանման նպատակ ունեին, Գրիգոր Խլաթեցու գրչի տակ ավելի էին հարստանում հայկական անուններով և հայ իրականության հուզող հարցերով։ Ինքն անձամբ գրում էր և՛ գանձ, և՛ տաղ, և՛ գանձերի կաֆաներ։ Նրա ջանքերի շնորհիվ էր, որ գանձարանները թևակոխեցին զարգացման ու մասսայականացման մի նոր շրջան։

Գրիգոր Խլաթեցու ստեղծագործությունների մեջ ամենից նշանավորը նրա «Յիշատակարան աղէտից» պատմական ընդարձակ քերթվածն է[4]։

Այդտեղ ողբերգաբար պատմվում են XIV դարի վերջին և XV դարի սկզբի տասնամյակների ընթացքում հայ ժողովրդի կրած ծանր հալածանքները։ Հատուկ տեղ է տրված Լանկ-Թամուրի ահասարսուռ մարդասպանությունների ու ավերածությունների նկարագրությանը։ Նա չի մոռանում նաև հարևան ժողովուրդների՝ պարսիկների, վրացիների կրած հալածանքները։ Հեղինակն այստեղ մեծապես օգտվել է Գրիգոր Տղայի «Ողբ Երուսաղէմի» պոեմից՝ ստեղծելով տեսարանների ավելի ազդեցիկ վերարտադրություններ։ Զարհուրելի է հատկապես Սեբաստիայում տեղի ունեցած բարբարոսության նկարագրությունը.

Գուբ և խանդակ փոս փորեցին
Եւ կենդանոյն ի ներս արկին.
Զամենեսեան քարկոծեցին,
Շնչովն իւրեանց և թաղեցին։
Ո՜, յահադին պատուհասին,
Եւ անծանօթ, որ ոչ պատմին,
Զի՝ մինչ աւուրքն չորրորդին,
Գոռումն գայր անդընդային,
Զի ոչ հարիւր կամ հազարին,
Այլ ութ հազար գոլ թիւ նոցին։

Գրիգոր Խլաթեցու վրա անջնջելի և ցնցող տպավորություն է թողել Աղթամարի կաթողիկոս Զաքարիայի նահատակությունը, որի մասին նա և՛ գանձ, և՛ ողբ է գրել։ Հուզիչ է հատկապես ողբ-տաղը, որի մեջ հեղինակը միաժա-

[4] «ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», մաս Ա, էջ 272—288։

*մանակ ազացել է Սսի կաթողիկոս Թորոսի ողբերգական սպանությունը։ Տխրության և վշտի ներգործությունն ավելի է ուժեղացել հայրենների տաղաչափության և առանձնահատկությունների օգտագործման շնորհիվ.*

*Աւաղ ըզմեզ անեմ, եղբարք,*
*որ հասաք յաւուրս աՀագին,*
*Խոց վիրաց առաք ուժգին*
*յայլասեռ ազգէ հրամանին.*
*Թող մեզ խաւարի այսօր*
*Լոյս լուսնին և ակն արևին*[5]*...*

*Գրիգոր Խլաթեցին իր ամբողջ էությամբ ազաց հայրենիքի ու ժողովրդի ողբերգական կյանքը, մինչև որ ինքն էլ մի օր նահատակվեց նույնքան ողբերգաբար։ Այդ մասին սրտառուչ ողբ գրեց իր աշակերտներից Առաքել Բաղիշեցին։*

**Առաքել Բաղիշեցի.**—*Սյունիք-Քաջբերունիք կամրջող ուսումնամշակութային առաջավոր հոսանքը Վանա լճի հյուսիս-արևմտյան ափերով իջավ դեպի հարավ, թափանցելով Բաղեշ և նրա շրջակայքը, ուր դեռ կենդանի էին հին ավանդները։*

*Հատուկ դեր վիճակվեց Բաղեշի գավառի Պոռ գյուղին, որը իրար ետևից գրական ասպարեզ հանեց Առաքել Բաղիշեցուն, Մկրտիչ Նաղաշին, Սադաղա Պոռեցուն և այլոց։*

*Առաքել Բաղիշեցին ծնվել է 1380-ական և վախճանվել է 1450-ական թվականներին։ Եղել է ամուսնացած, ունեցել է զավակներ, իսկ կնոջ մահից հետո՝ ձեռնադրվել է վարդապետ, սովորել է Գրիգոր Խլաթեցու մոտ։*

*Որպես գրող Առաքել Բաղիշեցին հայտնի է իր չափածո ստեղծագործություններով. բայց նա ունի նաև գեղարվեստական արձակի մեծարժեք աշխատություններ*[6]*։ Վերջիններս հիմնականում բաժանվում են երկու խմբի՝ ներբողներ և վկայաբանություններ։ Եթե ներբողները նպատակ ունեին ժողովրդի մեջ վառ պահել հավատքի կրակը, ապա վկայաբանությունների մեջ ցոլանում էր հայ-քրիստոնյա ապրելու և հանուն այդ հավատի մեռնելու գաղափարը։ Այս առումով առանձնապես ուշագրավ են Առաքել Բաղիշեցու շարադրած Վարդան Բաղիշեցու և Ստեփանոս ու Պետրոս Խիզանցիների վկայաբանությունները։*

*Հուզիչ ու դաստիարակիչ է խիզանցի նահատակների կյանքը։ Նրանք օտար բռնակալների զարհուրելի տանջանքների վախից թուլացած ուրանում են իրենց հավատքը և ընդունում մահմեդականություն։ Դա իր բացասական հետևանքներն է ունենում ժողովրդի մեջ, որովհետև ոմանք հետևում են նրանց օրինակին։ Այս հանգամանքը խորապես ազդում է ուրացողների վրա և նրանց մղում զղջման ու կամավոր մահապատիժ հանձն առնելու։*

*Իրենց գաղափարական բովանդակության հետ մեկտեղ, այս վկայաբանությունները մեծ նշանակություն ունեն նաև գեղարվեստական արժանիքներով, հատկապես հերոսների դիմապատկերներ կերտելու և գեղարվեստական*

---

[5] «ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», էջ 600—601։

[6] Ա. Ղազինյան, *Առաքել Բաղիշեցի*, Երևան, 1971։

փոքրածավալ երկեր ստեղծելու առումով։

Առաքել Բաղիշեցու չափածո ստեղծագործությունները նույնպես կարող են երկու հիմնական խմբի բաժանվել՝ տաղեր և պոեմներ։ Տաղերի մեջ շոշափված խնդիրները բազմազան են, նպատակը, սակայն, նույնն է, ինչ՝ նրա գեղարվեստական արձակում՝ լինել ավանդապահ, նվիրված հայրենի աշխարհին, նրա ավանդություններին ու ազատությանը։

Առաքել Բաղիշեցին առաջիններից մեկն է մեր անցյալի հեղինակների շարքում, որոնք փորձել են բանաստեղծության նյութ դարձնել պանդխտության երևույթը։ «Օտարութիւն է խիստ դըժար»—ասում է նա, նկարագրելով պանդխտի անտերունչ վիճակը.

Ողորմագին զաշերն ածէ
Ու իւր բնական տեղիքն ուզէ...

Առաքել Բաղիշեցու պոեմներում հայրենասիրությունն ավելի մեծ տեղ է գրավում։ Ներսես Մեծին նվիրված ստեղծագործության մեջ մշակված է հայանի տեսիլքը՝ կապված թաթարական արշավանքների, Երուսաղեմի անկման և հայոց թագավորության վերականգնման հույսի հետ։

Մեծ արժեք ունի Կոստանդնուպոլսի անկմանը (1453) նվիրված պոեմը, ուր նորից փայփայվում է հայ ժողովրդի ազատագրական գաղափարը։

Ազգս հայոց պայծառացի,
Զի յայլազգեացն ազատեցին...

Առաքել Բաղիշեցին գրել է նաև այլ պոեմներ՝ նվիրված ժամանակի հասարակության հուզող հարցերին։ Հատուկ արժեք ունի «Տաղ Հովասափու» կոչված պոեմը, ուր առաջին անգամ մեր իրականության մեջ չափածո մշակման է ենթարկված համաշխարհային դրականությանը հայտնի «Հովասափ և Բարլաամ» ավանդավեպը։ Պակաս նշանակալից չէ նաև Գրիգոր Լուսավորչի կյանքի վերապատումը՝ առանձին պոեմով։

Պահպանվել են նաև բազմաթիվ գանձեր, գրված Առաքել Բաղիշեցու ձեռքով։ Եկեղեցական սրբերին ու տոներին, ինչպես նաև Մեսրոպ Մաշտոցին ու Սահակ Պարթևին գովերգող այս գործերի մեջ ևս իր ուրույն տեղն ունի հայ ժողովրդի ծանր վիճակը.

Մկրտիչ Նաղաշ.—Բաղեշի Պոու գյուղի երկրորդ խոշոր բանաստեղծը Մկրտիչ Նաղաշն է։ Ծնվել է 1390-ական թվականներին. տեղում սկզբնական կրթություն ստանալուց հետո կատարելագործվել է Թովմա Մեծոփեցու դպրոցում, Գրիգոր Խլաթեցու ձեռքի տակ։ Դառնալով Ամիդի եպիսկոպոս, Մկրտիչ Նաղաշը եռանդուն գործունեություն է ծավալում հայ բնակչության ծանր ու անտանելի վիճակը թեթևացնելու համար։ Հիշատակման արժանի են նրա օգնությամբ գերիների ազատման փաստերը, հարկերի թեթևացման համար ձեռք բերված կարգադրությունները, բարեգործական միջոցառումները, շինարարական աշխատանքները և այլն, որոնցով նրա հուշակը տարածվում է հայ և օտար միջավայրում։ Նրա համար ծանր հարված էր իր կառուցած բարձրահայաց ս. Աստվածածին եկեղեցու զանգակատան ու գմբեթի ավերումը՝ մահմեդականների կողմից։ Դա առիթ եղավ, որ նա «տարաշխարհիկ» լիներ, ինչ-

պես ասում է նրա կենսագիր Աստվածատուր վարդապետը, հասնելով մինչև Ղրիմ։

Մկրտիչ Նաղաշի մահվան մասին որոշակի տվյալներ չկան. բայց հայտնի է, որ այն տեղի է ունեցել 1449 թ. հետո։

Մկրտիչ Նաղաշը հայտնի է իր նկարչական, տաճարաշինական աշխատանքներով և բանաստեղծություններով[7]։ Վերջիններիս թիվը պիտի որ մեծ եղած լիներ, բայց մեզ հասածների քանակը 12—13 նմուշից չի անցնում։ Այդքանն էլ բավական է եղել, որ նա պատվավոր տեղ գրավի հայկական քնարերգության մեջ։

Ամենից ինքնատիպն ու արժեքավորը նրա պանդխտության երգերն են։ Ճիշտ է, այդ նյութին նրանից առաջ ուրիշներն էլ էին անդրադարձել, բայց Մկրտիչ Նաղաշն էր առաջին հեղինակը, որ կարողացավ գտնել պանդխտության երգերի իսկական ձևն ու եղանակը, որին և հետևեցին բոլոր մյուս գրողները՝ չկարողանալով դուրս գալ նրա ազդեցության ոլորտից։ Մկրտիչ Նաղաշի հաջողության գրավականն այն էր, որ նա, անձամբ ճաշակելով պանդխտության դառնությունը, թեմայի մշակությունը կապեց սրտի և հույզի ամենազգայուն թելերի հետ.

Հոգի, մի ասեր ղարիպ, թէ չէ իմ սիրտն կարունի...

Դա սոսկ խոսք չէր, այլ խորապես ապրած պանդխտության երևույթից բխող եզրակացություն։ Ուստի նա ոչ միայն ինքն էր վշտանում այդ բառը լսելիս, այլև այնպիսի երգեր էր ստեղծում, որոնցից ընթերցողների սիրտն էլ էր արնոտում։ Ու դժվար է ասել Մկրտիչ Նաղաշն այդ պատկերն ինքն էր ստեղծել և փոխանցել ժողովրդին, թե ժողովրդական երգն էր կանխել նրան.

Կռունկ ջան, կռունկ ջան գարուն է.
Ղարիբներուն սիրտն գունդ-գունդ արուն է...

Միջնադարյան և ոչ մի բանաստեղծ այլևս չկարողացավ պանդխտության մասին այնպիսի երգ գրել, որը գերազանցեր Մկրտիչ Նաղաշին։

Մկրտիչ Նաղաշի բանաստեղծությունների մեջ մեծ տեղ է գրավում բարոյա-խրատական թեման։ Օգտագործելով մարդկային կյանքի անցողիկության և անդրաշխարհային հավիտենության մասին եղած միջնադարյան պատկերացումները, նա ձգտում է ստեղծել միասնական, ներդաշն ու գիտակից սերունդ։ Այս եղանակով նա հասնում էր մարդուն շահագործման ենթարկող իրականությանը հակադրվելու, նրա դեմ պայքարելու գիտակցությանը։ Առաջ գնալով խնդրի էության մեջ, նա գտնում էր, որ երկրի վրա եղած բոլոր չարիքների արմատը՝ ագահությունն է, այսինքն, նյութական հարստություն կուտակելու տենչը։ Այս առումով վերին աստիճանի ուշագրավ ստեղծագործություն է Մկրտիչ Նաղաշի «Վասն ագահութեան» տաղը՝ ուղղված բոլոր «ագահների», այսինքն՝ բոլոր կողոպտողների դեմ.

Որք կռվին և վշտանան, որք նախանձին և գողանան,
Եւ որք խորհին չարիս մարդկան, ամէնն վասն ագահութեան.
Որք հարկանին և գողանան, սուտ երդնուն և ուրանան,
Բազումք ի հաւատոյն ելան, ամէնն վասն ագահութեան...

7 «Մկրտիչ Նաղաշ», աշխատասիրությամբ Է. Խոնդկարյանի, Երևան, 1965։

Կաճողիկոսըն շատացան՝ անօրինացն բռնութեան,
Եպիսկոպոս օրհնեն անրան, ամէնն վասն ագահութեան...
Երիցանէն յիրար կռուան, բիր վերուցին և գաւազան,
Փետեն մօրուք, կոտրեն բերան, ամէնն վասն ագահութեան...

Մկրտիչ Նաղաշի ստեղծագործությունները հագեցված լինելով ժողովրդի առօրյան պատկերող տրամադրություններով ու համապատասխան խոհերով, լայն տարածում էին գտել մայր երկրում և հայկական գաղթավայրերում։

Ժողովրդական երգեր.—Առհասարակ դժվար է որոշել ժողովրդական այս կամ այն երգի ծագման ժամանակը։ Սակայն առկա փաստերի մեջ խորամուխ լինելով հնարավոր է գեթ մոտավորապես որոշել դրանց առանձին խմբերի և նմուշների երևան գալու գարաշրջանը։

Միջին դարերում այս առումով շրջանառության մեջ էին մի կողմից հնից եկող և տվյալ ժամանակին հարմարեցված ժառանգությունը, իսկ մյուս կողմից՝ նրա նմանությամբ և նոր ժամանակների թելադրանքով ծնվող նորերը։ Այս վերջիններիս մի շարք օրինակները համահնչյուն են հատկապես XVI—XVIII դարերի պատմական և գրական միջավայրին, ուստի և սերտորեն առնչվում են դասական ու առօրյա բանաստեղծությանը։ Այսպիսիներից են, օրինակ, Խաչգռուզ Կաֆայեցու գրի առած ժողովրդական երգերի մի մասը՝ «Ջրիկ», «Կռունկ», «Մի թափիր, վարդ», «Ջրուցէ հաւիկ» կրկնակն ունեցող երգերը, «Մեր մեղքն է արեր զագուն բազայ» երգիծական տաղը և այլն[8]։ Դրանց համար բնորոշ են հիմնականում աշուղական ու դասական քնարերգության ձևերի զուգորդումը, իր ժամանակին բնորոշ օտար բառերի առկայությունը, այդ ժամանակվա խոսակցական լեզուն, ինչպես նաև այդ դարերին բնորոշ թեմաները։

Նշված երգերի մեջ առանձին տեղ են գրավում հայրենասիրական նմուշները՝ ներծծված զանգվածային պանդխտության, հայրենազրկության, հալածանքի, անջատման ու կարոտի այրող զգացմունքներով։ Նրանց մի մասն ուղղակիորեն է խոսում բուն նյութի մասին, իսկ մյուսը՝ փոխաբերաբար, այլաբանորեն։ Առաջիններից է, օրինակ, հանրահայտ «Կռունկը»։

Կռունկ, ուստի կու գաս, ծառայ եմ ձայնիդ,
Կռունկ, մեր աշխարհէն խաբրիկ մը չունիս...
Ոչ լուր օրն գիտեմ, ոչ ըղկիրակին,
Ջարկած է զիս շամփուր, բռնած կրակին,
Այրիլս չեմ հոգար, ձեղնէ կարօտ իմ.
Կռունկ, մեր աշխարհէն խաբրիկ մը չունիս...

Այս և մյուս օրինակներում՝ նվիրված կռունկին, խորապես մարդկայնորեն ու անմիջականորեն բացահայտված է պանդուխտի ծանր վիճակը, նրա դառն առօրյան և հրակեզ ներաշխարհը՝ լցված հայրենիքի ու հարազատների կարոտով.

Կանչէ, կռունկ, կանչէ, քանի գարուն է,
Ղարիպներու սիրտը գունդ-գունդ արուն է...

Փոքրիկ ու սրտառուչ այս երգերում հազարավոր պանդուխտների հայրե-

---

8 Ա ս. Մնացականյան, Հայկական միջնադարյան ժողովրդական երգեր, Երևան, 1956։

նաքաղձ տենչն ու հառաչն է մարմնավորված։ Այսօր էլ դեռ նրանք չեն կորցրել իրենց թարմությունն ու հուզականությունը։

*Փոխաբերական, այլաբանական եղանակով հորինված հայրենասիրական, պանդխտական երգերում կռունկի փոխարեն երևան է գալիս սոխակը, իսկ հայրենիքի փոխարեն՝ վարդը, այգին։ Դա վարդ ու սոխակի հնավանդ զրույցի օրինակով առաջ եկած մի նորօրակ այլաբանություն էր, որն իր ավանդական հարազատությամբ սիրելի ու հասկանալի էր ժողովրդական զանգվածներին.*

Ղարիպութիւն եկաւ՝ ըզսիրտս առաւ, հա՛յ,
Ահա մտան, զվարդն ի յայգոյն տարան, հա՛յ,
Այնոր համար սուք եմ մտեր, կու լամ, հա՛յ.
Մի՛ թափիր, վարդ, մի՛ թափիր, վարդ,
Ես ղարիպ եմ յօտար երկիր,
Զունեմ յաշխարհս երամ, հա՛յ...

Մի ուրիշ երգում նկարագրվում է, թե ինչպես բոլոր թռչուններն ուրախ դայլայլում են, միայն սոխակն է պանդխտության մեջ.

Առաւօտուն թռչունքն ամէն
Ուրախութեամբ եղանակեն,
Դու ղարիպ մնացեր ես մէն.
Զրուցէ՛, պլպո՛ւլ, զրուցէ՛...

Հայության ցրիվ բեկորների և հայրենի երկրի նկատմամբ ունեցած կարոտըն այստեղ դրսևորված է «Ես՝ ի Բաղդատ, դու ի Հալապ», «Ես ի Հալապ և դու՝ ի Սիս», «Ես ի հարաւ եմ, դու՝ հիւսիս» և նման այլ տողերով, որոնք շաղկապված են նույն այրող կարոտով.

Ես ի քեզ նայիմ և դու ի յիս...

Հայրենիքն առևանգված է ու ավերված, այգին խլված է, վարդենին՝ չորացած.

Քեզի չոր փուշն է մնացեր,
Զրուցէ՛, պլպո՛ւլ, զրուցէ՛...

Ժողովրդի լավատես կենսասիրությունը, սակայն, դրանով չի ավարտում իր ողբը. նա հավատացած է գարնան գալուն, այգու զալարելուն, վարդենու փթթումին, ուստի հուսադրում է սոխակին, ասելով.

Գարուն որ գայ՝ ուրախանաս,
Հասնիս խնդման և դուրանաս,
Վարթին սիրուն պայծառանաս...

Ընդհանրացնող այլաբանության այս եղանակը մեծապես տարածվեց, դառնալով նաև բանաստեղծների սիրած երգաձևերից մեկը։

XVI—XVIII դարերում ձևավորվեցին նաև ժողովրդական երգերի ու խաղիկների բազմաթիվ այլ տեսակներ, որոնք նույնպես զգալիորեն ազդեցին գրավոր դպրության վրա։

**Գրիգորիս Աղթամարցի**.—Վասպուրականի հնամենի մշակութային կենտրոնը Նարեկացուց և նրա գրչակիցներից հետո, դրական առումով որոշ աշխու-

ժություն է ապրում XVI դարում՝ հրապարակ հանելով մի քանի պայծառ անուններ։ Նրանցից առանձնապես նշանավոր է Գրիգորիս Աղթամարցին։

Իր տաղերի և առանձին նշումների համաձայն Գրիգորիսի ծնունդը ենթադրվում է 1480—1490-ական թվականների սահմաններում, իսկ մահը՝ 1544-ին։ Նրան սերած են համարում Աղթամար կղզու և հանդիպակաց ծովափնյա շրջանի տեր ֆեոդալական գերդաստանից։ Նրա ուսուցիչներից են եղել Գրիգոր Բաբունապետը և Հովսեփ Աղթամարցին, որոնց նա դրվատել է իր բանաստեղծություններում։ Ընդհանուր կրթությունից բացի, Գրիգոր Աղթամարցին սովորել է նաև նկարչություն. մեզ են հասել նրա նկարազարդած ձեռագրերից որոշ օրինակներ։ Տաղերից երևում է, որ բանաստեղծը տիրապետել է պարսիկներին, թերևս և այլ լեզուների։ 1512—1544 թթ. նա եղել է Աղթամարի կաթողիկոսը։

Պատերազմական խառն ու երկարատև գործողությունները ոչ միայն խանգարել, այլև երբեմն դուրս են վտարել նրան իր կաթողիկոսական նստավայրից։ Այդպես է եղել, օրինակ, 1523—1526 թթ., երբ մահմեդականները գրավել են Աղթամարը։

Գրիգորիս Աղթամարցուց մեզ են հասել շուրջ երեք տասնյակ բանաստեղծություններ, ինչպես նաև Աղեքսանդր Մակեդոնացու և Պղնձե քաղաքի պատմությունների համար գրած ու մշակած կաֆաները[9]։ Նա այն առաջին խոշոր բանաստեղծներից է, որոնց մոտ այլաբանական երգը դառնում է քնարերգության հիմնական առարկա։ Այստեղ նա սիրո երգերի հետևությամբ, բայց ինքնուրույն և ինքնատիպ որոնումներով, գովերգում է Աստվածամորը, Քրիստոսին, իր ուսուցիչներին, մեղ անծանոթ անձանց ու սրբերի։ Այդպիսիներից մեկում կարդում ենք.

Արեգակնափայլ գեղով լի լուսին ի տասնուհընգէ,
Աչեր ծով ի ծով ունիս, սոսկալի վարսաւոր սըրովբէ.
Ուներդ է քաշած կամար, զինչ գարնան յաղեղն ի յամպէ,
Լեզուդ տապարզի շաքար, քո շրթունքդ վարդի թերթ է։

Խոսքը Աստվածամոր մասին է։ Դժվար չէ նկատել Գրիգոր Նարեկացու «Աչքն ծով ի ծովի» ազդեցությունը, բայց դժվար չէ նկատել նաև անգին ակնեղենի ու բուսական աշխարհի հրաշալիքների նորանոր կուտակումները։

Նրա տաղերից մեկը, որ նույնքան այլաբանական սիրով է հագեցված, մի դեպքում դիտված է որպես տաղ «Վասն սիրոյ և ուրախութեան», մի ուրիշ դեպքում՝ տաղ «Տէր Անտոնի Թեքայեցւոյ», ուրիշներն էլ նախընտրել են այն կոչել «Տաղ անուշ և գեղեցիկ»։

Եթե նման երգերում, կարելի է իշխող ճանաչել հոգևոր սիրո գաղափարը, ապա Գրիգորիս Աղթամարցու «վարդ ու սոխակի» մշակումներում հնարավոր է հոգևոր խնդիրներից բացի, նկատի ունենալ և՛ ավանդական, և՛ նոր ըմբռնումներ.

Գարունն երեկ պըլպուլն յայգին,
Ծաղկունքն ամէն շատըլխ արին

[9] Տե՛ս Կ. Կոստանյանց, Գրիգորիս Աղթամարցին և իւր տաղերը, Թիֆլիս, 1898։ Ն. Ակինյան, Գրիգորիս Ա կաթողիկոս Աղթամարցի..., Վիեննա 1958։ Մ. Ավդալբեգյան, Գրիգորիս Աղթամարցի, Երևան, 1963։

*Ու մուշթուլուխ տարան վարդին,*
*Թ՚ ելեր կու գայ քո սիրելին...*

Եվ քանի որ ինքը՝ բանաստեղծը չի բացահայտել իր բուն ասելիքը, ապա մի դեպքում դրանց մեջ տեսել են բնություն, մի ուրիշ դեպքում հայրենիքի, իսկ ավելի շատ սիրո և ուրախության գովք։

Իր ժամանակին հայ գրականության և հատկապես քնարերգության աշխարհականացման առաջընթացը մեծ նվաճումների է հասել նաև նման մշակումների ու այլաբանական ընդհանրացումների օգնությամբ։

Գրիգորիս Աղթամարցին, չնայած որպես կաթողիկոս չէր կարող իր ալատ խոսքն ասել ժամանակի տիրող իրականության վերաբերյալ, բայց նա ուներ իր որոշակի վերաբերմունքը.

*Հագարացիք օրինօք թիւր*
*Զազգս խանձեն որպէս բզհուր...*

Այս որոշակի ատելությունը՝ օտար բռնակալների դեմ ավելի ցայտուն դրսևորում է գտել Աստվածատուր Խաթայեցուն նվիրված վկայաբանական տաղում.

Գրիգորիս Աղթամարցու տաղերի շարքում զգալի տեղ ունեն բուն կրոնական թեմաները՝ արդեն հայտնի եղանակների ու ձևերի մեջ։ Այսպիսի երգերը իր ժամանակին ոչ միայն դրսևորում էին հեղինակի կրոնական զգացմունքները, նպաստում նրանց տարածմանը, այլև ծառայում էին հայոց եկեղեցու ամրապնդման գործին։ Դրանով, ըստ էության, կրոնական թեման վեր էր ածվում հայրենասիրական-քաղաքականի՝ օգնելով ժողովրդի մաքառման և գոյատևման ոգորումներին։

Արժեքավոր նմուշներ են Գրիգորիս Աղթամարցու անձնական տաղերը՝ կապված իր ուսուցիչ Գրիգոր Ռաբունու և իր միջև ծագած ինչ-որ խռովության հետ։ Նման բանաստեղծությունները, բացահայտելով հեղինակի հոգեկան ապրումները, անհատական մտորումները, ինքնին լայնացնում էին գեղարվեստական մտածողության միջնադարյան սահմանները և նորանոր երանգներով հարստացնում նրա հուզաշխարհը։

Պատկերը համեմատաբար լրիվ կլինի, եթե Գրիգորիս Աղթամարցու գրած կաֆաների հետ հաշվեն նաև միջնադարյան թարգմանական զրույցպատմությունների նկարազարդումները։ Դրանք իրենց ամբողջությամբ մի կողմից հայկական գեղարվեստական գրականությունն ավելի հասկանալի ու սիրելի էին դարձնում, իսկ մյուս կողմից՝ նրան մղում աշխարհականացման առաջընթաց դիրքեր։

Գրիգորիս Աղթամարցու բանաստեղծությունները գրված են մշակված, ավարտուն ձևերով, բարձր արվեստով, հյութեղ պատկերներով, դիպուկ համեմատություններով, բնության ու մարդու ազնվագույն հատկանիշների դրվատանքով և արևելյան կոչված ճոխ ու բազմապիսի երանգներով։

Գրիգորիս Աղթամարցու անունից անբաժան է Զաքարիա Գնունյանցի անունը, որն իր բանաստեղծական կարողություններով և նկարչական ընդունակություններով աշխատեց շարունակողը լինել իր ուսուցչի՝ Գրիգորիս Աղթամարցու զարգացրած ավանդների։ Նա. էլ մեծ ուշադրություն նվիրեց կաֆաների և հատկապես Աղեքսանդր Մակեդոնացու պատմության նկարազարդումների գործին։

Նահապետ Քուչակ.—Ծնվել է Վասպուրականի Խառակոնիս գյուղում. իր կյանքը ձգված է եղել XVI դարով մեկ.

Ես Քուչակս եմ Վաննցի,
Ի գեղէն Խառակոնիսայ.
Լցեր եմ հարիւր տարին,
Էլ չի գար մտքիկս ի վերայ...

Նահապետ Քուչակն ունեցել է համեստ կրթություն և երգիչ-բանաստեղծի նույնքան համեստ ընդունակություններ։ Ըստ երևույթին բնությունը նրան օժտած է եղել քաղցր ձայնով և գուսան-աշուղի փայլուն շնորհքով։ Նա կատարել է և՛ իր, և՛ ուրիշների գրած երգերը, հասնելով ճանաչված փառքի։ Հետագայում, մահից շուրջ երեք դար հետո, նրա փառքը ավելի մեծացավ, երբ թյուրիմացաբար սկսեցին նրան վերագրվել մեր միջնադարի ամենագողտրիկ երգերը՝ հայրենները։ Բանն այնտեղ հասավ, որ նրա իսկական երգերն այլևս անհարմար թվացին նրա անվան տակ պահելու համար։ Դա մի թյուրիմացություն է, որով արհեստականորեն հայ ժողովրդի և նրա հանճարեղ երգիչների X—XIV դարերում ունեցած նվաճումները եա էին բերվում XVI դար՝ գրվելով ոչ բնական ու ոչ պատմական պայմանների մեջ, ստեղծելով արհեստական երևույթ։

Նահապետ Քուչակի համարյա բոլոր սեփական երգերն էլ, ժամանակի սովորության համաձայն, իրենց մեջ կրում են հեղինակի անվան հիշատակությունը, և ոչ ոք չի կարող դրանք օտարել։ Ուստի այստեղ նա կներկայացվի իր իսկական ստեղծագործություններով։

Նահապետ Քուչակից պահպանված բանաստեղծությունների թիվն անցնում է մեկ տասնյակից[10]։ Նրանց մի մասը գրված է հայերեն, իսկ մի մասն էլ հայատառ թուրքերեն։ Բոլորն էլ ունեցել են եղանակ և երգվել են։ Հայերեն բանաստեղծություններից ուշագրավ է հայոց այբուբենի ծայրակապով գրված տաղը «Գովասանք սուրբ Աստուածածնին ի վաննցի Քօչակէ ասացեալ» խորագրով։ Դա հին ավանդների և դասական քնարերգության ոգով շարադրված բանաստեղծություն է, ուր ընդհանուր դրվատանք է իշխում «Մեղա, քեզ մեղա, կոյս անապական» կրկնակով։ Վերջում ևս հիշվում է հեղինակը. «Ես նուաստ Քօչակ, որ ասեն ի Վան»։ Առավել ուշագրավ է Նահապետ Քուչակի մի ուրիշ երգը՝ հետագայում գրի առնված ժողովրդից.

Հափսարական ականչ էրէք,
Գովամ զսանամէրն ու քաւոր...
Վանլի Քուչակ մեղքն ա լացեր,
Սանամէր, քաւորն ա գովացեր...

Միջնադարում տարածված է եղել ժողովրդականացած մի գողտրիկ քերթված «Թագուհի մի ես տեսայ» սկզբնատողով։ Այն մեզ է հասել և՛ անանուն, և՛ տարբեր անուն ունեցող երգիչների մշակմամբ։ Հայտնի են, օրինակ, Կիրակոս, Սարկավագ, Քուչակ երգիչների մշակածները։

---

[10] Մ. Աբեղյան, Երկեր, Բ, Երևան, 1967, էջ 11—23։ Աս. Մնացականյան, Հայկական միջնադարյան ժողովրդական երգեր, Երևան, 1956, էջ 272—288։ Օ. Եգանյան, Նահապետ Քուչակի հայատառ թուրքերեն տաղերը, «Բանբեր Մատենադարանի», № 5, Երևան, 1960, էջ 465—481։

Նյութը վերաբերում է Կոստանդնուպոլսի գրավմանը (1453), ինչպես նաև Զոյա (Սոֆիա) Պալեոլոգի ու ռուսական ցար Իվան III-ի ամուսնությանը։ Հայաստանում ևս մեծ հույսեր են կապվել այդ բարեկամության հետ՝ Բյուզանդիոնն ազատագրելու առումով։ Հին երազանքներն այստեղ մի անգամ ևս կենդանանում են՝ մահմեդականների լծից քրիստոնյա երկրները, այդ թվում և Հայաստանը փրկելու հույսի հետ։ Նահապետ Քուչակի մշակման մեջ ևս հատուկ տեղ է տրված այդ իրադարձություններին ու ձգտումներին.

Գուզալ մ' յերէկ տեսայ
Ի քաղաքն ի յԱնքուրեայ.
Թագաւորն էլ ի խնդիր եկաւ
Մոսկովայ ու Փորթուքալայ...

1450-ական թվականներից շուրջ մեկ ու կես դար էր անցել մինչև որ Նահապետ Քուչակը կմշակեր այդ նյութը. ուստի շատ բան է մշուշվել։ Մնացել է նորից ֆռանկների հույսը.

Ֆռանկն ուր ղալին վերայ
Ել կու տայ, ծովէն դուրս կու գայ.
Թէ. «Երթանք, Երուսաղէմ առնենք,
Յայլազգաց ձեռքն չի մնայ...
Իջնունք ի յէջմիածին...

Այստեղ, ավելի քան որևէ տեղ, երևան է եկել Նահապետ Քուչակի հայրենասիրությունը՝ ժողովրդականացած այդ երգի մշակմամբ ու տարածմամբ։ Զմռռանանք, որ նա այդ երգի մեջ է հիշում իր արդեն «հարիր» տարեկան լինելը։

Նահապետ Քուչակի հայատառ թուրքերեն երգերի մեջ առկա է աշուղ երգիչը։ Այստեղ աշխարհիկ գաղափարներն ու երգի արվեստը ավելի քան հստակ են. հավանաբար դրանք նրա երիտասարդական ավյունի արդյունքն են, երբ նրան հրավիրում էին թուրքական մեջլիսներին մասնակցելու։ Այստեղ իրոք զգացվում է երգչի շնորհքն ու սրամտությունը.

Բավ է, ով իմ սիրտ, տխրես դու այդքան,
Շաղ տուր գանձերդ առանց վարանման,
Մեզանից հետո շատերը կգան.
—Հեքիաթն այս,—կասեն,—ինչ գեղեցիկ է...
Կյանքդ, ղուլ-Քոչաք, ախով անց կացավ,
Այս արդար դատը ինչ գեղեցիկ է։

Երբ հաշվի ենք առնում, որ երգչի միջավայրում թուրքերեն գրված երգերը ևս հասկանալի էին, ապա ավելի հասկանալի է դառնում Նահապետ Քուչակի իր ժամանակին այնքան շատ սիրված լինելը։ Ինչպես Մ. Աբեղյանն է նկատել. Նահապետ Քուչակը մեր առաջին աչքի ընկնող այն երգիչն է, որով մեզ մոտ սկսվում էր աշուղական բանարվեստի զարգացումը։ Այն ուշագրավ դեմք է իր սեփական երգերով ու բանաստեղծություններով։

**Սիմեոն Ապարանցի.**—Եւ բընիկ գիւղն իմ Ապարանց
Ի յԱրծրունի ղարմէն շինած...

Այսպես է խոսում Սիմեոն Ապարանցին իր ծննդավայրի մասին։ Նա ապրել է XVI դարում, եղել է ժամանակի կրթված անձնավորություններից մեկը, պարապել է մանկավարժությամբ, կրթելով մի շարք անվանի գրագետ գործիչներ։ Գրել է նաև բանաստեղծություններ ու պոեմներ։

Սիմեոն Ապարանցուց պահպանված չափածո ստեղծագործությունների մեջ ուշագրավ է «...Ի վերայ Թախթին Տրդատայ Թագաւորին» ողբը։ Նման ստեղծագործություններ մեր միջնադարյան բանաստեղծության բնագավառում համարյա չկան։ Հայրենասեր բանաստեղծը ժամանել է Գառնի և այցելել Տրդատ թագավորի պալատը։ Պատմական անցյալի հուշերը և ժամանակի իրականության վիճակը հեղինակին պատճառում են փոթորկող ապրումներ. այդ ցնցող տպավորության տակ նա ստեղծում է իր հուզիչ ողբը։ Առանձնապես հաջողված են այն տները, որտեղ բանաստեղծը դիմում է տաճարի ձեղունին, սյուներին, խարիսխներին, դռանը, աստիճաններին, շրջապատին, գետին, լեռներին, աղբյուրներին, ճանապարհներին և պահանջում՝ պատմել անցյալի իրողության ու շեն օրերի մասին.

Այ անըսպառ ընթացք գետոյս,
Մի թագուցէր զքո տեսութիւն.
Պատմեա զպատիւ պայծառ թախթիս,
Եւ զՏրդատայ քաջ տէրութիւն...

Պատասխան չկա. լռության մեջ ամբողջապես սուզված մտքի և հույզի աշխարհը, բանաստեղծը դիմում է Մեսրոպ Մաշտոցին.

Այ հայր գթած՝ մեզօք որդւոցս
Կաթուղիկոս Մեսրովբ Մաշտոց,
Քաղցր ձայնիւ եկ, տուր ողջոյն...

Դա՝ իսկական բանաստեղծական ինքնաբուխ խոսք է՝ պատմական անցյալի և նրա մասին վկայող թափուր կոթողի մասին։

Սիմեոն Ապարանցու բանաստեղծական շնորհքը փայլում է նաև «Ի վերայ առմանն Թաւրիզու...» ողբում։ Միջնադարը շատ ողբեր է երկնել, նրանց մեջ անողոք ճշմարտությունն է նստած, մեղքի ու զղջման ձանձրալիության հասած բանաձևը։ Սիմեոն Ապարանցու ողբում շեշտը դրված է ոչ այնքան ողբի, որքան հույսի վրա, իսկ այս հույսն էլ ոչ թե կոնկրետացված է «ֆռանկների» կամ մի այլ տեղից ակնկալվող օգնությամբ, այլ ընդհանրացված է որպես մի մեծ ու հզոր ըմբռնում։ Տարբերությունը մեծ է. մի դեպքում գործ ունենք կոնկրետ փաստի հետ, իսկ մյուս դեպքում՝ բանաստեղծական մտածողության։ Այս հույսի գաղափարը ուրիշ է և վկայում է ստեղծագործական հաջողված գյուտ։ Կարելի է ողբից առանձնացնել «Է արեգակ...» բառերով սկսվող տունն ու հաջորդ երեք տները և ներկայացնել որպես ավարտուն ու հազվադեպ բանաստեղծություն՝ «Հույս» խորագրով.

Է՜ արեգակ, է՞ր կու ծագես զլոյսդ,
Մեր աչքըն որ զայն տեսնուն.
Է՜ շամանդաղ գիշերային,
Է՞ր փոխարկես զգոյն նսեմոյն։
Ջի դառնաշունչ օդ ձմերանն

Զանցնի, որ մեզ լինի գարուն.
Բայց ակն ունիմք Յիսուս փրկչին,
Որ ջերմ առնէ ղղոլ արևուն։
Սարըն հալի ըստ Երգոց երգոյն,
Քաղցրիկ հնչէ ձայն տատրակուն.
Մարդիկք միմեանց տան աւետիք,
Ասեն. «Եկաւ մեզ նոր գարուն»։
Չէ՛ պարտ կտրել ըղթել յուսոյն,
Քան զԻսրայէլ ի Բաբելոն.
Այլ յոյս առնել զմանկունս հրրոյն
Եւ երգեսցուք զերգըս նոցուն...

Բոլոր առումներով սա արգեն լիարժեք բանաստեղծություն է, ուշագրավ նվաճում։

Սիմեոն Ապարանցին գրել է մի ընդարձակ պոեմ՝ նվիրված հայ ժողովրդի պատմությանը, որն ունի պատմա-գիտական կարևոր նշանակություն։ Այն հավանաբար հետապնդել է ուսուցողական նպատակ։ Սակայն, երբ մտաբերում ենք բանաստեղծի ապրած ժամանակը, ապա չենք կարող չնկատել նրա նաև հայրենասիրական նշանակությունը։ Աշխարհով մեկ ցրիվ եկող հայությանը նման ստեղծագործություններով բանաստեղծները կապում էին ազգ ու հայրենիք գաղափարներին։

Այդ ոճբին հիշատակարանի կարգով հեղինակը կցել է նաև հայրենի Ապարանից ս. Նշանին վերաբերող հայրենասիրական մի ուրիշ քերթված՝ ինքնատիպ խոհերով ու տրամադրություններով։

Իր ստեղծագործություններով և գործունեությամբ Սիմեոն Ապարանցին հանդիսացել է հայ միջնադարի ջերմ հայրենասերներից և աչքի ընկնող բանաստեղծներից մեկը։

**Հովասափ Սեբաստացի.**—XVI դարում հայկական կյանքը որոշակի աշխուժացում է ապրում Փոքր Հայքում՝ Սեբաստիայում, ինչպես նաև Թոխաթում և Ամասիայում։ Հայտնի են դառնում այդ կողմերից ելած քաղաքական գործիչներ՝ Աբգար Դպիր Թոխաթցին, նրա որդի Սուլթանշահը, Միքայել կաթողիկոս Սեբաստացին, Խոջա Խըտըր Ամասիացին և ուրիշներ։

Նշված քաղաքներում երևան են գալիս կրթա-մշակութային հաստատություններ՝ տալով մի շարք գրագետներ, այդ թվում նաև բանաստեղծներ։ Նրանց մի մասին վիճակվում է ապրել ու գործել հայրենի հողի վրա, իսկ մյուս մասին հալածական պայմանները նետում են օտար երկրներ։ Այդպիսիներից են Հովասափ, Թադեոս, Ղազար Սեբաստացիները, Մինաս, Ստեփանոս, Խաչատուր, Հակոբ Թոխաթցիները և ուրիշներ։ Նրանք ստեղծում են հայրենասիրության, սիրո, բնության թեմաներով արժեքավոր բանաստեղծություններ, հատուկ տեղ տալով երգիծական տաղերին, ինչպես նաև կրոնական, իմաստասիրական խնդիրներին։ Ամբողջությամբ վերցրած Փոքր Հայքից ելած այդ հեղինակները կարողանում են նոր կյանք ներարկել անբարենպաստ պայմաններում գտնվող հայ գրականությանը և հանդիսանալ նրա զարգացման ուշագրավ օղակներից մեկը։

XVI դարի առավել աչքի ընկնող բանաստեղծներից է Հովասափ Սեբաս-

տացին[11]։ Ենթադրվում է, որ նա ծնվել է 1508—1513 թթ. իսկ մահվան տարին պիտի որոնել 1564-ից հետո, թերևս, ընդհուպ մինչև 1596 թվականը։

Հովասափ Սեբաստացին իր սկզբնական կրթությունն ստացել է հոր՝ Թադեոս քահանայի մոտ, որը և՛ գրիչ էր, և՛ նկարիչ, և՛ բանաստեղծ։ Այդպիսին դարձավ նաև Հովասափը։ Առհասարակ նրանց ընտանիքի բոլոր անդամները, իրենց կարողությունների համապատասխան, ծառայում էին գրչության և մանրանկարչության գործին։

Հովասափ Սեբաստացին ևս, Գրիգորիս Աղթամարցու և Զաքարիա Գնունյանցի նման, շատ է տարվում Աղեքսանդր Մակեդոնացու պատմության ընդօրինակման և նկարազարդման աշխատանքներով։ Ըստ երևույթին ժամանակի քաղաքական ծանր իրականությունը մղում էր ազատության ծարավը հագեցնել այդ դյուցազնավեպի ժողովրդականացմամբ։

Հովասափ Սեբաստացին, սակայն, լոկ դրանով չի բավարարվում. նա մշակման նյութ է դարձնում նաև Ներսես Մեծի տեսիլը, Մուշեղ Մամիկոնյանի հերոսական կյանքը, ինչպես նաև վարքաբանական-վկայաբանական ուրիշ նյութեր՝ հագեցված հայրենասիրությամբ։ Բանաստեղծի խառնվածքը չէր կարող նրան անտարբեր պահել իր օրերի արյունահեղ ավերածությունների նկատմամբ։ «Վասն մեղաց մեր մահացու» և «Փրկիչ, մի՛ տար զմեզ ի փործանք չարին» բանաստեղծությունները նվիրված են հենց այդ թեմային։

Այս բոլոր ստեղծագործությունների մեջ առկա է Հայոց աշխարհի երբեմնի անկախության ու ազատության չխամրող գիտակցությունը, առօրյա սորկացնող իրականության նկատմամբ աճող անհանդուրժողականությունը և ազատագրվելու երազանքը։ Պայծառ է հույսը ապագայի նկատմամբ հատկապես այն տողերում, որտեղ հեղինակը ազատագրվելիք Հայաստանի նոր կարգ ու կանոնն է երևակայում.

Ոչ գտանի զրկող և ոչ մարդասպան,
Ոչ աւազակ և գող թշնամական,
Զի ոչ պիտոյանան սուսեր կամ այլ բան,
Ամենեքեան հաւասար փառս աստուծոյ տան...

Համամարդկային խաղաղ ու լուսավոր ապագայի ծրագիր է դա՝ միջնադարի ամենամռայլ պայմաններում։ Իրականում, սակայն, պատկերն այլ էր.

Ի մէջ վշտաց ենք տաղնապու,
Սարսեալ դողայ երկիր Նորու,
Լսենք զաւերն Ըսպերու,
Խնուզ, Բասեն, յԱրզրումու,
Դերջան, Բաբերդ և զՄշու,
Բաղէշ, Կեղի, Երզնկանու,
Անպարտ արիւն բազում հեղու...
Վիշտն էր բազում Յովասափու...

Այս ընդհանուր հենքի վրա է, որ բանաստեղծն այնքան այրող կարոտով ու խանդով է հիշում անցյալի ժամանակները.

---

[11] Հովասափ Սեբաստացի, Բանաստեղծություններ, աշխատասիրությամբ Վ. Պ. Գևորգյանի, Երևան, 1964։

Քաջն Մուշեխ Մամիկոնեան
Նեղ էած զաշխարհն Պարսկաստան
Եւ ի բազում ժամանակեան
Անկախ պահեր ըզՀայաստան...

Հայրենասիրական, ազատագրական նման մտորումները միայն Հովասափ Սեբաստացու ցանկությունների և զգացմունքների արգասիքը չէին։ Դրանք հուզում էին նաև ուրիշներին։ Սեբաստիան այդ ժամանակ հենց այն կենտրոնն էր, ուր տեղի ունեցավ դաղտնաժողով՝ երկրի ազատագրության ակնկալություններով, և այդ նպատակով Աբգար Թոխաթցին Հռոմ առաքվեց։

Առանձին ուշադրության են արժանի նաև բանաստեղծի խոհախրատական ստեղծագործությունները, որոնք մի կողմից քննում են կյանքի ու մահվան հարաբերության փիլիսոփայությունը, իսկ մյուս կողմից՝ մղում դաստիարակության համար օգտակար եզրահանգումների ու խորհուրդների։ Այս առումով փայլուն գոհարներ են նրա «Աշխարհիս սահմանն է հանց» տողով սկսվող կաֆաները։ Օգտվելով հայրենների հարուստ ու հին ժառանգությունից, Հովասափ Սեբաստացին ստեղծել է նորօրակ կաֆա-հայրեններ։ Նույնը պիտի ասել նաև «Յիշէ զբան Աւետարնին» տողով սկսվող շարքի մասին.

Կաւոյ ժամն երկաթն է լաւ,
    Քան զոսկի և գանձ պաստական.
Աշխարհիս իմաստութիւնն է բարի,
    Քան զգանձն անցական։
Բարի ցուլեան կայն փովնն
    Գեղեցիկ, որ հաց լիննեան,
Եւ ոչ թէ բարի արտէ
    Եւ գնոց, որ փուշ լիննեան...
Ջայն ձին ոչ առեն աղեկ,
    Որ ոսկով է սաղքն ի լըման,
Այլ է քաջայսիրտ, ուժեղ,
    Աժընգակ ձին է գովական...

Կոստանդին Երզնկացուց և Հովհաննես Թլկուրանցուց սկզբնավորված աշխարհիկ սիրո նորաշունչ երգերի թելը բարակցած էր։ Եվ ահա Հովասափ Սեբաստացին հիշում է այդ իրողությունը.

Յայն առաջին ժամանակին
Սիրու բաներ շատ լինէին...

Ամեն ինչում չափի զգացումը պահող բանաստեղծը աշխատել է այստեղ էլ մնալ իր սկզբունքներին հավատարիմ։ Նրանից հայտնի է ընդամենը սիրո տասը երգ։ Դրանք բոլորն էլ անմիջականությամբ և հուզիչ տրամադրություններով հագեցված փոքրիկ, ամփոփ, 6—7 քառորդ տնից բաղկացած մրմունջներ ու տրտունջներ են։ Խոսվում է մաքուր ու պարկեշտ սիրո մասին. երկուսն էլ՝ թե՛ տղան և թե՛ աղջիկը, այրվում են միմյանց սիրով, բայց կարծես ամաչում են նույնիսկ իրարից։

Ուստի, եթե խոսում են նրանք միմյանց հետ, ապա թոթովում են միայն սրտի խորքից եկող անզսպելի բառեր։ Բանաստեղծը արդեն երիտասարդ վա-

նական է՝ սև սքեմի մեջ։ Աղջիկը վախենում է այդ սքեմից. չլինի թե նրա հագնողը կուսակրոնության դատապարտվի.

Ինձի պացխուն երեր կրկին.
—Թուխ հագնելուտ՝ սիրտս խոցին...

Աղջիկն ինչ-որ պատճառով վշտացած է, խռովել է։ Տղան չի կարող դիմանալ նրա լուռ մնալուն, «խոլոռ» նայելուն, ուստի աղերսում է շշուկով.

Վանց աստուծոյ, հաշտէ շուտով,
Եւ զրուցէ ծիծաղելով.
Ես կու նայիմ հետ քեզ սիրով,
Ցոտից մատանց ես նազերով...

Հովասափ Սեբաստացին ունի նաև հոգևոր բովանդակությամբ մի շարք բանաստեղծություններ, որոնք հավատացյալի անձնական ապրումների արձագանքներ լինելով, օգնում են հեղինակի մասին ամբողջական պատկերացում կազմելուն։

Առանձին խումբ են կազմում Հովասափ Սեբաստացու տոմարագիտական ոտանավորները։ Դրանք չափաբերված գիտական տեղեկություններ են՝ շարադրված հավանաբար ուսուցողական նպատակով։

Հովասափ Սեբաստացին ունի նաև վկայաբանություններ՝ արձակ շարադըրանքով, որոնք կարոտ են ամբողջացման։

Թադեոս Սեբաստացի.—*Թուրքական բռնատիրության վայրագ միջոցառումներից մեկն էլ մանկահավաքն էր, «դևշիրմեն», երբ բռնությամբ խլվում էին քրիստոնյա հպատակների երեխաները, նրանցից հատուկ դաստիարակությամբ ենիչերիների բանակ ստեղծելու համար։ Մանկահավաքը մեծ չափերի հասավ հատկապես XV—XVI դարերում։ XVI դարից հայտնի են 1531, 1536, 1543, 1547, 1550 և այլ թվականներին կազմակերպված մանկահավաքներ։ Դրանցից մեկի ողբերգական նկարագրությունն է, ահա, որ թողել է այն ժամանակվա բանաստեղծներից Թադեոս Սեբաստացին։ Այդ ստեղծագործությունը, որ կոչվում է «Ողբ ի վերայ մանկանց, որ գերի տարան ի քաղաքն Ստամբօլ», վերաբերում է 1531 թ. մանկահավաքին[12]։ Բանաստեղծն այստեղ սրտամորմոք կսկիծով խոսում է այն մասին, թե ինչպես, լսելով այդ աղետաբեր լուրը, շատերը փախան դեպի լեռներն ու անտառները, որը, սակայն, նրանց փրկություն չբերեց.*

Զամեն տըղային ի մի վայրս ըմբըռնէին,
Բանդ և զընտան եդեալ զնոսա պահէին։
Եւ ի քաղաքն առեալ զնոսա տանէին,
Ծընօղքն և ազգականքն ի հետ երթային...
Ցայնժամ վայ և եղուկ իւրեանց ասէին,
Հող ըզգլխովն իւրեանց առեալ ցանէին...

Հայկական միջնադարյան դրականության մեջ հաճախ են հիշվում Հայր Աբրահամի ու Իսահակի փորձությունը, երեք մանկանց հրկիզումը, Սեբա-

---

12 «Հանդես ամսօրեայ», 1957, № 11—12, էջ 588—595։

տիայի քառասուն մարդկանց կոտորածը, բայց նրանցից ոչ մեկը թերևս այնքան ազդեցիկ չէ իր մշակումով, որքան Թադեոս Սեբաստացու ողբը։ Ուշագրավ է հեղինակի ընդհանրացումը. նա երանի է տալիս հավատքի համար կոհված վերոհիշյալ մանուկներին, ուստի և այդ հենքի վրա առավել ցցուն դարձնում մանկահավաքի զոհերի ողբը, որոնց տանում էին ոչ թե սպանելու, այլ ծառայեցնելու իրենց հրեշավոր նպատակներին։ Բանաստեղծը ծնողական ողջամիտ կսկիծով ցանկալի է համարում նրանց հերոսական մահը, քան բռնի կրոնափոխությունը։ Երանի, ասում է նա՝

Զի թէ մանկունքըն մեր նահատակած էր,
Եւ կամ վասն աստուծոյ հըրով այրած էր,
Եւ կամ նըման սըրբոցըն քարկոծած էր...

Ինչո՞ւ. որովհետև այդպիսի դեպքում նրանց գերեզմանը՝

Ազգին քրիստոնէից տեղ պարծանաց էր...

**Մինաս Թոխաթցի.**—*XVI դարում Սեբաստիայից ոչ հեռու գտնվող Թոխաթ (Եվդոկիա) քաղաքում զարգացած արհեստն ու առևտուրը, կապը հեռավոր երկրների հետ նպաստավոր պայմաններ էին ստեղծել նաև դպրության և առհասարակ հասարակական մտքի զարգացման համար։ Բավական է հիշել Աբգար Թոխաթցուն, որը Սեբաստիայում գումարված գաղտնաժողովի ընտրյալը հանդիսացավ։ Թոխաթը տվեց նաև ուրիշ գործիչներ, որոնց մեջ որպես բանաստեղծներ անվանի եղան Մինաս Թոխաթցին, Ստեփանոս Թոխաթցին, Խաչատուր Թոխաթցին, Ղազար Թոխաթցին և Հակոբ Թոխաթցին[13]։ Բոլորն էլ բանաստեղծ-գրագետներ, որոնց, սակայն, չէր վիճակվել մինչև վերջ ապրելու հայրենի քաղաքում։*

*Դարավերջի քաղաքական իրադրությունները և հատկապես ջալալիների ավազակաբարո ասպատակությունները ինչպես շատերին, այնպես էլ նշված բանաստեղծներին նետեցին պանդխտության գիրկը։ Նրանք աստիճանաբար տեղափոխվեցին և տեղավորվեցին Լեհաստանում, Ղրիմում և Վալախիայում։*

*Մինաս Թոխաթցին իր նոր հայրենիքում՝ Վալախիայում, զբաղվեց հիմնականում նոտարությամբ, դառնալով տեղի հայոց դատավարական մարմնի քարտուղարը։ Նրա կազմած արձանագրությունների մի քանի հատորներն այժմ գտնվում են Վիեննայի Մխիթարյանների մատենադարանում։*

*Մինաս Թոխաթցին ծնվել է 1510 թ. և ապրել մինչև 1622 թվականը, բոլորելով շուրջ 110-ամյա մի կյանք։*

*Նրանից պահպանվել են մի շարք բանաստեղծություններ՝ գրված լեհահայ գաղութում. դրանցից մեկը՝ «Ողբ Օլախաց երկրին», նկարագրում է հայերի ծանր վիճակն այդ նոր հանգրվանում՝ այս անգամ հունադավան-օրթոդոքս եկեղեցու հարուցած ծանր հալածանքներով։ Հեղինակն այդ առիթով ողբում է առհասարակ հայ ժողովրդի կրած բոլոր հալածանքները և նրա թափառական ու անուրախ առօրյան. հավատուրացություն, եկեղեցիների հրկիզում ու ավերում, զանգվածային բանտարկություններ, ձեռագրերի հրկիզում, բռնի մկրտություն և այլն։*

---

[13] Ն. Ակինյան, *Հինգ պանդուխտ տաղասացներ*, Վիեննա, 1921, էջ 55—114։

Մինաս Թոխաթցուց պահպանվել է նաև մի ինքնատիպ, զավեշտական ոտանավոր՝ նվիրված «Հարիսա» ճաշի գովքին։ Զավեշտն ընդգծելու նպատակով նա կանգ է առնում ազգագրական, կենցաղային ու անձնական կյանքի մի շարք մանրամասների վրա, որոնցով նրա ոտանավորը մի կողմից ստանում է ճանաչողական արժեք, իսկ մյուս կողմից՝ դառնում միջնադարյան բանաստեղծության կաշկանդված սահմանները ես փոքր-ինչ լայնացնելու միջոց։

**Ստեփանոս Թոխաթցի**.—Թոխաթից փախածներից մեկն էր Ստեփանոսը, որին մահվան զուրն էին նետել մահմեդական ասպատակողները, սակայն պատահաբար ողջ էր մնացել և հաջողացրել հասնել Կաֆա։ Ծնվել է 1558 թ. Թոխաթում, պանդխտությամբ ապրել Ղրիմում և կյանքի մայրամուտին վերադարձել ու 1680 թ. մեռել հայրենի քաղաքում։

Ստեփանոսը, Կաֆայից բացի, ապրել է նաև Սուրխաթի սուրբ Նշան կամ սուրբ Խաչ վանքում։ Եղել է ուսուցիչ, գրիչ և բանաստեղծ։ Նրա չափածո ստեղծագործություններից ուշագրավ են Թոխաթի ավերման ողբը, Կաֆա քաղաքի գովքը, ինչպես նաև երգիծական ոտանավորները։

«Տաղ և ողբ ի վերայ Եւդոկիոյ մեծի քաղաքին...» ստեղծագործության մեջ մեծ վշտով ու կարոտով նկարագրված են Թոխաթի շեն օրերն ու նրան հասած պատուհասը (1602)։ Ընթերցողի առջև պատկերվում է քաղաքն իր գետերով, բաղնիսներով, իշխաններով, շուկա-խանութներով, վաճառատներով, գործվածքեղենով, «գդակկարնոցներով», ոսկերչանոցներով, որոնց թվարկումը կիսատ թողնելով, բանաստեղծը գրում է.

Զոր մէկն ասեմ զմաթխանին,
Զփէշաքարնին և զարվեստնին,
Սիրտս կայրի և կըսկծի...

Իր ծանր վիշտն ու կարոտը մոռանալու համար, բանաստեղծը մերթ-մերթ ուրախության առիթներ է որոնում՝ ծիծաղի նյութ դարձնելով կենցաղային անհարմարությունները, հատկապես ճանճերի, լվերի, փայտոջիլների պատճառած անհանգստությունները։ Այդ ժամանակ նա եղել է Սուրխաթի սուրբ Խաչ վանքում, ուր շատերի հետ զբաղվել է ձեռագրեր ընդօրինակելով և իր աշակերտներին սովորեցնելով։ Ուստի ոտանավորի մեջ մասամբ երևում է նրանց առօրյան.

Ճանճեր բազում են ի յայս տեղս,
Որ կու կենան ի յայս պատերս,
Կանհանգըստեն ըզգրագրերս,
Եւ կու նեղեն զաշակերտներս...

Այս երգիծական ոտանավորները տարբերվում են Մարտիրոս Կաֆացու, Մինաս Թոխաթցու նման ստեղծագործություններից նրանով, որ երգիծանքի նոր առարկաներ են գտնվել։ Դարձյալ «մանրուքներ», սակայն դարձյալ գրական հետաքրքրության սահմանների մասնակի լայնացում, կյանքի նոր կողմերի ընդգրկում։

**Խաչատուր Թոխաթցի**.—Թոխաթցի բանաստեղծները ոչ միայն Լեհաստան

ու Ղրիմ էին հասել, այլև Արևմտյան Եվրոպայի երկրներ։ Նրանցից մեկն էր խաչատուր Թոխաթցին։ Կենսագրական տեղեկություններ համարյա չկան։ Հայտնի է միայն, որ 1616 թ. նա, Վենետիկից Կոստանդնուպոլիս վերադառնալիս, նավի մեջ գրում է «Պատմութիւն Վէնէտկոյ քաղաքին» ընդարձակ քերթվածը[14]։

Հայ իրականության համար դա մի հետաքրքրաշարժ ստեղծագործություն էր՝ հեքիաթային Վենետիկի շլացնող առօրյայի մասին։ Բանաստեղծը նկարագրում է իր՝ ականատեսի տպավորությունները՝ քաղաքի ընդհանուր տեսարանների, առանձին շենքերի, ծովի, նաև մարդկանց, նրանց ծեսերի ու կենցաղի առանձին մանրամասնությունների վերաբերյալ։ Թվարկելով հնությունները ու հարստությունները, մշտապես ավերվող ու թալանվող երկրի պավակը զարմանքով նկատել է, որ

Հազար 'ւ երկու հարիւր տարի,
Որ Վենետիկ շինեալ կայ.
Զարկամաց ձեռք իսկի չանկեր,
Եւ ոչ կրակ հրդեհեր զնա։
Զինչ որ ունի վաղուց հետէ
Եւ ի պապանց՝ մնացեալ կայ...

Նա միաժամանակ ավելացնում է, թե իր այդ զարմացումի վրա ուրիշները ծիծաղել են, հիշելով ուրիշ սքանչելիքները. «Արի գնա Ըսպանիա... Անատոլի, Ալիկունա, Ֆլօրենցա, Կըռանտուքա, Միսինիէ և Փալմերէ, Մարչիլիա, Ֆըռանցիսի, Ճինէվա... Ցիցիլիա և Ալուման, Փարէզ քաղաք...»։

Հեղինակը, սակայն, զարմանալով ու հիանալով հանդերձ, հոգով կապված է հայրենի Թոխաթին.

Ամենեքեան բարով վայլեն...
Թոխաթ քաղաք հերիք ինձի...

Կարծիք է հայտնված, որ խաչատուր Թոխաթցին Հովհաննես Տերզնցու որդին է և մասնակցել է «Պատմութիւն Փարէզի ու Վեննայի» պոեմի թարգմանությանը։ Հովհաննես Տերզնցին իր խաչատուր անունով որդու հետ, իրոք, եղել է Հռոմում, Վենետիկում, Մարսելում, ուր և գլուխ է բերել նշված պոեմի փոխադրությունը։ Բայց այդ երկու խաչատուրների նույնությունը ապացուցված չէ։

Հովհաննես Տերզնցին, որ ծնվել է մոտավորապես 1540-ական թվականներին և մեռել 1630-ին՝ Հռոմում, մեծ գործ է կատարել «Փարէզ և Վեննա» պոեմը հայկականացնելով։ Հայկական միջնադարյան քնարերգության մեջ, ուր այնքան քիչ են թարգմանական չափածո աշխարհիկ երկերը, դա բացառիկ երևույթ էր, որը մեծ սիրով է ընդունվել ու մանրանկար զարդարանքով տարածվել դարեր շարունակ[15]։

**Հակոբ Թոխաթցի.**—Մականունն է Բաղունենց։ Ծնվել է Թոխաթում 1563 թ.։ Հավանաբար դարավերջի խժդժությունների ժամանակ փախել է

[14] Տե՛ս «Պատմութիւն Փարէզի և Վեննայի,·Պատմութիւն Վենետիկ քաղաքին», աշխատասիրությամբ՝ Կ. Ա. Մելիք-Օհանջանյանի, Երևան, 1966, էջ 235—286։

[15] Տե՛ս նույն տեղում, էջ 89—234։

Լեհաստան, ապրել, ստեղծագործել և մեռել այնտեղ 1680 թ.։ Ուսուցիչն է եղել մի ուրիշ Հակոբ՝ Այվաթենց մականունով, որը նույնպես հետագայում գնացել է Լեհաստան։

Որպես բանաստեղծ Հակոբ Թոխաթցին սովորական բանաստեղծություններ գրելուց բացի, զբաղվել է նաև ուշագրավ փոխադրություններով ու թարգմանություններով։ Հետաքրքրական են նրա փորձերը Սաղմոսարանի և Գրիգոր Նարեկացու Մատյանի որոշ գլուխների չափաբերման ուղղությամբ, որոնցով նա ստեղծում է ընթերցանության, ավելի ճիշտ՝ երաժշտության նոր ձեռնարկներ։ «Մատեան ողբերգութեան» պոեմի մի մասը նա հարմարեցնում է գանձերի արվեստին («Ձայն ողբոյ» ակրոստիքոսով)։

Ձայն հառաչանաց,
Երգ պաղատանաց,
Այս բան մաղթանաց...
Լուր, տէր, և ողորմեա...

Հակոբ Թոխաթեցու անհամեմատ խոշոր ու մնայուն գործերից գլխավորը «Յոթ իմաստասիրաց պատմության» թարգմանությունն էր, որ նա կատարեց, ինչպես ենթադրում են, լատիներենից, 1614 թ.[16]։ Հնդկական ծագում ունեցող այդ երկը, որ վաղուց ի վեր դասվել էր համաշխարհային գրականության գլուխգործոցների շարքը, առաջին անգամն էր թարգմանվում հայերեն և դառնում զանգվածային ընթերցանության առարկա։ Այն տպագրվել է բազմիցս։ Այդ գործով Հակոբ Թոխաթցին մեծապես լայնացնում էր հայկական միջնադարյան գեղարվեստական արձակի սահմանները՝ «Աղեքսանդրի պատմության», «Պղնձի քաղաքի պատմության» և թարգմանական մյուս գործերի կողքին դնելով հետաքրքրական զրույցների դեղեցիկ մի փունջ։

Թոխաթ քաղաքը նույն ժամանակներում ծնեց նաև ուրիշ բանաստեղծներ, որոնցից և ոչ մեկին չէր վիճակված ապրել և ստեղծագործել հայրենի քաղաքում։ Բայց նրանք ուր էլ եղան, չմոռացան իրենց ծննդավայրը, նրա ծաղկուն օրերն ու կրած դառն պատուհասը։

**Վրթանես Կաֆացի**.—Ղրիմը, որ տարաշխարհիկ հայության խոշոր ու հին կաղթօջախներից մեկն էր, XVI—XVII դարերում առանձին նշանակություն է ձեռք բերում, որպես համեմատաբար խաղաղ անկյուն։ Առանձին դեր է վիճակվում Կաֆա (Թեոդոսիա) քաղաքին։ Բարեբեր ու վաճառաշահ այս քաղաքում կային տասնյակ հայկական եկեղեցիներ, որոնցից 7-ը մինչև հիմա էլ կանգուն են։ Այստեղ ծաղկում էր հայ գրչությունը, մանրանկարչությունը, որմնանկարչությունը, բանաստեղծությունը, գիտությունը, առևտուրը, արհեստները։ Մանրանկարչության գծով մեծ գործ է կատարում Նիկողայոս Ծաղկարարը, որից մեզ հասած ձեռագրերի թիվն անցնում է երեք տասնյակից։ Ոչ պակաս հուշակ է վայելում Խասպեկ երեցը ոչ միայն որպես նկարիչ, այլև բանաստեղծ, երաժիշտ։ Խաչդուռ Կաֆացին գրի է առնում հայրենի երկրի տարբեր գավառներից եկած և Կաֆայում նոր տեսք ստացած ու տեղայնացած ժողովրդական երգերի ամենաընտիր փունջը, ստեղծում ղրիմահայության ժամանակագրությունը, իսկ Վարդան Կաֆայեցին՝ տեղի հոգևոր առաջնորդը, զբաղվում է եկեղեցիների նորոգմամբ և նրանց գովքն ու պատմությունը չափաբերելով։

16 Տե՛ս Ն. Ակինյան, Հինգ պանդուխտ տաղասացներ, էջ 139—202։

Ղրիմ են տեղափոխվում նաև լեհահայության որոշ գործիչներ, այդ թվում նաև Վրթանես վարդապետը։ Իր ծննդավայրի մասին խոսելիս նա գրում է. «Ի գաւառէն Այրարատի և ի գեղջէն Գիլանեցի...»։ Ծնված է համարվում 1520-ական և մեռած 1570-ական թվականներին։ Ձակատագիրը նրան կապում է երեք բնակավայրերի հետ, որոնցից վերջինը Կաֆան է։ Դեռևս Լեհաստանում եղած ժամանակ նա գրել է մի շարք բանաստեղծություններ։ Այդ շարքը լրացնում է Կաֆայում, որի եպիսկոպոսն էր դարձել[17]։

Նրա բանաստեղծություններից մի քանիսը, գրված Գրիգորիս Աղթամարցու ազդեցությամբ, նվիրված են Լվովի հայության առաջնորդ Գրիգոր Վանեցուն, իր երբեմնի դասընկերոջը։ Դրանք ցույց են տալիս, որ Աղթամարցու տաղերը՝ հորինված ոչ շատ ժամանակ առաջ, արդեն հասել էին Լվով, որը ուշագրավ է նաև գրական կապերի առումով։

Վրթանես Վարդապետի բանաստեղծությունների մեջ հայրենասիրական առումով նշանակալից են Կաֆայում նահատակված Պարոն Լույսին նվիրված տաղերը։ Որպես վկայաբանական ստեղծագործություններ, դրանք նորություն չէին, բայց իրենց արվեստով կրկնություն չէին։ Նրանց արժեքը, սակայն, գրա մեջ չէր, այլ՝ հասարակական-քաղաքական նշանակության։ Նահատակ-հերոսը քաջաբար տանում է բոլոր զարհուրելի տանջանքները։ Նա իր պարտքը՝ հայրենիքի և մայր ժողովրդի հանդեպ կատարում է գերմարդկային անձնուրացությամբ։ Բայց դա տեղական նշանակություն ունեցող սրտառուչ մի միջադեպից այն կողմ չէր անցնի, եթե բանաստեղծները նրանց կյանքից ու մահից չստեղծեին գովքեր, ողբեր, դանձեր։ Այս եղանակով նահատակները վեր էին ածվում սիրված հերոսների՝ ընդդեմ բոլոր բռնակալների ու բարբարոսությունների։ Ղրիմի հայ գաղթօջախում Պարոն Լույս նահատակի անունը հատկապես Վրթանես Վարդապետի տաղերի շնորհիվ դառնում է հայապահպանության մի նոր ազդակ՝ թուրք-թաթարական հալածանքների դեմ.

Տանըս Հայաստանեայց մեծ ուետիս է,
Լուսաւորչի ցեղի շատ խնդութիւն է...

Այսպես է բանաստեղծը գնահատել Պարոն Լույսի նահատակությամբ ձեռք բերված բարոյական հաղթանակը։

Վրթանես Վարդապետի բանաստեղծությունների մեջ կա մի ընդարձակ քերթված, որը նոր երանգ է ավելացնում հայ քնարերգությանը։ Հավանաբար հենց Կաֆայում եղել է մի հարուստ և անգրագետ հայ, որն ունեցել է ձեռագրեր, բայց չի տվել ուրիշներին ընթերցելու։ Գիրքը արգելքի տակ, նրա բովանդակությունը՝ բանտարկված. ահա այս երևույթի դեմ է, որ բողոքում է բանաստեղծը՝ ստեղծելով, հիրավի, ինքնատիպ խրատների շարք։ Այդ գործի խորագիրն ասում է. «Ոմն մեծատուն ունէր Քարոզգիրք, Մեկնիչ արարածոց ոսկիապատ, գեղեցիկ, ոչ գիտեր գիր և ոչ կարդալ, և ոչ տայր մարդոց կարդալ, որ ուսանէին»։

Բանաստեղծն իր խոսքը դիպուկ դարձնելու նպատակով մերթ խոսում է այն ազնիվ մարդու մասին, որն ստեղծել է որևէ բարիք, մերթ էլ՝ այն տգետ մարդու, որն արգելում է այդ բարիքից օգտվել.

---

[17] Տե՛ս նույն տեղում, էջ 1—53։ Այստեղ կոչված է Վրթանես Սոնկեցի։

*Մէկ մարդ մի ճրրագ վառեր,*
*Բարձր ի տեղ դրեր.*
*Մէկ մի խիստ յիմար եղեր,*
*Ձճրագն ի վայր է առեր.*
*Տարեր սունտուկն է դրեր,*
*Ըղնորին լույսն է արգիլեր,*
*Վայ այն մարդու հոգուն,*
*Որ ըզլոյսն առեալ թագուցեր...*

Խաչգռուզ Կաֆայեցի.—*Այս հեղինակը ոչ այնքան բանաստեղծ է, որքան ժողովրդական քնարերգության հավաքող ու փրկող, որի անվան հետ է կապված հայկական միջնադարյան երգերի ամենամեծ ու ամենաընտիր փունջը*[18]*։*

*Խաչգռուզը ծնվել է 1592 թ., հավանաբար, Ղրիմի Կաֆա քաղաքում, ուր և ապրել է իր ողջ կյանքը։ Նրա կողմից է ստեղծված նաև ղրիմահայության կյանքին վերաբերող ամենաընդարձակ ժամանակագրությունը*[19]*։ Վերոհիշյալ ժողովրդական երգերն ու ժամանակագրությունը, բազմաթիվ այլ նյութերի հետ միասին մեզ է հասել նրա ինքնագրով։ Ուշագրավ է, որ տեղ-տեղ նա ժողովրդական երգերի մեջ հյուսում է և իր անունը, չմոռանալով նշել, որ դրանք «պար»-եր (պարերգեր) են՝ սովորած դեռևս իր պատանեկության տարիներին։*

*Ժողովրդական այդ երգերի մեջ, անշուշտ, կան այնպիսիները, որ շատ հնից են գալիս, բայց կան նաև նմուշներ, որոնք կամ տեղում են ստեղծվել, կամ էլ հնից ու հայրենիքից Կաֆա հասնելով, տեղայնացվել են՝ կապվելով Կաֆայի և XVI—XVII դարերի իրականության հետ։ Ուստի այդ ժամանակների դրականության մասին խոսելիս, չի կարելի մոռանալ սույն պարագան, մանավանդ, որ նրանք մեծապես ազդել են Ղրիմի և հատկապես Կաֆայի հայ բանաստեղծների ստեղծագործությունների վրա։*

*Ջարսանեկան կենաց ծառի հնամենի գովքի վերջին մասում Կաֆայի հայերը հյուսել են իրենց հույսը՝ Կաֆայում և նրա շրջակայքում աճելու ու ամրանալու.*

*Թէ տան ՚ւ ընտանի տունկն պատրուսէր,*
*Որ երթար աճէր, թագաւոր.*
*Աճէր ու դիճէր, աճէր ու դիճէր,*
*Ծլներ Կաֆային դաշտերն ծածկեր, թագաւոր...*

*Ժողովրդական այդ երգերում ներհյուսված է նաև Կաֆայի բնությունը, տեղի հայոց առօրյան, նրանց տոնախմբությունները, երգն ու պարը, երիտասարդ զույգերի ջերմ ու անկեղծ, ազնիվ ու անդավաճան սերը։ Ուշագրավ է, որ նրանք երդվում են Սասունցի Դավթի երգումով.*

*Հացն ու գինին,*
*Տէր կենդանին։*

*Խաչգռուզը, որ երբեմն իրեն Խաչիկ երեց կամ Խաչերես է անվանում, տաղաշարքի վերջից կցել է հետևյալ տողերը.*

---

18 Տե՛ս Աս. Մնացականյան, *Հայկական միջնադարյան ժողովրդական երգեր*, էջ 113—151։

19 Տե՛ս «*Մանր ժամանակագրություններ*», Ա, էջ 205—206։ *Այստեղ կոչված է Խաչատուր Կաֆայեցի։*

*Ես եմ խաչիրես, աղուր հրևս, այ,*
*Պարըս գրեցի, օխ, իմ պարոն, էյնէկ*
*Ու տառօն ամենոյն, այ։*

*Չափազանցություն չէր լինի, եթե փորձեինք խաչգողին որպես ժողովըրդական երգեր գրի առնողի համեմատել Մովսես Խորենացու հետ։ Եթե վերջինիս ջանքերով փրկվել են նախաքրիստոնեական շրջանի ժողովրդա-գուսանական երգերի փշրանքները, ապա խաչգողի ջանքերով փրկվել է միջնադարյան ժողովրդական երգերի ամենաընտիր փնջերից մեկը։*

*Ղրիմահայ բանաստեղծների շարքում իրենց տեղն ունեն նաև Խասպեկ (Խաչատուր) և Վարդան Կաֆայեցիները։ Առաջինը հայտնի է կենսուրախ տրամադրությամբ հորինված սիրո տաղերով*[20]*, իսկ երկրորդը Ղրիմի հայկական եկեղեցիների վերանորոգման աշխատանքների մասին գրած բանաստեղծություններով*[21]*։*

*Նման երգերի միջոցով մենք այսօր ավելի շոշափելի ու տեսանելի գույներով ենք պատկերացնում հայկական մեծագույն գաղթօջախներից մեկի՝ Ղրիմի պատմության առանձին էջերը։*

**Մարտիրոս Ղրիմեցի.**—*Ղրիմը հայ իրականությանը պարգևեց նաև հասարակական գործիչ ու անհամեմատ մեծ բանաստեղծ Մարտիրոս Ղրիմեցուն։ Ծնվել է XVII դարի սկզբներին և վախճանվել 1683 թ.։ Ուսումն ստացել է տեղում՝ բանաստեղծ Ստեփանոս Թոխաթցու, ապա Երուսաղեմում՝ Աստվածատուր Տարոնեցու և ուրիշների մոտ։ Գրավել է հոգևոր բարձր պաշտոններ աշխատելով թե՛ հայրենի Ղրիմում, թե՛ Կոստանդնուպոլսում և թե՛ Երուսաղեմում։ Գործուն մասնակցություն է ունեցել Երուսաղեմի հայոց պատրիարքության կապակցությամբ ծագած երկարատև և ծանր վեճերին՝ ելակետ ունենալով հայ ժողովրդի շահերը։ Հայտնի է եղել նաև որպես գրիչ, ձեռագրերի հավաքող, պատվիրող, ինչպես նաև ուսուցիչ ու բանաստեղծ։ Նրա աշակերտներից է Երեմիա Քյոմուրճյանը։*

*Որպես բանաստեղծ Մարտիրոս Ղրիմեցին թողել է բազմաթիվ և բազմատեսակ բանաստեղծություններ ու պոեմներ*[22]*։ Իր ժամանակի իրադրությունները և հայ ժողովրդի կրած հալածանքները նա փորձել է յուրովի վերարտադրել Երեմիայի մարգարեության չափաբերմամբ։ Պատմական և հայրենասիրական ուշագրավ ստեղծագործություն է «Պատմութիւն Ղրիմայ յերկրի...» ընդարձակ քերթվածը։ Այստեղ հեղինակը բանավոր զրույցներից և կցկտուր այլ տեղեկություններից հավաքելով և նյութ քաղելով, կազմել է Ղրիմի բնակչության և մասնավորապես հայերի պատմությունը։ Մեծ վշտով է խոսում Անիի կործանման, հայերի տեղահան լինելու, աշխարհով մեկ սփռվելու, նաև Ղրիմում տեղավորվելու և այնտեղ կրած հարվածների մասին.*

*Արդ մեզ պիտոյանայ մեծն Երեմիան՝*
*Ողբալ զԹշուառութիւնս հանգոյն նախնական...*

*Մարտիրոս Ղրիմեցու այս ստեղծագործության մեջ միաժամանակ խան-*

---

20 *Տե՛ս* Վ. Միքայելյան, *Ղրիմի հայկական գաղութի պատմություն, էջ 308—310։*
21 *Տե՛ս Նույն տեղում։* Կ. Կոստանյան, *Նոր ժողովածու, Թիֆլիս, 1896, էջ 11—12։*
22 *Տե՛ս* Ա. Ա. Մարտիրոսյան, *Մարտիրոս Ղրիմեցի, Երևան, 1958։*

դաղատանք ու ներքին ջերմության կա նոր հայրենիքի, նոր հայկական բնակավայրերի վերաբերյալ.

Ի Ղարսու կոչեալ նորաշէն յաւան
Եւ ի Պաղչասարայ, Կոզլով կոչական,
Քանզի է Ղարասուն վայր մենասահման
Եւ է գոյիւք առատ, շատ ունի ցորեան.
Բազում և անհամար ծառք և բուրաստան.
Կարկաճահոս գետով գեր քան զամենայն...

Այս կարգի ստեղծագործությունների թվին է պատկանում նաև «Յաղագս քաղաքին Ամասիու» տաղը։ Դա մի կողմից այդ քաղաքի և նրա բնության ռողարիկ գովքն է, իսկ մյուս կողմից՝ այն բարեկարգված տեսնելու երազային ծրագիր.

Թէ ինձ հրաման լինէր,
Կապէի կամուրջ քո վերայ,
Եւ նշդարենի ծառոց
Տերևով ծածկոյթ սաղարթեայ...
Ներքին՝ շատրվան ծովակ
Շինէի սալից մարմարեայ...

Մարտիրոս Ղրիմեցու երգերի մեջ որոշակի տեղ է հատկացված խնջույքներին և աշխարհիկ ուրախություններին, ինչպես նաև բարեկենդանի տոնախմբություններին։ Առանձին բանաստեղծություն է նվիրված ըմպանակին, որը դինու և խումի գովք է՝ Տերտեր Երևանցու պոեմի զգալի ազդեցությամբ։

«Տաղ այրի երէցուն է» խորագրի տակ Մարտիրոս Ղրիմեցին հմտորեն բացում է միջնադարի տխուր անկյուններից մեկը՝ այրի երեցի հոգեկան աշխարհը.

Այրի, այրի, լուցկի չունի,
Ինքն կերուի, իսկի չերևի...

Խորապես մարդկային, թերևս անձնական ապրումների արդյունք։

Միջնադարյան բանաստեղծության համար այնքան էլ սովորական չէին երգիծանքն ու զավեշտը։ Ճիշտ է, նրանց անդրանիկ չափաբերումներին կարելի է հանդիպել Գրիգոր Մագիստրոսի տաղերում և այլոց մոտ, սակայն XVI—XVII դարերից է, որ նրանք սկսում են որոշակիորեն երևալ։ Մարտիրոս Ղրիմեցու երգիծական բանաստեղծությունները հիմնականում ուրախ ժամանցի համար գրված գործեր են, ուր ծաղրվում են առանձին անհատներ, սովորություններ, քաղաքներ, հաստատություններ։ Նկատելի է նաև նախատելու, դաստիարակելու միտումը։ Հետաքրքրական է և այն, որ այդ ոտանավորներն ունեն աշխարհագրական մեծ ընդգրկում և մեծ մասամբ կապվում են բուլղարահայության հետ։

Բոլորովին այլ բնույթ ունի «Աբբանեակ չարին...» անեծքանման կծու խայթոցը՝ ուղղված ոմն Աբրահամի, հավանաբար, Աբրահամ Այնթափցու դեմ։

Մարտիրոս Ղրիմեցին ունի նաև շատ ուրիշ ստեղծագործություններ, որոնց մեջ մի քանի հայատառ թուրքերեն ոտանավորներ։

Իրենց ամբողջությամբ Մարտիրոս Ղրիմեցու ստեղծագործությունները

թարմ խոսք էին մեր միջնադարի բանաստեղծության մեջ, որոնք շուտով արձագանք գտան հատկապես Նաղաշ Հովնաթանի մոտ։

Կաֆայում ուրիշ բանաստեղծներ էլ կային, որոնցից ուշագրավ են, օրինակ, Խև Կաֆացին՝ իր անհամեմատ բարձր արվեստով և զգացմունքայնությամբ, Սիմեոն Խրըմեցի որդին և ուրիշներ։

**Դավիթ Սալաձորցի.**—XVII դարում Հայաստանի առանձին բնակավայրերում երևան են գալիս նուրբ արվեստով և ժողովրդական մտածողությամբ օժտված բազմաթիվ բանաստեղծներ, որոնք մի նոր շունչ են հաղորդում մեր քնարերգությանը։ Այդպիսիններից են, օրինակ, Դավիթ Սալաձորցին, Քոսա Երեցը, Կիրակոսը, Ստեփանոսը և ուրիշներ։ Եթե կան բանաստեղծներ, որոնք մեծ գիտելիքների տեր, մատենագիրներ և անվանի գրագետներ են, ապա այս երգիչները քննություն են բռնել միայն իրենց երգերի հմայքով, այն էլ ոչ այնքան գրավոր, որքան բանավոր տարածմամբ։

Դավիթ Սալաձորցին մինչև օրս դեռ իր ամբողջական կերպարանքով չի ներկայացված մեր գրականագիտության մեջ։ Միշտ էլ նրան հիշել են որպես ծաղիկների գովքի հեղինակի, մինչդեռ նա ունի նաև սիրո, կենցաղային մի շարք ուրիշ երգեր, որոնք մեծ մասամբ անտիպ են։

Ծաղկանց գովքը իր տեսակի մեջ եզակի մի ստեղծագործություն է, որի տողերի միջից ասես հայրենի բնաշխարհի հազար ու մի տեսակ ծաղիկներն են բուրում և շողշողում իրենց բազմերանգությամբ։ Դա բնության մի հոյակապ գովք է՝ միաժամանակ ճանաչողական մեծ նշանակությամբ։ Եթե նախկինում ծաղիկներից մի քանիսը երգի նյութ էին դառնում՝ այն էլ հաճախ փոխաբերական իմաստով, ապա այստեղ նրանք ներկայանում են իրենց բնական տեսքով ու հատկություններով և ժողովրդական համապատասխան պատկերացումներով[23]։

Դավիթ Սալաձորցու բանաստեղծությունների մեջ ուշագրավ է նաև այն ողբը, որ բանաստեղծը գրել է իր միակ դստեր՝ Նռանայի մահվան առիթով[24]։ Այստեղ առանձնապես կարևոր են մարդկային զգացմունքների և հոգեկան ապրումների այն կողմերը, որոնք մինչև այդ համարյա խպառ երգի առարկա չեն դարձել։ Ցնցող են հատկապես այն տողերը, ուր նկարագրվում են հոր մտորումները՝ կապված դստեր կենդանի հուշերի հետ։

Դավիթ Սալաձորցին մի բացառիկ բանաստեղծություն է գրել ոմն «Մոլորյալ Խաթունի» մասին (անտիպ), որը ենթարկված է եղել հավատուրացության։ Բանաստեղծը նրան «սանամայր» է կոչում և հարազատի ջերմեռանդությամբ փորձում համոզել նրան իր մոլորվածությունը։ Դավիթ Սալաձորցին էլ, ուրիշների նման, շեշտը դնում է քրիստոնեական կրոնի դրվատման վրա և պատկերավոր մտածողությամբ գրում.

Սրտիկդ բոլորէ, ականջ դիր ինձի,
Ղաֆիլ ուսկիդ չտաս դու խամ պըղնձի,
Հոգիդ հուրն կայրի, մարմինդ խանձի,
Երեսդ չի մնալ նուրբ, տիկին Խաթուն։

Այս անմիջական ու մտերմական խորհուրդները տալիս, բանաստեղծը

---

[23] Տե՛ս «Բանասեր», 1901, էջ 87—129։

[24] Տե՛ս «Հանդես Ամսօրեայ», 1936, էջ 495—501։

քրիստոնեական գաղափարներից անցնում է ազգային արժանապատվության բացահայտ գնահատմանը, որպիսին այդ ժամանակ սովորական չէր։ Եվ ահա այստեղ նա ստեղծում է մի մեծարժեք պատկեր, գրելով.

Որպէս ակն ու գոհար, մարգարիտ՝ մանր է,
Նոյնպէս հայն փոքր ազգ է և գինն ծանր է,
Ջոկէ փուշն ու տատասք և վարդն ընտրէ,
Գտիր անմահութեան ջուր, տիկին խաթունը։

Դավիթ Սալաձորցուց պահպանվել են նաև մի քանի սիրո զուլալ ու ընգուն տաղեր՝ նվիրված՝ երկուսը Հուսնիխան անունով մի աղջկա, իսկ երկուսը՝ Ազգյուլ անունով մի ուրիշ աղջկա։ Դրանք, բանաստեղծի երիտասարդական տարիների արդյունք լինելով, լցված են իսկական սիրո անմիջական ու սրտաբուխ զեղումներով։

Մի ասեր, թէ. «Հեռի կեցի»,
Ձեմ դիմանար կրակ, բոցի.
Սարկաւագն եմ Սալաձորցի.
Հուսնիխան, քեզ բարով տեսայ,
Ամսներով, տարով տեսայ։

Դավիթ Սալաձորցուց հայտնի են նաև մի քանի այլ երգեր՝ կրոնական բովանդակությամբ, մի երգ էլ նվիրված պանդխտությանը, որոնք ամբողջացնում են հեղինակի ներշնչանքների աշխարհը։

**Քոսա Երեց.**—Ապրել է XVII դարում, եղել է Բասենցի։

Քոսա Երեցից մեզ են հասել մի տասնյակ երգ, որոնցից 8-ը՝ աշխարհիկ, իսկ 2-ը՝ հոգևոր բովանդակությամբ[25]։ Բոլորն էլ գրված են ժողովրդական բառ ու բանով, գեղջկական պարզությամբ և անմիջականությամբ։ Տեղ-տեղ նրանք այնքան մոտ ու հարազատ են ժողովրդական երգերին, ասես փոխ են առնված այնտեղից։

Քոսա Երեցի երգերը հագեցված են զվարթ տրամադրությամբ, իսկ տեղ-տեղ էլ վեր են ածվում զավեշտի։ Այդպիսիններից են մորեխին (կիտուր) և աղվեսին նվիրված մեկական երգերը։ Առաջինում նկարագրվում է մորեխի պատուհասը, իսկ երկրորդում՝ իր թղթապանակի կորուստը։ Վերջինս, անշուշտ, նկատի ունի մի խարդախություն։ Իբր թե աղվեսը գողացել է բանաստեղծի հոգևոր պաշտոնին վերաբերող փաստաթղթերը և դրանց հիման վրա, մյուս աղվեսների որոշումով, դարձել հոգևոր առաջնորդ։ Բանաստեղծության մեջ պահպանված մեծահոգությունն ու երգիծանքի մեղմությունը ավելի են նպաստել նրա հաջողվածությանը.

Ասացին. «Աղվես, դուն մեզի՝ ամիր, իշխան,
Ի վերայ գազանացն ես սուլթան ու խան,
Երբ աթոռակալէն էկեր պատասխան,
Այլ Քոսայ Երեցն զուր չամիչ կուտէ»։

Սիրո երգերի մեջ Քոսա Երեցը նույնքան անմիջական է, որքան Դավիթ

---

[25] Տե՛ս «Բանբեր Մատենադարանի», № 3, 1956, էջ 265—276։

Սալաձորցին. նրանք կարծես միևնույն միջավայրի, բայց ավելի ամուր ու հաստատուն ավանդների ներկայացուցիչներ լինեն։ Նկատելի է միայն Քոսա Երեցի առավել ժողովրդական ոգին.

Նխշուն կաքաւ սիրուն երամ,
Քաչ արծիւէն կապէր վերամ,
Ջարկեց, էրաց արան-դարան,
Բաժանեց եար-եարէն անուշ...

Կամ՝

Գեղէն վերև հերկեր-մերկեր,
Ճապիքտ սուրմայով ներկեր,
Սիրեր եմ, չեմ կրնայ թարկեր,
Արի խօսինք, ջորած Նազլու...

Մեկական գողտրիկ երգերով հիշատակության արժանի են նաև Կարապետ և Ավետիք բանաստեղծները, որոնց մասին կենսագրական տեղեկություններ չեն պահպանվել. նրանք գովերգում են աշխարհիկ սերը, զգացմունքային խոր անկեղծությամբ և շոյող արվեստով։

Մեր քնարերգությունը լեցուն է անակնկալ հազար ու մի պատկերներով, մտածողության ինքնատիպ դրսևորումներով, հայրենների՝ հնարավոր բոլոր ասելիքների ասես սպառիչ օգտագործմամբ։ Բայց ահա ոմն Ավետիք, խոսում է սովորական մի աղջկա ձեռքերի նկատմամբ ունեցած իր պաշտամունքի մասին, այդ ձեռքերը համեմատելով Սուրբ Գրքի և Ավետարանի հետ[26]։

**Երեմիա Քյոմուրճյան.**—Օսմանյան տիրակալներն իրենց նպատակներից ելնելով՝ արտոնություններ շնորհելով, բռնագաղթեր կազմակերպելով շենացնում են իրենց նոր մայրաքաղաք Կոստանդնուպոլիսը, հատուկ ուշադրություն նվիրելով հայությանը։ Այդ քայլով նրանք մի կողմից քաղաքն ապահովում էին ձեռներեց վաճառականներով, արհեստավորներով, աշխատավոր և ստեղծագործ մարդկանցով, իսկ մյուս կողմից՝ հակակշռում հունական ուժերին։ Կոստանդնուպոլսի հայության թիվն զգալիորեն մեծացավ Ղրիմից և հատկապես Կաֆայից (Թեոդոսիա) եկած հազարավոր գաղթականների շնորհիվ[27]։

XVII—XVIII դարերում Կոստանդնուպոլսում հրապարակ իջան նշանավոր հասարակական գործիչներ ու բանաստեղծներ, ինչպիսիք են Երեմիա Քյոմուրճյանը, Հակոբ Նալյանը, Պաղտասար Դպիրը, Պետրոս Ղափանցին և ուրիշներ։

Երեմիա Քյոմուրճյանը ծնվել է 1637 թ. Կոստանդնուպոլսում։ Նրա նախնիները ջալալիների հալածանքներից այդտեղ փախած ակնեցիներ էին։ Կրթությունը ստացել է տեղում. տիրապետել է մի շարք լեզուների և, ունենալով համակողմանի ընդունակություններ, նվիրվել է գրական-լուսավորական աշխատանքների։ Որպես այդպիսին, նա, հիրավի, հանդիսացել է բազմարդյուն և բեղմնավոր ստեղծագործող։ Մեռել է 1695 թ.։

Երեմիա Քյոմուրճյանը վարել է աշխարհիկ կյանք և ունեցել մեծ ընտանիք։

---

[26] Տե՛ս Մատենադարանի «Գիտական նյութերի ժողովածու», № 2, Երևան, 1950 էջ 199—200։
[27] Տե՛ս Հ. Պերպերյան, Նիւթեր պոլսահայ հայոց պատմության, Վիեննա, 1965 էջ 34։

Չնայած բանասիրության մեջ շատ է խոսվել Երեմիա Քյոմուրճյանի մասին, սակայն մինչև օրս էլ գոյություն չունի նրա գրական ժառանգության ամփոփ հրատարակություն[28]։

Որպես գրող նա հայտնի է բանաստեղծություններով, պոեմներով, ինքնատիպ գանձերով, ինչպես նաև գեղարվեստական արձակին պատկանող ստեղծագործություններով։ Նյութը հիմնականում Կոստանդնուպոլսի առօրյան է՝ մերթ պատմա-հասարակական, մերթ ազգագրա-կենցաղային առումներով։ Նրա բանաստեղծական կարողությունները համեստ են, բայց նրա ընդգրկումների սահմանները՝ լայն ու հետաքրքրական։ Երեմիա Քյոմուրճյանը ձգտել է ստեղծագործաբար հաջորդ սերունդներին հանձնել Կոստանդնուպոլսի հետ կապված բոլոր մեծ ու փոքր դեպքերն ու իրադարձությունները։

Արվեստի առումով առավել արժեքավոր են նրա այն բանաստեղծությունները, պոեմների հատվածները, որտեղ նա տարերայնորեն դիմել է ժողովրդական բանահյուսության օգնությանը։ Աչքի են ընկնում, օրինակ, «Ա՜յ ջուր, պաքելոց գու զովացարան», «Ա՜յ ջուր, յորդախաղ գետոյդ», «Երամք երկնային թռչնոց խմբեցան» երգերը՝ նվիրված ջրի գովքին։ Դրանք գրված են ժողովրդական «Ջրի՜կ, ո՞ր ակնէն կու գաս» կամ «Այդ վայրի լեռնէդ ի վար» երգի նկատելի ազդեցությամբ։ Ժողովրդական երգի մեջ պատանին զրուցում է ջրի հետ՝ բացահայտելով նրա ձնոտ սարերից գալու, առուներով վազելու, պարտեզներ ու այգիներ ջրելու, զովացնելու, սեր ու կյանք պարգևելու հատկությունները։

Ա՜յ ջուր, քեզ հարցունք էլի,
Քո գնացքն է վաղվաղական.
Էջքդ է ի լերանց բարձանց,
Ո՞ւր դիմես այդպէս փութաջան...

Եվ, այն, ինչ ժողովրդական երգն է ասել մի քանի զողտրիկ տան մեջ, Երեմիա Քյոմուրճյանը բացահայտում է բազմաթիվ տներով, նորանոր մոտրումներով, զեղումներով, որոնք ինքնին ուշագրավ երևույթ են հայ գրականության ժողովրդականացման, աշխարհականացման առումով։

Երեմիա Քյոմուրճյանի այս երգերում ջրի գովքը՝ բնության գովք լինելուց բացի, նաև հասարակական տրամադրությունների երանգ ունի։ Նկատելի է, օրինակ, «Կոո՜ւնկ, ուստ՞ի կու գաս» մեջ արծարծված կարոտի երանգը նաև այստեղ.

Հազար զենեհար տամ քեզ,
Ա՜յ օրհնեալ ջուր բարեհամ.
Ուր երթաս՝ բարև տանես,
Ուր գտնուս մեզի սիրական՝
Ի մէնջ մատուցես յոզջոյն
Եւ ասես կան ի յողջութեան...

Ավելին, այստեղ ջուրը լավ երազանքի, պայծառ սպասումների, հուսաբեր գարնան խորհուրդն ունի, որի այցելությամբ ցրվում են ամպերը, մառախուղը, տխրությունը, վիշտը և բացվում է արևոտ գարունը։ Ուստի և բանաստեղծն ջրի այնքան այրող ու հրատոչոր ծարավ ունի.

[28] Տե՛ս Հ. Սահակյան, Երեմիա Քյոմուրճյան, Երևան 1964։

Յերկնից երեսէն ամպերըն փախան,
Արևն ծագեալ քեզ պայծառ վրան.
Պատեաց խնդութիւն, սրտիկս է դողման,
Դու ծիծաղ ծաւալ ծալ 'ւ ի ծածանման։
Մառախուղն կորեաւ, որ մեզ էր շարկամ,
Իմ սիրտս լցուաւ արևով գարնան,
Երբ ցուցեր զերեսդ ղարդարեալ փայլման,
Ծիծաղ ծածանիդ ծալ 'ւ ի ծածանման...

Երեմիա Քյոմուրճյանի գրչի տակ գույն մասամբ պակասել է ժողովրդական երգի արվեստի հմայքը, սակայն նա, դրա փոխարեն, ջուրը դարձրել է մի լուսավոր ու կենսաբեր խորհրդանշան, որի գալուն են սպասում բոլորը՝ թե՛ ծիլ ու ծաղիկ, թե՛ թռչուն ու կենդանի, թե՛ պանդուխտ ու պանդխտատեր և թե՛ լույսի ու արևի կարոտ ամեն արարած։

Երեմիա Քյոմուրճյանի ինքնատիպ ստեղծագործություններից մեկն է «Ագուլեցի խոճայ Խօսրովի մահուան» մասին գրված գանձը՝ իր սարքով։ Շեղվելով ընդունված ձևերից, նա կերտել է միանգամայն աշխարհիկ գանձ։ Գանձում նկարագրվում է Ագուլիսից Կոստանդնուպոլիս հասած խոջա Խոսրովի ողբերգական կյանքը, խարդախությունների միջոցով նրա բանտարկվելը, բանտում մեռնելը և թաղման արարողությունը։ Երկրորդ մասում ծաղրվում են նրա սուտ բարեկամները, որոնք նույնիսկ ուրախացած են երևում։ Երրորդ մասում հեղինակը նկարագրում է դիակը բանտից տուն բերելը, չորրորդ մասում՝ կնոջ՝ Մեյրեմի սուգն ու կոծը, իսկ վերջին մասում՝ թաղման նկարագրությունը։

Արվեստի առումով առավել ուշագրավ են վերջին երկու մասերը և հատկապես նախավերջինը՝ գրված Աղեքսանդր Մակեդոնացու պատմության կաֆաների («Վայ այս Պօվրոսիս») նմանությամբ։ Դա արդեն տանում է դեպի հայրեններն ու ժողովրդական երգերի ակունքները։ Բանաստեղծը կնոջ և հանդիսականների վշտին ու ողբանքին գումարել է նաև բնության վիշտը, ստեղծելով ուշագրավ տողեր.

Օրն եղև ձիւն բըքաբեր, դառնաշունչ հողմով մըըըրկին,
Այնպէս կողակցի սըրտին դառնաբեր եղեամն կըսկըծին։
Երկինք 'ւ երկիր մթնցաւ, ամուսնոյն սև սև խոց հեղին,
Սառնամանիք սև սըրտին, որբ 'ւ այրի լինել Մէրիէմին...
Ջիւնն որ փշմամբ զօղն ծածկէր, օր 'ւ արև բնակչաց չցուցին.
Անդ սև սև մազերն ծածկէր զղագաղն ու զմարմինն սև բախտին...

Ուշագրավ են նաև հեղինակի կենցաղային պոեմները, որոնք առաջընթաց քայլեր էին և իր ժամանակի պոլսահայ իրականության և, առհասարակ, հայ գրականության համար։ Առանձին հետաքրքրություն ունի «Փարէզ և Վեննա» փոխադրական պոեմի հայատառ թուրքերենի վերլուծելու նրա աշխատանքը, որի օգնությամբ նա թրքախոս հայերին կապում է եվրոպական գրականության հետ։ Նա ոչ միայն թարգմանել, այլև ստեղծագործական ինքնուրույն մշակման է ենթարկել այդ պոեմը[29]։

[29] Տե՛ս «Պատմութիւն Փարէզի և Վեննայի», էջ 58—77։

Երեմիա Քյոմուրճյանը հայ հասարակական մտքի այն ներկայացուցիչներից էր, որը ստեղծագործելով, տպարան հիմնելով, Հայոց աշխարհը շրջագայելով, ամենօրյա մշտագրաղ հասարակական գործունեությամբ ձգտում էր խաղաղություն հաստատել հայ հատվածների միջև, գրականության միջոցով տարածել լուսավոր գաղափարներ։

Ստեփանոս Դաշտեցի.—Շահ Աբբասի հայերի բռնի տեղահանությամբ հիմնված Նոր Ջուղան շուտով դարձավ հայկական մշակույթի զարգացման մի ինքնատիպ կենտրոն։ Տեղական հայ խոջաների, պարսիկ մեծատունների և եվրոպացի առևտրականների միջավայրը մշակում էր բարձր ճաշակ և ծնում երգարվեստի, նկարչության, բանաստեղծության, ոսկերչության, ինչպես և արվեստի ու արհեստի այլ բնագավառների հմուտ վարպետներ։

Այդ միջավայրի ծնունդ են նկարիչներից Հակոբ Ջուղայեցին, Հովհաննես Մրքուզը, Բոգդան Սալթանովը, բանաստեղծներից Ստեփանոս Դաշտեցին, աշուղներից՝ Ղուլ Էգազը, Ղուլ Արզունին, Բաղեր օղլի Ղազարը և ուրիշներ, որոնք ստեղծեցին բարձրարվեստ բանաստեղծության ընտիր նմուշներ։

Ստեփանոս Դաշտեցին ծնվել է 1640—50-ական թթ. և ապրել մինչև հաջորդ դարի սկզբները։ Եղել է աշխարհական, ստացել է բավականին հիմնավոր կրթություն և, առևտրական գործերին զուգընթաց, զբաղվել նաև բանաստեղծություններ գրելով։

Նա աշխարհ տեսած գործիչ է. «Գլորեալ թաւալիմ երեսօք բոլորակի ընգի աշխարհիս...» գրել է նա իր մասին, նշելով շրջագայած մայր ցամաքները՝ Ասիա, Եվրոպա, Հնդկաստան։

Ստեփանոս Դաշտեցու բանաստեղծությունների[30] մեջ առկա է մի կողմից երգիծանքի, իսկ մյուս կողմից խոհականության հակումը։ Ուշագրավ է հատկապես գրելաձևը. այն հատուկ ոճն ու եղանակը, որ մշակել է նա։ Իշխում է «թեջնիս» կոչված ձևը, ուր հանգավորվում են տարբեր իմաստ, բայց նույն ձևն ունեցող բառերը.

Հայոց ազգէս շատ ցաւ ունիս ամանած,
Ամանդ է մեծ, հաւաքէ՛, տա՛ր, ամաճ ա՛ծ,
Ջուր յե՞րբ տանջես գիս և մանես, ա՛ մանած...

Առանձնահատուկ արժեք ունեն Ստեփանոս Դաշտեցու քառյակները «ի վերայ այլ և այլ իրաց»։ Դրանք հանրահայտ ժողովրդական խաղիկների նմանությամբ ստեղծված գողտրիկ նմուշներ են, որոնց մեջ առկա է մեծ շնորհք և իմացություն։

Առոգ մազեր, առոգ գիս,
Արտասուեմ՝ որ առոգիս.
Քանի՞ արիւն լացցնես,
Մեկ հետ արի՝ առ հոգիս։

Այս ձևով ստեղծած ընդարձակ շարքի մեջ առանձին տաղի տպավորություն են թողնում սիրուն աղջկա մասին գրված քառյակները.

Սիրելիս, սիրուն առն է,

30 Տե՛ս «Տեղեկագիր» ՀՍՍՀ ԳԱ (հաս. բաժ.), 1956, № 12, էջ 101—117։

Սիրուն տուր՝ սիրուն առ նէ,
Աչքս գէշին չտեսնու,
Թող հոգիս սիրունն առնէ։
Շուռգամ սիրուն ընկերի,
Սավանն սիրունին՝ կէրի.
Գէշին պարոն չեմ եղնիր,
Կեղնիմ սիրունին գերի։

Տեղեր կան, որոնք թույլ են տալիս մտածելու, թե Սայաթ-Նովան ծանոթ է եղել Ստեփանոս Դաշտեցուն.

Մարիամ կամի լալ Աննա,
Թող ով կամի լալ լա նա,
Բամբասարարի լեզուն
Թող կարկամի, լալանա[31]։

Ժողովրդական խաղիկների և նրանց իմաստության արվեստն է, որ այսպիսի ճանապարհներով հոսում է դեպի գրավոր պոեզիա, մոտեցնելով այն հասարակ մարդկանց՝ գեղջուկ և քաղաքացի։

Երգիծական բնույթի բանաստեղծություններից ուշադրության արժանի է «Ի վերայ Նոր Ջուղայեցւոց» «ոտնաշարութիւնը», ուր մերկացված են տեղի ներքին չարիքներն ու արատները։ Ըստ որում, ամեն քառատող ունի մի.նպատակ։ Ամենուր զգացվում է հեղինակի սրամտությունը.

Գիժ Ստեփան, լաւին անումն ո՞վ կու տայ.
Ցրւողդ է շատ, դու վաստակես ո՞վ կու տայ.
Ջարմանք է, թէ ո՞վ կու դատէ, ո՞վ կուտայ.
Ջեռն ո՞ւմն այ, մատնիքն ո՞ւմն այ, մատն ո՞ւմն այ..

Ղուլ Էգազ.—Ծնվել է Նոր Ջուղայում 1650-ական թթ. և մեռել ու թաղվել նույն տեղում 1734 թ.։ Եղել է աշուղ՝ այդ բառի իսկական իմաստով, այսինքն, հորինել, եղանակավորել և երգել է նվագարանի զուգակցությամբ՝ ժողովրդի համար, ժողովրդի մեջ[32]։ Որպես աշուղ Ղուլ Էգազն առաջին հերթին կոչված է եղել սիրո երգեր ստեղծելու համար։ Այդ երգերի մեջ նա կարողացել է ներդնել ժողովրդական երգիչին հատուկ սրամտություն, խոսքաշենություն, պատկերավոր մտածողություն, կենսասիրություն և հմայիչ արվեստ.

Ես քեզ վերայ հէնց կարօտ եմ,
Ջոր ծարաւն ախբրի վերայ.
Քոյ սէրն ինձի էրէլ այ,
Ջոր չուրն ածես կրի վերայ։
Անուշ հոտդ բուռ-բուռ կու գայ,
Ես դուշման չեմ, չո՞ւմ ծուռ կու գայ,
Ծիծըռն ծոցումտ շուռ կու գայ,
Ջոր ձկներն՝ ջրի վերայ...

[31] Այս տողերը հիշեցնում են Սայաթ-Նովայի «Ցիս կանչում իմ լալանին» երգի քառյակները։
[32] Տե՛ս «Հայ աշուղներ» (XVII—XVIII դդ.), Երևան, 1961։

Յուրաքանչյուր շնորհալի աշուղ նաև բանաստեղծ է, եթե առիթ է ունենում շեղվելու յուր բուն նշանաբանից՝ «աշուղ»-ությունից։ Այդ դեպքում աշուղությունից մնում է բանաստեղծության արտաքին կողմը, ձևն ու տաղաչափությունը։

Ղուլ Էդալն այդպիսի շեղումների ժամանակ էլ նույնքան վարպետ է, եթե ոչ ավելի։ Մղված իր առօրյա հոգսերից, ներքին մտորումներից և անձնական վիճակից, նա առիթ է ունեցել խոսելու նաև ինքն իր հետ, ականջ դնելով իր ցավերին, իր սրտի բաբախներին։

Չկայ դարդ իմացող, ասող ու լսող,
Գոյ, նստի, զրույց տայ, բանայ էս սիրտն...

Ու բացում է նա իր սիրտը, մարդկային մրրկածուփ մի սիրտ՝ աշխարհի առջև.

Մին դամն ծախման ա, մին դամն՝ առման,
Մին դամն տաքաման ա, մին դամն սառման,
Մին դամն բոց կրակի նման ա վառման,
Մին դամէն յետ խովանման ա էս սիրտն...

Նոր Ջուղան տվեց նաև ուրիշ շնորհալի երգիչներ, որոնք իրենց արվեստով, լեզվով և մանավանդ աշխարհըմբռնումով ու երգած թեմաներով նոր էջ էին բացում հայ քնարերգության մեջ։

Նաղաշ Հովնաթան.—Հին Ջուղայի ավերումից հետո շրջակայքում մնացած բնակչությունը կենտրոնացավ Ագուլիս և Շոռոթ վաճառաշահ ավանների շուրջը։ Թե՛ մեկում և թե՛ մյուսում XVII—XVIII դարերի ընթացքում զարգացան առևտուրը, արհեստը, դպրությունը, շինարարությունը և լուսավորությունը։ Ժամանակի առաջընթացը գլխավորում և հովանավորում էին տեղական խոջաները, որոնք առևտրական կապեր ունեին աշխարհի հեռավոր կենտրոնների հետ և միջնորդ էին հանդիսանում նաև մշակութային առաջավոր արժեքների փոխանցման։

Ահա այդ երկու կենտրոններն էին, որ XVII—XVIII դարերի ընթացքում հրապարակ հանեցին նաև անվանի գրագիրների, բանաստեղծների, որոնց հետ՝ հայ գրականության խոշոր երախտավոր Նաղաշ Հովնաթանին։

Նաղաշ Հովնաթանը ծնվել է Շոռոթում 1661 թ. կրթությունն ստացել է նախ տեղում, ապա Ագուլիսում։ Փոքր հասակից ունենալով բանաստեղծի, նկարչի, երգիչ-երաժշտի ընդունակություններ, նպաստավոր պայմանների շնորհիվ շուտով նա դառնում է ուշադրության առարկա ոչ միայն հայրենի լեռներում, այլև հեռավոր վայրերում։ Մի կողմից նա ձևավորվում է որպես գրիչ, մանրանկարիչ, որմնանկարիչ, իսկ մյուս կողմից՝ բանաստեղծ, երգիչ, երաժիշտ։ Քանի որ այդ բոլոր բնագավառներում էլ նա անզուգակից էր, և միաժամանակ իր մեջ էր կրում բոլոր շնորհները, ուստի նրան ճանաչում ու գնահատում էին և՛ Երևանում, և՛ Թիֆլիսում, և՛ Թավրիզում, և՛ այլ վայրերում. «Երկիր շատ շրջեաց տար աշխարհ օտար...» ասում է որդին՝ Նաղաշ Հակոբը, նրա մասին։

Վրաց արքունիքը, որ նախանձախնդիր էր շնորհալի վարպետների, Նաղաշ Հովնաթանին հրավիրում է Թիֆլիս՝ որպես պալատական նկարիչ ու

երգիչ։ Այստեղ նա ունենում է իր աշակերտները, որոնք հատկապես որմնանկարչության և պատկերանկարչության գծով կազմում են Հովնաթանյան դպրոցի հիմքը։ Նրանց մեջ, որպես անընդմեջ գոյատևող Հովնաթանյան դպրոցի ուսուցիչներ ու ղեկավարներ, մեկը մյուսի ետևից փայլում են բանաստեղծի որդիները, թոռները, ծոռները՝ շուրջ մեկուկես դար։

Նաղաշ Հովնաթանը մեռնում է 1722 թ. և թաղվում հայրենի Շոռոթում։

Որպես բանաստեղծ-երգիչ Նաղաշ Հովնաթանը թողել է բավականին հարուստ ու բազմաբովանդակ ժառանգություն[33]։

Նրա ստեղծագործական առանձնահատկությունների հիմքում ընկած էին ամենից առաջ, անհատական, բնատուր ընդունակությունները ապա՝ դասական, ինչպես նաև աշուղական գրականության լավագույն ավանդներին տիրապետելը, ի վերջո՝ ժողովրդական զանգվածներին ու աշխարհիկ գաղափարներին փարված լինելը։

Առանձին խումբ են կազմում Նաղաշ Հովնաթանի սիրո երգերը։ Այստեղ կարծես հանրագումարի են եկել նախորդ ժամանակների բոլոր նվաճումները. հրապարակ հանելով լիարժեք սիրո լիահնչուն երգերի մի ամբողջ շարք։ Ինքնուրույնության և նյութականացման է հասել նաև երգչի սիրուհին. տեսանելի է ոչ միայն նրա պատկերը, այլև նազանքը, կամակորությունը, հոգին, լսելի է նրա ձայնը, ճանաչելի՝ բնավորությունը։ Ավելին, նրանից անպակաս է բնությունը, ջրերի խոխոջը, ծառ ու ծաղիկների դալարը, բույրմունքը, շրջապատի բարձր ու կենսուրախ տրամադրությունը։ Նրա կողքին, նրանից ավելի լիարժեք ու կենդանի երևան է գալիս իր՝ բանաստեղծի կերպարը. խելագարի նման սիրող, սիրո բարիքները անհագորեն վայելող, սիրուհուն չտեսնելիս՝ կարոտից խենթացող, աշխատելիս՝ նրանով կլանված, հեռուներում գտնվելիս՝ նրան երազող, նրան կանչող։ Եվ այդ բոլորը՝ բարձր արվեստով, գեղարվեստական խոսքի պես-պես հնարանքներով։ Սիրո երգերը թևակոխում էին զարգացման մի նոր շրջան, պայմանավորելով Սայաթ-Նովայի երևան գալը։

Նաղաշ Հովնաթանից առաջ էլ քաղաքային առօրյայի, առևտրա-արհեստավորական միջավայրի արձագանքներ կային հայ բանաստեղծության մեջ, օրինակ, Կոստանդին և Հովհաննես Երզնկացիների մոտ։ Բայց այդ միջավայրի լայն ու խոր վերարտադրության առաջին ամբողջական երգերի փնջին հանդիպում ենք Նաղաշ Հովնաթանի տաղարանում։ «Շնորհալից մարդ կայ...», «Շատ գիտուն մարդն...», «Նամուս-ղայրաթի լաւ մարդն այն է...», «Լուսրուք, դուք ամենքեան...», «Ոմանք ի մարդոյ...», «Հալալ պահօղն իւր առևտուրն», «Էհտիպարի կաց...» և այլ բանաստեղծությունների մեջ բանաստեղծն արծարծում է առևտրա-արհեստավորական խավերի աշխատանքային առօրյան ու ներքին կապերը։ Նպատակն է պախարակել կեղծիքը, խաբեությունը, անորակ ապրանք արտադրելը, հաշիվներում խարդախելը, փնթիությունը և հազար ու մի մանրուքներ։ Այս բանաստեղծություններից անպակաս են խրատները, որոնք, ի տարբերություն վաղեմի բարոյա-խրատական ստեղծագործությունների, հագեցված են քաղաքային առօրյայով ու իրողություններով։

Առհասարակ, բանաստեղծը միշտ էլ քննադատական վերաբերմունք ունի դեպի ագահ ու տգետ խոջաները, անբարոյական ու անկիրթ հոգևորականները, հասարակության համար պորտաբույծ մոնթերն ու տիրացուները.

---

[33] Տե՛ս Նաղաշ Հովնաթան, Բանաստեղծություններ, Երևան, 1951։

շահամոլ գործավարներն ու զանազան միջնորդները։ Դրան հակառակ, առաջին անգամ Նաղաշ Հովնաթանն առաջնորդում է դեպի գեղջկական ծխոտ հացատունը, բամբակ մանող կանանց գործատունը՝ ցույց տալով աշխատավորության ծանր ու տխուր առօրյան։

Ահա այս բոլորի արդյունքն է սոցիալական անհավասարության դեմ բողոքելու այն շեշտը, որ կա Նաղաշ Հովնաթանի բանաստեղծություններում՝ հանուն ազնիվ աշխատանքի, արդար կարգերի և լուսավորության։

Նաղաշ Հովնաթանի տաղարանում հատուկ բաժին են կազմում երգիծական բանաստեղծությունները։ Այստեղ էլ, նախորդ ժամանակների ամբողջ փորձը հիմք դարձնելով, Նաղաշ Հովնաթանը կարողացել է ստեղծել երգիծական բանաստեղծությունների նոր մակարդակ։ Հիմքում՝ նորից սոցիալական ըմբռնումներն են, ինչպես և անհատական գրապայքարը։ Առկա են նաև սովորական ժամանցի զավեշտական բանաստեղծություններ, առօրյա անմեղ կատակներ, առակավոր զրույցների մշակումներ։

Նաղաշ Հովնաթանը հայ գրականության մեջ իր ուրույն տեղն ունի նաև որպես խնջույքի երգերի հեղինակ։ Անցյալի հատ ու կենտ փորձերն այս ուղղությամբ դեռևս չէին գտել լայն տարածման արժանի ձևեր։ Բավարար էին համարվել աշուղական զանազան երգեր, հնից եկող առանձին տաղեր, շարականներ։ Բանաստեղծն ինքն էլ, ըստ երևույթին, շատ է երգել «Տաղ ու շարական», բայց առօրյա խնջույքներն ու հավաքույթները մղում են նրան ստեղծելու ավելի լիարժեք ու ժամանակակից երգեր։ «Յամենայն ժամ...», «Նստեմք ի մեջլիս...», «Այսօր ցնծամք պարելով...», «Եկայք այսօր ժողովեցէք ընկերք միաբան...», «Գինին որ հասնի՝ անուշ է...» և այլ երգերով Նաղաշ Հովնաթանը ստեղծեց բոլորի կողմից սիրված ու երգված ուրախության երգեր՝ բացելով իր ժամանակի կենցաղի կողմերից ևս մեկը։

Քիչ չեն նաև եկեղեցական տոներին, ծիսական արարողություններին, ինչպես նաև զանազան սրբերին ու սրբություններին Նաղաշ Հովնաթանի ձոնած բանաստեղծությունները, դամբանական ողբերը, կյանքի ու կենցաղի այլ բնագավառներին նվիրված տաղերը։

Նաղաշ Հովնաթանի ստեղծագործություններից հառնում է միանգամայն ինքնատիպ, տաղանդավոր մի բանաստեղծ, որը հայ քնարերգության մեջ նոր դպրոցի հիմք դրեց։ Նրա հաջորդներն էին որդին՝ Նաղաշ Հակոբը, հայրենակից Ստեփանոս Շոռոթեցին, Թովմա Ագուլեցին, Նաղաշ Աղեքսանդրը, Կարապետ Արևելցին և շատ ուրիշներ։ Սայաթ-Նովան, որ Նաղաշ Հովնաթանի հաջորդն էր վրացական արքունիքում, զգալիորեն օգտվել է իր նախորդի բանաստեղծական և երաժշտական արվեստից։

Պաղտասար Դպիր.—Կոստանդնուպոլսում Երեմիա Քյոմուրճյանից հետո երևան եկած հաջորդ և առավել բարձրարվեստ ու տաղանդավոր բանաստեղծը Պաղտասար Դպիրն է։ Նա ծնվել է 1683 թ. և մեռել 1768-ին։ Ամբողջ կյանքն անց է կացրել Կոստանդնուպոլսում՝ աչքի ընկնելով որպես մանկավարժ, հրատարակիչ և բանաստեղծ։

Պաղտասար Դպրի գրական հետաքրքրությունները նույնպես լայն են եղել՝ սկսած պատմական, կրոնագիտական-դավանաբանական, փիլիսոփայական, քերականագիտական աշխատություններից մինչև ընտիր բանաս-

տեղծություններ և գեղարվեստական արձակին մոտեցնող նամակաձևեր[34]։ Եվ քանի որ այն ժամանակ Կոստանդնուպոլսում բավականին ամուր հիմքերի վրա էր գտնվում տպագրության գործը, ուստի նրա երկերի մեծ մասը տպագրվել է, այն էլ երբեմն մի քանի հրատարակությամբ։ Այսպես, օրինակ, նրա Տաղարանները առանձին գրքերով XVIII դարում (սկսած 1723 թվականից) լույս են տեսել 7 անգամ։

Պաղտասար Դպիրը մեկն էր այն գործիչներից, որոնք թուրքական ծանր հալածանքների պատճառով իրենց մայրենի լեզուն մոռացած թրքախոս հայերի համար ստեղծում և հրատարակում էին զանազան ձեռնարկներ՝ շարադրված թուրքերենով։ Այդպիսիներից էր, օրինակ, «Պու պատմութիւն դրքի օլատուրքի, Գրիգորիս սուրբ Լուսաւորչին էվէլինտէն ախըրը նատաք պատմութիւնու, վէ պու հայոց ազգըն նէ սէպէպտէն քրիստոնէական հաւատքնա կէլիպ՝ լուսաւորել օլմասընըն տիյնէյէնէ նադըլ էտէր» այսինքն, այս գիրքը նվիրված է Գրիգոր Լուսավորչի կյանքի և հայ ժողովրդի քրիստոնեություն ընդունելու պատմությանը։ Մի այլ գրքում, որը կոչվում է «Կըրթութիւն Քրիստոնեական պաշտօնի» և նորից շարադրված է հայատառ թուրքերենով, հեղինակը բացատրում է, թե դա գրված է «հայճա պիլմէյէն քրիստոնեայ եղբայրլարըմըզ իչին՝ թուրքճէ» (հայերեն չիմացող քրիստոնյա եղբայրների համար՝ թուրքերեն)։ Ուշագրավ է, որ նման գործերում Պաղտասար Դպիրն ընտրել է այնպիսի նյութեր, որոնք ամենաազդեցիկ միջոցները պիտի լինեին ընթերցողներին հայ պահելու համար։ Ուշագրավ է նաև նրանց լեզուն, ուր հնարավորության սահմաններում պահպանվել են հայերեն բառեր, դարձվածքներ, որպեսզի այդ եղանակով նաև հայերենի թելը իսպառ կտրված չլիներ գրքերի և ընթերցողների միջև։

Նրա բանաստեղծությունները, հիմնականում, փոքրածավալ ամփոփ երգեր են, որոնց համար հեղինակը ստեղծել կամ հարմարեցրել է երաժշտական եղանակներ։ Այդ պատճառով նրանք հարուստ են կրկնակներով և արվեստավոր կրկնություններով։ Պետք է նկատել, որ Պաղտասար Դպրից է սկսվում հայ դասական քնարերգության և երաժշտության այն նորօրյակ մերձեցումը, որը հետո շարունակվեց Պետրոս Ղափանցու, Ղազար Ճահկեցու, Սիմեոն Երևանցու, Գալուստ Կայծակի, Գևորգ Գապասախալյանի, Հովհաննես Կարնեցու և շատ ուրիշների կողմից։ Համապատասխան երգերը բոլորովին այլ էին աշուղական երգերից, չնայած արտաքնապես ունեին շոշափելի նմանություն։ Այստեղ պահպանվում էր գրական լեզուն, մինչդեռ աշուղները հորինում էին բացառապես բարբառներով։ Բացի դրանից, այստեղ թեմաները տարբեր էին և շոշափում էին հիմնականում ազգային-հասարակական խնդիրներ, կրոնա-քաղաքական հարցեր, իսկ աշուղների մոտ իշխում էր գլխավորապես սիրո թեման։ Ճիշտ է, Պաղտասար Դպրի ուղղությունն էլ մեծ տեղ էր տալիս սիրո զգացմունքին, սակայն այստեղ այդ սերը նկատի ուներ հայրենիքի, եկեղեցու, աստծու գաղափարը, իսկ հաճախ էլ այնքան անորոշ, երկիմաստ բնույթ ուներ, որ դժվար էր կռահել, թե խոսքը որ սիրո մասին է։

Այս պարագան հիշեցնում է հենց ինքը՝ բանաստեղծը, իր «Տաղիկներ սիրոյ և կարոտանաց» գրքույկի 1768 թ. հրատարակություններից մեկի սիրային երգերի վերջում դրած հետևյալ տողերով. «Ծանիր աստ, ով սիրելի ընթերցող,

[34] Տե՛ս Պաղտասար Դպիր, Տաղիկներ սիրոյ և կարօտանաց, Երևան, 1958։

ղի քանի մի ինչ յետին եղեալ երգեցմունքս մինչ ցաստ թէպէտ՝ ըստ արտաքին կերպարանքն ցուցանին երգեցմունք մարմնաւոր ուրախութեան, սակայն ըստ ներքին զօրութեան համայնքն առ հօգևորն վերաբերին։ Եւ յետ այնոցիկ են, որք միշտ զհոգւոյն խորհին»։ Որքան էլ կամենանք մտածել, թե նա ստիպված, հալածանքից խուսափելու նպատակով է, ինչպես Կոստանդին Երզնկացին, այդ տողերը գրել, դարձյալ պիտի հավատանք, որ այստեղ կա ճշմարտություն։ Հիրավի, Պաղտասար Դպրի երգերում երբեք էլ սիրած էակը կանացի այնպիսի շոշափելի ու տեսանելի կերպար չի ստանում, ինչպես Նաղաշ Հովնաթանի գրչի տակ։ Դեռևս Սյունեցին էր փորձում Քրիստոսին ու Աստվածամորն այնպես գովերգել, ինչպես սիրած էակին։ Դա մի ուշագրավ ուղղություն է մեր գրականության մեջ, որի ամենադասական մշակողը հանդիսացավ Պաղտասար դպիրը՝ իր հետնորդներով։

Հիմք կա մտածելու, որ Պաղտասար Դպրի ակնարկած «հօգևոր» և «զհոգւոյն» բառերի տակ միայն կրոնական գաղափարներ չպիտի ենթադրել։ Ավելին, այն ժամանակ և դրանից էլ առաջ հայ քնարերգության մեջ ընդունված էր հատկապես վարդի և սոխակի մոտիվի օգնությամբ խոսել նաև հայրենիքի և նրա ազատագրման գաղափարների մասին։ Այդպիսի երգերի լավագույն օրինակներ է տվել ինքը՝ ժողովուրդը։ Օրինակ, «Առաւօտուն քամին ելնէ, մաղէ վիս», «Առաւօտուն թռչունքն ամէն...» և նման ուրիշ երգերում սոխակի որոնած վարդը կամ սիրուհին ավելի շուտ խլված հայրենիքի գաղափարն է[35]։ Դրանք, սակայն, անկախ իրենց նախնական, հեղինակային իմաստավորումից, միաժամանակ ընդհանրացումներ են, որոնք ընկալվել են նաև այլ առումներով՝ նայած տեղին ու ժամանակին։ Այդպես են նաև Պաղտասար Դպրի սիրո տաղերը։ Այդտեղ սերը ամենից առաջ հայրենիքի հետ է կապված և ոչ թե կնոջ։ Այս առումով ուշագրավ է հատկապես նրա «Ի նընջմանէդ արքայական» երգը, որով հեղինակն արթնանալ է խնդրում իր սիրեցյալին.

Ի նընջմանէդ արքայական,
Զարթի՛ր, նազելի իմ, զարթի՛ր.
Էհաս նըշոյլն արեգական,
Զարթի՛ր նազելի իմ, զարթի՛ր...
Տապ և խորշակ ժամանեցին,
Զթերթիկ գեղոյդ այրել կամին,
Քանզի էանց գիշերն մթին,
Զարթի՛ր, նազելի իմ, զարթի՛ր...

Պաղտասար Դպրի համապատասխան երգերում շեշտը դրված է ոչ այնքան սիրեցյալի, նրա վիճակի մանրամասնությունների վրա, որքան երգչի կարոտի ու տառապանքի, երազի ու տենչանքների։ Երգչի միջոցով բացվում է ժամանակի հայության բուռն տենչերի և միաժամանակ ազատ խոսել չկարողանալու պատճառով այլաբանությանը դիմելու հոգեվիճակը։ Այդուհանդերձ, գուցե և հենց դրանով էլ ավելի բանաստեղծորեն ու քնքշորեն է բացվել երգչի խռովահույզ ու կարոտակեզ ներաշխարհը.

Զքո քաղցրիկ սուրբ անունդ ես միշտ յիշելով,
Գոչեմ և հառաչեմ զիս աւաղելով,

[35] Աս. Մնացականյան. Հայկական միջնադարյան ժողովրդական երգեր, էջ 50—51 և այլուր։

Ի սար, ի ձոր շրջիմ զանձն իմ կոծելով,
Յարակ խնդրիմ ըզքեզ և ոչ գըտանեմ,
Եւ ոչ գտեալ զքեզ՝ ի սուգ մըտանեմ...
Բիւր ինձ արեգակունք ոչ գան ի յերև,
Զի քո սուրբ տեսութիւնդ է ինձ բիւր արև,
Դեղնեալ, անկեալ, խամրեալ իբր աշնան տերև
Յարակ խնդրեմ ըզքեզ և ոչ գըտանեմ
Եւ ոչ գըտեալ զքեզ՝ ի սուգ մըտանեմ։

Այս հիմնական տրամադրությունն է ընկած Պաղտասար Դպրի «Սիրոյ և կարօտանաց» տաղիկների հիմքում, որը, սակայն, ամեն անգամ մի նոր տեսքով ու նոր ուժով է դրսևորվում։ Հեղինակի մտապատկերներում նստած է սերը՝ դեպի հայրենի աշխարհն ու նրա զրկված ժողովուրդը. բայց նա այդ սերը ներկայացնում է ընդհանուր այլաբանությամբ. մտածել տալով նաև դեպի կինը զգացված սիրո մասին։ Իրենց այս համակողմանիությամբ էլ նրանք այնքան ջատ են սիրվել՝ և ընթերցողների, և հաջորդ բանաստեղծների կողմից, դառնալով գրական մի կազմակերպված դպրոցի առաջին ավարտուն շարք։

Պաղտասար Դպրի երգերի մեջ զգալի տեղ է տրված բանաստեղծի դժգոհությանը՝ խորամանկ, բախտախնդիր, թշնամի ուժերի դեմ, որոնք ըստ երևույթին, հալածել են նրան.

Թըշնամիքըն անձինս, որք պատեցին զիս,
Լեզուաւ նենգաւորաւ նախատեցին զիս,
Նախատեցին զիս,
Արի, տէր իմ, արի, ի յարդարութիւն,
Դատեա, տէր, զայնոսիկ, որք դատեցին զիս,
Եւ ատեցին զիս...

Այլ կերպ էլ չէր կարող լինել, որովհետև առաջավոր գործիչների համար, այն էլ թուրքական բռնատիրության ոլորտում և այդ բռնատիրությունից ազատվելու մասին մտածողների համար չէին կարող չլինել մշտահալած պայմաններ։ Ուստի և բանաստեղծի տրտունջը, թե՝ «հոգք, տառապմունք և նեղութիւնք», «բոլոր տըխրաբեր զօրք՝ զանազանիւ սուսերաւ» իրեն երբեք հանգիստ չեն տվել, միանգամայն ճիշտ է։ Ահա այս հողի վրա ծնված բանաստեղծությունների փունջը իր տեսակի քնարական ստեղծագործությունների առաջին դասական փունջն է մեր գրականության մեջ։ Դրանցով մեր բանաստեղծական մտածողությունը բարձրանում էր մի նոր աստիճանի։ Պաղտասար Դպրի մոտ այդ տրամադրությունների ընդհանուր հայտարարը հետևյալ տողերն են.

Ի կիսատ սիրելեաց, անհաւատարմաց,
Ի սուտ այս կենցաղոյս ձանձրացաւ անձն իմ.
Յանըստոյդ ընկերաց, լոկ բանիւ եղբարց
Յիրաւի, բընաւին ձանձրացաւ անձն իմ...

Համանման իրադրությունների պատճառով էր, որ Պաղտասար Դպրի կրտսեր ժամանակակից Սայաթ-Նովան հայաշատ մի այլ կենտրոնում մի օր հոգեհարազատ տողերով արձագանքեց նրան՝ իր «Բեզարիլ իմ» գողտրիկ երգով.

Պաղտասար Դպրի մոտ էլ, սակայն, այս ծանր վիճակը հուսահատություն չի հասնում։ Նա հենց նույն երգում նշում է, որ իր նպատակն է «Դրտանիլ ի կենցաղս բառոյզ սիրելի» ազնիվ ու ճշմարիտ ընկեր, որին նույնքան մեծ կարոտով գովերգում է հետագայում աշուղ Ջիվանին։

Քիչ էջեր չի նվիրել Պաղտասար Դպիրը հոգևոր գաղափարների գովերգությանը։ Այն ժամանակվա հասարակական-քաղաքական գործչի համար դա ոչ միայն անխուսափելի էր, այլև անհրաժեշտ։ Իր այդ տաղիկներում երգիչը նորից մնում է նույն քաղաքացին ու հայրենասերը, ձգտելով ընդհանուր, հավաքական միասնության՝ թե՛ լուսավորության, թե՛ հայրենանվեր գործունեության և թե՛ դավանանքի առումով։

Ով միութիւն զարմանալի, դու ծրնօղ ամենեցուն,
Ցամենեսին ներ գըտանիս, զի համայնից ես դու բուն...

Կյանքը, սակայն, իր օրենքներն ուներ. ուստի նման տենչանքները մնում էին նույնքան հեռավոր ու անիրականանալի, որքան ամենամեծ երազները՝ կապված հայրենիքի ճակատագրի հետ։ Անհեռանկար ու դժվարին այդ պայմաններում անգամ Պաղտասար Դպիրն ու իր միջավայրի առաջավոր մտածողները հավատարիմ մնացին իրենց ժողովրդի դարավոր ուխտին և ձգտեցին առավելագույնն անել դրա իրականացման համար։

Պետրոս Ղափանցի.—Կենսագրական վստահելի տեղեկություններ Պետրոս Ղափանցու մասին բացակայում են։ Մականունը ցույց է տալիս ծննդավայրը (Ղափան), իսկ տաղերում պահպանված մասնակի տեղեկությունները՝ Կոստանդնուպոլսում երկար տարիներ ապրած և այնտեղ իր տաղերի գիրքն ստեղծած ու տպագրած լինելը[36]։ Հայտնի է նաև, որ նա զբաղվել է մանկավարժությամբ և հոգևոր գործերով։ Ծնվել է դարասկզբին և մեռել 1784 թ.։

Որպես բանաստեղծ Պետրոս Ղափանցին շարունակեց տեղական ուղղության և հատկապես իր ուսուցչի՝ Պաղտասար Դպրի մշակած ավանդները։ Դա պայմանավորված է եղել երկուսի համար էլ ընդհանուր նույն միջավայրով, ժամանակաշրջանի համարյա նույն հատվածով և պատմա-քաղաքական նույն իրադրություններով։

Որքան էլ արվեստի նուրբ ու հմուտ ձևեր է ընտրել Պետրոս Ղափանցին իր սրտահույզ և ինքնաբուխ տաղերի համար, այնուամենայնիվ, մնացել է Պաղտասար Դպրի անուրանալի ազդեցության տակ։ Ուստի դժվար է գտնել նոր հարցադրումներ ու անկախության հասնող այնպիսի ձևեր, որոնք չունենային իրենց նախատիպերը Պաղտասար Դպրի մոտ։ Արվեստի առումով հատկանշական են՝ ամփոփ ու ավարտուն ծավալը, հարուստ հանգավորումը, ճոխ կրկնակները, «մեղմ» գրաբարը, կանոնավոր տնատումը։ Տեղ-տեղ նկատելի է որոշ ձգձգվածություն։ Ստեղծագործական ներքին համակող տրամադրությամբ ու վշտի ճնշող հագեցվածությամբ, ինչպես նաև կարոտի ու երազանքի բոլոր նրբերանգներով Պետրոս Ղափանցին հոգեհարազատ է Պաղտասար Դպրին, և միմյանց կրկնելով ու լրացնելով նրանք կազմում են մի ամբողջություն։

---

36 Պետրոս Ղափանցի, Գրքույկ կոչեցեալ երգարան, Կոստանդնուպոլիս, 1772, Շուշանիկ Նազարյան, Պետրոս Ղափանցի, Երևան, 1969։

Պետրոս Ղափանցու մոտ էլ առաջնակարգ են եղել սիրո, վարդի ու սոխակի երգերը՝ իրենց պաղտասարյան այլաբանությամբ և բազմանշանակությամբ։ Այստեղ հեղինակը մերթ-մերթ խորագրերի մեջ ուղղակի հայտնում է «գաղտնիքը», գրելով «Առ ազգն իր սիրելի» կամ «Ջիլշտակրութենէ հայրենեաց մերոց ի դէմս զանազանից նմանութեանց»։ Առաջինը սոխակի անունից վարդին ուղղված սրտի խոսք է, որի խորագիրը, եթե անտեսվի, կմնա Պաղտասար Դպրի գրչից ելած երգերից մեկի երկվորյակը.

Ի սուգ ի լաց արդ մըտի,
Նոր ողբոց շաւիղ գըտի,
Ջան եդեալ եմ ի մըտի
Նազելի վա՜րդ, վա՜րդ,
Ցառաջեմ զօր ամենայն...
Սիրով քով եղէ խումար
Ջլացն արարի ինձ տումար,
Արեւդ սիրոյն համար,
Փութացիր վա՜րդ, վա՜րդ,
Ոչ հանդչեմ զօր ամենայն...

Մյուս երգում նույնպես իշխում է այլաբանությունը։ Սղալի ու տխուր է բոլոր թռչունների վիճակը. ամեն կողմից լսվում է նրանց «հառաչմունք և գոչմունքը». սպասում են գարնան։ Դա հայ ժողովրդի վիճակն է՝ ազատության ակնկալությամբ։

Թավականին ինքնատիպ և գողտրիկ ստեղծագործություն է «Քաղցրիկ թռչնոց՝ կաքաւուց» նվիրված բանաստեղծությունը՝ հարուստ ու ճոխ կրկնակով։ Դա, իրոք, կաքավ թռչունի գովք է. սակայն բանաստեղծը այստեղ ևս սովորական բնություն չի դրվատում։ Նա վիշտ ու բողոք ունի, երազ ու կարոտ.

Արդ, բարձրացո զձայն քո ըստ իս,
Եւ փարատեա ըզսուգ սրտիս՝
Հայցմամբ քոյոյ երգարանիս...

Նկատելի է, որ Պետրոս Ղափանցու համար էլ, ինչպես Առաքել Բաղիշեցու, Երեմիա Քյոմուրճյանի և այլոց, հայրենի երկրի ազատության չափ տենչալի է Կոստանդնուպոլսի՝ Բյուզանդիոնի ազատությունը օտար բռնատիրությունից։ Դա, անշուշտ, միայն հայ երգիչների ձգտումը չէր, այլև մյուս ճնշված ազգերի և հատկապես հույների, որոնց հետ կողք-կողքի ապրում էին նրանք որպես վիճակակիցներ։ Պետրոս Ղափանցու ամենաընդարձակ բանաստեղծությունը նվիրված է այդ թեմային, որի մեջ նորից առկա է հայ ժողովրդի և Հայաստանի հարցը։

Այդ նույն ժամանակներում էր, որ հեռավոր Հնդկաստանում Շահամիր Շահամիրյանի և նրա զինակիցների կողմից այնքան լայն ու հեռագնաց ծրագրերով նախագծվում էր Հայաստանի ազատագրությունն ու անկախությունը։ Պաղտասար Դպրի, Պետրոս Ղափանցու և այլոց տաղերի ու Շահամիրյանների «Յորդորակ» և «Որոգայթ» հատորները տոգորված էին նույն հայրենասիրությամբ։

**Սիմեոն Երևանցի.**—Ծնվել է 1710-ական թվականներին Երևանի Քաղա-

քամեջ թաղամասում, կրթությունն ստացել էջմիածնում, պաշտոնավարել որպես ուսուցիչ ու նվիրակ Հնդկաստանում, Երուսաղեմում, Արևմտյան Հայաստանում։ Կաթողիկոս է ընտրվել 1763 թ. և մնացել այդ պաշտոնում մինչև մահը՝ 1780 թ.։ Թաղված է էջմիածնում։

Սիմեոն Երևանցու գրական հարուստ ժառանգության մեջ աչքի են ընկնում «Ջամբռը», «Տոնացույցը», ինչպես նաև փիլիսոփայական մեկնությունները ու քարոզները։

Սիմեոն Երևանցին նաև բանաստեղծ էր։ Ձեռագիր ու տպագիր[37] աղբյուրներից հայտնի նրա տաղերը հանդիսանում են Կոստանդնուպոլսում սկզբնավորված գրական ուղղության հարազատ արձագանքը։ Նրանցից մեկը հորինված է 1747 թ., որը ցույց է տալիս, թե նա վաղուց էր բանաստեղծություններ գրում։ Որոշ տաղեր էլ նա գրել է կաթողիկոսության տարիներին։ Համարյա բոլոր տաղերի միջով հեղինակն անց է կացրել իր քաղաքական-հայրենասիրական տրամադրությունները։ Այստեղ մերթ այլաբանորեն, մերթ էլ պարզորոշ խոսվում է Հայաստան աշխարհի և նրա զավակների ծանր վիճակի մասին.

Սուգ զգեցան երկինք երկնիւք
Վասն մերոյ կորստեան...
Որդիք սորին շնորհածինք
Ի ձեռս նեղչաց մատնեցան...

Ուստի, դիմելով Գրիգոր Լուսավորչին, նա բացականչում է.

Զարթի՛ր, զուարթուն անուն,
Մինչև երբ ննջես դու ի քուն...

Դա նույն կոչն է, որ արել էր Պաղտասար Դպիրը. «Ի ննջմանէդ արքայական, զարթի՛ր...»։

Սիմեոն Երևանցու երգերում վշտախառն բողոք է ասված հայ գեղջուկի, աշխատավորի, գրկվածի, պանդուխտի, բանտարկյալի և ուրիշ հալածականների մասին։ Նա առանձին տեղ է հատկացրել էջմիածնին, որը պատկերված է գորովագութ մոր նման։ «Ի դիմաց ազգիս Հայոց առ մայրս մեր սուրբ էջմիածին աղերս և ի նմանէ պատասխանիք...» խորագրի տակ բանաստեղծը երկխոսությամբ գրսևորում է նրանց վիշտն ու մորմոքը։ «Ի գիրկ ծնողիդ մերոյ հանգչիլ ե՞րբ իցէ, ո՛վ մայր, ե՞րբ իցէ...» հարցնում է ժողովուրդը, իսկ էջմիածինը պատասխանում է. «Սիրով ծագուցդ իմոց աղիքս գալարի, որդեակք, գալարի...»։

Իրավամբ շատ բարձր է գնահատված Սիմեոն Երևանցու «Արի, աստուած հարցն մերոց» գողտրիկ երգ-աղոթքը։ Պատմաբան Լեոն այդ ստեղծագործության մասին գրել է. «Հայ ժողովրդի դարավոր տառապանքները, դարավոր արտասուքներն են լալահառաչ և պաղատագին խոսում այդ համեստ և պարզ երգի յուրաքանչյուր տողից։ Եվ նա իբրև հայցվածք մտավ եկեղեցու մեջ, երգվում էր պատարագի վերջում, երգվում էր «Ցասման ժամին», երբ ամբողջ ժողովուրդը ծնկաչոք հառաչում էր և երբ հաճախ այդ հառաչանքները փոխ-

[37] «Տաղարան փոքրիկ շարահիւսեցեալ ի Սիմէօնէ սրբազան կաթուղիկոսէ Հայոց...», էջմիածին, 1793։

վում Լիհ կանանց սուգ ու շիվանի»։ Հայ ժողովրդի անցյալում ստեղծած հայրենասիրական լավագույն ստեղծագործություններից մեկն է այդ երգը.

*Արի՛, աստուած հարցրն միրոյ,*
*Որ ապաւէնգ ես ննղելոց,*
*Հա՛ս յօգնութիւն ծառայից քոց՝*
*Անօգնական ազգիս Հայոց...*

**Սայաթ-Նովա.**—*XIII—XIV դարերից արևելյան կոչված աշուղական երգարվեստն սկսեց աշխուժանալ նաև Հայաստանում։ Հատկապես XVI—XVII դարերից գուսանական հին ավանդույթները, որոնք ժամանակին երկնել էին գողթան երգեր ու հայրեններ, թուլանալով ետին գիծ մղվեցին՝ տեղի տալով աշուղական բանարվեստին։ Գրավոր ընդհանուր պրությանը զուգընթաց զարգացավ հայ աշուղական գրականությունը. հայրենի երկում և հայ գաղթաշխարհում հրապարակ իջան համաարևելյան առումով նշանավոր հայազգի աշուղներ։ Մեզ հայտնի աշուղական կենտրոններից խոշորագույններն էին Նոր Ջուղայինը, Թիֆլիսինը, Արարատյանը։ Չնայած յուրաքանչյուր կենտրոն, ինչպես նաև նրանցից դուրս առանձին գավառներ, քաղաքներ, գյուղեր ավին իրենց ականավոր երգիչ-աշուղներին, սակայն նրանց բոլորի թագն ու պարծանքը դարձավ Սայաթ-Նովան։ Ավելին, իր ժամանակի առումով նա թագն ու պարծանքը հանդիսացավ ոչ միայն հայկական, կովկասյան, այլև առհասարակ աշուղական երգաշխարհի։ Սայաթ-Նովան, սակայն, սոսկ աշուղ չէր և ոչ էլ սոսկ աշուղական երգի հանճարեղ վարպետ։ Նա բանաստեղծ էր այդ բառի ամենալայն առումով, որն իր ստեղծագործական կարողությունները դրսևորեց, հիմնականում, աշուղական կոչված երգաձևի օգնությամբ, հաճախ փշրելով նրա սահմանները և ստեղծելով նոր ու ինքնատիպ երգեր։*

*Սայաթ-Նովան ծնվել է XVIII դարի առաջին տասնամյակներում. մասնագետները նրա ծննդյան տարին ցույց են տալիս մերթ 1712, մերթ 1722, մերթ էլ նրանց միջև ընկած մի այլ թվական։ Նրա հայրը՝ մահտեսի Կարապետը, Հալեպից Թիֆլիս տեղափոխված հայ էր, իսկ մայրը՝ Սառան, Հավլաբար թաղամասից մի հայուհի։ Նրանք իրենց որդուն, որն սկզբում կոչվում էր Արութին (Հարություն), նախնական կրթությունից հետո, տալիս են ջուլհակության արհեստանոց, որտեղից, սակայն, նա դուրս է պրծնում, և իր բնական ու բազմաշնորհ ընդունակությունները նվիրում աշուղության արվեստին։ Նա կարողանում էր և՛ հորինել ազնիվ ու խորիմաստ երգեր, և՛ ստեղծել երաժըշտական քաղցր ու հարուստ եղանակներ, և՛ անձամբ, այն էլ ամենաբարձր վարպետությամբ ու հմայքով երգել, նվագել դրանք՝ դրսևորելով բազմակողմանի ընդունակություններ[38]։ Թիֆլիսի նման խոշոր ու կենսուրախ կենտրոնում Սայաթ-Նովան անմրցակից է եղել նաև այն պատճառով, որ իր երգերն ստեղծել ու կատարել է թե՛ հայերեն, թե՛ վրացերեն և թե՛ ադրբեջաներեն։ Ըստ երևույթին նա տիրապետել է նաև պարսկերենին, որի ապացույցը նրա երգերում հանդիպող առանձին տողերն են։*

*Սայաթ-Նովայի փառքը, ինչպես նաև ընդունակությունների դրսևորման հնարավորությունն ավելի է մեծանում, երբ նա հրավիրվում է վրաց արքու-*

---

[38] *Տե՛ս* Սայաթ-Նովա, *Հայերեն, վրացերեն, ադրբեջաներեն խաղերի ժողովածու, կազմեց, խմբագրեց և ծանոթագրեց Մորուս Հասրաթյան, Երևան, 1963։*

նիք, որպես պալատական երգիչ։ Համաժողովրդական, հրապարակային նյութերի թելադրած պահանջներին այստեղ գումարվում է արքունականը, որն այլ ճաշակ էր ենթադրում և ստեղծագործական այլ պահանջներ առաջադրում։ Այստեղ կար լիցքավորման և կատարելության մղվելու մի ուրիշ գործոն ևս. խոսքը Հերակլ արքայի քրոջ՝ գեղեցկուհի Աննայի մասին է, որի գաղտնի, բայց փոխադարձ սերը եկավ փոթորկելու երգչի զգացմունքների ներաշխարհը, և այնտեղից դուրս կորզելու սիրո երգերի այն ամենաընտիր նմուշները, որպիսիք դեռ չէր տեսել Կովկասը։.

Արքունական առօրյան իր աննպաստ պայմաններն էլ ուներ, որոնք երգչին մերթ բամբասանքների, մերթ հալածանքների, մերթ էլ ծանր ապրումների գիրկն էին նետում։ Այդ ամենը, ի վերջո, նրան ոչ միայն դուրս մղեցին պալատից, այլև զրկելով գեթ դրսում աշուղությամբ զբաղվելու հնարավորությունից, ցմահ դատապարտեցին վանականի ճգնավորության։ Մահն էլ եղերական եղավ. 1795 թ. պարսից Աղա Մուհամադ խանի հրոսակները, Թիֆլիսն ավերելիս, հայոց ս. Գևորգ վանքում սպանեցին նաև Սայաթ-Նովային, որը վաղուց արդեն Տեր Ստեփանոս էր կոչվում։ Այդտեղ էլ թաղվեց նա, ուր մինչև օրս պահպանվում է աճյունը՝ որպես հայ, վրացի և ադրբեջանցի ժողովուրդների մի նվիրական սրբություն։

Սայաթ-Նովայի երգերի մի թիվը մի քանի հարյուրից ավելի է եղել, որոնց զգալի մասը (շուրջ 225 երգ) պահպանվել՝ հասել է մեզ։

Սայաթ-Նովայի երգերի հիմնական նյութը սիրերգությունն է։ Նա ունի նաև առանձին բանաստեղծություններ՝ նվիրված տարբեր հարցերի, որոնք բարոյագիտական, սոցիալական, հասարակական ընդհանուր խնդիրներ են շոշափում։ Իրենց ամբողջությամբ նրանք օգնում են հստակ գաղափար կազմելու իր միջավայրի և ժամանակի ընդհանուր պատկերի մասին։ Սայաթ-Նովայի՝ որպես ստեղծագործողի ամենամեծ արժանիքը մարդկային ներաշխարհի խորքերը բացահայտելու, նրանց ազնիվ կողմերը դրվատելու, վատն ու ստորը պախարակելու, սոցիալական չարիքները քննադատելու, ժողովուրդների բարեկամությունը քարոզելու, արդար հասարակարգ տենչալու, և այդ ամենը բարձր ու նուրբ արվեստով դրսևորելու մեջ է։

Սայաթ-Նովան կյանք մտած լինելով արհեստավորական-աշխատավորական խավերի ծոցից, սերտորեն կապված լինելով հատկապես Թիֆլիսի ստորին դասերի հետ, իր մտավոր ու հոգևոր ողջ էությամբ հանդիսացավ նրանց հոգեհարազատ ներկայացուցիչը։ Այդ իսկ պատճառով նրա երգերը դարձան ոչ թե լոկ մի հանճարեղ անհատի հոգեկան ներաշխարհի արտացոլքը, այլև նրան ծնող հասարակական խավերի, տանջված ու ստեղծագործ մարդկանց կյանքի, առօրյայի, պայքարի ու ձգտումների բյուրեղյա մարմնացումը։ Նա ինքն էր ճակատագրորեն զինվորագրվել այդ մեծ նպատակին, պահանջելով իրենից.

Արի, համով ղուլուղ արա, խալխի նոքար Սայաթ-Նովա...

Սայաթ-Նովայի երգերը մի քանի գլխավոր մայրուղիներով են առաջնորդում մեզ դեպի նրա ապրած ժամանակն ու միջավայրը՝ XVIII դարի կովկասյան և մասնավորապես Թիֆլիսի իրականությունը։ Դրանցից ամենալայնը ձգվում է նրա սիրո երգերի միջով։ Արվեստի գլուխգործոց հանդիսացող այս կերտվածքները մեր առջև բացում են սիրո երևույթի էությունը՝ իր բոլոր բեկբեկումներով, բռնկումներով ու փայլատակումներով։

Տղան սիրում է աղջկան. աղջկա փոթորկուն հույզերը տեղի են տալիս.
Ցիս էն գըլխեն Սայաթ-Նովու յարըն խի...

Այդ պահից՝ սիրուհու գաղափարը երգչի համար դառնում է կյանքի իմաստ ու գերագույն խորհուրդ։ Եվ հենց այդ պահից էլ նա զգում է, թե ինչպես անարդար իրականությունը, հազար ու մի արգելքներով կանգնած է նրա առջև։ Նրա սիրուհուն՝ նրանից խլելու են գալիս «դուշման»-ները, «յադ»-երը, «ռաղիփ»-ները, «թշնամի»-ները, «օցեր»-ը, «փշեր»-ը, «խար»-երը։ Ուժեր, որոնց մեջ մարմնավորված պիտի տեսնել բոլոր խոչընդոտները՝ սկսած կենցաղային մանր հասկացողություններից և վերջացրած սոցիալական խոշոր ըմբռնումներով։

«Բըլբուլի պես էնդուր գու լամ՝ վարթիս խարըն շատացել է...»,—ասում է բանաստեղծը և փարվելով իր սիրուհուն բացականչում.

Ջիմ քաշվի էկած մահեմեն,
Ռաղիփի տըված ահեմեն...
Թեգուզ ըռղամ գա շահեմեն,
Յար, չիմ տա, չիմ հեռացնի
Քիզ քու յարեմեն,
Բարեբարեմեն...

Ռոնի ուժերը, սակայն, անջատում են նրանց։ Ուստի բանաստեղծը սգում է իր ողբերգությունը.

Ղուրթ ին ասի փիր ուստաքար դադիրըն.
«Թաղ շինեցի, վարթըն քաղից վարգիրըն».
Ջափեն յիս քաշեցի, սափեն յադիրըն.
Ռաղիփն էկավ միզ էս ռանգիրըն մեմեկ...

Ովքեր են այդ ընդդիմադիր ուժերը։ Նրանք մասամբ հնից եկող ավանդական ըմբռնումների պաշտպաններ են։ Սակայն, ինչպես կտեսնենք ստորև, նրանց զգալի մասը երգչի հակառակորդներն են՝ պալատական միջավայրից։ Եվ եթե չմոռանանք, որ նա սիրում էր արքայի քրոջը՝ Աննային, իսկ դա օրենքով հալածվող քայլ էր, ապա իրական վիճակն ավելի կոնկրետ կդառնա։ Հիմքեր կան մտածելու, որ Աննան ևս անտարբեր չի եղել դեպի երգիչը, չնայած նա էլ քաջատեղյակ էր արգելիչ հանգամանքներին։ Հետևապես Սայաթ-Նովայի ողբերգությունը կրկնակի էր. և՛ իր, և՛ սիրուհու ողբերգության գումարն էր դա։ Ահա այդ հիմքի վրա է, որ այնքան փոթորկոտ ու մրրկող տառապանքներ է ապրել բանաստեղծը, մերթ տենչալով հերոսական դիմադրությամբ ու կյանքի գնով իր բնական իրավունքները պաշտպանել, մերթ էլ՝ հուսահատ աղի արցունք քամել։

Այս առումով ուշագրավ են հետևյալ տողերը, որոնց միջոցով բանաստեղծը մխիթարում է սիրած աղջկան.

Դարդ մի անի, ջան ու ջիգար, միտկըդ դիվաց չը տեսնե.
Աճկ խավրի, անգաճ խուլնա՝ էրեսըդ թաց չը տեսնե։
Վունց արեգագը շուխկը տա, վունց լուսինը լուս անե.
Ավալ քու տեսնողը մեռնի՝ քիզ գըլխիբաց չը տեսնե։
Դուն գըլուխդ մահի կու տաս, յիս էլ քեզիդ կու մեռնիմ...
Էլ վաղ մեռնի Սայաթ-Նովեն՝ ճիտըդ գըցած չը տեսնե։

Այս ողբերգությամբ Սայաթ-Նովան նման է այն հայրենների քնարական հերոսին, որն իրենից խլվող սիրուհու համար պատրաստ է կամ կռվելով նրան փրկել, կամ այդ կռվում խոցված ընկնել։ Հերոսական ու ավանդական այդ մահվան տենչը Սայաթ-Նովայի երգերի ողնաշարն է։ Դրա ողջ փիլիսոփայությունը՝ սիրուհու կողմից սիրված լինելու, բայց նրանից բաժանվելու վտանգի մեջ է, այն հավատքով, թե մահից հետո էլ կսիրվի նրանից։ Դրա համար է, որ,

Սայաթ-Նովեն ասաց. զալում, յիս էն մահին մահ չիմ ասի՝
Հենչաք ըլի՝ դուն վըրես լաս մաղըդ շաղ տալով, աճկի՛ լուս։

Անղիջում, անձնվեր ու անշահախնդիր այս սիրո պատճառով է, որ միշտ թարմ են հնչում Սայաթ-Նովայի երգերը։

Մյուս խոշոր մայրուղին, որ տանում է դեպի բանաստեղծի ժամանակները, ձգված է Սայաթ-Նովայի այն երգերի միջով, որոնք արձագանքն են հանդիսացել նրա և հասարակության ղանգվածների առօրյա հարաբերություններին։ Այդ երգերի մեջ զգացվում է հատկապես քաղաքային կյանքի և մասնավորապես Թիֆլիսի արհեստավորական-առևտրական միջավայրի շունչը.

Տասներկու տարեկանում ինձ հանձնեցին ուստաքարին.
Տասներեք տարեկանում իմ արհեստում տըվի, անցա,
Տասնըչորսում, իմ շնորհքով, վարպետս պարգև ստացա...

Կենսագրական տվյալներ են սրանք, թե՝ պայմանական, միևնույն է, այստեղ նրա երգերի լիրիկական հերոսը՝ աճում է արհեստավորական միջավայրում, և դա է կարևորն ու բնորոշը։ Եվ եթե նրա երգերում այնքան առատ են «վարպետ», «ուստադ», «ուստաքար», «փիր», «աշակերտ», «արհեստ», «մարիփաթ», «ղալամքար», «ղառնիշանչի», «մալ», «բազար», «մեյդան», «դուքան», «քուրա», «սովդաքար», «բեհուբազար», «գուրզար», «ռանդա», «խայաթ» (դերձակ), «խիրիդդար» (գնորդ, առևտրական) և նման այլ բառեր, ապա դրանք ոչ այլ ինչ են, քան նշված միջավայրի անջնջելի կնիքը՝ իր ստեղծագործության ու երգերի վրա։ Այս երգերի մեջ բաբախում է ազնիվ ընկերության, անխարդախության, հավատարմության, վստահության, «ջոմարդության», հնարամտության, ուշիմության, հալալության, արդարասիրության, ճշմարտասիրության, անձնուրացության այն գաղափարների արձագանքը, որով համակված են եղել արհեստավորական, համքարական ղանգվածներն այն ժամանակ։ Եվ եթե Սայաթ-Նովան հաճախ նման երգերում դժգոհում է խարդախությունից, վատ ընկերոջից, ապա նորից նա նկատի ունի նույն միջավայրը, այս անգամ ուզելով կամենալով նրա ցավոտ ու խոցելի կողմերը։ Այս հարազատ միջավայրում երգիչն ավելի մեծ հնարավորություն է ունեցել խոսելու իշխող կարգերի և անարդար իրականության մասին։ Կեղեքման և շահագործման ծանրությունն իրենց վրա կրող քաղաքային այդ խավերի ընդերքում էր, որ առավել ուժեղ ընդգծվածությամբ էր դրսևորվում թշնամանքը վերնախավի և տիրողների դեմ։ Ուստի և այստեղ ավելի քան իրեն զգացնել է տալիս սոցիալական անհավասարության գիտակցությունը.

Մարթ կա ուրախ, մարթ կա՝ տըխուր ու փոշման,
Մեկին՝ մըսխալ, էն մեկելին՝ հինգ բաթման...
Վուրըն ախկատ, վուրըն օսկով մե ղանգին,

Վուրին գինի, վուրին աղու մի բանդի...
Մեկին գամ ու վայի.ք, մեկին՝ ցավ ու սուք...

Կարևորը նաև այն է, որ նման բոլոր դեպքերում Սայաթ-Նովան գտնվում է ոչ թե այդ հակամարտ բանակներից դուրս, այլ նրանց մեջ, կանգնած տանջվածների և «ցավ ու սուք» ունեցողների շարքում։

Սայաթ-Նովայի երգերից դեպի իր ժամանակի կյանքն ու իրականությունը ձգվող երրորդ մայրուղին անցնում է նրա՝ պալատական առօրյային նվիրած բանաստեղծությունների միջով։ Դրանք բավականին մեծ թիվ կազմող ստեղծագործություններ են՝ գրված ներքին լարվածությամբ ու ընդդիմագիր լիցքավորմամբ։ Եվ դա միանգամայն բնական ու տրամաբանական է մի բանաստեղծի համար, որը դրիչ վերցնելուց առաջ երդվել էր մարտնչել հանուն ճշմարտության և արդարության.

Հասա դուռըն ճշմարտության, խմեցի էն սուրբ գինին...
Ով արթարությունից խոսե, նա ինձ հիդ ընգիր կուլի...

Պարզ է, որ այս նշանաբանով արքունիքում անհնար էր երկար դիմանալ և մանավանդ խաղաղ վիճակ ունենալ։ Առաջին իսկ առիթով երգչի սպանիչ ծաղրին է արժանանում ոմն պալատական.

Կարկաժը վունց կուլի Շիրազի շուշա,
Ինչքան բարցըը թարեքումըն տիղ անին...

Մի ուրիշ պալատականի հասցեին գրված երգիծական ոտանավորում կարդում ենք.

Մարթ կա ճիճվի պես սողալով կու գնա,
Միշտ բերնումն օցի լիղի կունենա...

Պալատական կյանքի ներքին խարդախությունների ու դավադրանքների մերկացնող պատկերն է տրված նրա մի ուրիշ բանաստեղծության մեջ.

Ով գալիս է տիղ ին բանում, խիլքի վըրեն նուր ին դընում,
Սրտի մեջեն նիտ ին քաշում, վըղին սրփած թուր ին դընում,
Փչանում է, յա փթում է, իժում, վարար ջուր ին գըցում,
Յա մի ջաղցի քարով ծածկած հեստի ջըրի հուր ին դըցում,
Վուր ընգնողն էլ դուս չի գա, խուր է, կոսին, ճշմարիտ է։

Պարզվում է, որ այդ խորխորատի մեջ է ընկած եղել նաև ինքը.

Ճամփես կորավ, ափ դուս չեկա, ծովի ծածկած խուր տիլի պես...
Սայաթ-Նովուն Գուրգեն խանի ղուլը կոսին, ճշմարիտ է։

Դժվար է ասել, թե ինչ ստորության էին փորձում մղել նրան՝ ճշմարտության այդ անկոտրելի մարգարեին, որը մահն աչքի առջև առնելով, նույն պալատական կամարների տակ մերժեց նրանց, ասելով.

Ջեռը վի կալ, վատ մարթութին չիմ ուզում...
Յիս մարդ մարթ իմ՝ նամարդութին չիմ ուզում...

Հասկանալի է, որ այս ամբողջի հիմքում՝ առանձին պալատականների վիրավորված ինքնասիրությունից, արքայաքույր Աննայի և երգչի շուրջն

ստեղծված բամբասանքներից բացի, պիտի ընկած լինեին նաև ուրիշ, ավելի նշանակալից հանգամանքներ, քաղաքական խնդիրներ։

Անարդար կարգերից դժգոհ երգիչը թողել է նաև խորապես քաղաքացիական ու կյանքի խորքը փիլիսոփայական հայացքով նայող մտորումներ, որոնք իսկապես քերթության գլուխ-գործոցներ են։ Դրանցից ամենափայլունը կարող է համարվել «Աշխարհս մի փանջարա է...» երգը։ Դա իրականությունից դժգոհ, սիրից ու խարդախությունից խոցված, այդ ամենն ուղղել կամեցող, բայց պատմականորեն անզոր այն անհատի մորմոքն է, որը լավի հույսով և վատին չհանդուրժելու պատճառով կամենում է հեռանալ աշխարհից.

Աշխարհս մե փանջարա է, թաղերումեն բեզարիլ իմ,
Մըտիկ տըվողը կու խուցվի, դաղերումեն բեզարիլ իմ...
Գուզիմ թըռչի բըլբուլի պես, բաղերումեն բեզարիլ իմ...
Ղուրթըս էնդուր ճանփա չէ դնում՝ շատացիլ է խալխի սուտը...
Չին թողնում վախտին բացվելու, քաղերումեն բեզարիլ իմ։

Սայաթ-Նովան միջնադարյան հայ քնարերգության ամենաաշխարհիկ բանաստեղծն է։ Նրա շոշափած խնդիրները, գովերգության նյութն ու առարկան, ինչպես նաև իրականացման եղանակներն ու միջոցները հազար ու մի թելով կապված էին կյանքին ու առօրյային, ի սպաս էին դրված նրան։ Նաև դա էր այն բյուրեղացած արդյունքը, որին ձգտում էր ողջ միջնադարյան քերթությունը՝ գրականության աշխարհականացման անդուլ պայքարում։ Այդ երևույթի բաղկացուցիչ մասն է նաև Սայաթ-Նովայի երգերի լեզուն, որը հենց նույն Թիֆլիս քաղաքի հայության խոսակցական բարբառն է։ Նա էր առաջինը, որ այդ բարբառը մտցրեց գրավոր խոսքի մեջ, որին և հետագայում հետևեցին ուրիշները՝ ընդհուպ մինչև Գ. Սունդուկյան։

Սայաթ-Նովայի երգերը՝ իրենց մարդկային տրամադրություններով, անմիջականությամբ, ժողովրդական լայն խավերի հարազատությամբ, հոգեթափանց կարողությամբ, բարձր և նվաճող արվեստով ուղեցույց հանդիսացան գալիքի համար։ Նրա անմիջական շարունակողները՝ Թիֆլիսի և Արարատյան դաշտի աշուղներն էին, որոնցից սակայն և ոչ մեկին չէր վիճակվել հավասարվել նրան։

Սայաթ-Նովան որպես բանաստեղծ իր արվեստով և աշխարհընկալման եղանակներով մեծապես ազդեց նաև հայ դասական քնարերգության զարգացման վրա։ Անուրանալի է նաև նրա ազդեցությունը վրացական և ադրբեջանական գրողների վրա։ Առհասարակ այնքան պարզ ու հասկանալի թվացող այս երգիչը վերին աստիճանի բարդ երևույթ է՝ հին ու նոր ժամանակների և ազգերի եղբայրության սահմանագլխին։ Այդ է պատճառը, որ նրանով շատ են զբաղվել ու դեռ էլի շատ կզբաղվեն և՛ հայ, և՛ ուրիշ ժողովուրդների գրականագետ-բանասերները։

**Հակոբ Շահամիրյան.**—XVIII դարի երկրորդ կեսում հայ հասարակական մտքի զարգացման մի նոր կենտրոն առաջացավ հեռավոր Հնդկաստանում։ Նրա հիմնադիրն ու առաջնորդը հռչակավոր Շահամիր Շահամիրյանն էր՝ իր որդիների և նրանց ուսուցիչ Մովսես Բաղրամյանի հետ։

Շահամիրյաններին հաջողվեց հիմնել տպարան և հրատարակել մի շարք արժեքավոր գրքեր։ Դրանցից առաջինը կոչվում է «Նոր տետրակ, որ կոչի

Յորդորակ...» (սրա հեղինակներն են Հակոբ Շահամիրյանը և նրա ուսուցիչ Մովսես Բաղրամյանը)[39], իսկ երկրորդ գրքի խորագիրն է «Որոգայթ փառաց» (շարադրված է Շահամիր Շահամիրյանի կողմից)։

Այս երկու գրքերը ժամանակի հայ հասարակական առաջավոր մտքի գագաթնակետերն էին, երկուսն էլ՝ ծրագրային։ Եթե «Որոգայթ փառացը» գալիք ազատագրված Հայաստանի պետական օրենսգիրք-սահմանադրությունն էր լինելու, ապա «Յորդորակը» նախապատրաստում էր այդ Հայաստանի ստեղծումը, ցույց տալով նրա երևան գալու ուղիները։ «Յորդորակի» չափածո ներածականի հեղինակ Հակոբ Շահամիրյանը ծնվել է 1745 թ. Նոր Ջուղայում և մեռել 1774-ին՝ Հնդկաստանում։

«Յորդորակում» չափազանց հստակ ու որոշակի ըմբռնում կա հայ ժողովրդի ստրկական վիճակի, նրա օրինական իրավունքների, ինչպես նաև ազատագրման ուղիների մասին։ Այն մի կողմից խրախուսում է միաբանությունը, գիտակցության մակարդակի բարձրացումը, իսկ մյուս կողմից՝ զինված պայքարի հնարավորությունն ու անհրաժեշտությունը։

Բարձր գնահատելով «Յորդորակի» գաղափարական ընդհանուր ոգին ու նպատակը, նրա չափածո հատվածների մասին պիտի ասել, որ դրանք, որպես բանաստեղծություն չեն փայլում իրենց արվեստով ու մշակվածությամբ. ոչ էլ նույնիսկ լեզվով։

Սակայն, անկախ դրանից, «Յորդորակի» բանաստեղծական գլուխները, հատկապես իրենց հասարակական-քաղաքական բովանդակությամբ, հարցադրումներով, խիզախ հորդորանքով՝ միանգամայն նոր էջ էին բացում հայկական գեղարվեստական գրականության մեջ։

Հեղինակի համար ելակետը հայ ժողովրդի ծանր վիճակն է և պարսիկ ու թուրք բռնակալների անլուր հալածանքը.

Այլ միշտ քաղցեալք և ծարաւեալք,
Իբրև զարեանարբու գազան պատառիչ,
Ջանան կապտելով և կողոպտելով գիշատիլ զմեզ.
Եթէ ունեցիմք զամենայն զոր ինչ,
Իսկ եթէ ոչ՝ խողխողեալ զողջոյն կոտորեն
յայնժամ անխնայ՝ իբրև՝ զսատակիչ.
Մինչև ամենևին անուան ազգիս մերոյ
լինին եղծանօղ և խանգարիչ...

Ահա ճակատագրական այս իրադրությունների հենքի վրա է, որ բանաստեղծը կերտում է սգացող Մայր Հայաստանի կերպարը.

Որպէս և մերս է այժմ իսկ,
որ միշտ աշխարհեալ սգայ Մայրն մեր Հայաստան...

Հակոբ Շահամիրյանն իր ասելիքը նպատակասլաց դարձնելու համար տեղ-տեղ դիմում է թևավոր մտքերի, պերճախոս օրինակների, խոր ընդհան-

---

[39] «Նոր տետրակ, որ կոչի Յորդորակ, շարադրեցեալ սակս սթափելոյ երիտասարդացն և մանկանցն Հայկազանց ի վեհերոտեալ և ի հեղգացեալ թմրութենէ քնոյ...», Մադրաս, 1772։

բացումների օգնության, որոնցով և ստեղծում է մնայուն ճշմարտություններ։ Ահա մի քանի տող այդպիսի մտքերից.

Ուստի լաւ համարին անպարտելի և ախոյեան մարդիկքն
մի անգամ մեռանիլ նահատակութեամբ,
Քան յաւուրն հազար անգամ ի թշնամեաց մեռանիլ
արհաւրօք և անել թախծութեամբ…
Արդ, լաւ ուրեմն եւս էր, որ մասն միոյն ազգի
յիւրոյն ազգի վերայ մեռանիցէր…
Քան զողջոյն ազգն այսպիսի տառապեալ
թշուառութեամբ ի ծառայութիւն մտանիցէր…

Ինչպես հայտնի է, հեղինակի քրիստոնյա նախնիները համարյա միշտ այդ բոլոր խնդիրները դիտելով նաև Աստվածաշնչի քարոզների ոգով, ընդգծել են «մեղքի», «հնազանդության», «անցավորականության» պարագաները։ Հակոբ Շահամիրյանն այդ հարցում բոլորովին նոր ու առողջ հայացք է պաշտպանում։ Բայց նա գիտի, որ հենց իր ժամանակակիցները պիտի իրեն առարկեն, ուստի խոսքը ուղղում է նաև նմանների դեմ։ Հիշեցնելով անցյալի ալտա օրերը, նա գրում է.

Միթէ ոչ նոյն անյղելի կամ անփոփոխ աստուածն է,
որ միշտ նոցայ լինէր տածիչ և խնամօղ,
Իբրու այժմուս ըստ խելայեղ ոմանց կարծեաց՝
ամայի և անտերունչ զմեզ եթող.
Ոչ իմանան և ոչ տակաւին առնուն ի միտ
ապշեցեալքն իբրև զշաղակրատ բաջաղօղ,
Թէ ոչ է Աստուած մերթ գթած և մերթ անողորմ,
Այլ է միշտ գթած և մեղաց յանդիմանօղ…

Փաստորեն այստեղ խոսքն ուղղված է ոչ թե առհասարակ միջնադարյան մտայնության դեմ, այլ ժամանակի անհատ գործիչների, որոնց անունները, սակայն, նա չի տալիս։ Իսկ որ, իրոք, եղել են որոշակի հակառակորդներ, դա երևում է հեղինակի «խելայեղ», «ապշեցեալք», «շաղակրատ բաջաղօղ», «ապերասան» և նման ուրիշ բառերից։

Դժբախտաբար երկար չապրեց Հակոբ Շահամիրյանը։ Եվ այն արշալույսի ու գարնան գովքը, որին նվիրված էր նա, թերի մնաց։ Սակայն հենց այդ վիճակով էլ նրանք նոր ժամանակներ ու նոր քնարերգություն էին գուշակում.

Քանզի մերժեցաւ այնքան խաւարամած
և մառախլապատ աղջամուղջն գիշերոյ,
Ահա եհաս և մերձեցաւ ծագումն արևուն՝
յաշխարհս մեր լուսաւորելոյ…
Եւ ժամանեաց ծաղկածին և մանուշակաբեր գարունն
զերկիրս մեր զուարճացուցանելոյ…

* *
*

XIV—XVIII դարերի հայ գրականության պատկերն ավելի ամբողջական կլինի, եթե հաշվի առնենք նաև թատերագրությունները, որոնք նախապատ-

րաստում էին իսկական դրամատիկական ստեղծագործությունների երևան գալը։ Այդպիսիներից առաջինները ծնվեցին լեհահայ գաղութում և նույնիսկ բեմադրվեցին այնտեղ։ Պահպանվել է նրանց ցանկը. «Մահ Կեսարու», «Անեղծուած Սողոմոնի», «Մահ Հերովդեայ», «Սրբուհի կոյսն Հռիփսիմէ», որոնցից պահպանվել է միայն վերջինի բնագիրը[40]։

Սկսած գործը ոչ մեծ ուշացումով շարունակվեց Վենետիկի Մխիթարյանների մոտ՝ միայն XVIII դարի վերջին քառորդում հրապարակ հանելով շուրջ երկու տասնյակ պիես՝ կրոնական, հայրենասիրական թեմաներով։

Դրամատիկական այս ստեղծագործությունները՝ շարադրված չափածո կամ արձակ, միջնադարյան հայկական գեղարվեստական գրականության նոր նվաճումներից էին։

Այսպիսին է հայ միջնադարյան գրականության վերջին հատվածի պատկերը։ Նրա բնորոշ գիծն էր աշխարհականացման այն ոգին և հասարակական գործեղ գործոն դառնալու ձգտումը, որոնք XIX դարում, արդեն նոր պայմաններում լրիվ դրսևորվեցին հայ նոր գրականության մեջ։

## ԵՐԱԺՇՏՈՒԹՅՈՒՆ

XIV—XVI դարերում, հայ ժողովրդի համար ստեղծված մղձավանջային պայմաններում, ծանր փորձություններ դիմագրավեց նաև հայ տոհմիկ երգ-երաժշտությունը, որը սակայն ոչ միայն չդադարեց բաբախելուց, այլև ապրեց նշանակալից զարգացում, աչքի ընկնելով իրար խաչաձևող մի քանի միտումներով և իրողություններով։ Թուրքերեն լեզվի տարածման հետ միասին, աշխարհիկ կյանքում տիրապետող դառնալու ձգտումներ են հանդես բերում զուտ արևելյան, ձևական հատկանիշներով նաև հայերին որոշ չափով մոտիկ, բայց իրենց դարն ապրած ու գեղազգայական տեսակետով մեզ համար օտար ժանրերը։ Բուն հայկական տարրը ավելի ու ավելի է ամփոփվում իր պատյանի մեջ։ Այն սաստիկ խտանում է գեղջուկ ժողովրդական և հին գուսանական արվեստում, «թաքնված» վիճակում զարգանում է աշուղական երգ-երաժշտության մեջ ու ներփակվում եկեղեցականում։ Մյուս կողմից առաջ է գալիս հայկական հին ու միջնադարյան մշակույթի ինքնատիպ երևույթները վերագտնելու և վերարծարծելու գիտակցական միտումը (երբ ծագում ու զարգանում է վերանորոգության շարժումը)։ Մի երրորդ կողմից էլ սկզբնավորվում է մշակույթի եվրոպական ակունքներին դիմելու փորձը, վերոհիշյալ արևելյան հնացած ձևերի ճնշումից ձերբազատվելու, ավելի ճիշտ՝ այն հավասարակշռելու ձգտումով։ Ի վերջո, մեծ կորուստներ ունենալով հանդերձ, հայ երգարվեստը նոր շրջապատի հետ ունեցած շփումներից ինքը ևս որոշ չափով շահում է, և XVII—XVIII դարերում, դուրս գալով հարաբերական վերընթացի ճանապարհ, նույնիսկ առանձին փայլատակումներ ունենում, մանավանդ գաղթօջախներում։

Քննարկվող պատմաշրջանում հայ երաժշտության ճյուղերից ազգային-ժողովրդական ոգին առավել կուսական վիճակում պահպանածը գեղջուկ

---

[40] Գ. Լևոնյան, *Թատրոնը Հին Հայաստանում*, Երևան, 1941, էջ 112—121, «Բազմավեպ», 1889։

երգաստեղծությունն է։ Նկատի պետք է առնել և այն հանգամանքը, որ հենց այս շրջանում հայկական բնաշխարհի հեռավոր երկրամասերում գյուղական հայ բնակչությունը ստիպված եղավ իր ավանդական բանահյուսությունը հետզհետե թարգմանելով զարգացնել թուրքերենի հիման վրա։ Դիտելի է նաև հայ բանահյուսության վրա այլազգի շրջապատի ունեցած ձևական ազդեցությունը, որով գեղջուկ քնարական հնավանդ քառյակը՝ «մանի» է վերանվանվել, ողբը՝ «բայաթի», վիճակի խաղը՝ «ջան գյուլում», քաղաքային ժողովրդական հայրենը (մանավանդ թուրքերենի վերածված վիճակում)՝ «մայա» կամ «ալագյոզլու» և այլն։ Սակայն, հայաշխարհի բոլոր ծայրամասերին չէ, որ վիճակվել է նույն բախտը։ Մի ծայրամաս էլ, օրինակ, Ակն քաղաքը իր շրջակա գյուղերով, դարեր շարունակ դիմացավ որպես հայ հնագույն անապական երգի շտեմարան։ Մայր երկրի շատ տեղերում նույնպես անխառն մնաց կամ լոկ հայ-արևելյան մի նոր ձև ընդունեց ժողովրդական երգը, որը հակառակ բազում փորձությունների, բյուրավոր հասարակ աշխատավորների հետ միասին այնպես էլ չլքեց հայրենի հողը։

Ժողովրդական երգաստեղծության մեջ քննարկվող ժամանակաշրջանում նոր տիպեր չեն ստեղծվել։ Մի առանձին շեշտ են ստացել պանդխտության երգերը։ Մի քանի հրաշապատումներ վերջնականապես յուրացվելով ժողովրդի կողմից, վերածվել են բանահյուսական «ասվող» վիպերգերի (ինչպես «Կարոս խաչն» ու «Նարեկացին»), մի քանի նոր վկաների վարքեր առանձնապես համակել են ժողովրդի սիրտն ու երգերի նյութ հայթայթել (ինչպես Վառվառե կույսի վկայաբանությունը) և այլն։ Եղել են նաև ուրիշ նոր հորինումներ, պահպանելով հին տիպերն ու ձևերը։ Հիմնականում, սակայն, որոշ փոփոխություններով կրկնվել է մոտիկ ու հեռավոր անցյալում բյուրեղացածը, քանակական ու որակական զգալի կորուստներով։ Ամենից շատ տուժել են վիպական, հերոսական, ռազմական ու նման բնույթի երգերը, որոնք, ինչպես հայտնի է, միշտ էլ պահպանվում ու ծաղկում են պետականության գոյության կամ դեպի այն տանող հուժկու շարժումների պայմաններում։ Տուժել են նաև ֆեոդալական քաղաքի կենցաղին շաղկապված ժողովրդական երգերը։ Պատմաշրջանի դժնդակ պայմանները իրենց խոր կնիքն են դրել թե նոր ստեղծված երգերի, թե հնից եկող խաղիկների ընտրության վրա։ Եվ դա է գլխավոր պատճառը, որ մեր ժողովրդական երգն առհասարակ մի խորունկ թախիծով է, աղեցուն։ Բայց այդ թախիծը ոչ միայն չի վերածվել անհույս վշտի կամ ողբի, այլև չի խանգարել, որ պահպանվեն ու գոյատևեն նաև լուսավոր քնարականության այնպիսի կոթողներ, ինչպիսիք են «Ծամթելը», «Ջուրն առա, ելա դարը», «Պիլիբի» և ուրիշներ։

Գեղջուկ ժողովրդական երգին բավականին մոտ էր կանգնած գուսանական և աշուղական արվեստը։

Հայոց հին գուսանական արվեստը քննարկվող ժամանակաշրջանում մեծապես սահմանափակված է։ Եվ, սակայն, շարունակում է ապրել, մասամբ՝ հենց իրենց՝ գուսանների շնորհիվ, որոնք ինչքան էլ նվազած, այդուամենայնիվ գոյատևել են մինչև նորագույն ժամանակները, մասամբ՝ ժողովրդական զանգվածների կենցաղում, ուր տարերայնորեն պահպանվել ու մշակվել են նաև գուսանների հորինած մի ամբողջ շարք հայրեններ, և մասամբ էլ ուսումնական մարդկանց ջանքերով, որոնք չեն զլացել միջնադարյան տաղարաններում գրի առնել գուսանական հայրենների ծավալուն շարքեր։ Ըստ առկա

տվյալների, այս շրջանում հայ գուսաններն, իրենց աշխատանքի բերումով, սերտ շփման մեջ են գտնվել մահմեդական շրջապատի հետ և ձգտել են հարաբերակցել հայոց ձայնանեղանակները՝ ութ-ձայն և երկու ստեղի կոչվող համակարգը, պարսկա-արաբական 12 մուղամների դրության հետ։ Այդ մասին ձեռագրերում պահպանվել են հակիրճ գրառումներ[1]։ Ժողովրդական հոծ զանգվածներին դիմելու համար հայ գուսաններն իրենց արվեստով, բնականաբար, պետք է տիրապետեին թուրքերեն լեզվին։ Էլ չենք խոսում այն մասին, որ նրանք շատ դեպքերում ստիպված են եղել ծառայել օտար իշխանավորների։ Վերջիններս, ձգտելով իսպառ վերացնել տաղանդավոր գուսանների կապերը հայության ու քրիստոնեության հետ, կանգ չեն առել ամենադաժան միջոցների առջև։ Միջնադարյան հայ գուսանական արվեստի նշանավոր ներկայացուցիչներից մեկը՝ Հովհաննես Մանուկ Խլաթեցին, 1438-ին տանջահար սպանվել է կրոնափոխությունը մերժելու պատճառով[2]։ Հաջորդ հարյուրամյակում Նահապետ Քուչակը արդեն «աշըղ» է կոչվում, և բացի հայերենից, հորինում է նաև թուրքերեն երգեր։

Հայ մասնագիտական աշուղությունն ու սազանդարությունը, որոնք, ի վերջո, եկան փոխարինելու գուսանական խամրած, բայց տակավին իր գոյությունը պահպանած արվեստին, չնայած ծագումով կապված են Մերձավոր Արևելքի ուշ միջնադարյան մշակույթի հետ, այսուհանդերձ, ժառանգեցին նաև գուսանականի պատմական ավանդույթները։ Արդարև, XVII—XVIII դարերում, ի տարբերություն մայր Հայաստանում տիրող ծանր վիճակի, գաղթավայրերում (Նոր Ջուղա, Կ. Պոլիս և այլ տեղեր), ուր կատարվում էին նկատելի տեղաշարժեր, ձևավորվեցին հայ աշուղի և նոր տիպի քաղաքային երգիչ-նվագածուի (սազանդարի) կերպարները։ Դաստիարակված լինելով հայրենիքից հեռու՝ տարացեղ ու բազմազգ քաղաքներում, այդ երաժիշտներն իրենց արվեստի մի քանի էական կողմերով ու բազմաթիվ արտաքին հատկանիշներով ընդհանուր շատ գծեր ունեին Մերձավոր Արևելքի այլազգի (պարսիկ, թուրք) աշուղների և սազանդարների հետ։ Բայց նրանք հիմնականում ծառայում էին հայ քաղաքացուն, արտահայտում նրա խոհերը, վշտերն ու ուրախությունները։ Սկզբից ևեթ նրանց արվեստում այս կամ այն չափով առկա էր հայկական ազգային երգարվեստի էությունը, որը հետզհետե ավելի ու ավելի բացահայտվելով, ժողովրդի ազգային մշակույթի վերելքին զուգընթաց ազգային ձև ու կերպարանք ստացավ։

Աշուղներն ու սազանդարները հայ արվեստում արևելյան գծի հաղորդողներն էին։ Հանդես գալով ոչ միայն որպես ստեղծագործողներ, այլև կատարողներ, նրանք տվյալ շրջապատում տիրապետող օտար լեզվի և հայկական որևէ բարբառի միջնորդությամբ մեր ժողովրդին ծանոթացրին արևելյան մի ամբողջ շարք վեպերի, սիրավեպերի ու հեքիաթների հետ, վերափոխելով ու հայացնելով դրանք՝ մանավանդ երգվելիք հատվածներում։ Դրանցից են՝ «Ռոստամ Զալը», «Խոսրով թագավորը», «Դաղ-Մուրադ-Շահը», «Միրզա Մահմատը», «Ասլի Քյարամը», «Աբբաս և Գյուլգազը», «Քյոռ-օղլին», «Լեյլի Մեջլումը», «Սիյաբենտո և Խաճե Ջեռին», «Մամ ու Զինը» և այլն։ Գրավետ աշուղներից ու սազանդարներից շատերը հաղորդվեցին Արևելքի մեծ երգիչ-

[1] Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 55, էջ 466բ—467ա (ժողովածու, Երզնկա, 1489)։

[2] Տե՛ս «Հայոց նոր վկաները» (գիտական հրատարակություն), 1903, էջ 284։

*ների՝ Ֆիրդուսու, Նիզամու, Խայամի, Հաֆիզի, Ֆիզուլու արվեստին, ու դրանով ոչ միայն նվաճեցին ժողովրդական հոծ զանգվածների սիրտը, այլև որոշ չափով ազդեցին հայ տաղերգության վրա։ XVIII դարի կեսերին ստեղծագործական ասպարեզ իջավ հանճարեղ Սայաթ-Նովան՝ անդրկովկասյան աշուղներից ամենամեծը, որի հայերեն երգերին կապված ու մեզ հասած ոճականորեն միաձույլ շուրջ 30 մեղեդիների երաժշտական լեզուն, օրգանապես հարըստացված լինելով պարսկական, օսմանյան, ադրբեջանական և վրացական երաժշտությունից եկող տարրերով, իր էությամբ ազգային-հայկական է, ճիշտ այնպես, ինչպես նրա հայերեն ոտանավորների լեզուն ուրիշ բան չէ, եթե ոչ թիֆլիսահայ բարբառը՝ համեմված վերը թվարկված ժողովուրդների բառ ու բանով։*

*Սայաթ-Նովայի ժամանակակիցն էր հայ անվանի թամբուրհար Հարությունը, որը հարստացրեց արևելյան երաժշտության փորձն ու տեսությունը նոր արժեքներով*[3]*։ Այս շրջանում ունեցել ենք նաև այլ գործիքների վրա կատարող և առանձին կամ այլազան համույթներով հանդես եկող վարպետ երաժիշտներ, ինչպես և առհասարակ սիրված ու տարածված նվագարանների հարուստ միակցություն։ Դատելով պատմական տեղեկություններից և պատկերազարդ շատ ձեռագրերի խոսուն նկարներից, ուշ միջնադարում հայ իրականության մեջ կիրառվել են քամանին ու քյամանչան, սանթուրն ու քանոնը, ուդն ու սազը, թամբուրն ու թառը, բլուլը, շվին, դուդուկն ու պարկապզուկը և մի ամբողջ շարք հարկանային նվագարաններ, որոնց մեջ առաջին տեղն են բռնում դափն ու դհոլը։*

*Տվյալ ժամանակաշրջանի ազգային երաժշտության պատմության կարևորագույն երևույթներից մեկն էլ հայ ուսումնական երաժիշտ-բանաստեղծների գեղարվեստական արտադրանքի աշխարհականացման և լեզվի ու ոճի ժողովրդականացման հետագա խորացումն է։ Բնույթով աշխարհիկ կամ աշխարհականացող այդ ստեղծագործությունները թեմատիկայի առումով հենվում էին նախորդ՝ զարգացած ֆեոդալիզմի ժամանակաշրջանում ձեռք բերված նվաճումների վրա։ Դրանք էին՝ կյանքի ու մահվան առեղծված և հոգեշահ խրատ, բնություն և սեր, բարեպաշտություն և հայրենասիրություն։ Ուշ միջնադարում այս նյութերի շուրջ գեղարվեստորեն ավելի բարձր, նորանոր երգեր պիտի հորինվեին, եթե հայ մշակութային կյանքն ունենար զարգացման բնականոն ընթացք։ Սակայն, այդպես չեղավ դժբախտաբար։ Այդուհանդերձ, անհնարին է անտեսել քննարկվող շրջանի ուսումնական երաժիշտ-բանաստեղծների ստեղծագործությունը, որն իր լավագույն մասով հանդիսանում է իր ժամանակի գեղարվեստական գործունեության ցուցիչը։*

*Սյուժետային կարգի արտապաշտամունքային ստեղծագործությունների բնագավառում, Ներսես Շնորհալու «Յիսուս որդի» պոեմից հետո հրապարակ է գալիս Առաքել Բաղիշեցու «Հովասափ և Բարաղամ» տաղաչափյալ վեպը, որը նույնպես, ձեռագրական տվյալների համաձայն, եղանակավոր պատմվել ու հատվածաբար երգվել է*[4] *(մի կողմ թողնելով Առաքել Սյունեցու նշանավոր «Ադամգիրքը», քանի տակավին ստույգ հայտնի չէ, թե ներկայացվել է արդյոք այդ ստեղծագործությունը որպես միստերիա)։*

---

[3] *Տե՛ս Тамбурист Арутин*. Руководство по восточной музыке, Ереван, 1968 (*աշխատասիրությամբ Ն. Թահմիզյանի*)։

[4] *Տե՛ս, օրինակ, Մատենադարան, ձեռագիր № 2672, էջ 342—343 («Յովասափի ձայն»).*

XV—XVI դարերում շարունակում է զարգանալ բուն տաղերգությունը ինչպես Հայաշխարհի տարբեր մասերում, այնպես էլ մանավանդ գաղթավայրերում։ Ձևավորվում է հայ միջնադարյան «Տաղարանը», որպես աշխարհիկ ու հոգևոր ստեղծագործությունների ժողովածու-երգարան։ Ըստ առկա տվյալների, իրոք, այդ գործի նախաձեռնողները եղել են հայրենակարոտ պանդուխտները։ Առայժմ մեզ հայտնի հնագույն տաղարանը, որպես արտածիսական մատյան, Հակոբ Մեղապարտի հրատարակածն է[5]։ Նրանից հետո գրչագիր տաղարան-երգարանների զարգացմանը լուրջ մասնակցություն են բերում եվդոկացի երգիչներ Վրթանես Սոնկեցին, Մինաս Թոխաթցին և ուրիշներ։ Տաղարաններում հանդիպում ենք միջնադարյան նշանավոր մի շարք տաղերգուների՝ Հ. Թլկուրանցու, Մ. Նաղաշի, Գր. Աղթամարցու և այլոց երգերից նաև խազավորված նմուշների[6]։ Այդ խազագրությունը մեզ հետաքրքրող երգերի երաժշտական բնույթի մասին տակավին քիչ բան է ասում։ Կարելի է, սակայն, նշել, որ դրանց եղանակներն իրենց հյուսվածքով եղել են պարզ, հանուրին մատչելի։ Նկատի առնելով հայ արվեստի զարգացման միտումներն ընդհանրապես և հիշյալ տաղերի գրական խոսքերին հատուկ գունավորությունը, հուզական բովանդակության որակը և այլն, կարելի է նաև հետևցնել, թե դրանց համապատասխան եղանակները կրած պիտի լինեին հայ-արևելյան մի նկարագիր։ Բանն այն է, որ արևելյան ճաշակը համակել էր պատմաշրջանի հայ ուսումնական մարդկանց ևս, երբ մեր մշակութային կյանքում հարազատ միջավայր էին գտնում ու տարածվում Նասիմիի երգերը, որոնք հայատառ թուրքերենով ներմուծվել են նաև ձեռագիր երգարանների մեջ։

Վերջապես, հիշենք նաև սույն շրջանի հայ անանուն երգիչներին՝ ժողովրդական ստեղծագործությունների, մասնավորապես պանդուխտի երգերի այն տաղանդավոր մշակողներին, որոնք իրենց ժամանակը հատկանշող շնորհակալ մեծ աշխատանք են կատարել։ Հայ պանդուխտի ինքնատիպ ու բովանդակությամբ հարուստ երգը, որ գեղարվեստական դրականության տեսակներից մեկն է դառնում Մկրտիչ Նաղաշի ստեղծագործության մեջ, մեր անանուն մշակների հավաքական ջանքերի շնորհիվ գրական և երաժշտական առումներով կոթողային կերպարանք է ստանում (օրինակ, «Կռունկ, ուստի կուգաս» հանրաճանաչ երգը)։ Աքանչելի այս ժողովրդական ստեղծագործությունն աչքի է ընկնում ոչ միայն գաղափարական բարձր ուղղվածությամբ ու գեղարվեստական բացառիկ մակարդակով, այլև ճանաչողական մեծ արժեքով։ Նման երգերի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ քննարկվող ժամանակաշրջանում հայ երաժիշտ-բանաստեղծների հիմնական մասը ներքին անդիմադրելի մղում է ունեցել դեպի երգարվեստի զուտ ազգային, ժողովրդական բանահյուսության հետ շաղկապված ձևերը, և որ այդ ձևերում է հենց մարմնավորվել նրանց գեղարվեստական արտադրանքի լավագույն մասը։

Հայ տաղերգությունը զարգացման մի նոր աստիճանի է բարձրանում XVII—XVIII դարերում՝ կապված հայ մշակութային կյանքի աշխուժացման, գաղթավայրերում իրագործված զգալի տեղաշարժերի և առհասարակ վերանորոգության ծայր առած ընդհանուր շարժման հետ։ Վերջինս տաղերգությանը

---

[5] Տե՛ս «Տաղարան է սայ հոգոյ և մարմնոյ», Վենետիկ, 1512—1513։

[6] Տե՛ս, օրինակ, Մատենադարան, ձեռագիր № 1989, էջ 150բ—151բ, № 5306, էջ 29, № 7717, էջ 226 և այլն։

բերում էր երկու նորույթ. կրոնական զգացման վերարծարծումն ու գրաբարի ճաշակը։ Սակայն կրոնական զգացումը, որ այժմ հանդես էր գալիս հայրենասիրության հետ սերտ շաղախված, ըստ էության չէր արգելակում երգաստեղծության մեջ աշխարհիկ ոգու դրսևորումը։ Իսկ պարզ ու մատչելի գրաբարը, որին խորթ էին օտարամոլությունները, ընկալվում էր որպես վերադարձ դեպի զուտ հայկական ոճը։ Հիշյալ հարյուրամյակների կարկառուն երգիչ-բանաստեղծներն են Նաղաշ Հովնաթանը, Պաղտասար Դպիրն ու Պետրոս Ղափանցին։ Դժվար է մեկ ընդհանուր հայտարարի բերել սրանց ստեղծագործական ձըգտումներն ու ոճական առանձնահատկությունները։ Նաղաշ Հովնաթանը իր սիրո և խնջույքի երգերով, ըստ էության, զարգացնում է նախորդ շրջանի արվեստի ավանդույթները, և, միաժամանակ, ընկալում աշուղական ստեղծագործությունից եկող որոշակի հովեր։ Այդ մասին հնարավոր է դատել «Յորժամ եղև գարուն» տաղի մեզ հասած եղանակից, այնուհետև՝ այն խոսուն փաստից, որ Սայաթ-Նովան իր «Քանի վուր ջան իմ» երգը հորինել է «Թասիրն չինի» խաղի հանգով (այսինքն՝ Նաղաշ Հովնաթանի «Նըստեմք ի մէջլիս» տաղի կրկնակի եղանակով), ինչպես նաև Հովնաթանի մի շարք տաղերի ենթախորագրերից, որոնցում հայերեն երգերի եղանակներից զատ, հանդիպում են նաև ադրբեջանական կամ պարսկական երգերի «ձայների» հիշատակություններ։ Եվ ահա «Յորժամ եղև գարուն» ու «Թասիրն չինի» երգերի հուզառատ եղանակները ցույց են տալիս, որ Նաղաշ Հովնաթանի երաժշտական տաղանդը՝ տարբեր ակունքներից սնվելով, լիովին ընդունակ էր պահպանելու ազգային էությունը և ձևի կարևորագույն հատկանիշները։

Արևելյան ձայնեղանակների և աշուղական արվեստի հանդեպ ցուցաբերվող վերաբերմունքի շրջանակներում Նաղաշ Հովնաթանին այս կամ այն չափով ու ձևով ձայնակցում է Պաղտասար Դպիրը։ Բայց Պաղտասարը հաղորդակից է թուրքահայ աշուղական արվեստին։ Իր աշխարհիկ (հատկապես սիրային-հայրենասիրական) տաղերի համար եղանակներ ընտրելիս, օգտագործելով ինչպես հայկական (նաև ինքնաստեղծ), այնպես էլ ընդհանուր արևելյան մեղեդիներ, նա դիմում է Կ. Պոլսում ձևավորված երաժշտական ավանդույթներին, որոնց կազմավորմանը մեծ նպաստ են բերել նաև հայերը։ Ուշագրավ է, որ աշխարհիկ տաղերի գրական խոսքերում, որպես նշանավոր հայկաբան, Դպիրը վերարծարծում է բառ ու բանի և դարձվածքների գրաբարյան ձևեր։ Նա XVIII դարի հայ ականավոր երաժիշտներից է, որն զգալի հետք է թողել մեր տաղերգության մեջ, մեծապես ազդել է իր հաջորդների վրա և՛ որպես բանաստեղծ, և՛ որպես երգիչ։ Օրինակ, Գրիգոր Օշականցու և Սիմեոն Երևանցու տաղերից մի քանիսը հորինված են Պաղտասար Դպրի տաղերի «ձայներով»։ Նրանից մեզ հասած «Ի ննջմանէդ արքայական» սիրային տաղը բարձրարվեստ մի ստեղծագործություն է, թեև քիչ վերամբարձ, բայց ճշմարտապես ապրված, խորապես հուզական, զգայացունց շեշտերով լի եղանակով, ուր միմյանց են զուգորդվում հայ նոր աշուղական ու հին եկեղեցական երաժշտության մի քանի գծերը։

Պետրոս Ղափանցին ձայնակցում է Պաղտասարին և՛ ընդհանուր ուղղվածությամբ և, մասնավորապես, դեպի գեղարվեստական խոսքի գրաբարյան ձևերն ունեցած իր հակումով։ Բայց սա հայկաբան ոճի վերանորոգման տեսակետից մի քայլ առաջ է գնում։ Նրա «Երգարանում» այլևս չեն հանդիպում թուրքական կամ առհասարակ արևելյան երգերի եղանակների հիշատակու-

թյուններ[7]։ Երևում է, որ Ղափանցու «Երգարանի» երգվելիք համարները զուգորդվել են հայկական ավանդական կամ էլ հայկական ոճով վերամշակված եղանակների հետ։ Այդ են վկայում Ղափանցուց մեզ հասած «Փութա սա մեղ նաղշուն կաքաւ» և «Առաւօտեան քաղցր և անոյշ հովերըն» տաղերը, որոնց երաժշտական բաղադրիչները առավել որոշակիորեն առնչվում են նախորդ ժամանակաշրջանի հայ երգարվեստի կենսունակ ավանդույթներին։ Վերջին տաղի երկրորդ տարբերակը հայրենասիրական պաթոսով և քնարական խոր ապրումներով հագեցած հազվագյուտ մի երկ է։

Այժմ անդրադառնանք հոգևոր երգարվեստին։ Պետք է նշել, որ սույն պատմաշրջանում այդ արվեստը անցավ որոշ շրջափոխության բովից, հարըստացավ հին ձևերի նմանողությամբ հորինված մի շարք ստեղծագործություններով։ Այս կամ այն չափով շարունակվեց դեռևս նախորդ ժամանակաշրջանում (XIII—XIV դարերում) ծաղկած այն փորձը, որով որոշ հին երգերի եղանակներ վերանայվում էին՝ նոր ժամանակների ու ճաշակի համապատասխան։ Այդ ճաշակն այժմ ոճականորեն նոր ու բարձր մի ուղղության հետ չէ, որ կապվում էր (ինչպես էր նախորդ շրջանում), այլ միջավայրի փոփոխության, նրա, եթե կարելի է ասել, մահմեդական տիպի արևելականացման։ Արդյունքն այն եղավ, որ մի շարք դեպքերում հոգևոր արտապաշտամունքային տաղերը զուգորդվեցին արևելյան եղանակների հետ, փոքր-ինչ ընդգծվեցին որոշ «ծանր» երգերի զարդոլորումները, «միջակ» երգերը քիչ ավելի հաճախ (քան դա լինում էր առաջներում) տարբերակվեցին «ծանրացումով» և կատարման առումով տուրք տրվեց «արևելյան» կոչված ճաշակին (Արևելյան Հայաստանում՝ պարսկական, Արևմտյան Հայաստանում՝ օսմանյան ու որոշ չափով նաև «արևելականացած» բյուզանդական հակումներով)։

Քննարկվող ժամանակաշրջանում հայ հոգևոր-պաշտամունքային արվեստի մշակների առջև դրված գլխավոր խնդիրն է եղել եկեղեցական երգի բնագավառում արդեն իսկ կուտակված վիթխարի հարստությունները հարազատորեն պահպանել, դրանք հնարավորին չափ պատսպարել խորթ հովերից ու հավատարմաբար փոխանցել սերունդներին։ Հենց այդ մշակների գիտակցված ջանքերով էլ հիշյալ հարստությունները հասան մինչև մեր օրերը, ինչ խոսք, քանակական և որակական զգալի կորուստներ տալով։

Կիլիկիայի հայկական թագավորության անկումից հետո հատուկ կշիռ է ստանում մայր երկրում ծաղկող «արևելյան» վարդապետների առանց այդ էլ բարձր հեղինակությունը, մի նոր հմայք ու նշանակություն են ձեռք բերում Տաթևի, քիչ ավելի ուշ նաև Մեծոփա վանքերի համալսարաններն ու նրանց ուսուցիչ-ուսուցչապետները։ Վերջիններս, որոնց մեջ քիչ չէին հմուտ երաժըշտապետներ, հայոց եկեղեցական, վարչական և ընդհանուր մշակութային գործերի հսկման պատասխանատվությունը վերցնելով իրենց վրա, լուրջ ուշադրություն են դարձնում նաև պաշտոներգության հետ առնչվող խնդիրներին։ Նրանք աշխատում են փրկել Կիլիկյան թագավորության ծաղկման շրջանում կայունացած երաժշտա-մշակութային փայլուն ավանդույթները։ Այս իսկ նպատակով վերանայում են այդ ժառանգությունը՝ լատինասեր հեղինակների նորամուծությունները մերժելու և հայաշխարհին հարազատ հին ու նոր հավելյալ իրողություններով ճոխացնելու համար։

---

[7] Տէ՛ս Պետրոս Ղափանցի, Գրքոյկ կոչեցեալ երգարան, Կ. Պոլիս, 1772։

Շարակնոցի կազմավորմանն ու նրա զարգացմանը մասնակցություն բերած երգիչ-բանաստեղծների ցույց տրված վերաբերմունքը պարզ երևում է շարականների հեղինակների՝ Գր. Տաթևացու ցուցակից, որը եզրափակվում է գրեթե հրամանի հասնող մի նկատողությամբ. «Այսքան շարականս ընդունելի է յեկեղեցի, և աւելին քան զայս՝ խոտելի է և անպիտան»[8]։ Ճիշտ է, Շարակնոցը, ի վերջո, դարձավ ավելի հարուստ մի ժողովածու, քան ենթադրվում էր Տաթևացու ցուցակով, բայց փաստ է նաև, որ այդ ժողովածուից դուրս մնացին, օրինակ, լատինամետ Գրիգոր Անավարզեցու հորինած բազմաթիվ երգերը։

Հայ պաշտոներգության և, առհասարակ, ծիսական ու երաժշտա-ծիսական գրքերի վերախմբագրման հարցում Գր. Տաթևացին մշակած է եղել որոշակի մի մոտեցում, որը կիրառվել է Թովմա Մեծոփեցու, Գր. Խլաթեցու և նրանց հետևորդների կողմից։ Թովմա Մեծոփեցին իրագործել է ժամագրքի նոր խմբագրությունը, մատյանի հիշատակարանում պահանջելով՝ այլևս չփոփոխել այն[9]։ Մեծոփեցու կենդանության օրոք նրա աշակերտների ջանքերով նորովի խմբագրվել են՝ Մանրուսմունքը[10], Շարակնոցը[11] և այլ մատյաններ։ Գր. Խլաթեցին վերանայեց ու նոր նյութերով ճոխացրեց Հայսմավուրքն ու Գանձարանը[12] և այդ ժողովածուներում խմբագրական աշխատանքները կատարեց այնպես, որ նրանցում ավելի հստակ արտացոլվեն հայոց ազգային տենչերն ու իղձերը։ Հարկ է նշել, որ Թովմա Մեծոփեցու և Գրիգոր Խլաթեցու ջանքերով կամ նրանց խորհուրդով ու հսկողության տակ վերախմբագրված ծիսական մատյանները խազագրության տեսակետով որոշակի տարբերություններ ունեն այդ գրքերի Կիլիկյան խմբագրություններից։ Ուստի, պարզ է, որ հիշյալ գրքերի վերախմբագրման աշխատանքներն իրագործվել են երաժշտաստեղծագործական որոշակի մոտեցումով։

Հոգևոր նոր տաղերի ու գանձերի ստեղծագործության բնագավառում բեղմնավոր աշխատանք են տարել Առաքել Սյունեցին, Մատթեոս Ջուղայեցին, Գր. Խլաթեցին ու սրա աշակերտ Առաքել Բաղիշեցին։ Սրանց գեղարվեստական արտադրանքը այս կամ այն չափով տակավին ձայնակցում է նախորդ շրջանի ավանդույթներին։

XV դարի վերջերից մինչև XVII-ի սկզբներն ընկած ժամանակամիջոցում խոր լճացում է ապրում դպրոցական կյանքը, կազմալուծվում են երգեցիկ խմբերը, խանգարվում է ամենօրյա պաշտոներգությունը և նույնիսկ պատարագի արարողությունը։ Այն աստիճան, որ Հարանց Մեծ անապատի հիմնադրման ժամանակ Մովսես Սյունեցու հեղինակավոր ցուցմունքներով որոշվում է՝ Ն. Շնորհալու նշանավոր «Յիշեսցուքը» գոնե տերունական օրերին երգել (այլ ոչ թե «թիւ» ասել), սաղմոսականոնների կանոնագլխերը, ինչպես և «թագաւոր» ու «ալէլուա» կոչվող ստեղծագործությունները «ձայնիւ» եղանակել, շարականների օրհնություններն իրենց քաղվածքներով, հարցերը՝ լրիվ սարքով և պատարագը՝ դպիրներով ու սարկավագներով կատարել և այլն[13]։ Հե-

---

[8] Գr. Տաթևացի, Գիրք հարցմանց, էջ 638։

[9] Տե՛ս «ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», Ա, էջ 597—598։

[11] Տե՛ս նույն տեղում, ձեռագիր № 5114։

[11] Տե՛ս նույն տեղում, ձեռագիր № 5114։

[12] Տե՛ս «Հայոց նոր վկաները» (գիտական հրատարակություն), էջ 264։

[13] Տե՛ս «Պատմութիւն Առաքել վարդապետի Դաւրիժեցւոյ», էջ 257։

տաղայում Հարանց անապատի օրինակով հիմնվեցին Անանիայի անապատը Երևանում, էջմիածնի Նոր շրջանի դպրանոցը՝ Մովսես Սյունեցու ղեկավարությամբ, ինչպես և Նոր Ջուղայի դպրոցը՝ Սյունեցու աշակերտ Խաչատուր Կեսարացու առաջնորդությամբ։

Հիշյալ դպրոցներում ծավալված ընդհանուր շարժումը սերտ առնչված է եղել ոչ միայն պաշտոներգության գործնական կարգավորման, այլև ծիսական հին գրչագրերի վերծանման հետ։ Այդ մասին հնարավոր է դատել նաև այն բանից, որ Խաչատուր Կեսարացու աշակերտ Ոսկան վարդապետը, օրինակ. գլուխ բերելով հայերեն Աստվածաշնչի, խազավոր Շարակնոցի ու խազավոր Ժամագրքի առաջին տպագրությունները, փաստորեն լուրջ գործ է կատարել նաև առոգանության նշանների ու խազերի դրության ուսումնասիրության առումով։ Երաժշտական խազերի առումով փրկվում էին Շարակնոցը՝ դրեթե ամբողջությամբ, և կարևոր մասեր Գանձարանից ու Մանրուսման գրքից։

XVIII դարը նոր հաջողություններով պսակեց վերանորոգման շարժումը, որն արդեն ավելի վճռականորեն մերձեցավ եվրոպական լուսավորության ակունքներին։ Դարասկզբին Մխիթար Սեբաստացին հիմնում է իր նշանավոր միաբանությունը, հեռավոր Իտալիա տանելով Սեբաստիո ս. Նշան ու նաև էջմիածնի վանքերում ուսած երաժշտությունը։ Գրեթե նույն ժամանակամիջոցում գործեցին նաև Ամրդոլի երկու մեծանուն սաներ Գրիգոր Շղթայակիրը, որը վերածնեց Երուսաղեմի հայոց վանքը և Հովհաննես Կոլոտը, որը նոր շունչ տվեց Կ. Պոլսի հայ պատրիարքությանը։

Տպագրության միջոցով հետզհետե տարածվող Սաղմոսները, Ժամագրքերը, Խորհրդատետրերն ու նմանները այս շրջանում միտում են հանդես բերում՝ միաձևություն մտցնելու հայ ծեսի ու արարողության մեջ։ Այդ գործին վճռական մասնակցություն է բերում նաև Սիմեոն Երևանցին, որը վերջին անգամ վերանայելով ու լրացնելով, հրատարակում է Հայոց Տոնացույցը (1774-ին)։ Մովսես Սյունեցուց հետո Սիմեոն Երևանցին հայոց պաշտոներգության երկրորդ մեծ բարենորոգիչն է, որի գործունեությունը ժամանակին տարածվել է նաև պոլսահայ կյանքի վրա։ Պատմական մի շարք տվյալների համաձայն Սիմեոն Երևանցու ձեռնասուններից նշանավոր մի սարկավագ 1777 թ. Կ. Պոլիս գալով, բազմաթիվ դպիրների ուսուցանում է հայ հոգևոր երգերի էջմիածնական եղանակները։ Ավելի ուշ, Գևորգ Դ. Կաթողիկոսը, որ հայ հոգևոր երգարվեստի ուշ միջնադարին վերաբերող կարգավորության հարցում տրամաբանական ավարտին հասցրեց Մովսես Սյունեցու և Սիմեոն Երևանցու գործը, Ն. Թաշճյանին ձայնագրել տվեց Շարականը, Ժամագիրքն ու Պատարագը։ Ուշ միջնադարում հորինված պաշտամունքային երգերից մասնավոր հիշատակության արժանի են Սիմեոն Երևանցու «Արի աստուած» հուզաթաթավ աղոթք-մաղթանքը, ինչպես և Պետրոս Ղափանցու «Կանայք ամենայն» ողբը, որոնք մտել են մեր ձայնագրյալ Պատարագի մեջ։

Մի առանձին խնդիր է նաև քննարկվող ժամանակաշրջանի հայկական երաժշտա-տեսական ու գեղագիտական մտքի զարգացման ընթացքի ուրվագծումը։ Այս բնագավառում նույնպես պարզ նշմարելի են հեղաշրջման երեք փուլեր։ Առաքել Սյունեցին և Հակոբ Ղրիմեցին իրենց տեսական ու գեղագիտական գաղափարներով տակավին սերտորեն առընչվում են նախորդ շրջանի հետ։ Հատկանշական է, որ նրանք ավարտի են հասցնում զարգացած ֆեոդա-

լիզմի շրջանում ․ սկսված այն շարժումը, որով նոր մեկնաբանություն էր տրվում Դավիթ Անհաղթի առաջ քաշած մի շարք դրույթներին։ Երկու գործիչներն էլ հատուկ ուշադրություն են դարձրել ներդաշնակության հենքի մասին դավթյան տեսության վրա։ Այն մեկնաբանելիս Սյունեցին շատ ուշագրավ տեղեկություններ է հաղորդում հին ու միջնադարյան Հայաստանի գործիքային երաժշտության վերաբերյալ։ Իսկ Ղրիմեցին շեշտում է երաժշտական արվեստի վերդգայական ներգործության մեծ ուժը, օրինակ բերելով Որփեոսի մասին տարածված մի ավանդություն, որի համաձայն առասպելական այդ երաժիշտն իր երգ ու նվագով նույնիսկ վայրի գազաններին էր դյութում և հնազանդեցնում։ Այս շրջանում տակավին ծաղկուն վիճակ ունի խազագրության արվեստը։ Բայց նրա գիտակները, Գրիգոր Խլաթեցուց հետո, հետզհետե պակասում են։

Տեսության բնագավառի մեջ լճացումը սողոսկում է կարծես աննկատ և տիրապետում մինչև XVI դարի վերջն ու XVII դարի սկիզբները։ XVII—XVIII դարերում հայ գիտնականները մի նոր ոգևորությամբ աշխատում են հավաքել միջնադարյան ինքնուրույն ու թարգմանական մատենագրության մեջ սփռված երաժշտա-տեսական հատվածները. և նույնիսկ հայտնապես բանաքաղելու միջոցով ամբողջական հոդվածներ են ստեղծում։ Բացի այդ, ինչպես պարզ երևում է Ավետիք Պաղտասարյանի, Ջենեթ-Պողոսի, Խաչատուր Էրզրումեցու և Մխիթար Սեբաստացու գործունեությունից ու գրվածքներից, իրենց գիտելիքները նորովի համալրելու նպատակով, նրանք դիմում են և՛ արևելյան երաժշտական աղբյուրներին, և՛ բյուզանդական ձայնագրագիտությանը, և՛ արևմտա-եվրոպական երաժշտության տեսությանը։

Գրիգոր Դպիր Գապասախալյանը, ուշ միջնադարին հատուկ հայ երաժշտա-տեսական ու գեղագիտական դրույթները ձևակերպելուն և դասակարգելուն զուգընթաց, փորձում է ճգնաժամ ապրող խազային հին համակարգի տեղ մի նոր սիստեմ ստեղծել՝ հայկական, ընդհանուր արևելյան ու բյուզանդական տարրերից շաղախված։ Ու թեև հաջողություն չի ունենում, բայց, փաստորեն, սկիզբ է դնում հայ արդի խազաբանական գիտությանը։ Դա առանձնապես խթանում է հայկական նոր ձայնագրության ստեղծմանը, որ և գլուխ է բերում Բաբա Համբարձում Լիմոնջյանը՝ XIX դարի առաջին քառորդում։

XIV—XVIII դարերի ընթացքում տեղի ունեցած երևույթների կարևոր նշանակությունը հայ երաժշտության հետագա զարգացման համար այն է, որ սույն ժամանակահատվածում, հենվելով նախորդ պատմաշրջանի փայլուն նվաճումների վրա, հայ երգարվեստը կարողացավ լուրջ արգելակներ դնել սկսված պնկման առջև։ Ապա անցնելով XVI դարի ու XVII դարասկզբի ամենադժվարին ճանապարհը, թեև սաստիկ հյուծված, ուժեր գտավ բռնելու վերանորոգության փրկարար ուղին, որը քիչ ավելի ուշ, XIX դարի կեսերից, հանգեցնելու էր նոր ծաղկման։

## ԿԵՐՊԱՐՎԵՍՏ

Հայաստանի քաղաքական և տնտեսական ծանր իրավիճակը բացասաբար ազդեց նաև հայ արվեստի բնականոն զարգացման վրա։ Նախորդ դարերում կերպարվեստի, մասնավորապես մանրանկարչության ձեռք բերած բարձր մակարդակն արդեն անհնար է դառնում հույժ անբարենպաստ պայմաններում աշխատող նկարիչների համար։ Սակայն այդ պայմաններում իսկ հայ վարպետ-

ները շարունակում են գործել և ստեղծում են մի շարք ուրույն մանրանկարներ, որոնք թեպետ զիջում են ծաղկման շրջանի, հատկապես կիլիկյան հայ մանրանկարչության գլուխգործոցներին, այնուամենայնիվ, դեռ պահպանում են իրենց հմայքը և գեղագիտական արժեքը։

XIV—XVII դարերի հայկական մանրանկարչության պատմության մեջ յուրահատուկ տեղ ունի Վանա լճի ավազանում ձևավորված մանրանկարչական արվեստը, որը սկզբնավորվել էր դեռևս X դարից։ Սակայն միայն XIV դարում է, որ այնտեղ նորից վերածնվում է գրքի գեղարվեստական ձևավորման արվեստը և այնքան ինքնատիպ ձևով, որ Վասպուրականի տարբեր վանքերի գրչատներում (Արճեշ, Խիզան, Վան, Ոստան, Աղթամար և այլն) պատկերազարդված բազմաթիվ ձեռագրերը ամբողջականանում են մեկ ընդհանուր՝ Վասպուրականի կամ Վանի մանրանկարչական դպրոցի շրջանակներում։

Վասպուրականի մանրանկարչական դպրոցի առաջին ներկայացուցիչ, հավանաբար, պետք է համարել Սիմեոն Արճիշեցուն, որի գործունեությունն ընդգրկում է XIII դարի 80-ական թվականներից մինչև XIV դարի սկիզբը։ Սիմեոնի ձեռքով գրված և պատկերազարդված մի քանի ձեռագրեր են հասել մեզ, որոնց մանրանկարներն արդեն դրսևորում են պատկերագրական այն նոր ձևերը, որոնք հետագայում բնորոշում են Վասպուրականի մանրանկարչության առանձնահատկությունները։

Վասպուրականի դպրոցի առանձնահատկությունները առավել ամբողջական ձևով են արտահայտվել մանրանկարիչ Ծերունի գործերում։ Նրանից մեզ են հասել մի քանի թվագրված ձեռագրեր, որոնցից առավել նշանակալիցն է Մաշտոցյան Մատենադարանի № 8772 ձեռագիրը, պատկերազարդված 1391 թ.։ Ծերունի մոտ Վասպուրականին բնորոշ գծանկարչական ոճը հասնում է իր կատարելության, հեռանալով այդ ոճին բնորոշ չորությունից ու միապաղաղությունից։ Ծերունի ձեռագրերին հատուկ են նաև զարգացած պատկերագրական շարքերը, որտեղ առանձնակի նշանակություն են ստանում հնամետ հակումները՝ մասնավորապես թեմաների ընտրության բնագավառում։ Հիշարժան է նաև, որ մի ձեռագրի մեջ նա պատկերել է իրեն՝ ձեռագիր ծաղկելու պահին։

Ժամանակի նշանավոր վարպետներից էր ծաղկող Ռստակեսը, որին բնորոշ է զարդանախշերի ինքնատիպ ոճավորումն ու կենդանի և արտահայտիչ մարդկային կերպարների պատկերումը։

Իրենց ամբողջականության մեջ Վասպուրականում պատկերազարդված ձեռագրերի մանրանկարներին առաջին հերթին բնորոշ են դեռ XI դարից եկող հնամենի սովորույթները, որոնք արտակարգ պահպանողականություն ցուցաբերելով, հարատևում են մինչև XVII դարը։ Այսպես, հեռացումը պատկերագրության կանոնական շարքերից և հաճախ կենցաղային ավանդական եղանակների առկայությունը դառնում են Վասպուրականի մանրանկարչության հիմնական հատկանիշները։ Բացի այդ, պատկերված երևույթին ընդգծված արտահայտչականություն տալու նպատակով, Վասպուրականի նկարիչները իսպառ հրաժարվում են պատկերվող առարկայի բնական ձևերի վերարտադրումից։ Տվյալ դեպքում մանրանկարչի հիմնական նպատակն է դառնում ընդգծել թեմայի գաղափարական իմաստը։ Այդ նպատակին Վասպուրականի մանրանկարիչները հասնում են չափազանց ինքնատիպ հնարանքներով։ Ավե-

լորդ երանգավորումից դուրս, թեթև ու պարզ գունաշարը, շեշտված գծանկարը, մանրանկարին հաղորդելով գծանկարչական (գրաֆիկական) բնույթ, հարթավածքի կոթողայնության ու համաչափակշռված կառուցվածքի հետ մեկտեղ ընդգծում են պատկերի ներգործական ուժը։

Գեղարվեստական մշակույթի առավել նշանավոր օջախներից էր Տաթևի վանքը։

Որպես հայկական միջնադարյան մշակույթի խոշոր կենտրոն Տաթևը հայտնի էր վաղեմի ժամանակներից։ Այն իր երկրորդ վերածնունդն ապրեց Հովհան Որոտնեցու և Գրիգոր Տաթևացու ժամանակներում։ Տաթևում նոր դարգացում է ապրում նաև մանրանկարչական արվեստը, իր որոշակի առանձնահատկություններով։

Տաթևի մանրանկարչության ամենախոշոր ներկայացուցիչը Գրիգոր Տաթևացին էր։ Նա ոչ միայն գիտնական, փիլիսոփա և մանկավարժ էր, այլև լավագույն մանրանկարիչ։ Գրիգոր Տաթևացուց մեզ հասած միակ աշխատանքը Մաշտոցի անվան Մատենադարանում պահպանվող 1397 թ. նկարազարդված ավետարանի սակավաթիվ մանրանկարներն են, որոնք վկայում են կյանքի ու բնության նկատմամբ նրա ունեցած տեսական-փիլիսոփայական ըմբռնումները արվեստի լեզվով վերարտադրելու կարողության մասին։ Մնալով միջնադարյան մտածողության ոլորտում, Գրիգոր Տաթևացին, ըստ էության, որոշ երևույթներ փորձում է պատկերել վերլուծական տեսանկյունով։ Այս բանը առաջին հերթին դրսևորվել է կատարվող գործողության և միջավայրի նկատմամբ նկարչի ցուցաբերած վերաբերմունքով։

Հանրահայտ է, որ միջնադարյան մանրանկարչությանն ու գեղանկարչությանն ընդհանրապես բնորոշ է միջավայրի վերացական պատկերաձևը։ Այդ նպատակով պատկերվող գործողությունները (պատկերագրական կանոնիկ թեմաները) ծավալվում են չեզոք խորքի վրա՝ ոճավորված բնապատկերի կամ ճարտարապետական կառույցների շրջապատում։ Գրիգոր Տաթևացին, խորացնելով միջավայրի վերացական բնույթը, որոշ առումով հակադրության մեջ է դնում այն պատկերված կերպարների համեմատաբար իրական ձևերի հետ։ Զնայած մանրանկարչությանը բնորոշ պատկերագրական կանոնների առկայությանը, նկարիչը դրանով ընդգծում է պատկերվող կերպարի մարմնական գոյությունը։

Տաթևացու կատարած մանրանկարների հմայքին նպաստում է նաև օգտագործված գունաշարը։ Շագանակագույնի ու կապույտի երանգները՝ վառ կարմիրի ու դեղինի հետ, ստեղծում են գունադրական այնպիսի մի խաղ, որն ընդգծում է պատկերների ներգործական ուժը։

Գրիգոր Տաթևացու կողմից առաջ քաշված սկզբունքները յուրացվում են XV դարի Տաթևի մանրանկարչական դպրոցի կողմից։ Դրա լավագույն արտահայտությունն են Մաշտոցի անվան Մատենադարանում պահպանվող XV դարի սկզբների մի այլ Գրիգորի ձեռքով ստեղծված ձեռագրի մանրանկարները, որոնք նույնպես նկարազարդվել են Տաթևի վանքում։ Վարդագույն խորքը և ընդհանրապես զվարթ գունաշարը այս ձեռագրի մանրանկարներին տալիս են կենսուրախ բնույթ։ Ծաղկավոր լուսանցազարդերը. և հատկապես անվանաթերթերը առանձին իրապաշտական շնչով են ներկայացվում։ Թանձր գույներով կատարված զարդանախշերի գերակշռությունը զերծ է ծանրաբեռնվածությունից։

Հայկական մանրանկարչության պատմության ուշագրավ նմուշ է 1449 թ. մի ձեռագրում պահպանված Գրիգոր Տաթևացու մանրանկար-դիմապատկերը, որն, ըստ երևույթին, կատարված է մեծ գիտնականի կենդանության տարիներին և զետեղվել է ձեռագրի մեջ հետագայում։ Այստեղ նկարիչը ընդգծելով Տաթևացու գիտնական ու մանկավարժ լինելու հանգամանքը, նրան պատկերել է աշակերտների հետ։ Բազմակերպար այս հորինվածքում Գրիգոր Տաթևացու առանձնակի նշանակությունը ընդգծվում է նրան մյուսներից ավելի մեծ չափերով պատկերելու եղանակով։ Ընդ որում, մանրանկարիչը ճշգրտորեն պահպանում է Տաթևացու դիմանկարային նմանությունը։

XIV դարի առաջին տասնամյակների ընթացքում Սյունիքում ճարտարապետական և քանդակագործական ուշագրավ հուշարձաններ են ստեղծվում։ Դրանց մանրամասն վերլուծությունը տրվել է զարգացած ֆեոդալիզմի ժամանակաշրջանի պատմությանը նվիրված հատորում, այստեղ, սակայն, համառոտակի խոսք ասելու անհրաժեշտություն է զգացվում, քանի որ Սյունիքում ստեղծագործող ճարտարապետ ու քանդակագործ վարպետների մի մասն աշխատել ու բարձր արժեքներ է ստեղծել նաև այս հատորին վերաբերող ժամանակահատվածում։ Այստեղ ինքնատիպ ճարտարապետության հետ մեկտեղ, մեծ ուշադրություն է դարձվում տաճարների ճակատային հարդարանքի վրա, գծային հյուսվածքավոր ձգված խաչերը ծածկում են ճակատային հարթությունները՝ շրջակալելով պատուհաններն ու ընդգծելով կառուցվածքի առանձին հատվածները։ Առավել աչքի ընկնող հանգամանքը, տվյալ դեպքում, շքամուտքերի ձևավորումն է ու դրանց ճակատաքարերի վրա եղած թեմատիկ քանդակները։

Այս շրջանում որոշակի նշանակություն են ստանում գամբարան-եկեղեցիները, որոնցով պայմանավորված է պատկերաքանդակների թեմատիկ բովանդակությունը և ճարտարապետական կառուցվածքային բնույթը։ Նախ հանդես են գալիս երկհարկանի դամբարան-եկեղեցիներ, ապա XIII—XIV դարերի սահմանագլխին կառուցվում են եկեղեցիներ ու վանքային համալիրներ, որոնց շքամուտքերի քանդակները իրավամբ պատկանում են հայկական միջնադարյան մշակույթի փայլուն հուշարձանների թվին։

Արփա գյուղի 1321 թ. կառուցված եկեղեցու արևմտյան մուտքի կիսակամար քարի վրա, շինարարական ընդարձակ արձանագրության հետ մեկտեղ (ուր հիշատակվում է ճարտարապետ ու քանդակագործ Մոմիկի անունը), քանդակված է գահավորակին բազմած Աստվածածինը՝ Հիսուսը գրկին։ Եկեղեցու ներսում գմբեթակիր առագաստների վրա քանդակված են ավետարանիչների խորհրդանիշները։

Հավանաբար նույն թվականին է կառուցվել նաև Եղեգնաձորի Սպիտակավոր ս. Աստվածածին կոչված եկեղեցին, որի շքամուտքի ճակատի քարի վրա նույնպես քանդակված է Աստվածածինը՝ մանուկ Քրիստոսը գրկին։ Եկեղեցու ներսում, գլխավոր խորանի վերևը, քանդակված է Քրիստոսը, իսկ գմբեթի վրա՝ Քրիստոսն ու ավետարանիչները։ Առանձին բեկորներով պահպանվել են «Բարեխոսի» (Դեիսուս) պատկերագրական շարքը ներկայացնող խմբաքանդակից առանձին հատվածներ։ Սակայն Սպիտակավորի քանդակների մեջ ուշագրավ են աշխարհիկ բովանդակություն ունեցող կերպարները։ Հյուսիսային պատի ճակատին է եղել եկեղեցու հիմնադիր Էաչի Պռոշյանին ու նրա ավագ որդուն՝ Ամիր-Հասանին պատկերող խմբաքանդակը։ Այստեղ Էաչին

պատկերված է նստած վիճակում՝ եկեղեցու մանրակերպարի (մոդելի) փոխարեն ձեռքում պահած մի աղեղ։ Կողքին Ամիր-Հասանն է։ Եկեղեցու մանրակերպարի բացակայությունը նշում է քանդակի գաղափարական բովանդակության տարբերությունը նախորդ շրջանի քանդակներից։ Պահպանվել է նաև Ամիր-Հասանին որսի ժամանակ պատկերող քանդակը։

Իր քանդակազարդ հարդարանքով առավել ամբողջական է Նորավանքում 1339 թ. Բուրթել իշխանի կառուցած երկհարկանի դամբարան-եկեղեցին։ Առաջին հարկի մուտքի ճակատակալ քարի վրա դարձյալ քանդակված է Աստվածամայրը՝ Մանուկը գրկին՝ Գաբրիել և Միքայել հրեշտակապետների միջև։ Իսկ երկրորդ հարկի շքամուտքի ճակատաքարի վրա քանդակված է Հիսուս Քրիստոսը՝ Պողոս և Պետրոս Առաքյալների միջև։ Աբսիդի գմբեթում աղավնակերպ սուրբ հոգին է և Աստվածածինը՝ հրեշտակների միջև։

Առանձին հետաքրքրություն են ներկայացնում նաև եկեղեցու գմբեթակիր սյուների (ռոտոնդայի) վրա եղած քանդակները։ Դրանցից պահպանվել են Աստվածածինը գահի վրա՝ Մանուկը գրկին, ապա մի իշխանի խորաքանդակ պատկեր (հավանաբար սա Բուրթել իշխանն է եկեղեցու մանրակերպարը ձեռքին) և մի այլ անձնավորություն՝ երկար հագուստով, մեջքին լայն զոհարազարդ գոտի, գլխին խույրաձև գլխարկ (հավանաբար հոգևորական է)։ Այստեղ, փաստորեն, գործ ունենք սովորական դարձած կտիտորական խմբաքանդակ ներկայացնող հորինվածքի հետ։ Անշուշտ Աստվածածնի քանդակով սյունը կենտրոնականն է, իսկ խնդրատուի դիրքով պատկերված եկեղեցու հովանավորող իշխանները տեղավորված են եղել դրա երկու կողմերին։ Այսպիսով, երեք առանձին քանդակներ, շաղկապվելով իրար հետ, ներկայացնում են կտիտորներին՝ խնդրատուի դիրքով։ Ի տարբերություն նախորդ շրջանի կտիտորական քանդակների, որտեղ խնդրարկուն դիմում է Հիսուս Քրիստոսին՝ (Աղթամար և այլն), այստեղ ընդգծվում է Աստվածածնի բարեխոս լինելու հանգամանքը։

Եկեղեցու արևմտյան ճակատի մուտքը շրջապատող և ճակատային հարթության սոսկ զարդաքանդակային նշանակություն ունեցող բարակ սյուներն ու կամարները, նրբագույն զարդաքանդակները, երկրորդ հարկ տանող երկկողմանի աստիճանները և, վերջապես, մուտքերի ճակատաքարերի հոյակապ խմբաքանդակները ներկայացվում են ոճական ու հորինվածքային այնպիսի շաղկապվածությամբ, ճարտարապետական ու զարդաքանդակային նշանակություն ունեցող առանձին տարրերի, ինչպես և համամասնությունների այնպիսի ներդաշնակ հարաբերությամբ, որ հուշարձանը դառնում է միաձույլ մի ամբողջություն։ Այն միջնադարյան հայ արվեստի ամենաներդաշնակ կոթողներից մեկն է։ Ոճական ինքնատիպությունն ու տեղական առանձնահատկությունը հնարավորություն են տալիս խոսելու ոչ միայն գեղարվեստական ու ճարտարապետական որոշակի դպրոցի մասին, այլև վեր հանելու առանձին վարպետների գործունեությունը։ Դրանցից հատկապես նշանակալից է դառնում Մոմիկ վարպետը։

Հոյակապ գրիչ և մանրանկարիչ, ճարտարապետ ու քանդակագործ Մոմիկը, ապրել է Վայոց ձորում։ Նրա մասին ստույգ հիշատակություններ ունենք 1282—1321 թթ. մեզ հասած ձեռագիր և վիմագիր հուշարձաններում։ Մոմիկի բարձր տաղանդի արգասիք են Արփա (այժմ Արենի) գյուղի Աստվածածին կոչված եկեղեցին ու հավանաբար Նորավանքի Բուրթելաշեն երկհարկանի փա-

ռահեղ դամբարան-եկեղեցին՝ իրենց անզուգական պատկերաքանդակներով։ Նորավանքում պահպանվել են նաև Մոմիկի ձեռակերտ հոյակապ խաչքարերը։ Հատկապես նշելի է 1308 թ. խաչքարը, որն իր նուրբ ու կատարյալ քանդակագործությամբ անկրկնելի է։ Մոմիկի կերտած խաչքարերի գեղարվեստական հմայքը երկրաչափական համամասնությունների ներդաշնակության մեջ է։ Դրանք իրենց շաղկապվածության մեջ վեր են ածվում ոսկերչական կամ ասեղնագործ ժանյակներին հատուկ նրբագույն զարդապատկերների։ Մոմիկի բազմակողմանի ստեղծագործությունը միջնադարյան հայ մշակույթի փառահեղ էջերից է։

Մեզ են հասել կիրառական արվեստի վանազան առարկաներ, որոնք վկայում են հայ վարպետների բարձր կարողությունների մասին։ Այս առումով, ոսկերչական արվեստի նմուշների հետ (թասեր, գավաթներ, սկուտեղներ), առանձնակի տեղ են գրավում ձեռագիր մատյանների կազմերը։ Դրանք հաճախ կաշեպատ են՝ ճնշման միջոցով երևակված զարդապատկերներով։ Սակայն, առավել արժեքավոր են արծաթե՝ հաճախ ոսկեջրած կազմերը, որոնց վրա դրվագված են լինում Քրիստոսի խաչելության, ծննդի, Աստվածածնի ու այլ սրբերի պատկերներ։ Դրանցից հիշարժան են 1334 թ. կազմը, որը պատում է Սարգիս Պիծակի գրած ու պատկերազարդած ձեռագիրը (պահվում է Երուսաղեմում)։ Կատարողական ու գեղարվեստական բարձր արժանիքներով օժտված այս կազմն իր տեսակի մեջ մի իսկական կատարելություն է, որի համար այն անվանել են «ծովեն ելած»։

Հիշարժան են նաև 1347 (ոսկերիչ Գրիգորի) և 1493 թվականների կազմերը։

Թեպետ հազվագյուտ են փայտի փորագրության նմուշները, սակայն Սևանի Առաքելոց եկեղեցու համար 1486 թ. պատրաստված դուռը (Հայաստանի պատմության թանգարան) իրավամբ արվեստի այս ճյուղի մի գլուխգործոց է։ Դռան ամբողջ հարթության վրա փորագրված է հոգեգալուստի տեսարանը։ Հետաքրքիր են ներքևի շարքի հոգևորականների պատկերները, որոնք, հավանաբար, պատվիրատուներն են։

XV դարում հասարակական-քաղաքական անբարենպաստ իրադրությունների հետևանքով Հայաստանի շինարարական հարուստ արվեստը, փաստորեն, կանգ առավ։ Դրա հետ մեկտեղ կանգ չ առնում խաչքարերի զարգացման այն բուռն վերելքը, որը դիտելի է XII—XIV դարերի ընթացքում։ XVI—XVII դարերում նորից վերածնվում է խաչքարեր կանգնեցնելու սովորույթը։ Բազմաթիվ են այդ շրջանին վերաբերող խաչքարերը։ Դրանք գերազանցապես տապանաքարեր են և կանգնեցվել են գերեզմանոցներում։ Բանն այն է, որ, վերջնականապես կորցնելով պետական ու քաղաքական ինքնուրույնությունը, զրկվելով համընդհանուր ազգային ժողովրդական նշանակություն ունեցող որևէ նախաձեռնությունից, հայ ժողովուրդն այդ ժամանակ ստիպված էր նեղացնել հասարակական պաշտոնը և կանգնեցնել դրանք միայն գերեզմանների վրա։ Երևույթը ինքնին խորհրդանշում է վաղեմի քաղաքակրթության ողբերգական անկումը։ Պատմական նման դրդապատճառների հետևանքով խաչքարերի վրա եղած պատկերաքանդակները, կորցնելով համընդհանուր բարձր գաղափարական բովանդակությունը, ստանում են նեղ, կենցաղային բնույթ։ Հյուսվածքավոր զարդապատկերներն իրենց ոճավորման մեջ ավելի են պարզեցվում՝ կորցնելով նախկին նրբագեղ ու բարդ ձևերը։

Այդպիսի խաչքարերի կարելի է հանդիպել Հայաստանի համարյա բոլոր շրջաններում։ Նորադուզի (Կամոյի շրջան) կամ Հին Ջուղայի գերեզմանոցներում դրանց թիվը հազարից անցնում է։ Այդ խաչքարերը հիմնականում իրենց վրա ունեն պատմական արժեք ներկայացնող վիմագիր արձանագրություններ, որոնցից իմանում ենք ոչ միայն հուշարձան կանգնեցնելու նպատակը, ճիշտ ժամանակը, այլև քանդակագործ վարպետների անունները։ Այսպես, XVI դարում Հին Ջուղայում աշխատել են Հայրապետ և Գրիգոր քարգործ վարպետները, 1551—1606 թթ. Նորադուզում աշխատել է հռչակավոր Քերամ կազմողը և այլք։

Խաչքարերի զարգացման վերջին շրջանը պետք է համարել Հին Ջուղայի գերեզմանատան XVI դարի վերջին և XVII դարի սկզբներին վերաբերող կոթողները։ Սրբեմնի բարգավաճ այդ քաղաքի հարուստ ու ծաղկող կյանքի լուռ վկաներն են այդ խաչքարերը։ Դրանց զարդաքանդակները, կատարողական բարձր վարպետության հետ մեկտեղ, էապես տարբերվում են մյուսներից․ Դրանք կրում են արևելյան-իրանական արվեստի զգալի ազդեցությունը։ Հին Ջուղայի խաչքարերը, առանձնահատուկ տեղ գրավելով խաչքարերի զարգացման մեջ, եզրափակում են հայ մշակույթի այդ միանգամայն ինքնատիպ ձևի պատմական ընթացքը։



Վերը նշված XIV—XV դարերի Տաթևի մանրանկարչության սովորույթները, փաստորեն, հիմք հանդիսացան XVI—XVII դարերի մանրանկարչության մի որոշակի հոսանքի համար։ Այս տեսակետից ուշագրավ են 1559 թ. Վայոց ձորում գրված ձեռագրերի մանրանկարները, որտեղ Գրիգոր Տաթևացու կողմից առաջ քաշված սկզբունքներն իրենց հետագա զարգացման մեջ զարդանկարային ոճավորման են ենթարկում նաև մարդկային մարմինները՝ ընդգծված ձևախեղման միջոցով հասնում ծայրահեղ արտահայտչականության (էքսպրեսիվության)։ Ուշագրավ են 1601 թ. ծաղկազարդված ձեռագրի մանրանկարները, որտեղ վերացական մտածողությունը ամբողջովին հանգեցրել է խորհրդանշական (սիմվոլիկ) ձևերի։ Ծայրահեղ ոճավորումն ու արտահայտչականությունը բնորոշ են դառնում XVII դարին ընդհանրապես։ Այդպես են նաև XVII դարի 30-ական թվականներին Կարինում (Էրզրում) Առաքելի ձեռքով ընդօրինակված ձեռագրերի մանրանկարները։ Ընդհանուր առմամբ այդ ձեռագրերի արվեստը դեպի մարդն ու իրականությունն ունեցած ինքնատիպ սկզբունքների դրսևորման բնագավառում մի բարձրակետ էր, որտեղ բովանդակության նկատմամբ կրոնա-ճգնավորական հակումները հանգեցնում են իրական ձևերից հեռանալուն։ Այն դրսևորվում է բեկվող ու անհանգիստ, արտակարգ դինամիկ գծային ոճավորման միջոցով, որտեղ ամեն ինչ, փաստորեն, վեր է ածվում զարդանկարային ձևերի, որոնք համակցվելով վառ գունային համադրություններին, ստեղծում են արտակարգ լարվածություն։

XVII դարում զարգանում է մանրանկարչության նաև մի այլ ուղղություն որն առավելապես կապվում է որոշ վայրերում քաղաքային կյանքի՝ արհեստների ու առևտրի բնագավառում տեղի ունեցող տեղաշարժերի հետ։ Պատահական չէ, ուրեմն, որ այս շրջանի ձեռագրերը գրվել և պատկերազարդվել են առավելապես այնպիսի քաղաքներում, ինչպիսիք էին Ջուղան, Կարինը, Վանը

և այլն։ Այդ պատճառով էլ, անկախ ձեռագրերի կրոնական բովանդակությունից, դրանց մանրանկարները արտահայտում են քաղաքի առևտրա-արհեստավորական խավերի մտածողությունը։ Ուշագրավ է այն, որ այժմ փոխվում է նաև պատվիրատուի սոցիալական պատկանելիությունը։ Նախկին բարձրաստիճան իշխանների ու հոգևորականների փոխարեն ձեռագրեր էին



Ջուղայի գերեզմանատան խաչքարերից (XVI—XVII դդ.)

պատվիրում մեծահարուստ վաճառականները։ Դրանցից էր, օրինակ, խոջա Ավետիքը, որի համար է պատրաստվել Հակոբ Ջուղայեցու 1610 թ. ծաղկազարդած ձեռագիր ավետարանը։ Նոր պատվիրատուի հանդես գալը, բնականաբար, պետք է անդրադառնար նաև մանրանկարչության ընդհանուր բնույթի վրա։

Այս նոր հոսանքի ամենախոշոր ներկայացուցիչը հանդիսացավ Հակոբ Ջուղայեցին, որը ծագումով Հին Ջուղայից էր, սակայն աշխատել էր նաև Վանում։ Նրա նկարազարդած ձեռագրերից մեզ հայտնի հնագույնը 1585 թ. է, որը վաղ շրջանի գործերից է և հավանաբար գրվել ու ծաղկազարդվել է Վա-

նում (որոշակի հայտնի է, որ 1592 թ. Ջուղայեցին դեռ աշխատում էր Վանում)։ 1585 թ. ձեռագրի մանրանկարներում Հակոբ Ջուղայեցին հանդես է գալիս արդեն որպես ձևակերպված նկարիչ, որի հատկանշական գծերն են վարպետ հորինվածքը, գույների հնչեղությունն ու զարդանկարների հարստությունը։ Պատկերվող դեմքերի բնական ձևերի նպատակային աղճատման (դեֆորմացիա) միջոցով Ջուղայեցին կարողանում է ներկայացնել հերոսների ներքին հոգեկան ապրումները, հաղորդելով նրանց ընդգծված արտահայտություն։ Այս տեսակետից նշանավոր է «Աստվածածնի ավետումը» պատկերող մանրանկարը, որտեղ ձևախեղումը միահյուսվելով վառ գունաշարի հետ՝ ամբողջականացնում են նկարչի մտահղացումը։

Հետագայում Հակոբ Ջուղայեցուն հանդիպում ենք արդեն Պարսկաստանի Սպահան քաղաքում, ուր տեղափոխվել էր, հավանաբար, Շահ-Աբբասի կազմակերպած բռնագաղթի հետևանքով։

Հակոբ Ջուղայեցու լավագույն աշխատանքը 1610 թ. նկարազարդած ավետարանի մանրանկարներն են (Մատենադարան, ձեռագիր № 7639)։ Քաղաքային ու որոշ առումով նաև աշխարհիկ մտածողության արգասիք հանդիսացող այս մանրանկարները առանձնանում են իրենց պատկերագրական ազատ ձևերով։ Դա արտահայտվում է ոչ միայն արտաքին ձևական ու կատարողական հնարանքներով, ինչպիսիք են, ասենք, հարուստ ու վառ գունաշարն ու մարդկային մարմնի համամասնությունների ընդգծված ոճավորումը կամ կանոնացված պատկերագրական ուրվագծերից ազատ հորինվածքները, այլև թեմաների ներքին դրամատիկական լարվածության դրսևորմամբ և աղճատված ձևերի մեջ նույնիսկ խիստ մարդկային կերպարներով։ Այստեղ է տեսնում, որ Հակոբ Ջուղայեցու արվեստը հանդես է գալիս իր կատարելությամբ։ Հավանաբար ինքը՝ վարպետը, բարձր է գնահատել իր այս ստեղծագործությունը, այն անվանելով «պատվագոյն քան զլուսափայլ մարգարիտ, գերագոյն քան զակունս պատուականս»։

Իրավամբ այս ձեռագրերի մանրանկարներն իրենց նրբերանգ ու պայծառ գույներով, հորինվածքի համաչափ ներդաշնակությամբ, նուրբ ոճավորմամբ ու արտահայտչականությամբ հանդիսանում են XVII դարի հայ մանրանկարչության լավագույն նմուշները։

Ուշագրավ է և այն հանգամանքը, որ այս շրջանում պատկերազարդվում են նաև աշխարհիկ բովանդակության ձեռագրեր, ինչպիսին է, օրինակ, «Ալեքսանդր Մակեդոնացու պատմությունը», պատմագրական մի շարք երկեր և այլն։

Հակոբ Ջուղայեցին, փաստորեն, հանդիսացավ հայ մանրանկարչության պատմության վերջին ամենախոշոր ներկայացուցիչը։ Գրքի տպագրության զարգացման հետ մեկտեղ, բնականաբար, թուլանում է ձեռագիր մատյանների նկատմամբ եղած հետաքրքրությունը։ Դա ինքնին նպաստում է մանրանկարչական արվեստի անկմանը։ Չնայած դրան, գրքի գեղարվեստական ձևավորման արվեստը որոշ կենտրոններում շարունակում է իր գոյությունը մինչև XVIII դարի սկիզբը։ Այս շրջանում նկարազարդված ձեռագրերն այլևս չունեն նախորդ շրջանների ինքնատիպությունը և հաճախ ավելի հին ձեռագրերի պատճեններն են։

Հայ մանրանկարչության զարգացման կարևոր մի հատվածն է գաղթօջախներում զարգացած գրքի պատկերազարդման արվեստը։





Հակոբ Ջուղայեցու մանրանկարներ

Կիլիկյան հայկական պետության անկումից հետո սկսված զանգվածային գաղթը նպաստեց նաև Կիլիկիայում մշակված սովորույթների տարածմանը ինչպես բուն Հայաստանում, այնպես էլ հայկական գաղթավայրերում։ Երկրից արտագաղթողները իրենց հետ տանում էին նաև նկարազարդված ձեռագրեր, իսկ մանրանկարիչ վարպետները, զրկվելով հիմնական պատվիրատուներից, այլ վայրերում էին (Ղրիմ, Լեհաստան, Կոստանդնուպոլիս և այլն) փնտրում կյանքի և աշխատանքի բարենպաստ պայմաններ։ Կիլիկյան Հայաստանի հարաբերությունները արևմտյան երկրների հետ նպաստում էին հայերի հաստատմանը նաև Իտալիայի վաճառաշահ քաղաքներում, որտեղ կառուցվում էին «հայոց տներ» (հյուրանոց ու հավաքատեղի)։

Պահպանվել են մի շարք ձեռագրեր, որոնք գրվել ու պատկերազարդվել են Հռոմում, Պերուջայում և իտալական այլ քաղաքներում։ Դրանցից հիշարժան է 1331 թ. Պերուջայում Երեմիա գրչի կողմից գրված ձեռագիրը, որը զարդարված է գլխազարդերով, գլխատառերով ու լուսանցազարդերով։

Շատ ավելի ամբողջական են Ղրիմում պատկերազարդված ձեռագրերը։ Մեծ քանակությամբ կիլիկյան ձեռագրեր են հավաքվում Ղրիմի հայկական եկեղեցիներում։ Այս հանգամանքը, անշուշտ, չէր կարող հետք չթողնել Ղրիմում գրված և պատկերազարդված ձեռագրերի վրա։ Այդ է պատճառը, որ Ղրիմի մանրանկարչությունը, դրսևորելով մի ամբողջական դպրոցին բնորոշ առանձնահատկություններ, պահպանել է բուն Հայաստանի ազգային ավանդները, շատ բանով առնչվել նաև Կիլիկյան Հայաստանի մանրանկարչության հետ։

Գրքի գեղարվեստական ձևավորման արվեստը ղաղթօջախներում հարատևեց մինչև XVII դարը։ Այսպես, 1619 թ. Լվովում մանրանկարիչ Ղազար Բաբերդցին պատկերազարդում է մի Աստվածաշունչ, մի այլ ձեռագիր պատկերազարդվել է 1649 թ. Թեոդոսիայում, իսկ 1654—1666 թթ. ձեռագիր է պատկերազարդված Կ. Պոլսում։ Այս, ինչպես և նույն շրջանի մյուս ձեռագրերի մանրանկարներն իրենց ոճով ու կատարողական արվեստով արմատապես տարբերվում են մինչև այդ եղած մանրանկարչության սկզբունքներից։ Չնայած ձեռագրերը հարուստ են մանրանկարներով, սակայն դրանք գերազանցապես լինելով օտարամուտ սկզբունքների ազդեցության տակ, այլևս չեն արտահայտում ազգային այն առանձնահատկությունները, որոնց շնորհիվ հայկական մանրանկարչությունը մտել է համընդհանուր արվեստի պատմության մեջ։

Քննարկվող ժամանակաշրջանում զարգացում են ապրել նաև կիրառական արվեստի ճյուղերը։

Գորգագործությունը դեռ հնուց լայն զարգացում էր ստացել Հայաստանում։ Այդ մասին են վկայում ոչ միայն հայ, այլև արաբ ու եվրոպացի ճանապարհորդները։ Թեպետ XV—XVI դարերից հայկական գորգեր չեն պահպանվել, սակայն հայտնի է, որ դրանք մեծ հռչակ են վայելել և արտահանվել են զանազան երկրներ։ Ավելին, որոշ ուսումնասիրողների կարծիքով XV—XVI դարերի իտալական նկարիչների կտավներում պատկերված մի շարք գորգեր հայկական ծագում ունեն։ Այդ նույն ժամանակաշրջանին են վերագրվում Արևմուտքի թանգարաններում ու մասնավոր հավաքածուներում պահպանվող այսպես կոչված «վիշապագորգերը» (գորգերը այդպես են կոչվում նրանց վրա եղած ոճավորված վիշապների պատկերների շնորհիվ)։

Տարածված է եղել նաև ձեռագործ-ասեղնագործության արվեստը։ Պահպանված սակավաթիվ նմուշները կապված են եկեղեցական ծիսակատարությունների հետ։ Դրանցից հիշարժան է 1448 թ. խաչկալը, որի երկու կողմերում կան գահին նստած Քրիստոսի, Գրիգոր Լուսավորչի, Տրդատ թագավորի ու ս. Հռիփսիմեի ասեղնագործ պատկերները։ Ուշագրավ են նաև փիլոնի երկու օձիք, որոնցից մեկի վրա ասեղնագործված են Քրիստոսը, Աստվածամայրը, Հովհաննես Մկրտիչն ու տասներկու առաքյալները։ Ասեղնագործության բազմաթիվ հին ու կատարյալ նմուշներ կան վանական հաստատությունների պահարաններում, որոնք դեռևս չեն ուսումնասիրված ու գնահատված արվեստագետների կողմից։

Դաջման արվեստը նույնպես Հայաստանում հասել է բարձր մակարդակի։ Կենցաղային զանազան նպատակներով (հագուստի համար և այլն) պատրաստված այդ կտորների առանձին պատառիկներ հետագայում օգտագործվել են ձեռագիր մատյանների կազմերի ներսի մասը ծածկելու համար։ Այդ միջոցով մինչև մեր օրերը պահպանվել են հնագույն նմուշներ։ Դաջված այդ կտորները հետաքրքրություն են ներկայացնում իրենց զարդամոտիվներով, որտեղ հիմնականը կարմիր հիմնապաստառի վրա, նուրբ գունային համադրություններով կատարված ծաղկային պարդանախշն է, որը հատկապես XV—XVI դարերում առավել կատարյալ բնույթ է կրում։

Պատմա-քաղաքական իրադարձությունների հետևանքով ստեղծված հայկական ղաղթօջախները կարճ ժամանակում, առավել կամ պակաս չափով, դառնում են հայ մշակույթի կենտրոններ ու ապրում իրենց գեղարվեստական կյանքով։ Դրանցից XVI դարի վերջին առավել նշանակալից է դառնում Լվովը։

ուր ստեղծված ինքնատիպ նկարչական դպրոցը գոյատևում է մինչև XVIII դարը։ Լվովի գեղանկարչության հնագույն օրինակը, հավանաբար, պետք է համարել հայկական եկեղեցու որմնանկարների պահպանված բեկորները։ XVII դարի սկզբներին Լվովում առանձնապես հայտնի է եղել հայազգի նկարիչներ Բոգուշների ընտանիքը (Պավելը և նրա որդի Սիմոնը)։ Սրանք հուշակվել են առավելապես որպես դիմանկարիչներ ու կատարել են ամենաբարձրաստիճան անձնավորությունների՝ թագավորական գերդաստանի անդամների պատվերները։

Պարսկաստան գաղթած հայ վաճառականության նկատմամբ Շահ-Աբբասի վարած հովանավորող քաղաքականությունը և 1639 թ. Թուրքիայի ու Պարսկաստանի միջև կնքված հաշտությունը, նպաստեցին հայ մշակույթի զարգացմանը վաճառաշահ Նոր Ջուղայում, որը դարձավ հայ մշակույթի մի նոր օջախ։

Հայ վաճառականների շնորհիվ Նոր Ջուղայի ու Սպահանի շուկաները ողողված էին Իտալիայից ու եվրոպական այլ երկրներից բերված պատկերներով ու կիրառական արվեստին վերաբերող առարկաներով։ Բնականաբար, դրանք ներգործում էին ոչ միայն հասարակական խավերի ճաշակի վրա, այլև տեղական վարպետներին կախման մեջ էին գնում օտարամուտ գեղագիտական սկզբունքներից՝ դրանով իսկ կանխորոշելով հատկապես գեղանկարչության հետագա ընթացքը։ Չի բացառվում նաև այն, որ Արևմուտքից հրավիրված որոշ նկարիչներ կատարում էին մեծահարուստ խոջաների պատվերները, նրանց տներն ու եկեղեցիները զարդարելով պատկերներով ու որմնանկարներով։

Առանձնապես մեծ տարածում են գտնում իտալական ու հոլանդական փորագրանկարները, որոնք հաճախ սկզբնաղբյուր էին հանդիսանում տեղական նկարիչների համար։ Այդ առումով ոչ միայն իրանահայ գաղթօջախների, այլև ընդհանրապես XVII դարի հայկական գրքային նկարչության համար առանձնակի նշանակություն են ունեցել 1639 թ. Ամստերդամում հրատարակված այսպես կոչված «Պիսկատորի Աստվածաշնչի» տարբեր նկարիչների ձեռքով կատարված գծանկարչական պատկերազարդումները։ Դրանք որպես նախատիպեր օգտագործվել են հայկական տարբեր գաղթօջախներում (Սպահան, Կոստանդնուպոլիս, Ղրիմ և այլն) գրված ձեռագրերի պատկերազարդման համար։ Հիշարժան է նաև, որ առաջին հայ գրքի տպագրության հետ մեկտեղ ծավալվում է նաև փայտի վրա փորագրելու արվեստը, որը գալիս է փոխարինելու մանրանկարչությանը։ Վենետիկում, Ամստերդամում և այլ վայրերում հիմնադրված հայկական տպարաններում հրատարակվող որոշ գրքեր զարդարվում էին գծանկարչական պատկերներով, որոնց նախատիպերը դարձյալ եվրոպական վարպետների գործերն էին։ Այսպես, օրինակ, 1666 թ. Ամստերդամում Ոսկան Երևանցու հրատարակած հայերեն առաջին տպագիր Աստվածաշունչը նիդերլանդացի Քրիստոֆ Վան Զիհեմի նկարազարդումներով էր։

Այսպիսով, ի վիճակի չլինելով ամբողջովին վերածնել, զարգացնել ազգային մշակույթի ու արվեստի վաղեմի բարձր ավանդույթները, XVII—XVIII դարերի հայ նկարիչները ակամա ենթարկվում էին Արևելքի և Արևմուտքի ժողովուրդների մշակույթի ազդեցությանը։

Այդ բոլորի հետ մեկտեղ, Նոր Ջուղայում աշխատում էին տեղական նկարիչներ, որոնք կատարելով հայ խոջաների պատվերները, աշխարհիկ սյուժե-

ներով նկարազարդում էին նրանց առանձնատները (խոջա Պետրոսի բնակարանը, Ա. Տեր-Բարսեղյանի բնակարանը և այլն), կատարում պատվիրատուների դիմանկարներ, ծածկում նորակառույց վանքերի պատերը որմնանկարներով և այլն[1]։ Ըստ էության լինելով քաղաքային մշակույթի արգասիք և առևտրական-խոջայական ու արհեստավորական խավերի մտածողության արտահայտություն, Նոր Ջուղայի գեղանկարչությունը կրում է առավելապես աշխարհիկ բնույթ. նույնիսկ այն դեպքում, երբ վերարտադրվում են կրոնական թեմաներ։ Զարգանում է դիմանկարչությունը, վերջապես, հանդես են գալիս առաջին մասնագետ նկարիչները, որոնք արդեն աշխատում են հաստոցային գեղանկարչության սկզբունքներով։ Ահա այս նկարիչների գործունեությունն էլ կանխորոշում է հայ արվեստի զարգացման նոր շրջանը։

XVII դարի երկրորդ կեսին Նոր Ջուղայում մեծ համբավ է վայելել Հովհաննես վարդապետ Մրքուզը, որը նաև փիլիսոփա, գրող ու աստվածաբան էր ու հմուտ տիրապետում էր նաև մի քանի արհեստների։ Երբ 1664 թ. խոջա Ավետիքի ջանքերով ավարտվում է Ամենափրկիչ վանքի կառուցումը, Մրքուզին է հանձնարարվում եկեղեցու ներսի պատկերազարդումը, որն ավարտվում է 1666 թ. հետո։

Ողջ եկեղեցին պատված է որմնանկարներով։ Գմբեթից մինչև պատերի կեսը զարդարող որմնանկարները կատարված են հավանաբար XVIII դարում, միայն ներքևի հարկաբաժնի պատկերներն են պատկանում Մրքուզի վրձնին (չի բացառվում, որ XVIII դարի որմնանկարների տակ դեռ պահպանվում են Մրքուզի ստեղծագործությունները)։ Դրանք ներկայացնում են Գրիգոր Լուսավորչի, Քրիստոսի և տարբեր սրբերի կյանքը պատկերող թեմաներ։ Պարունակելով ազգային հնավանդ սովորույթների շատ տարրեր, Մրքուզի այս աշխատանքները կատարված են Արևմուտքի գեղանկարչության մեծ ազդեցությամբ։ Նկարչի ստեղծած բազմակերպար հորինվածքները, ըստ էության, կրկնում են հաստոցային գեղանկարչության սկզբունքները։ Այդ պատկերներից մեկի ձախ անկյունում ծնկաչոք աղոթողի դիրքով նկարված վանականը, հավանաբար, հենց Հովհաննես Մրքուզն է։

Ընդհանրապես Ամենափրկիչ եկեղեցու որմնանկարները կատարված են Արևմուտքի մեծ ազդեցությամբ ու բազմաթիվ ընդհանուր գծեր ունեն հայերին առաջին տպագիր Աստվածաշնչի փորագրանկարների հետ (որոնք, ինչպես նշեցինք, նիդերլանդացի վարպետի գործեր են)։

XVII դարի 40—60-ական թվականներին Նոր Ջուղայում գործում էր Մինաս նկարիչը, որը սովորել է Հալեպում, «ֆրանկ» վարպետի մոտ։ Վերադառնալով հայրենիք, Մինասը պատկերազարդում է տեղի բազմահարուստ խոջաների տները (Խոջա Սաֆրազի տունը, որը չի պահպանվել), նկարում դիմանկարներ (Նախարար Չրաղ խանի, հայր և որդի Վելիջանյանների և այլն)։ Մինասը արժանանում է շահ Սեֆիի ուշադրությանը և դառնում պալատական նկարիչ։ Դատելով ժամանակակից պատմագիր Առաքել Դավրիժեցու վկայությունից, Մինասն առավելապես դիմանկարիչ էր։ Մեծահարուստ խոջաներ հայր և որդի Հակոբջան և Ոսկան Վելիջանյանների պահպանված դիմանկարները նրա արվեստի և հատկապես տեղական գեղանկարչության զար-

---

[1] Տե՛ս Մ. Ղազարյան, Նոր Ջուղայի XVII դարի հայ նկարչությունը («Պատմա-բանասիրական հանդես», 1968, № 1, էջ 194—202)։

գացման ինքնատիպ ուղիների վկայականներն են։ Նրանք ստեղծագործող հայ նկարիչների (Բոգուշների) աշխատանքների հետ, որոնք մեզ հասած առաջին հայկական հաստոցային դիմանկարներն են ու նախապատրաստում են հետագա շրջանը։

Ժամանակակիցներն արդեն նշում են Մինասի դիմանկարների ռեալիստական բնույթը և բնորդի կերպարային առանձնահատկություններին հարազատ մնալու ձգտումը։ Առաքել Դավրիժեցին այս կապակցությամբ Մինասի մասին գրում է. «Նկարեաց զասացելոց զառնն զպատկերն, որ այնքան յար և նման էր համեմատությամբ, որ ընդ թագաւորին ամենեքեան ի հանդիսին եղեալքն. մեծաւ հիացմամբ զարմացեալք եղեն վասն առաւել նմանութեանն» և այլ. «Քանզի որում ազգի կերպարն, որ նկարէր, ամենևին յար և նման նկարէր»։ Այս վկայությունները ինքնին բնութագրում են Մինասի ստեղծագործությունը՝ ներկայացնելով նրան որպես ռեալիստ նկարիչ։

Նոր Ջուղայի վաճառականները Աստրախանի վրայով առևտրական լայն կապերի մեջ էին Ռուսաստանի հետ և վայելում էին ռուս թագավորների՝ մասնավորապես Ալեքսեյ Միխայլովիչի հատուկ հովանավորությունը։ Ի նշան երախտագիտության, Նոր Ջուղայի վաճառականները թագավորին են հանձնում կիրառական արվեստի հոյակապ նմուշ «Ալմաստե գահը», ինչպես և սղնձի վրա փորագրված «խորհրդավոր ընթրիքը» թեմայով մի պատկեր։ Թագավորի խնդրանքով հայերը Մոսկվա են ուղարկում այդ պատկերի հեղինակ, երիտասարդ, բայց արդեն Ջուղայում համբավ վայելող Բոգդան (Աստվածատուր) Սալթանովին, որը 1666 թ. հաստատվելով Մոսկվայում, աշխատանքի է անցնում Զինապալատում, իր կյանքն ընդմիշտ կապելով ռուսական արվեստի հետ։ Սալթանովի գործունեությունը ծավալվեց Ալեքսեյ Միխայլովիչի, Ֆեոդոր Ալեքսեևիչի և հատկապես Պետրոս I-ի օրոք։ Նա կատարել է թագավորների դիմանկարները, սրբապատկերներ, նկարազարդել է պալատներ ու եկեղեցիներ (Կրեմլի խաչելության եկեղեցին), ձևավորել է զանազան հանդեսներ, «Պետրոս I-ի Ազովը գրավելու առթիվ հաղթական կամար է կանգնեցրել» և այլն։

Բոգդան Սալթանովը Ռուսաստան եկավ այն ժամանակ, երբ իրանահայ նկարիչների ստեղծագործություններում որոշակիորեն դրսևորվել էին արվեստի աշխարհականացման սկզբունքները, Արևելքի ու Արևմուտքի արվեստներից փոխ առած ձևերի խաչաձևման երևույթը՝ և մեծ տարածում գտել դիմանկարչությունն ու հաստոցային գեղանկարչությունը։ Բոգդան Սալթանովի բեղմնավոր գործունեությունը Ռուսաստանում որոշակի նշանակություն ունեցավ XVII դարի վերջերի ռուսական արվեստի զարգացման համար։

XVII դարի վերջերին և XVIII դարի առաջին կեսին Նոր Ջուղայում աշխատել են նաև ուրիշ նկարիչներ, որոնց անունները թեպետ չեն հասել մեզ, բայց պահպանված գործերը մի անգամ ևս վկայություն են տալիս իրանահայ գաղթօջախի հայ արվեստագետների ձեռք բերած նվաճումների մասին։

Հիմնականը նրանց ստեղծագործության մեջ աշխարհիկ տրամադրությունների արտահայտությունն է, որը ներդաշնակ է ժամանակի քաղաքային կյանքին՝ առհասարակ և առևտրական ու խոջայական շրջանների տրամադրություններին՝ մասնավորապես։

Աշխարհիկ նկարչության լավագույն նմուշներից են խոջա Պետրոսի տանը պահպանված որմնանկարները, որոնք ներկայացնում են եվրոպական հագուստներով բարձրաստիճան պալատական անձանց և այլ տեսարաններ, Ա.

Տեր-Բարսեղյանի տան որմնանկարը, ուր պատկերված է Շահ-Աբբաս II-ը խրախճանքի պահին, ինչպես նաև Մ. Լազվորյանի տան՝ պարուհիներ, երաժիշտներ ու շահին պատկերող նկարները։

Նոր Ջուղայի գեղանկարչության համար, ժամանակի տրամադրություններն արտահայտող գաղափարական բովանդակությունից զատ, հատկանշական են նաև գեղարվեստական այն երկու հիմնական հոսանքները, որոնք խաչաձևվում են XVII—XVIII դարերում աշխատող վարպետների գործերում։ Այսպես, եթե Ամենափրկիչ վանքի և խոջա Պետրոսի տան որմնանկարներում ու մի շարք այլ անհայտ նկարիչների կերտած դիմանկարներում ու սրբապատկերներում մեծ տեղ է ցուցաբերվում Արևմուտքի նկատմամբ (Իտալիա, Հոլանդիա), ապա XVIII դարի սկզբներից՝ ուժեղանում է արևելյան-իրանական արվեստի ազդեցությունը։

Հայկական արվեստի զարգացման հետագա ընթացքը, մինչև XIX դարի կեսը, փաստորեն, կապվում է Հովնաթանյանների տաղանդավոր գերդաստանի հետ։ Հովնաթանյաններն իրենց գործունեությունը ծավալեցին Երևանում, Էջմիածնում ու Թիֆլիսում, զարգացման մի նոր աստիճանի բարձրացնելով նոր շրջանի գեղանկարչության տարբեր տեսակները։

Հովնաթանյան նկարիչների մի քանի սերունդների նախահայրն էր հանրահայտ բանաստեղծ, տաղասաց, նկարիչ ու իր ժամանակի ամենազարգացած մարդկանցից մեկը՝ Հովնաթանը՝ Նաղաշ (նկարիչ) մականվամբ։ Գիտենք արդեն, որ նա ծնվել է 1661 թ. Գողթան գավառի Շոռոթ գյուղում։ Սովորել է Ագուլիսի վանքում, որտեղ և հետագայում դասավանդել ու զբաղվել է գրչության արվեստով։ Հավանաբար այդ շրջանում էլ նա որմնանկարներով պատկերազարդել է Շոռոթի ու Ագուլիսի եկեղեցիները։ Այնուհետև նա աշխատել է Երևանում, պատկերազարդելով 1679 թ. երկրաշարժից հետո վերանորոգված եկեղեցիները։ Հովնաթանի վաղ շրջանի գործերից ոչինչ չի պահպանվել (պահպանվել են միայն Երևանի Պողոս-Պետրոս եկեղեցու որմնանկարների առանձին բեկորներ) և դժվար է որոշակի պատկերացում կազմել դրանց մասին։

Հավանաբար 1703—1712 թթ. միջև, երբ նա արդեն համբավավոր նկարիչ էր և ուներ իր «քարխանան» (արհեստանոցը), վրաց Վախթանգ VI թագավորի կողմից հրավիրվում է Թիֆլիս։ Նա, հավանաբար, ակտիվ մասնակցություն է ունեցել Վրաստանի մայրաքաղաքի վերակառուցմանը, աշխատակցել է պալատի պատկերազարդմանը (չի պահպանված), կատարել դիմանկարներ և այլն։

Նաղաշ Հովնաթանի հասուն շրջանի ստեղծագործություններից բեկորներ են պահպանվել Էջմիածնի մայր տաճարում։ Դատելով տաճարի գմբեթի, կամարների ու սյուների վրա վերանորոգման ժամանակ բացված հատվածներից, Հովնաթանի զարդապատկերները ներկայացրել են Արևելքին բնորոշ ծաղկային մոտիվներով զուգորդված հոյակապ հորինվածքներ։ Առավել հետաքրքիր են թեմատիկ որմնանկարներից պահպանված բեկորները։ Դրանցից մեկը պատկերում է ծնկաչոք Տրդատ թագավորին, Աշխենին ու Խոսրովիդուխտին (Տրդատի կնոջը և քրոջը), մյուսը Հայկ նահապետին և աղոթող զինվորին։ Սրանք բոլորն էլ սյուժետային մեծ հորինվածքների հատվածներ են, որոնք երբեմն ծածկել են տաճարի պատերը։ Հավանաբար Հովնաթանի վրձնին են պատկանում նաև Էջմիածնում պահպանված սրբապատկերներից մի քանի-

սը՝ բեմի առաջամասի մարմարի վրայի Աստվածամայրը տասներկու առաքյալների հետ և այլն։

Նաղաշ Հովնաթանի աշխատանքներից պահպանված այս սակավաթիվ նմուշները վկայում են նրա ստեղծագործության ռեալիստական բնույթը, որը դրսևորվել է նաև աշխարհիկ դիմանկարչության բնագավառում։ Դատելով տաղերում արտահայտված մտքերից, պարզ է դառնում նաև, որ Նաղաշ Հովնաթանի համար հիմնականը բնորդին հարազատ մնալու և ռեալիստորեն վերարտադրելու սկզբունքն է։

Մյուս կողմից Նաղաշ Հովնաթանի ու նրա հաջորդների ստեղծագործության մեջ ամբողջականանում է Արևելքից եկող այն հոսանքը, որը դրսևորվել էր Հին Ջուղայի խաչքարերի զարդաքանդակներում և Սպահանի ու Նոր Ջուղայի հայ վարպետների գեղանկարչական գործերում։

Այս մեծ վարպետի հետ աշխատել և նրա գործը շարունակել են որդիները՝ Հակոբ և Հարություն Հովնաթանյանները։ Նրանք անմիջական մասնակցություն են ունեցել Էջմիածնի տաճարի պատկերազարդմանը, իսկ իրենց հոր մահվանից հետո, շարունակել են աշխատել Էջմիածնում։ Նրանց որմնանկարներով է զարդարված Ապրակունիսի ս. Կարապետի վանքը։ Նրանց են վերագրվում պահպանված մի շարք սրբապատկերներ, որոնցից հիշարժան է եվրոպական փորագրանկարների ազդեցությամբ կատարված «Յոթը վերքանի Աստվածամայրը» սրբապատկերը։

Հովնաթանյան գերդաստանի հաջորդ ներկայացուցիչը, որի գործունեությունը հիմնականում ծավալվել է Էջմիածնում ու Թիֆլիսում, Հակոբի որդի Հովնաթան Հովնաթանյանն է։ Հավանաբար նա նույնպես ծնվել է Շոռոթում, 1769 և 1778 թթ. աշխատել է Էջմիածնում, մինչև 1785 թ. եղել է վրաց Հերակլ II թագավորի պալատական նկարիչը։ Թիֆլիսում նա ունեցել է իր արվեստանոցը և աշխատել է օգնականների հետ։ Այդ շրջանում նա, հավանաբար, կատարել է մի շարք դիմանկարներ ու կոմպոզիցիոն աշխատանքներ։ 1789 թ., Երևանի խանի հրավերով, Հովնաթանն իր Հակոբ որդու հետ աշխատել է Երևանում։ Համաձայն պահպանված տեղեկությունների, 1801 թ. Հովնաթանը դեռ կենդանի էր։

1785 թ. կաթողիկոսի հրավերով նա աշխատում է Էջմիածնում և շարունակում տաճարի պատկերազարդումը, պատերը և գմբեթը պատելով զարդանախշերով՝ Հին և Նոր կտակարաններից քաղված նյութերի հիման վրա։ Արևմտյան փորագրանկարների ու գեղանկարչության ազդեցությամբ ստեղծում է մի շարք բազմակերպար պատկերներ («Խորհրդավոր ընթրիքը», «Մոգերի երկրպագությունը» և այլն), սրբապատկերներ և հայկական եկեղեցու հայրապետների ու միջնադարյան գործիչների դիմանկարների մի ամբողջ շարք (Հովհան Որոտնեցի, Հովհան Օձնեցի, Ներսես Շնորհալի, Դավիթ Անհաղթ, Գրիգոր Տաթևացի և ուրիշներ)։

Շարունակելով իր պապի ու հոր սկզբունքները, Հովնաթանը, ըստ էության, ժամանակակիցներին հիացրել է զարդանկարների արևելյան ճոխությամբ ու գունագեղությամբ։ Նախորդներից ժառանգելով Արևմուտքի ու Արևելքի արվեստների զուգորդման սկզբունքը, նա առաջ է գնում մասնավորապես մարդկային կերպարների պատկերման ռեալիստական ուղիով։ Դրա հետ մեկտեղ նրա արվեստում բազմակերպար պատկերների դերակատարներն ու առանձին սրբերի և միջնադարյան հայ գործիչների դիմապատկերները արտա-

հայտից են իրենց անհատականացված ազգային գծերով։ Հովնաթանի դիմանկարներն ու սրբապատկերները ինքնատիպ են իրենց վեհաշուք հանդիսավորությամբ։

Այսպիսով, Հովնաթանյան դերդաստանի գործունեությունը, ներընկալելով XVIII դարի հասարակական-քաղաքական նախադրյալներից սերվող հիմնական սկզբունքները, նախապատրաստեց հայկական արվեստի նոր ելագիծը։ Այն ընթացավ ռեալիզմի ուղիով՝ իր բարձրագույն արտահայտությունը գտնելով հայ մշակույթի գագաթներից մեկի՝ Հակոբ Հովնաթանյանի դիմանկարչության մեջ։

## ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ

Հայկական ճարտարապետության համար XIV դարի երկրորդ կեսից սկսվեց մի ծանր ժամանակաշրջան։ Քաղաքական և տնտեսական անբարենպաստ պայմանների հետևանքով շինարարական կյանքը երկրում փաստորեն կանգ առավ։ Բուն Հայաստանում XV դարի առաջին կեսում մեծ դժվարություններով կառուցվում են երեք-չորս եկեղեցի միայն, որոնք արդեն չունեին նախորդ դարերի ճարտարապետական հուշարձանների փայլն ու բարձր արվեստը։

XV դարում շինարվեստի անկման արտահայտություն է հայկական ճարտարապետության ողջ պատմության մեջ այն եզակի դեպքը, երբ Մեծոփա վանքի նոր եկեղեցին կառուցելու համար որպես գլխավոր ճարտարապետ հրավիրել են օտար՝ հույն վարպետի։

Այս ժամանակաշրջանում, որպես բացառություն, առանձնանում են միայն երկու տաղանդավոր հայ ճարտարապետներ՝ Նեքեմատը և Հիսան, որոնք, սակայն, հիմնականում ստեղծագործել են Հայաստանի սահմաններից դուրս։

Նեքեմատի անունը սերտորեն կապված է Հայաստանի միջնադարյան տաղերգու և նկարիչ Մկրտիչ Նաղաշի հետ։ XV դարի 30-ական թվականներին Նաղաշը, որպես հոգևոր առաջնորդ, ձեռնամուխ է լինում Արղնիի ս. Աստվածածնի վանքի շինարարությանը և Ամիդի (Դիարբեքիր) ս. Թեոդորոսի եկեղեցու հիմնովին վերակառուցմանը։

Այդ դժվարին ժամանակաշրջանի համար բավական համարձակ նախաձեռնությունը Նեքեմատը իրականացնում է փայլուն կերպով։ Տաղանդավոր արվեստագետի կառուցած Ամիդի եկեղեցին և մանավանդ նրա հոյակապ գմբեթը զարմանք ու հիացմունք է պատճառել ժամանակակիցներին։ Սակայն մահմեդական ամբոխը, չհանդուրժելով այն, որ եկեղեցին իր գեղեցկությամբ գերազանցում է քաղաքի մզկիթներին և գմբեթն ավելի բարձր է, քան մինարեները, քանդում են այս մեծարվեստ շենքը։ Միայն տարիներ անց՝ 1447 թ. հնարավորություն է ստեղծվում այն վերականգնել, որը և իրականացնում է ինքը՝ Նեքեմատը[1]։

XV դարի մյուս նշանավոր ճարտարապետը՝ Հիսան, ստեղծագործել է Հալեպում։ Նա 1499 թ. վերանորոգում է տեղի Քառասուն մանկանց եկեղեցին

[1] Տե՛ս Ս. Բարխուդարյան, Միջնադարյան հայ ճարտարապետներ և քարգործ վարպետներ, Երևան, 1963, էջ 107։

և կառուցում տարբեր բնույթի բազմաթիվ շենքեր։ Այս աշխատանքները Հիսային հռչակավոր ճարտարապետի համբավ են բերում քաղաքի թե հայ և թե այլազգի բնակչության մեջ[2]։

XV—XVI դարերում Հայաստանում այլևս ոչ մի մոնումենտալ շենք չի կառուցվում։ Նույնիսկ դժվար էր եղած հուշարձանների պահպանումը։ Անխնամ մնացած ճարտարապետական կոթողներն ավերվում էին թե թշնամու ասպատակություններից, թե բնական արհավիրքներից։

Բարձր զարգացման հասած հայկական քարակոփության արվեստը այս դարերում իր կիրառումը գտավ միայն ճարտարապետական փոքր ձևերում՝ խաչքարերում, օրորոցաձև տապանաքարերում, մատուռներում։ XV—XVI դարերի հայկական արվեստի մի բացօթյա թանգարան է Հին Ջուղայի գերեզմանատունը, որտեղ ինքնատիպ հորինվածքով հազարավոր խաչքարեր և խոյի քանդակներ են կանգնեցվել։

Ժողովրդական ստեղծագործության հիանալի նմուշներ են նաև օրորոցաձև տապանաքարերը, որոնք ունեն հետաքրքրական և արժեքավոր սյուժետային քանդակներ։

Հայ ճարտարապետներին ու շինարար վարպետներին այս ժամանակաշրջանում լայնորեն օգտագործում էր երկրում իշխող մահմեդական վերնախավը՝ պալատներ, բերդեր, ղըլակներ, դամբարաններ կառուցելու համար։

Հետաքրքրական է այն փաստը, որ հայ վարպետներն այդ կառուցվածքներում մուսուլմանական ճարտարապետական ավանդական ձևերը վերամշակում էին հայկական ճարտարապետության ոգով։ Դրա լավագույն վկայությունն են Խլաթի և Ջեջիմլուի (Սյունիք) շքեղ քարակերտ դամբարանները։

Հայ ճարտարապետները XV—XVI դարերում կարևոր դեր էին խաղում օսմանյան Թուրքիայի շինարարական կյանքում։ Հայազգի Սինանը (1489—1578) Պոլսում կառուցել է հարյուրավոր շենքեր, որոնցից երեք տասնյակը՝ պալատներ ու մզկիթներ, և, փաստորեն, դարձել Թուրքիայի ազգային ճարտարապետության հիմնադիրներից մեկը։ XVII դարից Պոլսում սկսվում է հայ ճարտարապետների հռչակավոր գերդաստանի՝ Պալյանների գործունեությունը։ Այս ընտանիքի ներկայացուցիչները մոտ երեք դար անընդհատ իրենց ձեռքում պահեցին արքունի ճարտարապետի տիտղոսը և զարդարեցին Թուրքիայի մայրաքաղաքը բազմաթիվ հոյակապ կառույցներով։

XIV դարի երկրորդ կեսից, երբ բուն Հայաստանում ընդհատվել էր շինարարական կյանքը, հայ ճարտարապետությունը զարգանում էր հայկական գաղթավայրերում՝ Ռուսաստանում, Ղրիմում, Լեհաստանում, Մոլդավայում և այլ երկրներում։

XIV—XVI դարերում Ղրիմի հայաշատ քաղաքներում և գյուղերում՝ Կաֆայում (Թեոդոսիա), Սուրխաթում (Հին Ղրիմ), Բախչի-Սարայում կառուցվել են բազմաթիվ պաշտամունքային և աշխարհիկ շենքեր։ Միայն Թեոդոսիայում գործել է 24 հայկական եկեղեցի։ Ղրիմի հայկական ճարտարապետության արժեքավոր հուշարձաններից են Թեոդոսիայի Զորավարքը և Հովհաննես Մկրտչի եկեղեցին, Հին Ղրիմի Սուրբ Խաչ վանքը, Բախչի-Սարայի վանքը (բոլորը XIV դար), Թեոդոսիայի Միքայել և Գաբրիել հրեշտակապետաց եկեղեցին (XV դար), որոնք իրենց մի շարք առանձնահատկություններով հանդերձ հիմ-

2 Տե՛ս նույն տեղում։

նականում կառուցված են ազգային ճարտարապետության ավանդներով։ XIV դարի երկրորդ կեսում գմբեթավոր բազիլիկայի հորինվածքով կառուցվում է Լվովի հայկական տաճարը, որն իր ճարտարապետությամբ հիշեցնում է Անիի հուշարձանները[3]։

Բոտոշանում, Յաշում, Սուչավայում, Գալացում և այլ քաղաքներում կառուցված հայկական եկեղեցիներն իրենց ոճային առանձնահատկություններով զգալի ազդեցություն ունեցան Մոլդավայի, ինչպես և ողջ Ռումինիայի ճարտարապետության հետագա զարգացման վրա։

XVII դարի կեսերից Հայաստանի համար սկսվեց համեմատաբար խաղաղ մի ժամանակաշրջան և ժողովուրդը ձեռնամուխ եղավ հայրենի երկրի ավերված գյուղերն ու քաղաքները, վանքերն ու եկեղեցիները, կամուրջներն ու քարավանատները վերականգնելու աշխատանքներին։

Խոշոր աշխատանքներ կատարվեցին նախ Էջմիածնում։ Մովսես և Փիլիպպոս կաթողիկոսների օրոք վերակառուցվեց զգալի վնասվածքներ ստացած Մայր տաճարը և վերանորոգվեցին Էջմիածնի մյուս նշանավոր տաճարները՝ Գայանեն (1652) և Հռիփսիմեն (1653)։

XVII դարի կեսերին վերանորոգվեցին նաև Սանահնի և Հաղպատի վանքերը։ Այս աշխատանքները կատարվեցին բարձր վարպետությամբ՝ առանց աղավաղելու նրանց սկզբնական ճարտարապետական կերպարը։

Վերստին հսկայական կալվածքներ ստանալով և խոշոր ֆեոդալական տնտեսություններ ստեղծելով Էջմիածնի, Տաթևի, Գեղարդի, Հառիճի վանքերը, Գնդեվանքը, Հովհաննավանքը և ուրիշ վանական հաստատություններ, ոչ միայն հնարավորություն ստացան վերականգնելու նախորդ դարերում ավերված շենքերը, այլև կառուցելու բազմաթիվ նորերը։ Վանքերը շրջապատվեցին ամուր պարիսպներով, որոնց ներսում կառուցվեցին բնակելի, արտադրական և տնտեսական շենքեր, հյուրատներ, սեղանատներ, դպրոցներ։

XVII դարում վերելք ապրեց հայկական որմնանկարչությունը։ Նոր կառուցվող կամ արդեն գոյություն ունեցող մի շարք վանքեր ու եկեղեցիներ զարդարվեցին որմնանկարներով (Էջմիածնի Մայր տաճար, Մուղնու ս. Գևորգ, Մեղրու, Ագուլիսի, Աստապատի, Շոռոթի, Նոր Ջուղայի եկեղեցիներ, Շատին վանք և այլն)։

XVII—XVIII դարերում ընդհանուր տարածում գտավ զանգակատների շինարարությունը. դրանք կառուցվում էին գոյություն ունեցող տաճարներին կից և հիմնականում երկհարկ կամ եռահարկ թեթև աշտարակներ էին, որոնք պսակվում էին ռոտոնդաներով։ 1653—1658 թթ. այդպիսի զանգակատուն կառուցվեց և Էջմիածնի Մայր տաճարի արևմտյան ճակատին կից։

Հին հուշարձաններին կցվում էին նաև եռակամար բաց սրահներ (Գայանե, 1683)։ Իսկ նորակառույց եկեղեցիներում (Մուղնի, Էջմիածնի Շողակաթ, Երևանի Զորավոր) այդպիսի սրահների հետ զուգակցվում էր զանգակատան ռոտոնդան։

XVII—XVIII դարերում գավիթներ ավելի շատ կառուցվեցին Վասպուրականում՝ Վարագավանքում (XVII դար), Աղթամարում (1763), Նարեկավանքում (1787)։ Այս գավիթներն ունեին միևնույն հորինվածքը՝ ուղղանկ-

---

[3] Տե՛ս *О. Х. Халпахчьян*, Армяно-русские культурные отношения и их отражение в архитектуре, Ереван, 1957, էջ 23։

*յուն, քառամույթ շինություն, կամարներով հավասար հատվածների բաժանված։*



Էջմիածնի զանգակատունը (XVII դ.)

*XVII դարում եկեղեցական նոր շենքեր կառուցելիս ոչ թե կրկնեցին X—XIV դարերի հուշարձանների հորինվածքները, այլ օգտագործեցին հայկական ճարտարապետության սկզբնավորման շրջանի՝ V—VII դարերում տարածված գմբեթավոր բազիլիկայի, թաղածածկ դահլիճի, եռանավ բազիլիկայի, գմբեթավոր սրահի տիպերը։ Առանձնապես լայն տարածում գտավ եռանավ բազիլիկայի հորինվածքը։ VII դարից հետո, երբ Հայաստանում պաշտամունքային ճարտարապետության հիմնական տիպը կենտրոնագմբեթ կառուցվածքներն էին, եռանավ բազիլիկաներ այլևս չէին ստեղծվում։ Սակայն XVII դարում, երբ հրատապ խնդիր դարձավ կարճ ժամանակամիջոցում ոչ միայն ավերված եկեղեցիների վերականգնումը, այլև բազմաթիվ նորերի կառուցումը, շինարարները կրկին անդրադարձան այդ տիպին, որովհետև բազիլիկաների կառուցումը մեծ դժվարությունների ու նյութական խոշոր ծախքերի հետ չէր կապված։*

*Եռանավ բազիլիկաները արտաքինից անպաճույճ էին, առանց որևէ զարդանախշ հարդարանքի, հաճախ կառուցված անմշակ քարից (Սյունիք)։ Դրանք*

*ունների շատ էական տարբերություններ վաղ միջնադարի համանման կառուցվածքների համեմատ։ XVII դարի բազիլիկաների ներքին կառուցվածքը երեք նավի է բաժանվում հիմնականում երկու զույգ մույթերով (Գառնի, Տաթև, Գնդեվազ, Եղեգիս և այլն), իսկ որոշ դեպքերում՝ նույնիսկ մի զույգ մույթով (Կնեվանք, Շինուհայր, Երևանի Զորավոր)։*



Մուղնու վանքը (XVII դ.)

*XVII դարում գմբեթավոր եկեղեցիներ քիչ կառուցվեցին։ Անշուշտ տնտեսական գործոնին գումարվում էր և նախորդ դարերում շինարարական կյանքի երկարատև ընդմիջման պատճառով ճարտարապետական ավանդների ու վարպետության կորուստը։*

*Գմբեթավոր սրահի հորինվածքով են կառուցված Խորվիրապի մեծ եկեղեցին (1666) էջմիածնի Շողակաթը (1694)։*

*Զարդաքանդակների բացակայությունը և ծավալների յուրահատուկ համաչափությունները այս կառուցվածքներին տալիս են խիստ տեսք։ Թե Խորվիրապի և թե Շողակաթի եկեղեցիների տարածական-ծավալային հորինվածքները արդեն չունեն այն արտահայտչականությունը, որ հատուկ է նախորդ դարերում կառուցված նույնատիպ հուշարձաններին։*

*XVII դարի գմբեթավոր բազիլիկաներից արժեքավորն ու բարձրարվեստը Մուղնու ս. Գևորգ եկեղեցին է, որը 1664—1669 թթ. կառուցել են Սահակ և Մուրադ ճարտարապետները։ Այն աչքի է ընկնում իր ինքնատիպ արտաքին*

ճարտարապետությամբ։ Հարավային մուտքը եզերված է նուրբ և ճաշակով կատարված զարդաքանդակներով, գմբեթի թմբուկը շարված է տարբեր գույնի տուֆ քարերից։ Բազմազունություն է մտցված նաև ճակատների երեսպատման մեջ։ Այս բոլորը գմբեթի հովհարաձև ծածկի, եկեղեցու հետ օրգանական միասնություն կազմող կամարակապ սրահի և զանգակատան թեթև ռոտոնդայի հետ ստեղծում են տպավորիչ և այդ դարի կառուցվածքների համար բացառիկ արտահայտիչ կերպար։

Սյունիքում, Գողթան և Երնջակ գավառներում, որտեղ հիմնական շինանյութը բազալտն էր, գմբեթավոր եկեղեցիների կառուցումը բավական աշխատատար գործ էր և կապված մեծ ծախսերի հետ։ Այս պատճառով, XVII դարում այդ գավառներում, գմբեթավոր շենքեր կառուցելիս, օգտագործում էին մատչելի և ավելի էժան շինանյութ՝ աղյուս։ Քարի որմնախարիսխների վրա ամբողջովին աղյուսից են կառուցված Աստապատի ս. Վարդան եկեղեցին (1655), Քարատակի ս. Ստեփանոս վանքի գմբեթավոր բազիլիկան (XVII դարի երկրորդ կես) և այլն։

Միաժամանակ Մեղրիում, Ագուլիսում, Շոռոթում կառուցվեցին և այնպիսի գմբեթավոր եկեղեցիներ, որոնց հիմնական ծավալը իրականացված էր բազալտից, իսկ թմբուկը և գմբեթը՝ աղյուսից։ Տարբեր շինանյութերի նման հետաքրքիր զուգակցումը միանգամայն նորություն էր հայկական ճարտարապետության մեջ։ Այս ինքնատիպ հորինվածքն ունեն Մեղրու Աստվածածնի եկեղեցին (XVII դարի առաջին կես), Շոռոթի ս. Հակոբ գմբեթավոր բազիլիկան (1642), Ագուլիսի վերին թաղի եկեղեցին, որը հիմնովին վերակառուցվեց 1670 թ.։ Սակայն Իրանին հարևան այս գավառների աղյուսաշեն կառուցվածքներում նկատվում է նաև պարսկական ճարտարապետության ոճական որոշ ազդեցությունը՝ եկեղեցիների ճակատների և գմբեթների արտաքին հարդարանքում։ Այս ազդեցությունն առավել ցայտուն է արտահայտվում Նոր Ջուղայի XVII դարի եկեղեցիներում ու աշխարհիկ շենքերում։ Աղյուսից կառուցված Աստվածածնի (1612), Բեթղեհեմի (1627), Ամենափրկչի (1628) եկեղեցիների ճակատները և գմբեթների ուրվագծերը ուղղակի կրկնում են պարսկական մզկիթների ճարտարապետական ձևերը։

Հայաստանում տնտեսական կյանքի ու առևտրի մասնակի աշխուժացումը XVII դարում նպաստեց երկրում ճանապարհների բարեկարգման, քարավանատների ու կամուրջների վերանորոգման ու նորերի կառուցման աշխատանքներին։ Վերածնվեց նախկինում բարձր մակարդակի հասած կամրջաշինության արվեստը։ Բազմաթիվ խոշոր կամուրջներ կառուցվեցին Հրազդան, Քասախ, Որոտան, Մեղրի և այլ գետերի վրա, որոնցից մեծությամբ և իրենց ճարտարապետության անհատականությամբ աչքի են ընկնում Աշտարակի, Երևանի, Օշականի բազմաթռիչք կամուրջները։

Երևանցի վաճառական մահտեսի Գրիգորի միջոցներով 1664 թ. Աշտարակի մատույցների մոտ, Քասախ գետի վրա կիսաքանդ հին կամրջի փոխարեն կառուցվեց նորը։ Հետաքրքրական է այն փաստը, որ առևտրական ճանապարհների վրա կամուրջների շինարարությամբ արդեն հանդես է գալիս ոչ թե ֆեոդալական ավագանին, այլ այդպիսի կառուցվածքներով առավել շահագրգռված անձինք՝ առևտրական կապիտալի ներկայացուցիչները[4]։

[4] Տե՛ս Վ. Մ. Հարությունյան, Միջնադարյան Հայաստանի քարավանատներն ու կամուրջները, Երևան, 1960, էջ 117։

*Աշտարակի կամուրջը եռակամար է, մաքուր տաշած տուֆ քարերից շարված։ Նրա տարբեր մեծության սլաքաձև կամարները և պատերի աստիճանաձև ուրվագիծը ապահովում են սահուն անցումը գետի տարբեր բարձրություն ունեցող ափերի մեջ։ Հաջող տեղադրությունը, ինքնատիպ ուրվագիծը, ներդաշնակությունը շրջակա բնության հետ առանձնացնում են այս կամուրջը միջնադարյան Հայաստանի ճարտարապետական կառուցվածքների շարքում։*



Աշտարակի կամուրջը (XVII դ.)

*1679 թ. երկրաշարժից հետո հիմնովին վերակառուցվեց Հրազդանի ձորում՝ Երևանը Էջմիածնի և Աշտարակի հետ կապող ճանապարհի վրա տեղադրված հինավուրց կամուրջը։ Այն գտնվում էր Երևանի բերդին կից և հսկվում նրա կողմից։ Համաչափ հորինվածքով այս խոշոր կամուրջը (երկարությունը 80 մ, բարձրությունը մոտ 11 մ) ունի երկու միմյանց հավասար սլաքաձև կամարներ գետի հունի վրա և, նույնպես սլաքաձև, ավելի փոքր բացվածքներ ափի մոտ՝ ոռոգման ջրանցքների վրա։*

*Օշականի կամուրջը կառուցել է Նահապետ կաթողիկոսը 1706 թ. և վերանորոգել Սիմեոն կաթողիկոսը՝ 1778 թ.։ Նրա անհրաժեշտությունը թելադրված է այն ճանապարհի կարևորությամբ, որը կապում էր Էջմիածնի վանքը Աշտարակի շրջանի իր կալվածքների հետ[5]։ Կամրջի տարբեր թռիչքներով և ուրվագծով (սլաքաձև ու կիսաշրջանաձև) կամարների շնորհիվ երթևեկային մասը, գետի ցածրադիր աջ ափից՝ ոչ մեծ թեքությամբ, անցնում է դեպի բարձր ձախ ափը։*

*Կամրջաշինությունն ուշ միջնադարում առանձնապես լայն թափ ստացավ Սյունիքում, որտեղ վանքերի և առանձին անհատների միջոցներով տասնյակ կամուրջներ կառուցվեցին։ Սրանք ձևերով պարզ էին, հիմնականում միա-*

*[5] Տե՛ս նույն տեղում, էջ 118։*

*թուխչք, բայց տեղանքի ճիշտ ընտրության, ճարտարապետական ձևերի հակիրճության մեջ եղած յուրօրինակ արտահայտչականությամբ իրենց արժանի տեղն ունեն հայկական շինարարական արվեստի պատմության մեջ։*

*Ճարտարապետության մեջ հայ վաճառականների Եվրոպայի հետ ունեցած սերտ կապերի հետաքրքրական արտահայտությունն է Սիսիանի Լոր գյուղի եկեղեցին։ Խոջա Պետրոսի 1666 թ. կառուցած այս եռանավ բազիլիկան իր հորինվածքով ոչնչով չի տարբերվում համանման կառույցվածքներից։ Սակայն շատ ուշագրավ է մուտքի գեղազարդումը բարոկոյի ոճով կատարված պարզաքանդակներով։ Արևմտաեվրոպական արվեստին բնորոշ քանդակների երևան գալը Հայաստանի այսպիսի հեռավոր անկյունում արդյունք է հայ վաճառականների եվրոպական երկրներ կատարած հաճախակի այցելությունների, որտեղից նրանք բերում էին նաև Վենետիկի և Ամստերդամի հայկական տպարաններում հրատարակված գրքերը։ Այսպիսի գրքերից մեկի՝ Եվրոպայում 1668 թ. տպագրված Աստվածաշնչի նկարներին շատ նման են Լորի եկեղեցու քանդակները[6]։ Արևմտաեվրոպական արվեստի ազդեցությամբ են կատարված նաև Էջմիածնի Մայր տաճարի ղանգակատան ներքին հարկաբաժնի քիվի և պատերի որոշ զարդաքանդակները։ Սակայն եթե XVII դարի հայկական կերպարվեստում նման ազդեցությունն ավելի մեծ էր ու երկարատև, ապա ճարտարապետության մեջ այս երևույթը հետագայում այլևս չկրկնվեց և նշված օրինակները մնացին որպես եզակի դեպքեր։*

*XVII դարում առևտրական կապիտալի ներկայացուցիչներն իրենց մասնակցությունն ունեցան ոչ միայն առանձին եկեղեցիների կամ կամուրջների կառուցմանը, այլև նոր եկեղեցական կենտրոնների ճարտարապետական համալիրների ստեղծմանը։ Երևանի մեծահարուստների, Ջուղայի և Ագուլիսի վաճառականների միջոցներով վանքեր ու անապատներ կառուցվեցին Սյունիքում, Այրարատում, Գողթան և Երնջակ գավառներում։*

*Հայաստանի XVII դարի մենաստանների ճարտարապետությունն ունի հետաքրքրական մի առանձնահատկություն. նրա մեջ միավորվում են կրոնական կենտրոնի և ամրոցի միանգամայն տարբեր հորինվածքները։ Դեռ IX—XVI դարերում վանքերը շրջապատվում էին պարիսպներով, որոնք, սակայն, որպես պաշտպանական կառուցվածքներ, բավական համեստ էին։ Բայց, երբ XV—XVII դարերում մենաստանները, ստիպված, ոչ միայն իրենք էին ապահովում իրենց անվտանգությունը, այլև պատսպարում շրջակա բնակչությանը, սկսեցին նաև ամրոցների դեր խաղալ, որի հետևանքով երևան եկան բերդ-եկեղեցու և վանք-ամրոցի հորինվածքները։ Մի շարք խոշոր եկեղեցիներ, ինչպես, օրինակ, Փարպիի, Աշտարակի Ծիրանավոր, Բյուրականի ս. Հովհաննես բազիլիկաները ստացան բարձր և հաստահեղույս կրկնակի պատեր, որոնք օժտված էին հրակնատներով։ Այս բերդ-եկեղեցիներից շատերը ունեին նաև ստորգետնյա գաղտնի անցքեր դեպի մոտակա ձորերը՝ պաշարման դեպքում ջուր հայթայթելու համար, իսկ նրանց տանիքների անմատչելի հարթակներից հրազենի միջոցով հնարավոր էր ապահովել ոչ միայն եկեղեցու, այլև շրջակա բնակավայրի պաշտպանությունը։*

*XVII դարում Հայաստանում առանձնապես լայն տարածում ստացավ*

---

[6] *Տե՛ս А. Л. Якобсон*, Очерк истории зодчества Армении V—XVII веков, М.—Л. 1950, էջ 152։

վանք-ամրոցների կառուցումը։ Թե՛ նոր ստեղծվող և թե՛ արդեն գոյություն ունեցող մենաստանները շրջապատվեցին այնպիսի պաշտպանական կառուցվածքներով, որոնք հատուկ են ամրոցներին։ Բուրգերով ուժեղացված պարիսպներով լրացվեցին խոշոր կրոնական կենտրոնները՝ Տաթևը, Գեղարդը, Բջնիի վանքը, Գնդեվանքը, ս. Թադեոս առաքյալի վանքը։ Սակայն վանք-ամրոցն իր ճարտարապետական ավարտուն կերպարն ստացավ նոր կառուցվող մենաստաններում (Շատին վանք, Տաթևի Մեծ անապատ, Խորվիրապ, Հալիձորի Հարանց անապատ, Դարաշամբի ս. Ստեփանոս, Աստապատի, Ագուլիսի վանքեր և այլն), որտեղ համալիրը հենց սկզբից ստեղծվում էր կրոնական և պաշտպանական տարրերի զուգակցման միասնական մտահղացումով։

Շատին վանքը Սյունիքի ուշ միջնադարի խոշոր մենաստաններից էր։ Նրա ամրացման ճարտարապետական համալիրի մեջտեղում, առանձին կանգնած բարձրանում է եկեղեցին՝ եռանավ բազիլիկան, որը 1655 թ. կառուցել է ջուղայեցի Հակոբ վաճառականը։ Բուրգերով ուժեղացված հարավային պարիսպների հետ են երկհարկ շինությունները, որոնց վերի հարկը հատկացված է եղել բնակելի սենյակներին։ Սեղանատնից ու մի շարք տնտեսական շինություններից բացի վանքն ունեցել է և իր ջրաղացը, ձիթհանքը, նույնիսկ ջրանցք ու Եղեգիս գետի վրա կամուրջ։ Շատին վանքի բարգավաճմանը նպաստել է նրա համար աշխարհագրական դիրքը՝ Նախիջևանը և Սյունիքը Սևանի ավազանին կապող ճանապարհի վրա տեղադրված լինելը, և սերտ կապերը Ջուղայի ու Գողթան գավառի վաճառաշահ մյուս կենտրոնների հետ։

Հայաստանում XVII դարում սկսված մշակութային ընդհանուր վերելքը նպաստեց ճարտարապետական խոշոր համալիրների կառուցմանը։ Սյունյաց Մեծ անապատը, որ հիմնադրվեց 1608—1610 թթ., ուշ միջնադարի հայկական հոգևոր-մշակութային, շինարարական-ճարտարապետական պարթենքի առաջնեկը եղավ։ Հետագայում «Հարանց անապատ» անունն ստացած այս նշանավոր մենաստանը կառուցվել է Որոտանի ձորում, Հալիձոր գյուղի հանդեպ, ժայռերով շրջափակված մի փոքրիկ հարթության վրա։ Այն ունեցել է ամուր պարիսպներով շրջապատված բազմաթիվ շինություններ՝ եկեղեցի, բնակելի սենյակներ, հյուրատուն, տնտեսական-արտադրական շենքեր։ Կործանարար երկրաշարժից հետո միաբանությունը 1660 թ. տեղափոխվում է մի այլ վայր և կառուցում Տաթևի Մեծ անապատը։

Նոր մենաստանի համակառույցը ուշ միջնադարի հայկական ճարտարապետության ամենաարժեքավոր և հետաքրքրական հուշարձանն է։ Այն նույնպես տեղադրված է Որոտանի անդնդախոր ձորում, Տաթևի սարի ստորոտում։ Տեղանքի ոչ մեծ թեքությունը հնարավորություն է տվել կառույցն իրականացնել կանոնավոր հատակագծով՝ ողջ հորինվածքը կազմված է ուղղանկյուն պարսպապատերով պարփակված հիմնական մասից (որտեղ գտնվում են եկեղեցին, սեղանատունը, բնակելի խցերը) և նրան հարավից կից տնտեսական շենքերի խմբից։ Հիմնական, ուղղանկյուն մասի շինությունները նույնպես խմբավորված են ըստ նշանակության՝ սեղանատունը, խոհանոցը գտնվում են հարավային մուտքին կից և անմիջապես կապ ունեն դրսի հետ, իսկ բնակելի սենյակները խմբավորված են համակառույցի խորքերում։ Նման տեղաբաշխումը բնակելի սենյակներին, մեկուսացումից բացի, տալիս է նաև բարենպաստ կողմնորոշման հնարավորություն։ Տնտեսական շինությունների խմբավորումը և մուտքի մոտ տեղադրելը բավականին հարմար է. ոչ

միայն անմիջական կապ է ստեղծվում համակառույցի երկու մասերի միջև, այլև դարպասի դիմաց ստեղծվում է մի ընդհանուր բակ։ Սա կարևոր էր նաև պաշտպանական տեսակետից. դժվար էր մտնել բարձր ու ամուր պարիսպներով շրջապատված այս բակը, ուր ներթափանցելուց հետո միայն կարելի էր մոտենալ Մեծ անապատի գլխավոր մուտքին։

Սյունյաց դպրոցն իր ճյուղավորումներն ունեցավ Հայաստանի ամենատարբեր մասերում, և Մեծ անապատից դուրս եկած գործիչները հիմնադրեցին ու կառուցեցին Տանձափարախի, Ջարեքադեփ, Նոր Ջուղայի, Երևանի, Վասպուրականում Լիմի և Կտուցի անապատները։

Հայաստանի XVII—XVIII դարերի կրոնական կենտրոնների համալիրներում կարևոր տեղ են գրավում աշխարհիկ կառուցվածքները՝ բնակելի շենքեր, հյուրատներ, սեղանատներ, որոնք աչքի են ընկնում հորինվածքների հստակ և նպատակահարմար լուծումներով։

Համալիրների բնակելի կառուցվածքները երկու տարբեր տիպի են բաժանվում՝ վանքային և անապատային։ Վանքայինը բնորոշ է նրանով, որ ընդհանուր հորինվածքով և մանրամասներով առնչվում է Բագրատունյաց Անիի բնակելի շենքերի ճարտարապետության հետ։ Ինչպես Անիում, այստեղ ևս սենյակները խմբավորված են մեկ միջանցքի շուրջ՝ ընդհանուր ելքով դեպի բակ և օժտված են բուխարիներով, պատերում տնտեսական նշանակություն ունեցող խորշերով, նկուղներով։

Անապատային խցերը, ի տարբերություն վանքերի բնակելի սենյակների, նախատեսված են յուրաքանչյուրը մեկ հոգու համար և ունեն նվազագույն չափեր ու հարմարություններ։ Բոլոր խցերն ունեն միևնույն հատակագծային ու ծավալային լուծումը՝ թաղակապ փոքր սենյակ, դեպի բակ առանձին ելքով։

Վանքերը և անապատները բազմաթիվ այցելուների և ուխտավորների հյուրընկալման համար ունեին համապատասխան շենքեր։ Այս հյուրատներն իրենց ճարտարապետությամբ հիշեցնում են միջնադարյան Հայաստանի միանավ քարավանատները և կազմված էին երկու մասից՝ երկար թաղակապ դահլիճից՝ գրաստի համար, ու նրան կից սենյակից՝ նախատեսված մարդկանց հանգստի համար։

Համալիրների սեղանատները, ի տարբերություն XII—XIV դարերի վանքերի համանման կառուցվածքների, ոչ թե առանձին են կանգնած, այլ տեղադրված են մյուս տնտեսական շինությունների շարքում։ Նրանք ունեն շեշտված ընդերկայնական առանցքով թաղակապ դահլիճի հորինվածք, որի ներքին տարածությունը մասնատվում է որմնասյուներով ու թաղակիր կամարներով։

Հայաստանի ուշ միջնադարի կրոնական կենտրոնների ինչպես աշխարհիկ, այնպես էլ պաշտամունքային շենքերի ճարտարապետության հիմնական առանձնահատկությունն այն է, որ կառուցվածքի արտահայտչականությունը ստացվում է ոչ թե զարդաքանդակներով, այլ տարածական-ծավալային ողջ հորինվածքի և նրա առանձին մասերի ներդաշնակ համաչափություններով։

XVII—XVIII դարերում պաշտպանական գործոնը զգալի դեր էր խաղում ոչ միայն կրոնական համալիրների, այլև բնակելի ճարտարապետության մեջ։ Բնակավայրերը մեծ մասամբ կառուցվում էին դժվարամատչելի, բարձրադիր վայրերում՝ սարահարթերի վրա, լեռների լանջերին, հեռու բանուկ ճանապարհներից։ Որպես բնակարան օգտագործվում էին նաև քարայրները՝ բնական

և արևմտական՝ հատկապես այդ նպատակի համար փորված։ Թեքադիր սեղանը կառուցապատվում էր դարավանդներով, որի հետևանքով որպես բակեր ծառայում էին տների հարթ կտուրները։ Լեռնային վայրերում բնապատկերին միանգամայն ներդաշնակ այսպիսի կառուցապատումը հատկապես բնորոշ է Զանգեզուրի և Ղարաբաղի գյուղերին։ Այստեղ գյուղական տների հոծ զանգվածում իրենց մեծ չափերով, տեղադրությամբ և ձևավորումով առանձնանում են ուշ միջնադարի հայ ֆեոդալների՝ մելիքների ապարանքները։ Հաճախ երկհարկանի այս շենքերը կառուցվում էին սրբատաշ քարերով, ունեին թաղածածկ խոշոր սենյակներ և ստորին հարկերի պատերի խուլ հարթությունները ու վերևում հրակնատներ հիշեցնող լուսամուտներով փոքր ամրոցների էին նմանվում։

Ի տարբերություն մելիքական ապարանք-ամրոցների, գյուղական տները միհարկանի են, փայտածածկ և ունեն հիմնականում միևնույն հորինվածքը, որը փաստորեն կրկնում է դեռ հազարամյակներ առաջ Հայաստանում ձևավորված բնակելի տան ճարտարապետությունը։ Այս պատճառով XVII—XVIII դարերի բնակելի տները մեծ հետաքրքրություն են ներկայացնում, որովհետև հայկական ժողովրդական տան մեզ հասած ամենավաղ նմուշներն այդ դարերից են պահպանվել։

Հայաստանի լեռնային և նախալեռնային շրջաններում բնակարանի հիմնական տիպը գլխատունն է, որի շուրջը համախմբվում են գոմը, թոնրատունը, մթերանոցը և այլ տնտեսական շինությունները։ Գլխատունն ուղղանկյուն հատակագծով բնակելի սենյակ է, փայտաշեն ծածկով, որի մեջտեղում գտնվում է երդիկը՝ բնակարանի լուսավորության միակ աղբյուրը։ Ծածկը, որ լինում է երկու տեսակ՝ «հազարաշեն» ու «սողոմաքաշ», իրականացվում է բրգաձև շարված փայտե հեծաններից։ Քառակուսի կամ ութանկյուն հիմքով այս գմբեթները հենվում են փայտե սյուների վրա, որոնք հաճախ պսակվում են գեղեցիկ զարդաքանդակներով, խոյակներով։ Բազմանդամ, նահապետական ընտանիքների գլխատները բավական մեծ են (մինչև 100 մ. մակերեսով) և բաղկացած են երկու-երեք բաժիններից, որոնք ծածկված են միանման փայտաշեն գմբեթներով։

Հայաստանի հովտային և դաշտավայրային շրջանների բնակելի տների ճարտարապետական ձևերը պայմանավորված են կլիմայական պայմաններով ու տվյալ վայրի գյուղատնտեսական աշխատանքների առանձնահատկություններով[1]։ Այգեգործական շրջանների տներն ունեն թաղակապ ծածկով կիսանրկուղային հարկեր (մառաններ)։ Վերին հարկը հատկացված է բնակելի սենյակներին, որոնք հաղորդակցվում են լայն պատշգամբի միջոցով։ Շոգ կլիմայի պատճառով բնակիչները ժամանակի մեծ մասն անց են կացնում այդ բաց պատշգամբներում կամ ստվերոտ ու կանաչապատ բակերում, որոնք պարագծով շրջապատված են տնտեսական նշանակության շինություններով։

Ժողովրդական ճարտարապետության հետաքրքրական ստեղծագործություններից են նաև արտադրական կառուցվածքները՝ ձիթհանքները, հնձանները, ջրաղացները։ XVII—XVIII դարերի ձիթհանքները առանձին կանգնած կառուցվածքներ են, թաղակապ ծածկերով, որոշ տեղերում նույնիսկ գմբեթա-

[1] Տե՛ս *В. М. Арутюнян и С. А Сафарян*, Памятники армянского зодчества, М., 1951, էջ 69։

վոր (Տաթև)։ Խոշոր ձիթհանքներն ունեին առանձին սենյակներ տարբեր արտադրական պրոցեսների համար՝ բովման, աղացման, մամլման և այլն։ Վերգետնյա ձիթհանքներից բացի կառուցվում էին նաև ժայռափորներ (Աղստաշեն, Խնձորեսկ)[8]։ Հնձանների, ջրաղացների, ձիթհանքների ճարտարապետությունը պարզ է, նպատակահարմար հատակագծերով ու ծավալական ձևերի զուսպ լուծումներով։

XVII—XVIII դարերում Հայաստանում տնտեսական, առևտրական կյանքի վերելքը նպաստավոր էր նաև քաղաքաշինության համար։ Զգալի զարգացում ապրեցին հայկական հին բնակավայրերից Վանը, Կարսը, Բաղեշը, Մուշը, Կարինը, Երզնկան, Երևանը և այլ քաղաքներ։ Այս ժամանակաշրջանում հայկական քաղաքների շարքում առանձնանում է Երևանը, որը դարձել էր Արևելյան Հայաստանի վարչական կենտրոնը։ XVII—XVIII դարերում Երևանի հատակագծային կառուցվածքը եռաստիճան էր՝ այն կազմված էր բերդից, փարթամ այգիներով բնակելի թաղամասերից և քաղաքը շրջապատող բազմաթիվ բնակավայրերից[9]։ Երևանի բերդը, որը վերաշինվել էր XVI դարում՝ քաղաքը թուրքական զորքերի կողմից գրավվելուց հետո, 1679 թ. երկրաշարժից մեծապես վնասվել էր և հիմնովին վերակառուցվեց։ Բերդը, որ տեղադրված էր քաղաքի հարավային կողմում՝ Հրազդանի ձախ բարձրադիր ափին, ուներ քառանկյուն հատակագիծ և շրջապատված էր բազմաթիվ բուրգերով ուժեղացված երկշարք պարիսպներով։ Այս բավականին զորեղ պաշտպանական համալիրը, փաստորեն, մի առանձին փոքրիկ քաղաք էր՝ կրոնական և աշխարհիկ շենքերով, հարյուրավոր բնակելի տներով, պալատով, խանութներով և այլն։

Երևանի բնակելի թաղամասերը երեքն էին՝ Հին թաղը կամ Շահարը, Կոնդը (Ձորագյուղի հետ) և հարավ-արևմուտքում Քարհանքի թաղը[10]։ Ի տարբերություն միջնադարյան Հայաստանի մյուս քաղաքների, Երևանը շրջապատված չէր պաշտպանական կառուցվածքներով, որովհետև վտանգի դեպքում բնակչությունը պատսպարվում էր ընդարձակ բերդի ներսում։ Երևանում կային մի շարք հրապարակներ, որոնցից ամենակարևորը՝ Մեծ կամ Շուկայականը գտնվում էր բերդի ու բնակելի թաղամասերի միջև։ Այս հրապարակը ոչ միայն առևտրական, այլև հասարակական նշանակություն ուներ՝ նա քաղաքի զբոսարանն էր, բացօթյա ներկայացումների, զվարճությունների վայրը, նույնիսկ մարզական կենտրոնը (Մեծ հրապարակում անց էին կացվում ըմբշամարտի ու ձիարշավի մրցումներ)։

Երևանը բազմաթիվ եկեղեցիներից ու մզկիթներից բացի, որոնց մեծ մասը կառուցվել էր 1679 թ. երկրաշարժից հետո, ուներ նաև նշանակալից հասարակական և կոմունալ շենքեր՝ խոշոր քարավանատներ, բաղնիսներ, ծածկած շուկա և այլն։ Երևանի յոթ քարավանատները ուղղանկյուն, երկհարկանի կառուցվածքներ էին, որոնց առաջին հարկը հատկացված էր խանութներին, իսկ երկրորդ հարկը՝ փայտե ընդհանուր պատշգամբով և առանձին սենյակներով, հյուրատունն էր։

XVII դարում սկսված շինարարական աշխատանքները Հայաստանում

[8] Տե՛ս *О. Х. Халпахчьян*, Архитектура Армении, Всеобщая история архитектуры՝ т. 3, Л.—М., 1966, էջ 291։

[9] Տե՛ս *В. М. Арутюнян, М. М. Асратян, А. А. Меликян*, Ереван, М., 1968, էջ 21։

[10] Տե՛ս նշվ. աշխ., էջ 22։

շարունակվեցին մինչև XVIII դարի սկիզբը։ Հարկերի խստացումը, տնտեսական ճգնաժամը, աֆղանների հարձակումը, 1724 թ. թուրքական զորքերի նոր արշավանքը Անդրկովկասի ու Արևելյան Հայաստանի վրա և վերսկսված թուրք-պարսկական պատերազմները նորից ընդհատեցին խաղաղ աշխատանքը։ Ոչ միայն հնարավորություն չեղավ նոր շենքեր կառուցել, այլև անավարտ մնաց շատ շենքերի շինարարությունը։

Սակայն XVIII դարը հատկանշական եղավ հայկական ճարտարապետության համար ամրոցաշինության կարճատև, բայց հետաքրքրական վերածնունդով։ XV—XVII դարերում բացարձակորեն ոչ մի հնարավորություն չկար հայկական բերդեր ու ամրոցներ կառուցելու համար։ Միայն XVIII դարի առաջին կեսում թուրք զավթիչների և պարսկական ֆեոդալների դեմ մղված ազատագրական պայքարը Սյունիքում և Արցախում ինքնին թելադրում էր ունենալ նաև հայկական պաշտպանական նոր կառույցներ։ Դավիթ-Բեկ ոչ միայն նորոգեց և օգտագործեց հին ամրոցները՝ Որոտնաբերդը, Բաղաբերդը, Ջեյվան, այլև հիմնովին վերակառուցեց Մեղրու բերդը և Հալիձորը՝ ժամանակի ռազմական պահանջներին համապատասխան։

Սյունիքի հնագույն բերդերից մեկի՝ Մեղրու բերդի տեղում, XVIII դարի առաջին քառորդում, փաստորեն կառուցվեց նորը։ Վերակառուցումն անհրաժեշտ էր ոչ միայն ժամանակի ու թշնամիների ավերածությունների պատճառով, այլև ռազմական նոր տեխնիկայի, հատկապես հրազենի օգտագործման կապակցությամբ։ Բերդը բաղկացած է կլոր և ուղղանկյուն հատակագծով, առանձին կանգնած վեց աշտարակից. որոնք բարձրանում են Մեղրու մեծ թաղի հյուսիսային կողմում, լեռնաշղթաների գագաթներին։ Աշտարակները երկհարկանի են և յուրաքանչյուր հարկում ունեն պարագծով, շախմատաձև դասավորված հրակնատներ, որոնց ներքին շարքերը նախատեսված են ծնկաչոք, իսկ վերևինները՝ կանգնած կրակելու համար։ Կրակի այսպիսի կենտրոնացումը (յուրաքանչյուր աշտարակում մինչև 70 հրաձիգ) համեմատաբար փոքր կառուցվածքում ստեղծում է ուշ միջնադարի ռազմական պայմաններում հզոր հարվածային ուժ, մանավանդ, տեղադրված լինելով լեռնաշղթայի բարձր կատարներին, աշտարակներն անմատչելի էին հակառակորդի թնդանոթի կրակի համար։ Մեղրու բերդն իր ճարտարապետության մի շարք առանձնահատկություններով ուրույն տեղ է գրավում միջնադարյան Հայաստանի ամրոցների շարքում։ Այն, փաստորեն, մեզ հայտնի հայկական միակ պաշտպանական կառուցվածքն է, ստեղծված հրազենի օգտագործումը հաշվի առնելով։

Մեղրու բերդը տարբերվում է նախորդ բոլոր օրինակներից նաև իր կառուցապատման սկզբունքով։ Եթե Հայաստանի բոլոր ամրոցներն իրենցից ներկայացնում են բուրգերով ուժեղացված պարիսպներով շրջափակված տարածություն, որտեղ գտնվում է միջնաբերդը, բնակավայրը, վանքը կամ դղյակը, ապա Մեղրու բերդը չունի պարիսպներ և կազմված է միայն առանձին աշտարակներից։ Լեռնաշղթաներն իրենք են պարիսպների դեր կատարում և ավանը ոչ թե աշտարակների միջև է գտնվում, այլ նրանց հարևան։ Իսկ հրազենի օգտագործման ժամանակաշրջանում արդեն պարտադիր չէր բնակավայրն անմիջականորեն շրջափակել պարսպապատերով, այլ կարելի էր այն պաշտպանել հարմար դիրքում տեղադրված աշտարակներից, թեկուզ և որոշ հեռավորու-

*թյունից։ Այդպիսին է Մեղրին, որի բերդը պաշտպանության տակ է առնում ոչ միայն Մեծ թաղը, այլև ամբողջ բնակավայրը։*

*Հալիձորի բերդը (Հալիձորի կուսանաց անապատ) կառուցվել է XVII դարի առաջին կեսում։ 1723 թ. Դավիթ-Բեկը մելիքատանի անառիկ ցիրբերից ելնելով, այն դարձնում է ազատագրված Կապանի կենտրոնը, միաժամանակ վերակառուցելով որպես ամրոց։*



Տաթևի կամուրջը (1672 թ.)

*Հալիձորը տեղադրված է Ողջի գետի աջ ափին, զառիթափ լեռնալանջի փոքրիկ գոգավորության վրա, արդի Ղափանից ոչ հեռու։ Այս բարձունքից բերդն իշխում է Ողջիի ձորի վրա և հսկողության տակ պահում ձորով անցնող այն կարևոր ճանապարհը, որը կապում էր Կապանը (Բաղաբերդի և Տաշտունի լեռնանցքով) Մեղրու հետ։ Բերդից լավ դիտվում են ձորից դեպի Հալիձոր տանող կածանները, որոնք կարող էին վերևից գնդակոծվել։ Համակառույցի հատակագիծն անկանոն քառանկյունի է, ունի երկու մուտք, հյուսիսային և հարավային պարիսպներում։ Բերդում գերիշխողը թե՛ տեղադրությամբ և թե՛ չափերով՝ եկեղեցին է, որն անմշակ բազալտի խոշոր քարերից շարված իր բարձր պատերով և լուսամուտների նեղ բացվածքներով ավելի ամրոցի է նման, քան պաշտամունքային կառուցվածքի։ Հետաքրքրական է Հալիձորի պաշտպանական համակարգը։ Պարիսպները հաստ չեն, նրանց լայնությունը մոտ մեկ մետր է։ Նման չափը XVIII դարի պաշտպանական կառուցվածքում բացատրվում է նրանով, որ հրազենի առկայության դեպքում հաստ պարիսպներն արդեն ավելորդ էին՝ բաբաններով գրոհելու ժամանակաշրջանն անցել էր, իսկ հրանոթը դեռևս լայն կիրառում չուներ Հայաստանի լեռնային վայրերում մղվող կռիվներում։ Ամրոցն ունի կլոր հատակագծով մեկ բուրգ՝ հարավ-արևմտյան անկյունում։ Բուրգը տեղադրված է համալիրի համեմատաբար թույլ մասում, որովհետև, եթե բերդը մյուս կողմերից իշխում է շրջապատի*

վրա, ապա հարյավ արևմուտքից, ընդհակառակը, այն տեղանքի նկատմամբ ցածր է և խոցելի այդ կողմից։ Եկեղեցուն կից երկհարկանի շինություններն օգտագործվել են նաև ռազմական նպատակներով։ Վերին հարկի հարթակներից վտանգի դեպքում հնարավոր էր կրակի տակ վերցնել պարիսպների մատույցները, կրկնապատկելով ըստ բարձրության, պաշտպանական համակարգը։

Նման բազմաստիճան համակարգը և անառիկ դիրքը հնարավորություն է ընձեռել բերդի փոքրաթիվ պաշտպաններին հաջողությամբ դիմադրելու թշնամու տասնապատիկ մեծ ուժերին։ Հալիձորի բերդը, ինչպես և շատ ուրիշ բերդեր Հայաստանում, ստորգետնյա գաղտնի անցք է ունեցել դեպի դուրս՝ պաշարման ընթացքում ջուր հայթայթելու կամ թշնամու վրա անսպասելի հարձակվելու համար։ Հալիձորի գաղտնի անցքը օգտագործվել է երկրորդ նպատակով և անակնկալը այնքան մեծ է եղել, որ մի քանի հարյուր զինվորներ կարողացել են խուճապի մատնել թշնամու զորքը։

XV—XVIII դարերում Հայաստանի քաղաքական և սոցիալ-տնտեսական վիճակը բարենպաստ չեղավ ճարտարապետական-շինարարական կյանքի համար, այն ընթացավ պատերազմների, ասպատակությունների ու ավերածությունների պայմաններում։ Սակայն, չնայած դժվարին այս պայմանների, ճարտարապետական արվեստը շարունակեց իր հաջորդական զարգացումը, պահպանելով և գալիքին հանձնելով դարերից եկող իր ավանդներն ու նվաճումները։

## ՏՊԱԳՐՈՒԹՅՈՒՆ

XIV—XVIII դարերի հայ մշակութային կյանքի մեջ շատ նշանակալից եղավ հայկական տպագրության սկզբնավորումն ու զարգացումը։ Ծագելով XVI դարի սկզբներին՝ այն մեծ դեր կատարեց մեսրոպյան դպրության պահպանման ու հետագա զարգացման գործում։ Եվրոպայում XV դարի վերջերից շատ արագ զարգացող տպագրական գործը իր ակնհայտ արժանիքներով չէր կարող չգրավել հայ մտավորականության, այդ թվում հոգևորականության առաջավոր մասի ուշադրությունը։ Բավական է ասել, որ այն ժամանակ արդեն դրչագիր ընդօրինակությամբ մի ձեռագիր մատյան ստեղծելու վրա ծախսվող ժամանակամիջոցը բավական էր այդ մատյանի 300—500 (և ավելի) տպագիր օրինակներ լույս ընծայելու համար։

Հայաստանը մշտական շփման մեջ էր Եվրոպայի հետ. այդ շփումը կատարվում էր ոչ միայն հայ առևտրականների, բանագնացների ու նվիրակների միջոցով, այլև շնորհիվ Եվրոպայի տարբեր երկրներում հաստատված հայկական համայնքների, որոնք անընդհատ համալրվում էին Հայաստանից փախստական գաղթականներով։

Մյուս կողմից, Հայաստանում որքան էլ ճիշտ հասկացվեր գուտենբերգյան գյուտի նշանակությունը, որքան էլ գրավիչ թվար տպագրական արվեստը հայ գրքի բազմացման համար օգտագործելու հեռանկարը, ակներև էր նաև, որ այն ժամանակ մայր հայրենիքում տպարան հիմնելն անհնար էր։ Քաղաքական անկայուն վիճակը, հայկական հողում մեկը մյուսին հաջորդող պատերազմները բացառում էին Հայաստանում տպագրական գործի հիմնադրումը։

Մնում էր մի ելք՝ հայերեն գրքեր տպագրել Եվրոպայում, այնտեղ ստեղծել հայկական տպարաններ։

Հայոց եկեղեցին, որ պատմական հանգամանքների բերումով դարձել էր հայ հասարակական ու մշակութային կյանքի ղեկավարը, XVI դարում արդեն լուրջ հետաքրքրություն ցուցաբերեց տպագրական գործի նկատմամբ։ Եկեղեցու մի շարք ներկայացուցիչների համար ավելի ու ավելի հասկանալի էր դառնում հայերեն գրքերի շատ զգալի պակասը տպագրության միջոցով լրացնելու հնարավորությունը։ Դրա վկայությունն է, օրինակ, Կիլիկիայի Ազարիա կաթողիկոսի 1585 թ. գրած նամակի այն հատվածը, որտեղ գանգատ կա հայերեն Աստվածաշնչի խիստ սակավության վերաբերյալ և խնդրանք Գրիգոր XIII պապին՝ հրատարակելու այդ գիրքը[1]։

Առաջին մարդը, որին հաջողվեց Եվրոպայում հիմնել տպարան և հրատարակել հայերեն գրքեր, Հակոբ Մեղապարտն էր՝ հայ տպագրության ռահվիրան։

Հակոբ Մեղապարտը տպագրական գործով զբաղվել է Վենետիկում, 1510-ական թվականներին։ Պատահական չէ, որ հայ առաջին տպագրիչը գործունեության վայր ընտրեց Վենետիկը։ Գուտենբերգյան տպագրությունը 1440-ական թվականներին ծագելով Գերմանիայում՝ 1465-ին արդեն անցել էր Իտալիա։ Իսկ XV դարի վերջում Վենետիկը դարձել էր եվրոպական տպագրության ամենախոշոր կենտրոնը (ըստ մոտավոր հաշվումների XVI դարի սկզբներին այս քաղաքում գործել է շուրջ 250 տպարան)։ Հայկական տպագրություն ստեղծելու համար Վենետիկն ուներ նաև այլ նպաստավոր պայմաններ։ Այստեղ, համեմատած Իտալիայի այլ վայրերի հետ, ավելի թույլ էր կաթոլիկական գրաքննությունն ու հավատաքննությունը, և անծանոթ լեզվով գրքեր հրատարակելու հաջողության առհավատչյան ավելի մեծ էր։ Բացի այդ, Վենետիկում վաղուց ի վեր (հավանաբար XII դարից) կար հայկական համայնք։ Եվրոպական տարբեր քաղաքների հետ առևտուր անող հայ վաճառականները մեծ մասամբ Վենետիկով էին անցնում, Հայաստանից իբրև ուխտավոր կամ որևէ առաքելությամբ Եվրոպա եկողները սովորաբար նախ Վենետիկ էին այցելում։ Կիլիկյան հայկական պետության և Վենետիկյան հանրապետության միջև հաստատված վաղեմի բարեկամությունն էլ ավանդաբար պահպանվում էր։ Դրա արտահայտություններից էր Վենետիկի «Հայոց տունը», որ ստեղծվել էր Մարկոս Ծիանիի կտակով և ուր օթևանում, նյութական օժանդակություն էին ստանում հայ պանդուխտները։ Ավելորդ չէ հիշել նաև, որ հայերը նկատելի ծառայություններ են մատուցել Վենետիկի՝ ժամանակին ծաղկուն հանրապետությանը, ուր եղել են անվանի հայ գործիչներ։

XVI դարում Վենետիկը եղավ ոչ միայն հայ տպագրության ծննդավայրը, այլև՝ իսկական օրրանը. այստեղ գործեցին նաև երկրորդ ու երրորդ հայ տպագրիչները։ Ավելին, մինչև XVIII դարի սկզբները Վենետիկն էր հայ տպագիր գրքի գլխավոր մատակարարը. այդ ժամանակամիջոցում ամենից ավելի հայերեն գրքեր տպագրվել են այս քաղաքում։

Մեզ են հասել Հակոբ Մեղապարտի տպագրած 5 անուն գրքերը, դրանք են (ըստ տպագրման հաջորդականության)՝ «Ուրբաթագիրք», «Պատարագատետր», «Աղթարք», «Պարզատումար», «Տաղարան»։ Կա վկայություն նույն

---

[1] Տե՛ս «Հանդես ամսօրյա», 1914, էջ 10։

տպարանից լույս տեսած մի «Սաղմոսարանի» մասին, որը, սակայն, չի պահպանվել մինչև մեր օրերը։



Առաջին հայերեն տպագիր գրքերից՝ «Տաղարանը» (Վենետիկ, 1513 թ.)

Հիշյալ գրքերից միայն «Պատարագատետրը» ունի հրատարակչական հիշատակարան. «Գրեցաւ սուրբ տառս ի ՋԿԲ (1513), ի աստուածապահ քաղաքս Վէնէժ, որ է Վենետիկ Ֆռանկստեան, ձեռամբ մեղապարտ Յակոբին. ով որ կարդայք, մեղաց թողութիւն խնդրեցէք Աստուծոյ»։ Այս հակիրճ տեղեկությունից է, որ իմանում ենք առաջին հայ տպագրիչ Հակոբի անունը, նրա հրատարակած գրքերի տպագրավայրը, ինչպես և այդ գրքերից մեկի՝ «Պատարագատետրի» հրատարակման ճիշտ տարեթիվը՝ 1513 թ.։

Քանի որ «Ուրբաթագիրքը» տպագրվել է «Պատարագատետրից» առաջ, ենթադրել են, որ այն պետք է լույս տեսած լինի մի տարի վաղ՝ 1512-ին։ Ուստի և հայ տպագրության սկիզբը համարվում է 1512 թվականը։

Այդպիսով, Հակոբ Մեղապարտի շնորհիվ հայերենը իր հարևան լեզուներից առաջինը դարձավ տպագրության լեզու, իսկ մերձարևելյան բոլոր լեզուներից առաջնությունը զիջեց միայն եբրայերենին։ Արդի Սովետական Միության ժողովուրդների լեզուներով երբևէ կատարված հնագույն տպագրությունների առաջնեկները Հակոբ տպագրիչի հրատարակած գրքերն են։

Հակոբի գրքերի տպատառերը երկու տեսակ են՝ գլխագիր և բոլորագիր, ձևով ու չափով նման ձեռագրական տառերի։ Հայ տպագրության սկզբնավորողը ձգտել է իր հրատարակություններին գրչագիր մատյանների տեսք տալ, քանի որ վերջիններս հին սովորությամբ ավելի հարգված էին, իսկ տպագիր

գրքերի նկատմամբ այն ժամանակ շատերի մեջ նախապաշարում կար։ Հակոբ Մեղապարտը իր գրքերում օգտագործել է նաև հատուկ ոճի բազմաթիվ զարդագրեր։ Վերնախորագրերի համար գործածել է երեք խումբ զարդ-շրջանակներ (24 հատ), որոնք փոխնիփոխ դրված են բոլոր էջերի վերևի մասում։ Բացի դրանցից, կան չորս գեղեցիկ զարդարանքներ «արաբեսկ» ոճի, որոնք օգտագործված են բոլոր հինգ գրքերի մեջ, բայց ամենից շատ «Տաղարանում»։

Հակոբի տպագրությունը երկգույն է՝ սև և կարմիր։

Գրքերի վերջում դրոշմված է խաչաձև տպարանանիշ, լատինական չորս տառերով՝ D. I. Z. A.: Եղել են այս տառերի մի շարք վերծանումներ, ամենից հավանականը Կ. Բասմաջյանինն է՝ D.—Dei servus (Աստծո ծառա), I.—Iacobus (Հակոբ), Z.—Zannix (Ծաննիկյան կամ Հովհաննիսյան), A.—Armenius (Հայ)[2]։

Հակոբ Մեղապարտի տպագրած գրքերի բովանդակությունը բազմազան է։ Միջնադարում թե պատարագատետրերն ու սաղմոսարանները, թե ուրբաթագրքերն ու աղթարքները և թե պարզատումարներն ու տաղարանները ձեռագիր ընդօրինակություններով շատ տարածված են եղել հայոց մեջ։ Ընդ որում, բացի «Պատարագատետրից», որ եկեղեցու ծիսական գլխավոր գրքերից էր, մյուսներն ընթերցվել են եկեղեցականների և աշխարհականների կողմից։ Այդպիսով Հակոբը հաշվի է առել ժամանակի պահանջը և հրատարակության համար ընտրել է Հայաստանում և հայ գաղթավայրերում շատ գործածվող ու ընթերցվող գրքեր։ Ըստ բովանդակության այդ գրքերը կարելի է երեք տեսակի բաժանել. եկեղեցական («Պատարագատետր», «Սաղմոսարան»), առօրյա գործածության կիսաաշխարհիկ այնպիսի գրքեր, ինչպես բժշկարաններ, օրացույց և այլն («Ուրբաթագիրք», «Աղթարք», «Պարզատումար») և գեղարվեստական («Տաղարան»)։ Հատկապես վերջին դեպքում կատարած ընտրությունը և նրա ամենից ավելի խնամքով, շքեղ հրատարակությունը խոսում է տպագրիչի հակումների ու ճաշակի մասին. Հակոբի հրատարակած «Տաղարանը», որ պարունակում է Շնորհալու, Ֆրիկի, Հովհաննես Թլկուրանցու, Մկրտիչ Նաղաշի և այլոց գործերը, միջնադարյան բանաստեղծության մի ուշագրավ և հետաքրքրական ժողովածու է։

Հակոբի տպարանը աշխատել է առավելագույնը 2—3 տարի։ Դրանից հետո հայկական տպագրության կեսդարյա դադար է տեղի ունեցել։ Չնայած դրան, հակոբյան հրատարակությունները հիմք ու ելակետ են եղել հայկական տպագրության շարունակման համար։ Հայ երկրորդ տպագրիչը՝ Աբգար Թոխաթցին, իր տպագրական աշխատանքն սկսելուց առաջ ձեռքի տակ է ունեցել Հակոբի հրատարակությունները։ Դա երևում է նախ Աբգարի գրքերի տպագրական արվեստից. օգտագործված են այնպիսի ոճի զարդագրեր, որպիսիք տեղ են գտել առաջին տպագրիչի հրատարակություններում, ապա իր նախորդի օրինակով Աբգարը նույնպես ձեռագրանման տառեր է պատրաստել տվել։ Ուշադրություն է գրավում նաև այն, որ երկրորդ տպագրիչը մասամբ կրկնել է առաջինի հրատարակությունները («Պատարագատետր», «Պարզատումար», «Տաղարան», «Սաղմոսարան»)։

Աբգար Դպիր Թոխաթցին հայտնի անձնավորություն է՝ XVI դարի ազատագրական շարժումների մասնակից։ Նա ժամանակի զարգացած մարդկան-

---

[2] Տե՛ս «Արմենիա», 1912, № 39։

ցից էր։ Միքայել Սեբաստացի կաթողիկոսի հանձնարարականով 1562 թ. նա մեկնում է Իտալիա, իր որդի Սուլթանշահի և մի քահանայի ուղեկցությամբ։ Հռոմ է հասնում 1564-ին։

Պատգամավորության նպատակն էր Հռոմի ուշադրությունը դրավել Հայաստանի ազատագրության հարցի վրա։ Սակայն այդ ուղևորության միակ շոշափելի արդյունքը լինում է հայկական նոր տպագրության կազմակերպումը։

XVI դարի 60-ական թվականներին Իտալիայում ուժեղացել էին կաթոլիկական համատաքննությունն ու գրաքննությունը։ Այս երկրում հայերեն գրքեր տպագրելը շատ ավելի դժվար էր, քան Հակոբ Մեղապարտի օրերին։ Աբգարը կարողանում է Հռոմի պապից հայերեն տպատառեր պատրաստելու թույլտվություն ստանալ, որ ինքնըստինքյան մեծ հաջողություն էր այն օրերին։ Տպատառերը պատրաստել է տալիս Հռոմում և Կ. Պոլիս վերադառնալիս բավական ժամանակ կանգ է առնում Վենետիկում։ Այստեղ 1565 թ. նրա ջանքերով լույս է տեսնում մի մեծադիր թերթի վրա տպագրված տոմարացույց՝ «Խառնայփնթուր տումարի» վերնագրով, որի ճակատին կա երկու հետաքրքրական նկար։ Առաջինում պատկերված է ինքը՝ Աբգարը իր որդու հետ Հռոմի պապի և մի կարդինալի առջև. հայերեն տպատառերը ձեռքին, իսկ մյուս նկարում Աբգարը Վենետիկի դոժի և մեծամեծների առջև է կանգնած։ 1565—1566 թթ. Աբգար Թոխաթցին տպագրում է մի Սաղմոսարան (որի մեջ նույնպես տպված են վերոհիշյալ նկարները), այնուհետև, տպագրական պարագաները վերցրած, մեկնում է Կ. Պոլիս։

Այստեղ Աբգարի տպարանը գործում է Քեֆալի թաղի ս. Նիկողայոս եկեղեցում և լույս է ընծայում «Տօնացոյց», «Ժամագիրք» և «Պատարագամատոյց» (այս երկուսը մի գրքով), «Պարզատումար», «Տաղարան» (1568) և «Մաշտոց» (1569)։ Նախքան այդ՝ 1567-ին Կ. Պոլսում տպագրվել էր «Փոքր քերականութիւն», որ նույնպես Աբգարի հրատարակությունն է համարվում, թեև հիմք կա մտածելու, որ դա Աբգարի տպագրությունը չէ, այլ Հոթար անունով անծանոթ մի տպագրիչի։

Աբգարի ծառայությունը եղավ ոչ միայն այն, որ նա նոր կյանք հաղորդեց հայ տպագրության ընդհատված գործին, այլև այն, որ տպագրությունը հաստատեց հայաշատ մի քաղաքում, որն ավելի ուշ պետք է դառնար հայկական գրահրատարակչության գլխավոր կենտրոնը։

Աբգար Թոխաթցու որդի Սուլթանշահը (Մարկ-Անտոնիո) բնակություն է հաստատում Հռոմում և այստեղ ուսումնասիրում լատինական դպրությունը, նկատելի դեր ձեռք բերում Վատիկանում։ Շուտով նրան է միանում քահանա Հովհաննես Տերզնցին, որն իր որդի Խաչատուրի հետ Հռոմ էր եկել Հայաստանից (Տերզնցին Բաղեշի շրջանից էր, ապրել էր նաև Տիգրանակերտում)։

Այս երկուսի ջանքերով 1584 թ. Վատիկանի նախաձեռնությամբ Հռոմի Dominici Basea տպարանում լույս է տեսնում այդ ժամանակ գահակալող Գրիգոր XIII պապի կազմած նոր տոմարի հայերեն թարգմանությունը՝ «Տօմար Գրիգորեանն յաւիտենական»։ Տպագրությունը կատարվում է հայերեն այն տառերով, որոնք 1579 թ. պատրաստել էր ֆրանսիացի դրաձույլ Ռոբերտ Գրանժոնը՝ Սուլթանշահի օգնությամբ։ Այս տառերի առանձնահատկությունն այն էր, որ սրանք իրենց գծագրությամբ և չափով այլևս ձեռագրակերպ չէին, այլ՝ տպագրական, նման ժամանակակից հայերեն տպագիր տառերին։ Այս

տառիրը XVII դարի սկզբներից օգտագործվեցին Վատիկանի Հավատի տարածման ժողովի նշանավոր տպարանում։

Սուլթանշահը 1586-ին Հռոմում տպագրում է հայկական «Մաշտոցից» մի հատված, իսկ Տերզնցին նույն թվականին անցնելով Վենետիկ, այնտեղ նոր տառեր է պատրաստել տալիս և մի տարի անց լույս ընծայում «Սաղմոսարան»։ Երկգույն, մանր տառերով տպագրված այս գիրքը պարունակում է Տերզնցու և նրա որդուն ներկայացնող դիմանկար, իսկ հիշատակարանը պատմում է Իտալիայում տպագրիչի անցկացրած արկածալից կյանքի մասին։

Ակնհայտ է հայ հին տպագրիչների հակումը Սաղմոսարան հրատարակելու նկատմամբ։ Ինչպես XVI դարում, այնպես էլ հետագայում, հայ տպագրիչներն իրենց գործը կամ սկսում էին Հին Կտակարանի այս գրքի տպագրությամբ, կամ այլ առիթով էին այն լույս ընծայում, հաճախ մի քանի անգամ։ Դրա պատճառն այն էր, որ Սաղմոսարանը ոչ միայն եկեղեցական, այլ նաև աշխարհիկ ընթերցանության գիրք էր։ Փոքր չափսով հրատարակած Սաղմոսարաններ երկրից-երկիր իրենց հետման էին ածում ու կարդում նաև կիսագրագետ հայ վաճառականները, այդ գրքերով մայրենի լեզու էին սովորում գեռահասները։

Հովհաննես Տերզնցու գործունեությամբ ավարտվում է հայ տպագիր գրքի պատմության առաջին՝ վաղ շրջանը և սկսվում հաջորդը։

Հակոբ Մեղապարտից մինչև Տերզնցի մեսրոպատառ շատ գրքեր չտպագրվեցին, բայց ստեղծվեցին ավանդներ, մանավանդ վստահություն հայկական ինքնուրույն տպագրություն ունենալու հնարավորության նկատմամբ[3]։ Միջնադարյան հայ գրչի աշխատանքին զուգահեռ մշակութային ասպարեզ էր մտնում հայ տպագրիչը, որի աշխատանքը պատմական զարգացման ընթացքով աստիճանաբար պետք է գերակշիռ դառնար և ի վերջո ասպարեզից հաներ գրչության արվեստը։ Հայ հին տպագրիչները ժամանակի մշակութային-լուսավորական առաջապահիկ գործիչներ էին։ Նրանք միայն տպագրիչ չէին սովորական իմաստով, այլ նաև հրատարակիչ, խմբագիր, սրբագրիչ և ամենից ավելի իրենց գործով խանդավառված, հայ գրքին նվիրված անձինք։ Նրանք սովորաբար ժամանակի բարձր կրթություն ստացած, լեզվական ու բնագրագիտական հմտություն ու գիտելիքներ ունեցող մարդիկ էին։

XVII դարում հայ տպագրության զարգացումը երկու կարևոր շրջան ունեցավ. ա) մինչև 1660-ական թվականներ (մինչև ամստերդամյան տպագրության սկիզբը) և բ) 1660-ական թվականներից սկսած։

1616 թ. Լվովում տպարան է սարքավորում և հայերեն գրքեր տպագրում տեղի հայկական եկեղեցու քահանա, բաղիշեցի Հովհաննես Քարմատանենցը։ Նրա հրատարակած գրքերից պահպանվել են Սաղմոսարանը (1616) և մի հայատառ ղփչաղերեն աղոթագիրք (1618)։ Կա հիշատակություն Քարմատա-

---

[3] Հայկական տպագրության այս վաղ շրջանում, բացի հայերից, մեսրոպատառ տպագրություն կատարեցին նաև մի քանի եվրոպացիներ։ Այսպես, հայատառ փայտափորագիր տպագրությունը տեղ գտավ Փարիզում լույս տեսած հետևյալ երեք գրքերի մեջ. արևելագետ Գուլիելմ Պոստելի «Linguarum»-ում (1538), Բլեզ դը Վիժների «Ձեռնարկ ծածկագրերի մասին» աշխատության մեջ (1586) և Պետրոս Գետանոս Պալմայի «Նմուշներ»-ում (1596)։ Հայկական տպագիր հատվածներ (շարժական տառերով) կան իտալացի արևելագետ Թեսեոս Ամբրոսիոսի «Introductio» (Ներածություն) գրքում (Պավիա, 1539), գերմանացի հեղինակ Լեոնարդ Թույնայզերի երկու աշխատություններում (Բեռլին, 1583)։

նենցի լույս ընծայած մի բժշկարանի մասին, որը, սակայն, չի պահպանվել։ Ուշադրություն է գրավում հայատառ ղփչաղերեն գրքի տպագրությունը։ Այն ժամանակ Լվովի շրջակայքի հայության մի զգալի մասի խոսակցական լեզուն ղփչաղերենն էր, ուստի և այդ լեզվով հրատարակված գիրքը ժողովրդի ընթերցանության համար էր նախատեսված։

XVII դարում հայ եկեղեցին ավելի գործուն քայլեր է անում եվրոպական երկրներում, առաջին հերթին Իտալիայում հայերեն գրքերի առավել զանգվածային տպագրություն կազմակերպելու ուղղությամբ։ 1630 թ. Մովսես Դ կաթողիկոսն է դիմում Հռոմի պապին հայերեն գրքեր հրատարակելու խնդրով[4], նույն ժամանակ նման խնդրանքով Վատիկանին դիմում են Նոր Ջուղայի հայ հոգևորականները[5]։ Նրանք առաջարկում են ջուղայեցի վաճառականների ծախսերով Հռոմում հիմնել տպարան և ձեռնարկել հայերեն գրքերի տպագրությանը։ Այս կարգի դիմումներում ամենից հաճախ խոսքը վերաբերում էր հայերեն Աստվածաշունչ հրատարակելուն։ Պատճառն այն էր, որ Աստվածաշնչի գրչագիր օրինակներ շատ քիչ կային և այդ մեծածավալ գրքի ձեռագիր ընդօրինակումը դժվարին գործ էր։

Հայերի անունից Աստվածաշունչ տպագրելու խնդրանքով Վատիկանին է դիմում նաև Զմյուռնիայում Վենետիկի հանրապետության դեսպանի թարգման Հովհաննես Անկյուրացին (Մոլինոն)։ Վերջինս նաև Հռոմին ակնարկում է այն մասին, որ բացառված չէ հայերեն Աստվածաշունչը բողոքական («հերետիկոսական») Հոլանդիայում տպագրելու հնարավորությունը։ Ինքը՝ Անկյուրացին, որ հայ գրքի խանդավառ երկրպագուներից էր, 1642 թ. սեփական միջոցներով Վենետիկում տպագրում է մի Սաղմոսարան, իսկ հաջորդ տարին՝ Ներսես Շնորհալու «Յիսուս որդին»։ «Եդի ի մտի կտպագրութեան արհեստն առ ի պայծառութիւն ազգիս հայոց»,—գրում է Անկյուրացին իր հիշատակարանում։

Նորջուղայեցիները տեսնելով, որ Հռոմը իրենց խնդրանքը չի կատարում, Իտալիա են ուղարկում Ամենափրկիչ վանքի միաբան Հովհաննես Ջուղայեցուն, որպեսզի նա սովորի տպագրական արվեստը և, վերադառնալով Նոր Ջուղա, տպագրի Աստվածաշունչ ու այլ գրքեր։ Հովհաննեսը, իրոք, սովորում է տպագրական գործը և Լիվոռնոյում 1644 թ. իր նորաձույլ տառերով տպագրում գարձյալ Սաղմոսարան։

Սակայն, նախքան այդ, Նոր Ջուղայում արդեն սկսել էր գործել տպագրական հաստոցը։ Ամենափրկիչ վանքի միաբանները Խաչատուր Կեսարացու նախաձեռնությամբ ու ղեկավարությամբ կարողանում են ստեղծել հայերեն տպագրական մամուլ և այդ ինքնաշեն տպարանում, 1638 թ. լույս են ընծայում մի Սաղմոսարան։

Այն ժամանակներում ավատական Պարսկաստանի խորքում, եվրոպական մշակութային կենտրոններից հեռու ընկած այդ վայրերում, տպագրական գործին ձեռնարկելը մեծ հանդգնություն էր։ Տպարանը սարքավորողներից ու այնտեղ աշխատողներից ոչ մեկը չէր տեսել տպագրական որևէ պարագա, ծանոթ չէր տպագրական գործին։ Նրանք առանց դրսից եկած որևէ վարպետի օգնության, ինքնուրույն պատրաստում են տպարանը, հաստոց և այլ պիտույք-

---

[4] Տե՛ս «Հանդես ամսօրյա», 1934, էջ 524։

[5] Տե՛ս նույն տեղում, էջ 524—525։

ներ ու սկսում Սաղմոսարանի հրատարակությունը։ Դա, ըստ էության, տպագրության գյուտի հայկական կրկնությունն էր, կատարված մի քանի համարձակ ու հնարամիտ մարդկանց կողմից և ամենից ավելի խաչատուր Կեսարացու ջանքերով։

Ահա Պարսկաստանում հիմնված առաջին տպարանի անդրանիկ հրատարակության հիշատակարանից մի հատված. «...Եղև տպագրութիւնս ի քաղաքն Շօշ, յանապատն Ջուղայոյ, թուին ՌՁ և է (1638), ձեռամբ նուաստ խաչատուր վարդապետի Կեսարացւոյ։ Տարի մի է և հինգ ամիս, որ զցայգ և զցերեկ անդադար աշխատիմք հանդերձ միաբան ուխտիս, զի ոչ եմք տեսեալ ի վարպետէ և ոչ ունիմք ուսուցիչ»։

Տպարանը 1641 թ. լույս ընծայեց ևս երկու գիրք՝ «Հարանց վարք» ու «Խորհրդատետր», հաջորդ տարին՝ «Ժամագիրք ատենի»։ Նոր Ջուղայի այս հրատարակությունները տպագրական արվեստի տեսակետից շատ պարզունակ են՝ տառերը անհստակ, ղարդերը՝ շատ քիչ ու հասարակ, սակայն այսօր այդ գրքերը պատկառանքի մեծ զգացում են առաջացնում՝ իրենց ստեղծողների դժվարին ու անձնվեր աշխատանքի նկատմամբ։

Շուտով Եվրոպայից Նոր Ջուղա է վերադառնում տպագրական գործին վարժված Հովհաննես Ջուղայեցին։ Նա այստեղ 1647-ին տպագրում է Աղաբիայի «Պարզատումարը», իսկ 1650 թ. սկսում Աստվածաշնչի տպագրությունը, որը սակայն ընդհատվում է առաջին մամուլների տպագրությունից հետո. պարզունակ տպարանում հնարավոր չի լինում հրատարակել այդպիսի մի ծավալուն և բարդ բնագիր։

Նոր Ջուղայի տպարանը ի վիճակի չեղավ նկատելիորեն լրացնելու հայ գրքի պակասը կամ բավարարելու դեթ եկեղեցու պահանջների մի մասը։ Պարզ էր դառնում, որ հայերեն գրահրատարակության հարցը ավելի հեշտ կարող էր լուծվել Եվրոպայում։

1656 թ. Հակոբ Դ Ջուղայեցի կաթողիկոսը էջմիածնի դպիր Մատթեոս Ծարեցուն ուղարկում է Եվրոպա՝ տպագրական գործերով։ Ծարեցին նախ գիմում է Հռոմ։ Հաջողության չհասնելով մեկնում է բողոքական Հոլանդիա և իր գործունեության վայր ընտրում առևտրաշատ Ամստերդամը։ Այստեղ էջմիածնի պատվիրակը մեծ կամք ու տոկունություն է ցուցաբերում, հաղթահարում բազմապիսի դժվարություններ։ Նա, իր խոսքով ասած. «ի ցայգ եւ ցերեկ մահու չափ աշխատելով միայն և առանց ուրեք օգնականի, յերկարելով յաշխատութիւնս Դ ամ և Ը ամիս, զանձն առնելով զվիշտս և զտառապանս...» ի վերջո կարողանում է ստեղծել բաղձալի տպարանը և իբրև փորձ սկսում տպագրել Շնորհալու «Յիսուս որդին»։ Տպարանի խոշոր բոլորագիր և գլխագիր տպատառերը Ծարեցու տված գծագրերով պատրաստում է նշանավոր էլզեվիրների տպարանատան փորագրիչ-գրաձույլ Վան Դիկը։ Ծարեցին հոլանդական մի տպարանից գնում է նաև այն ժամանակ հայտնի նկարիչ-փորագրիչ Քրիստոֆել վան Զիխեմ Կրտսերի տպատախտակները, որոնք Աստվածաշնչի թեմաներով պատկերներ էին պարունակում՝ մեծ մասամբ ընդօրինակված եվրոպացի նշանավոր վարպետների հայտնի գործերից։

Ծարեցուն վիճակված չէր տեսնելու իր հիմնադրած տպարանի երախայրիքը։ Նա մահանում է 1661 թ. սկզբներին մենակության, օտարության մեջ։ Տպարանի տնօրինությունն ստանձնում է այդ ժամանակ առևտրական գործերով Ամստերդամում գտնվող ջուղայեցի վաճառական Ավետիս Ղլիճենցը, որը

վճարում է Ծարեցու պարտքերը, տպարանը փրկում պարտքատերերից և փորձում շարունակել «Յիսուս որդու» ընդհատված տպագրությունը։ Ավետիսը կիսագրագետ մարդ էր, նրա համար շատ դժվար էր տպագրական աշխատանքով զբաղվելը և նա ստիպված նամակով Ամստերդամ է կանչում իր եղբորը՝ Ոսկան Երևանցի վարդապետին, որն այն ժամանակ Ուշի գյուղի ս. Սարգիս վանքի վանահայրն էր, ճանաչված իր գրագիտությամբ ու զարգացմամբ։

Նախքան Ոսկանը կհասներ Ամստերդամ, նրա աշակերտ Կարապետ Անդրիանացին արդեն ստանձնել էր տպարանի ղեկավարությունը, հրատարակել չորս գիրք (երկու Ժամագիրք, երկու Սաղմոսարան) և սկսել հինգերորդի՝ մի Շարակնոցի տպագրությունը։ 1664-ին Ոսկանը հասնում է Ամստերդամ և Ագրիանացու հետ ավարտում սկսած տպագրությունը։ Դա առաջին տպագիր Շարակնոցն էր, հրատարակված մեծ խնամքով, պատկերազարդ։ Ապա տպարանը, որ կոչվում էր ս. Էջմիածնի և ս. Սարգսի անվամբ, լույս է ընծայում մի Այբբենարան և Ոսկանի հեղինակած «Քերականութեան գիրքը», որոնք փորձնական տպագրություններ էին Աստվածաշնչի հրատարակությանը նախապատրաստվելու ճանապարհին։ Այդ առնչությամբ Ոսկան Երևանցին այլ նախապատրաստական աշխատանքներ էլ է անում. լրացնում է տառատեսակները, ավարտում է դեռևս Հայաստանում սկսած խմբագրական աշխատանքը Աստվածաշնչի բնագրի վրա, վարժում է իր օգնականներին տպագրական գործում։ 1666 թ. մարտի 11-ին Ոսկանը իր օգնականներ Կարապետ Անդրիանացու և Սհան Երևանցու հետ սկսում է Աստվածաշնչի տպագրությունը, որը տևում է ավելի քան երկուսուկես տարի (լույս է տեսնում 1668 թ. վերջին)։ Այդպիսով, իրականանում է հայերեն Աստվածաշնչի տպագրության դժվարին գործը, որը նախքան այդ, քանիցս ձախողվել էր։

Ոսկանյան Աստվածաշունչը հայ հին տպագրության պսակն է, հայոց հրատարակչական գործի հասունության արտահայտությունը։ Այդ մեծածավալ (1462 էջ կամ 2924 սյունակ, 159 պատկեր) գիրքը հայ տպագրիչ վարպետները՝ հրատարակեցին մեծ խնամքով, բարձր արվեստով։

Ոսկանյան տպարանը Ամստերդամում գործում է մինչև 1669 թ.՝ լույս ընծայելով ևս 11 անուն գիրք, այդ թվում Մաշտոց, Նոր կտակարան, Մովսես Խորենացուն վերագրվող «Աշխարհացույցը», «Աղուէսագիրքը» (Վարդան Այգեկցու առակները), Առաքել Դավրիժեցու «Գիրք պատմութեանը» և այլն։ Վերջինս առաջին հայերեն տպագիր գիրքն է, որ հրատարակվել է հեղինակի կենդանության օրոք։

Հոլանդիայում հայկական տպագրական գործը ազատ էր կաթոլիկական գրաքննության սահմանափակումներից, սակայն այս երկրում էլ կային ուրիշ դժվարություններ, որոնցից ամենալուրջը տպարանի նյութական նեղվածությունն էր։ Հայ մշակութային կյանքում այնքան մեծ դեր ունեցող տպարանը հոլանդացի պարտքատերերի ճնշման տակ փակվելու վտանգի տակ էր, երբ Ոսկանը 1668 թ. սկսում է տպագրական կյանքը տեղափոխել Լիվոռնո։

Այս քաղաքում տպարանը լույս է ընծայում երեք անուն գիրք, ապա տեղափոխվում է Մարսել և 1673 թ. վերսկսում աշխատանքը, գործում մինչև 1680-ական թվականների վերջերը՝ լույս ընծայելով ևս 16 անուն գիրք։

Մարսելում 1673 թ. Ոսկան Երևանցին սկսում է Գրիգոր Նարեկացու «Մատեան ողբերգութեան» երկի անդրանիկ տպագրությունը, սակայն գրաքննության կասկածների պատճառով այն մնում է անավարտ։ Տպարանի նյու-

թյական ծանր վիճակը և աշխատողներից մեկի խարդավանքները ընկճում են Ոսկան Երևանցուն, վնասում նրա առողջությանը։ Նա ընկնում է անկողին և մահանում 1674 թ. փետրվարի 4-ին։

Տպարանի ղեկավարությունն անցնում է Ոսկանի ազգական Սողոմոն Լեոնյանին, իսկ իբրև գլխավոր վարպետ շարունակում է աշխատել Ոսկանի աշակերտներից Մատթեոս Վանանդեցի Հովհաննիսյանը, որը հայ հին տպագրության մեծ երախտավորներից է։

Ս. Էջմիածնի և ս. Սարգսի անվան տպարանը դրահրատարակչական շատ կարևոր կենտրոն եղավ հայոց համար։ Երեք քաղաքներում գործելով մոտ 30 տարի, այդ տպարան-հրատարակչությունը լույս ընծայեց ավելի քան չորս տասնյակ անուն հայերեն գրքեր։

Ոսկանի տպարանը կարևոր դեր կատարեց հայերեն գրքերի տպաքանակը մեծացնելու գործում. Նախկինում ընդունված 300—400 օրինակի փոխարեն այս տպարանում սովորական էր գիրքը մի քանի հազար օրինակով տպագրելը։ Դրա շնորհիվ էր, որ նկատելիորեն սկսեց լրացվել հայ գրքի պակասը. բավարարվում էին ոչ միայն եկեղեցու պահանջները, այլև հայ գիրքը թափանցում էր ժողովրդի մեջ[6]։

Այս տպարանի շնորհիվ ստեղծվեց անընդմեջ գործող հայկական դրահրատարակչությունը. մինչ այդ կարճ ժամանակով հայտնվող ու մարող տպագրական օջախների փոխարեն սկիզբ առավ հայկական այն դրատպությունը, որն այլևս չընդհատվեց և հասավ մինչև մեր օրերը։ Ոսկանը պատրաստեց առաջնակարգ տպագրիչներ, որոնք տարբեր վայրերում շարունակեցին նրա գործը։

Մշակութային-լուսավորական կարևոր դեր կատարեց նաև վանանդեցիների տպարանը Ամստերդամում, որի հիմնադիրն էր Ոսկան Երևանցու աշակերտ Մատթեոս Վանանդեցին։ Սա հայերեն նոր, ավելի կատարելագործված տառաշար է պատվիրում հունգարացի նշանավոր գրաձույլ Նիկողայոս Քիշին, սարքավորում տպարան և 1685 թ. տպագրում մի Շարակնոց։ Ապա՝ տպարանի գլուխ է անցնում Մատթեոսի ազգական Թովմաս Վանանդեցի Նուրիջանյանը, որին Հայաստանից (Գողթան գավառից) հրավիրել էր Մատթեոսը։ Սրանց են միանում նաև Թովմասի եղբորորդիներ, գիտնական եղբայրներ Ղուկաս և Միքայել Նուրիջանյանները, առաջինը վարժ էր ոչ միայն հայկաբանության, այլև բնական գիտությունների ու փիլիսոփայության բնագավառում։

Վանանդեցիները 1695 թ. լույս են ընծայում աշխարհի առաջին հայերեն տպագիր քարտեզը՝ «Համատարած աշխարհացույցը» (կիսագնդեր)։ Դա մի մեծադիր (150×118 սմ), պղնձափորագիր հրատարակություն է, կատարված բարձր ճաշակով։ Նույն թվականին վանանդեցիներն առաջին անգամ տպագրում են նաև Մովսես Խորենացու հռչակավոր «Հայոց պատմութիւնը»։ Այնուհետև, հոգևոր գրքերի հետ տպարանը հրատարակում է այնպիսի աշխարհիկ գրքեր, ինչպես Ղուկաս Վանանդեցու «Գանձ չափոյ, կշռոյ, թուոյ և դրամից բոլոր աշխարհի» գիրքը, նախատեսված վաճառականների համար, Ղուկաս և Մատթեոս Վանանդեցիների համատեղ հեղինակած «Դուռն իմաստութեանը» (հայերենի քերականության դասագիրք), «Բնաբանութիւն իմաստասիրականը»

---

[6] Հայ գրքերը, սովորաբար, ծովային ճանապարհով բերվում էին մինչև Զմյուռնիա, իսկ այստեղից տարբեր փոխադրամիջոցներով հասցվում Հայաստանի գավառները։

(օդերևութաբանության և բնության այլ երևույթներին նվիրված աշխատություն) և այլն։

Հոլանդական վավերագրերը վկայում են, որ Թովմաս Վանանդեցին 1705 թ. ջանքեր է թափել իր տպարանը հայրենիք տեղափոխելու, բայց հաջողության չի հասել։ Թովմասը մահացել է 1711 թ., որից հետո տպարանը աշխատել է ևս վեց տարի։



Հայ տպագրության մեկենաս ագուլեցի խոջա Նահապետը

Վանանդեցիները Ամստերդամում կապեր են հաստատում ժամանակի մի քանի նշանավոր մարդկանց, այդ թվում հռչակավոր գերմանացի փիլիսոփա Գոտֆրիդ Լայբնիցի հետ։ Ղուկաս Վանանդեցու մոտ հայերեն է սովորում գերմանացի արևելագետ Յոհան Յոախիմ Շրյոդերը, որը Ամստերդամում 1711 թ. հրատարակում է իր «Արամեան լեզուին գանձ» հայագիտական աշխատությունը, ուր գրաբարի հետ տրված է նաև աշխարհաբարի (արևելահայ) քերականությունը։ Իր աշխատությունը գրելիս Շրյոդերը մեծապես օգտվել է

Վանանդեցիների ծառայություններից, իսկ գրքի հայերեն հատվածների տպագրության համար օգտագործել է նրանց տպատառերը։

1717 թ. պարտքատերերը բռնագրավում են Վանանդեցիների տպարանը և հայ մշակույթի ամստերդամյան այս կենտրոնը դադարում է գոյություն ունենալուց։ Դրանով եվրոպական երկրներում երկար ժամանակով ընդհատվում է հայկական ինքնուրույն գրահրատարակչությունը, մինչև որ 1776 թ. Տրիեստում և 1789 թ. Վենետիկում (Ս. Ղազարում) բացվում են Մխիթարյան տպարանները (ընդ որում, Ս. Ղազարի տպարանի համար Ամստերդամում գնվում են Վանանդեցիներից ժամանակին բռնագրավված տպատառերը)։

Հայկական տպագրությունն իր հետագա կյանքը պահելու և նոր զարգացում ապրելու համար պետք ուներ հայկական հոծ միջավայրի. անհրաժեշտ էր, որ տպագիր գիրքը գնորդ ունենար հենց տպարանի մոտ։ Մյուս կողմից Հայաստանում տպարան հիմնելու ժամանակը դեռևս չէր հասունացել։

Այս հիմնական պատճառներն էին, որ XVII դարի վերջից հայկական տպագրության զարգացումը Եվրոպայից արագ թափով տեղաշարժվում է դեպի Կ. Պոլիս, իսկ XVIII դարում այս քաղաքը դառնում է հայ տպագրության գլխավոր կենտրոնը. այստեղ լույս են տեսնում մոտ 300 անուն հայերեն գրքեր։ Ոչ մի քաղաքում մինչև 1800 թ. այսպիսի քանակով հայերեն գրքեր չէին տպագրվել. (Վենետիկը երկրորդ տեղում է, մինչև 1800 թ. այնտեղ տպագրված շուրջ 250 անուն հայերեն գրքերով)։

Կ. Պոլսում Աբգար Թոխաթցու տպարանի փակվելուց հետո (1569) ավելի քան հարյուր տարի հայերեն գրքեր չեն տպագրվում։ 1677 թ. այստեղ տպարան է հիմնում նշանավոր գիտնական և հասարակական գործիչ Երեմիա Չելեպի Քյոմուրճյանը։ Նրա տպարանը 1677—1678 թթ. լույս է ընծայում երկու անուն գիրք, որոնցից մեկը՝ «Տեղեաց տնօրինականացը» (աստվածաշնչային վայրերի նկարագրությունը), իր՝ Քյոմուրճյանի հեղինակածն էր։

Դարավերջին Կ. Պոլսում տպագրական գործունեություն է սկսում Բաղեշի Ամրդոլու վանքի նախկին դպիր, ծաղկող (նկարիչ) Գրիգոր Մարզվանեցին։ Նա սովորում է գրաձուլական գործը, պատրաստում է տպատառեր, պատկերների ու զարդերի տպատախտակներ և շուրջ չորս տարվա աշխատանքից հետո 1698 թ. լույս է ընծայում «Տաղարան»։ Սրանով սկիզբ է դրվում Կ. Պոլսի հայկական տպագրության մի մեծ ու բեղմնավոր ժամանակաշրջանի, որն ընդգրկում է ամբողջ XVIII դարը և հաջորդ դարի առաջին կեսը։

Մարզվանեցու թողած հիշատակարաններից պարզ է դառնում, որ նա հայ գրքի նշանակությունը խորապես գիտակցող անձնավորություն է եղել։ Լինելով տաղանդավոր նկարիչ, Մարզվանեցին պատրաստում է տպագրական բազմաթիվ զարդեր, ինչպես նաև ստեղծագործում շատ դիմանկարներ ու խմբանկարներ՝ իր կողմից հրատարակվող գրքերի բովանդակության համեմատ։ Դրանով նաև նոր շրջան է բացում հայկական գրքային գծանկարչության բնագավառում։

Մարզվանեցու տպագրական գործունեությունը որոշ ընդմիջումներով տևում է 40 տարի (մինչև 1734 թ.), նա հրատարակում է մեկ ու կես տասնյակ անուն գիրք՝ առաջին անգամ լույս ընծայելով հայ հին մատենագիրներից Աբրահամ Կրետացու «Պատմությունը» (1709), Զենոբ Գլակին վերագրվող «Գիրք պատմութեանց երկրին Տարօնոյ» երկը, Գրիգոր Տաթևացու «Գիրք հարցման-

յը» (անավարտ տպագրություն)։ Տպագրական արվեստի լավագույն նմուշ էր մեծածավալ «Յայսմաւուրքի» առաջին հրատարակությունը (1707)։

Մարզվանեցու տպարանի աշխատակից Աստվածատուր Դպիր Կոստանդնուպոլսեցին, դուրս գալով այդ տպարանից, հիմնում է իր սեփականը և 1699 թ. լույս ընծայում մի Շարակնոց։ Դրանով սկսվում է պոլսահայ տպագրության մյուս խոշոր ներկայացուցչի շատ բեղմնավոր գործունեությունը, որը տևում է մոտ 50 տարի։

Աստվածատուրը հրատարակում է ավելի քան ութ տասնյակ անուն գրքեր՝ ամենից ավելի հայկական եկեղեցու պետքերի համար։ Նա առաջին անգամ հրատարակում է Գրիգոր Նարեկացու «Մատեան ողբերգութեանը» (1701—1702) ամբողջությամբ, ապա՝ Կյուրեղ Աղեքսանդրացու «Գիրք պարապմանցը» (1717), Սիմեոն Ջուղայեցու «Գիրք Տրամաբանութեանր» (1728), Հաննա Հովհաննեսի «Պատմութիւն Երուսաղեմին» (1730), Դավիթ Անհաղթի «Գիրք սահմանացը» (1731) և այլն։

Աստվածատուր Դպրի տպարանում աշխատել և այնտեղ իր որոշ երկեր լույս է ընծայել նշանավոր բանաստեղծ Պաղտասար Դպիրը։

XVIII դարի ընթացքում Կոստանդնուպոլսում գործած մյուս հայկական տպարաններից կարելի է հիշել հետևյալները՝ Սարգիս Դպրի և նրա որդի Մարտիրոսի ու թոռների, Ջնչին Հովհաննեսի, Սեբաստացիների, Աբրահամ Թրակացու, Ստեփանոս Պետրոսյանի, Արապյանների «Մայր գրատան», Մատթեոս Դպրի և այլն։

Հատկապես նշանակալից եղավ Արապյանների դերը։ Սրանց տպարանում լույս են տեսել շուրջ 150 անուն հայերեն գրքեր ու պարբերականներ, բարձրորակ տպագրությամբ։ Այս գերդաստանի նշանավոր դեմքը Պողոս Արապյանն էր (1742—1835), որ Օսմանյան կայսրության մեջ հռչակված գրաձույլ էր և տպագրիչ։ Նա 70 տարի բեղմնավոր աշխատել է տպագրության բնագավառում, եղել է Թուրքիայի արքունի տպարանապետը, պատրաստել է հայկական տարբեր տեսակի շատ տպատառեր, հորինել է թուրքերեն տպագրության համար նոր տառատեսակներ, ձուլել է վրացական տառեր։

Ամբողջ XVIII դարի ընթացքում Կոստանդնուպոլսում գործել են շուրջ երկու տասնյակ հայկական տպարաններ, որոնք մեսրոպատառ գիրք են մատակարարել ինչպես տեղի հայությանը, այնպես էլ Հայաստանին ու հայաշատ այլ շրջաններին։

Թուրքիայում, բացի Կոստանդնուպոլսից, XVIII դարում տպագրություն է եղել նաև Զմյուռնիայում։ Այս քաղաքում Մահտեսի Մարկոս անունով տպագրիչը 1759—1762 թթ. ընթացքում իր տպարանում լույս է ընծայել երեք գիրք, որոնցից շատ կարևոր էր Եզնիկ Կողբացու «Եղծ աղանդոցի» («Գիրք ընդդիմութեանց») հրատարակությունը՝ միակ պահպանված ձեռագրից։

XVII և XVIII դարերում հայերեն գրքեր տպագրել են նաև մի շարք եվրոպացի գրահրատարակիչներ։ Վերջիններիս տպարաններում հայերեն գրքերի հրատարակությանը, սովորաբար, մասնակցում էին հայազգի սրբագրիչներ ու բնագիր պատրաստողներ։

Եվրոպական գրահրատարակչություններից հայերեն գրքերի լույս ընծայմամբ ամենից ավելի երկար է զբաղվել Հավատի Տարածման ժողովի տպարանը (Հռոմ), որը հիմնադրվել է 1623 թ. Ուրբանոս VIII պապի կողմից և դադարել է գործելուց 1890-ական թվականներին։ Այդ տպարանի նպատակն էր

հրատարակել հռոմեական դավանանքի տարածմանը որևէ ձևով նպաստող գրականություն։ Մինչև 1800 թ. այստեղ տպագրվել են մոտ 50 անուն դավանաբանական, լեզվաբանական, փիլիսոփայական հայերեն գրքեր, նաև՝ բառարաններ, հայոց լեզվի այբբենարաններ և այլն։

Վենետիկում տեղի իտալացի հրատարակիչ-տպագրիչներից հայերեն գրքերի լույս ընծայման գործին ամենից ավելի մեծ նպաստ է բերել Անտոնիո Բորտոլին, որի տպարանը մեսրոպատառ գրքեր է հրատարակել 1695-ից սկսած մինչև XVIII դարի վերջերը։ Ի թիվս բազմաթիվ հայերեն գրքերի, այստեղ են լույս ընծայվել Մխիթար Սեբաստացու հայտնի «Բառգիրք հայկազեան լեզուին» երկու հատորով (1749, 1769), Աստվածաշնչի Մխիթար Սեբաստացու հրատարակությունը (1733) և այլն։ Վենետիկի Մխիթարյանները հիմնականում Բորտոլիի մոտ էին տպագրում իրենց երկերը, նախքան Ս. Ղազարում տպարան հիմնելը։ Մինչև XIX դարը եվրոպացիների կողմից հայերեն (կամ հայատառ հատվածներով) գրքեր տպագրվել են նաև Լոնդոնում, Փարիզում, Պադուայում, Պարմայում, Հարլեմում, Լայպցիգում, Նյուրնբերգում և այլ քաղաքներում։

XVIII դարի երկրորդ կեսից հայերեն գրքերի հրատարակման ասպարեզում նկատելի դարձավ Մխիթարյանների դերը։ Դեռևս 1716 թ., երբ այդ միաբանությունը հաստատվեց Վենետիկում, գրական-մշակութային աշխույժ գործունեություն սկսեց։ Սակայն, չունենալով սեփական տպարան՝ Մխիթարյաններն իրենց գործերը տպագրում էին իտալացիների մոտ։ Առաջինը տպարան են հիմնում Տրիեստի Մխիթարյանները՝ այս քաղաքում հաստատվելուց երկու տարի անց՝ 1775-ին և մինչև Վիեննա տեղափոխվելը (1811) լույս են ընծայում ավելի քան 70 անուն հայատառ գրքեր (որոնցից 25-ը հայատառ թուրքերեն)։ Տրիեստում տպագրված գրքերի մեջ կան այբբենարաններ, բարոյագիտական, պատմական-դեղարվեստական երկեր, Ժամագիրք, Սաղմոսարան և այլն։

Ուշագրավ են հայատառ թուրքերեն հրատարակությունները, նախատեսված թրքախոս հայերի համար, որն, ըստ երևույթին, մի նպաստ էր հայապահպանման գործին։ Նման նպաստ էր նաև «Հայնակ և նէմէցնակ այբուբենի թուղթը», որը ձեռնարկ էր Տրանսիլվանիայի օտարախոս հայ երեխաներին ազգային լեզու սովորեցնելու համար։

Ս. Ղազարում տպարանի կազմակերպումն սկսվում է 1788 թ.։ Հաջորդ տարին այնտեղ տպագրվում են մի քանի գրքեր, այդ թվում Գրիգոր Նարեկացու «Մատեան ողբերգութեանը»։ Մինչև դարավերջ Ս. Ղազարի տպարանը լույս է ընծայում մոտ երեք տասնյակ անուն գիրք։ Այստեղ են առաջին անգամ հրատարակվում Մխիթար Գոշի առակները (1790), Ղազար Փարպեցու «Պատմութիւն հայոցը» (1793), Մովսես Խորենացու «Գիրք պիտոյիցը» (1796)։ Մինչև դարավերջ տպարանի լույս ընծայած գրքերից են ամեն տարի տպագրված օրացույցները, Ղուկաս Ինճիճյանի «Տեսութիւն հին և նոր աշխարհագրութեան», Սահակ Պրոնյանի «Երկրաչափութիւն» աշխատությունները և այլն։

Ս. Ղազարի տպարանը անընդհատ կատարելագործվում էր, հարստանում եվրոպական նորագույն սարքավորումներով, այն մշակութային ավելի ու ավելի նշանակալից դեր էր կատարում հայ կյանքում։ Վենետիկի, ինչպես նաև Վիեննայի Մխիթարյանների հրատարակչական գործունեությունը զարգացման

բարձրակետին հասավ հաջորդ՝ XIX դարի ընթացքում, մեծ դեր կատարելով հայ ժողովրդի մշակութային կյանքում։

XVIII դարի 70—80-ական թվականներին հայկական տպագրությունը շարժվելով դեպի արևելք, թափանցեց Հնդկաստան, Ռուսաստան և մանավանդ հայոց բնաշխարհ։

Հնդկաստանում հայկական առաջին տպարանը հիմնում են նշանավոր Շահամիրյանները 1772 թ. Մադրասում։ Այս տպարանում են լույս տեսնում հայ ազատագրական մտքի զարգացման մեջ նշանակալից դեր կատարած այնպիսի երկեր, ինչպես «Նոր տետրակ, որ կոչի յորդորակ» և «Որոգայթ փառաց» նշանավոր գրքերը։ Ըստ երևույթին ավելի նշանակալից էր միևնույն Մադրաս քաղաքում քիչ ավելի ուշ Հարություն Շմավոնյանի կողմից հիմնված մյուս հայկական տպարանի դերը, որտեղ 1794 թ. հոկտեմբերից մինչև 1796-ի սկզբները տպագրվեց «Ազդարարը»՝ առաջին հայերեն պարբերականը։ Հիմնականում գրաբար լույս տեսնող այս հանդեսում տպագրվում էին նաև աշխարհաբար հոդվածներ։ «Ազդարարը» արձագանքում էր ոչ միայն հնդկահայ գաղութի կյանքում կատարված դեպքերին, այլ նաև անդրադառնում էր համահայկական նշանակություն ունեցող հարցերի, տպագրում բանասիրական նյութեր և այլն։ Հ. Շմավոնյանը, նախքան «Ազդարարի» լույս ընծայումը, հրատարակել էր ուշադրության արժանի այնպիսի գրքեր, ինչպես՝ Պորփյուրի «Ներածութիւնը», Պաղտասար Դպրի «Քերականութիւնը», Հակոբ Թաղյանի «Երկրաչափականը» և այլն։

Մադրասից բացի Հնդկաստանում XVIII դարի վերջերին հայկական դրահրատարակչությունը թափանցում է նաև Կալկաթա, որտեղ առաջին հայերեն գիրքը (Աբրահամ Կրետացու «Պատմութիւն անցիցը») հրատարակվում է 1796 թ. Հովսեփ Ստեփանոսյանի հիմնած տպարանում։ Հնդկահայ դրահրատարակչությունն ունեցավ իր ուրույն դեմքը և ծաղկման հասավ հաջորդ դարի 40-ական թվականներին։

1781 թ. Ռուսական կայսրության մեջ սկսեց գործել հայկական առաջին տպարանը։ Ջուղայեցի կրթյալ վաճառական Գրիգոր Խալդարյանցը Լոնդոնում պատրաստել տված իր հայերեն տպատառերը բերում է Պետերբուրգ, գնում տպագրական անհրաժեշտ սարքեր և սկսում մի այբբենարանի («Տետրակ այբբենական») տպագրությունը։ Այս ձեռնարկությունը հովանավորում է Ռուսաստանի հայերի հոգևոր առաջնորդ Հովսեփ Արղությանը։ Պետերբուրգում Խալդարյանցի տպարանը լույս է ընծայում հիշյալ այբբենարանը (1781), որը Ռուսաստանում տպագրված հայերեն առաջին գիրքն է, Կլեոպատրա Սաֆարյանի «Բանալի գիտութեանը», Խալդարյանցի կազմած «Ճանիդ լեզուագիտութեան» անունով հայ-ռուսերեն բառարանը, Ներսես Շնորհալու «Ընդհանրականը» (երեքն էլ 1788 թ.) և այլն։

Գ. Խալդարյանցի մահից հետո տպարանը գնում է Հ. Արղությանցը, տեղափոխում նախ Նոր Նախիջևան, ապա՝ Աստրախան։ Այս երեք քաղաքներում մինչև դարավերջ տպագրվում են շուրջ 50 անուն հայերեն գրքեր, այդ թվում հայ պատմիչների ու բանաստեղծների երկեր, բառարաններ, օրացույցներ, դասագրքեր, եկեղեցական տարբեր գրքեր և այլն։

Հայկական տպագրությունն իր սկզբնավորումից սկսած երկար ժամանակ զարգացավ օտարության մեջ։ Այդ ընթացքում եղան մտադրություններ, նաև փորձեր տպագրությունը հայոց բնաշխարհում հաստատելու ուղղությամբ,

ԱԶԴԱՐԱՐ

ԹԻՐԱՑ ԱՄՍՈՅ

1794



ՄԱԴՐԱՍ

Ի Տպարանի Տր Յարութիւն Շմաւոնեան Շիրազեցւոյ

Առաջին հայ պարբերական «Ազդարարը»

սակայն միշտ մնացին ապարդյուն։ Մի շարք հանգամանքներ և գլխավորապես Հայաստանում տիրող քաղաքական խիստ տարափոխիկ կացությունը հնարավորություն չէին տալիս երկրի որևէ վայրում տպարան հիմնելու։ Այդպիսի հնարավորություն ստեղծվում է միայն XVIII դարի երկրորդ կեսին Սիմեոն Երևանցու կաթողիկոսության (1763—1780) օրոք։

Նախքան կաթողիկոս ընտրվելը, Սիմեոնը՝ իբրև էջմիածնի նվիրակ, ապրել էր Կոստանդնուպոլսում, ծանոթ էր տեղի հայկական գաղութի մշակութային կյանքին և մասնավորապես տպարանների աշխատանքին։ Եղել էր նաև Զմյուռնիայում, աջակցություն ցույց տվել այնտեղի հայկական տպարանի

աշխատանքին։ Հայրենիքում տպարան հիմնելու միտքը նրա մեջ հաստատվել էր դեռևս այն ժամանակ, գուցե և ավելի վաղ, երբ նվիրակ էր Մադրասում ու տեղի հարուստ վաճառական Գրիգոր Միքայելյան-Ջակիկյանից խոստում էր ստացել Հայրենիքում կառուցվելիք մի տպարանի ծախսերը հոգալու։

Կաթողիկոս դառնալուց երկու տարի անց Սիմեոնը նամակներ է գրում Կոստանդնուպոլիս և Զմյուռնիա իր ներկայացուցիչներին՝ հորդորելով նրանց ձեռք բերել հայկական տպատառեր և մամուլ՝ էջմիածին տեղափոխելու համար, բայց հաջողության չի հասնում։

Ի վերջո, նա որոշում է տպարան հիմնել տեղի ուժերով։ Դրամական մեծ օգնություն է ստանում Գ. Միքայելյան-Ջակիկյանից։ էջմիածնում սկսվում են տպարանի շենքի կառուցման, տպագրական պարագաների պատրաստման աշխատանքները։ Ստեղծվում է գրաձուլարան։ Աշխատանքներին եռանդուն մասնակցում են կաթողիկոսի տեղապահ Մկրտիչ արքեպիսկոպոս Շոռոթեցին և էջմիածնեցի ոսկերիչ Հարությունը, որը պատրաստում է զարդերի ու պատկերների տպատախտակներ։ Տպագրական ձեռքի մամուլը նույնպես պատրաստվում է այս անձանց ջանքերով[7]։

1771 թ. էջմիածնի տպարանն սկսում է գործել։ Աշխատողները՝ գրաշարներ, տպագրողներ, սրբագրիչներ, էջմիածնի միաբանության անդամներն էին։ Նորաստեղծ տպարանը կոչվում է Գրիգոր Լուսավորչի անվամբ։ Այստեղ և ամենից առաջ սկսում են տպագրել մի Սաղմոսարան, որը, սակայն, անհաջող է ստացվում և ոչնչացվում է։ Հաջորդ՝ 1772 թ., սկսվում է Սիմեոն Երևանցու «Զբոսարան հոգևոր» աղոթագրքի տպագրությունը, որն ավարտվում է հաջողությամբ։

Այսպես, Սիմեոն Երևանցուն հաջողվում է անել այն, ինչ դեռևս XVI դարից եղել էր հայ շատ գործիչների երազանքը՝ Հայրենիքում տպագրել հայերեն գրքեր։ Եվ հայկական տպագրությունն իր սկզբնավորման օրից սկսած մոտ 260 տարի Հայրենիքից դուրս պանդուխտ մնալուց հետո, վերջապես ոտք է դնում Հարազատ հողին։

Հայաստանում տպագրված առաջին գիրքը՝ «Զբոսարան հոգևորը» փոքր չափսի է (7,5×10,5 180 էջ), պարզունակ, բայց դյուրըմբռնելի շարվածքով, կաշեպատ կազմը գեղեցիկ զարդերով հաճելի տեսք է տալիս գրքույկին։ Այն սկսվում է հեղինակի առաջաբանով, իսկ վերջում կա ընդարձակ հիշատակարան, որի մեջ պատմվում է տպարանի հիմնադրման հանգամանքների մասին։ Նկարագրվում է Երևանի խանության և վրաց Հերակլ թագավորի միջև 1768—1771 թթ. տեղի ունեցած արյունոտ պատերազմը, որը մեծ վնաս է տվել հայ բնակչությանը։ Պատերազմի պատճառով տպարանի բացումը մի քանի տարով ուշացել է։

1773 թ. էջմիածնի տպարանում լույս է տեսնում Սիմեոն Երևանցու «Տաղարանը», հեղինակի մի շարք բանաստեղծություններով։ Հաջորդ տարին տպագրության է հանձնվում և 1775-ին լույս ընծայվում կաթողիկոսի կազմած «Տոնացույցը», որ 564 էջանոց գիրք է և արդեն աչքի է ընկնում հաջող տպագրությամբ, ունի բազմաթիվ գեղեցիկ զարդեր ու պատկերներ, որոնք Հարություն էջմիածնեցու հեղինակածն էին։ Վերջինս, կատարելագործվելով գրա-

---

[7] 1910 թ. այդ տպագրական մամուլը գտնվեց և այժմ պահվում է Հայաստանի պատմության թանգարանում։

հրատարակչական աշխատանքում, շուրջ քսան տարի ամենագործուն մասնակցությունն է ցուցաբերում Էջմիածնի տպարանի աշխատանքին, առաջնակարգ արվեստով ձևավորում մի շարք հրատարակություններ։

Տպարանի կատարելագործմանը նպաստ է բերում նաև նշանավոր Պողոս Արապյանը, որը Կ. Պոլսից գալով Կովկաս, կանգ է առնում Էջմիածնում (լինում է նաև Թիֆլիսում, ուր 1782—1783 թթ. Հերակլ թագավորի պատվերով սարքավորում է արքունի տպարանը և վրացերեն երկու գիրք տպագրում)։

Էջմիածնի տպարանի աշխատանքներին խանգարում էր թղթի պակասը։ Թուղթը բերվում էր Եվրոպայից, որը մեծ դժվարությունների ու ծախսերի հետ էր կապված։ Սիմեոն Երևանցին որոշում է տեղում կառուցել նաև թղթի գործարան։ Նա Կոստանդնուպոլսից հրավիրում է երկու օտարազգի մասնագետ։ Գործարանի կառուցման գումարը տրամադրում է նույն հնդկահայ Գ. Միքայելյան-Ջակիկյանը։ 1776-ին Հայաստանի առաջին թղթի գործարանն արդեն աշխատում էր (բամբակի հումքով)։ Էջմիածնի թուղթը, որ բավական որակով է, 1779 թ. սկսում է օգտագործվել Սիմեոն Երևանցու «Պարտավճար» դավանաբանական երկի տպագրության համար։

Ղուկաս Կարնեցու գահակալության (1780) սկզբի տարիներին տպարանի աշխատանքը, չնայած մի փոքր թուլանում է, բայց արդեն 1785-ին լույս ընծայված Ժամագիրքը վկայում է, որ Էջմիածնում տպագրական արվեստը լուրջ առաջընթաց է կատարել։ Նույն որակի հրատարակություն է նաև Հովսեփոս Փլաքիոսի 1787 թ. տպագրված «Յաղագս պատերազմի հրէից» գիրքը՝ Ստեփանոս Լեհացու թարգմանությամբ։ 1787—1789 թթ. Ս. Գրիգոր Լուսավորչի անվան տպարանը լույս է ընծայում նաև Սաղմոսարան, Խորհրդատետր, Շարակնոց, իսկ 1793-ին՝ երրորդ անգամ Սիմեոն Երևանցու «Տաղարանը», որից հետո քաղաքական խառնակ պայմանների հետևանքով Հայաստանի միակ տպարանի աշխատանքը կանգ է առնում քառորդ դարով և վերսկսվում 1818 թ.՝ Եփրեմ կաթողիկոսի օրոք։

Մինչև XVIII դարի վերջը Էջմիածնի տպարանը լույս է ընծայել 12 անուն գիրք։ Այս քանակը, հասկանալի է, որ մեծ չէ հայ հնատիպ գրքի ստեղծման ու տարածման առումով։ Էջմիածնի տպարանի հիմնադրումից հետո էլ դեռ բավական ժամանակ հայերեն գրքերի հրատարակության գլխավոր կենտրոնները մնում էին Հայաստանից դուրս։ Մայր աթոռը դեռևս անհրաժեշտ գրքերը շարունակում էր պատվիրել դրսում, գլխավորապես Կ. Պոլսի և Ն. Նախիջևանի (ապա Աստրախանի) տպարաններում։ Եվ, այնուամենայնիվ, մինչև XVIII դարավերջ Էջմիածնում տպագրված այդ մի քանի անուն գրքերը արդեն հայաստանյան հրատարակություններ էին։ Ինքնըստինքյան նշանակալից է այն փաստը, որ ավատական ծայր հետամնացության մեջ, պետականությունից վաղուց զրկված, հակառակորդ բանակների բախման թատերաբեմ հանդիսացող Հայաստանը դարձել էր գրահրատարակչության երկիր։

1512 թ. մինչև 1800 թ. հայ տպագրիչների ջանքերով տարբեր երկրներում լույս ընծայվեց մոտ 1000 անուն մեսրոպատառ գիրք։ Դա փոքր քանակ չէ, եթե նկատի ունենանք, որ մինչև այդ թվականը շատ ու շատ լեզուներով ընդհանրապես գրքեր լույս չտեսան, իսկ հնատիպ գիրք ունեցող մի շարք փոքր ազգեր մինչև XVIII դարի վերջը կարողացան իրենց ազգային լեզվով հրատարակել մի քանի տասնյակից մինչև մի քանի հարյուր գիրք։ Խորհրդային Միու-

թյան ժողովուրդների հնատիպ գրականության մեջ հայերեն հնատիպերը քանակով երկրորդ տեղում են (ռուսերեններից հետո)։



Նոր Նախիջևանցի հայ կին (XVIII դ.)

Բովանդակությամբ այդ հազար անուն գրքերը շատ բազմազան են։ Գերակշռում են կրոնական-եկեղեցական հրատարակությունները, բայց և զգալի քանակ է կազմում գիտական և ուսումնական (գլխավորապես լեզվաբանական, փիլիսոփայական, բնագիտական, բժշկական, աշխարհագրական) գրականությունը։ Հայ պատմիչների երկերի հրատարակությունները, ինչպես և գեղարվեստական գրականությունը նույնպես նշանակալից տեղ ունեն հայերեն հնատիպ գրականության մեջ։ Մոտ 300 տարվա ընթացքում ստեղծված հայերեն հնատիպ գրականությունը, հայ մշակույթի շատ հարուստ, բովանդակալից հատվածն է։

*

* *

Այսպիսով, XIV—XVIII դարերի հայ մշակույթը իր զարգացման ողջ ընթացքով, զգալի կորուստներով և նվաճումներով հանդիսացավ տվյալ ժամանակաշրջանի հայ հասարակության՝ նրա անցած դժվարին ուղու, ծանր վիճակի, բայց և միաժամանակ անսպառ կենսունակության հարազատ արտացոլքը։ Լուսավոր ապագայի հանդեպ իր հավատը չկորցնող ժողովրդի կյանքը ռունեղ արտահայտություն գտավ գեղարվեստական գրականության բազմապիսի ստեղծագործություններում, անկման ժամանակահատվածը վերապրելով իր առաջնակարգ դիրքերը վերականգնեց պատմագրությունը, միջնադար-

յան գիտական ավանդույթները, վերակենդանացրեց և նոր ժամանակների գաղափարներն արտահայտելու առաջին փորձերը կատարեց հայ փիլիսոփայական միտքը, նոր պահանջներին համապատասխան միջնադարյան շրջանակներից դուրս եկավ կերպարվեստը, ծնունդ առավ և տարածվեց լուսավորության հուսալի նեցուկ՝ հայ տպագրությունը։ Ի տարբերություն նախորդ ժամանակաշրջանի, հայ ժողովրդի հոգևոր կյանքում առաջնակարգ դեր խաղացին աշխարհով մեկ սփռված գաղթավայրերը, ուր բազմաթիվ սերունդների ջանքերով ստեղծված մշակութային արժեքները ձեռք բերեցին համազգային նշանակություն և հնարավոր դարձրին օտար նվաճողների կրնկի տակ հեծող մայր հայրենիքի հոգևոր-մշակութային դանդաղ, բայց հարաճուն վերելքը։

Չնայած այն մեծ կորուստներին, որ հայ ժողովուրդն ունեցավ աշխարհավեր պատերազմների թատերաբեմ դարձած իր հայրենիքում, նա XIX դարի շեմին մոտեցավ իր բազմադարյան հոգևոր ավանդույթները վերականգնած ու հարստացրած, նոր ժամանակներին հանձնելով հսկայական մշակութային ժառանգություն։ Եվ երբ շուտով պարսկական լծից ազատագրվեց Հայաստանի արևելյան հատվածը, այդ ժառանգությունը ստեղծագործորեն օգտագործվեց հայ նոր մտավորականության կողմից՝ իր բնույթով նոր, եվրոպական ու ռուսական գիտության, գրականության ու արվեստին համաքայլ ընթացող հայ ազգային մշակույթի ստեղծման գործում։

## ԿԱՐԵՎՈՐ ԴԵՊՔԵՐԻ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ

1284—1291 թթ.—*Կարա-կոյունլու ցեղը գաղթում է Հայաստան։*

1313—1386 թթ.—*Ապրել ու գործել է Հովհան Որոտնեցին, Տաթևի համալսարանի հիմնադիրը։*

1338 թ.—*Ջոբանյան դինաստիան իր տիրապետությունն է հաստատում Իրանի, Ատրպատականի և Հայաստանի վրա։*

1344—1358 թթ.—*Իշխում է Մելիք Աշրաֆը։*

1346—1409 թթ.—*Ապրել ու գործել է Գրիգոր Տաթևացին։*

1350—1425 թթ.—*Ապրել ու գործել է Գրիգոր Խլաթեցին (Ծերենց)։*

1357 թ.—*Ոսկե Հորդայի խան Ջանիբեկը արշավում է Ատրպատական։*
*—Սպանվում է Մելիք Աշրաֆը և վերջ է դրվում Ջոբանյանների իշխանությանը։*

1358—1374 թթ.—*Իշխում է սուլթան Ուվեյսը, որը հիմնադրում է Ջելաիրյանների դինաստիան։*

1367 թ.—*Լվովը դառնում է ամբողջ հարավ-արևելյան Եվրոպայի հայերի եկեղեցական կենտրոն։*

1373—1410/12 թթ.—*Գործել է Տաթևի համալսարանը։*

1374—1382 թթ.—*Իշխում է սուլթան Ուվեյսի որդի սուլթան Հուսեյնը։*

1377—1378 թթ.—*Սուլթան Հուսեյնը պատժիչ արշավանք է կազմակերպում Կարա-կոյունլուների դեմ։*

1380—1450 թթ.—*Ապրել ու գործել է Առաքել Բաղիշեցին։*

1385 թ.—*Լանկ-Թամուրը ներխուժում է Ատրպատական և գրավում Սուլթանիե քաղաքը։*

1386 թ. գարուն—*Լանկ-Թամուրի զորքը գրավում է Թավրիզը, ապա մտնում Սյունիք, գրավում Նախիջևանը, պաշարում Երնջակի բերդը, ասպատակում Մեծ ու Փոքր Սյունիքները և Այրարատը։*

1387 թ. սեպտեմբեր—*Լանկ-Թամուրի զորքը պաշարում է և գրավում Վանի բերդը։*

1387 թ. աշուն—*Երկու տարի Հայաստանը ասպատակելուց հետո Լանկ-Թամուրը վերադառնում է Սամարղանդ։*

1390-ական—1446 թթ.—*գործել է Մեծոփա վանքի բարձրագույն դպրոցը։*

1394 թ.—*Հյուսիսային Միջագետքի վրայով Լանկ-Թամուրը երկրորդ անգամ արշավում է Հայաստան։*

1396 թ. գարուն—*Լանկ-Թամուրը Ալանաց դռնով վերադառնում է Անդրկովկաս։*
*—Լանկ-Թամուրը իր Միհրանշահ որդուն կուսակալ է նշանակում Իրանի, Իրաքի, Հայաստանի և Անդրկովկասյան նվաճված երկրամասերի վրա։*

1399 թ. սեպտեմբեր—Լանկ-Թամուրն սկսում է իր երրորդ արշավանքը դեպի Հայաստան և մինչև 1403 թ. նվաճում ողջ Անդրկովկասը, Փոքր Ասիան, Միջագետքը և Սիրիան։
1402 թ. հուլիս—Լանկ-Թամուրը պարտության է մատնում սուլթան Բայազետին և գերի վերցնում նրան։
1403 թ.—Լանկ-Թամուրը նորից արշավում է Վրաստան և Աբխազիա։
1405 թ. փետրվար—70-ամյա հասակում մեռնում է Լանկ-Թամուրը։
1406 թ. աշուն—Կարա-Յուսուֆը պարտության է մատնում Արուքաքրին և գրավում է Թավրիզը։
1410—1468 թթ.—Կարա-կոյունլու թուրքմենների տիրապետությունը Ատրպատականի, Իրաքի և Հայաստանի վրա։
1411 թ.—Կարա-Յուսուֆը պարտության է մատնում իր դեմ ապստամբած Շիրվանշահ Իբրահիմի և վրաց Կոստանդին թագավորի միացյալ զորքերին։
1418 թ.—Կարա-Յուսուֆը արշավում է Հյուսիսային Միջագետք։
1419 թ.—Կարա-կոյունլուների դեմ պատերազմ են սկսում Թամուրյան Շահռուխը և Աղ-Կոյունլու Օսմանը։
1421 թ. օգոստոսի 21—Բագրևանդի մոտ տեղի ունեցած ճակատամարտում Կարա-կոյունլուները պարտություն են կրում։
1422—1427 թթ.—Կարա-Յուսուֆի որդի Իսքանդարը համառ պայքար է մղում քրդական կիսանկախ ամիրությունների դեմ Հայաստանի հարավում՝ Բաղեշում, Ոստանիքում, Խիզանում։
1427 թ.—Վերջ է տրվում Մակվի հայկական իշխանությանը։
1428—1429 թթ.—Թամուրյանները պատերազմում են կարա-կոյունլուների դեմ և ասպատակում են Հայաստանի տարբեր շրջանները։
1431 թ.—Հայաստանում և Ադրբեջանում մոլեգնում է սովը։
1435 թ.—Շահռուխը երրորդ անգամ պատերազմ է սկսում Իսքանդարի դեմ և ավերածություններ սփռում Հայաստանում։
1435 թ.—Սյունյաց իշխան Բեշքեն Օրբելյանը 6000 սյունեցի ընտանիքներով անցնում է Լոռի։
1435 թ.—Իսքանդարը սպանվում է իր Շահ-Կուբադ որդու կողմից։
1437—1467 թթ.—Ջհանշահի տիրակալությունը։
1441 թ.—Կաթողիկոսական աթոռը վերահաստատվում է Էջմիածնում։
1441 թ.—Հայկական եպիսկոպոսական թեմ է հիմնադրվում Մոլդովայի մայրաքաղաք Սուչավայում։
1453 թ. մայիսի 29—Թուրքերը գրավում են Կոստանդնուպոլիսը։
1454 թ.—Աղ-կոյունլու Ուզուն-Հասանը արշավում է Հայաստանի հյուսիսային շրջանների վրա։
1457—1458 թթ.—Տեղի է ունենում Ջհանշահի արևելյան երկրորդ խոշոր արշավանքը։
1461 թ.—Ջհանշահը արշավում է Շիրազ։
1467 թ. մայիս—Ջհանշահը վճռական ճակատամարտի է ելնում Աղ-կոյունլուների դեմ և զոհվում է 70-ամյա հասակում։
1468—1502 թթ.—Հայաստանը ենթարկվում է Աղ-կոյունլու թուրքմենների տիրապետությանը։

